ՀԱՅԿԱԿԱՆ

# ՀԻՆ ԴՊՐՈՒԹԵԱՆ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

(Դ—ԺԳ ԴԱՐ)

ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ԴՊՐՈՑԱՑ ՀԱՄԱՐ



ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎ ԵՒ ՓՈՓՈԽՈՒԹԵԱՄԲՔ




ՎԵՆԵՏԻԿ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1897

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Համառօտ երկասիրութեանս տպագրութեամբ հասարակաց ընծայուելէն՝ տասնեակ մի ամաց սահեցան անցան։ Նոր տպագրութեան մը բնագատուած ատեննիս, ժամանակը և անոր հետևանք և արդիւնք նորանոր տեղեկութիւնք՝ անհրաժեշտ ըրած էին գրուածքիս աւելի ճոխ և նորագոյն կերպարանք մը տալ. զոր և ջանացինք ընել, ոչ լոկ տպագրութեան ձևովն և տառերով, ինչպէս կը տեսնեն ընթերցողք, այլ նաև — որչափ հնարաւոր և կարելի էր, — պարունակութեամբն։

Այս դիտմամբ և վախճանաւ եղած են այլևայլ փոփոխութիւնք, սրբագրութիւնք և յաւելուածք, ջանալով ընդարձակագոյն տեղեկութիւնս ընծայել ուսումնասիրաց և բարձրագոյն դպրոցաց աշակերտելոց՝ մեր հին մատենագրաց վարուց և երկասիրութեանց վրայ, ու անով աւելի սիրելի և մեծարոյ ընել՝ հեռաւոր և մերթ ոչ այնչափ երախտապարտ նոր սերնդեան՝ մեր ընտիր և հռչակաւոր նախնեաց գործածած լեզուն, և հմտացընել իրենց արդիւնաւոր կեանքին։ Ասով հանդերձ՝ կ'ուզենք իմացընել միանգամայն թէ գրուածքիս նպատակը՝ իր կրած քիչ շատ փոփոխութիւններովն ալ՝ առաջին տպա-

գրութեամբն իրեն համար արդէն գծուած ամփոփ սահմանին մէջ կը մնայ, որ էր, — ինչպէս ակնարկուած է յառաջաբանին մէջ, — «ընդհանուր պատմական տեղեկութիւն մը աւանդել մեր մատենագրաց և անոնց գրուածոց վրայ, առանց ուզելու քննադատական տեսութեամբք ծանրացընել այնպիսի գրուածք մը որ վարժարանաց համար սահմանուած է»։ Ասկէ անդին բարձրանալ խիզախելը՝ մեր կամքէն ու դիտաւորութենէն, ու նաև նըպատակէն դուրս էր։ Խոստովանութիւն մը՝ զոր մատենիս չափն ալ մեզի հետ անխօս կը հռչակէ։



Մեր պատմութեանց տարեգիրքն աչքէ անցուցած ատեննիս՝ սրտի իրաւացի գոհութեամբ և սփոփանօք կը հանդիպինք բազմապատիկ քաղաքական ու եկեղեցական պարծանաց. ու Խորենացւոյն հետ կրնանք երկրորդել և վկայել որ «Թէպէտ և եմք ածու փոքր, և թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ... սակայն բազում գործք արութեան գտանին գործեալ և 'ի մերում աշխարհիս, և արժանի գրոց յիշատակի»։ Սակայն անոնց ամենուն վըրայէն աւերիչ ձեռք և զէնք ժամանակաց անցնելով՝ չեն թողած այլ ինչ՝ բայց հին ու պատուական լեզու մը և մատենագրութիւն, միակ մնացորդք և աւանդապահ վըկայք մեր հետախաղաղ ծածկուած անցեալ փառաց։ Այդ լեզու և մատենագրութիւն՝ դարուց և ժամանակաց ամէն կերպարանափոխութեանց և աղիտից ենթակայ, չեն կրցած իրենց իսկաշնորհ դրիւք և փափաքելի ամբողջութեամբ հասնիլ մինչև առ մեզ. այլ մին՝ զանազան դրոշմ և աղաւաղութիւն ընդունելով և տգիտութեան ծանր բեռը վրան կրելով, և միւսն բազմաթիւ ու աշխարելի կորըստեամբք և հարուածովք։

Սակայն և այնպէս ոչ դոյզն քաջալերութիւն և՛ սփոփանք են մեզ լսել՝ թէ արևելեան ազգաց մատենագրու-

թեան մէջ նշանաւոր տեղ մը գրաւած է հայ լեզուն և դպրութիւն. իր մինչև առ մեզ պահած արդի կերպարանքովն ալ՝ թէ՛ մեզ և թէ եւրոպական գիտութեանց և բանասիրութեան համար՝ հարուստ ու անսպառելի բովք մը, որ որչափ աւելի ուսումնասիրուի, և հետախոյզ քննուի, փորձը կը ցուցընէ թէ ինչպէս օր ըստ օրէ նորանոր ճոխութիւնք արտադրելու յարմարութիւնն ունի։

Ո՛րչափ փափաքելի էր և օգտակար այսպիսի անխոնջ հետազօտութիւն՝ մեր պատմական և մատենագրական ուսմանց յառաջադիմութեանն համար։ Եւ ներուի ըսել, որ յայսմ մասին օրինակ կրնան ըլլալ մեզ Եւրոպացի գիտունք և բանասէրք. և մինչ արևմուտք մեզմէ այնչափ փութով կը փնտռէ մեր հին պատմութիւնն ու նախնեաց մտաւոր հարստութիւնն, և իրեն տրուածը անյագաբար կ'ընդունին, դարուս արժանաւոր լուսամիտ և ուսումնասէր ոգին՝ հարկ է որ յորդորամիտ ընէ զմեզ՝ տգիտութեան հետևանք ամէն նախապաշարումն և աւելորդ նախանձայուզութիւն մէկդի դնելով՝ աւելի մեծանձն և առատատուր երևնալ, բաւական սեպելով անոնց երկար դարեր խաւարի և թմբրութեան մէջ մնալը։



Արևմտեան բանասիրութիւնն՝ — առանց ուզելու յիշատակել աւելի հեռաւոր ժամանակներ, — միայն վերջին քսան և աւելի տարիներու մէջ՝ մեծ եռանդ և հետամըտութիւն ցըցուց՝ մեր ազգային դպրութեանց, մանաւանդ պատմական երկասիրութեանց նկատմամբ։ Հայագէտն Տիւլորիէ 1855 տարիէն 'ի վեր՝ մեծ և օգտակար խորհուրդ մը ունեցած էր, հայ պատմչաց Մատենադարանի մը հրատարակութեան՝ հանդերձ գաղղիական թարգմանութեամբ։ Իբրու երախայրիք այս հետաքննական Մատենադարանին, տպագրութեամբ հրատարակեց Մատ-

Թէի Ուռհայեցւոյ պատմական գրուածին Թարգմանութիւնն, և Հայկական Ժամանակագրութեան վրայ բազմահմուտ հատոր մը։ Իր մտածութիւնն և 'ի հանգամանաց ժամանակին առկախ մնացած գործը՝ ուզեց գլխաւորել և յարդիւնս ածել Վիկտոր Լանկլուա՝ միւս այլ Հայագէտ գաղղիացի. ու ազգայնոց և օտար Հայագիտաց օժանդակելովը՝ և Նուպար փաշայի վեհանձն և առատաձիր նպաստիւք, ձեռք զարկաւ և հրատարակեց երկու մեծ հատոր, չորրորդ ու հինգերորդ դարու պատմական երկասիրութեանց գաղղիական Թարգմանութիւնն հմուտ ծանօթութեամբք, կանխաբանութեամբք և անոնց հեղինակաց վրայ կենսագրական տեղեկութեամբք։ Եռանդուն և հայասէր ձեռնարկուին տարաժամ մահը՝ և վըրայ հասած գաղղիական կառավարութեան յեղափոխութիւնն և պատերազմի և պարտութեան արկածք՝ խափան եղան այդ հաւաքման շարունակութեանն, որ ամենուն իրաւացի փափաքն էր, և առ որ ոչ ոք կը համարձակէր, ճանչնալով գործոյն մեծութիւնն ու դժուարութիւնը։ Մասամբ ևեթ ուզեց դարմանել այդ պակասը Պրոսէ գաղղիացի, անդամ կայսերական ճեմարանին Ռուսաց 'ի Փեթրպուրկ, ընծայելով 'ի լոյս նոյն քաղքին արքունի տպարանէն ուրիշ երկու հատոր Թարգմանութեանց մեր ազգային պատմագրաց։ Տիւլորիէ իր բազմարդիւն կենաց վերջի տարիները նուիրեց 'ի Թարգմանութիւն Ասողկան, և որուն առաջին մասը իր մահուընէն ետքը հրատարակուեցաւ. ասկէ զատ նաև խաչակրաց պատմագրաց հաւաքման մէջ մեծ հատոր մը՝ 'ի մեր պատմչաց, հայկական բնագրաւն և գաղղիական Թարգմանութեամբ։ Բրիւտոմ՝ նոյն լեզուով Զենոբայ Գլակ և Լաստիվերտցւոյն պատմութիւնը ծանօթացոյց. Լաւէր գերմանացի փոխեց յիւր լեզու զԲիւզանդ և զԽորենացի, աւելցընելով ասոնց հետ նաև հայ լեզուի քերականութիւն մը՝ գերմաներէն բացատրութեամբ, զոր Գարրիէր՝ արդի ուսուցիչ հայկական բարբառոյ 'ի դպրոցի արևելեան կեն-

գանի լեզուաց 'ի Փարիզ, թարգմանեց 'ի գաղղիականն։ Հիւպշման՝ Սեբէոսի արաբական արշաւանաց պատմական մասին թարգմանութիւնն ըրաւ 'ի գերման բարբառ. Կուտշմիդ և Դէզա՝ քննադատական տեսութիւնք ընծայեցին Խորենացւոյ և Ագաթանգեղոսի երկասիրութեանց վրայ։ Կը թողունք ուրիշներն, և եւրոպական ուսումնական հանդէսներու միջոցաւ հրատարակուած զանազան հետազօտութեան արժանաւոր հատուածներ. բայց այս յիշատակուածներն ալ արդէն բաւականէն աւելի են 'ի հաւատարմացընել թէ որչափ մեծ կարևորութիւն տուած են և կու տան եւրոպական գիտութիւնք մեր տոհմային մատենագրութեան։ Իրենց ջանքով ու ձեռքով եղած հայ հեղինակաց թարգմանութիւնք, ու անոնց վրայ տեսութիւնք և քննութիւնք՝ ոչ միայն ծանօթ ու սիրելի ընելու կը ծառայեն արևմտեայց մեր անցեալը, այլ մերթ անոր մութ ու անստոյգ մասերն ալ լուսաւորելու և ուղղելու նպատակն ունին, որով և ազգիս կըրկնակի երախտապարտ մեծարանացն արժանաւորք։

* * *

Մեր ազգայնոց քով ալ՝ վերջի տարիներու մէջ երևցած գրաբար լեզուի և ուսման, հայկական դպրութեանց փոյթ և ջանք՝ նշանաւոր և սփոփիչք կրնան համարուիլ։ Նախնեաց լեզուին և մատենագրութեան արհամարհոտ անտարբերութիւնն, և անոնց վրայ զուրցուած կծուցիչ դամբանականք, դպրոցներէ անոնց ուսումը վարելու ջանք, և միայն եկեղեցական դասու հնաւանդ ժառանգութիւն մը համարելու կարծիք՝ իրենց նորութիւնն կորսնցուցած և լռած դադրած են. և հոն մանաւանդ ուր մեր գրաբար լեզուին մահուան վճիռն արձակուելով՝ համարձակաձայն քարոզուեցաւ թէ մեռելոց յարութիւն տալու դարը իննետասներորդը չէ, իննետասներորդը ասոր մէջ ալ ցըցուց թէ յառաջադիմութեան և անհնարին ենթադրուած-

ներն ալ հնարաւոր ընելու ուսմանց և գիտութեան դար է։ Թիֆլիզ, Մոսկուա և Փեթրպուրկ՝ երեք գլխաւոր կեդրոնք մեր ռուսահպատակ ազգայնոց լուսաւորութեան և գիտութեան, կարծես մասնաւոր ճգամբ զիրար գերազանցել ուզեցին 'ի ստել զայդ վճիռ։ Պատկանեան, Մըսերեան, Էմին և այլք, մեծարոյ հանճարներ և պատկառելի հեղինակութիւնք, իրենց ուսումնական և բազմարդիւն կենաց մեծ մասը նուիրեցին 'ի հետազօտութիւն և 'ի հրատարակութիւն մեր նախնեաց երկոց. և հաճութեամբ կը նկատեն իրենց արժանաւոր աշակերտաց վրայ՝ հաւասար եռանդն և գործունէութիւն։ Ի Թիֆլիզ՝ օգտակար գրոց հրատարակութեան համար կազմուած ընկերութիւն մը՝ բաց 'ի նոր գրուածոց ընծայեց նաև այլևայլ դասական գրքեր։ Շահնազարեան վարդապետ 'ի Փարիզ, Էջմիածնի և Երուսաղեմի տպարանք՝ գովելի ուսումնասիրութեամբ իրենց բազմահարուստ մատենադարաններէն նախնեաց զանազան գրուածոց հրատարակութիւններ ըրին։ Կը թողունք յիշել 'ի մեր մամլոց ընծայուածքն։ Կոստանդնուպոլսոյ բազմահայ գաղթականութիւնն և Զմիւռնիա, նոր լեզուի կանոնաւորութեան և զարգացման սիրողք և հետևողք, չուզեցին անտարբեր մնալ հնութիւնն ալ պահպանող այս յառաջադիմական ասպարիզին մէջ. ոչ միայն նոր լեզուն գրաբարի աւելի մերձաւոր դրութեան մը մէջ դրին, այլ ինչուան հին լեզուով ուսումնական հանդիսի մը հրատարակութեան ձեռք զարնելու արիութիւնն ունեցան։ Չենք գիտեր թէ որչափ տևական կրնայ ըլլալ այսպիսի ձեռնարկ մը. բայց անով՝ մեր ժամանակաց բանասիրական յառաջադիմութեան և ջանից՝ յայտարար նշան մը և ապացոյց ըլլալէն չիդադրիր։



Ազգային մատենագրութեան և բարգաւաճանաց մեծ և կենսական գործոյն օժանդակելու և սատարելու վախճանն ու փափաք՝ ծնունդ տուած է մեր այս դուզնաքեայ երկասիրութեանն։ Առաջին կրկին տպագրութեանց ներբողամիտ ընդունելութիւնն յազգէն և յօտարազգի բանասիրաց, որ մեր լեզուին և դպրութեանց ուսմամբ կը պարապին, երրորդիս ալ գրաւական մը ըլլալուն յոյսը կու տայ մեզ։ Քննադատք և ուսումնատենչք՝ կրնան աւելի քան զոր գրուած տեսնեն մեզմէ՝ պահանջել և յուսալ։ Համամիտք իրենց հետ՝ թէ ազգային լեզուն, մատենագրութիւն և բանասիրութիւն դեռ շատ դժուարալոյծ խնդիրներ ունին, մթին տեղուանք՝ կարօտք լուսոյ, կը փափաքինք որ մեր այս համառօտ գրուածքը՝ նոր գրգիռ մը ըլլայ հմտագունից, այսպիսի բազմաշահ և արդիւնալից ասպարիզի մէջ խրախուսելու ՚ի ջանս, յուսումն և ՚ի վաստակ։ Արդէն ոչ սակաւաթիւ են ազգասէր և գիտուն շահատակքն և մրցողք, որ մեր խրախուսանաց և գովութեան կարօտ չեն։ Մենք ըսինք թէ նպատակնիս այս չէր։



Մեր գրուածքը ամբողջացընելու համար՝ կը մնար Հին թարգմանութեանց արդէն պատրաստ մասը, և որ առանձին հատորով ընծայեցինք ՚ի լոյս։



Քանի մը խօսք ալ՝ այս Նոր տպագրութեան առթիւ։

Տասը տարի յառաջ այս տողերը կը գրէինք ու կը տպագրէինք, ջանալով ուրիշ զօրաւոր ձայներու հետ խառնել մեր տկար ձայնն ալ, ու քաջալերելով ազգային և օտար հայագէտ բանասիրութիւնը մեր մատենագրութեամբ աւելի զբաղիլ ու զբաղեցնել, ու քիչ ծանօթ կամ բոլորովին անծանօթ մնացած կէտերը լուսաւորել։

Ազգին սպասածն այն էր անոնց ջանքէն և երկասիրութիւններէն. Նախընթաց շրջանն զնոյն կը խոստանար։

Միջին և Նոր կոչուած Մատենագրութեամբ կարծես թէ աւելի պարապեցան, ու հարկ է ըսել թէ զանազան օգտակար գրուածք և քննադատական տեսութիւնք ալ երևցան, պատիւ ընողք թէ՛ իրենց անուանը և թէ՛ ազգին։ Բայց մեր վախճանն էր որ ինչպէս քաղաքական պատմութիւննիս ունի իր մթին և առասպելախառն մասը, մատենագրութիւննիս ալ ունի կամ կրնայ ունենալ սրբագրելիք կտորները, սակայն միշտ ազգային ոգին նախամեծար ընելով։

Գէթ այսպիսի էր մեր համոզմունք և առաջարկութեան վախճանը։

Բայց քննադատութեան դարու մէջ կ՚ապրինք, և մենք յաւակնութիւն չունէինք ուրիշին ճամբայ ցուցնելու կամ սորվեցնելու։ Գրուածքս իրեն չափովը յայտարար մ՚է հաւաքողին հմտութեանը։



Թէ՛ ազգային և թէ՛ օտար գրիչք և բանասէրք, առանց մեր խօսքէն շարժելու, — և պէտք ալ չունէին, — ցանկացան դարուս ոգւոյն և պահանջածին համեմատ

վարուիլ թէ մեր պատմութեան և թէ մանաւանդ մատենագրութեան նկատմամբ, ինչ որ ցուցած չէին նոյն Եղլատայ և Լափիրանի յայտնի առասպելաց համար։ Ասով Լուսաւորիչ, Զենոբ Գլակ, Ագաթանգեղոս, Բիւզանդ, Կորիւն, Եզնիկ, Եղիշէ, Խորենացի, չորրորդ կամ հինգերորդ դարու մատենագիրք, կամ ինչուան մեր օրերը այնպէս համարուած, ինկան իրենց յարգէն կամ ենթադրուած ժամանակէն։ Այսպիսի սկզբնաւորութիւն մը թէպէտ 1850 է ի վեր սկսուած էր, բայց միշտ զգուշաւոր երկիւղածութեամբ, քիչ մը աւելի համարձակ լեզուով Քննական Պատմագրական հեղինակէն։ Ուրիշներ գըտնուեցան թէ յազգայնոց և թէ յօտարաց՝ որ չուզեցին մնալ այդ չափուն մէջ, և աւելի յառաջ անցան։ Ու երբ մէկ կողմանէ քաղաքականաբար կը մտածուէր անհետ ընել Հայերը իրենց հայրենեաց և բոլոր աշխարհիս երեսէն, մատենագրութիւնն ալ քիչ հալածանք չի կրեց։

Այսպիսի դիրքի մը մէջ թերեւս աւելորդ սեպուէր նոր տպագրութիւն մ՚ընել՝ ընդհանրապէս պահպանողական զուգնաքեայ երկասիրութեանս, ուստի ուզեր էինք հրաժարել, նկատելով մանաւանդ մեր առողջութեան վիճակը։

Բայց ուրիշներուն տեղի տուինք՝ գիտնալով որ վերջին խօսքը բռուած չէ, և բանասէրք իրենց յայտնած կարծեաց մէջ յամենայնի իրարու համաձայն չեն, ու թերևս երկար ատեն չըլլան. կամ այժմեան կարծիքնին ուզենան փոխել, ինչպէս շատ անգամ պատահած է։

* * *

Դնենք հոս նոր հրատարակուածներուն մատենագրական ցուցակը։

Հայ այբուբենի վրայ, բաց ի Սարգսեան Հ. Բարսեղ վարդապետի և Հայոց գիրը Ի Տ. Յարութիւնեան հրատարակութիւններէն, տպագրեց մասնաւոր գրքոյկ մը Ա. Տաղաւարեան։ Ասոնց վրայ պէտք է աւելցնել Գարոնեան

վարդապետի քննադատութիւնն՝ հրատարակեալ ի Հանդէս Ամսօրեայ (1890)։

Գողթան երգերու վրայ, բաց ի Էմինի, Ալիշան ու Գաթրճեան վարդապետաց, Տիւլորիէ ու Պալասանեան բանասիրաց գրուածներէն, որոց յիշատակութիւնը եղած է մատենկանս մէջ, առանձինն խօսեցան նոյն նիւթին վրայ գերմանացին Ֆէթթէր, որ հայերէն ալ թարգմանուեցաւ և տպուեցաւ ի Վիէննա, ի Մխիթարեանց, և Եղ. Լալայեանց ի Փարիզ, գաղղիական թերթի մը մէջ, ու նոյն լեզուով։

Ձեռագրաց նկատմամբ կը յիշեցնեմք Սփրիգովսկիի գրութիւնն ի գերման լեզու, և անոր հայերէն թարգմանութիւնն։ Երկուքն ալ տպագրեալ ի Վիէննա, ի Մխիթարեան տպարանի։ Ասկէ զատ, թէ՛ Մխիթարեանց Վիէննայի, թէ՛ կայսերական, թէ՛ Վատիկանի, Պերլինի, Մոնաքոյի, Պաւարիոյ,, Մոսկուայի Լազարեանց ու Կեսարիոյ թեմին մատենադարանաց ձեռագրաց ցուցակները։

Յաճախապատում գիրքը, ինչպէս գիտեն ընթերցողք, թարգմանեցաւ ի գերման ու հրատարակեցաւ ի Բէկկէնապուրկ։ Իրենց գիտուն տեսութիւններն ըրին Ֆէթթէր և Հիրշլ, և այս յետինս Եկեղեցւոյ Պատմութեան մէջ վաւերական կամ ոչ այնպէս ըլլալուն այս գրուածքիս։ Մասամբ ծանօթ են ազգիս իրենց երկասիրութիւնք հայ թարգմանութեամբ։ — Հիրշլ՝ Մեսրոպայ Վարդապետի կ՚ընծայէ զայն։

Զենոբայ Գլակայ վանից առաջնորդի գրուածքն ալ շարունակեց նիւթ ըլլալ քննադատութեան։ Արդէն մեր երկասիրութեան առաջին տպագրաց մէջ նշանակուած էր այս։

Ագաթանգեղոսի պատմական գրոց վաւերականութեան և որ լեզուով շարադրած ըլլալուն վրայ եղած տարակոյսներ թէպէտ արդէն հին են, բայց դարուս վերջին կիսուն աւելի սաստկացան թէ՛ ազգային և թէ օտար բանասիրաց մէջ։ Առաջին պատերազմողաց մէջ, յետ Լա-

տիլտինկայ և Բոլլադեանց, երևցաւ Գուշտմիտ գերմանացին։ Առջի բերան ազգային բանասէրք հակառակեցան իրեն կարծեաց և ինչուան ալ դէմ գրեցին։ Ինքը չըյուսահատեցաւ. և հետևող գտնելով օտար հայագէտները, ինչպէս Հիւպշման և այլք, ցըցուց գոհ ըլլալ։ Ատեն անցնելէ ետքը՝ մեր ազգայիններէ ոմանք ալ իրեն համամիտ երևցան ըստ գլխոց։ Գլխաւոր երկասիրութիւնն է Հ. Բարսեղ Վ. Սարգիսեանի Ագաթանգեղոս և իր բազմադարեան գաղտնիք կոչուածը, և Տաշեան Հ. Յակովբոս Վ.ի գրութիւնը Ագաթանգեղոս առ Գէորգայ Ասորի եպիսկոպոսի, ու գրեթէ միևնոյն տարին (1892) հրատարակուած, մէկն ի Վենետիկ և միւսն ի Վիէննա։

Բիւզանդ փաւստոսի վրայ տեսութիւն մը հրատարակեց իւր Քննասէր թերթին մէջ՝ Նորայր Ն. Բիւզանդացի։ Ուրիշ գրութիւն մ'ալ՝ Եղիշէ Մատաթեան Շուշեցի բանասէրը, և տպագրեց ի Վիէննա։ Հարկաւ յամենայնի չէին զուգընթանար երկու բանասիրաց կարծիք։ Ասոնց վրայ աւելցաւ նաև Ստ. Մալխասեանց քննադատութիւնը, որ տպագրած ալ է Ամսօրեայ Հանդիսի մէջ, թէպէտև առանց խմբագրութեան վրայ ըլլալու բովանդակ պատասխանատուութիւնը։ — Գերմանացին Գելցէր որ իր ուսումնասիրութեան նիւթ ըրաւ եկեղեցական մասը և մասնաւոր գրուածք մը հրատարակեց փաւստոս Բիւզանդ կամ Հայկական եկեղեցւոյ սկզբնաւորութիւնը, որոյ հայ թարգմանութիւնը տպագրեցաւ Բազմավէպ ամսաթերթի (1896) մէջ։

Եզնիկ այս նորութեան փափաքէն զուրկ չի մնաց։ Ինչուան ետքի տարիներս՝ թէ՛ ազգայինք և թէ՛ օտարք գովութեամբ խօսեր էին վրան արժանաւոր պատուով այս թարգմանչաց գլխաւոր անձերէ միոյն վրայ. մինչ իմացուեցաւ և գրուեցաւ որ գրեթէ կէս դար յառաջագոյն արդէն բանաքաղ մ'ըլլալը կը գիտցուէր և իմաստասիրութիւնն իրենը չէր, այլ յոյն վարդապետի մը, Մեթոտիոսի։ Թերևս աւելի խոհական սեպուէր հիմկու հի-

մայ ըսել՝ թէ ինչպէս Եպիփանու ասանկ ալ Մեթոտիոսի նմանութիւնք և իւր ուղղութիւնք կան Եզնըկայ իմաստասիրական գրութեանց մէջ։

Նոյնպիսի գրուածներ, և անոնց ընդդիմախօսութիւնք երևեցան նաև Կորեան, Եղիշէի և այլոց վրայ։

***

Բայց մեծ խնդիրը Խորենացւոյ անձին և անունովը մեզի հասած մատենագրութեանց, կամ աւելի պատմական երեք գրքին վրայ եղաւ։

Գրեթէ երկու հարիւր տարիէն աւելի է Եւրոպիոյ և անոնց իմաստնոց ծանօթանալը Խորենացւոյն պատմութեան և աշխարհագրութեան, և ամէն օտար հայագէտք՝ տեսնելով ալ որ յամենայնի զուգընթաց չէ յոյն և հըռովմայեցի կամ լատին պատմագրաց, այնու հանդերձ, ըսեր ենք արդէն, չէին պակսեր իրենց մեծարանքէն. և թէպէտ Ֆրէրէ, Լաքրոզ ու ժամանակ անցնելէն ետքը մասամբ նաև Սէն Մարդէն գտնուեցան տարակուսողք և իրենց տարակոյսը յայտնողք, բայց ընդհանրապէս գիտութիւնը ճանչնալով ալ Խորենացւոյն թերի կողմերը՝ ուսկից ազատ չէ որ և իցէ հին պատմիչ մը, յայտնի կուսակից էին իրեն։

Խորենացւոյն դէմ ելլողներուն մէջ ի մեր դարու առաջին կրնայ սեպուիլ Գուդշմիդ, որ Ագաթանգեղոսի հարազատութիւնը ժխտելէն զատ, ուզեց նոյն փորձը ընել նաև Խորենացւոյ վրայ։ Էմին, Գարոնեան և Սարգսեան ջանացին գրուածներով իրեն կարծեաց դէմ մաքառել. բայց ինքը ոչ միայն ետ չկեցաւ, այլ նաև օտար հայագիտաց և ազգային բանասիրաց մէջ իրեն հետևողքն ունեցաւ։ Ասոնց մէջ նշանաւոր եղաւ արդի ուսուցչապետն հայերէն լեզուի ի Փարիզ, ի դպրոցի արևելեան կենդանի լեզուաց, Ա. Կարրիէր, մասնաւոր գրուածներով, որ հայերէն ալ թարգմանուեցան և ազգային Մատենադարանի հատորներուն մէջ ալ դրուեցան։

Ա. Կարրիէրի այս երկասիրութիւնք հետեւեալ խորագիրքը կը կրեն, որոնց մէջ կը ջանայ ցուցնել որ Խորենացին առ առաւելն ութերորդ դարու բանաքաղ մը կրնայ համարուիլ և ոչ այլ ինչ։ A. Carrière nouvelles sources de Moïse de Khoren.

Supplément.

Ասոնց վրայ աւելցուց Ա. Կարրիէր նաև հետեւեալը. La Légende d'Abgar dans l'histoire d'Arménie de Moïse de Khoren, 1895.

Միաբանը կամ Գ. Տէր Մկրտիչեանց որ զանազան ուսումնասիրութիւններ հրատարակած է Խորենացւոյ և իր պատմական գրոցը վրայ յէջմիածին։

Գր. Խալաթեան՝ Մոսկուայի Լազարեան ճեմարանին հայերէն լեզուի ուսուցչապետը՝ գրեթէ Կարրիէրի կարծիքն ու ենթադրութիւնն ընդունած է վերջին հրատարակութեամբն ի ռուս լեզու, և մագիստրոսութեան ատիճանն ընդունած ի պետութենէ։

Յովհաննու Մանդակունւոյ և իրեն ընծայուած գրուածոց վրայ ալ քննադատութիւն մը երևցաւ 1895ին մեր տպարանէն, Հ. Բարսեղ Վ. Սարգսեանի, որուն տեսութիւնք տեղ տեղ կը տարբերին մեր գրածներէն։

Ինչպէս յառաջ ըսինք, ամենքն ընտիր աշխատութիւններ են, բայց ունին կամ կրնան ունենալ իրենց պաշտպանները, կամ հակառակ կարծիք ունեցողները։ Վերջին կարծիքը դեռ ըսուած չէ. անոր համար կարևոր սեպուեցաւ պահպանողական սեպուած երկասիրութեանս նոր տպագրութիւնը։

Հ. Գ. Զ.

*

# ՊԱՏԿԵՐ ՀԱՅ ԴՊՐՈՒԹԵԱՆ

## ԸՍՏ ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ԴԱՐՈՒՑ

---

### ԱՆԳԻՐ ԺԱՄԱՆԱԿ



### ԳՐԱՒՈՐ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

*Յառաջ քան զգիւտ կամ կիրառութիւն հայ տառից։*

## ԴԱՐ Դ

Չորրորդ դարուս մէջ նշանաւորք 'ի վանորայս Հայաստանի. Գլակայ վանք 'ի Տարոն գաւառի, այսպէս կոչուած յանուանէ Զենոբայ զոր սուրբն Լուսաւորիչ առաջին առաջնորդ կարգեց մենաստանին՝ զոր կառոյց։ Կոչի նաեւ սուրբ Կարապետ յանուն սրբոյն շինուած սուրբ եկեղեցւոյն, ուր նոյն սուրբ Լուսաւորիչ ամփոփեց զնշխարս ոսկերացն։ Իննակնեան վանք ալ ըսուած է՝ նոյնչափ թըւով հոն բղխած բարեհամ աղբերաց համար։ Պատմութիւն ազգիս կ'աւանդէ՝ թէ հեթանոսութեան ժամանակ հոն բարձրացած էին կրկին բագինք եւ արձանք Գիսանէ եւ Դեմետր երկու եղբարց, որք Վաղարշակայ թագաւորութեան ժամանակ յաշխարհէն Հնդկաց փախըստեայք ի Հայաստան, որդւոց որդի ժառանգութեամբ 'ի պարգեւի մասին ընդունեցան յարքայէ զերկիրն Տարոնոյ. եւ մահուընէն ետքը դասեցան ընդ աստուածս, զոհս՝ պաշտամունս եւ բագինս ընդունելով։ Երկիցս երկրաշարժէ վնասեցաւ Գլակայ վանք. մետասաներորդ դարուն ալ՝ Իսլամաց օրէնսդիր Մահմետի քեռորդւոյն Ապտիւրրահմանի ժամանակ՝ զօրք Պարսից այրեցին քան-

դեցին ու հրոյ ճարակ տուին Մագիստրոսի ձեռքով եղած շինութիւնքը 'ի նոյն վանս ։

Ղազարու վանք, զոր նոյն սուրբ Լուսաւորիչ կառոյց, հոն ամփոփելով գնչխարս սրբոց առաքելոցն Պետրոսի և Անդրէի. և յանուանէ նախկին առաջնորդի տեղւոյն կոչեցաւ Եղիազարու վանք, և ապա խանգարմամբ Ղազարու ։ Ատեն անցնելէն ետքը Սուրբ Առաքեալք անունը կրեց, և ուրիշ 'ի համանուն վանօրէից որոշուելու համար՝ ընդհանրապէս կը կոչի Տարօնոյ կամ Մշոյ սուրբ Առաքեալք ։ Մեծաշէն ու պարսպապատ մենաստան, երկու ժամու հեռի ի Մուշ քաղաքէ, և ունի կրկին եկեղեցիս ։ Լուսաւորչի կ'ընծայուի դարձեալ՝ Էջմիածին, ու անոր մօտաւոր 'ի պատիւ սրբուհեացն Հռիփսիմեայ և Գայիանեայ կառուցուած մենաստանք, Աղջոց, Հոգեաց և Ձորոյ վանաց շինութիւնն կամ պայծառութիւն և բարեկարգութիւն ։ Անուանի էին դարձեալ Մատրավանք կամ Մարգարէանոց սրբոյն Յովհաննու ըստ Բիւզանդայ, Տիրաշինի ուխտ, Թանահատք, Տիրանաշէն կամ սրբոյն Ներսիսի վանք, և այլն[1] ։



1. Հեղինակաց վրայ խօսելու ատեններս՝ իրենց ընծայուածներն նշանակեր ենք առանց հարազատութեան կամ անհարազատութեան նայելու ։

## ԴԱՐ Ե

*Յետ գիւտի հայկական նշանագրաց։*

Դարուս մէջ նշանաւոր դպրոցքն էին սրբոյն Սահակայ և Մեսրովպայ ձեռքով բացուածներն թէ՛ բուն Հայաստանի և թէ Յունաց բաժնին մէջ եղածներն։ Ի վանորայս՝ Նարավանք, Այրի և Ոչխարաց վանք։

սիսի Քերթողահօր, յաղագս վարժողական ուսմանց, իմաստութիւն երգողական տառից ըստ այբուբենից.

Ցիշատակագրութիւնք այսր աղագաւ. « Եւ սոքա ի յունական տանէն ի ճարտասան իմաստից ի Հռոմ քաղաքէն բերեալ ընծայեցին մեզ զգիրս։ Բան Ա. Այբ է սկիզբն առաջին լուսոյ արարչութեանն և Նուազում խաւարի »։

Արտաքնոցն մեկնութիւն կամ Արտաքնոց բնաւքն, թարգմանեալ և մեկնեալ. (Մատ. Էջմիածնի)։

Հարցուածք իմաստասիրականք և իմաստասիրելի. « Զի՞նչ է մարդ »։

Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտելի.

Լուծումն նոյն գրոց.

Մեկնութիւն Պերիարմինեայ.

Վեց սկզբանց և Պերիարմինեայ.

Վերլուծութիւն Արիստոտելի կամ ԺԴ. գլխոյ.

Լուծումն նոյն գրոց.

Վերլուծութիւն Պիտոյից և Էակաց.

Այս Էակք գրոց համար կը կարդանք յիշատակարանի մը մէջ. « Ես Գուրգէն քարտուղարս Հայոց մեծաց և սուրբ Թագաւորացն Պատոյապաթար, ստացող եղէ գրոցս այսմ. բայց զարմանալի է ի նախկին յիշատակի գրոցս այսմիկ թէ գրեցաւ գիրքս այս Էակաց թարգմանեալ ի յունաց ի հայ, հրամանաւ տեառն Յովաննիսի Հայոց կաթողիկոսի Գաբեղենացւոյ ի ԻԵ թուականութեանս Հայոց »։

Գիրք Էակաց. « Ի քանիս բաժանի էակն »։

Վասն մարդեղութեան Քրիստոսի, և ընդդէմ հերձուածողաց. կամ բան հաւատոյ ի մարմնաւորութիւն Քրիստոսի. (Լազարեան լս. թիւ 32։ Կիրակոս յիշէ զճառն ի Ծնունդ Քրիստոսի)։

Ի Վարդավառն. « Այսօր զուարճալի և գերափայլ »։

## ԴԱՐ Զ

Այս դարուս մէջ հռչակաւոր էր ուսմամբ Սիւնեաց վարդապետարանը ։

Լ



## ԴԱՐ Է.

Եօթներորդ դարուս նշանաւոր ուսումնավայրքն էին 'ի Հայս՝ Վարդիկ հայր կոչուած վարդապետարանը յԱրշարունիս, Մայրոյ վանք, Դպրեվանք՝ 'ի Շիրակ, և Խաչկայ վանք՝ 'ի Կարին։

**

## ԴԱՐ Ը

Դարուս նշանակութեան արժանի դպրոցներն էին Մա-քենաց կամ Մաքենոցաց մենաստանը 'ի Գեղարքունիս, Ջրեսկ կոչուած սուրբ ուխտը 'ի Շիրակ, Միհրներսեհի վանքը կամ Ջրվշտիկ, Թանահատք 'ի Սիւնիս, Հերմո-նավանք, Արտենից վանք, Գնդայի վանք 'ի Վայոց ձոր, Հոռոմայր կամ Հոռոմոսի վանք 'ի Լոռի:

Եկեղեցւոյ հիմնարկէք. «Ժողովէ աստուածային քահանայապետն». 488
Նորաշէն եկեղեցւոյ օրհնութիւն. «Մտանեն երեկոյեան»:
Եկեղեցւոյ նաւ. «Բարեբանեցէք». (Ի Ծաւընտրի Մխիթ. Վիէնն. մակագրի այսպիսի ինչ. «Նաւակատիք սուրբ կաթողիկէ Եկեղեցւոյ, Տեառն Յովհաննու, ի Տատրակն որ ի յՍրգս երգոյն օրհնակեալ ի սուրբ եկեղեցի»: Գուցէ որիշ ինչ:
Յաղագս երեկորին պաշտամանց:
Կանոնք. 486
Ծաղկաքաղ համարագիրք երգոց Դաւթի ի խնդրոյ Թէոփիլոսի աշակերտի:
Շարականք. 486
Անհարազատ կամ երկբայական գրուածներ. 488
Յովհաննու կաթուղիկոսի ընդդէմ այնոցիկ որ ապականեն զսուրբ խորհուրդն ի ձեռն խմորոյ և ջրոյ. «Ահա յառաջագոյն ծանուցեալ առաքելոցն»: (Մանազկերտցւոյն թուի):
Յովհաննու երանելւոյն Հայոց եպիսկոպոսապետի ապացոյց յերկուց բնութեանց առել զՓրկիչն կամ մի բնութիւն. «Եւ քանզի առաքելականն և մարգարէից կտակն ոչ ուրեք յիշատակին»: (Թղթոց գիրք): Ի ստորին լս. օրինակին նշանակի և իմաստ. այլ որպէս և ի կարգէ թղթոցն երեւի՝ սա երէց է քան զիմաստասէրն. և զի նախադասեալ է քան զթուղթն Բարգենի՝ գուցէ Մանդակունւոյն իցէ. զի կայ զկնի նամակն Յովհաննու Բ առ Սիւնիս. և այլ բանք յանուն իմաստասիրին. 488
Յովհաննու վարդապետի բանք, վասն պատրաստութեան Միաշաբաթու (թուի Իմաստասիրին: Մատեն. Էջմ.):
Յովհաննէս Բ կաթուղիկոս, և այլ եպիսկոպոսունք, առ

## ԴԱՐ Թ

Իններորդ դարուս գլխաւոր վանորայքն և ուսումնատեղիքն էին Աղթամար, Խոտակերից վանք, Սևան, Տաթև։ Հռչակաւորագոյն էին վերջին երկուքը, յորոց Սևանայ համար կը վկայէ Ասողիկ. « Ի ծովուն Գեղամայ զկզզին Սևանայ բնակութիւն իւր արարեալ (Մաշտոցի) շինէ զեկեղեցին 'ի նմա որ Առաքելոյս անուանեաց. յոր միացեալ ժողովեցան եղբարց բազմութիւն կանոնագրութեամբ սահմանաւ սրբոյն Բարսղի, միակրօնք 'ի տան Աստուծոյ եղեալք. ստանալով զբազմութիւն գրոց սրբոց » ։ Իսկ Տաթևու կամ Ստաթէի վանից համար որ 'ի Սիւնիս՝ կը գրուցէ Ուռպելեան թէ Հայոց ՅԽԴ (895) թուականին 'ի ժամանակս Յովհաննու եպիսկոպոսի Սիւնեաց լեցուն էր այն մենաստանը « ծովամատոյց փիլիսոփայիւք երաժշտական երգոց. ճոխ էր և վարժարան դպրոցացն վարդապետական կրթութեամբն. Նաև արու-

եստաւորք՝ նկարչացն և գրողաց անհամեմատք»։ Կը յիշուին դարձեալ Փշոց վանք յԱղբակ, Կարմրակայ վանք 'ի Վան, Ահավանք 'ի Վասպուրական, Խաչի վանք յԱղթամար և յԱղբակ, և այլն։

# ԴԱՐ Ժ

Տասներորդ դարուս մէջ ծաղկեցան ուսմամբ յԱրշարունիս՝ Կամրջաձորոյ վանքը, Հնձուց կամ Կարմիր վանք 'ի Շիրակ, այսպէս կոչուած Ռոմանոս կայսերէն հալածուած միանձանց հոն ապաւինելուն համար. Նարեկայ վանք՝ 'ի Ռշտունիս, Մոկաց գաւառին մէջ Ապարանից եպիսկոպոսանիստ ուխտը, Ցախաց քար մենաստանը, զոր Ասողիկ «բարձրահռչակ և սուրբ առաքինաստան» կը կոչէ, Մարմաշէն կամ Մարմարաշէն սուրբ ուխտը և Հառիճոյ վանք 'ի Շիրակ։



1. Մեր առջի տպագրութեանց Պատճէնը կամ ցանկը կատարելագոյն ընծայելու գիտմամբ՝ Հ. Ալիշան Վարդապետի և այլոց երկասիրութեամբք օգտուեր ենք։

պէս հարցմանց. «Աստուածապաշտ և աստուածասէր իշխանիդ իմոյ»։ (Մատենագ. Էջմիածնի, թիւ 127։ Յիշէ և Ստեփանոս լեհացի)։

## ԴԱՐ ԺԱ

Նշանակութեան արժանի ուսումնավայրքն էին 'ի Ձորոյգետ՝ Սանահին և Հաղբատ, զորոնք Աշոտ Ողորմած թագաւորին կենակիցն Խոսրովանոյշ կանգնեց, ու Բագրատունի Աղուանից Կորիկէ թագաւորը նորոգելով, եպիսկոպոսանիստ ըրաւ զՀաղբատ, որուն մատենադարանը՝ ամենափարթամ գանձարան կը կոչէ յիշատակագիր մը։ Անուանի էին դարձեալ Խնատի վանքը, Տրապիզոնի մօտ Ամենափրկիչ մենաստանը, և Արգինա՝ 'ի Շիրակ գաւառի Այրարատու։

# ԴԱՐ ԺԲ

Գլխաւոր ուսմանց տեղիք՝ Կարմիր վանք 'ի Փոքր Հայս՝ Մարաշու մօտ, Սեաւ լեառն 'ի Մարաշ, Գետկայ վանք յարեւելեան Հայս, Դրազարկի, Սկեւռայ վանք 'ի սահմանս Կիլիկիոյ, Գունեռոյ ուխտ, Գանձակ կամ Գանձասար յԱրցախ։ Թող նախընթաց դարուն մէջ յիշատակուած վանորայք։

Ի բանն, Զի որպէս փայլակն. «Մարգարէք և առաքեալք»։
Մեկն. Յովբայ. (Վանական վարդապետ առնու ի սմանէ յետ ԻԴ գլխոյ, ասելով այսպէս. «Կատարեցաւ Եւսեբին, և այժմ Դաւիթ Վարդապետին որ Քոբայրեցի կոչիւր» ,. 702
(Սորա Թուի. Դաւիթ վարդապետի ասացեալ Պատճառք ճառից Ժողովողի Նիւսացւոյն)։
Նորին պատճառ վերջին ճառին. (մեկն. Հայրմերի). «Եկն և ի մեզ հոգեւոր խրախճանութիւն»։
Նորին պատճառ Պահոց գրոց Բարսղի։
Դաւթայ վարդապետի ի խնդրոյ աշակերտաց իւրոց, պատճառք Աւագ երկուշաբաթի. «Ցաւուրս նշանաւորս փող հարկանել օրինադրի»։
Պատճառ Նախախնամութեան գրոցն Փիլոնի. «Անզեղջ է Աստուած ի ձիրս».

Գրիգոր Ապիրատ.
Աղօթք ի խորհուրդ մարմնոյ և արեան. «Կացցէ ընդդէմ փրկական»։

(Գրիգորիս փոքր Վկայասէրն).

Գրիգոր Կլայեցի Գ. կաթուղիկոս.
Շարական սրբոյն Գրիգորի ի Գրիգորէ Մեծէ Կլայեցւոյ. «Գահապետ իմն ահաւոր»։
Յաղագս ծննդեան Աստուածածին Մարիամու. «Զամենաշնորհ և զճշմարիտ»։

Գէորգ Երզնկացի (քննելի ժամանակն).
Ի բանն. «Ո՞ արար զհրեշտակս իւր»։
Խրատ Մկրտութեան և Դրօշմի։
Խրատ Պսակի և մեկնութեան զարդուց հարսանեաց։
Համառօտ մեկնութիւն Աւ որսին։
Բանք ընդդէմ Երկաբնակաց։

Սամուէլ ծերունի. 702

Դաւիթ վարդապետ. 703
Համառօտ մեկնութիւն Եսայեայ, ի հոգեկիր մեկ-

***

## ԴԱՐ ԺԳ

Այս դարուս մէջ ծաղկած ուսումնարաններն՝ բաց 'ի նախայիշատակելոց, էին Սեպուհ լեառն կամ Մանեայ այրք, Դարանաղիք, զոր ծաղկեցոյց Երզնկացին. Խորանաշատ՝ յԱրցախ կամ յԱղուանս, զոր պայծառացոյց Վանական: Սուրբն Դադի՝ յԱրցախ, Տռիծոր՝ Վասպուրական աշխարհին մէջ. սուրբն Անդրէաս 'ի Գուգարս, մեծին Վարդանայ ուսումնարանը, Ղազարու կամ Առաքելոց վանք 'ի Տարոն:

Քարոզգիրք.

Տրամաբանութիւն.

Յովհ. Երզնկացւոյ տաղք: (Մատ. Էջմիածնի. 2238):

Աղօթագիրք. 765

Մեկն. ի վերայ ութ խորհրդոց Եւագրի.

ի Յարութիւն Քրիստոսի. «Այսօր յարեաւ Քրիստոս ի մեռելոց».

ի Տէր ո՞ հաւատաց. «Աստուածային խորհրդոյս հազարապետն».

Մեկնութիւն լուսաւոր գրոց Եւագրի.

Թարգմանութիւն Թղթոյ Վահանայ (Յովհաննու) եպիսկոպոսի Նիկիոյ, հրամանաւ առաջնոյ Լեւոնի թագաւորի ի Սիս.

Վասն հոգեւորական և սուրբ սիրոյ.

Վասն ապաշխարութեան. «Արդ պարտ է ամենեցուն».

(Սորա Թուղի և Ներբող ի սուրբն Ներսէս Շնորհալի).

(Մ՛ատ. Էջմիածնի).

Յովհաննու Երզնկացւոյ Տաղք.

ի Մեծացուցէն. «Հրաշափառական իմն զարմացմամբ».

Յաղագս մանկանց եկեղեցւոյ. «Օրհնեալ աստուծոյ անունն».

Յաղագս պատուելոյ կամ անպատուելոյ զբանն. «Ամենեցուն ժամանակ է».

ի խորհուրդ ծննդեան և մկրտութեան ասացեալ ի թագաւորական քաղաքն Սիս. «Ոմանք ըստ բազում պատճառաց».

ի բանն. «Ամենայն անձն որ ընդ իշխանութեամբ». յաւուրն յորում օրհնեցան ձիաւորք արքայորդին մեր Հեթում և Թորոս, և այլ մանգունք իշխանաց և որք յարքունական սպասաւորացն. «Յարաժամ բաղձանօք Նորալուրն և Նորատեսն և Նորագործն».

Ի սուրբ Պատարագին. Մատիք առ Տէր. «Զուարճանամ բարգաւաճեալքն յանձնաւորական հերձմունս»։

Ի բանն. Աքանչելի եղև գիտութիւն քոյ. խօսեցեալ առ տէր Գրիգոր վարդապետ և եպիսկոպոս յԱնաւարզա. «Զիմաստութիւն տեսականին և գործնականին»։

Ի խորհուրդ խաչելութեան. «Զբանին Աստուծոյ զխորհուրդ»։

Ցորդորակ ասացուածի եկեղեցւոյ, ի խնդրոյ Ստեփան վարդապետի Կիւռիկոսցւոյ. «Բայց զինչ քեզ ընծայս արժանաւոր»։

Քաղուած յԱնանիայի գրոցն որ ընդդէմ Թոնդրակեցւոցն. «Երկու են մեզ տեսակք եկեղեցւոյ»։

Գովասանութիւն կաթուղիկոսաց և եպիսկոպոսաց.

Կանոնք և սահմանք միաբանութեան եղբարց, որք աստուածային սիրով միաբանեցան յեղբայրութիւն միմեանց յԵզնկա ի ՉԻԹ. ուր հանդիպեալ է եւ Գրիգոր վարդապետ ծիրունի Սանահնեցի. «Բանն Աստուած բանիւ գոյացոյց զամենայն արարածս»։

Ցաղագս սրբոց Հռիփսիմեանց. (քաղեալ ի Մ. Խորենացւոյ). «Էր սուրբն Հռիփսիմէ».

Ցաղագս սրբոց հայրապետաց. և ի բանն. Ես եմ հովիւն քաջ. «Սիոնի մօրն և համայնից մօրն»։

Վասն Ննջեցելոց. Աստուած հաստատեաց զմարդն յանեղծութիւն. «Ամենայնի ժամ է և ժամանակ ի ներքոյ երկնից»։

Ի միամտութիւն աղաւնոյ. «Որ ինչ յաղագս խորագիտութեան օձի»։

Ի սուրբ Առաքեալսն. «Եկեղեցւոյ երկնի կենդանակերպք ճշմարիտք»։

Վասն Դաւթի մարգարէին. Եւ զղջացաւ Տէր. «Աստուածային բնութիւն պարզ է».

Ի բանն. Պատուական է մահ. « Յերիս որոշեալ բաժանին »։

Պատմութիւն Լուսաւորչի համառօտ. « Ի յԱգաթայ քաղն և մի նահապետ »։

Ի յարութիւն Ղազարու. « Արուեստք ամենայն յերիս որոշմունս »։

Ի խորհուրդ մեծի հինգշաբաթի, նորին ի մի ածեալ յարմարութիւն գրանս Վարդան վարդապետի և Վահրամայ կիլիկեցւոյ. « Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի... Աստուածայինքն իւրք են միայն »։

Ի բանն. Հոգի Տեառն ի վերայ իմ. « Նոքա որ իմա... գրոց զանձն »։

Յովհաննու վարդապետի ծործորեցւոյն արարեալ ի բանէն Եսայեայ որ ասէ. Հոգի... (Ի վերջաբանին հեղինակն ցուցանէ իւր զանձն աշակերտեալ Եսայի վարդապետի Նչեցւոյ, կամ ի խնդրոյ նորա արարեալ)։

Մեկնութիւն Սաղմոսի համառօտեալ ի Լամբրոնացւոյն. (ց' ՃՁ սաղմ)։

Աշխարհացոյց (յ'34 թիւ ցանկի գրչագրաց էնֆիէճեանց ի Թիֆլիզ)։

Ի ՃԽԸ սաղմոս. Տէր կարդացի առ քեզ. « Անգուգական և անբաղդատելի սիրոյն Աստուծոյ առ ազգս մարդկան, վկայ են երկինք »։

Ի ՉԸ սաղմոս. Քո են երկինք. « Արար Աստուած զեկեղեցի երկինք »։

Ի ԾԹ սաղմոս. Աստուած մերժեցեր. « Գիտել արժան է զի ոչ է յաշխարհի »։

Ի ԺԷ սաղմոս. Սիրեցից զքեզ, Տէր. « Երանական և անսահման բնութիւնն Աստուծոյ »։

Ի ԼԴ սաղմոս. Դատեա, Տէր. « Աստուածային երջանիկ և բարի բնութիւն »։

Ի ԾԲ սաղմոս. Ասաց անզգամն. « Որք մակացութեան բժշկութեան արուեստին են հմուտք »։

Առաջին աւուր ծննդեան. «Փառք ի բարձունս այսօր Աստուծոյ»։

Ամենայն սրբոց. «Անճառ խորոց քո գիտութեամբ»։

Թլփատութեան Տեառն. «Որ խոստացար տէր ի քեզ»։ (Տնագլուխքն. Կոստանդիանոս արքայ խնդրեաց)։

Գրիգորի Աստուածաբանի. «Հօգւոյն հնչման քընար և երգարան», (տնագլուխքն. Հեթում արքայ խնդրեաց)։

Թէոդորոսի ստրատելատի. «Գովեալ անուն զօրաւոր». (Տնագլուքն. Գրիգորիոսի ի Թէոդորոս Վկայ).

Գէորգայ զօրավարի. «Գովեալ գնդի զինուորաց». (Տնագլուխքն. Գրիգորիոսի առ Գէորգէոս վկայ)։

Թէոդորոսի զօրավարի. «Գովեալ անճառ խնդութեամբ հայր գթութեան». (Տնագլուխքն. ի Թեւոդոր վկայ)։

Ղուկասու աւետարանչի. «Հայր փառաց Աստուած». (Տնագլուխքն. Հեթում արքայ խնդրեաց. Գրիգոր)։

Մատթէոսի աւետարանչի. «Խորհրդապէս հօր միածին»։ (Տնագլուխքն. Խնդրեաց արքայն Հեթում Գրիգորիէ)։

Անդրէի առաքելոյն. «Գթածիդ բարւոյ Հօր». (Տնագլուխքն. Գրիգորիոսի առ Անդրէաս առաքեալ)։

Նիկողայոսի հայրապետին. «Խնամոց քոց միշտ ներգործութեամբ». (Տնագլուխքն. Խնդրեաց արքայն Հայոց Հեթում)։

Մերկեռիոսի զինաւորին. «Խաղաղարար Նոր թագաւոր». (Տն. Խնդրեաց արքայն Կոստանդին)։

Շարական Հայրապետաց (13 տուն). «Հիման յառաքեալս Հօր յայտնութեամբ արկեալ շինողք ի վերայ հաստատուն»։ (Գլխատառք. Հեթմոյ ի Գրիգորէ)։

Յղութեան Սուրբ Աստուածածնի. «Կարողաբար զօրութեամբ»։

Ընծայման. «Գովեմք զհայրըդ գթութեան»։

Ոտանաւորք.

Թուղթ առ Հեթում Բ. թագաւոր. 779

Կոստանդինոս Սրիկ. (ըստ ոմանց Սորեկ).

Գովեստ սուրբ Աստուածածնի. ըստ անուան ոգողին անդրադարձութեամբ. «Գերահրաշ ծաղիկ»։

Տաղ գալստեան տեառն իշով յԵրուսաղէմ. «Նորահրաշ Նոր երկինք եղև այսօր հինն Երուսաղէմ»։

Յարութեան. «Կանանցն կանխեալ եկին ի գերեզման»։

Յովհաննու Մկրտչի. «Կարապետին և Մկրտչին տօնեմք այսօր»։

Փոխման Աստուածածնի. «Կոյս անապական սուրբ Աստուածածին»։

Ծննդեան Քրիստոսի. «Կոյսն ծնանէր յայրին, կայր և զարմանայր»։

«Կոյսն անապական և անախտ ծննդութիւն»։

«Հրճուիմք այսօր մեք հոգեպէս»։

Եկեղեցւոյ. «Նոր նորոգեալ կենաց մերոց»։

Մարտիրոսաց և Կուսանաց. «Այսօր նորահրաշ տօնիւ ցընծան»։

Գէորգայ զօրավարին. «Ի հանդիսական տօնիս երգելով ըզերգս».

Ներսիսի մեծի. «Հընչմամբ ձայնի բերկրանաց»։

«Ի դասս հրեղինացն յօդեալ»։

Մկրտութեան. «Քրիստոս բանդ հօր անժամանակ»։

Գանձ ի ծնունդ Քրիստոսի. «Կենդանահոս աղբիւր լուսածին»։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՓՈՔՐ ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

## ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

### ՈՐՈՑ ԳՐՈՒԱԾՔԸ ՉՑԻՇԱՏԱԿՈՒԻՐ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ԴՊՐՈՒԹԵԱՆ



## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ



*Հայկական Դպրութիւնն համեմատուած ուրիշ հին ազգաց գրականութեան հետ ։ — Անոր աղքատութեան պատճառները ։ — Մեր մատենագրութեան բաժանումը քանի դարուց ։*



ԱԶԳԱՅԻՆ Դպրութեանց կամ Գրականութեան պատմութիւնը՝ նոյն ազգին սիրտն ու հոգին կրող ամէն անձին մտադրութեանն և ուսման արժանաւոր է. վասն զի ինչպէս իրեն քաղաքական պատմութիւնը՝ ընտանի կենացը ճշգրիտ և հաւատարիմ պատկերն է, սոյնպէս ալ մատենագրականը գրաւորականին. և թէ որ առաջինը զինուց և նիւթական ուժոյն զօրութիւնն ու չափը կը ցուցընէ, երկրորդը՝ ազգի մը անցեալոյն մէջ ունեցած մտաւորական ուժին նկարագիրն է, որ ապագային համար մեծ ազդեցութիւն ունի ։

Դպրութիւնն կամ մատենագրութիւնն երկու կերպով կրնայ մտածուիլ. մէյմը իբրև գրաւոր երկասիրութիւնք՝ զանոնք առանձին քննելով նկատմամբ իրենց ոճոյն կամ գրութեան կերպին. մէյմըն ալ՝ նոյն երկասիրութեանց առթից կամ հեղինակներուն վրայ՝ պատմական ու կենսագրական ծանօթութիւններ աւանդելով:

Այս երկու նկատմամբ ալ՝ մեր մատենագրական պատմութիւնը եթէ ոչ բոլորովին աղքատ, սակայն և ոչ այնչափ ճոխ կրնայ ենթադրուիլ: Քաղաքական ու եկեղեցական պատմութիւննիս ճոխ է, իրաւամբք հետաքրքրական ու ընդարձակ դէպքերով. բայց ոչ նոյնպէս, ինչպէս փափաքելի էր, նաև ազգին մտաւորական պատմութիւնն կամ անոր թողած գրաւոր արտադրութիւնք:

Հայերէն դպրութեանց այս չքաւորութիւնն աւելի զգալի կ՚ըլլայ՝ թէ որ բոլոր ուսումնական աշխարհի իրաւացի զարմանքն յաճախող յոյն և լատինական մատենագրութեանց հետ ուզենանք բաղդատել. վասն զի անոնց մէջ տեսնուած փայլուն հանճարը, հմտութիւնն, կիրթ ախորժակն ու բուն մատենագրական ոճը՝ ընդունայն է փնտռել, կամ յուսալ գտնել մեր մէջը. այլ ընդհակառակն մեր դպրութեանց պատմութիւնն և ուղիղ քննադատութիւն պիտի ցուցընեն՝ թէ մերոնց մէջ անոնք որ բաւական չի սեպելով ազգային նեղ ու ամփոփ շրջանակ մը, իրենցմէ աւելի բարգաւաճ ժողովրդոց մտաւորական ուժոյն և արտադրութեանց մէջ ջանացեր են փնտռել առատագոյն ճարակ և սնունդ մը, և անոնց հետևողութեամբն ըրած են իրենց ուսումը՝ անոնք աւելի ընտիր երկասիրութիւններ թողած են: Թարգմանչաց դարը՝ որ ազգային պատմութեան դարագլուխ կազմած է՝ բանասիրական նկատմամբ ապականեալ ու եղծեալ Յունաստանին մէջ իրեն ուսումն առած, մտաւոր դաստիարակութիւնն ընդունած և բարգաւաճ եղած է հմտութեամբ: Ո՛րչափ աւելի հարուստ և նախանձելի կըրնար ըլլալ մեր ոսկեղէն հինգերորդ դարու մատենագրու-

թիւնն՝ եթէ պերիկլեան հաշակապանծ ժամանակաց պէս աննման հանճարներէ և 'ի վեհագոյն վարժապետաց կըրթուէր Հայաստանի ուսումնատենչ և ուշիմ երիտասարդութիւնն։

Ուրիշ մեզի դրացի ժողովուրդներ ալ ունեցած ենք, որոնց հետ քիչ կամ շատ յարաբերութեանց մէջ գտնուեր է ազգերնիս։ Եթէ անոնց հետ ալ ուզենանք համեմատել մեր գրականութիւնն, այլևայլ մատենագրական ճիւղեր կրնանք նկատել՝ յորս մերոնք թերեւս առաւել յառաջադէմ և զարգացած համարուեին. անանկ ճիւղեր ալ՝ յորս անոնք զմեզ կը գերազանցեն։ Օրինակ իմն, պատմագրական մասով՝ գուցէ կարենանք վեր սեպուիլ ասիական ուրիշ շատ ազգերէն աւելի, ուր բանաստեղծականին մէջ՝ արաբացին, պարսիկն, և այլն, բուն բանաստեղծական անուան արժանաւոր նիւթեր արտադրած են, որոնց նմանը կամ ամենեւին և կամ խիստ քիչ կրնայ տեսնուիլ մեր քովը։



Ի՞նչ է արդեօք մեր մտաւոր և գրաւորական զարգացման այսպիսի նուազութեան մը պատճառը։ Ոմանք այս աղքատութիւնն առթող այլ և այլ դէպքեր մէջ կը բերեն. Նինոս մը կը յիշատակեն, որ իրմէ առաջ երեւցած բոլոր քաջերուն պատմութիւնը ջնջել կու տայ, որպէս զի ինքը միայն անմահանայ. և իրեն այս փառասիրութեանը զոհ եղած կը համարին նաեւ մեր հին դպրութիւնը. — Մերուժան մը՝ որ բոլոր Հայաստանի մէջ գտնուած գրքերը այրել կը հրամայէ. — Բարբարոսներ, որ պատերազմօք մատենադարաններ կը քանդեն, կ'այրեն ու կը փճացընեն. և անոնցմէ ամենէն աւելի ահաւորագոյն թշնամի մը, տգիտութիւնն՝ որ դարերով կը ծանրանայ Հայաստանի վրայ իրեն հետեւանք և արգասիք ամէն աղէտիւք։

Ասոնք, տարակոյս չկայ որ մեծամեծ պատճառներ կրնան ենթադրուիլ և ընդունելի սեպուիլ. բայց մատենագրական աղքատութիւննիս բոլորովին և միայն այդպիսի արտաքին դիպաց և աղիտից արգասիք չէ։ Նոյնպիսի և թերեւս աւելի դժնդակ հալածանք կրած են յոյն և լատինական դպրութիւնք. և սակայն այսօր բոլոր աշխարհքը իրենց սքանչելի գրուածներովը լեցուցած են. միայն փոտայ Մատենադարանն գիրքն այնչափ երկասիրութեանց կորուստ կը դնէ մեր առջեւը, որ արժանաւոր ցաւոց հետ մեծագոյն զարմանք մը կ՚ազդէ։

* * *

Ուսմանց և գիտութեանց՝ Հայաստանի մէջ պէտք եղած բարգաւաճանքը չունենալուն պատճառը, ոչ այնքան անոնց անյաջողութիւնն՝ որքան անսիրելութիւն մը եղած է. և այս անսիրելութիւնը՝ անոնց յառաջադիմութիւնը արգիլած։ Պէտք է խոստովանիլ, որ չունինք մեր պատմութեանց մէջ այնպիսի թագաւորներ՝ որ ուսմանց, գիտութեան և կրթութեան հալածիչք եղած ըլլան. սակայն քիչ ունինք այնպիսի իշխաններ ալ՝ որ անոնց յառաջադիմութեանը պէտք եղած փոյթն ու մտադրութիւնը երեւցուցած ըլլան։

Գանձք են ուսումն և գիտութիւնք. բայց անոնցմով հարստանալու համար պէտք է զանոնք մեզի մօտեցընել, իրենք իրենցմէ մեզի չեն մօտենար։ Վռամշապուհ՝ որ մեր պատմութեանց մէջ Պերիկլէս ու Մեկենաս մ՚է այս հնարքս գտաւ՝ իւր հայրենիքը բարգաւաճանաց և յառաջադիմութեան ճամբուն մէջ մտցընելու։ Առաջ դպրոցներ բանալ տուաւ Հայաստանի մէջ, ու սպասած արդիւնքը չտեսաւ անոնցմէ. անոր համար հարկ սեպեց ճանապարհորդութիւններ ընել տալ, և ուր աւելի կը տեսնուէր մտաւորական զարգացումն՝ հոն աւելի կեցընել և աշխատցընել տուաւ Թարգմանչաց դասը։ Պատմութիւնն

և արդիւնք իրաց՝ բարձրաձայն կը հռչակեն թէ ո՛րչափ օգտակար եղած է մեծ և ուսումնասէր Թագաւորին այս մտածութիւնը։ Հայոց ազգասիրական ոգին՝ զոր միշտ ունեցեր են, գիրենք քիչ մը կարճատես ըրած է (թէ՛ քաղաքական և թէ ուսումնասիրական բարգաւաճանաց մէջ), ըսած է անուանի արեւելագէտն Մոհլ. մենք կրնանքեւս յաւելուլ՝ թէ չափազանց խորշումն յամենայնէ որ իրենցը չէ՝ երբեմն գիրենք յետադէմ ալ ըրած է։ Հինգերորդ և երկոտասաներորդ դարերը բացառութիւն մը կրնան սեպուիլ. բայց այն նշանաւոր և բազմերախտ անձանց գրուածք և վարք կեցած են հաւատարմացընելու՝ թէ այն բացառութիւնը ընդհանուր ազգին համար չէր։

Այս գլխաւոր պատճառներէն զատ՝ մեր աշխարհին նիւթական դիրքն ալ ուսմանց յառաջադիմութեանը նըպաստաւոր եղած չէ։ Զորս կողմէն թշնամի ազգաց յարձակմանը նշաւակ ազգ մը՝ ՚ի հարկէ ինքզինքը պաշտպանելէն քիչ ատեն կ'ունենար նաեւ միտքը զարգացընելու. և չզարգանալու սովորած միտք մը՝ միշտ յետախաղաց ընթացք կ'ունենայ։ Այդ ընթացքն՝ կամաց կամաց տգիտութիւնը կ'ընդելացընէ, և ուսմանց օգուտն ու յարգը մոռցընել տալով՝ ինչուան զանոնք անօգուտ կամ վնասակար երեւցընելու վտանգին կը տանի։

Որ և իցէ յառաջադիմութիւն՝ քաջալերութիւն կը սիրէ. բարոյական ու նիւթական խրախոյսը՝ հանճարոյ գլխաւոր սնունդ տուող անհրաժեշտ տարրն է. անոր համար Ելլադա և Հռովմ սովորած էին իրենց իմաստունքը ժողովրդոց առջեւ հանելու, և անոնց խրախուսանօքը՝ ձեռք զարկած ասպարիզին մէջ ա՛լ աւելի յառաջադէմ ընելու։ Կը տեսնենք բոլոր Յունաստան ժողվուած՝ Հերոդոտեայ պատմութեան գիրքը մտիկ ընելու, զինքը գովելու և քաջալերելու. և այն գովութեանց ու քաջալերութեանց արդիւնք կ'ըլլայ Թուկիդիդէս։ Եսքիլեայ ողբերգութեանց յաջող ձեռնարկութիւնները Սոփոկլէս ու Եւրիպիդէս մը կ'երեւցընեն։

Նիւթական խրախոյս ալ յիշեցինք, և որ այնչափ դժուարագիւտ եղած է մեր նախնեաց քով։ Հերոդոտ՝ զոր հիմա ալ յիշատակեցինք, զինքը մտիկ ընող ու իր հանճարոյն վրայ զարմացող ժողովրդեան հաճութեամբն ու վճռով՝ տասն տաղանդ (54,000 ֆր.) վարձք կ'ընդունէր։ Գրեթէ իրեն ժամանակակից քերթող մը, Խերիլոս, որ Յունաց՝ Քսերքսեսի զօրաց վրայ տարած յաղթութիւնը հռչակեր էր, քերթուածին ամէն մէկ տողին համար մէյմէկ ոսկի ընդունեցաւ 'ի փոխարէն։ Մեծն Աղեքսանդր՝ որ Հոմերոս մը ունենալու համար՝ Բաբելոնէ աւարած բոլոր գանձն ու ճոխութիւնը կը խոստանար, դիմացը ելած խեղճ քերթողը խրախուսելու համար՝ յօրինած ամէն ընտիր տողին համար ոսկի մը կու տար։ Երբ Վիրգիլ՝ Հոկտաւիայի 'ի լուր կ'ընթեռնուր այն սրտաշարժ տողերը՝ որ կը յիշեցընէին զհէգն Մարկելլոս, որտին ցաւէն ու այլայլութենէն թալկացաւ ինկաւ. ու երեսուն տողերէ բաղկացած այն գեղեցիկ դրուագին ամէն տողին համար զատ զատ տասն մեծ սեստերտ (2,000 ֆր.) պարգևեց քերթողին (300 սեստ. = 60,000 ֆր.)։ Սեպտիմիոս Սեւերոս և Կարակալլա կայսերք՝ հաւասար առատաձեռնութեամբ վարձատրեցին Ոպպիանոս բանաստեղծը՝ յօրինած Որսոց և Ձկնորսութեան երկու քերթուածոց համար. իւրաքանչիւր տողին փոխարէն պարգևելով ոսկի ստատեր մը, և էին ըստ Սուիդասայ 20,000 տող։ Կը թողունք յիշատակել ուրիշ բազմաթիւ օրինակներ թէ հին ազգաց և մանաւանդ Նորոց մէջ, որք գիտցան և յաջողեցան փոխել 'ի գետ ոսկւոյ՝ իրենց գրչէն բղխած մելանը։ Ունեցե՞ր են արդեօք մերք ալ այսպիսի խրախոյս և քաջալեր։ — Պատմութիւնը ասոր հակառակը կ'արձանագրէ յաճախ տխուր գոյներով և լքուցիչ բանիւք։

Ուրիշ պատճառ մըն ալ կը գտնենք ուսմանց մեր մէջը ետ մնալուն։ Հին ազգաց շատին մէջ՝ ուսումը մենավաճառ մը պէս էր կրօնից պաշտօնեաներուն. և ինչպէս

Հաւատոյ վարդապետութիւնք՝ ասանկ ալ ուսումը անոնցմէ կը ծաւալէր ժողովրդեան մէջ։ Վախ մը՝ չէր համարձակեցըներ զիրենք առատ ըլլալ այդ մատակարարութեանը մէջ, որպէս զի չըլլայ թէ կիսկատար ուսումը՝ կրօնից անտարբեր կամ թոյլ ընէ ժողովուրդը։ Այս դրութեան հետեւող կ'երեւնայ նաեւ մեր ազգը. և անոր արգասիք կը սեպենք մեր մատենագրաց շատին՝ եկեղեցական դասուն վերաբերիլը։ Անանկ որ եթէ կարելի ըլլար՝ հեթանոսական ժամանակներէ մնացած մատենագրութեան փափաքելի երկասիրութեանց գիւտին հանդիպիլ, հաւանական պիտի ենթադրէինք՝ որ հեղինակաց մեծագոյն մասը քրմաց դասակարգին պիտի վերաբերէին։

* * *

Բայց իւր աղքատութեամբն ալ՝ պատուական է, և պէտք է ըլլայ, մեզի համար մեր ազգային մատենագրութիւնը։ Եւրոպացիք իրենց նախնական վայելչութեան մէջ՝ անոնց պարտական ենք. և իմաստունն Եւրոպա մեզի հետ երախտապարտ է՝ անոնց հմուտ գրչին արդիւնք ընտիր պատմական երկասիրութեանց, և մանաւանդ ընտրելագոյն թարգմանութեանց համար։

Անոնցմէ մին, — մեր արդ իսկ յիշատակած անուանին Մոհլ, — Գաղղիոյ իմաստնոց ասիական կաճառին մէջ կը վկայէր՝ թէ « Հայոց մատենագրութեանը պատմիչներու կողմանէ ինչ աստիճանի հարուստ ըլլալը՝ քաջայայտ է ամենուն։ Քրիստոսի թուականին չորրորդ դարէն 'ի վեր՝ անընդհատ շարք մը ունի պատմագրաց. անկէ 'ի զատ՝ Հայոց երկրին դիրքը պատճառաւ՝ իրենց մատենագրութիւնն ալ մասնաւոր յատկութիւն մը ունի։ Հայք օտար ազգաց վրայ ոչ երբեք մեծ ազդեցութիւն մը ունեցած են. բայց դժբաղդաբար միշտ վերաբերութիւն մը եղած է անոնց մէջ ու իրենց դրացի աշխար-

հակալ ժողովրդոց։ Ատենով Պարսից հպատակ եղան. Հռովմայեցւոց և Յունաց ձեռքը անցան, Արաբացւոցմէ նուաճուեցան, իրենց երկրին մէկ մասը խաչակրաց իշխանութեան կամ ազդեցութեան տակ ձգեցին, Մողոլներէն ու Թուրքերէն հարստահարեցան։ Իրենց տարեգրութեանց հին մասին մէջ պահուած են՝ Սասանեանց ժամանակը գրուած ու կորսուած գրքերու կտորներ։ Եւ որովհետև Պարսից հպատակ էին, իրենց կառավարութենէն ու Պարսից հետ ունեցած կռիւներէն՝ Պարսկաստանի վրայ այնպիսի թանկագին տեղեկութիւններ կ՚առնունք որ ուրիշ տեղ չեն գտնուիր [1] »։

* * *

Մատենագրական պատմութիւննիս երկու գլխաւոր մասի բաժնած ենք. Հին և Նոր մատենագրութիւն։

Հինը՝ մէյմը Անգիր ժամանակաց մատենագրութիւն, քանի որ ազգը իրեն մասնաւոր գիր, կամ հիմակուան գործածուած գրերը չունէր. մէյմըն ալ Գրաւոր։ Գրաւոր մատենագրութիւննիս ալ երկուքի կրնանք բաժնել. մէյմը սրբոյն Մեսրովպայ ձեռքով ազգային գրոց գիւտը չեղած, մէյմըն ալ անկէ ետքը։ Առջինին կը վերաբերին չորրորդ դարուն մէջ երեւցած մատենագիրք, և երկրորդին՝ սրբոյն Մեսրովպայ գիւտէն մինչեւ 'ի Յովհաննէս Երզնկացի։

Երզնկացիէն ետքը լեզունիս ամենամեծ կերպարանափոխութիւն մը կը կրէ. անանկ որ եթէ Նոր մատենագրութիւնը իւր ամէն փոյթն ու ջանքը գործածած՝ չըլլար՝ հայերէնը իւր նախկին վիճակին մէջ մտցընելու, բոլորովին պիտի աղաւաղեր, և թերեւս անհետանար՝ ուրիշ լեզուաց մէջ ընկղմելով։ Անոր համար եթէ Նոր

1 Mohl, secrétaire de la Société Asiatique de Paris. Rapport sur les travaux du Conseil de la Société, pendant l'année 1855—56.

մատենագրութիւնը հնոյն պարտական է իր գոյութիւնը, հնոյն ալ պահպանութիւնը նորոյն ջանիցը արդիւնք է։

Բայց հին գրաւոր մատենագրութիւններս ալ՝ ամէն ժամանակ նոյն կերպարանքը ունեցած չէ. երբեմն ծաղկած՝ ու երբեմն ալ անչքութեան դարեր ունի։ Մեր գրուածքը աւելի պատմական ըլլալով, ընթերցողաց և սորվողներու դիւրութեանն համար զատ զատ դարերու բաժնեցինք, և ամէն մէկ մատենագիր՝ ինչ դարու որ կը վերաբերի, հոն դրինք իրեն գրաւոր վաստակոց յիշատակութեան հետ նաև վրան ամփոփուած կամ մեզի ծանօթ բանասիրական կամ կենսագրական տեղեկութիւններն։

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՆՇԱՆԱԳԻՐՔ

---

*Նշանագիրք ընդհանրապէս և անոնց կարեւորութիւնն։ — Հայ ազգին նախնական տառերը։ — Բեւեռաքանդակ արձանագրութիւնք։ — Անոնց գոյութիւն 'ի Հայաստան և հաւանական հետեւանք։ — Շամիրամ և իր արձանագրութիւնք 'ի մերում աշխարհի և այլուր։ — Զենդ, ասորի և յոյն տառք, և անոնց գործածութիւն առ մերսն։ — Համառօտագիր նշանակք։ — Յատուկ ազգային տառից զգալի պէտք։ — Վռամշապուհ, Սահակ և Մեսրովպ։ — Մեսրովպեայ ջանք 'ի գիւտ հայկական տառից։ — Կորիւն, Խորենացի և Փարպեցի և անոնց խօսքերը։ — Պատմութիւն գիւտի տառից։ — Այլեւայլ խնդիրք, կարծիք և դրութիւնք սոյն նկատմամբ։ — Դանիէլ ասորի և իր տառերը։*

Խօսքը՝ որով մարդուս խորհուրդները ուրիշի մը կը հաղորդուին, հեռաւոր անձանց չեն կրնար հասնիլ. խօսուած վայրկենին կը սահին կ'երթան, ու խօսողին ետեւէն եկողներուն կամ չլսողներուն համար ամենեւին անօգուտ կամ անպիտան կը մնան։ Այս երկուքին ալ դարմանը գիրը միայն կրնայ ընել։

Գաղափարաց բացատրութիւնք՝ նախնական մարդկային ընկերութեան մէջ միշտ անկատար կերպով՝ ու յաճախ խորհրդաւոր նշանակներով կ'ըլլային. որով՝ նմանելով մանկութեան, յառաջ քան գրել՝ սկսած պիտի ըլլան նկարել, կամ ինչպէս սովոր ենք ըսել, աչքի հետ խօ-

ռիլ։ Ասանկ՝ իրարու խառնուած երկու ձեռք կը տեսնենք որ առ հնագոյն ազինս կը նշանակէին զխաղաղութիւն կամ զմիաբանութիւն։ Նետք՝ զպատերազմս, աչք մը՝ զաստուածութիւն կամ զնախախնամ տեսչութիւն. դաւազան՝ զթագաւոր կամ անոր իշխանութիւնը, և այլն։ Այս ձեւերն իրարու հետ միացընող այլեւայլ նշանք՝ բաւական կրնային ըլլալ պարզ իմաստ մը բացատրելու համար։

Սակայն ատոնք իմաստից բաւական արտայայտիչք չէին. գրութեան այս կերպով՝ խօսքը որոշ և ճիշդ չէր կրնար թարգմանուիլ. ուստի և ոչ յոյժ գոհացուցիչ, և զայն ընդհանուր ընելու ոչ պատկանաւոր։ Մարդիկ, քանի որ ընկերութիւնը կ՚ընդարձակուէր, որով և իրարու հետ ունեցած հաղորդակցութեանց կարեւորութիւնք, հեռաւորաց հետ ալ խօսելու անհրաժեշտ հարկը իմացան և տեսան. և թէ պէտք էր յիշել, և ուրիշներուն մտաց մէջ ալ տպաւորել՝ ինչ որ հարկ և օգտակար էր չմոռնալ։

Այս անհրաժեշտ հարկին, ինչպէս ըսինք, արգասիք և հետեւանք է գիրը, որ մասնաւոր նշանակներով կը ձեւանայ, և որուն ամբողջութիւնը այբուբենք կոչուած են, և յունական բառով ալփաբետք։

*
* *

Ո՞րն է Հայոց ազգին նախնական գիրը. կամ թէ մեզի արդէն ծանօթ տառերէն զատ կամ յառաջ՝ ունեցա՞ծ է. ուրիշ տառեր կամ այբուբենից գործածութիւն։— Մեր հետաքննութեանն ու տեղեկութեան արժանաւոր խնդիր մը. տոհմային մատենագրութեան սնունդն և յառաջադիմութեան գլխաւոր տարրը, անոր պատմութեան մէջ հարկ է որ իր արժանաւոր տեղը գրաւէ։ Այս դիտմամբ կը համառօտենք մեր այբուբենին և անոր գիւտին վրայ ինչուան առ մեզ հասած տեղեկութիւններն։

Հայոց ծանօթ պատմութիւնը կ'աւանդէ թէ ազգերնիս՝ ազգ ձեւանալէն ու կարգաւորեալ լեզու մը ստանալէն շատ ետքը հնարած ըլլայ իր գիրը։ Բայց որովհետեւ անկարելի է անգիր քաղաքականութիւն մը ենթադրել՝ մեր պատմութեանը այն ընդարձակ միջոցին մէջ որ յառաջ քան զգիւտ գրոյն, հաւանականաբար մերոնք ալ իրենց յատուկ գրերը ունենալէն յառաջ դրացի ազգաց տառերը գործածելու սովորութիւնն ունեցած պէտք է ըլլան։ Մեր այս կարծեաց երաշխաւորութիւնը՝ կրնանք կերպով մը հին պատմութեանց և արձանագրութեանց մէջ փնտռել։

Ասիոյ պատմութիւնը, և մեր ժամանակաց հմուտ հետազօտութիւնք կը սովրեցընեն թէ նոյն ընդարձակ գաւառները գրաւող յաղթական ազգեր՝ իրենց յատուկ գրութեան կերպ մը ունէին. որով սովոր էին քանդակել արձանագիրս, և որուն մեր ժամանակաց գիտնականք սեպաձեւ կամ բեւեռագիր անունը կու տան։ Այսպիսի արձանագրութիւնք՝ փորագրեալք 'ի վերայ ժայռից, քարանց, վիմաց և թրծուն աղիւսներու՝ գտնուեցան ու կը գտնուին Եփրատայ ու Տիգրիսի ափանց վըրայ՝ ուր էին երբեմն Բաբելոն և Նինուէ՝ հռչակապանծ քաղաքք. յաշխարհին Պարսից՝ 'ի Ստահր և 'ի մերձակայս հնոյն Պերսեպոլեայ և 'ի Շօշ, 'ի Համատան՝ կամ նախնոյն Եկբատանայ մօտ, Էլվէնտ լերանց վրայ և յՈրոնդէս. 'ի Կրմանշահ՝ Բիսիթունի կամ Բիհիսթունի ժայռից վրայ, 'ի հիւսիսակողմն Կովկասու՝ մերձ 'ի Դարբանդ, և այլն։

Արդէն այդ խորհրդաւոր և դժուարընթեռնլի տառից և գրուածոց գոյութիւնը նաեւ 'ի Հայաստան տեսեր ու ծանուցեր էին անուանի հնագէտք մեր դարուն՝ Շուլց, Ռիթթէր, Կրօթֆէնտ, Լայար, Քանիքօֆ, Պրօսէ, Քիւնիք, Քօսսաքօֆ, և այլք. և 'ի մերազգի հմտից և բանասիրաց՝ Սարգսեան և Սմբատեան վարդապետք, Պատկանեան... ոչ լոկ 'ի Վան և 'ի Շամիրամակերտ, այլ

նաեւ 'ի հովիտս Եփրատայ, 'ի Մելիտինէ և այլուր, 'ի Բալու, յԱրմաւիր, 'ի Ցոլակերտ և 'ի Վաղարշապատ։ Այս բազմաթիւ արձանագրութիւնք՝ ցան և ցիր սփռեալք ընդ ամենայն Հայաստան, իրաւամբք ենթադրել կու տան՝ թէ մեր ազգն ալ, որ իրեն դրացի մերձաւոր ազգաց նման քաղաքականութիւն և կրթութիւն ունէր, ու յաճախ նաեւ վերաբերութիւն, անշուշտ նոյն բեւեռաձեւ գրոց բոլորովին անծանօթ մնացած չէր, ու երբեմն նաեւ անոնց գործածութեան։

Մեր հին պատմութիւնն այս ենթադրութեան հաւաստամութեանը ապացոյց մը կ'ընծայէ։

Խորենացի՝ մեր ամենէն աւելի հնախօս և հմուտ պատմագրաց մէկը, Մարիբասէ առնլով կ'աւանդէ՝ թէ երբ Շամիրամ Արայի յաղթեց ու Հայաստան մտաւ, Վանայ բերդին վրայ՝ մեզի անիմանալի լեզուով մը արձանագրութիւններ քանդակեց. նոյնպէս ուրիշ շատ տեղուանք՝ նման տառերով արձաններ հաստատեց։ Այս գրուածներն՝ Շամիրամայ պատերազմաց ու յաղթանակաց պատմութիւններն էին. ինչպէս որ Խորենացւոյն հետեւեալ խօսքերն կը հաւաստարմացընեն. «Զամենայն երեսս քարին իբրեւ գրչաւ զմոմ հարթեալ, բազում գիրս 'ի նմա գրեաց. որոյ հայեցուածն միայն՝ զամենայն ոք 'ի զարմանս ածէ։ Եւ ոչ միայն այս, այլ և 'ի բազում տեղիս յաշխարհին Հայոց արձանս հաստատեալ, նովին գրով յիշատակ ինչ հրամայէ գրել. և 'ի բազում տեղիս սահմանս նովին գրով հաստատէր»։

Կը համաձայնին նաեւ ոմանք յօտար պատմագրաց՝ նոյն Շամիրամայ համար աւանդելով թէ նման արձաններ և յիշատակարաններ հաստատած ըլլայ նաեւ ուրիշ տեղուանք՝ հանդիսավայրք և տեսարանք իրեն մարտից և յաղթանակաց [1]։

1 Semiramis, quum et lapis deficeret et majus aliquim concupisceret, quam quod ære posset assequi, apud montem Me-

*Հայաստանի մէջ ալ, ինչպէս ուրիշ տեղուանք, Շամիրամ արձանագիրներ քանդակել տուած ատեն, ունէր անտարակոյս իրեն իրաւացի փառասիրութեանն նպատակ մը. յիշեցընել տեսողաց, ու ապագայից՝ ինչուան հեռաւոր դարերու գիտութեանն ու զարմացման յանձնել իր անունն, համբաւն ու քաջագործութիւնքը: Այդ նպատակին հասնիլն անկարելի պիտի ըլլար Շամիրամայ՝ եթէ այդչափ խնամքով քանդակուած գրուածոց առջեւ անտարբեր մնար՝ նոյն գաւառներուն և աշխարհաց մէջ բնակող ժողովուրդը, չիկարենալով ընթեռնուլ զանոնք, ու 'ի նոսա պարունակուած իմաստից խելամուտ ըլլալ: Կը հետեւի ուրեմն ենթադրել՝ թէ կար, կամ պէտք էր ըլլալ, նաեւ հայկական բեւեռագիր գրութիւն մը՝ երկրին բնակչացը ոչ անծանօթ. և այս կարծեաց՝ 'ի ստուգութենէ ոչ այնչափ զուրկ ըլլալուն՝ նպաստաւոր և օժանդակ կը հասնին՝ նոր ժամանակաց այդ ամենահին տառից վրայ եղած խուզարկութիւնք, որ սեպաձեւ գրութիւնները այլեւայլ ցեղ բաժնելով՝ անոնցմէ մէկուն ալ, ճիշդ Հայաստանի մէջ գտնուածներուն, հայկական կամ արամական անունը տուած են: Այդ անունը ոչ այնչափ նոյնպէս կոչուող աշխարհին մէջ գտնուելնուն համար է, զի գտնուեր են և դեռ կրնան գտնուիլ անկէ դուրս տեղուանք ալ, այլ հոն բնակող ժողովրդեան խօսած լեզուին պատկանելնուն ենթադրութեամբ:*

diæ, qui Bagistanum dicitur, in petra stadiorum septem et decem suam inculpsit effigiam, quam viri certum divis venerentur. (Կեսլիոս, ԻԹ. ԻԴ):

Ուրիշ հին պատմիչ մ'ալ կը վկայէ նոյնպէս զՇամիրամայ. Petras ferra domuit; viasne feris quidem ambulatas stravit.

Դարձեալ այլ ոմն աշխարհագիր. Semiramis mons, ubi Pylæ Zagri, a Semiramide, qui illum abscissum pervium reddidit.



*Հայկական կոչուած բեւեռակերպ արձանագրութեանց ընթերցումը, զայն հետազօտող գիտնոց զանազան ջանքերովն ալ դեռ ինչուան հիմա արժանապէս գոհացուցիչ արդիւնք մը տուած չէ ուսումնական աշխարհի. ու միւս երկու ցեղ գրուածներէն ալ, — ասորականէն ու աքեմենականէն — աւելի դժուարընթեռնլի մնացած։ Ասոր ալ գլխաւոր պատճառն՝ ո՛ր լեզուի պատկանելնուն անստուգութիւնը՝ որով անհամաձայնութիւնը. ոմանք 'ի հնախոյզ գիտնոց՝ սեմական լեզուի մը վերաբերիլ կարծեցին. այլք՝ հնդիկ — եւրոպական, և միւսներն ալ 'ի տուրանական և 'ի հայկական տարբերաց բաղկացեալ լեզուի մը։ Ցետին երկու կարծիք կամ դրութիւնք՝ իրարու կը մօտենան, հայկական ծագումն և սկզբնաւորութիւն չժխտելով անոնց։ Հռչականուն անգղիացի հնագէտն Հինքս՝ որ հնդիկ — եւրոպական լեզու մը կը նկատէ անոնց մէջ, վանայ բերդին արձանագրութեանց վրայ անխոնջ ու երկար հետազօտութիւններէ ետքը կը հետեւցընէ թէ հայերէն լեզուով գրուած պէտք է ըլլան անոնք։ Իր այս կարծեաց պատճառը՝ անոնց մէջ ձայնաւոր տառեր գըտնելն եղած է. որով յաբեթական ըսուած լեզուներուն մէկուն պատկանելնուն վրայ տարակոյս չինար, կ'ըսէ. վասն զի այն հին լեզուաց մէջ միայն կը գտնուէր ձայնաւոր տառից գործածութիւնն։ Երրորդ դրութեան ջատագովն էր Մորթման գերմանացի, որ այլեւայլ գրուածներով, ինչպէս ծանօթ է, ոչ լոկ հայկական պատմութեան՝ այլ նաեւ լեզուին վերաբերիլը ուզեց ցուցընել. և իր կարծիք և դրութիւն՝ բաւական հռչակ և ընդունելութիւն գտաւ, գէթ առջի բերան։*

*Աքեմենեան և ասորացեղ բեւեռաքանդակ տառից ընթերցման բաւական դիւրանալն ու պարզուիլը ջանիւք գիտնոց, հայկական կոչուածներուն ալ ընթերցումն յու-*

սալի և փափաքելի կ'ընէ։ Օբբէրդ՝ որ մասնաւոր ջանքով հետեւէ եղած է ասոնց ընթերցման, իր գրուածոց մէջ շատ տեղ հնդիկ — եւրոպական լեզուի մը պատկանելնուն ամեննեւին չտարակուսիր։ Ըստ նորագոյն լեզուաբանական հետազօտութեանց եւրոպացի արդի գիտնոց, և ոմանց եւս մերազնեայց, հայկական հին լեզուն՝ հնդիկ — եւրոպական արմատներէ ձեւացած կը համարուի, ու սեմական քանի մը տարրերաց, Հայկայ ցեղին կամ սերունդին խառնուելովը արամէական ժողովրդոց հետ՝ որ Հայաստանի հողոյն վրայ յառաջագոյն հաստատուած էին բնակութեամբ, գրութեանց մէջ բեւեռակերպ տառերն ալ գործածած պիտի ըլլան։

Բեւեռաձեւ տառերով ձեռագիր մը գտնուած չէ. ուստի կը հետեւցընեն հմուտք, նոյն իսկ տառից բնութենէն՝ որով ձեւացած են, թէ պարզ քանդակաց և արձանագրութեանց մէջ գործածուելու վախճանաւ հնարուած էին։ Անոնց կիրառութեամբն վարուող աշխարհաց ժողովուրդք հարկ էր ունենային, ինչպէս անշուշտ կը համարի Գադըրմէր, ուրիշ ազգ մ'ալ գրութեան, աւելի ընթացիկ, սովորաբար և հեշտեաւ գործածելի։ Այս վերջնոյս՝ որ թերեւս առջինին հետեւողութեամբ յօրինուած էր, և որուն սակաւագիւտ օրինակք կամ փորձք կրնան համարուիլ 'ի Բաբելոն գտնուած քանի մը մանր ու աղիւսի վրայ քանդակուած յիշատակարանք, նմանութեամբ յօրինուած կ'ենթադրուին հեբրայական նոր կամ քառակուսի կոչուած տառք, զորս Հրէայք գերութենէ դարձած ատեննին հետերնին բերին։



Սակայն բեւեռակերպ տառից գործածութիւնը երկար ատեն չդիմացաւ. և ինչպէս ուրիշ ազգեր՝ ասանկ ալ Հայերը ձգեցին զայն. Ասիոյ հարաւային բնակիչք՝ սկսան փիւնիկեցւոց տառերը գործածել. ուսկից կամաց կամաց

Սամարացւոց, Քաղդէացւոց, Հրէից, Ասորւոց, և Յունաց և Արաբացւոց գրերը ձեւացան։ Իսկ Ասիոյ հիւսիսային բնակիչք, որոնց հետ մեր ազգն ալ, Զենտի գրերով սկսան վարուիլ։ Այս կարծիք անհակառակելի կրնայ սեպուիլ, որովհետեւ Խորենացւոյ, և իրեն ժամանակակից կամ ետքը եկող ուրիշ պատմագրաց վկայութեան վրայ հաստատուած է. և Խորենացւոյ և հայկական գրոց գիւտին մէջ եղած ժամանակի մերձաւորութիւնը՝ ստուգութեանը մեծագոյն երաշխաւորութիւն մըն է։

Նոյն գրոց կիրառութիւնը ինչուան սրբոյն Գրիգորի Լուսաւորչի ժամանակ դիմացաւ, ու անկէց ալ մինչեւ սրբոյն Մեսրովպայ օրը։ Այս տարբերութեամբ որ եկեղեցական բաներու մէջ յունարէնն ու ասորերէնը կը գործածէին, քաղաքական իրաց կիրառութեան համար պահելով Զենտի գիրը՝ և կամ պարսկական տառերը։

*
* *

Քրիստոսական կրօնից 'ի Հայաստան մուտ գտնելէն ետքն ալ՝ արքունական գրչաց ու անոնց գործածած Նշանագիրներուն կը հանդիպինք ազգային մատենագրութեան պատմութեան մէջ. և որոց ձեւն, ինչպէս նաեւ կիրառութիւն 'ի Հռովմայեցւոց մեզի անցած կ'երեւի։ Անշուշտ տեսակ մ'էր այն համառօտագրութեան (sténographie), յորում աջողակ և յոյժ վարժ էին Լատինք. կը վկայէ նաեւ իրենց երգիծաբան քերթողն Մարտիալէս. «Բառք սրաթռիչք են, կ'ըսէ, այլ ձեռք արագաշարժք քան զնոսա. լեզուն իր գործը չի լմընցուցած՝ ձեռք արդէն կատարած է զիւրն[1]»։

Այս կերպ գրութեան առ նախնիս մեր, և մեզի ծանօթ ու թերեւս միակ յիշատակութիւնն կը գտնենք առ

1 Currant verba licet; manus est velocior illis;
Nondum lingua suum, dextra peragit opus.

Ագաթանգեղոսի։ Սրբոյն Գրիգորի և Հռիփսիմեանց վըկայութեան հանգիստին ատենական հարցաքննութեանց ժամանակ՝ իրենց խօսքերն առ Թագաւորն Տրդատ հասցընելու վախճանաւ կային հոն, կ'ըսէ, արքունի նշանագիրք։ Ասանկ (յէջ 89 տպ. Վենետկոյ). « Եւ մինչդեռ կային կախեալ այսպէս, խօսեցաւ (Գրիգոր) զայս ամենայն. և գրեցին ատենակալ դպիրք նշանագրացն »։ Դարձեալ (140). « Դիպեցան անդ նշանագիրք՝ որք գրեցին զամենայն բանս, և ընթերցան առաջի Թագաւորին »։

Հեթանոս Հռովմայ այս սովորութիւնը՝ կը նկատենք նաեւ հին քրիստոնէութեան առաջին ժամանակաց և հալածանաց դարերուն մէջ։ Եկեղեցական հնագիտութիւն և սրբագիրք կ'աւանդեն թէ ընդհանրապէս ամէն եկեղեցեաց, և 'ի մասնաւորի կայսերական քաղաքին մէջ նստող հայրապետաց փոյթն էր՝ վկայական մահուամբ իրենց հաւատոց պահպանութեանն համար արիւննին դընող մարտիրոսաց՝ ատենական հարցափորձին ժամանակ գտնուլին իբրեւ հանդիսատեսք և լսողք ծածուկ հաւատակիցք, և համառօտագրեն իրենց կրած տանջանքն և յատենի դատաւորաց գրուցած խօսքերը. և զորս յետոյ գետնադամբաններու մէջ կ'ընթեռնուին 'ի լուր և 'ի խրախոյս հաւատացելոց։ Առ Ագաթանգեղեայ յիշուած նշանագրաց համար՝ հմուտ բանասէրն Մ. Էմին կարծիք մը յայտնած է թէ բեւեռագիրք կամ հին եգիպտական սրբագրոշմ տառից նման ըլլան։ Բայց հաւանականագոյն կը թուի Լանկլուա հայագէտ գաղղիացւոյն ենթադրութիւնը, որ մեր արդ իսկ յիշատակած և առ Հռովմայեցիս տիրոնեան կոչուած տառից նմանակերպ գրութիւն մը կը համարի։



Սակայն յատուկ և ազգային գրոց պէտքը՝ աւելի կերպով մը սկսեր էր զգալի ըլլալ Հայաստանի մէջ։ Հայրենեաց այս մեծ ծառայութիւնը իւր վրայ առաւ սուրբն Մեսրովպ։ Յարմար ու բարեպատեհ էր ժամանակն այնպիսի վերանորոգութեան մը ձեռք զարնելու, որ թէ՛ ազգին լրութեանը փափաքն էր, և թէ ժամանակին համար անհրաժեշտ պահանջք մը։ Սուրբն Գրիգոր քրիստոսական հաւատոց ճշմարտութիւնը քարոզեր ու ծաւալեր էր յազգին. բայց ինչուան 'ի չորրորդ դար՝ դեռ. եւս կային 'ի նմա այնպիսի ժողովուրդք՝ որոց ժամանակակից պատմութիւնը կը զլանայ թէ՛ զկրթութիւն և թէ զքրիստոնէութիւն։ Առանց սեպհական և յատուկ նշանագրաց՝ անկարելի եղած էր սուրբ գիրքն և իր վարդապետական նուիրական ուսումը ընդունելի և տեւական ընել իրենց մէջ։ Անկէ զատ, քաղաքական մեծ պատճառ և հարկ մ'ալ կար այս բանիս ետեւէն ըլլալու։ Հայաստանի իշխանական զօրութիւնը՝ մէկ կողմանէ արդէն սկսած էր զգալի տկարութեան մը տխուր նշանակներն տալ. միւս կողմանէ ալ Պարսիկք՝ իրենց ոյժն ու ազդեցութիւնը տարածելով՝ յարատեւ սպառնալիք մ'էին անոր քաղաքական ինքնօրինութեանն և կրօնից։ Մերձաւոր ապագայ մը արդարացուց դժբաղդաբար նոյն ատենի հայրենեաց ու սրբութեան կրօնից սիրով տոչորող սրտից արդարացի երկիւղը, որ չըլլայ թէ քրիստոնէութիւնն ու իր բարոյականն հաստատուն կերպով մը, ինչպէս փափաքելի էր, արմատացած չըլլալուն՝ պարսկական բռնութեան տեղիք տալ բռնադատուած ատեննին՝ նաեւ սուրբ հաւատք ունենան իրենց անդարմանելի կորուստը։ Այսպիսի վերահաս վտանգէ մը զհայրենիս ապահովել սրտի ու հոգւոյ անհրաժեշտ պարտաւորութիւն մ'էր, ու միանգամայն երկնաւոր ու երկրաւոր սիրելագոյն շահուց

եռանդուն փափաքանաց արդիւնք։ Այս կերպով, — ինչ-
պէս կ'ակնարկէ Սէն-Մարդէն հայերէնագէտ գաղղիա-
ցին, — Հայք յաջողեցան իրենց հաւատոց հետ փրկել
նաեւ ազգութիւնը՝ մերժելով կամ կիրառութիւնը խա-
փանելով այն ամէն օտար տառերուն՝ որոնք արդէն տա-
րածուած էին իրենց երկրին մէջ՝ և որոց բռնադատ գոր-
ծածութիւնը կամաց կամաց կրնար զիրենք ընդելացընել
զրադաշտական կրօնից վարդապետութեան մերձաւորու-
թեան, և կամ անզգալի կերպով յունականին հետ վե-
րաբերութեան մէջ դնելով կամ խառնելով, ազգային
ինքնուրոյն գոյութիւնը վտանգել։ Հաւատք, ազգութիւն,
լեզու և մատենագրութիւն՝ գտան իրենց փրկութիւնն ու
ապահովութիւնն այս կարեւոր գիւտին և անոր համար
եղած ջանից մէջ։ Առանց ասոր՝ Հայաստան այսօրուան
օրս թերեւս այն վիճակն ունենար, ինչ որ Ասիոյ այլ-
եւայլ հին ժողովուրդք. միայն պատմական կամ անուա-
նական ազգ մը մնալով։

Այս էր երկու նախանձընդդէմ ազգաց, Յունաց և
Պարսից՝ այլեւայլ տեսակէտով բայց մի և նոյն նպատա-
կաւ, փափաքն ու հեռաւոր յոյսն. և անոր հասնելու հա-
մար՝ ամէն ջանք, խոստմունք, օգնականութիւն և մերթ
նաեւ բռնադատութիւն և բռնութիւն 'ի գործ կը դնէին։
Մերուժանայ գործն ու Պարսից քաղաքականութեան սա-
տարելու եռանդն ու հնարագիտութիւնը՝ դեռ կենդանի
էր շատերուն մտքին մէջ։ Հայաստանի ժողովուրդը մո-
գակրօն ու սասանական ազգին հպատակ ընելու ամենէն
դիւրին ու յարմարագոյն միջոց գտեր էր՝ յունական գըր-
քերն այրել ու փճացընել, ու անանկով յոյն ազդեցու-
թեան վախը յարմատոց քանցել։ Անոր հակառակ՝ կայս-
րըն Թէոդոս, և Կոստանդնուպոլսոյ հայրապետ սուրբն
Ատտիկոս՝ կերպով մը իրենց կառավարութեան քաղաքա-
գիտութեանն և զգացմանց թարգման կ'ըլլան, երբ առ
սուրբն Սահակ հայրապետ գրած թղթերնուն մէջ մտեր-
մական գանգատ մ'ալ կը յայտնեն հայկական գրոց գիւ-

տին համար եղած հետապնդութեանց և խուզարկմանց նկատմամբ. առաջինն՝ թէ «Առաւել ես մեղադիր եմք, զի արհամարհեալ զճարտարօքս որ 'ի մերում քաղաքիս, յԱսորեաց ոմանց խնդրէիր զիմաստից գիւտս »: Եւ Ատտիկոս. « Ազատ 'ի մեղադրանաց ոչ թողումք, որ ոչ կանխաւ յիշատակեցեր զսիրելութիւն Գրիգորի և Ներսիսի երանելեաց քոց հարց: Եւ առաւել ընդ այս զարմանամք, թէ զիա՞րդ թողեր զաղբիւրն եկեղեցւոյ զհայր մեր սուրբ Յովհաննէս, որ ոչ միայն տիեզերական մայրաքաղաքիս, այլ սովաւ և ամենայն քրիստոնեայք և ընդհանուր աշխարհ 'ի նմանէ լարդապետեալ ուսանի. ուստի և Ոսկիբերան կոչեցին զնա: Եւ ձեր զանց զնովաւ արարեալ, կամեցայք 'ի սահմանական ջրոց զփափագ ծարաւոյն յագեցուցանել »:

Ժամանակաւ կրտսերագոյն գրութեանց մէջ ալ զնոյն ակնարկուած կը գտնենք. « Սուրբ հայրն մեր Մեսրոպ յետ առնլոյ երկնաւոր շնորհացն և ստեղծանելոյ զնշանագիրս Հայոց, զՎրաց և զԱղուանից, գնաց 'ի Կոստանդնուպոլիս հրամանաւ սուրբ հայրապետին Իսահակայ մեծի պարթևի. և յոյժ պատուով ընկալան զնա թագաւորն Թէոդոս և հայրապետն Ատտիկոս. և սակաւ ինչ մեղադրեցին սիրով, թէ 'ի շարժելն ձեր 'ի խնդիր գրոյն թէ ընդէ՞ր իջեր 'ի շաղփաղփանս Ասորեացն, և ոչ եկիր առ աղբիւրն իմաստութեան յաստուածազգեաց հայրապետն Յովհան Ոսկեբերանն. և 'ի նմանէ այլ դիւրեաւ գտանէիր զմխիթարութիւն սրտի քոյ [1] »:

1 Ի Վատիկանեան մատենադարանի որ 'ի Հռովմ՝ հօյակապ սրահի մը մէջ ուր ամենայն ազգաց այբուբենից ծանօթ նշանագրաց դէմքերն պատկերագրուած են, մեր այբուբենքն իրենց հին երկաթագիր ձևերովը տրուած են. 'ի ձեռս սրբոյ Ոսկեբերանի, զինքն համարելով և կոչելով անոնց հեղինակ: Գրուածքիս մէջ ուրիշ տեղ պիտի անդրադառնանք՝ թէ ինչպէս ոմանք յեւրոպէացի բանասիրաց այդ բազմահռչակ հայրապետին ընծայած են ժամանակաւ նաև զԹարգմանութիւն աստուածաշունչ գրոց, կամ անոր մէկ մասին, 'ի հայ բարբառ:



*Լսենք նոյն իսկ ժամանակակցաց բերնէն այս ցանկալի գիւտին հետաքննական պատմութիւնը: Ասոնք երեք են գլխաւորաբար, և մէկ դարու և դպրոցի կը վերաբերին. Խորենացի, Կորիւն և Փարպեցի. երեքն ալ ամենայն մեծարանաց և հաւատարմութեան արժանաւոր անձինք, և որոնք մէկմէկու գրուածքն ալ տեսած ըլլան կամ ոչ, ազգային մատենագրութեան այս նշանաւոր կէտին վրայ ունեցած համաձայնութեամբը կը հաւատարմացընեն կարծիք մը զոր այլք արդէն մեզմէ յառաջ ալ ունեցած են, թէ ազգին մէջ ինչուան իրենց ատեն գըտնուած արքունի վաւերական դիւաններէ քաղած կամ համառօտած պէտք է ըլլան զայն: Իրենց բուն խօսքերը մէջ բերելով և իրարու դիմաց դնելով՝ այս ենթադրութիւնը թերեւս աւելի ոյժ առնու քննադատ բանասիրութեան առջեւ:*

*Դնենք նախ հին ճառընտրի մը մէջ գտնուած Կորեան հատուածը այս նիւթիս վրայ, որ հետեւեալ էջերուն մէջ դրուածէն բաւական կը տարբերի:*

« Բայց զի ոչ էր գիր հայերէն լեզուիս՝ բազում պակասութիւն լինէր ճշմարտութեան ուսմնդրացն առ աշակերտեալսն. իսկ երանելի վարդապետն տարակուսեալ ’ի խորհուրդս իւր՝ առ Աստուած աղաւնէր, որ կարող է յամենայնի, ցուցանել զգիր հայ լեզուիս. որով նուաստութիւնն յառաւելութիւն գայցէ գրով: Եւ յարուցեալ այնուհետեւ հասանէր առ սուրբն Սահակ հայրապետն Հայոց՝ յաղագս գրոյ նշանագրաց. եգիտ զնա առաւել եւս փափագող այնմ: Եւ յետ բազում ջանից և աշխատութեանց և ոչ ինչ օգտելոյ, դարձեալ յաղօթս ապաւինելով՝ յԱստուծոյ խնդրէին որում ցանկային: Եւ մեկնեալ ’ի միմեանց, և յանձն առեալ զխստամբերութիւն՝ հգնէին առաւել քան զառաւելս:

« Եւ յետ այսորիկ ծանուցեալ լինէր ’ի Թագաւորէն Վռամշապհոյ, որ և նա այսմ նախանձայոյզ եղեալ, առաքեն զՄեսրոպն աշակերտօքն հանդերձ ’ի Միջագետս Ասորւոց: Եւ երթեալ նորա խուզէր ուր ուրեք իմաստասիրաց համբաւէր գիտութիւն: Եւ հանդիպեալ Դանիէլի ու-

մեծ եպիսկոպոսի Ասորւոց առաքինւոյ, որ ասաց նմա ցուցանել ըզնշանագիրս՝ որում ցանկայրն։ Եւ յետ բազում աշխատութեանց և քըննութեանց և ուսմանց՝ անչափ մտացեալ. զի ոչ բերէր զբառս և զբանս ալփաբետացն ըստ հայերէն լեզուիս։

« Ցայնժամ հաւատով առ Աստուած աղաւթնի, և աղօթս արտասուալիցս առ Աստուած մատուցանէր, և հայցէր յամենեցունց տեառնէն զաւրն և զգիւտն՝ ցուցանել զփափագելին նշանագրաց։ Եւ տեսանէր ոչ ՚ի քուն երազ և ոչ յարթնութեան տեսիլ, այլ ՚ի սրտին գործարանին՝ երևութացեալ հոգւոյն աչաց՝ թաթ ձեռին աջոյ, գրելով ՚ի վերայ վիմի. զի որպէս ՚ի ձեան վերջք գծին ունէր քարն. և ոչ միայն երևութացաւ, այլ և հանգամանք ամենայնիւրն՝ որպէս յամանի ՚ի միտս նորա հաւաքեցաւ։ Եւ յարուցեալ յաղօթիցն՝ հաստեաց զնշանագիրս մեր հանդերձ Ռուփինոսիւ աշակերտաւ Եպիփանու, որ ՚ի Սամոս էր միայնակեաց. կերպաձեւեալ զգիրն ըստ հրամանի Մեսրոպայ վարդապետին և երանելւոյ, փոխադրելով ըստ հայերէն ըստ անայթացութեան սիրողացն հելլենացւոց »։

## ԿՈՐԻՒՆ

« Եւ անկեալ 'ի ծուփս խորհրդոց, եթէ ո՞րպէս արդեօք եւս իրացն գտանիցէ, և իբրեւ աւուրս բազումս անդէն 'ի նմին դեգերէր, յարուցեալ այնուհետեւ հասանէր առ ՛սուրբ կաթուղիկոսն Հայոց մեծաց, որոյ անունն ճանաչէր Սահակ, զոր պատրաստական գտանէր նմին փութոյ հաւանեալ և միանգամայն յօժարութեամբ գումարեալ հանդերձ աղօթիւք մեծովք առ Աստուած կանխէին վասն ամենայն ոգւոց քրիստոսաբեր փրկութեանն հասանելոյ, և զայն առնէին աւուրս բազումս։ Ապա ելանէր նոցա պարգեւական յամենաբարին Աստուծոյ, ժողովել զաշխարհահոգ խորհուրդն երանելի միաբանելոցն, և գիրս նշանագրոյ հայաստան ազգին հասանել. բազում հարց փորձի և քննութեան զանձինս պարապեցուցեալ, և բազում աշխատութեանց համբերեալ։

« Ազդ առնէին ապա և զկանխագոյն խնդրելին իւ-

---

## ՓԱՐՊԵՑԻ

« Եւ այսպէս բազմաժամանակեայ մտածութիւնն երանելոյ առն Մաշթոցի՝ ընկալեալ յամենախնամ մարդասիրէն Աստուծոյ, զօրացոյց զնա հոգւով ողորմութեան լուրոյ. քանզի հոգացեալ յարաժամ տրտմէր երանելի այրն Մաշթոց, տեսանելով զմեծաջան ծախս մանկանցն հայաստան աշխարհիս։ Որք բազում թոշակօք և հեռագնաց ճանապարհօք և բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց 'ի դպրոցս ասորի գիտութեան. քանզի պաշտօն եկեղեցւոյ և կարդացմունք գրոց ասորի ուսմամբ վարէին 'ի վանորայս և յեկեղեցիս հայաստան ժողովրդոցս. յորմէ ոչ ինչ էին կարող լսել և օգտել ժողովուրդքն այսպիսի մեծ աշխարհի՝ յանլրութենէ լեզուին ասորոյ։

## ԽՈՐԵՆԱՑԻ

« Ի վերադառնալ երանելոյն Մեսրոպայ՝ ոչ փոքր կրէր վտանգս, քանզի ինքն էր ընթերցող և թարգմանիչ. և եթէ այլ ոք ընթեռնոյր, ուր նա ոչ հանդիպէր, զանխուլ 'ի ժողովրդոցն լինէր՝ յաղագս ոչ լինելոյ թարգմանիչ։ Վասն որոյ եդ 'ի մտի հնարել գտանել նշանագիրս Հայոց լեզուիս. և արկեալ զանձն 'ի ջանս պէսպէս փորձիւք տաժանէր։

« Յետ այսր վախճանեալ եպիսկոպոսապետին Ասպուրակէս, 'ի տեղի նորա յաջորդէ Խոսրով զՍահակ որդի մեծին Ներսեսի... Առ նա եկեալ Մեսրոպ յաղագս խնդրոյ նշանագրաց Հայոց, եգիտ զնա առաւել փափագող այնմ. և յետ բազում ջանից և ոչ ինչ օգտելոյ, դարձեալ յաղօթս ապաւինեալ, յԱստուծոյ խնդրելով։ Եւ մեկնեալ 'ի միմեանց, գնաց Մեսրոպ 'ի դաղարս իւր։

« Վռամ հրամայեաց Վռամշապհոյ մեր թագաւորին

---

## ( Փարպեցի )

« Զայս 'ի բազում ժամանակս զմտաւ ածեալ երանելի առն Մաշթոցի, և փղձկացեալ յանձն իւր, մանաւանդ թէ գոն նշանագիրք հայերէն լեզուոյս, որով հնար է ինքեան ձայնիւ, և ոչ մուրացածոյ բարբառով շահել զոգիս արանց և կանանց առ հասարակ յամենայն եկեղեցիս բազմութեանն. զօրացեալ 'ի սուրբ Հոգւոյն յորդորմամբ, և եկեալ առ սուրբ կաթուղիկոսն Հայոց Սահակ, զեկուցանէր նմա զիւրոյ բազմաժամանակեայ մտածութեան զխնդիրն. և ընկալեալ 'ի նմանէ քաջալերութեան աւետիս, թէ զօրացեալ պնդ կաց՝ առեալ ընդ քեզ և այլ արս օգնականս 'ի քահանայից, զոր ես պատուիրեմ. և ուր տկարանայք 'ի կարգել զհեգենայսն,

(Կորիւն)

րեանց թագաւորին Հայոց, որոյ անուն կոչէր Վռամշապուհ: Յայնժամ պատմէր նոցա արքայն վասն առն ուրումն ասորոյ եպիսկոպոսի ազնուականի Դանիէլ անուն կոչեցելոյ, որոյ յանկարծ ուրեմն նշանագիրս ալփաբետաց հայերէն լեզուին: Եւ իբրեւ պատմեցաւ նոցա յարքայէ վասն գտելոցն 'ի Դանիելէ, յօժարեցին զարքայ, փոյթ առնել վասն պիտոյից իրացն այնոցիկ:

« Եւ նա առաքէր զոմն Վահրիճ անուն հրովարտակօք առ այր մի երէց, որոյ անունն Հաբէլ կոչէին, որ էր մերձաւոր Դանիէլի ասորոյ եպիսկոպոսի: Իսկ Հաբելին զայն լուեալ՝ փութանակի հասանէր առ Դանիէլն. և նախ ինքն տեղեկանայր 'ի Դանիէլէ նշանագրոցն. և ապա առեալ 'ի նմանէ առաքէր առ արքայն յերկիրն Հայոց 'ի հինգերորդի ամի թագաւորութեան նորա 'ի նա հասուցանէր: Իսկ արքային հարդերձ միաբան սրբովն

---

(Փարպեցի)

բերեալ առ իս ուղղեմ զայն. քանզի յոյժ դիւրին է գիւտ իրացդ՝ զոր հայցես: Բայց նախ արժան է մեզ զգացուցանել թագաւորին զպէտս այսպիսի մեծ և կարեւոր խնդրոյ. վասն որոյ և քան զաւուրս ինչ յառաջ ոչ բազումս, առեալ բանք յեկեղեցւոյ յաղագս կարօտութեան այդպիսի պիտոյից, ասացեալ է ուրումն ցարքայ, թէ տեսի նշանագիրս առ ումեմն եպիսկոպոսի 'ի գեօղ միում. և թագաւորն յիշէր զասացեալսն, քանզի և ինձ նա պատմեաց: Եւ մտեալ սրբոյ կաթուղիկոսին Հայոց Սահակայ հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ առ թագաւորն Վռամշապուհ, և իմացուցեալ նմա զպէտս իրացն, յիշեաց և ինքն թագաւորն զխօսեցեալսն վանականին

(Խորենացի)

իջանել 'ի Միջագետս, զի խաղաղացուցեալ կարգեսցէ զնոսա, և համար երկաքանչիւրոցն հատցէ զգործակալացն։ Եւ իջեալ նորա և կարգեալ զայս ամենայն, ոչ փոքր ինչ կրէ աշխատութիւն յաղագս քարտուղարի. զի մինչև գնաց Մեսրոպ յարքունական դրանէն՝ ոչ զոք 'ի ճարտարաց գտանէր անդր ի դպրաց, քանզի պարսկականաւն վարէին գրով։

« Վասն որոյ մատուցեալ առ արքայն քահանայի ուրումն՝ Հաբէլ անուն կոչեցեալ, խոստանայր հայկականացս լեզուաց առնել նշանագիր, յարմարեալ 'ի Դանիելէ եպիսկոպոսէ յիւրմէ մերձաւորէ։ Զորով անփոյթ առաքեալ արքային, և ելեալ 'ի Հայս, գտանէ ժողովեալ առ մեծն Սահակ և Մեսրոպ զամենայն եպիսկոպոսունս՝ հոգալ զգիւտ (զգիր) դպրութեան Հայոց, զոր զգացուցին արքային. և նա պատմեաց զասացեալսն վանակա-

---

(Փարպեցի)

վասն նորին իրացն ընդ նմա, զոր և նորա պատմեալ ուրախացոյց։

« Եւ նոցա լուեալ զայս 'ի թագաւորէն, փութացուցանէին զնա ասելով, թէ ճեպեա՛ յաղագս մեծ և օգտաբեր աշխարհիս Հայոց գիւտիս այսորիկ 'ի ժամանակս քո, որ շատ աւելի առ յապայսն բերէ քեզ շահ յիշատակ անմոռաց, և օգուտ երկնաւոր վայելից՝ քան զիշխանութիւն թագաւորութեանդ քո. և կամ որպէս յառաջ քան զքեզ նախնիքն քո էին յազգէն Արշակունեաց։

« Եւ թագաւորին լուեալ զայս և խնդալից եղեալ ետ փառս Աստուծոյ, որ 'ի ժամանակս թագաւորութեան նորա, զայսպիսի հոգևոր կենաց փափաք ժառանգեաց յաշխարհիս Հայոց։

(Կորիւն)

Սահակաւ և Մաշթոցիւ ընկալեալ զնշանագիրսն 'ի Հաբելէն՝ ուրախ լինէին։ Ապա առեալ երանելի հոգաբարձուացն զյանկարծագիւտն՝ խնդրէին հայցէին եւս յարքայէ մանկունս մատաղս, որով զնշանագիրսն մարթեսցեն։ Եւ յորժամ բազումք 'ի նոցանէ տեղեկանային, ապա հրաման տայր ամենայն ուրեք նովին կրթել, որով և յաստիճան իսկ վարդապետութեան գեղեցիկ երանելին հասանէր. և իբրեւ ամս երկուս կարգեալ զվարդապետութիւն իւր և նովին նշանագրովք տանէր. իսկ իբրեւ 'ի վերայ հասեալ թէ չեն բաւական նշանագիրքն ողջ ածել զսիւղոբայս և զկապս հայերէն լեզուոյն, մանաւանդ զի և նշանագիրքն իսկ՝ յայլոց դպրութեանց թաղեալք և յարուցեալք դիպեցան։ Յետ այսորիկ դարձեալ կրկին անգամ 'ի նոյն հոգս դառնային, և նմին ելս խնդրէին ժամանակս ինչ։

---

(Փարպեցի)

« Վաղվաղակի ստիպով առաքեալ դեսպան զՎահրիճ ոմն անուն կոչեցեալ 'ի ծնողաց իւրոց՝ հանդերձ հրովարտակաւ, առ այր մի երէց Հաբէլ անուն, որոյ ասացեալ էր յառաջագոյն ցարքայ, որ և մերձաւոր էր առն բարեպաշտի Դանիէլի եպիսկոպոսի, առ որում նշանագիրքն հայերէն կային. և երանելւոյն Հաբէլի ընկալեալ զհրովարտակն 'ի Վահրիճէ և լուեալ զիրսն, փութանակի հասանէր առ աքանչելի եպիսկոպոսն Դանիէլ. և նախ անդէն 'ի նմին Դանիելէ ինքն տեղեկանայր զկարգ նշանագրացն, և առեալ 'ի նմանէ առ թագաւորն և առ սուրբ հայրապետն Հայոց Սահակ և առ երանելին Մաշթոց հասանէր։

## ( Խորենացի )

նին։ Զոր իբրեւ լուան՝ թախանձէին զնա՝ փոյթ զայնպիսեացն առնել պիտոյից։

« Վասն որոյ յաշխարհէս մերոյ առաքեաց հրեշտակութեամբ զայր մի պատուական և հաւատարիմ իւր, խադունի ազգաւ՝ Վահրիճ անուն, յոյժ փափագող նորին գործոյ առ Հաբէլն այն։ Զոր առեալ և երթեալ նովաւ հանդերձ, քաջ հմտացեալ 'ի Դանիելէ, կարգեալ ըստ ձեւոյ օրինակի յունականին զվաղնջուց գտեալ նշանագիր տառից, եկեալ ետուն ցմեծն Սահակ և Մեսրոպ։ Որոց ուսեալ, և թեւածելով ընդ նոսա տղայոց զամս սակաւս, տեղեկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգաբար՝ մուրացածոյին այնուիկ գծագրութեամբ։

« Զկնի այսորիկ ինքնին Մեսրոպ եկեալ 'ի Միջագետս՝

---

## ( Փարպեցի )

« Իսկ արքային Հայոց սուրբ կաթուղիկոսաւն Սահակաւ և երանելեաւն Մաշթոցիւ ընկալեալ զնշանագիրսն 'ի Հաբէլէ, ուրախ լինէին։ Բայց տեղեկացեալ գիտացին, ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգաբար, մուրացածիւն այնուիկ գծագրութեամբ։

« Զկնի այսորիկ ինքնին Մեսրովբ իջանէ 'ի Միջագետս հանդերձ աշակերտօք առ նոյն Դանիէլ, և ոչ աւելի ինչ գտեալ քան զառաջինն, անցանէ յԵդեսիա առ Պղատոն ոմն ճարտասան հեթանոս, իշխան դիւանին. և նորա խնդութեամբ ընկալեալ, և զոր ինչ միանգամ 'ի միտ առնոյր բան հայերէն՝ յինքն առեալ, և չատ ջանացեալ

(Կ-րէ-ն)

« Վասն որոյ առեալ երանելւոյն Մաշթոցի դաս մի մանկտոյ հրամանաւ արքայի, և միաբանութեամբ սրբոյն Սահակայ, և հրաժարեալք 'ի միմեանց համբուրիւ սրբութեանն, խաղայր գնայր 'ի հինգերորդ ամի Վռամշապհոյ արքային Հայոց, և երթեալ հասանէր 'ի կողմանս Արամի՝ 'ի քաղաքս երկուս Ասորոց, որոց առաջինն Եդեսիա կոչի, և երկրորդն Ամիթ անուն. ընդդէմ լինէր սուրբ եպիսկոպոսն այն՝ որոց առաջնոյն Բաբիլաս անուն, և երկրորդին Ակակիոս հանդերձ կղերականօքն և իշխանօքն քաղաքին պատահեալ. և բազում մեծարանս ցուցեալ հասելոցն, ընդունէին հոգաբարձութեամբ ըստ Քրիստոսի անուանելոյն կարգի: Իսկ աշակերտասէր վարդապետին՝ զտարեալսն ընդ իւր յերկուս բաժանեալ, զոմանս յասորի դպրութեանն կարգէր, և զոմանս յունական դպրութեանն: Անտի 'ի Սամուսատական քաղաքն

---

(Փ-րպեցի)

և ոչ օգտեալ՝ զպարտութիւն խոստովանեաց հռետորն. և զայլ ոմն ասելով յոյժ հասու՝ վարդապետ իւր լեալ յառաջագոյն, և ապա առեալ զճարտարացն գրեան 'ի նոյն դիւանէն Եդեսեայ, և գնացեալ քրիստոնէութեան հաւատաց, որոյ անունն Եպիփանոս, զոր խնդրեալ՝ գըտցես, լցուցանել զփափագդ քո: Յայնժամ Մեսրովբայ օգնականութիւն 'ի Բաբելոսէ գտեալ, և անցեալ ընդ Փիւնիկէ 'ի Սամոս դիմէ. քանզի Եպիփանու վճարելով ըզկենցաղս, թողեալ լինի աշակերտ մի անուանեալ Հռոփանոս, հրաշալի արուեստիւ հելլեն գրչութեան, որ 'ի Սամոս էր միայնացեալ: Առ սա երթեալ Մեսրովբայ, և յայսմ եւս անշահ մնացեալ, յաղօթս ապաւինի. և տե-

( Խորենացի )

հանդերձ աշակերտօք առ նոյն Դանիէլ, և ոչ աւելի ինչ գտեալ քան զառաջինն, անցանէ և յԵդեսիայ առ Պղատոն ոմն ճարտարասան հեթանոս՝ իշխան դիւանին։ Եւ նորա խնդութեամբ ընկալեալ, և զոր ինչ միանգամ 'ի միտ առնոյր բան հայերէն յինքն առեալ, և շատ ջանացեալ, զտգիտութիւն խոստովանեաց հռետորն։ Եւ զայլ ոմն ասելով յոյժ հասու, վարդապետ իւր եղեալ յառաջագոյն, և ապա առեալ զճարտարացն գրեան 'ի նոյն դիւանէն Եդեսեայ, և գնացեալ քրիստոնէութեան հաւատաց. որոյ անուն Եպիփանոս. զոր խնդրեալ գտցես լցուցանել զփափաքդ քո։

« Յայնժամ Մեսրոպայ օգնականութիւն 'ի Բաբելոսէ եպիսկոպոսէ գտեալ, և անցեալ ընդ Փիւնիկէ 'ի Սամոս դիմէ. քանզի Եպիփանոս վճարելով զկենցաղս՝ թողեալ լինի աշակերտ մի անուանեալ Հռոփանոս, հրաշալի արուեստիւ հելլէն գրչութեամբ. որ 'ի Սամոս էր միայնացեալ։ Առ սա երթեալ Մեսրոպայ, և յայսմ ևս անշահ

---

( Փարպեցի )

սանէ ոչ 'ի քուն երազ և ոչ յարթնութեան տեսիլ. այլ 'ի սրտին գործարանի երեւութացեալ հոգւոյն թաթ՝ ձեռին աջոյ գրելով 'ի վերայ վիմի. զի որպէս 'ի ձեան վերջք գծին կուտակեալ ունէր քարն. և ոչ միայն երեւութացաւ, այլ և համգամանք ամենիցն որպէս յաման ինչ 'ի միտս նորա հաւաքեցաւ. և յարուցեալ յաղօթիցն՝ ստեղծ զնշանագիրս մեր հանդերձ Հռուփանոսիւ, կերպաձեւեալ զգիրն առձեռն պատրաստ Մեսրովբայ, փոխատրելով զհայերէն աթուրթային ըստ անսայթաքութեան սիղոբայիցն 'ի հելլենացւոյն »։

( Կ..րէ–ն )

գումարէր, և նորա իւրովքն հաւասարօք... որում պարգևւէ... նշանագիրս հայերէն լեզուին. և անդ վաղվաղակի նշանակեալ անուանեալ և կարգեալ յօրինէր սիղոբայիւք և կապօք. և ապա հրաժարեալ յեպիսկոպոսացն սրբոց՝ հանդերձ օգնականօքն իւրովք՝ իջանէր 'ի քաղաքն Սամոստացւոց, յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն և յեկեղեցւոյն մեծարեալ լինէր. և անդէն 'ի նմին քաղաքի՝ գրիչ ոմն հելլենական դպրութեան Հռոփանոս անուն գտեալ. որով զամենայն ընտրութիւնս նշանագրոցն՝ զնրբագոյնսն, զկարճն և զերկայնն, զառանձինն և զկրկնաւոր միանգամայն յօրինեալ և յանկուցեալ, 'ի թարգմանութիւն դառնային հանդերձ արամբք երկու աշակերտօքն իւրովք. որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին յԵկեղեաց գաւառէն. և երկրորդին Յովսէփ անուն՝ 'ի պաղանական տանէն »:

---

( Խ..րէն–ցէ )

Ծնացեալ, յաղօթս ապաւինի. և տեսանէ ոչ 'ի քուն երազ և ոչ յարթնութեան տեսիլ. այլ 'ի սրտին գործարանի երևութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ՝ գրելով 'ի վերայ վիմի (Ա, Ե, Է, Ը, Ի, Ո, Ւ). զի որպէս 'ի ձեան վերջք գծին կուտեալ ունէր քարն: Եւ ոչ միայն երևութացաւ, այլ և հանգամանք ամենայնին որպէս յաման ինչ 'ի միտս նորա հաւաքեցաւ: Եւ յարուցեալ յաղօթիցն, ստեղծ զնշանագիրս մեր՝ հանդերձ Հռոփանոսիւ կերպաձևեալ զգիրն Մեսրոպայ 'առձեռն պատրաստ. փոխատրելով զհայերէն աթութայսն ըստ անսայթաքութեան սիւղոբայից հելլենացւոց »:



Այսչափ է երեք՝ գրեթէ ժամանակակից պատմչաց, մեզի աւանդածը՝ հայկական Նշանագրաց Մեսրոպայ ձեռքով եղած նորոգութենէն յառաջ ունեցած վիճակին, և անոնց գիւտին պատմութեան վրայ։ Աւելորդ է յիշեցընել՝ թէ իրենց խօսքերը՝ տեղ տեղ լուսաբանութեան կարօտ, ու մերթ ալ բոլորովին անիմանալիք կը մնան․ շատ տեղ իրարու համաձայնութեամբ ալ՝ նաեւ երբեմն անհամաձայնք։

Մենք ջանանք իրենց խօսքերուն հետեւողութեամբ ընթերցողաց առջեւը դնել համառօտելով և պարզել՝ որչափ կարելի է, հայկական Նշանագրաց գիւտին պատմութիւնը։

Հայերէն տառից գիւտին եռանդուն փափաքող և անխոնջ հետամուտ կը ներկայանայ մեզ սուրբն Մեսրովպ, և իրեն աջակից և օգնական մեծն Սահակ։ Թագաւորական աթոռոյն վրայ կը նստէր յայնմ ժամանակի Վռամշապուհ․ արքունի ամէն օգնութիւն և նպաստ պատրաստ էր այն բարձր իշխանութիւնն և գահոյք գրաւող անձին կողմանէ, որ դժբաղդաբար սակաւատեւ եղաւ, և որ լաւագոյն ժամանակաց արժանաւոր իշխան մըն էր։

Այսպիսի հզօր ձեռնտուութենէ մը չուզեց Մեսրոպ զրկել իր ազգը․ ուստի և հայերէն գիր ստեղծելու հնարից վրայ՝ սրբոյն Սահակայ հետ և քովը երկար ատեն կենալէն ու խորհրդակցելէն ետքը, յորդորեց զինքն որ մասնաւոր ժողով մը գումարէ, որպէս զի կարենայ այլ և այլ իմաստուն անձանց խորհրդակցութեամբը փափաքին հասնիլ։ Սուրբն Սահակ իրեն սրտին, գիտութեանն ու նուիրական պաշտամանն արժանաւոր խօսքերով յորդորեց ու քաջալերեց զինքն, իր կողմանէ ամենայն կարելի ջանք ու ձեռնտուութիւն խոստանալով․ « Եւ ուր տկարանայք, կ՚ըսէր, կարգել զհեգենայսն, բերեալ առ իս ուղղեմ զայն․ քանզի յոյժ դիւրին է գիւտ իրացդ

զոր հայցես »: Մէկէն յարքունական քաղաքի 'ի Վաղարշապատ՝ մասնաւոր ժողովք մը գումարեց. հոն այլ և այլ խօսակցութիւններէ ետքը փափաքեցան որ Վռամշապուհ թագաւորն ալ այս ժողովոյն ներկայ գտնուի: Թագաւորն ալ ժողովականաց փափաքը կատարեց, ու իմանալով թէ ինչ վախճանաւ ցանկացեր էին իր ներկայութեանը՝ պատմեց անոնց Հաբէլ անունով քահանայէ մը լսածը, թէ Դանիէլ կոչուած ասորի եպիսկոպոսի մը քով կը գտնուէին հայերէն լեզուի նշանագիրք: Ժողովքը խնդրեց թագաւորէն որ մէկը ղրկէ առ Դանիէլ, որպէս զի այն նշանագրաց վրայ կարեւոր տեղեկութիւնը առնեայ: Այս վախճանաւ Վահրիճ անունով իմաստուն և փութաջան իշխան մը ղրկեցին թագաւորական տունէ. որ և թագաւորէն ու եպիսկոպոսներէն յանձնարարական թղթեր առնլով՝ Միջագետք անցաւ ու հոն տեսաւ զՀաբէլ քահանայն. ու անոր հետ մէկտեղ գնաց առ Դանիէլ: Սա իր քովը եղած նշանագրերը ցըցուց անոնց, ու սովրեցուց թէ ինչ կերպով հեգելու է այն տառերը: Լաւ մը տեղեկանալէն ետքը՝ Հաբէլ և Վահրիճ դարձան 'ի Հայաստան, ու թագաւորին և սրբոյն Սահակայ և Մեսրոպայ առջեւ դրին թէ Դանիէլեան նշանագիրք և թէ անոնց հնչմունքը:

Վռամշապուհ՝ Սահակայ ու Մեսրոպայ յանձնեց այն տառերը, որպէս զի զանոնք ընդհանուր ազգին օգտակար ընելու եղանակին վրայ մտածեն: Անոնք ալ շատ աշխատեցան որ այն տառերը մեր լեզուին հնչմանը ծառայեցընեն, ու տղաքներ ժողվեցին զանոնք կրթելու և անոնց սորվեցընելու համար այն տառերը: Երկու տարի անընդհատ այս վախճանիս հասնելու համար աշխատեցան. ու այն դժուարին վաստակը ու երկայն փորձը իմացուց իրենց թէ ընդունայն էր աշխատանքը. վասն զի այն տառից հեգը մեր լեզուին չէր յարմարեր. ուստի դարձեալ նոր աշխատանքի և հին մտածութեանց մէջ ինկան, ու թագաւորին հետ միաբան խորհեցան որ ինքը

սուրբն Մեսրովպ անձամբ երթայ առ Դանիէլ՝ որով թերեւս կարենայ աւելի բան մը իմանալ։ Ուստի Մեսրովպ իր մտավարժ աշակերտներէն մէկ քանի հոգի հետն առած՝ Միջագետք գնաց Դանիէլ եպիսկոպոսին քով. և բաւական ատեն հոն կենալէն ետքը՝ նոր բան մը չկրցաւ սորվիլ. և ասոր համար կարգէ դուրս տրտմութիւն և մտատանջ հոգ ունեցաւ։ Բայց որպէս զի բոլորովին անպըտուղ չըլլայ իր աշխատութիւնը, երկու դաս բաժնեց հետը բերած աշակերտները ու դպրոց մը դրաւ զիրենք, որպէս զի անոնցմէ ոմանք ասորի՝ մէկալնոնք ալ յունական դպրութիւն սորվին։ Իսկ ինքը հետն առնելով ընտրելագոյն աշակերտքը և օգնականքը՝ զՅոհան Եկեղեցացի և զՅովսէփ Պաղնացի, ճամբայ ելաւ Հայաստան դառնալու։

Երբոր Մեսրովպ այս մտքին վրայ էր, լսեց թէ Եդեսիա քաղաքին մէջ Պղատոս անունով հանճարեղ ու ճարտարամիտ մարդ մը կայ, որ միանգամայն նոյն քաղաքին դիւանին վերակացուն է. և շատերը կ՚ապահովցընէին թէ անիկայ իր հանճարովը կրնայ Մեսրովպայ առաջնորդութիւն մը ընել։ Մեսրովպ այս բանիս վրայ ուրախանալով, շուտով մը անոր գնաց, ու իր մտացը խորհուրդը ծանոյց։ Պղատոս քննեց հարցուց ու իմացաւ իրմէ Հայոց լեզուին հանգամանքը, և շատ աշխատեցաւ որ զերանելին գոհ ընէ. բայց իր վախճանին չկարենալով հասնիլ՝ խոստովանեցաւ թէ այդ փափաքելի խընդրոյն կարողութիւնը իրմէ վեր է. բայց միանգամայն իմացուց թէ Եպիփանիոս իր վարդապետը կայ. Անիկայ, ըսաւ, թերեւս կարենայ քու փափաքանացդ լրումը շնորհել։ Այս վախճանաւ յանձնարարական թղթեր առաւ Մեսրովպ թէ՛ իրմէ, և թէ տեղւոյն Ռաբուլա կամ Բաբելաս եպիսկոպոսէն, ու Փիւնիկաստան իջաւ. հոն լսեց որ քիչ առաջ վախճաներ է Եպիփանիոս, շատ տրտմեցաւ. բայց որովհետեւ մեծ համբաւ ստացեր էր Եպիփանիոսի աշակերտը Հռոփանոս, իբրեւ իր վարդապետին

հանճարոյն և ճարտարմտութեանը ժառանգ, և Սամոսատացւոց (Սամոսատ) քաղաքին մէջ առանձնացեր նստեր էր, շուտով մը անոր գնաց[1]։ Սակայն հոս ալ ընդունայն եղաւ իր աշխատութիւնը։

Ա՛լ անկէ ետքը մարդկային հնարագիտութենէ իր ամէն յոյսը կտրեց Մեսրովպ, ու միայն աստուածային օգնականութեան վրայ դրաւ ակնկալութիւնը։ Եւ յիրաւի, այս անգամ տարապարտ չյոգնեցաւ։ Ժամանակակից ու ստուգապատում պատմագիրք կ'աւանդեն թէ օր մը յանկարծ տեսիլքով՝ յափշտակուեցաւ. աչքին առջևը քար մը տեսաւ, ու աներևոյթ թաթ մը՝ որ այլևայլ տառեր կը գրէր այն վիմին վրայ, ու անոնց ձևը 'ի նմին ժամանակի կը կերպացընէր նաև Մեսրովպայ սրտին վրայ։ Մէկէնիմէկ աղօթքէն ելլելով՝ իմացաւ Մեսրովպ թէ աստուածային էր այն տեսիլքը. իրեն երևութացած գրերուն ձևը ու նմանութիւնը՝ դեռ իր մտաց մէջ տըպաւորուած էին, ուստի մէկէն գնաց առ Հռոփանոս, և պատմեց իրեն տեսիլքը՝ ու կերպը բացատրեց. որ իր ճարտար գրչովն՝ վայելուչ ու գեղեցիկ ձևեր տուաւ նոյն տառերուն։ Սուրբն Սահակ հաւատարիմ մնաց իր խոստմանն և աջակցութեան «յերիւրելով... և դիւրահընար ճանապարհ ցուցանելով (երանելոյն Մաշթոցի), կարգաւորութեան գրենոյս և հեգենային ուղղաձայնութեան, տալով նմա օգնականս... որք էին սակաւ մի և նոքա՝ որպէս երանելին Մեսրոպ՝ մերձաւորեալք 'ի յունարէն հեգենայսն»։

Այսպէս Մեսրովպ և Սահակ, ամոլք սիրալիրք, արժանապէս կոչուած կրկին մտաւոր «լուսաւորիչք տանս Թորգոմայ», ունեցան իրենց մեծ և բազմաշահ գործակցութիւնն և արդիւնք գիւտի գրոց կարևոր գործոյն մէջ.

1 Յիշատակի Հռուփինոս անունով եպիսկոպոս մը 'ի Սամոսատ (440), յաջորդ Անդրէի եպիսկոպոսի քաղաքին։ Ժամանակակից ըլլալով՝ կրնայ կարծուիլ թէ առ սա դիմեր է Մեսրովպ։

մին հնարող, ճարտարող և ձեւերն տուող, միւսն՝ անոնց ձայնը ու հեգ. որով երկուքն ալ ամբողջ ազգի մը ապագային առջեւ չնորհընկալ երախտագիտութեան արժանաւորք ։

*
* *

Հայկական այբուբենից գիւտին պատմական և արդէն ծանօթ մասը համառօտիւ յիշատակելնէս ետքը, քանի մը խնդրոց կը հանդիպինք, որոնցմով արդէն պարապած է ու կը պարապի բանասիրութիւնը, և զորս արժան է մէջ բերել 'ի գիտութիւն և 'ի խելամտութիւն ։

Այս խնդրոց մէջ գլխաւորն է թէ արդեօք սորոյն Մեսրոպեայ գիւտը, ամբողջ մեր այբուբենին, երեսուն և վեց տառից ալ կը վերաբերի, թէ անոր մէկ մասին. կամ թէ յառաջ քան զգիւտ նորա՝ յատուկ հայկական նշանագիրք ունեցա՞ծ ենք ։

ՉԺԸ Թուականին գրչագրած մատենի մը մէջ՝ հետագայ հատուածին կը հանդիպինք, և որ մասն է դաւանական երկար գրութեան մը՝ զոր, ըստ ձեռագրին, յօրինած է «սուրբ վարդապետն Սահակ՝ Հայոց կաթուղիկոս և մեծ թարգմանիչ» ։ Ահաւասիկ այդ հատուածը. «Նախ քան զծագումն (Փրկչին) պերճաբանութիւն հռետորական արհեստից՝ ըստ պղատոնական վարժից՝ ոչ երբեք ստորագրեալ ոտնառեաց 'ի կողմ հայկազանց. և ոչ յոլով մակացութեամբ դեգերեալ հինքն մերազնեայք՝ 'ի հրաշանգս հելլենական ճարտասանութեան ըստ իմաստնոցն Յունաց՝ առ ունակութիւն եղելոց գիտութեանց, որ է առաջին մասն իմաստութեան... այլ և ոչ առանձնական փայելչական գծագրական տառից վաղագոյն հարստացեալ մեր, առանց որոյ ոչ է հնար զանցեալսն իմանալ, և ոչ զներկայս ապագայից թողուլ առ 'ի յիշատակ» ։ Զնոյն իմաստ՝ գրեթէ նոյն բառերով կրկնուած կը գըտնենք դարձեալ վերը յիշուած գրչագրին մէջ՝ 'ի թղթին

որ կ'ընծայուի Ստեփաննոսի Սիւնեցւոյ առ Գերմանոս պատրիարք Կոստանդնուպոլսի. «Ջրկեալք, կ'ըսէ, յառանձնականն տառիցն գծագրութենէ, որով զանցեալսն մարթէաք գիտել, և զներկայս ապագայիցն թողուլ առ 'ի յիշատակ, անճաճանչ աղջամղջաւ, և անլոյս ստուերաւ պարփակեալ նստէաք 'ի խաւարի դիւցազանցն սօնից»:

Եթէ իբրև վաւերականք ընդունուին այս հատուածք,— և զանոնք մէջ բերող գրչագրին հնութիւնը և ընտրութիւնը ոչ դուզնաքեայ երաշխաւորութիւնք կընային ստեպուիլ, — երկու հաչականուն անձինք, պատուականք և մեծարոյք իրենց հնութեամբ, ուսմամբ և եկեղեցական բարձր դիրքով, կարծես թէ մեր յիշած խնդրոյն նկատմամբ ամէն տարակոյս փարատելու բաւական պիտի ըլլային իրենց այս բացայայտ խօսքերովը:

Սակայն թէ՛ օտարաց և թէ մեր հնոց մէկ քանի խօսքերը՝ երկմտութեանց և ենթադրութեանց պատճառ եղած են:

* * *

Ցօտար պատմչաց վկայութիւն մը հասած է մինչև առ մեզ, որ հաւատարմացընել կը թուի հայկական այբուբենից գոյութիւնը յառաջ քան զսուրբ Մեսրոպ և անոր գիւտը: Փիլոստրատոս՝ որ Կարակալլա կայսեր ժամանակ ծաղկած մատենագիր մ'է, կ'աւանդէ թէ ժամանակաւ ինձ մը բռներ էին, պարանոցը ոսկեղէն մանեակով. որուն վրայ հայկական նշանագրօք այս խօսքերս գրուած են եղեր. «Արշակ թագաւոր՝ աստուածոյն Նիւսեայ»: Այս դէպքը մէջ բերող պատմիչն կը յաւելու. «Յայնժամ թագաւորէր Հայոց Արշակ. և կարծեմ թէ տեսեալ նորա զինձն՝ նուիրեաց Դիոնիսեայ վասն մեծութեան գազանին»:

Այս դէպք և գրոյց եթէ արժանահաւատ սեպուի, կընայ բոլորովին կերպարանափոխութիւն մը կրել տալ չա-

տերու ընդունելի եղած գաղափարաց, նկատմամբ այն փոխառութեան տառից՝ զոր Հայք, ինչպէս քիչ յառաջ տեսանք, հետզհետէ բռնադատուեր են ընել 'ի Պարսից, յԱսորւոց և 'ի Յունաց, անոնց յատուկ այբուբենից տառերը իրենց լեզուին կիրառութեանը մէջ մտցընելով։ Վասն զի այն ատեն կրնայ կարծուիլ թէ Հայաստանի մէկ քանի գաւառաց մէջ՝ բուն ազգային տառից կամ այբուբենից կիրառութիւնն կար կամ կրնար ըլլալ, մինչդեռ յայլ գաւառս նոյն երկրին, մանաւանդ Պարսից և Ասորւոց սահմանակից և յունական ազդեցութեան կամ իշխանութեան տակ եղող տեղուանք՝ իրենց դրացի և մերձաւոր երկիրներու մէջ խօսուած լեզուներու այբուբենից տառերը կը գործածուէին։ Առաջին դէպքին ենթադրութեամբ, այն հայկական այբուբենք՝ որոց գիւտը կ'ընծայուի սրբոյն Մեսրովպայ, արդէն 'ի գործածութեան եղած պիտի ըլլան երկար ատեն Հայաստանի այլեւայլ կողմանք. ու Մեսրովպ ուրիշ բան ըրած պիտի չըլլայ՝ բայց եթէ բարեփոխել, ու քանի մը նորագիւտ տառից յաւելուածով կատարելագործել զանոնք, և 'ի մասնաւորի ձայնաւորաց ներմուծմամբ։ Ոչ անծանօթ է բանասիրաց և հմտից՝ թէ ասորատառք՝ ինչպէս ուրիշ որ և իցէ սեմական լեզուք՝ ձայնաւոր տառից կիրառութիւնն չունէին 'ի սկզբան, և միայն Քրիստոսէ ութ դար ետքը առնուած են 'ի յունականէն։ Ծանօթ է դարձեալ որ Հայ այբուբենից ձայնաւորք ալ՝ 'ի յունէ թեթեւ փոփոխութեամբք առնուած և յարմարցուած են. և Մեսրոպ՝ որուն ոմանք 'ի Հայ պատմագրաց, և 'ի մասնաւորի Խորենացի, անոնց գիւտը կամ համաձայնութիւնն կը յատկացընեն, և որ ազգային յատուկ այբուբեն մը հնարելու համար՝ մասնաւոր ճամբորդութիւն և հետազօտութիւնք ըրաւ յաշխարհին Յունաց, ետեւէ եղած է անոնց ձայնաւոր նշանակած հնչումը ու ձայնը մտցընել Հայ այբուբենին մէջ։



Այս կարծեաց կրնան զուգընթաց սեպուիլ մեր հինգերորդ դարու, և մանաւանդ ժամանակաւ կրտսերագունից խօսքերն ու աւանդութիւնք։

Առջիններուն՝ — սրբոյն Մեսրովպայ ժամանակակից երեք գլխաւոր մատենագրաց, զորոնք շատ անգամ յիշեցինք, — քանի մը մթին և ոչ այնչափ բացայայտ խօսքերէն կրնայ գուշակուիլ, թէ առաջուց ալ գիր կար մեր ազգին մէջ, բայց անկատար ըլլալուն պատճառաւ՝ կիրառութիւնը դժուարին, ուստի և երեսի վրայ ձգուած էր. « Զի ոչ էին, կ'ըսէ Կորիւն, բաւական նշանագիրքն ողջ՚ածել զսիւղոբայս և զկապս հայերէն լեզուին » ։ Խորենացին ալ կ'ըսէ. « Զոր առեալ, (Վահրիճ՝ զՀաբէլ), և երթեալ նովաւ հանդերձ քաջ հմտացեալ 'ի Դանիելէ, կարգեալ ըստ ձեւոյ օրինակի յունականին զվաղնջուց գըտեալ նշանագիր տառից, եկեալ ետուն ցմեծն Սահակ և Մեսրոպ։ Որոց ուսեալ, և թեւածելով ընդ նոսա տղայոց զամս սակաւս, տեղեկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրաք սոյգ հոլովել զհեգենայս բառից հայկականաց հագներգաբար՝ մուրացածոյիւն այնուիկ գծագրութեամբ » ։ Փարպեցին ալ կ'աւանդէ թէ սուրբն Մեսրովպ՝ դեռ առ Սահակ կաթուղիկոս և առ Վռամշապուհ թագաւորն չգնացած, և դանիէլեան նշանագրոց գտնուիլը չիմացած, շատ ետեւէ կ'ըլլար հայերէն գիր հնարելու. « Մանաւանդ թէ գոն, կ'ըսէ, նշանագիրք հայերէն լեզւոյս » ։ Ետքն ալ կը յաւելու թէ, « Զարթոյց աստուածայինն շնորհ 'ի ցանկութիւնս յայս (զՄեսրովպ), կարգել զվաղնջուցն գտեալ շարագիրս տառիցն՝ զորս ոչ ուրուք էր հոգացեալ՝ արկանել 'ի կիր » ։ Այս խօսքին կը համաձայնի և Խորենացին՝ յասելն. « Կարգեալ ըստ ձեւոյ օրինակի յունականին զվաղնջուց գտեալ նշանագիր տառից » ։ Դարձեալ Կորիւն՝ դանիէլեան նշանագրոց

վրայ խօսելու ատենը ասանկ կը գրուցէ. « Մանաւանդ զի և նշանագիրք իսկ յայլոց դպրութեանց թողեալք, և յարուցեալ դիպեցան » . որով անշուշտ կ'ուզէ իմացընել թէ այն դանիէլեան կոչուած նշանագիրք նոր հնարուած չէին, այլ հին՝ բայց անկատար. ուստի և առջիններէն երեսի վրայ թողուած, ու ետքը Դանիելի ասորւոյն քով գտնուեցան. ու թէ որ առջինները, կ'ըսէ, զանոնք երեսէ ձգեցին, որովհետեւ պէտք եղած դիւրութիւնը չունէին վանկերը հեգելու, ինչո՞ւ համար մենք դարձեալ պիտի աշխատինք ու յոգնինք՝ նոյն անկատար նշանագիրներով:



Երկրորդ խնդիր մ'ալ:

Հայկական այբուբենից գիւտին պատմութեան մէջ՝ ինչպէս տեսանք, ասորւոյ մը՝ Դանիելի անունը կը յիշատակուի, և որուն կարեւոր դեր մը ընծայուելով 'ի պատմըչաց, հետեւաբար հետաքննութեան նիւթ մը կը դառնայ բանասիրաց և քննադատից թէ ուստի իր քով կը գըտնուէին այդ տառք, և առ որ հարկ կը սեպեն դիմել Հայոց քաղաքական և հոգեւոր իշխանութեանց ներկայացուցիչք յատուկ պատգամաւորութեամբ և աղերսական թախանձանօք. և թէ արդեօք՝ մեր պատմութեանց մէջ իր անունը կրող այդ նշանագիրք՝ Դանիելի ստեղծուա՞ծք էին թէ հին ժամանակաց յօրինուածք: Իրաւամբք Դանիելի անուան քով դրուած և իր ազգութիւնն ցուցընող մակդիրը՝ ոչ միայն կասկածելի կ'ընէ որ այդ նշանագրերը Դանիելի գիւտն եղած ըլլան, այլ բոլորովին իսկ աններելի, — ինչպէս կ'անդրադարձընէ նոր բանասէր մը, — զայնս նմա վերագրել. և արդարացի տեսութեամբ կը հետեւցընէ թէ « Ի՞նչ շահ կամ հարկ կամ բաւականութիւն իսկ կարէր ունել միջագետաքնակ ասորի մը՝ այսպիսի գործով մը զբաղելու. մինչդեռ նոյնն Մեսրոպայ իսկ

*պէսպէս փորձիւք տաժանել տուաւ, ինչպէս վկայեն իր կենսագիրք »*[1]։

*Այսպիսի ենթադրութեան կամ տարակուսի մը պատասխանը՝ լիուլի տուած է կարծենք մեր տոհմային պատմութիւնն, որ թէպէտ Դանիէլի և իրեն անունը կրող նշանագրաց խօսքն ըրած է յաճախ, բայց ոչ երբեք յայտնի և որոշ կերպով անոնց հնարիչ կամ ստեղծող զինքն սեպելով։ Ժամանակակից պատմչաց խօսքերն արդէն յիշատակեցինք. հետագայք ալ զնոյն կրկնած են, ընդհանրապէս միայն աւանդապահ մը զինքն համարելով 'ի վաղընջուց գտնուած և 'ի կիրառութենէ դուրս ինկած տառերու՝ որոնք կամ բուն հայկականք էին և կամ հայերէն լեզուի յարմար կրնային կարծուիլ։ Միայն կայսերաց կոչուած ժամանակագրական ու բաւական հնութիւն ունեցող երկասիրութեան մը մէջ, և որ 'ի յունէ փոխաբերութիւն է 'ի հայ, Դանիէլի գիւտն ըլլալու նշմար մը կը տեսնենք. « Ի սոցա տասներորդ ամի կ'ըսէ, (Արկադեայ և Ոնորիոսի) եղեւ սկիզբն հայերէն քսան և հինգ գրոց … Ի սորա յաւուրսն էր սուրբն Սահակ հայրապետն, յորոյ աւուրս գտաւ քսան և ինն գիրն հայերէն լեզուի 'ի Դանիէլէ փիլիսոփայէ ասորւոյ, զոր ետ բերել Վռամշապուհ թագաւորն. իսկ զեւթն գրոյն պակասութիւնն Մեսրոպ երանելի տարաւնեցի 'ի Հացեկաց գեղջէ յազատ տանէ, ամսօրեայ պահովք և աղօթիւք հանդերձ աշակերտովքն հայցէր յԱստուծոյ. որ և ցուցաւ նմա 'ի տեսլեան. այս լինէր յաւուրց աշխարհին՝ յորժամ վասն նորին խնդրոյ ճանապարհորդեաց նա »։*

*Մեր պատմչաց վկայութիւնք չեն համաձայնիր ընդ նըմա յայս կարծիս։ Բաց 'ի ծանօթագունից և 'ի հնոց՝ որոց խօսքերն արդէն յայտնի են ընթերցողաց՝ Ասողիկ կ'ըսէ. « Գտաք հանդիպեալ յերկրորդ ամին Արտաշրի ար-*

1 Երկրագունդ, հանդէս ամսեայ. Կ. Պոլիս, Արամեան տպարան, 1884–85։

քայի Պարսից՝ զհինգերորդ ամն Վռամշապհոյ արքայի Հայոց։ Յորում Մաշթոցն երանելին՝ որ էր 'ի գաւառէն Տարօնոյ 'ի գեղջէ Հացեկաց, 'ի ձեռն Վռամշապհոյ և մեծի Հայրապետին Սահակայ՝ դանիէլեան նշանագրօք զգրութիւն ըստ Հայումս յօրինէր՝ ընկերօք ոմամբք տուելովք նմա 'ի Սահակայ։ Յետ որոյ դարձեալ եւս 'ի վեցերորդումն նորին Վռամշապհոյ՝ որ է առաջին Վռամայ Կրման արքայի, վերստին աստուածային շնորհաց տուեալ նշանագրաց՝ զնոյնս յեղանակեալ յօրինէր։ Որովք և դըպրութիւնք և գիրք աստուածաշունչք ուղղեալ թարգմանին, որպէս պատմէ Կորիւն և Ղազար»։ Նոյնն դարձեալ, «Մեսրոպ որ և Մաշտոց, այր սքանչելի քահանայ, նախագոյն և վարդապետ ըստ հայումս նշանագրութեան, յայսու ժամանակաւ յաւէտ եւս երեւեալ պայծառանայր»։

* * *

Խորենացւոյ պատմութեան մէկ քանի գրչագրացը մէջ հայերէն գրոց գիւտին պատմութիւնը յաւելուածով՝ կամ թէ ըսենք՝ տարբերութեամբ մը կը պատմուի։ Սրբոյն Մեսրովպայ ջանքն ու փոյթը պատմելէն ու օգուտ մը չըտեսնելէն ետքը՝ կը յաւելու. «Աղօթքի կ'ապաւինի, ու կը տեսնէ չէ թէ քունի մէջ երազ, և ոչ թէ յարթնութեան տեսիլ, այլ սրտին գործարանին մէջ երեւութանալով հոգւոյն աջ ձեռին թաթ մը որ կը գրէր, Ա, Ե, Է, Ը, Ի, Ո, Ւ»։ Այս խօսքերով՝ զանազանութիւն կամ մասնաւորութիւն մը կը տրուի սրբոյն Մեսրովպայ հնարած գրերուն։ Այս կարծեաց՝ կերպով մը ձայնակից կ'ըլլան յետին դարուց պատմագիրներէն Ասողիկ և Վարդան։ Ասողիկ կ'ըսէ. «Հայոց Սահակ հայրապետին օրը՝ հայկական դպրութիւնն եղաւ. քսանըեօթը գիր՝ առըւոց Դանիէլ փիլիսոփային ստեղծեց. իսկ եօթն գրոց (կամ ձայնաւորաց) պակասութիւնը՝ Մեսրովպ տարօնացի խընդրուածով կ'առնու յԱստուծոյ»։ Վարդան ալ կը գրէ.

« Սուրբն Մեսրովպ հայերէն դպրութիւնը կը յօրինէ. քսանուերկու գիր՝ Դանիէլի ասորւոյն քով գտնելով հին ժամանակներէ, որոնք մեր լեզուին ընդարձակութիւնը պարզել չկարենալնուն համար՝ նախնիք անհոգութեամբ երեսի վրայ ձգեր էին, ու յոյն, ասորի և պարսիկ գրերը կը գործածէին. և որովհետեւ սուրբն Մեսրովպ չէր կրնար անոնցմով աստուածաշունչ գրոց թարգմանութեան ձեռք զարնել, անոր համար սրբոյն Սահակայ գործակցութեամբ բը աղօթքի դիմեց, և տասնուչորս գիր տուաւ Աստուած իր ձեռքովը գրոշմուած »: Նոյն Վարդան պատմիչը իր կարծեաց ստուգութեանն համար դէպք մըն ալ մէջ կը բերէ. « Լեւոն թագաւորին օրերը, կ'ըսէ, վկայուեցաւ թէ Հայք հին ատենէն գիր ունէին. վասն զի Կիլիկիայի մէջ դրամ գտնուեցաւ մեր հին կռապաշտ թագաւորաց օրէն մնացած՝ հայերէն տառերով, բայց նոյն գրոց պակասութիւնը՝ մեր նոր Եզրասը (կամ Մեսրովպ) լեցուց [1] »:

Յամուէլ անեցի. « Սկիզբն դպրութեան Հայոց. Մաշ-

1 Հմուտ հնախօսըն Լանկլուա, հայագէտ և դրամագէտ՝ իրաւամբք անստոյգ կը համարի Վարդանայ մէջ բերած այս դէպքը. վասն զի, կ'ըսէ թէ, Արշակունի թագաւորաց անունով գտնուած դրամք՝ ոչ երբէք հայկական, այլ միշտ յունական վերտառութիւն կը կրեն. և հաւանական կը համարի որ Վարդանայ գրոց մէջ յիշատակուած դրամը՝ աքեմենեան թագաւորաց հպատակութեան ատեն գտնուող նախարարաց մէկուն ըլլայ, փիւնիկեան տառերով: Այսպիսի դրամք կը գտնուին, կ'ըսէ, ինչուան հիմա 'ի Կիլիկիա, ուր ինքն անձամբ ճանապարհորդած է, և տեղագրութիւնն հրատարակած, և այլևայլ հընութիւնք փոխադրած 'ի հայրենիս իւր 'ի Գաղղիա, 'ի Լուվր Փարիզու: — Ի հաւաքման հին դրամոց Այնզլէ անգղիացւոյն, ի մի կողմն ունելով դրոշմեալ աստուածոյն ի մէջ երկուց մոգուց, իսկ ի միւս կողմն դէմք թագաւորի ըստ արեւելեան օրինակի սաղաւարտաւ, զորս ասուած է և կը կարծէ ունել շուրջանակի հայկական տառս որոշ ձեւացեալս հ, տ, պ, կ, հ, ևն. այսպիսի դրամք կը գտնուին յայլևայլ հանդիսարանս դրամոց զորս կոչեն դրամս Պարթևաց արշակունեաց: Տես ինճիճեան վարդապետը, որ յիշատակէ ի Հնախօսութեան իւրում (Հատոր Գ).

տոց և Մեսրոպայ երանելւոյն և մեծն Սահակ՝ զԴանիէլի նշանագիրսն յօրինէին ընկերաքն հանդերձ. և յետ միոյ ամի՝ դարձեալ աստուածատուր նշանագրաք զնոյն յեղանակեալ. որով և դպրութիւնք և գիրք աստուածայինք ուղղեալ թարգմանէին »:

Ի Ցայսմաւուրս. « Սուրբ վարդապետն Մեսրոպ աշակերտ էր մեծին Ներսիսի հայրապետին և դպիր նորին. և յետ կատարման նորին եղև 'ի դրան արքային. և յետ փոքր մի ժամանակաց զկնի առեալ զկրօնաւորական ձև՝ սիրեաց զմիայնութիւն, բնակեցաւ 'ի Գողթն գաւառ, և լուսաւորեաց զնոսա քրիստոնէական հաւատով. և զի էր ինքն միայն, աշխատէր 'ի թարգմանելն զգիրս սուրբս ժողովրդեանն հելլենացի լեզուոյն 'ի հայ: Սկսաւ ապա ընդ միտ ածել թէ լինէր հնար գրոյ Հայոց՝ զի մի՛ անմխիթար մնասցեն յընթեռնուլն այլ լեզու զաստուածաշունչ գիրս. և յարուցեալ եկն առ մեծն Սահակ հայրապետն, և եգիտ զնա 'ի նոյն հոգոց վարանմունս: Իսկ թագաւորն Հայոց ծանոյց նոցա վասն քահանայի միոյ ասորոյ Դանիէլ անուն թէ խոստանայր ունել նշանագիր Հայոց. զոր առաքեալ՝ բերին. և վարժեալ նովաւ մանկունս՝ տեսանէին զի ոչ բերէր ուղղակի զհեգս Հայոց բարբառոյն. քանզի յոյն գիրն միայն յարմարեալ էր »:

Գանձարան գրոց մէջ... « Աստ հոգին չարժեալ — Աւնուս ազդեալ — Հայ գիր աւրինեալ. — Վռամշապուհ աւգնեալ, — Վահրիճ գործակցեալ, — Դանիէլ շնորհեալ, — Քսան և ինն գըտեալ, — Նախնեացն արարեալ. — Ամս երկուս չհերքեալ — Բազում աշխատեալ — Եւ ոչինչ օգտեալ: — Ջեռն յԱստուած ձգեալ. — Ի Բալու տըքնեալ — Մեսրոպ ապաւինեալ. — Աստուած գըթացեալ. — Հրեշտակ տեսան իջեալ — Մատամբ փորագրեալ — Ի վիմին դրոշմեալ: — Աջ ձեռն երեւեալ — Իբր 'ի ձեան գըրեալ — Եւթ դիր յօրինեալ. — Այն հոգի ջահեալ — Ջայն գիրսն յարուցեալ, — Սիզոբայք հերքեալ »:

Դարձեալ 'ի նոյն գրոց. « Ի մերոյ սուրբ Լուսաւոր-

չէն — Գրիգորիոս արթուն անուանէն — Աւրհնադրեալ դարձաք 'ի չարէն — Ի կռոց զոհէն 'ի բանսարկուէն։ — Այլ նա վարժեալ գրով յունարէն — Զի չունէաք գիր հայի բառէն — Մինչ 'ի Սահակ մեծն 'ի պարթեւէն. — Մեծըն Մեսրոպ ցանկալին բազմաց — Արժան եղեւ սուրբ Հոգւոյն շնորհաց... Զոր 'ի նմանէ սուրբ Սահակ խընդրեաց — Գիր յաւրինել մեզ Հայոց մեծաց։ — Ցոլով տեղիս վասն այնոր գնաց — Ոչ գըտանէ հնար յայնմ իրաց։ — Քանեւինն գիր էր գըտաց — Այլ անաւգուտ էր ընթերցողաց, — Զի և ոչ կապէր հեգ բառից անուանց, — Այլ անհոգի մարմնոյ նըմանած։ — Մինչեւ բազում տարիք աղօթեաց — Հառաչանաւք սըրտիւ արտասուաց. — Ածն Աստուծոյ անեղին փառաց — Ըզեւթն գիրն 'ի քարին գըրեաց, — Որպէս երբեմն հին աւրինաց — Քարեայ տախտակըն Մովսեսի գըրեաց. — Աւրհնեալ Փրկիչն որ զՀայք մեծարեաց — Քան զամենայն ազգս գերակաց։ — Երեւեցաւ Մեսրաւպ ցանկալին — Համանըման մեծին Մովսեսին. — Տըպաւորեալ 'ի սիրտս նորին — Այն որ գրեցաւ աջով երկնային. — Ա, Ե և Է կարգեալ ընդ Ըին — Եւ Ո և Ի 'ի կարգին. — Զոր և առեալ մեծի Մեսրաւպին — Խառնեալ 'ի յայլ գրերն առաջին. — Սուրբ Հոգի ջահեցաւ նոցին — Վեցեակ վեցից համարով գըրին »։

Չենք ուզեր յերկարել յայլ վկայութիւնս, յորս յամենեսին քաջայայտ կ'երեւնայ ասորւոյն ընծայուած մասնակցութեան որպիսութիւնն և չափ՝ նշանագրաց գիւտի խնդրոյն մէջ, և որոնք յայտնապէս վաղնջուց գտեալ նշանագիրք կը կոչեն Դանիելի քով գտնուածներն։

* * *

Որպիսի՛ հանդիպմամբ Հայաստանի անծանօթ մնացած նշանագիրք՝ կը գտնուէին առ ասորի քահանային։ — Հայք՝ ասորի տառեր գործածելու բուն հարկին մէջ գըտնուած ատենին՝ այդ երկու ժողովրդոց մէջ յարաբերու-

թիւնք կային անտարակոյս. և զարմանք չէր՝ որ Հայոց ոչ եթէ բոլորովին անծանօթ, այլ իրենց պիտոյքը լեցընելու անբաւականութեանն համար երեսէ ձգուած կամ թողուած նշանագիրք՝ իբր ուսումնասիրելի կամ հետաքննութեան արժանաւոր նիւթք մնացած էին առ Դանիելի։

Մեր քիչ յառաջ յիշատակած բանասիրական հանդիսին յօդուածագիրն՝ երկրորդ, ու հաւաստապէս հետաքննելի հարցումն կ'առաջարկէ. «Եթէ առ Դանիելի յայտնեալքն, կ'ըսէ, հին հայկական նշանագիրք էին, ի՞նչ կերպարանաց ներքեւ գտաւ զնոսա՝ Դանիէլ. իբր ցանկ կամ ցուցակ ինչ այբուբենի, թէ իբրեւ մատենաձեւ գրութիւն՝ որ այդ վաղեմի տառիւքն ձեռագրեալ էր»։ Ըստ մեր կարծեաց՝ կրնար թէ՛ մէկն և թէ մէկալն ըլլալ. և փափաքելի անշուշտ ամբողջ գրութիւն մը կամ գրուածք, և որ մեր ազգային հին դպրութեան գոյութեան նկատմամբ յառաջ քան զգիւտ գրոյն՝ յուզուած խնդրոց լուծման համար մեծ կարեւորութիւն կ'ունենար, և որք ցայսօր մթին և անորոշ մնացած են. բայց արգելք մ'ալ չենք տեսներ կամ անտեղութիւն որ իբրեւ պարզ նշանագրաց կամ այբուբենի ցուցակ մը գտնուէին ասորի եպիսկոպոսին քով, ունենալով անշուշտ այդ նշանագրոց հեգը, ոյժը, զօրութիւնը հասկըցընելու բաւական ու պարտուպատշաճ բացատրութիւններ հայ, կամ ասորի և յոյն լեզուով. և ինչո՞ւ ասորի մը այդպիսի հետազօտութեամբ և քննութեամբ պիտի չկարենար պարապիլ՝ երբ Հայք այդչափ յարաբերութեան մը մէջ գտնուելու բռնադատուած էին՝ անոնց տառից կիրառութեամբ։ Մէջ բերուած ժամանակակից պատմչաց վկայութիւնք՝ Խորենացւոյ և Փարպեցւոյն, առաջնոյն՝ «կարգեալ ըստ ձեւոյ յունականին զվաղնջուց գտեալ նշանագիրս տառից», և երկրորդին՝ «Հանդիպեցուցանէր զհայերէն աթուաթայսն ըստ կարգման սիլովբայիցն Յունաց», որչափ ալ ստուգիւ կը նշանակեն թէ Մեսրովպ «դա-

սաւորեց այդ վաղնջական տառերը ըստ կարգի յունական այբուբենին՝ համապատասխան տառից հանդիպեցուցանելով զնոսա ». բայց անկէ աւելի բան մը չեն նըշանակեր՝ ըստ մեզ. և որ դիւրին էր՝ արդէն իրենց ձեռքըն եղած նշանագրաց ցանկի մը վրայէն ուրիշ ցանկ մը կարգել և պատրաստել, օժանդակուելով նաև իրենց անձնական և արդէն հռչակուած յոյն, ասորի և մանաւանդ հայկական լեզուաց հմտութեամբն և գիտութեամբ։

* * *

Երրորդ ու վերջին հարցում մ՚ալ առաջարկուած է ՚ի նոյն հմուտ ու հետազօտող սիրաբանէ թէ « արդեօք Մեսրովպ այդ վաղնջական նշանագրաց թերութիւններն լեցընելու ժամանակ՝ անթերի եղողներուն ձեւերը թողո՞ւց հաւատարմութեամբ, թէ ինքնակամ և մտացածին նոր ձեւեր ընտրեց կամ հնարեց »։ Իրեն հետ համամիտ այս հարցման պատասխանին նկատմամբ՝ ոչ հարկաւոր և ոչ պատշաճական կը գտնենք՝ արդէն հնարուած և ազգային լեզուի հնչմունքը արժանապէս և անսայթաք կերպով բացատրող նշանագրաց ձեւերուն մէջ անկարեւոր փոփոխութիւններով՝ թէ՛ իր և թէ այլոց աշխատանքը դժուարացընել և կնճռել։ « Ի՞նչ հարկ այդ փոփոխման, — իր ստուգահաւատ խօսքերը մէջ բերելով, — երբ զառաջինն գոհ եղան և սփռեցին ընդ աշխարհն. նա մանաւանդ այդ պարագայն, որ պատմական է, քանի՛ հակառակ հարկ փոխելէ զգուշանալու, որ հազարաւոր տղայք սկսեր էին արդէն ընտանենալ այդ հին նշանագրաց ձեւոյն։ — Իսկ աւելցունել հա՞րկ է նաև ուրիշ փոքր ինչ հեռաւոր խորհրդածութիւն մը, որ այդ հին ձեւոց իբրեւ ազգային աւանդի մը հաւատարիմ մնալն՝ դիւրութիւն կը մատուցանէր Մեսրովբեանց բարոյական դժուարութեան մը յաղթելու՝ որ թերեւս կրնար յառնել, և թերեւս յարուցեալ

իսկ էր՝ 'ի չարակամ (կամ 'ի նախանձոտ) ընդդիմացողաց այդ ձեռնարկութեանն իբր նորելուկ բան։ Հնութեան հեղինակութիւնն մեծ է յոյժ. և այնքան մեծ, որ նորա լեզուաւ խօսողն՝ շատ անգամ նաեւ զդժուարինն և զտգեղ և զանհանդուժելին, սիրելի և յարգելի և տանելի կ'ընծայէ։ Ինչո՞ւ այդպիսի պիտանի օժանդակէ մը ինքզինք զրկէր Մեսրովպ ինքնակամ և քմահաճոյ նորութեան մը սիրով»։ Ի հաւաստիս այս կարծեաց՝ ամենաբացայայտ վկայութիւն սեպուած է նաեւ Փարպեցւոյն խօսքը՝ թէ « Զարթոյց աստուածայինն շնորհ (զՄաշթոց) 'ի ցանկութիւնս յայս, կարգել զվաղնջուց գտեալ նշանագիրս տառից, զորս ոչ ուրուք էր հոգացեալ արկանել 'ի կիր »[1]. և չէր կարելի համարձակել ըսել Փարպեցւոյն թէ Մեսրովպ զհին նշանագիրս հոգացաւ արկանել 'ի կիր (այսինքն 'ի գործ ածել) եթէ զձեւսն փոփոխեց. զի այդպիսի փոփոխութիւն՝ մահ է այբուբենի մը անձնաւորութեան։

* * *

Դանիէլ ասորւոյն քով գտնուած հայկական հին նշանագրաց հմտանալէն՝ և ազգին ինչուան այն ատեն ունեցած կարեւորութեան. պէտք եղածը՝ գէթ քիչ մը ատենի համար, կարգադրելէն ետքը, Մեսրովպ կ'անցնի 'ի Միջագետս։ Այս ուղեւորութեանն ալ նպատակը ուրիշ բան չէր կրնար ըլլալ՝ բայց ինչ որ մինչեւ այն ատեն զբաղեցուցած էր Մեսրովպայ բազմաշխատ միտքը և ազգանուէր սիրտը։ Որչափ ալ մասամբ գոհ եղեր էր՝ գըտած և ազգին բաւական ընտանի ըրած նոր գիւտովը և անոր արդեամբքը, բայց կային ուղղելիք և յաւելլիք՝

1 Փարպեցւոյն այդ յայտնի խօսքերը՝ ապացոյց մը չեն սեպուիր թէ առ Դանիէլի եղած նշանագիրք՝ լոկ գրերու ցուցակ մ'էին, և ոչ կարգաւորեալ դրուածք մը։

*անոր փափաքելի կատարելութիւն մը տալու համար. և առ այն՝ չէր կրցած օժանդակել ասորի եպիսկոպոսն. հարկ էր ժամանակին գտնուող ու հռչակուած իմաստնոց և հմտագունից դիմել: Իր ամէն կենսագիրք, թէ ժամանակակիցք և թէ կրտսերագոյնք, ամէնքն ալ զայս նըպատակ կու տան Մեսրովպայ ինչուան հեռաւոր տեղիս յօժարափոյթ ուղեւորութեանց՝ մեծ մարդկանց, ինչպէս ինքն էր արդեամբք, յատուկ հաստատամտութեամբ: Եթէ ոմանց անպատճառ կամ անկարեւոր կրցած են համարուիլ՝ աշխարհէ յաշխարհ, քաղաքէ 'ի քաղաք թափառիլ միայն այդ վախճանաւ, և կամ ինչպէս ըսուած է և գրուած, իբրու մուրացիկ դռնէ դուռ քալել, անշուշտ այդպիսիք ոչ այնչափ լըջաբար ուզած են խորհըրդածել թէ որչափ դժուարին է ազգի մը արդէն ունեցած լեզուին՝ անոր հոգւոյն համեմատ և համաձայն տառեր ստեղծել: Քառասուն և աւելի տեսակք այբուբենից կան առ զանազան ազգս, բայց անոնք ամէնքն ալ՝ մեր ենթադրածին համեմատ հեշտեաւ հնարուած չըլլալուն՝ վկայ ու երաշխաւոր կեցած է պատմութիւնը:*

*Միայն այդ վախճանաւ՝ ըսինք. վասն զի Մեսրովպայ ուրիշ դիտմունք ալ ունենալուն այդ ճանապարհորդութեանց մէջ՝ վկայութիւն կու տան մեր շատ անգամ յիշատակած պատմիչք: Նախ կը յիշեցընեն Պղատոս կամ Պղատոն կոչուած անձն մը՝ առ որ կը փութայ երթալ Մեսրովպ՝ իմաստուն ու ճարտարասան հռետոր մը՝ որ կը բնակէր յԵդեսիա, և զոր միաբան ու մի և նոյն բառերով հաւասար կը գրուատեն Խորենացի և Փարպեցի, և միաձայն 'ի վկայել՝ որ իր գիտութեամբն և ունեցած տեղեկութեամբք չկարելով օգտակար ըլլալ Մեսրովպայ՝ խոստովանեցաւ իր անբաւական ըլլալն առ այն գործ: Իրենցմէ ետքը եկող 'ի պատմչաց ոմանք՝ բազմաւորաբար կը ներկայացընեն այս դէպքը. « Մեսրովպ, կ'ըսեն, հանդերձ աշակերտօքն իւրովք էջ 'ի Միջագետս. և խնդրելով զլուծումն փափաքանացն յիմաստասէրսն որ անդ էին՝ ամենեքեան*

զօրութիւն խոստովանեցան »։ Պղատոնէն ետքը առ Եպիփանիոս, Հռուփանոս և առ այլս կ'երթայ Մեսրովպ՝ ունելով միշտ իր գլխաւոր դիտմունքն ու վախճանը։

Բուն ազգային մատենագրութեան մը հաստատուն հիմունքն ձգելու համար, — և այս էր Մեսրովպայ ջանք, — առաջին և գլխաւոր, բայց ոչ միակ միջոց էին Նշանագիրք։ Անոնց գիւտէն ետքը՝ անհրաժեշտ հարկ սեպեց սուրբ վարդապետը՝ թէ՛ անձամբ և թէ իր ընտրելագոյն աշակերտաց և օգնականներուն հետ այլևայլ համբաւեալ դիւանաց և մատենադարաններու յայց ելլել։ Թէ ինչ օգուտ քաղեց ազգային դպրութիւնն այդ ճանապարհորդութիւններէն ու ժամանակին հռչականուն իմաստնոց հետ տեսութեննէն և օժանդակութեննէն, հինգերորդ դարու մէջ կատարուած ոսկեղէն թարգմանութեանց մնացորդք բարձրաբարբառ կը վկայեն։ Հարկ էր դարձեալ այդ ուղևորութեանց աշխատութիւնը՝ օտար մատենադարանաց մէջ ցրուած այլևայլ յոյն և ասորի տառերով գրուած և գտնուած հայ գրքերն ալ տեսնել, քննել և պէտք եղած տեղեկութիւններն ստանալ, հայրենեաց զանոնք ծանօթացընելու և հաղորդելու նպատակաւ։

Այս ամէն տեղեկութեամբք և տեսութեամբ, և որ համառօտութիւն մը կրնան սեպուիլ՝ ազգային և օտար բանասիրութեան կողմանէ այս նիւթոյս վրայ ինչուան հիմա գրուածներուն, դեռ մութ և անթափանցելի կը մնայ հայկական Նշանագրաց գիւտին ճիշդ պատմութիւնը. և իրաւամբ փափաքելի կ'ընէ՝ արդէն խոստացուած և սպասուած լուսաբանութեանց հրատարակութեան՝ որոնցմով «խնդրոյն ամենայն կնճռմունքն և խրթնութիւնք, — կ'ըսուի — քակեցան, պարզեցան. և այդ ճգանց հետևանք եղաւ յաղթութիւն »։

Տասնուհինգ երկար դարերու մէջ՝ անլոյծ մնացած խնդիր մը. սակայն յարատև ճգանց, հետապնդութեանց և գիտնական ուսումնասիրութեան դիմացը՝ տարակոյս չիկայ որ ամէն դժուարութիւնք կրնան հարթուիլ։



Դանիէլեան նշանագիրք Միջագետաց մէջ կարգի դրուեցան՝ կամ Դանիելի և կամ Հաբելի և այլոց ձեռքով, ըստ ձեւոյ օրինակի յունականին, ինչպէս կ'աւանդէ Փարպեցի։ Կորիւն՝ այս կարգադրութիւնը Հռուփանոսի կու տայ՝ երբոր կը գրուցէ. « Ընտրութիւնս նշանագրոցն՝ զնրբագոյնսն, զկարճն և զերկայնն, զառանձինն և զկրկնաւորն միանգամայն յօրինեալ »։ Իրեն համաձայն է և Խորենացին, միայն աւելի կերպով մը սրբոյն Սահակայ կ'ուզէ ընծայել այս պարծանքը՝ երբոր Հռուփանոսի համար նախ սանկ կը գրուցէ. « Ստեղծ զնշանագիրս մեր հանդերձ Հռուփանոսիւ, կերպաձեւեալ զգիրն առձեռն պատրաստ Մեսրովբայ. փոխադրելով զհայերէն աթութայսն ըստ անսայթաքութեան սիւղոբայիցն 'ի հելլենացւոյն ». ու ետքը անմիջապէս կը յաւելու. « Ջեռն 'ի գործ առնէր երանելին Մաշտոց, յերիւրելով զնոսա սուրբ հայրապետին Հայոց Սահակայ, դիւրահնար ճանապարհ ցուցանելով կարգադրութեան գրենոյս և հեգենային ուղղաձայնութեան »։ Ետքը դարձեալ. « Հանդիպեցուցանէր Մեսրովպ զհայերէն աթութայսն ըստ կարգման սաղովբայիցն Յունաց, ստէպ հարցմամբ և ուսանելով 'ի սրբոյն Սահակայ զաթութայիցն գաղափար ըստ անսայթաքութեան յունին. վասն զի ոչ լինէին բաւական 'ի վճարել անսխալ ուղղակի առանց առաջնորդելոյ նոցա սրբոյ հայրապետին Սահակայ, որ յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զբազում գիտնովք Յունաց »։

Մեր հին ու նոր պատմագրաց այսչափ և այսպիսի ու երբեմն նաեւ երկդիմի խօսքերուն հետեւանք եղած են զանազան կարծիք առ բանասէրս, զորոնք ոչ այնչափ հեշտ է իրարու հետ միաբանել։ Բայց ուզելով համառօտել մեր ինչուան հիմայ ըսածներն, այս ամէն կարծիքներն գլխաւորաբար երեքի կրնանք վերածել։

Ոմանք Կորեան, Խորենացւոյն ու Փարպեցւոյն խօսքերէն կը հետեւցընեն՝ թէ սրբոյն Մեսրովպայ օգնութիւն մը ըրած ըլլան ոչ Դանիէլեան և ոչ ուրիշ ո՛ր և իցէ նշանագիրք որ կը գտնուէին կամ կրնային գտնուիլ ազգին մէջ, ուստի և բոլորովին նորէն հնարած է Մեսրովպ հայկական գրերը։ Ասիկայ եղած է ընդհանրապէս շատ բանասիրաց կարծիքը. որոց կը զուգընթանայ և Շնորհալի՝ որ իր վիպասանութեանը մէջ ամբողջ երեսուն և վեց հայկական տառից գիւտը Մեսրովպայ կ'ընծայէ.

« Ըստ Մովսէսի արժանացեալ
Զաստուածագիր տառս ընկալեալ,
Երիւք տասամբք վեցիւք յանգեալ
Արեգական ելիւք չափեալ »։

Բայց ինչպէս վերը ցըցուցինք՝ նոյն իսկ ամենէն աւելի հին ու մերձաւոր ժամանակաւ՝ որով և արժանահաւատ պատմիչներնուս մէջ՝ անանկ խօսքեր ալ կան, որովք կրնանք գուշակել թէ մեր լեզուին մէջ կային յառաջ մասնաւոր նշանագիրք, բայց անոնք՝ լեզուին պէտք եղած դիւրութիւնը չմատուցանելնուն համար՝ հարկ եղաւ որ Մեսրովպայ ջանքովը կատարելագործուին։

Ասկից ելած է երկրորդ կարծիք մը, զոր նախ ոչ այնչափ որոշ կերպով հինք և մերձաւորք ժամանակաւ, և ապա յայտնապէս բացատրած են իրենց գրուածոցը մէջ Վարդան և Ասողիկ, և ուրիշ անոնց հետեւողք, որոնց խօսքը վերը դրինք։ Ասոնք կ'ըսեն թէ Մեսրովպ Դանիէլի ասորւոյն քով քսանուերկու գիր գտաւ, որոնք բաւական չէին առ 'ի պարզել զընդարձակութիւն լեզուին. ու այն պատճառաւ յոյն, ասորի ու պարսիկ գրերը կը գործածէին. ուստի և Մեսրովպ աղօթքի ապաւինելով, Աստուած տասնչորս գիր տուաւ իրեն, երկնային թաթով մը գրուած։ Այս կարծիքը իր կուսակիցքը գտած է նաեւ մեր ժամանակի բանասիրաց մէջ. և յորոց շատերը կ'ըսեն թէ

Մեսրովպայ ջանքը գլխաւորաբար մեր այբուբենին կըրկնակ գրերը հնարելուն համար եղած է. այն գրերը՝ որոնք ուրիշ լեզուաց մէջ չեն գտնուիր, և մեր լեզուին հնչմանց ճոխութիւնը կը կազմեն։

Երրորդ կարծիք մըն ալ կայ թէ Մեսրովպ միայն ձայնաւոր տառերը հնարած ըլլայ։ Ասոնց կարծեաց հիմն ու ամենամեծ վկայութիւնն ալ՝ Խորենացւոյն գրչագրաց մէկէն առնուած է, և որուն այլք ոմանք 'ի յետնոց հետևող և համամիտք են, ինչպէս մենք ալ յիշատակեցինք [1]։

Մեսրովպեան նշանագիրք այլ և այլ ժամանակ մեծամեծ կերպարանափոխութիւններ կրած են իրենց ձևոյն մէջ։ Բայց այս փոփոխութիւնքն ալ ընդհանրապէս իրեքի կը վերածուին, և են Երկաթագիր, Բոլորգիր և Նօտրգիր կոչուած տառերն։ Յայտնի է որ սրբոյն Մեսրովպայ հնարած գրերը Երկաթագիր ըսուածներն էին, որոնց գործածութիւնը հինգ վեց դար տևեց (406 էն ինչուան Ժ դար), առանց երևելի փոփոխութեան կերպարանք մը առնելու։ Այս գիրերուն երկաթագիր ըսուելուն պատճառը՝ հաւանական կ'երևնայ թէ մէյմը երկըթէ գրչով գրուելնուն համար ըլլայ, մէյմըն ալ այն ատեննուան գործածուած թանաքին պատճառաւ, զոր երկաթի ոքսիտով կամ ժանգով կը պատրաստէին։

Բայց իններորդ դարուն մէջ՝ ինչպէս հաւանական կը կարծուի, գրչութիւնը դիւրացընելու համար սկսան գրերուն վերին ու ստորին կողմերը չիտակ գրել, որոնք զատ ձև մը ունեցան. և բուն երկաթագիրը սկսան գլխագրի տեղ բանեցընել։ Ասիկայ է Միջին երկաթագիր ըսուածը, որ մինչև ԺԲ դար և անկէ անդին ալ տևեց քիչ փոփոխութեամբ։ Այս գրերը թէպէտ աւելի համեմատ ձև

1 Ճառընտրի մը մէջ. « Ի սորա չորրորդ ամին եղև գիւտ եւթն գրոյն ի ձեռն Մեսրոպայ երանելոյ, և տասն և ութ ամի սրբոյն Սահակայ »։

1· ԵՐԿԱԹԱԳԻՐ

ՔՒՏԽՄԱՐԾԱԴԱ ՏԷՐԽԱՉԻ·ՏՈՒՐ

ԲԼՈՒ ԾԻԳ

ՓՐԼԻՑՊԱԵԱ ՁՕՂ·ՈՓՐԻՈՍ

Պատմ· Հայոց· հին դպր· յէջ 55·

*ունին, [illegible] ընթերցումը դժուարին ըլլալուն՝ այս կերպն ալ փոխեցին, ու սկսան Բոլորգիր տառերը գործածել, որ կամաց կամաց կատարելագործուելով ու կանոնաւորուելով՝ հիմակուան տպագրութեանց մէջ գործածուող սովորական գիր եղան։*

*Բոլորգրոյն աւելի դիւրացուցած կերպն է Նօտարագի կամ Նօտր գիրը, որ ինչուան հիմայ հասարակ գրութեանց մէջ կը գործածուի։*

*Այս գրոց փոփոխմանը մէջ դիտելու արժանի է՝ որ Միջին Երկաթագիրը հնարուելէն ու հասարակ ըլլալէն ետքը՝ բուն Երկաթագրին գործածութիւնը գրեթէ բոլորովին դադրեցաւ։ Նոյնպէս բոլորգրոյն գտնուելէն ետքը՝ Միջին Երկաթագիրը խափանուեցաւ։ Բայց Նօտր գիրը հնարուելէն ետքն ալ՝ բոլորգիրը չվերցաւ, այլ ընտիր ձեռագրաց մէջ կը գործածուէր։*

*Ուսումնասէր ընթերցողաց հետազօտութիւնը դիւրացընող ցուցակի մը մէջ, զոր ի հանդիպոյ կը ներկայացընենք, կը տեսնուին Հայկական Նշանագրաց կրած այլ և այլ կերպարանափոխութիւնք ըստ այլ և այլ դարուց և ժամանակաց, ճիշդ արտահանութիւնք նոյն տառններն գրուած ձեռագրաց*[1]*։*

1 Էջմիածնի Մատենադարանին գրչագրաց տպագրեալ ցուցակին մէջ (Թիւ. 1433) նշանակուած կը գտնենք գիրք մը այս մակագրով. «Մեկնութիւն նախնի նշանագրաց Հայոց»․ և 'ի նմին գրչագրի. «Վասն հօրն Եւագրեայ նոյն նշանագրօք»։ Բանասիրաց հետազօտութեան արժանաւոր տեղեկութիւն մը։ Ծանօթ են հմտից՝ ձեռագրաց մէջ տեղ տեղ Ադամայ կամ այլոց անուանով նշանագիրք կամ փակագիրք, և անոնցմով համառօտ քանի մը տող գրուածք, որ աւելի ծածկագրութիւնք կրնան սեպուիլ, և չունին զհետս կամ զյարգ ՙնութեան։ Կը գտնուին նաև Փոռաղանոֆէր, Նըլանոֆէր և Ծոծխոֆէր կոչուած համառօտագրութիւնք։ Առաջին երկուքն ունին ինն հիմնական նշաններ, յորոց մի կամ երկու կամ երեք կէտերով կը կազմուին մեր երեսուն և վեց տառերը։ Իսկ կէտագիրք կը կազմուին մէկ, երկու, երեք կամ չորս գծերէ, որոնք ունին իրենց մօտ կէտեր, և ինն հատով կը կազմուին Հայոց լեզուի երեսուն և վեց նշանագիրք։



Այս ամէն կարծիքներն մէջ բերած ունի Ի. Յարութիւնեան, զոր բանասիրաց համար կը համառօտենք.

« Հին ժամանակ, կ'ըսէ, Հայերը գործածում էին մի տեսակ պայմանական իլերիօգրիֆական (քրմակագրական) նշաններ՝ որոնց քանի մի կտորները հասած են մինչեւ առ մեզ. Յետոյ սկսեցին գործածվել պարսկական (զէնդական), յետոյ յունական և վերջապէս ասորական տառեր. Ասորական տառերը մանաւանդ երկար ժամանակ գործածեցին Հայերը. Այս օտար գործիքով Հայերը չէին կարող իսկութեամբ արտայայտել իսկական լեզուի բոլոր հնչիւնները, ուստի հնարեցին իրենց այբուբենը, որ յայտնի է Դանիէլեան անունով, և կազմուած է քսանուերկու տառերից, Վարդան պատմագրի (ԺԲ դար) խօսքերու համեմատ. Վերջապէս 400 թուին Ս. Մեսրովպ հնարեց տասնուերկու տառեր, ու կատարելագործելով Դանիէլեան կոչուած այբուբենը, ընծայեց իր հայրենակիցներին լիակատար այբուբեն որ արտայայտում է հայկական լեզուի բոլոր ձայները, և գործ է ածվում մինչեւ այսօր մեր մէջ Մեսրովպեան անունով ».

Յետոյ մէջ կը բերէ այս խնդրոյս նկատմամբ եղած այլեւայլ կարծիքներ.

« Ոմանք հայ պատմիչք կ'աւանդեն թէ Մեսրովպ նախ Հայոց այբուբենի գիւտն ըրաւ և ապա Վրաց, հաւանական կ'երեւնայ որ Մեսրովպ ոչ Հայոց և ոչ Վրաց նշանները գտաւ. այլ այդ նշաններն, ինչպէս բուն կոչուած գրերն՝ իբրեւ ժամանակի և հմայութեան նշաններ՝ այդ ժողովրդոց ժառանգական սեպհականութիւնն էին. Եւ այն աստուածային յայտնութիւնն, որոյ վրայ կը խօսի Խորենացի, կայացած էր յայնմ, որ Մեսրովպ մտածեց այդ նշաններն ի գործ դնել. իսկ Վրացիք հետեւելով իրեն խորհրդոյն՝ իրենց սեպհական նշաններն

նոյնպէս տառի փոխադրեցին։ Ասանկով կը բացատրուի թէ ինչպէս երկու բոլորովին իրարմէ տարբեր այբուբենք, — հայ ու վրացի, — մի և նոյն սկզբնապատճառը կըր-նային ունենալ։ — Մեսրովպ կը վախէր որ արտասանու-թիւնն Յունաց նշաններու միջնորդութեամբ կ'աղաւաղի կամ կ'անհետանայ. ուստի և Յունաց այբուբենէն գե-րադաս համարեցաւ բոլորովին տարբեր գիր մը։ Եւ երբ պատմագիրք կ'ըսեն թէ Մեսրովպ Հայոց նշաններն ըստ յունական օրինակի ձեւակերպեց, պէտք է հասկնալ թէ նա Յունաց գրի ուղղութիւնը, — ձախէն յաջ, — ինչպէս նաեւ բառից բաժանումն և յունական այբուբէնի ամբողջ արտաքին ձեւը ընդունեցաւ։

Հայոց լեզուն երկար ժամանակ համարուած էր սեմա-կան ընտանեաց ճիւղի մէկ մասը, մինչեւ որ ականաւոր լեզուաբան գիտնականաց, — որոց մեծ մասը գերմանա-ցիք էին, — ինչպէս Պետերման, Վինդիշման, Տըլակարտ, Միւլլէր, Հիւպշման և այլք, — իրենց գրուածներովն ա-պացուցին, որ Հայոց լեզուն սեմականին չի պատկանիր, այլ հնդկա—գերմանական (կամ հնդկա—եւրոպական) ըն-տանիքին։

Գերմանական գիտնականներէն համբաւաւոր լեզուա-բան Պետերմանն էր, որ դարուս առաջին կիսում, իւր հիմնաւոր աշխատութեան մէջ, « Հայոց լեզուի քերա-կանութիւն » լատիներէն գրուած, ապացուցուց որ Հա-յոց լեզուն կը պատկանի հնդկագերմանական մեծ ըն-տանեաց, և մերժեց մինչեւ այն ժամանակ հանդիսացող կարծիքներն, որովք մեր լեզուն կը համարուէր՝ բոլորո-վին առանձին, այլ լեզուաց հետ ամենեւին կապ չունե-ցող, կամ թէ եբրայականին ազգակից լեզու մը։ Պե-տերմանի կարծիքն հաստատեցին Վինդիշման, Գոշէ և Նպիգէլ, այնպէս որ աշխարհահռչակ լեզուաբանն Բոփփ իւր համեմատական քերականութեան մէջ Հայոց լեզուն հաստատապէս ընդունեց իբրեւ հնդկագերմանական, և մեր լեզուի ձեւերն եւս համեմատութեամբ ազգակից լե-զուաց ձեւերուն հետ յառաջ բերաւ։

Ասանկով թէպէտեւ պարզուեցաւ, որ Հայոց լեզուն
կը պատկանի Հնդկագերմանական ընտանեաց, սակայն
դեռ եւս որոշ կերպով չի վճռուեցաւ թէ Հնդկագերմա-
նական որ ճիւղին պէտք է վերագրել։ Գոչէ՝ և իրմէ ա-
ռաջ Վինդիշման մասամբ՝ դիցաբանական և այլ նմանու-
թեամբ ապացուցին, որ Հայ լեզուն կը պատկանի Հընդ-
կագերմանական արիական ճիւղին, և պարսկական քրդա-
կան և առաջաւոր Ասիոյ քանի մը լեզուաց հետ կը
կազմէ առանձին խումբ մը։ Յառաջ բերենք Վինդիշմա-
նի խօսքերը. « Հայ լեզուի դիրքը Հնդկագերմանական լե-
զուաց շարքին մէջ՝ ա՛լ տարակուսի տեղ չունի։ Իւր սկզբնա-
կան մասերով նա կը պատկանի երկրիս այն ամենազնիւ
բարբառներու, որոնք իրենց զանազանութեամբ տարածու-
ած են արեւելք և արեւմուտք, և որոց մնացորդներուն վրայ
կը շարանակուին այսօր գերման—ռոման—սլաւ և կելտ լե-
զուներն, և որոնք դեռ եւս նոր իրենց փառայեղութեամբ
ուսումնասիրութեան առարկայ դարձած են։ Սակայն Հա-
յոց լեզուն անմիջապէս չիպատկանիր այդ բարբառնե-
րու զարգացման առաջին դասակարգին, այլ կ'ենթադրուի
աւելի հնագոյն բարբառ մը, որ զենդի և բեւեռագրաց
հին պարսկականին հետ մեծ նմանութիւն պէտք է որ ու-
նեցած ըլլայ։ Այդ բարբառոյն հետ միացած են և ա՛յլ
տարրեր, ոչ միայն սեմական լեզուէ. այլ և արմատներ
որ կը պատահին քուրդ և կովկասեան լեզուաց մէջ»։

Տիւլորիէ Եդ. Հայագէտը Հայոց հին այբուբենը կը
համարի արամայականէ առաջ եկած։

Սէն—Մարդէն՝ դանիէլեան տառից վրայ խօսելով,
կ'ըսէ թէ Յունաց գրերուն ձեւն ունէին անոնք։ Իսկ Մես-
րոպայ հնարածներուն նկատմամբ կը համարի թէ Պար-
սից հին տառերէն շատերն առած և Հայոց այբուբենին
կարգն անցուցած ըլլայ. նոյն իսկ, կ'ըսէ, առաջին ակ-
նարկ մը մէկէն նկատել կու տայ թէ այն տառից շա-
տերը մեծ նմանութիւն ունին զենդի և պահլաւականնե-
րուն հետ, նոյնպէս սասանեան ժամանակի պարսկական
և ասորի արձանագրութեանց տառից հետ։

Լանկլուա պարզ գաղափար մը չէ կրցած կազմել Հայոց այբուբենի մասին. մերթ կը համարի թէ հինգերորդ դարէն յառաջ սեպհական տառեր ունեցած չեն Հայք. և մերթ՝ թէ Դանիելի քով գտնուածն՝ Հայոց հին այբուբենն էր, որ ասորականէ առնուած էր: Ուրիշ տեղ ալ կարծիք կը յայտնէ Հայոց հին այբուբենի նկատմամբ թէ գործածական եղած ըլլայ թերեւս Հայաստանի քանի մի նահանգաց մէջ:

Նոյն այբուբենի խնդրոյն պարապելով Ֆ. Միւլլէր, հետեւողութեամբ Խորենացւոյ և Կորեան՝ թէպէտեւ սրբոյն Մեսրովպայ կ'ընծայէ, սակայն այն եզրակացութեան կու գայ թէ այդ տառք կը ծագին ոչ թէ Յունաց, այլ սեմական այբուբենէն: Ըստ Խորենացւոյ և Կորեան պատմելով Հայոց գրոց գիւտի պատմութիւնը և համեմատելով Վրաց այբուբենի հետ, կը յաւելու. «Հայոց և Վրաց այբուբենք կը ներկայացնեն սեմական և յունական տառից չարայարութեանց խառնուրդ»:

Հ. Մ. Ջամչեան հետեւելով մեր պատմագրաց՝ ընդունում է թէ սուրբն Մեսրովպ բոլորովին նոր այբուբեն կազմակերպեց:

Հ. Ղ. Ինճիճեանն է, — եթէ չենք սխալում, — առաջին անգամ պատմական փաստերով հաստատում, որ՝ դանիէլեան կոչուած այբուբենն՝ ոչ թէ Դանիէլի գտածն էր, այլ Հայոց հին գործածական գիրն որ նրա մօտ գտնուեցաւ. «Զորս ոչ Դանիելի էր, կ'ըսէ, յօրինեալ, այլ առ նմին Դանիելի պահեալք հին նշանագիրք»:

Մ. Էմին աւելի ընդարձակ պատմական փաստերով հաստատելով Ինճիճեանի տեսութիւնը դանիելեան այբուբենի մասին բոլորովին կը մերժէ այն կարծիքն, որ իբր թէ հայերէն տառերը ծագած ըլլան զենդի կամ յունաց տառերէն, հիմնուելով հետեւեալ երեք փաստերու վրայ. ա.) Հայոց տառերուն ձեւերը բոլորովին չեն համապատասխաներ զենդի և յունաց տառերուն. բ). Հայոց տառերուն թիւն չեն համապատասխաներ զենդի և յունաց

տառերուն. և գ) զենդի և յունաց այբուբեններին մէջ կան բազմաթիւ ձայնաւորներ, այն ինչ Հայոց հին այբուբենը ձայնաւոր չունէր։ Սակայն թէ ի՛նչ ծագում ունէր հայոց հին այբուբենը կամ թէ ինչպէս էր յառաջացեր, այդ Էմինեան, ինչպէս նաև Զամչեան և Ինճիճեան, ոչ մի խօսք չեն ըրած։

Ք. Պատկանեան՝ հաստատելով Էմինեանի կարծիքը, որ յառաջ քան զսուրբն Մեսրովպ մեր նախնիք ունեցած ըլլան իրենց սեպհական այբուբենը, կը յաւելու որ այդ այբուբենն անկասկած արամայական ծագմանէ յառաջ եկած էր, և զանազան պատճառներով գործածութիւնը խափանուեր, թէպէտ և փաստ մը մէջ չի բերեր ապացուցանելու իւր այս կարծիքը հին այբուբենի ծագման մասին։ Նոյն յօդուածի շարունակութեան մէջ կը յաւելու թէ ընդունելով որ Հայոց հին այբուբենն ընդօրինակուած է Իրանական այբուբենից մէկէն, դիւրին է ըմբռնել թէ ինչո՞ւ այդ այբուբենը չէր կարող արտայայտել Հայոց լեզուի բոլոր հնչիւնները։

Ասոնք նաև յազգայնոց, որոնք իրաւամբ մեծարուած գիտնական անձնաւորութիւնք են։

Իսկ յօտարաց՝ Ֆ. Կոպպ՝ իւր «Նախնական ժամանակաց պատկերներ և գրեր» նշանաւոր երկասիրութեան մէջ թէպէտև հայերէնի այբուբենի ծագման նկատմամբ որոշ տեսութիւն մը յայտնած չէ, բայց «Գիտնականները միաբան կ՚ընդունին, կ՚ըսէ, հայերէն այբուբենի նոր ըլլալը իրենց կարծեացը հիմն ունենալով մասամբ պատմութեան և մասամբ յունաց այբուբենի հետ ունեցած դասակարգութեան նմանութիւնը։ Բայց թէ ո՛րչափ անհիմն է այդ վերջին կարծիքը, ցոյց կու տան նոյն իսկ սեմիտական այբուբենք, մէկդի թողլով այն հանգամանքն՝ որ հայերէն այբուբենը թէ՛ դասակարգութեամբ, թէ հնչմամբ և թէ տառից թուով կը տարբերի յունականներէն։... Բոլորովին մերժելի է այն կարծիքն՝ որ իբրև թէ այդ այբուբենը կազմուած ըլլայ յունականի և Լա-

տինականի հիմանց՝ վերայ. աւելի ընդունելի կարելի է համարել անոր հին պարսկականից ծագուած ըլլալուն ենթադրութիւնը։ Եւ առանց որոշ վճիռ մը արձակելու, Կոպպ՝ յառաջ կը բերէ հայերէն քանի մը տառից համեմատութիւնը ղպտական, եթովպական և պարսից տառերու հետ։

Ս. Վալ (S. Vahl) պատմելով Հայոց այբուբենի գիւտը ըստ Խորենացւոյ, կը յաւելու «Արդէն Մեսրոպէն առաջ Աբէլ անունով մէկը գտեր էր հայոց գիրն՝ որ կազմուած էր յունական այբուբենէն. սակայն այնպէս անկատար, որ Մեսրովպ իր դիտաւորութենէն ետ չկեցաւ....։ Տառերուն ձեւը մասամբ ինքնուրոյն են. թէ և Մեսրովպն օտար տառեր առած է, բայց այնպէս կազմակերպելով որ գրեթէ հին տառերն անյայտացած են։ Ձախէն յաջ գրելու եղանակը Աբէլ առած է ի Յունաց, իսկ Մեսրոպ հաւանականաբար յԱբելէ»։ Վալ՝ Աբելի անունն անշուշտ կը շփոթէ ընդ Դանիէլի. յունական տառից ձեւերն՝ Հայոց այբուբենի մէջ, բաց ի կ, ր, փ և օ տառից, կարելի չէ ճանչնալ. և նոյն իսկ այս տառից ծագումն, բաց ի օ գրէն, դեռ շատ կասկածելի են։ Սակայն անհաւանական չէ, որ Հայոց այբուբենի մէջ Ասորւոց և Պարսից տառերու ձեւեր գտնուին. որոց գիրը ի գործածութեան էր Հայոց մէջ յառաջ քան զՄեսրովպ. և յեղափոխութիւն մը ընողը՝ խոհեմութեամբ կարելի եղածին չափ կը պահէ հինէն։

Նայման՝ Խորենացւոյն հետեւողութեամբ կ'ընդունի թէ Հայք՝ յառաջ քան զՄեսրոպ իրենց յատուկ գիր չունէին։

Գատերեր (Ch. Gatterer) և Շրէօդեր (Schröder) Հայոց այբուբենը յունականէ ծագած կը համարին։

Ֆրիտ. Վինդիշման՝ Հայոց գրոյն վրայ խօսելով՝ կ'ըսէ. «Յայտնի է որ Հայոց այբուբենին գիւտը հինգերորդ դարուն մէջ եղած է Մեսրոպայ ձեռքով։ Որչափ ալ պարտական են Հայք իրեն երախտագէտ ըլլալ, սա-

կայն կասկած մը կը ծագի մեր մտաց մէջ թէ արդեօք յայն միջոց ժամանակի կատարեալ այբուբենի մը կազմութիւն հնարաւո՞ր էր արդեօք։ Լեզուաց պատմութեան մէջ շրջան մը կայ ժամանակի ուր ամենայն ինչ կեանք, ստեղծող ոյժ և թարմութիւն է, և ուր անմիջական գիտակցութիւն մը կը տիրէ անոր ներքին էութեան մէջ. անոր մէջ հնչումներն դեռ ևս բաժանուած են, և իրենց կատարեալ անհատականութիւնը կը պահպանեն։ Այն նշաններն որ այս ժամանակի շրջանին մէջ կը տրուին այս հնչմանց, կատարելապէս կը յարմարին իրենց բնաւորութեան։ Սակայն սկզբնականը շուտով կը մոռցուի. Նմանութեամբ կազմակերպութիւններն և հնչմանց փոփոխութիւնք՝ հետզհետէ աւելի տեղի կ՚ունենան. լեզուի ներքին բնազդումը, տարից առ միմեանս ունեցած յարաբերութեանց կենդանի զգացումը հետզհետէ կը բթանայ։ Այնպիսի ժամանակի մը մէջ կ՚ապրէր Մեսրովպ, յորում լեզուն քայքայման դրութեան մը մէջ էր. և այդ պատճառաւ չենք կրնար իր հնարած այբուբենէն հընչմանց մեծ տարբերութեան սպասել, մանաւանդ եթէ աչքի առջեւ ունենանք այն հանգամանքն, որ անոր հիմը օտար տարրեր էին, այս ինքն յունական և ասորական գիրը »։

Ֆլորիվալ իւր Խորենացւոյ Ֆրանսերէն թարգմանութեան մէջ Հայոց այբուբենի գիւտը կ՚ընծայէ սուրբ Մեսրովպայ։

Բիւտնէր (Ch. W. Büttner) իւր համեմատական ցանկի մէջ ի միջի այլոց կ՚ըսէ հետեւեալն. « Երասխի միւս կողմը կը բնակին Հայք և Վրացիք. այս երկու ժողովըրդոց իւրաքանչիւրն ունի իւր առանձին և այլոց հետ ազգակցութիւն չունեցող լեզուն և գիրը »։ Ու Խորենացւոյ խօսքերը մէջ բերելով և յիշելով թէ Հայք կը գործածէին յունաց, ասորւոց և պարսից գրերը՝ կը յաւելու. « Թէոդոս երկրորդ կայսեր ժամանակ՝ Մեսրովպ անունով միայնակեաց մը, որ արքունի քարտուղար էր, Հայոց

համար այբուբեն մը գտաւ որոյ տառից մեծ մասին հիմնագծի մէջ կարելի է ճանչնալ հին Պարսկական ծագում։ Տառից դասաւորութիւնը թէ Վրաց և թէ Հայոց այբուբենի մէջ՝ յունական է․ մէջ տեղերը տեղաւորուած են իրենց առանձնայատուկ տառերը »։

Ռոմմէլ՝ խօսելով աստուածաշնչի հայ թարգմանութեան վրայ՝ կ'ըսէ․ « Որովհետեւ մինչ այն ժամանակ Հայերը օտար գիր կը գործածէին, այս առթով — Աստուածաշնչի Թարգմանութեան, — գտնուեցաւ կամ կազմուեցաւ Հայոց այբուբենն ըստ յունական օրինակի։

Այբուբենից համեմատական ցանկի մը մէջ, որ երկու Բենեդիկտեան կրօնաւորաց երկասիրութեամբն հրատարակուած է, Հայոց այբուբենը դասաւորուած է Ցունաց այբուբենին ծագած գրերու շարքին մէջ։ (Nouveau traité Dirbomatique par deux religieux Bénédictins de la Congrégation de St . Maur.

Ե․ Պորէ խօսելով Հայոց այբուբենի մասին՝ կ'ըսէ․ « Մենք չենք կարծեր որ Հայոց այբուբենի տառերն վերցուած ըլլան մի միայն ի յունականաց․ մինչ զենդի և ասորական այբուբենից համեմատութիւնն Հայոց այբուբենի հետ մեծ նմանութիւն ունի թէ տառից հնչմամբ և թէ նշանակութեամբ, ուստի և կը կարծենք որ Մեսրովպ այդ այբուբենը կազմակերպեց վերոյիշեալ երկու ազգաց այբուբենը ուսումնասիրելէն ետքը։

Համրական կենսագիր (Biographie universelle) հրատարակութեան մէջ՝ ի յօդուած Մեսրոպայ խօսելով Հայոց այբուբենի վրայ՝ կ'ըսէ․ « Այս այբուբենն՝ որ կը բաղկանայ երեսուն և վեց տառերէ, երկրին մէջ արդէն ծանօթ և սովորական հին գրերէ և յատուկ նոր տառերէ կազմուած է »։

Լընորման՝ անուանի արեւելագէտ և հնախոյզ, Հայոց գիրը զենդէ առաջ եկած կը համարի․ (Essai sur la pro-pagation de l'alphabet phénicien)։

Ֆաուլման (K. Faulmann) Հայոց այբուբենի գիւտը

ըստ մեր մատենագրութեան՝ Վրաց այբուբենի մէջ կը գտնէ։ Այդ իրողութիւն կատարուած է ճշդօրէն. այն ինչ Հայոց այբուբենի մէջ այդ շարայարութիւն խանգարուել է վերջը աւելցուցած տառերով. ուստի կարելի է հետեւցընել որ այս երկու այբուբենից կազմակերպութեան ժամանակ տեղի է ունեցել ոչ միայն յունականի, այլ և սեմական այբուբենի ազդեցութիւնը։ Վերջի ազդեցութիւնն աւելի աչքի կ'իյնայ, երբ Հայոց ու Վրաց այբուբենի իւրաքանչիւր տառն ուսումնասիրելու համար՝ համեմատելու ըլլանք յունական և սեմական տառերն՝ արամայական տառից հետ։ Համեմատութեան համար առնըլու է Հայոց երկաթագիրն և Վրաց խուցուրի կոչուած տառերը։ Եւ այս համեմատութիւնն ընելով, կը յաւելու. «Այս ամենէն կ'երեւնայ որ Հայոց և վրաց այբուբենից իսկական աղբիւրն պէտք է փնտռուել սեմական ու յատկապէս արամայական այբուբենի մը մէջ, զոր Թերեւս Պարսիկք կը գործածէին, և յորմէ ծագումն առած է սասանական պահլաւական գիրը։ Մեծրովպայ աշխատանք և արդիւնք հոն է, որ կրցաւ արամայական միայն բաղաձայններէ կազմուած գրեթէ այբուբեն մը կազմակերպել ըստ յունական օրինակի, յորում թէ բաղաձայն և թէ ձայնաւոր հաւասարապէս նշանագրուեցան։

Բրոսէ՝ կը կարծէ թէ Հայոց հին այբուբենը բաղկացած էր քսանուերկու տառերէ, որոց վերայ Մեսրովպ աւելցուց տասնըչորս տառ. և թէ այդպէս կազմեցաւ նոր այբուբենն ըստ յունական շարադասութեան։

Հիւպշման կ'ըսէ. «Հայոց այբուբենն՝ ըստ վկայութեան հայ մատենագրաց, գտեր է սուրբն Մեսրովպ ի սկիզբն հինգերորդ դարու. սակայն նոյն մատենագիրք յայտնապէս կ'ակնարկեն թէ այդ գիւտ՝ միայն Մեսրովպայ գործը չէր. այլ թէ գտած ըլլայ հին այբուբեն մը Դանիէլ անուամբ ասորւոյ մը քով. և զայն երկար ժամանակ անփոփոխ ի գործ դնելէն ետքը, տեսնելով անոր պակսութիւններն և ժամանակին զանազան գիտնոց հետ

խորհրդակցելով, վերջապէս կրցաւ Հռովմանոսի հետ կազմակերպել Հայոց Նոր այբուբենն։ Ասով Մեսրոպի մատուցած ծառայութիւնն յայնմ եղաւ որ կատարելագործեց դանիէլեան նշանագիրքն և ազգային գիրն տարածեց ի Հայաստան, անհետ ընելով մինչեւ այն ժամանակ գործածական Պարսից, Յունաց և Ասորւոց գրերը։ Հայագէտները, և մասնաւորապէս Մ. Էմին և Լանգլուա փորձեր են նաեւ որոշել թէ ո՞րնք էին դանիէլեան այբուբենի տառերը և որոնք մեսրոպեան։ Ասոր համար նշանակութիւն ունեցաւ Վարդան պատմագրի վկայութիւնն, որով հին այբուբենն բաղկացած էր քսանուերկու տառերէ, որոնց վրայ Մեսրոպ տասներչորս տառ աւելցուց։ Ապա համեմատելով Հայոց ու Յունաց այբուբենից շարադասութիւնը, կ'եզրակացընէ թէ դանիէլեան այբուբեն կազմուած է յունականէն, և կը շարունակէ. « Պարսից (պահլաւ) այբուբենը՝ դանիէլեան այբուբենից հիմը չէ. որովհետեւ այդ այբուբեն քսանուերկու տառ գիր չունէր։ Արամայական այբուբեններէն՝ ասորականն քըսանուերկու տառ ունի, և որ անով աւելի մեծ նշանակութիւն կը ստանայ, որովհետեւ այդ Դանիէլ՝ ասորի կը կոչուի։ Սակայն համեմատելով Հայոց և Յունաց այբուբենն ասորականի հետ... հակառակ Միւլլէրի այն եզրակացութեան յուսանք թէ Հայոց այբուբենն կազմուած է ըստ յունականին. Նոյն իսկ ձայնաւորներն առնուած են ի Յունաց բաց ի ը ձայնաւորէն »։

Գարդհաուզէն « Հայոց գրոյն յունական ծագման վըրայ », յօդուածին մէջ ուզած է ապացուցանել, որ մեր այբուբենն ծագած է անմիջապէս յունականէն։ « Խորենացին կ'աւանդէ, կ'ըսէ, որ սուրբն Մեսրովպ այլեւայլ դժուարութիւններէ ետքը՝ Քրիստոսի 400? Թուականին իր հայրենակցաց համար այբուբենի մը գիւտն ըրաւ. և վերջը Աստուծոյ հրամանաւ Հայոց տառերը ձեւակերպեց ըստ օրինակի յունականաց ». զոր և սորվեցուց ապա Վրաց և Աղուանից։ Արտաքին հանգամանք այս գիւ-

տին մեծ հաւանականութիւն կ'ընծայեն՝ Հայոց այբուբենին ի յունականէ ծագելուն։ Հայաստան՝ որ ի վաղուց կռուի նիւթ մ'էր իր արեւելեան և արեւմտեան դրացի ազգաց, քրիստոնէութիւնն ընդունելէն ետքը բացառապէս յենուած էր յունական – հռովմէական կրթութեան վրայ, և չորրորդ դարուն վերջը փորձեց Հռովմայ դաշնակից ըլլալու։ Ուրեմն երբ այս ժամանակ քրիստոնեայ արեղայ մի կ'ուզէր իր ժողովրդեան այբուբեն մը տալ, պէտք էր որ ամէն բանէ առաջ իր եկեղեցւոյ գիրն աչքի առջեւն ունենար, և այդ գիրն յունականն էր։ Սակայն այսօր հակառակ կարծիքն աւելի զօրաւոր հանդիսացած է»։ Յետոյ Գարդհաուզէն յառաջ կը բերէ Հայոց այբուբենի այն քսանուերկու տառից համեմատութիւնն Յունաց տառից հետ, որոնք Հիւբշման դանիէլեան տառից յատկացուցեր էր։

Ընդհանուր գերմանական արքունի համայնագիտակ բառագրոց մէջ (Allgemeine deutsche Real Encyklopädie... Conversations-Lexikon) Հայոց գրոյն նկատմամբ կը գտնենք հետեւեալն. «Ընդհանրապէս Հայոց գրոյն գիւտը կ'ընծայուի Մեսրոպայ, որ մեծին Սահակայ հետ Հայոց գրականութեան հիմնադիրն համարուած է։ Սակայն ճշդագոյն հետազօտութիւնք կ'ապացուցանեն որ Հայք ի վաղ ժամանակաց այբուբեն մը ունէին, սեմականէն առնուած և ի քսան և երկու տառից բաղադրըւած. սակայն կարող չըլլալով Հայոց լեզուին պահանջը լեցընել, կամաց կամաց մոռացութեան ինկած էր։ Մեսրոպ այս այբուբենը գտաւ Դանիէլ ասորի եպիսկոպոսի մը քով, կատարելագործեց զայն համաձայն հայ լեզուին պահանջմանց. գուցէ և ընտրելագոյն ձեւի վրայ առաւ՝ Հռուփանոս գեղեցկագրին օժանդակութեամբ, և շարադասեց ըստ յունականին։ Իրեն գործակից էր և սուրբն Սահակ, և երկուքը մէկտեղ տարածեցին այդ նոր այբուբենն՝ երկրին այլեւայլ կողմերը ուսումնարաններ հաստատելով։ Հայոց գրոյն այս գիւտը՝ կամ լաւ եւս՝ կա-

տարելագործութիւնը հանդիպեցաւ չէ թէ 406ին, ինչպէս սովորաբար կը կարծուի, այլ 406–410 թ....:

Կոխ իր « ճանապարհորդութեան » մէջ՝ խօսելով « Հացիկ » գիւղի վրայ կ'ըսէ. Այս գիւղին մէջ ծնաւ Հայոց ու Վրաց այբուբենի գիւտն ընող Մեսրովպ. առաջնոյն գիւտը սխալ է որ 406 թ. եղած ըլլայ: Մինչ այն ժամանակ՝ Հայք Ասորւոց և Յունաց տառերն կը գործածէին: Բայց որովհետեւ այդ երկուսն ալ բաւական չէին հայկական տառից ճիշդ հնչմանն, և Պարսից տիրապետութեան ժամանակ արգելուած էր Հայոց՝ յարաբերութիւն ունենալ ընդ Յոյնս, Մեսրովպ Հայոց լեզուին համար գտաւ երեսուն և վեց տառեր, որոց վրայ՝ խաչակրաց աշաւանքին ժամանակ աւելցան երկու տառք ալ (Ֆ, Օ). որով այժմեան այբուբեն ձեւացած է երեսուն և ութ տառերէ: Սակայն աւելի հաւանական է ըստ Գետերմանի որ Հայք իրենց սեպհական գիրն ունէին և Մեսրովպ ընդարձակեց միայն այդ գիրը:

Գետերման խօսելով Հայոց գրականութեան մասին՝ կը շարունակէ. « Թէպէտ Հայոց տառից գիւտն կ'ընծայեն Մեսրովպայ, սակայն Նորագոյն հետազօտութիւնք կ'ապացուցանեն որ նա չէ թէ ամբողջ այբուբենն է գտեր կամ կազմեր, այլ արդէն գտնուած հին այբուբեն մը վերականգներ, կատարելագործեր և ամբողջ երկրի մէջ տարածեր »: Ուրիշ տեղ մ'ալ կ'ըսէ նոյն հայագէտ. « Մեսրովպեան այբուբեն բաղկացած է երեսուն և վեց տառերէ, և լիովին կը յարմարի Հայոց լեզուին. շարադասեալ է ըստ յունական կարգի այբուբենից, և Հայոց լեզուի յատուկ հնչմունք տեղաւորուած են նոցա մէջտեղերն, գրելու ուղղութիւնն ալ ա՛յլ է քան միւս արեւելեան այբուբենից. — ձախէն յաջ իւրաքանչիւր տառից ձեւն և անուն՝ առնուած է յունական օրինակէ. այբ՝ ալֆա. բեն՝ բիթա, գիմ՝ գամմա » և այլն:

Տըլլակարդ՝ ընդունելով որ Հայոց այբուբենի հիմն յունական է, կը յաւելու. « Հայոց այբուբենի գտնող-

ներն՝ (!) ուսել են յԱղեքսանդրիա (!!)․ ուստի այդ այբուբենի չորս տառից ձեւերն առնուած են խպտեաց այբուբենէն․ Հ․ Ձ․ Ճ․ Վ․ կարելի է նոյնպէս որ նոյն ընզուէ առնուած են խ և շ տառերը։

Գիտնական Հ․ Բարսեղ Սարգսեանի կարծեօք սուրբն Մեսրովպ «առեալ ի միասին զպարսկերէն, զյոյն և զասորի այբուբենս, նորակերտել է մի ա՛յլ այբուբեն»։

* * *

Այս ամէն կարծեաց բովանդակութիւնն յառաջ բերինք, և որ կարելի է հնգի վերածել․

Ա․ Չամչեան, Նայման, Վինդիշման, Ֆլորիվալ, Բիւդնէր կը մերժեն այն կարծիք՝ թէ Հայք յառաջ քան զՄեսրովպ իրենց յատուկ գիր ունեցած ըլլան։

Բ․ Ինճիճեան, Մ․ Էմին, Վալ չեն ըսեր եթէ ուստի՛ ծագած է Հայոց գիրը։

Գ․ Պատկանեան, Դիւլորիէ, Ֆ․ Միւլլէր կը համարին թէ արամէականէն ծագած ըլլան։

Դ․ Կոպպ, Բիւդնէր, Բօրէ, Լընորման, Սէն – Մարգէն զենդէն առաջ եկած կը սեպեն։

Ե․ Գատերէր, Շրէօդէր, Ռոմմէլ, Հիւպշման, Գարդհաուզէն և այլք՝ յունաց այբուբենէն։

Ցարութիւնենի կարծիքն է թէ մեր այբուբենք տառերը ծագին անմիջապէս սեմական տառերէ և ոչ ի յունաց, և թէ Սեմական տառից ձեւերու մէջ Հայոց տառք կը նմանին աւելի փիւնիկեան տառից ձեւերուն։

Իրմէ ետքը այս նիւթին վրայ գրեց ու Վիեննա Մըխիթարեանց քով տպագրեց Տաղաւարեան բժիշկը։ Երկուքին ալ գրուածք՝ Իզմիրեան Գրիգորի ղըլարեցւոյ մըրցանակին արժանաւոր սեպուած են։ – Վերջնոյս տետրակին մէջ նշանակուած են թէ՛ ազգային և թէ օտար բանասէրներն և թէ անոնց գրուածք՝ որ այս նիւթին վըրայ խօսեր են։

# ՀԱՅ ԳՐՉԱԳԻՐՔ

*Հայկական գրչագրաց վրայ ընդհանրապէս։ — Ծանօթենագոյն գրչագիրք 'ի Մոսկուա 'ի Լազարեան ճեմարանի, 'ի Միխիթարեան Մատենադարանի 'ի Ս. Ղազար։ — Գրչութիւն և գրիչք առ Կիլիկեցիս։ — Մագաղաթ, Թուղթ և անոնց կիրառութիւնն։ — Գրութեան պատկանեալ ուրիշ գործիներ։ — Թանաք։ — Նկարք, Պատկերք և անոնց արուեստը։*

Մեսրովպեան տառից կրած այլեւայլ փոփոխութիւնք՝ հարկաւ կը հրաւիրեն մեր ուշադրութիւնն ու քննութիւնը նաեւ ձեռագրաց վրայ։

Հին գրչագիրք՝ ինչպէս ամէն ուսումնական և բարգաւաճ ազգաց մէջ, ասանկ նաեւ առ մեզ՝ մանաւանդ ներկայ դարուս գիտութեան և պահանջից առջեւ՝ արժանապէս մեծարուած են. ցանկալի և պատուական աւանդք հնութեան, 'ի նախնեաց առ մեզ հասած փափաքելի և հետազօտելի նշխարք։ Անոնց միջոցավ պահպանուած և մինչեւ առ մեզ հասած են՝ մեր նախնեաց գըրաւոր երկասիրութիւնք. յիշատակարանք՝ որ անցեալ դարերու մէջ զմեզ կը փոխադրեն. անոնց համբուրելի մատանց գրերը կը ներկայացընեն, մեր աչքերուն հետ՝ իրենց լեզուաւն ու գրեթէ ձայնով կը խօսին, և յաճախ՝ մութ տխուր բայց սիրելի զմայլման մը մէջ՝ մոռցընել տալով վայրկեան մը ինչ որ ենք. անցելոյն սրտայոյզ և սրտագրաւ յիշատակութեամբ մտքերնիս կը բերեն ինչ որ էինք։

Այս իրենց մատուցած գնահատելի ծառայութեամբք իրաւունք կը ստանան՝ հայկական մատենագրութեան պատմութեան մէջ գէթ քանի մը համառօտ էջեր գրաւել՝ ուսումնասիրաց ճարակ և ճաշակ մը ներկայացնելով։

Ա· Ո՞յք են և ո՞ր դարու կը պատկանին՝ մեզի ծանօթ ամենէն հնագոյն հայ գրչագիրք։

Բ· Անոնց հանգամանքն, արուեստ ու ճարտարութիւն։

Գ· Ցարգն ու պատուականութիւն ըստ զանազան գըլխոց։

***

Հնութիւնն և ժամանակ՝ ամենայն մարդկային և ինչուան անմահական համարուած գործոց խանգարիչք և աւերիչք, ինչպէս մեր հայրենեաց՝ սաանկ նաեւ անոր յիշատակարանաց հետ անողոք խստութեամբ և անգթութեամբ վարուած, և հողոյ հաւասարեցուցած են։ Անոնց անգթութեան՝ կերպով մը ակամայ և բռնադատ սատարք եղեւցած են նաեւ մեր հայրենակիցք։

Այս յիշատակարանաց մէջ՝ ամէնէն աւելի կրողներու դասակարգէն պիտի ըլլային և գրչագիրք, ոչ միայն իրենց բնական ու դիւրաւ ապականելի դիրքովն ու նիւթով, հապա նաեւ զանոնք բնաբարձ ընելու աշխատողաց տըգիտութեան ու մոլեռանդն հակառակութեան զոհ մը ըլլալով։ Անոնց վրայ ամենայն խնամքով հսկողքն ու սիրողք, անոնց պահպանութեան միջոցներէն յուսահատք, ընտրելագոյն կը համարէին՝ բոլորովին մէջ տեղէն վերցընելն ու անհետացընել. որպէս զի ուր որ իրենց ձեռքին ու արժանաւոր պատուոյն մէջ մնալու հնարաւորութենէն կը զրկուէին, գէթ անարգողաց և անպատիւ արհամարհողաց ձեռք չիյնան. և այս զգուշութիւնը առաւելագոյն արթնութեամբ 'ի գործ կը դնէին նուիրական ու վարդապետական գրուածոց նկատմամբ։ Ոչ միայն

իրաց արդիւնք այլ և ստուգախօս պատմութիւն՝ յայտնապէս կը հռչակեն զայս և կը վաւերացընեն իրենց տըխուր էջերովը։ Աստուածաշունչ գրոց, եկեղեցական մատենից և նմանեաց, որ քան զայլ գիրս յաճախագոյն կիրառութեան մը ենթարկուած էին, և որոց թարգմանութիւնն հինգերորդ դարէն 'ի վեր եղած և ծաւալած էր ընդ ամենայն Հայաստան, խիստ քիչ թուով՝ հնագոյն գրչագիրք հասած են մինչեւ առ մեզ։ Օրինակ իմն, մեր ձեռագրաց Մատենադարանին մէջ 'ի Ս. Ղազար, որ թուոյ առաւելութեամբ ոչ յաննշանից կրնայ սեպուիլ յազգիս, հնագոյն գրչագիրք Աստուածաշունչ սուրբ գրոց միայն ՉԿԸ (1319) ՉՁԱ (1332) ՉՂ (1341) թուականներն կը կրեն։

Ո՞ւր պէտք էր փնտռել այսպիսի անդարման կորուստ մը։ — Արտաճմլիկ է պատմութեան՝ այս հարցման և իրաւացի հետաքննութեան տուած պատասխանը, և աղիտագոյն եւս ներկայացուցած պատճառներն։ Ի սրոյ և 'ի հրոյ, և 'ի վերահաս վտանգաց պաշարեալ և ահաբեկ մեր սիրելի հայրենիք, չորս կողմերնին տարածուած սփռուած թշուառութեանց մէջ՝ իրենց ապագային վրայ անստոյգք և անվստահք, ապահովագոյն միջոց մը մտածեր և գտեր էին այդ նուիրական մատենից փրկութեան. իրենց դողդոջուն ձեռքերով և աչաց անմխիթար արտասուօք թաղել, եկեղեցեաց և խորաններուն հիմանց տակ։ Ասանկով կը մեռնէին անոնք ապագային համար. մեզի համար՝ որ նոյն իսկ այդ սրբավայրից աւերակներուն տեսութեանն ալ պիտի չժամանէինք՝ երկար և յուզեալ դարեր ունենալով անջրպետ ընդ մեզ և ընդ նոսա։

Եթէ յայդպիսի ձեռաց և յանողոք տարերաց կրուած դժնդակ հալածանաց վրայ աւելցընենք նաեւ ժամանակին երկաթի ու ծանր ձեռքը, մաշող ու սպառող ոյժը, բռնադատ գաղթականութեանց աշխարհէ աշխարհ ու հեռաւոր նժդեհութեամբ զանոնք ցրուել տանիլը, և վնասակարագոյն թշնամւոյ մը՝ տգիտութեան և անոր հե-

տեւանք նախապաշարմանց անոնց դէմ տուած պատերազմը՝ իբրեւ անօգուտ և անպիտան ջնջելով փճացընելով, իրաւամբք պիտի զարմանանք որ դեռ եւս այդչափ բազմութիւն գրչագիր մատեններ կը գտնուին 'ի Հայաստան և անկէ դուրս։

Մեզի ծանօթ հայկական հնագոյն գրչագիրք՝ ութերորդ դարէն անդին չեն անցնիր. ու թէպէտ տեղ տեղ աւելի հին ժամանակաց պատկանող ձեռագրաց գոյութեան հանդիպեր ենք 'ի լրոյ, բայց ըստ հմտագունից՝ ոչ այնչափ ստոյգ հետազօտութեամբ. այլ կամ թուականաց շփոթութենէ յառաջ եկած, և կամ այդ գրչագրաց աւելի յարգ ու կարեւորութիւն տալու մտքով։ Այսպէս է, օրինակի համար, առ Միւհէնտիսեանի 'ի Կոստանդնուպոլիս տպագրուած Ուղեւորութիւն 'ի Պարսկաստան կոչուած գրքին մէջ յիշուած Աւետարան մը, որուն գրեթէ հինգերորդ դարու հնութիւն ուզուած է տալ։

Իրենց հնութեան ստուգութեանն անտարակուսելի նըշանակքը վրանին կրող քանի մը պատուականագոյն և սակաւագիւտ գրչագիրք յիշատակենք։

Էջմիածնի մատենադարանին մէջ գտնուած հին ու արծաթապատ հին աւետարանը, որ Ռուսաց կայսեր ընծայուեցաւ վերջերս, և Ստրգովսկիի գերմաներէն գրուածքը և անոր հայերէն թարգմանութիւնը ծանօթ է բանասիրաց։ — Գլխաւորներէն մէկն սեպուած է իրաւամբ 'ի Մոսկուա Ռուսաստանի՝ Լազարեանց ճեմարանի Մատենադարանին մէջ գտնուած և խնամով պահպանուած Աւետարան մը, Հայոց ՅԼԶ թուականին գրուած ու այսպիսի յիշատակարանով մը. « Գրեցաւ սուրբ և կենսաբեր աւետարանս այս ՅԼԶ թուականութեան Հայոց, 'ի հայրապետութեան Գէորգայ Հայոց կաթուղիկոսի, և յիշխանութեանն Աշոտի իշխանաց իշխանի, 'ի տէրութեան Սմբատայ Բագրատունւոյ. ես Սահակ Վանանդացի՝ որդի Վարդա Վանանդացւոյ որում կրկին Մլեհ կոչէին »։

Անզարդ անպաճոյճ, — որ և այն միւս հաւաստիք մ'է

հնութեան, — բայց ամենընտիր գրչութեամբ և ընթերցուածովք ցանկալի մատեան մը։ Չափը՝ ըստ երկայնութեանն երկու թիզ, իսկ ըստ լայնութեան մէկ թիզ և չորս մատնաչափ։ Բովանդակ գրուածն Մեսրովպեան խոշոր երկաթագիր տառիւք, երկուհարիւր քսաններօթն մագաղաթեայ թերթերու վրայ, ծայր 'ի ծայր միաձեւ և համեմատ գրչութեամբ դրոշմեալ, աչողաձեռն և հըմուտ գրչի գործ։ Բանասիրական տեսութեամբ հետաքըննութեան արժանաւոր կրնան սեպուիլ 'ի սմա՝ բաց 'ի բազմապատիկ տարբերութեանց ընթերցուածոց՝ նաեւ ըստ ուղղագրութեան, և յաճախ մի և նոյն կերպով կրկնուած՝ տարբեր կամ զարդիս ձեզի անսովոր գրութեան կերպեր. թէպէտ և ուրիշ հին ձեռագրաց մէջ ալ ոչ 'ի սպառ անծանօթք։ Այսանկ կը գրէ Ովմն փոխանակ Ոմն գրելու. ովմանք (ոմանք), զովք (ազք), ոււմոււք (ումեք), նոքովք, զնոքովք (նոքաւք, զնոքաւք), բարովք (բարւոք), ոււղիղ (ուղիղ), բովական (բաւական), եին (էին), և այլն։

Այս աւետարանին հաւաստար կամ քիչ պակաս հնութիւն, յարգ ու պատուականութիւն ունեցող ուրիշ օրինակ մ'ալ կայ նոյն սուրբ գրոց 'ի մեր Մատենադարանի՝ հետեւեալ յիշատակարանաւ. « Ես Մլքէ աղախին Քրիստոսի և Հայոց թագուհի 'ի Ն. Ժ. Է... Թվականիս ետու զաւետարանս 'ի Վարագի սուրբ Աստուածածինս զոր իմ ձեռամբս և ծախիւք եմ շինեալ. յաւգնականութիւն ինձ և արքային իմոյ Գագկայ և զաւակաց իւրոց. ով որ կարդա յաղաւթս յիշէք առաջի Աստուածամաւրս. և Աստուած հասարակաց ողորմեսցի »։

« ԶԱնդրիաս և զԳէորգ քահանայք ստացաւղ սուրբ աւետարանիս յիշեսջիք 'ի Քրիստոս աղաչեմք »։ Գրութեան թուականն է 'ի ՑԾԽ։

Ուրիշ յիշատակարան մ'ալ, Անդրէաս քահանայի ստացողի սուրբ աւետարանիս, կ'ըսէ. « Ի ՈԾԷ թուականիս Հայոց ես Անդրիաս քահանայ թափեցի զսուրբ աւետարանս 'ի յանաւրինաց և վերստին ետու զսա յընծայս

որբոյ Նշանիս Վարագայ, յիշատակ ինձ և հարազատ եղբաւր իմոյ Գէորգեայ քահանայի։ Արդ որ լուսաւորիք 'ի լուսայճաճանչ տերունեան հրամանացս՝ յիշեսջիք զիս զԱնդրիաս և զեղբարսն իմ զԳէորգ և զՀայրապետ և զՍարգիս և զծնողսն մեր. և Աստուած հասարակաց ողորմեսցի. ամէն »։

Յիշատակագրին ակնարկած գերութեան և յանշնորհ ձեռաց կրած տառապանաց հետքը՝ տեղ տեղ կը տեսնուի, 'ի սրբագրոշմ մատենիս, որ նախընթացին նման Մեսրովպեան խոշոր երկաթագրովք դրոշմեալ է ծայր 'ի ծայր չորս հարիւր վաթսուն մագաղաթեայ ընտիր թերթերու վրայ. պարզ, առանց զարդագրոց և լուսանցից վրայ գեղանկար դրուագներու, ինչպէս ընդհանրապէս սովոր են ընել՝ ժամանակաւ աւելի կրտսեր գաղափարողք և նկարակերտող գրիչք։ Միայն 'ի սկզբան՝ վեց թերթ մագաղաթի վրայ՝ իրեն դարուն և ժամանակին յատուկ ճարտարութեամբն և արուեստիւ կը տեսնուին՝ խորանք կամ համաձայնութիւնք չորից աւետարանաց, իրենց նկարուց նիւթ առնլով, ինչպէս կ'երեւնայ, Վարագայ վանքին՝ որուն ընծայուած է, մասնաւոր տեսարաններն, Վանայ ծովակին, շրջակայիցն, ձկանց, թռչնոց և երէոց, և այլն։ Ասոնցմէ զատ՝ չորս աւետարանչաց պատկերներն։ Այս ամէն նկարք և արուեստ՝ թերեւս Մելքէ թագուհւոյն հրամանաւ և ժամանակ եղած ըլլան, և որ անշուշտ՝ իր արքայական մեծութեան և դիրքին արժանաւոր կերպով գրքին արտաքին երեսն ալ՝ ոսկւոյ և արծաթոյ առատ ճոխութեամբ զարդարած է, և որ առիթ տուած է յափշտակութեանն և գերութեան։ Միւս աւելի նորագիր յիշատակարան մը. գրքին մէջ զետեղուած 'ի վերջ աւետարանին Ղուկայ՝ կ'ակնարկէ այդ խանգարման տիկնոջ մը կողմանէ եղած դարմանը. « Ես Աւագ տիկինս... միաբանեցայ 'ի հուշակաւոր և 'ի մեծ սուրբ ուխտն Վարագ, և ետու վերստին նորոգել զսուրբ աւետարանս 'ի յարդար արդեանց իմոց, կազմութեամբ կողափակ նկա-

բակերգ արծաթապատ զարդիւք զարդարեալ. յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց պարոն Մանիլայ՝ և զուգակցի իւրոյ»։ Աւելորդ է ըսել թէ այս վերջին ճոխութենէն ալ կապտուած հասեր է մեր ձեռքը։ Գրքին երկայնութիւնն է մէկ թիզ և հինգ մատնաչափ. լայնութիւնն՝ թիզ մը և երկու մատնաչափ. ստուար և գեղեցիկ հատոր մը։

Խօսքերնիս չերկարելու համար՝ բաւական սեպենք ուրիշ Աւետարան մ'ալ, թերեւս հնագոյն քան զառաջինըն, — որովհետեւ թուական չունի, — ներկայացընել մեր ընթերցողաց։

Ասիկայ ալ նկարչի հրաշալի արուեստիւ և ճարտար ձեռաց գրչութիւն՝ սուրբ Աւետարան մըն է, 'ի մեր Մատենադարանի, երկու թիզէն աւելի բարձրութիւն և գրեթէ երկու թիզ լայնութիւն ունեցող գիրք մը, վերը յիշուածներուն նման ընտիր և մաքուր մագաղաթեայ թերթերու վրայ և երկաթագիր տառերով. դժբաղդաբար յետին երկու թերթից պակասութեամբը՝ ոչ յիշատակարան և ոչ ալ գրչութեան թուական ունի։ Սակայն հնագէտք՝ գրչագրին հանգամանացը մանր քննութեամբ՝ հազար տարիէն աւելի հաւանական կեանք կու տան անոր. և մէկ կամ երկու դարով աւելի հնագոյն կը դատեն ճարտարագործ նկարներն կամ պատկերք՝ որոնք անշուշտ յունական գրչագրէ մը հանուած և անոր մէջ դրուած են. վասն զի բաց 'ի յոյն արուեստէ, որ զգալի կերպով կը զանազանի 'ի մերայնոց, վերտառութիւնք կամ պատկերաց ցուցակութիւնք՝ նոյն լեզուով են. և տառից ձեւն և գրութիւն՝ վկայութիւնք կը սեպուին առ տեղեակս իրենց ժամանակին։

Այս պատկերաց մէջ յոմանս առաւել կը փայլի արհեստ և վրձինի փափկութիւն, և իրաւամբք ճարտարաց ուշադրութիւնը կը գրաւէ. ինչպէս 'ի նկարուն՝ յորում կը տեսնուի վարդապետն Յիսուս 'ի միջի, յաջակողմն Աստուածամայրն սուրբ, և 'ի ձախմէ՝ յունական կերպարանք և պատմուճան կրող հայրապետ մը. այսպէս

Աւետման, Յիսուսի ընծայմանն 'ի տաճարն, Մկրտութեան և Այլակերպութեան պատկերներն։ Միւսներն են երկու սուրբ աւետարանիչք՝ Մարկոս և Ղուկաս. (Մատթէի և Յովհաննու պատկերներն կը պակսին)։ չորս աւետարանիչք՝ մէկ պատկերի մէջ, Յիսուսի ծնունդն, Յիսուս փրկիչ՝ յոյն միւսիոններու կերպարանքով և արհեստով։ Ասոնցմէ զատ, երեք խորանք համաձայնութեան չորից աւետարանաց, և միւս չորրորդ մ'ալ՝ Եւսեբեայ թղթոյն առ Կարպիանոս։ Յիշենք անցողաբար միւս Աւետարան մ'ալ երկաթագիր և մագաղաթեայ, նոյնպէս 'ի մերում Մատենադարանի, նման արուեստով և գեղեցկութեամբ՝ 'ի ՆԾԶ (1007) թուականի գրեալ յԱնգըռնապոլիս (Ադրիանուպոլիս) Մակեդոնիոյ, թողլով ուրիշ շատերն, ժամանակաւ կրտսերագոյն, ԺԱ, ԺԲ, ԺԳ դարուց գրչութիւնք։

Այս վերջին և մեզի աւելի մերձաւոր դարուց մէջ գըրուած ձեռագիրք, կիլիկեան ժամանակաց ժառանգութիւնք և աւանդք՝ աւելի բազմաթիւ հասած են առ մեզ. որոց համառօտ նկարագիրը՝ հայրենական գիտութեանց հետամուտ և բազմահաշակ գրչի մը խօսքերովը ներկայացընենք ընթերցողաց, իր մէկ նոր և անուանի հեղինակութենէն քաղելով։

« Միւս եւս արուեստ... Քարտուղարութիւն կամ Գըրչութիւն յոյժ 'ի պատուի էր և քաջ յաջողեալ 'ի Սիսուան, 'ի դրան արքունի և 'ի վանորայս. որոյ և կենդանի իմն վկայք մնան ձեռագիր մատեանքն։ Յանուանէ կարգէ ժամանակագիրն զոմանս 'ի նոցանէ, որք յելս կոյս ԺԳ և յառաջին կէս ԺԴ դարու կացեալ էին. Գրիգոր դպիր. Վասիլ դպիր. Հեթում Երէցն. Կոստանդինն Շարաճիւանց. Սարգիս երէց՝ քեռորդի Ստեփանոսի Վահկացւոյ, որոյ ասէ աւարտեալ զգրութիւն հրաշազան և նկարակերտ գրոցն Արարածոց, զսկզբնաւորեալն յաւուրս Բ Լեւոնի և յանկ ելեալ յաւուրս Դին. Թոռ Սարգիսս այս նոյն ինքն ճարտար Պիծակն, և որդի Խուլ

*Գրիգորի քահանայի. զորոյ և զմականուան ծագումն յայտնէ. որպէս թէ երբեմն « յ'առնելն ծաղկի և 'ի նկարելն, պիծակ մի նստաւ հանդէպ նմա 'ի լուսամուտն, որ և չուտ նկարեաց զնա. զոր տեսեալ մերձակայիցն՝ կարծեցին թէ պիծակն եկեալ նստաւ. զոր ընդ ձեռօքն վարելն նոցա զնա, ծիծաղեալ Տէր Գրիգորն. ապա գիտացին զիրն, և զարմացեալ կոչեցին Պիծակ »: Թերեւս վերոյիշեալ Շարահիւսանց Կոստանդինն է քահանայն՝ զոր աշակերտ նորա Լեւոն երէց, յամի 1306, կոչէ « անհաս և անհամեմատ գրիչ ». Նոյնպէս և զիւր հարազատ եղբայրն « զՍիոն քահանայ, որ և մանկագոյն խակակոտոր եղեւ »: — Եթէ ոչ անթիւ, մարթ է յոյժ բազմաթիւ առել զճարտար գրիչս Սիսուանայ...*

*« Բազում անգամ անանջատ են յարուեստաւորս ձեռագրացն՝ երկոքին ճարտարութիւնքն, Գրչութիւն և Նկարչութիւն, որ բազում այն է զի Ծաղկողք և Ոսկողք կոչին. և յայսմ արուեստի գերազանցեալ երեւին Սիսուանեայք քան զոր 'ի Մեծ Հայս. յիշատակին և յոլովք 'ի սոցանէ. որպէս, ժամանակակիցն Կոստանդեայ՝ և աննման յայնմ արուեստի վկայեալ Գրիգոր զարդարիչ Պապառօնեան աւետարանին « գեր 'ի վերոյ և անհաս 'ի սեռս մեր »: Ժամանակակից Պիծակին յիշի Յակոբ Նըկարիչ 'ի Գայլու վանս. որոց մերձաժամանակ և այլք ոչ սակաւք: Հնագոյնքն՝ առաւել հետեւողք են Բիւզանդացւոց, յետինք՝ ազատագոյնք. այլ ոչ հաւասարեն գաղափարաց իւրեանց 'ի պատկերս կերպարանաց, մանաւանդ ձեռաց և ոտից, ճարտարագոյնք գոլով 'ի կերպարանել զհաւս և զհարսնահաւս և զչորքոտանիս, և եւս առաւել զպէսպէս զարդս և ձեւս արաբիկս և ինքնահնարս...*

*Այլ առաւել եւս փայլէ ուսումնասիրութեան և գրասիրութեան շնորհ՝ 'ի զարմի անդ Հեթմեանց յաջորդաց Ռուբինեանց. յորոց գրեաթէ յամենայն պայազատաց՝ ժամանեալ մնան ցարդ ոմանց խնկական երկք, և յոլովից՝ վասն ինքեանց կամ վասն օտարաց գրել և յօրի-*

նել տուեալ մատեանք... որպէս Վարք Ոսկեբերանի գըրեալ վասն Օշնի հօր սրբոյ Լամբրունեցւոյն. իսկ սա... պարագլուխ ամենայն բանասիրաց տանս Կիլիկիոյ՝ իւրով ձեռօք գրեալ է յոլով մատեանս, յոլովագոյնս եւս տուեալ գրել։ — Ոչ անարժան նմին և եղբայրն Հեթում-Հեղի, ետ գրել զգեղապաճոյճ աւետարանն նուիրեալ վանաց Սկեւռայ։ — Նմանեալ նմին յետ դարու միոյ և դուստր Թոռին իւրոյ համանուան՝ Աշխէ՝ կին սեննեկալին Կիպրոսի, տայր գնել աւետարանս և կտակարանս ձեռամբ ճարտարին Ստեփանոսի Գոյն-Երիցանց, որք ցարդ պահին առ գաղթականս Հայոց յարեւմուտս։

« Մեծագոյն եւս տեսանի գրասիրութիւն և գրավարժութիւն յարքունական շառաւիղի Հեթմեանց բնոյն, որոց նոր նահապետ Կոստանդին Պայլ՝ նորոգեաց կամ յառաջացոյց զամենայն երախտիս Լեւոնի, ընդ քաղաքականին և զբանասիրականն, յորս որդիք նորա պանծալիք մի քան զմի գերազանցեցին. առաջինն՝ քաջն Սմբատ Գունդստապլ՝ արժանաւորն մատենագրաց դասակցութեան, եթող զիւրն և զիւրոց մատանց գիծս, և մատեանս գրեալս իւրովք ձախուք։ Նոյնպէս և երկրորդն, որ է Բարսեղ արքեպիսկոպոս, որ և հեղինակ է քերականի գրոց։ Ծանօթ եւս են կրտսերոյն Յովհաննէս եպիսկոպոսի՝ առաւել քան զմտաւոր վաստակս, բազում մատեանքն ընդօրինակեալք, եւս և իւրովք խրախուսանօք յօրինեալք, որպէս Գործոց Առաքելոց մեկնութիւնն Սկեւռացւոյն։ Չորրորդ և սակաւածանօթ եղբօր սոցա՝ Վասակայ կամ Վասլի տեառն Ճանճոյ, քաջի և բարեպաշտի՝ յիշին ընդ այլոց սրբազան սպասուց և Աւետարանք գրեալք և Սաղմոս մի ատենի։ Իսկ վեհագունի հարազատացն՝ Հեթում արքայի, վկայեալ է զոյգ ընդ քաղաքական և պատերազմական հրահանգաց՝ և սէր մըտաւորականին. « Ետ գրել բազում մատեանս, յորոց բազումք կան մինչեւ ցայսօր (ասէ ժամանակագիրն, զոր կարեմք և մեք կրկնել), և ետ թարգմանել այլ եւս բազումս » ։...

«Զուգակից երկարժամանակեայ իշխանութեան Թագաւորին և կաթողիկոսն Կոստանդին՝ նոյն գտանէր և ջանիցն, խնամարկելով 'ի բանասէրս, զի «գրասէր եղեալ (ըստ ժամանակակից յիշողի)՝ ետ գրել յոլով աւետարանս և գրեանս», ընծայելով արքայազարմիցն (յորոց ոմանք իւր իսկ սանք էին), և եկեղեցեաց վանորէից. յորոց ծանօթ են ինձ եօթն աւետարանք՝ պաճեալք յայլեւայլ ձեռս, և մին 'ի մերումս: — Առաւել քան զարքունի փառս՝ զիմաստասիրութեանն ոգի ժառանգեաց պայազատն Հեթմոյ Լեւոն Բ, թերեւս գերազանցեալ ըղհանուրբք՝ յայսմ մասին, վասն որոյ և կոչեցաւ Գրասէր, զի «ետ գրել բազում պատուական գրեանս, յորոց բազումք կան մինչեւ ցայսօր, (ասէ ժամանակագիրն), և զայլ բազումս ժողովեաց, և ետ վերստին նորոգել 'ի ձեռս ճարտարաց և վարդապետաց, զոր 'ի վատթար գըրչաց այլայլած էր. և դարձեալ զբազումս ետ թարգմանել»: . . . — Ոչ միայն 'ի բնիկ երկրի իշխանութեան իւրում, այլ և առաքէր 'ի մատենիցն 'ի Մեծ Հայս, և 'ի գաղթականսն յարեւմուտս, յորոց ճաշոց մի՝ յիշատակաւ իւրով առաքեալ 'ի Պերուճիա քաղաք Իտալիոյ՝ փոխադրեցաւ յետոյ 'ի Հոգետունն Հայոց Հռովմայ: Գտանին մատեանք գրեալք և 'ի խնդրոյ կնոջ նորին Կեռան Թագուհւոյ, որ և կրօնաւորեալ ասի և կոչեցեալ Թեոֆանի: Ոչ պակաս քան զհայրն գտաւ և անդրանիկ սորա Հեթում Բ, մեկենաս Գր. Անաւարզեցւոյ և Գէորգայ Սկեւռացւոյ, որում ետ յօրինել զՄեկնութիւն Եսայեայ. գտանին և շատք վասն իւր և վասն այլոց գրեալ մատեանք իւրովք ծախուք. իսկ իւրոց գրաւոր վարժից յաջողութեան վկայ Յիշատակարանն վասն աւուր տօնի զատկին, վայելուչ տաղաչափութեամբ: Ի բազմաթիւ եղբարց սորին Հեթմոյ՝ ծանօթ է ինձ, նա և 'ի ձեռին, Յայսմաւուրք մի (ըստ կարգադրութեան Անաւարզեցւոյն) գրեալ վասն Օշին Թագաւորի, յորում նշանակեալ են աւուրք մահուան արքայազանց: Օշնի որդի Լեւոն Դ ցու-

ցաւ երախտագործ՝ հաստատութեամբ վարժարանին 'ի Ջերմաղբեր վանս․ Նորին հրամանաւ կան մնան գրեալ Ասիզքն Անտիոքայ և Օրինագիրք Սմբատայ, որ նոր յայտնեցաւ։

« Ի զարմից եղբարց Ա Հեթմոյ և հօրեղբարց Լեւոնի Բ, ծանօթք ինձ մնացորդք ստացեալ գրոց՝ են, Գիրք Սողոմոնի և այլ ինչ 'ի Ս․ Գրոց։... Վասն եղբօրորդւոյ սորա երկրորդ Սմբատ Գունդստապլի՝ ծանօթ է գրեալ Աստուածաշունչ մի չքեղ։ — Զատ 'ի չորից և 'ի հնգից եղբարց՝ որդւոց նահապետին Կոստանդեայ Պայլին՝ էին և այլ որդիք, յորոց մի Լիկոս․ յանուն սորա չէ ինձ ծանօթ գրեալ մատեան․ այլ վասն որդւոյ իւրոյ պատանեկի Պարոն Սիր Լեւոն կոչեցելոյ՝ կայ առ մեզ Աւետարանիկ մի գրեալ յամի 1256, որոյ գրիչն Յովհաննէս մաղթէ յիշել « զբարի շառաւեղն, զտղայ Պարոն՝ ըզ-Սիր Լեւոն, որ եռափափագ սիրով ստացաւ զսուրբ աւետարանս » ։... Ութերորդ որդւոյ արքայահօրն Կոստանդեայ, որ է Պաղտին մարաջախտ ստացող և նորոգող ճաշոցի գրելոյ ծախուք մեծի Գունդստապլին, յորում գրեալ է և ինքն յիշատակս ինչ ընտանեկանս, որպէս յետոյ և որդի նորա Կոստանդին Բ․ իսկ Կոստանդին Գ թագաւոր՝ չափական բանիւ գրեալ է ողբս զմահուանէ եղբօրն։ Գտանի առ մեզ և աղօթագիրք մօր նորա Մարիւն տիկնոջ՝ դստեր Լեւոնի Գունդստապլի »[1]։

* * *

Ձեռուընիս հասած հնագոյն հայկական գրչագիրք՝ մագաղաթի վրայ գրուած են ըսինք։ Գրոց գիւտին և կազմակերպութեան ժամանակ ալ, և յառաջ քան զսուրբն Սահակ և զՄեսրոպ, երբ դեռ եւս ասորի և յոյն տառերով կը վարուէին մերք՝ հաւանական կ'երեւնայ նաեւ

1 ԱԼԻՇԱՆ (Հ․ Ղ․ Վ․)․ Սիսուան․ յէջ 517–520։

մեր մատենագրաց խօսքերէն թէ ծանօթ և ընտանի էր նաև իրենց, ինչպէս ուրիշ մերձաւոր ազգաց, մագաղաթի գոյութիւնն ու գործածութիւն։

Մագաղաթէն առաջ, ինչպէս յայտնի է 'ի պատմութեանց, սովոր էին հինք քարանց, թրծուն աղիւսի, փղոսկրի և փայտերու վրայ ալ դրոշմել իրենց արձանագրութիւններն։ Առջինին գործածութիւնը տեսանք և 'ի Հայաստան անդստին 'ի վաղ ժամանակաց՝ բեւեռաձեւ գրոց կիրառութեան ատեններէն. և Հայկական տառերով ալ դեռ ինչուան հիմայ կը գտնուին բազմաթիւ յիշատակարանք ընդ ամենայն Հայաստան. իսկ միւսներուն ոչ յիշատակութիւնը կը գտնենք, և ոչ ալ անոնցմէ մնացորդք հասած են առ մեզ. այսպէս և ոչ պղնձի տախտակաց վրայ աւանդուած գրութեանց, որոնց յաճախ կը հանդիպինք առ հինսն և մանաւանդ առ Հռովմայեցիս։

Մագաղաթի վրայ գրելը շատ հին սովորութիւն է։ Երեք այլեւայլ գունով էին մագաղաթք՝ ըստ տեսակին և ազնուութեան նիւթոյն. սպիտակ, դեղնագոյն և ծիրանի. և այս վերջինս կը գործածուէր մանաւանդ քրիստոնեայ ազգաց մէջ՝ սրբազան գրքերու ընդօրինակութեան համար. ինչպէս աստուածաշունչ գրոց, սաղմոսաց, պատարագամատուցի, շարակնոցաց և ժամագրոց, և այլն. և տառերն ալ՝ մանաւանդ տողից գլուխք, շատ անգամ ոսկւով և արծաթով պաճուճուած։ Մեր Գրչագրաց մէջ յաճախ կը տեսնուին այս վերջի հանգամանք և զարդք. բայց մագաղաթի կիրառութեան մէջ գոյներու այնչափ և զգալի տարբերութեանց չենք հանդիպիր. ուր մագաղաթք ընդհանրապէս մաքուր, յղկեալ և բաւական արուեստով պատրաստուած են։ Գրչութիւնք ճարտար և բազմածախ, չխնայելով յոսկի, յարծաթ և 'ի դեղս։

Մետասան, երկոտասան և երեքտասան դարերուն մէջ՝ յորս մագաղաթի արուեստ և կիրառութիւն դէպ 'ի ան-

կումն կը յառաջէր, և Թուղթի գործածութիւնն դեռ ոչ ընդհանուր և սովորական, հին ձեռագիրներն քերելը, և անոնց վրայ նոր գրութիւններ ընելով՝ մագաղաթ և դը-րամ շահելու վնասակար սովորութիւնն յաճախելով, 'ի հնոց աւանդուած շատ երկասիրութիւնք չհասան առ մեզ։ Այս կերպով քերուած և նորէն գրուած ձեռագիրք՝ կըրկ-նագիրք (Palimpsestes) կը կոչուին. և որք նախնական գրուածոց հետքը կամ նշանակքը ընդհանրապէս վրանին կրելով մեր ժամանակաց անուանի հնագէտք և հնախոյզք յաջողին երբեմն զանոնք կրկին 'ի լոյս հանել։ Մեր գըր-չագրաց մէջ թէպէտ ոչ 'ի սպառ անծանօթ, բայց այն-չափ ալ յաճախած չենք տեսներ այսպիսի աղաւաղու-թիւնք և կրկնագիրք։

Մագաղաթի խափանմանէ կամ անկմանէ ետքը՝ բամ-բակեայ թղթոյ գործածութիւնն սկսած է յեւրոպա, որով և առ մերսն։ Հնոց տերեւներու, ծառոց կեղեւներու և մանաւանդ կտաւի վրայ գրելու սովորութեան հետեւանք և արգասիք եղած է Եգիպտական կոչուած թղթոյ գիւ-տը. որուն ժամանակաւ և հետզհետէ ստացած կատա-րելութեան արդիւնք են բամբակեայ և ուրիշ թղթեր։ Մեր մէջ մետասան, երկոտասան դարերէ սկսած է բամ-բակի թուղթը, և շարունակուած. թէպէտ և բոլորովին չզատուելով 'ի մագաղաթէ, մանաւանդ առջի բերան, և եկեղեցւոյ պաշտամանց յատուկ գրքերու մէջ։

* * *

Մագաղաթէ ու թուղթէ զատ՝ հնոց մէջ գրութեան սովորական գործեաց վրայ ալ կ'արժէ քանի մը խօսք ընել, և որոնք ժամանակին և հաճոյից համեմատ փոփո-խութիւններ կրած են։ Հաւանական է թէ Եգիպտացիք, Յոյնք և Հռովմայեցիք կտաւի վրայ եղած գրութեանց համար՝ վրձին կը գործածէին. և որ ցայսօր 'ի կիրա-ռութեան է առ Ճենս։ Մոմի կամ կապարի վրայ գրե-

լու ատեն՝ փղոսկրէ կամ 'ի մետաղէ պզտի գործի մը ունէին՝ զոր գրիչ (style) կը կոչէին. որուն մէկ կողմովը կը գրէին, և միւսովը սխալները կը ջնջէին։ Այս եղած է անշուշտ մեր հնոց քով գործածուածը, և այն պատճառաւ՝ մեր այբուբենից առջի ձեւք երկաթագիրք կոչուած, ինչպէս յիշեցինք։ Բաց յերկաթոյ՝ ուրիշ մետաղներէ ալ կը շինուէր այս գրիչը. և կ'աւանդէ Մոնֆօքօն՝ թէ Յունաց պատրիարքունք արծաթէ եղէգով մը կը գրէին իրենց ստորագրութիւնը։ Թերեւս և առ մերսն ալ անծանօթ եղած չըլլայ ասոր գործածութիւնը։ Ասոնցմէ ետքն են եղէգէ և փետուրէ գրիչք, և որոց կիրառութիւնն կը տեսնուի նաեւ մեր ձեռագրաց պատկերներուն մէջ։

Մատենագրի կամ ընդօրինակողի մը համար անհրաժեշտ կարեւոր ուրիշ ամէն գործիք՝ քանոն, կարկին, կաղամար, զմելին, քերիչ, աւազաման, բոլորն ալ ծանօթք էին նախնեաց, և ձեւերու քիչ շատ տարբերութեամբ իրարու անցած։ Քանոնով և կարկնաւ սովոր էին՝ ուղղահայեաց գծերն գծել և գրուածքն ամփոփող լուսանցքն նշանել. յետոյ հորիզոնական գծերով տողից համաչափ հեռաւորութիւն կու տային։ Մերթ մի և նոյն տողը երկու գծերու մէջ կ'ամփոփէին, մանաւանդ երկաթագիր գրութեանց համար. և որք միշտ կը փայլին իրենց կանոնաւորութեամբ։ Երեսները գծելու համար ընդհանրապէս սուր երկաթի մը ծայրը կը գործածէին. կապարեայ գրչի գիւտը՝ մետասաներորդ դարուն է. բայց կիրառութիւնն միայն երեքտասաներորդին մէջ սովորական եղած է։ Աւելի վերջին դարուց մէջ կ'երեւնայ կարմիր գծերով տողերուն ուղղութիւն մը տալու սովորութիւնն, և որ կը տեսնուի նաեւ եւրոպական հին տպագրութեանց մէջ. բայց այս կարմիր գծերու կիրառութեանն մեր ձեռագրաց մէջ չենք հանդիպած։

Առ հինսն գործածուած թանաքը ընդհանրապէս սեւ փայլուն գոյն մը ունի. և կ'երեւնայ թէ նոյն տեսակ նիւթով կը շինէին նաեւ ինչուան միջին դարերէն ետքն

ալ։ Բայց չորեքտասաներորդ դարուն մէջ՝ թանաքի շինութեան համար գործածուած նիւթք փոփոխութիւն կրած կը թուին. վասն զի գրութեանց երեւոյթը կ'այլափոխի, և կամաց կամաց կը սկսի ժգոյն կերպարանք մը առնուլ։ Ահաւասիկ դիւրին միջոց մը՝ որով հնագէտք ձեռագրի մը հնութիւնն ու ժամանակը կը ճանչնան, թէպէտ և գրութեան թուական չունենան։ Նոյնը կրնանք ըսել և հաստատել ընդհանրապէս նաեւ մեր ձեռագրաց համար, 'ի բաց առեալ այն պատահական պատճառներ՝ որ անոնց արտաքին երեւոյթը կրնային այլայլել։ Ընդհանրապէս սեւագոյն էր թանաքնին. բայց զարդագրոց մէջ կարմիր և ուրիշ գոյն ունեցողներն ալ 'ի կիրառութեան էին. և թագաւորք, ինչպէս ուրիշ ազգաց մէջ, սանկ ալ 'ի մեզ, իրենց ստորագրութիւնն դնելու համար կարմրագոյն թանաք կը գործածէին, և կը հաւատարմացընեն մեր խօսքը՝ Լեւոնի մեծին և՛ Հեթմոյ մեր թագաւորաց ինչուան առ մեզ հասած ստորագրութիւնք՝ դաշնագրութեանց մէջ։ Այս էր նաեւ կոստանդնուպոլսոյ կամ Բիւզանդական արքունեաց և Նիկոսիոյ պատրիարքաց սովորութիւնը, յորոց անշուշտ անցած է առ մեզ և յեւրոպական արքունիս. վասն զի Կարոլոս Ճաղատ թագաւորին ստորագրութիւնք կը գտնուին կարմրադեղով։ Այսպէս սովոր էին մերքն՝ գրչագրաց գլխատառքն և նաեւ առաջին մէկ կամ երկու երեք տողերը կարմրով, կապոյտ և ծիրանեգոյն դրոշմել և զարդարել. նոյնպէս սկզբնատառից այլեւայլ հաճոյական և արուեստաւոր ձեւեր տալ, թռչնոց, կենդանեաց, ծաղկանց նմանութեամբք և յարմարութեամբ՝ յորս յաճախ գրողին ընտիր ճաշակն ու գիտաւոր հանճարը կը փայլի։ Այսպիսի գրութիւնք շատ են նաեւ եւրոպական, մանաւանդ միջին դարուց պատկանող ձեռագրաց մէջ։ Մետաղային և գունաւոր թանաքներ՝ որոնք, ինչպէս ըսինք, ձեռագրաց զարդագրութեանը կը ծառայէին, ութերորդէն մինչեւ 'ի տասներորդ դարուց գիւտք են և կիրառու-

թիւն, և հետեւորդ դարերուն մէջ առաւելագոյն յաճախութիւն գտած, ինչպէս նաեւ մեր մէջ։ Իսկ յերեքտասաներորդ դարու և անկէ ետք՝ ոսկւոյ թերթեր կը գործածուէին՝ արուեստով կպցընելով գրերու վրայ։

Ինչպէս ուրիշ ազգաց՝ ասանկ ալ մեր մէջ, գրչագրողն ու զարդագրող և նկարիչ՝ միշտ մի և նոյն անձը չէր, այլ մերթ նաեւ զատ անձինք, և որք՝ ինչպէս դեռ քիչ առաջ յիշատակն ըրինք Ոսկողք կամ Ծաղկողք կը կոչուէին։ Այս պատճառաւ է որ կը տեսնուին գրչագիրք՝ այս նկատմամբ անաւարտ և անկատար հասած մինչեւ առ մեզ. երբեմն նաեւ գլխաւոր տնագլուխ տառք՝ կամ բոլորովին չնշանակուած, և կամ միայն սեւադեղով՝ զոր նկարողին արուեստը պիտի լրացընէր։

Ձեռագիրքը երփնագրելու արուեստը՝ ծանօթ էր հնոց, բայց ոչ կիրառութիւնն 'ի յաճախութեան. որով հնագոյնք՝ կամ բոլորովին զուրկ են 'ի զարդուց, կամ խիստ հազուագիւտ, մանաւանդ ութերորդ դարէն առաջ գրուածներն։ Առջի բերան զարդք՝ նկարակերտութեանց անձուկ սահմանէն դուրս չէին ելլեր. ութերորդ և իններորդ դարուց ձեռագրաց մէջ կ'երեւնան բոյսք, տերեւք, թռչունք, և այլն. ապա արաբական զարդք՝ որ տեւեցին՝ առանց կորսնցնելու իրենց նորութիւնն, և չդադրեցան սիրելի և հաճոյական ըլլալէն մինչեւ ցերեքտասաներորդ դար։ Առ Եւրոպացիս՝ գրչագրաց զարդարանաց համար՝ նախագոյն դար սեպուած է հնգետասաներորդ. նոյնը կրնանք ըսել նաեւ մերիններուն համար, թերեւս դար մը կանխելով քան զնոսա. տերեւք, ծաղիկք, պտուղք, կենդանիք և միջատք՝ շատ փափկութեամբ և ճարտար արուեստով նկարակերտուած են, և յաճախ նաեւ առաւելագոյն նմանութեամբ քան իրենցմէ հնագունից մէջ։ Սակայն առ բնութիւնն դարձիւ ալ՝ տեսարանք շատ անգամ հեռանկար արուեստի գեղեցկութենէն անմասն են, և մանաւանդ մարդկային կերպարանաց վրայ բրտութիւն կամ խստութիւն մը կ'երեւնայ։



Ձեռագրաց յարգն ու պատուականութիւնը՝ կա՛մ իրենց հնութեան և արուեստին, և կամ իրենց մէջ ամփոփուած նիւթին համեմատ է։ Ոմանք այս ամենայն յատկութիւններն միանգամայն կրնան բովանդակել, որով երկպատիկ կ՚ըլլայ յարգերնին, ոմանք ալ՝ մէկ կամ երկու մասամբ, և անոր համեմատ պատուականութիւննին։ Մեր հայկական ձեռագրաց մէջ ալ՝ թէ՛ հին և թէ մէկալն սակաւագիւտ չեն կրնար սեպուիլ՝ միշտ համեմատաբար ազգային մատենագրութեան ունեցած դիրքը՝ ուրիշ ազգաց մտաւորական հանճարոյ արտադրութեանցը հետ։

Մատենագրութիւննիս կա՛մ յատուկ հայկական է, և կամ յայլոց առ մեզ փոխադրուած։ Առջինին կը պատկանին ազգային հանճարոյ և մտաց երկունք, մինչ երկրորդն թարգմանութիւնք են՝ յայլեւայլ հին և երբեմն նաեւ 'ի նոր լեզուաց։ Թէ՛ ազգային մատենագրութիւնն, և թէ յօտարաց՝ հայկական կերպարանքով մեր ժառանգածը, ունին իրենց մեծ կարեւորութիւնն հայ լեզուին, պատմութեանն, ու յաճախ նաեւ ոչ ազգային մատենագրութեան նկատմամբ։ Առ այս միակ և գլխաւոր օժանդակք երեւցած են ձեռագիրք. առանց իրենց մատուցած մեծ ծառայութեան՝ գերեզմանի լռութեան և միայնութեան պիտի դատապարտուէր նոր սերունդը. և որչափ սիրելի է կեանք, այնչափ անցեալ և բարգաւաճ կեանք մը մեզի ներկայացընող գրեանք ժամանակին անխնայ ձեռքերէն յափշտակուած։ Եթէ գրիչք, օրինակ իմն, անփոյթ ըլլային հետզհետէ ընդօրինակութեամբ, իրենց ձեռքն հասածը մեզի աւանդելէն, ընդհանուր գիտութեան համար մեծ պարապ մը պիտի բացուէր. պատմական ուսմանց շղթային օղակք՝ կոտրըտած և ջախջախ դիրից մէջ պիտի ներկայանային։ Նոյնը կրնանք ըսել

նաեւ յօտար լեզուաց 'ի հայ եղած թարգմանութեանց համար։ Անոնց սկզբնագիրք՝ մերթ մասնական և մերթ ալ ամբողջ կորստեան մը ենթարկուած են. տեղ տեղ յանհմտութենէ և կամ յանհաւատարմութենէ գաղափարողաց՝ աղաւաղ և անհարազատ կերպարանօք ապագայից աւանդուած. որով յաճախ թարգմանութեանց դիմել հարկ կ'ըլլայ՝ լուսաբանելու և 'ի ձեռնձգութեանց սրբելու համար։ Միւս այլ բազմաշահ ծառայութիւն՝ զոր ըստ վկայութեան նոցին իսկ եւրոպէացի երախտապարտ իմաստնոց՝ հայկական ձեռագիրք մատուցած են հնութեան և գիտութեանց։

Գալով 'ի մասնաւորի մեր ազգին, մենք չունինք ըդպատմութիւն արուեստից, և անոնց բարգաւաճանացը կամ անկման։ Այսպիսի էական պակաս մը՝ եթէ ոչ լիովի. սակայն մասամբ կը լեցընեն գրչագիրք։ Թէ ինչ վիճակի մէջ էր իններորդ դարէն 'ի վեր հայ ազգին մէջ նկարչութիւն, զարդագրութիւն կամ նկարակերտ միւսինք, ճարտարապետական ձեւ և ճաշակ, և ասոնց ամենուն վրայ որպիսի՛ և ո՛րչափ ազդեցութիւն ունեցած էին յոյն և արաբական արուեստք. ե՛րբ կամ ինչ կերպով անոնց տեղ սկսաւ մուտ գործել եւրոպական ծանօթութեան հետ նաեւ արուեստ և ճարտարութիւն, այս ամենուն նկատմամբ՝ պատմութիւնը լուռ և համր կրնայ սեպուիլ մեզի համար. և անոր լռութեան դարմանը՝ գոհացուցիչ կերպով կը մատուցանեն մեզ գրչագրողք՝ դարէ դար շարունակեալ պատմութիւն մը՝ սիրալի օրինակներով, դնելով մեր առջեւը իրենց բազմաթիւ և գեղեցիկ նկարներով։

Խիստ քիչ է ունեցած տեղեկութիւննիս մեր նախնեաց տանին և քաղաքային սովորութեանց և կիրառութեանց. ոչ անոնց զինուորական զարդուց և կազմածոց, գործած զինուց, զգեստուց, կահից և կարասեաց։ Չունինք իբրեւ զՅոյնս և զՀռովմայեցիս հրաշակերտ արձաններ և քանդակներ՝ հնախուզից և ուսումնականաց գիտութեանն

և քննութեան 'ի ճարակ և 'ի սնունդ։ Սակայն մեր գրչագիրքն քննած ատեննիս՝ բազմաթիւ նկարուց վրայ բաւական ճշդութեամբ այդ ամէնը կը ներկայանան մեզ․ ոչ լոկ քաղաքային և զինուորական սովորութեանց հանդերձանք, կազմածք և զգեստք, այլ նաև ինչուան ազատաց ու թագաւորաց յատուկ կամ սովորական պատմուճանք, ծիրանիք, և այլն։

Չունինք դարձեալ մեզի համար մասնաւոր և մանրամասն բուն ազգային աշխարհագրութիւն կամ տեղագրական նկարագրութիւն․ և ոչ կարգաւորեալ ստորագրութիւն մեր ընդարձակ հայրենեաց հողուն վրայ սփռուած քաղաքաց, գիւղից և մանաւանդ անթիւ վանօրէից և անոնց գործունէութեան, և հայրենեաց մատուցած ծառայութեանց թէ՛ կրօնից և թէ ուսմանց պահպանութեան և բարգաւաճանաց նկատմամբ։ Այս կողմանէ ալ շատ օգտակար կերպով ուսումնասիրելու ընդարձակ ասպարէզ մը կը բանան ձեռագիրք՝ իրենց յիշատակարաններով՝ հետաքննական տեղեկութիւններ տալով մեզ այդ ամէն նիւթերուն վրայ։

Ունինք ազգային պատմչաց ոչ աննշան թիւ մը․ բայց յաճախ ընդհատութեանց հանդիպելով՝ կը բռնադատուինք ոստիւն մը ընել․ և այդ բռնադատ անցքը՝ շատ անգամ կա՛մ բոլորովին մեր պատմութեանց փափաքելի շարունակութեան թելը կը կտրէ, և կամ մթին և անորոշ դէպքերու մէջ կը ստիպէ թափառիլ։ Հոս ալ գրչագիրք մեզի օգնութեան կը հասնին՝ մեր արդ իսկ յիշատակած բազմաթիւ և բազմավէպ պատուական յիշատականներով։ Չենք գիտեր թէ արդեօք եւրոպական գրչագրողք ալ ունեցե՞ր են այդ սովորութիւնը՝ զոր մերք, գրեթէ ամէնքը՝ սակաւաւոր բացառութեամբ, շատ գովութեամբ ու պիտանի կերպով բանեցուցած են, իրենց ժամանակակից դէպքերը՝ սփոփինչք կամ տխրականք, ընդօրինակած գրքերուն վերջը աւելցընելով․ և որոց ժամանակագրական կարգի վրայ առնուած ամբողջութիւնը՝ պատ-

*մական տեղեկութեանց բովք մը կրնան կազմել։ Քանի քաղցր էր և մխիթարական, — մանաւանդ ժամանակաց և դարուց տխրութենէն լքելոց և տրտմեցելոց, — արտասուալից աչքերով թափառիլ անոնց մէջ, ու նախնեաց փառաւոր ժամանակաց, առաքինութեան՝ գիտութեան և քաջութեան դարուց սխրալի այլեւայլ յիշատակաց հանդիպիլ։ Օրինակ իմն, մեր բարեպաշտ ու աստուածասէր թագաւորաց համար գրուած վերը յիշուած Ցայսմաւուրաց մէջ կարդալ հետագայ տողերը՝ և իրաւամբ սքանչանալ այն նշանաւոր անձանց վրայ որ գիտէին արութեամբ նահատակիլ 'ի պատերազմունս իրենց հայրենեաց պաշտպանութեանն ու ապահովութեան համար, ու երկրաւոր փառաց մէջ՝ չմոռնալով զերկինս, զէնքը առ ժամանակ մի մէկդի դրած ատեններին՝ կը զմայլէին երկնաքաղաքացի առաքինեաց վարուց ընթերցմամբ. « Տէր Աստուած վայելել տացէ զգիրքս թագաւորին մերոյ Աւշնի, և որդւոյ նորա Լեւոնի » ։ — « Կեցո, Քրիստոս, զթագաւորս Աւշին և զորդի նորա Լեւոն զօրութեամբ քով » ։ — « Տէր տայ յաղթութիւն բարեպաշտ թագաւորին մերոյ Օշնի » . — « Տէր Յիսուս Քրիստոս զօրացուցանէ զբարեպաշտ և զաստուածասէր թագաւորն մեր Օշին և զդեռաբոյս մանուկն իւր Լեւոն առաւել քան զառաւել, և քան զամենայն զօրս իւր զօրացուսցէ Քրիստոս 'ի վերայ թշնամեաց իւրոց » ։ Երբ առ սուրբ կոյսն դառնալով կը մաղթէ. « Մա՛յր սուրբ, բարեխօսեա առ Քրիստոս վասն բարեպաշտ և տօնասէր թագաւորին մերոյ Օշնի, յաղթող լինել ընդդէմ հակառակորդ թշնամեաց խաչին Քրիստոսի » ։ — « Սուրբ և տօնելի ծննդեամբ Մօր քո Քրիստոս զօրացո՛ զնորոգ օծեալ բարեպաշտ թագաւորս մեր Աւշին, և զդեռաբոյս մանուկն իւր զԼեւոն » ։ Յիշելով և յիշատակելով զսուրբն Գրիգոր Լուսաւորիչ. « Տէր Յիսուս Քրիստոս քահանայապետ յաւիտենից, քահանայապետիս քո և վկայիս բարեխօսութեամբ և ամենայն սրբոց զոր յիշատակեցաք յայսմ ամսի, զօրացուցանէ*

*զբարեպաշտ և զաստուածասէր Թագաւորն մեր Աւշին, և զդեռաբոյս մանուկն իւր զԼեւոն առաւել քան զառաւել. և զամենայն զօրս իւր զօրացուցէ Քրիստոս 'ի վերայ Թշնամեաց իւրոց »: — Ջսուրբ վկայուհին Հռիփսիմէ. « Հարսն Քրիստոսի, որ վերափոխեցար այսօր վկայական մահուամբ դշխոյ զարդարեալ նստար ընդ աջմէ երկնաւոր Թագաւորին, զծնեալքս 'ի կուսական երկանցդ՝ զեկեղեցին Հայաստանեայց, որք վերապատուեմք զքեզ տօնախմբութեամբ, ընկալ 'ի պարս քո յերկնաւոր առագաստիդ. և յիշեա առ Աստուած զբարեպաշտ Թագաւորն մեր Աւշին և զորդին իւր Լեւոն՝ զօրացուցանել զնա ըստ կամաց իւրոց »: — Ջսուրբ Թագաւորն Տրդատ. « Բարեխօսութեամբ սուրբ Թագաւորիս, երկնաւոր Թագաւոր մեր Քրիստոս, զօրացո՛ զբարեպաշտ ծառայն քո զԱւշին Թագաւոր Հայկազանց », և այլն:*

*Ասանկ պատմական յիշատակարանք ուրիշ գրչագրի մը մէջ. Յուն. ԻԲ. « Եւ յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս Զապել Թագուհի առաջինն »: — Յուն. ԻԳ. « Յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս պր. Թորոս՝ Լեւոն Թագաւորի եղբայրն որ սպանաւ յանօրինաց »: Փետր. Ա. « Յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս պարոն Ըռովբէն յազգէն Բագրատունեաց որ էառ զԿիղիկիայ և կայ 'ի Կաստաղաւնն »: — Մարտ Զ. « Յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս Սմբատ Թագաւորն որդի երկրորդ Լեւոն Թագաւորն որդի երկրորդ Լեւոն Թագաւորին և կայ 'ի Ներքըրունթն »: — Փետր. Զ. « Յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս Լեւոն Թագաւոր երկրորդն, որոյ ողորմեսցի Նմա Տէր »: — Մարտ. Ը. « Յայսմ աւուր փոխեցաւ 'ի Քրիստոս պարոն Կոստանդին որդի Լեւոն Թագաւորի, և կայ 'ի Կոստանդինապաւլիս »: — Ապրիլ Է. « Յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս տղայն Ստէփանէ որդի երկրորդ Լեւոն Թագաւորին և կայ 'ի Դրազարկն »: — Մայիս Բ. « Յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս առաջին Թագաւորն Հայոց Լեւոն »: — Մայիս Ե. « Յայսմ աւուր հան-*

գեաւ 'ի Քրիստոս Թագաւորն Հայոց Գագիկ որ սպանաւ յորդւոցն Մաթալէի »: — Մայիս Զ. « Յայսմ ... քաջ և յաղթող պարոն Ըռովբէնն ազգական Թագաւորին Գագկայ »: Կը թողունք ուրիշ ասոնց նման յիշատակարաններն, որոնք կարծես թէ մեր արքայազանց լռիկ ու խաղաղաւէտ հանգստարաններն կը փոխադրեն զմեզ:

Շատ անգամ ալ՝ քաղաքական իշխանութեամբ ճոխացեալ ու եկեղեցական նուիրապետութեան դասակարգին մէջ իրենց արդեամբք և սրբութեամբ փայլեալ նշանաւոր ու փարելի անձանց իսկադրոշմ գրութեանց կը հանդիպինք, որով բազմապատիկ կ'առաւելու զանոնք ամփոփող գրչագրաց յարգը: Ռուբինեան արքունեաց ժամանակներէն մինչեւ առ մեզ հասած քանի մը հրովարտակաց տակ՝ Լեւոնի առաջնոյ, Հեթմոյ, Լեւոն երկրորդի ինքնագիր ստորագրութիւնքը տեսած ու կարդացած ատեննիս, անմարթ է որ մտքով չյափշտակուինք այն արքունեաց մէջ անցեալ փառաց և մեծութեան յուշարարք, ուր այդպիսի բարձրագոյն վաւերացուցմանց գործեր կը կատարուէին: Այսպէս չեն կրնար անզգայ մնալ սիրտք և աչք երբ հռչականունն Սմբատայ գունդստաբլի, Գաղտինի՝ Հեթմոյ արքայազարմ իշխանաց՝ բո՛ւն իրենց ձեռքով, կամ իրենց համար գրուած մատեննից հանդիպին, և որ իրենց իշխանական ձեռքերէ անցեր են:

Կարելի չէ դարձեալ հետեւեալ տողերն ընթեռնուլ՝ առանց սրտից իրաւացի յուզման՝ երբ կը յիշենք թէ զանոնք խորհողն ու մելանաւ արտադրողն եղած է՝ անմահականն և սիրելին Ներսէս Լամբրոնացի, իր սուրբ և օրհնաբաշխ ձեռքովն:

« Փառք և գոհութիւն Նմա որ սկիզբն է և կատարած 'ի Նուաստ վաստակաւորէ Ներսիսէ: Տառապեալ Ներսէս, վրիպեալ յառանձինն խոկմանէ. վերակացութեամբ Տարսոնի քաղաքին և որ 'ի Նմա մեծի եկեղեցւոյն պաշտամամբ. զբաւսանս իմոյ զբաղմանցն ստացայ զվաստակ

գրչութեան 'ի մատեանս աստուածային. չեզուաւ բազում անգամ զքաղաքականն լնլով հոգս, և հիւսմամբ ձեռին և մտաց աստ դեգերելով՝ զրնականն և զկրթականն խոկմամբ յաստուածայինս կերակրելով զոգի. ո՛հ ոհ՝ թերևս ըստ մեծ Քրիստոսի գթութեանն պատահեցայց 'ի զերկնից արքայութիւնն բռնաբարողաց. 'ի թու'' ՈԽԴ »:

Միւս յիշատակագիր մ'ալ նոյն սուրբ և համբուրելի ձեռաց. « փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն: — Ի թու'' ՈԻԴ աւարտեցաւ հիմն հաւատոյ գիրս Պարապմանց՝ զոր իմ Ներսիսի տրուպ և անարժան բանասիրի՝ 'ի վարժումն իմաստից գոլով ընթերյա ընդ բազում բանս սրբոց և զսրբոյն Կիւրղի քննութիւնս ուղղափառ հաւատոյ՝ և 'ի դիպող ժամանակի եկեալ 'ի հայրենի աշխարհս՝ սկիզբն եառ առնել սմին 'ի ձեռն պաշտաւնակցի եղբաւր մեր Յովսեփա՝ և ձեռամբ իմով աւարտեցաւ 'ի գծուծ և 'ի մրճոտեալ աւրինակէ: Ընդ որ յայժ զտանես և զաւգտաբանս աւրէնս եկեղեցւոյ »:

Երրորդ մ'ալ 'ի փարիզեան մեծ մատենադարանի՝ Նոր կտակարանաց յունարէն օրինակի մը մէջ, և դիմացը 'ի հայ գրուած 'ի նոյն սրբոյ Լամբրոնացւոյն՝ հետեւեալ համառօտ յիշատակարանաւ. « Ներսէս նուաստ եպիսկոպոս Տարսոնի, սիրով վաստակաւոր 'ի սուրբ մատեանս, զոր ծերացեալ գտի ըստ հելլենացւոյդ, և նորոգեցի ըստ հայւոյդ. շնորհի աղաւթից 'ի վայելողացդ լինիմ արժանի »:

Ուրիշ՝ թէ արքունական տոհմիւը, և թէ նուիրական բարձր աստիճանաւ հռչակաւոր և մեծանուն անձի մը՝ Յովհաննու Արքայեղբօր ձեռագիր գրչութեանց մէջէն հետեւեալ քանի մը տողեր:

Աւետարանի մը յիշատակարան. « Շնորհիւ տեառն և ողորմութեամբ կատարեցաւ սուրբ աւետարանս 'ի յընտիր աւրինակէ, 'ի վայելումն աստուածասէր իշխանին պարոն Սմբատայ որդւոյ հանգուցեալ և բարեպաշտ իշխա-

նին պարոն Կոստայ, և հանգուցեալ մաւրն իւրոյ տիկին Շահանդուխտին, և հանգուցեալ եղբարցն պարոն Բակուրան և պարոն Կոստանդ։ Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ սուրբ և ընտրեալ աստուածահաճոյ արքեպիսկոպոսին սուրբ Ռուխտին Գոներոյն տէր Յոհաննէսի, որդի աստուածասէր և բարեպաշտ իշխանաց իշխանին հանգուցեալ 'ի Քրիստոս պարոն Կոստանդեայ Թագաւորահաւրն։

« Գրեցաւ սա 'ի հայրապետութեան տեառն Յակոբայ, և 'ի Թագաւորութիւնն Հայոց աստուածասէր և բարեպաշտ իշխանին Լեւոնի։ Գրեցաւ 'ի մեծ թուակ. Հայոց ՉԻԷ »։

Յաւարտ Աւետարանին Մատթէի. « Երջանկացդ պարոն հայցեմ, յիշել զեղկելի ոգիս 'ի բարին Քրիստոս. զՅոհ՛՛ եպիսկոպոս, և զծնողսն իմ, և Աստուած զձեզ յիշեսցէ »։

Ի վերջ աւետարանին Մատթէի. « Բազմամեղ և դատապարտ ոգւոյ գրողիս Յոհ՛՛ եպիսկոպոսի թողութիւն խնդրեցէք 'ի Քրիստոսէ տեառնէ Նորա »։

Ի վերջ աւետարանին Մարկոսի. « Զեղկելի ոգիս զՅոհ՛՛ եպ՛՛ զարքաեղբայր Հայոց, զգրող սորա և զստացող՝ որք ժառանգէք դսա կամ գաղափարէք, յիշեցէք զծնողսն մեր, և զընաւ զարմսն միաւք հանդերձ. զի յոյժ տանջիմ յուղղոյն գիւտ. և զձեզ տէր յիշեսցէ. ամէն »։

Այս իսկագիր յիշատակարանաց մէկ քանին՝ ճիշդ նըմանահանութեամբ կը տեսնեն ընթերցողք 'ի հանդիպոյ դրուած պատկերին մէջ։

* * *

Հայերէն գրչագրաց գլխաւոր և պատկառելի թուով աւանդապահք են ազգային երկու պատմական վանաց Մատենադարանք Էջմիածին և Երուսաղէմ. անոնցմէ ետքը Մխիթարեանց ուխտի Մատենադարաններն 'ի Ս.

Ղազար և 'ի Վիէննա. Անտոնեանց՝ 'ի Միջագիւղ Կոստանդնուպոլսոյ. Փարիզու ազգային Մատենադարանն, այլ և այլ վանորայք 'ի Հայաստան. Բրիտանական Մուսէոնն 'ի Լոնտրա. Վատիկանեան գրատունն 'ի Հռոմ, կայսերականն 'ի Վիէննա, արքունականն 'ի Մոնաքոյ, և այլն։

---

# ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒ

---

Հայերէն լեզու։ — Իր ծագումը և սկզբնաւորութիւնը ըստ ազգային պատմութեան։ — Արդի բանասիրութեան կարծիքը նոյն խնդրոյն վրայ։ — Հայկական լեզու յառաջ քան զհինգերորդ դար։ — Թարգմանչաց դարը։ — Այլ և այլ կերպարանափոխութիւնք լեզուին։ — Հելլենաբանութիւն։ — Հայ լեզուն մինչ 'ի սկիզբն երեքտասաներորդ դարու։

Ինչպէս ամէն ազգ, սաանկ ալ ամէն արդէն կամ հիմա խօսուած լեզուք ունին, կամ պէտք է ունենան, իրենց սկզբնաւորութեան կամ ծագման պատմութիւնը։ Բայց ինչպէս ազգաց, սաանկ ալ լեզուաց պատմութիւնք՝ իրենց մթին, անորոշ ու երբեմն նաեւ անթափանցելի կէտերը կ'ունենան։

Նոյնը կրնանք ըսել՝ ինչպէս մեր տոհմային հին պատմութեան, սաանկ նաեւ անոր լեզուին նկատմամբ. մանաւանդ թէ հայերէն լեզուին պատմութիւնը, — անոր սկզբնաւորութիւնն, յառաջադիմութիւնն, այլեւայլ փո-

*փոխութեանց ենթակայ ըլլալն՝ իրօք կամ կարծեօք, — նոյն լեզուն խօսող ազգին պատմութենէն շատ աւելի մթին կը գտնենք։ Այս մթութիւն՝ պատճառ տայ այլեւայլ կարծեաց, որոնք իրարմէ քիչ կամ շատ հաւանականութիւն որով և ընդունելութիւն գտած են առաջի հմտից և բանասիրաց։*

*Մենք՝ քանի որ բանասիրութիւնն իր վերջին և վճռական խօսքն չէ կրցած ըսել այս խնդրոյն համար, երկու տեսակէտով խօսինք անոր վրայ՝ համառօտիւ, ինչպէս գրքուկիս չափը կը պահանջէ.*

*Ա. Հայ լեզուին ծագումն և սկզբնաւորութիւն՝ ըստ ազգային պատմութեան և աւանդից։*

*Բ. Արդի եւրոպական՝ և մասամբ նաեւ ազգային բանասիրութեան կարծիք նոյն խնդրոյն վրայ։*



*Նախ ըստ ազգային պատմութեանց։ — Հնոց մէջ՝ բաց ՚ի Խորենացւոյն ուրիշ մը չենք գտներ մեր ազգին ծագման և սկզբնաւորութեան խնդրով զբաղող. մանաւանդ թէ այն նշանաւոր պատմագրէն ետքն եկողք՝ գրեթէ ամէնքն իրենց պարտք մը սեպած են իրեն հետեւիլ, նոյն կարծիք ունենալ և աւանդել։*

*Այս հետեւողութեամբ վարուած էր նաեւ ազգային նոր բանասիրութիւնն ու պատմագրութիւնն ինչուան դարուս կէսը։ Իսկ օտարք՝ որ ինչուան դարուս սկիզբը կամ բոլորովին զուրկ, և կամ ամենաքիչ տեղեկութիւն ունէին ազգերնուս, որով և լեզուին ծագմանը վրայ, բանադատուեր են իրենց ծանօթ, բայց յաճախ անստոյգ և կեղակարծ աղբերաց մէջ մերթ ընդ մերթ փնտռել զայն. և հմտագոյնք՝ նախապատիւ սեպած են, առանց յամենայնի իրեն համամիտ ալ երեւնալու, Խորենացւոյն հետեւողութիւնը, որուն գրուածքը երկու դարէ ՚ի վեր լատինական թարգմանութեամբ ծանօթացած և մեծարուած էր յարեւմտեայց։*



*Լեզու մը չիկրնար ձեւանալ՝ ինչուան որ իրմէ առաջ ձեւացած չըլլայ նոյն լեզուն գործածող ժողովուրդը. ուստի և Հայ լեզուին սկզբնաւորելուն պատմութիւնը՝ զանիկայ խօսող ժողովրդեան մէջ փնտռելու ենք։ Քաղաքական պատմութիւննիս ըստ մարիբասեան պատմական սեպուած աւանդութեանց, մեզի անանկ հնութիւն մը կու տայ՝ զոր քիչ ազգ, մանաւանդ թէ աւելի որոշ խօսելով՝ թերեւս ուրիշ մը ունեցած չէ, բաց յԵբրայեցւոց։ Հնութիւն մը՝ որուն սկիզբը առասպելներով մթացած չէ. քաղաքականութիւն մը՝ որուն սկզբնաւորելը ծառոց և անտառաց մէջ չփնտռուիր, ու կրօնք մը՝ զոր սուտ աստուածոց մոլորութիւնը չպղտորեր։ Մեզի համար ըստոյգ ու անտարակուսելի կերպով կ'աւանդուի մեր սկզբնաւորութիւնն՝ այն համաշխարհական աւերմանէն ետքը, զոր սուրբ գիրք կը ներկայացնեն ջրհեղեղի պատուհասիւ և անոր հետեւանք դէպքերով, և ուսկից ետքը Աստուած կրկին լինելութիւն կու տայ բոլոր աշխարհի։*

*Աստուածաշունչ գիրք կը պատմեն թէ տապանը Հայաստանի մէջ Արարատ լերան վրայ նստաւ։ Հոն Նոյ՝ աշխարհի երկրորդ ստեղծման նախահայրը՝ բնակեցաւ. հոն որդիք ունեցաւ ու որդւոցը որդիք. հոն սկսաւ բազմանալ ժողովուրդը, և անկէց սփռուեցան մարդիկ իրարմէ բաժնուիլ, որոշ ազգութիւններ ձեւացընելով։*

*Ջուզելով ալ հետեւող կամ պաշտպան երեւնալ այն կարծեաց որ ինչուան ջրհեղեղ ազգաց ու լեզուաց միութիւն կ'ենթադրէ, կամ ընդդէմ մեր համոզման ալ՝ յարգելով անոնց կարծիքը որ կը հակառակին, կը խըծբծեն և կամ ըստ քիմս՝ սուրբ գրոց յայտնի պատմութիւնն ու խօսքը կը կամակորեն, պէտք է ընդունինք թէ Նոյ լեզու մը ունէր զոր կը խօսէր, 'ի նախնեաց իւրոց աւանդուած։ Այս լեզուն բնականաբար ու յաջորդաբար*

պիտի անցնէր և տեւական մնար իր սերնդեան մէջ։ Ինք կրնար ուրիշ տեղւոյ մը ծնունդ ըլլալ և ոչ այն երկրին՝ որուն այսօր Հայաստան անունը կու տանք. բայց սուրբ գրոց անհակառակելի պատմութեամբ՝ Աստուծոյ կամքը իրեն երկրորդ հայրենիք կու տար զԱրարատ. հոն կը կը հանգչէր զինք համայնաջինջ ջրոց ողողմանէ փրկող տապանն, հոն կը մատուցանէր իր շնորհակալութեան զոհը, ու իրեն կրկնակի սիրելի այդ հողոյն վրայ տարածուած երկնակամարին վրայ՝ կը նկատէր աստուածային հաշտութեան նշանակ լուսափիւռ բազմագունեան աղեղը։

Ոչ հարկ և ոչ ալ հնարաւորութիւն կրնար ըլլալ որ Նոյ թողու հեռանայ այն տեղերէն. մանաւանդ որ հոն եղած արգաւանդ դաշտերն, օդոյ մաքրութիւնը, ականակիտ ջուրք՝ յորդորամիտ պիտի ընէին զինք իր բնակութիւնն հաստատելու։ Եւ սանկ ալ ըրած է ըստ ազգային նախնի և ինչուան մօտ ատեններս մեծարուած աւանդութեանց։

Նոյի և իր սերնդոց՝ ինչուան աշտարակաշինութեան դէպքը, մէկ լեզու ունենալնուն կը վկայէ Մովսէս՝ Ծնընդոց գրքին մէջ, որոշ և բացայայտ խօսքով. և կը յաւելու թէ լեզուաց միութիւնը՝ չարեաց պատճառ մը ըլլալուն, Աստուած Սենաարայ դաշտին մէջ ամենուն լեզուն խառնակեց. ու այն նորակերպ պատժով՝ ամէն ազգաց սկզբնաւորութիւնն ըրաւ։

Հոս պէտք է զանազանենք նախ, թէ ի՞նչ պատճառաւ մարդիկ սկսան Հայաստանէն ցրուիլ։ — Այս ցրման պատճառը՝ եթէ մեր հին պատմութեանց մէջ փնտռենք, կը գտնենք որ ոչ ընտանի պատերազմաց և ոչ ուրիշ մասնաւոր առթով մը եղած է, այլ ժողովրդեան բազմանալուն ու տեղւոյն անձկութեանը համար։ Ըսել է թէ Հայաստանի մէջ մնացին այնչափ ժողովուրդք՝ որ իրենց բաւական սեպեցին երկրին ընդարձակութիւնը։ Ուստի և հետեւաբար ասոնց լեզուն անփոփոխ մնաց Սենաարայ

դաշտին խառնակութեանը մէջ. այն պատիժը՝ յանցանաց պատիժ էր, ու յանցանքին մէջ մաս չունեցողները 'ի հարկէ պատժէն ալ ազատ կ'ըլլային։

Մեր Հայկ նահապետը՝ Սենաար գացողներուն հետ էր, ու անոնց կրած պատուհասին կցորդ. բայց երբ աշտարակը կործանեցաւ, Հայկ մէկէնիմէկ դարձաւ 'ի Հայաստան. և անտարակոյս հոն փոխանակ ինքը ուրիշներուն իր լեզուն սորվեցընելու, ինքը անոնց լեզուն կրկին սորվեցաւ։

Այս դէպքէն ետքը պատմութիւննիս այլ և այլ պարագաներ մեր առջեւը կը դնէ, որոնք լեզուներնուս հընութեանը մեծամեծ ու անտարակուսելի հաւաստիք կըրնան սեպուիլ։ Լեռնադաշտակի մը վրայ տեղ մը կը շինէ Հայկ իր բնակութեանը համար, ու անունը Հարք կը կոչուի. գիւղ մը կը շինէ՝ ու Հայկաշէն կը մնայ այն տեղւոյն անունը. Բելայ հետ կը պատերազմի 'ի Ձորն Հայոց, ու իր առաջին յաղթութեան յիշատակը մշտնջենաւորելու համար՝ քաղաք մը կը շինէ ու Հայք կը կոչէ. Բելայ ինկած տեղւոյն ալ՝ Գերեզմանք անունը կուտայ։

Նոյն հին և հաւատարիմ պատմութիւննիս՝ որ Խորենացւոյն կամ Մարիբասայ ձեռքով մեզի հասած է, Հայկայ յաջորդաց նկատմամբ ալ ասանկ նման օրինակներ մեզի կ'ընծայէ. Արագած (լեռը) Հայկայ Արմենակ որդւոյն անունէն ելած. Արմաւիր՝ Հայկազանց հին ու նուիրական քաղաքը՝ Արամայիսէն. Մասիք լերան անունը՝ Ամասիա նահապետէն, Սիւնեաց կամ Սիսական նահանգին անունը՝ Սիսակէն, Շիրակ գաւառին անունը Շարայէն. Գառնի՝ Գառնիկ նահապետէն, Գեղամէն՝ Գեղ լեռը ու Գեղարքունի գաւառն ու ծովը, նմանապէս Փառախոտ ու Ցոլակերտ աւաններուն անուանքը՝ Փառոխ ու Ցոլակ նահապետաց անուններէն. Այրարատ անունն ալ Արա գեղեցիկ նահապետին անունէն առնուեցաւ, ուզելով նշանակել անշուշտ թէ այն գեղեցիկ ու ծաղկա-

ւէտ դաշտերը՝ Արայի անպարտ արեամբը արատաւորե-ցան։

Ասոնց կարգէն են նաեւ մեր ուրիշ նահապետաց անուանքը, որոնց անուանը հետ է նաեւ իրենց նշանակութիւնը. ինչպէս Հաւանակ, Վաշտակ, Առնակ, Նորայր, Զարմայր, Գերճ, Բազուկ, Սկայորդի, Հրաչեայ, Գաճոյճ, Տիգրան, Վահան, Վահէ, և այլն։ Եւ ասոնց անուանը նշանակութիւնը իրենց վրայ ըլլալուն վկայ է Գր. Մագիստրոս. «Ո՞ւր Գեղամայն գեղեցկութիւն... ո՞ւր փառանակ փառացի, ո՞ւր Հաւանակ դիւրահաւան... ո՞ւր Նորայր՝ վասն զի նոր արիութիւն ցուցանէր... ո՞ւր Հրանտ հրատեսակ. ո՞ւր Ցուսակ՝ յուսացեալ զօրութեամբ»։

Այս ամէն օրինակները՝ եթէ չուզենանք մեր հին պատմութեան հետ գեղեցիկ ու փառաւոր անցեալ մը ուրանալ, առանց կարող ըլլալու՝ վերցուածին կամ մերժուածին տեղ՝ մտքերը համոզող բան մը դնել, բաւական պիտի սեպուին 'ի ցուցանել թէ Հայկազանց օրերը, մեր՝ նախնեացը ժամանակ, հայերէն լեզուին գործածութիւնը կար։ Այս խօսքին երաշխաւորութիւնը՝ անոնց խօսած լեզուին՝ մեզի իմանալի լեզու ըլլալն է. կամ թէ ըսենք՝ նոյն նշանակութեամբ հասկընալնին այն բառերը՝ ինչպէս որ մենք հիմայ կը հասկընանք։

Ուստի և այս կարծեաց հետեւողաց և ընդունելի ենթադրուած դրութեանց առջեւ՝ ինքնիրեն կ'իյնան նոր բանասիրութեան յայտնած այլ և այլ կարծիք՝ որ կ'ուզեն մեր լեզուն ուրիշ երկրորդական լեզուներէ առաջ եկած սեպել, ու անոնց լեզուին մէջ փնտռել մեր լեզուին ծագումը։

Ասով չենք ուզեր մերժել՝ թէ կրնայ կամ ունի մեր լեզուն այլ և այլ նմանութիւն ուրիշ լեզուաց հետ. բայց նմանութիւնք՝ շատ անգամ ուրիշ երկրորդական ու անհրաժեշտ պարագաներէն առաջ եկած կը համարին։ Ինչպէս մերձաւոր ազգի մը տիրապետութիւն՝ կրնայ նոյն ազգին հետքը ձգել ընկճած ժողովրդեան լեզուին մէջ.

ուսումնական գրաւում մը՝ անկարելի է որ առանց իր նշմարանքը թողլու՝ բոլորովին ելլէ այն երկրէն. վաճառականութիւնը՝ որ շատ անգամ այլ և այլ յարաբերութեամբք երկու կամ զանազան ազգեր իրարու հետ կը միացնէ, կրնայ իր ազդեցութիւնը ունենալ նաեւ լեզուին վրայ: Ինչպէս պարսիկն, յոյնն, արաբացին և անոնցմէ ետքն մեր ազգին հետ վերաբերութեան մէջ գըտնուող ազգեր՝ ունեցեր են իրենց ազդեցութիւնը մեր լեզուին վրայ, նաեւ ընտրելագոյն մատենագրաց երկասիրութեանց մէջ, անտարակոյս նախընթաց ազգք և ժողովուրդք ալ՝ իրենց այլ և այլ յարաբերութեամբք զոր յաջողեր են ունենալ, թողեր են 'ի մեզ իրենց հին քաղաքականութեան և սովորութեանց հետ՝ նաեւ լեզուի հետք, և որ փոփոխակի կերպով ալ կրնան ենթադրուիլ: Թէ՛ ազգային և թէ օտար բանասէրք՝ ամենահին սեպուած լեզուաց վրայ իրենց ըրած համեմատական և բաղդատական քննութեանց մէջ չեն տարակուսիր այս բանիս վրայ. և առանց կարող ըլլալու ճշդել և ստուգել թէ հայերէն լեզուին բուն ծագումն և սկզբնաւորութիւնն ուստի՛ է, Փոսսաքոֆ գտեր և հրատարակեր է բազմաթիւ բառեր բեւեռական արձանագրութեանց մէջ, զարմանալիք իրենց նմանութեամբ հայկական լեզուի հետ և զորս հրատարակած է 'ի Փեթրպուրկ իր մէկ ընտիր գրուածոց վերջը: Պատկանեան՝ հայկական և հին լեզուաց վրայ ըրած հմտական երկասիրութեամբքն պատկառելի հեղինակութիւն, ինք ալ մասնաւոր գրուածքով մը՝ որ նոյնպէս հրատարակուած է 'ի մայրաքաղաքին Ռուսաց, ցուցեր է թէ ո՛րչափ շատ են հայկական լեզուի մէջ բառեր՝ որոց ձայնն ու նշանակութիւն նման է սանսքրիթ, զենտ, պարսիկ, յոյն ու երբեմն նաեւ լատին բառերու հետ: Այս նմանութիւնքը՝ ունեցած են իրենց պատճառները նաեւ մեր լեզուին նկատմամբ, ինչպէս քիչ ետքը պիտի տեսնենք:



Անցնինք եւրոպական բանասիրութեան այս խնդրոյս համար յայտնած կարծեացը։

Թէպէտ և ազգային պատմութիւն և հնութիւնք՝ ցարդ չեն ունեցած եւրոպացի գիտնոց խուզարկութեանց մէջ գլխաւոր ու նախնական կարեւորութիւն և դիրք մը, սակայն ասիական մեզի դրացի, ու մեզմէ շատ աւելի հնագոյն յիշատակներ թողուցող ազգաց ու ժողովրդոց, ու անոնց բնակութիւնն ծածկող աւերակաց ու շինուածոց մնացորդներուն վրայ իրենց քննութիւններն ըրած ատեն, հանդիպեր են նաեւ արդէն հին Յունաց և Հռովմայեցւոց շատ իսկ ծանօթ մեր ազգին անուանն ու երկրին. և այդ անունն ու երկիր՝ արթնցուցեր է հետաքրքրութիւն մը՝ անոնց հին աշխարհի պատմութեան մէջ բռնած տեղւոյն և դասակարգութեան։

Իրենց համար՝ ազգային աւանդից մեզի և մեր լեզուին համար տուած ծագումը՝ 'ի պատմական հաւաստեաց զուրկ, մանաւանդ թէ երբեմն անոնց ընդդիմամարտ ենթադրութիւնք են, և պարզապէս իղձք՝ որ իմաստասիրաբար արժէք մը չունին։ Սակայն ասով հանդերձ՝ նկատելով Հայաստանի աշխարհագրական դիրքն, չեն տարակուսիր ամենահին ժամանակներէ 'ի վեր՝ մարդկային ազգի բնակութեան օրրան համարել այդ երկիրը։ Իրենց մեր ազգին և լեզուին սկզբնաւորութեան և ծագման նկատմամբ ունեցած այլ և այլ կարծիք՝ այսպէս համառօտուած կը գտնենք ազգային բանասիրի մը նորագոյն երկասիրութեան մը մէջ. « Որովհետեւ, կ'ըսէ, հայերէնն՝ հնդեւրոպական կամ արիական կոչուած լեզուաց կարգէն է, որպէս վկայեն մեր լեզուն քննող գիտունք, կարեմք հետեւցընել նաեւ թէ Հայք են մարդկային ազգին հնդեւրոպական կամ արիական կոչուած ցեղէն, յորմէ են և բազումք 'ի հին և 'ի նոր երեւելի·

ազգաց զոր օրինակ Հնդիկք, Արիք, Յոյնք, Լատինք, գերմանական և սլաւեան ցեղեր. այսինքն այժմու գրեթէ եւրոպական ազգաց բոլորը։

« Ոմանք յարդի հնաբանից՝ զՀայս համարին ծագմամբ փիւնիկեցի։ « Ուրարդայ (Արարատայ) լեզուն՝ ասէ Ռոլինսըն, չունէր ամենեւին խնամութիւն ընդ այժմու հայերէնին։ Այս լեզուն խօսող ցեղն՝ թուի գաղթեալ ՚ի Փռիւգիոյ, և առ սակաւ սակաւ գրաւեալ զլերինս արեւելեան մասին Արմենիոյ, վանելով կամ ընդ իւր միացընելով զհին Ուրարդիս, և փոխանակ նոցա դնելով զանուն, զլեզու, զկրօնս և զաւանդութիւնս իւր »։

« Լընորման, ուրիշ հնաբան մը, երկու տարբեր գաղթականութիւններ կը դնէ յԱրմենիա՝ այլ և այլ ժամանակ։ Զառաջին գաղթականութիւնն նոյնացնելով ընդ Հայկայ խորենացւոյն, կը համարի Տիգրիսի և Եփրատայ հովիտը (Բաբելոն) բնակող հին քուշաններէն ցեղ մը, ՚ի Հերոդոտոսէ Ալարոտ կոչուած, զոր Սարեստանցւոց Ուրարդին և Եբրայեցւոց Արարատը կը համարի։ Այս քուշեան ցեղէն մնացած կարծէ Լընորման Արմենական կոչուած սեպագիր արձանագրութիւններն որ ՚ի Վան։ Զերկրորդ գաղթականութիւնն կոչէ Լընորման՝ Արմենեան, յանուանէ Արմենակայ, զոր համարի ոչ իբրեւ պատմական անձն, այլ իբր անուն ազգին՝ անձնաւորեալ։ Քան զառաջին գաղթականութիւնն, ասէ, նշանաւոր է երկրորդս այս արմենական գաղթականութիւն, զոր ազգային աւանդութիւնն անձնաւորեալ է յԱրմենակ՝ իբրու ազգական Հայկայ։

« Լուի Տըրոպէր կ՚ենթադրէ քան զառաջին գաղթականութիւնն Լընորմանի աւելի հին քուշեան գաղթականութիւններ յԱրմենիա. իսկ զհայկեան գաղթականութիւնն համարի սեմական, որ հալածելով զքուշեանս անդըր քան զկուր գետ դէպ ՚ի հիւսիս, ինքն կալաւ զհարաւային մասն, զհովիտն Երասխայ յարեւմտից Մասեաց մինչեւ ՚ի լերինս Կորդուաց։ Այս սեմական գաղթակա-

նութենէ Մնացած կը համարի Տըրրոպէր արմենական կոչուած սեպագիր արձանագրութիւնս Վանայ։ Յետ Հայկեան կամ սեմական գաղթականութեան, իբր 'ի միջոցի վեցերորդ դարու նախ քան զՔրիստոս, կը դնէ վերջին հնդեւրոպական արմենական գաղթականութիւն մի 'ի Փռիւգիոյ. և այս վերջի գաղթականութենէն եկած կը համարի զՀայս և զհայերէն լեզու։

« Այս ենթադրութիւնք՝ կը ցուցընեն խորին պատմական հնութիւն, և չեն ամենեւին առանց պատմական հիման։ Տարակոյս չիկայ թէ հին նախապատմական ժամանակ, յառաջագոյն իսկ քան զվերջին հարստութիւնն Ասորեստանի կամ Նինուէի, միջին և արեւմտեան Ասիոյ ինչպէս ուրիշ կողմերուն, նոյնպէս Հայոց, մանաւանդ հարաւային (Վանայ) կողման, բնակիչք էին մարդկային ազգին այն հին քաղաքականացեալ ցեղէն զոր գիտունք Քամեան և Քուշեան կ'անուանեն։ Թուի սոյնք, ասէ Լընորման, թէ 'ի սկզբան Քամեանք ունէին զմեծագոյն մասն արեւմտեան Ասիոյ յառաջ քան զՍեմականս որ վանեցին զնոսա անտի։ Հին քաղաքակիրթ ազգաց մէջ, ասէ Րընան, Քուշեանք և Քամեանք այնպիսի որոշ յատկութիւն մը կը ցուցընեն, և այնչափ դարերով յառաջ են քան զՍեմականս և զԱրիականս, որ կը ստիպուինք ընդունել թէ սոքա եղեն առաջին քաղաքակիրթ ցեղ յարեւմտեան Ասիա և յարեւելս հիւսիսոյ Ափրիկէի՝ յառաջ քան զերեւել Սեմականաց և Արիականաց։...

« Քուշեանց 'ի Հայաստան բնակութեան ապացոյց Վանայ մօտ Շամիրամայ գործ համարուած քարափոր չէնքն է. ինչպէս նաեւ արմենական կոչուած սեպագիր արձանագրութիւնք այն կողմանց։ Հաւանական է թէ նաեւ Սեմականք բնակած են 'ի Հայս յետ Քուշեանց, նախապատմական ժամանակ. բայց նաեւ հնդեւրոպական ցեղք հին, նախապատմական ժամանակ եկած էին Հայաստան, յառաջ իսկ քան զվերջին հարստութիւնն Ասորեստանի։

« Ալ թէ այս հնդեւրոպական ցեղք փռիւգացի գաղ-

թականութիւնք էին որ եկան 'ի Հայս 'ի վեցերորդ դարուն նախ քան զՔրիստոս. և թէ Արմէնք, այսինքն Հայք, այս փռիւգացի գաղթականութեան սերունդ են, այս կարծիքն, ըստ մեզ, պատմական հիմ չունի: Ոչ առ Հերոդոտոսի և Քսենոփոնի որ ժամանակաւ շատ հեռի չէին այս գաղթականութեան ենթադրեալ ժամանակէն, և ոչ այլուր, կը գտնենք այսպիսի գաղթականութեան յիշատակութիւն: Հրէից մատեանք (Աստուածաշունչ սուրբ գիրք), Բաբելոնի առման ժամանակ, առ Կիաքսարաւ որդւով Աժդահակայ և առ Կիւրոսիւ, այն է 538ին նախ քան զՔրիստոս, յիշեն Արարատեան թագաւորութիւն մը, ընդ որում՝ ըստ Քսենոփոնի, վաղուց դաշնակից էին Մարք: Վարդան, Տիգրան, Շաւարշ, յատուկ անուանք, որ արիական բառեր են և ոչ Քուշեան կամ Քամեան կամ Սեմական, վեցերորդ դարուն և աւելի առաջ իբրև անուանք արքայից և արքայորդւոց Արարատայ թագաւորութեան, կը յիշուին հին յոյն պատմիչներէ (Դիոդոր Սիկիլիացի, Քսենոփոն):

« Արդարև Հայերէն լեզուն հնդեւրոպական լեզուաց արեւմտեան ճիւղին կը վերաբերի մանաւանդ քան արեւելեան արիականին, թէպէտ 'ի վերջնոյ աստի առած է յետոյ դրացութեամբ զմեծ մասն հարստութեան իւրոյ: Մեր հնագոյն բառերը և քերականական ձեւք շատ մօտ ազգականութիւն կը ցուցնեն յունարէնի, լատիներէնի և գերմանական ճիւղին հետ. բայց այս բաւական չէ հաստատելու Րոլինսոնի և Տըրոպէրի ենթադրութիւնը. և այս երեւելի հնաբանք ոչ այնչափ լեզուաբանական պատճառներէ որչափ հին յոյն պատմչաց ոմանց խօսքէն առաջնորդուած կը թուին փռիւգացի ծագումն տալ Հայոց: Հերոդոտոս զՓռիւգացիս և զԱրմէնս համարի եղբարս, այսինքն համացեղս. և Դիոնեսիոս աղիկառնացի կոչէ զԱրմէնս համալեզուս ընդ Փռիւգացւոց. և 'ի յիշելն զպատերազմն Քսերքսի ընդդէմ Յունաց, ըստ օրինակին փռիւգացւոց վառեալս և զգեցեալս պատմէ զԱր-

մէնս 'ի բանակին Արեաց։ Նաեւ Եւդոքսոս՝ ուրիշ յոյն հեղինակ, հաւանականապէս առ Գողոմեամբք, նմանաձայն յոյժ առէ լինել զՀայերէնն փռիւգերէնի։ Գիտել պարտ է սակայն զի հին պատմիչք փռիւգացի անուամբ իմանային փոքուն Ասիոյ հնդեւրոպական կամ արիական ցեղերը. և շատ հաւանական է թէ Արմենիոյ արեւմտեան մասին ժողովուրդք իբրեւ սահմանակիցք փոքուն Ասիոյ, համացեղ և համալեզու էին այն երկրին հնդեւրոպական ցեղին։ Յոյն պատմիչք, հնագոյնքն անգամ 'ի նոցանէ, ինչպէս Հերոդոտոս և Քսենոփոն, որ յետոյ են քան ըզԴարեհ Վշտասպեայ, առ որով ոչ միայն Արմենիոյ արեւելեան մասն, Մեծ Հայք, այլ և արեւմտեանն, այն է Փոքր Հայք, սահմանակից փոքուն Ասիոյ, կոչեցան Արմէնք կամ Արմենիա, ընդհանուր անուամբ կը կոչեն Արմէն՝ Մեծին և փոքուն Արմենիոյ բոլոր ժողովուրդները։ Ուստի Յոյն պատմչաց խօսքը թէ Արմէնք համացեղ և համալեզու էին փռիւգացւոց, պէտք չէ բոլոր Արմենիոյ ժողովրդոց վրայ առնուլ և հետեւցընել թէ Հայք փռիւգացի գաղթականներ էին, և թէ Հայերէն լեզուն որ Մեծ Հայոց և բուն Արարատեան ցեղին լեզուն էր՝ փռիւգական է »[1]։

***

Ի՞նչ է եւրոպական բանասիրութեան կարծիքը մեր լեզուին ծագման վրայ։

Եթէ ընդհանրապէս ուրիշ հին լեզուաց համար ծանր ու դժուարին աշխատանք է գիտութեան՝ անոնց սկզբնաւորելուն և յառաջադիմութեան խնդիրը, ծանրագոյն եւս հայկական լեզուիս նկատմամբ։

Հին և մեզի դրացի կամ մերձաւոր ազգաց և ժողո-

1 ԳԱՐԱԳԱՇ (Ա. Մ.). Քննական պատմութիւն Հայոց, Հատ. Ա. 7–10.

վրրդոց լեզուին հնութիւնը և ծագումը փորձելու, քըննելու և ուսումնասիրելու համար՝ պատմական ստոյգ կամ կեղակարծ սեպուած աւանդներէ աւելի բան մը կայ․ վաղեմի և պատկառելի մատենագրութեանց հատուածք, և մերթ նաեւ նախանձելի ամբողջութիւնք․ և ուր ասոնք կը պակսին, հին դարերէ մինչեւ առ մեզ հասած, և ինչուան հիմա զգուշաւոր խնամօք պահպանուած քարադրոշմ արձանագրութիւնք, որոց վրայէն դարեր և ժամանակք անցեր են, և որք իրենց լռութեամբն, ու ինչուան երբեմն նաեւ անթարգմանելի կերպարանքովն, դեռ լոյս մը կրնան ծագել՝ ինչպէս պատմութեան, ասանկ նաեւ լեզուաց և անոնց կրած յեղափոխութեանց վրայ․ ուր ընդհակառակն մեր հայրենիք, երկար, անդուլ ու յարատեւ յարձակմանց և աւերմանց տխուր արգասիքն և արդիւնք՝ ինչուան իրենց անշունչ, կիսակործան ու հետախաղաղ ծածկուած քարանց վրայ նկատել տալու տխուր դժբաղդութեանն ենթարկած են զմեզ։

Այսպիսի անստուգութեան մը մէջ զարմանք չէ որ անստոյգ, բազմապատիկ և իրարմէ տարաձայն ըլլան նաեւ մեր լեզուին վրայ կարծիք, թուիք և ենթադրութիւնք նաեւ առաջի գիտութեան։

« Հնագոյնք յեւրոպէացի քննչաց, կ'ըսէ Րիդդէր, և յանուանէ Շրօէտէր և Ատէլունկ, առ տգիտութեան, չկրցան ծանօթ լեզուաց մէջ տեղ մը տալ հայերէնին․ ուստի Պալլի՝ կովկասեան ինքնագլուխ լեզու մը համարեցաւ հայերէնը։ Աւելի հնագոյնք, Ագոլութ և Դրոմլէր, ազգակից համարեցան հայերէնը խփտերէնի, մինչ ինքեանք՝ այս երկու լեզուաց եւս անգէտք էին։ Վաղ ուրեմն Ստեփանոս Բիւզանդացի՝ փռիւգերէնի նման կը համարէր այս լեզուն. հաւանականապէս, ասէ Բէդէրման, վասն զի Արարատ 'ի գիրս Սիբիլլայից սխալմամբ դրուած է 'ի Փռիւգիա։ Բայց որովհետեւ փռիւգերէնն այնպէս անծանօթ էր ինչպէս նմին համացեղ կարծուած հին Թըրակերէնն՝ ընդ որում այլք ազգակից համարեցան հայե-

րէնը, Հայ լեզուին փռիւգերէնի հետ նմանութիւնը այնչափ անստոյգ է, որչափ կարծիք Ստրաբոնի, որ զՀայս և զԱրիս խսկ ոչ միայն բարուք, սովորութեամբ, մարմնոյ կազմութեամբ, այլ և լեզուաւ կը համարի նմանս ընդ Սեմականաց, Արաբացւոց և Ասորւոց, այս պատճառաւ միայն՝ զի գտանէր զնոսա խառն բնակեալս 'ի Միջագետս: Գալլաս հայեցեալ յարդի հայերէնն միայն, դրբաւ Հայոց լեզուն 'ի կարգս Գուրանեան լեզուաց, իբր միջին իմն 'ի մէջ Թաթար և Թուրք բարբառոց և կովկասեան լեզուաց: Լաքրոզ համարելով զհայերէնն նոյն ընդ հին լեզուին Մարաց, աւելի մօտեցաւ ճշմարտին. մանաւանդ զի ըստ Նայմանի՝ մեծագոյն մասն բառից Մարաց որ գտանին առ Հերոդոտեայ կը մեկնուին հայերէնով: Զարմանք չէ այսչափ հակառակ կարծիս տեսնել զհայերէնէն որ հարեւանցի միայն ճանչցուած էր, մանաւանդ այնպիսի ժամանակ, մինչ Քլափրոդ անգամ ձայներու արտաքին նմանութենէն միայն կը դատէր լեզուաց ազգականութիւնը, զոր գիտել՝ լեզուին բովանդակ քերականական կազմութենէն միայն հնար 'է: Բէդէրման եղեւ առաջին որ եցոյց հաւաստեաւ զազգականութիւն հայերէնին ընդ հնդեւրոպական լեզուաց: Հմուտ լեզուաբանն Բոպպ կ'ընդունի զայս, և Նայման կը համարի իբրեւ արդէն ապացուցեալ »:

« Բայց ինչպէս ճանչցան գիտունք թէ հայերէնն տոհմակից է լեզուաց հնդեւրոպական ցեղին: Սեմական լեզու մը ճանչնալ, որպէս ասէ Րընան, դիւրին է քան հնդեւրոպական մը. բայց և այնպէս հնդեւրոպական լեզուք եւս ունին որոշ նշաններ որ չեն կրնար վրիպիլ գիտնական մտադիր դիտողութենէ. Հայերէնի ցեղակցութիւնն ուրիշ հնդեւրոպական լեզուաց, հնագունից և հեռաւորագունից հետ անգամ, որպիսի են սանսքրիտն, յոյնն և լատին, այնպէս յայտնի և ներքին է, զի նմանութիւնն որ կայ 'ի մէջ սոցա և հայերէնին՝ չկարէ լինել արդիւնք ոչ պատահման և ոչ փոխառութեան:

« Հայերէնի այս նմանութիւնը կը տեսնուի հնդեւրոպական լեզուաց երկու գլխաւոր տարրներէն. այսինքն բառերէն և քերականական ձեւերէն միանգամայն։... Թէպէտ այսպէս բնութեամբ հնդեւրոպական, և սակայն հայերէնն այնպէս ուրոյն է և անկախ, իբրեւ զսանսքրիդըն, զլոյն և զայլս 'ի համացեղից իւրոց, մինչեւ յիրաւի է կոչել զնա յատուկ անուամբ իբրեւ արմենական ճիւղ 'ի մէջ հնդեւրոպական ցեղին։ Զունենալով հնագոյն դարերէ գրաւոր մնացորդներ, ենք և պիտի մնանք 'ի հարկէ անգէտ, թէ ինչ փոփոխութիւններէ անցաւ և ինչ ազդեցութիւններ կրեց հայերէնն յընթացս, չէ յայտ, ո՛րչափ դարուց. մինչեւ հասաւ յայն աստիճան յորում կը գտնենք զնա յանգին մնացորդս առաջին Հայ մատենագրութեան անուանեալ ոսկեղէն դարուն, որ է առաջին կէս հինգերորդ դարուն, իսկ և իսկ յետ գիւտի հայերէն դպրութեան։ Նայելով սակայն գիտնական անաչառութեամբ մատենագրական յատկութեան վերոյիշեալ մնացորդաց լեզուին, անհնար է չսքանչանալ։ Հարստութիւն, մաքրութիւն և ընտրութիւն, բանաստեղծական զարդ, ճաշակ և փիլիսոփայութիւն որ կը տեսնուին այն չքնաղ մնացորդաց լեզուին մէջ՝ կ'ենթադրեն ազգային քաղաքական և մտաւոր բարձր վիճակ մը, որչափ կըրնայ մտածուիլ յայնպիսում հնութեան ժամանակի »[1]։

Ուրիշ ազգային բանասէր մ'ալ. « Մինչեւ ցայժմ եղած խուզարկութեանց եզրակացութիւնները հետեւեալ կերպով կրնանք ամփոփել. Հայկական լեզուն՝ իրանեան և սլաւո–լիթուանեան խմբերուն մէջտեղը բռնելով հընդա–եւրոպական լեզուներու անյայտացած (գուցէ փոքր–ասիական) խմբին անկախ ներկայացուցիչն է։

« Դեռ ժամանակը եկած չէ վճռական պատասխան մը տալու այն հարցման թէ հնդա–եւրոպական լեզուներու ո՛ր խմբին մէջ պէտք է դասել հայկական լեզուն։

1 Քննական պատմութիւն Հայոց, Հատ. Ա. 279–281։

Վինտիշմանի ժամանակներէն սկսեալ հայերէն լեզուի համեմատական ուսումը մեծ յառաջադիմութիւններ ըրաւ համեմատութեան միջոցներու ճշդութեան, քննուած բառերու քանակութեան եւ ուրիշ մանրամասնութեանց կողմանէ։ Իսկ ինչ որ կը վերաբերի զմեզ ամենքնիս զբաղեցընող խնդրոյն լուծմանը, պէտք է ըսել որ հազիւ վերջին երեսունուիրեք տարիներու մէջ շատ առաջ գնաց։ Գիտնականաց վերջին ժամանակներս հանած եզրակացութիւններէն կ'երեւնայ թէ ոմանք հայերէն լեզուն հաստատապէս իրանեան խմբին կը վերաբերեն, ուրիշները՝ եւրոպական խմբին. այսինքն՝ իսկապէս ըսելով ոչ մէկին եւ ոչ միւսին. որովհետեւ ոչ բառերու կազմութեամբ, ոչ ձայնական առանձնութիւններով եւ ոչ ալ քերականական ձեւերով՝ անոնցմէ մէկուն հետ կատարեալ նմանութիւն չունի. այլ մէկ դէպքի մէջ՝ եւրոպական խմբի, իսկ յայլ. իրանեան խմբի յատկանիշն ունի։

» Տըլակարտ՝ հայ լեզուի կազմութեան մէջ քանի մը ժամանակ որոշած է։ Հայերէն լեզուն՝ իրեք խառն մասերէ բաղկացած է, կ'ըսէ. եւ են հայկականն, արշակունին (փէհլէվի), եւ սասանական։ Հայ լեզուի արշակունի եւ սասանական տարրերը՝ յայտնի ցոյց կուտան հարկաւ իրենց իրանեան բնաւորութիւնը. բայց եւ բուն հայկական լեզուն այն գերդաստանին կը պատկանի՝ որուն ամենահին ներկայացուցիչը Զենտի լեզուն է։

» Հիւպշման՝ իր հետազօտութիւններէն հետեւեալ եզրակացութիւնն կը հանէ. հայկական լեզուն՝ սլաւո—լիթուանեան լեզուներու շրջանին մէջ՝ իրանեան եւ սլաւո—լիթուանեան լեզուներուն մէջ կանգնած է։

» Բայց հայկական լեզուին որ խմբին մէջ դասելու խնդրոյն վերջնական վճիռ մը տալ կարող ըլլալու համար՝ հարկ է լաւ կերպով ուսումնասիրել այս լեզուի բոլոր բարբառները. այլապէս հետազօտութեան վրայ 'ի գործ դրուած բոլոր աշխատանք՝ միակողմանի կ'ըլլան։... Առանց այսպիսի նախապատրաստական աշխատութեան՝

շատ երեւոյթներ, նոյն իսկ գրական (գրաբար) լեզուի բաղադրութեան և կազմութեան մէջ անբացատրելի կը մնան »[1]։

Թէպէտ արդի հայ գաւառական բարբառներու վրայ՝ վերջին տարիներս այլեւայլ գիտնական հետազօտութիւնք և հրատարակութիւնք եղած են թէ՛ յազգայնոց և թէ յօտարաց, և մեր նոր մատենագրութեան կարեւոր մէկ պակասը լեցուցած, սակայն շատ աւելի ցանկալի էր որ այսօր ունենայինք այն բազմադիմի բարբառներն, զոր Հայաստան երբեմն խօսեր էր, և զոր ինքն իսկ Երզնկացին իր դարուն մէջ ամենակարեւոր կը համարէր գրաբար լեզուի հմտութեան և ստուգաբանութեան համար։ Վասն զի ինչպէս յունական լեզուն ունէր իր զանազան բարբառները (dialecte), այսպէս իբր ամենայն ազգի բնական տուրք, ունէր նաեւ Հայաստան. ասոր նոյն բազմահմուտ մեկնիչ քերականին կը վկայէ. « Եւ դարձեալ զքո լեզուիդ գիտելն բաւանդակ զբառսն եզերական. որպէս զկորճայն և զՏայեցին, զխութայինն և զՉորրորդհայեցին, և զՍպերացին և զՍիւնին, և զԱրցախայինն, այլ մի՛ միայն զմիջերկրեայսն և զոստանիկսն. վասն զի պիտանիք այսոքիկ են 'ի տաղաչափութեանն, այլ և օգտակարք 'ի պատմութիւնսն, զի մի՛ վրիպեսցի՝ անընդել գոլով լեզուացն »։

Մեր այս համառօտ բովանդակութիւնն կը ցուցնէ՝ որ եթէ առաջնոց կարծիք պարզապէս ենթադրութեանց վրայ հիմնուած սեպուին, եւրոպական բանասիրութիւնն ալ դեռ հաստատուն կերպով մը խնդիրը լուծելու պատասխանը տուած չէ։

1 ՊԱՏԿԱՆԵԱՆ (Ք.) Փորձ, ազգային և գրականական միամսեայ հանդէս. Դ տարի, Թիւ 3, 77։



Հայկական լեզուն այլ և այլ վիճակներ ունեցած է։ Երբեմն պարզապէս խօսուած լեզու մը եղած, առանց գրաւոր մատենագրութեան, երբեմն ալ գրաւոր մատենագրութիւն ունեցող։

Առջի վիճակը յանստոյգ ժամանակաց մինչեւ 'ի Վաղարշակ եղած է. վասն զի անոր օրը երեւցաւ Մարիբաս, ու հայկական մատենագրութեան շրջանը իրմով սկսաւ։ Ըսել է թէ ամբողջ Հայկազանց, Նահապետական ու Թագաւորական իշխանութեան ժամանակ՝ բուն գրաւոր մատենագրութիւնը պակսած է մեր մէջը։ Սակայն կարելի՞ է այնպիսի երկարատեւ թագաւորութիւն մը անգիր քաղաքականութեամբ ենթադրել։ Արդեօք պարզ մտքի յիշողութեան աւանդուած օրէնքը՝ կրնա՞ր այնպիսի երկայն իշխանութեան մը տեւողութիւն տալ։ Ասիկայ ալ մութ խնդիր՝ ու իրաւամբ տարակոյս վերցընող հարցում մ'է։ Բայց Պատմութիւնը՝ կարծես թէ կերպով մը երաշխաւորութիւն կու տայ այս կարծեաց։ Վասն զի Վաղարշակայ համար կը պատմէ՝ թէ Հայաստան եկած ատեն ամէն բան տակնուվրայ գտաւ. և ոչ իսկ կրցաւ այն հին ու մեծ ազգին պատմութեան հետքը գտնել որուն վրայ իշխելու սահմանուած էր, ու ստիպուեցաւ ուրիշ մատենադարաններու յիշատակաց մէջ փընտռել։

Վաղարշակայ հետ դպրութիւնք ալ կը սկսին երեւնալ։ Անոր ջանից և հետազօտութեանց արգասիք է մեր ամենէն հին ու պատուական՝ ու իրաւամբ Թագաւորական կոչուած պատմիչը Մարիբաս։ Անոր պատմութեան հատուածներն են՝ զորոնք Խորենացին իր գրոցը մէջ կը յիշատակէ, և որոնց վրայ կրկին խօսելու առիթ պիտի ունենանք. ինչպէս նաեւ այն երգոց վրայ՝ զոր պատմութիւնը մեր Գողթան գաւառին երգողաց ու քնարին կ'ըն-

ծայէ, և որոնք հայկական Մուսային առաջին և գեղեցիկ արտադրութիւնքն են։

Ասոնցմէ ետքը կու գան Լուսաւորիչ և Ագաթանգեղոս, և իրենք կը բանան հայ գրաւոր մատենագրութեան ասպարէզը։

Ագաթանգեղոսի ինչ լեզուով գրած ըլլալը թէպէտ և անստոյգ սեպուած է, բայց մենք որովհետեւ պիտի ջանանք ցուցընել թէ հայերէն լեզուաւ յօրինեց իր Պատմութիւնը, անոր համար անոր լեզուն ալ կրնանք հայկական լեզուի պատմութեանը մէջ դասաւորել. մանաւանդ թէ անով սկսիլ մեր խօսքը, ինչպէս որ իրաւամբք ինքն եղած է հայ՝ կամ գէթ նոյն ազգին առաջին մեզի ծանօթ պատմագիր։

Ընտիր՝ բայց թերեւս ոչ միշտ զերծ 'ի մթութենէ լեզու մը կը գործածէ Ագաթանգեղոս. իր գրոցը մէջ հայերէն լեզուն՝ դեռ իր պատանեկութեան հասակին մէջ կ'երեւնայ. եռանդուն ու աշխոյժ պատանեակ մը որ իրեն գեղեցիկ ապագայ մը կը խոստանայ. մթութիւն մը կ'երեւնայ, որ միանգամայն կ'իմացընէ թէ ժամանակաւ իր պայծառութիւնը պիտի ունենայ։ Զրուցածնիս՝ բուն իսկ Ագաթանգեղեայ խօսքերովը հաւատարմացընենք։ Կարդանք անոր յառաջաբանին հետեւեալ կտորները։

«Ի մէջ ըմբռնելոցն խորոցն անդնդոցն լցեալ խռոչացեալ խոխոջելովն ահաւոր կրեալ զօրհասն գուշակէն. թէպէտեւ զինքեանս չարժունս տեսանիցեն 'ի վերայ յաղթ ջուրցն բազմութեան սասանելոցն սարսափելոցն, սակայն զկարողելն առաջի ածեալ ընդ միտ, ջանան դիմագրաւեալք ընդ խռովութիւն ահագին ծովուն, զի թերեւս դարձեալ օգտութեամբ զգիւտս իւրեանց խնդութեամբ ցուցանեն առ իւրաքանչիւր ընտանիս, և զպարծանս վաստակոցն իւրեանց դրացեացն. զի ուր հարկ է զաղքատութեան անուն յանձանց թափեալ, և զտառապեալ ընտանիսն թափել 'ի գրաւահարկ իշխանացն բռնութենէ,

և յիւրեանց շահիցն բերելոցն հաճել զպարտս վտանգին՝ 'ի լծոյ ծառայութեան թագաւորացն ազատացեալ դատարկացին »:

Նոյն ոճը կը տեսնուի նաև Մծբնացւոյն Զգօն գրոցը մէջ, Փաւստոսի Բիւզանդացւոյն պատմութեանը, և աւելի յայտնի և ստորին ոճով՝ Զենոբայ Ասորւոյն երկասիրութեանը։ Բանասէրք՝ այս երեքն ալ յասորի լեզուէ 'ի հայ թարգմանուած կը կարծեն. և նորագոյն հետազօտութիւնք և գիւտք՝ զառաջինն՝ այսինքն Մծբնացւոյն ընծայուածը ասորւոյ մը հեղինակութիւն, Փրաատայ կամ Աֆրաատայ։

Բայց ինչպէս կրթուած երիտասարդութիւնը՝ մէկէնի-մէկ իր մտաւոր բարգաւաճանքը կ'առնու, և իր ախորժակը կը կրթէ, սանկ ալ կը տեսնենք նաև մեր մատենագրութեանը մէջ։ Զորրորդ դարէն հինգերորդ դարը՝ հսկայաքայլ անցք մըն է, որ մեծապէս կը զարմացընէ. սակայն ժամանակին կրթութեանը արգասիքն էր այն անցքը, և այնչափ յառաջադիմութեամբ օժտեալ՝ որ ոմանք չտարակուսեցան ըսել թէ « Հինգերորդ դարուն առաջին կիսուն հայերէն մատենագրական լեզուն, զոր՝ բառին անձկագոյն նշանակութեամբ, Թարգմանիչք մեր ոչ եթէ հնարեցին՝ այլ ուսան. և որոյ օրինակն ունինք յեւս հնագոյն հատակոտորս ինչ երգոց վիպասանաց մերոց որ գէթ իբր երեք դար յառաջ էին քան զԹարգմանիչս մեր, է սակայն եթէ ոչ հրաշք, գէթ հրաշակերտ, և մի միայն նշան զոր թողած է հայ ազգն իւր վաղեմի մեծութեան։ Անհնար էր լեզուին հասանել յայն չափ կատարելութեան՝ առանց մատենագրական մեծ շարժման »: Հայկական գիտութիւնը խրմով միայն չբաւականանալով՝ իր սահմանը կ'ուզէր ընդարձակել. և այն վախճանաւ ուսումնական գաղթականութիւններ ղրկեց յԱթէնս, 'ի Բիւզանդիոն, 'ի Հռոմ և յԵդեսիա։ Այս գաղթականութիւնքը մանաւանդ 'ի Բիւզանդիոն և յԱթէնս ճանապարհորդու-

թիւնները՝ առանց իրենց ազդեցութեան չէին կրնար մնալ. յունական ուսումը ու կիրթ ախորժակը իր տպաւորութիւնը ըրեր էր հայկական մտքերու վրայ։ Նոյն տպաւորութիւնք ազգին ընդհանուր օգտակար ընելու համար՝ անոնց ընտիր օրինակագիրքը հայերէն թարգմանելու ետեւէ եղան։ Կրթուած հանճարն ու միտքը՝ կիրթ ու ծաղկեալ լեզու մը երեւցուց ազգին մէջ։

Այս ընտիր և գեղեցիկ լեզուն յայտնապէս կը տեսնենք նոյն ժամանակին թէ՛ ինքնագիր և թէ թարգմանեալ երկասիրութեանց վրայ։ Նոյն լեզուն աւելի գեղեցկութիւն մը տուած է մեր հոգեսէր հայրապետաց սրտէն բղխած ու գրչովը մեզի աւանդուած եկեղեցական ու մաղթողական գրոց մէջ, Աստուածաշունչին, Եւսեբեայ Քրոնիկոնին կամ ժամանակագրութեան ու Եկեղեցական պատմութեան մէջ, Կիւրղի Երուսաղեմացւոյ Ընծայութեան կոչման գրոցը, Յովհաննու Ոսկեբերանի, Բարսղի Հայրապետին զանազան գրուածոց թարգմանութեանցը, և այլն. և ինքնագիր երկասիրութեանց մէջ Ագաթանգեղոս, Եզնիկ Կողբացի, Կորիւն, Եղիշէ, և մանաւանդ անոնց վարդապետքը Սահակ և Մեսրովպ։

Թէ՛ 'ի թարգմանութեանց և թէ յինքնագիր գրուածոց քանի մը ընտիր օրինակներ՝ մեր խօսքին հաւատարմութիւն ըլլան։

Ի թարգմանութեանց. « Աբրահամ ծերացեալ էր և անցեալ զաւուրբք, և տէր օրհնեաց զԱբրահամ ամենայնիւ։ Եւ ասէ Աբրահամ ցծառայն իւր ցերէց տան իւրոյ՝ ցիշխան ամենայն ընչից նորա. Երդմնեցուցից զքեզ 'ի Տէր՝ յԱստուած երկնից և յԱստուած երկրի, զի մի առցես կին որդւոյ իմոյ Իսահակայ 'ի դստերաց Քանանացւոց յորոց միջի ես բնակեմ. այլ յերկիրն իմ՝ ուստի ելեալ եմ՝ երթիցես, և 'ի տունն իմ. և առցես դու անտի կին որդւոյ իմոյ Իսահակայ։ Ասէ ցնա ծառայն. Գուցէ կինն ոչ կամիցի գալ ընդ իս յերկիրս յայս, դարձուցանելո՞վ

դարձուցից զորդի քո յերկիրն ուստի ելեր։ Եւ ասէ Աբրահամ. Զգոյշ լեր, մի դարձուցանիցես զորդի իմ անդրէն։ Տէր Աստուած երկնից և Աստուած երկրի՝ որ առ զիս 'ի տանէ հօր իմոյ, և յերկրէն ուստի ծնեալ էի, որ խօսեցաւ ընդ իս, և երդուաւ ինձ և ասէ. Զաւակի քում տաց զերկիրդ զայդ, նա առաքեսցէ զհրեշտակ իւր առաջի քոյ, և առցես անտի կին որդւոյ իմում Իսահակայ։ Ապա թէ ոչ կամիցի-կինն գալ ընդ քեզ յերկիրս յայս, քաւեալ լինիջիր դու յերդմանէդ յայդմանէ. բայց միայն զորդեակդ իմ մի՛ դարձուցաներ անդր։... Եւ յարեաւ գնաց 'ի Միջագետս 'ի քաղաքն Նաքովրայ, և նստոյց զուղտսն արտաքոյ քաղաքին առ ջրհորոյ ջրոցն ընդ երեկս՝ յորժամ ջրուորն ելանէր, և ասէ. Տէր Աստուած տեառն իմոյ Աբրահամու, յաջողեա ինձ այսօր, և արա ողորմութիւն ընդ տեառն իմում Աբրահամու »։

« Բայց Իսրայէլ սիրէր զՅովսէփ առաւել քան զամենայն որդիսն իւր. քանզի որդի ծերութեան էր նորա։ Եւ արար նմա պատմուճան ծաղկեայ։ Իբրեւ տեսին եղբարքն նորա, թէ սիրէ զնա հայրն քան զամենայն որդիս իւր, ատեցին զնա. և ոչ կարէին խօսել ինչ ընդ նմա խաղաղութեամբ։ Եւ ետես երազ Յովսէփ, և պատմեաց եղբարց իւրոց. և յաւելին եւս ատել զնա վասն երազոյն նորա և վասն բանիցն »։ ԾՆՆԴՈՑ ԳԻՐՔ։

« Եթէ ուղղագործացն կարեւոր են նեղութիւնք, ո՞րչափ եւս առաւել մեղուցելոցն։ Տե՛ս՝ յորչափ երկայնմտութիւնս վայելեաց փարաւոն, և յետոյ զանհնարինն ընդ ամենեցունց եա վրէժս։ Ո՞րչափ ինչ յանցեաւ և Նաբուգոդոնոսոր, և մօտ 'ի վախճանն ընդ բնաւին տանջեցաւ։ Եւ մեծատունն քանզի ոչ ինչ կրեաց աստէն կարիս, վասն այնորիկ առաւել թշուառացաւ. զի փափկանայր 'ի կեանս աշխարհիս, չոգաւ անդր ընդ ամենայնի տալ տոկոսիս. ուր և մխիթարութիւն ինչ չգոյր գտա-

նել։ Սակայն են ոմանք այնպէս ցուրտք և անմիտք, մինչև աստէն միայն միշտ խնդրել՝ թէ առ այժմ աստէն վայելեսցուք, և ապա տեսցուք զանյայտիցն. չնորհեսցուք օրովայնի, ծառայեսցուք ցանկութեանց, համարձակ կացցուք աստէն յաշխարհի. տուր ինձ զայս օր, և առ քեզ զվաղիւ։ Եւ զի՞նչ 'ի քօշից և 'ի խոզից ընդհատ իցեն որ զայսպիսի բանս խօսիցին »։ ՈՍԿԵԲԵՐԱՆ։

« Այնչափ ինչ չար 'ի գազանացն բնութեամբ ոչ գոյր, մինչև առեալ զնորարարսն առ նորաստեղծն՝ նմա նոցա անուանս հրամայէր դնել. և եթէ մօտ ոչ գային, զիա՞րդ միոյ միոյ ըստ իւրաքանչիւր ազգաց անուանս յօրինէր. ապա եթէ մօտ գային, և ընտելութիւն ընդ մարդոյն ունէին, յայտ է թէ ոչ չարք էին, և ոչ մարդոյն վնասակարք. այլ յետ յանցանելոյ մարդոյն զԱստուծոյ պատուիրանաւն՝ տուան նմա զարհուրեցուցիչք, առ 'ի չհպարտանալոյ հողեղինին՝ որ 'ի հողոյ եղև և 'ի հող դառնալոց էր։ Եւ առաջնոյ չվնասակարութեան գազանացն մարդոյ՝ այժմու համբոյրս և ընտելութիւնս վըկայեն։ Զի ոմն զգայլոյ կորիւն սնուցանէ, և իբր զշան կորիւնս՝ առ ընդելութեան ընդ անձն անկանին։ Եւ միւսըն զառիւծու կորիւն սնուցեալ՝ ածէ 'ի համբոյր և 'ի քծինս, մինչև պատել զսնուցելեաւն. և եթէ այլ ոք 'ի նա հուպ գայցէ, չմոռացեալ զբարս գազանութեանն՝ 'ի վերայ յարձակի »։ ԵԶՆԻԿ։

Սակայն սրբոյն Սահակայ ու Մեսրովպայ աշակերտաց Բիւզանդիոն, Աթէնք ու Աղեքսանդրիա երթալը թէպէտ և մեծ օգուտ ըրաւ անոնց ախորժակը կրթելու համար, բայց անոնց լեզուին մէջ քիչ շատ փոփոխութիւն մտուց։ Խորենացին՝ որ դուրս ղրկուած աշակերտաց մէջ գլխաւորներէն մէկն էր, իր վարդապետացը վրայ խօսելու ատեն՝ ասանկ կը գրուցէ. « Որովհետև, կ'ըսէ, անոնք մեր արուեստին տեղեկութիւն չունէին, 'անոր համար

գործերնին ալ շատ կերպով թերի էր․ ուստի մեծն Սահակ ու Մեսրովպ ղրկեցին զմեզ յԱղեքսանդրիա, «ի լեզու պանծալի 'ի ստոյգ յօդանալ ճեմարանին»։ Ողբոցը մէջն ալ կ'ըսէ․ Երբոր անոնք մեր դառնալուն կը սպասէին ու իմ ամենիմաստ արուեստովս և առաւելագոյն յարմարութեամբ պատուասիրել, բոլորովին թէ մեր և թէ անոնց չկարծած դէպքը հանդիպեցաւ։

* * *

«Յունական լեզուի ազդեցութիւնը ճնշող չէ, և ոչ իսկ սպանիչ հայ լեզուի ոգւոյն, այլ սնուցիչ եղած է միայն առաջին շրջանի մէջ, երբ նկատենք այն աճագին ոյժը, որ յետոյ իւր բուռն ազդեցութեան տակ կը խեղդէ յաջորդ շրջանի գրիչները։ Թարգմանութեանց՝ յունական բնագրերու հետ համեմատութիւնը՝ զօրաւոր ապացոյցներ բերած է քերագոյն արուեստի մը որուն վարպետներն եղած են առաջին գրիչները։ Ս․ Գրոց կանոնական մասերու մէջ վախկոտ կամ երկիւղած թարգմանիչները՝ պատմական երկասիրութեանց մէջ հեղինակի ուժով ի հանդէս կու գան։ Բարսղի վեցօրէայն իբրեւ ներկայացուցիչ Բուզանդի, Ագաթանգեղեայ, Մակաբայեցւոց, Յուդիթայ, սքանչելեաց կարգն է պէսպիսութեամբ, լեզուի ճոխութեամբ և յանդգնութեամբ ձեւերու։ Բարսղի յառաջաբանին մէջ իբրեւ ծանօթութիւն նշանակուած է որ չէ թէ օրինակագրին ետեւէն կ'երթայ թարգմանիչը, այլ արծուօրէն կը թռչի շատ տեղ, և, իբրեւ թէ անոր օձիքէն բռնած, կը քաշէ ետեւէն․․․ Հմտութիւն, արուեստ և այնպիսի յստակութիւն․ ի թարգմանիչս մեր, որուն ներքեւ իր մթութեամբն ինկած անճրկած է Ոսկեբերան․

«Սահակ Պարթեւի յաջորդ ամէն գրիչք ինկած են ստրճանաբար․ զարգացման պակաս, պատմական փոխուած կեանք, ընկերական այլ շրջաններ՝ իրենց հզօրագոյն կը-

նիքը դրոշմելով լեզուին վրայ՝ անցած են յաղթական. և ինչ որ ի սկզբան եղած է զուտ ոսկեղէն, դարձած է լեզուին բանաստեղծական ճիւղին մէջ իբրև բրածոյ նիւթեր, ուր խառն են ոսկւոյ փշրանքներու հետ՝ երկաթի, ժանգի, անագի, թիթեղի և կապարի կտորուանք. բառարան, քերականութիւն, շարադասութիւն այլանդակուած են, իսկ մատենագրութիւն բոլորովին ինկած. կարեւորութիւնը կը մնայ միայն բանաստեղծական պատմութեան իբրև շարունակութիւն, ուր կարելի է տեսնել քայլ առ քայլ անոր առած երեւոյթները լուսնի կամ արեւու աստիճանական խաւարման պէս[1]։

Տեսնենք լեզուին փոփոխութիւնը՝ զոր կրեց այն ուսմամբը և ճանապարհորդութեամբ։

Այն ուսմանց, հետազօտութեանց և ճանապարհորդութեանց գլխաւոր արդիւնքը եղաւ, եթէ կարելի է այս բացատրութիւնս բանեցընել, լեզուին աւելի փիլիսոփայութիւն մը և իմաստասիրական ճշդութիւն տալ, բայց միանգամայն հայերէն լեզուէն ալ ուրիշ կերպարանափոխութիւն։ Հելլենաբանութիւնը՝ որ մեր հինգերորդ դարուն մանաւանդ երկրորդ կիսուն մէջ երեւցող շատ մատենագրաց գրուածոց մէջ այնչափ յաճախած է, այս ժամանակէս սկսաւ։ Հելլենաբանութիւնը՝ կամ յոյն լեզուին նմանութիւնը իրեք կերպով կը տեսնուի՝ մեր նոյն ժամանակին մատենագրաց գրուածոց մէջ։ Ուրիշ հելլենաբանութիւն ունի Խորենացին, ուրիշ Գիւտ և ուրիշ Դաւիթ Անյաղթ։ Տեսակ մը հելլենաբանութիւն կայ, անանկ նոյն լեզուով զանգուած՝ որ հայու համար անհասկանալի կ՚ըլլայ։ Ուրիշ տեսակ հելլենաբանութիւն մըն ալ՝ որ թէպէտ և յունաբան է, բայց հայերէն լեզուի կատարեալ տեղեկութիւն ունեցողը կրնայ աշխատանքով հասկընալ։ Իսկ երրորդ տեսակը աւելի մօտ է ազգային ոճի, և դիւրաւ հասկընալի. Թէպէտ և մեծապէս հեռու բուն ազգային մատենագրաց ոճոյն յատկութեններէն։

1 Մարտ 1892։

Արդեօք ազգին լեզուէն բոլորովին օտար և անոր հոգւոյն հակառակամարտ դրութիւն մ՚էր անոնց հնարածը և ի գործ ածածը։

Պատասխանը կու տայ արդի հմուտ և քաջանուն բանասէր մը, զոր կ'ախորժինք իր խօսքերովը մէջ բերել. «Սրբոյն Մեսրոպայ երիցագոյն աշակերտաց յաջորդող կրտսերագոյն աշակերտք, որոց մատենագրական գործունէութիւնն սկսած է իրենց անմահանուն վարդապետաց (Սահակայ և Մեսրոպայ) մահուընէն ետեւ, իրենց գրուածոց մէջ բաւական յաճախութեամբ այնպիսի արմատական և ածանցեալ բառեր կը գործածեն, որ թէ և օտար բառեր չեն... և ոչ մերձաւոր ազգաց, Յունաց, Պարսից. և Ասորւոց, այլ բուն հայկական են, սակայն երբեք ի կիր արկած չեն ոչ իրենց ուսուցիչքն և առաջնորդք, և ոչ երիցագոյն աշակերտակիցք, որ առ կենդանութեամբ վարդապետացն գրած են։ Այնու աւելի զարմանալի կ'երեւնայ և աչքի կը զարնէ այս զանազանութիւնն՝ որ նոյն բառերէն գէթ ոմանք շատ յաճախ կրնային գործածուիլ։ Օրինակ ըլլայ արմատական բառից՝ արփի, սադարք, փարքամ, տոփանք, տրոհել, հրձուիլ... և ածանցեալ բառերու՝ աղօրել, ողջունել, ուրախանալ, ուրախացուցանել, պատասխանել, գեղջուկ, վաղեմի...։

«Նոյն կրտսերագոյն աշակերտաց դասէն ոմանք լեզուին մէջ չափազանց հելլենաբանութիւն մուծանելով, բաց յայլոց նորութեանց՝ շատ ածանցներ հնարած են սկըզբնական մասնիկներով։ Արդ այս մասնկանց ոմանք յայտնապէս առնուած են բուն հին հայերէն բառերէ. բայց կան նաեւ այնպիսի մասնիկք, որոց հետքն անգամ չի գտնուիր հնոց մէջ. կամ թէ կարելի չերեւնար այս կամ այն հայերէն բառերէն հանել։ Այսպէս կը մակաբերենք՝ թէ արտաբերել, հակասութիւն, ներգործութիւն, պարբերութիւն, ստորագրել ածանցները ձեւացընող մասնիկներն առնուած են արտաքոյ, հակառակ, ներքոյ, պարեալ (շուրջ), ստորին... բառերէն։ Բայց ուստի

հնար է հանել բաղդատել, մակերեւոյթ, տրամաբան, փաղանուն և ածանցներուն սկիզբը կըցած [1] մասնիկներն, որոնց նման բառ չիկայ հին լեզուին մէջ։

Կրտսերագոյն թարգմանչաց գործածած ու հիմա յիշուած իրեք դաս հելլենաբանութեանց ալ օրինակներ մէջ բերենք։

« Եղոյր հարկաւոր, Քրիսաւորիէ, և յ'առս Արիստոտելի ստորոգութեանցն վարդապետութիւն, գիտել' զի՛նչ սեռ և զի՛նչ տարբերութիւն և զի՛նչ տեսակ. զի՛նչ յատուկ, և զի՛նչ պատահումն 'ի սահմանացն բացատրութիւն, և բոլորովին' յաղագս բաժանման և ապացուցի պիտանացուի եղոյ սոցայցն տեսութիւն, համառօտ քեզ ընձեռութիւն առնելով' փորձեցայց 'ի ձեռն սակաւուց իբր ներածութեան յեղանակի զառ ծերունեացն անցեալ բանիւ, 'ի խորագունիցն 'ի բաց կալ 'ի խնդրոց, և պարզագունիցն' չափաւորապէս հանդիպելով » ։ . . .

« Տեսակ ասի և 'ի վերայ իւրաքանչիւրոյ կերպի' ըստ որում ասի, նախ տեսակ արժանի գոռոզութեան։ Եւ ասի տեսակ և այս' որ ընդ բացատուեալ սեռիւս է, ըստ որում սովորեցաք ասել զմարդ տեսակ կենդանւոյ' սեռոյ, եղոյ, կենդանոյ. և սպիտակն գունւոյ տեսակ, և եռանգիւնին ձեւոյ տեսակ։ Եւ եթէ զսեռն բացատրելով զտեսակն յիշեցաք, ասելով զյոլովին և զտարբերեցելոց տեսակաւ 'ի ներում զինչէն ստորոգեալ, և զտեսակն ասեմք զայն որ ընդ բացատուեալ սեռիւն է։ Գիտել պարտ է, վասն զի սեռն' որումն է սեռ տեսակն' որումն է տեսակ, երկաքանչիւր' երկաքանչիւրոյ, հարկ է և ներկոցունց' բանս վարիլ երկոքումբք [2] »։

Ասանկ անիմանալի հելլենաբանութիւն մը գործածող

1 ՅՈՎՆԱՆԵԱՆ (Հ. Գ. Վ.)․ Հանդէս ամսօրեայ, Յունուար 1888։
2 Դաւիթ Անյաղթ իւր թարգմանութեանց մէջ։

Դաւիթ Անյաղթը՝ Սահմանաց գրքին մէջ շատ աւելի պարզ և իմանալի լեզու մը կը գործածէ, թէպէտ և ոչ անխառն 'ի հելլենաբանութենէ։

« Կատարեալն փիլիսոփոս՝ երեքումբք այսոքիւք կերպարանի․ բարեաւն, ասեմ, և գիտնականաւն և կարելեաւն։ Եւ բարեաւն՝ թէ որպէս Աստուած խնամ տանի ամենեցունց, նոյնպէս և իմաստասէրն խնամ տանի անկատար ոգւոց 'ի կատարեալ գիտութիւն ածելով զնոսա։ Իսկ գիտնականաւն՝ թէ որպէս Աստուած զամենայն ինչ գիտէ, նոյն և կատարեալ իմաստասէրն զամենայն ինչ խոստանայ գիտել, և գիտէ զօգտակարն։ Իսկ կարելեաւն՝ թէ որպէս Աստուած զամենայն ինչ կարէ զպատշաճաւորսն և կամի, նոյնպէս և կատարեալ իմաստասէրն՝ որչափ ինչ կարող գոյ ըստ կարելոյն և կամի, և ոչ երբեք կամի զոր ոչն կարէ »։

Նոյնպէս ալ Փիլոն․

« Սա (հանճար գիտութեան) է որ զթանձրահողն արգաւանդ և զառաքինի երկրի զլեռնային և զդաշտային սերմանեաց և տնկեաց, և զկենցաղոյս զօգտակարագոյն մշակութիւնն կարաց գտանել։ Սա է որ նաւ կազմեաց, և զցամաքին բնութիւնն ընդ միտ ածելով, հնարս գըտեալ՝ որ քան զամենայն բան 'ի վեր է, ղուղակ գործեաց զմարդ․ և ճանապարհս 'ի ծովու բազմահերձս և բազմահետս մինչեւ 'ի նաւահանգիստն, որք ըստ քաղաքաց քաղաքաց, և ընթացից աշխարհապօղոտայս եհատ ճանապարհ․ և ծանօյց ցամաքայնոցս զկղզայինս (որք) ոչ երբեք 'ի մի վայր եկեալ լինէին, եթէ ոչ մանկոյկ նաւակ առեալ էր։ Սա է որ ձեռագիտացն և պայծառագոյն արուեստիցն ասացելոց գտակ։ Սա գիրս և երաժըշտութիւն, և զհերշըրջանական ամենայն խըրատ հանճարոյ հնարեալ իմացաւ, և աճեցոյց և էած 'ի կատա-

*բած ։ Սա և զմեծ բարի՝ զիմաստասիրութիւնն ծնաւ, և ՚ի ձեռն իւրաքանչիւրոցն մասանց՝ օգուտ արար մարդկային կենացս »։*

*Օրինակ մ'ալ Նոննոսի Առասպելաց մեկնութենէն մէջ բերենք ։*

*« Անաքսագորաս իմաստասէր էր ։ սա ըմբռնեալ յԱրքեղայոս իմաստասիրէ, և արկեալ ՚ի սանդ հարեալ լինէր նգով փայտեղինաւ, և ՚ի սանդահարիլն՝ մանրիլ և փոճոկել ՚ի նմանութիւն հնդոյ ինչ, այլ սանդահարելով սորա աղաղակէր և ասէր. Սանդահարեա, սանդահարեա զպարկս Անաքսագորեայ. քանզի ոչ կարես զԱնաքսագորաս սանդահարել ։ Զայս ասէր, նշանակեալ թէ իմաստասէր գոլով, մարմնոյն և ոչ մի ինչ փոյթ առնէ »։*

*Երրորդ տեսակ հելլենաբանութեանն ալ օրինակ մը մէջ բերենք ։*

*« Արդ կիս դեռ ես տղայոցն (Բեթղեհեմի) հնչեցուցանէ գոչումն. և տեսեալ զնոսա՝ կարծեմ ճչել անգուշակս զարհուրելով, և ՚ի նշոյլս սրոյն կափուցեալս, և երկիւղիւ խոնարհեալք ՚ի գիրկս մարց իւրեանց իբրև յապաւէնս, այլ և ՚ի ծոցս խուսափեալս ։ Ապա և զմարսն կարծեմ տեսանել. այլ զոմն առ այլուրս փախուցեալս ՚ի քաղաքէն՝ այնու ողորմելի և քաղցր բեռամբք, և խնդրողս տեղի ապաստանի. և զոմն ՚ի նացանէ՝ ոչ ծածկոյթ բարեչուք զիւրեաւ առեալ ՚ի դառնութենէն. իսկ ոմն և զօր ունէր՝ ՚ի բաց ընկեցեալ ՚ի չփոթական փախըստենէն ։ Եւ զայլ ոմն զմանկամբն անկեալ՝ յայնպիսի ծածկութիւն զաղայն վտանգէր, գողանալ յուսալով. և զմիւս ես այլ՝ հասեալ ՚ի հալածչացն ուժգնակի, և ապա պակասեալ ՚ի գնացիցն, և պարաւանդեալ յերկիւղէն, և արտասուալից աչօք ի փայլուն սրոյն և զհայեցուածն*

յերկրուս բաժանեալս, և զանձն առաջի եդեալ փութապէս ելմամբ սրոյն։ Եւ դարձեալ միւս այլ ոմն ոչ կարացեալ չարժել ուրեք, կապեալ ոտիցն 'ի զարհուրմանցն՝ այլ յառաջ կորուսեալ 'ի սպանմանէ իւրոյ զաւակին, և սպանողին՝ սուր ինչ անսացեալ հառաչմանն, և ուրեք ձեռօքն լուծեալք և յոյժ սասանելովք անկիտացեալք, և զմանուկն 'ի գիրկսն սատակեալ. և կանխեալ զմահուանն գիտակոյս՝ նախ քան զսրոյն կորուստ։ Ո՞վ հերովդի մոլեգնութեանն։ ԳՐԻԳ. ՆԻՒՍԱՑԻ։

Աս օրինակներուն մէջ կը տեսնուին յայտնապէս իրեք գլուխ յունաբանութեանց ոճը և յատկութիւնները, որ մեր մատենագրաց՝ կամ անոնց ձեռքով եղած թարգմանութեանց մէջ կ'երեւնան։ Անոնցմէ՝ ոմանք այն աստիճանի սիրող երեւցան այս տեսակ ոճոյն՝ որ ինչուան ուզեցին հայկական լեզուին կարգն ալ փոխել, և մեր լեզուին կանոն տալ Դիոնեսիոսի Թրակացւոյն քերականութիւնը։ Անոր համար կը տեսնենք որ նոյն գրքին մէջ նոր ու այլակերպ բարդութիւնք կան՝ բոլորովին օտար ու հակառակ մեր լեզուին կանոններուն ու խոնարհմանցը, որուն օրինակ կրնայ ըլլալ կոփեմ բայը, զոր հետեւեալ կերպով կը լծորդեն երկրորդ թարգմանիչք։ Կոփեմ, կոփես, կոփէ. կոփոյեմք, կոփոյեք, կոփոյեն. — էկոփոցիւր, էկոփոցիւ, էկոփոցեր. էկոփոցիւք, էկոփոցիւրք, էկոփոցիւն, և այլն։ Բաց 'ի նորամուտ հոլովներէ և ժամանակներէ բայից, զոր շատ քերականք հաւաստած են մեզի՝ ոմանք համառօտելով այլք ընդարձակելով, ուզած են նաեւ նիւթական կազմութեամբ ալ նմանցընել զհայերէնն յունարէնի. ինչպէս, է տառն աւելցընել բայերուն քանի մը ժամանակաց վրայ, որ արդէն կը տեսնուի նոյն կոփեմ բային մէջ։ Օրինակ իմն, կը կարդանք Դաւթի գրոց մէջ. «Քանզի կենդանոյն տարբերութիւն առէակեալ բանականին՝ այլ էարար. տեսակ մարդոյ կենդանւոյ էարար... իսկ ապա մին՝ այլ, իսկ

միւսն՝ այլայլակ միայն եարար». ուր եարարն մէկտեղ գրուելով պիտի կարդացուի; և ընել է՝ արար։ Այսպէս նաև իրենց գիւտն եղաւ նորօրինակ սեռական հոլով մ՚ալ լեզուին մէջ մտցրնել, որ չէր յունական. այլ թերեւս հին հայկական տառ մը ըլլար, ի գիրն. որ ցարդ կը տեսնուի դերանուանց մէջ, և զայն ի տառն անցունել ուզեցին նաև ուրիշ բառերու վրայ ալ. ինչպէս կ՚ըսէր նոյն Դաւիթն Անյաղթ «Բացատրուեցելոյր սեռոյրն և տեսակոյրն՝ զինչ երկաքանչիւրն, սեռոյր եղոյր ելոյր; և տեսակացն յոլովից». որուն իմաստն է՝ բացատրելով զսեռ և զտեսակ, թէ զի՛նչ է երկաքանչիւրն. և սեռն եզ (այսինքն մի) գոլով և տեսակք յոլովք։ Այսպէս կը հոլովեն զսեռականսն միոյր (միոյ), իւրաքանչիւրոյր (երկաքանչիւրոյ), «Մանկան ելոյր և այրացելոյր և ներգործելոյր ինչ կամ դադարելոյր». այսինքն մանուկ գոլով և յարբունս հասեալ և գործելով ինչ կամ դադարելով. — այլոյր (այլոյ), մարդոյր (մարդոյ), միոյ միայնոյր (միոյ միայնոյ)»[1], և այլն։ Ասանկ ալ դերանուանց իգական սեռը զատեցին ու ըսին. Նա, նորա արական. Նէ, նէրա իգական։

Թարգմանչաց այս նորաձեւութիւնը հաճոյ անցաւ ժամանակակցաց աչքեր։ — Խնդիր մըն է՝ որուն վրայ քանի մը անդրադարձութիւն պիտի ընենք՝ Թարգմանչաց դարուն վրայ խօսած ատեննիս, ազգային գրականութեան պատմութեան քանի մը խօսքերէն գուշակելով։ Սակայն ազգին մէջ ընդհանուր չըլլալէն՝ հաւանական կ՚երեւնայ գրուցելը թէ իբրեւ անսովոր բան մը մերժուեցաւ. ուստի և կերպով մը Խորենացին կը գանգատի թէ մեր արուեստին վրայ կը ծիծաղին՝ ու անօգուտ և անպիտան կը սեպեն մեր գիտութիւնը. Խորենացւոյն և ընկերացն կրած հալածանքն մեր այս խօսքին երաշխա-

1 Բազմավէպ, 1875. Հելլենաբանութիւն և հելլենաբան Թարգմանիչք Հայկական լեզուի, 118, և 1877, յէջ 108։

ւորութիւն կրնան սեպուիլ։ Իրենցմէ ետքը եկող մատենագիրք ալ ընդհանրապէս չհետեւեցան նոյն ոճոյն. և տակաւին ալ հաւաստիք մ՚է՝ թէ ընդունելի չեղաւ այն գրութեան կերպը՝ որուն յառաջադիմութեանը համար այսչափ աշխատեցան։

Այս ժամանակ մտած են մեր ազգին մէջ շատ յունական բառեր, կամ յունարէն բառերու հայկական թարգմանութիւնք՝ որոնցմէ ոմանք մեր լեզուին պարզութեանը վնասակար եղած են, և ոմանք ալ իբրեւ ընտիր զարդեր արժանապէս գործածուած։

Թարգմանչաց դարէն ետքը՝ անակնկալ կերպով մը կ՚իյնայ ազգային գրութեան հետ նաեւ լեզուն։ Հարիւր տարուան երկայն շրջան մը՝ քանի մը աննշան մատենագիրներ կ՚ընծայէ մեզի, որոնք իրենց գրուածոցը վրայ ժամանակին իմաստից և լեզուի աղքատութեան նշանադրոշմը կը կրեն։

Այսօր նման՝ կամ քիչ տարբերութեամբ է եօթներորդ դարը։ Միայն Շիրակունւոյն ջանքով՝ հայկական բարբառը ուսումնական բառերով և բացատրութեամբք կը ճոխանայ։

Ութերորդ դարուն մէջ Հայաստանի քաղաքական դիրքը նոր կերպարանք մը կ՚առնու։ Նոր տիրապետութիւն մը՝ իր իշխող և զօրաւոր ձեռուըները կը տարածէ մեր հայրենեացը վրայ. զէնքերուն հետ՝ լեզուին կնիքը ու բացատրութեան կերպերը կը մտնեն մեր բարբառոյն մէջ։ Արաբացին կը սկսի մերթ յաղթական անգութ զօրաց բանակներ, ու մերթ ալ իր ոստիկանները ղրկել Հայաստանի վրայ, երբեմն զարնելու և աւարելու, երբեմն ալ նոյն աւերակաց վրայ իր իշխանութեան աթոռը դնելու։ Ասիական մատենագրութեանց մէջ նոր՝ ու գրեթէ իրեն յատուկ ոճ մը ունի արաբականը։ Զրուցուածքի մէջ այլաբանական ու նկարագրական լեզու, բացատրութեանց մէջ երկայնաբանութիւն։ Այս ոճը յայտնապէս կը սկսի երեւնալ մեր նոյն ժամանակի մատենա-

գրոց մէջ. Յովհաննու Օձնեցւոյն կամ իմաստասիրին գրուածոցը մէջ աւելի ընտիր կերպով, իսկ Յովհաննու Պատմաբանի ու Թովմայ Արծրունւոյ երկասիրութեանց մէջ՝ աւելի ստորին ոճով։ Այն ազդեցութեամբն է որ ժամանակին մատենագիրքը կը սկսին իմաստից յորդութեան կամ առատութեան հետ՝ նաեւ բառից յորդութիւնք և առատութիւնք գործածել իրենց գրուածոց մէջ. և անով կը սկսի լեզուն աղաւաղիլ։ Այս աղաւաղութիւնը աւելի կերպով մը զգալի կ'ըլլայ Գրիգորի Մագիստրոսի երկասիրութեանց և դարուն մէջ։

Սակայն այս ազգը՝ որչափ ալ լեզուներնուս վրայ ունեցաւ իր ոչ այնչափ օգտակար ազդեցութիւնը, բայց ոչ նոյնպէս և ի գիտութեան՝ որ աւելի փափաքելի էր։ Պատճառն ալ պարզ է։ Հայ կրթութիւնն ու մատենագրութիւնը եկեղեցականաց ձեռքն ըլլալով, բնական էր որ իրենց բոլոր ճիգը թափէին ժողովուրդը հեռու պահելու արաբական գրքերէն. իրենք ալ պիտի զգուշանային բան մը սեպհականելու այն գրականութենէն, որ տարբեր կրօնական գաղափարներ կը քարոզէր, վախնալով որ չըլլայ թէ Հայաստանի քրիստոնէութիւնը վտանգի. մանաւանդ որ հրապոյրք պակաս չէին արաբացի իշխանաւորաց կողմէն Հայոց մեծամեծներու՝ իրենց կրօնական հաւատալեաց կողմը հակելու։ Այս երկիւղն անշուշտ չէր կարող ազդել արաբական գեղարուեստ. ուստի և կը տեսնենք որ Հայք չեն դանդաղիր սեփհականել Արաբացւոց ճարտարապետական ճաշակը, նոցա միւսիոններն (mosaïque) և նուրբ քանդակները, և բիւզանդական ճարտարապետութեան հետ խառնելով իրենց առանձին ոճ մը ստեղծեր են. որուն այսօր հայկական ոճ անունը կը տրուի, և որ դեռ եւս կ'երեւնայ Անւոյ աւերակաց վրայ։ իսկ գրականութեան և գիտութեան ազդեցութիւնը, — թէպէտ և թոյլ կերպով, — կը նշմարուի միայն այն ժամանակ՝ երբ Հայք կ'ազատին Արաբացւոց ազդեցութենէ. երբ քրիստոնէութեան ալ եւս չէր կարող վտանգ մը ըլ-

դառնալ։ Այսպէս Գրիգոր Մագիստրոս ԺԱ դարու երկրորդ կիսուն, սեպհականեց Արաբացւոց վանկական և յանգաւոր տաղաչափութիւնը. որ ի յաջորդ դարուն՝ Ն. Շնորհալւոյ գրչին տակ կատարելագործուելով՝ հին հայկական տաղաչափութեան տեղ բռնեց։ Իրեն ժամանակակից Մխ. Հերացի մեծ մասամբ արաբական բժշկարաններէ քաղեց իւր Ջերմանց գիրքը, և բժշկականութեան հիմը դրաւ Հայոց մէջ։ Եթէ հայ մատենագիրք աւելի առատութեամբ քաղած ըլլային այս հարուստ աղբիւրէ, անշուշտ թէ մեր մատենագրութիւնը կը ճոխացընէին, և թէ մանաւանդ գիտութեան զարգացման կը նպաստէին մեր մէջ։

*
* *

Իսկ երկոտասաներորդ դարը՝ Ներսիսի Կլայեցւոյ, Սարգսի և Իգնատիոսի ու իրենց ոճոյն հետեւող ընտիր մատենագրաց ձեռքովը՝ արծաթի դար մըն է մեր մատենագրութեանը։ Անոնց գործած վայելուչ լեզուն չկըրցաւ երկար ատեն դիմանալ, ու կամաց կամաց անշքանալով՝ բոլորովին նոր կերպարանք մը սկսաւ առնուլ։ Այնպիսի կերպարանք մը՝ որ հայերէն գրականութիւնն ու լեզուն երկուքի բաժնեց. խորոց մը դրաւ ընդ հին և ընդ նոր մատենագրութիւն։

Այս նորութեանը և իր ոճոյն վրայ՝ մենք ալ ազգային նոր Մատենագրութեան պատմութեանը մէջ ընթերցողաց մտադրութիւնը պիտի գարձընենք։

Բայց նախ մէջ բերենք նորագոյն համարուած կարծիքը՝ լեզուաց նկատմամբ։

« Լեզուներն իւրեանց ծագման կամ ազգականութեան կողմանէ կրնան բաժնուիլ այլ և այլ խումբեր որոց գըլխաւորներն ու ծանօթներն են Հնդեւրոպական, Սեմական և Դուրանական։

1. Հնդեւրոպական կամ Հնդիկ–եւրոպական կը կոչուին լեզուք այն ազգաց որ Հնդկաստանէ, ընդ մէջ կովկասու և կորգուաց, արեւմտեան ուղղութեամբ կը տարածուէին ՚ի հիւսիսոյ փոքուն Ասիոյ մինչեւ Եւրոպայի ծայրը։

Ծանօթ լեզուք որ ընդհանրապէս այս խմբէն են՝ են. 1. Հնդկաց հին լեզուն որ կը կոչուի Սանսքրիթ, և որով գրուած են Հնդկաց կրօնական գրեանք որ կը կոչուին Վէտա։ 2. Զենտն կամ Զանդիկ լեզուն, այս ինքն այն լեզուն զոր կը խօսէին հին Մարք և Պարսք և ուրիշ արիական ազգեր, և որով գրուած են զրադաշտական կրօնից մատեանք որ կը կոչուին Զենդ–աւեստա, այսինքն՝ կենդանի բան։ Զենտի բարբառներէն մին է Պահլաւերէնն, նոյնպէս նուիրական լեզու Պարսից զկնի Զենտին։ 3. Հելլենարէնն կամ Յունարէն և Լատին լեզուն։ Գերմանական և Սլաւական լեզուք եւս, որ շատ ճիւղեր ունին՝ կը համարուին ի բնէ Հնդիկ–եւրոպական։

Հնդեւրոպական լեզուաց կը տրուի եւս Արիական անունն յանուանէ Արեաց որ էր ազգային անուն Զանդիկ ցեղերուն, գլխաւորապէս Մարաց և Պարսից որ այս լեզուն ունէին։ Բայց արիական կամ իրանական անունը կը պատշաճի մանաւանդ զանդիկ ճիւղին։

2. Սեմական կը կոչուին լեզուք այն ազգաց որ կը տարածուէին Տիգրիսէ մինչեւ Միջերկրականն, հանդերձ Արաբիաւ։

Ծանօթ լեզուներ որ կը վերաբերին այս խմբին՝ են. Եբրայեցերէն, այն է հին հնդիկ լեզուն որ կը համարի նոյն ընդ լեզուին փիւնիկեցւոց։ — Հին Քաղդէարէնն, հին Ասորերէնն կամ Արամերէն լեզուն։ — Մեզ ծանօթ Արաբերէնն։ Հին Քաղդեարենէ և հին Ասորերենէ մնացորդ չունինք, հին Արամերէնէ շինուած լեզու է Սիրիաք կոչուած ասորերէնն, յոր թարգմանուած են Հին և Նոր կտակարանք իբր երեք դար յառաջ քան պհայերէն թարգմանութիւն։ Սիրիաք լեզուն կ՚ուսանէին ժամանակաւ մեր նախնիք, իբր

եկեղեցական լեզու յառաջ քան զգիւտ Մեսրոպեան նշանագրոց, երբ Սասանեանք արգիլեցին յունարէնի ուսումն քաղաքական պատճառաւ իրենց մէջ։

Արդէն գիտունք տուած են լեզուաց այս խմբին, Դուրան անունն, ըստ Հայ մատենագրաց Տանեբրան, ուրիշ բառով Անարի, և կը տրուէր ի Պարսից այն ազգերուն որ չէին արիական ցեղէն։... Դուրանեան ազգերուն բնակութիւնն էր գլխաւորապէս ի հիւսիսոյ Կովկասու դէպ յարեւելս մինչեւ Թուրքաստանի և Սիպերիոյ անապատներն, նաեւ ի հիւսիսոյ Հայոց առ Կուր գետով յայնկոյս Կովկասու։

Դուրանեան էին, այսինքն ունէին Հնդիկ–եւրոպական, և սեմական լեզուներէն տարբեր ցեղ լեզու, Գուգարք կամ Վիրք, և Գարգարացիք, այս ինքն Աղուանք առ Կուր գետով որ առ Արշակունեաց սահմանէր ի մէջ Հայոց և նոցա։ Դուրանեան էին հաւանականապէս նաեւ Մազքուք և Հոնք կամ Քուշանք, որ և Հեփթաղ կը կոչուին մեր պատմութեան մէջ, և որոց դէմ ստէպ պատերազմներ ունեցան Սասանեանք։ Բուզանդ՝ Մազքթաց թագաւորին զօրաց մէջ կը յիշէ Ալանաց, Հոնաց, Փոխաց, Թաւասպարաց, Հեճմատակաց, Իժմախաց, Գաթայ, Գզուարաց, Ճղբաց, ճղբաց, Բաղասճաց, Եգերսուանաց և այլ «խառնաղանճ» ցեղերու գունդեր։ Եղիշէ ճղբաց, Գզուարաց, Հեճմատակաց, Փոխաց, Թաւասպարաց հետ կը յիշէ նաեւ ուրիշ հիւսիսային ցեղեր, ինչպէս Լփնիս, Խայլանդուրս, և այլն. զԼփնիս կը յիշէ նաեւ Խորենացի։

Դուրանեան խմբէն մեզ ծանօթ լեզու է Թուրքերէնն, որ բաւական նպաստ կը մատուցանէ հայերէնի լեզուաբանական քննութեան, ինչպէս կը մատուցանէ նաեւ վրացերէնի գիտութիւնը։...

Գիտենք որ բոլորովին հակառակ է ոմանց ախորժակին՝ նշմարս անգամ տեսանել դուրանականութեան ի ծագման արարատեան ոչ լեզուին միայն, այլ և ցեղին։ Ըստ սոցա՝ Հայն է և պարտի լինել, և ցեղիւ և լեզուաւ, մին ի դըս-

տերաց այն երջանիկ մօր որմէ ծնած են Հնդիկ եւրոպական համարուած ազգք և լեզուք համօրէն։ Սակայն ներելի է կարծենք գիտութեան բերել ի լոյս որ և իցէ խնդրոյ ընդդիմակաց երեսն եւս։ Ո՛ր յիշատակարան, ո՛ր պատմութիւն կամ աւանդութիւն կը ստուգէ մեզ թէ արարատեան ցեղն, ըստ ակզբանն թաղուած հնութեան աղջամուղջին մէջ, չէր ի բնէ իւր հիւսիսային դրացիներուն, Վրաց, Աղուանից ազգակից. և ապա յընթացս իւր գրագիտական կենաց՝ իւր արեւելեան և արեւմտեան ազնուաբարոյ և կրթագոյն դրացիներէն, ի Պարսից և ի Յունաց, առաւ իւր լեզուին Նախնի կմախքին վրայ Հընդեւրոպական միս և մորթ, ինչպէս ըրած է Թուրքերէնն աստ ուրեմն յԱրաբացւոյն և ի Պարսկէն միթէ այս լեզուն ի ծնէ սեմակա՞ն կամ արիական էր. վասն զի ունի այնչափ խառնուրդ այս վերջիններէն։ Ուստի չէ ամենեւին անտեղի ըստ մեզ գէթ հաւանական ինչ նմանութիւն նկատել հայերէնի՝ դուրանական լեզուաց խմբին հետ որոյ ծանօթ ճիւղն է մեզ Թուրքերէնն, մանաւանդ քայերու կազմութեան կողմանէ որ լեզուի էական և մնայուն տարրն է։...

Լեզուաց այլ և այլ խումբերու բաժանման, և այն լեզուները խօսող ազգաց բնակութեան վրայ պատմական տեղեկութիւններէ հայերենի համար կը հետեւի թէ, Հայ ցեղն, հին անուամբ Արարատեան, ապա Արունի կամ Արմէն, անյիշատակ ժամանակներէ բնակող Երասխայ հովիտը, ունէր ինքեան դրացի երեք գլխաւոր լեզուները խօսող ազգեր. յարեւելից և յարեւմտեց Հնդիկ եւրոպականներ (Պարսք և Յոյնք). ի հարաւոյ Սեմականներ (Ասորիք). ի հիւսիսոյ Դուրանեան ցեղեր։ Այսպէս լեզուաբանական տարբեր տարբեր տարրներ ունենալով ինքեանց դրացի, Հայք հարկաւ մեծ ազդեցութիւն կրած են ի նոցանէ քաղաքակրթութեան ինչպէս ուրիշ մասերուն, նոյնպէս մանաւանդ լեզուի կողմանէ, ըստ աւելի կամ նուազ յառաջադիմութեան այն ազգաց. և որովհետեւ աւելի յա-

ռաջադէմներն էին Ասորիք և Յոյնք, հարկաւ այս երկու ազգաց լեզուներն մանաւանդ կրնային գործել մեծ ազդեցութիւն հայերենի վրայ. և է իսկ այնպէս, որպէս ցուցանէ մտադիր քննութիւնն։

Եւրոպացի լեզուագէտք քննելով մեր հին լեզուն կամ գրաբարը, և գտանելով ի նմա մեծ նմանութիւն հնդիկեւրոպական լեզուաց հետ, վճռեցին թէ հայերէնն եւս է արիական լեզուաց դասէն, այսինքն ի բնէ դուստր այն մայր լեզուին որոյ ծնունդ են Զանդիկն Յոյնն և Լատին։

Հայերէնն ունի այնչափ նմանութիւն, առաւելապէս ձայնի կամ բառերու կողմանէ հնդկեւրոպական լեզուաց, մանաւանդ գլխաւորններուն, Զենդի կամ հին պարսկերէնի, յունարէնի և լատիններէնի, որ եթէ չէր եւս ի բնէ հնդիկ եւրոպական, ըստ վերջին ձեւոյն իւրոյ կ'երեւի հնդեւրոպական, և առաւել քան որչափ կարծած են այս լեզուն՝ լեզուաբանին օրինաց քննող համազգի և օտար գիտունք։ Սակայն լեզուի նմանութենէն չհետեւիր ծագման կամ յեղական միութիւնն, ուստի նայելով հայերէնի նմանութեան հնդեւրոպական լեզուաց հետ, չենք կրնար համաձայնիլ ըսել թէ այս լեզուն էր ի բնէ հնդիկ եւրոպական կամ Արիական։ Եթէ, ինչպէս արդի հնագէտներէն ոմանք կը կարծեն, Հայ ազգին ծագումն է տուրանական, կամ ուրիշ բառերով ըսենք, եթէ Հայ, կամ հին անուամբ Արարատեան ցեղն էր ի բնէ հիւսիսային ժողովուրդ. չէ անհաւանական թէ լեզուն եւս էր նախապէս հիւսիսային դուրանական անհարթ բարբառ, որ յետ ժամանակաց՝ ազդեցութեամբ լեզուաց դրացի հընդեւրոպական աւելի քաղաքակիրթ ազգին առաւ տակաւ հնդեւրոպական ձեւ։



Մեր հայերէնն եւս հնդեւրոպական լեզուաց դասուն պատկանելով լեզուագիտաց առանձին քննութեան նիւթ եղաւ։ Գերմանացիք ինչպէս որ համեմատական լեզուագիտութեան սկզբնաւորութիւնն ըրին ու հիմը դրին, այսպէս ալ հայերէնի համեմատական լեզուագիտութեան սկզբնաւորութիւնը պարտական ենք գերմանական ազգին։ Թէ՛ Գերմանացւոց և թէ ուրիշ ազգաց մէջ գտնուեցան շատ գիտնականք, որոնք հայերէն լեզուի ուսման պարապեցան և մեր մատենագրութեան միջէն մէկ քանին թարգմանեցին. բայց ի մասնաւորի հայերէնի լեզուագիտութեան պարապողներն են Շրէօտէր, Բետերման, ֆրեդերիկոս Միւլլէր, փօլ տը լակարդ, Լաւէր, Հ. Հիւպշման, Գրուկման, Տիւլորիէ, Գարիէր, մեր ազգայնոց մէջ ալ Մ. Էմին, Ք. Պատկանեան և Հ. Ս. Տէրվիշեան, և այլք։

Արդի Գերմանացի լեզուագէտք երկու դասի բաժնուած են. ոմանք՝ Հին–Քերականագէտք (Alt-Grammatiker) ոմանք Նոր–Քերականագէտք (Iun-Grammatiker) կը կոչուին։ Հին–Քերականագէտք՝ Լակարտ և Ֆ. Միւլլէր կը հաստատեն թէ հայերէն լեզուն հնդեւրոպական իրանեան լեզուին մէկ գաւառականն է. իսկ Նոր–Քերականագէտք՝ Հիւպշման և Գրուկման առոնց կարծեաց հակառակը կը հաստատեն թէ հայերէն լեզուն հնդեւրոպական լեզուաց դասուն առանձին մէկ ճիւղն է։ Առաջնոց կարծեաց գլխաւոր շարժառիթն ու հիմն այն է՝ որ մեր լեզուին մէջ շատ բազմաթիւ պարսկական եկամուտ բառեր կան, որոնց լեզուագիտական փոփոխումներն իրանեան լեզուի կանոնաց յար և նման են։ Իսկ յետնոց ապացուցեալ կարծիքն է, որ մեր լեզուին իրանեան եկամուտ բառերն բնիկ հայկական բառերէն զատելով՝ կը գտնեն այս բնիկ հայկական բառից, անոնց փոփոխմանց, հոլովմանց, խոնարհմանց ու տառադարձութեան մէջ՝ այն

ամէն յատուկ նշանները, որոնք կ'ապացուցանեն թէ Հայկական լեզուն է հնդեւրոպական լեզու. և դարձեալ՝ հնդեւրոպական լեզուաց դասուն մէջ առանձին անկախ ճիւղ մը։

« Ժամանակ մը այն կարծիքն, թէ հնդկերէնն կամ սանսքրիտ լեզուն ամենահին հնդեւրոպական լեզուն ըլլալով՝ է նաև մայր ամէն հնդեւրոպական լեզուաց, կամ գոնէ նախադաս ամէն հնդեւրոպական լեզուներէն, ըստ բաւականի մուտք գտած էր, և դեռ ոմանց մտաց մէջ ցայսօր կը գտնուի. բայց արդի լեզուագիտութեան ըմբռնումը բոլորովին տարբեր է։ Այո՛, հնդկերէն լեզուն մեզի ամենահին ժամանակներէ ծանօթացած ըլլալուն ունի շատ հին և ամենահին ձեւեր, հանդերձ այսու՝ միւս հնդեւրոպական լեզուաց մէջ ալ երեւան կու գան շատ անգամ այնպիսի հին ձեւեր և փոփոխմանց օրէնքներ, որոնք ոչ նուազ յարգելի են իրենց հնութեամբն։

« Արդի լեզուագէտք հնդեւրոպական լեզուաց դասը՝ հետեւեալ իրարմէ անկախ ճիւղերու կը բաժնեն.

Ա. Արիական ճիւղ, որ կը բաղկանայ Հնդկերէնէ և Իրանեան լեզուներէ։

Բ. Հայկական ճիւղ, որուն պատկանող լեզուն մի միայն մեր Հայերէնն է, որ ծանօթ է մեզի հինգերորդ դարէն սկսեալ։ Այս մեզի ծանօթ Հայերէնը՝ գրաւոր կամ մատենագրական լեզուն է։ Բնականաբար՝ ինչպէս ուրիշ հնդեւրոպական լեզուք, այնպէս մեր գրաւոր հին Հայերէնն իւր գաւառաբարբառներն ունէր, սակայն գաւառաբարբառներով շարադրած մատենագրութիւն մը մեզի չէ հասած. միայն թէ ինչ ինչ հեղինակաց գրութեանց մէջ բառեր, ձեւեր ու ասութիւններ կը նշմարուին։ Իսկ արդի գաւառաբարբառներն դասական՝ հին հայերէնէն լայնատարած անջրպետով մը անջատած են։

Գ. Յունական ճիւղ։

Դ. Ալբանական ճիւղ։

Ե. Իտալական ճիւղ։

Զ. *Կելտական ճիւղ։*

Է. *Գերմանական ճիւղ։*

Ը. *Բալտիկ – Սլաւական ճիւղ։*

« *Այո՛, մեր հայերէնն է համադաս լեզու մը միւս հնդեւրոպական լեզուաց ճիւղերուն, եւ եթէ համեմատական մանրամասնութեանց իջնենք, կը գտնենք նաեւ այնպիսի հետաքննական օրէնքներ համեմատական լեզուագիտութեան համար, որոնք միւս ճիւղերուն մէջ չեն նշմարուիր։ Ըստ այսմ մեծաւ իրաւամբ կրցան հաստատել նոր – քերականագէտք, թէ հայերէնն՝ իրանեան լեզուներէ անկախ ճիւղ մըն է։ Օրինակի աղագաւ, քննենք Հայր արմ. սեռ. հաւր բառին համեմատութիւնը միւս հնդեւրոպական լեզուաց հետ. հին հնդկ.* pitár. *յուն.* πατήρ. *լտ.* pater. *հին իռլատ.* ather. *գոթ.* fadar, *Գերմ.* vater։ *Ընդհանուր կանոն է հայերենի համար, որ հընդեւրոպակական թ գիրը բառին սկիզբը ձայնաւորէ յառաջ սովորաբար հ. է. այսպէս նաեւ հին բառին մէջ... իսկ հնդեւրոպական... գիրը հայերէնի մէջ երկու ձայնաւորաց մէջտեղը կ'իյնայ։...*

« *Այսպէս գրեթէ ամէն գրի համար հայերէնն իւր ուրիշ օրէնքներն ունի։ Բայց կան նաեւ այնպիսի դէպքեր եւ փոփոխութիւններ, որոնց լուծումն արդի լեզուագիտութիւնը դեռ գտած չէ. սակայն նորանոր հետազօտութիւնք եւ քննութիւնք զանոնք ալ հետզհետէ լուծելու կը ջանան։ Համբաւաւոր Հիւպշման ուսուցչին խօսքն է, թէ հայերէնը պարսկերէնի համար ալ մեծ կարեւորութիւն ունի* »[1]։

1 (Պատկեր, 1892 փետր)։

# ԳՈՂԹԱՆ ԵՐԳԵՐ

---

*Բանաստեղծութիւն՝ առաջին լեզու մարդկային ազգի։ — Անոր հետքն 'ի հինն Հայաստան։ — Գողթան երգիչք։ — Վէպք, վիպասանութիւն։ — Թուելեաց երգք։ — Ինչուան առ մեզ հասած Գողթան երգոց հատուածք։ — Անոնց արուեստը։*

Մարդկային ամենայն գիտութիւնք, ըսած է մատենագիր մը, մթերեալք են 'ի գանձարանս Մուսայից, յորոց ազգ իւրաքանչիւր հանած առած է իր նախնական դրական կրթութիւնն, և անով իրեն համար սկզբնաւորած նորածին քաղաքակրթութեան գարագլուխ մը։ Ազգաց մատենագրութեան մէջ՝ քան զարձակ բան՝ բանաստեղծութեան նախընթաց ըլլալուն պատճառը այս է։ Որփէոսէ ութ հարիւր տարի ետքը, և չորս դար յետ Հոմերի՝ առաջին անգամ արձակ գրութիւն կ'երեւնայ 'ի Յունաստան՝ փռիւգացի գերւոյ մը՝ Եսովպոսի ընծայուած առակներով։ Նոյն ազգին հանճարեղ առասպելք՝ յորս անկենդան և անբան արարածք՝ հեշտալուր և դիւրանսաց կը հռչակուին՝ իրենց նախնի քերթողաց քնարի ձայնին, ժողովրդոց 'ի բարբարոսութենէ 'ի կրթութիւն անցքը կ'ակնարկեն։ Այս պատճառաւ բանաստեղծութիւն՝ բնութեան ձայնն ու խօսք, մարդկային ազգի առաջին լեզուն, անոր սրտին և մտաց բացատրութիւնն սեպուած է։ Այդ սրտի լեզուով, բնութեան ազդեցութեամբք խօսելու համար՝ ամէն անգամ մտաց կրթութիւն և ուսումն հարկաւոր կամ անհրաժեշտ չենթադրուիր, ուր բնութիւնն

*և իր զարմանալիքն են դաստիարակ, շնչող և ուսուցիչ։ Զեփիւռն ունի իրեն համար ձայն մը. գարնան բազմագունեան ու բուրազուարթ ծաղկըներուն վրայէն անցնելով, անոնց 'ի հրապուրիչ գեղոյն և 'ի բուրմանց փոխառնուած խօսք մը. — երկնից կապոյտը՝ ու անկէ անդին, հեռաւորն ու անծանօթ, բայց իրենց սրտին ու մտաց սիրելի ու հաճոյական գաւառ մըն է, ուր կ'ախորժին թափառիլ. զբօսավայր և սփոփարան՝ իրենց հակառակամարտ կրից, յուսոյ՝ ուրախութեան և ցաւոց։ Այդ տարփելի և ակնապարար պարզութեան վրայ՝ յանկնկալս իրարու վրայ խիտ առ խիտ դիզուած ամպեր, անոնցմէ ճայթող ու որոտացող գոռմունք, անոնց վրայէն արագաթռիչ սահող անցնող փայլատակունք, սեաւ ու մըթին գաւառներու մէջ տարածուած ձգուած լուսոյ ճամբաներ, երկնակամարին վրայ վառ 'ի վառ փայլող աստեղք. իբրեւ դշխոյ մը՝ մէջերնին երեւցող լուսնի խաղաղափիւռ և հանդարտասիւք պայծառութիւն, զանոնք ամէնքը՝ խաւարին հետ յերկրէ հալածող վանող ու տիեզերաց վրայ միակ իշխող արեգակն՝ նախընթաց կարապետ ղրկելով զվարդամատն արշալոյս, բնութեան այս ամէն երեւոյթներ՝ ունեցեր են իրենց ազդեցութիւնը՝ քերթողի սիրտ ու հոգի կրող հանճարներու վրայ, և որ բարեբաղդաբար՝ ամէն դարուց, ազգաց և ժամանակաց կը վերաբերին, և անսպառելի բովք են երեւակայութեան և զգացմանց։*

*Յերկնաւոր յանծայր սահմանաց՝ յերկիր որ դառնան աչք, հո՛ն ալ ամենագեղ բնութեան զարմանազուարթ ու հրաշապատում գիրքը բացուած կը գտնեն. անոր ամէն արարչագործ ու արարչապատում առատ ձեռքով ցանած ցրուած գեղեցկութենէն ձայն մը կը լսեն, խօսք մը ազդեցութիւն մը կ'ընդունին սիրտք և զմայլմամբ կը յափշտակին։ Ծով իր անպարագիր ընդարձակութեամբն ու հանդարտութեամբ կը գրաւէ զմիտս. փոթորկալից յուզմամբն և լեռնակուտակ ու փրփրադէզ կոհակօք կը*

զարմացընէ ու կը սասանեցընէ․ վտակք՝ զարնան հեշտալիր համբուրիւ արթնցած ու զուարթացած ու բազմազուարձ բազմաբոյր և բազմատեսակ ծաղկանց ու խոտոց մէջէն բացուած ճամբաներէն խոխոջելով կ՚անցնին՝ անոյշ յիշատակներ արթնցընելով, յաղթ և առատաջուր գետք՝ զիրար բռնաբար մղելով կը հոսին կը թափին զիրենք կլլող ծովուց ընդարձակութեան մէջ․ ծաղկունք իրենց գեղովն ու բուրմամբ, ծառք երկնաբերձ ու սաղարթախիտ ոստերով․ թռչունք զմայլական ու հեշտալուր գեղգեղանօք և ճռուողելով, գազանք վայրենի և ահագնասաստ մռնչմամբ, և այլն․ և ասոնց ամենուն վրայ իշխող մարդս՝ իր բազմարկածեան կենօք, մխիթարութիւն և յոյս սփռող որրանովը, առոյգ ու գեղապատշաճ հասակաւն, յափշտակող ու յափշտակիչ սիրով, մեծութեան՝ փառաց ու զինուց տենչանօքն, իր չուրջը պատած՝ մահուան ու մոռացութեան աշխարհի մը մէջ՝ անմահանուն յիշատակաց փափաքանօք, ու բովանդակ տիեզերօք գոհ չեղող սրտին՝ անպատուհան ու անդուռն վերջին ու մախաղապատ բնակութեամբ, ուր վերջապէս կը լռեն ու դադրին ամէն իղձք և կիրք։

*
* *

Ունէին մերքն՝ ինչպէս ունինք և մեք՝ անկապուտ և ամենանորոգ ժառանգութիւն մը, բնութեան ամենագեղ տեսարաններով զարդարուած հայրենիք․ երկնահերձ և ձիւնագագաթն լերինք, զուարթագեղ բլրակք, հովիտք և ծմակք․ բուրեան և գունագոյն ծաղկունք, առատաջուր դիրք ծիծաղախիտ և հանդարտաքայլ վտակք, ամենազգի բոյլք և սոյլք թռչնոց․ և բնութեան տիրող այդպիսի առատ ձրիւք զարդարուած հողոյն վրայ՝ դիւցազանց դարերուն արժանաւոր պատմութեան մը դրուագք։ Անկարելի է ենթադրել՝ թէ այդ բնութիւն և պատմութիւն՝ անզգայ ու ցուրտ անտարբերութեան մը մէջ ձգած ըլլան զմերսն։

Կրնային Հայք, խիզախք 'ի զէն և 'ի զարդ, քաջայանդուգն և արի 'ի պատերազմունս, որսասէրք և զբօսասէրք, մոռնալ վայրիկ մի զքնար, կամ անոր թելերը հոգեշարժ ձայներն՝ չտալ զայն կարեւորութիւն և յարգ՝ ինչ որ ուրիշ հին կամ Նոր ազգաց քով կը գտնենք, անսիրողք երեւնալով, ինչպէս տեղ մը կ'ակնարկէ Խորենացին «երգարանաց բանաւորաց». բայց անկարելի կ'երեւնայ կարծել՝ նկատելով իրենց քաղաքական ու բարգաւաճ գիրքը, որ ընդհանուր սովորութենէ դուրս և հակառակ՝ երբեմն հանդիստ, զբօսանք և սփոփանք չփընտռէին. կամ երկար արութեամբք խոնջք և պարտասեալ՝ թշնամեաց բազմախուռն բանակաց մէջ փախուստ, սարսափ ու մահ՝ տարածել սփռելէն ետքը՝ զիրենք պաշտպանող վահանին վրայ կռթընած ինկած ատեններն, հայրենեաց գոհութիւնն ու գովութիւն՝ իրենց փափաքելի չըլլար. կամ կողերնէն կախուած՝ արիւնաներկ՝ ու մահուամբ անյագ սրոյն, զինուց ու զարդուց քաջութեանն ու գովեստից անտարբեր գտնուէին։

Պատմութիւն և հատակոտորք ազգային և ինչուան առ մեզ հասած Գողթան երգոց կը հաւաստարմացնեն զայս, սոսկ կարծեաց և ենթադրութեանց անձուկ սահմանէն դուրս հանելով։ Խորենացին շատ անգամ կը յիշէ զանոնք. ու կարծես թէ կերպով մը իր առաջին խօսքը, զոր մէջ բերինք, ետ առնել ուզելով «Առաւել յաճախագոյն, կ'ըսէ, հինքն Արամազնեացն 'ի Նուագս բամբռան և յերգս ցցոց և պարուց զայսոսիկ ասեն յիշատակօք»։ Կը հաւաստարմացընէ և Ագաթանգեղոս. Տրդատ՝ մեր թագաւորաց մէջ՝ 'ի Հռովմ և 'ի հայրենիսն հռչականուն և զարմանալի՝ արութեան հանդիսիւք, ժամանակակից քերթողաց նիւթ տուած է՝ երգօք և առակօք դրուատելու իր քաջութիւնը. «Թագաւորն Տրդատ, — կ'ըսէ պատմիչն, — զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեան աւերէր քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեանն. զաշխարհն ասորեստանի աւերէր, և հարկանէր 'ի հա-

բուածս անհնարինս ։ Վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս 'ի բանս կարգի առակաց թէ իբրեւ զսէգն Տրդատ՝ որ սիգալովն ուերեաց զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ 'ի սիգալ իւրում զյորձանս ծովուց »։ Դարձեալ նա ինքն Ագաթանգեղոս նկարագրելով Տրդատայ ճիգն ու ջանքը 'ի խախտել հրաշագեղն Հռիփսիմեայ երկնախրախոյս ու աստուածահրաշ սրխութիւնը, երբ թագաւորն մտաւ 'ի սենեակն՝ ուր հրաման տուեր էր արգելուլ զՀռիփսիմէ, և արդէն վստահ էր իր յաղթանակին վրայ, կը յաւելու․ « Առ հասարակ մարդիկն՝ ոմանք արտաքոյ ապարանիցն, կէսք 'ի փողոցս 'ի ներքսագոյնսն, առ հասարակ երգս առեալ բարբառեցան կայթիւք վազելով ցուց բարձեալ մարդկանն, կէսք 'ի բերդամիջին և կէսք զքաղաքամէջն լցին խնճոյիւք առ հասարակ․ համարէին հարսանեացն զպարսն պարել և զկաքաւսն յորդորել »։ Բիւզանդ՝ ոչ լոկ հեթանոս Հայաստանի, այլ քրիստոնէութեան դարերուն՝ Լուսաւորչայ և իր որդւոցը ժամանակացը համար կը վկայէ թէ « Դեգերեալ մաչէին... 'ի հնութիւն հեթանոսական սովորութեանց... և զիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեանն սիրեցեալք 'ի փոյթ կրթութեանցն, և նմին հաւատացեալք և 'ի նոյն հանապազորդեալք »։ Վասակայ Սիւնեայ համար ալ կ՚աւանդէ Եղիշէ թէ « Քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտութեան և զերգս հեթանոսականս »։

Այս երգերէն՝ որոց գոյութիւնը պատմական է, դըժբաղդաբար հայկական անգիր մատենագրութիւնը՝ մեզի ուրիշ նշանակութեան արժանի աւանդ մը հասուցած չէ, բայց եթէ քանի մը Գողթ՚ան երգոց հատուածք[1]։

1 Այս հին երգերուն վրայ՝ գրեթէ մի և նոյն ժամանակի մէջ, և առանց իրարու գրուածները տեսնելու, երկու մատենագրութեան արժանի և գիտնական երկասիրութիւնք հրատարակուեցան։ Մէկն է Մկըրտչի Էմին, Մոսկուայի Լազարեանց ճեմարանին ուսուցչի Վէպք Հնոյն Հայաստանի գրուածքը, տպագրեալ 'ի Մոսկուա (1850)․ միւսն Վիեննայի Մխիթարեանց Ուխտին միաբան՝ Գաթըրճեան Հ․ Յովսէ-



Ինչպէս Յունաց մէջ Հանգներգուք, ասանկ ալ Հայաստան ունեցեր է ուրեմն իր երգիչները, և մանաւանդ Գողթան բարեբեր ու գինաւէտ գաւառին մէջ, որք իրենց բանաստեղծական աշխուժովը հին ատենէն 'ի վեր համբաւ առացան։ Այս գաւառը, ինչպէս իրաւամբ կ'անդրադարձնէ մեզի ժամանակակից հմուտ բանասէր մը, անտարակոյս Հայոց Ատտիկէաստանն էր, լեզուի գեղեցկութեան կողմանէ։ Իր բնակչաց քերթողական համեարոյն արգասիքն են այն երգերուն հատակոտորները որ Խորենացւոյն ատենէն մինչեւ առ մեզ իրենց երկրին անուամբը կը յիշուին. յաւիտենական և մեր բանասիրութեան համար սիրելի յիշատակարաններ, իբրեւ Մնացորդք Հայ Աթենէոսի մը մեծագործ շինուածքին, որուն աւերը միշտ ողբալի պիտի ըլլայ[1]։ Ասոնք այլ և այլ ժամանակաց դէպքեր ու անցքեր մեզի յիշատակելնուն համար, այլ և այլ ժամանակ ունեցած են իրենց յօրինմանը։ Զանազան ժամանակ յօրինուած երգեր, տարակոյս չկայ որ զանազան երգիչներ ու հեղինակներ ունեցած են։ Բայց որովհետեւ ասոնց անուանքը՝ պատմութիւնը ինչուան մեզի հասուցած չէ, ուստի և ընդունայն աշխատանք է անոնց բուն հեղինակը փնտռելու համար յոգնիլ։

փայ՝ Հայոց մատենագրութեան պատմութիւնը (Վիեննա, 1851)։ Նոյն տարւոյն մէջ այս երգերուն վրայ հմտական հատուած մ'ալ հրատարակուեցաւ Բազմավէպ Օրագրին մէջ. (1850 դեկտեմբեր, և 1851 յունուար)։ Այս երեք հեղինակաց հետեւութեամբ յօրինած ենք մեր յօդուածը, շատ տեղ ոչ միայն իրենց կարծիքը՝ այլ նաեւ խօսքերնին փոխ առնլով։ 1855ին ուրիշ ազգային բանասէր մ'ալ, Ստ. Պալասանեան հետազննական տեսութիւն մը հրատարակեց Գողթան երգոց վրայ՝ 'ի Պատմութեան Հայոց Դպրութեան (Հատոր Ա. Բանաւոր գրականութիւն), տպագրեալ 'ի Թիֆլիզ։

1 ԱՑՏԸՆԵԱՆ (Հ. Ա. Վ.). Քննական քերականութիւն արդի հայերէն լեզուի։

Սակայն այս երգերուն նիւթը յայտնի կը ցուցնէ որ ոչ քուրմերէ, և ոչ անոնց ազդեցութեան տակ անձինքներէ՝ կրօնական հանդէսներու մէջ կամ բագիններու առջև երգեցուելու համար շինուած են, այլ այնպիսի անձինքներէ յօրինուած՝ որոնց առջև արքունիք անգամ գոց չէն. և թերևս ազատաց ցեղէն վարձուած քերթողներ են, որոնց պարտք սեպուած էր նոյն ցեղին մէջ հռչակուած քաջութեանց և առաքինութեանց գովաբան ըլլալ։

Որչափ ալ ազգերնուս հեթանոսութեանը ժամանակ յօրինուած են այս երգերը, բայց անոնց գործածութիւնը՝ դեռ ինչուան քրիստոնէութեան հինգերորդ դարը կը տեւէր։ Այս կարծեաց ստուգութեան երաշխաւորութիւնը՝ Խորենացւոյն խօսքերուն մէջ ունինք, որ նոյն երգերը մէջ բերելուն ժամանակ միանգամայն կը զրուցէ թէ անոնց գործածութիւնը դեռ եւս կը լսուի Հայոց Գողթան գաւառին բնակչացը քով։ Բիւզանդ ալ՝ չորրորդ դարուն քրիստոնեայ՝ բայց իրեն աստուածաւանդ կրօնիցը հաւատարիմ Հայաստանին համար կը զրուցէ մեղադրանաց խօսքեր զորս յիշեցինք արդէն։ Ինչուան Մագիստրոսի ժամանակ՝ դեռ այս երգոց գործածութիւնը կար. և ինքը մէկ հատուած մը մէջ կը բերէ զոր իր ժամանակին գիւղականացը բերնէն լսած էր։

* * *

Բանաստեղծական քնարը Թէպէտեւ այլ և այլ ձայներ ունի, սակայն մեր ազգին մէջ երեւցած կամ ինչուան առ մեզ աւանդուած երգոց հատակոտորք՝ պարզապէս պատմական երգեր են. և մեր նախնեաց լեզուովը վէպք, վիպասանութիւն, վիպագործութիւն և թուելեաց երգեր կը կոչուին։

Համառօտիւ մը քննենք այս բառերուն նշանակութիւնը։

Էմինեանը՝ և Բազմավէպին մ
գուածին հեղինակն կը համարին
Վիպասանաց կոչածը՝ ամբողջ բա
մըն էր Պարսից Շահ-Նամէ վիպա
և յորում մեր հին ազգային քեր
ւորաց պատմութիւնը աւանդած
սի վեցերորդ դարը՝ այս երգերը
մռնակին մարդկանցը մէջ 'ի կիր
Խորենացին. « Զայս մեզ ստուգա
րում և Պարսից մատեանքն վկա
նաց » : Ուրիշ տեղ մըն ալ. « Ա
բազում ինչ յայտնի են քեզ 'ի վ
մին 'ի Գողթան » : Երրորդ տեղ մ
յայտնի են քեզ յերգս վիպասան
ամենեւին տարակոյս չեն ձգեր,
գեր, և անոնց կիրառութիւնը յա
Խորենացւոյն :

Բայց իրեն պատմութեանը մէ
մէկ քանի մը կտոր բան ըլլալով
ուստի աւելի հաստատութեան հա
րենք Խորենացւոյն գրոց մէկ հա
ամէն տարակոյս վերցուի : Վասն
աշխարհքէն բերուած գերեացը
լէն ետքը կ'աւելցընէ. « Յայտն
և Թուելեացն երգք, զոր պահեցե
լսեմ, մարդիկ կողման գինաւէտ գ
պատմին բանք զԱրտաշիսէ և զոր
լաբանաբար և զզարմիցն Աժդահա
Նոսա կոչելով : Այլ և ճաչ, ասե
'ի պատիւ Արտաշիսի, և խարդաւ
ճարին վիշապաց : Այլ և Արտաւա
քաջի որդւոյն Արտաշրոյ՝ տեղի
նալն Արտաշատու նա անց, ասէ
Մարաց զՄարակերտ, որ է 'ի գ

կոչի Շարուրայ։ Այլ և տենչայ, ասեն, Սաթենիկ տիկին տենչանս՝ զարտախուր խաւարտ և զտից խաւարծի 'ի բարձիցն Արգաւանայ »։

Խորենացւոյն այս հատուածին մէջ՝ այլ և այլ գործողութեանց յիշատակութիւնք կան, որոնք այլ և այլ անձանց և ժամանակներու կը վերաբերին։ Հօ՛ն Աժդահակայ Անոյշ կնիկը և անոնց սերունդքը կը յիշատակուին, որոնք ինչպէս յայտնի է՝ Քրիստոսի Թուականէն գրեթէ վեց դար առաջ կ'իյնան. կը յիշատակուի Արգաւան Մեդացի՝ որ Արտաշիսի պատուոյն համար ճաշ մը տուաւ, և միտք ունէր այն ճաշուն ժամանակ՝ դաւաճանութեամբ դարանիլ անոր կենացը։ Առջի դէպքին և ասոր մէջ՝ գրեթէ եօթն հարիւր տարւոյ տարբերութիւն կայ։ Կը յիշուի Արտաշիսի Արտաւազդ որդին, ու նոյն Թագաւորին Սաթենիկ կնկան վրայ զրոյցք կ'ըլլան։

Այսչափ իրարմէ հեռու ժամանակաց և անձանց պատմութիւնները ամփոփող երգերը՝ տարակոյս չկայ որ չէին կրնար համառօտ բաներ ըլլալ։ Ասիկայ որչափ ալ ենթադրուած ճշմարտութիւն մը սեպուի, սակայն ճշմարտանման ըլլալովը՝ իրաւամբ քննութեան առիթ եղած, ու գրեթէ ստոյգ սեպուած է։

Գողթան երգչաց պատառիկ մ'է առ Խորենացւոյն յիշատակուած Ուլունքն Շամիրամայ ի ծով։ Այս համառօտ խօսքին պատմութիւնը կը թուի ինչուան հիմա Արտամէդ քաղաքի բնակչաց քով պահուած հետեւեալ աւանդութիւնը։ Շամիրամ՝ ասորեստանեայց հզօր և մեղկաղէտ թագուհին Արայի հետ ունեցած սիրային անյաջող կռուէն ետքը, Արտամէդի բուրաստան հովանոցաց մէջ կը ջանար դարմանել իր սրտին վէրքերը։ Այն յուլունքով զոր իբրև մանեակ սովոր էր կրել պարանոցին վրայ իբրու կախարդական զօրութեամբ՝ հետամուտ էր հրապուրել ու մոլորեցնել հայ երիտասարդութիւնը։ Հայոց ծերունի նահապետներէն մէկը՝ մտածեց զինաթափ ընել երիտասարդները դիւթելու հնարքներէն։ Թա-

գուհին օր մը կը լոգանար իր բ
աւազանին մէջ։ Իր հագուստը,
գական յուլունք դրուած էին
նեաց հովանւոյն տակ, կանաչ
րամ՝ իր գլխակաց երկար հիւ
տրուէր։ Այն միջոցին գաղտագո
հապետը, և իմանալով թէ թա
բոլոր գաղտնիքը յուլունից մէջ է
նեակը, և սկսաւ փախչիլ դէպ
գուհին՝ այնպէս հերարձակ վազ
Երբ չկարողացաւ հասնել, իր ա
մէջ՝ խլեց ահագին քարաժայռ
գերուն պարսատիկի ձեւ տալով
և նետեց ծերունւոյն ետեւէն։ Ծ
նելով ընդարձակ տարածութիւն
փոսի մը մէջ։ Ծերունին հասաւ
գերքը, ձգեց ծովուն մէջ կախարդ
կիրը ազատեց հեշտասէր թագ
Արտամէդի երգիչները երգ յօրի
քերէն են՝ Խորենացւոյ յիշած

* *
*

Երկու տեսակ ազգային պատ
մանք վիպասանաց երգք կը կ
թուելեաց։ Ասոնք այլ և այլ տե
կելով, ոչ միայն մեր երկրին՝ ա
սից և Ասորեստանեայց աշխար
թիւններ կը բովանդակէին։
Անոնց մէջ առաջին կը սեպո
մէջ մեր քաջ թագաւորաց ու գ
նշանաւոր գործոց յիշատակու

1 Րաֆֆի, Կայծեր Բ. 408։

այն երգերը՝ յորս Մարաց և Պարսից վրայ խօսք կ'ըլլայ․ և երրորդ՝ անոնք՝ որոց մէջ Ասորեստանեայց աւանդութիւնները տեսնուին։

Առաջիններուն կարգէն կրնանք սեպել՝ նաև հմտագոյն քննադատից կարծեօք՝ մեր հին նախնեաց վրայ պատմողաբար մեզի աւանդուած․ դէպքերը, թէպէտ և տանց յիշատակութեան․ Գողթան երգչաց, Խորենացւոյն առաջին գրոց մէջ, Երուանդեան Տիգրանայ վրայ երգուածները, որ Հայկազն Թագաւորաց մէջ ամենէն աւելի սիրելագոյնն էր, ու ոչ միայն արտաքին ու ներքին բարեմասնութեամբք՝ այլ և իր քաջութիւններովն իր ժամանակին ազգային քերթողացը երգերուն և աշխուժին առիթ տուած։ Խորենացին՝ որ նոյն Թագաւորին վրայ սքանչացողներէն մէկն է, կը պատմէ անոր ձեռքով Հայաստանի մէջ եղած տեսակ տեսակ բարեկարգութիւնները, Յունաց ազգը հարկատու ընելը, Աժդահակայ հետ խնամենալը, ու ետքը անոր դէմ պատերազմիլը․ զինքն սպաննելը, ու բոլոր Թագաւորական ընտանիքը գերելով՝ Երասխ գետին քով բնակեցընելը զանոնք, մասնաւոր քաղաքներ ու տեղեր տալով անոնց։ Այս տեսակ տեսակ դիպուածոց վրայ իրենց քնարը նուիրած են Գողթան երգիչները․ որոց բանաստեղծութեան համառօտութիւնն է զոր Խորենացին մէջ կը բերէ․ «Զայս՝ և որ այլ այսպիսիք բազումք՝ եթէ մերոյ աշխարհիս խարտեաշս այս և աղերեկ ծայրիւ հերաց Երուանդեանս Տիգրան․ երեսօք գունեան և մեղուակն, անձնեայն և թիկնաւէտն, առոյգաբարձն և գեղեցկոտն, պարկեշտն 'ի կերակուրս և յըմպելիս և 'ի խրախճանութիւնս օրինաւոր․ զորմէ առէին 'ի հինսն մեր որք բամբռամբ երգէին, լինել սմա և 'ի ցանկութիւնս մարմնոյ չափաւոր․ մեծիմաստն և պերճաբան, և յամենայն որ ինչ մարդկութեան պիտանի... Արդարադատ և հաւասարասէր կշիռս ունելով յամենայնի, զամենայն ուրուք կենցաղ մտացն լծակաւ կշռէր։ Ոչ ընդ լաւագոյնսն խանդայր, և ոչ զնուաստսն արհա-

մարշէր. այլ ամենեցուն համարակայ
խուրց 'ի վերայ տարածել զգեստ »

Պատմութիւնը կ'աւանդէ թէ Եր
երեք որդիք ունեցաւ, Բաբ, Տիգրա
ատոնց մէջ ամենէն հռչակաւորը իր
Վահագն. և իր արութեանցը վրայ
տան աշխարհը և անոր դրացին Վր
կարգը դասեցին զինքը: Գողթան եր
տակին ընծայած գովաբանութիւննե
ղերը պահած է Խորենացին.

« Երկնէր երկին եւ երկիր,
Երկնէր եւ ծիրանի ծով.
Երկն ի ծովուն ունէր զկար
Ընդ եղեգան փող՝ ծուխ ել
Ընդ եղեգան փող՝ բոց ելան
Եւ ի բոցոյն պատանեկիկ վ
Նա հուր հեր ունէր.
Ապա թէ բոց ունէր մօրու
Եւ աչկունքն էին արեգակն

Այս երգը՝ իր ամբողջովը լսած է նոյ
ինչպէս պատմութեանը մէջ կ'աւանդ
կաւ կրօսերագոյն և հաւատարմութ
տենագիր մ'ալ, Յովհան պատմիչ
կը վկայէ վասն Վահագնի թէ « Ի
բախս ընդ վիշապաց համբաւէին կ
Վահագնէն ետքը՝ Գողթան երգող
թողական ոգւոյն առիթ տուած է Ար
ու սիրելի թագաւորին կենաց այլ և
առատ նիւթ կրնային մատակարարել
ալ մատակարարած են նոյն ազգայի
տեւեալ տողերը՝ պատառիկ կրնան
թուածոց, և որոնք մասունք են անշու
գրուած գեղեցիկ երկասիրութեան մ

« Հեծաւ արի արքայն Արտաշէս
Ի սեաւն գեղեցիկ.
Եւ հանեալ զոսկէօղ
Շիկափոկ պարանն,
Եւ անցեալ՝ որպէս զարծուի
Սրաթեւ՝ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ
Շիկափոկ պարանն,
Ընկէց ի մէջք
Օրիորդին Ալանաց.
Եւ շատ ցաւեցոյց
Զմէջք փափուկ օրիորդին,
Արագ հասուցեալ
Ի բանակն իւր »։

Այս գեղեցիկ ու ընտիր երգը՝ բանաստեղծական այլաբանութիւն մըն է այն դէպքին՝ զոր Խորենացին իր Պատմութեան գրոցը մէջ կ'աւանդէ։ Արտաշէս հասաւ իր փափաքին. Ալանաց աչագեղ դուստրը՝ Սաթենիկ, որ իր երեսաց վայելչութեամբը՝ արիւնուշտ պատերազմաց մէջ գրաւեր էր քաջին Արտաշիսի սիրտը, Հայաստանի թագուհի եղաւ. ու արքային՝ իր սիրոյն ու մեծութեանը և հարստութեան արժանի հարսնիք մը ընել տուաւ անոր պատուոյն։ Այս մեր խօսքին հաւատարիմ վկայութիւն են Գողթան երգողաց հետեւեալ տողերն.

« Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն »։

Սակայն այսչափ փառքով, ու մարգրտի ու ոսկւոյ վըրայ կոխելով Արտաշիսի արքունիքը մտնող Սաթենիկը՝ նոյն արքունեաց մէջ միշտ բարեբաստութիւն չկրցաւ գըտնել, ու ինչպէս պատմութենէն կ'երեւնայ, իր հասակը, գեղեցկութիւնն ու բարքը այլ և այլ հակառակամարտ կրից խաղալիկ եղան։ Իր քաջութեամբ մերձակայ ու դըրացի ազգաց սրտին մէջ վախ ձգող Արտաշէսը՝ չկրցաւ իր արքունեացը մէջ եղած խռովութեանց դէմ առնուլ։

Նոյն ինքն Սաթենիկ՝ աւելի իր նե
պարտուցը հնազանդելով, իր փեսա
տաշխէն դուրս անձի 'ի խնդիր ե
մայ, թէ զԱրտաշէս թագաւոր և ի
խանձորդ ու թշնամի կը յարուցան
ձին՝ հապա նաեւ Արգամայ. ու մ
աւ՝ բոլոր ալքունեաց և աշխարհին ի
ուվրայ կ'ըլլար։ Անշուշտ այս կիր
կէին՝ վիպասանաց երգերէն մնաց

« Տենչայ Սաթինիկ տիկին
Զարտախոյր խաւարտ եւ
Ի բարձիցն Արգաւան

Այս երգին մէջ յիշուած Արգաւ
գամ, որ իր իմաստութեանն ու ք
Հայոց թագաւորներուն երկրորդը ա
մէ այլ և այլ պատիւներով և ար
ռաւորուած։ Ասիկայ օր մը զթագաւ
նոցը հրաւիրեց. և այն ուրախութ
ռիթ կարծուելով սպաննուեցաւ
հրամանով տունը տեղը այրեցաւ,
ջուեցան։

Արտաշէս՝ Մարաց ազգին զօրո
եռքը, Հռովմայեցւոց հարկ տալ
տիանոս կայսրն ալ զօրք ժողվելո
Բասեն գաւառին հովտացը մէջ եր
րու զարնուեցան. և յաղթութեան
ժառանգեցին։ Այն պատերազմին
նուանի հանդիսացաւ Սմբատ, որո
Խորենացին, թէ ծերութեանը հա
մական արուեստին մատուցած երկ
« երիտասարդապէս յարդարեաց ե
Ասանկ քաջ պատերազմող մը իր

տին՝ արժանի դրուատանքը գտած էր ազգային երգոց մէջ, որոնք զարմանքով կը յիշատակէին իր տուած պատերազմունքը, ու հնացեալ հասակին մէջ՝ նոր զէնքերով Հայաստանի փրկութեան առիթ ըլլալը։

Մահը՝ որ աշխարհի տեսարանաց մէջ ամենուն վարագոյրը կը գոցէ, Արտաշիսի բազմափորձ կենաց տեսարանն ալ պիտի գոցէր։ Վերջին անգամ աչուըները փակելուն ժամանակ՝ դեռ եւս կարօտ կը քաշէր իւր հայրենեացը. կը փափաքէր կրկին տեսնել իր հայրենեաց վայելչութիւնը, ու այս սրտառուչ տողերը կ՚արտասանէր, զոր Մագիստրոս իր ժամանակակիցացը բերնէն լըսած է, և որ հնութեան ամէն հետքը կը կրէ իր վրան.

« Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի
Եւ զառաւօտն նաւասարդի.
Զվազելն եղանց եւ զվազելն եղջերուաց.
Մեք փող հարուաք եւ թմբկի հարկանէաք »։

Այանկ մեռաւ Արտաշէս։ Սակայն իր քաջութեանցն ու հայրենասիրական ջանից երախտապարտ երեւցաւ Հայաստան։ Աննման թագաւորին մահը աղի արտասուաց լալէն ետքը, շատերը ժամանակին հեթանոսական սովորութեանը համեմատ չուզեցին իրմէն բաժնուիլ նաեւ 'ի մահուանն. ու ողջ ողջ ինքզինքնին կը թաղէին։ Արտաշիսին Արտաւազդ որդին՝ որ հօրը յուղակաւորութեան ներկայ էր, ու ետքը անոր թագաւորական աթոռը պիտի ժառանգէր, հօրը եղած այսչափ փառաց ու պատուոյն վրայ նախանձեցաւ. անոր դիականացեալ մարմնոյն ընծայուած պատիւն իրեն իշխանութեանը պզտիկութիւն մը ենթադրեց, ու դժկամակելով մը ըսաւ հօրը.

« Մինչ դու գնացեր, եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար
Ես աւերակացս ո՞րպէս թագաւորեմ »։

Այս նախանձու արգասիք խօսքերուն վրայ նեղանալով Արտաշէս՝ անիծեց զինքն ու ըսաւ.

« Դու յորս հեծցիս յԱզատ ի վեր ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք, տարցին յԱզատ ի վեր ի Մասիս.
Անդ կայցես, եւ զլոյս մի՛ տեսցես »։

Աս անէծքին հետեւանք կը սեպուին Արտաւազդայ մահուան պարագաները, զոր աւանդած է մեզի պատմութիւնը։

Արտաւազդայ ոչ միայն մահը՝ այլ նաեւ ծնունդն ալ առասպելեօք լի կը ներկայացընեն մեզի Գողթան երգիչք։ Անոր անհանդարտ ու խռովայոյզ բարքը տեսնելով, որ անարժան էր արքունեաց, և մանաւանդ Արտաշիսի արքունեացը, այլաբանելով կը գրուցէին թէ «Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ, և դեւ փոխանակ եդին»։

Կարծես թէ Արտաւազդայ կենաց այլ և այլ հանգամանքը՝ կ'արդարացընեն վիպասանից այս քերթողական ենթադրութիւնը։ Իր անձնահաճ ու նախանձոտ բարքովը բոլոր թագաւորական տունը տակնուվրայ ըրաւ. հօրը սիրտը ցրտացուց յԱրգամայ, ու անոր պատիւը ինքը յափշտակեց, թագաւորութեան երկրորդական աթոռը։ Նախանձեցաւ նաև Սմբատ սպարապետին վրայ, ու անոր տրուած արժանաւոր պատուոյն չկարենալով համբերել, ետեւէ եղաւ զինքն սպաննելու. բայց իրեն վախճանին չկրաւ հասնիլ։ Վասն զի Սմբատ իմանալով անոր միտքը, թողուց Հայոց սպարապետութիւնը, ու Ասորեստանեայց կողմերը գնաց իր բնակութիւնը հաստատելու։

Այսպիսի բարուց տէր Արտաւազդը՝ չկրցաւ երկար ատեն վայելել իր թագաւորական իշխանութիւնը։ Երկու տարիէն ետքը Մասիս լերան վրայ, որսալու ժամանակ՝ մեծ ու խոր վհի մը մէջ ինկաւ։ Առասպելն ու երեւակայութիւնը՝ իրենց ատելի թագաւորին անակնկալ կորուստը ուրիշ կերպով մեկնաբանելով, գրուցեցին թէ Արտաշիսի անէծքը՝ որդւոյն վրայ իրենց արդիւնքն ունեցան. վասն զի ազատ Մասեաց քաջերը հասան, բռնեցին,

*ու երկթի շղթաներով կապկըպելով, այրի մը մէջ փակեցին զինքը. միայն իր երկու հաւատարիմ շները չկըրցան բաժնուիլ իրմէն. այլ միշտ շղթաները կը կրծեն, զանիկայ բանտէն ազատելու համար։*

*Գողթան երգողաց հատուածներէն է նաև հետևեալ երգը Վարդգեսի վրայ երգուած, որ առաջին Տիգրանայ քեռայրն էր, Արտիմէդ քաղաքին շինուածքին համար։*

« Հասուած գնացեալ Վարդգէս մանուկն ի Տուհաց գաւառէն
ըզԹուխաղ գետով,
Եկեալ նըստեալ զՇրեշ բըլրով, զԱրտիմէդ քաղաքաւ, ըզԹուխաղ
գետով,
Կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի »։

*
* *

*Ասոնք են աՀաւասիկ այն սակաւիկ՝ բայց մտադրութեան արժանի Գողթան երգողաց հատուածներն. զորս Խորենացի աւանդած է մեզի իր ընտիր պատմական երկասիրութեամբը։*

*Յանասիրաց հետաքննութեան համար հետագայ հատուածները մէջ կը բերենք, որոնք Ստեփանոսի Ռոշքեան բառարանէն քաղուած են, և հին մատենագրաց, կամ իրեն ձեռքն հասած պատմագրաց մնացորդք կ'երևին։*

Հայկ և Բէլ. « Անցոյց ուժովն զԲէլ՝ Հայկն. Գմ. Հայ
Խուռն և խռովարար հոսէին զօրք նորա ընդդէմ Հայկայ.
Իսկ քաջն Հայկ մեծարարապէս պատասխանի. Յոհ. դփ. Ա.
Առ քաջն Հայկ յուսադրաբար զայս ասելով. »
Հեծելոյն արութեամբ առ Բէլն հասին. »
Ջանայր Բէլ անդաշարժել զՀայկ. »
Օգնեալ Հայկայ զԲէլ՝ զայլսն տարամերժեաց. »
Ներքոյ նիւսածոյ Թագիւ պատկեալ և ոչ կռածոյ. »
Մեհենական տաճար. Ասայ զդուշանայրն գրեանս առ խոցն ածել. Գրմ.
Բառամբ ի քրմարանն մեհեայս հանեին զքուրմն զայն արտաքս.
(Խոր. Գրմ. Ա.)։

Կացուցանէ ապաւէնս և գահաւորս և

(Յհ. -

Նախնիքն մեր հմայութեամբ յոյժ ախ
Հրաման ետ քրմական պաշտօնէիցն
Շ-ժր-մ. Ցամառնական եղանակս յԱմա

ի գեօ

Սամերամ զամենաբեր բուրաստան տնկ
Սամերամ պատեաց զԲաբելոն ամենամե
Սամերամ զի պագշոտեցաւ ընդ յոլովս

յորդւոցն

Վարուորն Շամիրամ չինէ զաւանն:
Ս-ֆ--տ. Էր ազատ իշխանորդին և խնդրէր զ
Արշակայ ազդեալ Սմբատ զգալն Հռոմա
Սմբատայ ակնարկեալ առ ապարապեան Հ
Դարձաւ Շմբատ յետս մեծաւ ամաչմամբ
Անվեհերաբար Սմբատ զինքն առաքել զեւ
Սմբատ հրամայէ արկղապանին չալ զան
Սմբատ երաշխաւորս վասն դարձուցանելոյ զ
Սմբատ զմեծազին զերեքանկեայն այլ զմ
Յոյժ ծախական եղեն հարսանիք Սմբատայ
Մեծարոյին Սմբատայ տեսեալ զբազմութ

կանեաց:

Սմբատ էր ճշմարտասէր:
Սմբատ յորդաբար տայր պարգևս նախարար
Ամենեցուն պատուելի եղեւ Սմբատ:
Սմբատ առանց վիրաւորութեան ել ի մարտէ
Վ-ղ-րշ-կ. Նախարարաց անուանագիրն Վաղար
Մերս Վաղարշակ զերահաստն ի կարգս թա
Խոսպոպեւորս առնէ զնոսա Վաղարշակ.
Վաղարշակ մեծն քաղաքավարապէս ընդ ամեն
Վաղարշակ պատեաց զՎարդգէս աւան և պա

պատ կոչեաց:

Ար--. Նա ի խմբման պատերազմին քաջն Արա չա
Ապա գեղեցիկն Արա պատգամաւորէ զզօրավար
ԶԱրամ գեղգեղ առեն լեալ:
Իսկ Արամազդայ Աւարչի տաճարն լեալ ընթեր
Արշ-կ. Արշակայ ազդեալ Սմբատ զգալն Հռոմայ
Արշակ թուլասրտաբար զթագաւորութիւն իւր
Հրովարտակ զեկուցական հանէ Արշակ:
Արշակ քղամդազգեաց յահեղ նստեալ առենի:
Տայ հրաման Արշակ հաշուարարին իւրում տալ զօր

Տիգրան զանհնարեալ եղեւ հայր։

Տիգրան Բ. ԶԱրտաշիսի յաղթութիւնն առնու Տիգրան.
Արքայն Տիգրան զնախարարսն յԱրտաշատ համակոչեաց։

Տրդատ. Ագանակերպն Տրդատ վեհագոյն այլոց զօրաւ։
Խօսէին երկիւղաբար ընդ Տրդատայ.
Ցարանձնեսցի փառք արքայիս Տրդատայ ցյաւիտեան։
Սաստանելի էր ամենեցուն Տրդատ.
Տիկինն Աշխէն զամենեսեան մայրենական սիրով ընդունէր։

* * *

Քննենք ասոնց արուեստը։

Տարակոյս չկայ որ ասոնք արձակ գրութիւններ չեն. բայց միանգամայն-և ոչ այն չափը ունին՝ որ ընդհանրապէս մեր շատ քերթող հեղինակաց յատուկ էր ու գործածական։ Ոչ յունական կամ լատինական արուեստին հետեւած են մեր երգիչքը, որուն թերեւս ծանօթութիւն ալ չունէին, և ոչ պարսիկ կամ արաբացի նմանաձայն չափուն՝ որ դեռ երևցած չէր. այլ հին ազգաց մէջ գործածական համեմատութեամբ ու թուականութեամբ վարուած, իրենց այս երգերուն մէջ։ Ասանկ են ընդհանրապէս Եբրայեցւոց բանաստեղծական աքանչելի հատուածներն՝ որ սուրբ գրոց մէջ կը տեսնուին։ Եւ թէ որ այս երկու ազգաց մէջ ինչուան հիմայ մնացած բանաստեղծական հատուածները քննութեան առնունք, խիստ մեծ նմանութիւն մը կը տեսնենք արուեստի. այն արուեստին՝ զոր բնութիւնը սորվեցուցած է այս ազգերուն։ Անոնց քերթուածոցը մէջ գործածուած չափականութիւնն ու համեմատութիւնը կը տեսնուի նաև մեր քերթողաց երգերուն մէջ։ Մեր այս խօսքին ապացոյցը յայտնապէս պիտի նկատենք եթէ ուզենանք այս երկու ազգացմէ մնացած բանաստեղծական հատուածները իրարու հետ համեմատել։ Պիտի լսենք մեր Գողթան երգերը որ կը գրուցեն.

« Երկնէր երկին եւ երկիր,
Երկնէր եւ ծիրանի ծով...
Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող՝ բոց ելանէր ».

ու զիսրայելացիս՝ որ կարմիր ծովուն վտանգէն ազատած, թմբուկներով ու պարերով կ'երգեն.

« Աջ քոյ, տէր, փառաւորեալ է զօրութեամբ իւրով.
Աջ քոյ տէր խորտակեաց զթշնամին...
Գաղեցան որպէս պարիսպք՝ ջուրք,
Գաղեցան ալիք ի մէջ ծովուն »:

Դարձեալ Դեբովրայ օրհնութեանը մէջ.

« Տէր, յելանել քոյ ի Սէիրայ,
Եւ ի չուել քում յանդաստանացն Եդովմայ,
Երկիր շարժեցաւ, եւ երկինք խառնեցան.
Լերինք շարժեցան յերեսաց Տեառն Եղովայ Սինայի,
Յերեսաց Տեառն Աստուծոյ Իսրայելի »: —
« Կապուտ երանգացն Սիսարայ,
Կապոյտ երանգոյն գոյնագոյն նկարուց,
Նարօտ պէսպէս նկարուց,
Այն էր պարանոցին նորա կապուտ »:

Այս երգոցը չափուն մէջ թէպէտ և կատարեալ ազատութիւն մը կը տեսնուի, բայց տարակոյս չկայ որ այն ազատութիւնն ալ իր քերթողական չափուն մէջ մնալու համար սահման մը ունեցաւ, որ մեզի համար դեռ բացայայտ չէ:

* * *

Թէ Գողթան երգիչք՝ ունեցան իրենց յաջորդքը, ոչ լոկ ենթադրութիւն, այլ և պատմութիւն կը հաւաստարմացընէ, այլ և այլ հատուածք հասուցանելով առ մեզ, և որ աւելի կարևորութիւն կ'առնու նոր մատենագրու-

թեան յաճախ բերանացի աւանդիւք ինչուան առ մեզ եկած ժողովրդային բանաստեղծութեամբ։ Ասոնց վրայ խօսիլը՝ աւելի նոր մատենագրութեան կը վերաբերի։ Ի հնոց յիշենք հատուած մը զոր կը գտնենք առ Յովհաննու Մամիկոնեան պատմչի, հետաքննական յինքեան բայց առաւել ունենալու Գողթան երգոց իմաստից և ոճոյ բարձրութիւնն և լեզուի գեղեցկութիւն.

« Կերան գազանք զմարմինս զիւականցն Վարդգայ, և զիւրայցն.
Կուզ կերեալ, ուսաւ որպէս զարջ.
Աղուէս՝ հպարտ եղեւ քան զառիւծ:
Գայլ՝ քանզի չասատակեր էր պայթեաց.
Եւ արջ՝ քանզի զոր ուտէին չմնայ առ ինքն, ի սովու մեռաւ:
Անգեղք՝ քանզի ագահք էին՝ նստան և այլ ոչ կարացին վերանալ.
Մկունք քանզի շատ կրեցին ի ծակսն ոտքն մաշեցան »:

# ԳՐԱԻՈՐ

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ



## ՄԱՐԻԲԱՍ ԿԱՏԻՆԱ[1]

(149 Քրիստոսէ առաջ)։

*Քաղդէացիք։ — Նաբատեան մատենագրութիւն։ — Վաղարշակ 'ի Հայաստան։ — Մարիբաս կատինա։ — Արքունի հրամանաւ և յանձնարարութեամբ երթն 'ի Նինուէ։ — Նինուէի մատենադարանաց մէջ գտած գիւտը։ — Իր պատմական գրուածքը՝ ըստ Խորենացւոյն։ — Անոր սկզբնաւորութիւնն և քանի մը հատուածք։ — Բանասիրաց հակառակամարտ կարծիք նկատմամբ մարիբասեան գրոց և իր անձին։ — Գաղղիական թարգմանութիւնն իր գրոցը։*

Հին աշխարհի պատմութեանց մէջ՝ Բաբելոն մտաւորական զարգացման յառաջադէմ կեդրոն մը սեպուած էր։ Արիական տոհմէ սկզբնաւորութիւն ունեցող ժողովուրդ մը, բաժնուելով յիրանեանց, և Նաքսինեան Գոն-

1. Թէ տառերն և թէ մանաւանդ գրուածքիս երկրորդ մասին մէջ տեղի ուզեր ենք պահպանողական երեւնալ, առանց ուզելու մտադրութիւն ընել նոր երեւցած երկասիրութեանց։ Պատճառը յառաջաբանին մէջ ուզեր կամ կարծեր ենք գրուցել. նշանակելով նաև այն գրուածոց անուանք և հեղինակները։

տուի միջերկրեայ ափանց վրայ եղող խաղտեաց լեռներէն իջնելով. գաղթական գնացեր էր 'ի կողմանս Եփրատայ և Տիգրիսի, և այնպիսի դիպաց ու արկածից շարայարութեամբ՝ որ պատմութեան մէջ անծանօթ մնացած են, յաջողեր էր տիրապետել Բաբելոնի՝ ութերորդ դարուն սկիզբներն, յառաջ քան զհասարակաց կամ զքրիստոսական Թուաբերութիւն։ Այս ժողովուրդը՝ որուն Հեբրայեցիք կամ աստուածաշունչ գիրք և յունական մատեանք Քաղդէացւոց անունը կու տան, ըստ Հեբրայեցւոց զինուորական ժողովուրդ մ'էին, իսկ ըստ Յունաց կամ Հերոդոտեայ՝ քրմական ցեղ մը և յետոյ նաև իմաստնոյ անուն ժառանգող ազգ մը։ Այս յետին կարծեաց ստուգութեան հաւատարիմ երաշխաւորութիւն մ'է նաև Դանիելի մարգարէութեան գիրքը։

Ե՞րբ սկսան ծաղկիլ ուսմունք և գիտութիւն Քաղդէացւոց մէջ։ — Իրենց պատմութեան հնութիւնը՝ անլուծանելի ըրած է մեզի համար այս հարցման պատասխանն։ Այս միայն կրնայ հաւանական ենթադրուիլ թէ Քրիստոսէ շատ յառաջ Քաղդէաստանի մէջ, բաց 'ի Հրէից յօրինուած գրքերէ, և Քրիստոսէ ետքը՝ 'ի քրիստոնէից շարադրուած ասորի մատեաններէ, արամէական՝ հեթանոսական և արտաքին ընդարձակատարր մատենագրութիւն մ'ալ կար, որ բոլորովին կորսուած է։

Արդի հնախօսական գիտութեան մեծ ջանքն և պարապմունք եղած է, այս անհետացեալ դպրութեան հետքը փնտռել. և բանասիրութիւնն յաջողած է՝ կարևոր հատուածներ 'ի լոյս հանել՝ իրենցմէ ետքը և համեմատութեամբ նորագոյն սերուած մատենագրութեանց մէջ. և 'ի մասնաւորի՝ Սաբէացւոց, Արաբաց, Ասորւոց և Հայոց մատենագրութեանց մէջ։

Այս դպրութիւն՝ որուն Յոյնք քաղդէական անունը տուած են, և սկզբնաւորութիւնն 'ի Բաբելոն, և երկար դարեր յառաջադիմութիւնն եղած է յարևմտեանն Ասիա, համանման էր անշուշտ այն մտաւոր մշակութեան՝ զոր

Արաբացիք Նաբատեանց կ'ընծայէին, նոյն սեպելով զանոնք Քաղդէացւոց և Բաբելացւոց հետ։ Եւ յիրաւի Նաբատեանք, եթէ Արաբացւոց մեզի տուած նկարագրին հետեւինք, հռչականուն ժողովուրդ մը եղած են յերկրագործութեան, 'ի բժշկութեան և 'ի մոգութեան. և ասոնք բնակիչք են Քաղդէաստանի։

* * *

Այս Նաբատեան կամ Քաղդէական կոչուած մատենագրութենէն քիչ բան հասած է առ մեզ։ Բայց Արաբաց, Յունաց և Լատինացւոց՝ քաղդէական մատենագրութեան վրայ մեզի տուած տեղեկութիւններէն զատ, ուրիշ ժողովրդոց քով կը գտնենք ամենայայտնի յիշատակութիւնք քաղդէական գրոց, և զորս չեն տարակուսիր հմուտք Նաբատեան հանճարոյ և գիտութեան վերագրել։ Բերոսոս, Բարդածան և Մովսէս Խորենացի, արևելեան երեք զանազան ազգութեանց վերաբերող անձինք, իրենց գրուածոցը մէջ կը յիշեն 'յաճախ քաղդէական մատենագրութեան վերաբերեալ գրուածներ. որոնք թէպէտ երբեմն խարդախեալ կամ անհարազատք. սակայն անտարակոյս կոտորակք են այն ուսումնական մտաւոր մշակութեան որ հին դարերէն մինչև քրիստոնէութեան մերձաւոր ժամանակներն արևմտեան Ասիոյ մէջ մեծ պայծառութիւն, և կարգէ դուրս ազդեցութիւն ունեցաւ յոյն և հռովմէական աշխարհին ուսումնական զարգացման վրայ։

Քաղդէական կամ Նաբատեան մատենագրութիւնն յերկարակեաց եղաւ քան զմեծ իշխանութիւնն՝ որոյ մէջ ծնած և զարգացած էր։ Ի Բաբելոնէ տարածեցաւ մինչև 'ի Միջագետս, ուստի ծաւալեցաւ յարևմուտս։ Քրիստոնէութիւնն՝ որ իմաստասիրական և կրօնական հին մոլար վարդապետութեանց ընդդիմամարտ մաքառելու գործն ու պաշտօն ունէր, առանց ուզելու բոլորովին փճացընել

*քաղդէական մատենագրութեան ազդեցութիւնն, գըլ-
խաւոր պատճառ մը եղաւ անոր կերպարանափոխութեանն
'ի Միջագետս՝ արամէական ժողովրդոց մէջ, նոր մա-
տենագրութեան մը՝ ասորականին երևնալուն։ « Զար-
մանալի է մեզ համար, կ'ըսէ Րընան, որ մէկէնիմէկ
նախընթաց չունեցող մատենագրութիւն մը երևան ելլէ.
մինչդեռ անկէ հնագոյն ազգային գրականութեան մը
աւանդութիւնն չկայ. բայց այս յանկարծական երևման
պատճառած զարմանքն ուրիշ բանի արդիւնք չէ՝ բայց
եթէ մեր տգիտութեանն հին արամէական գիտութեանց
վրայ »։ Բաց աստի՝ լեզուաքննական հետազօտութիւնք
ասորական լեզուն՝ նաբատեան բարբառոյն քրիստոնէա-
կան շարունակութիւնն կը համարին. և Բարդածանի վրայ
ունեցած տեղեկութիւննիս և անոր գրուածներէն մինչև
առ մեզ հասած քանի մը հատուածք՝ յայտնապէս կը
հաւատարմացընեն թէ այս գնոստիկեանն՝ քաղդէական
դպրոցի աշակերտ էր. և որուն հակառակամարտ ախո-
յեան եղաւ սուրբն Եփրեմ՝ Եդեսիոյ քրիստոնէական
դպրոցին փառաւոր ներկայացուցիչը։*

*Այս նախկարան տեղեկութիւնք հարկաւոր էին լաւ
հասկըցընելու համար այն կապը զոր քաղդէական մա-
տենագրութիւնը՝ ասորա–քրիստոնէականին հետ ունի.
և ընթերցողին մտադրութիւնն դարձնելու այն ազդեցու-
թեան վրայ՝ զոր ասորի մատենագրութիւնն պիտի բա-
նեցընէր՝ իրեն դրացի Հայոց վրայ, որք ժամանակ մը
Ոսրոենաց իշխանութեան տակ 'ի մի ձուլուած էին։ Ե-
դեսիա՝ որ այն կէս ասորի և կէս հայ իշխանութեան
մայրաքաղաքն եղաւ, և որուն արքունական գահոյից վրայ
փոփոխակի նատան ասորի իշխանաց հետ՝ արշակունի
տոհմի իշխանք, մտաւորական շարժման և յառաջադիմու-
թեան նշանաւոր կեդրոն մը եղաւ, և անուանի դպրոցի
մը աթոռ՝ որ մեծ ազդեցութիւն ունեցաւ քրիստոնեայ
Հայաստանի մատենագրական կազմակերպութեան և յա-
ռաջադէմ բարգաւաճանաց վրայ։*



Հայք՝ դեռ քրիստոնէական կրօնից իրենց մէջ մուտ չգտած, ամփոփ մատենագրական շարժում մը ունեցած կ՚երևին։ Հնութեան այս նկատմամբ մեզի աւանդած տեղեկութիւնք խիստ անկատար են. անանկ որ յանգիր ժամանակաց և 'ի դարուց մինչև առ մեզ հասած նշանաւոր և բուն ազգային՝ քանի մը Գողթան երգոց հատակոտորք են՝ ինչպէս տեսանք։ Իսկ 'ի հակառակէն՝ աւելի մեզի աննպաստ յիշատակութեանց կրնանք հանդիպիլ՝ նոյն իսկ Խորենացւոյն գրոցը մէջ, անդրադարձընելով անոնց բանաւոր երգարանաց անսիրելութիւնն, և ազգային պատմութեան և աւանդից հետամտութեան անհոգութիւն. և դատաստանական և ընտանի յարաբերութեանց ուղղութեան «անբաւ գրուցաց մատեանքը» յիշատակելէն ետքը՝ իրաւացի զարմանք մը կը յայտնէ թէ ինչպէս քաջութեամբ և հնութեամբ այսչափ անուանի ազգ մը՝ իր տարեգիրքն ու պատմութիւնը չունենայ։

Այս զարմանքն ունեցաւ Հայոց արքունական աթոռոյն վրայ բազմող մեծ թագաւոր մը, և որուն արդիւնք և հետևանքն եղաւ մեր պատմութեան հետաքննութիւնն ու գիւտ։

Հայոց պատմութիւննիս կը յիշեցընէ Վահէ մը՝ որ մեծին Աղեքսանդրի դէմ խիզախելով 'ի պատերազմ, անոր բովանդակ աշխարհի վրայ դրած ծանր լծէն՝ զինքն ու իր երկիրը խալըսել ուզած ատեն, կորոյս կեանքն ու թագաւորութիւնը։ Ինք եղաւ Հայկազանց հարստութեան վերջի իշխողը։ Իրմէ ետքը՝ մինչև Արշակունեաց իշխանութեան սկզբնաւորելը, Քրիստոսէ դարուկէս յառաջ, Հայաստան՝ արևմտեան Ասիոյ մեծ տէրութեանց՝ մերթ մէկուն և մերթ միւսին հպատակելով, պարզապէս առաջին կարգի նախարարութիւն մը կը ձևացընէր. Նախ Ասորւոց իշխանութեան տակ, յետոյ Բաբելացւոց, Մա-

րաց և Պարսից։ Իսկ երբ Արշակ Ե Մեծն, որ Միհրդատ Ա ալ կը կոչուի, իր իշխանութեան հպատակեցուց միջին ու արևմտեան Ասիոյ ժողովրդոց մեծ մասը։ Հայաստանի ժառանգական կառավարութիւնը իր Վաղարշակ եղբօրն յանձնեց, ապսպարելով որ կարգաւորէ զաշխարհն, ու Պարթևաց ինքնակալութեան օրինաց ու կարգաց համեմատ՝ տեսչութիւն և կառավարութիւն հաստատէ։ Վաղարշակ իր եղբօրը պատուիրած քաղաքական բարեկարգութիւնն 'ի Հայաստան մտցընելու համար ամէն ջանքն ըրաւ։

Իրմէ առաջ, կ'ըսէ պատմագիրն, չկար հաստատուն օրէնք մը նոյն երկրին մէջ՝ ուր իշխելու և կարգաւորելու կը հրաւիրուէր, այլ ամենայն ինչ քմահաճոյ՝ և տիրող օրէնքն բռնութիւն էր. նախարարք և նահանգապետք՝ երկրին մէկ մասին տիրելով իշխանութիւնն մէկմէկու ձեռքէն յափշտակել կ'ուզէին. կալուածոց, ստացուածոց, սեպհականութեանց օրէնք չկար. այլ ամենայն ինչ խառնիխուռն և անկերպարան։

Վաղարշակ այսպիսի անկարգ դրութեան մը վախճան տալու համար՝ միտքը դրաւ նախարարաց իշխանութիւնն կարգաւորել, անոնց երկիրներուն սահմաններն՝ որոշել զատել, և մեկուն մէկալին սահմանն անցնիլը արգիլած ատեն ամենուն ապահովութիւն տալ. անով աշխարհն հանդարտեցընել, քաղաքակիրթութիւնն՝ արուեստ ու մշակութիւն բարգաւաճ ընել։ Այս նպատակին հասնելու համար՝ հրամայեց որ փնտռուի հին ազգային պատմութիւն մը նոյն իսկ Հայաստանի մէջ։ Սակայն իր ջանքն ընդունայն եղաւ. այն աշխարհին մեծ և երկայն յեղափոխութեանց համար՝ հարկ էր որ օտար ազգաց դիւաններուն մէջ փնտռել տայ իր ուզածը. ու այս վախճանաւ գտաւ Մարիբաս կամ Մար Աբաս Կատինա անունով իմաստուն և սրամիտ[1] ասորի մը քաղդէական և յոյն լե-

1. Ասիկայ է ըստ Ասեմանեայ ասորի լեզուին մէջ Կատինա բառին և անուան նշանակութիւնը։

զուաց հմուտ, և ղրկեց 'ի Նինուէ ընծայութեան նամակաւ մը՝ իր Արշակ եղբօրը, աղաչելով որ հրաման տայ բանալու անոր հետախոյզ աչացն առջև Նինուէի մատենադարանը, որպէս զի կարենայ իր փափաքելին գտնել։

Կարդաց Արշակ իր եղբօրը գրած թուղթը, և գովեց անոր խնդիրքը։ Հրամայեց բանալ Մարիբասայ համար Նինուէի արքունական մատենադարանը. ուր գտաւ Մարիբաս գիրք մը յունարէն գրով ու այսպիսի վերնագրով. « Այս մատեան՝ հրամանաւ Աղեքսանդրի 'ի Քաղդէացւոց բարբառոյ փոխեալ 'ի յոյնն, որ ունի զբուն հնոցն և զնախնեացն բանս »։

Այն գրքին մէջ գտաւ Մարիբաս՝ Վաղարշակայ փափաքանօք խնդրած պատմութիւնը, Հայկայ օրերէն գրեթէ ինչուան Աղեքսանդրի ժամանակ. և գրելով յոյն և ասորի լեզուով՝ բերաւ 'ի Մծբին, Վաղարշակայ յանձնեց։ Թագաւորն ալ չափէն աւելի ուրախանալով հրամայեց որ իր գանձարանին մէջ պահուի ամենայն զգուշութեամբ. և անոր մէկ մասն ալ՝ արձանի վրայ գրուի։



Մարիբասայ գիրքը ձեռուընիս հասած չէ։ Սակայն բարեբաղդաբար՝ մեր հինգերորդ դարու մատենագիրն Մովսէս Խորենացի իր Հայոց պատմութիւնը շարադրելու ատենը կարդաց զայն, և ոչ միայն անոր հետևեցաւ, հապա նաև քանի մը երևելի հատուածներ թարգմանելով մեզի հասուց։ Այս հատուածներն ընտիր ու հնագոյն գանձեր սեպելով ազգային դրականութեան՝ կ'արժէ որ ամբողջ օրինակենք։

Խորենացին Մարիբասայ ջանիցը անօգուտ չըլլալը ու գտած արքունի գրոց միջէն քաղածը՝ Վաղարշակայ յանձնելուն պատմութիւնն ընելէն ետքը, կ'աւելցընէ նաև գրքին սկզբնաւորութիւնը, որ էր այսպէս.

« Ահեղք և երեւելիք առաջինքն ՚ի դիցն, և աշխարհի մեծամեծ բարեաց պատճառք, որ սկիզբն աշխարհի և բազմամարդութեան։ Եւ ՚ի սոցանէ հատեալ գտան ազգ սկայից, անհեդեդք, յաղթանդամք մարմնով և վիթխարիք. որք յղացեալ ամբարտաւանութեամբ ծնան զամբարիշտ խորհուրդ աշտարակաշինութեանն, և ՚ի նոյն լինէին ՚ի գործ անկեալք. յոր հողմ ահագին իմն և աստուածային շնչեցեալ ՚ի դիցն ցասմանէ, ցրէ զամբարտակն, և մարդկանն անլուր բարբառս իւրաքանչիւր ումեք բաշխեալ, աղմուկ շփոթի ՚ի մէջ արկանէին։ Յորոց մի էր և յապետոսթեանն Հայկ, անուանի և քաջ նախարարն, կորովաձիգ և հաստաղեղն »։

Գրքին սկզբնաւորութիւնը դնելէն ետքը, Խորենացին խօսքը կը դադրեցընէ. որովհետև, կ՚ըսէ, մեր կամքը ամբողջ պատմութիւն մը շարագրել չէ, հապա միայն ցուցընել մեր բուն նախնեաց ծագումը, զոր նոյն գիրքն կը ցուցընէ այսպէս։ Յապետոսթէ, Մերոդ, Սիրաթ, Թակլադ, որ է՝ Յաբեթ, Գամեր, Թիրաս, Թորգոմ։ Ետքը, նոյն ժամանակագիրը խօսքը առաջ տանելով՝ կը գրուցէ. Հայկ, Արմենակ, և անոնցմէ ետքը եկողները. վերջէն Հայկայ գեղեցիկ պատմութիւնը բուն իսկ Մարիբասայ խօսքերով մէջ կը բերէ.

« Այս, ասէ, Հայկ գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ. սա ՚ի մէջ սկայիցն քաջ և երեւելի լեալ, ընդդիմակաց ամենեցուն, որ ամբառնային զձեռն՝ միապետել ՚ի վերայ ամենայն սկայիցն և դիւցազանց։ Սա խրոխտացեալ ամբարձ ըզձեռն ընդդէմ բռնաւորութեանն Բելայ, ՚ի տարածանել ազգի մարդկան ընդ լայնութիւն ամենայն երկրի, ՚ի մէջ բազմակոյտ սկայիցն, անհուն խոլաց և ուժաւորաց։ Քանզի անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր սուր ՚ի կող ընկերի իւրոյ ձգելով, ջանային տիրել ՚ի վերայ միմեանց.

ուր պատահմունք 'ի դէպ ելանէին Բելայ՝ բռնանալ ունել զամենայն երկիր։ Որում ոչ կամեցեալ Հայկայ՝ հնազանդ լինել Բելայ, յետ ծնանելոյ զորդի իւր զԱրմենակ 'ի Բաբելոնի, չու արարեալ գնայ յերկիրն Արարադայ, որ է 'ի կողմանս հիւսիսոյ, հանդերձ որդւովք իւրովք և դստերօք և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք՝ թուով իբրև երեքհարիւր, և այլովք ընդոծնօք, և եկօք յարեցելովք 'ի նա և բոլոր աղխիւ։ Երթեալ բնակէ 'ի լեռնոտին միում 'ի դաշտավայրի, յորում սակաւք 'ի մարդկանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին. զորս հնազանդ իւր արարեալ Հայկ, շինէ անդ տուն բնակութեան կալուածոց, և տայ 'ի ժառանգութիւն Կադմեայ որդւոյ Արմենեկայ»։

Խորենացին այս հատուածը մէջ բերելէն ետքը՝ կը յաւելու. «Այս արդարացուցանէ զանգիր հին ասացեալ գրոյցս»։ Որով անշուշտ կ'ակնարկէ կամ Ողոմպիոդոր փիլիսոփային պատմած աւանդութեանց, (զորս ինքն նախ կը յիշատակէ), և կամ ուրիշ հին աւանդութիւններու, որ բերնէ բերան անցնելով մինչև Խորենացւոյն ժամանակ հասած էին։ Ետքը դարձեալ Մարիբասայ գրածը կը թարգմանէ.

« Եւ ինքն խաղայ այլով աղխիւն ընդ արևմուտս հիւսիսոյ. գայ բնակէ 'ի բարձրաւանդակ դաշտի միում, և անուանէ զանուն լեռնադաշտակին Հարք, այս ինքն, աստէն բնակեալքս, ազգի տանն Թորգոմայ։ Շինէ և գիւղ մի, և անուանէ յիւր անուն Հայկաշէն։

» Ի հաստատել տիտանեանն Բելայ զթագաւորութիւն իւր առ ամենեսեան, առաքէ 'ի կողմն հիւսիսոյ զմի ոմն յորդւոց իւրոց առ Հայկ՝ արամբք հաւատարմօք գալ նմա 'ի հնազանդութիւն և կեալ խաղաղութեամբ։ Բնակեցեր, ասէ, 'ի մէջ ցրտութեան սառնամանեաց. այլ ջեռուցեալ մեղկեա զցրտութիւն սառուցեալ քո հպարտացեալ բա-

րուցդ, և հնազանդեալ ինձ՝ կեաց 'ի հանդարտութեան, ուր հաճոյ է քեզ յերկրիս իմում բնակութեան: Եւ 'ի բաց դարձուցեալ Հայկայ զպատգամաւորսն Բելայ խըստութեամբ պատասխանեաց: Դառնայ առաքեալն անդրէն 'ի Բաբելոն:

» Ապա զօրաժողով լինի 'ի վերայ նորա տիտանեանն Բէլ ամբոխիւ հետևակ զօրաց, գայ հասանէ 'ի հիւսիսի յերկիրն Արարադայ մերձ 'ի տունն Կադմեայ: Փախըստական լինի Կադմոս առ Հայկ, քաջ ընթացիկս առաջի իւր առաքէ. Գիտեա, ասէ, ով մեծդ դիւցազանց, զի դիմեալ գայ 'ի վերայ քոյ Բէլ յաւերժիւք քաջօք և երկայնադիզօք հսկայիւք մրցողօք. և իմացեալ իմ զմերձ լինելն նորա 'ի տուն իմ, փախեայ, և գամ աւասիկ տագնապաւ: Արդ աճապարեա խորհել որ ինչ գործելոց ես:

» Իսկ Բէլն, յանդուգն և անհոռնի զօրութեամբ ամբոխին՝ որպէս յորձան ինչ սաստիկ ընդ զառիվայր հեղեալ՝ փութայր հասանել 'ի սահմանս բնակութեան Հայկին, 'ի սիրտ և 'ի մարմին վստահացեալ արանց զօրաւորաց: Աստ ուշիմ և խոհեմ սկայն, քաջագանգուրն և խայտակն, աճապարեալ հաւաքէ զորդիս իւր և զթոռունս, արս քաջս և աղեղնաւորս, թուով յոյժ նուազունս, և զայլ ևս որ ընդ իւրով ձեռամբ հասանէ յեզր ծովակի միոյ, որոյ աղի են ջուրքն, մանունս ունելով ձկունս յինքեան: Եւ կոչեցեալ զզօրս իւր ասէ ցնոսա. Յելանելն մեր հանդէպ ամբոխին Բելայ, դիպեալ ջանասցուք տեղւոյն՝ ուր անցեալ կայ 'ի մէջ խուռն քաջացն Բէլ: Զի կամ մեռցուք, և աղխ մեր 'ի ծառայութիւն Բելայ կացցէ, կամ զաջողութիւն մատանց մերոց 'ի նա ցուցեալ, ցրուեսցի ամբոխն, և մեք եղիցուք յաղթութիւն ստացեալք:

» Եւ յառաջ կոյս անցեալ բովանդակ ասպարէզս՝ հասանեն 'ի միջոց ինչ դաշտաձև լերանց բարձրագունից. և յաջմէ ջուրցն հոսանաց 'ի բարձրաւանդակում կուռ

կալով 'ի տեղւոջ. 'ի վեր զերեսս ամբարձեալ, երեւեցաւ նոցա բազմութիւն անկարգ հրոսակի ամբոխոյն Բելայ ցան և ցիր յանդուգն յարձակմամբ ընդ երեսս երկրին սուրալով. իսկ Բէլ հեզ և հանդարտ ամբոխիւ մեծաւ 'ի ձախմէ ջուրցն 'ի վերայ ոստոյ միոյ իբրև 'ի դիտանոցի։ Ծանեաւ Հայկ զխումբ վառելոյ ջոկատին, յորում Բէլ առաջի ամբոխին եկեալ հասեալ ընտրիւք և վառելովք ոմամբք. և երկար միջոց ճանապարհին ընդ նա և ընդ ամբոխն. և ինքն գլխանոց ագուցեալ երկաթի, նշանաւորօք վերջօք, և տախտակս պղնձիս թիկանց և լանջաց, և պահպանակս բարձից և բազկաց. գօտեւորեալ զմէջսն, և յահեկէ զատինն՝ երկսայրի. և նիզակն արի 'ի ձեռին իւրում աջոյ, և յահեկում վահան, և ընտիրք յաջմէ և 'ի ձախմէ։ Եւ տեսեալ Հայկին զտիտանեանն կուռ վառեալ, և զարս ընտիր ընդ նմա, աջինս և ահեկինս, կարգէ զԱրմենակ երկու եղբարբք ընդ աջմէ, և զԿադմոս և զայլս երկուս յորդւոց 'ի ձախմէ, զի արք կորովիք էին յաղեղն և 'ի սուսեր. և ինքն առաջի, և զայլս հրոսակին զկնի իւր կարգեաց. երեքանկիւնի իմն կարգեաց ձևով, հանդարտ յառաջ մատուցանելով։

» Եւ հասեալ երկոցունց կողմանց սկայիցն 'ի միմեանս, ահագին դղրդիւն 'ի վերայ երկրի առնէին չահատակելովն, և ահս պակուցանողս տարազուք յարձակմանցն զմիմեամբք արկանէին։ Անդ ոչ սակաւք յերկոցունց կողմանց սկայիցն արք յաղթանդամք բերանոյ սրոյ դիպեալք, տապալ յերկիր կործանէին. և մարտն յերկոցունց կողմանց մնայր անպարտելի։ Զայսպիսի անակնունելի դիպուած տարակուսանաց տեսեալ արքայն Տիտանեան՝ զարհուրեցաւ, և 'ի նոյն բլուր՝ ուստի էջն՝ վերջոտնեալ ելանէ. քանզի խորհէր 'ի միջոցի ամրանալ ամբոխին, մինչև հասցէ բովանդակ զօրն, զի միւսանգամ ճակատ յօրինեսցէ։ Զայս իմացեալ աղեղնաւորին Հայկայ, յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն, լի քարշէ պինդ զլայնալիճն, դիպեցուցանէ զերեքթևեանն կրծից

տախտակին. և չեշտ ընդ մէջ Թիկանցն Թափանցիկ լեալ՝ յերկիր անկանի սլաքն. և այսպէս ճոխացեալն Տիտանեան կործանի՝ յերկիր զարկուցեալ. և փչէ զո-գին: Իսկ ամբոխն տեսեալ զայսպիսի աՀագին գործ քա-ջութեանն, փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց: Եւ վասն այսորիկ այսչափ բովանդակ լիցի ասել:

» Բայց զտեղի ճակատուն շինէ դաստակերտ, և անուն կոչէ Հայք, վասն յաղԹութեան պատերազմին. այսորիկ աղագաւ և գաւառն այժմ անուանի Հայոց ձոր: Իսկ բլուրն, ուր քաջամարտիկքն անկաւ Բէլ անուանեաց Հայկ Գերեզմանս. որ այժմ ասին Գերեզմանք: Բայց զդիակն Բելայ պաճուճեալ իմն դեղովք, Հրամայէ Հայկ տանել ՚ի Հարք, և Թաղել ՚ի բարձրաւանդակ տեղւոջ, ՚ի տե-սիլ կանանց և որդւոց իւրոց »:

Հայկայ պատերազմէն ետքը՝ ուրիշ զանազան բաներ ալ կը պատմուին, կ՚ըսէ Խորենացին, այն գրքին մէջ. բայց մենք մեր Հաւաքմանը Հարկաւոր եղածները մէջ բերենք. ու կը սկսի իրեն Համառօտ ոճովը քաղել Մա-րիբասայ գրոցը մէջէն կարևոր և մտադրութեան ար-ժանի սեպածները:

*
* *

Խորենացւոյն պատմութիւնը այլ և այլ արևմտեան լեզուներով եւրոպական գիտնոց ծանօԹանալէն ետքը, անոնց երկար և քննադատ Հետազօտութեանց նիւԹ ե-ղաւ: Մարիբասայ առաքումն ՚ի Նինուէ, ՊարԹևաց Թագաւորին քով գտած ընդունելութիւնը, արքունի դի-ւանաց մէջ խուզարկութիւնք, Վաղարշակայ փնտռած Հայոց պատմութեան գիւտը, չատ բանասիրաց Համար խնդրոյ և երկմտութեան նիւԹ մը դառնալով, անկէ քա-ղուած ու ՚ի Խորենացւոյ մեզի աւանդուած դիպուածոց և անցից ստուգութիւնն ալ կեղակարծ, և անստոյգ, ա-

ռանց պատմական հաւաստեաց՝ ուստի քմահաճոյ յերիւրեալ հիւսուածք մը սեպեր են։ Ասոնց մէջ գլխաւորք եղած են Ֆրէրէ, Գաթրըմէր, Կուտշմիթ և այլք՝ ինչուան մեր օրերը, և ունեցեր են իրենց համամիտքն ու հետեւողք՝ նոյն իսկ մեր ազգին մէջ, և որք ազգային պատմութիւն մ՚ալ՝ բոլորովին օտար ՚ի Մարիբասեան աւանդից և ՚ի Խորենացւոյ, ուզեցին ընծայել «ազգին լուսաւորեալ մասին, որ գիտէ իննևտասներորդ դարուս քննադատական ոգին, և որ կամէր վաղուց տեսանել այն ոգին մուծեալ և յազգային պատմութիւն մեր»։ Թէպէտ և մերազգի բանասէրք, և յառաջ քան զնոսա հմուտ հայագէտն Տիլորիէ, ասոնց կարծեացը դէմ մաքառեցան, բայց իրենց տարակոյսները բոլորովին ցրելու բաւական չսեպուեցան բերուած պատճառներն[1]։

Մենք հակառակորդաց քանի մը պատճառներն միայն յիշատակենք, որոնցմով կ՚ուզեն Մարիբասայ գոյութիւնը ժխտել կամ տարակուսի տակ ձգել։ Նախ կ՚ըսեն թէ հինն Նինուէ արդէն կործանած էր, և հաւատալի չերեւնար որ Պարթևաց և Սելևկեանց պատերազմին ատեն Ասորեստանեայց նոր տէրութեան մը մայրաքաղաք ձևացած ըլլայ։ Դարձեալ կ՚ըսեն թէ Աղեքսանդր ոչ ժամանակ և ոչ ալ կամք ունեցած ըլլայ՝ քաղդէականէն ՚ի յոյն թարգմանելու պատմական գիրք մը. Մար Իբաս կատինային անունն ալ՝ Արշակայ ժամանակին չվերաբերիր, կ՚ըսեն, այլ բառերուն կազմութենէն կ՚երևնայ Ասորւոց քրիստոնէական ժամանակի անուն։ Այս պատճառներով՝ զՄովսէս Խորենացի եթէ ոչ խաբեբայ՝ գէթ խաբուած կը համարին այս եւրոպացիք, և թէ կարծեցեալ Մարիբասեան գիրքը՝ Բերոսոսի գրուածքին մէկ օրինակը պիտի ըլլայ անշուշտ։ Գաթրըմէրի հետեւողք ալ

1. Փափաքողք կրնան տեսնել Բազմավէպ ու Արեւելեան Մամուլ կոչուած հանդէսներու մէջ (1882–1883) եղած տարակուսութիւնքն և անոնց ցրելու վախճանաւ տրուած պատասխանները։

*կը յաւելուն թէ եդեսական դպրոցին վերաբերող Ասորւոյ մը գրուածք է Մարիբասայ պատմութիւնն, որ Խորենացւոյն ձեռքն անցած, և իբրև հաւատարիմ պատմիչ մը կարծուեր է։*

*Ազգային բանասիրութեան մաս մ՚ալ, և Տիւլորիէ, կը ջանան ցուցընել թէ Մարիբասայ գրուածքը՝ յիրաւի ըստ աւանդութեան Խորենացւոյն Վաղարշակայ ատեն շարադրուած է, և թէ անկարելի չէ՝ որ Նինուէի դիւաններն Սելեւկիացւոց ձեռքէն Պարթեւաց թագաւորներուն ձեռքն անցած ըլլան, և հոն իմաստուն ասորին հանդիպած ըլլայ այդ գրքին։ Եւ ցուցընելու համար թէ Մարիբասայ անունը կրնար Քրիստոսէ առաջ ալ գործածուած ըլլալ, Աբգարու և Քրիստոսի ժամանակակից Մար Իհաբ անուն մը կը յիշատակեն. վասն զի Մար՝ Տէր ըսել է, որ ամէն պատուաւոր անձանց ալ կը տրուի։*



*Մարիբասայ՝ կամ 'ի Խորենացւոյ իրեն ընծայուած մատեանն՝ հայերանագէտ գաղղիացին Վիկտոր Լանկլուա յիւրում Հաւաքման հին և նոր պատմչաց Հայաստանի* (Collections des Historiens anciens et modernes de l'Arménie), *առաջին անգամ իբրև առանձինն գիրք հրատարակեց գաղղիական թարգմանութեամբ՝ ընդարձակ և հմուտ կանխաբանութեամբ և ծանօթութեամբք, յորոց օգտուեցանք մեր այս գրուածքին մէջ։ Խորագիրն է.* Mar Apas Catina, Histoire ancienne de l'Arménie, extraite de l'histoire des premiers ancêtres, traduite de chaldéen en grec par ordre d' Alexandre-le-Grand, et conservée en partie par Moïse de Khorène. Traduction nouvelle en français, avec des notes historiques, critiques et philologique, par Victor Langlois. Paris, Librairie de Firmin-Didot frères, fils et Cie. MDCCCLXVII.

*Մեր վերը յիշած մարիբասեան հատուածներէն զատ՝ Հայոց սկզբնաւորութեան և Հայկայ պատերազմին վրայ, Թարգմանիչն 'ի մի կը գումարէ առ Խորենացւոյն գըտնուած ու Մարիբասայ ընծայուած հետևեալ գլուխներն. Առաջին գրքէն՝ գլուխք* ԺԲ, ԺԳ, ԺԴ, ԺԵ, ԺԶ, ԺԷ, ԺԸ, ԺԹ, Ի, ԻԱ, ԻԲ, ԻԳ, ԻԴ, ԻԵ, ԻԶ, ԻԷ, ԻԸ, ԻԹ, Լ, ԼԱ, ԼԲ. Երկրորդ գրքէն. Ա, Բ, Գ, Դ, Ե, Զ, Է, Ը, Թ. *ուր հետևեալ խօսքերը կը յաւելու Խորենացի. «Աստանօր սպառին բանք ծերունւոյն Մար Աբաս Կատինայ»։*

# ՄԱՐԻԲԱՍԷՆ ԽՆՁՈՒԱՆ ՁՈՐՐՈՐԴ ԴԱՐ



*Արտաւազդ Ա. — Արգար. — Երկսեիոյ դիւան. — Արտաշէս Բ.*

*Վաղարշակ՝ որ Հայաստանի թէ՛ քաղաքական թէ՛ ուսումնական բարգաւաճանացը փոյթ ունենալով Հայոց առաջին և ընտիր պատմիչը եղեւցուց, յամենայնի իրեն արժանի յաջորդ չունեցաւ. Արշակ, Արտաշէս, Տիգրան, իրենց փառքն ու մեծութիւնը՝ աւելի հարստութեան և երկրակալութեան վրայ դրած ըլլալով, անոնց համար յոգնեցան. և իրենց զէնքերուն ուժովը համբաւնին բոլոր աշխարհք, ու վախերնին մերձակայ ազգաց վրայ տարածեցին.*

*Տիգրանայ յաջորդն Արտաւազդ Ա, եթէ իր նախնեացը պատերազմասէր աչխոյժն ալ ունէր՝ բայց ոչ յաջող բաղդը. Հայոց պատմութեան մէջ գրեթէ անօրինակ դէպքով մը՝ ոսկի շղթաներով կապկըպած Հռովմայեցւոց ձեռքը գերի կ'իյնայ. և Թագազդուրկ գլուխը՝ իւր օտա-*

րութեան ու ամօթոյն ցաւերը մեղմացընելու միակ հընարք՝ բանասիրութիւնը կը գտնէր, անոր անոյշ զբաղմանցը մէջ իւր ձախող բաղդին վիշտերը թաղելով։ Պլուտարքոս կ'աւանդէ թէ իւր գերութեանը մէջ այլ և այլ թատերական քերթուածներ, ճառեր, ու պատմական գըրուածներ շարագրած է Արտաւազդ, որոնք ժամանակակցացը առջև մեծապէս յարգի եղած են[1]։

Աբգար՝ Արտաւազդայ յաջորդ Արշամին որդին՝ արքունական աթոռը ելած օրէն Աւագ այր կոչուեցաւ, ու իւր խելքովն ու իմաստութեամբ այնչափ հաճոյացաւ Օգոստոս կայսեր, որ չէր ուզեր զանիկայ հեռացընել քովէն։

Աբգարու Հռովմ եղած ատենը՝ այն համբաւատենչ քաղաքը ոչ միայն քաղաքական, այլ նաև ուսումնական փառաց լրման մէջ էր։ Հռովմէական մատենագրութեան ոսկեդարն էր այն ժամանակը. ու Աբգարու սուր և թափանցող միտքը տեսաւ ու նախանձեցաւ վրանին, ու զՀայաստան ջանաց հետևող ընել անոնց։ Անոր համար իւր թագաւորական աթոռը դառնալէն ետքը՝ Եդեսիա քաղքին մէջ տիեզերահռչակ դիւան մը բանալ տուաւ. հոն փոխադրել հրամայեց Մծբին քաղաքին ամէն դիւանական մատեաններն. նոյնպէս ալ Պոնտացւոց Սինոպ քաղաքին մեհենական պատմութեանց գրքերը։

Այս դիւանը՝ Երուանդայ երկրորդի օրովը ա՛լ աւելի ճոխացաւ, երբոր Հայք՝ Հռովմայեցւոց հարկատու եղան, ու անոնց կողմանէ դրուած կուսակալներն ջանացին զարդարել զայն. որովհետև յԵդեսիա՝ իբրև 'ի միջավայրի հաստատած էին 'ի Հայոց, 'ի Միջագետաց և յԱսորւոց ժողովելիք հարկերը. ուստի հոն ժողվել տուին ուրիշ գլխաւոր քաղաքաց հարկերուն դիւաններն ալ։ Եդեսիոյ

1. «Արտաւազդ ինքնին և ողբերգութիւնս եւս քերթեալ ունի, և ճառս և արձանագրեալ պատմութիւնս, յորոց կէսք կան և մինչև ցայսօր»։ Պլուտ. Զուգակշիռք, Հատ. Դ. 138։

դիւանը՝ ինչուան Քրիստոսի հինգերորդ դարը սրբավայր մը սեպուած էր ամենայն ազգաց իմաստնոց. գիտութեանց մէջ ծերանալու փափաքող մտքեր՝ կ՚ախորժէին հոն անցընել իրենց օրերը։ Հոն Յուլիոս Ափրիկանոս մեծանուն ժամանակագիրն կ՚երթար «գաղափարել որ ինչ 'ի քարտէզս այնր դիւանին յաղագս թագաւորացն առաջին ժամանակաց և գործոց նոցա»։ Հոն Սեբերիանոս Եմեսացի և Պրոտոգենէս քահանայն վարժուող և վարժիչ կ՚ըլլային։ Հոն կ՚երթար նաև Եւսեբի Կեսարացի, որ և կը վկայէ Եկեղեցական պատմութեանը մէջ թէ ինչ որ Աբգարու վրայ գրած է, բոլորն ալ Եդեսիոյ դիւանէն քաղած է։ Հոն սուրբն Մեսրոպ ալ՝ հայ գրոց գիւտէն ետքը՝ իւր աշակերտացը մէջ երկու գլխաւորներն կը ղրկէր, զԵզնիկ և զՅովսէփ պաղնացի, որ օտար գրով դրոշմուած գրքերը հայերէնի դարձնեն։

Հոս միայն չսահմանուիր Աբգարու ուսումնասիրական եռանդը։ Քրիստոսական լուսոյն ճշմարտութիւնն ընդունելէն ետքն ալ՝ նոյն սուրբ կրօնքը հաստատուն գործելու համար՝ ուրիշ հնարքներէն զատ՝ սուրբ գրոց ասորի թարգմանութիւն մըն ալ ընել տուաւ, զոր ազգային և օտար յետագայ պատմիչք, և մասնաւոր կերպով Վարդան, կը յիշատակեն[1]։

1. Վարդան կը գրէ առ Հեթում թագաւոր. «Թարգմանեցին յասորի գիր և 'ի լեզու... և հայերէն գիր չկայր, վասն այն ասորի գրով թարգմանեցին։ Այս 'ի ձեր նախնոյն յիշատակ»։ Նոյնն Թադէական թարգմանութենէն օրինակ մ'ալ մէջ կը բերէ՝ Ծննդոց գրքին սկզբնաւորութիւնը. «Ի սկզբանէ արար Աստուած զէութիւն երկնի և զէութիւնն երկրի. և այս գեղեցիկ է, զի ցուցանէ թէ յոչէից արար. և ըստ եօթանասնիցն բազում երկինս ցուցանէ... խիստ անոյշ է»։ Կը վկայէ և Միխայէլ ասորի. «Ըստ Աբգարոյն՝ գրով ասորեք վարէին». և Ապուլֆարաճ ասորի կամ հայ. և յառաջ քան զսոսա՝ Զուստ կամ Եւստաթ՝ եպիսկոպոս Հագդենոյ կամ Հադրենոյ ասորւոց։

Սակայն Աբգարու մահուընէն ետքը՝ կրօնական ու քաղաքական յեղափոխութիւնք տակնուվրայ ըրին զՀայաստան։ Անանէ ու Սանատրուկ՝ իրենց հօրն ու մօրեղբօրը հաւատքը արհամարհելէն ետքը՝ զէնքերնին ալ իրարու դէմ կը դարձընեն. Սանատրուկ իր հակառակորդէն զօրաւոր և երկարակեաց ըլլալով, բոլորովին քաղաքական շինութեանց ու Մծբին արքունի քաղաքը զարդարելու զբաղեցաւ։ — Իր որդւոյն Բ. Արտաշիսի ատեն՝ բոլոր Հայաստան կերպարանափոխ ըլլալու վիճակի մը մէջ կը մտնէ. այդ մեծ և սիրելի Թագաւորը՝ Հայաստանը Եղլադա, Լատիոն մը դարձընելու փափաքով վառուած անձ մըն է. « Թէպէտ և կարգք և սովորութիւնք գեղեցիկք հաստատեցան 'ի Վաղարշակայ և յայլոց առաջնոց Թագաւորացն, այլ 'ի մեծամեծ արուեստից և 'ի գիտութեանց ունայնացեալք էին, կ'ըսէ Խորենացին. զչափաթուց ասեմ և զամսոց և զտարեաց բոլորմանց։ Եւ այս ամենայն յօրինի յաւուրս Արտաշիսի »։ Իրեն խաղաղասէր իշխանութեանը ժամանակ՝ ազգային ոգին մեր մատենագրութեանը մէջ առաջին տեղը բռնեց. բանաստեղծութիւնն՝ միւսանգամ իւր աշխոյժն ու թռիչքը Թագաւորական գահէն կ'առնուր։ Թագաւորին որդւոց մէկը, արքունի հազարապետն Վրոյր, նշանաւոր բանաստեղծ մըն էր. և թերևս հայկական վիպասանութեան շարագրողաց մէկն, որ երգեց Արտաշիսի երջանիկ օրերն, և անոր հռչակաւոր Սմբատ սպարապետին քաջութիւններն։ Ասանկ ալ Արտաշիսի միւս որդւոց մէկը՝ Մաժան, որ մեհենաց վրայ վրակեցու դրուած էր, և Անի քաղաքին մէջ եղած Արամազդայ մեհենին քրմապետը՝ հաւանականաբար շարագրող է նաև մեհենական պատմութեանց։

Արտաշիսի յաջորդաց ատենէն ինչուան Տրդատայ ժամանակը, հեթանոսութիւնն՝ քրիստոսական կրօնից դէմ վերջին ուժով պատերազմել կ'երևնայ։ Հայաստան՝ անոր երկնաւոր լուսոյն առջև արդէն սասանեալ՝ իր հին

*կրօնքը հաստատուն պահելու համար երկար և ունայն աշխատանքներէ վերջը կը յաղթուի, ու այն երջանիկ յաղթութեան պարտական է իւր ստոյգ փառքն ու մեծութիւնը։*

## ՔԱՆԻ ՄԸ ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

---

*Ուղիւպ։ — Բարդածան։ — Խոռոհբուտ։ — Արտիթէոս։*

*Աբգարէն ինչուան Լուսաւորիչ, երեք դարու միջոց, միայն քանի մը մատենագիրք երևցան Հայոց մէջ. կամ թէ աւելի ճիշդ խօսելով, հաւանաբար այնպիսի բարեկարգ թագաւորութեան մը մէջ ծաղկող մատենագրաց՝ միայն մէկքանիին անուանքը հասան մինչև առ մեզ։ Մեր այս յիշատակած անձանց ազգայնութիւնն ալ՝ կամ բուն մեր ազգին պատկանիլը տարակուսական կրնայ համարուիլ, ինչպէս նաև իրենց գործածած լեզուն։*

*Ասոնց մէջ գլխաւոր է*

ՈՒՂԻՒՊ *կամ Ոլիմպիոս քուրմ. Պարսից Դարեհ Վողոգէսի ու մեր Արտաշիսի թագաւորութեան ատեն ծաղկած Քրիստոսի երկրորդ դարուն երկրորդ կիսուն։ Հանի կամ Անի ամրոցին ուր քրմապետական պաշտամամբ մեծարուած էր, մեհենական պատմութիւնը շարագրեց Ուղիւպ, յորում աւանդուած էին Դարեհի և Արտաշիսի թագաւորութեան ժամանակաց դէպքերը. և կ'երևնայ թէ անոր գրուածներէն քաղած է Խորենացին՝ ինչ որ Արտաշիսի վրայ կը պատմէ, վասն զի անոր պատմութիւնն ըրած ժամանակ՝ կը յաւելու. «Եւ զայս մեզ ստուգապէս պատմէ Ուղիւպ քուրմ Հանւոյ, գրող մե-*

*հենական պատմութեանց, և զայլ բազում գործս՝ զոր ասել կայ մեզ առաջի, որում և Պարսից մատեանքն վըկայեն և Հայոց երգն վիպասանաց»։ Հաւանական կ'երևնայ թէ Բարդածան և Եւսեբիոս ալ Եդեսիոյ դիւանին մէջ հանդիպեր են ասոր գրուածքին, և անոնցմէ օգտուած։*



**ԲԱՐԴԱԾԱՆ**. *Անտոնինոս Կարակալլա և Լուկիոս Վերոս կայսերաց ատենն էր Բարդածան՝ յաջողակ 'ի բան և 'ի գիր, և հայկական ուսմանց ոչ անտեղեակ։ Ծնած է յասորեստան, և հաւանականաբար յԵդեսիա։ Ցայլ և այլ մատենագրաց հնոց՝ որ իր յիշատակութիւնն կ'ընեն, երբեմն ասորի և պարթեւ կոչուած է, մերթ միջագետացի, մերթ բաբելոնացի, և յայլոց նաև հայկազն։ Կրնայ ենթադրուիլ թէ իրարմէ ուրիշ՝ բայց համանուն անձինք ըլլան, որոց գրուածք և գնացք, վրիպակաւ կամ շփոթմամբ իրարու ընծայուած։ Այս պատճառաւ է անշուշտ՝ որ երբ յոմանց արդի քննադատից՝ համաձայն ընդ հնոց, Կարակալլայի ժամանակակից կը համարուի, յայլոց՝ մանաւանդ 'ի գերմանացի գիտնոց, ասորի կայսերաց ատեն ծաղկած կ'ենթադրուի, և իրեն ընծայուած Բաշխից կամ Գուշակութեանց վրայ յօրինուած գրուածքին մէջ տեղ մը Հելիոգաբալ կայսեր ակնարկութիւն մ'ալ կը կարծեն տեսնել։*

*Ընտիր դաստիարակութիւն մը առած էր կ'ըսեն Բարդածան Եդեսիոյ իշխանաց արքունեաց մէջ. և բարեկամ Աբգարու Ը՝ ութերորդ Մանովայ որդւոյն, որ Ոսրոենոյ աթոռը գրաւեց* 152–153*էն մինչև 'ի* 187–188. *սիրող և հետամուտ գիտութեանց և արուեստից, ու իր դարուն և ժամանակին մատենագրաց մէջ նշանաւոր անձ մը։ Ետևէ եղաւ նաև գիտութեան գաղտնեաց կամ քաւդէութեան, աստեղաց շրջաններուն կամ շարժմանց՝*

մարդկային բաղդի և ապագային վրայ ունեցած և ըրած ազդեցութեանց. և անգղիացի բանասէրն Գիւրըզոն՝ իր անունը կրող այսպիսի գրութեան մը հատուածներուն հանդիպած է Նիտրիոյ վանքի մը մատենադարանին ձեռագրաց մէջ և հրատարակած՝ յիւրում Ասորական Հաւաքման :

Որչափ ալ հետամուտ արևելեան տիեզերագրական և իմաստասիրական գրութեանց, սակայն մեծ փոյթ և ջանք ալ ցըցուց Բարդածան նաև արեւմտեան գիտութեանց՝ որք անհրաժեշտ լրումն կը սեպուէին Ասիական դպրոցաց ուսման, և 'ի մասնաւորի Եդեսիոյ, որ Աղեքսանդրիոյ ու Աթենքի վարժոցներէն ետքը՝ ամենէն հռչակեալն էր : Հմուտ կատարելապէս ասորի լեզուի, տեղեակ էր նաև հելլէն դպրութեանց. և կը վկայէ Եպիփան՝ վարդապետ եկեղեցւոյ, որ նոյն լեզուով այլ և այլ գրուածքներ ալ շարագրած ըլլայ : Սակայն իր լիուլի հըմտութիւնը ասորականին մէջ էր, որով յօրինած է ընդհանրապէս իր ամէն երկասիրութիւնքը, և զոր կը խօսէր ընտիր ոճով և հրավառ ճարտարախօսութեամբ : Ինք եղաւ հեղինակ նոր քերթողական չափու մը յասորի մատենագրութեան. և այն չափաւ շարագրեց հարիւր և յիսուն եկեղեցւոյ պաշտամանց վերաբերեալ երգեր, և որք գրեթէ երկու դար 'ի կիրառութեան էին Ասորւոց մէջ՝ իր Հարմոնիոս որդւոյն շարագրածներուն հետ : Իրեն կ'ընծայուի դարձեալ և եղանակաց ներմուծումը յարևելեան եկեղեցիս :

Առաջ հաւատարիմ եկեղեցւոյ վարդապետութեանցը, իր զօրաւոր լեզուն և ճարտասանութիւնը անոր պաշտպանութեան գործածած էր, և այն գրչով ու սրտով՝ որուն վրայ կը զարմանային սուրբն Հերոնիմոս, Աւգոստինոս և Նիկեփոր, կորակոր ու ամօթապարտ լռեցուցած էր Ասորւոց աշխարհին մէջ իւր ժամանակին բազմաթիւ հերետիկոսներն. Բայց կենացը վերջի տարիներն՝ ինքն ալ մոլորական վարդապետութեանց մէջ ինկաւ,

Նախ՝ նա եւ ըստ Խորենացւոյ, Վաղենտինեանց աշակերտելով, « զոր յետոյ յանդիմանեալ անարգեաց, կ՚ըսէ, ոչ գալով 'ի ճշմարտութիւն, այլ միայն 'ի նմանէ զատուցեալ՝ այլ հերձուած յարդարեաց յինքենէ » ։

Երբ Կարակալլա կայսրն 'ի դարձին յարշաւանաց Եգիպտոսի՝ անցաւ 'ի Միջագետս, ու գահընկէց ընելով յիշխանական աթոռոյն զԱբգար Ժ զորդի Մանովայ Ժ, ու ձմերելով յԵդեսիա՝ Ոսրոենիոյ վայրապետութիւնը հռովմէական գաւառի մը վերածեց, բռնադատուեցաւ Բարդածան հեռանալ 'ի հայրենեացն։ Անշուշտ այն միջոցին է՝ որ Հայաստան ալ եկաւ, յոյս ունենալով զոմանս աշակերտել իրեն. բայց տեսնելով թէ ընդունայն է աշխատանքն, Հանի ամրոցը գնաց, ու հոն մեր ազգին մեհենական պատմութիւններն ու առաջին թագաւորաց գործերը կարդալով, յասորի լեզու թարգմանեց զանոնք. ու այլ և այլ թագաւորական դիւաններէ զանազան տեղեկութիւններ ժողվելով, պատմական գրուածք մը շարագրեց, զոր յետոյ իր աշակերտեալքը՝ փոխեցին 'ի յոյն, և Եդեսիոյ դիւանին մէջ պահուեցաւ։

Թէ՛ Եւսեբիոս և թէ մեր Խորենացի՝ իրեն գրուածքներէն կը քաղեն այլ և այլ ժամանակակից դիպուածոց յիշատակութիւններ. « Էր, կ՚ըսէ Խորենացի, այր կորովի բանիւք. որ և առ Անտոնիոս համարձակեցաւ գրել թուղթ. և բազում ասացուած արար ընդդէմ աղանդոյն Մարկիոնացւոց և բաշխից և կռոց պաշտաման, զոր 'ի մերում աշխարհիս... Պատմէ 'ի մեհենիցն պաշտամանց, վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգերեզման եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի 'ի բագնացն աւանի, որ 'ի Բագրեւանդ գաւառի, բագին 'ի վերայ գերեզմանին շինեալ՝ զի 'ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն, և ընդունիցին հիւրք երեկօթիւք... Ցայսմ պատմութենէ առեալ մեր երկրորդեցաք քեզ 'ի թագաւորութենէն Արտաւազդայ մինչև յարձանն խոսրովու » ։

Ոչ անծանօթ է Բարդածան նաև մեր ուրիշ պատմըչաց ալ: Զենոբ Գլակ, չորրորդ դարու մատենագիր, կ'ըսէ. «Եթէ ստուգիւ կամիս գիտել զայսոսիկ, ով երանելիդ Բեկտոր, ընթերցիր զԹագաւորութիւն Հեփթաղինեկայ հելլենացի գրով, և կամ զԹագաւորութենէն ճենաց, զոր գտանես յՈւռհա քաղաքի առ Բարդայ պատմագրի»: Ուխտանէս պատմիչ. «Եթէ ստուգիւ կամիք տեղեկանալ, ասէ, ընթերցջիք զվերջին դրուագն Բարդընծանայ Ուռհացւոյ, զոր կարի գեղեցիկ ասէ և ըզբանն՝ զոր խօսեցան ընդ միմեանս Տրդատ և Հրաչեայ արքայ. և կամ թէ յետոյ զինչ արարին զՀրաչէ՝ ոչ գիտեմ ասէ պատմագիրն»:

Եւսեբիոս 'ի Պատմութեան Եկեղեցւոյ (Գիր. Դ. 30) հետևեալ տեղեկութիւններն կ'աւանդէ Բարդածանի վըրայ. «Ի նմին իսկ արքայութեանն Անտոնինոսի Վերոսեայ, բազում էին աղանդք հերձուածոց 'ի Միջագետս յՈւռհայ. Բարդեծան այր երևելի, որ ասորի լեզուով իմաստուն կորովի էր յոյժ, և ընդդէմ Մարկիոնացւոցն և այլոցն որ վերակացու էին որոշեալ աղանդոյն, եկաց բանիւ իւրով. և գրեաց նա զխօսսն յիւր լեզու հանդերձ այլովք խօսիւք բազմօք. և էին նորա ընկերք և ծանօթք բազումք և զօրագոյն էին բանիւք. և նոքա հանին զխօսս նորա 'ի լեզուէ ասորոց 'ի յոյն. և 'ի նոյն խօսն իւր է մաքառումն մի զոր ասացեալ է նորա մեծապէս վասն բաշխից զոր գրեացն Անտոնինոսի: Եւ այլ բազումս ասեն զնմանէ թէ գրեաց 'ի պատճառս հալածանացն որ եղեն յայնմ ժամանակի: Բայց էր սա յառաջագոյն յուսման անդ Վաղենտիանոսի. իսկ իբրև անարգեաց յաչս իւր սա, և կշտամբեալ յանդիմանեաց զբազում պատմութիւնս նորա. և խորհեցաւ թէ որպէս ինքն յանձնէ իւրմէ փոխեսցի 'ի խորհուրդս առաւելս. այլ ոչ լի կատարեալ ջնջեաց նա յիւրմէ զաղտ առաջին հերձուածոյն»:

Ինչպէս Մարիբասայ, նոյնպէս ալ Բարդածանայ նկատ-

մամբ Հայ պատմութեան գրուածոցը հաւաքում և թարգմանութիւն մը ընծայեց Լանկլուա, մեր արդէն յիշատակած հաւաքման մէջ՝ այսպիսի խորագրով. Bardesane. Œuvres historiques et philosophiques, pupbliées d'après les sources Arméniennes, Grecques et Siriaques, avec des notes historiques, critiques et philologiques, par Victor Langlois. Այս գրուածքին մէջ՝ Հատուածք Հայկական պատմութեան (Fragments d'une histoire de l'Arménie, par Bardesane) վերնագրով կը խմբագրէ առ Խորենացւոյն իրեն ընծայուած գլուխներն. և են երկրորդ գրքէն գլուխք, ԿԱ, ԿԲ, ԿԳ, ԿԴ, ԿԵ, ԿԶ: Կը յաւելու ապա իրեն անուամբ գտնուած ուրիշ քանի մը երկասիրութեանց Մնացորդք:

*
* *

**ԽՈՌՈՀԲՈՒՏ**. Նոյնպէս 'ի Խորենացւոյ յիշատակուած, ու միայն անուամբը մեզի ծանօթ մատենագրաց կարգէն է նաև Խոռոհբուտ, Պարսից Շապուհ թագաւորին դպիրը, որ Քրիստոսի 362 թուականին Յուլիանոս Ուրացողին ձեռքը գերի ինկաւ, ու անոր ուրիշ արքունի պաշտօնակալացը հետ Յունաստան անցնելով՝ քրիստոնէութիւնն ընդունեցաւ, ու Եղիազար կոչուեցաւ: Հոն Բարսումա անունով Ասորւոյ մը, զոր Պարսիկք Ռաստսոհուն կը կոչէին, մէկ զինքը 'ի յոյն թարգմանեց:

Պատմական գրուածք մըն ալ շարադրած է Խոռոհբուտ, որուն համար կը վկայէ Խորենացին թէ Շապհոյ, Յուլիանոսի և Խոսրովու գործերը աւանդող ուրիշ պատմագիրներէն աւելի ստուգապատում է, թէպէտ և գրոնուին իւր գրոցը մէջն ալ այլ և այլ առասպելներ թէ Պարսից և թէ Հայոց վրայ: Այս առասպելներէն մէկ քանին կը յիշէ Խորենացին իւր պատմութեանը մէջ. «Անտեղի է մեզ, կ'ըսէ, այժմ երկրորդել զառասպելսն յաղագս Երազոյն փափագոյ, և արտադատութեան Հրոյն

*մանուածոյ՝ որ 'ի Օսսանայ, և պատումն զհօտիւն, և լուսնակն, և ախտարմողացն յառաջասացումն, որ են քաղդեայք, և որ ինչ զկնի այսորիկ. և պոռնկական խորհուրդն Արտաշրի հանդերձ սպանութեամբք, և անմիտ հանճարաբանութիւն մոգին դստեր վասն Նոխազին, և որ ինչ այլն ամենայն։ Նաև այծին դիեցումն մանկանն ընդ հովանեաւ արծւոյն, և գուշակումն ագռաւուն, և գերապանծին պահպանութիւն առիւծուն հանդերձ արքանեկութեամբ գայլուն, և միայնամարտութեանն առաքինութիւն, և որ ինչ այլաբանութեանն բերէ կարգ»։*



**ԱՐՏԻԹԷՈՍ**. *Հայ քրմի մը որդի էր. բայց սրբոյն Գրիգորի ձեռքովն ու ջանիւք՝ ճշմարտութեան քարոզ եղաւ, և ուսումնական ընթացքը կատարելով՝ իր արժանաւորութեամբը ինչուան եպիսկոպոսական աստիճանի բարձրացաւ։*

*Արտիթէոս՝ Մարկոս անունով միայնակեցի մը խընդրանօքը, որ Ագռոճան ըսուած կղզին առանձնացած էր, Լուսաւորչայ վարուց պատմութիւնը շարագրեց նամակի ձևով. և իրմէն առած է Խորենացին՝ ինչ որ նոյն սրբոյն մանկութեան և երիտասարդութեանը վրայ կ'աւանդէ, ինչուան անոր Տրդատայ քով ծառայութեան մտնելը։*

# ՂԵՐՈՒԲՆԱ

---

*Իրեն ընծայուած գրքի մը գիւտը։ — Ասորի բնագիրը։ — Գրուածքին նիւթը։ — Հարազատութիւնը։ — Այլ և այլ տպագրութիւնք և թարգմանութիւնք։*

Աբգարու ժամանակակից պատմիչ մը կը յիշատակէ Խորենացին՝ Ղերուբնա անունով, Ափշադարայ դպրի որդի, մեհենական պատմութեանց հմուտ, որ Աբգարու և անոր որդւոյն Սանատրկոյ պատմութիւնը շարագրած է. « Ղերուբնա, կ'ըսէ, որդի Ափշադարայ դպրի՝ գրեաց զամենայն գործս՝ որ ինչ յաւուրս Աբգարու և Սանատրկոյ, և եդ 'ի դիւանին՝ յԵդեսիայ »։

Այս գրուածը կորսուած կը համարուէր ընդհանրապէս. որովհետև միայն Խորենացին կը յիշէր այն երկասիրութիւնը, առանց յայտնապէս ըսելու թէ արդեօք ինքը տեսա՞ծ էր այն գրուածը. իսկ իրմէ ետքը եկող պատմագիրներէն ոչ ոք՝ — բաց 'ի Մխիթարայ այրիվանեցւոյ՝ յիրեքտասաներորդ դարու, դնելով 'ի կարգի պատմըչաց իր անունը յետոյ քան զՏատիանոս և յառաջ քան զՄարիբաս, — ոչ զինք կը յիշէ, և ոչ ալ անոր իրաւամբ հետաքրքրական երկասիրութեան վրայ տեղեկութիւն մը կու տայ։

Բայց ետքի տարիներս (1853) Փարիզու ազգային մատենադարանին հայկական ձեռագրաց մէջ՝ Հայաստանի հին քրիստոնէութեան վրայ համառօտ բայց ընտիր գրուածք մը գտնուեցաւ՝ այսպիսի մակագրութեամբ. « Թուղթ Աբգարու Թագաւորի Եդեսիայ քաղաքի՝ որ է

յասորի լեզու Ուռհայ, որդւոյ Մանովայ »։ Այս թէ՛ մեր
լեզուին և թէ եկեղեցական պատմութեան համար ծան-
րակշիռ գրուածին հեղինակ՝ նոյն ինքն Ղերուբնա կար-
ծուեցաւ ոմանց հմտից. և կամ աւելի հաւանականա-
բար՝ անոր երկասիրութեան մէկ մասը. որովհետև նոյն
գրուածքին վերջերը հեղինակին անունն ալ կը յիշատա-
կուի հետևեալ խօսքերով. « Զամենայն ինչ զոր հրամայեն
Թագաւորք, և զամենայն որ ինչ միանգամ լինի առաջի
նոցա, գրի և դնի 'ի տունս յիշատակաց. սոյնպէս և
յՈւռհա քաղաքի՝ Ղերուբնեա որդի Անակայ, որդւոյ Աբ-
դաշարագայ, դպրի Թագաւորին. գրեաց զամենայն ինչ
որ միանգամ իրք եղեն Ադէի առաքելոյ, 'ի սկզբանէ
մինչև ցկատարած. միաբանութեամբ ձեռն արկանելով և
Աննա (Անան) հաւատարիմ Թագաւորին. և եդին 'ի տանն
յիշատակաց քարտիսից, ուր դնին մատեանք և օրէնք
արքունականք. և որք գնեն և վաճառեն և գրին 'ի միջի
նոցա մուրհակք հաստատութեան, անդ պահին հաստա-
տութեամբ առանց արհամարհանաց »։



Հայկական ձեռագրին այս նշանաւոր գիւտէն տաս-
նըմէկ տարի յառաջ, երբ դեռ հրատարակուած չէին տը-
պագրութեամբ ոչ հայերէնն և ոչ եւրոպական լեզունե-
րով թարգմանութիւնք նոյն գրուածքին, անգղիացի ա-
նուանի ասորագէտ վարդապետն Գիւրըթոն՝ ուսումնա-
կան աշխարհի իրաւամբ մեծ ցաւ պատճառող իր մահուըն-
նէն քիչ յառաջ՝ ուզեց գիտնալ թէ հայկական մատե-
նագրութեան մէջ կա՞ր արդեօք Աբգարու պատմութեան
վերաբերեալ հին գրուածք մը, զոր ինք յաջողեր էր գըտ-
նել այն ասորի գրչագրաց մէջ՝ զոր հայրենակիցք բերեր
էին յԱնգղիա՝ Եգիպտոսի Նիտրիոյ վանքերէն։ Այս գը-
գրուածքն էր նոյն՝ փարիզու գրատան մէջ գտնուած հայ-
կական օրինակին հետ, ինչպէս յայտնի տեսնուեցաւ երբ

Գիւրըթոնի մահուընէն ետքը և նոյն տարին (1864)՝ իր բարեկամն և ուսմնակից Վրայթ հրատարակեց՝ ասորի բնագրին վրայ աւելցընելով նաև անգղիական թարգմանութիւն մ'ալ հետևեալ խորագրով. Ancient Syriac Documents relative to the earliest establishment of Christianity in Edessa. Հրատարակողն կը ծանուցանէ թէ 1848 տարիէն Աբգարու այս թուղթին հանդիպած էր Գիւրըթոն երկու հին ասորական ձեռագրաց մէջ. յարոց միոյն համար կը կարծէ որ սկզբնագիր եղած ըլլայ հայ թարգմանութեան, գրուած ըլլալով ինչպէս կ'ենթադրէր 'ի սկզբան հինգերորդ դարու. իսկ միւսն 'ի վեցերորդին՝ բայց դժբաղդաբար երկուքն ալ խիստ անկատար, գրուածքին գրեթէ կէս մասը պակսելով ասորւոյն մէջ, ուր հայերէն թարգմանութիւնն ամբողջ է և անթերի։

Ասորի բնագրաց և այս հայկական թարգմանութեան մէջ եղած տարբերութիւնը խիստ քիչ է։ Միայն նշանակութեան արժանի այն է՝ որ այս երկու գրուածք ինչուան վերջը չեն շարունակեր 'ի համաձայնութեան ընդ միմեանս. այլ 'ի վերջ կոյս պատմութեանն իրարմէ կ'անջատին. և մինչ ասորին մահուանը պատճառաւ անհետ կ'ընէ զառաքեալն Թադէոս, հայկականն ճանապարհորդել կու տայ անոր յԵդեսիոյ յաշխարհս արևելից։

Հայերէն օրինակն հրատարակուեցաւ յամի 1868 'ի Ս. Ղազար Վենետկոյ 'ի Մխիթարեան Հարց այսպիսի խորագրով. «Լաբուբնիայ դիւանագիր դպրի Եդեսիոյ, Թուղթ Աբգարու, յեղեալ յասորւոյն, լուսաբանեալ»։ Նոյն տարին գաղղիական թարգմանութիւն մ'ալ այն գրուածքին 'ի նոյն Հարց. Lettre d'Abgar, ou Histoire de la conversion des Edesséens, par Laboubnia, écrivain contemporain des Apôtres, traduite sur la version arménienne du V.me siècle.

Նախընթաց 1867 տարւոյն թուագրով ուրիշ գաղղիական թարգմանութիւն մ'ալ հրատարակուեցաւ 'ի 1868

'ի Փարիզ, Լանկլուայի Հայ պատմագրաց Հաւաքման մէջ. Léroubna d'Edesse. Histoire d'Abgar et de la prédication de Thaddée, traduite pour la premiére fois sur le manuscrit unique et inédit de la Bibliothèque Impériale de Paris, par Jean Raphaël Emine. Paris, Librairie de Firmin-Didot frères, fils et C.ie Հայկական Թարգմանութեան ուրիշ տպագրութիւն մ'ալ դարձեալ 'ի 1868 յԵրուսաղէմ, ի տպարանի սրբոց Յակոբեանց. « Ղերուբնա Եդեսացի, Թուղթ Աբգարու Թագաւորի Հայոց, և քարոզութիւնք սրբոյն Թադէի առաքելոյն։ Մակագիրն ըստ ձեռագրաց. Թուղթ Աբգարու Թագաւորի Եդեսիայ քաղաքի, որ է յասորի լեզու Ուռհայ, որդւոյ Մանովայ »։

* * *

Գրուածքիս հաւաստարմութեան գլխաւոր նշանը՝ յամենայնի ընդ Խորենացւոյն զուգընթացութիւնն է. և յայլուստ գիտենք թէ Խորենացին՝ Ղերուբնայէն քաղած է Աբգարու պատմութիւնը։ Նւ գրուածքիս մէջ անանկ դիպաց յիշատակութիւնք կան և մանր պարագաներ՝ որոնք երկասիրութեանս սկզբնագիր ըլլալուն ապացոյցներ են։ Քանի մը օրինակով հաւաստարմացընենք խօսքերնիս։

Խորենացին պատճառ մը չիտար թէ ինչու Աբգար չկրցաւ անձամբ Պաղեստին երթալ, ու Քրիստոսէ բժշկութիւն խնդրել. կամ գէթ կ'իմացընէ թէ հիւանդութիւնն էր պատճառ որ զինքը այն ճամբորդութենէն ետ կը կեցընէր։ Իսկ գրուածքիս հեղինակը քաղաքական բարակ տեսութիւն մը մէջ կը բերէ. « կամեցաւ, կ'ըսէ, ինքնին երթալ 'ի Պաղեստին, զի աչօք իւրով տեսցէ զՔրիստոս և զամենայն սքանչելիս զոր առնէր. և վասն զի չէր իւր իշխանութիւն աշխարհն Հռոովմոց՝ ընդ որ ինքն եր-

թալոց էր, զտեղի կալաւ, զի մի պատճառք ինչ լինիցին թշնամութեան »։

Մանր զանազանութիւններ ալ կ՚ըՆէ որ աւելի ժամանակակից անձի և գրչի յատուկ են։ Ասանկ են Թուահամարոց մանր իշխանները, որ Խորենացւոյն գրոցը մէջ չեն երեւնար. ինչպէս Մարիհար, Շամշագրամ և Անան իշխանաց առ Սաբինոս Եւստորգեայ ղրկուելնուն ժամանակը որոշելը՝ Աբգարու թագաւորութեան երեսուներկուերրորդ տարին, Տրէ ամսոյն տասուերկուքին։ Դարձեալ Անանայ հաւատարմին ձեռքով առ Քրիստոս թղթելը, ու անոր՝ արեգ ամսոյն չորեքտասաներորդ օրը Ուռհայէն ելլելը, ու ահկի ամսոյն երկոտասաներորդ՝ չորեքշաբթի օրը Երուսաղէմ մտնելը, ու զՔրիստոս՝ Հրէից Գամաղիէլ քահանայապետի տան մէջ տեսնելը։ Նոյնպէս Թադէոսի Ուռհա քաղաքէն ելլելը հինգշաբթի օրը մարերի ամսոյն տասնուչորսին։

Աբգարու առ Քրիստոս թղթոյն օրինակը՝ նման է ըստ ամենայնի Խորենացւոյն մէջ գտնուածին, բաց 'ի քանի մը մանրմունր տարբերութիւններէ. միայն թէ Խորենացւոյն մէջ Յիսուսի փրկիչ անունը կը տրուի յԱբգարէ. իսկ հոս՝ բժիշկ մեծ կ՚անուանի, որ թերեւս աւելի վայելուչ է տակաւին հեթանոս թագաւորի մը բերանը՝ որ միայն անոր բժշկութիւններէն գուշակած է անոր մեծ ու երկնաւոր անձ ըլլալը։

Արքունի գերդաստանին նկատմամբ ալ ծանօթութիւններ կու տայ՝ որ ուրիշ պատմչաց մէջ չեն երեւնար, և ըստ մեզ ապացոյցք են անոր հնութեանը. վասն զի կը յիշէ զԱւգոստինէ՝ Աբգարու մայրը, ու անոր կինը Շղամաթէ՝ զոր Միհրդաթայ դուստր կը կոչէ։ Դարձեալ իրեն պաշտօնեայքը յանուանէ կը յիշատակուին փոկրէ, Աբեթշէմէ, Շամշագրամ, Աբդիու, Աղի և Բարքաղաբա, Ղաբբու, Խափէս, Խօսրով և Ղբուբնիա, Շաւիթա, Պերոզ, Դանկով, և այլ ուրիշ Նախարարք։

Խորենացին կը գրուցէ թէ երբ Քրիստոս Աբգարու կողմանէ գրուած նամակը ընդունեցաւ, Թովմայի առաքելոյն պատուիրեց որ այն թղթոյն պատասխանը տայ: Ասանկ նաեւ Եւսեբիոս յեկեղեցական պատմութեան, Պրոկոպիոս և այլք: Իսկ գրուածիս հեղինակը կ'աւանդէ, — և որ հաւանականագոյն թուի, — թէ Տէրն մեր Աբգարու թղթոյն պատասխանը ոչ գրով՝ այլ բերնով եւեթ տուած ըլլայ, վասն զի կ'ըսէ. « Ընկալեալ Յիսուսի զթուղթն 'ի տան քահանայապետին Հրէից, ասէ ցԱնան հաւատարիմ արքային. Երթ և ասա տեառն քում որ առաքեացն զքեզ առ իս. Երանի՜ է քեզ զի հաւատացեր յիս մինչչեւ տեսեալ քոյ զիս. զի այսպէս գրեալ է վասն իմ: Եւ զի գրեցեր դու առ իս՝ գալ ինձ առ քեզ. վասն որոյ առաքեցայ ես յաշխարհ, կատարեալ է ամենայն ». և այլն:

Խորենացին կը յաւելու. « Զայս թուղթ եբեր Անան սուրհանդակ Աբգարու. ընդ որում և զկենդանագրութիւն փրկչական պատկերին ». ու չինչանակեր թէ ինչպէս նկարեցաւ այն պատկերը. ուստի և ոմանք ետքէն յարմարցուցած կ'աւանդեն, թէ Քրիստոս տեսնելով որ Աբգարու կողմանէ ղրկուած նկարիչ չկրցաւ իր աստուածային դէմքը պաստառի վրայ առնուլ, ձեռքն առաւ պաստառը, երեսացը վրայ դրաւ, և աստուածային դիմացը նկարագիրը տպաւորեցաւ այն պաստառին վրայ: Այս պարագայն չյիշատակեր բնաւ գրուածքիս հեղինակը, այլ կ'ըսէ յայտնապէս, թէ «(Անան) առեալ նկարեաց զպատկերն Յիսուսի ընտիր դեղովք. քանզի արուեստաւոր թագաւորին էր. և բերեալ մատոյց Աբգարու թագաւորի տեառն իւրում »[1]:

1. Ի Գենուա (Ճենովա) Իտալիոյ յեկեղեցւոջ սրբոյն Բարթողիմեոսի Հայոց (S. Bartolommeo degli Armeni) մեծարուած և պատմական հնութիւն ունեցող Քրիստոսի դաստառակ մը, որուն համար աւանդութիւնը առ Աբգար ղրկուածն է կ'ըսէ, արուեստիւ դեղոց նկարուած է ըստ հմուտից և քննողաց:

*
* *

Աբգարու թղթոյն գլխաւոր նիւթը Թադէոս առաքելոյն քարոզութիւնն է, զոր ինք Ադէ կ'անուանէ, համեմատ այն հրաշքներով՝ զորս արդէն ազգային եկեղեցական պատմութիւննիս մեզի կ'աւանդէ: «Եւ ոչ միայն Հայք, կ'ըսէ պատմիչը, այլ բազումք յարեւելից 'ի նմանութիւն վաճառականաց յիշխանութենէ Հոռովմոց գային տեսանել զնշանսն զոր առնէր Ադէ առաքեալ. և աշակերտեալքն 'ի նմանէ ընդունէին զձեռնադրութիւն քահանայութեան. և յաշխարհին իւրեանց յԱսորեստանի զգաւառականս իւրեանց աշակերտէին. և տունս աղօթանոցս շինէին 'ի ծածուկ վասն երկիւղի այնոցիկ՝ որ երկիր պագանէին կրակի և պատուէին զջուրս»:

Խորենացւոյն պատմութեան մէջ թուղթ մը կը կարդանք գրուած յԱբգարէ առ Ասորեստանեայց մանուկ թագաւորն Ներսեհ: Գրուածքիս հեղինակը այն նամակը մէջ չբերեր, այլ պարզապէս նոյն պատմութիւնը կ'աւանդէ. «Ներսեհ թագաւոր Ասորեստանեայց, կ'ըսէ, յորժամ լուաւ զգործսն զոր առնէր Ադէ առաքեալ, յղեաց նա առ Աբգար թագաւոր և ասէ. կամ տուր ածել ինձ զայրդ որ զնշանսդ առնէ առ քեզ, զի տեսից զդա և լուայց զբանս դորա, և կամ տուր գիտել ինձ զամենայն ինչ որ միանգամ արարեալ է դորա 'ի քաղաքիդ քում [1]: Ապա գրեալ Աբգարու Ներսեհի թագաւորի Ասորեստանեայց և իմացուցեալ նմա զամենայն պատմութիւն իրացն՝ զոր արար Ադէ առաքեալ 'ի սկզբանէ մինչեւ ցկատարած. և ոչ եթող ինչ զոր ոչ իմացոյց նմա

1. «Այլ վասն այնր զի գրեցեր առ իս թէ տուր ածել զայրդ բըժիշկ՝ որ զնշանսդ առնէ և քարոզէ այլ Աստուած 'ի վեր քան զհուր և զջուր, զի տեսից և լուայց զմա, նա ոչ էր բժիշկ ըստ արուեստի մարդկան. այլ աշակերտ էր Որդւոյն Աստուծոյ՝ արարչի հրոյ և ջրոյ.» և այլն: Աբգար՝ առ Խորենացւոյ:

գրով։ Եւ իբրեւ լուաւ Ներսեհ զգրեալսն առ նա՝ հիացեալ զարմանայր. և մեծապէս ցանկութեամբ կամէր տեսանել զնա»։

Աբգարու մահը ու անոր Սանատրուկ որդւոյն թագաւորելը և կրկին 'ի պաշտօն կռոց դառնալը՝ համառօտիւ կը յիշատակուի Խորենացւոյն մէջ. և պատճառը մէջ կը բերէ. «Զայս, կ'ըսէ, ծայրաքաղ արարեալ համառօտ յիշատակեցաք, որպէս զառ 'ի յայլոց պատմեալ նախկին», որով անտարակոյս զԼերուբնա կ'ակնարկէ, ինչպէս առաջ ալ ըսինք։ Լերուբնա՝ կամ իրեն ենթադրուած գրուածիս հեղինակը՝ ասանկ մանրապատում կ'ընէ նոյն ժամանակաց դէպքերը.

«Յետ ամաց ինչ մեռաւ Աբգար թագաւոր, և եկաց 'ի թագաւորութեան մի յորդւոց իւրոց, այր չար և ապըստամբող. լի ամենայն անօրէնութեամբ, որ ատէր զխաղաղութիւն և ոչ ընդունէր զվարդապետութիւն քարոզութեան աւետարանին. յղեաց առ Ադդէ եպիսկոպոս մինչդեռ նստէր յեկեղեցւոջ, և խօսէր զպատգամս գրոց սրբոց յականջս ժողովրդեան, և ասէ. «Արա ինձ խոյրս ոսկեղէնս զոր օրինակ առնէիր յառաջ հօրն իմոյ»։ Եւ ոչ առ յանձն Ադդէ. առաքեաց անդրէն և ասէ. «Ոչ թողում ես զպաշտօնս Քրիստոսի որ աւանդեցաւ ինձ յԱդդէէ առաքելոյ, և առնեմ խոյր անիրաւութեան»։ Եւ իբրեւ ետես նա եթէ ոչ հաւանի նա կատարել զկամս նորա, յղեաց և խորտակեաց զսրունս նորա՝ մինչդեռ նստէր յեկեղեցւոջ և թարգմանէր 'ի մէջ ժողովրդեանն։ Եւ 'ի մեռանելն իւրում երդմնեցոյց զՓղոտ և զԱբշղամայ՝ եթէ աստէն իսկ 'ի տանս յայսմիկ ուր մեռանիմս վասն ճշմարտութեան սորա՝ դիք զիս, և աստէն թաղեցէք։ Եւ որպէս երդմնեցոյց զՓղոտ և զԱբշղամայ՝ նոյնպէս արարին. թաղեցին զնա անդէն 'ի ներքոյ քան զմիջին դուռն եկեղեցւոյն, 'ի միջի՝ ընդ արս և ընդ կանայս։ Եւ եղեւ սուգ մեծ և դառն յեկեղեցւոջն և յամենայն քաղաքն վասն իրացն եղելոցն. որպէս եղեւ սուգ

և տրտմութիւն՝ յորժամ վախճանեցաւ բարիոք վկայութեամբ Աղէ առաքեալ վարդապետն նորա 'ի ձեռաց ամպարշտաց՝ 'ի կողմանս արեւելից »։

Հաւանական կարծեօք հմտագունից՝ ըստ մեծի մասին Ղերուբնայ և կամ Լաբուբնեայ դիւանագրի Եդեսիոյ, ժամանակակցի առաքելոց և աշակերտաց կը վերաբերի այս գրուածքը. սակայն երկու հարիւր տարուան միջոցի մէջ շատ փոփոխութիւններ կրած՝ ու երբեմն նաեւ յաւելուածներ յիրահամարձակ ձեռաց և գրչաց. և վերջին ու գլխաւոր խմբագրութիւնն՝ երրորդ դարուն առաջին կիսուն մէջ եղած կ'երեւնայ։ Սակայն եթէ մէկ կողմանէ հայկական թարգմանութեան ընտիր և յստակ ոճը, ասորի բնագրին հետ համաձայնութիւնը, հնութիւն ձեռագրաց յորս պահուած և առ մեզ հասած է, տարակոյս չեն ձգեր թէ արդէն 'ի հինգերորդ դարու կար գրեթէ մի և նոյն կերպարանքին մէջ՝ յորում այսօր, և մեր հին տօնացոյց գրոց մէջ՝ որոց կարգադրութիւնը սրբոյն Սահակայ պարթեւի կ'ընծայուի, 'ի 23 դեկտեմբերի պատուիրելով կատարել զտօն Ադդէի հայրապետին Եդեսիայ քաղաքի, աշակերտին Թադէոսի, և կը յաւելու. « Ընթեռնուլ զթուղթն Աբգարու և զգիրս նորին ». միւս կողմանէ ալ չենք կրնար կարծել թէ աստուածաբանական քանի մը կանխահաս կամ անընդունելի մանրամասնութիւնք վրիպած ըլլան 'ի լուսաւոր աչաց Մովսիսի Խորենացւոյ մը կամ մեծին Սահակայ պարթեւի։ Ուստի կը բռնադատուինք յետագայ դարուց ընդօրինակողներու ընծայել այս յաւելուածներն, և հաստատել թէ ըստ մեծի մասին նոյն գրուածքն է՝ ինչ որ էր 'ի ժամանակս և առաջի աչաց մեր հիմա իսկ յիշատակած անձանց, և Եւսեբեայ. որով և մեծարելի և հետաքննական յիշատակարան մը հին քրիստոնէութեան։

Ասիկայ է գաղղիարէն թարգմանչին կարծիքը 'ի յառաջաբանին։

Այլեւայլ թարգմանութիւնք և լուսաբանութիւնք եղած

*են այս գրուածքին։ Բաց ՚ի արդէն վերը յիշուածներէն աւելցընենք նաեւ*

The doctrine of Addai, the apostle, now first edited in a complet form in the original syriac, with in english translation and notes, by Georges Philipps. London, 1876.

---

# ԴԱՐ Դ

---

*Քրիստոնէական կրօնից կրկին հաստատութիւնն 'ի Հայաստան։ — Անոր ազդեցութիւնն և արդիւնք մեր մատենագրութեան վրայ։*

Չորրորդ դարուն մէջ նշանաւոր կերպարանափոխութիւն մը կրեց Հայաստան։ Սուրբ աւետարանին քարոզութիւնը՝ որ դեռ գրուած չգրուած՝ Հայաստանի մէջ ալ պատմուելով, երկար տեւողութիւն մը չունեցաւ հոն, չորրորդ դարուս մէջ կրկին հաստատութիւն առաւ այն նշանաւոր անձին ձեռքով՝ որ արժանապէս Լուսաւորիչ կոչուած է տասնուհինգ դարերէ վեր։ Տրդատ թագաւորը՝ որ նոյն սուրբ կրօնից քարոզիչը մեռցընելու համար իր ամէն ոյժը բանեցուց, անոր երկնահրաշ զօրութենէն յաղթուեցաւ. այն երկնաւոր լուսոյն դէմ երկար ատեն մաքառելէն ետքը՝ ինքը նոյն լուսով լուսաւորուեցաւ. ու հրաման հանեց որ Հայաստանի հին կրօնից մեհեաններն կործանին, ու անոնց վրայ՝ միոյն և ճշմարտին Աստուծոյ անուանը փառաւորութեան տաճարներ կանգնուին։

Ասանկ կրօնական մեծ կերպարանափոխութիւն մը՝ ինչպէս քաղաքականին վրայ իր զօրաւոր ազդեցութիւնն ունեցաւ, ասանկ ալ ուսումնականին վրայ։ Հաւատքը քարոզելը բաւական չէր. այն հաւատքը ընդունելի և տեւական ընել տալու համար՝ հարկ էր նաեւ մտքերն ընդելացընել և կրթել. ու այս կրթութիւնը անհրաժեշտ

կը պահանջէր ուսումն։ Տարակոյս չկայ որ նոյն ուսումը առաջ տանելու համար ամենազօրաւոր միջոց մը կը պակսէր, կամ դեռ բոլորովին կազմակերպուած չէր, գիրը. հետագայ ոսկեղէն դարու ջանից արդիւնք. որով կարելի չէր թէ կրթութիւնը և թէ ուսումը ընդհանուր ընել այնպիսի ընդարձակածաւալ աշխարհի մը մէջ. և սակայն ոչ գրոյն պակասութիւնը և ոչ աշխարհին ընդարձակութիւնը յուսահատեցուցին զԳրիգոր և զՏրդատ։ Ագաթանգեղոս կ'աւանդէ թէ Տրդատ երկու ազգ դպրոցաց կանգնեց. յորոց մէկը թագաւորական կը կոչուէր, արքունի և իշխանական տոհմէ եղողներուն կրթութեանը համար, և որոց գլուխ կ'ըլլար ինքն Տրդատ. «Առնոյր այնուհետև սուրբն Գրիգոր զԱրշակունեաց տոհմի որեարն, 'ի վարժս վարդապետութեան պարապեցուցանէր. որոց առաջնոյն Տրդատ անուն, որ և թագաւոր իսկ էր, ամենայն տամբ իւրով»։ Աշխարհին այլ և այլ կողմերը կը հաստատէր նաև հասարակաց կրթութեան պատշաճեալ ուսումնարաններ, ինչպէս կը վկայէ նոյն ինքն Ագաթանգեղոս. «Ի տեղեաց տեղեաց սահմանացն Հայոց տայր հրաման թագաւորն Տրդատ իւրոյ իշխանութեանն՝ յաշխարհաց և 'ի գաւառաց բազմութիւն մանկըտւոյ ածել յարուեստ դպրութեան, և կարգել 'ի վերայ հաւատարիմ դպրապետս. առաւել զազգս պըղծագործ քրմացն, զմանկունս նոցա 'ի նոյն ժողովել գումարել յարժանաւոր տեղիս դասս դասս, և դարման ռոճկաց կարգել։ Եւ զնոսա յերկուս բաժանեաց, զոմանս յասորի դպրութիւն կարգեալ և զոմանս 'ի հելլեն. և անդէն յական թօթափել՝ վայրենամիտքն և դատարկասունքն և անասնաբարոյ աշխարհքն՝ մարգարէագէտք և առաքելածանօթք և աւետարանաժառանգք լինէին, և ամենայն աւանդելոցն Աստուծոյ ոչ իւիք անտեղեակք»։

Զորրորդ դարուն Հայերը սովորութիւն ունէին Աթէնք, Կեսարիա, Բիւզանդիոն, Եդեսիա և Աղեքսանդրիա երթալ, և հոն ոչ միայն կրօնական, այլ և արտաքին ուս-

մանց ետեւէ ըլլալ։ Ասկէց է որ նոյն դարուն մէջ ուսման պարապողներն հաւաստարապէս կը ճանչնային թէ իրենց հայրենական լեզուն, և թէ յոյն և ասորի լեզուները. ուր հասարակ ժողովուրդը այն լեզուաց կատարեալ տեղեկութիւնը չունենալով, որով եկեղեցական պաշտամունքը կը կատարուէին, պէտք կ'ունենար երբեմն նաև թարգմանի։ Ծանօթ էր շատերուն նաև պարսկերէն լեզուն, 'ի պատճառս քաղաքական այլ և այլ յարաբերութեանց։

Այսպիսի ուսումնական դրից մէջ էր Հայաստան 'ի չորրորդ դարու։ Քիչ մատենագրաց անուանք կը յիշատակուին՝ որ այն ժամանակին ծաղկած ըլլան. կամ հնութիւնը՝ անոնց անուանքը ինչուան մեզի չհասոյց, և կամ ընդհանուր և ըստ արժանւոյն չծաղկած ուսումնականութիւն մը չկրցաւ անկէ աւելին երևցընել։

Տեսնենք հիմայ նոյն ատենը ծաղկող մատենագրաց ուսումնական արդիւնքը։

---

# ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

*Իր ջանքն և արդիւնք նաև ուսմանց յառաջադիմութեան համար։ — Հաստատած դպրոցները։ — Յաճախապատում գիրքը։ — Անոր նիւթն ու բովանդակութիւնը։ — Ո՛ր լեզուով գրուած ըլլալը։ — Լուսաւորչի անուամբ ուրիշ երկասիրութիւնք։*

Ինչպէս հաւատոց՝ ասանկ ալ դպրութեանց նորոգմանը հայր և հեղինակ է սուրբն Գրիգոր Լուսաւորիչ։ Ազգային եկեղեցական պատմութեան կ'իյնայ այս անզուգական անձին արդիւնքը հռչակել՝ զոր ունեցաւ սուրբ հաւատոց՝ 'ի մեզ հաստատութեան նկատմամբ։ Մենք պարզապէս իբրև մատենագիր պիտի նկատենք զինքը հոս։

Լաւ գիտնալով սուրբ Լուսաւորիչն թէ ուղիղ գիտութիւնը ոչ միայն չհակառակիր հաւատոց, այլ նաև մեծապէս նպաստամատոյց է անոր յառաջադիմութեանն և բարգաւաճանաց, առջի ջանքն եղաւ հաւատքով ազգը լուսաւորելէն ետքը, այն հաւատոց մշտնջենաւորութիւնը ապահովցընել՝ գիտութեամբք. անոր համար դպրոցներ հաստատելու ետևէ եղաւ։ Ինչպէս հաւատոց քարոզութիւնը՝ ասանկ ալ ուսումնական կրթութիւնը իշխաններէն սկսաւ. ամենէն առաջ բացած վարժարանը՝ թագաւորական դպրոց մը եղաւ, և հոն կրթեց իշխաններ, ու նաև զնոյն ինքն Տրդատ թագաւորը, ինչպէս քիչ մ'առաջ ալ յիշեցինք։ Ասկէ զատ համոզեց զՏրդատ թագաւոր՝ որ այլ և այլ տեղուանք հասարակաց դպրոցներ հաստատէ. «Հաւանեցուցանէր կ'ըսէ պատմիչը, զթագաւորն զի 'ի գաւառաց գաւառաց, և կողմանց կող-

մանց 'ի տեղիս տեղիս ժողովեացին. բազմութիւն ման-կըտւոյ առ 'ի նիւթ վարդապետութեան ». և այլն։ Ագաթանգեղոսի խօսքերէն առնելով կ'աւանդէ և Վարդան. « Դպրոցս յօրինէր, մանկունս հաւաքէր, վարդապետս յոյն և ասորի գրոյ և լեզուի գիտակս կացուցանէր, ռոճիկս կարգէր յարքունուստ »։ Այս արդիւնքը Տրդատայ կու տայ Բիւզանդ. « կարգէր, կ'ըսէ, և 'ի տեղիս տեղիս դպրոցս յունարէն և ասորերէն՝ յամենայն գաւառս Հայոց »։



Այս դպրոցաց հիմնարկութենէն զատ՝ մասնաւոր գրուած մըն ալ հասած է ձեռքերնիս՝ սրբոյն Գրիգորի աշխատասիրութեանը արդիւնք, Յաճախապատում կոչուած։ Այս գրքին հարազատութեանը կը վկայեն ոչ միայն յետին ժամանակի մատենագրաց մէջ Խոսրով Անձևացեաց եպիսկոպոսն, իր որդին Նարեկացին Գրիգոր, Մագիստրոս, Գրիգոր Սարկաւագապետ, հապա նոյն իսկ իրեն ժամանակակից պատմիչն Ագաթանգեղոս հետևեալ խօսքերով. « Ապա յետ այսպիսի գործոց՝ առաւել բարձրագոյն վարդապետութիւն սկսեալ երանելւոյն Գրիգորի 'ի ճառս յաճախագոյնս, դժուարապատումս, առակս խորիմացս, դիւրալուրս, բազմադիմիս, շնորհագիրս, յարդարեալս 'ի զօրութենէ և 'ի հիւթոյ գրոց մարգարէականաց, լի ամենայն ճաշակօք կարգեալս և յօրինեալս՝ աւետարանական հաւատոցն ճշմարտութեան. յորս բազում նմանութիւնս և օրինակս 'ի յանցաւորաց անտի՝ առաւել վասն յարութեան յուսոյն 'ի հանդերձեալսն՝ յօրգորեալ. զի հեշտընկալ և դիւրահաս՝ տխմարագունից և մարմնաւոր իրօք զբաղելոց լինիցին առ 'ի սթափել. զուարթացուցանել, զօրացուցանել և հաստատահիմն առ 'ի խոստացեալ աւետիսն քաջալերել »։ Յովհան իմաստասէր հայրապետն ալ Ագաթանգեղեայ այս խօսքերուն

*հետեւողութեամբ կ'ըսէ եկեղեցւոյ վրայ յօրինած ճառին մէջ. « Ըստ Նմին օրինակի և իմ պսակաւորն է հայրապետն սուրբ Գրիգոր՝ ըստ տերունական առակին՝ զյարութիւն մեռելոց բուսոց և տնկոց օրինակէր 'ի գարուն բուսաբեր, և 'ի դալարանալ մարդկան 'ի գերեզմանէ »։*

*Քսանուիրեք ճառով կը բաղկանայ սրբոյն Գրիգորի այս երկասիրութիւնը. որոց մէջ նախ սուրբ Երրորդութեան խորհրդոյն և աստուածածանօթութեան վրայ խօսելով, անկէ արարչին՝ իր արարածոց վրայ ունեցած մարդասէր խնամոց վրայ կը ճառէ։ Ապա իւր խնամոցը ու գրեթէ իւր արեանը գին սիրելի հօտին՝ ամենուն վիճակին յարմար յորդորական, ամոք ու ողոքիչ խրատներ կ'աւանդէ, որդեսէր հօր մը սրտովն ու լեզուով։ Վերջը միակեցական կենաց ետեւէ եղողներուն յարմար պատուիրաններ ու խրատներ մէջ կը բերէ։*

*Հետագայ ցուցակը ընթերցողին աչքին դիմաց պիտի դնէ՝ իր անուամբը ինչուան առ մեզ հասած ճառից գլխակարգութիւնը։*

**Ա.** Յաղագս ամենասուրբ Երրորդութեան։

**Բ.** Վասն անձնաւորութեան Երրորդութեան։

**Գ.** Վասն միոյ հաւատոյ։

**Դ.** Վասն յանդիմանութեան մոլար մտաց և ընծայութիւն աստուածպաշտութեան։

**Ե.** Վասն հաստատութեան ճշմարտութեան և առաջնորդութեան կենաց խրատու։

**Զ.** Վասն յանդիմանութեան ծածկութից իրաց, որ զաներեւոյթսն յերեւելիս ածէ։

**Է.** Վասն յօրինուածոց արարածոց։

**Ը.** Վասն յանդիմանութեան դժնդակ վարուց և ընծայութիւն առաքինութեան հանդիսից։

**Թ.** Վասն ամենարուեստ կատարեալ պահոց։

**Ժ.** Վասն երախտաւորութեան անդերձ բարերար կամացն, և յորդորումն 'ի լաւն և յառաւելն ըստ ճշմարիտ առաքինութեան։

**ԺԱ.** Վասն վարուց առաքինութեան որ հանդիսիւք լաւութեան պսակեալ երանին։

**ԺԲ.** Վասն խնամոց արարչին և կշտամբութիւն անհնազանդ ստա-

հակութեան և առաջնորդութիւն բարութեան բարւոյն լաւու-թեան։

ԾԳ. Վասն լաւութեան յիշատակաց 'ի պէտս օգտից, զանհետեւութեան յերեւելիս ցուցանելով 'ի գործ առաքինութեան փոխել 'ի յոյս կենաց։

ԾԴ. Վասն մարդկութեան որ յԱստուծոյ խնամօք անուշութեան կան։

ԾԵ. Վասն հոգւոյ մարդկան բացայայտութիւն։

ԾԶ. Վասն մարտիրոսաց վարդապետութիւն ուսմանց։

ԾԷ. Զգուշութիւն զգաստութեան ընդ մտերիմս և ընդ զմընդառս պատրիւ և պատիժս։

ԾԸ. Վասն զօրութեան Աստուծոյ երախտեացն հանդիսիւք մարտի-րոսաց քաջայայտ։

ԾԹ. Վասն յորդորման աղաչաւորութեան։

Կ. Վասն խորագիտութեան և մարտից։

ԿԱ. Վասն արոց խնամատութեան որ 'ի Հոգւոյն սրբոյ պարգեւեցաւ։

ԿԲ. Վասն անփոփոխ ինքնութեան էութեանն Աստուծոյ։

ԿԳ. Վասն խրատու ճգնաւորաց յառաքինութիւնս յորդորումն 'ի Քրիստոս Յիսուս։ Նորին Աղօթք։

Այս ճառերուն մէջ աստուածանուէր սրտով ու միտքով լեցուն հոգիէ զատ, յունական հարց նմանողութիւն և անոնց խօսքի ոճը կը բանեցընէ Գրիգոր։ Իր նուիրական վարուց պատմութիւնը մեզի կը ցուցնէ՝ թէ ինչպէս հօրը հետ մէկտեղ, պատժապարտին Անակայ, նաև բովանդակ ընտանեաց բնաբարձ ջընջման հրամանէն՝ բարերար ձեռք զինք փրկեցին, փոխադրելով 'ի Կեսա-րիա, ուր հաւատոց սրբութեան մէջ սնաւ և զարգացաւ։ Հոն առեն անցնելէն ետքը՝ դրկուեցաւ եպիսկոպոսական սուրբ աստիճանն ընդունելու։ Այս ամէն պարագայք ընդելացուցին և կրթեցին զնա 'ի յունական ուսմունս, յոճ և 'ի լեզու։ Հոն սորված վարդապետութիւնը՝ զոր դիցապաշտ Հայաստանին կ'ուզէր ծանօթացընել, ա-նոնց լեզուովը կ'աւանդէ, ցուցընելով կրթուած միտք ու հանճար։ Մեր ազգին մէջ քիչ հայրապետք կրցած են աստուածութեան վրայ խօսած առեննին այն վարժ գրիչը և լեզուն գործածել, որուն առաջին վարդապետն ու հե-ղինակ է ինքն սուրբ Գրիգոր։

Խնդիր է թէ ի՛նչ լեզուով շարագրած է այս գիրքս Լուսաւորիչ։ Ոմանք կը համարին թէ հայերէն շարագրած ըլլայ, այլ՝ յունարէն․ և պատճառ կը բերեն, թէ այն ժամանակ հայերէն գիր չըլլալուն, հարկ էր որ յունարէն գրէր։

Աւելի հաւանական երեւցածն է որ Հայոց համար եղած աշխատութիւն մը բնականաբար պէտք էր որ այն լեզուով գրուէր՝ որ ազգին մեծագոյն մասին հասկնալի ըլլար․ ապա թէ ոչ՝ ընդունայն աշխատութիւն և անպատճառ յոգնիլ կ'ըլլար։ Հայերէն գիր չըլլալուն, անշուշտ ինքն ալ՝ ինչպէս իր ժամանակակիցք՝ յոյն տառերը գործածած են, հայկական բառեր արտադրելու համար։ Բայց պատմական ստուգութիւն մը չունենալով այս կարծեաց, բանասէրք չեն ուզեր պնդել որ բո՛ւն ինքն սուրբ Գրիգոր հայերէն գրած ըլլայ այս ճառերը, մինչ ազգաւն ու լեզուով՝ օտար ու անծանօթ անոնց, որոց սրտիւն և հոգւով հայր էր գորովագութ, կրնար իր յունարէն շարագրածը հայերէնի վերածել տալ ուրիշի [1]։

* * *

Բայց ՚ի Յաճախապատում գրոց, և Ագաթանգեղայ պատմութեան կարեւոր մէկ մասը կազմող վարդապետական քարոզութենէն, Լուսաւորչայ կ'ընծայուին նաև քանի մը ուրիշ մանր երկասիրութիւնք։ Ասոնց մէջ գըլխաւոր է երեսուն թուով կանոններ, որոնք կանոնագրոց մէջ Լուսաւորչի անունը կը կրեն, և թերեւս յաւելուած են Նիկիոյ ժողովոյն մէջ սահմանուած կանոններուն,

1․ Յաճախապատում գրոց օրինակաց միոյն մէջ հետեւեալ հետաքրքրական յիշատակարանը կը կարդանք «Կատարեցաւ․․ գիրքս որ կոչի Յաճախապատում․․․ էր օրինակ սորին ԳՃԸ թուի էր առաջին Թըւականն Հայոց ՚ի Լուսաւորչէն․ և առեալ օրինակ ՚ի մայրաքաղաքն

որոնք բերաւ 'ի Հայաստան սուրբն Արիստակէս, և զորս ընդունեց իր և Հայաստանեայց սուրբ հայրն՝ Լուսաւորիչ, անոնց ընդունած հանգանակին վրայ աւելցընելով « իսկ մեք փառաւորեսցուք » աղօթքը։ Կը վկայէ և Խորենացին. « Ընդ որ ուրախացեալ, կ'ըսէ ; սրբոյն Գրիգորի, սուղ ինչ-կանոնս յինքենէ 'ի կանոնս ժողովոյն (Նիկիոյ) յաւելու, վասն առաւել զգուշութեան իւրոյ վիճակին »։

Այս երեսուն կանոններէն զատ՝ ձեռագրաց մէջ կը հանդիպինք նաև ուրիշ մետասան կանոնաց կամ հարցմանց, որոնք սրբոյն Գրիգորի անունը կը կրեն, այսպիսի խորագրով. « Կանոնք սրբոյն Գրիգորի Պարթևի. դարձեալ՝ հարցումն և պատասխանիք նոցա »։ Հրատարակողն Աբէլ արքեպիսկոպոս յԱրարատ ամսագրի Էջմիածնի (1873 յէջ 409) յաւելու. « Բաց յերկուց սատի կանոնացս եղելոց 'ի կանոնագիրս մեր՝ որպէս ասացաք, անուամբ սրբոյն Գրիգորի երկրորդ Լուսաւորչին մերոյ, գտաք դարձեալ 'ի նմին և զերկուս ճառօրէն կանոնս նորին Գրիգորի. առաջին մասն կարգի ուխտի և որաշում վանաց, և երկրորդն յաղագս նուիրանաց քահանայից և վանորէից՝ կոչեցեալն Ագապ, թարգմանեալ յաւուրս սրբոյն և մեծին Սահակայ ընդ ձեռն Եզնակայ, որպէս է տեսանել 'ի վերնագրին յորոց երևի առեալ սրբոյն Սահակայ, և ընդարձակեալ զկանոնս արարեալս նորա յամին 426 »։

Կիլիկիա, որ է 'ի ժամանակին Հայոց Թագաւորաց, և քաղաք իմաստնոց »։ Դարձեալ 'ի վախճան գրոցն. « Եղբարք իմ, զայս յաճախապատումս օրինակն Սըսոյ դրջատանն տեսք՝ 'ի մեր Թուականն ԳՃԸ թիւն էր. այժմուս մեք գտաք՝ մեր օրինակաց ժամանակին թիւն էր ՌՃԻԲ »։

Լուսաւորչայ Յաճախապատում գիրքը երկու անգամ տպագրութեամբ հրատարակուած է, մէյմը 1737ին 'ի Կոստանդնուպոլիս՝ Պաղտասար դպրին ձանիւքը. մէյմ'ալ 1838ին 'ի Վենետիկ Մխիթարեանց վանքը, ձեռագրաց բաղդատութեամբ և հաւաստաւորիմ ընթերցուածով։

Լուսաւորչին է նաև ժամագրոց մէջի մաղթանքը « Աստուած մեծ, հզօր և փառաւորեալ »․ որուն համար աւանդութիւնը կը գրուցէ թէ երգած ըլլայ Հռիփսիմեանց ու Գայիանեանց մարմինները ամփոփելու ժամանակ ։ Ասկէ զատ ուրիշ երկու աղօթք ալ իր անուամբն․ « Օրհնեալ է մարդասիրութիւն քոյ տէր իմ »․ և միւսը՝ « Աղաչեմ զքեզ » ։

Վերջի տարիներս գտնուեցաւ Լուսաւորչայ անուամբ նաև Պատարագամատոյց գիրք մը, որուն վրայ մեր այս երկասիրութեան Թարգմանութեանց մասին մէջ, նոյն նուիրական գրոց վրայ խօսելու առենները ընթերցողաց մտադրութիւնն դարձուցեր ենք ։

---

# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

---

Ո՞վ էր Ագաթանգեղոս։ — Հնոց կարծիքը իր վրայ։ — Յառաջաբանն ըստ յունական օրինակին։ — Ագաթանգեղեայ պատմութեան նիւթն։ — Իր գրոց հարազատութեան վրայ տարակոյսներ։ — Ո՞ր լեզուով գրուած ըլլալուն խնդիրը. — Հայկական և յունական օրինակք։ — Առ Սեբէոսի հատուած մը իր անուանով. — Դաշանց թուղթ ու անոր հարազատութեան վրայ կարծիք և գրութիւնք։ — Իր անուանովը յիշուած մանր երկասիրութիւն մը։ — Ագաթանգեղեայ գրոց տպագրութիւնք և թարգմանութիւնք։

Լուսաւորչի ձեռքով Հայաստանի մէջ գործուած զարմանալի դէպքերը ու աստուածային նախախնամութեան աքանչելիք՝ արժան էր որ յետագայից մտքին մէջ հաստատուն մնալու համար գրով մշտնջենաւորուէին։ Այս փափաքը ունեցաւ նաև Տրդատ Թագաւորը, ու յանձնեց Ագաթանգեղոսի որ ազգաւ հռովմայեցի էր, ու Տրդատայ հետ մէկտեղ՝ իբրև արքունի քարտուղար՝ Հռովմէն Հայաստան եկած։ Ասկէ աւելի տեղեկութիւն մը չեն աւանդեր մեզի ոչ ինքը և ոչ պատմութիւնն՝ իր կենացը առաջին կամ վերջին հանգամանացը վրայ։ Միայն ինքն իր անձին համար այս վկայութիւնը կու տայ, զոր թողած Պատմութեան գիրքն ալ կ'երաշխաւորէ, թէ հռովմէրէն և յունարէն դպրութիւն սորված էր։

Որչափ ալ ժամանակակից, կամ գրեթէ ժամանակակից դիպաց պատմող պիտի ըլլար Ագաթանգեղոս, սա-

կայն զանազան հին դիպաց յիշատակութիւնք ալ մէջ մտնելով, պէտք էր որ իրմէ առաջ եղող պատմագրաց գրուածներէն քաղէր զանոնք։ Այս վախճանաւ ինչուան իր օրերը գտնուած՝ ու ցրիւ աւանդուած պատմութիւնները մէկտեղ բերաւ, անոնցմով կազմելու իր պատմութեան գրքին առաջին մասը. «Հասեալ առ իս, կ'ըսէ, հրամանի 'ի մեծ արքայէն Տրդատայ, կարգել ինձ 'ի ձեռնարկութենէ նշանագիւտ ժամանակագրաց՝ զհայրենականացն գործս քաջութեան»։

Տարակոյս չկայ որ պատմութիւնը անկենդան դիակ մըն է, ու զանիկայ ախորժելի ընծայելու համար՝ բաւական չէ գոյնզգոյն ու գեղեցիկ պատմուճան մը ձգել անոր վրայ. այլ պէտք է կենդանութեան շունչ ազդել այն դիակին, որպէս զի պատմութիւնն ըլլայ խօսողը՝ չէ թէ պատմողը։ Այս յատկութիւնը կարգէ դուրս կերպով մը ունի Ագաթանգեղոս։ Իրաւ է որ պատմութիւնը ինքնիրմէն գեղեցիկ է ու զարմանահրաշ, բայց գրողին ճարտարութիւնն ալ մեծապէս օժանդակած է այն գեղեցկութեանը։ Այսպիսի կարգաբանութիւն մը ունի գըրուածը, որ յայտնապէս կ'երեւցընէ թէ Հռովմայ մէջ ծնած ու դաստիարակուած հանճար մըն է. այն քաղաքին՝ որ հաւասարապէս գիտցաւ գործածել զզէնս և զգրիչ։

* * *

Իր այս ամէն յատկութեանցը համար՝ մեծապէս յարգի էր թէ՛ ինքը և թէ իր գրուածը, ոչ միայն իրմէն ետքը եկող՝ հապա նաև իրեն ժամանակակից մատենագրաց աչքէ։ Զենոբ Գլակ երկիցս կը յիշատակէ Ագաթանգեղոսի անունը և գրուածքը. և տեղ մը՝ իրմէ առաջ գրելն ալ կը ծանուցանէ։ «Դուք մի՛ ինչ աղարտէք, կ'ըսէ, զաւելու պատմութիւնս կամ եթէ Ագաթանգեղոս զայդ ոչ յիշէ. զի ես յառաջագոյն գրեցի քան զնա»։ Խո-

ըննացին՝ որ իր գրուածոցը մէջ ընդհանրապէս համառօտախօս ոճ մը կը բանեցընէ, երբոր կ'ուզէ որ ընթերցողք աւելի կատարեալ տեղեկութիւն մը ստանան՝ Ագաթանգեղոսի կը ղրկէ, ու աչօք քարտուղար Տրդատայ կը կոչէ զինքը։ Փարպեցին ալ իր Պատմութեան գրքին սկիզբը սանկ կը խօսի անոր վրայ. «Ընդ բազում ճառս մատենից առաջնոց պատմագրացն Հայոց անցի. յորոց ըստ երկար ընթերցողութեան գտի 'ի նոցանէ զժամանակաց և զդարուց աշխարհիս Հայոց բազմադիմի յեղափոխութիւնս, յ'ստոյգ և յանսխալ կարգաւորութենէ առաջին գրոցն, զոր յարմարապէս պատմեալ ծանոյց մեզ երանելին Ագաթանգեղոս. այր բանիբուն գիտութեամբ և լի ամենայն հրահանգիւ, ստուգաբան 'ի կարգադրութիւն ճառից, և յարմարագիր 'ի պատմութիւնս ասացուածի իւրոյ։ Սա զնուազումն թագաւորութեան արշակունւոյն Արտաւանայ և զզօրանալն Ստահրացւոյն Արտաշրի որդւոյ Սասանայ՝ ստուգապէս յօրինուածով կարգեալ դրոշմեաց, զքինախնդրութիւնն Խոսրովու... Զայս ամենայն, ևս առաւել քան զայն գիտութիւն յիւրում հաստատուն և անսխալ կարգաւորութիւնսն պատմեաց մեզ երանելի այրն Աստուծոյ Ագաթանգեղոս»։ Ժամանակաւ կրտսեր պատմիչք ալ՝ նոյնպիսի գովութեամբք զԱգաթանգեղոս կը մեծարեն. որոնցմէ Աղուանից և Սիւնեաց պատմիչքն նոր դէպք մը կ'աւանդեն. Շապուհ Պարսից թագաւորն ուզելով Հայոց նախարարներուն աղնուականութեան կարգը ստուգել, հարցուց անոնց թէ ունի՞ն այնպիսի գիրք մը յորում անտարակուսելի հաւաստեօք ապացուցուած ըլլայ այս բանս։ Ան ատեն Հայոց նախարարներն մէջերնին խորհուրդ ընելով, թագաւորին առջևը դրին «զցանկալին ամենայն տառից՝ զհրաշաբանականն տպաւորումն, զգրաւորական զգիրս ցանկալւոյն սրբոյն Գրիգորի՝ որ Ագաթանգեղն կոչի»։ Թագաւորը հրամայեց որ իր լեզուովը թարգմանեն այն գիրքը. և իմանալով թէ իր նախնւոյն Արտաշիրի օրերէն կը սկսի, Պարսից աշխար-

հաժողով գնդին առջև կարգէ դուրս ուրախութիւն ցըցուց։ Ետքը ձեռքն առնելով այն գիրքը, կը համբուրէր ու Պարսից լեզուով այլ և այլ գովութիւններ կու տար։ Անկէց տեղեկանալով Հայոց առաջին կարգի ազնուական ցեղերը, սկսաւ նոյն կերպով նախապատիւ ու գահերէց բազմեցընել զանոնք արքունական տաճարին մէջ։

Մեր ամէն պատմագիրք միաձայն են ի դրուատել զԱգաթանգեղոս և իր նշանաւոր երկասիրութիւնն։

Փարպեցին կ'ըսէ. «Սկիզբն առաջին գրոց պատմութիւնն Հայոց, որում սկիզբն արարեալ պատմեաց ստուգիւ այրն երանելի Ագաթանգեղոս....։ — Խորենացին՝ «Ցաղագս սորա (Խոսրովու արքայի առաջնոյ) և համատոհմիցն կարճ ի կարճոյ իմն անցանելով աջող քարտուղարն Տրդատայ Ագաթանգեղոս, փոքր ի շատէ պատմէ զմահն Արտաւանայ Պարսից թագաւորին... Արդ թէպէտև Ագաթանգեղոս այսպէս համառօտ էանց ընդ այն, բայց ես հաւանեալ եմ յաւէտ ձիգն երկայն առնել զպատմութիւն ժամանակիս։» — Յովհաննէս կաթուղիկոս. «Որպէս լիապէս իսկ մեզ ուսուցանէ աջողակ պատմագիրն Ագաթանգեղոս»։ — Կիրակոս պատմիչ. «Սքանչելի և կորովամիտն Ագաթանգեղոս, որ թարգմանի բարի հրեշտակ. զոր եցոյց հրամանաւ մեծազօր և քաջ արքային Տրդատայ ղհանգամանս իրաց եղելոց առ Հայս, ի ձեռն սրբոյն Գրիգորի պարթեւի, և խոստովանողին Քրիստոսի զգործած նշանաց և արուեստից և սքանչելագործութեանց. և զպատճառ լուսաւորութեան ազգիս Հայոց, գեղեցիկ և պայծառ պատմութեամբ աւարտէ»։ — Գրիգոր Մագիստրոս ի թղթին առ Պետրոս Գետադարձ կաթուղիկոս. «Բարի յիշատակի յիւրն աստուածեղէն տառս արժանի եկեալ գրէ Ագաթանգեղոս»։ — Սամուել երէց. «Իսկ մերայինս, ազգի ասել առաջին պատմագիր զԱգաթանգեղոս, որ գրեաց զպատճառ լուսաւորելոց զՀայս սուրբն Գրիգորի նորասքանչ համբերութեամբ»։

Անանուն գրուածքի մը մէջ ալ՝ որ
եւայլ յունական պատմական երկասիր
ւելու. « Իսկ ըստ հայումս՝ նախ առա
թանգեղոս, որ նորաքանչ հրաշիցն և
թութեան մերոյ է պատմիչ » ։

* * *

Ագաթանգեղեայ պատմութեան հայ
ները՝ Պարսից թագաւորութեան նուա
բայց որովհետև նոյն գրոց յունակա
կայ, ինչպէս ետքը պիտի տեսնենք,
մը էջ աւելի կը գտնենք, որ հետաքրքր
հարկ սեպեցինք թարգմանել զայն 'ի յու

Ա. Ըղձիւք ըղձացեալքն յօժարութեա
ւարկութեան, ինքնակամ մղին 'ի ջուրց
ւարթամիտք ձեռն մխեն 'ի շինուած նաւո
ծովային անցուցանել կեանս. կայմս կա
ուղղեկաց զալեացն խորտակեն զրանութ
կոյս կամք իցեն՝ զնաւն ուղղեն. զհաստա
զտախտակն իբրև զկրմուղ ըստ կամի
Որոց ոչ ինչ աւ արկանէ, ոչ կոհակացն
և ոչ քարաժայռիցն ընդ առաջ ելք կասեցո
զի 'ի վտանգս յաճախեալ զկենցաղակա
հպատրան մահու դեգերել ցանկան, զի կ
զկարևորն անձանց մատակարարել ։ Են որ
ղաքացն ապրանաց ճարակի՝ ուղի հատանե
պէտս զարդու պճնութեան արանց և կ
ցհնդկայինն նաւարկեալ ծով, և զազնո
խնդութիւնս՝ բաղձացելոցն բերեալ մատու
պիսիս գոգցես անդունդս խորոց և իմ մ
'ի տուրեւառս Հայաստան աշխարհի, բո
գիր արձանացուցանել զեղեալսն, զգործեցե

*հին Պարսից և 'ի Հայոց, և զմարտս պատերազմաց զոր եղուն ընդ միմեանս։*

*Բ. Պարթեւք՝ իբրև դէպք 'ի բարի յաջողէին նոցա, զԹագաւորութիւն Պարսից, զՀայոց և զՀնդկաց՝ որ սահմանակիցք են արևելեայ Պարսից, նա և զխոստալուծ ազգն Մասքթաց յինքեանս կորզեալ ժառանգէին, այսպիսի իմն կարգաւ. երիցագոյնն 'ի Պարթևաց տոհմէ, որ ապա զարշակունի ընկալան անուն, հասակաւ բարգաւաճ և արութեամբ չքեղ, գեր 'ի վերոյ քան զայլս երևեալ, նա կալաւ զիշխանութիւն արքայութեանն Պարսից։ Եւ որ երկրորդն էր զկնի նորա, զՀայաստանեայց առնոյր յինքն զԹագաւորութիւն. իսկ որ երրորդն էր՝ զՀնդկացն կալաւ զտէրութիւն, զհպաւորն սահմանաց Պարսից։ Իսկ չորրորդն 'ի նոցանէ՝ զՄասքթացն ընկալաւ զիշխանութիւն Թագաւորութեան։ Այս կարգ էր տոհմին Պարթեւաց, և սովիմբ զբազում ժամանակս յերկարեցան յաջողութեամբ։*

*Գ. Անտի սկիզբն արարից՝ ուստի զիւրոյ զլորման ծագ եցոյց Պարթեւն։ Արտաւան որդի Վաղարշայ 'ի Պարթեւական ծննդոց, քաղդէիցն գոլով գիտութեամբ ներհուն, և զընթացս և զհոլովմունս աստեղացն համարեալ, և իրացն հանդերձելոց կանխագէտ, իբրև յառագաստի էր ընդ կնոջն, ամբառնայր զաչսն յաստեղս 'ի վեր, և խորհրդոց լեալ հասու, ասէ առ Թագուհին. Տես զընթացս աստեղ. և այս թուի ինձ նշանակ, զի եթէ աք վտարանջեալ 'ի տեառնէ իւրմէ, ելցէ ընդդէմ նորա մարտիւ պատերազմաւ, յաջողեսցի նմա տանել 'ի գլուխ զյաղթութիւնն և նկուն առնել զտէր իւր։ Զայս ասացեալ՝ 'ի քուն լինէր։ Եւ որպէս զիարդ օրէնք են, մի 'ի նաժշտաց թագուհւոյն 'ի նմին սենեկի առագաստին ունէր իւր դադար անկողնոյ առ 'ի պէտս կարևոր հարկի սպասարկութեան առ 'ի նմանէ հրամայելոցն։ Դուստր էր սա ուրումն յաւագ ծառայից, և ընտանի մերձաւոր ումեմն 'ի գլխաւոր իշխանաց, որոյ անուն Արտաշիր.*

'ի գաւառէն Ստորեստանեայց, յորոյ 'ի ցանկութիւն տարփանաց ըմբռնեալ իսկ էր։ Վասն որոյ 'ի լսել անդ զբանս Թագաւորին, ել 'ի սենեկէ անտի զանխուլ յարքայէն և 'ի տիկնոջէն, ընթացաւ առ Արտաշիր որդի Սասանայ, յորմէ Սասանականքն՝ որ 'ի Նմանէ՝ և 'ի թագաւորացն Պարսից ընկալան զծագումն։

Դ. Մտեալ սորա 'ի խորանն՝ քանզի և ոչ ոք 'ի սպասաւորաց կարէր արգելուլ զնա, գիտելով զառ միմեանս սիրելութիւնն, այսպէս խօսէր ընդ նմա. Սիրեցեալդ իմ Արտաշիր, 'ի բաց արա զքուն յարտևանանց քոց, և բուռն հարցես զխորհրդոցն զոր խորհեցար երբեմն. զօրացիր և քաջ լեր 'ի վերայ հասեալ գուշակութեան արքային. քանզի ժամ է արդ գեղեցիկ զինուորութեան, արդ ընդ իմաստունս խորհրդակցութեան, արդ դէպ ժամանակ 'ի ճակատ գումարելոյ զբազմութիւն գնդիցն. վասն զի քննեաց Թագաւորն զընթացս աստեղաց և ասէ. Եթէ ոք 'ի ծառայից ընդդէմ դարձցի տեառն իւրում, յաղթեսցէ. և արդ երթ 'ի խորհուրդ ժողովեա, և կարկառեսցես առ իս զաջ քոյ, և հաստատեսցես երդմամբ զբանս իմ. և եթէ յաջողեսցի քեզ բերել 'ի ձեռս զարքայութիւն Պարսից, և զիս մի որոշեսցես յանկողնայդ. զի զդոյն հանապազ ասէիր, յորմէ հետէ եղև 'ի սրտի քում խորհուրդ այդ և ինձ պատմեցաւ։ Ձայնօսիկ Արտադուխտ։

Իսկ Արտաշիր շնորհս կալաւ զնմանէ. և աջոյն 'ի վեր յերկինս բարձրացուցեալ զձեռս կնոջն, ասէ. Ահաւադիկ տեսցեն յանդիման դիցն զօրութիւնք, արև և հուր, օդ և հող, զի յայսմ և 'ի սոյն աւուր խորհուրդ արարեալ ընդ աւագաց Պարսից, և նշկահեալ զարքայն, վաղվաղակի 'ի պատիւ տիկնութեան ամբարձից զքեզ։

Ե. Եւ զայս լուեալ Արտադուխտայ ասէ. Արդ ես ճեպիմ փութամ 'ի խորան Թագաւորին, զի պարտ է ինձ այսօր զանցելոց աւուրց տանել 'ի գլուխ զսպասաւորութիւն. զի թէ և յաջողեսցի մեզ հնարագէտ ճարտարու-

թեամբ բերել 'ի ձեռս զազատութիւն, բայց հարկ 'ի վերայ կայ սպաս տանել 'ի պէտս արքունի։ Եւ զայս առաջեալ՝ երթայր 'ի խորան արքայի, և գաղտ 'ի մահիճան ընկողմանէր։ Իսկ Արտաշիր յարուցեալ ժողովեաց զմեծամեծս 'ի Պարսից և յԱսորեստանեայց, ընդ որս և զառաջինն 'ի խորհուրդ մտեալ էր. եկաց 'ի մէջ նոցա և ասէ. Ո՜ քաջքդ Պարսիկք և Ասորեստանեայք, զզօրութիւն Պարթեւաց 'ի վաղ ժամանակաց գիտեմք, և թէ զի՛արդ զայլոցն վաստակս յափշտակեն՝ ճանաչեմք. պարծին յանիրաւել իւրեանց, ոչ դադարեն տարապարտ սպանանել. զարշին 'ի Պա՛րսից և յԱսորեստանեայց՝ Պարթեւքդ եկամուտք 'ի մեր աշխարհ յերկրէ բարբարոսաց։ Եւ արդ զի՞նչ ունիք ասել. եթէ արդարև սուտ իցեն բանք իմ, կացցէ մնասցէ նա որ թագաւորէն անիրաւութեամբ. ապա եթէ խօսեցայ ճշմարտութեամբ, զինու զարդու վառեսցուք. զի լաւ է մեզ մեռանել, քան եթէ ծառայել թագաւորի անիրաւի։ Զայսոսիկ Արտաշիր։

Զ. Իսկ իշխանքն Պարսից զասացեալսն խնդամիտ ընդունէին, քանզի ցանկային թօթափել զլուծ տէրութեանն Պարթեւաց, և յիւրեանց 'ի բնիկ ազգատոհմէն Պարսից ունել զոք թագաւոր. որոյ վասն ասեն առ Արտաշիր. Դու լիջիր առաջնորդ ասացուածոց և արդեանց գործոց ընտրեալ առ 'ի մէնջ. որոց զիմաստուն խորհրդոց քոց առեալ է զփորձ, և գիտեմք զհրամանատարութիւն քոյ առաքինի ուղղութեամբ 'ի վեր երևել. և արդ զոր կամիդ արա. և առաջնորդ զքեզ ընծայեցո. աւադիկ մեք պատրաստ եմք հետևել զկնի բանից քոց, առնել որ ինչ միանգամ յօգուտ երկաքանչիւր կողմանց իցէ։ Ապա 'ի ծագել առաւօտուն 'ի մարտ պատրաստեալ Պարսից, համդերձ Արտաշիրաւ առաջնորդաւ իւրեանց, դեսպանս արձակեցին նախ առ արքայ Արտաւան զՉիկ և զԿարէն, զտանուտերս գլխաւոր նահապետութեանց և զզօրավարս զօրաց։ Երթեալ սոցա յանդիման եղեն մեծի արքային, և այսպէս խօսել սկսան ընդ նմա և ասեն. « Հրեշտա-

կութեամբ եկեալ հասեալ եմք յաշխարհէն Պարսից. եթէ հանդարտեսցեն միտք քո 'ի լուր պատգամացն Պարսից, խօսեսցուք և մեք զբանս հրեշտակութեան մերոյ աներկիւղ և անվտանգ. քանզի և այս հրամանք օրինաց են՝ կարգեալ յառաջնոց տերանց, որ ազատ կացուցին զդեսպանս յամենայն վնասու և արդ եթէ տացես հրաման, արքայ, խօսեսցուք:

Եւ թագաւորն Արտաւան հրամայեաց նոցա ասել զոր կամէին:

Է. Ցայնժամ խօսել սկսան և ասեն. Փոյթ ընդութեան է արքայ առ մեզ Պարսիկս՝ ծառայից հպատակկալ արքայի, իբրու գոլով նորուն ամենայնի տէր. և թագաւորին՝ հաւասարութեամբ և արդարութեամբ լինել իրացն խնամատար, և հեռի 'ի խժդժագոյն բարուց կառավարել. ահարկու առ թշնամիսն երևել և մարդասէր առ հպատակս: Քանզի՝ զիա՛րդ իցէ նմա զանիրաւս պատուհասել, եթէ ինքն ինքեամբ յանիրաւութիւնս հատեալ իցէ. ո՛րպէս զեղեռնագործս ընդ տանջանօք արկանել, եթէ ինքն 'ի չարիս վնասակարս իցէ յօժարեալ: Արդ մեր 'ի վերայ հասեալ ծանր վնասուց քոյոցդ յանցանաց, 'ի բաց որոշեցաք զմեզ 'ի քումմէ իշխանութենէդ. ոչ 'ի հպատակութենէն տաղտկացեալք, այլ յապիրատ թագաւորէն խուսափեալք. ոչ զբռնաւորութենէ բուռն հարեալք, այլ անագորոյն մտաց բռնաւորի տանել չկարացեալք »:

Զայս խօսեցան Պարսիկք ընդ արքային:

Իսկ թագաւորն Արտաւան զաչս 'ի խոնարհ ունելով՝ զմեծ ժամս զյատակս տանն նշմարէր, իրազէտ, կանխազէտ կործանման թագաւորութեան իւրոյ: Հայեցեալ ապա առ պատգամաւորսն ասէ. Ես ինքն եմ պատճառք չարեացս, զի զոմանս 'ի ձէնջ իշխանութեամբ և աւագութեամբ մեծարեցի, զայլս ընչիւք ճոխացուցի, և զյոլովս արքունի պարգևօք ագարակաց և կալուածոց տեարս կացուցի: Հա՛պա դուք փութայջիք 'ի կատարումն խոր-

հրդոյ ձերոյ, և զիս ինքն տեսանիցիք 'ի ձերդ խորհուրդ պատշաճեալ, տալ ձեզ գիտել չլինել ընդդիմակաց թագաւորի. իսկ դուք որ առաքեալքդ էք 'ի բաց գնացէք. և մի ևս յաւելուցուք այսպիսեաց բանից լինել սպասաւորք, զուցէ արդեօք 'ի ձէնջ սկսայց զվրէժ չարեաց յիս անիրաւելոց:

Ը. Զայսոսիկ իբրև լուան Ջիկ և Կարէն՝ չոգան յատեան խորհրդոյ Պարսից, և պատմեցին զամենայն Արտաշրի և աւագանւոյն Պարսից, և յաւելլին 'ի կարգի բանիցն՝ զյանդուգն արտմտութիւն յիմարութեան թագաւորին, որ ոչ ևս այնուհետև սպասեալ միայր պատգամաց, այլ զխորհուրդս իւր զինեալ էր ընդդէմ իշխանացն: Իսկ Արտաշիր յղեալ առ Արտադուխտ՝ 'ի բաց կորզեաց զնա. և արգել փակեաց զնա աղխիւքն հանդերձ յամուր դղեկի. և ինքն միաբանութեամբ ընդ Պարսից և ընդ Ասորեստանեայց վառեալ կազմէր ընդդէմ Արտաւանայ արքայի մեծի: Եւ 'ի վերայ հասեալ Արտաւանայ իրացն, եթէ պատրաստին 'ի մարտ ընդդէմ իւր, պատրաստէր և ինքն միաբանութեամբ Պարթեւաց, ունելով և 'ի Պարսից ոչ սակաւ՝ համակամս և հաւանս: Եւ յառաջնում յարձակման անդ՝ յորում հարան ընդ միմեանս, բազումք յերկաքանչիւր կողմանց թաւալգլոր անկանէին 'ի Պարսից և 'ի Պարթեւաց. այլ զօրանայր կողմն Արտաշրի՝ ի լքանել թողուլ և այլոց ևս բազմաց զԱրտաւան, և գալ յենուլ յինքն յԱրտաշիր: Ապա իբրև յերկրորդում նուագի անդ հարան ընդ միմեանս, բազումք անկանէին 'ի Պարթեւաց, և ինքն Արտաւան աճապարէր 'ի փախուստ. բայց ապա դարձաւ միւսանգամ 'ի տեղի մարտին: Արդ իբրև զամիսս երկոտասան ճակատեալ կացին ընդդէմ միմեանց, երբեմն 'ի մարտ մատուցեալք և երբեմն դադարեալք, ապա միւսանգամ բուռն հարեալ զմարտէ, իբրև այն ինչ առ միմեանս մերձեցեալ կամէին յիրեարս խառնել, ձայնեաց առ արքայ Արտաւան, և ասէ...

կ
հ

[illegible]ակաց 'ի վերայ [illegible]ացելոցն Պարթևաց և [illegible]տանայց. զամենայն ինչ բարեկարգու[illegible]. [illegible] երևեալ արդարութեան և հա[illegible]թեան. քանզի գուն գործէր ար[illegible]թեան, որ կործեաց յանձն զարքայու[illegible]:

[illegible] անցք որ գործեցան լու եղեն յականջս [illegible]. Թագաւորին Հայոց մեծաց, եթէ [illegible] Արտաշիր զօրացեալ բռնացաւ 'ի վե[illegible]թեան Պարսից, և կորոյս զեղբայր նորա [illegible]. Յաւելին զուժկանքն և ասեն թէ և Պար[illegible]եալ հաւանեալ են յոյժ ընդ թագաւորութիւն [illegible], քան ընդ համազգւոյն նորա և արեան հա[illegible]. և զի վաղվաղակի լքին խոտեցին...

Այս հատուածը նկամուա կամ անհարազատ պէտք չէ սեպել, ու մեր ձեռքը եղած Ագաթանգեղոսի պատմութեան դրչագրացը մէջ չգտնուելուն համար՝ մերժել. այլ անտարակոյս կորսուած, ու միայն յունական թարգմանութեան մէջ մնացած՝ Վասն զի Խորենացին ալ՝ մեր մեծն Խոսրով Թագաւորին վրայ խօսելու ատեն՝ այսպէս կը գրուցէ. «Յաղագս սորա և համառօտիւքն յԱգաթանգեղեայ պատմեալ փոքր 'ի շատէ զմահն Արտաւանայ Արքայից արքայի և զբառնալ տէրութեան Պարթևաց յԱրտաշրէ որդւոյ Սասանայ»: Ուստի և հաւանական կ'երևնայ թէ Մովսէսի Խորենացւոյն ձեռքն եղած օրինակին մէջ այս հատուածը կը գտնուէր, որովհետև հիմայ հայերէնին մէջ Արտաւանայ մահը չյիշուիր:

* * *

Այս վերը յիշուած հատուածէն ետքը՝ կը սկսի Ագաթանգեղոս իր սիրելի պատմութիւնը: Պատմութիւն մը՝ որուն առջի երեսէն կ'երևնայ թէ ինչպէս Աստուծոյ միայնոյ հնարաւոր է՝ մահկանացու աչաց աղէտք ու չարիք կարծուածներէն՝ բարութիւն առաջ բերել: Հայաստանի երջանկութեան և հաւատոյ լուսաւորութեան դարը

հասեր էր․ Աստուծոյ՝ մէկ բարերար նայուածքովը՝ Թադէի ու Բարթուղիմեայ առաքելութեանց պտուղը կ'երեւնար, ու անոնց արեան արգասաւորութիւնը։

Այն ժամանակները՝ արեւելից իշխանութիւնը կարգէ դուրս ցնցում մը կ'իմանար․ Պարթեւք չկարենալով Սասանեանց դէմ դնել, կը խոնարհէին անոնց առջեւ, ու մեր Խոսրով թագաւորը իր չինանիստ քաղաքներն ու ամարաստան տեղուանքը թողլով՝ ինչուան այն օրերը իմաստութեամբ գործած խաղաղարար վարչութեան գաւազանը կը թողու, ու անոր տեղ զէնք առնելով Պարսից վրայ պատերազմի կ'ելլէր, ու յաղթական փառքով իր հայրենիքը կը դառնար։ Բայց որովհետեւ իր կեանքը յարատեւ տագնապ էր Սասանեանց, ու անոր զէնքին վախովը միշտ ահուդողի մէջ էին, բնական էր որ ետեւէ ըլլային այն կեանքը վերցընելու հնարք մը փնտռել։ Այս սեւ խորհրդոյն գործադրութիւնը իր վրայ առաւ Անակ, ու բարեկամութիւն կեղծելով Խոսրովու հետ ընտանեցաւ․ և այն մտերմութեան տուած համարձակութեամբը՝ որսի մէջ զինքն սպաննեց։ Թագաւորը դեռ՝ բոլորովին մահուամբ չծանրացած աչուըները զինքը սպաննող Անակայ վրայ դարձընելով, կիսահագագ ձայնովը հրամայեց որ այն անօրինին տունը տեղն ու ցեղը ջնջուի։ Այն ընդհանուր մահուան մէջէն միայն սուրբն Գրիգոր և իր Սուրէն եղբայրը կ'ազատին։ Գրիգոր կեսարիոյ օտարութեանը մէջ սրտի ու մտաց կրթութիւն մը ընդունելով, իր հօրը Անակայ յանցանքը քաւելու համար՝ յանձն կ'առնու Խոսրովու որդւոյն Տրդատայ ծառայութեան մէջ մտնել։ Այն հաւատարիմ սպասաւորութեան ժամանակ կ'իմանայ Տրդատ Գրիգորի հաւատարմութիւնը նաեւ առ Աստուածն քրիստոնէից, ու չարաչար տանջանքներով անոր հաւատոց հաստատութիւնը փորձելէն ետքը, երբոր կ'իմանայ ալ թէ իր հօրը սպանչին որդին է, արեւու անարժան սեպելով այնպիսի կեանք մը, կը դատապարտէ որ Արտաշատու 'խոր վիրապին մէջ՝ դժնդակ մահուամբ իր հօրը յանցանքը քաւէ։

Երբոր Աստուծոյ կամօք՝ Գրիգոր վիրապին մթութեան մէջ տասն և հինգ տարի անյուսալի կենդանութեամբ կ'ապրէր, ուրիշ սրտաշարժ տեսարանի մըն ալ ականատես կ'ըլլար Հայաստան: Հռովմայ Դիոկղետիանոս կայսեր ձեռքէն կը փախչէին Գայիանէ և իրեն հետևող կուսանաց խումբ մը. որոնց մէջ ամենէն աւելի կը փայլէր Հռիփսիմէ, որ իր գեղեցկութիւնը երկնքի ընծայած, Դիոկղետիանոսի հարճնութենէն փախած ժամանակ, Տրդատայ աչքն ու սէրը իր վրայ կը դարձընէր: Սակայն Տրդատ իր ամէն ուժովը, չի կրնար տըկար կուսի մը դէմ դնել. անոր հետ պատերազմած ժամանակ կը յաղթուի իրմէն. ու դեռ անոր գեղեցկութեամբը կուրացած չիկրնար ուրիշ կերպով մը յաղթել, բայց եթէ զինքն ալ իր ընկերներն ալ սպաննել տալով:

Դեռ անոնց մարմինը անթաղ՝ բայց անապական մնացած ատեն, աստուածային բարկութեան գաւազանը թէ՛ զՏրդատ թագաւոր և թէ զբովանդակ նախարարները կը զարնէր: Նաբուգոդոնոսորայ պատիժը կը կրկնուէր Տրդատայ վրայ: Այս անակնկալ ու սաստիկ պատուհասը այնպիսի շփոթութիւն մը կը ձգէր նախարարաց մէջ, որ հնարք կը փնտռէին այն պատուհասէն ազատելու: Նոյն հնարքը՝ աստուածային տեսլեամբ կը յայտնուէր Խոսրովիդխտոյ, որ կը հրամայէր զԳրիգորիոս հանել վիրապէն, ու իրմէն փնտռել այն բժշկութիւնը: Հնազանդեցան տեսիլքին, ու անկէց՝ զոր աշխարհի վնասակար ու կենաց անգամ արժանի չէին սեպեր, կը խնդրէին իրենց ցաւոց դարմանը: Սուրբն Գրիգոր ալ, չէ թէ միայն անոնց մարմնոյն՝ հապա նաև հոգւոյն բժշկութիւնը կը պարգևէր՝ աստուածուսոյց խրատներով ու բանիւք: Այս քարոզութիւնը՝ Ագաթանգեղեայ գրոցը մեծ մասն է:

Անկէ ետքը կը պատմէ Ագաթանգեղոս՝ Գրիգորի և Տրդատայ ձեռքով եղած բարեկարգութիւնները 'ի Հայաստան. անոնց 'ի Հռովմ ճանապարհորդելը, նորէն

դառնալը, Նիկիոյ ժողովոյն հրաւէրը առ Լուսաւորիչն Հայաստանի, ու առոր՝ իր որդին փոխանակ ղրկելը ու առանձնութիւնը։ Հոս կը լմննայ Ագաթանգեղոսի պատմութիւնը։

***

Այլ և այլ խնդիրք յուզուած են առ բանասէրս՝ Ագաթանգեղեայ գրոց հարազատութեան վրայ։ Թէ Ագաթանգեղոս՝ ժամանակակից և ականատես անձն, Տրդատայ և սրբոյն Գրիգորի պատմութիւնը շարադրած է, իր դարուն մէջ Զենոբ Գլակ, և անմիջապէս հետևեալ դարու պատմիչք մեծարոյք և պատուական իրենց հնութեամբն և հաւատարմութեամբ, անտարակուսելի վկայութիւնը կու տան։ Խնդիրը կը մնայ թէ անոնց յիշատակած ու մեր ձեռքը գտնուած ու Ագաթանգեղոսի անունը կրող գիրքը՝ արդեօք և մի և նոյն երկասիրութի՞ւնն է, թէ վերջինս փոփոխութիւններ և այլայլութիւն կրած է։

Այս ենթադրութեան կամ կարծեաց պատճառը՝ վիճի նիւթ եղող գրքին պատմական հանգամանքն է. յորում ողջամիտ քննադատութեան թերութիւններ ենթադրելով նկատել, չեն յօժարիր ոմանք ընծայել զայն Ագաթանգեղեայ. որ իբրև քարտուղար՝ ընդունելով ՚ի Տրդատայ հրաման՝ գրելու անոր թագաւորութեանը անցից պատմութիւնը՝ ոչ յանձնողին արքայական մեծութեան և ոչ ալ գրողին կրնար պատշաճիլ, կ՚ըսեն, այդպիսի ոճով և բացատրութեամբ աւանդել յետագայ սերնդոց՝ թագաւորին կիրքը, ամօթն ու չառագունանք, երկնաստատ պատուհասի մը հետևանք դէպքերն, և այլն։

Այսպիսի կարծիք և զգուշաւոր շրջահայեցութեան պարտք մը՝ կրնայ պատշաճական սեպուիլ այնպիսի անձի մը համար՝ որ պատմութիւնն շարադրել տուած ատեն՝ իր փառքն, համբաւն ու պատիւը կը փնտռէ. բայց ոչ անշուշտ այն մեծ թագաւորին՝ որուն համար այդպիսի

երկնահրաշ պարտութիւն մը 'ի վեր էր քան զամենայն փառս. զորմէ վկայէ Խորենացի թէ «Ցետ հաւատոցն որ 'ի Քրիստոս ամենայն առաքինութեամբք բացափայլեալ... ընկեցեալ վերկրաւոր պսակս՝ զհետ ընթանայր երկնաւորին»: Աշխարհահռչակ պատմութիւն մը խարդախել, և կամ օտար 'ի ճշմարտութենէ գոյն և կերպարանք տալ անոր՝ ոչ Տրդատայ և ոչ իր պատմչին կրնանք վերագրել:

Միւս առարկութիւն մ'ալ, բովանդակ պատմութեանն հրաշապատում ըլլալովը, եթէ ոչ բոլորովին առասպել՝ գէթ առասպելախառն կարծուիլը:

Ասոր ալ պատասխանը հետևեալ իրաւացի անդրադարձութեանց մէջ կը համարինք լիուլի ամփոփուած տեսնել, որ ոչ մեր՝ այլ հմուտ ու բանիբուն քննաբանի մը խօսքերն են. «Ագաթանգեղեայ պատմութիւնն, կ'ըսէ, իր ամէն մանրամասնութիւններովն անտարակուսելի ենթադրել՝ անհանճար գործ մը կրնայ սեպուիլ. վասն զի այսպիսի յատկութիւն՝ մարդկային ո՛ր և իցէ գրուածքի մը չի կրնար տրուիլ. մանաւանդ ուր տեղեաւ և ժամանակաւ հեռաւոր անցից և դիպուածոց վրայ է պատմութիւնն: Բայց եթէ մատենագիրք կը սխալին, կը սխալին նաև անոնց քննադատք. և այնչափ աւելի՝ որչափ ջանան սուր միտք և հանճար ունեցող երևնալու փափաքով դիմացինին պարզմտութիւնն արհամարհել: Չեմ հասկնար թէ ինչո՛ւ քրիստոնէութեան հաստատութիւնն 'ի Հայաստան՝ պէտք է որ առանց հրաշից կատարուած ըլլայ, մինչդեռ առողջ քննադատութիւնն՝ ուրիշ երկիրներու մէջ եղածներն տարակուսի տակ չի ձգեր: Թող զի յԱգաթանգեղեայ պատմուածներուն մէջ եթէ լաւ մտադրութիւն ըլլուի անոնց, նշանակութեան արժանի այն է որ շատ բան կրնայ պատշաճապէս մեկնուիլ նաև ըստ մարդկային հաւանական կարծեաց. ինչպէս Թագաւորին անբանական մոլեգնութիւնն, և իրեն հետ նաև նախարարացն՝ կամ առ տագնապ խղճի, կամ նմանութեամբ,

և կամ արքային հաճոյական երևնալու համար. — բարեպաշտ այրւոյ մը ձեռքով՝ այնչափ տարի սրբոյն Գրիգորի ապրիլը 'ի գբին՝ ուստի նաև Աստուծոյ թոյլտւութեամբ և խնամօք՝ նաև բնական պատճառներով կրնային տեղի տալ հեռանալ օձք. — սրբոյն և սրբուհեաց՝ երկար տանջանաց դիմանալը, մինչ գիտենք՝ թէ հոգեկան ոյժը կ'իշխէ զգացման ցաւոց, և կամ թերևս նոյն իսկ տանջողք՝ առ հիացման և գթոյ՝ կրնային տանջանաց սաստկութիւնն մերթ ընդ մերթ մեղմացընել... Մեծագոյն հրաշք, կրնանք սրբոյն Աւգոստինեայ հետ կրկնել, այնչափ բազմութեան փոփոխութիւնն է։

« Եթէ աւելի մանրամասնութեանց իջնենք՝ քննադատից առարկութիւններն իմաստակութիւնք կ'երևին մեզ, օրինակ իմն երբ Ագաթանգեղոս կ'ըսէ թէ ամէն պատմածներուն ականատես եղած է քննադատը ապացուցանելով թէ անանկ չէ, կը հետևցընէ թէ ոչ ինչ է ճշմարիտ 'ի պատմեալսն։ Ով որ կը պատմէ այնպիսի դէպքեր՝ որոնց մասամբ ականատես է, և մասամբ յայլոց հաւատարիմ տեսողաց լսած. կամ կը տեսնէ արդէն պատմուածներուն մերձաւոր արգասիքը, և կամ գործողաց շատին հետ կենակից եղած է և ապրած, առանց ստելու՝ Ագաթանգեղոսի իր ստուգախօսութեան համար գրուցածը կրնայ երկրորդել։...

« Անհաւատալի կը թուի որ Տրդատ բարձր լերան մը ծայրէն՝ ուսոցը վրայ շալկելով՝ փոխադրէ այն քարինքը՝ որոնցմով պիտի բարձրանար իրմէ 'ի մահ մատնուած սրբոց մահուան հանգստարանը, մինչ զանոնք տեղափոխելու ուրիշ շատ միջոցք կային... Եթէ Տրդատ արքայական մեծութեանը վրայ՝ իր քննադատէն տարբեր կարծիք ունէր՝ ինչ կրնանք ըսել։... Այլ ինձ հաճոյ է այն ոչ անարգ նուաստութեանը մէջ՝ արքայական մեծվայելչութիւն մը նկատել. և առաւել կը մեծարեմ զՏրդատ

իր այդ խոնարհութեանը մէջ՝ քան զՄաքսիմիանոս յաղթող և յաղթական »[1]:

*
* *

Սեբէոս եպիսկոպոս Մամիկոնենից, եօթներորդ դարու մատենագիր, իր պատմական երկասիրութեանը մէջ՝ Հայոց հին պատմութեան վերաբերեալ հետաքննական ու բաւական ընդարձակ հատուած մը մէջ կը բերէ՝ Ագաթանգեղեայ ընծայուած: « Հայելով, կ'ըսէ, 'ի մատեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ, զոր եգիտ դրոշմեալ ի վերայ արձանի 'ի Մծբին քաղաքի՝ յապարանսն Սանատրուկ արքայի հանդէպ դրան արքունական տաճարին, ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն:

« Քանզի զսիւնս տաճարին խնդրեալ 'ի դուռն արքային Պարսից, և բացեալ զաւերածն վասն սեանցն ըստ դիպան արձանագրին դրոշմեալ 'ի վերայ վիմի զամս և զաւուրս հինգ թագաւորացն Հայոց և Պարթեւաց՝ յունարէն դպրութեամբ, զոր իմ գտեալ 'ի Միջագետս՝ 'ի նորին աշակերտացն, կամեցայ ձեզ գրուցակարգել. քանզի այսու ունէր վերնագիրն այսպէս. « Ես Ագաթանգեղոս գրիչ գրեցի 'ի վերայ արձանիս այսորիկ իմով ձեռամբս զամս առաջին թագաւորացն Հայոց, հրամանաւ քաջին Տրդատայ, առեալ 'ի դիւանէ արքունի »:

Այս պատմական քաղուածը՝ կ'ամփոփէ մարիբասեան ոճով Հայոց պատմութիւն մը՝ 'ի սկզբանաւորելոյ ազգին մինչև ցթագաւորութիւն Պապայ, Տրդատայ մահուընէն վաթսունուիրեք տարի-ետքը: Ասով յայտնապէս կ'իմացուի որ եթէ գրուածքին հեղինակը ինքն Ագաթանգեղոս ալ ըլլայ՝ շարունակութիւնն ուրիշի է: Մեր ազգին պատմութեան վրայ բոլորովին նոր մանրամասնութեանց կը

1. ԴՈՄՄԱԶԷ՛ՈՑ, 'ի յառաջաբանի իտալական թարգմանութեան Ագաթանգեղեայ:

*համդիպինք՝ ի սմա, և որ 'ի Խորենացւոյն աւանդուած չեն, և որ իրեն բոլորովին անծանօթ երկասիրութիւն մը պիտի ըլլայ, ինչպէս կ'ակնարկէ Սերէոսի պատմութեան նոր հրատարակողն (Պատկանեան)։ Վասն զի Ագաթանգեղեայ ընծայուած այս հատուածին մէջ՝ Բագարատ և իրեն տոհմը՝ սերեալք ասին յԱրամենակայ և ոչ 'ի Հրէից՝ ինչպէս կ'աւանդէ Խորենացին, և կը յաւելու. « Ասելն ոմանց անհաւաստի մարդոց, ըստ յօժարութեան և ոչ ըստ ճշմարտութեան, 'ի Հայկայ զԹագադիր ազգ լինել Բագրատունեաց։ Վասն որոյ սակս, մի այդպիսեաց յիմար բանից հաւանիր... զի 'ի բայ բանից և անոճ իմն յաղագս Հայկայ և Նմանեացն կակազէ »։ Սակայն ինչ ալ ըսուի՝ հնագոյն և պատուական նշխար մ'է ազգային պատմութեան, մեր ձեռքը չհասած պատմական վաղեմի աղբիւրներէ քաղուած։*

*Լանկլուա իւր Հաւաքման մէջ (Հատ. Ա. 195) հրատարակելով այս գրուածքը՝ խորագիր կը դնէ.* Le Pseudo-Agathange, Histoire ancienne de l'Arménie.

* * *

*Խնդիր է դարձեալ թէ ինչ լեզուով շարագրեր է Ագաթանգեղոս իր Պատմութիւնը։ Վասն զի ոմանք տեսնելով թէ անիկայ հռովմայեցի էր, օտարազգւոյ համար անկարելի սեպեցին անանկ ճշգրիտ ու ընտիր հայկաբանելը. սուտի և ըսին թէ ինքը յունարէն շարագրած է այս գիրքը, ու ետքը 'ի Թարգմանչաց 'ի հայ լեզու փոխուած։ Իրենց այս կարծեացը հաւաստիք մէջ կը բերեն թէ Ագաթանգեղոսի յունարէն օրինակը կը գտնուի առ Սիմէոնի Մետափրաստեայ, որ ուրիշ սրբոց վարուցը և վկայաբանութեանց հետ՝ սրբոյն Գրիգորի վարքն ալ կ'աւանդէ Ագաթանգեղեայ խօսքերն մէջ բերելով, բայց 'ի երկար վարդապետութենէն, և որ 'ի մատենադարանին Փլորենտիոյ պահուած միակ յոյն օրինակին հետևողութիւն է։*

կութեամբ եկեալ հասեալ եմք յաշխարհէն Պարսից. եթէ հանդարտեսցեն միտք քո ՚ի լուր պատգամացն Պարսից, խօսեսցուք և մեք զբանս հրեշտակութեան մերոյ աներկիւղ և անվտանգ. քանզի և այս հրամանք օրինաց են՝ կարգեալ յառաջնոց տերանց, որ ազատ կացուցին զդեսպանս յամենայն վնասու. և արդ եթէ տացես հրաման, արքայ, խօսեսցուք։

Եւ թագաւորն Արտաւան հրամայեաց նոցա ասել զոր կամէին։

Է. Յայնժամ խօսել սկսան և ասեն. Փոյթ պնդութեան է արքայ առ մեզ Պարսիկս՝ ծառայից հպատակ կալ արքայի, իբրու գոլով նորուն ամենայնի տէր. և թագաւորին՝ հաւասարութեամբ և արդարութեամբ լինել իւրացն խնամատար, և հեռի ՚ի խժդժագոյն բարուց կառավարել. ահարկու առ թշնամիսն երևել և մարդասէր առ հպատակս։ Քանզի՝ զիա՞րդ իցէ նմա զանիրաւս պատուհասել, եթէ ինքն ինքեամբ յանիրաւութիւնս հասեալ իցէ. ո՞րպէս զեղեռնագործս ընդ տանջանօք արկանել, եթէ ինքն ՚ի չարիս վնասակարս իցէ յօժարեալ։ Արդ մեր ՚ի վերայ հասեալ ծանր վնասուց քոյոցդ յանցանաց, ՚ի բաց որոշեցաք զմեզ ՚ի քումմէ իշխանութենէդ. ոչ ՚ի հպատակութենէն տաղտկացեալք, այլ յապիրատ թագաւորէն խուսափեալք. ոչ զբռնաւորութենէ բուռն հարեալք, այլ անագորոյն մտաց բանաւորի տանել չկարացեալք»։

Զայս խօսեցան Պարսիկք ընդ արքային։

Իսկ թագաւորն Արտաւան զաչս ՚ի խոնարհ ունելով՝ զմեծ ժամս զյատակս տանն նշմարէր, իբրագէտ, կանխագէտ կործանման թագաւորութեան իւրոյ։ Հայեցեալ ապա առ պատգամաւորսն ասէ. Ես ինքն եմ պատճառք չարեացս, զի զոմանս ՚ի ձէնջ իշխանութեամբ և աւագութեամբ մեծարեցի, զայլս ընչիւք ճոխացուցի, և զյոլովս արքունի պարգևօք ագարակաց և կալուածոց տեարս կացուցի։ Հա՛պա դուք փութայջիք ՚ի կատարումն խոր-

հրդոց ձերոց, և զիս ինքն տեսանիցիք 'ի ձերդ խորհուրդ պատաշաճեալ, տալ ձեզ գիտել չլինել ընդդիմակաց թագաւորի. իսկ դուք որ առաքեալքդ էք 'ի բաց գնացէք. և մի ևս յաւելուցուք այսպիսեաց բանից լինել սպասաւորք, գուցէ արդեօք 'ի ձէնջ սկսայց զվրէժ չարեաց յիս անիրաւելոց։

Ը. Զայսոսիկ իբրև լուան Զիկ և Կարէն՝ չոգան յատեան խորհրդոյ Պարսից, և պատմեցին զամենայն Արտաշրի և աւագանւոյն Պարսից, և յաւելին 'ի կարգի բանիցն՝ զյանդուգն սրտմտութիւն յիմարութեան թագաւորին, որ ոչ ևս այնուհետև սպասեալ միայր պատգամաց, այլ զխորհուրդս իւր զինեալ էր ընդդէմ իշխանացն։ Իսկ Արտաշիր յղեալ առ Արտադուխտ՝ 'ի բաց կորզեաց զնա. և արգել փակեաց զնա աղխիւքն հանդերձ յամուր դղեկի. և ինքն միաբանութեամբ ընդ Պարսից և ընդ Ասորեստանեայց վառեալ կազմէր ընդդէմ Արտաւանայ արքայի մեծի։ Եւ 'ի վերայ հասեալ Արտաւանայ իրացն, եթէ պատրաստին 'ի մարտ ընդդէմ իւր, պատրաստէր և ինքն միաբանութեամբ Պարթևաց, ունելով և 'ի Պարսից ոչ սակաւ՝ համակամս և հաւանս։ Եւ յառաջնում յարձակման անդ՝ յորում հարան ընդ միմեանս, բազումք յերկաքանչիւր կողմանց թաւալգլոր անկանէին 'ի Պարսից և 'ի Պարթևաց. այլ զօրանայր կողմն Արտաշրի՝ ի լքանել թողուլ և այլոց ևս բազմաց զԱրտաւան, և գալ յենուլ յինքն յԱրտաշիր։ Ապա իբրև յերկրորդում նուագի անդ հարան ընդ միմեանս, բազումք անկանէին 'ի Պարթևաց, և ինքն Արտաւան աճապարէր 'ի փախուստ. բայց ապա դարձաւ միւսանգամ 'ի տեղի մարտին։ Արդ իբրև զամիսս երկոտասան ճակատեալ կացին ընդդէմ միմեանց, երբեմն 'ի մարտ մատուցեալք և երբեմն դադարեալք, ապա միւսանգամ բուռն հարեալ զմարտէ, իբրև այն ինչ առ միմեանս մերձեցեալ կամէին յիրեարս խառնել, ձայնեաց առ արքայ Արտաւան, և ասէ...

Թ. Թագաւորեաց 'ի վերայ մնացելոցն Պարթևաց և Պարսից և Ասորեստանեայց. զամենայն ինչ բարեկարգութեամբ ուղղեալ, սիրող երևեալ արդարութեան և հաւատարադատ իշխանութեան. քանզի գուն գործէր արժանի երևել գովութեան, որ կորզեաց յանձն զարքայութիւնն Պարսից։

Այս ամենայն անցք որ գործեցան լու եղեն յականջս Խոսրովու արշակունւոյ. Թագաւորին Հայոց մեծաց, եթէ որդին Սասանայ Արտաշիր զօրացեալ բռնացաւ 'ի վերայ Թագաւորութեան Պարսից, և կորոյս զեղբայր Նորա զԱրտաւան։ Յաւելլին գուժկանքն և ասեն թէ և Պարթևք հաճեալ հաւանեալ են յոյժ ընդ Թագաւորութիւն Արտաշրի, քան ընդ համազգւոյն Նորա և արեան հարազատին. և զի վաղվաղակի լքին խոտեցին...

Այս հատուածը եկամուտ կամ անհարազատ պէտք չէ սեպել, ու մեր ձեռքը եղած Ագաթանգեղոսի պատմութեան գրչագրացը մէջ չգտնուելուն համար՝ մերժել. այլ անտարակոյս կորսուած, ու միայն յունական թարգմանութեան մէջ մնացած։ Վասն զի Խորենացին ալ՝ մեր մեծն Խոսրով Թագաւորին վրայ խօսելու ատեն՝ այսպէս կը գրուցէ. «Յաղագս սորա և համառօտմտիցն յԱգաթանգեղեայ պատմեալ փոքր 'ի շատէ զմանէն Արտաւանայ Արքայից արքայի և զբառնալ տէրութեան Պարթևաց յԱրտաշրէ որդւոյ Սասանայ»։ Ուստի և հաւանական կ'երևնայ թէ Մովսէսի Խորենացւոյն ձեռքն եղած օրինակին մէջ այս հատուածը կը գըտնուէր, որովհետև հիմայ հայերէնին մէջ Արտաւանայ մահը չյիշուիր։



Այս վերը յիշուած հատուածէն ետքը՝ կը սկսի Ագաթանգեղոս իր սիրելի պատմութիւնը։ Պատմութիւն մը՝ որուն առջի երեսէն կ'երևնայ թէ ինչպէս Աստուծոյ միայնոյ հնարաւոր է՝ մահկանացու աչաց աղէտք ու չարիք կարծուածներէն՝ բարութիւն առաջ բերել։ Հայաստանի երջանկութեան և հաւատոյ լուսաւորութեան դարը

հասեր էր. Աստուծոյ՝ մէկ բարերար նայուածքովը՝ Թադէի ու Բարթուղիմեայ առաքելութեանց պտուղը կ'երեւնար, ու անոնց արեան արգասաւորութիւնը։

Այն ժամանակները՝ արեւելից իշխանութիւնը կարգէ դուրս ցնցում մը կ'իմանար. Պարթեւք չկարենալով Սասանեանց դէմ դնել, կը խոնարհէին անոնց առջեւ, ու մեր Խոսրով թագաւորը իր շինանիստ քաղաքներն ու ամրապաստան տեղուանքը թողլով՝ ինչուան այն օրերը իմաստութեամբ գործածած խաղաղարար վարչութեան գաւազանը կը թողու, ու անոր տեղ զէնք առնելով Պարսից վրայ պատերազմի կ'ելլէր, ու յաղթական փառքով իր հայրենիքը կը դառնար։ Բայց որովհետեւ իր կեանքը յարատեւ տագնապ էր Սասանեանց, ու անոր զէնքին վախովը միշտ ահուդողի մէջ էին, բնական էր որ ետեւէ ըլլային այն կեանքը վերցընելու հնարք մը փնտռել։ Այս սեաւ խորհրդոյն գործադրութիւնը իր վրայ առաւ Անակ, ու բարեկամութիւն կեղծելով Խոսրովու հետ ընտանեցաւ. եւ այն մտերմութեան տուած համարձակութեամբը՝ որսի մէջ զինքն սպաննեց։ Թագաւորը դեռ՝ բոլորովին մահուամբ չծանրացած աչուըները զինքը սպաննող Անակայ վրայ դարձընելով, կիսահագագ ձայնովը հրամայեց որ այն անօրինին տունը տեղն ու ցեղը ջնջուի։ Այն ընդհանուր մահուան մէջէն միայն սուրբն Գրիգոր եւ իր Սուրէն եղբայրը կ'ազատին։ Գրիգոր կեսարիոյ օտարութեանը մէջ սրտի ու մտաց կրթութիւն մը ընդունելով, իր հօրը Անակայ յանցանքը քաւելու համար՝ յանձն կ'առնու Խոսրովու որդւոյն Տրդատայ ծառայութեան մէջ մտնել։ Այն հաւատարիմ սպասաւորութեան ժամանակ կ'իմանայ Տրդատ Գրիգորի հաւատարմութիւնը նաեւ առ Աստուածն քրիստոնէից, ու չարաչար տանջանքներով անոր հաւատոց հաստատութիւնը փորձելէն ետքը, երբոր կ'իմանայ ալ թէ իր հօրը սպանչին որդին է, արեւու անարժան սեպելով այնպիսի կեանք մը, կը դատապարտէ որ Արտաշատու 'խոր վիրապին մէջ՝ դժնդակ մահուամբ իր հօրը յանցանքը քաւէ։

Երբոր Աստուծոյ կամօք՝ Գրիգոր վիրապին մթութեան մէջ տասն և հինգ տարի անյուսալի կենդանութեամբ կ'ապրէր, ուրիշ սրտաշարժ տեսարանի մըն ալ ականատես կ'ըլլար Հայաստան: Հռովմայ Դիոկղետիանոս կայսեր ձեռքէն կը փախչէին Գայիանէ և իրեն հետևող կուսանաց խումբ մը. որոնց մէջ ամենէն աւելի կը փայլէր Հռիփսիմէ, որ իր գեղեցկութիւնը երկնքի ընծայած, Դիոկղետիանոսի հարսնութենէն փախած ժամանակ, Տրդատայ աչքն ու սէրը իր վրայ կը դարձընէր: Սակայն Տրդատ իր ամէն ուժովը, չի կրնար տըկար կուսի մը դէմ դնել. անոր հետ պատերազմած ժամանակ կը յաղթուի իրմէն. ու դեռ անոր գեղեցկութեամբը կուրացած չիկրնար ուրիշ կերպով մը յաղթել, բայց եթէ զինքն ալ իր ընկերներն ալ սպաննել տալով:

Դեռ անոնց մարմինը անթաղ՝ բայց անապական մնացած ատեն, աստուածային բարկութեան գաւազանը թէ՛ զՏրդատ թագաւոր և թէ զբովանդակ նախարարները կը զարնէր: Նաբուգոդոնոսորայ պատիժը կը կրկնուէր Տրդատայ վրայ: Այս անակնկալ ու սաստիկ պատուհասը այնպիսի շփոթութիւն մը կը ձգէր նախարարաց մէջ, որ հնարք կը փնտռէին այն պատուհասէն ազատելու: Նոյն հնարքը՝ աստուածային տեսլեամբ կը յայտնուէր Խոսրովիդուխտոյ, որ կը հրամայէր զԳրիգորիոս հանել վիրապէն, ու իրմէն փնտռել այն բժշկութիւնը: Հնազանդեցան տեսիլքին, ու անկէց՝ զոր աշխարհի մնասակար ու կենաց անգամ արժանի չէին սեպեր, կը խնդրէին իրենց ցաւոց դարմանը: Սուրբն Գրիգոր ալ, չէ թէ միայն անոնց մարմնոյն՝ հապա նաև հոգւոյն բժշկութիւնը կը պարգևէր՝ աստուածուսոյց խրատներով ու բանիւք: Այս քարոզութիւնը՝ Ագաթանգեղեայ գրոցը մեծ մասն է:

Անկէ ետքը կը պատմէ Ագաթանգեղոս՝ Գրիգորի և Տրդատայ ձեռքով եղած բարեկարգութիւնները 'ի Հայաստան. անոնց 'ի Հռովմ ճանապարհորդելը, նորէն

դառնալը, Նիկիոյ ժողովոյն հրաւէրը առ Լուսաւորիչն Հայաստանի, ու ասոր՝ իր որդին փոխանակ ղրկելը ու առանձնութիւնը։ Հոս կը լմըննայ Ագաթանգեղոսի պատմութիւնը։

* * *

Այլ և այլ խնդիրք յուզուած են առ բանասէրս՝ Ագաթանգեղեայ գրոց հարազատութեան վրայ։ Թէ Ագաթանգեղոս՝ ժամանակակից և ականատես անձն, Տրդատայ և որբոյն Գրիգորի պատմութիւնը շարադրած է, իր դարուն մէջ Զենոբ Գլակ, և անմիջապէս հետևեալ դարու պատմիչք մեծարոյք և պատուական իրենց հնութեամբն և հաւատարմութեամբ, անտարակուսելի վկայութիւնը կու տան։ Խնդիրը կը մնայ թէ անոնց յիշատակած ու մեր ձեռքը գտնուած ու Ագաթանգեղոսի անունը կրող գիրքը՝ արդեօք և մի և նոյն երկասիրութի՞ւնն է, թէ վերջինս փոփոխութիւններ և այլայլութիւն կրած է։

Այս ենթադրութեան կամ կարծեաց պատճառը՝ վիճի նիւթ եղող գրքին պատմական հանգամանքն է. յորում ողջամիտ քննադատութեան թերութիւններ ենթադրելով նկատել, չեն յօժարիր ոմանք ընծայել զայն Ագաթանգեղեայ. որ իբրև քարտուղար՝ ընդունելով 'ի Տրդատայ հրաման՝ գրելու անոր թագաւորութեանը անցից պատմութիւնը՝ ոչ յանձնողին արքայական մեծութեան և ոչ ալ գրողին կրնար պատշաճիլ, կ'ըսեն, այդպիսի ոճով և բացատրութեամբ աւանդել յետագայ սերնդոց՝ թագաւորին կիրքը, ամօթն ու չառագունանք, երկնասաստ պատուհասի մը հետևանք դէպքերն, և այլն։

Այսպիսի կարծիք և զգուշաւոր շրջահայեցութեան պարտք մը՝ կրնայ պատշաճական սեպուիլ այնպիսի անձի մը համար՝ որ պատմութիւնն շարադրել տուած ատեն՝ իր փառքն, համբաւն ու պատիւը կը փնտռէ. բայց ոչ անշուշտ այն մեծ թագաւորին՝ որուն համար այդպիսի

երկնահրաշ պարտութիւն մը 'ի վեր էր քան զամենայն փառս. զորմէ վկայէ Խորենացի թէ « Ցետ հաւատոցն որ 'ի Քրիստոս ամենայն առաքինութեամբք բացափայլեալ... ընկեցեալ զերկրաւոր պսակս՝ զհետ ընթանայր երկնաւորին »: Աշխարհահռչակ պատմութիւն մը խարդախել, և կամ օտար 'ի ճշմարտութենէ գոյն և կերպարանք տալ անոր՝ ոչ Տրդատայ և ոչ իր պատմչին կըրնանք վերագրել:

Միւս առարկութիւն մ'ալ, բովանդակ պատմութեանն հրաշապատում ըլլալովը, եթէ ոչ բոլորովին առասպել՝ գէթ առասպելախառն կարծուիլը:

Ասոր ալ պատասխանը հետևեալ իրաւացի անդրադարձութեանց մէջ կը համարինք լիուլի ամփոփուած տեսնել, որ ոչ մեր՝ այլ հմուտ ու բանիբուն քննաբանի մը խօսքերն են. « Ագաթանգեղեայ պատմութիւնն, կ'ըսէ, իր ամէն մանրամասնութիւններովը անտարակուսելի ենթադրել՝ անհանճար գործ մը կրնայ սեպուիլ. վասն զի այսպիսի յատկութիւն՝ մարդկայնն ո՛ր և իցէ գրուածքի մը չի կրնար տրուիլ. մանաւանդ ուր տեղեաւ և ժամանակաւ հեռաւոր անցից և դիպուածոց վրայ է պատմութիւնն: Բայց եթէ մատենագիրք կը սխալին, կը սխալին նաև անոնց քննադատք. և այնչափ աւելի՝ որչափ ջանան սուր միտք և հանճար ունեցող երևնալու փափաքով դիմացինին պարզմտութիւնն արհամարհել: Չեմ հասկնար թէ ինչո՛ւ քրիստոնէութեան հաստատութիւնն 'ի Հայաստան՝ պէտք է որ առանց հրաշից կատարուած ըլլայ, մինչդեռ առողջ քննադատութիւնն՝ ուրիշ երկիրներու մէջ եղածներն տարակուսի տակ չի ձգեր: Թող զի յԱգաթանգեղեայ պատմուածներուն մէջ՝ եթէ լաւ մտադրութիւն ըլլուի անոնց, նշանակութեան արժանի այն է որ շատ բան կրնայ պատշաճապէս մեկնուիլ նաև ըստ մարդկային հաւանական կարծեաց. ինչպէս թագաւորին անբանական մոլեգնութիւնն, և իրեն հետ նաև նախարարացն՝ կամ առ տագնապ խղճի, կամ նմանութեամբ,

և կամ արքային հաճոյական երևնալու համար. — բարեպաշտ այրւոյ մը ձեռքով՝ այնչափ տարի սրբոյն Գրիգորի ապրիլը 'ի գբին՝ ուստի նաև Աստուծոյ թոյլտըւութեամբ և խնամօք՝ նաև բնական պատճառներով կըրնային տեղի տալ հեռանալ օձք. — սրբոյն և սրբուհեաց՝ երկար տանջանաց դիմանալը, մինչ գիտենք՝ թէ հոգեկան ոյժը կ'իշխէ զգացման ցաւոց, և կամ թերևս նոյն իսկ տանջողք՝ առ հիացման և գթոյ՝ կրնային տանջանաց սաստկութիւնն մերթ ընդ մերթ մեղմացընել... Մեծագոյն հրաշք, կրնանք սրբոյն Աւգոստինեայ հետ կըրկնել, այնչափ բազմութեան փոփոխութիւնն է։

« Եթէ աւելի մանրամասնութեանց իջնենք՝ քննադատից առարկութիւններն իմաստակութիւնք կ'երևին մեզ, օրինակ իմն երբ Ագաթանգեղոս կ'ըսէ թէ ամէն պատմածներուն ականատես եղած է քննադատը ապացուցանելով թէ անանկ չէ, կը հետևցընէ թէ ոչ ինչ է ճշմարիտ 'ի պատմեալսն։ Ով որ կը պատմէ այնպիսի դէպքեր՝ որոնց մասամբ ականատես է, և մասամբ յայլոց հաւատարիմ տեսողաց լսած. կամ կը տեսնէ արդէն պատմուածներուն մերձաւոր արգասիքը, և կամ գործողաց շատին հետ կենակից եղած է և ապրած, առանց ստելու՝ Ագաթանգեղոսի իր ստուգախօսութեան համար գրուցածը կրնայ երկրորդել։...

« Անհաւատալի կը թուի որ Տրդատ բարձր լերան մը ծայրէն՝ ուսոցը վրայ շալկելով՝ փոխադրէ այն քարինքը՝ որոնցմով պիտի բարձրանար իրմէ 'ի մահ մատնուած սրբոց մահուան հանգստարանը, մինչ զանոնք տեղափոխելու ուրիշ շատ միջոցք կային... Եթէ Տրդատ արքայական մեծութեանը վրայ՝ իր քննադատէն տարբեր կարծիք ունէր՝ ինչ կրնանք ըսել։... Այլ ինձ հաճոյ է այն ոչ անարգ նուաստութեանը մէջ՝ արքայական մեծվայելչութիւն մը նկատել. և առաւել կը մեծարեմ զՏրդատ

իր այդ խոնարհութեանը մէջ՝ քան զՄաքսիմիանոս յաղթող և յաղթական »[1]։

* * *

Սեբէոս եպիսկոպոս Մամիկոնեանից, եօթներորդ դարու մատենագիր, իր պատմական երկասիրութեանը մէջ՝ Հայոց հին պատմութեան վերաբերեալ հետաքննական ու բաւական ընդարձակ հատուած մը մէջ կը բերէ՝ Ագաթանգեղեայ ընծայուած։ « Հայելով, կ'ըսէ, 'ի մատեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ, զոր եգիտ դրոշմեալ ի վերայ արձանի 'ի Մծբին քաղաքի՝ յապարանսն Սանատրուկ արքայի հանդէպ դրան արքունական տաճարին, ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն։

« Քանզի զսիւնս տաճարին խնդրեալ 'ի դուռն արքային Պարսից, և բացեալ զաւերածն վասն սեանցն ըստ դիպան արձանագրին դրոշմեալ 'ի վերայ վիմի զամս և զաւուրս հինգ թագաւորացն Հայոց և Պարթեւաց՝ յունարէն դպրութեամբ, զոր իմ գտեալ 'ի Միջագետս՝ 'ի նորին աշակերտացն, կամեցայ ձեզ գրուցակարգել. քանզի այսու ունէր վերնագիրն այսպէս. « Ես Ագաթանգեղոս գրիչ գրեցի 'ի վերայ արձանիս այսորիկ իմով ձեռամբս զամս առաջին թագաւորացն Հայոց, հրամանաւ քաջին Տրդատայ, առեալ 'ի դիւանէ արքունի »։

Այս պատմական քաղուածը՝ կ'ամփոփէ մարիբասեան ոճով Հայոց պատմութիւն մը՝ 'ի սկզբանաւորելոյ ազգին մինչև ցթագաւորութիւն Պապայ, Տրդատայ մահուընէն վաթսունուիրեք տարի-ետքը։ Ասով յայտնապէս կ'իմացուի որ եթէ գրուածքին հեղինակը ինքն Ագաթանգեղոս ալ ըլլայ՝ շարունակութիւնն ուրիշի է։ Մեր ազգին պատմութեան վրայ բոլորովին նոր մանրամասնութեանց կը

1. ԴՈՄՄԱՋԷ'ՈՑ, 'ի յառաջաբանի իտալական թարգմանութեան Ագաթանգեղեայ։

հանդիպինք՝ ի սմա, և որ 'ի Խորենացւոյն աւանդուած չեն, և որ իրեն բոլորովին անծանօթ երկասիրութիւն մը պիտի ըլլայ, ինչպէս կ'ակնարկէ Սեբէոսի պատմութեան նոր հրատարակողն (Պատկանեան)։ Վասն զի Ագաթանգեղեայ ընծայուած այս հատուածին մէջ՝ Բագարատ և իրեն տոհմը՝ սերեալք ասին յԱրամենակայ և ոչ 'ի Հրէից՝ ինչպէս կ'աւանդէ Խորենացին, և կը յաւելու. «Ասելն ոմանց անհաւատի մարդոց, ըստ յօժարութեան և ոչ ըստ ճշմարտութեան, 'ի Հայկայ զԹագադիր ազգ լինել Բագրատունեաց։ Վասն որոյ ասեմ, մի այդպիսեաց յիմար բանից հաւանիր... զի 'ի բայ բանից և անոճ իմն յաղագս Հայկայ և Նմանեացն կակազէ»։ Սակայն ինչ ալ ըսուի՝ հնագոյն և պատուական նշխար մ'է ազգային պատմութեան, մեր ձեռքը չհասած պատմական վաղեմի աղբիւրներէ քաղուած։

Լանկլուա իւր Հաւաքման մէջ (Հատ. Ա. 195) հրատարակելով այս գրուածքը՝ խորագիր կը դնէ. Le Pseudo-Agathange, Histoire ancienne de l'Arménie.

* * *

Խնդիր է դարձեալ թէ ինչ լեզուով շարագրեր է Ագաթանգեղոս իր Պատմութիւնը։ Վասն զի ոմանք տեսնելով թէ անիկայ հռովմայեցի էր, օտարազգւոյ համար անկարելի սեպեցին անանկ ճշգրիտ ու ընտիր հայկաբանելը. ուստի և ըսին թէ ինքը յունարէն շարագրած է այս գիրքը, ու ետքը 'ի թարգմանչաց 'ի հայ լեզու փոխուած։ Իրենց այս կարծեացը հաւաստիք մէջ կը բերեն թէ Ագաթանգեղոսի յունարէն օրինակը կը գտնուի առ Սիմէոնի Մետափրաստեայ, որ ուրիշ սրբոց վարուցը և վկայաբանութեանց հետ՝ սրբոյն Գրիգորի վարքն ալ կ'աւանդէ Ագաթանգեղեայ խօսքերն մէջ բերելով, բաց 'ի երկար վարդապետութենէն, և որ 'ի մատենադարանին Փլորենտիոյ պահուած միակ յոյն օրինակին հետեւողութիւն է։

Այս կարծեաց հերքումը, ըստ մեզ, իր մէջն է։ Ագաթանգեղոս հռովմայեցի էր, իսկ գրուածքը՝ յունարէն. պէտք էր որ լատին կամ հռովմայեցի լեզուով շարագրած ըլլար երկասիրութիւնը՝ որպէս զի այս տարակոյսը իր վրան չըլլար։ Իսկ եթէ յունարէն գիտութեանը համար ինքը Ագաթանգեղոս կը վկայէ, ի՞նչ զարմանք թէ հայերէն ալ սորված ըլլայ, որ այնչափ ատեն Հայոց արքունիքը կեցաւ, ու նախարարաց ու պաշտօնէից հետ խօսակից ու կենակից։

Երկրորդ՝ Ագաթանգեղոս կ՚աւանդէ թէ Տրդատայ հրամանաւ ձեռք զարկաւ այս երկասիրութեան, ու Տրդատայ կամքն էր որ մեր թագաւորաց և արքունի դիւաններուն մէջ մնայ. որպէս զի ըլլայ « յօրինակ քաջալերիչ հոգևոր ծննդոց իւրեանց » . « զի և որդիք, կ՚ըսէ, որ ծնանին՝ յարիցեն և պատմեսցեն որդւոց իւրեանց. զի դիցեն առ Աստուած զյոյս իւրեանց, և մի մոռասցին զգործս Աստուծոյ. խնդրելով խնդրեսցեն՝ զի մի՛ եղիցին իբրև զհարս իւրեանց »։ Ուրեմն Հայոց համար գրուած երկասիրութիւն մը՝ հարկ էր որ անոնց լեզուովը գրուէր. և որչափ ալ ենթադրենք թէ յունական լեզուին ուսումը հասարակ էր մեր մէջը, սակայն տարակոյս չկայ որ ամենուն հասկընալի՝ լեզու չէր։ Փարպեցւոյն խօսքը՝ իր ժամանակի Հայոց համար, երաշխաւորութիւն է մեր այս կարծեացը. « Ոչ ինչ էին, կ՚ըսէ, կարող՝ լսել և օգտել ժողովուրդքն այնպիսի մեծ աշխարհի »։ Ագաթանգեղոսի սկզբնագրին յունական սեպուհելուն գլխաւոր պատճառ, ինչպէս ըսինք, նոյն լեզուով իր երկասիրութեան գըտնուիլն է։ Բայց այս պատճառը եթէ զօրելու ըլլար՝ հաւասարապէս պիտի գրուցուէր նաև հայկականին համար։ Ուստի այս խնդրոյն վրայ ստուգութեամբ դատաստան ընելու համար՝ հարկ է երկուքն ալ իրարու հետ բաղդատել, և անանկով խնդրոյն լուծումը դիւրացընել։ Մենք ալ այս հնարքին ձեռք զարնենք։

Ա. « *Ձի գետն Երասխ* (Ἐρασαχ) *յարուցեալ գայր զարիւ և զարբիւ* »։

Թէ որ սկզբնագիրը յունարէն ըլլար, Երասխ գետին անունը Երասախ չէր գրեր, հապա ըստ յունին Արաքսէս Ἀραξις.

Բ. « *Երթեալ հասանէր յամուր տեղին Անի, 'ի թագաւորաբնակ կայանս հանգստանոցացն գերեզմանաց թագաւորաց Հայոց. և անդ կործանեցին զբագինս դիցն Արամազդայ՝ հօրն անուանեալ դիցն ամենայնի* ». (τοῦ Κρονοῦ του πατρὸς Διὸς παντοδαίμονος)։

Ահաւասիկ յայտնի նշան մըն ալ թէ յոյնը հայերենէ թարգմանուած է. վասն զի հայերէնին մէջ Կրոնոս բառը չկայ, ու զԱրամազդ հայր կը սեպէ ուրիշ ամէն աստուածոց. իսկ յոյն թարգմանիչը ասանկ կարդացեր է, « զբագինս դիցն՝ Արամազդայ հօրն՝ (Կրոնոսի), անուանեալ դիցն ամենայնի ». ու այս վերջին երկու բառերը՝ Դիոսի ածական ըրեր է παντοδαίμονος բառով։

Գ. « *Գայր հասանէր 'ի Մրհական մեհեանն անուանեալ որդւոյն Արամազդայ* (εν τοῦ ἱερω Ηφοιστοῦ) *'ի գիւղն զոր Բագաւայիճն կոչեն 'ի պարթեւարէն լեզուէն* »։

Միհր աստուածը՝ ըստ արեւելեան աւանդելեաց՝ արեւն է, չէ թէ կրակը կամ Հեփեստոս։ Հոս ալ թարգմանչին՝ արեւելեան դիցաբանութեան անհմտութիւնը կ'երեւնայ։

Դ. « *Ի կողմանս Կապադովկացւոց 'ի քաղաքն Կեսարացւոց՝* (εἰς πολην Καισαρεῖον) *զոր ըստ հայերէն լեզուի Մաժաք* (Μασαχ) *կոչեն, զի տարեալ զԳրիգոր՝ քահանայապետ կացուսցեն իւրեանց աշխարհին* »։

Յունականին՝ հայերէն ասածը դնելը 'ի քաղաքն Կեսարացւոց, փոխանակ ըսելու իրենց յատուկ ոճովը εἶς Καισαρειαν կամ εἶς πολην Καισαρειαν, յայտնի քննադատական նշան է թէ հայերէնէն թարգմանուած է յունականը։

Ե. « *Եւ հրամայեաց կատարել անդ ամ յամէ 'ի նմին տեղւոջ ժողովել ամենեցուն 'ի յիշատակ սրբոյն, որ օր եօթն էր սահմի ամսոյ.* (τοῦ μηνὸς σαομὴ κατὰ χωραν (λεγομενοῦ, κατα δε ρωμαίους οκτοβριοῦ)։

Սահմի ամսոյն մեկնութիւն այս յաւելուածը, կամ յունին «ըստ հռովմայեցւոց հոկտեմբերի» բառը, հաւանական փաստ մըն է մեր կարծեաց ստուգութեանը։

Զ. « *Եւ զյիշատակ վկայիցն բերելոց ժամադրեաց 'ի տօն մեծ հռչակեալ յառաջագոյն կարծեցեալ սնոտեացն պաշտաման, ի ժամանակի դիցն ամանորաբեր նոր պտղոց տօնին՝ հիւրընկալ դիցն Վանատրի. զոր յառաջագոյն իսկ 'ի նմին տեղւոջ պաշտէին յօր ուրախութեան նաւասարդ աւուր* »։

Այս հատուածին մէջ հիւրընկալ դիցն Վանատրի կոչուած տօնը յատուկ էր Արամազդայ. որովհետև այս հատուածը միայն թէ յունաց և թէ լատին աստուածաբանութեանց մէջ ծանօթ կոչուած է։ Արդ մէկ աստուածոյն տեղ՝ յունին բազմաւորական ξενοδέκτον Θεῶν ծանօթ տարազով ըսելը՝ զօրաւոր ապացոյց մըն ալ է անոր ենթադրելի չըլլալուն. վասն զի մեր լեզուին դիցն ձայնը՝ բազմութեան վրայ առած է՝ փոխանակ միայն Արամազդայ։

Է. « *Ապա եկեալ գտանէին 'ի Դարանաղեաց գաւառին, 'ի լերինն որ կոչի Մանեայ այրք* »։

Յոյնը հոս ալ փոխանակ դնելու σπήλαιον Μανῆς, հայերէն ձայնով կը դնէ Μανααρχ.

Ը. « *Զճահապն ճահապիւանի և զիշխանն սպասկապետութեան* » (πασκαπετέων)։

Անհասկնալի ուրիշ փաստ մըն ալ. Սպասկապետութիւն բառին նշանակութիւնը ծանօթ է մեզի իսկ նոյն ձայնով յունական բառը՝ թէ մեզի և թէ Յունաց անծանօթ։

Թ. «Առնոյր (Գրիգոր՝ զԱրշակունեաց տոհմի որերն»։ Յոյնը՝ Սարակինոսաց կը դնէ։

Այս քանի մը օրինակք՝ բաւական կրնան ստուգել 'ի հաւատարիմ առնել ենթադրութիւն մը՝ որում համամիտ և զուգաձայն են նաև բազմագոյնք յազգային և յօտար բանասիրաց, թէ Ագաթանգեղեայ գրոց միակ գրչագիր յունական օրինակն որ 'ի Լաւրենտեան մատենադարանի Փլորենտիոյ է թարգմանութիւն 'ի հայկականէ։ Աւելի և նորագոյն հաւաստեաց փափաքողք և սիրողք՝ կրնան գտնել ուրիշ հմուտ երկասիրութեանց մէջ, ինչպէս և 'ի Հանդէս ամսօրեայ, (Դ տարի յէջս 129–134).

Յունականն՝ բաց 'ի քաղուածոյ հրատարակութենէն առ Մետափրաստեսի, ինչպէս յիշեցինք, առաջին անգամ հրատարակուեցաւ 'ի Ստիլտինգայ՝ լատին թարգմանութեամբ և ընտիր ծանօթութիւններով. երկրորդ տպագրութիւն մ'ալ ըրած է Լանկլուա 'ի Հաւաքման հայ պատմագրաց։ Վարդապետական մասն, որ Ագաթանգեղոսի գրոց երկրորդ մասն է, կը պակասի նաև 'ի յոյն ձեռագրին[1]։ Վերջին և ընտրելագոյն հրատարակութիւնն է Գ. Լաճարտի ջանքով եղածը (1887)։

Որչափ ալ միաբանին բանասէրք յայսմ ենթադրութեան, սակայն ոչ սակաւք 'ի նոցանէ, ինչպէս ըսինք, կը գլանան տալ Ագաթանգեղեայ թէ՛ յոյն և թէ՛ հայ լեզուով մեր ձեռքն հասած գրուածքին այն հարազատութիւնը, զոր մեզ փափաքելի է չկասկածել 'ի նմանէ, հնգետասան դարուց աւանդական կարծեաց և համոզման դէմ տարակոյս վերցընելով։ Այս է կարծիք եւրոպական նոր քննադատ

1. Դէ՛ԶԱ, Իտալացի հմուտ հայագէտն և քննադատ, վերջի տարիներս ընտիր տեսութիւն մը հրատարակեց՝ Ագաթանգեղեայ գրոց յոյն օրինակին վրայ՝ Իրենց ուսումնական օրագրի մը մէջ, բաղդատելով ձեռագիրն ընդ տպագրոյ, և Իբրամէ ունեցած բազմաթիւ ընթերցուածոց տարբերութիւններն նշանակելով։

բանասիրութեան, որուն կը ձայնակցին և ոմանք 'ի մերազգի հմտից։ Կը համարին թէ հեղինակին ժամանակէն մինչև 'ի հինգերորդ դար, յորում իր պատմական երկասիրութիւնը թարգմանուած կը կարծեն ի հայ, մեծ կերպարանափոխութիւն և այլայլութիւն կրած ըլլայ սկըզբնագիրը. և հայ ազգին երախտագէտ մեծարանքն առ սուրբն Գրիգոր, օրինաւոր սեպել տուած է այլ և այլ յաւելուածներ։ Հետևաբար՝ Ագաթանգեղոսի բնագիրն, — ո՛ր լեզուով ալ գրուած սեպենք, — հիմա կորսուած կը համարին. և « արդի երկլեզու Ագաթանգեղոսն յետին ժամանակի մը գործ կ'երևնայ, կ'ըսեն, որ հին Ագաթանգեղոսի գործը իրեն հիմն դրեր է, բայց պատմութիւնը բոլորովին այլափոխուեր, և դիւանական և ատենական գրուածքն՝ վկայաբանութեան փոխուեր »։ Սակայն այսպիսի կարծեաց ընդունելութեան դժուարութեանն ալ անծանօթ չեն. « Զարմանք է, կ'ըսեն, որ մեր հնաւանդ տարեգիրք՝ արդի Ագաթանգեղոսը կը ճանչնան, և հայ օրինակին լեզուին յստակութիւնն, ճոխութիւնն և հմտութիւնն ալ թարգմանչաց դարու արժանաւոր է, և մանաւանդ թէ ուրիշ յետնագոյն դարու մը ընծայելը՝ ազգային մատենագրական պատմութեան ընդդէմ է »։

Երեք մասն կը բաժնուի Ագաթանգեղոսի գրուածքն. առաջինն՝ Լուսաւորչայ, Հռիփսիմեանց և Գայիանեանց վկայաբանութիւնն կ'ամփոփէ։ Երկրորդ մասը 'ի հեղինակէն մակագրուած է. Վարդապետութիւն սրբոյն Գրիգորի առն Աստուծոյ. իսկ երրորդին խորագիրն է. Դարձ փրկութեան աշխարհիս Հայաստան ընդ ձեռն սրբոյ նահատակի։ Իր գրոցը քննադատք կը կարծեն թէ « Որչափ ալ երեք մասին ալ մատենագրական ոճը նոյն երևնայ, սակայն անիրաւ չէ երկրորդ մասն եկամուտ սեպել, և երրորդն յաւելուած. վերջնոյս ալ մեծ հաւաստիք են Կորիւնի հետ ունեցած անթիւ նմանութիւնք բանից և բառից »։

Մենք կը կրկնենք թէ Ագաթանգեղեայ և թարգմանչաց մէջ եղած ու այնչափ երկար միջոց ժամանակի, և մանաւանդ այս վերջնոց վրայ ազգային անընդհատ և իրաւացի մեծարանքն՝ դժուարին կ՚երևցընէ այդպիսի դրականական անհաւատարմութիւն մը՝ այնպիսի անձանց և դիպուածոց նկատմամբ՝ որ աշխարհածանօթք և աշխարհալուրք էին։

* * *

Ագաթանգեղայ գրոց մասն կը սեպեն ոմանք նաև Դաշանց կոչուած թուղթը։

Պատմութիւննիս կ՚աւանդէ, թէ երբոր Տրդատ թագաւոր և Գրիգոր Լուսաւորիչ լսեցին Կոստանդիանոսի հաւատալը ՚ի Քրիստոս, այն հրաշալի փոփոխմանը խնդակից ըլլալու համար՝ անձամբ ելան ՚ի Հռովմ գնացին, և այն առթով՝ իրարու հետ բարեկամական դաշինք դրին։

Այս դէպքին ստուգութիւնը՝ Ագաթանգեղոսի խօսքերուն մէջ յայտնի կը տեսնուի. «(Կոստանդիանոս), կ՚ըսէ, և արքային Տրդատայ եղբօր սիրելւոյ սէր ցուցեալ ուրախութեամբ մեծաւ, մանաւանդ վասն աստուածածանօթութեանն նորա՝ առաւել դաշինս կռէր ընդ նմա. միջնորդ կալեալ զհաւատսն որ ՚ի տէր Քրիստոսն էր. զի անշուշտ մինչ ՚ի բուն զհաւատարիմ սէրն ՚ի մէջ թագաւորութեանցն պահեսցեն»։

Իրմէ ետքը եկող պատմագիրներն աւելի բացայայտ կերպով կը խօսին այս բանիս վրայ։ Բիւզանդ կ՚աւանդէ թէ երբոր Հայաստան աշխարհքը կը նեղուէր ՚ի թըշնամեաց, Վաղէս կայսեր կ՚իյնար՝ իրմէն օգնութիւն խնդրելով, անիկայ ալ յանձն կ՚առնոյր, «զուխտն յիշեալ, կ՚ըսէ, զդաշանցն կռելոց՝ զերդմանցն հաստատութեան միջնորդութեամբ ՚ի մէջ կայսերն Կոստանդիանոսի և ՚ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր»։ Նոյն դաշանց հաստատութեան ստուգութեանը վկայութիւն կու տայ

մը մտածէր ու գրի վրայ առնուր։ Ասոնց կարգէն է այն վէպական պատմութիւնը որ կ'անհարթէր բոլոր Հռովմայեցւոց քաղաքը, ու Տրդատ սպաննեց զանիկայ. և ինչպէս յետին ու տխմար գրիչ մը կը յաւելու՝ այն յաղթամարմին վիշապին գլուխը մինչև 'ի դուռն քաղաքին բերաւ, զոր հոզքէն յիսունութերկու եզինք հազիւ կրցան ձգել։

Սրբոյն Սեղբեստրոսի այնչափ ինքզինքը մեծցնելն ալ՝ ոչ իրեն սրբութեանը և ոչ վիճակին բարձրութեանը կրնանք պատշաճեցընել։ Իրեն աթոռը նստող հայրապետներէն ոչ ոք այն լեզուն գործածած է։ Իւ անկէայ որ ինքզինքն այնչափ կը մեծցնէ՝ գրեթէ հաւասարապատւիչխանութիւն կու տայ նաև սրբոյն Գրիգորի. բոլոր աբեմտից և արևելից եպիսկոպոսաց, եպիսկոպոսապետաց և պատրիարքաց կ'արգելու որ չըլլայ թէ համարձակին Գրիգորի վրայ ձեռք դնել. այլ Հայոց կաթուղիկոսը միայն իրեն եպիսկոպոսներէն կարենայ ձեռնադրութիւն առնուլ, և թէ սրբոյն Գրիգորի և յաջորդաց հաւանութեամբ պիտի դրուին Երուսաղեմի, Անտիոքայ և Աղեքսանդրիոյ մետրապոլիտք. և թէ յարևելս՝ առաքելական գահուն փոխանորդ սեպուին Հայոց քահանայապետք։

Դարձեալ՝ ռամկական առասպելներ ալ տեսնուին Թըղթոյս մէջ։ Ասոնց կարգէն են՝ թէ Նոյ Փռիւգի[illegible]էջ չիներ է իր տապանը. թէ Կոստանդիանոս՝ Բեթղեհէմ քաղաքը ընծայեր է Տրդատայ, և թէ Տրդատ՝ իր հետ եղող կտրիճներէն իւրաքանչիւր հոգի Կոստանդիանոսի արքունեաց մէջ ձգեր է անոր խնդրանօքը, որ ետքը կայսեր անձնապահապետներն եղեր են 'ի պատերազմունս, և այլն։

Ասոնցմէ զատ ժամանակագրական այլ և այլ սխալներ ալ կան։ Ինչպէս, կ'ըսէ թէ Կոստանդիանոս իր մօրը Հեղինէի ձեռքով գտնուած կենաց փայտին մէկ մասը շնորհեր է Տրդատայ. ուր ճշմարիտ պատմութիւնն կ'աւանդէ թէ Կոստանդիանոսի դարձէն շատ տարի ետքը

եղաւ խաչին գիւտը Հեղինէի ձեռքով։ Կը թողունք ուրիշ ստուգութեան կարօտ խօսքերը. ինչպէս Կոստանդիանոսին՝ իրեն մօրաքեռորդի կոչել զՀռիփսիմէ, ու զՏրդատէս փեսայ։

Այս ամէն հաւաստիք յայտնի կը ցուցընեն թէ հիմակուան մեր ձեռքն եղած Դաչանց թուղթը անհարազատ գործ մըն է յետին ժամանակաց, կամ ինչպէս վերն ըսինք, Ագաթանգեղեայ ձեռքով յօրինուածին՝ չէ թէ մասնաւոր՝ հապա ամբողջական խանգարումն։[1]

* * *

Ագաթանգեղոսի անուամբ ձեռագրաց մէջ ուրիշ մանր երկասիրութիւն մ'ալ կայ այսպիսի խորագրով. Վասն վանորէից որ 'ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ։ յԱգաթանգեղեայ պատմութենէն, որ էր դպրապետ սուրբ Լուսաւորչին, և համառօտ ստորագրութիւն կամ անուանակոչութիւն մ'է յԵրուսաղէմ և 'ի մերձակայս սրբոյ քաղաքին գտնուած վանորէից, զորս՝ ըստ ձեռագրին, հիմներ ու հաստատեր են Տրդատայ թագաւորութեան և սրբոյն Գրիգորի հայրապետութեան ժամանակ «գլխաւոր և անուանի իշխանք Հայաստանեայց»։ Հաւանականաբար անհարազատ է այս գրուածքը, բայց ունենալով նաև պատկառելի հնութիւն մը՝ 'ի վերջ եօթներորդ կամ 'ի սկիզբն ութերորդ դարու. վասն զի գրուածքին մէջ կը յիշատա-

1. Օրինակի մը մէջ որ կը գտնուի ի Վատիկան Հռովմայ, ի վերջն այսպիսի ծանօթութիւն մը կը տեսնենք գրուած. «Ես Գրիգոր սարկաւագ Հայոց ի Հալապ, առնեմ վկայութիւն, որպէս զայս գիրս գրեցի ի յօրինակէ և ի հին գրոց, ի կաթողիկոսարանէն Սսոյ. և է նման օրինակին և ողորդագրան. և ի վկայութիւն այսմ բանիս՝ գրեցի ձեռաց իմովք»։ Ի ցուցակս մատենից Էջմիածնի կը գտնուի բաւական հնագիր օրինակ մը, զոր քիչ ետքը պիտի յիշենք, յորում և Թուղթն դաշանց, որուն հրատարակութիւնը փափաքելի է, նորագոյն գրչաց իբրաւամբ կամ ենթադրեալ խանգարմունքն պիտի յայտնէ։

կուի թէ Անաստաս անունով հայ վարդապետ մը շարագրած է զայն 'ի խնդրոյ Համազասպայ Կամսարական իշխանի Պահլաւունւոյ՝ որ էր 'ի վերջ եօթներորդ դարու, և որ ազատեց 'ի ձեռաց պատրիարքին Երուսաղեմի Հայոց այս վանքերը, ուր յոյնք կ'ուզէին Յաբնաղի՝ վարդապետութիւնը մուծանել. և թէ այս պատճառաւ նոյն վանաց միաբան հայ կրօնաւորք ժողով մը գումարելով, թողքեցին առ կաթուղիկոսն Յովհաննէս՝ որ էր յերկրորդ կէս վեցերորդ դարու (557–574). Կը հաւատարմացընէ զայս ձեռագրի մը յիշատակարանը, յորում կ'ըսուի թէ « գտաք յերկրին Գաղատացւոց, յԱնկիւրիա քաղաքի, սրբոյ Լուսաւորչի ընծայուած եկեղեցւոյ մէջ գիրք մը՝ և յորում այս հատուածը, և թէ Անաստաս կոչուած Հայոց վարդապետ մը երթալով յԵրուսաղէմ, աչքովը տեսեր է Հայոց ազգին պատկանող այս վանքերը, եօթանասուն թուով, ամէնքն աղէկ վիճակի մէջ. և գրի վրայ առնլով բերեր հետը Ծոփաց գաւառը, որ հիմա Չմշկածագ կը կոչուի. ուր հանդիպելով իր գրուածքին, գաղափարեցինք հաւատարմութեամբ » ։ Չի գիտցուիր թէ ո՛վ է այս ծանօթութեան հեղինակը, բայց եօթնևտասներորդ դարէն յառաջ ըլլալը անտարակուսելի կ'երևնայ ։

Ագաթանգեղոսի կամ Անաստասայ ընծայուած այս գրուածքը՝ քանի մը տարի յառաջ (1883) ·գաղղիական թարգմանութեամբ հրատարակուեցաւ 'ի Փարիզ (Archives de l'Orient latin II) այս մակագրով. Anastase d'Arménie, (VIIme siècle). Les LXX Couvents Arméniens de Jérusalem.

*
* *

Էջմիածնի Մատենադարանին մէջ գտնուած Ագաթանգեղեայ հնագոյն գրչագիրք հետևեալքն են՝ ըստ տպագրեալ Կարենեան ցուցակին.

1. Մեծադիր՝ բոլորագիր գրեալ 'ի թղթի 'ի Յովհան-

Նալանս որ 'ի կարբի 'ի Թուին Հայոց ՉԽԲ (1293). յօրում նաև Թուղթն դաշանց, և Յաճախապատում գիրք սրբոյ Լուսաւորչին։ Աւելի հնագոյն օրինակ մ'ալ, բայց միայն Դաշանց Թղթոյն (Թիւ գրչ. 1630) գրուած «ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ ի Թագաւորութեան Հայոց Հեթմոյ ի Թուին Հայոց ՇՂԵ»։

2. Մեծադիր բոլոր հին ընտիր գրչութեամբ յանապատն Ակներ։ — Ներբող Լուսաւորչի յՈսկեբերանէ։

3. Մեծադիր բոլորագիր 'ի Բաղէշ 'ի մենաստանն Խնդրակատար, 'ի Թուին Հայոց ՌԺԹ։

Մեր Մատենադարանին վեց և աւելի գրչագրաց մէջ՝ ընտրելագոյնն է հնութեամբ և ստուգագոյն ընթերցուածովք դաղափարեալն յօրինակէն որ յազգային Մատենադարանին Փարիզու. և որոյ վրայ եղած են կրկին տպագրութիւնք 'ի Ս. Ղազար։ «Գրեալ, ինչպէս յիշատակարանն կը ծանուցանէ, 'ի Վարդանեայ քահանայէ 'ի Թուականիս Հայոց ՉԳ, 'ի քաղաքն Ռիմ, ընդ հովանեաւ սուրբ տաճարին որ յանուն սուրբ աւետարանչացն Յովհաննու և Մատթէոսի, ուր էր նա հոգեւոր Հայոց»։

Ասոնցմէ ամենէն աւելի հին է՝ Ագաթանգեղոսի երկաթագիր կրկնագիր օրինակ մը 'ի Մատենադարանի Մխիթարեանց 'ի Վիէննա։

«Այս կրկնագիր ձեռագրին բուն երկայնութիւնը մէկ ոտնաչափ ու լայնութիւնն ութը մատնաչափ է։ Վրայի գրուածն է ամենէն հին բոլորագրով Անդրէի եպիսկոպոսի Կեսարու Կապադովկացւոց՝ մեկնութիւնն Յայտնութեան Յովհաննու առաքելոյ, Ս. Ներսէս Լամբրոնացիէն թարգմանուած, որուն դիրք առջինին չորս մասին մէկ մասն է. որովհետև սակայ գրողը՝ Ագաթանգեղոսին ամէն մէկ թերթը չորս ծալլած է։ Տակի գիրը միջին երկաթագիր է, ուսկից յայտնի կ'երեւայ որ ութերորդ կամ իններորդ դարերուն մէջ գրուած պիտ' որ ըլլայ։...

«Օրինակին ընտրութեանը վրայ խօսք ընելը աւելորդ կը համարինք. արդէն կրկնագիր ըսելը ու հնութիւնը՝ ա-

նոր ընտրութիւնն ալ կը ցուցընեն. այս միայն կ'աւելցընենք որ մինչև հիմա գտնուած ամէն օրինակներէն շատ աւելի աղէկ և ընտիր է. անանկ որ Փարիզի թագաւորական գրքատան օրինակն ալ, որ մինչև հիմա գտնուած օրինակներուն մէջ ամենէն ընտիրն է, շատ տեղեր ասով կը սրբագրուի, մէջի սխալ կամ մթին բառերն ու իմաստները կ'ուղղուին, միանգամայն անկից աւելի կտորներ ալ մէջը կը գտնուի: Օրինակի համար, հոս քանի մը կտորներ դնենք: Փարիզի օրինակին յառաջաբանութեան մէջ (Տպագր. Վենետիկոյ 1835) երես 4 այսպէս գրուած է. «... Յանքոյթ նաւահանգիստն հասանել կարացեն. այլ առ չգոյութեան աղքատութեան», և այլն. իսկ մեր կրկնագրին մէջ. «... Յանքոյթ նաւահանգիստն հասանել կարասցեն, արդարեւ իսկ չառ այնք իսկ են, որ ոչ վասն ագահութեան զանձինս 'ի մահ դնեն, այլ առ չգոյութեան աղքատութեան»: Նոյնպէս նոյն երեսին մէջ տող 24 Փարիզի օրինակը կ'ըսէ. «Երկպատիկ օգտութեան աւելի եղագս գտանել կարացեն. միանգամայն զպարտաւորոն հանել». իսկ կրկնագիրը՝ «Երկպատիկ աւգտութեան եւլի աղագս գտանել կարասցեն. միանգամայն զպարտաւորուսն հանել»: Երես 7 տող 3 Փարիզեան օրինակը. «Ըստ վարիչ ոգւոյն». կրկնագիր. «Ըստ վարգիչ աւդոյն»: Երես 8 տող 2 Փարիզեան օր. «Յանդգնութեամբ բարբառովք». կրկնագիր. «Յանդգնութեամբ տղայաբար բարուք»: Երես 10 տող 4 Փարիզեան օր. «Երկայն ճանապարհացն». կրկնագիր. «Երկայնուղայ ճանապարհաց»: Երես 17 տող 16 Փարիզեան օր. «Առնութեան». կրկնագիր. «Բանութեան»: Երես 20 տող 22 Փարիզեան օր. «Ո՛ որք ուստեք, որ զայսպիսի շնորհով աստուածեղէն երևեցաւ». կրկնագիր. «Ո՛ որք ուստեք որ զայս նորոգատոր զառաքելական շնորհս յանձին ցուցանելով, այնպիսին աստուածեղէն շնորհաւ երևեցաւ»: Նոյնպէս նոյն երեսին մէջ տող 12. «Զալեաք ժամանակագրական ծովուս. որք հար-

ցեալ զհայրական մատեանս պատմեցի նոցա ». իսկ կըրկ-նագիրը կ'աւելցընէ. « Զալեաւք ժամանակագրական ծա-վուս, պատմել յազգս յայդ զծողովրդին (զժողովրդենէն) առացելոյ, որք աշրհենացեն զտեր, որք յետ այսր անցեալ ժամանակաց գաղոցն իցեն. որք հարցեալ զհայրական մատեանսն, պատմեցի նոցա », և այլն : — Բոլոր գըր-քին մէջ այսպէս տարբերութիւններ ու գեղեցիկ յաւե-լուածներ կը գտնուին : Բայց ափսո՜ս որ կատարեալ ամ-բողջ չէ. ինչու որ վրան նորէն օրինակողը՝ շատ անգամ հին մագաղաթին սիւներուն կէսէն կտրած է, որով տո-ղերուն կէսը դուրս մնացած է »[1] :

Այս և այլ անգամ տպագրուած է Ագաթանգեղոսի գիրքը. առոնց մէջ առաջինն է 'ի Կոստանդնուպոլիս եղածը 1759ին Էջմիածնին նուի-րակ Աստուածատուր վարդապետի մը ձեռքով : Վերջին երկու տպա-գրութիւնքն եղած են 'ի Վենետիկ, Մխիթարեանց վանքը, 'ի 1835 և 'ի 1862, ընտիր և համառօտ ընթերցուածով. որոյ [illegible] թարգ-մանուած է նաև իտալերէն և տպագրած հոն, 'ի 1843 : Նորագոյն տպագրութիւն մ'ալ հայ ընագրին 'ի Թիֆլիզ, 'ի 1882 :

Ագաթանգեղեայ գրոց եւրոպական թարգմանութիւնքն են, բաց յիտալականէն զոր յիշեցինք, լատին մասնական Agathangel: Acta S. Gregorii Illum. (Bolland. Acta Sanctorum; Sept. VIII, 321 : Գաղղիական. Agathange, Histoire du règne de Tiridate et la prédicatiou de S. Grégoire l'Illuminateur, avec suppressions des passages purement religieux, sur le texte arménien, accompagnée de la version grecque, par V. Langlois; Paris, 1867. Աստուածաբանական քննադատութիւնք. Agathangelos et la doctrine de l'Église arménienne au V. siécle... par Garabed Toumajan; Lausanne. — Agatangelus, von Alfred von Gütschmid, ու մեր վերը ակնարկած Դէզա իտալացւոյն գրուածը :

1. Եւրոպա, շաբաթական լրագիր, 1848, թիւ 9.

# ԶԵՆՈԲ ԳԼԱԿ

*Ո՞վ էր Զենոբ։ — Զենոբայ պատմական երկասիրութիւնը և նիւթը։ — Իր գրուածքին գլխաւոր աղբերք. — Ի՛նչ լեզուով գրեց։ — Տպագրութիւնք բնագրին և թարգմանութիւնք։*

Ասորի էր Զենոբ, ու սրբոյն Գրիգորի հետ Կեսարիայէն 'ի Հայաստան եկած, կրօնաւորական կենաց կարգերը՝ որուն նուիրած էր ինքզինքը, նորահաւատ աշխարհին մէջ ծաւալելու։ Այս վախճանաւ Լուսաւորիչ Տարօնայ մօտ Իննակնեան՝ կամ սրբոյն Կարապետի վանքը հաստատելով, հոն առաջնորդ և վանահայր կարգեց ըզԶենոբ։

Այսչափ է Զենոբայ վրայ ունեցած տեղեկութիւննիս։ Քանի մը խօսք ալ իւր երկասիրութեանը վրայ գրուցենք, յորում պիտի տեսնուի թէ ինչ պատճառաւ և երբ գրեց իւր պատմութեան գիրքը։ Իւր և Ագաթանգեղոսի գրոց մէջ երևցած տարբերութեանց վրայ պէտք չէ զարմանալ, որովհետև ինչպէս ինքն ալ կ'ըսէ, Ագաթանգեղոսէն առաջ շարագրած է իւր գիրքը։

* * *

Զենոբ իր պատմութեան գիրքը քանի մը նամակներով կը սկսի։ Առնցմէ առջինը՝ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ կը գրէ առ Ղեւոնդիոս հայրապետ Կեսարու. յորում նախ շնորհակալ կ'ըլլայ սրբոյն Յովհաննու Մկրտչի նշխարքը իրեն ղրկելուն համար, և անոր ձեռքով

Հայաստանի մէջ կատարուած հրաշալի դէպքերը կը պատմէ Գիւղանկեայ կուոց պատկերին կործանմամբը։ Շնորհակալ կ'ըլլայ դարձեալ Անտոն և Կրօնիդէս ճգնաւորաց համար, զորոնք նոյն սուրբ հայրապետը ղրկած էր 'ի Հայաստան, և կը խնդրէ որ անոնց նման ուրիշներ ալ յուղարկէ, մանաւանդ զՏիմոթէոս և զԵղիազար՝ սրբութեամբ նշանաւոր անձինքը։

Ղեւոնդիոս այս թղթոյն փոխարէնը կը դարձընէ առ Լուսաւորիչն։ Ուրախակից կ'ըլլայ այն աստուածահրաշ փոփոխութեանց համար՝ որոց հանդիսարան եղած էր Հայաստան. ու այլ և այլ զգուշութիւններ կը պատուիրէ սրբոյն Գրիգորի։ Իսկ այն կրօնաւորաց համար՝ զորոնք կը խնդրէր իրմէ, կը ծանուցանէ որ ուրիշ տեղ են։ Սուրբն Գրիգոր այս թուղթն առնելով շատ ցաւեցաւ, ու թագաւորին և իշխանաց հետ մէկտեղ թուղթ մը գրեց առ Եղիազար և առ Տիմոթէոս։ Ասոնց գործակից ու վաստակակիցք Բեկտոր, Անաստաս, Աքիւղաս և Մարկեղիոս նոյն ժամանակները Բիւզանդիոն քաղաքը եկեր էին. հոն հանդիպեցան իրենց քանի մը անձինք որ Տարօնոյ Աշտիշատ քաղաքէն եկած էին. ու պատմեցին թէ ինչ զարմանալի գործեր կատարեց Աստուած սրբոյն Գրիգորի ձեռքովը. և փափաքելով այս դիպաց մանրամասն տեղեկութիւնը ունենալ, մասնաւոր թղթով մը աղաչեցին զսուրբն Գրիգոր որ իրեն պաշտօնէիցմէ մէկուն պատուիրէ՝ որպէս զի այդ ամէն հանդիպած դէպքերը գրով մը իրենց ծանօթացընէ։ Սուրբն Գրիգոր երբոր այս թուղթն առաւ, Զենոբայ Ասորւոյ համայեց որ առջի ու երկրորդ պատերազմաց պատմութիւնը նամակով մը անոնց իմացընէ։ Զենոբ ուզեց որ Խոսրովու մահուընէն սկսի պատմութիւնը. բայց սուրբն Գրիգոր յանձն չառաւ. հապա միայն անոնց խնդրածը գրել պատուիրեց։

Այս առթով շարագրեց Զենոբ իր Պատմութիւնը։ Համառօտիւ կ'աւանդէ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին պատմութիւնը, Խոսրովու մահը Անակայ ձեռքով, անոր ազ-

զատոհմին բոլորովին ջնջուիլը, ու միայն երկու հոգւոյ ազատիլը, ու անոնցմէ մէկուն՝ ժամանակ անցնելէն ետքը Տրդատայ քով ծառայութեան մտնելը, ու կռոց պաշտօն չմատուցանելուն համար այլ և այլ տանջանաց մատնուիլը, վիրապը իջնելը, անկէց դուրս ելլելով՝ զամէնքն աշակերտելը քրիստոնական հաւատոց, եպիսկոպոս ձեռնադրիլը 'ի Ղեւոնդեայ։ Դարձեալ կը պատմէ թէ ինչպէս սուրբն Գրիգոր Կեսարիայէն դառնալու ատեն ամէն ջանքը բանեցուց կռատուններն ու մեհեանները կործանելու, և այն պատճառաւ կռապաշտ Արձան ու Դեմետր իշխաններն և իրենց համախոհքն՝ Գրիգորի ու Տրդատայ հետ միաբան եղող հաւատարիմ ու քրիստոնեայ բանակին հետ պատերազմեցան։ Ասով կը լմննայ Զենոբայ գրոց առջի պատճէնը։

Երկրորդ պատճենին խորագիրն է «Վասն պատերազմին որ յԱրձանն եղև». յորում նոյնպէս Տրդատայ ըրած պատերազմներուն և քաջութեանց պատմութիւնն ընելով կը լմնցընէ երկրորդ թուղթը, որ միանգամայն իր գրոցն ալ լրումն է։



Այլ և այլ աղբիւրներ ունեցած է Զենոբ այս գիրքը շարագրելու համար. ու անանկ պատմագիրներ կը յիշատակէ որ կամ միայն անուամբ յայտնի և կամ բոլորովին անծանօթ են մեզ։ Ասոնց կարգէն են Բարդա կամ Բարդեծան և Պիսիդոն թարգմանիչ։ Ուր որ ինքը ստիպուած է համառօտ ոճով անցնիլ, հոն երբեմն այս պատմագրաց կը ղրկէ իր ընթերցողքը. «Ընթերցիր, կ՚ըսէ տեղ մը, զթագաւորութիւն Հեփթաղինեկայ հելլենացի գրով, և կամ զթագաւորութիւնն ճենաց զոր գտանես յՈւրհայ քաղաքի առ Բարդայ պատմագրի»։ Ուրիշ տեղ մըն ալ. «Զոր եթէ ստուգիւ կամիք իմանալ, զՊիսիդոն թարգմանիչ ասորի՝ հարցէք»։



Ինչպէս որ և իցէ հին երկասիրութիւնք, ասանկ ալ Զենոբայ գրուածքը շատ աղաւաղութիւն կրած է անհմուտ և ձեռնամուխ գրիչներէ, որով թէ՛ լեզուին և թէ պատմութեան մէջ այլ և այլ կերպարանափոխութիւնք մտած։ Անկէց առաջ եկած է լեզուին խամութիւնը, բառից և դարձուածոց սխալ կամ անհարազատ իմաստներով ու եղանակաւ գործածուիլը, երբեմն ալ ամբողջ խօսքերուն մութ և անիմանալի մնալը։

Զենոբայ ինչ լեզուով գրելուն վրայ տարակոյս կայ. հաւանականաբար հայերէն լեզուով գրած չէ, որովհետև թուղթը ասորւոց համար ըլլալով՝ հարկ էր որ անոնց լեզուովը շարագրէր։ Ոմանք կը համարին թէ նախ ասորերէն գրած ըլլայ, ու ետքը թարգմանած 'ի հայ. որովհետև 'ի գրչագրաց ոմանք այս խորագիրը կը դնեն նոյն գրքին. Պատմութիւն Տարօնոյ՝ զոր թարգմանեաց Զենոբ ասորի։ Բայց եթէ մէկը՝ թարգմանել բառը շարագրելու տեղ գործածուած հասկընայ՝ խօսքին իմաստն այլայլած չըլլար։ Կարելի է որ հայերէն թարգմանութիւնը ժամանակաւ ետքը եղած ըլլայ. և որովհետև Զենոբայ և անոր պատմութիւնը շարայարողին՝ Յովհաննու Մամիկոնենի գրոցը մէջ նմանութիւն կը տեսնեն ոմանք, հաւանական կը սեպեն որ նոյն իսկ Մամիկոնեանն եղած ըլլայ թարգմանիչը։

Զենոբայ գրոցը առաջին տպագրութիւնն եղած է 'ի Կոստանդնուպոլիս 1719ին, ջանիւք և սրբագրութեամբ Պաղտասար դպրի. իսկ երկրորդ և ընտրելագոյն տպագրութիւնն 'ի Վենետիկ, Մխիթարեանց վանքը 1836ին. այլ և այլ ձեռագրաց բաղդատութեամբ. յետ որոց աւելի հին և ընտիր օրինակ ալ գտուած է։ Էջմիածնի Մատենադարանին գրչագրաց ցուցակին մէջ՝ երկու օրինակ կը գտնենք Զենոբայ պատմութեան գրոց, մին բոլորագիր և միւսն նոր՝ անթուականք (Թիւ 1641, 1642)։

…ւթիւնք եղած են իր գրոցը 'ի գաղղիական թարգ-…, Histoire de Daron par Zénob de Klag, évêque …duite pour la première fois de l'arménien, et ac-…de notes, par Ev. Prud'homme. Paris 1864. Իսկ եր-… Zenob de Glag, évêque syrien; Histoire de Daron, tra-… nouvelle par V. Langlois. (Collection des Historiens … et modernes de l'Arménie, publiée en français.) Pa-… Librairie de Firmin-Didot frères, fils et C. Tome I, 1867.

# ՆԵՐՍԷՍ ՊԱՐԹԵՒ

---

*Սրբոյն Ներսէսի վարուց համառօտութիւնը։ — Իր աշ-դիւնքը նկատմամբ մեր քաղաքական պատմութեան։ — Թանասիրականին վրայ ունեցած ազդեցութիւնը։ — Իրեն ընծայուած երկասիրութիւնք։*

Այս Նուիրական անուան առջեւը՝ մեր քաղաքական պատմութիւնը նոր կերպարանք մը կ'առնու. Հայաստանի արքունական սատանեալ գահոյքը՝ մէկ երկու անգամ իրեն պարտըկան է իւր հաստատութիւնը. Թագաւորաց սատիչ, Նախարարաց ու ժողովրդեան խրատող ու քարոզ, ամենուն հաւասար հայր եղած, և ազգին անմահական երախտագիտութեանը արժանի։ Սակայն ոչ ժամանակն իրեն, և ոչ ինքը ժամանակին արժանաւոր կ'երեւնայ. իւր ամէն ջանքովը՝ զՀայաստան վերանորոգելու, գրեթէ աչքովը կը տեսնէ անոր անկումը, և հոգեխառն զմայլմանցը մէջ՝ արցունքով կը նկատէ անոր գլուխը գալիք փորձանքները. անանկ թշուառութիւններ՝ երկնից կամքովը սահմանուած, որոց առջեն առնելու համար՝ բաւական չըլլար իւր մեծ հոգին և անխոնջ եռանդը։

Մանաւանդ թէ պատմութեանց մէջ քիչ անգամ իրեն նմաններն ունեցող դէպքով մը՝ անօրէնութիւնը դժնդակ յաղթանակ մը կը կանգնէ, և այն լեզուն և սիրտը՝ որուն խրատուց չկրնար հանդուրժել, և որուն առաքինութեանց նմանիլը վատութիւն կը սեպէ, բոլորովին կը համրացընէ, թոյն խմցընելով անոր՝ որ իւր հայրենեացը անմահութեան բաժակը մատուցանելէն չէր յոգնած։ Այս է մեծին Ներսիսի փառուց համառօտ ուրուագիծը։ Տխուր դէպք մը, որուն ամօթը՝ դարուց հեռաւորութիւնն չէ կրցած փարատել։



Ինչպէս ազգին քաղաքական կենացը, սանկ ալ բանասիրականին վրայ մեծ ազդեցութիւն ունեցած է Ներսէս. թէպէտ և պատմութիւննիս՝ այս նկատմամբ խիստ քիչ տեղեկութիւն կ'աւանդէ։

Տղայութեան հասակին Կեսարիա գնացած է Ներսէս, և հոն իմաստասիրական ուսմանց մէջ ունեցած յառաջադիմութեամբը՝ աշակերտակցացը սիրելի, վարդապետաց ալ զարմանալի երևցած, ինչպէս կը վկայէ Բիւզանդ։ Անկէց Կոստանդնուպոլիս անցնելով, հոն Յունաց երևելի իշխաններուն մէկուն դուստրն իրեն ամուսնացուց, և այն զուգութեան միակ պտուղն եղաւ սուրբն Սահակ պարթև։

Հայաստան դառնալէն ետքը՝ Փառներսեհի յաջորդ եղաւ 'ի կաթուղիկոսութեան։ Այն պաշտամանը մէջ մօտանց տեսնելով հայրենեաց խեղճութիւնը, անոր միակ դարման սեպեց ժառանգաւորաց կրթութիւնը. անոր համար բոլոր Հայաստանի մէջ վանքերը շատցուց. որոնց թիւը ոմանք ինչուան երկու հազարի կը հանեն, և անոնց բարեկարգութեանն համար կարգեր ու կանոններ սահմանեց, ինչպէս որ տեսած և սովրած էր առ Յոյնս։

« Զօրաւորն 'ի բան և 'ի գործ, կատարեալ աշխար-

*հակալն հոգւոց՝ չէ թողուցած մեզի մանաւոր երկասիրութիւն մը իւր մտաց և գրչի արդիւնք. սակայն կարելի՞ է մտածել որ հայրապետ մը ունեցած ըլլայ վերաբերութիւններ ընդ Թագաւորս դրացիս, ընդ իւր ստորակարգ եպիսկոպոսունս և ընդ բոլոր ազգին՝ զանազան առիթներով: Բայց այս տեսութիւններէս բան մ'ալ աւելի կ'ենթադրենք, որ սուրբ հօրս արդիւնք եղած է մեր Մաշտոցն, չըսեմ նաև Պատարագամատոյցն և Ժամագիրքն, այնպիսի մատեանք որ միակ կարևորք էին յամենայն ժամանակի, կը յիշէ Բուզանդ, որ սուրբն Ներսէս 'ի սպանութեան Գնելոյ առաւօտեան ժամերգութիւնը կը կատարէր, և Մեսրոպ երէց կը յիշէ թափօր խաչիւ և աւետարանաւ. կրնանք համարել միանգամայն որ սուրբն Ներսէս իբրև զսուրբն Բարսեղ յարդարած ըլլայ զեկեղեցական մատեանս ըստ մասնէ: Վկայէ ինքն Մեսրոպ որ մեր Մաշտոցին քահանայաթաղն՝ աղօթքն և հրաժարականքն՝ այն խօսքերն են զոր արտաբերեցին երջանիկ շրթունքն հոգիացեալ մարմնոյն Ներսիսի 'ի ժամ արքման բաժակին: Երկարատև ազդեցութիւն մը ունեցաւ թոյնն 'ի նմա, և ըրաւ առ նախարարս սրտառուչ հրաժեշտն՝ զոր կ'ընթեռնունք յիւր աշակերտին գրուածս. կը դարձընէ սիրտն առաւել քան զաչսն՝ առ շրջակայս և կ'ըսէ. « Ողջոյն ձեզ դասք քահանայից, ողջոյն ձեզ կարգ սարկաւագաց, ողջոյն ձեզ մանկունք սուրբ եկեղեցւոյ, ողջոյն ձեզ հաւատացեալ եղբարք. ես ճանապարհորդեցի առ արարիչն իմ. թողի զամենայն զկեանս իմ, և թողի զժառանգութիւնս իմ. ըստ հրամանի քում դարձայ 'ի հող յորմէ ստեղծայ: Ահա հրաժարիմ 'ի քէն սուրբ եկեղեցի: Ահա մեկնիմ 'ի ձէնջ սիրելի եղբարք, ի կոչումն Քրիստոսի Աստուծոյ մերոյ »... Այս ողջոյնքն են զորս կ'արտաբերէ ցարդ հանգուցեալն 'ի Քրիստոս՝ բերանով քահանային, որով Մաշտոցին գեղեցիկ դրուագ մը իր մասերուն անկէ առնուած է:*

*« Բայց մարդկային միտք շատ անգամ եղածուն գոհ*

ճըլլալով, կը սիրէ և կ'ախորժի նաև յաւելով և բարդել. այսպիսի գրուածներ ստեղծած է մեր պատմութիւնն վասն սրբոյն Ներսիսի։ Ինչպէս Մեթոտիոս պատարացի, և Ագաթրոն մը 'ի մեզ, և Հիպպողիտոս մը գրած ըլլալնին կ'աւանդուի, Նեռին և վերջին գալստեան համար և կատարածի աշխարհիս, ոչ ինչ նուազ գրութիւն մ'ալ մերքն կու տան Ներսիսի, որպէս թէ 'ի կատարած կենացն խօսած ըլլայ Հայոց ազգին և կատարածին վրայ և Նեռին. և այս պատմողն և մանրամասն գրողն է ինքն Մեսրովպ երէց վայելչաբան ոճով պատմիչն, որ և... կը յաւելու եւս որ սրբոյն Ներսիսի մահուանն առաջիկայ գտան երկուք ոմանք՝ Մեսրոպ և Եպիփան՝ աշակերտք սրբոյն, որ և զհայ գիրն գտան[1]։

1. Բազմավէպ, 1877, յէջ 337։

# ԲԻՒԶԱՆԴ

---

*Բիւզանդ և իր անձին և ազգին վրայ եղած այլեւայլ տեղեկութիւնք։ — Փարպեցի և իր խօսքերը Բիւզանդայ վրայ։ — Բիւզանդայ պատմական գիրքը՝ համեմատուած ուրիշ ազգային պատմչաց հետ։ — Անեցմէ օտարանալն շատ դիպուածոց յիշատակութեան մէջ՝ օտարութիւն կ՚ենթադրէ նաև ազգաւ։ — Սահառունի կոչուիլը, ու այդպիսի անուանակոչութեան հաւանական սեպուած պատճառ մը։ — Ո՞ր լեզուով գրուած է իր երկասիրութիւնը։ — Արդեօք ամբողջ հասա՞ծ է ձեռուընիս Բուզանդայ յօրինած պատմութիւնը։ — Բուզանդարանի նիւթը։ — Տպագրութիւնք և թարգմանութիւնք։*

Չորրորդ դարուն գլխաւոր մատենագրաց մէկն է Բիւզանդ Փաւստոս, նշանաւոր իր ընտիր և գեղեցիկ երկասիրութեամբը, և դարձեալ իր վրայ եղած զանազան կարծիքներովը։ Մենք իրեքի կրնանք վերածել այս կարծիքները. նախ թէ ո՛վ է Բիւզանդ և ի՛նչ ազգէ. երկրորդ թէ ի՛նչ լեզուով պատմագրեց, և երրորդ թէ արդեօք իր գրուածքը ամբողջ հասա՞ծ է մեր ձեռքը։

Բիւզանդայ համար ոմանք կը գրուցեն թէ Յոյն էր ազգաւ, և այլք թէ Հայ։ Երկու կարծեաց հետևողներուն ալ պէտք եղած հաստատուն պատճառները կը պակսին իրենց դրութիւնը հաստատելու կամ այլոց կարծիքը հերքելու համար։ Այն վախճանաւ հարկ է որ այս խնդրոյս լուծումը հիներուն գրոցը՝ կամ աւելի լաւ՝ Բիւ-

զանդայ գրոցը մէջ փնտռենք։ Բանանք անոր վեցերորդ դպրութեան ցանկը. և հոն կը տեսնենք մասնաւոր գլխոյ մը նշանագրութիւն հետևեալ խօսքերով. «Սորոտ ամենայն պատմութեանց՝ յաղագս իմ տեղեկութեան, որ միանգամ զմատեանս ընթեռնոյք, տուենք տասն՝ համարական թուաք»։ Սակայն գրուածքին մէջ այս նշանաւոր և հետաքրքրական գլուխը պակաս կը գտնենք։ Միայն նոյն գրոց հինգերորդ և վեցերորդ գլուխներուն մէջ Փաւստոս անունով եպիսկոպոս մը կը յիշատակուի, որբոյն Ներսիսի եպիսկոպոսապետին ժամանակ, և անոր տանը Թելակալ կամ հոգաբարձու, և իր Առաստոմ եղբայրը, որոնց համար յայտնապէս կ՚ըսէ պատմագիրն թէ «էին սոքա լեալ ազգաւ հոռոմ»։ Թէ որ հոս յիշուած Փաւստոսը՝ նոյն է պատմութեան գրոց հեղինակին հետ, ամէն տարակոյս կը վերցուի, և իր ազգութիւնը կը յայտնուի։ Ուրիշ վկայութիւն մըն ալ այս կարծեաց կրնանք սեպել Փաւստոսի պատմութեան երրորդ դպրութեան վերջին գլխոյն այս խօսքերը. «Կատարեցաւ երրորդ դպրք, քսան և մի պատմութեանց դպրութիւնք, (այսինքն նոյնչափ գլուխք) ժամանակագիր կանոնք Փաւստեայ Բիւզանդեայ ժամանակագիր մեծի պատմագրի, որ էր ժամանակագիր Յունաց»։

Սակայն ոմանք այս վկայութիւնները բաւական չսեպելով, և տեսնելով որ Բիւզանդ հայերէն յօրիներ է իր պատմութեան գիրքը, կարծեցին թէ մեր ազգէն ըլլայ, և միայն Բիւզանդիոնի մէջ իր ուսմունքը կատարած ըլլալուն համար Բիւզանդ կամ Բիւզանդացի կոչուած. ինչպէս նաև ոմանք մեր Թարգմանիչներէն Աթենքի մէջ իրենց ուսման ընթացքը ըրած ըլլալուն համար Աթենացի կոչուած են։ Բայց մեզի այս կարծիքը անընդունելի կ՚երևնայ. 'ի հաւաստիս՝ մէջ կը բերենք նախ վերի յիշուած երկու վկայութիւնները. երկրորդ՝ ուրիշ թէ ժամանակակից և թէ իրմէն ետքը եկող պատմագրաց խօսքերը, և երրորդ՝ ասոնցմէ ամենէն աւելի իր պատմութեան գիրքը։

Այս երկրորդ ու երրորդ հաւաստեաց վրայ քիչ մը երկընկեկ խօսինք։



Բիւզանդայ վրայ խօսող պատմագրաց մէջ գլխաւոր է Ղազար Փարպեցի՝ որ ժամանակաւ իրմէն քիչ ետքը կ'իյնայ։ Ասիկայ Ագաթանգեղեայ վրայ գովութեամբ խօսելէն ետքը կը յաւելու. «Երկրորդ գրոցն անուանեն զոմն պատմագիր կոչեցեալ՝ Փաւստոս Բիւզանդացի. և վասն զի կարգելոցն առ 'ի նմանէ 'ի տեղիս ուրեք, կարծեցին ոմանք բանք ինչ ոչ յարմարք և դիպողք, յերկուացեալ հարկաւորին՝ չասել զայնպիսի անպատշաճ կարգումն Բիւզանդացւոյ ուսելոյ»։ Ետքը Բիւզանդիոն քաղաքին վրայ մեծ համարմամբ խօսելէն վերջը, կը գրուցէ. «Ցայնպիսումն քաղաքի, և 'ի մէջ այնչափ բազմութեան ուսելոյ վարժեալ այրն Փաւստոս, այնպիսի ինչ արդեօք անհաճոյս լսողաց կարգէ՞ր 'ի պատմութեան իւրում. քաւ և մի լիցի. ուստի և անհաւատալի իմում տըկարամտութեանս կարծեցեալ գործն, ասեմ թէ այլ ոք յանդուգն և անհրահանգ բանիւ լրբաբար ձեռն արկեալ՝ յիւրսն գրեաց զինչ պէտս ըստ կամի... և անուամբ Փաւստոսին՝ զիւրոյ յանդգնութեան սխալանս համարեցաւ ծածկել. և այն յայտնի երևի ամենայն հայցողաց. քանզի են ոմանք 'ի Ցոյնս, այլ մանաւանդ յԱսորիս»։

Փարպեցւոյն այս խօսքերը թէ որ մտադիր ու անաչառ քննութեան տակ ձգուին, մեզի կ'երևնայ թէ մեր կարծեացը զօրաւոր և անհակառակելի վկայութիւնք են։ Իրաւ է որ ոչ հայ և ոչ յոյն ըլլալուն որոշ խօսք մը կայ աս հատուածիս մէջ, բայց յոյն՝ մանաւանդ թէ, ինչպէս ոմանք կ'ենթադրեն, ասորի ըլլալուն աւելի կրնան վերաբերիլ։ Փարպեցւոյն պէս հմուտ անձի մը տգիտութիւնը այս խնդրոյս վրայ աւելի մեծ տգիտութիւն մը կ'ենթադրէ ազգին մէջ. և թէպէտ իր պատմութեան

գիրքը յունարէն կամ ասորի լեզուով գրուած ըլլայ, և իրմէ կամ ուրիշէ մը հայերէն թարգմանուած, բայց կ'երևնայ թէ ժողովրդեան մէջ Բիւզանդայ անունը կար, իսկ իր անձին վրայ ստոյգ տեղեկութիւն մը պակաս էր։ Փարպեցին ալ չափազանց խղճմտութեամբ՝ որ իրեն պատիւ է, ազգին մէջ նոյն հեղինակին համարումը չկոտրելու համար, քաղաքէն՝ քաղաքացին կը սկսի գովել. ուստի և անոր գրոցը մէջ եղած անտեղութիւնքը ուրիշ տգէտի մը կ'ուզէ ընծայել, որ յանդգնութեամբ, կ'ըսէ, եռք զարկաւ, ու անանկ իմաստուն մարդու մը գրուածքը խանգարեց. և թէ այս դէպքը զարմանալի կամ անօրինակ բան մը չէ. վասն զի կայ այդ սովորութիւնը Յունաց մէջ, բայց մանաւանդ Ասորւոց։



Սակայն Փարպեցւոյն անորոշ խօսքերէն աւելի՝ Բիւզանդայ գիրքը անոր ազգութիւնը կը յայտնէ։ Կարգէ դուրս աննմանութիւն մը կը տեսնուի անոր գրոցը մէջ հայկական պատմութեանց վերաբերեալ դիպուածոց նըկատմամբ՝ տարբեր յայլոց պատմչաց բանից, որ համազգւոյ մը համար անկարելի էր. և ա՛լ աւելի՝ չափազանց ատելութեան ոգի մը ընդդէմ Հայոց։ Փարպեցւոյն մեղադրանքն ու դարմանք ալ այս կէտին համար է, և ըղպատմիչն արդարացընելու ջանից նպատակն։ Մէկ քանի օրինակ մէջ բերենք։

Սուրբ Յակոբ Մծբնայ հայրապետը՝ որ գրեթէ Բիւզանդայ ժամանակակից կը սեպուի, և զոր մեր ամէն՝ թէ՛ հին և թէ յետին ժամանակաց պատմիչները՝ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին հօրաքեռորդին կը սեպեն, ազգաբանութիւնն ալ մէջ բերելով, 'ի Բիւզանդայ երկբայութեամբ մը կը յիշուի. « Որ փոխանակ ազգաւն պարսիկ կոչէր » կ'ըսէ։

Նոյն սուրբ հայրապետին համար Խորենացին և իրմէ

եսքը եկող ուրիշ պատմիչներ կ'աւանդեն, թէ Ռշտունեաց Մանաճիհր իշխանը՝ Ասորւոց կողմի Բակուր բդեշխին վրայ պատերազմի ելլելով՝ զանիկայ կը մեռցնէր. ու թէ 'ի զինուորաց և թէ ռամիկ մարդիկներէն շատերը գերելով, սրբոյն Յակոբայ ութը սարկաւագունքն ալ ծովը նետել կը հրամայէ։ Բիւզանդ այն ութ անձինքը ութհարիւրի կը հանէ. « Եւ առ վայրենի բարուցն զոր, ունէր, կ'ըսէ, յանձին իւրում, իբրև նմա հեճուկս առնելոյ, ութ հարիւր այր որ կային 'ի կապանս առանց յանցման, ետ ածել առաջի նորա, և հրամայեաց 'ի դահճէ մի՛ոջէ 'ի ծով անդր հոսել, և զայնչափ հոգի առանց յանցման կորուսանել »։ Այս անգթութեան նախընթաց պատճառ եղող Բակուրայ պատերազմը և ոչ իսկ կը յիշէ. այլ Մանաճիհրի համար չար ու ազգամ մարդ մը ըլլալը կը զրուցէ, և թէ սուրբն Յակոբ գնաց առ նա, որպէս զի խրատելով ուղիղ ճամբու բերէ զինքը։ Այս խրատին հետևանք կ'ենթադրէ յիշուած անգթութեան գործը։

Դարձեալ թէ 'ի Խորենացւոյն և թէ ուրիշ պատմիչներէ գիտենք սրբոյն Յուսկան նահատակութեան պատճառը։ Յայտնի է մեզի թէ Տիրան թագաւորը ուզեց Յուլիանոսի պատկերը եկեղեցեաց մէջ դնել. և երբոր սուրբ հայրապետը այդ անօրէն գործը խափանելու ետևէ եղաւ, իր աստուածային նախանձուն մէջ գտաւ չարաչար մահը։ Բիւզանդ բոլորովին տարբեր կերպով կ'աւանդէ այս դէպքը. « Օր մի, կ'ըսէ, յաւուրց տարեկան՝ դիպեաց գալ թագաւորն Տիրան հանդերձ այլով աւագանւովն մտանել յեկեղեցին. իսկ նա ընդդէմ բարբառեալ ասէր. Չես արժանի, հի՛մ գաս. մի՛ գար 'ի ներքս։ Վասն որոյ անդէն 'ի ներքս քարշէին զնա յեկեղեցւոջն. բրածեծ եղեալ ջախջախէր քահանայապետն Աստուծոյ սուրբ երանելի մանուկն Յուսիկ. կիսամահ կոչկոճեալ ընկեցեալ լինէր »։

Տիրանայ կուրանալուն պատմութիւնն ալ բոլորովին

տարբեր կերպով կ՚աւանդէ։ Ցայտնի է մեզի յայլոց պատմչաց թէ Տիրան՝ Ուրացող Յուլիանոս Թագաւորին օգնականութեան ձեռք տուաւ Պարսից դէմ․ ու երբ Պարսիկք յաղթող ելան՝ Շապուհ Թագաւորը կուրցնել տուաւ զՏիրան։ Բիւզանդ այս պատժին տարբեր պատճառ մը մէջ կը բերէ․ Տիրան Թագաւորը, կ՚ըսէ, ճարտուկ ճանճկէն երիվար մը ունէր․ Շապուհ ուզեց իրմէ այս ձին․ իսկ Տիրան յանձն չառնելով իրմէ օտարացնել՝ բոլորովին անոր նման երիվար մը գտաւ ու ղրկեց Շապհոյ։ Իմացաւ Շապուհ խարդախութիւնը, ու 'ի պատիժ հրամայեց զՏիրան կուրացընել։

Կը թողունք յիշատակել ուրիշ ասոնց նման զանազան դէպքերը, ինչպէս Գնելի ու Փառանձեմայ պատմութիւնները, Արշակայ ու Պապայ, և այլոց վրայ աւանդածները, որոնք բոլորովին կ՚օտարանան յայլոց պատմչաց, և մանաւանդ 'ի Խորենացւոյն։ Բայց այս յիշուած մէկ քանի օրինակներն ալ բաւական են հաւատարմացընելու թէ ազգային պատմչի մը համար անկարելի է այդպիսի անգիտութիւն, ու ան ալ՝ իրեն ասանկ մերձաւոր ժամանակաւ մարդիկներու ու դէպքերու նկատմամբ։ Բայց ա՛լ աւելի իրեն ազգը քարոզողը՝ հնցած ատելութիւնն է, որով միշտ առիթ կը փնտռէ մեր ազգը վար զարնելու։

Ճշմարիտ ու հայրենասէր Հայու մը համար՝ սրբոյն Գրիգորի ու Տրդատայ պատմութենէն աւելի սրտաշարժ դէպք մը չկայ։ Բոլոր Հայաստանին մէկ ծայրէն մէկալը աւետարանին քարոզութիւնը անանկ մտադիւրութեամբ ընդունելը, մէկ օրուան մէջ հազարներով մարդիկներու մկրտուիլը, բոլոր աշխարհին մէկ սիրտ մէկ հոգի ըլլալը, կռոց տաճարները քանդելու և անոնց աւերակացը վրայ Աստուծոյ տուները բարձրացընելու, ասոնք անանկ դէպքեր են որ նոյն գործը կատարող ժողովրդեան վրայ թէ՛ սէր և թէ զարմանք կը յաճախեն։ Իսկ Բիւզանդ այն երջանիկ ժամանակաց համար ալ ասանկ կը խօսի․ «Զի 'ի վաղնջուց, կ՚ըսէ, յորմէ հետէ առին նոքա զհա-

ւատս քրիստոնէութեան, լոկ միայն իբրև զկրօնս իմն մարդկութեան յանձինս իւրեանց և ոչ ջերմեռանդն ինչ հաւատովք ընկալան, այլ իբրև զմոլորութիւն իմն մարդկութեան 'ի հարկէ, ոչ եթէ որպէս պարտն էր գիտութեամբ, յուսով կամ հաւատով ... խառնաղանջ բազմութիւն մարդկան ժողովրդոցն, նախարարացն և կամ շինականութեանն »։

Ասոր նման ուրիշ շատ օրինակներ ալ կրնայինք մէջ բերել՝ թէ որ խօսքի երկարութենէն չխորշէինք։

Տարակոյս չկայ որ ուրիշ աստուածարեալ հայք ալ անաչառ և խիստ լեզու մը կը բանեցընեն ազգին պակասութեանցը դէմ, և երբեմն ինչուան իրենց նուիրական շրթունքը յանէծս կը շարժեն· բայց նոյն խստութեան և նոյն իսկ անիծին մէջ ուրիշ գորովալիր սիրտ և ուրիշ հայրենի խանդաղատանք մը կը նկատուի։

Բիւզանդայ օտարազգի ըլլալուն ուրիշ փաստ մըն ալ այն կրնանք սեպել, որ ոչ երբէք իր Պատմութեանը գըրքին մէջ աշխարհս Հայոց, թագաւորն մեր կը գրէ, այլ պարզաբար աշխարհն Հայոց, թագաւորն Հայոց, և այլն· Իսկ եթէ Յունաց վրայ ըլլայ խօսքը, ասանկ կը գրէ· « մեծ թագաւորն Յունաց, մեծ Արեւելեացւոց քաղաք », և այլն։



Իսկ որոնք որ զՓաւստոս Բիւզանդ հայ կը սեպեն, նոյն լեզուով պատմագրելէն զատ ուրիշ մէկ քանի փաստեր մէջ կը բերեն։ Նախ Բիւզանդացի կոչուիլն հայրենեացը յայտարարութիւն չեն սեպեր, այլ ուսմունքը հոն ըրած ըլլալուն համար այնպէս անուանած, ինչպէս վերն ըսինք, և ապացոյց մէջ կը բերեն Թարգմանիչներէն ոմանց Աթենացի կոչուիլը, ինչպէս նոյն ինքն Ղազար Փար-

պեցին ալ Սիմոն ապարանեցիէն Աթենացի կոչուած է [1]. Եղիշէ այլ որքոյն Եպիփանու Արարածոց գրոցը մեկնութեան թարգմանչէն՝ Բիւզանդացի կը կոչուի։ Բայց անոնց միտքը ոչ եթէ Եղիշէի կամ Ղազարայ հայրենիքը ցուցընել է, այլ անոնց յունմունս գերազանցութիւնը. ընդհակառակն Փարպեցւոյն միտքը Բիւզանդայ համար՝ բոլորովին տարբեր մտքով կը հասկըցուի, ինչպէս վերը ցուցինք։

Ասկէ աւելի զօրաւոր ապացոյց մը կը սեպուի անոնց առջև Բիւզանդայ Սահառունի կոչուիլը. որովհետև ինքը պատմիչը իւր գրոց երրորդ Դպրութեան մէջ կ'աւանդէ «Եւ զմերոյ տոհմի ազգի իշխան Սահառունեաց, և զԱբա իշխան Գնունեաց»։

Բայց մենք կրնանք ենթադրել թէ կամ Սահառունեաց ցեղին հետ խնամեցած էր Բիւզանդայ տոհմը և կամ գրչի սխալ մը պէտք ըլլայ անշուշտ այս հատուածին մէջ։ Վասն զի ինչպէս խիստ լաւ կ'առարկէ բանասէր մը, Բիւզանդ որ ուրիշ ամէն ցեղերուն նախարարաց անուանքը կը յիշատակէ այն գլխոյն մէջ, իրեն սեպհական ցեղին նախարարին անունը առանց յիշատակութեան կրնա՞ր թողուլ. ուստի և հաւանական կ'երևնայ ըսելը թէ Մերոհդահզատ իշխանին անունը փոխուէր եղեր է «մերոյ տոհմի»։ Որովհետև նոյն իսկ Սահառունեաց տոհմին ալ այնչափ բարեկամ չէ Բիւզանդ, որուն վկայ կրնայ ըլլալ Բատայ Սահառունւոյ պատմութիւնը՝ հինգերորդ Դպրութեանը մէջ։

Մէկ գլխաւոր պատճառ մը կրնայ առարկուիլ, վերը յիշուածներէն ամենէն աւելի զօրաւոր. և է Բիւզանդայ հայերէն լեզուով մատենագրելը։ Թէպէտ և եղած են ո-

1. «Ի յունական երկիր գնացեալ
Եւ զարտաքնոց հանճարս ուսեալ,
Աթենացի զինքն անուանեալ
Քան ըզնոսա այլ հըմտացեալ»։

մանք որ կարծեցին թէ սկզբնագիրը յունարէն կամ ասորի լեզուով եղած ըլլայ, ու ետքը թարգմանուած 'ի հայ, բայց հայկական լեզուին քաջ տեղեակ ոմանց բանասիրաց անհաճոյ կը թուի այդ կարծիքը։ Սակայն այս ալ բաւական պատճառ չէ մատենագրի մը ազգը յայտնելու. ուր բազմալեզու մատենագիրք պակաս չեն թէ՛ հին և թէ նոր ազգաց մէջ, որ հաւասարապէս կրցեր են գրել թէ՛ իրենց և թէ օտար լեզուներով։ Ասանկ՝ մեր մատենագրութեան մէջ Ագաթանգեղոս, ինչպէս ցուցինք, և լատին դպրութեանց պատմութեանը մէջ կարքեդոնացին Տերենտիոս, որ լատին բարբառը իբրև իրեն յատուկ լեզուն գործածեց, և ընտիր օրինակագիր մը եղաւ։

Այս կարծիքը ունեցողներուն մէջ առաջին ըլլալով մեր Ինճիճեան վարդապետը, իր պատճառներն ուղեցինք մէջ բերել, իւր ձեռագիր դրուածոց մէկուն մէջ գտնելով. «Փաւստոսի անձին համար՝ որովհետև ինքզինքը յայտնապէս Սահակունի կը կոչէ, ասոր Հայոց ազգէն կը սեպեմ զինքը, բայց սնած և սորված առ Յոյնս, և ինչպէս հաւանական կ'երևի, 'ի Բիւզանդիոն. ինչպէս ասանկ ուրիշ շատերն ալ եղած են մեր ազգին մէջ. Ետքը Հայաստան գալով՝ հոն յօրինած ըլլայ այս Պատմութիւնը. և որովհետև Բիւզանդիոնայէն եկած ըլլալովը յունական Փաւստոս անունը ընդունած էր, կարծուեցաւ թէ ինքն ըլլայ այն հռչակաւոր Փաւստոսը՝ որուն վրայ կը խօսի Ղազար։ Ինծի կ'երևնայ թէ զայս կ'ակնարկեն երրորդ Դպրութեանը վերջը դրուած մթին խօսքերը. «Փախստեայք Բիւզանդեայ ժամանակագիր, մեծի պատմագրի որ էր ժամանակագիր Յունաց»։ Զոր ես այս կերպով կը կարդամ. «Փախստեայք Բիւզանդեան ժամանակագիրք, ըստ մեծի պատմագրին Փաւստոսի Բիւզանդայ՝ որ էր ժամանակագիր Յունաց»։ Բայց թէ որ այս մեր Փաւստոսին համար զուրցուած ըլլայ այս խօսքը՝ Յունաց ժամանակագիր կոչուած, մենք չենք հակառակիր. վասն զի թէպէտ ինքը հայկազուն էր, բայց որովհետև Յունաց մէջ մեծցած էր կրնար նաև Յունաց պատմական ժամանակագրութիւն մըն ալ գրած ըլլալ։

Իսկ իւր այս Հայկական պատմութեանը համար՝ ես կը կարծեմ թէ Բիւզանդ շատ բան Հայոց մատեաններէն ու դիւաններէն քաղած է՝ որ այն ատեն կը գտնուէին. վասն զի իւր գրոցը մէջ այնպիսի բազմազան պարագաներ կը նկատենք, որ կը յարմարին ու կը լուսաւորեն Խորենացւոյն պատմութիւնը. կը գտնենք նշանակուած գաւառաց

տա. գիւղօրէից անուանքը՝ ուր որ այն գործքերը կատարուեցան. նոյնպէս ալ շատ անձանց անուանք, որոնց համար ինքնահնար բանը անկարելի է։ Թէ որ Խորենացին ընդարձակ գրած ըլլար իւր պատմութիւնը, և իւր 'ի համառօտ փութալը շատ տեղ չյայտնած, այն ատենն կարելի էր տարակուսիլ և քննել թէ ինչ պատճառաւ զանցառութիւն ըրած է այն դէպքերը յիշելու։ Անոր համար իմ կարծիքս համեմատ՝ միշտ պէտք է այս երկուքը միաբանելու աշխատիլ. և զայն մերժել որ յայտնապէս կ'ընդդիմանայ Խորենացւոյն պատմութեանը։ Ահաւասիկ Բիւզանդայ աւանդած Դրաստամատ ներքինւոյն պատմութիւնը՝ Արշակ Թագաւորին ինքնասպան ըլլալուն պարագաները ընդարձակ կը մէկնէ, որուն վրայ Խորենացին բան մը չնշանակեր. Նոյնպէս ալ Արշակաւանի շարեացը տարապարութիւնը՝ Խորենացւոյն համառօտ խօսքը բացատրութիւն է։ Ուստի այնպիսի և ուրիշ նման դիպուածներէ իմաստասիրելով, պէտք չէ, կ'ըսեմ, 'ի Բիւզանդայ պատմուած այն ամէն դէպքերը մերժել, որ չեն գտնուիր առ Խորենացւոյն. զոր օրինակ Մուշեղի ու Մանուէլի զօրավարութիւնքը և անոնց քաջագործութիւնները, որոնց վրայ Խորենացին բան մը չաւանդեր. վասն զի յայտնի է թէ այն ատեն Հայերը քաջագործութեամբ անուանի զօրավարներ ունէին, որոց և ոչ անուանը յիշատակութիւնը կայ առ Խորենացւոյն։ Անշուշտ մեր այս կարծիքը ունեցան նաև Մեսրոպ Երէց, Կիրակոս և Վարդան, որոնք այլ և այլ պատմութիւններ և դէպքեր քաղեցին Բիւզանդայ գրքէն՝ իրենց պատմական երկասիրութեանցը մէջ »։

* * *

Կը մնայ երրորդ խնդիր մըն ալ թէ արդեօք Բիւզանդայ երկասիրութիւնը ամբողջ հասած է մեր ձեռքը՝ թէ անկատար. որովհետև Բիւզանդարանը երրորդ դպրութենէ կը սկսի, և ուրիշ երկու նախընթաց դպրութիւնք ալ ենթադրել կու տայ։ Բայց որովհետև ինքը մատենագիրը իր յատուկ յառաջաբանին մէջ հետևեալ խօսքերը մէջ կը բերէ, « Այս ինչ է 'ի դպրութիւնս երրորդ պատմութեանցս. ժամանակագիր կանոնք մատենից, և առ նմին դպրութիւնք երեք, այս ինքն են սոքա չորք մատեանք. և չորեքին միոյ իրաց յիշատակարանք են »։ Այս խօսքերը յայտնապէս կը ցուցընեն թէ չորս գիրք կամ դըպրութիւն շարագրած է Բիւզանդ. որով ինքնիրեն կը

լուծուի այս երկբայութիւնը. և հաւանական կ'երևնայ կարծելը թէ առաջին և երկրորդ դպրութիւնք կ'ենթադրէ հեղինակը իրմէ առաջ եղող ուրիշ երկու պատմագրաց գրուածներն, որոնք սրբոյն Թադէոսի և սրբոյն Գրիգորի Լուսաւորչին պատմութիւնքը կ'աւանդէին. գուցէ Ղերուբնայի ու Ագաթանգեղոսի կամ Զենոբայ գըրուածներն ակնարկելով: Ուստի և գրչագիրք ալ ընթերցողաց մտքէն ամէն տարակոյս վերցընելու համար այս գրքին ամբողջութեանը նկատմամբ, սովոր են երրորդ դպրութեան վրայ Սկիզբն բառը դնել: Ասոնցմէ մին՝ մասնաւոր կերպով ալ հարկ կը համարի ծանուցանել թէ «Երրորդ դպրութիւն սկիզբն է»:

***

Բուզանդարանի նիւթն է 29 տարուան պատմութիւն. և իրեն գլխաւոր նպատակն է Տրդատայ որդւոյն Խոսրով երկրորդին իշխելէն, ինչուան Արշակայ և Խոսրով երրորդի թագաւորելուն, և Ասպուրակէսի կաթողիկոսութեան պատմութիւնն ընել:

Համառօտ ոճով մը կը նշանակէ Թադէի առաքելունէն ինչուան Տրդատայ օրերուն անցքերը. վասն զի «այն ամենայն 'ի ձեռն այլոց գրեցան» կ'ըսէ, ակնարկելով անշուշտ Ղերուբնայի երկասիրութիւնքը և Ագաթանգեղոսի պատմութիւնը: Բայց հոնկէց՝ ուր անոնց պատմութիւնը կը դադրի, կը սկսի ինքն ճոխաբար աւանդել. և Լուսաւորչայ նուիրական ցեղին վրայ՝ ուր այլք 'ի պատմչաց համառօտ և ոչ այնչափ գոհացուցիչ պատմութիւններ կ'աւանդեն, ինքը տեղնիտեղը և մանրապատում յիշատակութիւններ կ'ընէ: Ասանկ են սըրբոյն Վրթանայ, անոր որդւոցը՝ Գրիգորիսի և Յուսկան, ու այս վերջնոյս անարժան որդւոց՝ Պապայ և Աթանագինէի, և սրբոյն Դանիէլի ասորւոյ վարքերն. անանկ յիշատակութիւններ՝ որ մեր եկեղեցական պատ-

մութիւնքը փառաւորելով՝ քաղաքականին վրայ ալ մեծ լոյս մը կը ձգեն։

Ասոնց նուիրած կրնանք սեպել Բիւզանդայ երրորդ Դպրութիւնը։

Բայց անոնց օրովը՝ Հայաստանի մէջ անցած քաղաքական դէպքերն ալ անյիշատակ չիթողուր Փաւստոս։ Հոն կը կարդանք Մանաւազեան և Որդունի նախարարութեանց իրարու դէմ տուած հակառակամարտ կռիւներն, ու իրենց սրովը մէկզմէկ անզաւակելը։ — Մաքըթաց թագաւորին Հայաստանի վրայ վազելը, ու ամօթապարտ յաղթուիլը, Բակուր բդեշխին ապստամբութիւնը, Բզնունեաց ազգահատութիւնը, Վաչէ մեծ զօրավարին առաջնորդութեամբը՝ Հայոց ու Պարսից իրարու դէմ տուած պատերազմները, ու իրեն և արքունեաց վրայ եկած հասած խեղճ դիպուածներն։ Ասանկ տխուր դիպաց ու աղետից և շփոթութեանց մէջ կը դադրեցընէ Բիւզանդ իրեն երրորդ Դպրութիւնը։

Տիրանայ որդւոյն Արշակայ թագաւորութեամբը կը սկսի Բիւզանդ իր չորրորդ Դպրութիւնը. Հայաստանի նեղութեանց ու թշուառութեանցը մէջ՝ երկնաւոր աստուածախնամ տեսչութիւնը՝ Աթանագինէի անարժան՝ բայց երկնից արժանի ու Հայաստանի բազմավրդով տառապանացը սփոփանք Ներսէս մը կ'ընծայէին, այն Պարթեւ հայրապետը՝ որուն նման և ոչ մէկն 'ի մերոց թագաւորաց՝ այնչափ ազդեցութիւն ունեցած է Հայաստանի քաղաքական իշխանութեանը վրայ, և որուն հաւասար անձ մը կրնանք ըսել թէ հին և նոր պատմութեանց մէջ սակաւագիւտ է։ Անոր պատմութիւնը Բիւզանդայ չորրորդ գրոց մեծ մասը գրաւած է. իր ծնունդը, Կեսարիա երթալը, Հայոց հայրապետական գահը նստիլը, Հայաստանի արքունական սասանեալ աթոռը փրկելու համար՝ մինչև առ Վաղէս ճանապարհորդելը, հոն իրմէ աքսորուիլը, կրկին կայսեր հետ տեսնուիլը, ու ընդ Արշակայ թագաւորի զանիկայ հաշտեցընելը, ու 'ի հայրենիս վերադարձը։

Սակայն Ներսիսի սրտին, հոգւոյն ու հայրագութ թելադրութեանցը անարժան անձ մըն էր Արշակ, որ այնպիսի բարերար հօր մը ձայնին մտիկ չընելով՝ անօրէն գործքերովը բոլոր Հայաստանին ատելի կ'ըլլար․ իրեն կրիցը միայն լսելով իր եղբօրորդին՝ զԳնէլ՝ կը սպաննէր, ու անոր Փառանձեմ կնիկը իրեն առնլով՝ Հայոց արքունի տանը ընտանի խաղաղութիւնը կը վրդովէր։ Վերջապէս ինքը Արշակ թագաւորն ալ՝ Շապհոյ Պարսից արքային ձեռքն իյնալով, Անյուշ բերդին մէջ յուսահատ կեանքէ մը ետքը՝ աւելի յուսահատ մահուամբ կը մեռնէր։ Ո՜րչափ սրտաշարժ ու ճարտասան լեզուով կ'աւանդէ Բիւզանդ այս դէպքերը։ Արշակայ մահուամբը կը դադրի Փաւստոսի չորրորդ Դպրութիւնը, մէջ բերելով նոյն միջոցին Հայաստանի մէջ եղած այլ և այլ դէպքերու յիշատակութիւնը, և մանաւանդ Շապուհ Պարսից թագաւորին՝ Հայոց հետ ունեցած վերաբերութիւններն։

Արշակայ յաջորդը եղաւ Պապ, հօրը արժանի որդի մը, որուն պատմութիւնը կ'ընէ Բիւզանդ իւր հինգերորդ Դպրութեանը մէջ։ Կը պատմէ անոր Մուշեղ զօրավարին Պարսից թագաւորին դէմ տուած պատերազմները․ ժամանակին այլ և այլ նախարարական տանց մէջ անցած դէպքերը, Պապայ անօրէն ու անկարգ վարքը, ու զսուրբն Ներսէս մահադեղով սպաննելը․ թագաւորին՝ իր խառնակ կենացը արժանի մահուամբ մը՝ Յունաց զօրագլխէն սպաննուիլը․ Վարազդատայ՝ անոր տեղ թագաւորելը, ու մէկէնիմէկ Հայոց Մուշեղ զօրավարը սպաննելը ու ետքը Մանուէլ զօրավարին Պարսից գերութենէն դառնալը, ու Մուշեղայ մահուանը վրէժը խնդրելով, ու Վարազդատը Հայաստանէն ու թագաւորական աթոռէն մերժելը։ Դարձեալ նոյն Մանուէլ զօրավարին Պարսից հետ միաբանիլը 'ի խաղաղութիւն աշխարհին, ու ետքը Մերուժանայ արծրունւոյ թելադրութեամբ՝ պատերազմաց յուզմունքը, ինչուան որ այս վերջինս Պարսից զօրացը հետ միաբան Մանուէլի վրայ գալով, յաղթուեցաւ ու

տպաննուեցաւ. և այն ատեն Մանուէլ թագաւորեցոյց զԱրշակ, և ինքն ալ մեռաւ։ Իր մահուամբը կը վերջացընէ Բիւզանդ հինգերորդ Դպրութիւնը։

Բուզանդարանի վեցերորդ գիրքը՝ ամենեւին անարժան կրնայ սեպուիլ առջի իրեք Դպրութեանց. վասն զի ոչ առջիններուն մէջ երևցած հետաքննական դիպուածոց շարունակութիւնք են, և ոչ ալ անոնց ոճովը գրուած. այլ ժամանակին Հայաստանի մէջ երևցած քանի մը եպիսկոպոսաց վրայ կենսագրական տեղեկութիւններ, բաց 'ի առջի գլխէն՝ յորում Հայոց թագաւորութեան երկու բաժնուելուն պատմութիւնը կ'ընէ. այս ինքն Յունաց թագաւորին հրամանաւ Արշակայ իշխելը ու Պարսից կողմանէ ալ Խոսրովու թագաւորելը, ու անով Հայաստանի թագաւորական իշխանութեան տկարանալը։

Երեք տպագրութիւնք եղած են Բիւզանդայ գրոցը. 1721ին ('ի Կոստանդնուպոլիս). 'ի Վենետիկ 1831ին, ընտիր ընթերցուածով և հմուտ յառաջաբանութեամբ, և նորագոյն տպագրութիւն մ'ալ 'ի Ս. Փեթերսբուրկ (1883) 'ի ձեռն Քերովբէի Պատկանեան։

Եւրոպական լեզուով թարգմանութիւնք. Faustus de Byzance, Bibliotèque historique en quatre livres; traduite pour la première fois de l'arménien en français, par Jean-Baptiste Emine, directeur du gymnase impérial de Vladimir sur le Kliazma- (Collection des Historiens anciens et modernes de l'Arménie, par Victor Langlois). Paris, Librairie de Firmin-Didot frères, fils et C. 1867. Բազմահմուտ թարգմանիչն 'ի յառաջաբանին՝ Բիւզանդայ անձին ու գրոց վրայ յայտնած կարծեաց մէջ քանի մը տեղ մեղմէ կը տարբերի։ Սկզբնագիրն յունարէն կը համարի, և յառաջին կէս հինգերորդ դարու թարգմանուած 'ի հայ։

Des Faustns von Byzanz Geschichte Armeniens. Aus dem Armenischen uebersetzt und mit einer Abhandlug über die geographie Armeniens eingelates von D.r M. Lauer. Köln, 1879.



Ինչպէս Խորենացւոյն, սանկ ալ բիւզանդայ պատմական երկասիրութիւնն, կարեւորութիւն ունի և առատ նիւթ կը մատակարարէ Հայաստանի քաղաքական ու եկեղեցական հին պատմութեանց հետամուտ եղողներուն։ Հմուտն Սէն–Մարդէն շատ կը յարգէր այս գրուածքը, և յորմէ բազմապատիկ տեղեկութիւններ և դիպուածներ քաղելով՝ ճոխացոյց Լըպոյի Արևելեան կայսերաց պատմութեան Նոր տպագրութիւնը։

## ՊՐՈՅԵՐԵՍԻՈՍ

---

*Հայք յԱթէնս և 'ի Հռովմ։ — Պարոյր և իր ուսումը։ — Յառաջադիմութիւնն և պատիւ 'ի Հռովմ։ — Իր անուանը և համբաւոյն կանգնուած արձան։ — Գրիգորի աստուածաբանի վերտառութիւնը։*

Այս չորրորդ դարուս մէջ կը յիշուին 'ի Յունաց շատ բանասէր Հայկազունք, որ ուսմունք սորվելու համար կ'երթային Աթէնք ու Հռոմ և ուրիշ գլխաւոր քաղաքներ. որոց մէջ գլխաւորն է Պրոյերեսիոս կամ Պարոյր Հայկազն, որ այնչափ անուանի եղաւ ճարտարխօսութեան ուսման և հրահանգաց մէջ՝ որ ինչուան Աթենքի և Հռոմայ մէջ արձաններ կանգնեցին իրեն պատուոյն ու թագաւոր ճարտարախօսաց կոչեցին։

Սակայն ցաւալին այն է որ այսպիսի հայկական դըպրութեանց պարծանք անուանի անձին վրայ՝ մեր նախ-

նիք տեղեկութիւն մը չեն տար, ու կը ստիպեն որ օտար աղբերաց դիմելով՝ ազգային ճոխութեան խեղամուտ ըլլանք։ Պարոյրի վարքը գրողաց մէջ գլխաւոր Եւնաբիոս յոյն ու իրեն ժամանակակից հեղինակ ըլլալով, հարկ է որ իրմէ քաղենք այս հարկաւոր ու հետաքրքրական տեղեկութիւնները՝ մեր ամենէն մեծ ճարտասան անձին վրայ։

Պարոյր, կ'ըսէ պատմիչն, իրեն ծերութեան ատենն ալ այնպիսի դիմաց վայելչութիւն և գեղեցկութիւն ունէր, որով յայտնի կ'երևնար երիտասարդութեան ժամանակ ունեցած կորովն ու համեմատ կազմուածքը։ Հասակին բարձրութիւնն ալ խելքէ մտքէ ու սովորական կարգէ դուրս բան մը կրնար սեպուիլ. վասն զի ութը ոտք բարձրութիւն ունէր, և իրեն ժամանակակից բարձրահասակ մարդիկներուն քովն ալ՝ մեծ հսկայ մը կ'երևնար։ Պատանեկութեան ատենը իրեն հայրենի Հայոց աշխարհէն ելլելով՝ Անտիոք գնաց, որովհետև առջի բերան Աթէնք երթալու յօժարութիւն մը չէր զգար. հոն յետին կարօտութեան մէջ ինկաւ, որովհետև դիմացը վայելչութեան հետ՝ աղքատութեան պարգևն ալ երկընքէն ունեցեր էր։ Ուստի Ուլպիանոսի դիմեց, որ այն ժամանակներն Անտիոքի մէջ ճարտարխօսութեան լսարան սահմանած էր. և անոր աշակերտացը մէջ քիչ ատենէն ամենէն աւելի յառաջադէմներէն մէկն եղաւ Պարոյր։

Շատ ժամանակ իր քովը կենալէն ետքը՝ Աթէնք երթալով՝ հոն ալ մեծ պատիւ և անուն ստացաւ։ Աթէնքի մէջ Հեփեստիոն անունով ընկեր մը ունեցաւ Պարոյր, և մէկմէկու հետ մտերիմ սիրով մը կապուեցան. և ինչպէս աղքատութեամբ՝ սանկ ալ ճարտարխօսական արուեստի մէջ մէկմէկու հետ մրցանաց ելածի պէս՝ մէկ զմէկ գերազանցել կը ջանային։ Մէկ պատմուճանէ ու մէկ վերարկուէ զատ բան մը չունէին. իրեք կամ չորս ալ կապերտի կտորուանք, որոնք հնութենէ մաշեր ու գունաթափ եղեր էին։ Զարմանալի միաբանասիրութիւն մը ունէին այս երկու անձինքն իրարու հետ. անանկ որ կար-

ծես թէ մէկ հոգի էր երկու մարմնոց մէջ. երբոր Պարոյր տնէն դուրս կ'ելլէր, Հեփեստիոն ներսը քաշուած կը մնար, ճարտարխօսութեան հրահանգն առաջ տանելու. Նոյնպէս ալ Պարոյր՝ երբ Հեփեստիոն լսարանը կ'երթար. վասն զի այն աստիճանի յետին աղքատութեան մէջ ինկած էին խեղճերը, որ հագիւ մէկ դրսի զգեստ մը ճարած էին և փոփոխակի կը հագնէին։ Աթէնքի մէջ իրենց ճարտասանութեան վարպետը՝ Կապպադովկացին Յուլիանոս՝ մեծ համարում ունէր Պարոյրի սրամտութեան ու հմտութեանը վրայ. և երբոր ինքն Աթէնքէն հեռացաւ, շատերն ետևէ եղան իրեն ճարտարախօսութեան աթոռը ժառանգելու. բայց հմուտք՝ այն շատերուն մէջէն Պարոյրը, Հեփեստիոնը, Եպիփանը ու Դիոփանտէսը առաջարկեցին. և որովհետև թիւը լրացած չէր, հարկ եղաւ որ Սոպոլիտէս ու Պառնասիոս անունով մարդիկն ալ առաջարկուին, թէպէտ և առջիններուն համբաւը չունէին։ վասն զի Հռովմայեցիք Աթէնքի մէջ օրէնք մը հաստատեր էին՝ որ ինչպէս ունկնդիրք՝ ասանկ ալ ճարտարախօսք բազմաթիւ ըլլան։

Երբոր ընտրուեցան՝ իրենց մէջէն նուաստագոյնքը՝ վարժապետի միայն անունն ունէին, և իրենց կարողութիւնը դպրոցին պատերուն և ատեանին մէջ էր միայն։ Իսկ աւելի համբաւ և իմաստութիւն ունեցողներուն համար՝ քաղաքը զանազան հերձուած բաժնուեցաւ. և չէ թէ միայն քաղաքը՝ հապա նաև բոլոր Հռովմայեցւոց հպատակ ազգերը։ Արևելքի մեծ մասը զԵպիփանիոս կ'ընտրէր. Արաբիա՝ զԴիոփանտէս, Հեփեստիոն՝ Պրոյերեսեայ համար Աթէնքէն ալ ելաւ, ու նաև կեանքէն ալ. իսկ Պրոյերեսի՝ բոլոր Պոնտացիք և մերձակայ գաւառներն աշակերտներ կը ղրկէին՝ իբրև ծանօթի և իրենց մէջ համբաւ ունեցող հռչակաւոր մարդու։ Անկէց զատ բոլոր Բիւթանիա և Հելլեսպոնտոս, և Ասիոյ այն մասը որ Կարիայէն ինչուան Լիկիա և Պամփիւլիա և Տորոս լեռները կը տարածուի, ու Եգիպտոսէն ու Լիբիայէն՝

իրեն հանճարոյն վրայ զարմացողքը գունդագունդ կը վազէին. որով Պրոյերեսիոսի փառքը անանկ հայրենիք մը ունեցաւ՝ որուն սահմաններն դեռ ևս անծանօթ երկիրներ են։

Բայց փառաց զուգորդ է նախանձն. Պրոյերեսեայ ընկերակից ճարտարխօսութեան վարպետները չկրցան դիմանալ և հնարք չմնաց որ չբանեցընեն. ինչուան քաղքին իշխանն ալ կաշառելով իրենց կողմը ձգեցին, և ըզ Պրոյերեսիոս Աթէնքէն աքսորել տուին։ Հայկազն ճարտարախօսին հեռանալովը՝ սկսան իրենք պատիւ ու մեծարանք գտնել. այն աստիճանի հասած էր առջինին փառքն ու համբաւը։

Խեղճ Պարոյրը աքսորանաց դառնութեան հետ՝ դառնագոյն ցաւ մըն ալ ունեցաւ աղքատութիւնը. բայց քիչ ատենէն նորէն Աթէնք դարձաւ։ Ուրիշները ոսկւոյ զօրութեամբը կրնային դառնալ, իրեն համար լոկ ճարտարխօսութիւնը բաւական եղաւ. ինչպէս Հոմերոսի հնգներգութեանց մէջ ճարտարխօսութեան աստուածը Հերմէս՝ առանց թշնամեաց բազմութենէն վախնալու՝ Պրիամոսի հետ ինչուան Աքիլլեայ վրանը կ'երթայ։ Պարոյր երբոր Աթէնք դարձաւ, բաղդը իրեն ձեռնտու գտաւ. որովհետև քաղաքին իշխանը փոխուեր էր, որուն արդէն մեծ վիշտ ալ էին այնպիսի ճարտարախօսի մը քաշած նեղութիւնները. և թէպէտ իրեն թշնամիքը դարձեալ ետևէ եղան զինքը նորէն աքսորելու, բայց ճար չեղաւ. Պարոյր՝ Աթէնք դառնալուն՝ ինչպէս Նոր Ոդիսևս մը իր ծանրատաղտուկ գերութենէն ետքը, բարեկամներէն ու ընկերակիցներէն քիչ հոգի գտաւ ողջ և առողջ. որոնց մէջ էր նաև Տուսկիանոս, զոր Սուիդաս ամենազօր ճարտարախօս կ'անուանէ, և որուն համար Պարոյրի վարքն մեզի աւանդողն Եւնաբիոս՝ կ'ըսէր, թէ ինքը միայն արժանաւոր էր Պրոյերեսիոս ըլլալու՝ թէ որ ինքն Պրոյերեսիոս ողջ չըլլար։

Իշխանը երբոր Աթէնք դարձաւ, իմաստուններն խոր-

հըրդի կանչեց և զանազան առաջարկութիւններ դրաւ առջևնին որ լուծեն։ Բայց որովհետև իրենց տուած պատասխաններովը չիկրցան զիշխանը գոհ ընել, այն պատճառաւ Պարոյրի բարեկամներն ալ սրտաթափ եղան։ Բայց բդեաշխը նորէն կանչեց զիրենք, ըսելով թէ առջի երախտեաց մրցանակը պիտի ընդունին. ամէնքը վազօղ վազողի եղան։ Պարոյրն ալ առանց իրենց գիտնալուն կանչուած էր։

Բդեշխը դարձաւ՝ մէկ նոր առաջարկութիւն մըն ալ, ըսաւ, պիտի ընեմ ձեզի. դուք մէջերնէդ մէկն ընտրեցէք որ կարենայ լաւ ճառել. անկէ ետքն ալ Պրոյերեսիոս ճառէ։ Իմաստակքն զարհուրելով Պրոյերեսի անունէն, մենք առանց պատրաստութեան բան չենք խօսիր, ըսին։ Այն ատեն բդեշխն ակնարկեց Պրոյերեսեայ, որ գովելով անոր առաջարկութիւնը, այսինքն յանպատրաստից բան խօսելը, ատենին մէջ կեցաւ. և անվախ գըրգռեց իրեն թշնամեաց գլխաւորները՝ որ իրենք իրենց ուզած առակը իրեն առաջարկեն. անոնք ալ չարութեամբ անանկ դժուար նիւթ մը ընտրեցին՝ որ ոչ միայն անյարմար էր պերճախօսութեան, այլ գրեթէ և անկարելի էր յանպատրաստից խօսելու։ Սակայն Պրոյերեսիոս չը հրաժարեցաւ. միանգամայն թէ խնդրեց որ նշանագիրք գրի առնուն իր խօսելիքը՝ որ յետոյ վէճ չըլլայ ըսածին չըսածին վրայ. դարձեալ խնդրեց ալ որ բոլոր ատեանն լուռ կենայ և ծափահարութիւն չընէ՝ ինչուան որ ինքն խօսքը չիլմնցընէ։ Ատենախօսութիւնն այն աստիճան զարմանալի, պերճաբան և իմաստալից եղաւ, որ ունկնդիրք կը նեղուէին ծափահարութիւն չընելնուն և լռութեան համար, նշանագիրք ալ հազիւ կը հասնէին խօսքին ետևէն. որ մինչդեռ լմնցած կարծուէր, Պրոյերեսիոս երկրորդ մաս մ'ալ սկսաւ ըսել՝ առջինէն աւելի զօրաւոր և գեղեցիկ. և երբ լմընցուց, Կարելի է ըսաւ, սխալ բան մը ըսած եմ կամ սխալ գրած ըլլան. նայեցէք թէ շիտա՞կ է. և նորէն սկսաւ բոլոր ճառը առջի բառէն ին-

չուան վերջինը անփոփոխ կարգաւ ըսել։ Այս բանս ալ այնքան զարմացուց լսողները, որ երբ լռեց՝ ամէնքն վազեցին իրեն խնդակցելու, ոչ ճարտասան մը՝ հապա Նոր Հերմէս մը՝ աստուած մը անուանելով։ Բդեաշխն զինուորական հանդիսիւ հանեց զՊրոյերեսիոս յատենէն և իր արժանաւոր աթոռը տուաւ։ Բայց իմաստակաց նախանձն դարձեալ հնարք գտաւ՝ զաշակերտները խաբելով անվայել հնարքներով՝ վարպետնին աթոռէն ձգել։ Պրոյերեսիոս անտրտունջ կը կենար յԱթէնս իբրև առսկական մը, երբ Անատոլիոս Պերիթացի՝ որ իմաստութեամբ անուանի եղած եպարքոսութեան պատուոյ հասեր էր՝ եկաւ յԱթէնս, և իր նախորդին նման իմաստակները կանչելով իրենց ճառի նիւթեր տուաւ. բայց զամէնքն ալ արհամարհելով՝ աթոռէն ելաւ, միայն Պրոյերեսիոսը մեծարեց և իր սեղանը նստուց։

Այս միջոցներս, կամ քիչ մը յառաջ, Կոստանդ կայսր 'ի Գաղղիա հրաւիրեց զՊրոյերեսիոս, որ և գնաց և զարմացուց զԿոստանդ և բոլոր արքունիքը, ոչ միայն իր հանճարովն, այլ և իր վարքովն և կենաց տնտեսութեամբն՝ վասն զի հսկահաստակ և գեղապատշաճ անձն էր մեր հռետորն և ամէն կերպերովն սիրելի. ապրուստն ալ ամենապարզ և զարմանալի. մինչև Գաղղիոյ ցուրտ ձմեռներուն մէջ ալ՝ միայն մէկ պարեգօտ կը հագնէր, գրեթէ բոպիկ կը պտըտէր, ոչ միայն ջուրը պաղ կը խմէր, այլ տաք կերակուր ալ չէր ուտեր։ Կոստանդ շատ պատուով խաւրեց զինքն 'ի Հռոմ. հոն ալ քաղքին մեծերն պատուելով զնա խնդրեցին որ գովեստ մը խօսի իրենց չնաշխարհիկ քաղքին վրայ։ Պրոյերեսիոս հոս այլ այն աստիճան գերազանց ճարտարախօս երևցաւ, որ թերևս ինքնին Կիկերոն՝ եթէ ողջ ըլլար՝ ինքն իր վրայ միայն չպարծէր. Հռովմայեցիք արժանաւոր վարձք ընծայեցին իրենց գովասանին՝ պղնձէ ամբողջ անդրի մը կանգնելով Պրոյերեսեայ, և վրան գրելով, Թագուհին Հռոմ թագաւորի

Բանին [1] ։ Զգիտեմ թէ ուրիշի ալ տրուած է այսպիսի պատիւ ։ Հռոմայեցիք խնդրեցին 'ի Պրոյերեսեայ որ գոնէ իրեն տեղը աշկերտներէն մէկը խաւրէ իրենց, ան ալ խաւրեց զԵւսեբիոս Աղեքսանդրացին ։

Պրոյերեսիոս դարձաւ նորէն յԱթէնք՝ Զինապետի պատուանուամբ՝ զոր իրեն տուեր էր Կոստանդ կայսր, և յորդորեր ալ էր որ ուրիշ բան մ'ալ խնդրէ իրմէ ․ իսկ նա իբրև փոխարէն երախտեաց և փառաց զոր իմաստութեան մայր սեպուած Աթէնքի մէջ գտեր էր, խընդրեց որ քաղաքը մտած ցորենին մաքսը վերցուի ․ և այս բանս կատարել տուաւ վերոյիշեալ Անատոլիոսի ձեռօք ․ որուն հրաւիրանաւն ալ ներբող մը խօսեցաւ 'ի պատիւ Կոստանդ կայսեր՝ այս ցորենին ազատութեան ըրած շնորհաց համար ։ Ասկէ ետև դարձեալ Աթէնքի ճարտասանութեան աթոռը նստաւ Պրոյերեսիոս, և հոն էր Յուլիանոսի ինքնակալ ընտրուելու ատենն ալ ․ աս իմաստան կայսրս որ թէ զէնքով և թէ գիտութեամբ ու հռետորութեամբ մէկէ մը վար մնալ չէր ուզեր, իրեն նախատութիւն սեպեց զՊրոյերեսիոս պատուելը ․ և առ նա գրած նամակի մը մէջ կ'անուանէ զնա «Յորդառատ և անարգել գետ պերճախօսութեան, և հզօր զրուցուածովն՝ ամենևին Պերիկլեայ նման» [2] ։ Յուլիանոս մեծ ակնկալութիւն մ'ալ ունէր 'ի Պրոյերեսեայ, որուն իր բանած կարգէն դուրս շնորհք և բացառութիւն մ'ալ ըրաւ ․ կը փափագէր և կը յուսար որ Պրոյերեսիոս գրէ իր զինուորական գործոց պատմութիւնը, որոց նա ականատես ալ էր մասամբ՝ 'ի Գաղղիա, և այս բանս թերևս իրեն յաւիտենական պարծանք պիտի սեպէր, որոյ չէր արժա-

1. Regina rerum Roma, Regi Eloquentiæ. Η βασίλισσα ʽΡώμη, τοῦ βασιλέως Λόγων.

2. Hominem ita in dicendo copiosum et abundantem, ut flumina cum in patente campo influunt; hominem æmulantem eloquentia Periclem.

նի․ վասն զի ինքն Քրիստոսէ հաւատոց յայտնի ուրացող և հալածող մ'էր, իսկ Պրոյերեսիոս պատուաւոր և պատուելի քրիստոնեայ մը․ Յուլիանոս թշնամաբար բոլոր քրիստոնեայ վարժապետները հեռացուց իրենց աթոռներէն, միայն զՊրոյերեսիոս թողուց իր սուտ յատուկը, բայց այն մեծ անձն որ ինքն իրեն և ամէն ճանչցողաց պատիւ էր, կամաւ և ազատաբար հրաժարեցաւ իր աթոռէն, այն սիրելի ճարտասանութեան աթոռէն՝ որով այնչափ բարձրացեր և զոր այնչափ բարձրացուցեր էր, բայց անոնցմէ գերագոյն դասեց ճշմարիտ հաւատոց փառքը։

Արդէն այս ատեն 90 տարու մօտ ծերունի մ'էր Պրոյերեսիոս, և գեղեցիկ երկայն արծաթափայլ ալեօք զարդարեալ․ բայց դեռ կայտառ երեսօք և երիտասարդական ուժով․ այս ատենս էր որ Եւնաբիոս՝ իր վարուց գրողն՝ 17 տարուան պատանի մը, աշակերտեցաւ անոր տանը մէջ հինգ տարի քովը կենալով, և տեղեկանալով անոր դիպուածներուն՝ աւանդեց մեզի։ Իր բաժնուելէն քիչ վերջ մեռաւ Պրոյերեսիոս իբրև 95 ամեայ, լի տարւօք և փառօք։ «Տեսի զնա, կ'ըսէ Եւնաբի, ալեօր սպիտակահեր արծաթափայլ, անցեալ զութսուննեւօթն ամօք, որպէս ինքն ասէր, բայց էր ժիր յոյժ՝ զորպիսի ալևոր չէր իմ տեսեալ երբէք, և համարեցայ զնա անմահ ոք»։

Վերոյիշեալ քանի մը ճառերէն զատ կը յիշուին թէ շատ ուրիշ հռետորական ճառեր ալ գրեր էր, աւելի իբրև դամբանական կամ ներբողեան․ որոց և ոչ մէկն ալ մեզի հասած է, ժամանակին կամ նախանձու անգթութեամբ․ թէպէտ և իր փառաց և արժէից համար բաւական սեպուին իր վրայ պատմուածքն և ըսուածքն, և աշակերտքն․ որոց մէջ գտնուեցաւ և Կեսարիոյ աթոռոյն պարծանքն՝ մեծն Ս․ Բարսեղ, և իր սիրելին ու համանման յունական մատենագրութեան և ընդհանուր եկեղեցւոյ պարծանք՝ սուրբն Գրիգոր աստուածաբան, որ իր խորունկ ու զարմանալի իմաստութիւնը՝ կերպով մը

Պրոյերեսեայ ջանիցն ու հանճարոյն պարտական կը ճանչնայ, 'ի մօտոյ զինքը ճանչցած 'ի մանկութեան, հասուն հասակին մէջ յետագայ տողերը իրեն կը նուիրէր.

« Մի՛ եւս յայսըմ հետէ բարձր 'ի գլուխ պարծի Կեկրոպիա.
Ոչ է օրէն 'նդ արեգական զաղօտալոյսըն կըշռել ջահ.
Ոչ մահացուի 'նդ Պրոյերեսեայ գալ 'ի պայքար հռետորական.
Որ զհամօրէն նուաճեաց զերկիր 'ի ճարտասան բանիցն հանդէս.
Ի շանթեացն՝ յեղակարծուց սասանեցաւ Ատտիկաստան,
Եւ ընդհանուր կոկովարան իմաստակաց կոկող կաճառք՝
Տեղի ետուն Պրոյերեսեայ. տալ եւ տեղի եւ ինքըն բաղդ.
Անշըքեցան փառքն Աթենայ պայծառք՝ 'ի դառն 'ի յօրհասէն.
Փախերուք այսուհետեւ 'ի Կեկրոպեայ մանկունք համբակք »:

Դիոփանտոս՝ ժամանակին ճարտարախօսաց մէջ հռչակաւոր, մասնաւոր ճառիւ դրուատեց զյիշատակ նորա յետ մահուանն. և որոյ արձանականէն՝ հետեւեալ տողերը հասած են առ մեզ. « Ո՜վ Մարաթոն, ո՜վ Սալամին. լռութիւն ահա մածեալ ունի զմեծապայծառ անուանս ձեր. կորուսէք զպայծառացուցիչ դրօշ յաղթանակաց ձերոց »:

Պրոյերեսեայ ժամանակակցաց մէջ և քիչ մը իրմէն վերջ ալ՝ դարուն ամենէն անուանի իմաստակ և հռետորն նեպուի Լիբանիոս, որ հեթանոս էր և մնաց, անոր համար պատուեցաւ 'ի Յուլիանոսէ. այս հռետորս ալ իր նամակաց մէջ մեծ գովութեամբ կը յիշէ զՊրոյե-

րեսիոս, և կը վկայէ թէ նա պերճախօսութեամբ աշխարհքըս գրաւեր է, համբաւով արձաններու արժանի եղած էր, վարքովն ալ ազնիւ անձ։

Այս սքանչելի և անծանօթ անձին վարքը բովանդակելու համար՝ ըսենք որ կենդանի յիշատակներ ալ թողուց. տարիքն առնելէն և անգամ մը Աթէնքէն հեռանալէն ետև՝ Փոքր Ասիոյ Տրալլի քաղաքը գտնուած ատենը՝ Ամփիկլէա անուամբ կին մ'առաւ և երկու դուստր ունեցաւ. զորոնք ատենին հարսնացուց ալ, և բաժնուելուն վրայ շատ ցաւ քաշեր է կ'ըսեն։ Հեթանոսութիւնն՝ իր անհաշտ ատելութեամբն զոր ունէր ընդդէմ քրիստոնէութեան, վայրկեան մը տեղի տուաւ մոլեռանդութեան և Մելեսիոս քերթող և քուրմ՝ ուզեց և ջանաց իր տողերովն ու տաղիւք մխիթարել զինքը այն դառն կորստեանն համար։

*Պրոյերեսեայ ջանիցն ու հանճարոյն պարտական կը ճանչնայ, 'ի մօտոյ զինքը ճանչցած 'ի մանկութեան, հասուն հասակին մէջ յետագայ տողերը իրեն կը նուիրէր.*

*« Մի՛ եւս յայսըմ հետէ բարձր 'ի գլուխ պարծի Նեկրոպիս.*
*Ոչ է օրէն 'նդ. արեգական զաղօտալոյսըն կըշռել ջահ.*
*Ոչ մահացուի 'նդ. Պրոյերեսեայ գալ 'ի պայքար հռետորական.*
*Որ զհամօրէն նուաճեաց զերկիր 'ի ճարտասան բանիցն հանդէս ։*
*Ի չանթեացն՝ յեղակարծուց սասանեցաւ Ատտիկաստան,*
*Եւ ընդհանուր կոկովարան իմաստակաց կոկող կաճառք՝*
*Տեղի ետուն Պրոյերեսեայ. տալ ետ տեղի եւ ինքըն բաղդ.*
*Անչըքեցան փառքն Աթենայ պայծառք՝ 'ի դառն 'ի յորհասէն.*
*Փախերուք այսուհետեւ 'ի Նեկրոպեայ մանկունք համբակք » ։*

*Դիոփանտոս՝ ժամանակին ճարտարախօսաց մէջ հռչակաւոր, մասնաւոր ճառիւ դրուատեց զյիշատակ նորա յետ մահուանն. և որոյ արձանականէն՝ հետեւեալ տողերը հասած են առ մեզ. « Ո՜վ Մարաթոն, ո՜վ Սալամին. լռութիւն ահա մածեալ ունի զմեծապայծառ անուանս ձեր. կորուսէք զպայծառացուցիչ դրօշ յաղթանակաց ձերոց » ։*

*Պրոյերեսեայ ժամանակակցաց մէջ և քիչ մը իրմէն վերջ ալ՝ դարուն ամենէն անուանի իմաստակ և հռետորն սեպուի Լիբանիոս, որ հեթանոս էր և մնաց, անոր համար պատուեցաւ 'ի Յուլիանոսէ. այս հռետորս ալ իր նամակաց մէջ մեծ գովութեամբ կը յիշէ զՊրոյե-*

ռեսիոս, և կը վկայէ թէ նա պերճախօսութեամբ աշխարհ-քըս գրաւեր է, համբաւով արձաններու արժանի եղած էր, վարքովն ալ ազնիւ անձ:

Այս սքանչելի և անծանօթ անձին վարքը բովանդա-կելու համար՝ ըսենք որ կենդանի յիշատակներ ալ թո-ղուց. տարիքն առնելէն և անգամ մը Աթէնքէն հեռա-նալէն ետև՝ Փոքր Ասիոյ Տրալլի քաղաքը գտնուած ա-տենը՝ Ամփիկլէա անուամբ կին մ'առաւ և երկու դուստր ունեցաւ. զորոնք ատենին հարսնացուց ալ, և բաժնուե-լուն վրայ շատ ցաւ քաշեր է կ'ըսեն: Հեթանոսութիւնն՝ իր անհաշտ ատելութեամբն զոր ունէր ընդդէմ քրիս-տոնէութեան, վայրկեան մը տեղի տուաւ մոլեռանդու-թեան և Մելեսիոս քերթող և քուրմ՝ ուզեց և ջանաց իր տողերովն ու տաղիւք մխիթարել զինքը այն դառն կորստեանն համար:

# ԴԱՐ Ե

---

*Մեր մատենագրութեան ոսկեդարը։ — Որո՛ւն կը վերաբերի այս արդիւնքը։ — Դարուս ազդեցութիւնը և ուսումնական արգասիք։*

*Հայկական դպրութեանց ամենէն աւելի նշանաւոր ժամանակն է հինգերորդ դարը։ Թագաւորական իշխանութիւնը և եկեղեցական նուիրապետութիւնը իրենց ամէն ազդեցութիւնն ու փոյթը կը բանեցընեն՝ ուսմանց և գիտութեանց մուտք, տևողութիւն և պահպանութիւն տալու Հայաստանի մէջ։ Իրենց ջանիցն արժանաւոր պտուղները կը տեսնուին։*

*Ուրիշ ազգերու մտաւորական զարգացմանց պատմութեանը մէջ՝ շատ անգամ զուսումն և զկրթութիւն՝ գաղթականութեանց արգասիք կը տեսնենք։ Ասանկ Եգիպտոս, Փիւնիկէ, Յունաստան, Հռովմ և Իտալիա՝ իրարու պարտըկան են. շահավաճառք, պատերազմունք և յաղթութիւնք՝ ուսմանց և գիտութեանց տեղափոխութեան պատճառ կ'ըլլան։ Հայաստան չունեցաւ այս բաղդը, անոր համար հարկ սեպեց — ինչպէս յառաջ ալ առիթ ունեցանք յիշատակել — իւր քաջուշիմ երիտասարդութիւնը հո՛ն ղրկել ուր դեռ ևս կը ծաղկէին դպրութիւնք. և անոնց ջանքովը նոր կերպարանափոխութիւն մը տալ իւր մտաւորական յառաջագիմութեանը։*

Ո՛րչափ զարմանալի է Թարգմանչաց ժամանակը, որ իրաւամբ մեր ուսումնականութեան ոսկեդարը կը սեպուի ։ Ազգաց պատմութեանը մէջ նման դէպք մը փնտռելու՝ ընդունայն պիտի աշխատինք. ինչպէս նաև անոնց ջանքովը եղած ուսումնական արդեանցը հաւասարը նկատել, քիչ ատենուան մէջ՝ այնչափ ինքնագիր երկասիրութիւն և բազմապատիկ թարգմանութիւն, այնպիսի կիրթ ախորժակաւ և ընտիր լեզուաւ։

Իրենց ազդեցութիւնն ալ մեծ եղած է ժամանակակցաց վրայ։ Հայաստան գրեթէ ուսմանց անճաշակ, մէկէն կ'իմանար անոնց քաղցրութեան ճաշակը. դպրոցներ կը յաճախէին, աշակերտք կը բազմանային, գիտութիւնք կը ծաւալէին, և ինչպէս ժամանակակիցն Կորիւն կը վկայէ, « Յայնմ ժամանակի երանելի և ցանկալի աշխարհն Հայոց անպայման սքանչելի լինէր ». և կամ ինչպէս ուրիշ պատմիչ մը կը գրուցէ, « Սկիզբն դպրութեանս Հայոց լինէր սկիզբն մեծի գիտութեան »։

Ափսո՛ս որ սկզբանը արժանաւոր շարունակութիւնը պակսեցաւ. Հայաստանի թագաւորական ու հայրապետական աթոռներն մէկէն 'ի մէկ ինկան կամ իրենց նախկին պայծառութիւնը կորսնցուցին. արտաքին պատերազմունք և ընտանի երկպառակութիւնք՝ կարկտախառն փոթորիկով մը Հայաստանի գեղեցիկ ու ծաղկազարդ գարունը կ'անապատացնէին։

# Ս. ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒ

---

*Սուրբն Սահակ Պարթեւ։ — Համառօտութիւն իւր սուրբ և բազմարկածեան վարուց։ — Ազդեցութիւնն ազգիս քաղաքական պատմութեան և մտաւոր բարգաւաճանաց վրայ։ — Գրուածները։*

Մեծին Ներսիսի որդին էր սուրբն Սահակ Պարթեւ, ուր իւր հօրը մահուանն ատեն՝ Կոստանդնուպոլսի մէջ ուսմանց կը պարապէր։ Հոն սրբասէր ու մաքուր հոգին՝ աշխարհի կեանք ընտրելը հարկ սեպեց, որպէս զի Լուսաւորչայ Նուիրական ցեղը Հայաստանէն չվերցուի։ Բայց Աստուած՝ որ իւր բարեացն ու շնորհաց չճանչցող Հայաստանը խրատելու աղէտք սահմանած էր, ուզեց որ նոյն ցեղին վերջին շառաւիղն ըլլայ սուրբն Սահակ. ուստի միայն դուստր մը պարգևեց իրեն Սահականոյշ անունով։

Այս բանիս համար՝ կարգէ դուրս տխրութեան մը մէջ ինկած էր սուրբն Սահակ, և անոր դարմանը յԱստուծոյ կը խնդրէր, Վաղարշապատու եկեղեցւոյն մէջ իւր սրտին ցաւերն ու վիշտերը՝ մխիթարիչ Աստուծոյ մը առջևը ձգելով արտասուօք, հոն տեսլեամբ մը յայտնեց Աստուած քիչ ատենէն Հայոց աշխարհին վրայ հասնելու չարիքն, ու անոնց հետևանք թագաւորական ու հայրապետական իշխանութեանց միանգամայն դադրիլը։

Գերագոյն կամաց հպատակելով Սահակ, ինքզինքը բոլորովին Աստուծոյ ու ազգին բարւոյն ընծայեց. մէկ կողմանէ աղօթից ու ճգնութեանց պարապելով, և մէկալ

*կողմանէ ալ իրեն արժանի աշակերտներ բազմացընելով, և անոնց թէ՛ հոգևոր և թէ մտաւոր յառաջադիմութեան համար ջանալով ու յոգնելով։*

*Անով ազգին մէջ ընդհանուր և սիրելի համբաւ մը ստանալով, Ասպուրակէս կաթուղիկոսին մահուընէն ետքը՝ բոլոր ժողովուրդն իր Խոսրով թագաւորին հետ մէկտեղ՝ անոր յանձնեց հայրապետական աթոռը։ Բայց որովհետև այս ընտրութեան մէջ՝ նախ Պարսից թագաւորին կամքը չէր հարցուած, ուստի Շապուհ՝ Խոսրով թագաւորին վրայ բարկանալով, թէ՛ զինքը և թէ զսուրբն Սահակ զրկեց իրենց իշխանութենէն. Թէպէտ քիչ ատենէն նորէն հաստատեց զինքը իւր պատուոյն մէջ ու Խոսրովու տեղն ալ թագաւորեցուց անոր Վռամշապուհ եղբայրը։*

*Այն միջոցին սուրբն Մեսրոպ եկաւ առ Սահակ, և այս երեք նշանաւոր անձանց ջանքովն ու աշխատութեամբ՝ հայերէն մատենագրութեան ոսկեդարին հիմունքը ձգուեցան։ Վասն զի անոնց փութովն եղաւ հայերէն գրոց գիւտը, անոնք բացին այլ և այլ վարժարաններ՝ Հայաստանի մանկութիւնն ու երիտասարդութիւնը կրթելու, և այս երկուքին ձեռքովն եղաւ աստուածաշունչ գրոց թարգմանութիւնն։*

*Երբոր իրենք այս գործերուն զբաղած էին, Վռամշապուհ թագաւորն մեռաւ. ուստի և նախարարք՝ զսուրբն Սահակ ղրկեցին առ թագաւորն Պարսից Յազկերտ Ա, խնդրելով որ զԽոսրով Գ՝ զոր Շապուհ արքայն իշխանութենէ զրկելով՝ բանտի մը մէջ փակեր էր, նորէն թագաւորեցընէ Հայոց վրայ. Յազկերտ ալ՝ սրբոյն խնդիրքը կատարեց։ Այսպէս քանի մը տարի վերջ ալ՝ երբոր նոյն Յազկերտ թագաւորը՝ Պարսկաստանի մէջ բնակող քրիստոնէից դէմ սաստիկ հալածանք մը հանեց, սուրբն Սահակ իւր իմաստուն խօսքերովն՝ անոր սիրտը քաղցրացուց քրիստոնէից վրայ։*

*Տարի մը ետքը երբոր Յազկերտ մեռաւ, և այն պատ-*

ճառաւ այլ և այլ խռովութիւններ ելան Պարսից աշխարհին մէջ, Սահակ հետն առնելով իր թոռները՝ Մեհրուժանայ հետ մէկտեղ Հայաստանի այն մասը գնաց որ Յունաց իշխանութեան տակն էր. բայց որովհետև այն գաւառներն Կեսարիոյ եպիսկոպոսին վիճակն էին, ասոր տեղւոյն վերակացուքն չընդունեցան զսուրբն Սահակ. որ այս բանին վրայ վշտանալով՝ զսուրբն Մեսրովպ իր Վարդան թոռանը հետ ղրկեց առ Թէոդոս փոքր. և խնդրեց իրմէ որ կարենայ իր հայրապետական իշխանութիւնը բանեցընել Հայաստանի այն բաժնին վրայ ալ՝ որ Յունաց իշխանութեան տակն էր։ Կայսրը շնորհեց իրեն խնդիրը. և զսուրբն Վարդան՝ ստրատելատութեան պատուով մեծարեց։

Բայց Նախարարք զինքը նորէն Պարսից բաժնին մէջ հրաւիրեցին, որպէս զի Վռամայ ձեռքովը թագաւորեցընէ զԱրտաշիր՝ զորդին Վռամշապհոյ։ Սուրբն Սահակ յանձն առաւ իրենց առաջարկութիւնը, և սկսաւ աւելի փութով մը ետևէ ըլլալ Հայաստանի բարեկարգութեանը։ Սակայն երբ Արտաշիր իր անառակ վարքովը՝ Նախարարաց սիրտը իրմէն պաղեցուց, անոնք ուզեցին զինքը Վռամայ ձեռքով Հայոց թագաւորութենէն զրկել, և խնդրել իրմէ որ անկէ ետքը պարսիկ մարզպան մը ղրկէ Հայաստանի վրայ. և այս իրենց խորհրդեանը կամակից կ՚ուզէին զսուրբն Սահակ։ Աստուածարեալ հայրապետին ոչ արցունքէն կակղացան, և ոչ զօրաւոր խօսքերովը համոզուեցան այն վնասակար խորհրդէն ետ կենալու. մանաւանդ թէ տեսնելով որ կը հակառակի իրենց կամացը, Նախարարներ ղրկեցին առ Վռամ, և միանգամայն ամբաստանեցին թէ զԱրտաշիր և թէ զՍահակ։ Թագաւորը երկուքն ալ դուռը կանչեց, և զրկեց՝ մէկը իր արքունի և մէկալը հայրապետական իշխանութենէն։ Բայց երբ ետքը նորէն իր հայրենիքը կը ղրկէր զՍահակ, և միայն ձեռնադրութեան իշխանութիւնը տալով կը յորդորէր զինքը որ միամտաբար Պարսից ծառայութեան

մէջ Միայ, և Ցունաց հաւատակցութեամբը չխաբուի, հրաշալի ատենախօսութիւն մը ըրաւ հոն սուրբն Սահակ. ցուցընելով, կ'ըսէ Խորենացին, «զերախտիս ծառայութեան և զապերախտն 'ի նոցանէ լինել. ընդ նմին և զկեղծաւոր քաղցրաբանութիւն նոցա յանդիմանելով և զդառնութիւն խորհրդոց, և զգործս չարաչարս. յարելով 'ի նոսին զընդդիմաբանել անմիտ հայհոյութեանց արտաճառելոց, զոր ասաց մոլար հաւատակցութիւն. և զնոցայն խայտառակելով պաշտամունս, կատարեաց 'ի հրաշալի աստուածաբանութիւն, ըստ հանդուրժելոյ հեթանոսական լսելեաց». անանկ որ մոգերուն բերանը խօսք չմնաց. Թագաւորն բոլոր անձնագեղ Պարսից հրապարակին բազմութեամբ զարմանքով մտիկ ընելէն ետքը, հրաման տուաւ որ շատ ստակ տան իրեն՝ «իբրև քաջաբանի և ուժգնասրտի առն համարձակախօսողի առաջի այնքանոյ Թագաւորին»: Բայց սուրբն Սահակ ոչ իրեն և ոչ իրեններուն զարմանքը բանի տեղ դրաւ, և ոչ ալ տուած ընծաներուն մօտեցաւ:

Ժամանակ անցնելէն ետքը՝ նախարարք անոր աթոռը անարժանապէս գրաւողներուն ձեռքէն ձանձրանալով, խնդրեցին իրմէ որ նորէն նոյն նուիրական գահուն վրայ նստի. բայց սուրբն Սահակ յանձն չառաւ. «Քահանայանալ 'ի վերայ տիրանենգ ժողովրդոց ոչ կարեմ» ըսաւ. ու Դուին քաղքին քովերը քաշուեցաւ. յետոյ Բագրևանդայ մէջ կնքեց իւր բազմարդիւն կեանքը, գրեթէ իննսնամեայ հասակի մէջ:

Սահակայ վրայ թէ ժամանակակից և թէ յետագայ պատմիչք՝ ամենքը զարմանքով կը խօսին, հաւասար գովելով անոր սրբութիւնն և իմաստութիւնը: Մենք բազմապատիկ վկայութեանց մէջէն՝ միայն Խորենացւոյն խօսքերը մէջ բերենք. «Մաշկանացու ծնեալ՝ անմահ զիւրն յիշատակ եթող. պատուեաց զպատկերն, պատկառեաց 'ի կոչնականէն, փոխանորդեաց զկեանսն»:



Սահակայ գրաւոր երկասիրութեանցը մէջ նշանաւոր եղած են այլ և այլ թագմանութիւններ, և մասնաւորաբար Աստուածաշունչ գրոց թարգմանութիւնն, որուն վրայ զատ պիտի խօսինք։

Ինքնագիր գրուածոցը մէջ ամենէն աւելի նշանաւոր կրնանք սեպել, գէթ ինչուան հիմա մեր ձեռքը հասածներուն մէջ, կանոնական թուղթ մը՝ վեց գլուխ բաժնուած, զոր 'ի Վաղարշապատ գումարած ժողովքէն վերջը ղրկեց, գեղեցիկ և ընտիր շարագրութեամբ։ Մեր եկեղեցական պատմութեան և մատենագրութեան արժանապէս պարծանք այս գրոց խորագիրքն են.

Ա. Յաղագս եպիսկոպոսաց թէ որպէս պարտ է ունել զընտանիս սուրբ եկեղեցւոյ։

Բ. Թէ որպէս պարտ է զկանոնական զկարգն հաստատուն պահել յեկեղեցիս Աստուծոյ։

Գ. Կարգ քահանայից առ ժողովրդեանս, և նոցին ժողովրդականաց հնազանդութիւն, և կարգ ուղղութեան առ քահանայս։

Դ. Թէ որպէս սահմանեցաւ կարգ ուխտի և որոշման վանաց։

Ե. Թէ որպէս պարտ է եպիսկոպոսին պահել զգանձս եկեղեցւոյ, կամ որոց որպէս մատակարարել։

Զ. Գիր աւանդութեան յաղագս կարգի սպասաւորաց սրբոյ եկեղեցւոյ և պտղոց ժողովրդականաց ընծայելոց 'ի տուն Աստուծոյ։

Զորրորդ գլխոյն վերջը՝ հետեւեալ յիշատակարանը գրուած կը տեսնենք. « Այս սահմանադրութիւն կարգաց գրեցաւ հրամանաւ սրբոյն Սահակայ մեծ հայրապետին Հայաստան աշխարհի, ընկալեալ 'ի քաջ նահատակէն 'ի տեառնէն Գրիգորէ՝ թարգմանեցաւ միայն 'ի Յունէ 'ի

Հայս » ։ Խորենացի մէջ կը բերէ 'ի Սահակայ գրուած թղթեր առ կայսրն Թէոդոս, առ Ատտիկոս եպիսկոպոս, առ Անատոլիոս, և իրենցմէ ընդունած պատասխաններն ։ Ասոնցմէ զատ հասած են առ մեզ երկու դաւանական թուղթեր առ Պրոկղ հայրապետ Կոստանդնուպոլսի, և առ Ակակ եպիսկոպոս Մելիտինոյ ։

Փարպեցւոյն գրոցը մէջ՝ Վաղարշապատու եկեղեցւոյն մէջ յայտնուած տեսլեան նկարագիրն ալ կայ՝ իրմէն պատմուած առ նախարարս. զոր յետին դարուց մատենագիրք ալ կը յիշատակեն, և մանաւորաբար Մագիստրոս. նոյնպէս կը յիշէ զայն Վասիլ կայսեր թոռն Կոստանդին Պորփիւրոժեն, ու կը յարմարցընէ զայն Վասլի թագաւորութեանը ։ Լամբրոնացին որովհետև նոյն տեսլեան վկայութիւնը չիգտներ Խորենացւոյն գրոցը մէջ, ուստի և անոր հարազատութեան վրայ տարակուսիլ կը ցուցընէ. « Տեսիլն այն, կ'ըսէ, ոչ հաստատի առ մեզ զօլ սրբոյն Սահակայ, այլ 'ի կարծիս միայ, վասն ոչ առնելոյ նմա 'ի գիրս իւր յիշատակ Մովսիսի Խորենացւոյ » ։

Ազգային եկեղեցական գրոց կարգաւորութեանը մէջ ալ շատ աշխատանք ունի սուրբն Սահակ. բայց օրհնութիւնաբեր կոչուած ցուցակին մէջ՝ մանաւորաբար իրեն կ'ընծայուին հետևալներն. « Իսկ զՔահանայօրհնէան՝ սրբոյն Սահակայ գծեալ՝ յետ քաննեմի ամի արքեպիսկոպոսութեան իւրոյ՝ 'ի Նաւասարդ ամսոյ որ օր մի էր, և 'ի Քահանայաթաղն այլ՝ յաւել եօթն աւետարան. Նոյնպէս և զԱշխարհաթաղն, 'ի Քաղաքուդաշտի 'ի վկայարանս սրբոց Հռիփսիմեանց, յետ հարիւր և քսան և մի ամին սրբոյն Գրիգորի, զի մինչև ցայն վայր հնումն վարէին ։ Արար սուրբն Սահակ և զշորս քարոզսն զգիշերոյ և զնոցին աղօթսն » ։ Յովհան Իմաստասէրն ալ կը յիշէ թէ ինքը սուրբն Սահակ յօրինած ըլլայ գիշերային ժամակարգութեան չորս աղօթքները. բայց իւր մէջ բերած աղօթքները կը զանազանուին հիմակուաններէն ։ Յայսմաւուրաց մէջ ալ կը կարդանք. « Կարգեաց կանոնս

համաշխարհականս՝ եպիսկոպոսաց և աշխարհի երիցանց և վանաց՝ զի մի՛ ամբոխեսցին ընդ միմեանս, վասն մըտիցն որ 'ի ժողովրդենէն։ Նոյնպէս և վանաց որ առընթեր գիւղից և քաղաքաց էին, և անապատականաց. զի ամենայն ոք գիտասցէ զիւր մասն։ Արար և զչորս աղօթսն՝ որ ասի 'ի գիշերի, իւրեանց քարոզիւքն և հանգըստիւքն »։

Աւագ շաբաթուն մէջ երգուած շարականներն՝ Պարթեւ հայրապետիս կ'ընծայուին, որոնք իրենց պարզ ու մաքուր լեզուովը, բանաստեղծական հանճարով և ամփոփած գեղեցիկ իմաստներով՝ նոյն պքանչելի գրքին գեղեցիկ պերճանց մէկ կտորներն կրնան սեպուիլ արժանապէս։

Ս. Սահակայ կանոնական թղթին և գրած նամակներուն տպագրութիւնն եղած է 'ի Վենետիկ (Սոփերք հայկականք Հատ. Բ) 'ի 1852. առաջինն հրատարակուած է նաև յԱրարատ ամսագրի Էջմիածնի և առանձինն։

# Ս. ՄԵՍՐՈՊ

———

Ս. Մեսրովպայ վարքը։ — Արքունեաց մէջ պաշտօնութիւնը։ — Առանձնութիւնն և հրաժեշտ յաշխարհէ։ — Աշակերտութիւնն ընդ սրբոյն Սահակայ։ — Հայկական գրոց գիւտը։ — Իր մեծ արդիւնքը նկատմամբ հայկական մատենագրութեան։ — Գրաւոր երկասիրութեանց յիշատակք։

Հայկական դպրութեանց ծաղկելուն նախկին առիթ ու բարգաւաճեցընող սեպուած անձը՝ երանելին Մեսրոպ կամ Մաշտոց՝ Տարոն գաւառին Հացեկաց գեղէն էր, Վարդան անունով մէկու մը որդի։ Մանկութեան հասա-

կէն հելլենական դպրութեամբ վարժած՝ Հայոց Արշակունի Թագաւորաց Վաղարշապատ քաղաքը եկաւ, ու արքունական դիւանին պաշտօնէից մէկն եղաւ։ Տեղեակ և հմուտ աշխարհական կարգերու, զինուորական արուեստին ալ իր ձեռքին տակն եղած զինուորներուն սիրելի անձ մըն էր։

Բայց քիչ ատենէն յաշխարհական մեծութեանց հրաժարելով՝ Թողուց արքունիքը, ու լերանց և անապատներու միայնութեան մէջ Աստուծոյ հաճոյ ըլլալու կը ջանար։ Իր սրբակաց վարուցը հետևողներ ալ ունեցաւ Մեսրոպ. ու անոնց հետ մէկտեղ գնաց Գողթն գաւառը, տեսաւ այն երկրին բնակչաց վայրենութիւնը, և թափանցող մտքովը իմացաւ թէ աւերիչ տգիտութիւնը իւր երկաթի ու ծանր ձեռքը տարածելով բոլոր Հայաստանի վրայ՝ այն նախանձելի աշխարհը անմարդի վայրենեաց բնակարան մը պիտի դարձընէր։ Ասիկայ իր սրտին մեծ ցաւ եղաւ. և դարմանը գտնելու համար գնաց առ սուրբն Սահակ. և երկուքը միաբան առ Վռամշապուհ Թագաւոր, ու հայերէն գրոց գիւտին համար կ'աշխատէին. որուն համար եղած ջանքը և յաջողութիւնը արդէն գրոցս պատրաստութեան մէջ պատմած ենք։

Երբ իմացան Թագաւորն և սուրբն Սահակ՝ Մեսրոպայ եղած աստուածային յայտնութիւնը, ու անոր դառնալն 'ի Հայաստան և Թագաւորական քաղաքին մտենալը, բոլոր նախարարներն իրենց հետ առած՝ Ռահ գետին քովերը հանդիպեցան երանելւոյն, և կարգէ դուրս ուրախութիւն և աստուածային խնամոց շնորհակալութիւն մատուցին։

Այն ատեն Թագաւորէն հրաման առաւ Մեսրոպ՝ Մարաց խուժադուժ կողմանքն ալ հրահանգելու. ու թէ անոնց և թէ բոլոր Հայաստանի օգտին համար ձեռք զարկաւ թարգմանելու՝ Աստուածաշունչ գիրքը. և նախ քանի մը օգնական հետն առնելով, (որոց առաջնոյն անունը Տիրայր Խորձենացի, և երկրորդին Մուշէ Տարօ-

նացի, և ուրիշներ) անոնցմով Գողթն գաւառը իջաւ, ու Շաբիթ անունով իշխանի մը ձեռնտուութեամբը սկսաւ քարոզել և ուսուցանել։

Անկէ՝ Գողթն գաւառին սահմանակից Սիւնեաց աշխարհքը գնաց. ու տեղւոյն Վաղինակ իշխանէն օգնականութիւն գտնելով, դայեկարար՝ կ՚ըսէ պատմիչը, գազանամիտ, վայրենագոյն, և ճիւաղաբարոյ մարդիկը կը խրատէր. ու Անանիա անունով մէկը տեղւոյն եպիսկոպոս կարգելով, բոլոր աշխարհքը վանականներով կը լեցընէր։

Քիչ ժամանակ անցնելէն ետքը՝ աստուածային տեսլեամբ նաև Վրաց աշխարհին նշանագիր ստեղծեց։ Ետքը իր ընտիր աշակերտներէն ոմանք իր հետ առնելով ներկայացաւ Վրաց Բակուր թագաւորին և Մովսէս եպիսկոպոսին, ու թէ՛ անոնց ու թէ բոլոր աշխարհին գլխաւորներուն ընդունելի եղաւ։ Ջաղա. անունով մէկը գտնելով՝ Վրաց լեզուին թարգման, գրագէտ ու ճշմարտահաւատ անձ մը, թագաւորին հրամանով աշակերտաց բազմութիւն ժողովեց, ու յանձնեց անոնց կրթութեան խնամքը։

Իրեն աշակերտած գաւառացը կրկին այցելութիւն ընելէն ետքը՝ սուրբն Մեսրոպ սկսաւ մտածել Հայաստանի այն մասին վրայ՝ որ Յունաց թագաւորին իշխանութեան տակն էր. ու շատ աշակերտներ հետն առած հոն անցաւ. և որովհետև արդէն իր բարի համբաւն տարածուած էր, ուստի և մեծ սիրով կ՚ընդունէին զինքը աշխարհին եպիսկոպոսունքն և իշխաններն ու գաւառականները. և մանաւանդ Անատոլիոս սպարապետն՝ որ Յունաց երկիրը մտնելուն պէս սիրով ընդունեցաւ զՄեսրոպ և առ Թէոդոս կայսր մասնաւոր նամակ մը գրեց սրբոյն համար. որով և թագաւորն ալ հրամայեց որ Ակումիտ պատուանունը տան սրբոյն։

Մեսրոպ իւր աշակերտները Մելիտինէ քաղաքը տանելով տեղւոյն Ակակիոս եպիսկոպոսին յանձնեց զա-

նոնք. ետքը անոնցմէ գլխաւորներէն մէկը՝ զՂևոնդ հոն Թողլով, ինքն առաւ հետը Դերջանայ եպիսկոպոսը՝ ըզԳինթ, և ուրիշ քանի մը հոգի և անոնցմով գնաց 'ի Բիւզանդիոն. ուր թէ կայսերէն և թէ Ատտիկոս հայրապետէն մեծարանք, պատիւ և ընդունելութիւն գտաւ։

Հոն քիչ մը ատեն կենալէն ետքը՝ իմացուց կայսեր իր իշխանութեան տակ եղող Հայերուն խեղճ ու ցաւալի վիճակը, ու հրաման առաւ իրմէ՝ որ կարենայ դպրոցներ բանալ՝ ու պէտք եղած տեղերը նաև եկեղեցիներ հաստատել։ Մեծ պատուով և փառօք դարձաւ Մեսրովպ իրեններովն իր նպատակին տեղը, և հոն Հայոց սպարապետին պատահելով, կայսեր տուած հրամանագիրը ցըցուց. նա ալ՝ մէկէն մարդիկ ղրկեց, բոլոր այն գաւառները, շատ տղայոց բազմութիւն ժողվել տուաւ, և անոնց ռոճիկ սահմանեց. սուրբն Մեսրոպ ալ իրեններովը մէկտեղ զանոնք սորվեցընելու ետևէ կ'ըլլար։

Անկէ ետքը, կ'ըսէ պատմիչը, «երանելւոյն զիւր վարդապետութեանն պայման արարեալ, սակեալ և վճարեալ, և բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ, ծովացուցանէր զվարդապետութեանն զխորութիւն, և լցեալ զեղոյր ամենայն բարութեամբ»։

Այն օրերը Բենիամին անունով Աղուան մը եկաւ առ սուրբն Մեսրոպ, ուսկից տեղեկանալով Աղուանից լեզուին հանգամանքը, անոնց ալ նշանագիր ստեղծեց ու խաւրեց հոն իւր աշակերտնենէն զԴանան և զԵնովք։ Իսկ ինքը շատ աշակերտներով նորէն Վաղարշապատ քաղաքը դարձաւ առ Ս. Սահակ և առ Թագաւորն, պատմելով անոնց աստուածային շնորհաց յաջողութիւններն։

Վերջը Աղուանից կողմերը անցաւ, ու տեսաւ գաւառին եպիսկոպոսը զԵրեմիա, ու անոնց Արսվաղէն Թագաւորը. ու իմացընելով անոնց իւր գալստեան պատճառը, յորդորեց իրենց յանձն առած դպրութեանը խընամք տանիլ։ Անոնք ալ հրաման տուին բոլոր գաւառներէն և իրենց իշխանութեան տեղերէն դաս դաս տղայոց գումարել, և դարմանել արքունի ծախքով։

Երբ այս հրամանը թէ՛ արդեամբք և թէ գործով կը կատարուէր, Երեմիա եպիսկոպոսն աստուածաշունչ գրոց թարգմանութեան եռանդ կ'ըլլար․ որով նոյն աշխարհին շատ մեծ օգուտ առաջ կու գար։ Հոն ալ Մեսրոպ իր Յովնաթան աշակերտը ձգելով, Վրաց աշխարհէն անցաւ․ ու Տաշրաց Աշուշայ իշխանին ձեռնտուութեամբը թէ դպրութիւնը և թէ հաւատոյ ճշմարտութիւնը նորէն հաստատեց։

Անկէ Հայաստան դարձաւ Մեսրոպ, ու Սահակայ հետ մէկտեղ սկսան թարգմանութեան եռանդ ըլլալ․ «Սկըսեալ, կ'ըսէ Կորիւն, երանելւոյն Մաշթոցի (Մեսրոպայ) ճառս յաճախագոյնս դիւրապատումս շնորհագիրս բազմադիմիս, 'ի լուսաւորութենէ և 'ի հիւթոյ գրոց մարգարէականաց կարգել և յօրինել, լի ամենայն ճաշակօք աւետարանական հաւատոցն ճշմարտութեան․ յորս բազում նմանութիւնս և օրինակս 'ի յանցաւորաց առեալ, առաւելագոյն վասն յարութենական յուսոյն առ 'ի հանդերձեալսն՝ յերիւրեալ կազմեալ, զի հեշտընկալք և դիւրահաւատոյցք տխմարագունիցն և մարմնական իրօք զբաղելոցն լինիցին․ առ 'ի սթափել և զարթուցանել, և հաստահիմն առ 'ի խոստացեալ աւետիսն քաջալերել»։

Այսպիսի արդիւնաւոր կեանք մը կնքեց Մեսրոպ, սըրբոյն Սահակայ մահուընէն գրեթէ վեց ամիս ետքը․ ու Օշական գիւղին մէջ ամփոփուեցաւ․ «Գերազանցեալ, կ'ըսէ Խորենացին, քան զամենայն որ զայնու ժամանակաւ էին առաքինիք։ Քանզի ամբարտաւանութիւն և մարդահաճութիւն 'ի նորա վարս տեղի գտանել երբեք ոչ կարացին․ այլ հեզ և յաւակամ և բարեխորհուրդ գոլով, և երկնայնոցն զարդարեալ սովորութեամբք զինքն բոլորից ցուցանէր։ Վասն զի գոյր տեսլեամբ հրեշտակական, մտօք ծննդական, բանիւք պայծառ, գործովք ժուժկալ, մարմնով արտափայլեալ, սարասիւք անճառ, խորհրդակցութեամբ մեծ, հաւատով ուղիղ, յուսով համբերող, սիրով անկեղծաւոր, ուսուցանելով անձանձրոյթ»։

Մեսրովպայ ուրիշ անանուն կենսագիր մ՚ալ այսպէս կը գրուատէ զինքը. «Էր վարդապետն Մեսրովպ ամենևին հեզ բարուք և երկայն խորհրդովք, տեսլեամբն հրեշտակակերպ և ծննդական մտօք 'ի բանս. բանիւ պայծառ և խորհրդոմն մաքուր. գործոմն ժուժկալ և հաւատոմն ուղղափառ. յուսով համբերող և սիրոմն անկեղծ. ուսուցանող անձանձրոյթ, և 'ի պատասխանատրութիւնս ստուգաբան. որ և երկրորդ Լուսաւորիչ գտաւ Հայոց յետ սրբոյն Գրիգորի։ Եւ 'ի սուրբ հայրն մեր և վարդապետն Մեսրովպ, բնաւ ամբարտաւանութիւն և մարդահաճութիւն ոչ գտաւ երբեք»։

Մեսրովպայ մեծարեալ և նուիրական դամբանին վրայ՝ Վահան Ամատունի 441ին սուրբ եկեղեցի մը կառուցանել տուած էր 'ի յիշատակ և 'ի փառս իր մեծ և բարերար անուանը և արդեանց։ Փիլիպպոս կաթողիկոս 1635ին նորոգել տուաւ զայն։ Ժամանակին աւերիչ ձեռք և բռնութիւնք՝ այն սիրալիր սրբավայրին ալ չխընայելով՝ լքեալ և խոպան դիրքի մը մէջ գտաւ զայն կաթողիկոսն Գէորգ Ե. և Ռուսիոյ Հայոց յօժարափոյթ նուիրօք՝ հոյակապ եկեղեցի մը կառոյց 'ի 1879։ Իսկ 'ի 1882՝ Էջմիածնի միաբաններէն Անդրէաս եպիսկոպոս Կոստանդնուպոլսեցի՝ սուրբ գերեզմանին վրայ մասնաւոր տապանաքար մ՚ալ դնել տուաւ հանդերձ արձանագրութեամբ։

***

Մեսրովպ իր այնչափ աշխատանացը մէջ՝ անդադար էր և 'ի թարգմանութիւնս. ինքը առաջին եղաւ՝ որ իւր աշակերտացը գլխաւորներուն հետ մէկտեղ՝ հայերէն գրոց գիւտը յԱստուծոյ ընդունածին պէս, սուրբ գրոց թարգմանութեան ետևէ եղաւ. դարձեալ ինքն եղաւ ազգային եկեղեցական ծիսարանը կարգի դնող, այլ և այլ աղօթքներու թարգմանութեամբ կամ ինքնագիր յօրինմամբ,

որ և իւր մականուամբը Մաշտոց կոչուած է։ Գեղեցիկ, և իւր տեսակին մէջ անհամեմատ երկասիրութիւն մը, որուն մէջ հաւասար կը փայլին յօրինողին աստուածապաշտ եռանդը, բնատուր հանճարը և մաքուր լեզուն։ Ասոնցմէ զատ՝ աւանդութիւնն իրեն կ'ընծայէ նաև մեծ պահոց շարականներն և քանի մը համառօտ աղօթքներ։ Այսպէս նաև ի վերջ սրբոյ լուսաւորչին ընծայուած Պատարագամատուցի՝ ընտիր ու ջերմեռանդն աղօթք մը յանուն «Մեսրոպայ վարդապետի»։ — Իւր աշակերտն և վարուց պատմիչ՝ Կորիւն կ'աւանդէ թէ բաց 'ի Թարգմանութեանց, կենաց վերջի տարիներուն և աստուածանուէր առանձնութենէն «բազում թուղթս խրատագիրս և զգացուցիչս ընդ ամենայն գաւառս առաքէր»։

## ԹԱՐԳՄԱՆԻՉՔ

---

**Թարգմանիչք և իրենց դասակարգութիւնն։ — Ուսումնական ուղեւորութիւնն յԵդեսիա, 'ի Կեսարիա, յԱղեքսանդրիա, յԱթէնս, 'ի Հռոմ և 'ի Բիւզանդիոն։ — Դարձն 'ի հայրենիս։ — Հայաստանի քաղաքական վիճակն։ — Գտած ընդունելութիւննին և չարակրութիւնք։ — Թարգմանչաց թիւը։ — Առաջին Թարգմանիչք։ — Երկրորդ կամ կրտսերագոյն Թարգմանիչք։**

Հայերէն դպրութեանց պատմութիւնը կ'աւանդէ, թէ սուրբն Սահակ և Մեսրոպ՝ մեր լեզուին գրոց գիւտը անմիջապէս կատարելէն ետքը՝ ետևէ եղան աշկերտներ ժողվելու և զանոնք կրթելու. լեզուն սովրեցընելու, և ազ-

գին պիտոյիցը յարմար ծառայութեան վիճակի մը մէջ դնելու։ Ասոնք են որ ընդհանուր անուամբ Թարգմանիչք կը կոչուին։

Այն քսան տարուան միջոցին մէջ՝ որ ընդ գիւտ գրոյն և Արշակունեաց թագաւորութեան իյնալը և Հայաստանի Պարսից բռնութեանն ոտնակոխ ըլլալը, անտարակոյս բազմաթիւ աշակերտներ հասուցած պիտի ըլլան՝ Հայաստանի ամէն կողմերը հաստատուած վարժարաններն։ Բայց անոնց շատին՝ և ոչ իսկ անունը հասած է մեզի, ինչպէս այն դարուն արդիւնք և մեր գրաւորական պատմութեանց պարծանք՝ բազմապատիկ երկասիրութեանցն մնացածներուն ալ՝ որն որուն ըլլալը անծանօթ է։

Մենք այնչափ երկար միջոցի մէջ վարժուած աշակերտաց թիւը՝ յերկուս դասակարգութիւնս կը բաժնենք, զոմանս առաջին Թարգմանիչք կոչելով, և զայլս երկրորդ կամ կրտսեր Թարգմանիչք։ Առաջին սեպուած են անոնք որ սրբոյն Մեսրովպայ հայերէն գիրը հնարած կամ կատարելագործած ժամանակ՝ բաւական հասակ ունէին, և կրնային իրենց վարդապետացը օգնական և գործակից ըլլալ՝ ի Թարգմանութիւնս. իսկ կրտսերագոյն Թարգմանիչք անոնք են՝ որոնց համար կ՚աւանդուի թէ առաջին Թարգմանչաց աշակերտներ էին, և անոնց քով իրենց ուսումը կատալէն ետքը՝ ղրկուեցան իրենց վարդապետներէն յայլ և այլ քաղաքս, աւելի հմտանալու այն արուեստին։ Այս կարծեաց ստուգութեան երաշխաւորութիւն կրնանք սեպել այլ և այլ ժամանակակից պատմագրաց խօսքերն։

Ասոնց վրայ՝ գրուածքիս տանելուն չափ՝ համառօտ տեղեկութիւն մը տանք։



Վռամշապուհ Թագաւոր ըստ խնդրոյ Ս. Սահակայ և Մեսրովպայ մասնաւոր արքունական հրամանով մը պատուիրեց որ բոլոր Հայոց աշխարհքին մէջ ուշիմ և իրենց ապագայ յառաջադիմութեան վրայ յոյս տուող մանկունք ընտրուին ու ղրկուին առ Թագաւորն: Հրովարտակը՝ իւր ազդեցութիւնն ունեցաւ. ու Մեսրոպայ և Սահակայ պատրաստած վարժարանաց մէջ ցրուեցան մանկունքն՝ յունական, ասորի և պարսիկ լեզուաց գիտութեան զբաղելու, (որովհետև այն լեզուներն էին ժամանակին մեր մէջը գործածական բարբառները). ու նոյն միջոցին իրենց վարդապետացը հետ աշխատիլ՝ հայերէն գրոց գիւտին համար: Երբ Ս. Մեսրովպ իւր փափաքած խնդրոյն հասաւ, Թագաւորն սուրբ հայրապետին հետ մէկտեղ հրաման տուաւ որ այն գրերուն աշակերտող քաջավարժ մանկունքն առաջ անցնին, և անոնցմէ ընտրեցան վաթսուն հոգի, որոնց համար ժամանակին ամէն պատմիչքը՝ տրամախոհք, քաջուշեղք, փափկավանգք, երկարոգիք, կատարեալ և ամենայարմար անունները կու տան:

Թագաւորը՝ իւր բոլոր արքունական գանձը, ոյժն ու ազդեցութիւնը՝ անոնց ու աշխարհին յառաջադիմութեանը կը գործածէր. անոնք ալ Թագաւորին ջանիցն ու փութոյն արժանաւոր կ'երևնային. Հայաստան հայրենեաց ուսումնական յառաջադիմութեանը համար ամէն ջանք, ամէն աշխատութիւն դիւրին կ'երևնար իրենց աչքին. «Գումարէին, հանդերձէին, յաղթանակէին, երկայնաձիգ ճանապարհ հորդէին, 'ի ծովս ընթանային, 'ի թևս թեթևս թռչէին, յերիվարս փայտակերտս ելանէին, 'ի սասանուտ դաշտս անհաստատս յածէին, զմահ քան ըզկեանս միշտ ընտրէին, աներևոյթ նպատակի ուշ ունէին»: Ան ատեններն էր որ յԵդեսիա, 'ի Կեսարիա, Աղեքսանդրիա, Աթէնք, Հռոմ, Բիւզանդիոն ճանապար-

հորդութիւններ կ'ընէին. ու ամէն տեղ արժանաւոր պատիւ և մեծարանք գտնելով, ժամանակին ուսումնականացը մէջ համբաւաւոր, ու անոնցմէ շատերէն գերազանց երևնալով՝ ինչուան ոմանց նախանձու ալ առիթ տուած են։ Իրենց հոն ունեցած ուսումնական աշխատութիւններն՝ այսպէս կը համառօտէ գրեթէ ժամանակակից անձ մը. «Ծրանային, տքնէին, աշխատէին, ուսանելով, կրթելով, վարժելով, վաստակելով, պատրաստելով զանձինս յերկս օգտակարս և 'ի գործս շահաւէտս. ոմանք զտառից գծագրութիւնս շահաւորեալ, ոմանք զիմաստս հաւաքեալ՝ զուսումնականսն, զքնարականսն, զհամարողականսն, զերաժշտականսն, զաստեղաբաշխականսն, զքերականսն և զքերթողական, զգործնականսն և զտեսական իմաստասիրութիւն։ Ոմանց հաւասարէին՝ գիտութեամբք, քան զոմանս վեհագոյնք երևէին, ոմանց զարմանալիք թուէին... ընդ ոմանս դասէին քննութեամբ, զոմանս պատասխանւոյ արժանի ոչ համարէին, հարցասէրք, բանասէրք, ընթերցասէրք»։

Ի Բիւզանդիոն՝ կայսրն Թէոդոս, ու Ատտիկոս և Սիսիննիոս հայրապետք՝ իրենց արժանաւոր առատամտութեամբ մեծարեցին այն օտարական հանճարները, որոնք քիչ մը ատեն Յունաստան կենալով, ոչ միայն յոյն եկեղեցւոյ բոլոր փառքը 'ի Հայս փոխադրելու աշխատութիւնն վրանին առած էին, այլ և յունական լեզուին կատարեալ գիտութեամբը՝ զամէնքը կը զարմացընէին։ Անյաղթն Դաւիթ իւր յունական իմաստասիրութեամբը՝ յաղթութեան պարծանքը կը յափշտակէր. Խոսրով՝ յոյն եկեղեցւոյ մէջ՝ սրբոյն Բարսղի օրհնութիւնները կը կարդար. Մամբրէ՝ Ոսկեբերանի ճառերը կ'արտասանէր. Ղազար և ուրիշներն ալ այնչափ խորամուխք էին յունականին գիտութեանը մէջ՝ որ Աթենացի կոչուելու պարծանքը կը ստանային։

Այն երկար ու դժուարին ճանապարհորդութիւնները լմնցընելու ատեննին՝ իրենց բարեբար Վռամշապհոյ

մահը լսեցին. իմացան թէ իրենց թողած Հայաստանը չէր որ կը սպասէր իրենց, և որուն անձկանօքը կը մաշէին. պարսկական բռնութիւնն սկսած էր զօրանալ. հաւատք իրենց նախկին մաքրութիւնն ու սրբութիւնը՝ աշխարհային շահուց և փառաց զոհելու վտանգի մէջ էր. անոր համար կը փութային ժամ մը առաջ դառնալ իրենց հայրենիքը. տեսնել հոգևոր ծնողքնին, և գէթ անոնց տեսութեամբը սրտերնուն ցաւը մեղմացընել. իրենց գիտութեամբն և յառաջադիմութեամբ՝ վրանին աշխատող արդիւնաւոր հանճարները մխիթարել:

Սակայն բոլորովին տխուր տեսարան մը կը սպասէր իրենց Հայաստանին մէջ: Կը դառնային իրենց հայրենիքը. և ահաւասիկ տխուր մահն հողոյ աւանդած էր իրենց սիրելի վարդապետքը՝ զսուրբն Սահակ և զՄեսրովպ: Այն ցաւին վրայ՝ ուրիշ դժնդակ տագնապ մըն ալ կը հասնէր երանելի Թարգմանչաց վրայ, ընտանի երկպառակութիւն մը Հայաստանին մէջ, ու անոր հետևանք կրօնական պատերազմն ընդ Պարսս:

Այնպիսի սպառնացող ահաւոր չարեաց առջևն առնելու համար՝ Հայաստան աղխտից և թշուառութեանց թատր կը դառնար. և մօգութիւնն այն ատեն միայն ամօթապարտ կ'ըլլար՝ երբ Հայաստանի որդիքը թէ՛ 'ի զինուորական և թէ յեկեղեցական դասուէ՝ իրենց արեամբը փրկութեան զոհ կ'ըլլային հայրենեաց համար:

*
* *

Այս քաղաքական մեծ յուզմանէն զատ, որով կործանման վերահաս վտանգի մէջ էին հայրենիք, ուրիշ դժբաղդութիւն մ'ալ կը սպասէր Թարգմանչաց. — իրենց ազգակցաց ագիտութեան և նախանձու հետևանք կրելիք դառն հալածանք մը: Իրենցմէ շատին գրուածներէն, և մանաւանդ Փարպեցւոյն առ Մամիկոնէից իշխանն Վահան ուղղած նամակին խօսքերէն՝ այնպիսի բացայայտ

*ակնարկութեանց կը հանդիպինք ժամանակին աբեղայից վրայ, որ դժբաղդաբար շատ հեռի են անոնց ուսումնասիրութեան և առաքինի քաղաքավարութեան վրայ լաւ տպաւորութիւն մը ազդելէն։ Որչափ թարգմանչաց վրայ ամենընտիր սիրտ և եռանդուն գործունէութեան ջանք մը կը նկատենք ազգին մտաւոր և բարոյական զարգացմանն ու յառաջադիմութեան օժանդակելու՝ այնչափ ալ իրենց անուանն ու համբաւոյն նախանձորդ ու մախացող թշնամեաց վրայ, — զի հարկ է այս անունով կոչել զիրենք, — հակառակամարտ ու յարատև փոյթ մը զիրենք և ուսումնին անպատիւ ընելու, այս վախճանին և նպատակին հասնելու համար նաև անարժան միջոցներու և զինուց կիրառութեամբ։*

*Սահակայ և Մեսրովպայ, իրենց խնամոտ և հայրագութ դաստիարակաց կենդանութեանն առեն՝ դժուարին էր որ հակառակողք կարենային իրենց դիտմանն հասնիլ. այլ այն մեծ և հռչականուն վարդապետաց մահը՝ իրենց աշակերտացն երկարատև հալածանաց և նեղութեանց սկզբնաւորութիւն պիտի ըլլար. որով թէ՛ իրենք և թէ հայրենիք պիտի վնասէին։ Ուստի և իրաւամբ կը փնտռէր զանոնք Խորենացի՝ հառաչանաց արտասուօք Պատմութեան գրոցը վերջը սրտառուչ խօսքեր նուիրելով անոնց անմոռանալի յիշատակին, և որ դարէ դար աւանդուելով մինչև առ մեզ հասան. «Ողբա՜մ զքեզ, կ'ըսէր, Հայոց աշխարհ. ողբա՜մ զքեզ, հանուրց հիւսիսականաց վեհագոյն. զի բարձաւ թագաւոր և քահանայ, խորհրդական և ուսուցող. վրդովեցաւ խաղաղութիւն, արմատացաւ անկարգութիւն, դղրդեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն։ Ողորմի՜մ քեզ, եկեղեցի Հայաստանեայց, խրթնացեալ 'ի բարեզարդութենէ բեմբին, 'ի քաջէն զրկեալ հովուէ և հովուակցէ»։ Ու խօսքը յառաջ տանելով. «Եւ մինչ նոքա զմերն յուսային դարձ, և պատուասիրել իմով ամենիմաստ արուեստիւս և կատա-*

ընլագոյն յարմարութեամբս, համայն և մեք փութապէս դիմեալք 'ի Բիւզանդիոյ, յուսայաք հարսանեաց պարել՝ անվեհեր երանութեամբ կրթեալք, և առագաստի ասել երգս, արդ փոխանակ խրախճանութեանն՝ 'ի վերայ գերեզմանի ողբս ասելով ողորմելի հառաչեմ. ուր և ոչ տեսութեանն ժամանեցի աչաց նոցա կափուցմանց, և լսել զվերջին բարբառն և զօրհնութիւն։ Այսպիսի անձկաւ հեղձամղձուկ եղեալ՝ վտանգիմ կարօտութեամբ մերոյ հօրն։ Ո՞ւր է քաղցր աչացն հանդարտութիւն... ո՞ւր զուարթ շրթանցն ժպտումն առ բարի աշակերտացն հանդիպումն. ո՞ւր խնդամիտ սրտոն ընդունող արբանեկաց. ո՞ւր երկայն ճանապարհաց յոյս հեշտացուցիչ, աշխատութեանցն հանգուցող։ Կորեաւ ժողովողն, թաքեաւ նաւահանգիստն, ելիք օգնականն, լռեաց ձայնն յորդորեցուցիչ։ Ո՞վ այսուհետև զմեր յարգեսցէ զուսումն. ո՞վ ուրախասցի ընդ յառաջադիմութիւն աշակերտին, ո՞վ ըզհայրականն բարբառեսցի զուարճութիւն, մասամբ ինչ յաղթահարեալ յորդւոյս։ Ո՞վ կարկեսցէ զյանդգնութիւնն ընդդէմ առողջ վարդապետութեանն հակառակ յարուցելոցն. որք ամենայն բանիւք քակտեալք և քայքայեալք... զծիծաղիլն զմեւք և զարհամարհելն իբրու զանհաստատնովք, և որ ոչինչ պիտանացու ունիցի արուեստ։ Ո՞վ զնոսա ըմբերանեսցէ սաստելով, և զմեզ սփոփեսցէ գովելով, և չափ դնէ բանի և լռութեան... Ոչ գիտեմ եթէ զի՛րդ յարմարեցից զողբերգութիւնս, և կամ զո՞վ արտասուեցից... Զհա՞յրն իմ և զքահանայապետ... զծնո՞ղն իմ աղբիւր վարդապետութեան, զարդարութեանն առոգող, և հեղեղաւ զամբարշտութիւնն սահմանելով. եթէ զիս երաշտացեալ և թարշամեալ պապքութեամբ արբուցման խրատու»։

Ուրիշ մ'ալ՝ ժամանակաւ ոչ այնչափ կրտսերագոյն, հետևեալ խօսքերով կը նկարագրէ սրբոց Թարգմանչաց ողորմ վիճակը, յետ դարձի նոցա յուսումնական և 'ի բազմաշահ շրջագայութեանց. «Վաճառականք մեր հո-

գևորք, կ՚ըսէ, յորժամ դարձան ՚ի մեծայած ուղևորութենէն, ոչ գտին զառաքիչսն իւրեանց. զի վախճանեալ էին սուրբքն, և բարձեալ թագաւորութիւնն. քայքայեալ վայելչութիւնն և սպառեալ ուսումնասիրութիւն... Նսեմացեալ ճշմարտութիւն և զօրացեալ ստութիւն: Վասն որոյ ողբս առեալ հառաչէին, հաչէին, արտասուս յաչաց կաթեցուցանէին, ձեռն ՚ի ծնօտի հարեալ ողբային... ՚ի զուր ժրացաք, ասէին, ունայն վաստակեցաք, յանպէտ ջանացաք, ընդ վայր իմաստնացաք, յանչահս դեգերեցաք: Աւա՜ղ երկայնութեան ճանապարհին, մեծագոյն տքնութեանն, յոլով աշխատութեանն, ՚ի ծովու ալէկոծութեանն, ՚ի ցամաքի վաստակելոյն, մեծագին բեռանց կապելոյն: Վաճառականքս պատրաստք, և վաճառականք չեն ՚ի միջի. պսակքն մերձ, և պսակադիրքս յօժարք, և որք պսակինն չիք առաջի. բանքս ՚ի բերան և բանաբերքս իմաստունք, և խնդրողք բանի ոչ երևին: Վարդապետք հուպ և ուսումն ազնիւ, և աշակերտեալք ոչ հանդիպին»:

Այս հակառակութիւնն այնչափ բռնացաւ, որ թարգմանիչք ալ չկրցան հանդուրժել. ուստի և ոմանք ՚ի նոցանէ լաւագոյն համարեցան թողուլ քաղաք, եկեղեցի, վանորայ, տեղիք բնակութեան և ուսմանց, և անապատներու լռութեան՝ անձաւաց միայնութեան մէջ ողբալ թէ իրենց և թէ հայրենեաց վիճակը: Եղիշէ հետեւող կ՚ըլլար անոնց՝ որոց երկնակրօն քաղաքավարութիւնն կը ստորագրէ ոսկեղէն լեզուովը. «որ խոյս տան ՚ի խորս և ՚ի ստորոտս անապատ վայրաց, զի տեսանեն զաշխարհս լի ամենայն չարեօք»: Այսպէս Նաև ուրիշ շատերն:

Եղան և այլք՝ արիաբար նահատակողք, ինչուան վերջի շունչերնին մաքառելով. թէպէտ վերջապէս բռնադատուեցան տեղի տալ հալածչաց բազմութեանն և ուժգին կրից՝ ապարիզէն քաշուելով: Փարպեցին առ Վահան գրած թղթին մէջ համառօտ բայց ազդու խօսքով և լե-

տենուան համար իւր հանգստութիւնը գտնելու բաղձը կ'ունենար, որով և Թարգմանչաց ալ ժամանակ և պատեհ կու տար իրենց ուսումնական զբաղմանց ետևէ ըլլալու։

Թարգմանչաց գլխաւոր երկասիրութիւններն՝ Թարգմանութիւնք ըլլալով, անոնց վրայ զատ պիտի խօսինք։ Բայց որովհետև գտնուած են մէջերնին այնպիսիք ալ՝ որ ինքնագիր երկասիրութիւններ թողուցած են, կարգաւ մը անոնց վրայ խօսինք համառօտիւ, և նախ անոնց թուոյն վրայ։

Թարգմանչաց թուոյն վրայ՝ որոշ տեղեկութիւն չենք կրնար ունենալ. բայց որովհետև զանազան դպրոցներու մէջ և այլ և այլ ատեն կրթուեցան, մեզի կ'երևնայ թէ սուրբն Մեսրովպ և Սահակ՝ բոլոր Հայաստանի մէջ եղող դպրոցներու մէջ իրենց արժանի բազմաթիւ աշակերտներ ունեցած պիտի ըլլան. որոնց շատին և ոչ անունը ինչուան մեզի հասած է։ Գրոց մէջ յիշատակուողներն ասոնք են.

## Առաջին աշակերտք

ՅՈՎՍԷՓ 'ի Վայոց Ձորոյ, որ կաթուղիկոսական աթոռոյ արժանի եղաւ, և Արտաշատու ժողովոյն մէջ նախագահ բազմեցաւ, ինչպէս իր ընկերակիցն Կորիւն վկայէ. « Գլխաւոր վերակացուս տեղապահս յայտ արարին, կ'ըսէ, հարցն կատարելոց։ Որոց առաջին Յովսէփ՝ գլխաւոր ժողովոյն ».

Յովսեփայ հետ վերակացու և տեղապահ կարգեցաւ նաև

ՅՈՎՀԱՆ, որ սրբոց Ղևոնդեանց մահուընէն ետքը՝ Տիզբոն քաղաքին մէջ Քրիստոսի յուսոյն համար այլ և այլ չարչարանք քաշելով՝ խոստովանող կոչուեցաւ։ « Երկրորդն այլ աշակերտ, կ'ըսէ նոյն Կորիւն, Յովհան անուն, այր իսկ սուրբ, վարդապետասէր և ճշմարտապա-

զուռվ քանի մը դէպք մէջ բերէ, ինքզինքն ալ կրողաց և յանիրաւի հալածուողաց թուոյն մէջ խառնելով. «Երանելի փիլիսոփոսն Մովսէս, կ'ըսէ, որ արդարև մինչ դեռ էր 'ի մարմնի՝ ցանկ երկնային զօրացն էր քաղաքակից, ո՜չ ապաքէն տեղւոջէ 'ի տեղի աքեղեանդ հալածական արարին։ Ո՞չ զլուսաւորիչն և զտգիտահալած զգրեանն նորա՝ առ անգիտութեանն փարաղիկեա կոչէին, և այլ բազում ինչ իրօք թշնամանեալ՝ յետոյ ապա յաղագս այլոց ամօթոյ զխաբէական զեպիսկոպոսութիւնն նման դեղոց մահու արբուցեալ սրբոյն հեղձուցին... Զոսկերսն 'ի գերեզմանէն հանել տային և 'ի գետ արկանել»։ — «Եւ զհրեշտականման այրն զՏէր՝ նոյն ամէնանգիտա հալածանօք վախճանեցուցանելով, որք և այժմ դեռ ես անյագութեամբ գինով ընդ մեւեկյն կացին»։ Նոյնպէս վարուեցան, կ'ըսէ, և «ընդ անարատ և ամենեցունց յարգելի յոյս Տէր Խոսրովիկ, զայս և ընդ Տէր Աբրահամ և ընդ այլս բազումս, որոց ոչ բացեալ 'ի բարեբան զլեզուս իւրեանց... խստագոյն վշտիւ վախճանեցան»։ Ուրիշ յիշատակագիր մ'ալ հետևեալ խօսքերով՝ երանելի թարգմանչաց տխուր վիճակը կը նկարագրէ. «Յետ փոխման սրբոյն եկին աշակերտք նոցա յԱթենայ, ճոխացեալ և փարթամացեալ ուսմամբ. Մովսէս քերթողն, և Դաւիթ Անյաղթն, Մամբրէ Վերծանողն, և Եղիշէ Պատմագիր, Ղազար Փարպեցի և Եզնակ Կողբացի, Ստեփանոս Ասողնիկն և այլք ոմանք։ Եւ ոչ ժամանեալ ուրբ հարցն ի կենցաղս, ողբս առեալ լացին 'ի վերայ գերեզմանացն, և նստան լռութեամբ. անընդունակ լեալ 'ի խստապարանոց... ազգէս Հայոց»։

*
* *

Վահանայ մարզպանութեանն առեն պարսկական գրդռութեանց հանդիսարան եղող Հայաստանը՝ քիչ մը ա-

տենուան համար իւր հանգստութիւնը գտնելու բաղդը կ'ունենար, որով և Թարգմանչաց ալ ժամանակ և պատեհ կու տար իրենց ուսումնական զբաղմանց ետևէ ըլլալու։

Թարգմանչաց գլխաւոր երկասիրութիւններն՝ Թարգմանութիւնք ըլլալով, անոնց վրայ զատ պիտի խօսինք։ Բայց որովհետև գտնուած են մէջերնին այնպիսիք ալ՝ որ ինքնագիր երկասիրութիւններ թողուցած են, կարգաւ մը անոնց վրայ խօսինք համառօտիւ, և նախ անոնց Թուոյն վրայ։

Թարգմանչաց Թուոյն վրայ՝ որոշ տեղեկութիւն չենք կրնար ունենալ. բայց որովհետև զանազան դպրոցներու մէջ և այլ և այլ ատեն կրթուեցան, մեզի կ'երևնայ թէ սուրբն Մեսրովպ և Սահակ՝ բոլոր Հայաստանի մէջ եղող դպրոցներու մէջ իրենց արժանի բազմաթիւ աշակերտներ ունեցած պիտի ըլլան. որոնց շատին և ոչ անունը ինչուան մեզի հասած է։ Գրոց մէջ յիշատակուողներն ասոնք են.

## Առաջին աշակերտք

**ՅՈՎՍԷՓ** 'ի Վայոց Ձորոյ, որ կաթուղիկոսական աթոռոյ արժանի եղաւ, և Արտաշատու ժողովոյն մէջ նախագահ բազմեցաւ, ինչպէս իր ընկերակիցն Կորիւն վկայէ. «Գլխաւոր վերակացուս տեղապահս յայտ արարին, կ'ըսէ, հարցն կատարելոց։ Որոց առաջին Յովսէփ՝ գլխաւոր ժողովոյն».

Յովսեփայ հետ վերակացու և տեղապահ կարգեցաւ նաև

**ՅՈՎՀԱՆ**, որ սրբոց Ղևոնդեանց մահուընէն ետքը՝ Տիզբոն քաղաքին մէջ Քրիստոսի յուսոյն համար այլ և այլ չարչարանք քաշելով՝ խոստովանող կոչուեցաւ։ «Երկրորդն այլ աշակերտ, կ'ըսէ նոյն Կորիւն, Յովհան անուն, այր իսկ սուրբ, վարդապետասէր և ճշմարտապա-

տում. որում դէպ լինէր յետ վախճանի սրբոյն՝ բազում և ազգի ազգի փորձութեանց և կապանաւոր վըշտաց մենամարտիկ երկպատական բռնութեանն 'ի Տիզբոն քաղաքի՝ վասն Քրիստոսի յաղթութեամբ տարեալ համբերեաց »։

ՂԵՒՈՆԴ երէց 'ի Վանանդայ, որ իր երկնատուր ուժովը, 'աստուածասէր սրտով և հրեղէն լեզուով պարսկական մոգութիւնը Հայաստանէն վռընտեց, և աստուածազդեցիկ խօսքերովը Վարդանայ բանակը քաջալերեց, փառաւոր մահուամբ մը՝ թէ իրենց և թէ հայրենեաց անմահ փրկութիւնը ստանալու։ Այս մեծ ու փրկարար ծառայութենէն առաջ, այլ և այլ ուսումնասիրական սպասաւորութիւն ալ մատուցած է ազգին։ Ինքն էր գլխաւոր այն աշակերտաց՝ զորս Մեսրոպ մէկտեղ Մելիտինէ քաղաքը տարած էր, և Անատոլիս զօրավարին խնդրանօքը՝ քաղաքին Ակակ եպիսկոպոսին քով թողած էր։ Մեսրովպ Ճաղագոմք անապատին մէջ՝ առաջին դասու աշակերտաց ուսումը բովանդակել տալէն ետքը, նոյն տեղւոյն վերակացու կարգեց զՂեւոնդ. որ լսելով թէ իւր ընկերներէն ոմանք 'ի Բիւզանդիոն գտնուելով՝ հոն թարգմանութեանց և հելլէն լեզուին ուսմանը կը պարապին և վախնալով որ չըլլայ թէ ինքն անոնցմէ վար մնայ, Կորեան հետ մէկտեղ՝ առանց իրենց վարդապետաց կամքը հարցընելու՝ 'ի Բիւզանդիոն գնաց և ուրիշներուն պէս մեծ պատիւ գտաւ քաղաքին Մաքսիմինոս եպիսկոպոսէն։ Անկէց Նիկիական և Եփեսոսի տիեզերական ժողովոց կանոններով և Աստուածաշունչ գրոց ընտիր օրինակներով՝ դարձաւ իւր վարդապետացը քով. «Յետ ժամանակի. 'ի մէջ անցանելոյ, կ'ըսէ Կորիւն, դէպ լինէր ոմանց եղբարց 'ի Հայաստան աշխարհէս դիմել 'ի կողմանս Յունաց, որ և Ղեւոնդէս առաջնոյն անուն էր, և երկրորդին Կորիւնս, և մատուցեալ յարէին յԵզնիկն, բեր առ ընտանեգոյն սննդակից 'ի Կոստանդինական քաղաքին. և անդ միաբանութեամբ հոգևոր պիտոյից զխըն-

դիրն վճարէին։ Որոց յետ այնորիկ հաստատուն օրինակօք աստուածատուր գրոց և բազում շնորհագիւտ հարց յետ այնր աւանդութեամբք, և Նիկիական և Եփեսոսական կանոնօք գային երևելով յաշխարհին Հայոց. և առաջի դնէին հարցն՝ զբերեալ կտակարանս եկեղեցւոյ սրբոյ».

**ԵԶՆԻԿ**<br>**ԿՈՐԻՒՆ** } որոնց վրայ մասնաւոր գլխով պիտի խօսինք։

**ՄՈՒՇԷ** Տարոնեցի<br>**ՏԻՐԱՅՐ** Խորձենացի } Երբոր Մեսրովպ ուզեց անձամբ 'ի սփիւռս հեթանոսաց երթալով քարոզել ու սովրեցընել, հետն առաւ նաև այս երկու անձինքը, զՄուշէ Տարոնեցի և զՏիրայր կամ Տէր Խորձենացի, որոնց համար պատմիչն կը վկայէ թէ էին սուրբք և զուարթագոյնք. և թէ անոնց հետ կային նաև շատ աշակերտներ, « զոր չեմք բաւական ըստ անուանցն նշանակել » ։ Փարպեցին ալ կը գրուցէ թէ սուրբըն Սահակ՝ Մեսրոպայ օգնական տուաւ « արս քանիբունս և մտացիս 'ի քահանայից Հայոց, որք էին և նոքա սակաւ մի մերձաւորեալք 'ի յունարէն հեգենայսն, ... որոց անուն էր Տէր 'ի Խորձենոյ և Մուշէ 'ի Տարօնոյ. որոց օգնելով գործէր երանելին Մաշթոց » ։ Նոյն պատմիչը առ Մամիկոնեան Վահան գրած թղթին մէջ կ'ըսէ. « Զհրեշտականման այրն զՏէր (Խորձենացի) նոյն անհանգիստ հալածանօք վախճանեցուցանելով » ։

Ուրիշ է ի սմանէ Տէր՝ զոր կը յիշէ նոյն Կորիւն. « Յետ այսորիկ, կ'ըսէ, առնոյր հաւանութիւն երանելին Մաշթոց, որպէս զի Տէր եպիսկոպոսն ի կայենականսն, և նա ի սփիւռս հեթանոսաց զբանն կենաց սերմանիցեն » ։

**ՅՈՎՍԷՓ** Պաղնացի<br>**ՅՈՎՀԱՆ** Եկեղեցացի } Այս երկու անձինքը՝ թարգմանչաց մէջ գլխաւորներէն կը սեպուին արժանապէս, և սրբոյն Մեսրովպայ հզօր աջակից եղած 'ի հրահանգել զաշակերտս, և 'ի թարգմանութիւնս գրոց սրբոց։ Կորիւն, Խորենացի և Ղազար՝ միաձայն են այս վկայութիւնը տալու անոնց համար։

Կորիւն կ'աւանդէ թէ Մեսրոպ աստուածային օգնութեամբ հայերէն տառից պակասութիւնը գտնելէն ետքը, հոն մէկէն 'ի Սամոս, « Ի թարգմանութիւնս դառնային հանդերձ արամբք երկու՝ աշակերտօք իւրովք, որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին յԵկեղեցեաց գաւառէն, և երկրորդին Յովսէփ անուն 'ի Պաղանական տանէն, և եղեալ սկիզբն յառակացն Սողոմոնի » ։ Նոյնը կը գրուցէ նաև Խորենացի. « Իսկոյն 'ի թարգմանութիւն ձեռն արկեալ, խորհրդաբար սկսանելով յառակաց, բովանդակ զքսանևերկու յայտնիսս, և զնոր կտակս յեղուլ 'ի հայ բան. Նաև աշակերտք նորա՝ Յովհան Եկեղեցացին և Յովսէփ Պաղնացի » ։

Վերջը երբ Մեսրոպ Գուգարաց աշխարհէն դարձաւ, Եզնըկայ հետ մէկտեղ Միջագետաց Եդեսիա քաղաքը ղըրկեց զՅովսէփ Պաղնացի, « զի որ միանգամ գտցի անդ գիրք ասացեալ հարցն առաջնոց, թարգմանեալ 'ի մեր լեզուս՝ բերցեն փութով », որպէս զի ետքը նոյն վախճանաւ նաև 'ի Բիւզանդիոն ղրկէ զանոնք ։ Որք Եդեսիա երթալնէն ետքը՝ քանի մը սուտագրոյցներէ լսելով թէ սուրբն Սահակ և Մեսրոպ կը պատրաստուին ուրիշները ղրկել 'ի Բիւզանդիոն, առանց հրամանի հոն գնացին. և « Նախանձաւորս բարեաց եղեալ ուսմանց, և քաջ վարժեալ հելլեն դպրութեամբ՝ ձեռնարկեցին 'ի թարգմանել և 'ի գրել » ։ Սոյն դէպքը՝ հետևեալ խօսքերով կ'աւանդէ Կորիւն. « Դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել 'ի կողմանս Ասորւոց, 'ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ՝ զոր 'ի վերոյն յիշեցաք, և երկրորդն Եզնիկ անուն՝ յԱյրարատեան գաւառէ 'ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն՝ զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս, հայերէն գրեալս դարձուսցեն ։ Իսկ թարգմանչացն հասեալ ուր առաքեցանն, և կատարեալ զհրամանսն, և առ պատուական հարսն առաքեալ, անցեալ գնացին 'ի կողմանս Յունաց. ուր և ուսեալք և տեղեկացեալք՝ թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին » ։ Անկէց Հայաստան.

*դառնալնէն ետքը՝ Տարօնոյ Աշտիշատ քաղաքին մէջ գտան իրենց վարդապետներն, ու Եփեսոսի ժողովոյն թղթոցն ու կանոնաց հետ մէկտեղ՝ աստուածաշունչ գրոց ստոյգ օրինակ մըն ալ մատուցին անոնց. « Զոր առեալ մեծին Սահակայ և Մեսրովպայ, դարձեալ թարգմանեցին ըզ-միանգամ թարգմանեալն, փութանակի հանդերձ նոքօք վերստին յօրինել նորոգմամբ » ։*

**ԵՆՈՎՔ | ԴԱՆԱՆ |** *Երբոր Մեսրոպ՝ Աղուանից լեզուին գրերը գտնելով՝ պիտի դառնար 'ի Հայաստան՝ հոն անոնց վրայ վերակացու թողուց իւր աշակերտներէն երկու հոգի՝ զԵնովք և զԴանան, որոնց համար վը-կայէ Կորիւն. « արք կրօնաւորք և յառաջադէմք յաւե-տարանական սպասաւորութեան » ։*

**ԵՐԵՄԻԱ**, *սրբոյն Սահակայ սարկաւագապետը զոր կ'անուանէ Կորիւն այր սուրբ և բարեպաշտօն, որ և թաղեց իր սուրբ հայրապետը 'ի Տարօն գաւառի ։*

**ԹԱԴԻԿ** *կամ* **ԹՈԴԻԿ**, *սրբոյն Մեսրովպայ աշակերտը. որ երջանիկ մահը մօտեցած տեսնելով, իր աշակերտացը մէջէն գլխաւոր դաս մը կը կազմէր. և այն ժողոված աշակերտներուն մէջէն երիցագոյններէն մէկն էր Թա-դիկ « այր զգաստ՝ և զգուշագոյն հրամանաց վարդա-պետութեան ». որ վարդապետին մահուընէն ետքն ալ՝ անոր տեղապահութեանը պաշտօնն ըրաւ ։ Իրեն ընկե-րակիցք էին Յովսէփ՝ որ թերևս զատ չէ 'ի համանուն եպիսկոպոսէն զոր վերը յիշեցինք, և Յովհան, որոց հա-մար կը վկայէ Կորիւն. « Վերակացուս ժողովրդեան ըստ յայտնութեան սուրբ հարցն՝ զՅովսէփ և զՅովհաննէս կա-ցուցանէին արս ճշմարտասէրս և ողջախոհս. որոց դէպ լինէր յետ վախճանի սրբոցն ազգի ազգի փորձութեանց 'ի վերայ եկելոց 'ի բռնաւորաց, մենակրիւ մենամար-տեկ 'ի Պարսս 'ի Տիսպոնն քաղաքի վասն Քրիստոսի. ո-րոց և զխոստովանողական անուն ժառանգեալք, 'ի նոյն վերակացութիւնն վարդապետութեան դառնային յերկիրս Հայոց » ։*

մահը լսեցին. իմացան թէ իրենց թողած Հայաստանը չէր որ կը սպասէր իրենց, և որուն անձկանօքը կը մաշէին. պարսկական բռնութիւնն սկսած էր զօրանալ. հաւատք իրենց նախկին մաքրութիւնն ու սրբութիւնը՝ աշխարհային շահուց և փառաց զոհելու վտանգի մէջ էր. անոր համար կը փութային ժամ մը առաջ դառնալ իրենց հայրենիքը. տեսնել հոգևոր ծնողքնին, և գէթ անոնց տեսութեամբը սրտերնուն ցաւը մեղմացընել. իրենց գիտութեամբն և յառաջադիմութեամբ՝ վրանին աշխատող արդիւնաւոր հանճարները մխիթարել։

Սակայն բոլորովին տխուր տեսարան մը կը սպասէր իրենց Հայաստանին մէջ։ Կը դառնային իրենց հայրենիքը. և ահաւասիկ տխուր մահն հողոյ աւանդած էր իրենց սիրելի վարդապետքը՝ զսուրբն Սահակ և զՄեսրոպ։ Այն ցաւին վրայ՝ ուրիշ դժնդակ տագնապ մըն ալ կը հասնէր երանելի Թարգմանչաց վրայ, ընտանի երկպառակութիւն մը Հայաստանին մէջ, ու անոր հետեւանք կրօնական պատերազմն ընդ Պարսս։

Այնպիսի սպառնացող ահաւոր չարեաց առջեն առնելու համար՝ Հայաստան աղխտից և թշուառութեանց թատր կը դառնար. և մոգութիւնն այն ատեն միայն ամօթապարտ կ'ըլլար՝ երբ Հայաստանի որդիքը թէ՛ 'ի զինուորական և թէ յեկեղեցական դասուէ՝ իրենց արեամբը փրկութեան զոհ կ'ըլլային հայրենեաց համար։

* * *

Այս քաղաքական մեծ յուզմանէն զատ, որով կործանման վերահաս վտանգի մէջ էին հայրենիք, ուրիշ դժբաղդութիւն մ'ալ կը սպասէր Թարգմանչաց. — իրենց ազգակցաց տգիտութեան և նախանձու հետեւանք կրելիք դառն հալածանք մը։ Իրենցմէ շատին գրուածներէն, և մանաւանդ Փարպեցւոյն առ Մամիկոնէից իշխանն Վահան ուղղած նամակին խօսքերէն՝ այնպիսի բացայայտ

ակնարկութեանց կը հանդիպինք ժամանակին աբեղայից վրայ, որ դժբաղդաբար շատ հեռի են անոնց ուսումնասիրութեան և առաքինի քաղաքավարութեան վրայ լաւ տպաւորութիւն մը ազդելէն: Որչափ Թարգմանչաց վրայ ամենընտիր սիրտ և եռանդուն գործունէութեան ջանք մը կը նկատենք ազգին մտաւոր և բարոյական զարգացմանն ու յառաջադիմութեան օժանդակելու՝ այնչափ ալ իրենց անուանն ու համբաւոյն նախանձորդ ու մախացող թշնամեաց վրայ, — զի հարկ է այս անունով կոչել զիրենք, — հակառակամարտ ու յարատև փոյթ մը զիրենք և ուսումնին անպատիւ ընելու, այս վախճանին և նպատակին հասնելու համար նաև անարժան միջոցներու և զինուց կիրառութեամբ:

Սահակայ և Մեսրովպայ, իրենց խնամոտ և հայրագութ դաստիարակաց կենդանութեանն ատեն՝ դժուարին էր որ հակառակողք կարենային իրենց դիտմանն հասնիլ. այլ այն մեծ և հռչականուն վարդապետաց մահը՝ իրենց աշակերտացն երկարատև հալածանաց և նեղութեանց սկզբնաւորութիւն պիտի ըլլար. որով թէ իրենք և թէ հայրենիք պիտի վնասէին: Ուստի և իրաւամբ կը փնտռէր զանոնք Խորենացի՝ հառաչանաց արտասուօք Պատմութեան գրոցը վերջը սրտառուչ խօսքեր նուիրելով անոնց անմոռանալի յիշատակին, և որ դարէ դար աւանդուելով՝ մինչև առ մեզ հասան. «Ողբա՛մ զքեզ, կ'ըսէր, Հայոց աշխարհ. ողբա՛մ զքեզ, հանուրց հիւսիսականաց վեհագոյն. զի բարձաւ թագաւոր և քահանայ, խորհրդական և ուսուցող. վրդովեցաւ խաղաղութիւն, արմատացաւ անկարգութիւն, դրդուեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն: Ողորմի՛մ քեզ, եկեղեցի Հայաստանեայց, խրթնացեալ 'ի բարեզարդութենէ բեմբին, 'ի քաջէն գրկեալ հովուէ և հովուակցէ»: Ու խօսքը յառաջ տանելով. «Եւ մինչ նոքա զմերն յուսային դարձ, և պատուասիրել իմով ամենիմաստ արուեստիւ և կատա-

*բելագոյն յարմարութեամբս, համայն և մեզ փութապէս դիմեալք 'ի Բիւզանդիոյ, յուսայաք հարսանեաց պարել՝ անվեհեր երանութեամբ կրթեալք, և առագաստի ասել երգս, արդ փոխանակ խրախճանութեանն՝ 'ի վերայ գերեզմանի ողբս ասելով ողորմելի հառաչեմ. ուր և ոչ տեսութեանն ժամանեցի աչաց նոցա կափուցմանց, և լսել զվերջին բարբառն և զօրհնութիւն։ Այսպիսի անձկաւ հեղձամղձուկ եղեալ՝ վտանգիմ կարօտութեամբ մերոյ հօրն։ Ո՞ւր է քաղցր աչացն հանդարտութիւն... ո՞ւր զուարթ շրթանցն ժպտումն առ բարի աշակերտացն հանդիպումն. ո՞ւր խնդամիտ սիրտն ընդունող արբանեկաց. ո՞ւր երկայն ճանապարհաց յոյս հեշտացուցիչ, աշխատութեանցն հանգուցող։ Կորեաւ ժողովողն, թաքեաւ նաւահանգիստն, ելիք սգնականն, լռեաց ձայնն յորդորեցուցիչ։ Ո՞վ այսուհետև զմեր յարգեսցէ զուսումն. ո՞վ ուրախասցի ընդ յառաջադիմութիւն աշակերտիս, ո՞վ ըզհայրականն բարբառեսցի զուարճութիւն, մասամբ ինչ յաղթահարեալ յորդւոյս։ Ո՞վ կարկեսցէ զյանդգնութիւնն ընդդէմ առողջ վարդապետութեանն հակառակ յարուցելոցն. որք ամենայն բանիւք քակտեալք և քայքայեալք... զծիծաղիլն զմեւք և զարհամարհելն իբրու զանհաստատնովք, և որ ոչինչ պիտանացու ունիցի արուեստ։ Ո՞վ զնոսա ըմբերանեսցէ սաստելով, և զմեզ սփոփեսցէ գովելով, և չափ դնէ բանի և լռութեան... Ոչ գիտեմ եթէ զիա՞րդ յարմարեցից զողբերգութիւնս, և կամ զո՞վ արտասուեցից... Զհա՞յրն իմ և զքահանայապետ... զծնո՞ղն իմ աղբիւր վարդապետութեան, զարդարութեանն առօգող, և հեղեղաւ զամբարշտութիւնն սահմանելով. եթէ զիս երաշտացեալ և թարշամեալ պապակութեամբ արբուցման խրատու »։*

*Ուրիշ մ'ալ՝ ժամանակաւ ոչ այնչափ կրտսերագոյն, հետևեալ խօսքերով կը նկարագրէ սրբոց Թարգմանչաց ողորմ վիճակը, յետ դարձի նոցա յուսումնական և 'ի բազմաշահ շրջագայութեանց. « Վաճառականք մեր հօ-*

գնորք, կ'ըսէ, յորժամ դարձան 'ի մեծայած ուղևորութենէն, ոչ գտին զառաքիչսն իւրեանց. զի վախճանեալ էին սուրբքն, և բարձեալ թագաւորութիւնն. քայքայեալ վայելչութիւնն և սպառեալ ուսումնասիրութիւն... Նսեմացեալ ճշմարտութիւն և զօրացեալ ստութիւն: Վասն որոյ ողբս առեալ հառաչէին, հաչէին, արտասուս յաչաց կաթեցուցանէին, ձեռն 'ի ծնօտի հարեալ ողբային... 'ի զուր ժրացաք, ասէին, ունայն վաստակեցաք, յանպէտ ջանացաք, ընդ վայր իմաստնացաք, յանչահս դեգերեցաք: Աւա՜ղ երկայնութեան ճանապարհին, մեծագոյն տքնութեանն, յոլով աշխատութեանն, 'ի ծովու ալէկոծութեանն, 'ի ցամաքի վաստակելոյն, մեծագին բեռանց կապելոյն: Վաճառականքս պատրաստք, և վաճառականք չեն 'ի միջի. պսակքն մերձ, և պսակադիրքս յօժարք, և որք պսակինն չիք առաջի. բանքս 'ի բերան և բանաբերքս իմաստունք, և խնդրողք բանի ոչ երևին: Վարդապետք հուպ և ուսումն ազնիւ, և աշակերտեալք ոչ հանդիպին»:

Այս հակառակութիւնն այնչափ բռնացաւ, որ թարգմանիչք ա՛լ չկրցան հանդուրժել. ուստի և ոմանք 'ի նոցանէ լաւագոյն համարեցան թողուլ քաղաք, եկեղեցի, վանորայ, տեղիք բնակութեան և ուսմանց, և անապատներու լռութեան՝ անձաւաց միայնութեան մէջ ողբալ թէ իրենց և թէ հայրենեաց վիճակը: Եղիշէ հետեւող կ'ըլլար անոնց՝ որոց երկնակրօն քաղաքավարութիւնն կը ստորագրէ ոսկեղէն լեզուովը. «որ խոյս տան 'ի խորս և 'ի ստորոտս անապատ վայրաց, զի տեսանեն զաշխարհս լի ամենայն չարեօք»: Այսպէս նաև ուրիշ հատերն:

Եղան և այլք՝ արիաբար նահատակողք, ինչուան վերջի շունչերնին մաքառելով. թէպէտ վերջապէս բռնադատուեցան տեղի տալ հալածչաց բազմութեանն և ուժգին կրից՝ ապարիզէն քաշուելով: Փարպեցին առ Վահան գրած թղթին մէջ համառօտ բայց ազդու խօսքով և լե-

զուռով քանի մը դէպք մէջ բերէ, ինքզինքն ալ կրողաց և յանիրաւի հալածուողաց թուոյն մէջ խառնելով. «Երանելի փիլիսոփոսն Մովսէս, կ'ըսէ, որ արդարև մինչ դեռ էր 'ի մարմնի՝ ցանկ երկնային զօրացն էր քաղաքակից, ո՛չ ապաքէն տեղւոջէ 'ի տեղի աքսորեալ հալածական արարին։ Ո՞չ գլուսաւորիչն և զտգիտահալած զգրեանն նորա՝ առ անգիտութեանն փաքաղիկեա կոչէին, և այլ բազում ինչ իրաց թշնամանեալ՝ յետոյ ապա յաղագս այլոց ամօթոյ զխաբէական զեպիսկոպոսութիւնն նման դեղոյ մահու արբուցեալ սրբոյն հեղձուցին... Զոսկերսն 'ի գերեզմանէն հանել տային և 'ի գետ արկանել»։ — «Եւ զհրեշտականման այրն զՏէր՝ նոյն անհանգիստ հալածանօք վախճանեցուցանելով, որք և այժմ դեռ ևս անյագութեամբ գինով ընդ մեռելոյն կագին»։ Նոյնպէս վարուեցան, կ'ըսէ, և «ընդ անարատ և ամենեցունց յարգելի յոյս Տէր Խոսրովիկ, զայս և ընդ Տէր Աբրահամ և ընդ այլս բազումս, որոց ոչ բացեալ 'ի բարեբան զլեզուս իւրեանց... խստագոյն վշտիւ վախճանեցան»։ Ուրիշ յիշատակագիր մ'ալ հետևեալ խօսքերով՝ երանելի թարգմանչաց տխուր վիճակը կը նկարագրէ. «Յետ փոխման սրբոյն եկին աշակերտք նոցա յԱթենայ, ճոխացեալ և փարթամացեալ ուսմամբ. Մովսէս քերթողն, և Դաւիթ Անյաղթն, Մամբրէ Վերծանողն, և Եղիշէ Պատմագիր, Ղազար Փարպեցի և Եզնակ Կողբացի, Ստեփանոս Ասողնիկն և այլք ոմանք։ Եւ ոչ ժամանեալ սուրբ հարցն ի կենդանւոջ, ողբս առեալ լացին 'ի վերայ գերեզմանացն, և նստան լռութեամբ. անընդունակ լեալ 'ի խստապարանոց... ազգէս Հայոց»։

***

Վահանայ մարզպանութեանն ատեն պարսկական գըրգռութեանց հանդիսարան եղող Հայաստանը՝ քիչ մը ա-

տեսնուան համար իր հանգստութիւնը գտնելու բաղդը կ'ունենար, որով և Թարգմանչաց ալ ժամանակ և պատեհ կու տար իրենց ուսումնական զբաղմանց ետևէ ըլլալու։

Թարգմանչաց գլխաւոր երկասիրութիւններն՝ Թարգմանութիւնք ըլլալով, անոնց վրայ զատ պիտի խօսինք։ Բայց որովհետև գտնուած են մէջերնին այնպիսիք ալ՝ որ ինքնագիր երկասիրութիւններ թողուցած են, կարգաւ մը անոնց վրայ խօսինք համառօտիւ, և նախ անոնց Թուոյն վրայ։

Թարգմանչաց Թուոյն վրայ՝ որոշ տեղեկութիւն չենք կրնար ունենալ. բայց որովհետև զանազան դպրոցներու մէջ և այլ և այլ ատեն կրթուեցան, մեզի կ'երևնայ Թէ սուրբն Մեսրովպ և Սահակ՝ բոլոր Հայաստանի մէջ եղող դպրոցներու մէջ իրենց արժանի բազմաթիւ աշակերտներ ունեցած պիտի ըլլան. որոնց շատին և ոչ անունը ինչուան մեզի հասած է։ Գրոց մէջ յիշատակուողներն ասոնք են.

## Առաջին աշակերտք

ՅՈՎՍԷՓ 'ի Վայոց Ձորոյ, որ կաթուղիկոսական աթոռոյ արժանի եղաւ, և Արտաշատու ժողովոյն մէջ նախագահ բազմեցաւ, ինչպէս իր ընկերակիցն Կորիւն վկայէ. «Գլխաւոր վերակացուս տեղապահս յայտ արարին, կ'ըսէ, հարցն կատարելոց։ Որոց առաջին Յովսէփ՝ գլխաւոր ժողովոյն».

Յովսեփայ հետ վերակացու և տեղապահ կարգեցաւ նաև

ՅՈՎՀԱՆ, որ սրբոց Ղևոնդեանց մահուընէն ետքը՝ Տիզբոն քաղաքին մէջ Քրիստոսի յուսոյն համար այլ և այլ չարչարանք քաշելով՝ խոստովանող կոչուեցաւ։ «Երկրորդն այլ աշակերտ, կ'ըսէ նոյն Կորիւն, Յովհան անուն, այր իսկ սուրբ, վարդապետասէր և ճշմարտապա-

տում. որում դէպ լինէր
զում և ազգի ազգի փորձո
տաց մենամարտիկ երկպառ
քոն քաղաքի՝ վասն Քրիստո
համբերեաց »։

ՂԵՒՈՆԴ երէց 'ի Վա
ուժովը, աստուածասէր սրս
կական մոգութիւնը Հայաստ
ազդեցիկ խօսքերովը Վարդ
փառաւոր մահուամբ մը՝ թէ
անմահ փրկութիւնը ստան
ծառայութենէն առաջ, այլ և
սաւորութիւն ալ մատուցած
ւոր այն աշակերտաց՝ զորս
քաղաքը տարած էր, և Ան
նօքը՝ քաղաքին Ակակ եպ
Մեսրովպ Նաղագոմք անա
աշակերտաց ուսումը բովա
տեղւոյն վերակեցու կարգե
ընկերներէն ոմանք 'ի Բիւզա
մանութեանց և հելլեն լեզո
և վախնալով որ չըլլայ թէ
Կորեան հետ մէկտեղ՝ առա
քը հարցընելու՝ 'ի Բիւզան
պէս մեծ պատիւ գտաւ քա
պոսէն։ Անկէց Նիկիական
ղովոց կանոններով և Աստո
րինակներով՝ դարձաւ իւր
ժամանակի. 'ի մէջ անցանե
նէր ոմանց եղբարց 'ի Հայ
կողմանս Յունաց, որ և Ղե
և երկրորդին Կորիւնս, և մ
իբր առ ընտանեգոյն սննդա
ղաքին. և անդ միաբանութ

դիրն վճարքէին։ Որոց յետ այնորիկ հաստատուն օրինակօք աստուածատուր գրոց և բազում շնորհագիւտ հարց յետ այնր աւանդութեամբք, և Նիկիական և Եփեսոսական կանոնօք գային երևելով յաշխարհին Հայոց. և առաջի դնէին հարցն՝ զբերեալ կտակարանս եկեղեցւոյ սրբոյ».

ԵԶՆԻԿ<br>ԿՈՐԻՒՆ } որոնց վրայ մասնաւո՛ր գլխով պիտի խօսինք։

ՄՈՒՇԷ Տարոնեցի<br>ՏԻՐԱՅՐ Խորձենացի } Երբոր Մեսրովպ ուզեց անձամբ 'ի սփիւռս հեթանոսաց երթալով քարոզել ու սովրեցընել, հետն առաւ նաև այս երկու անձինքը, զՄուշէ Տարոնեցի և զՏիրայր կամ Տէր Խորձենացի, որոնց համար պատմիչն կը վկայէ թէ էին սուրբք և զուարթագոյնք. և թէ անոնց հետ կային նաև շատ աշակերտներ, «զոր չեմք բաւական ըստ անուանցն նշանակել»։ Փարպեցին ալ կը գրուցէ թէ սուրբըն Սահակ՝ Մեսրոպայ օգնական տուաւ «արս բանիբունս և մտացիս 'ի քահանայից Հայոց, որք էին և նոքա սակաւ մի մերձաւորեալք 'ի յունարէն հեգենայան, ... որոց անուն էր Տէր 'ի Խորձենոյ և Մուշէ 'ի Տարոնոյ. որոց օգնելով՝ գօրէր երանելին Մաշթոց»։ Նոյն պատմիչը առ Մամիկոնեան Վահան գրած թղթին մէջ կ'ըսէ. «Զհրեշտականման այրն զՏէր (Խորձենացի) նոյն անհանգիստ հալածանօք վախճանեցուցանելով»։

Որիշ է ի սմանէ Տէր՝ զոր կը յիշէ նոյն Կորիւն. «Յետ այսորիկ, կ'ըսէ, առնոյր հաւանութիւն երանելին Մաշթոց, որպէս զի Տէր եպիսկոպոսն ի կայենականսն, և նա ի սփիւռս հեթանոսաց զբանն կենաց սերմանիցեն»։

ՅՈՎՍԷՓ Պաղնացի<br>ՅՈՎՀԱՆ Եկեղեցացի } Այս երկու անձինքը՝ Թարգմանչաց մէջ գլխաւորներէն կը սեպուին արժանապէս, և սրբոյն Մեսրովպայ հզօր աշակից եղած 'ի հրահանգել զաշակերտս, և 'ի Թարգմանութիւնս գրոց սրբոց։ Կորիւն, Խորենացի և Ղազար՝ միաձայն են այս վկայութիւնը տալու անոնց համար։

Կորիւն կ'աւանդէ թէ Մեսրոպ աստուածային օգնութեամբ հայերէն տառից պակասութիւնը գտնելէն ետքը, հոն մէկէն 'ի Սամոս, « Ի թարգմանութիւնս դառնային հանդերձ արամբք երկու՝ աշակերտօք իւրովք, որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին յԵկեղեցեաց գաւառէն, և երկրորդին Յովսէփ անուն 'ի Պաղանական տանէն, և եղեալ սկիզբն յառակացն Սողոմոնի » ։ Նոյնը կը զրուցէ նաև Խորենացի. « Իսկոյն 'ի թարգմանութիւն ձեռն արկեալ, խորհրդաբար սկսանելով յառակաց, բովանդակ զքսանևերկու յայտնիսս, և զնոր կտակս յեղուլ 'ի հայ բան. Նաև աշակերտք նորա՝ Յովհան Եկեղեցացին և Յովսէփ Պաղնացի » ։

Վերջը երբ Մեսրոպ Գուգարաց աշխարհէն ´դարձաւ, Եզնըկայ հետ մէկտեղ Միջագետաց Եդեսիա քաղաքը ղըրկեց զՅովսէփ Պաղնացի, « զի որ միանգամ գտցի անդ գիրք ասացեալ հարցն առաջնոց, թարգմանեալ 'ի մեր լեզուս՝ բերցեն փութով », որպէս զի ետքը նոյն վախճանաւ նաև 'ի Բիւզանդիոն ղրկէ զանոնք ։ Որք Եդեսիա երթալնէն ետքը՝ քանի մը սուտագրոյցներէ լսելով թէ սուրբն Սահակ և Մեսրոպ կը պատրաստուին ուրիշները ղրկել 'ի Բիւզանդիոն, առանց հրամանի հոն գնացին. և « Նախանձաւորս բարեաց եղեալ ուսմանց, և քաջ վարժեալ հելլէն դպրութեամբ՝ ձեռնարկեցին 'ի թարգմանել և 'ի գրել » ։ Սոյն դէպքը՝ հետևեալ խօսքերով կ'աւանդէ Կորիւն. « Դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել 'ի կողմանս Ասորւոց, 'ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ՝ զոր 'ի վերոյն յիշեցաք, և երկրորդն Եզնիկ անուն՝ յԱյրարատեան գաւառէ 'ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն՝ զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս, հայերէն գրելս դարձուսցեն ։ Իսկ թարգմանչացն հասեալ ուր առաքեցանն, և կատարեալ զհրամանսն, և առ պատուական հարսն առաքեալ, անցեալ գնացին 'ի կողմանս Յունաց. ուր և ուսեալք և տեղեկացեալք՝ թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին » ։ Անկէց Հայաստան

դառնալնէն ետքը՝ Տարօնոյ Աշտիշատ քաղաքին մէջ գտան իրենց վարդապետներն, ու Եփեսոսի ժողովոյն Թղթոցն ու կանոնաց հետ մէկտեղ՝ աստուածաշունչ գրոց ստոյգ օրինակ մըն ալ մատուցին անոնց. « Զոր առեալ մեծին Սահակայ և Մեսրովպայ, դարձեալ Թարգմանեցին ըզմիանգամ Թարգմանեալն, փութանակի հանդերձ նորօք վերստին յօրինել նորոգմամբ »:

**ԵՆՈՎՔ** | **ԴԱՆԱՆ** | Երբոր Մեսրոպ՝ Աղուանից լեզուին գրերը գտնելով՝ պիտի դառնար 'ի Հայաստան՝ հոն անոնց վրայ վերակացու Թողուց իր աշակերտներէն երկու հոգի՝ զԵնովք և զԴանան, որոնց համար վըկայէ Կորիւն. « արք կրօնաւորք և յառաջադէմք յաւետարանական սպասաւորութեան »:

**ԵՐԵՄԻԱ**, սրբոյն Սահակայ սարկաւագապետը զոր կ՚անուանէ Կորիւն այր սուրբ և բարեպաշտօն, որ և Թաղեց իր սուրբ հայրապետը 'ի Տարօն գաւառի:

**ԹԱԴԻԿ** կամ **ԹՈԴԻԿ**, սրբոյն Մեսրովպայ աշակերտը. որ երջանիկ մահը մօտեցած տեսնելով, իր աշակերտացը մէջէն գլխաւոր դաս մը կը կազմէր. և այն ժողոված աշակերտներուն մէջէն երիցագոյններէն մէկն էր Թադիկ « այր զգաստ՝ և զգուշագոյն հրամանաց վարդապետութեան ». որ վարդապետին մահուընէն ետքն ալ՝ անոր տեղապահութեանը պաշտօնն ըրաւ: Իրեն ընկերակիցք էին Յովսէփ՝ որ Թերևս զատ չէ 'ի համանուն եպիսկոպոսէն զոր վերը յիշեցինք, և Յովհան, որոց համար կը վկայէ Կորիւն. « Վերակացուս ժողովրդեան ըստ յայտնութեան սուրբ հարցն՝ զՅովսէփ և զՅովհաննէս կացուցանէին արս ճշմարտասէրս և ողջախոհս. որոց դէպ լինէր յետ վախճանի սրբոցն ազգի ազգի փորձութեանց 'ի վերայ եկելոց 'ի բռնաւորաց, մենակռիւ մենամարտիկ 'ի Պարսս 'ի Տիզպոնն քաղաքի վասն Քրիստոսի. որոց և գխոստովանողական անուն ժառանգեալք, 'ի նոյն վերակացութիւնն վարդապետութեան դառնային յերկիրս Հայոց »:

**ԳՆԻԹ** Դերջանայ եպիսկոպոսը, որ 'ի Նաղադամս իրենց ուսումը կատարող գլխաւոր աշակերտաց մէկն էր։

**ԱՐՁԱՆ** արծունի, որ ուրեք Արջեւան կամ Արդեւան ալ կոչուած է, ընկերակից Կորեան. և անշուշտ զատ է համանուն Արձան կամ Աղան արծրունիէն, զոր անանուն պատմիչ մը՝ կրտսերագոյն Թարգմանչաց կարգէն կը սեպէ։ Այս հաւասկաւ երիցագոյն և ուսմամբ հմտագոյն Արձանը՝ առաջին աշակերտաց մէկն է, որ Յովհաննու Եկեղեցացւոյն հետ Թարգմանութեան պատճառաւ գնաց 'ի Կեսարիա, որոնց համար կ'ըսէ Խորենացին. « Կանխագոյն առաքեալ էր (գնոսա) մեծին Սահակայ և Մեսրովպայ, որոց յուլաբար ուղևորեալ և ծուլաբար դեգերեալք՝ պարապեցան 'ի Կեսարիա »։

**ՍՏԵՓԱՆՈՍ** Տարոնացի. սրբոյն Մեսրովպայ աշակերտաց հետ յիշատակուած կը գտնենք հին յիշատակարանի մը մէջ. « Դտաք, կ'ըսէ, այլ պատմութիւն մի հնագոյն և անվերծանելի, որ չարունակաբար անցուցեալ էր 'ի գիր գյաջորդութիւն սուրբ առաքելոյն Թադէոսի 'ի Կեսարիա Կապադովկացւոց վիճակին 'ի Թէոփիլոսէ աշակերտէ առաքելոյն, գրեալ հանդերձ ժամանակագրութեամբ. և անուն նորին Ստեփանոս Տարաւնացի, որ էր աշակերտ սրբոյն Մեսրովպայ »[1]։

Ասոնցմէ զատ առաջին աշակերտաց կարգէն կը սեպուի Ղազարիկ կամ Ղազրիկ անունով մէկը, որ այլ է 'ի Փարպեցւոյն։

## Երկրորդ աշակերտք

Երկրորդ կարգի աշակերտք, որոնց վրայ՝ մեր գրոց մէջ բաւական պատմական ծանօթութիւն և անուանի երկասիրութիւններ գտնելնուս համար՝ մասնաւոր պիտի խօսինք, ասոնք են.

1. Արարատ, ամսագիր Էջմիածնի, Ա. տարի, 103։

Դաւիթ Անյաղթ.
Գիւտ կաթուղիկոս.
Յովհան Մանդակունի.
Եղիշէ.
Մովսէս Խորենացի.
Մամբրէ Վերծանող.
Ղազար Փարպեցի.

Եզրաս Անգեղացի, զոր ոմանք 'ի պատմըչաց Խորենացւոյ աշակերտ կը սեպեն, և որուն համար կ'ըսեն թէ « բազմացոյց զդասս ճարտասանաց »:

Աստնցմէ զատ կը յիշատակուին անորոշ ժամանակաւ, և առանց ո՛ր դասուն վերաբերելնուն.

Խոսրով, որուն համար կը յիշատակուի թէ գրած ըլլայ զպատմութիւն վարուց սրբոյն Սահակայ հայրապետի և 'ի Նոր Ջուղա պահուած ձեռագրաց թուոյն մէջ կը յիշուի գիրք մը հետևեալ խորագրով. « Խոսրովայ Թարգմանչի՝ պատմութիւն սրբոյն Սահակայ »: Ձեռագրաց ցուցակի մը մէջ ալ կը հանդիպինք (Մատենադարան Էջմիածնի, թիւ 920). « Արտասանութիւն Խոսրովկայ Թարգմանչի 'ի մենամարտութիւն Դաւթի և Գողիաթու ». և սկզբնաւորութիւնն է « Պատերազմական հանդիսիցն զումարք »: Իրեն կ'ընծայուի դարձեալ Ջրօրհնեաց կանոնին թարգմանութիւնն 'ի յունէ: Պատառիկ մը կայ առ մեզ « վասն կարգի կաթուղիկոսաց » խորագրով որ Խոսրովու կը կարծուի:

Յովհաննէս.

Աբրահամ կամ Աբէլ. Եղիշէ իր պատմութեան գրոց մէջ կը յիշէ զԱբրահամ խոստովանող՝ ընկեր Ղեւոնդեանց 'ի գերութեան: Կը գտնենք տեղ մը հետևեալ համառօտ տեղեկութիւնն. « Արևելեան վկայիցն պատմութիւնք, որ թարգմանեցաւ յԱբրահամ խոստովանողէ, մինչ բանդարկեալ կայր 'ի Պարսիկս, 'ի պարսիկ լե-

զուէ » ։ Մեր մատենագրութեան մէջ, ինչպէս ծանօթ է բանաստէր հմտից, կայ համանուն երկասիրութիւն մը, արժանաւոր հինգերորդ դարու ոսկեղէն լեզուին, և որ արդէն հրատարակեալ է տպագրութեամբ. և յետոյ գըտնուած է նաև ամբողջն՝ ընտրելագոյն ընթերցուածովք[1] ։ Արծրունին ալ կը յիշատակէ զԱբրահամ և իր պատմական երկասիրութիւնն. « Պատմի այս, կ՚ըսէ, ՚ի համառօտութեան Աբրահամու խոստովանողի ». Թէպէտ և իրմէ մէջ բերուած հատուածը չիվերաբերիր յառաջ յիշուած վկայաբանութեան. այլ մասն է Վարդանայ և իր առաջնորդութեամբ տրուած պատերազմին պատմութեան. « Պատահի յառաջ, կ՚ըսէ, Տաւասպ Արծրունի. յորոյ վերայ կալեալ և կանչեալ քաջն Վարդան իբրև զառիւծ և զկորիւն առիւծու. և առ ուժոյ և երագութեան ձեռինն ՚ի վերայ ձգեալ զմիողնին՝ յերկուս կտրէ զՏաւասպն » ։ Ուրիշ տեղ մ՚ալ նոյն պատերազմին առթիւ. « Ի վեր կառուցեալ զաչս սրբոյն Վարդանայ՝ տեսանէ զանօրէնն Վասակ Սիւնեաց տէր. և զհետ նորա աճապարեալ՝ արկանեն զնա ՚ի յամրափակ զինեալ վաշտն ՚ի մէջ փղացն. և քաջն Վահան Արծրունի ընդ նմա նիզակակցեալ մեռանին » ։ Էջմիածնի Մատենադարանին ցուցակաց մէջ ալ կը հանդիպինք (Թիւ գրչ. 920). « Երանելւոյն Աբրահամու խոստովանողին ասացեալ ՚ի վկայսն արևելից ։ — Սկսայց այսուհետև պատմել դողալով զչարչարանս որ եկն ՚ի վերայ ազգիս մերոյ » ։

Աճանիա.

Ցովնարան.

Խաչիկ կամ Խաչատուր.

Թաթուլ.

Անդրէաս. Անշուշտ զաս ակնարկէ գրչագիր մը հետևեալ խօսքերուն մէջ. « Իսկ Ափոյ եպիսկոպոս դրանն

1. Ի շարս Հայկական Սոփերաց, Հատ. Ի ։

արքունի. և Անդրէաս վանական որ զերիս որդիս և զմի դուստր բդեշխին կնքեալ էր և որդիացուցեալ, այր երկիւղած յԱստուծոյ, որ եկեալ էր զկնի տիկնոջն յաշխարհէն Մամիկոնեանց՝ վանական ի Ղազարու վանաց ի յերկրէն Տարաւնոյ՝ և ինքն խարազնազգեստ և բոկագնաց եղեալ. սնեալ առ ոտս սրբոյն Սահակայ. և յաւերմանէն Հայոց անդ հասեալ խաղաղեալ կայր. քանզի բազում կործանումն էր հասեալ աշխարհիս Հայոց. յառ և աւար և ի սով և ի գերութիւն մատնեալ Պարսից. և նախարարք Հայոց սպառեալ էին. և Ցոյնք ոչ փախստեան տեղի տային գերեացն Հայոց. և ամուրք ոչ պահէին զտագնապեալսն. զի աստուածասաստ էր բարկութիւնն»:

Ու կ՚աւանդէ թէ սոյն երանելի այրն Անդրէաս կը փափաքէր սրբոյն Նունէի հետը տարած սուրբ խաչին նշանը՝ այլազգեաց նախատինքէն խալըսել: Առ այն կը բռնադատէր զինքն և Շուշանիկ տիկին, աղաչելով որ «փութանակի առցէ զսուրբ նշանն Նունէի և զայլ եւս բազում ոսկերս սրբոցն ի սրբոյն Գրիգորէ առ նա հասեալ նշխարքն և սպաս եկեղեցեաց և բազում խաչեր: Զայն ամենայն առեալ և երթեալ բառնայր զխաչն Նունէի ի բլրէն. քանզի եկեալ մոգքն տագնապէին զտունն տուն կրակի կացուցանել: Իսկ Ջոջիկ եղբայր բդեշխին օգնական լինէր տիկնոջն և Անդրիասու. և սպիտակափառ զարդուք զարդարէր զսուրբ նշանն. և բառնայր ի սպիտակ ջորիս և ի ձիս, և յղարկէր յարևմուտս կոյս, դադարէր ի յամուրս Խաղտեաց: Իսկ սուրբն Անդրէաս ոչ հաւանեաց դադարել ի մէջ ամբոխին. առեալ զխաչն Նունէի և բնակեցաւ ի Սպեր գաւառի 'ի խորշ մի լերիննն Պարխարու. և կացեալ անդ ամս եւթն՝ մինչև լուաւ զվաղճանն սրբոյն Շուշանկան: Ապա այնուհետև ի տարակոյս եղեալ տագնապէր, եթէ զինչ արասցէ ընդ սուրբ նշանն Նունէի. և զայլ ոսկերս սրբոցն: Ցայնժամ յարուցեալ տեղեկանայր ի տունն Մամիկոնէից. եթէ ո՛ արդեաւք իցէ կենդանի. և ոչ զոք յընտանի նախարարացն

գտանէր. ապա գտեալ զոմն մանուկ որդի Համայեկի եղբաւր Վարդանայ, անուն Գրիգոր, որ բնացեալ ունէր մանուկն զամուրս Կապուտա լերին և զձորն Երասխա. և զփոքր Բասեան՝ որ այժմ կոչի Վանանդ. և զփոքր ամրոցն Կարնենեաց: Զայս իմացեալ Անդրիասու ցուցանէ նմա զամենայն: Իսկ երանելի մանուկն Գրիգոր ուրախացաւ յոյժ և համարեալ զզաւրս իւր առն և ձիոյ երեք հազարաց. ոչ զանգիտացեալ ի զաւրացն Յունաց որք կային ի Թէոդոսուպաւլիս, այլ առիւծաբար յարձակեալ ընդ մուտ ձորոցն Տայոց պատճառելով զիւր հաւրն Համայեկի զնշխարսն գտանել. և անցեալ ի յամուրսն Պարխարու, հանդիպի իւրում տենչանացն: Եւ երանելի առն ծերոյն բացեալ զգանձս աստուածայինս, աւանդեաց Դրիգորոյ զամենայն. զի էր այրն մերձ ի վախճանել. և համբարձեալ զձեռս իւր՝ աւրհնեաց զնա և զնշխարս նորա: Եւ աղաչէր զԳրիգոր աստուածպաշտութեամբ և հայրենի ուղղութեամբ կալ. և ինքն փառս տուեալ Աստուծոյ աւանդեաց զհոգին. զի էր այր ծերացեալ և անցեալ ժամանակաւք. և բազում վիշտս յաղագս կործանման աշխարհիս Հայոց կրեալ »:

Վարոս. Յայսմաւուրաց մէջ կը կարդանք. « Սուրբն Վարոս՝ երէց եղբայրն Թաթլոյ՝ որ յետոյ Գիւտ կոչեցաւ, բնակեցաւ յանձաւս լերինն՝ որ կոչի Դիցմայրի. խստաբուստ եղեալ և վայրի մրգաք շատանայր ժամանակս բազումս. մինչև գտեալ զնա արք ոմանք ըստ խնամոցն Աստուծոյ, և խնդութեամբ լցեալ անուանեցին զնա Գիւտ: Այլ զտեղի նորա շինեցին վանք, որ մինչև ցայսօր կոչի Գիւտի վանք »: Իսկ Թաթլոյ համար. « Էր փոխանորդ վարդապետութեամբ Թաթուլ սրբոյն Մեսրովբայ և Ղեւոնդի վարդապետացն Հայոց. որպէս ի կամսարականաց յիշի պատմութեան որ առաւել ասէ քան զՄեսրոպ և զԳառնիկ և զՂեւոնդ: Նաև երանելին Մովսէս քերթողահայրն, ի պատմութեան ուրեմն յիշէ և այսպէս ասէ. « Զայսու ժամանակաւ երանելին Թաթուլ՝ երկրորդ Անտոն. ընդ

վիշապս և ընդ գազանս բնակեալ ընտանենայր. և իբրև զանմարմին՝ մարմնով հանդիսանայր»։ և այլ ոչ ինչ աւելի քան զայսոսիկ գեղեցկագոյն հիւսէ պատմութիւնս։.. Բարձրագոյն այրն Աստուծոյ քրիստոսազգեաց ճգնաւորն Թաթուլ էր ի ժամանակս Թէոդոսի փոքու ծիրանազգեստ քրիստոսապսակեալ թագաւորին Հոռոմոց և Յազկերտի Պարսից արքայի. որ հակառակ Հայոց շարժեցաւ յազդմանէ չարին,. և ի սուր և ի գերութիւն մաշեաց զերկիրս Հայոց։ Իսկ սուրբ Թաթուլ էր ծննդեամբ ի Բղբուջ գեղջէ. և անտի գնացեալ բնակեցաւ ի քաղաքագիւղն Տիկոր. որ մերձ է յարքայանիստն յԱնի. և պարապեալ ի վարժումն գրոց, սուրբ վարդապետութեամբ լուսաւորէ զքաղաքս. և շնորհք տուաւ նմա յԱստուծոյ՝ որպէս սրբոյն Մեսրոբայ. զոր բովանդակ որպիսութիւն գտանես ի պատմութեանն կամսարականաց։ Արդ ի սաստկանալ բարկութեան Պարսից առեալ զկրտսեր եղբայրն իւր զՎարոս՝ որ այժմ կոչի Գտուկ, յանապատ փութայր որպէս ի նաւահանգիստ. և եկեալ՝ ի տեղին որ կոչի Վիշապաձոր, բնակելով ի նմա խստապուտ տքնութեամբ և մերկութեամբ... և այսպէս կացեալ բազում ժամանակս. և ապա առ սակաւ սակաւ խաղաղանայր բարկութիւնն Պարսից։ Ընդ այն ժամանակս լինէր կատարումն սրբոց Ղեւոնդեանց ի Վարդէսն. և կարմիրն Վարդան յԱրտազական դաշտին պատերազմեալ կատարեցաւ ի Քրիստոս, որդւովն իւրով Զուրայիւ և այլ ազատովք։ Եւ սուրբն Սահակ փոխի ի Քրիստոս ի Բագրեւանդ գաւառ։ Արդ ի խաղաղանալ խռովութեանն Պարսից՝ յոյժ ուրախանային սուրբքն և աւր ըստ աւրէ յաւելուին ի ճգնութիւնն։

# ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ

---

*Եզնիկ՝ սրբոյն Սահակայ և Մեսրովպայ առաջին աշակերտներէն, և իր ուսումը։ — Թարգմանութիւնք և Եղծ աղանդոց գիրքը։ — Իր իմաստասիրական հմտութիւնը այդ երկասիրութեան մէջ։ — Աստուածաբանական ու հնախօսական գիտութիւնը։ — Անոր երկասիրութիւնք։ — Պատմական գրուածքի մը յիշատակութիւն և անոր քանի մը հատուածք։ — Արդիւնքը եւրոպական գիտութեան առջև և իր գրոց տպագրութիւնք և թարգմանութիւնք։*

Սրբոյն Սահակայ ու Մեսրոպայ երիցագոյն աշակերտներէն էր Եզնիկ Կողբացի, հմուտ՝ հայ, յոյն, պարսիկ և ասորի լեզուաց։ Անոր համար՝ ինչպէս նախընթաց գլխոյն մէջ տեսանք, հայկական դրոց գիւտէն ետքը՝ իր Յովսէփ աշակերտակցին հետ Ասորւոց Եդեսիա քաղաքը ղրկուեցաւ ՚ի սրբոյն Սահակայ, որպէս զի ասորի լեզուով գտնուած գրքերը՝ հայերէն տառերով գրեն կամ փոխադրեն. անկէ ետքը զիրենք Բիւզանդիոն ղրկելու միտք ունէր նոյն վախճանաւ. իրենք իրենցմէ գնացին հոն և սկսան թարգմանելու և գրելու ետևէ ըլլալ. և իրենց ուրիշ աշակերտակիցներուն պէս մեծ պատիւ գտան Բիւզանդիոնի Մաքսիմինոս հայրապետէն։

Իւր ուսմունքը Բիւզանդիոնի մէջ գովութեամբ կատարելէն ետքը՝ Հայաստան դարձաւ Եզնիկ միւս ընկերակցացը հետ մէկտեղ, և Տարոնոյ Աշտիշատ քաղաքը գալով, հոն գտաւ իւր վարդապետներն, ու Եփեսոսի ժո-

զօվոյն կանոններն, ու աստուածաշունչ գրոց «ստոյգ և հաստատուն» օրինակներն անոնց յանձնեց. և սուրբն Սահակ՝ Եզնըկայ մասնաւոր գործակցութեամբը՝ միանգամ թարգմանուածը նորէն կրկին թարգմանեց 'ի յունէ։

Եպիսկոպոսական աստիճանի ալ բարձրացած է Եզնիկ, և Բագրեւանդայ վիճակին հովիւ կարգուած. ուստի և Յովսէփ կաթուղիկոսին յԱշտիշատ գումարած ժողովքին մէջ ալ ներկայ գտնուեցաւ, ինչպէս կը վկայեն Եղիշէ և Փարպեցին։



Այլ և այլ թարգմանութիւններէն զատ՝ որ կամ պատմագրաց ստոյգ վկայութեամբը և կամ կարծեօք Եզնըկայ կ'ընծայուին, ինքնագիր գեղեցիկ երկասիրութիւն մըն ալ թողուցած է, որ թէ՛ հեղինակին և թէ իւր ժամանակին մեծ պատիւ կ'ընէ. և այս է Եղծ աղանդոց գիրքը։ Պարսկաստան սկսած էր այն ատենները 'իր վնասակար ազդեցութիւնը Հայաստանի վրայ տարածել. արքայից արքայք՝ իրենց կրօնական պարտք մը սեպած էին՝ անթագաւոր և իրենց հպատակ եղող Հայոց ազգը՝ Պարսից կրօնից աշակերտել. Նախարարաց մէջն ալ կը գըտնուէին ոմանք՝ որ երկրաւոր թագի մը ընծայած փառքը՝ աներևոյթ յոյսէ մը վեր դնելու սկսած էին։ Մէկալ կողմանէ-ալ յունական ուսումը սկսած էր մեր ազգին մէջ տարածուիլ. և այն պատճառաւ՝ ոչ միայն վարդապետական գրուածներ, այլ նաև հին դասական մատենագրութիւնք կը սկսէին ծանօթանալ Հայաստանի. և եպիսկոպոսաց և առաջնորդաց սիրտը իրաւացի վախ մը կը ձգէին՝ որ չըլլայ թէ ուսմանց հետ անանկ կարծիքներ ալ սպրդին 'ի Հայաստան՝ որ կրօնից վնասակար ըլլան։ Ասոնցմէ զատ՝ նաև քրիստոնական կրօնից ծոցէն ելած Մարկիոն մըն ալ սկսեր էր իւր աղանդը տարածել. և այնպիսի համաճարակ կերպով մը, որ վախ կու տար Հայաստանի մէջ ալ մուտ գտնելու։

Այս ամէն վնասուց առջեւն առնելու համար՝ շարագրեց Եզնիկ իւր Եղծ աղանդոց գիրքը, չորս մասն բաժնուած. և առանձին կերպով մը խօսելով Հեթանոսաց, Պարսից, Յունաց իմաստնոցը և Մարկիոնի աղանդոյն դէմ։ Հին իմաստնոց դէմ իմաստասէր լեզու, գրիչ և հանճար գործածելով. և անոնցմէ ամենէն աւելի զօրաւոր զէնքով մը, հաւատոց ճշմարտութեամբ՝ անոնց մոլորամիտ գրութիւններն եղծանելով։

* * *

Իր իմաստասիրական հմտութիւնը ցուցընելու համար՝ երեքի բաժնենք. 'ի Բնականս, յԱստղականս և 'ի բուն Իմաստասիրականս։ Բնական մակացութեանց մէջ՝ թերեւս մեր նախնեաց մէջ մէկը չկայ որ Եզնըկայ գիտութիւնն և հմտութիւնը ունենայ։ Մեր այս խօսքին վկայ կրնան ըլլալ իրեն ստոյգ վարդապետութիւնքը թէ՛ տարերաց և թէ բնութեան երևութից վրայ, և թէ տարբեր կերպով մտածողներուն կարծիքը հերքելուն մէջ։ Բաւական սեպենք՝ շատերէն մէկ քանի բան մէջ բերել։ Թէ որ իրմէն ուզենանք պատճառը հասկընալ թէ ինչո՞ւ արեւուն ծագելուն և մտնելուն ժամանակ կը կարմրանան երկինք, պատասխան կու տայ մեզի. Վասն զի, կ'ըսէ, արեւուն ծագելուն ատեն՝ օդը ջրոց խոնաւութիւնը առնելով՝ արեւուն ճառագայթիցը վրան կը ձգէ. և որովհետև դեռ օդը թանձրացած ու ամպացած չէ, քիչ մը արեւուն նշոյլքը արգիլելովը՝ արեւը կը կարմրացընէ ու չիմթընցըներ։ — Հարցընենք թէ առտուան ցօղը ի՞նչ բանէ առաջ կու գայ. կը պատասխանէ. Վասն զի, կ'ըսէ, օդը որ ինչուան առտու կ'ուռի (կը ծանրանայ) ջրոյն խոնաւութենէն, արեւուն ճառագայթից ջերմութիւնը վրայ հասնելով՝ թացութիւնը կը շքթեցընէ. ուստի չէ թէ միայն այն տեղը՝ հապա ամէն տեղ արեւուն ծագելուն ժամանակ ցօղ կ'իջնայ։ — Լուսնին չորս կողմը ե-

րևցած բակին պատճառաւ ալ կու տայ. լուսինը, կ՚ըսէ, օդին խոնաւութենէն նեղուելով՝ կ՚ուզէ խոնաւութիւնը իր վրայէն փարատել. ուստի խոնաւութիւնը մօտենալով ու իրեն չհասնելով՝ չորս կողմը կը կենայ. որով յայտնի կ՚ըլլայ անձրևին նշանը։ Նոյնը կ՚երևնայ, կ՚ըսէ, նաև ճրագին վրայ. և այլն։

* * *

Եզնըկայ Ուսողական հմտութեանցը վրայ չխօսած՝ պէտք է յիշեցընենք ընթերցողաց. թէ որովհետև գիտութեանց յառաջադիմութիւնը դարուց հոլովման ու շըրջանին արդիւնք է, կը հանդիպի երբեմն որ ուղիղ կարծուած դրութիւնք սխալի կերպարանք կ՚առնուն, և երբեմն սխալ երևցածներուն ուղղութիւնը կ՚երևնայ։ Ուստի հին մատենագրաց գիտութիւնը քննելու ատեն՝ մեր ժամանակաց գիտութիւնը պէտք չէ անոնց վրայ փնտռել, այլ մտքով ելլել անոնց դարը, ու այն ատենուան գիտութեանց չափովը զիրենք քննել։ Այս նկատմամբ այլ և այլ սխալ կարծիքներ ունի Եզնիկ, որ աւելի իր ժամանակին սխալները կրնան սեպուիլ։ Օրինակ իմն, սաստիկ կերպով կը հերքէ այն կարծիքը՝ որ դարեր անցնելէն ետքը հաստատութիւն գտաւ, թէ երկիրս արևուն վրայ իր ընթացքը կ՚ընէ. այլ նոյն շրջանը արևուն կու տայ, և իր կարծեաց հաստատութեան մէջ կը բերէ սուրբ գրոց այլ և այլ խօսքերը և դէպքերը, ինչպէս Յեսուայ՝ արևը իր շրջանէն կեցընելը, Եզեկիայի ժամանակ՝ Աքազու արևադէտ ժամացուցին ստուերին ետ դառնալը, և այլն։ — Երկրիս դրից ու շարժմանը վրայ՝ Յունաց հին իմաստունքը կատարեալ տեղեկութիւն ունէին. անոնց կարծեացը հմուտ էր Եզնիկ, բայց ժամանակին նախապաշարմունքը անկարելի կ՚ընէր թոյլ տալ իրեն՝ անոնց խօսիցը հաւանելու, նուիրական պարտք մը կը սեպէր ամէն ջանքովը դէմ կենալ այն կարծեաց որ հեթանոսաց գիտութեանցն արգասիք կը սեպուէին։

**ԳՆԻԹ**՝ Դերջանայ եպիսկոպոսը, որ 'ի Տաղագոմս իրենց ուսումը կատարող գլխաւոր աշակերտաց մէկն էր։

**ԱՐՁԱՆ** արծունի, որ ուրեք Արջեւան կամ Արղեւան ալ կոչուած է, ընկերակից Կորեան. և անշուշտ զատ է համանուն Արձան կամ Աղան արծրունիէն, զոր անանուն պատմիչ մը՝ կրտսերագոյն Թարգմանչաց կարգէն կը սեպէ։ Այս հաւաստի երիցագոյն և ուսմամբ հմտագոյն Արձանը՝ առաջին աշակերտաց մէկն է, որ Յովհաննու Եկեղեցացւոյն հետ Թարգմանութեան պատճառաւ գնաց 'ի Կեսարիա, որոնց համար կ'ըսէ Խորենացին. « Կանխագոյն առաքեալ էր (զնոսա) մեծին Սահակայ և Մեսրովպայ, որոց յուղարար ուղևորեալ և ծուլարար դեգերեալք՝ պարապեցան 'ի Կեսարիա »։

**ՍՏԵՓԱՆՈՍ** Տարօնացի. սրբոյն Մեսրովպայ աշակերտաց հետ յիշատակուած կը գտնենք հին յիշատակարանի մը մէջ. « Գտաք, կ'ըսէ, այլ պատմութիւն մի հնագոյն և անվրէպանելի, որ շարունակաբար անցուցեալ էր 'ի գիր զյաջորդութիւն սուրբ առաքելոյն Թադէոսի 'ի Կեսարիա Կապադովկացւոց վիճակին 'ի Թէոփիլոսէ աշակերտէ առաքելոյն, գրեալ հանդերձ ժամանակագրութեամբ. և անուն Նորին Ստեփանոս Տարաւնացի, որ էր աշակերտ սրբոյն Մեսրովպայ »[1]։

Ասոնցմէ զատ առաջին աշակերտաց կարգէն կը սեպուի Ղազարիկ կամ Ղազրիկ անունով մէկը, որ այլ է 'ի Փարպեցւոյն։

## Երկրորդ աշակերտք

Երկրորդ կարգի աշակերտք, որոնց վրայ՝ մեր գրոց մէջ բաւական պատմական ծանօթութիւն և անուանի երկասիրութիւններ գտնելնուս համար՝ մասնաւոր պիտի խօսինք, ասոնք են.

1. Արարատ, ամսագիր Էջմիածնի, Ա. տարի, 103։

*Դաւիթ Անյաղթ.*
*Գիւտ կաթողիկոս.*
*Յովհան Մանդակունի.*
*Եղիշէ.*
*Մովսէս Խորենացի.*
*Մամբրէ Վերծանող.*
*Ղազար Փարպեցի.*

*Եզրաս Անգեղացի, զոր ոմանք 'ի պատմըչաց Խորենացւոյ աշակերտ կը սեպեն, և որուն համար կ'ըսեն թէ « բազմացոյց զդասս ճարտասանաց »։*

*Ասոնցմէ զատ կը յիշատակուին անորոշ ժամանակաւ, և առանց ո՛ր դասուն վերաբերելնուն.*

*Խոսրով, որուն համար կը յիշատակուի թէ գրած ըլլայ զպատմութիւն վարուց սրբոյն Սահակայ հայրապետի և 'ի Նոր Ջուղա պահուած ձեռագրաց թուոյն մէջ կը յիշուի գիրք մը հետևեալ խորագրով. « Խոսրովայ Թարգմանչի՝ պատմութիւն սրբոյն Սահակայ »։ Ձեռագրաց ցուցակի մը մէջ ալ կը հանդիպինք (Մատենադարան Էջմիածնի, թիւ 920). « Արտասանութիւն Խոսրովկայ Թարգմանչի 'ի մեկնամարտութիւն Դաւթի և Գողիաթու ». և սկզբնաւորութիւնն է « Պատերազմական հանդիսից գումարք »։ Իրեն կ'ընծայուի դարձեալ Ջրօրհնեաց կանոնին թարգմանութիւնն 'ի յունէ։ Պատառիկ մը կայ առ մեզ « վասն կարգի կաթուղիկոսաց » խորագրով որ Խոսրովու կը կարծուի։*

*Յովհաննէս.*

*Աբրահամ կամ Աբէլ. Եղիշէ իր պատմութեան գրոց մէջ կը յիշէ զԱբրահամ խոստովանող՝ ընկեր Ղեւոնդեանց 'ի գերութեան։ Կը գտնենք տեղ մը հետևեալ համառօտ տեղեկութիւնն. « Արևելեան վկայից պատմութիւնք, որ թարգմանեցաւ յԱբրահամ խոստովանողէ, մինչ բանդարկեալ կայր 'ի Պարսիկս, 'ի պարսիկ լե-*

զուէ »։ Մեր մատենագրութեան մէջ, ինչպէս ծանօթ է բանասէր հմուտից, կայ համանուն երկասիրութիւն մը, արժանաւոր հինգերորդ դարու ոսկեղէն լեզուին, և որ արդէն հրատարակեալ է տպագրութեամբ. և յետոյ գըտնուած է նաև ամբողջն՝ ընտրելագոյն ընթերցուածովք[1]։ Արծրունին ալ կը յիշատակէ զԱբրահամ և իր պատմական երկասիրութիւնն. «Պատմի այս, կ'ըսէ, 'ի համառօտութեան Աբրահամու խոստովանողի ». Թէպէտ և իրմէ մէջ բերուած հատուածը չիվերաբերիր յառաջ յիշուած վկայաբանութեան. այլ մասն է Վարդանայ և իր առաջնորդութեամբ տրուած պատերազմին պատմութեան. «Պատահի յառաջ, կ'ըսէ, Նաւասպ Արծրունի. յորոյ վերայ կալեալ և կանչեալ քաջն Վարդան իբրև զառիւծ և զկորիւն առիւծու. և առ ուժոյ և երագութեան ձեռինն 'ի վերայ ձգեալ զմիզղնին՝ յերկուս կտրէ զՆաւասպն »։ Ուրիշ տեղ մ'ալ նոյն պատերազմին առթիւ. «Ի վեր կառուցեալ զաչս որբոյն Վարդանայ՝ տեսանէ զանօրէնն Վասակ Սիւնեաց տէր. և զհետ նորա անձապարեալ՝ արկանէ զնա 'ի յամբափակ զինեալ վաշտն 'ի մէջ փղացն. և քաջն Վահան Արծրունի ընդ նմա նիզակակցեալ մեռանին »։ Էջմիածնի Մատենադարանին ցուցակաց մէջ ալ կը հանդիպինք (Թիւ գրչ. 920). «Երանելւոյն Աբրահամու խոստովանողին ասացեալ 'ի վկայսն արևելից։ — Սկսայց այսուհետև պատմել դողալով զչարչարանս որ եկն 'ի վերայ ազգիս մերոյ »։

Անանիա.

Յովնաթան.

Խաչիկ կամ Խաչատուր.

Թաթուլ.

Անդրէաս. Անշուշտ զսա ակնարկէ գրչագիր մը հետևեալ խօսքերուն մէջ. «Իսկ Անոյ եպիսկոպոս դրանն

1. Ի շարս Հայկական Սոփերաց, Հատ. Ի։

տրքունի. և Անդրէաս վանական որ զերիս որդիս և զմի դուստր բդեշխին կնքեալ էր և որդիացուցեալ, այր երկիւղած յԱստուծոյ, որ եկեալ էր զկնի տիկնոջն յաշխարհէն Մամիկոնեանց՝ վանական ի Ղազարու վանաց ի յերկրէն Տարաւնոյ՝ և ինքն խարազնազգեստ և բոկագնաց եղեալ. սնեալ առ ոտս սրբոյն Սահակայ. և յաւերմանէն Հայոց անդ հասեալ խաղաղեալ կայր. քանզի բազում կործանումն էր հասեալ աշխարհիս Հայոց. յառ և աւար և ի սով և ի գերութիւն մատնեալ Պարսից. և Նախարարք Հայոց սպառեալ էին. և Յոյնք ոչ փախստեան տեղի տային գերեացն Հայոց. և ամուրք ոչ պահէին զտագնապեալսն. զի աստուածասաստ էր բարկութիւնն»։

Ու կ՚աւանդէ թէ սոյն երանելի այրն Անդրէաս կը փափաքէր սրբոյն Նունէի հետը տարած սուրբ խաչին նշանը՝ այլազգեաց նախատինքէն խալըսել։ Առ այն կը բըռնադատէր զինքն և Շուշանիկ տիկին, աղաչելով որ «փութանակի առցէ զսուրբ նշանն Նունէի և զայլ եւս բազում ոսկերս սրբոցն ի սրբոյն Գրիգորէ առ նա հասեալ նշխարքն և սպաս եկեղեցեաց և բազում խաչեր։ Զայն ամենայն առեալ և երթեալ բառնայր զխաչն Նունէի ի բլրէն. քանզի եկեալ մոգքն տագնապէին զտունն տուն կրակի կացուցանել։ Իսկ Ջոջիկ եղբայր բդեշխին օգնական լինէր տիկնոջն և Անդրիասու. և սպիտակափառ զարդուք զարդարէր զսուրբ նշանն. և բառնայր ի սպիտակ ջորիս և ի ձիս, և յղարկէր յարևմուտս կոյս, դադարէր ի յամուրս Խաղտեաց։ Իսկ սուրբն Անդրէաս ոչ հաւանեաց դադարել ի մէջ ամբոխին. առեալ զխաչն Նունէի և բնակեցաւ ի Սպեր գաւառի 'ի խորշ մի լերինն Պարխարու. և կացեալ անդ ամս եւթն՝ մինչև լուաւ զվաղճանն սրբոյն Շուշանկան։ Ապա այնուհետև ի տարակոյս եղեալ տագնապէր, եթէ զինչ արասցէ ընդ սուրբ նշանն Նունէի. և զայլ ոսկերս սրբոցն։ Յայնժամ յարուցեալ տեղեկանայր ի տունն Մամիկոնէից. եթէ ո՛ արդեաւք իցէ կենդանի. և ոչ զոք յընտանի Նախարարացն

գտանէր. ապա գտեալ զոմն մանուկ որդի Հմայեկի եղբաւր Վարդանայ, անուն Գրիգոր, որ բնակեալ ունէր մանուկն զամուրս Կապուտս լերին և զձորն Երասխա. և զփոքր Բասեան՝ որ այժմ կոչի Վանանդ. և զփոքր ամրոցն Կարնենեաց: Զայս իմացեալ Անդրիասու ցուցանէ նմա զամենայն: Իսկ երանելի մանուկն Գրիգոր ուրախացաւ յոյժ և համարեալ զզաւրս իւր առն և ձիոյ երեք հազարաց. ոչ զանգիտացեալ ի զաւրացն Յունաց որք կային ի Թէոդոսուպաւլիս, այլ առիւծաբար յարձակեալ ընդ մուտ ձորոցն Տայոց պատճառելով զիւր հաւրն Հմայեկի զնշխարսն գտանել. և անցեալ ի յամուրսն Պարխարու, հանդիպի իւրում ոտնչանացն: Եւ երանելի առն ծերոյն բացեալ զզանձս աստուածայինս, աւանդեաց Գրիգորոյ զամենայն. զի էր այրն մերձ ի վախճանել. և համբարձեալ զձեռս իւր՝ աւրհնեաց զնա և զնշխարս նորա: Եւ աղաչէր զԳրիգոր աստուածպաշտութեամբ և հայրենի ուղղութեամբ կալ. և ինքն փառս տուեալ Աստուծոյ աւանդեաց զհոգին. զի էր այր ծերացեալ և անցեալ ժամանակաւք. և բազում վիշտս յաղագս կործանման աշխարհիս Հայոց կրեալ »:

Վարոս. Յայսմաւուրաց մէջ կը կարդանք. « Սուրբն Վարոս՝ երէց եղբայրն Թաթլոյ՝ որ յետոյ Գիւտ կոչեցաւ, բնակեցաւ յանձաւս լերինն՝ որ կոչի Դիցմայրի. խոտաբուտ եղեալ և վայրի մրգօք շատանայր ժամանակս բազումս. մինչև գտեալ զնա արք ոմանք ըստ խնամոցն Աստուծոյ, և խնդութեամբ լցեալ անուանեցին զնա Գիւտ: Այլ զտեղի նորա շինեցին վանք, որ մինչև ցայսօր կոչի Գիւտի վանք »: Իսկ Թաթլոյ համար. « Էր փոխանորդ վարդապետութեամբ Թաթուլ սրբոյն Մեսրովբայ և Ղեւոնդի վարդապետացն Հայոց. որպէս ի կամսարականաց յիշէ պատմութիւն որ առաւել ասէ քան զՄեսրոպ և զԳառնիկ և զՂեւոնդ: Նաև երանելին Մովսէս քերթողահայրն, ի պատմութեան ուրեմն յիշէ և այսպէս ասէ. « Զայսու ժամանակաւ երանելին Թաթուլ՝ երկրորդ Անտոն. ընդ

վիշապս և ընդ գազանս բնակեալ ընտանենայր. և իբրև զանմարմին՝ մարմնով հանդիսանայր»։ և այլ ոչ ինչ աւելի քան զայսոսիկ գեղեցկագոյն հիւսէ պատմութիւնս։.. Բարձրագոյն այրն Աստուծոյ քրիստոսազգեաց ճգնաւորն Թաթուլ էր ի ժամանակս Թէոդոսի փոքու ծիրանազգեստ քրիստոսապսակեալ թագաւորին Հոռոմոց և Յազկերտի Պարսից արքայի. որ հակառակ Հայոց շարժեցաւ յազդմանէ չարին, և ի սուր և ի գերութիւն մաշեաց զերկիրս Հայոց։ Իսկ սուրբ Թաթուլ էր ծննդեամբ ի Բղբուջ գեղջէ. և անտի գնացեալ բնակեցաւ ի քաղաքագիւղն Տիկոր. որ մերձ է յարքայանիստն յԱնի. և պարապեալ ի վարժումն գրոց, սուրբ վարդապետութեամբ լուսաւորէ զբազումս. և շնորհք տուաւ նմա յԱստուծոյ՝ որպէս սրբոյն Մեսրոբայ. զոր բովանդակ որպիսութիւն գտանես ի պատմութեանն կամսարականաց։ Արդ ի սաստկանալ բարկութեան Պարսից առեալ զկրտսեր եղբայրն իւր զՎարոս՝ որ այժմ կոչի Գտուկ, յանապատ փութայր որպէս ի նաւահանգիստ. և եկեալ՝ ի տեղին որ կոչի Վիշապաձոր, բնակելով ի նմա խոտաբուտ ազնուութեամբ և մերկութեամբ... և այսպէս կացեալ բազում ժամանակս. և ապա առ սակաւ սակաւ խաղաղանայր բարկութիւնն Պարսից։ Ընդ այն ժամանակս լինէր կատարումն սրբոց Ղեւոնդեանց ի Վարդէսն. և կարմիրն Վարդան յԱրտազական դաշտին պատերազմեալ կատարեցաւ ի Քրիստոս, որդւովն իւրով Զուրայիւ և այլ ազատովք։ Եւ սուրբն Սահակ փոխի ի Քրիստոս ի Բագրեւանդ գաւառ։ Արդ ի խաղաղանալ խռովութեանն Պարսից՝ յոյժ ուրախանային սուրբքն և աւր ըստ աւրէ յաւելուին ի ճգնութիւնն։

# ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ

Եզնիկ՝ սրբոյն Սահակայ և Մեսրովպայ առաջին աշակերտներէն, և իր ուսումը։ — Թարգմանութիւնք և Եղծ աղանդոց գիրքը։ — Իր իմաստասիրական հմտութիւնը այդ երկասիրութեան մէջ։ — Մատենագրական ու հնախօսական գիտութիւնը։ — Մանր երկասիրութիւնք։ — Պատմական գրուածքի մը յիշատակութիւն և անոր քանի մը հատուածք։ — Արդիւնքը եւրոպական գիտութեան առջև և իր գրոց տպագրութիւնք և թարգմանութիւնք։

Սրբոյն Սահակայ ու Մեսրոպայ երիցագոյն աշակերտներէն էր Եզնիկ Կողբացի, հմուտ՝ հայ, յոյն, պարսիկ և ասորի լեզուաց։ Անոր համար՝ ինչպէս նախընթաց գլխոյն մէջ տեսանք, հայկական դրոց գիւտէն ետքը՝ իր Յովսէփ աշակերտակցին հետ Ասորւոց Եդեսիա քաղաքը ղրկուեցաւ 'ի սրբոյն Սահակայ, որպէս զի ասորի լեզուով գտնուած գրքերը՝ հայերէն տառերով գրեն կամ փոխադրեն. անկէ ետքը գիրենք Բիւզանդիոն ղրկելու միտք ունէր նոյն վախճանաւ. իրենք իրենցմէ գնացին հոն և սկսան թարգմանելու և գրելու եռանդեամբ. և իրենց ուրիշ աշակերտակիցներուն պէս մեծ պատիւ գտան Բիւզանդիոնի Մաքսիմինոս հայրապետէն։

Իւր ուսմունքը Բիւզանդիոնի մէջ գովութեամբ կատարելէն ետքը՝ Հայաստան դարձաւ Եզնիկ միւս ընկերակցացը հետ մէկտեղ, և Տարօնոյ Աշտիշատ քաղաքը գալով, հոն գտաւ իւր վարդապետներն, ու Եփեսոսի ժո-

ժողովոյն կանոններն, ու աստուածաշունչ գրոց « ստոյգ և հաստատուն » օրինակներն անոնց յանձնեց. և սուրբն Սահակ՝ Եզնըկայ մասնաւոր գործակցութեամբը՝ միանգամ թարգմանուածը նորէն կրկին թարգմանեց 'ի յունէ ։

Եպիսկոպոսական աստիճանի ալ բարձրացած է Եզնիկ, և Բագրեւանդայ վիճակին հովիւ կարգուած. ուստի և Յովսէփ կաթուղիկոսին յԱշտիշատ գումարած ժողովքին մէջ ալ ներկայ գտնուեցաւ, ինչպէս կը վկայեն Եղիշէ և Փարպեցին ։

*
* *

Այլ և այլ թարգմանութիւններէն զատ՝ որ կամ պատմագրաց ստոյգ վկայութեամբը և կամ կարծեօք Եզնըկայ կ'ընծայուին, ինքնագիր գեղեցիկ երկասիրութիւն մըն ալ թողուցած է, որ թէ՛ հեղինակին և թէ իւր ժամանակին մեծ պատիւ կ'ընէ. և այս է Եղծ աղանդոց գիրքը ։ Պարսկաստան սկսած էր այն ատենները իր չնաշակար ազդեցութիւնը Հայաստանի վրայ տարածել. արքայից արքայք՝ իրենց կրօնական պարտք մը սեպած էին՝ անթագաւոր և իրենց հպատակ եղող Հայոց ազգը՝ Պարսից կրօնից աշակերտել. Նախարարաց մէջն ալ կը գտնուէին ոմանք՝ որ երկրաւոր թագի մը ընծայած փառքը՝ աներևոյթ յոյսէ մը վեր դնելու սկսած էին ։ Մէկալ կողմանէ ·ալ յունական ուսումը սկսած էր մեր ազգին մէջ տարածուիլ. և այն պատճառաւ՝ ոչ միայն վարդապետական գրուածներ, այլ նաև հին դասական մատենագրութիւնք կը սկսէին ծանօթանալ Հայաստանի. և եպիսկոպոսաց և առաջնորդաց սիրտը իրաւացի վախ մը կը ձգէին՝ որ չըլլայ թէ ուսմանց հետ անանկ կարծիքներ ալ սպրդին 'ի Հայաստան՝ որ կրօնից չնաշակար ըլլան ։ Ասոնցմէ զատ՝ նաև քրիստոսական կրօնից ծոցէն երևցած Մարկիոն մըն ալ սկսեր էր իւր աղանդը տարածել. և այնպիսի համաճարակ կերպով մը, որ վախ կու տար Հայաստանի մէջ ալ մուտ գտնելու ։

Այս ամէն վնասուց առջեւն առնելու համար՝ շարադրեց Եզնիկ իւր Եղծ աղանդոց գիրքը, չորս մասն բաժնուած. և առանձին կերպով մը խօսելով Հեթանոսաց, Պարսից, Յունաց իմաստնոցը և Մարկիոնի աղանդոյն դէմ։ Հին իմաստնոց դէմ իմաստասէր լեզու, գրիչ և հանճար գործածելով. և անոնցմէ ամենէն աւելի զօրաւոր զէնքով մը, հաւատոց ճշմարտութեամբ՝ անոնց մոլորամիտ դրութիւններն եղծանելով։

* * *

Իր իմաստասիրական հմտութիւնը ցուցընելու համար՝ իրեքի բաժնենք. 'ի Բնականս, յՈւսողականս և 'ի բուն Իմաստասիրականս։ Բնական մակացութեանց մէջ՝ թերեւս մեր նախնեաց մէջ մէկը չկայ որ Եզնըկայ գիտութիւնն և հմտութիւնը ունենայ։ Մեր այս խօսքին վկայ կրնան ըլլալ իրեն ստոյգ վարդապետութիւնքը թէ տարերաց և թէ բնութեան երեւութից վրայ, և թէ տարբեր կերպով մտածողներուն կարծիքը հերքելուն մէջ։ Բաւական սեպենք՝ շատերէն մէկ քանի բան մէջ բերել։ Թէ որ իրմէն ուզենանք պատճառը հասկընալ թէ ինչո՞ւ արեւուն ծագելուն և մտնելուն ժամանակ կը կարմրանան երկինք, պատասխան կու տայ մեզի. Վասն զի, կ'ըսէ, արեւուն ծագելուն ատեն՝ օդը ջրոց խոնաւութիւնը առնելով՝ արեւուն ճառագայթիցը վրան կը ձգէ. և որովհետև դեռ օդը թանձրացած ու ամպացած չէ, քիչ մը արեւուն նշոյլքը արգիլելովը՝ արեւը կը կարմրացընէ ու չիմթընցըներ։ — Հարցընենք թէ առտուան ցօղը ի՞նչ բանէ առաջ կու գայ. կը պատասխանէ. Վասն զի, կ'ըսէ, օդը որ ինչուան առտու կ'ուռի (կը ծանրանայ) ջրոյն խոնաւութենէն, արեւուն ճառագայթից ջերմութիւնը վրան հասնելով՝ թացութիւնը կը շքթեցընէ. ուստի չէ թէ միայն այն տեղը՝ հապա ամէն տեղ արեւուն ծագելուն ժամանակ ցօղ կ'իջնայ։ — Լուսնին չորս կողմը ե-

րեւցած բակին պատճառաւ ալ կու տայ. լուսինը, կ'ըսէ, օդին խոնաւութենէն նեղուելով՝ կ'ուզէ խոնաւութիւնը իր վրայէն փարատել. ուստի խոնաւութիւնը մօտենալով ու իրեն չհասնելով՝ չորս կողմը կը կենայ. որով յայտնի կ'ըլլայ անձրեւին նշանը։ Նոյնը կ'երեւնայ, կ'ըսէ, նաեւ ճրագին վրայ. և այլն։

*
* *

Եզնըկայ Ուսողական հմտութեանցը վրայ չխօսած՝ պէտք է յիշեցընենք ընթերցողաց. թէ որովհետեւ գիտութեանց յառաջադիմութիւնը դարուց հոլովման ու շրջանին արդիւնք է, կը հանդիպի երբեմն որ ուղիղ կարծուած դրութիւնք սխալի կերպարանք կ'առնուն, և երբեմն սխալ երեւցածներուն ուղղութիւնը կ'երեւնայ։ Ուստի հին մատենագրաց գիտութիւնը քննելու ատեն՝ մեր ժամանակաց գիտութիւնը պէտք չէ անոնց վրայ փնտռել, այլ մտքով ելլել անոնց դարը, ու այն ատենուան գիտութեանց չափովը զիրենք քննել։ Այս նկատմամբ այլ և այլ սխալ կարծիքներ ունի Եզնիկ, որ աւելի իր ժամանակին սխալները կրնան սեպուիլ։ Օրինակ իմն, սաստիկ կերպով կը հերքէ այն կարծիքը՝ որ դարեր անցնելէն ետքը հաստատութիւն գտաւ, թէ երկիրս արեւուն վրայ իր ընթացքը կ'ընէ. այլ նոյն շրջանը արեւուն կու տայ; և իր կարծեաց հաստատութեան մէջ կը բերէ սուրբ գրոց այլ և այլ խօսքերը և դէպքերը, ինչպէս Յեսուայ՝ արեւը իր շրջանէն կեցընելը, Եզեկիայի ժամանակ՝ Աքազու արեւադէտ ժամացուցին ստուերին ետ դառնալը, և այլն։ — Երկրիս դիրից ու շարժմանը վրայ՝ Յունաց հին իմաստունքը կատարեալ տեղեկութիւն ունէին. անոնց կարծեացը հմուտ էր Եզնիկ, բայց ժամանակին նախապաշարմունքը անկարելի կ'ընէր թոյլ տալ իրեն՝ անոնց խօսիցը հաւանելու, նուիրական պարտք մը կը սեպէր ամէն ջանքովը դէմ կենալ այն կարծեաց որ հեթանոսաց գիտութեանցն արգասիք կը սեպուէին։

Աստեղագիտաց կամ հմայից վրայ խօսելու առենը՝ մեծ ճարտարութեամբ և հանճարով կը հերքէ անոնց բաջաղանքը· ոչ միայն Պարսից օրինաց հետևողքը ըմբերանելով, այլ նաև ինչուան յետին դարուց ճակատագրականքը։

Բնազանցականին մէջ ուրիշ ամէն մասերէն աւելի յայտնի և որոշ կ՚երևնայ Եզնիկայ հմտութիւնը։ Կարդացողն կը տեսնէ թէ ինչ զօրաւոր ապացոյցներ ու հաւաստիք մէջ կը բերէ Աստուծոյ գոյութեանն ու անոր ստորոգելեացը· չէ թէ միայն աստուածաբանական ցուցկութեամբք հաստատելով իր խօսքերը, այլ նաև բնական ու անհակառակելի փաստեր մէջ բերելով, և երբեմն ալ նոյն իսկ հեթանոսաց առասպելներովը՝ անոնց կրօնքին ստութիւնը, ու աստուածաւանդ հաւատոց ճշմարտութիւնը հռչակելով։ Նոյնպէս երբոր Յունաց իմաստնոց և անոնց կարծեացը վրայ կը խօսի, կարգէ դուրս հմտութիւն մը կը ցուցընէ անոնց տեսակ տեսակ վարդապետութեանցը· համառօտ կերպով մը անոնց ուղիղ կամ թիւր տեսութիւնքը կը զանազանէ, ու զօրաւոր լեզուով մը անոնց պատասխանը կու տայ [1]։

* * *

Մատենագրական հմտութեանց նկատմամբ՝ առաջինն է Եզնիկայ լեզուին գեղեցկութիւնը։ Երեք ազգ գեղոյ կը նկատենք Եզնիկայ գրոցը մէջ· նախ բառից ճշգրիտ նշանակութեամբ· երկրորդ՝ զուրցուածքի գեղեցիկ կերպովը, և երրորդ՝ ընտիր դասաւորութեամբ։

Հնախօս գիտութեանց մէջ՝ յազգային մատենագիրս նշանաւորներէն մէկը կրնայ սեպուիլ Եզնիկ։ Հաւասար

1· Եպիփանու Հերձուածոց դէմ գրած մատենին մէջ՝ շատ տեղ Պարսից աղանդոյն և Մարկիոնի դէմ խօսած առենն՝ համաձայն կը դըտնենք զնա ընդ Եզնկայ։

գիտութիւն կը ցուցընէ թէ հայրենի և թէ օտար հնութեանց։ Աղջիններուն կարգէն կրնան սեպուիլ՝ արուեստից սկզբանը, ցլու արեանը, թերիակէին, մանրագորին, հազարին, և այլն, վրայ տուած տեղեկութիւններն։ Նոյնպէս Արալէզին, վիշապազանց, Արտաւազդայ, ծովային նհանգաց վրայ խօսելու, և մարմնոց բնական ազդեցութեանց վրայ ազգային գուշակութիւններն մէջ բերելուն ատեն։ Իսկ օտար ազգաց հնախօսութեանը մէջ ունեցած գիտութիւնը յայտնապէս կը ցուցընէ Եզնիկ՝ երբոր Պարսից առասպելաց, անոնց կրօնական արարողութեանցը, զանդիկ և մոգութեան կրօնից, Նախնի Յունաց, Հերակլեան արձանաց և անոնց վրայ եղած գրուածոցը, Հեսիոդեայ, Հոմերոսի և Պղատոնի վրայ կը խօսի։

* * *

Եզնըկայ խրատք անուամբ ընտիր խրատներ կան, հեզինակին արժանի լեզուով ու սրտով գրուած․ բայց որովհետև անոնք Նեղոսի սուրբ հօրն սկզբնագիր երկասիրութիւնք համարուած էին, ուստի հաւանականաբար թարգմանիչ է Եզնիկ այն խրատուց, և անոր մէկ մասը իրեն ընծայուած։

Եզնըկայ Կողբացւոյն անուամբ ձեռագրաց մէջ երկու համառօտ երկասիրութիւնք ալ գտնուած են հետևեալ խորագրովք․ — Ա․ « Հարցումն Արձանայ և պատասխանիք Եզնըկայ Կողբացւոյ ուղղափառ վարդապետի »։ — Բ․ Հարցումն Աշոտոյ որդւոյ Սմբատայ և պատասխանի Եզնըկայ Կողբացւոյ Հայոց վարդապետի »։ Հրատարակողք կը ծանուցանեն վասն առաջնոյն․ (Մասեաց աղաւնի, Զ տարի 125, 166)․ « Ընտիրս այս նշխար երկասիրութեանց Արձանայ Արծրունւոյ մերոյն թարգմանչի և հօգևլից վարդապետին Եզնըկայ... հանեալ է 'ի գրչագիր մատենէ թուագրելոյ յամին ԶԽԱ։ — Մեզ ոչինչ

բնաւ կասկածելի է հարազատութիւն հատուածոյդ, զի և բանիցն գեղեցկահիւս շարամանութիւն և բառիցն յըստակութիւն զնոյն յայտ առնեն»: Իսկ երկրորդին համար. «Թէպէտ և գրուածքին յստակ և գեղեցիկ ոճը յայտնապէս կը ցուցընէ որ հին և ընտիր մատենագրութեան կտոր է այս, բայց վերնագրին մէջ ժամանակի անյարմարութիւն մը կայ՝ որոյ պատճառը հասկընալ շատ դժուար է: Վասն զի Աշոտ որդի Սմբատայ, որ է անշուշտ Բագրատունեաց ցեղէն մեր առաջին թագաւորը, որդին Սմբատայ Խոստովանողի, թագաւորեց 883էն մինչև 889 թուականը. իսկ Եզնիկ Կողբացի (եթէ մեզի ծանօթ սուրբ թարգմանիչն է) 430ի ատենները ծաղկած էր. ուստի և գրեթէ չորս հարիւր յիսուն տարի յառաջ է քան զԱշոտ թագաւոր: Հարկ է ուրեմն ըսել թէ կամ այս վերնագրին անուանցը մէջ սխալ մը կայ, և կամ մեր Աշոտ առաջին թագաւորին ատենն ալ Եզնիկ Կողբացի անունով վարդապետ մը կայ եղեր՝ առաջնոյն անուանակից և հետևող. բայց այս երկրորդ կարծիքը մեզի ալ հաւանական չերևիր: Թերևս չենք սխալիր ըսելով թէ հաւանական է որ այս հատուածը Համամ վարդապետի գրուածներէն է, որ Աշոտոյ ժամանակակից էր, և այն ատենի մատենագրաց մէջ իւր յստակ և համառօտախօս ոճովը անուանի»:

Ասոնցմէ զատ կը գտնենք 'ի ձեռագիրս նաև հետևեալ քանի մը հատուածներն. «Եզնըկայ Կողբացւոյ Հայոց վարդապետի վասն պատրաստութեան հաղորդողաց: — Եզնականն ասացեալ վասն արարչութեան: — «Սահմանադրութիւն կարգաց[1] ընկալեալ 'ի նահատակէն տեառնէ Գրիգորէ. թարգմանեցաւ ընդ ձեռն Եզնակայ՝ հրամանաւ Երանելոյն Սահակայ Եպիսկոպոսապետին Հայոց, և նորին Արքայակցաց, թէ որպէս սահմանեցաւ կարգ ուխտի

1. Արարատ, ամսագիր Էջմիածնի, 1875, յէջ 446:

և որոշումն վանից» ։ — Յաղագս որոշման զանազան հերձուածոց ։

Ճառընտրաց մէջ կը գտնուին երկու հատուածք ճառից՝ խորագիր կրելով. «Եզնըկայ առ սուրբն Մաշդոց» ։ Նոյն գրոց մէջ քանի մը ուրիշ անհարազատ երկասիրութիւններ ալ կան Եզնկայ անուամբը, համառօտ և իրեն գիտութեանը և հանճարոյն ոչ այնչափ արժանաւոր, որոնց համար պիտի ըլլայ անշուշտ յետին պատմագրաց մէկուն, Կիրակոսի, ըսելը Եզնըկայ համար, թէ «խօսս յոլովս եթող յօգուտ լսողաց» ։

*
* *

Պատմական գրուածքի մը՝ ու անկէ քանի մը կցկտուր հատուածոց յիշատակութիւնը կը գտնենք Եզնկայ անուամբ առ Ստեփանոսի Ռոշքեան Կամենիցացւոյ, իր հմուտ Բառագրոց կարգին մէջ ։ Չենք կրնար որոշակի զըրուցել թէ արդեօք Կողբացւո՞յն է թէ ուրիշ համանուն և ժամանակաւ կրտսերագոյն անձի մը ։ Իբրև հետաքըննութեան արժանաւոր նիւթ՝ այս հատուածներն կ՚ամփոփենք ։

« Ետես խարտեաշ և զգիսակաւոր մանուկ » ։

« Կայր մանուկն ընդ ողին անկեալ » ։

« Աղէ. Թախանձ մեր եղեր խնդրելոյ զայսքան խըրատս » ։

« Որպէս քարինք առ ջուրս լռանան, նոյնպէս և որք 'ի մեղս են » ։

« Հարին զսուրբն խթանաւոր վարոցաք » ։

« Առաւել գտաւ քան զհամալսականն Պղատոն » ։

« Պատուեն զնա հիւրընծայիւք » ։

« Ասեն ղշանգլուխ խոտն դեղ տապաստի » ։

« Հեծաւ յաստնաւոր ձի, բայց 'ի թօթափելոյն խօթացաւ » ։

« Մի՛ ոք կեցցէ չարակամաբար ընդ ընկերին » ։

# ԿՈՐԻՒՆ

Կորիւն 'ի դասուն առաջին թարգմանչաց։ — Իրմէ շարադրուած կենսագրական գրուած մը։ — Իր ոճը։ — Ագաթանգեղոսի և Բիւզանդայ գրոց հետ նմանութիւնք։ — Տպագրութիւնք և թարգմանութիւնք։

Առաջին թարգմանչաց դասէն էր նաև Կորիւն, որ Եզնկայ ու Յովսեփայ Պաղնացւոյ Բիւզանդիոն եղած ատեն՝ Ղևոնդեայ հետ հոն ղրկուեցաւ թարգմանութեանց պարապելու, ու ետքը Ընձակայ հետ Երուսաղէմ գնաց, ուսկից սրբոյն Կիւրղի Երուսաղեմացւոյ աշխատասիրած Ապաշխարող արձըկելու կարգը բերաւ։

Սրբոյն Մեսրովպայ ձեռքով Վրաց աշխարհքը գրով, գիտութեամբ և հաւատքով լուսաւորուելէն ետքը, Սահակ Հայրապետ զԿորիւն Վրաց եպիսկոպոս ձեռնադրեց, և անշուշտ այն պաշտաման մէջ իւր կեանքը կնքեց․ որովհետև աւելի տեղեկութիւն մը չեն ընծայեր մեզի ժամանակակիցք իւր վարուցը և զբաղմանց վրայ։

Զանազան թարգմանութիւններէն զատ՝ իւր վարդապետին, սրբոյն Մեսրովպայ պատմութիւնը շարագրած է Կորիւն։ Այս աշխատասիրութեան՝ որ իւր ժամանակին գրաւորական պատմութեանը վրայ մեծ լոյս կը ծաւալէ, զինքն յորդորած են սուրբն Յովսէփ կաթուղիկոս և իւր ուրիշ աշակերտակիցներն․ որոնք այլ և այլ աշխարհքներ իրենց ուսումը կատարելէն ետքը դարձան 'ի Հայաստան ու տեսան որ արդէն վախճանած էին իրենց և ընդհանուր հայրենեաց բարերար վարդապետներն, ու

զԿորիւն աղաչեցին՝ որ անշուշտ անոնց կենաց վերջի տարիներն 'ի Հայաստան կը գտնուէր, սրբոյն Մեսրովպայ վարքը գրել։

Կորիւն ալ յանձն առաւ ու շարագրեց, «ոչ եթէ, ինչպէս կ'ըսէ, 'ի հին համբաւուց տեղեկացեալ, այլ որոց մեր իսկ ականատես եղեալ կերպարանացն, և առընթերակաց հոգևոր գործոցն, և լսող շնորհապատում վարդապետութեանն, և նոցին արբանեակք ըստ աւետարանական հրամանացն»։

Սրբոյն Մեսրովպայ ամբողջ կենսագրութիւնը չի կրնար տեղուիլ այս գրուածքը. վասն զի Մեսրովպ կրկին վեճակ կենաց ունեցած է. մէկը 'ի դրան արքունեացն Հայոց՝ պատուեալ իշխանական պաշտամամբ, մէյմ'ալ առ Սահակայ հայրապետի։ Կորիւն իւր վարդապետին կենացը առաջին մասնին վրայ՝ ամենևին, կամ խիստ քիչ տեղեկութիւն կ'աւանդէ. և իւր այս զանցառութեան պատճառը՝ ինքը մէջ կը բերէ. «Ոչ սուտապատում, կ'ըսէ, ճարտարախօս եղեալ, առ 'ի մերոց բանից զհօրէն իմոյ կարգեցաք, այլ զյաճախագոյնն թողեալ, և 'ի նշանադիմակացն քաղելով զհամառօտսն կարգեցաք. որք ոչ միայն մեզ՝ այլ և որք զատեանսն ընթեռնուն՝ յայտնի է։ Քանզի չէաք իսկ հանդուրժողք զամենայն արարեալսն կտակաւ գիւրաքանչիւրսն, այլ 'ի դիւրագոյն և 'ի հեշտագոյնս՝ յառաքելական անդր զանձինս պատսպարեցաք, որոց անցեալ զբազմախուռն օրգասեօք սրբոցն՝ առ 'ի մանրակրկիտ առնելոյ զկարևորագոյնս պատմելոյ ըղհանգամանս՝ ասացաք»։ Հեղինակին այս մութ խօսքերը հետևեալ կերպով կրնանք պարզել, թէ միայն սրբոյն Մեսրովպայ հոգևորական աշխատանացը ու վարդապետութեանց վրայ խօսեցանք. իսկ այն գործերուն վրայ՝ որ իւր աշխարհիկ կամ զինուորական կենացը կը վերաբերին, և որոնք շատ են, լռեցինք. որովհետև այն գործերը չէ թէ միայն մեզի, այլ նաև ատեանը կարդացողաց յայտնի են։

Իսկ սորոյն կենացը երկրորդ մասին վրայ՝ բաւական ընդարձակ ու յագեցուցիչ կերպով կը խօսի Կորիւն, տեղն 'ի տեղը և իրեն յատուկ ոճով մը պատմելով այն մեծ մարդուն ձեռքովը Հայաստանի մէջ եղած մտաւոր լուսաւորութեան արդիւնքը:

*
* *

Իրեն յատուկ ոճով մը ըսինք, որովհետև ընդհանրապէս ընտիր ու հայկաբան լեզուի հետ՝ մութ ու խրթին դարձուածներ կը բանեցընէ, որոնցմով իր խօսքերը շատ տեղ անիմանալի կը մնան: Այս թերութիւնը՝ թերևս գրչագրաց ալ թերութիւն է, որոնք շատ տեղ, ինչպէս նաև ուրիշ զանազան գրուածներ, ասանկ ալ Կորեան այս երկասիրութիւնը՝ ուզածնուն պէս համառօտեր են, առանց գիտնալու կամ ուզենալու մտադրութիւն ընել թէ պակսած կտորը՝ մնացածին հետ անմիջական վերաբերութիւն ունենալովը, այն պակասը մեծ վնաս՝կը բերէ գրուածին ամբողջութեան:

Ասանկ Մեսրովպայ ձեռքով եղած Վրաց դպրութեան գիւտը՝ պատմելէն ետքը կը յաւելու. «Եւ արդ զնոսա որ յայնչափ 'ի մասնաւոր և 'ի բաժանեալ լեզուաց ժողովեցան, միով աստուածաբարբառ պատգամօքն մի ազգ կապեալ՝ փառաբանիչք միոյ Աստուծոյ յօրինէր. յորոց և իմ անարժանիս եղեալ 'ի կարգ՝ եպիսկոպոսութեան վիճակ»: Հոս խօսքին կարգը մէկմէկ չբռնելով՝ պակասութիւն մը կ'ենթադրէ: Այսպէս ուրիշ զանազան տեղուանք ալ՝ զորս աւելորդ կը սեպենք մի առ մի նշանակել:

Ագաթանգեղոսի և Բիւզանդայ գրոց հետ շատ նմանութիւն ունի Կորեան այս գիրքը, մանաւանդ առջինին. ուսկից ամբողջ խօսքի հատուածներ մէջ կը բերէ: Վասն որոյ ոմանք համարեցան թէ այն գրոց թարգմանիչն եղած ըլլայ Կորիւն, և այն է պատճառը այնչափ նմա-

նութեան։ Բայց մենք որովհետեւ այն կարծիքն ունինք թէ Ագաթանգեղոս և Բիւզանդ սկզբնագիր երկասիրութիւնք են, ուստի անոնց շատ ընթերցմանը արդիւնք կը սեպենք այն նմանութիւններն։

Այս հատուածներէն մէկ երկու գլխաւորն մէջ բերենք։

« Եւ զի ըստ օրինակի գրեցելոցս առ 'ի մէնջ հարքըն 'ի կափարուածս դարձան, ոչ եթէ 'ի հին համբաւուց տեղեկացեալ և մատենագրեալ զայս կարգեցաք, այլ որոց մեզ իսկ ականատես եղեալ կերպարանացն, և առընթերակաց հոգևոր գործոցն, և լսող չնորհապատում վարդապետութեանն », և այլն։

« Որոց անցեալ զբազմախուռն արգասեօք սրբոցն, առ 'ի մանրակրկիտ առնելոյ, զկարևորագոյնսն և զօգտակարագոյնսն պատմել։ Ուստի և մեր առեալ հանգոյն ասացաք, ոչ 'ի պատիւ ընտրելոց Քրիստոսի, որք ամենապարծ և կենդանատուր խաչին ծանուցեալք յարգեցան․ այլ յօրինակ քաջալերիչ հոգևոր ծննդոց իւրեանց՝ նոքա պատմելոց իցեն յազգս ազգաց, ըստ բանի հոգևորական երգչին՝ որպէս ասէ․ Զի զոր ինչ միանգամ պատուիրեաց հարցն՝ ցուցանել զայս որդւոցն, զի ծանիցէ ազգ այլ․ որդիք որ ծնանիցին յարիցեն և պատմեսցեն որդւոց իւրեանց, զի դիցեն առ Աստուած զյոյս իւրեանց »։

Մեր տպագրին (1833) յէջ 1․ « Եկեալ հասանէր առ իս հրաման »․․, հատուածը կը գտնուի առ Ագաթանգեղայ յ'էջ․ 20 (տպ․ 1862)։

Ց'էջն 7․ « Ամենայն կրթութեան հոգևորացն զանձն տուեալ միաւորութեամբ, լեռնակեցութեան․․․ առ Ագաթանգեղ։

Ի նոյն էջ 7․ « Առեալ այնուհետեւ երանելոյն զհաւատացեալս իւր․․․ առ Ագաթանգ․։

Կորեան պատմութիւնն տպագրուած է 'ի Վենետիկ 'ի չորս գործոց նախնեաց (1833)․ գարձեալ ուրիշ հին օրինակէ 'ի կարգի Սոփերաց (1854) ընտրելագոյն ընթերցուածովք։ Գերմաներէն թարգմանութեամբ հրատարակեց հայագէտն Վելթէ 'ի Թիւպինկէն (1841) 'ի քսանեհինգամեակի թագաւորութեան Գուլիելմոսի Ա թագաւորին Վիւրթեմպէրկի (Goriun's Lebensbeschreibung des bl. Mesrob): Գաղղիական թարգմանութիւնն ալ 'ի Հաւաքման հին և նոր պատմագրաց Հայոց Լանկլուայի, (Հատ. Բ.), Goriun : Biographie du bienheureux et saint docteur Mesrob, traduite pour la première fois en français, par Jean-Raphael Emine.

## ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ

---

*Դաւիթ Անյաղթ 'ի թուոյ կրտսերագոյն թարգմանչաց։ — Իր ուսումն և համբաւ առ Յոյնս։ — Գրաւոր երկասիրութիւնք։ — Ներբող 'ի սուրբ խաչն։ — Սահմանաց գիրք։ — Թարգմանութիւնք։*

Մովսէսի Խորենացւոյն քեռորդի էր Դաւիթ, Տարօնոյ մօտ Հարք գաւառին Հերեթ կամ Հերեան գիւղէն, և կամ ըստ այլոց՝ Ներգին աւանէն, ուստի է Ներգինացի կոչուած [1]։

Սահակայ ու Մեսրովպայ ձեռքով ընտրուած վաթսուն փափկաձայն, ուշեղ և երկարոգի աշակերտաց դասէն էր Դաւիթ, և կամ անոնց վերջիններէն մէկը․ բայց իւր ուսմամբը անոնց հաւասարած, և մանաւանդ իմաստասիրութեամբը մէջերնէն ամենէն աւելի գերազանց

1․ Գրչագրի 'մը մէջ կը գտնենք Անյաղթի համար՝ թէ «էր ի Հարթըն գաւառէ և ի Հերեթն գեղջէ»։

Նրբեցած. ուստի և իրեններէն, և անոնցմէ՝ ուր ուսմանցը ընթացքն կատարելագործեց գովութեամբ, մերթ Անյաղթ կոչուած, իբրև թէ անհաւասար, և ամենէն վեր իւր գիտութեամբը, և մերթ Աստուածասէր իւր բարեպաշտութեանը համար, և առհասարակ յամենեցուն Իմաստասէր կամ փիլիսոփայ կոչուած, և երբեմն նաև Ամենագիտոն, եռամեծ փիլիսոփայ. և պատճառը կու տայ Շնորհալին հետևեալ խօսքերով. «Ունիմք սովորութիւն փիլիսոփայ ասել, որ յերաժշտական արուեստի կատարեալք են. այսպէս և Դաւիթ՝ ոչ միայն փիլիսոփայ, այլ յաստուածեղէն և յարտաքին հրահանգս անթերի և լիապատար էր, նորին աղագաւ կոչի փիլիսոփայ, զպատիւն զեկուցանելով»։



Այնչափ մեծանուն հանդիսացաւ Դաւիթ իւր իմաստասիրական ուսմամբքը, որ ինչուան Յոյնք՝ այնպիսի պարծանք մը չուզելով իրենցմէ օտարացընել, որովհետև Դաւիթ այլ և այլ երկասիրութիւններ ունի յոյն լեզուով շարագրած, ուստի իրենցմէ մէկը ուզեցին սեպել զանիկայ։ Ազգային յիշատակարանք կ'աւանդեն (թէ և աւելի պարծենկոտութեամբ քան ստուգութեամբ) թէ Դաւիթ 'ի Կոստանդնուպոլիս գտնուած ժամանակը՝ այլ և այլ ընդդիմադրութիւն ունեցած է փիլիսոփայական, ոմանք կ'ըսեն նաև հաւատոյ խնդրոց վրայ, Մարկիանոս թագաւորին արքունեացն իմաստասիրաց հետ, որք իրենց գիտութեամբը նշանաւորք էին. այսինքն Յոբնաղայ, Մելիտոսի, Մամբրէի եպիսկոպոսի և անոնց նմանեացը հետ. ու երբ իւր քեռւոյն Մովսէս Խորենացւոյն հետ արքունական պալատը երևցան, ամէնքը իրենց աչքը անոնց վրայ դարձուցին. «վասն զի, կ'ըսէ պատմիչն, էին ծերացեալ, կերպարանքն և խօսքն աթենացիք. զի երեսուն տարի էին յԱթէնս»։ Ու երբ Յոբնաղ անոնց իմաստու-

թիւնը կ'արհամարհէր, Մովսէս իրաւացի պարծանքով մը զինքն յանդիմանելով կը գրուցէր. «Ո՞վ Ցորնաղ, ճանաչե՞ս զիս. Մովսէս եմ, և սա Դաւիթ. բազում դպրութեան ազգաց հմուտ և պարծանք Աթենացւոց, կենդանեաց և գերեզմանաց, եւ առաւել Հայոց աշխարհին»։

Մարկիանոս թագաւորն հրամայեց որ իւր իմաստնոցը հետ խօսի Դաւիթ. «Եւ յարեաւ, կ'ըսէ պատմիչն, յաղթող և քաջ սպառազէնն Դաւիթ. եկաց յոտին առաջի բազմութեանն՝ որպէս զամուր լեառն երկաթի»։ Ու երբ այնպիսի պատրաստութեան արժանի հանճարով ու լեզուով խօսեցաւ իւր ընդդիմադրին հետ, Կորնթացւոց Մամբրէ եպիսկոպոսը՝ իմաստասիրական ուսմամբքը ուզեց զինքը յաղթահարել. «Հպարտացեալ փիլիսոփայական արուեստիւ, յառաջ վազեաց և 'ի դիմի հարաւ քաջին Դաւթի և մեծ անյաղթն կոչեցեալ փիլիսոփայի, և ասէ. «Զի՞նչ անուն և զի՞նչ մակածութիւն»։ Եւ այն ընդդիմամարտութեան մէջ ալ իրեն արժանաւոր պատասխաններն ընդունելով՝ լռեցին իմաստակներն, աւելի մեծ համարում ստանալով անոր գիտութեանն վրայ[1]։

Հայաստան դառնալէն ետքը՝ տեսնելով Դաւիթ իւր հայրենեաց խեղճութիւնը, և գիտութեանց անպատուութիւնը, քաշուեցաւ, աղօթքը՝ արտասուաց, հանճարը՝ գը-

1. Երկրատասաներորդ դարու քերթող մատենագիր մը Վարդան Հայկազն, թուի ակնարկել զայս հետագայ տողերուն մէջ.

« Մովսէս պիտէր Խորենացի
Քերդողահայրըն կենդանի.
Իմաստութեամբն անչափելի
Զերդ հոգեւոր առուն և տեղի։
Կամ յընկերացն իւր նազելի
Բանիւք հզօրքն 'ի հանդիսի.
Յորոց անուանքն էին յահի
Յունաց ճարտարքն և յերկիւղի։
Չէին կարող կալ 'ի դիմի
Կամ բան մի տալ պատասխանի...
Այլ նոքա չէին սաստ 'ի միջի »։

րոց հետ խառնելու. և մեռնելով թաղուեցաւ Տարօնոյ մօտ Ղազարու վանքը, ուր ինչուան հիմայ կը ցուցընեն իր գերեզմանը. և ուր դեռ ևս կը յաճախեն իմաստութեան և ճարտարխօսութեան ձիրքը խնդրելու և ընդունելու փափաքող յուսով։

Ուրիշ գրչագրի մը մէջ ալ կը կարդանք թէ Աստուածաշունչ գրոց թարգմանութեան համար ի Բիւզանդիոն ղրկուած երիցագոյն աշակերտներէն մէկը՝ սուրբն Սահակ և Մեսրովպ ուրիշ հինգ անձինք ալ յղեցին զԱնյաղթ, զԽորենացի, զՄամբրէ իմաստասէր և զԱբրահամ հռետոր. և զՂաւղոս՝ նմանակից սոցա. «Եւ կայսրն, կ'ըսէ, զԴաւիթ և զՄովսէս դատաւոր կացոյց ի տան հայրապետանոցին, և ի թարգմանութիւնէ ոչ դադարէին։ Ապա կամեցեալ նոցա երթալ յԱթէնս, չեթող կայսրն. այլ կարգեաց զնոսա վերակացուս մէն մի ի վերայ շինուածոյ երկուց քաղաքացն՝ Կարնոյ և Ցամթայ՝ զոր էր շինեալ հայրն Արգարու զառաջինն։ Յետ շինութեան քաղաքացն՝ երթան յԱթէնս հրամանաւ Թէոդոսի թագաւորի հնգեքին եւս. ուսեալ և աւարտեալ յամս եօթն զիմաստասիրական ուսմունս. ընդ փորձ քննութեան անցանեն ըստ սովորութեան Աթենացւոց, ընդ այլոց յիսուն և չորս աշակերտելոց. և կացուցանեն զամենեսին ի հանդիպոյ սեան միոյ՝ յորոյ վերայ գրեալ էին բանք եօթն թագաւորաց, և որ ոք լուծանէր զնոսա՝ հասանէր յաստիճան վարդապետութեան յայն եօթն ամսն»։ Առաջ կ'անցնի Դաւիթ այդ հանդիսին մէջ, իր ամէն ուսմնակիցներէն աւելի խրախուսուելով համարձակօրէն, ուր այլք պշու-

Շնորհակալեաց տրուած հանելուկներուն մէջ, Դաւթի համար.

« Իմաստուն մի ի յԱթենայ.
Էր ի յազգէն Հայոց մեծաց.
Խոսրովային ճառ մի տայց,
Ու չոր ետուր վարդապետաց.

Վիպասանութեան մէջ կը վկայէ վասն Թարգմանչաց
« Մինչ զի Յունաց գերազանցեալ »։

ցեալ կը նայէին ի սիւնն, ու բան առ բան կը լու-
ծանէ եօթն թագաւորաց խօսքերը։ Հանդիսականք
կ'ապշին կը մնան Դաւթի իմաստութեան և հանճարոյն
վրայ., կը փութան մարգրտայեռ և ականակուռ ոսկեղէն
սապար մը կը բերեն, և բարձրացընելով զԱնյաղթ այն
փառաց ու հիացման սապարին վրայ, ուսումնակիցքն ու-
սերնուն ու գլխոց վրայ կ'առնուն ու ընդ բոլոր քաղաքն
կը շրջեցուցանեն, մինչ ձայնք տաւղի և փողոց կը հռչա-
կեն իր անյաղթելի իմաստութիւնն։

*
* *

Այսչափ է Դաւթի իմաստասիրին վարուցը վրայ ու-
նեցած տեղեկութիւններնիս։ Քանի մը խօսք ալ իւր գրա-
ւոր երկասիրութեանցը վրայ գրուցենք։ Ասոնք գլխաւո-
րաբար երկու դասակարգութիւն կրնան բաժնուիլ, մէյմը
ինքնագիր, մէյմըն ալ թարգմանութիւնք։

Առջիններուն մէջ ամենէն աւելի նշանաւորն և մտա-
դրութեան արժանին է

Խաչին Ներբողը. — Որուն մասնաւոր յառաջաբանու-
թեանը մէջ՝ աւանդուած է թէ ինչ պատճառաւ երկա-
սիրած է Դաւիթ այս գրուածքը։ Հայոց Գիւտ կաթու-
ղիկոսին իշխանութեան օրերը՝ Օշին գեղջէն Կոստանդին,
Պետրոս և Թէոդորոս անունով երեք անձինք եկան, որ
ժողովուրդը խաբելու համար՝ ամէն արտաքին պատրուակ
ունէին. խարազն կը հագնէին, բոկագնացք, պահողք ու
կեղծաւորք. որ սուրբ Կուսին համար կը քարոզէին թէ
աստուածածին չէ. և Աստուծոյ մարդացելոյ խաչն ալ՝
փրկութեան փայտ չէին սեպեր, այլ գողոց պատժարան։

Գիւտ կաթուղիկոս երբոր լսեց թէ Դաւիթ և իր ըն-
կերներն Աթենքէն և ուրիշ քաղաքներ ուսմանց համար
ճանապարհորդելէն դարձեր են, նամակ մը գրեց առ նա, ա-
ղաչելով որ իւր իմաստուն գրիչը և զօրաւոր լեզուին սուրբ
խաչին գովութեան ու պաշտպանութեան գործածէ. որ-

պէս զի « բարձցի, կ'ըսէր, հերեսիովտաց հերձուածն, և խլեսցին յագարակաց փուշք, և որոմն սատանայական սերմանց, որ 'ի մարդ յուսան և ոչ յԱստուած »։

Դաւիթ պատասխան տուաւ կաթողիկոսին, յօժարամիտ յանձն առնլով հրամանը, յորմէ թէպէտ իւր տկարութիւնն զինքը ետ կը նահանջէր, բայց միանգամայն Հայրապետին աղօթքին վստահացած կը քաջալերուէր։ Դաւթի առ Գիւտ գրած թղթին վերջը՝ այսպիսի ծանօթութիւն մը կ'աւելցընեն գրչագիրք. « Եղև այս 'ի ժամանակս մարզպանութեան և սպարապետութեան Վահանայ՝ որդւոյ Մագնոսի, որդւոյ Վարդանայ, կամ որպէս ասեն՝ եղբօր։ Փորձողք և գիտողք սուտ ասեն զայլ պատճառսն յԱթէնս կամ 'ի Բիւզանդիոն կամ յԵրուսաղէմ. կամ յորժամ 'ի Պարսից դարձաւ խաչն՝ և խօսեցաւ »։

Այս ծանօթութեանն մեկնութիւնը կու տայ Շնորհալին՝ Անյաղթին այս ճառին վրայ գրած բացատրութեանը մէջ։ Կը պատմեն, կ'ըսէ ; թէ սուրբն Սահակ և Մեսրովպ զոմանս իրենց աշակերտներէն՝ իմաստութիւն սորվելու համար, Յունաց աշխարհին կողմերն ու անոնց Աթէնք մայրաքաղաքը ղրկեցին. որոնք հելլենական լեզուին թարգմանիչ եղան. որովհետև նախ հարկաւոր էր որ ամէն իմաստասիրականաց հմտանան, բառերու և ոլորակներու, և ետքը համարձակին 'ի թարգմանութիւն։ Եւ ըսին ոմանք թէ Աթենացւոց մէջ սովորութիւն կար եօթը տարի աշակերտութիւն ընել. ու այն եօթը տարուան լմըննալէն ետքը՝ բարձր տեղւոյ մը վրայ կ'ելլէր աշակերտը, ու ժամանակին և լսողաց պիտոյիցը յարմար բան մը կը խօսէր։ Դաւիթ ալ՝ որ այն աշակերտաց մէկն էր, նոյն աստիճանին հասնելով, նշանին առջևը եղող աշտարակին կամ սեան վրայ ելաւ, և հոն զրուցեց այս ճառը՝ յուրախութիւն լսողաց և 'ի պատիւ խաչին։ Ուրիշներն ալ կ'ըսեն թէ Աթենքէն Կոստանդնուպօլիս դարձած ատենը՝ իր ընկերներն զինքը մեծա-

րեցին, ու Վերացման խաչին օրը այս Ներբողը զուրցը-նել տուին։ Ոմանք ալ թէ յԵրուսաղէմ սուրբ Խաչին առջև, և այլք՝ թէ խաչը Պարսկաստանէն դառնալէն ետքը, և ոմանք ալ թէ անապատի առանձնութեան մէջ յօրինուած է այս ճառը։ Բայց թէ Շնորհալին, և իր-մէն աւելի Գիւտ կաթողիկոսին ու Դաւթայ վաւերա-կան թղթերը ամէն տարակոյս կը վերցընեն, յայտնա-պէս ցուցընելով թէ երբ և ինչ վախճանաւ յօրինուած է այս ճառը։

***Սահմանաց գիրք կամ Սահմանք իմաստասիրութեան***.— Հին Յունաստանի մէջ ծաղկող փիլիսոփաներէն մէկը, Պիհռոն, մասնաւոր և անօրինակ աղանդ մը հնարած էր, ամէն բանի վրայ տարակուսիլ, և այն տարակոյսը և դե-դևեալ վարանքը իրեն առջևը իմաստութիւն սեպուած էր. որով և բազմաթիւ աշակերտներ ստացած, որք ժա-մանակ անցնելով՝ իրենց վարդապետին կարծեացը վը-րան ալ հաստատուն չկենալով, շատ աւելի անդին ան-ցեր էին. և բոլոր մարդկութիւնն իրեն ամէն գիտու-թեամբը, ուսմամբք և կրօնիւք՝ անէակ կը կարծէին, և ինչուան կենաց և մահուան մէջ խտրութիւն չէին դներ։ Այսպիսի սխալ և մոլորական դրութեան մը դէմ զինե-ցաւ Դաւիթ իւր այս գրուածքովը, զոր ինքն կամ գըր-չագիրք կը կոչեն « Ընդդէմ առարկութեանցն չորից Պիհ-ռոնի իմաստակի, և սահմանք և տրամատութիւնք իմաս-տասիրութեան »։

Միւս այլ գրչագրի մը յիշատակարանին մէջ. « Այս-պէս պարտ է իմանալ զպատճառն գրոցս։ Յորժամ գնայ մեծ Փիլիսոփայն Դաւիթ ի մայրաքաղաքն իմաստութեան յԱթէնս. և վարժեալ եղև ամենայն կատարելութեամբ, մինչև ընդ առաջին իմաստասէրս համարել զնա. եղև ի ժամանակին յայնմիկ բազում հակառակութիւն ի մէջ ի-մաստասիրացն վասն իմաստասիրութեան. ոմանք անգոս-նելով և այլք օրինակ ի մէջ բերելով, որպէս էքս ի հոս-ման և ի ծորման են, և ոչ ունին դադարումն, սոյնպէս

և իմաստասիրութիւն գոյութիւն ունի, բայց ոչ դատարի. և ոչ միաբանէին ընդ միմեանս ասացեալքն։ Եւ այսպէս բազում վրդով էր ի մէջ նոցա, զոր մի ըստ միոջէ ցուցանէ մեծս Դաւիթ, յինքն առեալ զամենայն հոգս իւրին, և եղծ զամենայն հակառակութիւն նոցա. և եցոյց զիմաստասիրութիւնն գոյութիւն ունել։ Եւ առեալ զբանս իմաստասիրացն, եցոյց միմեանց հակառակ գոլ։ Եւ ինքն նախ սկիզբն դնէ և լուծանէ զնոցայն իմաստութիւն. և ապա հաստատէ զիմաստասիրութիւնն... Եւ յոմանց ասի թէ ոչ յԱթէնս, այլ յորժամ եկն ի Հայք ի բնիկ գաւառն իւր ի Հարք, յայնժամ եհաս համբաւս այս ի լսելիս նորա՝ գալով ոմանք յուսումնակցացն և պատմելով զանհաշտ խռովութիւն որ էր ի մէջ իմաստասիրացն։ Յայնժամ արարեալ զգիրս զայս առաքէ առ նոսա, զի բարձցի ի նոցանէ վրդովմն. և արարեալ օրինակ, զօրինակն թողու ի Հայք, որ է այս գիրս... բայց թէ ի վերագրութեանն զանունն ոչ դնէ. քանզի ոչ ընդունէին հպարտ ազգս Հայոց զիմաստս վարդապետաց իւրեանց, ոչ եդ՝ զի մի՛ կորուսցեն և կամ զի մի՛ գիտասցեն և պատուեսցեն զնա։ Իսկ ի Բարձրացուցէքն, զի ի սկիզբն գրեալ է անունն նորա, վասն զի յետոյ կարգեցին։ Եւ այս գիրս ոչ գտեալ եղև յայնմ ժամու, և յետոյ ոչ աբարին փոյթ կարգել զանունն»։

Իմաստասիրական ուսմանց կարգէ դուրս փափաքով մը ետևէ եղած էր Դաւիթ. և իրեն անանկ կ'երևնար թէ «որք միանգամ իմաստասիրութեան տենչան բանից, և առ 'ի նմանէ հեշտութեանց ծայրիւ մատին միայն հանդիպին ճաշակեալք, ամենայն կենցաղական հոգոց բարեաւ մնալ ասացեալք, ողջախոհ իմն մոլութեամբ առ այսոքիկ վարեալք բերին»։ Այս փափաքին արժանաւոր գիտութիւն և լեզու բանեցուցած է Դաւիթ՝ Սահմանաց գրքին մէջ։ Հին յունական իմաստասիրութեան կատարեալ և ամբողջ տեղեկութիւն մը կը տեսնուի, ու իմաստասիրութիւնը՝ իմաստասիրութեամբ կ'ապացուցանէ,

մէջ բերելով իմաստակաց ամէն տարակուսութիւնները, և անոնց ամենուն պատասխանը տալով։ Ուստի և իրաւամբ կը գրուցէ Ստեփանոս Սիւնեցի. «Արդ թէ զինչ է բնութիւնս մեր, յայտկապէս ուսաք 'ի Դաւթայ եռամեծէ. այն՝ որ ընդդէմ Ակադեմայցն և Պիւռոնացեացն դիմակայէ քաջապէս, որք ջանային եղծանել զգոյութիւն իմաստութեան» [1]։

Հայերէն մատենագրութիւնը՝ ճիշդ իմաստասիրական բառերու գրուածք մը ինչուան այն ժամանակ արտադրած չէր. ուստի և ինքն Դաւիթ եղաւ առաջին՝ բուն իմաստասիրութեան պարապող, և անոր յատուկ լեզուն գործածող։ Ուստի ինչպէս ուսման, ասանկ ալ լեզուին,

1. Առաքել Սիւնեցի, ('ի Մեկն. Սահմանաց) կ'ըսէ. «(Դաւիթ) գրեաց նախ զՍահմանսն, երկրորդ զՅարձրացուցեալն, երրորդ զՊէտսն, չորրորդ զՄեկնութիւն քերականին, հինգերորդ զՄեկնութիւն Պորփիւրի և զԱրիստոտէլին». և կը յաւելու. «Իսկ թէ վասն էր ոչ արդիւնացաւ բանք նորա 'ի Հայս, այնպիսոյ փառաւոր առն և առաքինոյ և իմաստասիրի։ Եւ այս վասն հինգ պատճառի. նախ՝ զի յետ Վարդանանց պատերազմի դառնացեալ էին Հայք, և ամենայն բան աչաց եղած էր նոցա վասն աւերութեան աշխարհիս և կոտորման իշխանացն. երկրորդ՝ զի ոչ գոյր ուսումնականս, ... երրորդ՝ զի յանդիմանեալ 'ի նմանէ՝ անարգեցին զնա և զբանս նորա, և հալածեալ վիրաւորեցին զնա. և նա գնացեալ 'ի Վիրս, անդ կացեալ վախճանեցաւ. չորրորդ՝ զի անիշխան էր ազգս և ոչ ոք էր որ յարգէր զնա»։ Ուրիշ գրչագիր մ'ալ կ'ակնարկէ թէ Սահմանաց գրոց յօրինման պատճառն հետևեալն է «Մեծն Դաւիթ, կ'ըսէ, և Եղնակ Կողբացին գնացին յԱթէնս, և լուան և տեսին բիծս ի վերս վարդապետացն, և զայրացեալ մեղադրեցին։ Եւ նոքա պչարեալ առեն զՀայս կարճագլխս և չարճճիս և հակառակողս և փորձողս. զոր յիշէ Աստուածաբան. և խորհեալ չթողուլ անդ զոք ի Հայոց ուսանել. և չգտեր պատճառ այլ, բայց աւելի իմանալն քան զայլս յազգաց։ Եւ զի էր ի նոսա չար ինչ հակառակութիւն, Պիւռոնացիք և... որք Ակադիմեանք կոչէին»։

Ուրիշ գրոց մէջ ալ կը գտնենք Անյաղթի համար, «Կարող էր և բազմաց աստուածատուր իմաստիցն, զի զընականն և զշնորհականն քաջ ունէր զատ յուսմանէն. այլ վասն անիշխանութեան և ազգիս անգելութեան խափան եղև»։

պէտք էր որ ինքն ըլլար հեղինակ։ Այս պարծանքը աւելի արժանապէս կրնայինք իրեն ընծայել՝ եթէ իմաստասիրական ուսմանը հաւասար՝ լեզուին կատարելութեանն ալ պարապելու ետեւէ ըլլար, կամ թէ այնչափ յունականութեան ետեւէ չըլլար, ուսմանը պէս՝ լեզուն ալ անոնցմէ փոխ առնլով։

Դաւթի իմաստասիրական ոճոյն և հմտութեան չափը այսպէս կը գրուատէ հայագէտն Վիլֆռուա գաղղիացի. « Թերեւս թուիցի ումեք ասել թէ Դաւիթ ծառայաբար զհետ երթեալ իցէ Պղատոնի և կամ Արիստոտելի։ Ոչ այդպէս։ Զի գիտէ նա և ընտիր առնել ի մէջ միոյ կամ միւսոյն. գիտէ հերքել հաստատութեամբ զկարծիս՝ որք հետեւիցին նմա ճշմարիտ։ Եղանակ գրութեան նորա գերազանցեալ է յոյժ. ձեռնարկէ որոշ և հաստատուն, և յառաջ խաղայ կարգաւոր և ընտիր ոճով. առաջի առնէ իմաստս մտաց իւրոց այնպիսի և այնչափ յստակութեամբ մինչև ի զարմանս և ի հիացումն կրթել զընթերցողն։ Ոճ նորա ինքնաբերական է յոյժ և համառօտ. և գրուածքն ոչ միայն չսարտուցանեն զընթերցողն, վասն նիւթոյն ցամաքութեան որ ի նոսա, այլ և բռնադատեալ տանին զնա անդրագոյն, զոր ոչն գիտէր ի սկզբան »։

Դաւթի այս գրուածքին յունարէնն ալ կը գտնուի, (Τοῦ αὐτοῦ κατὰ Μανιχαίων λόγος, δώδεκα συλλογισμῶν, ὅτι τὸ κακὸν, φθαρτὸν καὶ γενητὸν καὶ ἀνίπαρκτον, καὶ ὁ τούτου δέ πατὴρ διάβολος οὐκ ἀγέννητος). ուստի և ոմանք կարծեցին թէ Անյաղթ՝ իւր մէկ քանի գրուածներն առաջ յունարէն լեզուով շարագրած է՝ Յունաստանի մէջ գտնուած ատեն, անոնց կիրառութեանը կամ գիտութեան համար, ու ետքը զանոնք 'ի յունէ 'ի հայ թարգմաներ։ Ոմանք ալ համարեցան թէ Սահմանաց ամբողջ գիրքը՝ թարգմանութիւն ըլլայ և ոչ սկզբնագիր, որովհետև նոյն գըրքին վերջին գլուխը՝ որ կը սկսի « Ամենայն չար տանջելի », Նիւսացւոյն Գրիգորի ընծայուած է՝ անոր անուամբը տպագրուած երկասիրութեանց հետ մէկտեղ։

(Προλεγόμενα τῶν πέντε φωνῶν τῆς φιλοσοφίας ἀπὸ φων τοῦ θεοφιλεστάτου φιλοσόφου... Կարծիք ալ կայ թէ ուրիշ անձ մը թարգմաներ է Դաւթայ գործը 'ի հայերէն Զ դարուն մէջ։ Դաւթի Անյաղթի անուամբ ուրիշ գրուածք մ'ալ կայ հետեւեալ խորագրով. «Դաւթի Անյաղթ վարդապետի հայկազնի՝ գովեստ ներբողական 'ի սուրբ Եկեղեցի–յԵրուսաղէմ»։ Որչափ ալ ոճոյ նմանութիւն ենթադրենք գտնել այս ճառին և իր անունը կրող ուրիշ երկասիրութեանց մէջ, բայց հարազատութիւնը միշտ տարակուսական կը մնայ։ Թարգմանութեանցը վրայ պիտի խօսինք գրուածքիս երկրորդ մասին մէջ։

Դաւթայ անուամբ գտուած ամենայն գործքն տպագրուած են 'ի Վենետիկ յամի 1833։

## Գ Ի Ւ Տ

---

Գիւտայ վարքը։ — Կաթողիկոսութիւնն և յարքունիս Պարսից կոչուիլը։ — Գրաւոր երկասիրութիւնքը։

Դաւթի Անյաղթին ժամանակակից էր Գիւտ, Տայոց գաւառին Արահեզայ գիւղէն, կրտսեր Թարգմանչաց մէջ, ուստի և յիշատակարանի մը մէջ աշակերտ կոչուած սրբոց քահանայից, այսինքն Ղևոնդեանց, որոց 'ի Պարսկաստան նահատակուելէն տասը տարի ետքը՝ Հայոց կաթուղիկոսական աթոռը նստաւ։ Փարպեցին այս համառօտ խօսքերով՝ թէ անոր վարուցը և թէ գիտութեան վկայութիւնը կու տայ. «Այր լի գիտութեամբ հայովս և առաւելեալ յունիւն, յորդասաց բանիւ և առատաբուղխ վարդապետութեամբ, զոր ոչ երբեք արգելայր ան-

գիտութեանն վարդապետութիւն. այլ զծածուկս տասցեալ Հոգւոյն՝ նոյն սուրբ Հոգւոյն շնորհ յայտ արարեալ՝ նովաւ լուսաւորապէս ուսուցանէր բովանդակ ժողովըրդոց. որոյ բանք իւր՝ նման յորդառատ անձրևի՝ զամենայն լողի ծաղկեցուցեալ պտղաբերէր զոգիս »:

Սակայն Պարսիկք այն ատեններն իրենց բռնաւոր ազդեցութեամբն սկսեր էին ինչուան Նախարարաց սիրտը հեռացընել 'ի սուրբ հաւատոց: Ուստի սկսան ոմանք կրակատուններ ալ բանալ իրենց իշխանութեան տակ եղած երկիրներուն մէջ. և անով քաղաքական պատիւներու մէջ մեծնալով, ձեռուընուն տակ եղած հպատակաց մոլորելու և գայթակղելու պատճառ ըլլալ:

Ասանկ ատենի մը մէջ հայրապետական աթոռոյն վրայ նստող Գիւտ կաթուղիկոսը՝ իւր ամէն ջանքը կը բանեցընէր անարատ պահելու հաւատոց գանձը՝ որուն աւանդապահն էր. ուր իրեն աշակերտակիցքն՝ Եղիշէ, Խորենացի և այլք, գրեթէ յուսահատեալ ազգին բարելաւութենէն՝ անապատները քաշուեր առանձնացեր էին:

* * *

Երբ տեսաւ Գիւտ թէ իւր ամէն ջանքովն ալ համաճարակ աղետից առջևն առնելու բաւականութիւն չունի, սկսաւ խօսքովն ու գրով ուրացողներն յանդիմանել, և իրենց հաւատոցը մէջ հաստատուն Մնացողները քաջալերել ու պատուել: Այս արդարադատ խտրութեան վրայ զչարեցաւ Գադիշոյ Խորխոռունի, որ ուրացելոց մէջ ամենէն աւելի չարասէրն էր, և ամենէն աւելի իւր ջանքն ու ազդեցութիւնը բանեցընող՝ որ իրեն հետևող ընէ զազգըն: Ու չկարենալով ուրիշ կերպով վրէժն առնուլ, Պարսկաստան գնաց, ու Պերոզ թագաւորին առջև ամբաստանեց զԳիւտ:

Պերոզ՝ արքունի դուռը կանչեց զկաթուղիկոսն, որպէս զի իրմէն լսէ վրան եղած ամբաստանութեանց ջատա-

գովութիւնը. բայց հոն՝ զինքն արհամարհող ու նախատող հեթանոսութիւնն անգամ իրմէ պատկառեցաւ, ինչպէս կը վկայէ Փարպեցի։

Թագաւորն իշխան մը ղրկեց առ Գիւտ, և ամբաստանութեանց ստուգութիւնն անոր յանձնեց։ Գեղեցիկ ատենախօսութեամբ մը Գիւտ արդարացուց ինքզինքն, և թէ ինչպէս իրեն համար նուիրական պարտք մըն է սիրել զքրիստոնէութիւն։ Եւ որովհետև ուրիշ ամբաստանութիւն մըն ալ գրած էին վրան, Հոռոմոց հետ շատ վերաբերութիւն ունենալը, անոր ալ պատասխանը տուաւ համարձակ. «Իսկ որ ասէ թէ ունէի երթևեկ 'ի Հոռոմս, ոչ ըստ ամբաստանողին կարծեաց են իրքդ, այլ վասն զի զդպրութիւն և զգիտութիւն և զամենայն իմաստս բանաւոր ուսմանց յաշխարհին Հոռոմոց ստացեալ եմք, և են իմ անդ ծանօթք և բարեկամք բազումք և ուսումնակիցք»։ Աներկիւղ համարձակութեամբ Գիւտ զարմացուց զիշխանն ալ, Թագաւորն ալ, որ չկարենալով իւր չարութեան խորհուրդը անոր վրայ կատարել, զրկեց զինքը 'ի հայրապետական պատուոյ։

Այն վիճակին մէջ վրայ հասաւ Գիւտայ մահը։

* * *

Իբրև թարգմանիչ՝ անշուշտ գլխաւոր մաս մը ունեցած պիտի ըլլայ Գիւտ իւր աշակերտակցացը մէջ. որովհետև մեծ է իւր գիտութեան և իմաստութեան գովութիւնը։ Բայց իբրև ինքնագիր մատենագրութիւնք՝ քիչ բան հասած է մեր ձեռքը. յորս գլխաւոր կրնայ սեպուիլ Թուղթ մը առ Դաւիթ Անյաղթ, Խաչին ճառը իրմէն խնդրելով, որուն վրայ առաջ խօսեցանք։

Կաղանկատուացին կը յիշատակէ Գիւտայ անուամբ Թուղթ մը առ Վաչէ արքայ Աղուանից, որ իւր թագն ու մօգութեան կրօնքը, միանգամայն նուիրելով աւետա-

րանին ճշմարտութեանը, միանձնական կենաց փափաքած էր երկնաւոր Թագաւորութիւն մը փնտռել․ այսպիսի ընթացքի մը հարկաւոր և էական խրատները կը բովանդակէ Գիւտ Թղթին մէջ։

Կ՚երևնայ թէ ժամագրոց և հասարակաց աղօթից կարգաւորութեանն ալ ձեռնտու եղած է Գիւտ, որովհետև նոյն գրքին խորագրոցը մէջ իւր անունն ալ կը յիշուի, թէպէտ և առանց մասնաւոր աղօթք մը իրեն յատկացընելու։

## ՅՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆԻ

---

*Մանդակունի և Հայաստանի վիճակը։ — Վահանայ մարզպանութիւնը։ — Մանդակունւոյ ընծայուած ճառեր։ — Մանր գրուածք։*

Արշարունեաց Տախնոտ[1] գեղէն էր Յովհան Մանդակունի, որբոյն Սահակայ ու Մեսրովպայ աշակերտաց կարգէն․ ու եօթանասուն և հինգ տարուան հասակին՝ կաթուղիկոսական աթոռը նստաւ Վահան Մամիկոնեանին յորդորանօքը։

Դժուարին դիրից մէջ էր իր ատենը Հայաստան։ Վահան Մամիկոնեան՝ իր կտրուկ ու յաղթող սրոյն՝ ու Աստուծոյ անուանը վրայ երդուընցեր էր՝ խաղաղութիւն պարգևել Հայաստանի։ Բայց իր այս ջանիցը ոխերիմ թշնամի էին Պարսիկք, ու անոնց ընկեր եղած 'ի Հայոց

1․ Ձեռագրի մը մէջ կը կարդանք․ «Յովհաննու Մանդակունւոյ 'ի գաւառէն Արշարունեաց՝ 'ի գեղջէն Տաղկեաց»։

ուրացելոց խումբ մը։ Միաբանելոց հաւատքն ու քաջութիւնը ամրացընող ու խրախուսող էր Մանդակունի՝ իրեն հայրենասէր սրտովն, ու հայրապետական բարձր աստիճանով։ Ինքը զանոնք՝ պատերազմին դաշտը չմտած, մահուան արհաւիրքը չտեսած, սուրբ եկեղեցի կը մըտցընէր, կ՚օրհնէր անոնց զէնքերը, ու հայրենեաց փըրկութեանը զօրաւոր ախոյեաններ՝ Վահանայ ձեռքը կը յանձնէր։ Պատերազմաց մէջ ալ անոնց յաջողութեամբը կ՚ուրախանար, զինուց ձախողելուն ատեն՝ աղօթքովը այն քաջերուն օգնութիւն կը խնդրէր, որոնց յաղթանակը՝ հաւատոց յաղթանակ պիտի ըլլար։

Այս վախճանին հասնելու համար՝ ծերութիւնն իրեն փոքր արգելք մը կ՚երևնար, ինչուան պատերազմաց բանակներուն մէջ իր խրախուսիչ ձայնը բարձրացընելով, ու մարտից խառնուրդին մէջ Պարսիկներէն մահառիթ վէրք մը ընդունելով, մեռելոց դիականց մէջ՝ իբրև մեռեալ կ՚իյնար, ու Աստուծոյ մասնաւոր հրաշքովը՝ կրկին կենդանութեամբ հայրենեաց կը պարգևէր։

Բայց վերջապէս իւր վախճանին հասաւ Մանդակունին։ Վահան որ իր սրոյն և քաջութեան վախովը զՊարս սասանեցուցեր էր, անոնց սիրելի կ՚ըլլար՝ իւր «Իմաստից յառաջատեսութեամբն, արդարախոհութեամբն, աշխարհագիտութեամբն ու քաջութեամբ», ու ՚ի Պարսկաստան կանչուելով՝ Հայոց աշխարհքին մարզպանութեան իշխանութեամբը կը փառաւորուէր, և արքունական հրովարտակով՝ կրկին իր հայրենիքը կը դառնար։

Այն հրամանագիրն առնելով՝ մէկէն Դուին քաղաքը հասաւ Վահան, ու սուրբ կաթուղիկոսին դիմեց յեկեղեցին։ Ուրախալի լրոյն համբաւը բոլոր քաղաքին մէջ կը տարածուէր. Նախարարք և ազատանի, իշխանք և ռամիկք, արք և կանայք, ծերք և տղայք, ամենքն հոն կը վազէին, անանկ որ ընդարձակ սրբավայրը՝ այդ բազմութիւնը չէր կրնար տանիլ. ու չորս կողմի փողոցներն ու հրապարակներն՝ բազմութեամբ կը լեցուէին։ «Եղև

օրն այն, կ'ըսէ ականատես պատմիչը, անյագ խնդութիւն և անսպառ ուրախութիւն աստուածասէր բարեխիրացն, և ողջախորհուրդ մտաց լաւահայեցաց. և սուգ թախանձալից և տրտմութիւն անմխիթար՝ խօթամտացն»։

Այն սրտաշարժ տեսարանին՝ չէր կրնար Մանդակունին իր ուրախութեան արցունքը բռնել. կ'ելլէր սուրբ բեմին վրայ, ու խաղաղութեան ողջոյնը՝ իբրև առհաւատչեայ աստուածաշնորհ խաղաղութեան իւր ժողովրդեանը տալով, ու այն զարմանալի փոփոխութեան վրայ՝ չկարենալով իր հիացումը բռնել, «Յեկեղեցիս, կ'ըսէր, օրհնեցէք զԱստուած, և զտէր յաղբերացն Իսրայելի։ Ահա սիրեցէք զեկեղեցիս, և սիրեցայք յեկեղեցւոյ. ըզթագաւորս քաղցրացոյց եկեղեցի, զգազանս ընդելացոյց, զգայլս՝ գառինս արար, զձեզ պայծառացոյց, զթշնամիս ճշմարտութեան ամաչեցոյց»։ Եւ ետքը՝ հայրենեաց բարօրութեան համար հանապազատարած ձեռուըներն երկինք վերցընելով, «Օրհնեա՜լ տէր Աստուած Իսրայելի, կ'ըսէր, որ ետ ինձ տեսանել զորդիս եկեղեցւոյս՝ որ ինձ հաւատացաւ, պատուով՝ չքեղութեամբ պայծառացեալ 'ի Քրիստոսէ»։ Ու օրուանը գեղեցիկ հանդիսին և տեսարանին արժանի լեզուով մը, կորովով ու իմաստուք լի ճառ մը կը խօսէր. անանկ որ իւր աստուածազդեցիկ սիրելի լեզուին լռելէն ու անոյշ ձայնին դադրելէն ետքն ալ, դեռ ևս եկեղեցւոյն մէջ լալու և արտասուաց ձայնը կը շարունակուէր. ոմանց առ խնդութեան, այլոց առ զղջման, ու ամենքը միաբան զՎահան ողջունելով և 'ի հայրապետէն օրհնուելով՝ Նոր ջանքով մը հայրենեաց երջանիկ օրեր պարգևելու աշխատանքին երդմունքն կ'ընէին։

Վեց տարի հայրապետական գահը արժանապէս գրաւելէն ետքը վախճանեցաւ Յովհան, ու Շիրակ գաւառին Բեռնոս ըսուած գիւղը թաղուեցաւ։



Այլ և այլ երկասիրութիւնք կ'ընծայեն Մանդակունւոյն մեր տասներորդ կամ մետասաներորդ դարուց պատմիչք։ Ասողնիկ կ'ըսէ. «Երանելին Յովհան Մանդակունի՝ զՀայոց բազում կարգս ուղղութեան կատարեաց. զքարոզս գիշերի և տուընջեան, զկարգս մկրտութեան և զտարկաւագի, զքահանայի և զեպիսկոպոսի, և զօրհնութիւնն եկեղեցւոյ, և գլխովիմբ զպատարագամատոյցն՝ զոր Աթանասի ասեն լինել»։ Յովհան կաթողիկոս. «Մանդակունին աւլցեալ ամենայն հոգևոր հանճարով, և կարգս յօրինեալ ճոխացուցանէ պայծառապէս զամենայն աղօթականսն, ժամակարգութիւնս եկեղեցւոյ սրբոյ. և յարդարէր ևս ճառս զգուշացուցիչս դիտաւորական կենցաղոյս, որ բերէ զոգւոցն փրկութիւն»։ Կիրակոս. «Մանդակունի ... բազում կարգաւորութիւնս եմոյծ յեկեղեցի, կարգեաց զքարոզս աղուհացիցն և զաղօթս նոցա. զերրորդ ժամին և զչորրորդին և զիններորդին, և զեկեղեցւոյն հիմնարկէքն և ժամահարի, ակիւհ և զմաղզմային գիրք և բանք, խաչօրհնէք և պսակ»։ Վարդան պատմիչ. «Յաջորդէ զնա Մանդակունին, իմաստասէր և լի հոգւով Աստուծոյ, որ բարիոք յօրինեաց զկարգ ձեռնադրութեան և ճառս խրատուց։ Սա թարգմանեաց զերրորդ կորնթացի թուղթն, զՅովհաննու, և այլ բազում օգուտս գործեաց 'ի կեանս իւր»։

Ասոնք են ահաւասիկ յետին պատմչաց՝ Մանդակունւոյն ընծայած երկասիրութիւններն, և իրենց խօսքերը՝ որչափ ալ մթին և ըստ արժանւոյն գոհացուցիչ չեպենք, յայսմ կը միաբանին թէ այլ և այլ ճառեր շարագրած է Յովհան, և թէ հինգերորդ դարուն մէջ եղած եկեղեցական կարգաւորութեանց մեծապէս ձեռնտու եղած է, այլ և այլ աղօթից շարագրութեամբը և կամ թարգմանութեամբ։

*Երուսաղեմի Մատենադարանին գրչագիր մը (թիւ 989) հետեւեալ ճառերը կ'ընծայէ Մանդակունւոյն, Ա. վասն մկրտութեան։ — Բ. վասն հաւատոյ։ — Գ. վասն Քրիստոսի մարմնոյն՝ մահուն և խաչին։ — Դ. վասն երկրպագութեան։ — Ե. վասն ծննդեանն Քրիստոսի։ — Զ. վասն որովայնամոլութեան։ — Է. վասն շնութեան։ — Ը. վասն գրկանաց։ — Թ. վասն դաւանութեան։ — Ժ. վասն գիշերային աղօթից։ — ԺԱ. վասն յիշոցնատուաց։ — ԺԲ. վասն շնութեան։ — ԺԳ. վասն խոստովանութեան։ — ԺԴ. վասն անասնագիտաց և աբուագիտաց։ — ԺԵ. վասն անհեզ հարուածոյ։ — ԺԶ. վասն փոխոց և վաշխից։ — ԺԷ. վասն սիրոյ և մախանաց։ — ԺԸ. վասն չքամբասելոյ զքահանայս։ — ԺԹ. վասն երկիւղի և զգուշութեան։ — Ի. վասն ոխապահաց և քինահանաց։ — ԻԱ. վասն գողութեան։ — ԻԲ. վասն ընդդիմամարտութեան դիւաց։ — ԻԳ. վասն տասն պատգամաց։ — ԻԴ. վասն հնոց և նորոց նշանաց համեմատութեան։*

* * *

*Գլխաւոր երկասիրութիւնք կը սեպուին իւր ճառերը, և որոնք արդէն տպագրութեամբ ի լոյս ընծայուած են[1]. քսանեւութ խրատական կամ վարդապետական ճառեր, այլ և այլ բարոյական նիւթերու վրայ, ընտիր ոճով. և չորրորդ դարուն՝ յունական եկեղեցւոյ մէջ պայծառացած վարդապետներուն ոճոյն, սրտին և լեզուին հետեւողութեամբ։*

*Այս սքանչելի հետեւողութիւնը՝ տարակոյս ձգած է ոմանց մտքին մէջ ասոնց հարազատութեանը վրայ. չէ թէ երկբայելով՝ որ Մանդակունւոյն պէս հանճար մը՝ չը-*

1. Ի կարգի Մատենագրութեանց Նախնեաց, Վենետիկ, ՚ի Ս. Ղազար, 1836, 1860։

*կարենայ նման բան մը արտադրել, այլ քանի մը ձեռագրաց մէջ՝ Ոսկեբերանի և Եփրեմի ընծայուելուն համար։*

*Այս տարակոյսը՝ գրչագրաց և գաղափարողաց անհըմուտ անհոգութեանը արգասիք կրնայ սեպուիլ, վասն զի յիշեալ երկու վարդապետաց յունական և ասորի սկզբնագրաց մէջ՝ այս ճառերուն և ոչ մէկը կը տեսնուի. և թէ որ կորսուած ալ համարինք անոնց սկզբնագիրը, ինչպէս նոյն սրբոց ուրիշ այլ և այլ ճառերը, բայց քանեւութին ալ միանգամայն կորսուիլը իրաւամբ տարակոյս կը ձգէ մեր մտքին մէջ՝ թէ անոնց պիտի ընծայ այդ երկասիրութիւնը։*

*Բայց թատերաց վրայ, կ՚ըսեն, կը խօսի Մանդակունին, և այն անանկ ժամանակի մը մէջ յորում Հայաստան ներքին և արտաքին խռովութեանց նշաւակ, աչուըները բանալու ատեն չունէր, թող թէ գբօսանաց ետևէ ըլլալու. մանաւանդ որ այն ժամանակին չի յիշատակուիր ՚ի Հայաստան թատերաց գոյութիւնը։ Յօտար պատմչաց, ՚ի Յունաց և ՚ի Հռովմայեցւոց ունինք յիշատակ թատերական տեսարանաց ՚ի Հայաստան. և զԱրտաւազդ երկրորդ՝ որ ըստ Պլուտարքեայ՝ այնպիսի քերթուածոց գրութեամբ ալ և յօրինմամբ կը զբաղէր, և յորոց հատուածք հասած էին մինչև պատմչին ժամանակ։ Կը վկայէ նաև ազգային պատմութիւն՝ թատերաց և գուսանաց գոյութեանն ՚ի Հայաստան Տիգրանայ երկրորդի ժամանակ։ Բայց թէ՛ առաջինքն և թէ՛ յետինք՝ յոյն լեզուով գրուած և նոյն ազգին գուսանաց կը վերաբերին, և Մանդակունւոյն խօսքերը՝ անշուշտ յունական ծաղկեալ ու բարեկարգ թատերք չեն ենթադրեր. և որոնք իրեն ժամանակ չիկային և չէին ալ կրնար ըլլալ ՚ի Հայաստան. բայց ամենևին անպատեհ է կարծելը թէ գբօսանաց տեղուանք ըլլային առ մերսն, և թէ հօն գբօսանաց պատշաճը չպահուելով, կը ստիպուէին սուրբ հայրապետքն ու վարդապետք՝ եկեղեցւոյ*

բեմերուն վրայէն իրենց ձայնը բարձրացընել։ Թող որ մեր ուրիշ հեղինակաց մէջ ալ չիպակսիր Թատերաց յիշատակութիւն։ Այսպէս Խոսրով. «Ի խաղս և 'ի թատերս և 'ի ժողովս այլանդակաց»։ Նարեկացին. «Առ թատերս տեսարանաց»։ Ուրիշ անանուն վարդապետ մը. «Ցորժամ թատերախաղքն հարկանին՝ յայնժամ ողբայ եկեղեցի զկորուստ ժողովրդեան»։ Սարկաւագ. «Ի տեսարանի աշխարհիս կարգեաց կացոյց տէր՝ իւր հանդիսականս անթուելիս»։

Ասոնցմէ զատ Մաշտոցին կարգաւորութեանը մէջ՝ իրենն է Մկրտութեան կանոնը, խաչ օրհնելու, պսակի, եկեղեցւոյ հիմնարկէից օրհնութիւնը, տաճարի սրբութիւնն, ժամահարի, սկւոյ, մաղզմայի, սպասու և աւազանի օրհնութիւնը։ Պատարագամատուցին մէջ այլ և այլ քարոզներ ու աղօթքներ, ու 'ի մասնաւորի՝ սրբոյն Աթանասի կոչուած պատարագամատոյցը։ Ժամագրոց մէջ ալ գիշերային ժամուն՝ Զարթուցեալք և Զքեզ գոհանամք աղօթքները, և ճաշաժամուն երեք քարոզներն ու աղօթքներն։ Խրատք վանականաց միաբանից գրուածքի մըն ալ յիշատակութեան հանդիպեր ենք յանուն Մանդակունւոյ, որ մեզի անծանօթ երկասիրութիւն է։

Բաց 'ի ասոնցմէ Դըւնայ եկեղեցւոյն մէջ խօսած ճառտասան ու գեղեցիկ ատենաբանութիւնն, զոր վերը յիշեցինք, և զոր աւանդած է Փարպեցին իւր Պատմութեան գրոցը մէջ։

Հին ճառընտրի մը մէջ (որ ի Ս. Սարգիս Բաղիշու) Մանդակունւոյ կ'ընծայուի հետևեալ խորագիրն ունեցող երկասիրութիւնն. «Պատմութիւն և գիւտ փոխման աստուածածնին և մաւր տեառն. թէ ո՛րպէս եղև փոխումն, կամ ո՛րպէս շնորհեցաւ անարատ պատկերն ի փայտն, և տուաւ Հայոցս»։

# ԵՂԻՇԷ

---

*Եղիշէի վարքը ։ — Յաղագս Վարդանայ և Հայոց պատերազմին գրուածքը ։ — Անոր համառօտ բովանդակութիւնը ։ — Յաղագս Միանձանց ճառը ։ — Մեկնութիւն Յեսուայ և Դատաւորաց ։ — Ճառերն ։ — Արարածոց մեկնութիւն ։ — Անհարազատ կամ երկբայական ճառեր ։ — Պատմութեան գրքին և մատենագրութեանցը զանազան տպագրութիւնք և թարգմանութիւնք ։*

Կրտսերագոյն Թարգմանչաց՝ կամ երկրորդ աշակերտաց դասէն էր Եղիշէ, սրբոյն Վարդանայ ատենադպիրն, և ինչպէս հաւանական կ'երևնայ, նաև անոր մերձաւորն ազգականութեամբ [1] ։

1. « Եղիշէ էր զինուորեալ Վարդանայ զօրավարին, և էր դպրապետ. և տեսող լեալ ամենայն անցիցն որ անցին ընդ զօրսն Հայոց 'ի Յազկերտէ Պարսից արքայէ. և յետ նահատակութեան զօրացն Հայոց՝ թողեալ զզինուորութիւնն կրօնաւորեցաւ, և բնակէր հզնութեամբ և խստակրօն վարուք յանապատի. պահօք և աղօթիւք պարապեալ, խոտաճաշ և գետնախշտի լեալ յաշխարհին Մոկաց և 'ի ծովեզերն ։ Նա անդ գրեաց զպատմութիւն սրբոց Վարդանանց և ըզգիրս կանոնականս. և զմեկնութիւն խաչելութեանն Քրիստոսի և այլ գիրս օգտակարս » ։ Այսպէս նշանակուած կը տեսնենք 'ի հին ճառընտիրս ։ Այս կարծեաց հաստատութիւնը նոյն իսկ Եղիշէի գրոց մէջ կը կարծեն ոմանք տեսնել, երբ 'ի Հայաստան Արտաշատ քաղաքին մէջ ժողովք կը գումարուէր 'ի տալ զպատասխանի թղթոյն Միհրներսեհի, Եղիշէ Վարդանայ քով էր կ'ըսեն, և իրեն նախարարաց հետ 'ի դուռն արքային Յազկերտի. « Ես ինքնին, կ'ըսէ, անձամբ 'ի տեղւոջն պատահեցայ և տեսի. և լուայ զձայն բարբառոյ յանդըգնաբար խօսելոյ » ։

Թէպէտ և ընդհանրապէս վարդապետ կը կոչուի Եղիշէ՝ թէ՛ իւր գրոցը խորագիրներուն մէջ, և թէ՛ ուրիշ պատմիչներէն, բայց յոմանց կարծուի թէ եպիսկոպոսութեան աստիճանին ալ բարձրացած է, և թէ յԱրտաշատ գումարուած եպիսկոպոսաց ցուցակին մէջ նշանակուած համանուն Ամատունեաց եպիսկոպոսն՝ ինքն ըլլայ, ուրիշ միաբանակից պաշտօնակցաց հետ աւելցընելով նաև իր ստորագրութիւնը յաշխարհին Պարսից՝ ուր կը գտնուէր նոյն ատենը։

Հայաստանի թշուառ օրերուն ականատես, երբոր սըրբոյն Վարդանայ և իրեն քաջ ընկերաց ինկնալը տեսաւ, ու այն պատճառաւ՝ հայրենեաց դժնդակ աղետից մէջ թաւալիլը, չկրցաւ դիմանալ, ու այնպիսի կեանքը՝ մահուանէ մը դառնագոյն սեպելով, մենաւոր առանձնութեան մէջ ուզեց իր կենաց մնացորդը աւարտել։ ինքզինքը ծածկելով 'ի մարդկանէ, քաշուեցաւ Մոկաց լեռներուն մէջ, ու խոտերով կ'ապրէր։ Այն լերանց վրայ պտըտող հովիւները՝ գտան անոր առանձնութեան վայրը. տեսան խստակրօն վարքն ու ճգնութիւնը, և բոլոր մերձակայ գաւառներուն հռչակեցին։ Ստիպուեցաւ Եղիշէ Մոկաց լեռներէն հեռանալ, և Ռշտունեաց գաւառը քաշուելով, հոն Աստուծոյ հաճոյական վարքը կնքեց։

«Դեռ չմոռած Հայոց ձորը, — կ'ըսէ ազգային ու ազգասէր նոր ճանապարհորդ մը, — Ռստանայ ծառաստանեայց յաջ կողմն քիչ մը խոտոր, այս անշուք չէնքին, մինակ մենաստանին երթանք ուխտ։ Մի՛ նայիր արտաքին խրթնութեան, գեղեցկակերտ է ներքին տաճարն... Իսկ այդ շիրիմն, պաշտելի նշխարք ածու Եղիշէին կը գանձէ. Վարդանայ դպրին, Հայոց վարդապետին, հրեշտակակենցաղ ճգնաւորին։

«Համբո՜յր իւր խոնաւ հողին։

«Հոս կը հանգչի անտապան, անարձան, անյիշատակագիր, նա՝ որ անմահ արձանացոյց Վարդանն և իր դարը... իսկ վանքը կը կոչուի Զաղար Սուրբ Նշան, որ

ըստ աւանդութեանն, սրբոյն Եղիշէի սրբասնեալ լանջքէն կախուած Սուրբ Նշանն է. քանի՛ փափագելի։ Խաչ՝ որ Քրիստոսի աստուածային մարմինը իր վրայ կրելով, կրեցաւ մեր Սրբոյն՝ Քրիստոսի և Ազգին սիրով հրավառ սրբազան ծոցը և կուրծքին վրայ…

« Մարդ քանի որ կենայ, քանի որ նայի, քանի որ խորհի, այնքան իր ուշքը կը բացուի, այնքան կարօտ կը շատնայ, այնքան սխրալի զմայլմանց և խորին զգացմանց խորեր կը պարզուին իւր առջև։ Ինչե՜ր կը քարոզէ այս լուին գերեզման։ Ի՞նչ ձայներ կու գան այս տապանաքարի տակէն. անմռունչ աղաւնին կը մնջէ և կը մրմնջէ սրտաճմլիկ մրմունջներով։ Գերեզման, ուր իւր չքնաղ մատեանին չափ վսեմ լեզուով կը խօսի աղուն Եղիշէ. ուր կը ննջէ անմահն Եղիշէ »[1]։

Այսչափ է Եղիշէի կենսագրութեանը վրայ ունեցած տեղեկութիւննիս, աւելի ծանօթ մնալով իւր անմահական երկասիրութեամբքը, որոնց մէջ գլխաւոր կը սեպուի իրաւամբք Պատմութեան գիրքը։

* * *

Աւելի վիպասանական քերթուածի քան թէ պարզ պատմագրութեան կը նմանի Եղիշէի այս սքանչելի երկասիրութիւնն։ Ընտիր նիւթ մը, ընտիր հանճարոյ և գրչի հանդիպած։

Եղիշէ համառօտ ընծայականէ կամ յառաջաբանէ մը ետքը՝ կը սկսի իր պատմութիւնը։ Արշակունեաց թագաւորութեան վերջանալէն կը սկսի խօսիլ. այն դէպքէն՝ ուր Խորենացի լալով դադրեցուցեր է իր Պատմութիւնը, և որ Հայաստանի դժբաղդութեանցն սկիզբն է։ Մերձաւոր ուժով ազգ մը՝ Սասանեանք կամ Պարսիկք՝ այլ և այլ կերպերով Հայոց թագաւորութիւնը

1. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ (Գ. Վ.) Համով-Հոտով, 106։

*տկարացընելէն ետքը՝ կը մտածեն քրիստոսական կրօնքն ալ անհետացընել. որովհետեւ անիկայ միայն մեծ արգելք էր իրենց ուխտը հաստատուն կռուան մը գտնելու Հայաստանի մէջ։ Ասով կը սկսի Եղիշէի պատմութիւնը։ Անհնարին ոխութիւն մը կը նկատենք Պարսից Յազկերտ թագաւորին վրայ, մեծ ատելութիւն մը ընդդէմ քրիստոսական կրօնից. յոր աւելի գրգռուած իր մոգերէն՝ թուղթ մը կը գրէ իր ձեռքին տակն եղած հպատակ ազգաց. կ'իմացընէ իրենց թէ միտքը դրած ըլլալով Քուշանաց վրայ պատերազմի երթալ, իրենց օգնութեանը կը կարօտի. ուստի կը հրամայէ որ բոլոր ձիաւոր զօրքերնին հետերնին առած Ապար աշխարհքը ժողվուին։*

*Հայաստան ալ կը հասնի այս հրամանը։ Ոմանք միամտութեամբ, այլք 'ի հարկէ կը ստիպուին հնազանդիլ այնպիսի հրամանի մը՝ որուն հետեւանաց գէշ ըլլալուն իրենց միտքն ալ կը վկայէր։ Գուշակութիւննին ալ սուտ չելաւ։ Թագաւորը հրաման տուաւ զիրենք չարչարել, ինչուան որ հաւատքնին ուրանան. անտէր Հայաստանին ալ ուրիշ խեղճութիւն մը պատրաստեր էր։ Դենշապուհ անունով մէկը ղրկեց որ երթայ Հայոց աշխարհքը նստի, և զիրենք խաբելու համար ամէն պատրողական հնարք 'ի գործ դնէ։ Բայց աստուածապաշտ Հայաստանը այն նենգաւորին խօսքերէն չխաբուեցաւ. և իրեն սուրբ հայրապետաց հետ միաբանած՝ քաջութեամբ ընդդէմ դարձաւ Դենշապհոյ, ու Արտաշատ քաղաքին մէջ գումարուած եպիսկոպոսաց ձեռքովը՝ Միհրներսեհի հրապուրողական ու ամբարիշտ թղթոյն պատասխանը տուաւ։*

*Թագաւորն ու իրեն համախոհ մոգպետը՝ երբոր այն քրիստոնէական ոգւոյն թելադրած անվեհեր թուղթը կարդացին, ա՛լ աւելի զայրացան. մանաւանդ մոգպետը, այն դառնացեալ ծերը, որ կարծեր թէ կը փափաքէր իր աչքովը տեսնել Հայաստանի կործանումը, ու իր ձեռքովը՝ սուրբ եկեղեցեաց աւերակներուն վրայ՝ ատրու-*

չանաց հիմունքը ձգել. խրատ տուաւ Թագաւորին որ քաղցրութիւնը մէկդի դնէ, ու այնպիսի ապստամբ ազգը բռնութեամբ ընկճէ: Հաւանեցաւ Թագաւորը, ու կծու Թղթով մը հրաման ղրկեց որ Հայոց գլխաւորները արքունի դուռը գան: Հնազանդեցան անոնք. Յովսէփ կաԹուղիկոսին օրհնութիւնը և քաջալերութիւնն առնելնէն ետքը՝ հասան 'ի Պարսկաստան. տեսան իրենց ընկերակցաց նեղութիւնը, արտասուեցին անոնց վշտացը վրայ. բայց Թագաւորին սիրտը աւելի չզայրացընելու համար՝ հանդարտութիւն կը կեղծէին:

Իսկ նա իր սրտին Թոյնը դուրս Թափելու չուշացաւ. Նոյն իսկ հասած օրերնին՝ ինչուան այն ատեն սովորական եղած ընդունելութեան օրէնքները չկատարելէն զատ՝ ալէկոծ ծովու մը պէս, ինչպէս գեղեցիկ կը նկարագրէ պատմիչն, տակնուվրայ եղաւ, երդում ըրաւ արևուն վրայ՝ որ ամէն նեղութիւն իրենց գլուխը հասցընէ, եԹէ երկրորդ օրը անոր առջևը ինկած երկրպագութիւն չմատուցանեն արեգական: Ի՞նչ դժնդակ հրաման աստուածասէր Նախարարաց համար. այն օրն՝ յորում կ'ուզէր զՀայս արևապաշտ ընել, զիրենք իր արեամբը փըրկող ճշմարիտ Աստուծոյն հրաշափառ յարութեան օրն էր: Այս բանիս յիշատակն ու մտածութիւնը միայն զիրենք կը սարսափեցընէր. ուստի և քաջութեամբ դէմ կեցան Թագաւորին, յիշեցուցին Թէ ինչպէս իրենց կրօնիցը վրայ հաստատուն են, և Թէ առ ճշմարիտ Աստուածն ունեցած սէրերնին ամենևին արգելք չըլլար իրենց պարտքերնէն պակսելու զոր ունին առ երկրաւոր Թագաւորս. ինչպէս իրօք ալ գովութեան արժանի սեպուեր են հին արքայից ատեն, և այլ և այլ պիտանի ծառայութիւններ մատուցած:

Բայց Յազկերտի առջև այն ամէն արդիւնքն ընդունայն էին: Յաւիլ կը ցուցընէր իրենց տգիտութեան վրայ ու Թէ ինչպէս արեգական ու կրակի երկրպագութիւն չըրնելով՝ վնասակարք են աշխարհի: Ալ չդիմացան Նախա-

բարքն. երբոր հաւատոց համար վկայելու տեղն եկաւ՝ ամենքը ձայներնին բարձրացուցին. խոստովանեցան թէ ինչպէս հաստատուն է իրենց հաւատքը, և անընկճելի սուրբ եկեղեցին։ Այսպիսի հաստատուն հիման մը վրայ կռթնած՝ չենք վախնար, ըսին, ոչ քու սպառնալիքներէդ և ոչ ալ տուած պատիժներէդ։

Պատմիչը հոս բառ չի կրնար գտնել Թագաւորին որտմըտութիւնը բացատրելու. կը ստորագրէ այնպիսի դառն սրտի մը մաղձերուն դուրս թափուիլը. և թէ ինչպէս անդարձ երդմամբք կը սպառնար՝ կոտտամահ վերցընել այն պատուական անձինքը։ Սակայն սպառնալեացն ալ արդիւնքը չտեսաւ. հրամայեց որ բանտի մէջ արգելուն զիրենք։

Հոս տխուր ու սրտաշարժ տեսարան մը կը բացուի աչքերնիս։ Ամէն նեղութեանց, ամէն վշտաց ու դառնութեան համբերող սրտեր՝ հայրենեաց սիրով կը լքանին. այն սէրը կը յորդորէ զիրենք այնպիսի բանի մը ձեռք զարնելու՝ որ երբէք չէր կրնար արդարանալ, որուն եթէ նախ իրենց արցունքովը ու ետքը արեամբ քաւութիւնը չփնտռէին։ Կը ստիպուին գէթ առ երեսս, գէթ մէկ անգամուան համար արտաքին երկրպագութիւն ընել. որպէս զի Քրիստոսի հաւատքը անվտանգ պահուի Հայաստանի մէջ։

Հարկ չէ ըսելը թէ որչափ մեծ կ՚ըլլայ Թագաւորին ուրախութիւնը. մտացը մէջ ա՛լ ամենեւին տարակոյս չըմնար Հայաստանի վրայ տիրապետելու. ուրախութեամբ ամենայն պատիւ ու մեծարանք կը հրամայէ որ ըլլուին նախարարաց. հետերնին մոգեր ու մոգպետներ դրած՝ Հայաստան կը ղրկէ։

Նոյն միջոցին այսպիսի դժնդակ լուր մը՝ բերնէ բերան, գաւառէ գաւառ անցնելով, ինչուան Հայոց մայրաքաղաքը՝ Վաղարշապատ, ու սուրբ Յովսէփ կաթողիկոսին ու իրեն համախոհից ականջը կը հասնի։ Ցաւ ու տագնապ կը պաշարէ զիրենք, ու միաբան ժողովք

գումարելով՝ կը ստիպուին արտասուօք երդնուլ սուրբ աւետարանին վրայ, որ չէ թէ միայն իրենց արիւնովը սուրբ հաւատքը պաշտպանեն, այլ չխնայեն նաև իրենց կարևոր սիրելեացն ալ, եթէ անոնք ուզենան Հայաստանի մէջ արևու պաշտօնը տարածել: «Հայրը իր որդւոյն չխնայէ, ըսին, որդին ալ այդպիսի առթի մէջ հօրմէն չպատկառի. կինը՝ իր էրկանը հետ կռուի, ծառան ալ տիրոջը դէմ ելլէ. աստուածային օրէնք Թագաւորեն ամենուն վրայ. և այն օրինաց համեմատ՝ ամէն յանցաւորք իրենց պատիժը գտնեն»: Ի՞նչ սրտաշարժ դէպքեր: Հին Հռովմայ պատմութեանցը մէջ յիշատակուած Կարթագինէի պատերազմունքն՝ որչափ իրենց ուժէն կը կորսընցընեն:

Մինչդեռ Հայաստանի մէջ այս գործողութիւնները կը կատարուէին, մէկալ կողմանէ ալ ուրացեալ Հայոց բանակը մոգերով ու մոգպետներով Հայաստանի մօտեցեր ու բանակած նստեր էին. իրենք ալ կ'իմանային թէ ինչ դժուարին արգելք մը կար առջևնին՝ Թագաւորին անօրէն կամքը առաջ տանելու համար: Իրենց ժողովուրդը անտերունչ չթողլու պատճառաւ հաւատքնին ձգող նախարարները կը տեսնէին որ նոյն ժողովուրդը զիրենք կը մերժէ: Քանըհինգ օր այնպէս անգործ առթի կը սպասէին, չատերն իրենց մտաց ուղղութիւնը կերպով մը անոնց իմացընելու համար, և սակաւք՝ Թագաւորին սև խորհրդոցը արբանեկելու: Ինչուան գլխաւոր մոգպետը սիրտ ըրաւ, հետը խումբ մը զօրաց առնելով՝ կիրակի օր մը եկեղեցւոյն վրայ վազեց, ու դռները խորտակելով՝ կ'ուզէր ներս մտնել: Հոն էր երանելին Ղևոնդ երէց իր քանի մը խորհրդակիցներովը. աչքովը տեսաւ մոգպետին անօրէնութիւնը, չկրցաւ համբերել, և ոչ ալ սպասել եպիսկոպոսաց՝ որպէս զի անոնց խորհրդովը շարժի. հրաման տուաւ հաւատացելոց որ կռուին անոնց հետ: Անզէն՝ բայց հաւատով զինուորեալ ժողովուրդը՝ քարերով վռնտեցին թէ՛ մոգպետը և թէ անոր համախոհքը.

և ինքը եկեղեցին դառնալով՝ այն յաղթութիւնը պարգևող Աստուծոյն շնորհակալութեան մաղթանքը շարունակեց։

Այն տագնապին ձայնը բոլոր Հայաստանի մէջ տարածուեցաւ. ամէն կողմանէ արք և կանայք նոյն տեղը կը դիմէին, ու եղածը լսելով՝ մէկ կողմանէ շնորհակալ կ'ըլլային Աստուծոյ, միւս կողմանէ ալ հաւատոց համար վերահաս վտանգ մը աչուընուն առջև տեսնելով՝ արտասուաց գետեր աչուըներնէն կը վազցնէին. կը փափաքէին, կ'ըսէ պատմիչը, որ երկիրը պատառի ու իրենց գերեզմանն ըլլայ, որպէս զի չտեսնեն այն դժնդակ հրամանաց կատարումը։

Զարմացաւ Միաց մոգպետը, ու իրեն ամէն համախոհքը. «Այնպիսի մարդկանց դիմաց, կ'ըսէր զարմանալով մը, որ զմահ նախամեծար կը համարին քան զկեանս՝ ո՞վ կրնայ դիմանալ»։ Ուստի որոշեց՝ Յազկերտ թագաւորին գրելով՝ ամէն բան տեղնիտեղը իմացընել անոր, և յորդորել որ այսպիսի խորհրդոյ մը գործադրութենէն ետ կենայ։

Սակայն Հայ նախարարաց մէջ անանկներ ալ կային որ 'ի սրտէ ուրացեր էին Քրիստոսի հաւատքը. և ասոնց մէջ գլխաւոր էր Վասակ Սիւնի, որուն հոգւոյ աչուըները փառասիրութեամբ կուրցած՝ կ'ուզէր քրիստոնեական հաւատոց ջնջմամբը Հայոց թագաւորութիւնը ձեռք ձգել։ Տեսնելով Վասակ թէ մոգպետը յուսահատեցաւ թագաւորին կամքը առաջ տանելէն, քաջալերել սկսաւ զինքը. այն դժուարին գործոյն կատարման յանձնառութիւնը իր վրայ առնելով՝ խոստացաւ ջանալ որ եկեղեցւոյ ուխտին մէջ երկպառակութիւն ձգէ. և թէ որ այս բանս յաջողցընեմ՝ ա՛լ այն ատեն, կ'ըսէր, ամենեւին չեմ տարակուսիր թէ թագաւորին կամքը պիտի կարենամ 'ի գլուխ հանել։ Սուրբ հաւատոց գնովը կ'ուզէր ստանալ այն երկրին թագաւորութիւնը՝ որուն անարժան էր։

Ծածուկ հնարագիտութեամբք կը սկսի Վասակ մտքի դրած չարութեան խորհուրդը առաջ տանելու աշխատիլ։ Նախարարաց ու ազնուականաց տները մոգեր ու մոգպետներ կը ցրուէ. և այն կերպով կը ջանայ զանոնք մոլորցընել։ Բայց սուրբ եպիսկոպոսունքն ամենայն արթնութիւն կը բանեցընեն անոր հնարագիտութիւնները խափանելու։ Տեսնելով թէ սատանայական խորհուրդն առաջ կ'երթայ, սուրբ աւետարանը ձեռուընին, Հայոց սպարապետին՝ որոյն Վարդանայ՝ տունը կը վազեն, իմանալու համար թէ արդեօք իր խորհրդովը այնպիսի անօրէնութիւնք կը կատարուին. «Թէ որ ատանկ է, կ'ըսէին, նախ մեր գլուխը կտրեցէք, ու ետքը եկեղեցեաց վրայ ձեռուընիդ զարկէք»։ Արդէն բոլորովին խռոված էր Վարդան իւր պատճառաւ Հայոց աշխարհքին վրայ հասած աղետիցը համար, արդէն սրտովը լացեր էր ուրացութեան ակամայ յանցանքը, ու առիթ կը փընտռէր թէ՛ ինքն և թէ իրեն հետ եղող հաւատարիմ նախարարք որ իրենք զիրենք յայտնեն։ Ա՛լ չկրցաւ դիմանալ, անոնց ոտքն ինկաւ, իւր մտացն ուղղութիւնը լալով պատմեց անոնց, և թէ պատրաստ է նոյն սուրբ հաւատքին համար ինչուան արիւնն ալ թափելու։ Մէկէն հրաման տուաւ որ համախոհքը ժողվուին, ու եղածը դարմանելու փութան։

Վասակ դարձեալ մէջ կը մտնէր՝ Հայոց միաբանութիւնը աւրելու։ Սրտովը 'ի հաւատացելոց ուծացեալ, բերնով անոնց հետ ինքզինքը մէկ կը ցուցնէր. կը խառնուէր մէջերնին, ու անանկով կը ջանար զանոնք իրարմէ երկպառակել։ Այնչափ և այնպիսի վստահութիւն կ'ազդէր իւր վրան, որ Պարսից դէմ պատերազմել ուզած ժամանակնին, անոր ձեռքը կը յանձնէին զօրաց մէկ գունդը։ Երբոր բաւական վստահութիւն գտաւ Վասակ, ա՛լ անկէ ետքը իր երկպառակութեան և անմիաբանութեան խորհուրդը սկսաւ յայտնել։ Ասով կը սկսի Եղիշէ իր չորրորդ գիրքը։

Միհրներսեհ Պարսից մեծ հազարապետը՝ տեսնելով թէ իրեն դժուարին պիտի ըլլայ Հայոց միաբանութեան դէմ դնել, ու միանգամայն գիտնալով Վասակայ 'ի սերտ սրտէ ուրացութիւնը, քովը կը կանչէ զինքը, ու իմանալով իրմէ թէ ո՛րչափ ջանացեր է Հայաստանին մէջէն վերցընել սուրբ կրօնքը, ու անով թագաւորին կամացը գործակատար ըլլալ, սիրտ առած, մեծամեծ պարգևներ կը խոստանայ՝ միայն թէ կարենայ իր միտքը դրած խորհուրդները առաջ տանիլ։ Անօրէն խոստումը ընդունեցաւ Վասակէն։ Մէկէն իրեն հետ միաբանեց Վասակ այլ և այլ ուխտադրուժ նախարարներն. և անոնցմով ու անոնց հպատակներով զօրաց բանակ մը պատրաստեց, ու սկսաւ իր հայրենեացն ու կրօնիցը դէմ պատերազմի պատրաստուիլ. «Մոռնալով, ինչպէս կ'ըսէ պատմիչը, որդւոյն Աստուծոյ գալուստը, ու սուրբ աւետարանին քարոզութիւնը չյիշելով. իր սուրբ հաւատոցը ոչ սպառնալիքներէն վախնալով, և ոչ աւետեօքը մըխիթարուելով»։ Այսանկով Հայաստան երկու մասն բաժնուեցաւ, հաւատացեալ և ուրացող։

Եղիշէին հինգերորդ գիրքը կամ յեղանակը կը սկսի սքանչանալով աստուածային սիրոյ մեծութեանը վրայ, որուն արդիւնքը յայտնապէս կ'երևնար հաւատարիմ հպատակաց ու անոնց զօրացը վրայ. որոնք ամէնքը ժողվուեցան իրենց սպարապետ մեծին Վարդանայ քովը՝ վաթսունևվեց հազար հոգի, և անոնց հետ Յովսէփ կաթուղիկոս և Ղևոնդ երէց և ուրիշ բազմութիւն քահանայից։ Ամբողջ բանակը քաջալերուեցաւ նախ սրբոյն Վարդանայ խրախուսական և պերճաբան խօսքերովը, ու ետքը Ղևոնդեայ երիցու սրտաշարժ յորդորանքներովը. և պատերազմին նախընթաց գիշերը՝ հաղորդեցան սուրբ խորհրդոյն, ու պատրաստուեցան 'ի մարտ, փափաքանօք սպասելով այն արշալուսոյն՝ որ իրենցմէ շատերուն համար արքայութեան դռները պիտի բանար, ու իրենց արեամբը՝ փրկութիւն պիտի պարգևէր Հայաստանեայց։ Ասով կը լմընցընէ Եղիշէ իր հինգերորդ յեղանակը։

Կը սկսի վեցերորդը: Փափաքելի առաւօտը կը հասնի. Պարսիկ ու Հայ սպարապետները փոփոխակի իրենց բանակը կը սկսին քաջալերել. միանգամայն զօրքերնին պատերազմի կը պատրաստեն. ու Տղմուտ գետին քով ահաւոր ճակատամարտ մը կը սկսի, և հոն Վարդան իր բազմաթիւ քաջերովը կ'ինկնայ:

Մահուանէ ազատող Հայոց քաջերը բերդերու մէջ կ'ամրանան. ու փափաքելով մահակից ըլլալ իրենց նիզակակցացը՝ ամենևին չեն շարժիր՝ ոչ 'ի խոստմանց և ոչ 'ի սպառնալեաց: Բայց երբ կ'իմանան թէ Վասակ ամէն ջանք կ'ընէ որ զիրենք ալ կորսնցընել տալով բոլոր աշխարհին անկմանը պատճառ ըլլայ, կ'իմացընեն Պարսից զօրապետին անոր ըրած ամէն չարութիւնները, ու թէ ինչպէս թէ Պարսից և թէ Հայոց աշխարհացը վնասակար է. ու անօրէնութեամբ ստացած պատիւներէն զինքը զրկել կու տան, որ իրենց հետ մէկտեղ բանտակից կ'ըլլայ, առանց անոնց մխիթարութիւնն և սփոփանքն ունենալու: Նախանձեցաւ ուրացողն անոնց երջանկութեանը վրայ, ու ինքը չկրցաւ նմանիլ, ու չարաչար կեանքով մը ապրելէն ետքը, դժնդակ ու դառն մահուամբ ալ մեռաւ:

Եղիշէ իր Յառաջաբանին մէջ խոստացած էր եօթն յեղանակօք կամ գրքով աւարտել իր Պատմութիւնը, բայց ետքը Արտաքոյ եւթն յեղանակին ութերորդ մըն ալ կ'աւելցընէ. որուն մէջ տեղնիտեղը կը պատմէ թէ ինչ նեղութիւնք ու չարչարանք կրեցին այն սուրբ քահանայք՝ որ Վարդանանց պատերազմէն ետքը ախոյեան հանդիսացեր էին Հայաստանի մէջ հաստատուն պահելու սուրբ հաւատքն ու ազգութիւնը: Նոյնը աւանդած է և Ղազար Փարպեցի. բայց Եղիշէ աւելի մանրամասն կերպով ու աւելի յատուկ և ընտիր ոճով: Վերջն ալ մասնաւոր հատուած մը կ'աւելցընէ այն սուրբ կանանց համար՝ որ իրենց արանցը արժանաւոր երևցան սիրով ու սրտով, հաւասար քայլելով թէ առաքինութեամբ և թէ քաջութեամբ:

Եղիշէի այս պատմութեան գիրքը՝ խարդախած կը համարի Թովմաս Արծրունի, ու այլ և այլ հատուածներ անոնց մէջէն պակսած։ Արծրունին՝ որ իւր ցեղին պարծանքն ու փառքը նորոգելու և անմահացընելու նպատակաւ՝ ձեռք զարկած է իր գրոցը, կրնան. կ'ըսէ, զարմանալ ընթերցողք թէ ինչո՞ւ Եղիշէ իւր պատմութեան մէջ ամենևին չի յիշատակեր Վահանայ Արծրունւոյ վկայական մահը. և այս բանիս՝ հետևեալ պատճառը մէջ կը բերէ։

Պարսից Պերոզ թագաւորին ատենը՝ Բարծումա Նեստորական աղանդաւորն՝ Մոկաց աշխարհը եկաւ իւր մոլորութիւնը սերմանելու. և որովհետև այն միջոցին Մոկաց աշխարհին մէջ կը բնակէր Եղիշէ, Բարծումա իւր պատմութեան գիրքը խնդրեց իրմէ, ու խնդիրը ընդունեցաւ։ Բայց Արծրունեաց Մերշապուհ իշխանը՝ որ այն ատեններն Տմորեաց բերդին մէջ ամրացած էր, լսելով Բարծումայի իւր սահմաններն մտնելը, ստիպաւ հրամայեց հեռանալ անկէ, ու սաստիկ պատիժներ և աքսոր սպառնացաւ թէ որ իւր հրամանացը մտիկ ընելու չըլլայ։ Ան ատենը Բարծումա՝ վրէժխնդիր հոգւով Եղիշէի Գրոցը մէջ եղած ամէն Արծրունեաց տան վրայի յիշատակութիւններն հանեց, ու անոնց հետ նաև Վահանայ Արծրունւոյ մարտիրոսութեան պատմութիւնը։ Նոյն իսկ մեր ունեցած Եղիշէի օրինակներէն կրնանք գուշակել Բարծումայի խարդախութիւնը. վասն զի Եղիշէ ինն նախարարաց հետ՝ երկու հարիւր եօթանասունևութ հոգւոյ նահատակութիւնն յիշելէն ետքը կ'ըսէ թէ ասոնցմէ զատ «են յարքունի տանէն և 'ի տանէն Արծրունեաց և յիւրաքանչիւր նախարարաց տանէն, ... այլ ևս եօթնհարիւր քառասուն այր». որով յայտնի կ'ըլլայ թէ Բարծումա չկարենալով բոլորովին Արծրունեաց յիշատակութիւնը վերցընել՝ Վահանայ անունը և իրեն հետ իր ցեղէն մեռնողներուն թիւը վերուց, և մնացած Հայոց ցեղէն ինկածներուն հետ խառնեց անոնց թիւը գումարե-

լով եօթնհարիւր քառասունը. և անոր համար կը հարկադրի հոս յիշել զԱրծրունիս: Եղիշէ՝ Ռշտունեաց գաւառին ծովեզերքն առանձնացած ըլլալով՝ ատեն չունեցաւ իւր գրուածքը միւսանգամ աչքէ անցընելու, որովհետև հոն եղաւ իւր երջանիկ փոխումը: Այն պատճառաւ ոմանք կարծեցին թէ անանկ անկատար թողած է իւր գործը սուրբ վարդապետս [1]:

* * *

Պատմութենէն զատ՝ որ Եղիշէի գլուխ գործոցը կը սեպուի, ուրիշ գեղեցիկ երկասիրութիւններ ալ թողուցած է սուրբ վարդապետս, և որոնց մէջ գերազանց կը սեպուի իրաւամբ Միանձանց ճառը: Պատմութիւննիս կ'աւանդէ թէ հինգերորդ դարուն քաղաքական յեղափոխութեանցը մէջ երբ Թարգմանիչք դարձան իրենց հայրենի երկիրը, ու Վռամշապհոյ օրովը ծաղկած Հայաստանը՝ ներքին երկպառակութեանց, արտաքին մարտից և պարսկական բռնութեան նշաւակ տեսան, երիտասարդութիւննին՝ իրենց սիրելի երկրին երջանկութեանը նուիրող սրտերն՝ անոր ապագայ բարօրութենէն յուսահատածի պէս եղան, ու շատերնին՝ անանկ թշուառ կեանքէ մը աւելի մահը նախամեծար սեպելով, անապատներու լռութեանը մէջ իրենց սրտին խաղաղութիւնը և հոգ-

1. Էջմիածնի Մատենադարանը՝ քառածալ երկաթագիր օրինակ մը ունի Եղիշէի այս սիրելի և ընտիր երկասիրութեան «գրեալ 'ի վանս Գօշայ Առաքելոտաց 'ի թուին Հայոց ՈԻԱ (թիւ գրչ. 1645)»: Յիշուած ուրիշ երկու օրինակք (թիւ 1643 և 1644) նօտրագիր են: Հին և ընտիր օրինակ է բուն Անյի—ոյի—ոյն կոչուածը, որուն համեմատ եղած է Թէոդոսեայ տպագիրը: Հին երկաթագիր օրինակ մ'ալ կայ յանապատն Լիմ: Մեր քով եղած օրինակները նշանակուած են արդէն 'ի յառաջաբանի տպագրին: Արղնոյ Բարձրահայեաց Ս. Աստուածածին Մատենադարանին մէջ պահուած գրչագիր մ'ալ (թիւ 212) հետևեալ խորագիրը ունի. «Յիշատակարան և պատմութիւն սրբոյն Վարդանայ քաջի և Հայոց սպարապետի»:

ւոյն փրկութիւնը փնտռել փութացին։ Ասոնցմէ մէկն էր նաև Եղիշէ։ Այն առանձնութեանը մէջ՝ խրատական ու գեղեցիկ ճառ մը գրեց առ միանձունս իւրոյ ժամանակին, հին անապատաւորաց օրինակաւը՝ անոնց կատարելութեանը փափաքողներն քաջալերելու նպատակաւ։ Ո՛րչափ գեղեցիկ լեզու, քանի՛ ընտիր իմաստներ, և ի՛նչ վշտահար սիրտ մը կը ցուցընէ Եղիշէ՝ իւր այս գրուածքին մէջ․ բայց ան էր այն ժամանակին Հայաստանին նկարագիրը՝ որ զինքը սիրող սրտերուն ըսել կու տար համարձակ, թէ « ամենայն չարիք եկին հասին 'ի վերայ մեր… կենդանեաւ մերով տեսաք զդիակունս անձանց մերոց »։

Այս գրուածք շատ նմանութիւն ունի Փիլոնի հեբրայեցւոյ « Ցաղագս կենաց վարուց տեսականի » կոչուած ճառին հետ, որոյ թարգմանութիւնն ի յունէ՝ հինգերորդ ոսկեդարուս մէջ եղած կը համարուի։



Եղիշէի միւս այլ երկասիրութիւն է Մեկնութիւն Յեսուայ և Դատաւորաց։ Թէ՛ այս, և թէ ասկէ ետքը յիշատակելիք քանի մը ճառերնիս՝ ժամանակաւ երիցագոյն կ' երևնան քան զգրութիւն պատմութեան և ճառին Միանձանց։ Ոճոյ մեծ զանազանութիւն մը կը տեսնուի ասոնց մէջ, և հարկաւ կ'ենթադրէ ժամանակի երիցութիւն մը, յորում հեղինակը դեռ չէր ստացած ոչ այն հմտութիւնը և ոչ լեզուի մաքրութիւնը։ Ասանկ են Տէրունական աղօթից կամ Հայր մերի մեկնութիւնը, այլ և այլ ճառեր ու քանի մը աղօթքներ։ Անոր համար ոմանք տարակուսիլ անոնց հարազատութեանը վրայ․ սակայն պատմիչք յայտնապէս անոր ուրիշ երկասիրութեանցը մէջ կը յիշատակեն այս ճառերն, և 'ի մասնաւորի՝ Կիրակոս․ « Եղիշէ (գրեաց) զպատմութիւն սրբոց Վարդանանց և զգիրս կանոնացն, և այլ մեկնութիւնս գրոց սրբոց և զչարչարանաց փրկչին »։

*Արարածոց մեկնութիւն մըն ալ շարագրած էր Եղիշէ, որուն կորուստը՝ մեծ զրկում մըն է Հայերէն դպրութեանց. և այս կորստեան ցաւը աւելի զգալի կ'ընեն անոր Հատուածները, զոր Համանուն երկասիրութիւն մը մէջ առած կը բերէ Վարդան յանուն Եղիշէի։ Յայսմաւուրք ալ կ'աւանդեն վասն Եղիշէի. «Արար Մեկնութիւն գրոցն Արարածոց, և ճառս վասն Չարչարանացն Քրիստոսի, Թաղմանն և Յարութեանն. և գիրս կանոնականս Համեղ և անուշ բանիւք»։*

Այլ և այլ անգամ տպագրուած է Եղիշէի Պատմութեան գիրքը։ Անոնց մէջ առաջինն կը սեպուի 1764ին 'ի Կոստանդնուպոլիս հրատարակուածը, զոր Էջմիածնի միաբան Աբրահամ վարդապետը տպագրել տուաւ։ Որուն կրկին տպագրութիւնն է 'ի Փեթերպուրկ հրատարակուածը՝ 'ի ձեռն Իշխանացն Յովսէփ Արղութեանց արքեպիսկոպոսի։ Վերջը քանի մը անգամ տպագրուած է 'ի Վենետիկ (1823), և 'ի 1838 և 1860 ամբողջ Մատենագրութեանցը հետ մէկտեղ։ Անցեալ տարիներ (1861) նոր տպագրութիւն մըն ալ եղաւ 'ի Թէոդոսիա, ըստ Անձևացւոց օրինակի կոչուած, որ թէպէտ բաց ընթերցուածոյն մեծ տարբերութիւն մը չունի իրմէն առաջ հրատարակուածներէն, բայց իր հնութեամբը և յիշատակներով՝ պատուական։ Գրութեան թուական չունի, այլ մէջը գտնուած յիշատակարաններէն՝ իններորդ դարու գրուածք կրնայ սեպուիլ. վասն զի անոնց մէկուն մէջ կը յիշատակուի «տէրն Անձևացեաց Աշոտ», զոր հրատարակողը նոյն կը համարի ընդ Աշոտմայ, որ կը յիշատակուի առ Յովհաննու կաթուղիկոսի, և որ Գուրգենայ որդի կը կոչուի։

Եղիշէի պատմութեան գիրքը՝ այլ և այլ եւրոպական լեզուներով ալ թարգմանուած է։ Անոնց մէջ առաջինն է անգղիականը, զոր 'ի 1830 տպագրեց 'ի Լոնտոն՝ Նէյման գերմանացի արևելագէտն, խորագիր դնելով։ The history of Wartan and of the battle of the Armenians, containing an account of religions wars bettowen the Persians and Armenians, by Elisaeus Bishop of the Amadunians. Translated from the armenian by C. J. Neumann· London, 1830. Անկէ ետքը 'ի 1840 իտալական թարգմանութիւն մը հրատարակուեցաւ 'ի Վենետիկ՝ Գաբբելլեդդի հայագէտ քահանայի աշխատասիրութեամբը, Eliseo storico armeno del V secolo; versione del prete Giuseppe Cappelletti. Venezia, tipografia Alvisopoli, և 'ի 1844 'ի Փարիզ գաղղիական լեզուով Գարաբաճեան Գրիգոր վարդապետի ձեռքով. Soulevement national

de l'Arménie chrétienne au V.me siècle contre la loi de Zoroastre, sous le commandement du prince Vartan-le-Mamigonien. Ouvrage écrite par Élisée Vartabed, contemporain, sur la demande de David-le-Mamigonien, son collègue; traduit en français par M. l'abbé Grégoire Kabaragy Garabed. Paris, 1844. *Նոյն լեզուով նորագոյն թարգմանութիւն մ'ալ 'ի Հաւաքման Հին և նոր պատմագրաց Հայոց Լանկլուայի.* Élisée Vartabed; Histoire de Vartan et de la guerre des Arméniens. Traduction nouvelle, accompagnée de notes historiques et critiques, par V. Langlois. Paris, 1869. *Ռուսերէն թարգմանութիւն և տպագրութիւն մըն ալ եղած է 'ի Փեթերպուրկ: — Կը թողունք յիշատակել բնագրին զանազան տեղուանք նոր հրատարակութիւնները, և աշխարհիկ կամ գաւառական լեզուով թարգմանութիւնները 'ի Թիֆլիզ:*

---

# ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

---

Խորենացի և իր ուսումնական դաստիարակութիւնն և ճանապարհորդութիւնք։ — Դարձն 'ի հայրենիս և կրած նեղութիւնները։ — Երկասիրութիւնները։ — Պատմութիւն Հայոց։ — Աղբերք։ — Արտաքին պատմիչք։ — Սուրբ գրոց հետևողութիւն մանաւանդ 'ի ժամանակագրական մասին։ — Իր Պատմութեան գրոց նիւթը։ — Չորրորդ գիրք իր այս երկասիրութեան։ — Խորենացւոյն արժէքը իբրու պատմաբան և ժամանակագիր։ — Եւրոպական և ազգային բանասիրութեան կարծիք։ — Պատմութեան գրոց տպագրութիւնք և թարգմանութիւնք։ — Աշխարհագրութիւնն ու անոր հարազատութիւնը։ — Պիտոյից գիրք։ — Հռիփսիմեանց ճառ։ — Վարդավառի ճառ։ — Այլ և այլ մանր երկասիրութիւնք։ — Իրեն ընծայուած անհարազատ գրուածք։

Հայ պատմագրաց հայրը, ազգային ծանօթ բանասիրութեան մէջ ամենէն բարգաւաճ միտքն և եւրոպական գիտութեանց առջև ամենէն մեծ և ստոյգ պարծանք՝ կը սեպուի արժանապէս Մովսէս Խորենացի։ Չորրորդ դարուն վերջերը Տարօնոյ Խորնի կամ Խորօնք գեղը ծնած է Մովսէս և այն պատճառաւ Խորենացի կոչուած։ Իր մանկութեան ատեն Վռամշապհոյ և սրբոյն Սահակայ և Մեսրովպայ ջանքով՝ Հայաստան նոր կերպարանափոխութիւն մը կ'առնուր ուսումնական զարգացմանց մէջ. և Մեսրովպ՝ հայերէն գրոց գիւտը հնարելէն ետքը՝ ու-

րիշ փափկաձայն, ուշիմ և հանճարեղ մանկանց հետ՝ ասոր ալ, որ իւր քեռորդին էր, դաստիարակութեանը խնամք ունեցաւ ու իր աշխատանաց արդիւնքը յայտնապէս տեսաւ անոր զօրաւոր մտացն ու հանճարոյն վրայ։

Իր միւս աշակերտակցացը պէս՝ Մովսէս ալ իր անմիջական դաստիարակաց ձեռքին տակ մեծ յառաջադիմութիւն ցուցընելէն ետքը՝ անոնց հրամանաւը ճանապարհորդութիւններ ըրաւ 'ի Սիւնիս, յԵդեսիա, 'ի Բիւզանդիոն, յԱթէնս, 'ի Հռովմ, յԱնտիոք, 'ի Պաղեստին և յԱղեքսանդրիա, մտացը գաղափարներուն աւելի ընդարձակութիւն տալու, և հայկական թարգմանութեանց արուեստին կատարեալ հմտութիւն ունենալու համար. քննեց մատենադարաններն ու գրքերը, ու իր ժամանակին անուանի իմաստնոց աշակերտելով՝ եղաւ գերագոյն և ամենահմուտ բանագիտաց մէկն։ Թարգմանչաց ու Անյաղթին վրայ խօսելու ատեննիս՝ տեսանք թէ ինչ պատիւ ունեցաւ իր ընկերակցացը պէս նաև Մովսէս՝ 'ի Բիւզանդիոն, ու Մարկիանոս կայսրն (ըստ աւանդութեան մը) զարմանալով անոր հմտութեանն և իմաստութեան վրայ, և ճարտասան լեզուին զօրաւոր ազդեցութենէն յաղթուելով, «Ո՛վ Մովսէս, կ'ըսէր, յաչս ամենեցուն ընտրեալ են բանք բերանոյ քոյ, որպէս զառաջինս 'ի հռետորաց. և դու կարի քաջացար յոյժ»։



Սակայն միւս Թարգմանչաց պէս՝ Մովսէս ալ չկրցաւ ոչ իւր հոգևոր ծնողաց կրկին տեսութեամբը մխիթարել և մխիթարուիլ, և ոչ ալ ուզածին պէս օգտակար ընել Հայաստանի՝ իւր այնչափ ջանքով և յարատևութեամբ ժողոված հմտութեանց գանձը։ Դարձաւ 'ի Հայս յետ երկար ճանապարհորդութեանց, և իր սակաւամեայ պանդխտութեանը միջոցին՝ վերիվայր եղած տեսաւ իր Հայ-

րենիքը . վասն զի, ինչպէս ուրիշ շատ անգամ յիշե-
ցինք. կալուածներ ինքեր էր Հայաստանի Թագաւորութեան
ւթոռը . վախճաներ էին Սահակ ու Մեսրովպ, ու Հա-
յաստանի վրայ սոսկալի ու գժնդակ աղետից Նախագա-
շակութեան մը ամէն կողմանէ յայտնի կը տեսնուէր ։
Անանեկ գժնդակ տանենի մը մէջ՝ ազգը ոչ միայն ժա-
մանակ շուտեցաւ, այլ նաև չուզեց ճանչնալ անոր ար-
դիւնքը . ստորի հեռացաւ քաշուեցաւ Մովսէս ալ անձա-
նոթ տեղուանք, թէ՛ իւր վարդապետոք՝ և թէ աւելի հայ-
րենիքէն արտաքսելու. երիտասարդութեան աշխոյժ տա-
րիները՝ հայրենեացը մտաւոր սնունդ պատրաստելու հա-
մար յոգնողն՝ ծերութեան հասակին մէջ օրուան հացին
կարօտ եղաւ, ինչպէս տխուր աւանդութիւն մը կը յիշա-
տակէ, ու պարկը կռնակը զարկած՝ դռնէ դուռ կը քա-
լէր, ու իրեն Նախատիպ օրինակ Քրիստոսի պէս՝ գլու-
խը հանգչեցընելու տեղ մը չէր գտներ այն Հայաստանին
մէջ՝ զոր պիտի անմահացընէր իւր երկասիրութեամբը ։

Տասը տարի այսպիսի թշուառութեամբ անցուց իր
կեանքը Մովսէս, ինչուան Հայաստանի վիճակը սկսաւ
քիչ մը կերպարանափոխ ըլլալ. պարսկական բռնութիւ-
նը այնչափ անհամար անմեղ արիւններ թափելէն ետքը
յոգնեցաւ, ու կաթուղիկոսական աթոռոյն վրայ նստե-
լով Գիւտ՝ անակնկալ կերպով մը ճանչցաւ իր հին և սի-
րելի աշակերտակիցն՝ զՄովսէս, աղքատութեան տառա-
պանացը և աղքատ գրգլեկին մէջ, մխիթարեց զինքը, և
Հայաստանի՝ իրեն աննման բարերարը ճանչցընելով ։ Եզ-
նըկայ Կողբացւոյն մահուընէն ետքը՝ Բագրևանդայ և Ար-
շարունեաց եպիսկոպոս դրաւ, ուր վարժարաններ բա-
նալով՝ կրթեց իւր նոր աշակերտաց դասերը. այս ալ կէս
մը ըստ աւանդութեան ։

Որոշ չենք կրնար զրուցել թէ ե՛րբ եղած է Մովսեսի
մահը, այլ ժամանակագրութիւն մը կը յերկարաձգէ ա-
նոր կեանքը մինչև Զենոնի կայսրութեան տարիները,
կամ ՚ի 487. և դար մը կամ աւելի ապրած կը սեպէ ։

Տարօնոյ գաւառին մէջ հանդիպեցաւ անոր երջանիկ փոխումը, և մարմինն ալ նոյն գաւառին սուրբ Առաքելաց վանաց եկեղեցւոյն մէջ ամփոփեցաւ։

***

**Խորենացւոյն երկասիրութիւնքը.** — Մովսիսի երկար կեանքը՝ աստուածպաշտութեան և ուսմանց նուիրական եղած է, և ոչ երբէք ուզեր է ձգել ձեռքէն գրիչը։ Բայց կ՚երևնայ թէ իւր գրուածոց և երկասիրութեանց գլխաւոր մասն՝ թարգմանութիւնք եղած ըլլան, ինչպէս ինքն ալ « այր ծեր և անպարապ 'ի թարգմանութեանց » կը կոչէ ինքզինքը. հին յիշատակագիր մ՚ալ կը վկայէ թէ « Մովսէս թարգմանական աշխատանօք ծերացաւ »։ Որչափ ստոյգ է թէ հինգերորդ դարուն մէջ եղած թարգմանութեանց մէջ մեծ մասն ունեցած պիտի ըլլայ Խորենացին՝ իր անխոնջ և բազմավաստակ գրչովը, այնչափ չենք կրնար որոշակի հաստատել թէ որո՛նք են իրեն հարազատ թարգմանութիւնք. միայն քանի մը գրոց վրայ եղած կարծիքները պիտի յիշատակենք՝ թարգմանութեանց վրայ խօսած ատեննիս։

Հիմայ իւր սկզբնագիր երկասիրութեանցը վրայ խօսինք։ Ասոնց մէջ ամենէն գերագոյն տեղը կը բռնէ իրաւամբք իւր Պատմագրութիւնը, որ այսօրուան օրս այլ և այլ լեզուներ թարգմանուած, և գրեթէ աշխարհածանօթ գիրք մը եղած է։

Հեղինակին բուն նպատակն եղած է այս գրքիս մէջ՝ Հայոց պատմութիւն մը շարագրել, այն ազգին ծագմանէն ինչուան իւր օրերը։ Ասիկայ էր նաև Սահակայ Բագրատունեաց իշխանին փափաքը, որ զԽորենացի աղաչեց այն երկասիրութեան ձեռք զարնելու։

Բայց Հայոց պէս հին ազգի մը պատմութիւնը այլ և այլ վերաբերութիւններ ունեցած էր ուրիշ թէ՛ դրացի և թէ մերձաւոր ազգաց և աշխարհաց հետ. որով բնա-

*Կը սկսի վեցերորդը։ Փափաքելի առաւօտը կը հասնի. Պարսիկ ու Հայ սպարապետները փոփոխակի իրենց բանակը կը սկսին քաջալերել. միանգամայն զօրքերնին պատերազմի կը պատրաստեն. ու Տղմուտ գետին քով ահաւոր ճակատամարտ մը կը սկսի, և հոն Վարդան իր բազմաթիւ քաջերովը կ' իյնկնայ։*

*Մահուանէ ազատող Հայոց քաջերը բերդերու մէջ կ' ամրանան. ու փափաքելով մահակից ըլլալ իրենց նիզակակցացը՝ ամենևին չեն շարժիր՝ ոչ 'ի խոստմանց և ոչ 'ի սպառնալեաց։ Բայց երբ կ' իմանան թէ Վասակ ամէն ջանք կ' ընէ որ զիրենք ալ կորսնցընել տալով բոլոր աշխարհին անկմանը պատճառ ըլլայ, կ' իմացընեն Պարսից զօրապետին անոր ըրած ամէն չարութիւններն, ու թէ ինչպէս թէ Պարսից և թէ Հայոց աշխարհացը վնասակար է. ու անօրէնութեամբ ստացած պատիւներէն զինքը զրկել կու տան, որ իրենց հետ մէկտեղ բանտակից կ' ըլլայ, առանց անոնց մխիթարութիւնն և սփոփանքն ունենալու։ Նախանձեցաւ ուրացողն անոնց երջանկութեանը վրայ, ու ինքը չկրցաւ նմանիլ, ու չաբաչար կեանքով մը ապրելէն ետքը, դժնդակ ու դառն մահուամբ ալ մեռաւ։*

*Եղիշէ իր Ցառաջաբանին մէջ խոստացած էր եօթն յեղանակօք կամ գլխով աւարտել իր Պատմութիւնը, բայց ետքը Արտաքոյ եւրն յեղանակին ութերորդ մըն ալ կ' աւելցընէ. որուն մէջ տեղնիտեղը կը պատմէ թէ ինչ նեղութիւնք ու չարչարանք կրեցին այն սուրբ քահանայք՝ որ Վարդանանց պատերազմէն ետքը ախոյեան հանդիսացեր էին Հայաստանի մէջ հաստատուն պահելու սուրբ հաւատքն ու ազգութիւնը։ Նոյնը աւանդած է և Ղազար Փարպեցի. բայց Եղիշէ աւելի մանրամասն կերպով ու աւելի յատուկ և ընտիր ոճով։ Վերջն ալ մասնաւոր հատուած մը կ' աւելցընէ այն սուրբ կանանց համար՝ որ իրենց արանցը արժանաւոր եղեցան սիրով ու սրտով, հաւասար քայլելով թէ առաքինութեամբ և թէ քաջութեամբ։*

Եղիշէի այս պատմութեան գիրքը՝ խարդախած կը համարի Թովմաս Արծրունի, ու այլ և այլ հատուածներ անոնց մէջէն պակսած։ Արծրունին՝ որ իւր ցեղին պարծանքն ու փառքը նորոգելու և անմահացընելու նպատակաւ՝ ձեռք զարկած է իր գրոցը, կրնան, կ'ըսէ, զարմանալ ընթերցողք թէ ինչո՞ւ Եղիշէ իւր պատմութեան մէջ ամենևին չի յիշատակեր Վահանայ Արծրունւոյ վկայական մահը. և այս բանիս՝ հետևեալ պատճառը մէջ կը բերէ։

Պարսից Պերոզ թագաւորին ատենը՝ Բարծումա նեստորական աղանդաւորն՝ Մոկաց աշխարհը եկաւ իւր մոլորութիւնը սերմանելու. և որովհետև այն միջոցին Մոկաց աշխարհին մէջ կը բնակէր Եղիշէ, Բարծումա իւր պատմութեան գիրքը խնդրեց իրմէ, ու խնդիրը ընդունեցաւ։ Բայց Արծրունեաց Մերշապուհ իշխանը՝ որ այն ատեններն Տմորեաց բերդին մէջ ամրացած էր, լսելով Բարծումայի իւր սահմաններն մտնելը, ստիպաւ հրամայեց հեռանալ անկէ, ու սաստիկ պատիժներ և աքսոր սպառնացաւ թէ որ իւր հրամանացը մտիկ ընելու չըլլայ։ Ան ատենը Բարծումա՝ վրէժխնդիր հոգւով Եղիշէի Գրոցը մէջ եղած ամէն Արծրունեաց տան վրայի յիշատակութիւններն հանեց, ու անոնց հետ նաև Վահանայ Արծրունւոյ մարտիրոսութեան պատմութիւնը։ Նոյն իսկ մեր ունեցած Եղիշէի օրինակներէն կրնանք գուշակել Բարծումայի խարդախութիւնը. վասն զի Եղիշէ ինն նախարարաց հետ՝ երկու հարիւր եօթանասունևութ հոգւոյ նահատակութիւնն յիշելէն ետքը կ'ըսէ թէ ասոնցմէ զատ «են յարքունի տանէն և 'ի տանէն Արծրունեաց և յիւրաքանչիւր նախարարաց տանէն, ... այլ ևս եօթնհարիւր քառասուն այր». որով յայտնի կ'ըլլայ թէ Բարծումա չկարենալով բոլորովին Արծրունեաց յիշատակութիւնը վերցընել՝ Վահանայ անունը և իրեն հետ իր ցեղէն մեռնողներուն թիւը վերուց, և մնացած Հայոց ցեղէն ինկածներուն հետ խառնեց անոնց թիւը գումարե-

լով եօթնհարիւր քառասունը. և անոր համար կը հարկադրի հոս յիշել զԱրծրունիս։ Եղիշէ՝ Ռշտունեաց գաւառին ծովեզերքն առանձնացած ըլլալով՝ ատեն չունեցաւ իւր գրուածքը միւսանգամ աչքէ անցընելու, որովհետև հոն եղաւ իւր երջանիկ փոխումը։ Այն պատճառաւ ոմանք կարծեցին թէ անանկ անկատար թողած է իւր գործը սուրբ վարդապետս [1]։

* * *

Պատմութենէն զատ՝ որ Եղիշէի գլուխ գործոցը կը սեպուի, ուրիշ գեղեցիկ երկասիրութիւններ ալ թողուցած է սուրբ վարդապետս, և որոնց մէջ գերազանց կը սեպուի իրաւամբ Միաբանից ճառը։ Պատմութիւննիս կ'աւանդէ թէ հինգերորդ դարուն քաղաքական յեղափոխութեանցը մէջ երբ Թարգմանիչք դարձան իրենց հայրենի երկիրը, ու Վռամշապհոյ օրովը ծաղկած Հայաստանը՝ ներքին երկպառակութեանց, արտաքին մարտից և պարսկական բռնութեան նշաւակ տեսան, երիտասարդութիւննին՝ իրենց սիրելի երկրին երջանկութեանը նուիրող սրտերն՝ անոր ապագայ բարօրութենէն յուսահատածի պէս եղան, ու շատերնին՝ անանկ թշուառ կեանքէ մը աւելի մահը նախամեծար սեպելով, անապատներու լռութեանը մէջ իրենց սրտին խաղաղութիւնը և հոգ-

1. Էջմիածնի Մատենադարանը՝ քառածալ երկաթագիր օրինակ մը ունի Եղիշէի այս սիրելի և ընտիր երկասիրութեան «գրեալ 'ի վանս Գոշայ Արտազածոտան 'ի թուին Հայոց ՈԻԱ (թիւ գրչ. 1645)»։ Յիշուած ուրիշ երկու օրինակք (թիւ 1643 և 1644) նօտրագիր են։ Հին և ընտիր օրինակ է ըստ Անցեա-ցեւոցն կոչուածը, որուն համեմատ եղած է Թէոդոսիոյ տպագիրը։ Հին երկաթագիր օրինակ մ'ալ կայ յանապատն Լիմ։ Մեր քով եղած օրինակները նշանակուած են արդէն 'ի յառաջաբանի տպագրին։ Արղնոյ Բարձրահայեաց Ս. Աստուածածին Մատենադարանին մէջ պահուած գրչագիր մ'ալ (թիւ 212) հետևեալ խորագիրը ունի. «Յիշատակարան և պատմութիւն սրբոյն Վարդանայ քաջի և Հայոց պատերազմին»։

ւոյն փրկութիւնը փնտռել փութացին։ Այսոնցմէ մէկն էր նաև Եղիշէ։ Այն առանձնութեանը մէջ՝ խրատական ու գեղեցիկ ճառ մը գրեց առ միանձունս իւրոյ ժամանակին, հին անապատաւորաց օրինակաւը՝ անոնց կատարելութեանը փափաքողներն քաջալերելու նպատակաւ։ Ո՜րչափ գեղեցիկ լեզու, քանի՜ ընտիր իմաստներ, և ի՜նչ վշտահար սիրտ մը կը ցուցընէ Եղիշէ՝ իւր այս գրուածքին մէջ. բայց ան էր այն ժամանակին Հայաստանին նկարագիրը՝ որ զինքը սիրող սրտերուն ըսել կու տար համարձակ, թէ « ամենայն չարիք եկին հասին 'ի վերայ մեր... կենդանեաւ մերով տեսաք զդիակունս անձանց մերոց »։

Այս գրուածք շատ նմանութիւն ունի Փիլոնի Հեբրայեցւոյ « Յաղագս կենաց վարուց տեսականի » կոչուած ճառին հետ, որոյ թարգմանութիւնն ի յունէ՝ հինգերորդ ոսկեդարուս մէջ եղած կը համարուի։



Եղիշէի միւս այլ երկասիրութիւն է Մեկնութիւն Յեսուայ և Դատաւորաց։ Թէ՛ այս, և թէ ասկէ ետքը յիշատակելիք քանի մը ճառերնիս՝ ժամանակաւ երիցագոյն կ'երևնան քան զգրութիւն պատմութեան և ճառին Միանձանց։ Ոճոյ մեծ զանազանութիւն մը կը տեսնուի ասոնց մէջ, և հարկաւ կ'ենթադրէ ժամանակի երիցութիւն մը, յորում հեղինակը դեռ չէր ստացած ոչ այն հմտութիւնը և ոչ լեզուի մաքրութիւնը։ Ասանկ են Տէրունական աղօթից կամ Հայր մերի մեկնութիւնը, այլ և այլ ճառեր ու քանի մը աղօթքներ։ Անոր համար ուզած են ոմանք տարակուսիլ անոնց հարազատութեանը վրայ. սակայն պատմիչք յայտնապէս անոր ուրիշ երկասիրութեանցը մէջ կը յիշատակեն այս ճառերն, և 'ի մասնաւորի՝ Կիրակոս. « Եղիշէ (գրեաց) զպատմութիւն սրբոց Վարդանանց և զգիրս կանոնացն, և այլ մեկնութիւնս գրոց սրբոց և զչարչարանաց փրկչին »։

*Արարածոց մեկնութիւն մըն ալ շարադրած էր Եղիշէ, որուն կորուստը՝ մեծ զրկում մըն է հայերէն դպրութեանց. և այս կորստեան ցաւը աւելի զգալի կ'ընեն անոր հատուածները, զոր համանուն երկասիրութեան մը մէջ առաջ կը բերէ Վարդան յանուն Եղիշէի: Յայսմաւուրք ալ կ'աւանդեն վասն Եղիշէի. «Արար Մեկնութիւն գրոցն Արարածոց, և ճառս վասն Չարչարանացն Քրիստոսի, Թաղմանն և Յարութեանն. և գիրս կանոնականս համեղ և անուշ բանիւք»:*

Այլ և այլ անգամ տպագրուած է Եղիշէի Պատմութեան գիրքը: Ասոնց մէջ առաջին կը սեպուի 1764ին 'ի Կոստանդնուպոլիս հրատարակուածը, զոր Էջմիածնի միաբան Աբրահամ վարդապետը տպագրել տուաւ: Որուն կրկին տպագրութիւնն է 'ի Փեթրպուրկ հրատարակուածը՝ 'ի ձեռն իշխանազն Յովսէփ Արղութեանց արքեպիսկոպոսի: Վերջը քանի մը անգամ տպագրուած է 'ի Վենետիկ (1828), և 'ի 1838 և 1860 ամբողջ Մատենագրութեանցը հետ մէկտեղ: Անցեալ տարիներ (1861) նոր տպագրութիւն մըն ալ եղաւ 'ի Թէոդոսիա, ըստ Անձևացեաց օրինակի կոչուած, որ թէպէտև ըստ ընթերցուածոյն մեծ տարբերութիւն մը չունի իրմէն առաջ հրատարակուածներէն, բայց իր հնութեամբը և յիշատակներով՝ պատուական: Գրութեան թուական չունի, այլ մէջը գտնուած յիշատակարաններէն՝ իններորդ դարու գրուածք կրնայ սեպուիլ. վասն զի անոնց մէկուն մէջ կը յիշատակուի «տէրն Անձևացեաց Աշոտ», զոր հրատարակողը նոյն կը համարի ընդ Աշոտայ, որ կը յիշատակուի առ Յովհաննու կաթուղիկոսի, և որ Գուրգենայ որդի կը կոչուի:

Եղիշէի պատմութեան գիրքը՝ այլ և այլ եւրոպական լեզուներով ալ թարգմանուած է: Ասոնց մէջ առաջին է անգղիականը, զոր 'ի 1830 տպագրեց 'ի Լոնտոն՝ Նայման գերմանացի արևելագէտն, խորագիր դնելով: The history of Wartan and of the battle of the Armenians, containing an account of religions wars bettowen the Persians and Armenians, by Elisaeus Bishop of the Amadunians. Translated from the armenian by C. J. Neumann. London, 1830. Անկէ ետքը 'ի 1840 իտալական թարգմանութիւն մը հրատարակուեցաւ 'ի Վենետիկ՝ Գաբբէլլէթթի հայագէտ քահանային աշխատասիրութեամբը, Eliseo storico armeno del V secolo; versione del prete Giuseppe Cappelletti. Venezia, tipografia Alvisopoli, և 'ի 1844 'ի Փարիզ գաղղիական լեզուով Գարապետեան Գրիգոր վարդապետի ձեռքով. Soulevement national

de l' Arménie chrétienne au V.me siècle contre la loi de Zoroastre, sous le commandement du prince Vartan-le-Mamigonien. Ouvrage écrite par Élisée Vartabed, contemporain, sur la demande de David-le-Mamigonien, son collègue; traduit en français par M. l'abbé Grégoire Kabaragy Garabed. Paris, 1844. Նոյն լեզուով նորագոյն թարգմանութիւն մ'ալ 'ի Հաւաքման հին և նոր պատմագրաց Հայոց Լանկլուայի. Élisée Vartabed; Histoire de Vartan et de la guerre des Arméniens. Traduction nouvelle, accompagnée de notes historiques et critiques, par V. Langlois. Paris, 1869. Ռուսերէն թարգմանութիւն և աղաւաղութիւն մըն ալ եղած է 'ի Փեթրպուրկ։ — Կը թողունք յիշատակել բնագրին զանազան տեղուանք նոր հրատարակութիւններն, և աշխարհիկ կամ գաւառական լեզուով թարգմանութիւններ 'ի Թիֆլիզ։

# ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

---

Խորենացի և իր ուսումնական դաստիարակութիւնն և ճանապարհորդութիւնք։ — Դարձն 'ի հայրենիս և կրած նեղութիւնները։ — Երկասիրութիւնները։ — Պատմութիւն Հայոց։ — Աղբերք։ — Արտաքին պատմիչք։ — Սուրբ գրոց հետևողութիւն մանաւանդ 'ի ժամանակագրական մասին։ — Իր Պատմութեան գրոց նիւթը։ — Չորրորդ գիրք իր այս երկասիրութեան։ — Խորենացւոյն արժէքը իբրու պատմաբան և ժամանակագիր։ — Եւրոպական և ազգային բանասիրութեան կարծիք։ — Պատմութեան գրոց տպագրութիւնք և թարգմանութիւնք։ — Աշխարհագրութիւնն ու անոր հարազատութիւնը։ — Պիտոյից գիրք։ — Հռիփսիմեանց ճառ։ — Վարդավառի ճառ։ — Այլ և այլ մանր երկասիրութիւնք։ — Իրեն ընծայուած անհարազատ գրուածք։

Հայ պատմագրաց հայրը, ազգային ծանօթ բանասիրութեան մէջ ամենէն բարգաւաճ միտքն և եւրոպական գիտութեանց առջև ամենէն մեծ և ստոյգ պարծանք՝ կը սեպուի արժանապէս Մովսէս Խորենացի։ Չորրորդ դարուն վերջերը Տարօնոյ Խորնի կամ Խորօնք գեղը ծնած է Մովսէս և այն պատճառաւ Խորենացի կոչուած։ Իր մանկութեան ատեն Վռամշապհոյ և սրբոյն Սահակայ և Մեսրովպայ ջանքով՝ Հայաստան նոր կերպարանափոխութիւն մը կ'առնուր ուսումնական զարգացմանց մէջ. և Մեսրովպ՝ հայերէն գրոց գիւտը հնարելէն ետքը՝ ու-

րիշ փափկանձայն, ուշիմ և հանճարեղ մանկանց հետ՝ ատոր ալ, որ իւր քեռորդին էր, դաստիարակութեանը խնամք ունեցաւ ու իր աշխատանաց արդիւնքը յայտնապէս տեսաւ անոր զօրաւոր մտացն ու հանճարոյն վրայ։

Իր միւս աշակերտակցացը պէս՝ Մովսէս ալ իր անմիջական դաստիարակաց ձեռքին տակ մեծ յառաջադիմութիւն ցուցընելէն ետքը՝ անոնց հրամանաւը ճանապարհորդութիւններ ըրաւ 'ի Սիւնիս, յԵդեսիա, 'ի Բիւզանդիոն, յԱթէնս, 'ի Հռովմ, յԱնտիոք, 'ի Պաղեստին և յԱղեքսանդրիա, մտացը գաղափարներուն աւելի ընդարձակութիւն տալու, և հայկական թարգմանութեանց արուեստին կատարեալ հմտութիւն ունենալու համար. քննեց մատենադարաններն ու գրքերը, ու իր ժամանակին անուանի իմաստնոց աշակերտելով եղաւ գերագոյն և ամենահմուտ բանագիտաց մէկն։ Թարգմանչաց ու Անյաղթին վրայ խօսելու ատեննիս՝ տեսանք թէ ինչ պատիւ ունեցաւ իր ընկերակցացը պէս նաև Մովսէս՝ 'ի Բիւզանդիոն, ու Մարկիանոս կայսրն (ըստ աւանդութեան մը) զարմանալով անոր հմտութեանն և իմաստութեան վրայ, և ճարտասան լեզուին զօրաւոր ազդեցութենէն յաղթուելով, «Ո՛վ Մովսէս, կ'ըսէր, յաչս ամենեցուն ընտրեալ են բանք բերանոյ քոյ, որպէս զառաջինն 'ի հռետորաց. և դու կարի քաջացար յոյժ»։

***

Սակայն միւս Թարգմանչաց պէս՝ Մովսէս ալ չկրցաւ ոչ իւր հոգևոր ծնողաց կրկին տեսութեամբը մխիթարել և մխիթարուիլ, և ոչ ալ ուզածին պէս օգտակար ընել Հայաստանի՝ իւր այնչափ ջանքով և յարատեւութեամբ ժողոված հմտութեանց գանձը։ Դարձաւ 'ի Հայս յետ երկար ճանապարհորդութեանց, և իր սակաւամեայ պանդխտութեանը միջոցին՝ վերիվայր եղած տեսաւ իր Հայ-

րենիքը։ Վասն զի, ինչպէս ուրիշ շատ անգամ յիշեցինք, կործաներ ինկեր էր Հայաստանի թագաւորութեան աթոռը, վախճաներ էին Սահակ ու Մեսրովպ, ու Հայաստանի վրայ սոսկալի ու դժնդակ աղետից նախագուշակութիւն մը ամէն կողմանէ յայտնի կը տեսնուէր։

Անանկ դժնդակ ատենի մը մէջ՝ ազգը ոչ միայն ժամանակ չունեցաւ, այլ նաև չուզեց ճանչնալ անոր արդիւնքը. ուստի հեռացաւ քաշուեցաւ Մովսէս ալ անծանօթ տեղուանք, թէ՛ իւր վարդապետաց՝ և թէ աւելի հայրենիքն արտասուելու. երիտասարդութեան աշխոյժ տարիները՝ հայրենեացը մտաւոր սնունդ պատրաստելու համար յոգնողն՝ ծերութեան հասակին մէջ օրուան հացին կարօտ եղաւ, ինչպէս տխուր աւանդութիւն մը կը յիշատակէ, ու պարկը կռնակը զարկած՝ դռնէ դուռ կը քալէր, ու իրեն նախատիպ օրինակ Քրիստոսի պէս՝ գլուխը հանգչեցընելու տեղ մը չէր գտներ այն Հայաստանին մէջ՝ զոր պիտի անմահացընէր իւր երկասիրութեամբքը։

Տասը տարի այսպիսի թշուառութեամբ անցուց իր կեանքը Մովսէս, ինչուան Հայաստանի վիճակը սկսաւ քիչ մը կերպարանափոխ ըլլալ. պարսկական բռնութիւնը այնչափ անհամար անմեղ արիւններ թափելէն ետքը յոգնեցաւ, ու կաթուղիկոսական աթոռոյն վրայ նստելով Գիւտ՝ անակնկալ կերպով մը ճանչցաւ իր հին և սիրելի աշակերտակիցն՝ զՄովսէս, աղքատութեան տառապանացը և աղքատ գրգլեկին մէջ, մխիթարեց զինքը, և Հայաստանի՝ իրեն աննման բարերարը ճանչցընելով։ Եզնըկայ Կողբացւոյն մահուընէն ետքը՝ Բագրևանդայ և Արշարունեաց եպիսկոպոս դրաւ, ուր վարժարաններ բանալով՝ կրթեց իւր նոր աշակերտաց դասերը. այս ալ կէս մը ըստ աւանդութեան։

Որոշ չենք կրնար զրուցել թէ ե՛րբ եղած է Մովսեսի մահը, այլ ժամանակագրութիւն մը կը յերկարաձգէ անոր կեանքը մինչև Զենոնի կայսրութեան տարիները, կամ 'ի 487. և դար մը կամ աւելի ապրած կը սեպէ։

*Տարօնոյ գաւառին մէջ հանդիպեցաւ անոր երջանիկ փոխումը, և մարմինն ալ նոյն գաւառին սուրբ Առաքելոց վանաց եկեղեցւոյն մէջ ամփոփեցաւ։*

***

***Խորենացւոյն երկասիրութիւնքը.*** *— Մովսէսի երկար կեանքը՝ աստուածպաշտութեան և ուսմանց նուիրական եղած է, և ոչ երբէք ուզեր է ձգել ձեռքէն գրիչը։ Բայց կ՚երևնայ թէ իւր գրուածոց և երկասիրութեանց գլխաւոր մասն՝ թարգմանութիւնք եղած ըլլան, ինչպէս ինքն ալ « այր ծեր և անպարապ 'ի թարգմանութեանց » կը կոչէ ինքզինքը. հին յիշատակագիր մ'ալ կը վկայէ թէ « Մովսէս թարգմանական աշխատանօք ծերացաւ »։ Որչափ ստոյգ է թէ հինգերորդ դարուն մէջ եղած թարգմանութեանց մէջ մեծ մասն ունեցած պէտի ըլլայ Խորենացին՝ իր անխոնջ և բազմավաստակ գրչովը, այնչափ չենք կրնար որոշակի հաստատել թէ որո՛նք են իրեն հարազատ թարգմանութիւնք. միայն քանի մը գրոց վրայ եղած կարծիքները պիտի յիշատակենք՝ թարգմանութեանց վրայ խօսած ատեններս։*

*Հիմայ իւր սկզբնագիր երկասիրութեանցը վրայ խօսինք։ Ասոնց մէջ ամենէն գերագոյն տեղը կը բռնէ իրաւամբք իւր* ***Պատմագրութիւնը****, որ այսօրուան օրս այլ և այլ լեզուներ թարգմանուած, և գրեթէ աշխարհածանօթ գիրք մը եղած է։*

*Հեղինակին բուն նպատակն եղած է այս գրքիս մէջ՝ Հայոց պատմութիւն մը շարագրել, այն ազգին ծագմանէն ինչուան իւր օրերը։ Ասիկայ էր նաև Սահակայ Բագրատունեաց իշխանին փափաքը, որ զԽորենացի աղաչեց այն երկասիրութեան ձեռք զարնելու։*

*Բայց Հայոց պէս հին ազգի մը պատմութիւնը այլ և այլ վերաբերութիւններ ունեցած էր ուրիշ թէ՛ դրացի և թէ մերձաւոր ազգաց և աշխարհաց հետ. որով բնա-*

կանաբար Հայոց պատմութեան հետ այն ազգաց պատմութիւնն այլ իր մասը կ'ունենար այս գրուածքիս մէջ. և այս նկատմամբ աւելի սիրելի և հետաքննութեան արժանաւոր սեպուած է Եւրոպացւոց Խորենացւոյն գրուածքը։ Այս վախճանին հասնելու համար՝ հարկ էր որ Մովսէս չէ թէ միայն ազգային՝ այլ նաև օտար աղբերաց դիմէ, և անոնց գրուածոց քննութեամբը աւելի հաւատարիմ և ախորժական ընէ իւր պատմութիւնը։ Ուստի և Մովսէս գլխաւորաբար հինգ գլխաւոր աղբերաց օժանդակութեանը փոյթ ունեցեր է, և են Ա. Յոյն անգիր և գրաւոր մատենագիրք։ Բ. Ասորի և պարսիկ մատենագիրք։ Գ. Եդեսիոյ, Մծբնայ և Սինոպի դիւանագիրք, կամ մեհենական պատմիչք։ Դ. Քաղդէական հեթանոս մատենադարանք և մատեանք՝ ասորի կամ յոյն թարգմանութեամբ։ Ե. Հնոյն Հայաստանի ժողովրդական և ազգային երգերն, գրոյցք և վէպք՝ որ մինչև ցհինգերորդ դար կենդանի և 'ի գործածութեան էին յազգին։

Բաց արտաքին պատմիչներէ, չէ ուզած ամենևին օտարանալ նաև 'ի սուրբ գրոց, ինչպէս իւր վիճակն, գիտութիւնը և սրբութիւնը կը պահանջէր, ուստի և ջանացած է սուրբ գրոց ծննդաբանութիւնքն համեմատել, և կարելի եղածին չափ յարմարցընել իւր ազգային աւանդութեանցը. և 'ի հարկէ ունեցած է ասոր մէջ իւր դըժուարին աշխատանքը. և չկարենալով յամենայնի զուգընթանալ ոչ նուիրական և ոչ ալ ազգային, կամ արտաքին օտար աւանդութեանց և պատմութեանց հետ, հարկ եղեր է երբեմն որ այս վերջիններուն հակառակի, և անով ոմանց առջևը կասկածելի եղեր է իր հաւատարմութիւնը։ Այս դժուարութեանց մէջ աւելի խոհեմութիւն և պարտք սեպեր է Մովսէս՝ սուրբ գրոց հետևիլ. և ամենէն աւելի իրեն գրուածքին նմանողութեան գաղափար առնուլ զԵւսեբիոս. ինչպէս որ այլ և այլ տեղ, և 'ի մասնաւորի առաջին գրոց երրորդ գլխոյն մէջ կը գրուցէ։ Եւ սակայն պատմութեանցը մէջ՝ հին ժամա-

նակաց վրայ խօսելու ատեն՝ քրիստոնեայ հեղինակաց կարծիքները մէջ չիբերեր, այլ Բազմավէպ Աղեքսանդրի, Աբիւդենայ, Կեփաղիոնի և այլոց, որոց գրուածներն առիթ տուած են իրեն քննելու և վիճելու՝ սուրբ գրոց և հին հեթանոսութեան պատմական աւանդից մէջ եղած, և իրարու հակառակամարտ կարծիքները։ Այս աշխատանաց մէջ ալ ընդհանրապէս հետևող եղած է Խորենացին Եւսեբիոսի. վասն զի անանկ արտաքին պատմիչներ կը յիշատակէ՝ որոնք իւր ժամանակը արդէն կորսուած էին, և որոնց միայն քանի մը հատուածքը՝ իրմէ ժամանակաւ երիցագոյն՝ Կեսարիոյ եպիսկոպոսին (Եւսեբիոսի) ձեռքն անցած էին։

*
* *

Տեսնենք հիմայ այն մատենագիրներն՝ որոց գրուածոց օժանդակութեամբն և քննութեամբ շարադրեր է Մովսէս իր Պատմութիւնը։ Ասոնց մէջ թէ՛ կարգաւ՝ թէ մատուցած կարևոր ծառայութեամբը առաջին է Մարիբաս, որուն վրայ արդէն խօսեցանք։ Իրմէ ետքը կու գայ Բերոսոս, կամ իւր շարագրողը՝ Աղեքսանդր Բազմավէպ, որ Քրիստոսէ 100 տարի առաջ է, և որուն բազմաթիւ հետաքրքրական գրուածոց մեծ մասը կորսուած են։ Հնոց մէջ յարգի էին Բազմավիպին գրուածները, և որուն երկասիրութեանց միջնորդութեամբը այլ և այլ պատմական ընտիր հատուածներ հասած են ձեռւընիս. որոնք ընդհանրապէս իւր Քաղդէական կամ Ասորական գրքերէն առնուած են, և զՀրէից կոչուած գրուածէն։

Այլ և այլ տեղուանք կը յիշատակէ Խորենացին ըզՅովսեպոս, և կ'երևնայ թէ հմուտ Հեբրայեցւոյն գրուածոցը կատարեալ տեղեկութիւն ունեցած ըլլայ։ Իրմէն առնելով կը յիշատակէ Սեթայ կանգնած երկու սիւները. Յուլիոս Ափրիկանոսի ժամանակագրական պատմութեան հինգերորդ գրոց մէջ աւանդուածներն՝ անոր խօս-

քերով կը հաստատէ. և դարձեալ քանի մը խօսքով Հրէայ պատմչին մէկ հատուածը կը հաւաստարմացընէ՝ Միհրդատայ մահուանը նկատմամբ, զոր Պոմպէոս Երիքովի քով լսեց։

Կը յիշատակէ դարձեալ Խորենացի և զԿեփաղիոն՝ առեալ յԵւսեբեայ, երբոր Շամիրամայ 'ի Հնդիկս ըրած արշաւանաց պատմութիւնը կ'ընէ։ Ու տարակուսելով անոնց հարազատութեանը վրայ, ստուգագոյն կը սեպէ 'ի Մարիբասայ պատմուածները։ Ծանօթ է իրեն նաև Պորփիւր բազմահռչակ անձն, և իմաստասէր անուանի. որուն հինք ընծայած են այլ և այլ գրուածք, և 'ի մէջ այլոց՝ պատմական երկասիրութիւն մը 'ի հինգ գիրս, յորմէ կը տեսնենք առ Եւսեբիոսի ('ի ժամանակագրութեան) հատուած մը՝ գրանաքաղ մատենագրաց։

Սիբիլլայից ալ յիշատակութիւնը կ'ընէ Խորենացին։ Հինք Սիբիլլայից կամ մարգարէուհեաց գուշակութեանը մեծապէս հաւատք կ'ընծայէին, և բոլոր Յունաստանէն, Ասիայէն և Եգիպտոսէն կը հաւաքէին խնամով անոնց շատ անգամ՝ աննշան և անհաւաստի պատգամները։ Վարրոն կ'աւանդէ իրեն ժամանակին համար՝ թէ տասնէն աւելի Սիբիլլայք կը համրուէին. և թէ անոնց պատգամները զգուշութեամբ պահուելով Հռովմայ մեհեաններուն մէջ, ինչուան իր ատենը հասած էին։ Ասոնց մէջ նշանաւոր և աւելի համբաւեալ սեպուածն էր Պարսկային կամ Քաղդէական սիբիլլայն։ Անիկայ է նաև Խորենացւոյն յիշատակածը, զոր Բերոսեան կը կոչէ՝ անկէ յիշուած ըլլալուն համար։

Խորենացին՝ Արշակայ առաջնոյ թագաւորութեանը վըրայ խօսելու ատենը, այլ և այլ յոյն հեղինակաց հատուածները մէջ կը բերէ, որոց շատին՝ լոկ անուանքը, և այլոց ալ միայն գրուածոց քանի մը հատուածներն հասած են ձեռուընիս։

Ասոնց կարգէն է Հիւպպողիդոս մատենագիր մը, որուն միայն անունը մեզի հասած է, կամ թէ ըսենք՝ նոյն

իսկ անունն անծանօթ է շատ հմուտ բանասիրաց։ Վասն զի չենք կրնար կարծել թէ Խորենացին ուզենայ ակնարկել զՀիպպողիտոս եպիսկոպոս Բոստրացւոց, որուն բարոյական քանի մը ճառերուն հատուածները հասած են ինչուան մեր ձեռքը հին թարգմանութեամբ։

Նեկտանեբոսի վրայ խօսելուն ժամանակ՝ կը յիշատակէ Մովսէս և զՄանեթոն. և զՆեկտանեբոս՝ հայր կը համարի մեծին Աղեքսանդրի։ Բայց որովհետև աշխարհածանօթ է անուանի ինքնակալին հայրը՝ Փիլիպպոս Մակեդոնացի, հաւանականաբար Աղեքսանդրի վրայ եղած առասպելախառն պատմութիւններէն առած է Խորենացին։

Հինք՝ այլ և այլ երկպառակ կարծիքներ ունէին Կիւրոսի՝ Կրեսոսի դէմ տուած պատերազմին վրայ. և այս նկատմամբ ալ բազմաթիւ յոյն պատմագրաց հատուածները մէջ կը բերէ Խորենացին։ Իրեն քննած և ձեռքն ունեցած շատ պատմագրաց կարծեաց համեմատ, ոչ եթէ Կիւրոս՝ այլ Արտաշէս եղած է Լիւդացւոց թագաւորին հետ պատերազմողը, զինքը բռնողը և մահուան դատապարտողը։ Իւր այս կարծիքը հաւատարմացընելու համար՝ Խորենացին մէջ կը բերէ Պողիկրատ, Եւագր, Կամադրոս և Փլեգոնիոս (Փլեգոն) պատմիչները։

Պողիկրատ այն մատենագիրներէն մէկն է՝ որոնց միայն անունը մեզի հասած է։ Աթենէոսի մէջ բերած մէկ հատուածէն՝ կրնայ ենթադրուիլ թէ այլ և այլ գրուածներ շարադրած ըլլայ այս մատենագիրը։ Աթենէոսի հատուածը՝ Լակոնեական ըսուած գրքէն է, ուր Խորենացւոյն յիշատակածը տարբեր գրքէ մը կ'երևնայ, որ հաւանականաբար կ'աւանդէր Ասիոյ մէջ հին ատենէն 'ի վեր կատարուած դէպքերը։

Եւագրոս՝ նոյն է անշուշտ ընդ Եւագորայ՝ որ եգիպտական պատմութիւն մը շարադրած է, զոր կը յիշատակէ Սուիդաս, և որուն գրուածքը ծանօթ էին Պլինիոսի։

Կամադրոս հեղինակ է պատմական գրքի մը՝ որ կորսուած է, և զոր միայն Խորենացին կը յիշէ։

Իսկ Փլեգոն՝ Տրալլացի պատմիչ մըն է, որուն հատուածները կը յիշեն Սուիդաս, Ստեփանոս Բիւզանդացի, Յուլիոս Ափրիկանոս. նաև կը յիշեն Եւսեբիոս, Փոտ, Որոգինէս, Սիւնկելլոս, Կոստանդին Պորփիւրոժեն, և այլք։

Յոյն պատմագիր մըն է նաև Արիստոն Փելլացի, որուն գրուածքէն առած կ'երևնայ Խորենացին Հրէից ապստամբութեան դէպքը Արտաշէս երկրորդի մահուընէն ետքը։

Խորենացին երբ կը հասնի Պարթեւաց հարստութեան ժամանակը, և Սասանեանց՝ Պարսից աթոռոյն տիրապետելը, ուրիշ աղբերաց դիմելու հարկ կը տեսնէ։ Եւ թէպէտ ընդհանրապէս Խոռոհբուտի հետևող կը ցուցընէ ինքզինքը այն ժամանակաց դէպքերուն գրութեանը մէջ, սակայն մեզի գրեթէ բոլորովին անծանօթ քանի մը յոյն պատմիչներ ալ մէջ կը բերէ։ Ասոնք են Պաղեփատ, Պորփիւր և Փիլեմոն։ ԶՊաղեփատ կը յիշատակեն Սուիդաս և Ստեփան Բիւզանդացի։ Սակայն կը կարծուի թէ այլ և այլ համանուն պատմիչներ եղած ըլլան. յորոց մին Եգիպտացի կամ Աթենացի քերական մը կամ փիլիսոփայ, որուն կ'ընծայուին զանազան պատմական շարագրածք, և 'ի մասնաւորի, զառասպելաց հնոց։ Կայ և համանուն Աբիդենացի յոյն պատմիչ մը՝ ժամանակակից Աղեքսանդրի, և գրած է, կ'ըսեն, այլ և այլ մատեանս, որք և կը կոչուէին Կիպրիական, Դեղփական, Ատտիկեան, և այլն։ Պորփիւր Տիւրացի պատմիչ մըն է, որուն գրուածոցը այլ և այլ հատուածները հասած են մինչև առ մեզ։ Իսկ Փիլեմոն՝ բոլորովին անծանօթ անուն մըն է. և անտարակոյս զատ է այն համանուն մատենագրէն՝ զոր Պլինիոս կը յիշատակէ։

Կը թողունք յիշել զԵւսեբիոս, զՓիրմիլիանոս և զայլս։

Բաց 'ի յունական աղբերաց՝ ուրիշ պատմական հա-

րուստ բովք մըն ալ հետազօտեր է Խորենացին․ այսինքն արամայական դպրութեան աղբերքը, որ ինչպէս ուրիշ տեղ ալ առիթ ունեցանք յիշատակելու, հեթանոս ժամանակաց մէջ՝ քաղդէական դպրութիւն կը կոչուէր, և քրիստոնէական դարուց մէջ ասորականի փոխուեցաւ։ Այս դպրութեանս կը վերաբերին Բերոսոս, Սանքոնիատոն, Աբիւդենոս, և վերջին ժամանակաց մէջ՝ Բարդածան, և այլք։

Բերոսոսի անունը՝ մեծապէս յարգի ու ծանօթ էր հնոց, և մանաւանդ Յունաց մէջ, որոնք ընդհանրապէս իրեն կ՚ընծայէին այն ամէն քաղդէական դպրութեան վերաբերեալ գրուածներն, որոնց տեղեկութիւնը ինչուան իրենց հասած էր։ Խորենացին ալ՝ հաւանականաբար անանց տեսած ըլլալու անոր գրուածներն, զինքը 'ի վկայութիւն կը կոչէ, յՆւսեբեայ առնելով, ինչպէս որ Եւսեբիոս ալ Բազմավէպ Աղեքսանդրէն։ Կ՚երևնայ թէ ինքն Բերոսոս ժամանակաւ մերձաւոր էր Աղեքսանդրի, և ըստ յունական աւանդութեանց՝ ոչ միայն այլ և այլ պատմական գրուածներ շարագրած էր, հապա նաև աստեղաբաշխութեան և աստեղագիտութեան վրայ գըրուածներ։

Ասոնցմէ զատ աչքին առջև ունեցած էր Խորենացին Ղերուբնա, Ուղիւպ, Բարդածան և Խոռոհբուտ պատմըչաց գրուածները, որոնց վրայ արդէն խօսած ենք համառօտիւ։ Դարձեալ ազգային դիւանական գրուածներ, որոնք բազմաթիւ էին իւր ժամանակները, այլ և այլ ազգային աւանդութիւններ և երգեր։

Ասոնք են Խորենացւոյն հետազօտած օտար, արտաքին և ազգային աղբերք։

*
* *

Երեք գիրք բաժնուած է Խորենացւոյն Հայոց Պատմութիւնը։ Առաջինը՝ զոր ինքն Ծննդաբանութիւն Հայոց

մեծաց կը կոչէ, Հայկազանց թէ Նահապետական և թէ Թագաւորական պատմութիւնը կը բովանդակէ. ու կը սկսի մասնաւոր թղթով մը կամ ընծայականաւ առ Սահակ ասպետ Բագրատունի՝ որ նոյն պատմութեան չարագրութիւնը խնդրած էր իրմէ: Ետքը իւր աշխատասիրած գրքին աղբերացը վրայ խօսելով, կը ցուցընէ թէ աւելի Յունաց հետեւող եղած է քան թէ Քաղդէացւոց և Ասորւոց. որոնք աւելի կերպով մը մեր ազգային յատուկ յիշատակներն ամփոփելուն համար՝ յարմարագոյն կրնային՝ կամ պէտք էին սեպուիլ նմանողութեան. սակայն Խորենացին իւր բռնած հակառակ ընթացքն արդարացընելու համար՝ Յունաց ազգին ուսումնական գերազանցութիւնը, պատմութեանց ճշդութիւնը, և հետազօտութեանց փոյթը մէջ կը բերէ, որով իրաւամբ «մայր և դայեակ ամենայն իմաստութեան» կոչուած են, և մեծարուած:

Բայց որովհետև արտաքին աղբերք բաւական չէին ազգային պատմութիւն մը ամբողջ կազմելու համար, հարկ էր որ նոյն ազգին մէջ գտնուած պատմագրաց հետ ալ խորհրդակցի. և ահա հոս էր Խորենացւոյն համար ամենամեծ դժուարութիւն մը. որովհետև ինքը պիտի ըլլար ամբողջ ազգային պատմութիւն մը առաջին չարագրողը. և այն պատմութեան յօրինմանը համար պէտք եղած նիւթերը մատակարարող ազգային պատմիչներ կը պակսէին:

Ինչ՞ն առաջ կու գար այս պակասութիւնը: — Խորենացին ազգին նախարարացը և թագաւորաց անիմաստասէր բարուցը կու տայ. «Իրաւ, կ՚ըսէ, պզտիկ, սակաւաթիւ, քիչ զօրութիւն ունեցող և շատ անգամ ուրիշ զօրաւոր ազգաց հպատակ ժողովուրդ մը եղած ենք, բայց մեր մէջն ալ քաջութեան անուանի գործեր շատ հանդիպած են. որոնք կրնային պատմչի մը արժանաւոր նիւթ պատրաստել, ինչպէս նման դէպքեր մատակարարած են քաղդէացի, ասորի, եգիպտացի և յոյն

պատմչաց։ Սակայն մեր իշխաններն չունէին, կ'ըսէ, այն իրաւացի փառասիրութիւնը, իրենց անուանքը և քաջութեանց և գործոց յիշատակը աւանդելու յետնոց»։ Ուստի և իրաւամբ կը զարմանայ Բագրատունւոյ վրայ, զոր ազգին մէջ առաջին և միակ կը գտնէ այսպիսի բանի մը փափաքող. և այդ փափաքը արդիւնացընելու համար՝ ամէն դժուարութիւն յանձն կ'առնու պատմիչը։

Եւ որովհետև, ինչպէս առաջ ալ յիշատակեցինք, Մովսէս իրեն գլխաւոր աղբիւր հետևողութեան ուզեր էր բռնել զսուրբ գիրս, և արտաքին պատմչաց խօսքերն և աւանդութիւններն կարելի եղածին չափ անոր հետ ընդելացընել, այս աշխատանքը Ադամէն և Նահապետներէն կը սկսի, որոց վրայ ուրիշ կերպով կը խօսին սուրբ գիրք, և բոլորովին տարբեր լեզու մը կը բանեցընեն Բերոսոս, Բազմավէպ Աղեքսանդր և Աբիւդենոս, թէ անոնց անուանը նկատմամբ և թէ այն գործերուն զոր Աստուածաշունչը կու տայ անոնց. և կը ջանայ սուրբ գրոց ժամանակագրութիւնը՝ արտաքին պատմչաց հետ համաձայնեցընել։ Այս դժուարին՝ բայց հետաքննական աշխատանքին նուիրուած են Խորենացւոյն պատմութեան առաջին գրոցը՝ ինչուան ութերորդ գլուխները։

Այն գլխէն կը սկսի Մարիբասայ արդէն ծանօթ պատմութիւնն ընել, Վաղարշակայ հրամանաւ մինչև 'ի Նինուէ երթալը, հոն արքունի մատենադարանին մէջ ընդհանուր ազգաց պատմութիւն մը գտնելը, և անկէց Հայոց աշխարհին և պատմութեան վերաբերեալ տեղեկութիւնները 'ի մի հաւաքելը, և անոր առաջնորդութեամբը՝ ու շատ անգամ նաև խօսքերով մէջ կը բերէ Հայկայ, անոր որդւոցը՝ Արմենակայ, Հարմայի, Արամայ, Արայի, և այլն, պատմութիւնները։ Այս յետին նահապետը՝ որովհետև պատերազմ ունեցաւ Նինուէի հռչակաւոր Շամիրամ թագուհւոյն հետ, և փառաւոր մահ մը, և այն մահուամբ Շամիրամ կրցաւ ինչուան Հայաստան մտնել և հոն իրեն բնակութեան քաղաք հաստատել, Խորենա-

ցին նոյն Թագուհւոյն իւր որդիքը կոտրելը, Զրուան մոգէն 'ի Հայաստան փախուստը, և Նինուասայ իւր որդւոյն ձեռքով մեռնիլը՝ կը յիշատակէ, Կեփաղիոնի հետևողութեամբ. բայց աւելի հաւանականագոյն կը սեպէ Մարաբասայ պատմութիւնը՝ որ Շամիրամայ ինչուան 'ի Հնդիկս ըրած արշաւանքը պատմելէն ետքը՝ անոր մահը կը դնէ 'ի Հայաստան, զոր և ազգին քանի մը հանճարեղ առակներովն ալ կը հաւատարմացընէ։

Շամիրամայ մահուընէն ետքը պատահած դէպքերը, և Հայոց վրայ իշխող Նահապետաց և Թագաւորաց ժամանակագրութիւնը նորէն հարկ կը սեպէ Խորենացին միաբանել սուրբ գրոց և Քաղդէացւոց ժամանակագրութեանը հետ, յԱրայէ մինչև 'ի Զարմայր, որոնց համառօտ պատմութիւնը կ'ընէ, յերկարելով իրեն ախորժական ու սիրելի Երուանդեան Տիգրանայ վրայ։

Վահէին՝ որ Աղեքսանդրի հետ պատերազմեցաւ, ու կեանքն և թագաւորութիւնը կորսընցուց, կը վերջացընէ Խորենացին իր Պատմութեան առաջին գիրքը, մասնաւոր յաւելուած մ'ընելով այն գրոց մէջ շատ անգամ յիշատակուած Բիւրասպի Աժդահակայ վրայ, և այն անձին նկատմամբ պարսկական առասպելաց մէջ գտնուած դէպքերու։

*
* *

Մովսէս իր երկրորդ գիրքը՝ Բան միջակ պատմութեան Հայոց կոչած է. և կը բովանդակէ միջոցը՝ որ 'ի մեծէն Աղեքսանդրէ մինչև 'ի Տրդատ, Հայոց պատմութեան ճոխագոյն և ընտիր մասը։ Որովհետև Արշակունեաց թագաւորութեան ծագումը՝ Աղեքսանդրի մահուամբ և անոր ընդարձակ տէրութեան բաժանմամբ եղած է, հարկ կը սեպէ պատմիչն այն հռչականուն աշխարհակալին մահը, և թագաւորութեանը բաժնուելուն յիշատակութիւնն ընել. որուն մահուընէն ետքը Սելևկոս կը թագաւորէ

'ի Բաբելոն, կը նուաճէ զՊարթեւ, ու երեսուն և մէկ տարի թագաւորելէն ետքը իրեն յաջորդ կը ձգէ զԱնտիոքոս, որուն իշխանութեան մետասաններորդ տարին Պարթեւք Մակեդոնացւոց լուծը կը թօթափեն, և որոց վրայ կը թագաւորէ Արշակ. և բոլոր արեւելքը իր իշխանութեան տակ ձգելով՝ Մակեդոնացիքը Բաբելոնէն կը մերժէ, Հռովմայեցւոց հետ ալ կը կռուի, և իր քաջութեանը և համբաւոյն արհաւիրօքը բոլոր տիեզերքը կը լեցնէ։ Իրեն կը յաջորդէ Արտաշէս, և Արտաշիսի՝ մեծն Արշակ, որ Դեմետրեայ ու անոր որդւոյն Անտիգոնոսի հետ կը կռուի, որուն չի կրնար դէմ դնել Անտիգոնոս, ու զէնքերը ակամայ ձգելով՝ շղթայիւք կը բերուի 'ի Պարթեւս։ Այսպէս աշխարհի երրորդ մասին տիրեց, կ'ըսէ, Արշակ։ Ան փառաց և յաջողութեանը մէջ՝ իր Վաղարշակ եղբայրը Հայոց վրայ թագաւոր կը դնէ Արշակ. և աշխարհը անոր յանձնելով, սահմաններն ընդարձակելը իր զինուցը յաջողութեան և քաջութեան կը յանձնէ։ Իրեն վըստահութեանը արժանի կ'երևնայ Վաղարշակ. ոչ միայն աշխարհքին ներքին բարեկարգութիւնը հոգալով, այլ նաև տարածելով իր իշխանութիւնը մինչև Պոնտոսի բնակչացը վրայ և մինչև 'ի Փռիւգաստան. զորոնք ոճով և մանրապատում կ'աւանդէ Խորենացին։ Քսանուերկու տարի կը թագաւորէ Վաղարշակ, ու իրեն յաջորդ կը թողու զԱրշակ։

Անոր թագաւորութեան պատմութեամբը՝ Մարիբասայ երկասիրութիւնն ալ կը լմանար. ուստի և ուրիշ աղբիւրներէ հարկ էր հաւաքել հետևեալ դէպքերը։ Խորենացի Եդեսիոյ դիւանացը մէջ՝ Աֆրիկանոսի պատմութեան գրոցը հանդիպած էր, որ մեր պատմութեանց վերաբերեալ ամէն դէպքերը՝ նոյն դիւաններէն համառօտեր էր։ Իրմէ և ուրիշ պատմագիրներէ կը սկսի շարայարել Խորենացին իր երկասիրութիւնը, սկսանելով յԱրտաշիսէ առաջնոյ որ 'ի Պարսից նախագահութեան իրաւունքը յափշտակեց, և անուանի եղաւ յաղթանա-

կաց բազմութեամբ, և հռչակաւոր նաև յոյն պատմագրաց գրուածոց մէջ. որոց այլ և այլ վկայութիւններն ալ մէջ կը բերէ Խորենացին. ու Լիւդացւոց թագաւորութեան կործանումը, և Կրեսոսի մահը, զոր Հերոդոտ, Պղուտարքոս, Յուստինոս և Վաղերիոս Մաքսիմոս Կիւրոսի կ'ընծայեն, զայն այլ և այլ յոյն պատմչաց յատուկ խօսքերովը Խորենացին Արտաշիսի կու տայ: Թէպէտ և նախ ինքն ալ կը տարակուսի. «Ընդ որ տարակուսեալ մեր՝ բազում խոյզ խնդրոյ արարաք, քանզի լսէաք 'ի պատմութեանց ոմանց՝ Կիւրոսի սպանեալ զԿրիւսոս». և այս է ստոյգն. իսկ այն Յոյն պատմչաց ըսածն Արտաշիսի վրայօք՝ դեռ մեզի ալ տարակուսելի և անլոյծ կը մնայ:

Անկէ առաջ կը տանի Մովսէս իւր պատմութիւնը, Տիգրանայ հետաքննական և մտադրութեան արժանի դիպուածոց վրայ, և վերջը յաջորդաբար մինչև Տրդատայ թագաւորելը և անոր մահը: Բայց այն դէպքերը՝ զոր արդէն այլք իրմէ առաջ աւանդած էին, ինչպէս Ղերուբնա, Ագաթանգեղոս, Գլակ և ուրիշները, ինքը համառօտ կերպով մը կը յիշատակէ:

***

Խորենացւոյն երրորդ գիրքը՝ Աւարտաբանութիւն մերոց հայրենեաց կը կոչուի, և որուն նպատակն է 'ի սըրբոյն Տրդատայ մինչև իւր օրերը հանդիպած դիպուածները յիշատակել. մինչև այն թշուառ ատենները յորս աչքովը տեսաւ Հայոց հայրապետական և արքունի աթոռոց ընկնալն. և այնպիսի փառօք լեցուն պատմութիւն մը դառն և սրտաշարժ ողբերովը կը լմընցընէ: Ողբ մը՝ որ եթէ գրողին սրտին արժանի ընթերցողներ ունենար՝ անշուշտ ազգին ապագային վրայ մեծ տարբերութիւն պիտի տեսնուէր:

Խորենացիէն քիչ առաջ՝ նման դէպքի և գրկման մը

մէջ՝ գտնուելով Գրիգոր Աստուածաբան, սրտաշարժ արձանական մը յօրինէր էր 'ի սուրբն Մելիտոս Անտիոքայ հայրապետ. այն ճառին ընթերցումը այնպիսի տպաւորութիւն մը ըրած էր Խորենացւոյն սրտին վրայ՝ որ գրեթէ շատ անգամ անոր իմաստները և խօսքերը կը գործածէ այս ողբին մէջ։ Նման ցաւոց հանդիպած ու համգունատիպ աղետից ականատես, զուգակից հանճարներ՝ նման լեզու ալ կը գործածէին։ Վասն զի Աստուածաբան՝ զՄելիտոս կ'ողբար, որ ամուր ապաւէնն էր Քրիստոսի հաւատոցը, ուսկից կ'ակնածէր և ուրացողն Յուլիանոս. իսկ Մովսէս՝ զՍահակ և զՄեսրոպ՝ որ հաստատութիւն էին Հայաստանի հաւատոցը և քաղաքականութեան, և որոնց մահը՝ բոլոր աշխարհին կործանումը կրնար ըլլալ։ Անոր համար հառաչանօք կ'աղաղակէր Գրիգորիոս, «Ողորմիմ քեզ, ով եկեղեցիդ. առ քեզ է բանս Անտիոքու քաղաքդ. ողորմիմ քեզ յանկարծակի փոփոխմանդ այդմիկ»։ Եւ Խորենացին. «Ողորմիմ քեզ, եկեղեցի Հայաստանեայց»։ Աստուածաբանն. «Նահատակէր յաղագս ճշմարտութեանն քրտամբք. իսկ հարսն համբերէր՝ ողջախոհութեամբք զամուսնութիւնն պահելով. ժամանակ էր 'ի մէջ յոլով, և ոմն սեղեխաբար յանդգնէր յանարատ առագաստն, այլ հարսն ոչ աղտեղանայր»։ Ու Խորենացին. «Երանի՛ առաջնոյ և երկրորդի փոփոխմանն. զի էր ինչ ժամանակ հեռանալոյ փեսային և փեսաւէրին, և հարսնդ համբերէր՝ ողջախոհութեամբ զամուսնութիւն պահելով»։ Կը թողունք յիշատակել ուրիշ քանի մը նմանութիւններն ալ։

* * *

Խորենացւոյն այս ընտիր և անզուգական երկասիրութիւնը՝ գտած է իւր արժանաւոր յարգն ալ ոչ միայն ազգայնոցն առջև, այլ նաև բուն գիտութիւնն և իմաստութիւնը յարգող Եւրոպայի դիմաց։ Ազգին մէջ այն-

չափ մեծ էր իր համբաւը՝ որ ինչպէս Յունաց մէջ պատմագրաց հայր սեպուած էր Հերոդոտ, և իւր հեղինակութեամբն ամենուն առջև պատկառելի, այսպէս ալ Խորենացին՝ իւր ազգային պատմութեան ունեցած հմտութեամբը, և հասուն անկողմնասէր քննադատութեամբ. անոր համար Ասողիկ՝ լոկ պատմագիր ըսելով զինքը կը հասկընայ. և ուրիշ տեղ մըն ալ իւր պատմութեան գրոցը մէջ կը կոչէ զնա «Մեծն Մովսէս հանգոյն Եւսեբեայ, որ քերթողացն անուանի հայր»: Աւելորդ կը սեպենք յիշել ուրիշ վկայութիւնները՝ որոնցմով լեցուն են Խորենացիէն ետքը եկող պատմագրաց երկասիրութիւնները: Բայց ամենէն աւելի իրենց առ Խորենացին ունեցած մեծարանքը անով կը յայտնուի՝ որ իրենք ալ իրենց կողմանէ ազգային պատմութիւն մը շարագրելու ձեռք զարկած ատեննին՝ կը ջանային յամենայնի իրեն հետևող ըլլալ, ու երբեմն գրեթէ ընդօրինակող: Այսպէս վարուած են Յովհաննէս կաթողիկոս, Ուխտանէս, և ինքն իսկ Ներսէս Շնորհալի իւր վիպասանականին մէջ:

Ազգային նոր բանասիրութիւնն ալ՝ ինչուան դարուս սկիզբը՝ նոյն յարգանաց մեծարանօք վարուած է միշտ այս մեծանուն անձին և իր բազմահմուտ երկասիրութեանը նկատմամբ: Պատմական ուսմանց նորագոյն հետազօտութիւնք՝ որչափ ալ կասկածելի երևցուցած են իրմէ պատմուած և իբրև ստոյգ յառաջ բերուած զանազան դէպքեր, սակայն երբէք չեն կրցած ժխտել անոր ծայրացեալ հմտութիւնն՝ և իբրև պատմաբան և մատենագիր ունեցած արժէքը: Անոնց մէջ ամենէն աւելի Խորենացւոյն անձին և երկասիրութեան վրայ խիստ լեզուով և քննադատութեամբ վարուող մը՝ կը բռնադատուի հետևեալ տողերով հռչակել և խոստովանիլ անոր արդիւնքը:

«Խորենացւոյն թէ՛ իբրև մատենագիր և թէ՛ իբրև պատմիչ՝ առաւելութիւններն չեն կրնար ուրացուիլ: Ընդհանրապէս խօսելով, իբրև հայերէն մատենագրութիւն,

Խորենացւոյն գիրքը մեր նախնի մատենագրութեան մնացորդաց մէջ երեւելիներէն մին է։ Ոչ բոլորովին յստակ, բայց ինքեան յատուկ ընտիր բառերով, հակիրճ՝ այլ պերճ եւ հարուստ, միանգամայն զուարթ ոճով, մանաւանդ նկարագիրներու մէջ, Խորենացին կը հաւասարի իւրք իրօք քան զնա առջիններուն. որպիսի են Ագաթանգեղոս, Բիւզանդ, Եզնիկ. իսկ քան զնա յետնոց՝ Եղիշէի, Փարպեցւոյն եւ այլոց մէջ խորենեան ոճոյ ըստուերն անգամ չի տեսնուիր։ Հայկայ պատերազմին, ինչպէս նաեւ Ձիրաւի ճակատուն, տեղագրութեանց մէջ՝ Արագածու դաշտին եւ Երուանդակերտի նկարագիրներն եւ ուրիշ ոչ սակաւ նկարագիրք, ոչ մերայոց միայն, Յոյն եւ Հռովմայեցի մատենագրաց մէջ անգամ հազիւ ունին զիւրեանց նմանն. գրեթէ չիք գլուխ ուր չիցէ տեսանելի մատենագրական հանճար հեղինակին. ամէն դէպք, ամէն պարագայ ընդ գրչաւ Խորենացւոյն առնու գեղեցկութիւն, վսեմութիւն, ոյժ եւ կենդանութիւն։ Պարբերութիւն չկայ, իմաստ չկայ որ բոլոր գրքին հիմը կազմող բարձրութենէն անկանի կամ նուաստանայ։ Միով բանիւ Խորենացւոյն պատմութիւնը բազմարուեստ ճարտարագործ պատկերներու թանգարան է որ կը հիացընէ եւ կը յագեցընէ տեսանողը մինչեւ ցզմայլումն։ Ստոյգ է թէ խարենեան ոճոյն մատենագրական գերազանցութիւնը բնագրին կից է, ինչպէս մարմնոյ մը յատկութիւնը մարմնոյն հետ. գէթ մինչեւ ցարդ թարգմանութիւն մը չկրցաւ կաղապարել այս բնագիրն ինչպէս որ է իւր բանասիրական գոյներովը. այնպէս որ Խորենացին իբրեւ մատենագիր, պարտ է նոյն իսկ Խորենացւոյն մէջ տեսնել։ Մի միայն թերութիւն ոճոյ նորա են ստէպ գեղչմունք եւ զարտուղութիւնք, որովք կամի կարճառօտ եւ ազդու երեւել. բայց, հակառակ կանոնաց լեզուի, երբեմն այնպէս կը խրթնանայ մինչեւ յանել լաբիւրինդոս արկանել զընթերցողն։

«Ոչ ինչ ընդհատ երեւելի է Խորենացին նաեւ իբրեւ

պատմագիր։ Դիպաց զանազանութիւն և հարստութիւն ստէպ պատմական շեղումներով, որ կամ անձանց և տեղեաց նկարագիրներ են և կամ հանճարեղ դիտողութիւններ, միանգամայն ազգային երգերու և աւանդութեանց ստէպ յիշատակութիւնք, ապացոյց են պատմական հմտութեան և ճաշակի նորա. երկու գլխաւոր յատկութիւնք՝ որ մեր հին պատմիչներէն և ոչ միոյն, իսկ արտաքիններէն սակաւուց քով կը տեսնուին։ Այսպիսի և այսչափ եզական յատկութեանց հետ ցաւ է տեսնել մեր ծերունի պատմագիրը քննադատութեան կողմանէ թերի »[1]։

*
* *

Արեւմտեայց մէջ ունեցած յարգն ու մեծարանքն ալ, իր Պատմութեան գրոցը բազմապատիկ թարգմանութիւններէն, ու գրեթէ եւրոպական գիրք մը ըլլալէն կը յայտնուի։ Այս արժանաւոր յարգը և իրաւացի մեծարանք համառօտած կը գտնեն ընթերցողք անոնցմէ միոյն, գիտութեամբն ու մատենագրական հմտութեամբ նշանաւոր, և արդէն մեզմէ յառաջագոյն յիշուած անձի մը, հետագայ դատաստանին մէջ մեր Քերթողահօր այս երկասիրութեան վրայ։

« Ամէն գրուածներէն աւելի Խորենացւոյն հանճարոյն ու սրտին պատիւ ընողը՝ իր հայրենեաց պատմութիւնն է։ Իշխանի մը խնդրանօք կը գրէ զայն. բայց զինք կամ իր ցեղը շողոքորթելու համար՝ ճշմարտութիւնն անպատիւ չըներ կամ չի սքօղեր։ Կը սիրէ ու շատ կը սիրէ իր Հայաստանը, և սակայն յայտնապէս կը մերկանայ իր աղէտքը. անցեալներն խստիւ կը յանդիմանէ, ըլլալիքն ալ յառաջ կը ծանուցանէ։ Եւ որովհետև ազգք՝

1. ԳԱՐԱԳԱՇ (Ա. Մ.) Քննական պատմութիւն Հայոց, Մասն Ա. 91։

չուտ կամ անագան, կը ճանչնան ճշմարիտ սիրոյ լեզուն, Հայաստան զինք կը մեծարէ և կը սիրէ, և այդ քանի մը խօսքերը՝ նուիրականք են իրեն համար։ Չի ծածկեր իշխողաց յանցանքը. բայց երբ ազգէն յատուկ թագաւորի մը ընտրութեան խօսքը կ'ըլլայ, ինք ալ՝ իր վարդապետին հետ կը խրատէ համբերել։ Կը սիրէ ուսուցիչքը, իբրև հոգւոյ ծնողս, գործով լի խօսքեր կը գտնէ անոնց մահը արտասուելու։

«Ստուգախօս, ինչպէս արժան է ըլլալ պատմագրին, և որ այնչափ սակաւագիւտք են։ Ոչ է սիրող հրաշալւոյն, և կ'ըսէ զայն։ Հայկական այրուբենից գիւտին խօսքն ըրած ատեն, աստուածային ազդմամբ կը համարի զայն եղած, ոչ տեսլեամբ կամ զգալի երևմամբ, այլ յայտնութեամբ Բանին 'ի միտս ջերմեռանդն հայցողին։ Առաւելագոյն մեծարանաց արժանաւոր է երբ այնպիսի դէպքեր մէջ կը բերէ՝ որուն ուրիշ պատմիչք չեն վկայեր կամ կը հակառակին. ինչպէս Քրիստոսի թղթելը առ Աբգար, և հայ թագաւորին արշաւանքն 'ի Յունաստան՝ բոլորովին նման և ժամանակաւ յետոյ Քսերքսեայ բեկման։ Անստոյգ դէպքերն՝ իբրև անհաւաստի կ'աւանդէ. առասպելեաց խառն եղածներն՝ մեծ զգուշաւորութեամբ. յորոց և զոմանս՝ իբրև յաւելուած մը կը կարգէ առաջին գրոցը։ Այսպիսի յիշատակութիւններ մէջ կը բերէ՝ չէ թէ իրեն հաճոյական սեպուելնուն, այլ լոկ ցուցընելու համար առ Բագրատունին ունեցած մեծարանաց և սիրոյ չափը։ Տարբեր կամ հակառակ կարծիքներն ալ յիշելով, կարելի եղածին չափ ճշմարիտը կ'ընտրէ և կ'աւանդէ։

«Ամէն կարելի աղբերաց դիմեց. պատմագիրք և ժամանակագիրք, դիւանական գրութիւնք՝ զորս Աղեքսանդր փոխադրել տուած էր 'ի յոյն լեզու. և յորոց թերևս օգտուեցան Կեփաղիոն, Աբիւդենոս և այլ պատմիչք։ Այսպիսի հրաման մը մեծ պատիւ կը բերէ երիտասարդ աշխարհակալին հանճարոյն, և անգութ ամբարտաւա-

*նութեամբ իրմէ թափուած արեան մէկ մասը կը ջնջէ, և կը ցուցընէ թէ ի՛նչպէս Նախախնամութեան ձեռքն է աւերման և կործանման գործիները՝ կենդանագործ քաղաքակրթութեան գործի ընել։*

*« Կը պակսէին Խորենացւոյն անընդհատ շարք ազգային վաւերական գրուածոց. սակայն քաղաքապետական դիւանաց մէջ կը պահուէին գաւառաց, գիւղից՝ ու ինչուա՛ն նաև մասնաւոր ընտանեաց յիշատակարանք՝ պարսիկ և յոյն տառերով։ Իր քննած և խորհրդակցած մատենագրաց մէջ հնագոյնն է Մարիբաս... կը յիշէ նաև հին իմաստնոց խօսքերը, և Բերոսեան Սիբիլլայն. ազգային երգոց մէջ՝ կը տեսնէ անոնցմէ ելած պատմական ջերմ լոյսը. և յորում աւելի պատմաբան է և աւելի քերթող՝ քան զյոյնսն, զհռովմայեցիս և զմեր իտալացիս։... Նորագոյն պատմագրաց մէջ կը յիշէ զԱփրիկանոս։ Որոգինեայ ժամանակակից, և յՆւսեբեայ յիշատակուած ... իր ատենի մատենագիրներէն շատէն վեր է հմտութեամբ և դատմամբ. իսկ ՚ի հնախօսական գիտութեան՝ ստորև միայն քան զԱփրիկանոս և զՆւսեբիոս։*

*« Փոքր ըստուած է իր երկանիրութեան ուրուագիծը, բայց բովանդակութիւնն մեծ։ Իբրև պատմիչ՝ ինքն է ստուգապէս Հայկազանց Մովսէսը։ Ի նմա՝ իբրև յաղբեր ամփոփեալ են՝ ցրուած ջուրք աւանդութեան, սրբուած մաքրուած, հոսելով հանդարտ ներդաշնակութեամբ։ Անցելոյն մթութեան մէջ՝ ինք միակ առաջնորդ. մարդկային ազգը իրեն պարտըկան է ժողովրդեան մը յիշատակարանները՝ որ թէպէտ սակաւաւոր թուովը, և պատերազմական անիրաւութեամբք ոչ այնչափ հռչակեալ, այլ արևելից և արևմտից մեծ ազգերուն հետ միացած՝ իբրև քոյր մը անոնց և ազգակից։ Ի Խորենացւոյ կ՚իմանանք թէ ի՛նչ վերաբերութիւններ ունեցաւ Հայաստան Ասորեստանեայց հետ Շամիրամայ ատեն. Նթովպացւոց և ասիակողման Յունաց Տրոյիոյ կոչուած*

պատերազմին ժամանակ, և որ նշանակ մ'էր, ինչպէս Հերոդոտ ալ տեղ մը կ'ակնարկէ, արևելից և արևմտից մէջ տրուած արդիւնաբեր մրցման։ Զորրորդ Հայոց իր գաղթականութիւնները տարածելն մինչև 'ի Կապադովկիա, կը ցուցընէ զՀայս ասիական ուրիշ ազգերէն ալ մերձաւոր կերպով եղբայրացած եւրոպական արեան հետ...։ Բայց հայ ազգին պատմութիւնը թէ եւրոպականին մերձաւոր և թէ հեռի նկատել ալ ուզենանք, կրկին տեսակէտով ալ արժանաւոր է ծանօթանալու։ Խորենացի՝ թէ վաւերական գրութեանց նուազութեան համար, թէ անճապարանօք իր գրուածքը յօրինելուն, և թէ ընդհանրապէս ուրիշ ամէն պատմչաց ոճին հետևելով՝ որոնք ազգի մը պատմութիւնն ըրած ատեննին՝ անոր սովորական և ներքին վիճակը նկարագրելէն աւելի, յաղթանակացը և պարտութեանց, նուաճելուն կամ նուաճուելուն դէպքերովը կը զբաղին, քիչ բան կ'ըսէ երկրին սահմանադրութեանց վրայ, բայց թերևս աւելի քան ըզպատմիչս հռչակաւորագոյն ժողովրդոց։ Հետաքննական են իր պատմութեան մէջ ասդիս անդին նշանակուած յարաբերութիւնք նախարարաց ընդ արքայի, և թէ քանի՛ խոհական խելամտութեամբ կ'ընծայէ այս տեղեկութիւններն. որովք պիտի տեսնուի թերևս՝ թէ ինչպէս նախնական թագաւորութեանց մէջ, ազնուապետութիւնը կը բարեխառնէր բարւոյ ու չարի քմահաճութիւններն, և ժողովրդեան ու թագաւորին մէջ անանց պարիսպ մ'էր...։

« Այսպիսի փութաջան ու խոհական անձի մը ու մանաւոր ժամանակաց համար գրեթէ միակ մատենագրի տուած տեղեկութիւնք՝ պատուականք են։ Այլ և այլ դիպաց մէջ ընդ Փարպեցւոյն համաձայնութիւնը (ուր երկուքն իրարու գրութիւնը տեսած չեն), ինչպէս նաև ընդ պատմչաց Յունաց և Հռովմայեցւոց և յիշատակարանաց՝ կ'առաւելու իր հեղինակութիւնը. և զոր լիուլի կերպով ունեցած է իր ազգակցաց քով...։ Պատմելու պարզ կեր-

պովը՝ աւելի հաւատարմութիւնը կ՚աւելցընէ. ծանրութեան հետ խառնուած պարզութիւն մը։ Խնամքով հեռի կը պահէ իր գրիչը ամէն աւելորդաբանութիւններէ. այն ամէն խօսելու կերպերէն՝ որ հռետոր պատմչաց և ոչ հռետորաց՝ փափաքելի զարդարանք սեպուած են․․․; բայց պէտք եղած ատեն գիտէ ճարտարխօսութիւն ալ գործածել, ինչպէս երկրորդ և երրորդ գրոց վերջը։ Արուեստական չքեղութենէ կը զգուշանայ. միայն տեղ տեղ նշանակ մը, իբրու երիտասարդական տիոց թել մը որ լսելի՝ կ՚ընէ իր ձայնը ուժմամբ և առաքինութեամբ ծայրացեալ հասակին մէջ։ Քանի մը երկար նկարագրութիւններ, ինչպէս երբ քաղաք մը՝ մարդկային երեսաց կը նմանեցընէ, և ուսումը՝ երկնային լուսոյ ծագման, թերևս տարօրինակ նմանութիւնք կարենան սեպուիլ՝ բայց ոչ սուտ։

«Ոճը ամփոփ՝ բայց ոչ ցամաք. տեղ տեղ անհաւասար. իմաստներն երբեմն մութ, և իրարու հետ խառնուած, մանաւանդ ուր պատմութենէն իմաստասիրելու կ՚անցնի։ Լեզուն ընտիր է կ՚ըսեն, բայց այլ և այլ հելլենաբանութեամբք խառն. որ չէ արուեստակութիւն, այլ արգասիք աղեքսանդրեան հրահանգաց, յունական լեզուի անընդհատ ուսման, Աստուածաշունչ գրոց 'ի յունէ թարգմանութեան, յորում հարկ էր ամէն բառ կշռել և վրան երկար խորհրդածել՝ բնիկ լեզուին մէջ անոր համաձայնը գտնելու համար։ Յայտնապէս կը վըկայէ թէ բառից ընտրութեան ժամանակը կը պակսի. և որ ուրիշ ապացոյց մ'է թէ օտարամոլ փառասիրութեան փափաք մը չէ այն, այլ թէ շատ՝ անհոգութեան»[1]։

Խորենացւոյն առաջին թարգմանիչն եղած է Գրէննէր անունով շուէտացի մը, որ նշանաւոր անձ մըն է իր ազգային մատենագրութեանը մէջ, և քաղաքական պաշտօնատու մը Ռուսաց Մոսկուա քաղաքին մէջ

1. ԴՈՄՄԱՋԵՈՑ, 'ի յառաջաբանի իտալական թարգմանութեան Պատմութեան Խորենացւոյն։

թարգմանուած էր 'ի բանտի: Հոն իրեն քով բանտակից և կենակից ունեցաւ զՅովհաննէս Բարթուղիմէոս Ցակինթեան Դոմինիկեան կրօնաւորը, տեղեակ հայերէն լեզուի. ուր ձեռուընին ունենալով Խորենացւոյն այս պատմական երկասիրութիւնը, հայագէտ կրօնաւորը քաղելով կամ համառօտելով կը թարգմանէր 'ի լատին, և Պրէններ ծանօթութեամբ կը ճոխացընէր, և զոր ետքը տպագրեց Սդոքհոլմի մէջ յամի 1723: Խորագիրն է. Epitome Commentariorum Moysis Armenĩ, de origine et regibus Armenorum et Parthorum, item series principum Iberiæ et Georgiæ, a Breunero. Իրմէ ետքը երկու անգղիացի եղբարք, Գուլիէլմոս և Գէորգ Վիստոն, թարգմանեցին 'ի լատին թէ Խորենացւոյն պատմութիւնը և թէ աշխարհագրութիւնը, 1726ին տպագրեցին 'ի Լոնտրա: Moysis Choronensis Historiæ Armeniacæ libri III. Accedit ejusdem Scriptoris Epitome Geographiæ, Præmittitur Præfatio, quæ de Litteratura ac Versione Sacra Armeniaca agit... Armeniace ediderunt, latine verterunt, notisque illustrarunt Gulielmus et Georgius Gul. Whisthoni filii; Aulæ Clarensis Cantabrigiensi aliquandiu Alumni. Ասոնց հայրը՝ Գուլիէլմոս Վիստոն՝ Հնդկաստանի Մատրաս քաղաքին մէջ անգղիական լեզուի ուսուցիչ էր՝ հայազգի Աղափիրեան Գրիգորի որդւոցը, ասոնցմէ սորվեցաւ Գուլիէլմոս հայերէն լեզուն, ու Լոնտրա դառնալով՝ սորվեցուց իր երկու որդւոցը:

Վիստոնեանցմէ զատ մը ետքը գաղղիական թարգմանութիւն մը բրաւ Լըվայեան, դասատու հայկական լեզուի յազգային Մատենադարանին Փարիզու. և երկու անգամ տպագրեց, նախ 'ի Փարիզ 1836) և ապա 'ի Վենետիկ (1841) բնագրին հետ և զոր ետքը ճոխացուց Խորենացւոյն գրոցը մէջ եղած այլ և այլ անուանց երկար և հետախոյզ ծանօթութեամբք, և նոր տպագրութիւն մը բրաւ 'ի Փարիզ 'ի 1855: Histoire d'Arménie de Moïse Khorénatzi, auteur arménien classique du V.me siècle, traduite par P. E. Le Vaillant de Florival. Paris, 1836. — Moïse de Khorène, auteur du V.me siècle. Histoire d'Arménie, texte arménien et traduction française, avec appendice, contenant notice géographique, précis de toute l'histoire d'Arménie; tableau de la littérature arménienne par P. E. Le Vaillant de Florival, chevalier de la Légion-d'Honneur, professeur d'arménien à l'école royale et spéciale des langues orientales vivantes près la Bibliothèque du Roi à Paris, etc. Venise, typographie arménienne de Saint-Lazare, 1841.— Moïse de Khorène,... ouvrage dedié à S. M. Impériale Nicolas Ier, Empereur de toutes les Russies, par P. E. Le Vaillant de Florival... Paris, 1845: Ուրիշ գաղղիական թարգմանութիւն մ'ալ 'ի Հաւ. Յ. Հատտըֆման հին և նոր

պատմագրաց Հայաստանի Լանկլուայի։ Moïse de Khorène, Histoire d'Arménie en trois livres, traduction nouvelle accompagnée de notes historiques, critiques et philologiques, par Victor Langlois. Paris, 1870. Ընտիր իտալական թարգմանութիւն մըն ալ հրատարակուեցաւ 'ի Վենետիկ 'ի Ս. Ղազար, ու երկու անգամ տպագրեցաւ (1841, 1850) հմուտ ծանօթութեամբք։ Storia di Mosè Corenese, versione italiana illustrata dai Monaci Armeni Mechitaristi, ritoccata quanto allo stile da N. Tommaseo. Venezia, tipografia armena di S. Lazzaro. 1841ին նոյն քաղաքին մէջ հրատարակուեցաւ ուրիշ իտալական թարգմանութիւն մը Գափբէլլէթթի հայագէտ երիցուն աշխատասիրութեամբը։ Mosè Corenese, storico armeno del V° secolo, versione di Giuseppe Cappellètti, Venezia. Կրկին ռուս թարգմանութիւնք ալ եղած են այս գրքիս, առաջինը Ցովհաննիսեան սարկաւագին ձեռքով, որ և տպագրուած է 'ի Փեթերպուրկ. իսկ երկրորդը Մ. Էմինեան հմուտ բանասիրին ջանիւքը, տպագրեալ 'ի Մոսկուա 'ի 1858։ Կայ նաև թարգմանութիւն մը 'ի լեզու գերմանական։ Moses von Chorene, Geschichte Gross-Armeniens, aus dem Armenischen übersetz, von Dr M. Lauer, Regensbourg, 1869. — Այլ և այլ ժամանակ և տեղուանք եղած հայկական բնագրին և հեղինակին ուրիշ գրուածոց տպագրութեանց նկատմամբ տես 'ի ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ։

*
* *

Այսպիսի երկար և մթին ժամանակաց և զանազան ազգաց ու դիպուածոց պատմիչն՝ եթէ հիմակուան բանդատութեան առջև տեղ տեղ սխալած ալ երևնայ զարմանք չէ. բայց յիրաւի զարմանալի է Խորենացւոյն քիչ սխալիլն և անչափ աշխատանքն ու քննութիւնն ստուգութեանց համար, մանաւանդ 'ի ժամանակագրականս. որոց համար կ'երևայ թէ Ցաւելուած կամ չորրորդ գիրք մ'ալ գրած էր։ Այս Չորրորդ գիրքը կը յիշէ Թովմա Արծրունի, և կ'իմացընէ որ անոր մէջ կ'աւանդուէին այն ամէն անցքերը՝ որ 'ի բարձմանէ թագաւորութեանն Արշակունեաց՝ մինչև Զենոն կայսեր ինքնակալութիւնը. « Սահակս այս, կ'ըսէ Արծրունին, այն Սահակ է՝ որոյ հրամանաւ գրեաց մեծ վարդապետն Մովսէս, տինզերահըռ-

չակեալ քերթողն, զգիրս պատմութեան Հայոց մեծաց, հրաշազան յօրինուածով, սկսեալ յԱդամայ մինչ 'ի կայսրն Զենոն։ Որոյ ժամանակ կենացն ձգեալ տեւեալ ամս հարիւր և քսան, լի և պայծառ ծերութեամբ. որպէս գրեալ աւանդեցաւ մեզ այս 'ի չորրորդ դրուագի խաստաբանեալ պատմութեանն Մովսիսի Խորենացւոյ՝ վերադարձութեան 'ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին»։ Բայց այս չորրորդ գիրքը ձեռուընիս հասած չէ, գէթ ամբողջ[1]. ինչպէս նաև երրորդ գրոցը ցանկին վերջը յիշուածը «Տաղք չափաւ յինք և 'ի Սահակ Բագրատունի»։

Խորենացւոյ Պատմութեան գրոց հին դրչագիրք 'ի վանս Էջմիածնի. 1. Մեծագիր բոլորագիր, գրեալ 'ի Թղթի 'ի գիւղն Ալիփուզար. 'ի թուին ՌՃԽԷ, յորում ամփոփին և Ստեփաննոս Տարօնացի, Արիստակէս Լաստիվերտցի, Զենոբ Գլակ, Ագաթանգեղոս, Բիւզանդ Փաւստոս, Եղիշէ, Ստեփաննոս Ուռպելեան, Վարդան պատմիչ, Կիրակոս Գանձակեցի, Եւսեբիոսի և Սոկրատայ եկեղեցական պատմութիւն, և այլն։ (Թիւ դրչ. 1619)։ — 2. Մեծագիր բոլորագիր գրեալ 'ի Թղթի. յորում Եղիշէի պատմութիւն Վարդանանց, համառօտ պատմութիւն վասն ամբարշտութեանց Բարծումայ նախակողոսի ասորւոյ 'ի Թովմաս վարդապետէ։ — 3. Ցերկրին Մոկաց 'ի Սուրբ գեղջ 'ի թուին ՌՋԸ։ Ուրիշ այլ և այլ նորագիր օրինակք ՌՁ, ՌՃԻԵ, ՌՃԼԹ, ՌՃԽ թուականներով։ — Մեր Մատենադարանին դրչագիրք նշանակուած են 'ի Յառաջաբանի Մատենագրութեանց Խորենացւոյն ('ի 1843 և 'ի 1865)։

***

Խորենացւոյն անուամբ մեր ձեռքն հասած Աշխարհագրութիւն կոչուած գրուածքը՝ այլ և այլ քննադատութեանց ենթակայ եղաւ յեւրոպացի՝ նաև 'ի մերոց գիտնոց և բանասիրաց, և ինչուան նաև անհարազատ դատուեցաւ։ Ասոնց պարագլուխ հայերենագէտ գաղղիացին Սէն-Մարթէն՝ բոլորովին մերժեց Աշխարհացոյց ասոյ

1. Տես Բազմավէպ, 1851, Մարտ։

Մովսէսի Խորենացւոյ կոչելով զայն. իսկ այլք՝ ինչպէս նաև մերազգի հմուտ բանասէրն Պատկանեան՝ առանց յանձն առնլոյ ընծայել զայն Խորենացւոյ, եօթներորդդարու՝ և հաւանականաբար Անանիայի Շիրակունւոյ երկասիրութիւն համարեցան: Այս կարծեաց առիթ և հաւանականութիւն տուած են՝ իրենց ծանօթ ձեռագրաց և անոնց վրայ եղած տպագրութեանց անընդունելի ընթերցուածք, յաւելուածք և համառօտութիւնք. զորս ուղղելով ըստ հնագոյն ու աւելի հարազատ գրչագրաց, կը հաւանին հմուտք — առանց ժխտելու անոր կրած բազմապատիկ փոփոխութիւններն, — Խորենացւոյն ընծայել զայն:

Պտղոմէոսի համանուն երկասիրութեան համառօտութիւնն է այս գրուածքը. զոր մտադիր քննողը յայտնի կը տեսնէ ամէն աշխարհաց ստորագրութեան, տուած սահմաններուն, գաւառներու բաժանման և անուանց մէջ: Հեղինակն հայկականին և շարադրող, որ մեր ոսկեղէն դարու նշանաւոր անձնաւորութիւն մ'է, խորունկ հմտութիւնը կը ցուցընէ նաև 'ի յունական լեզուի այնպիսի գրուածքի մը շարագրութեան մէջ որ դժուարին է 'ի համառօտել, և դժուարագոյն 'ի ճշդել զանուանս գաւառաց, աշխարհաց և քաղաքաց: Թէպէտ և հետևող Պտղոմեայ, այլ մերթ կ'ուղղէ անոր վրիպակներն՝ տեղ տեղ իրեն հետ համամիտ և համաձայն չըլլալն յայտնելով. սակայն և այնպէս նախամեծար սեպելով զնա քան զայլս, որովհետև՝ ինչպէս հեղինակն ալ կը վկայէ, երկարժամանակեայ վաստակոց և ճանապարհորդութեանց արդիւնք էր իր գրուածքը:

Երկասիրութեանս մէջ յիշուած աշխարհագիրք բաց 'ի Պտղոմեայ, են Հիպպարքոս, Մարինոս Տիւրացի, Կոստանդին Անտիոքացի, Պապ յԱղեքսանդրիոյ, Դիոնեսիոս և Ապողոն: Առաջին երկու անձինք յիշուած են նաև 'ի Պտղոմեայ, ուստի առեր է և Խորենացի, իրենց ընծայուած խօսքերով. «Իպառքոս, կ'ըսէ, զքաղաքս ծո-

վական չափով աւանդեաց, և գլուսնի պակասութիւն յԱռբիւլայ ութ ժամ աւանդեալ, 'ի Կարքեդոն երկոտասան արժանաւորեալ։ Բայց Մառէն Տիւրենացի յերկրական բոլորակէն ուղղեալ՝ որչափ կարէ ցուցանել ժամագիտակն. առնէ գտիեզերագրութիւն ըստ ճանապարհակցութեանն ընդ. օդդ անցանելով, 'ի ձեռն գործարանացն նկատելով գնչոյլս արեգական և լուսնի և աստեղաց, ըստ անձնիւր եօթն նահանգաց փոփոխման սահմանաց»։ Կոստանդին Անտիոքացի՝ մեզի անծանօթ անձ մ'է, եթէ անուան չփոթութիւն մը չկայ. որովհետև իրեն ընծայուած Տեղագրութիւն քրիստոնէական գրուածքին հեղինակ կը համարուի Կոզմաս անունով մէկը որ Կոստանդինի միայնակեաց ալ կոչուած է։ — Պապ կամ Պապպոս Աղեքսանդրացի ծանօթ էր հնոց. բայց աշխարհագրական գրուածք իր անուամբը առ մեզ հասած չէ։ Որոշ տեղեկութիւնք կը պակսին մեզ՝ 'ի Խորենացւոյ յիշուած յետին երկու անձանց Դիոնեսիոսի և Ապողոնի վարուց և երկասիրութեանց։

Առաջին երկու գլուխներուն մէջ ընդհանրապէս աշխարհագրութեան վրայ խօսելէն ետքը, հայ հեղինակն կը խոստանայ իւրաքանչիւր աշխարհաց և քաղաքաց վրայ խօսիլ առանձինն, հետևելով Պտղոմեայ գրութեան, թէպէտև Պապայ համառօտութիւնն ուզելով ընել, ինչպէս կ'ըսէ. ուր այս վերջինս ալ քաղեր էր 'ի Պտղոմեայ, ինչպէս հայ օրինակին՝ Պտղոմէոսի յունական սկզբնագրին բաղդատութենէն յայտնի կ'երևնայ։

Գալով գրուածքին հարազատութեան, բաւական է բաղդատել զայն Խորենացւոյ պատմութեան գրոց հետ. որուն վրայ աւելցընելով նաև ոճոյ նմանութիւն մի և նոյն հեղինակի ընծայուած այս կրկին երկասիրութեանց մէջ՝ կը հաւանին բանասէրք պնդել և հաստատել թէ ո՛րչափ ալ ժամանակաւ մեծամեծ այլայլութիւններ կրած է այս գրուածը, ուստի և իրաւամբ կասկածելի եղած արդի գիտութեան համար, բայց նախկին չարագրու-

*թիւնը Խորենացւոյն է։ Զայս ուզած է հաւատարմացնել ընդդէմ Սէն-Մարթէն գաղղիացւոյն և համախոհից՝ հայկական հնախօսական և աշխարհագրական գիտութեամբ պատկառելի՝ Ինճիճեան վարդապետը[1], և Խորենացւոյ այս գրուածքին՝ յընտիր օրինակաց 'ի գաղղիական լեզու վերածող նոր թարգմանիչն՝ հմուտ տեսութեամբքն և բազմապատիկ ծանօթութիւններով, և յունականին հետ բաղդատութեամբ[2]։*

*Աւելորդ չենք համարիր Պատկանեան Քերովբէ հմուտ և ամենայն մեծարանաց արժանի բանասիրին կարծիքն մէջ բերել այս գրուածքիս նկատմամբ. «Հինգերորդ դարու Հայոց պատմաբան Մովսէս Խորենացու աշխատութիւնը յայտնի եղաւ ուսումնական աշխարհին մանաւանդ այն օրից երբ անգլիացի Վիստոն եղբարք 1736 թուին Լոնտոնի մէջ լատիներէն լեզուով տպեցին։ Դեռ եւս այն ժամանակն դորան կից տպած էր և յիշեալ աշխարհագրութեան թարգմանութիւնը։ Երկրորդ թարգմանութիւնը այդ աշխատասիրութեան արաւ գաղղիացի հայագէտ Սէն-Մարտէնը. բայց սա այդ աշխատութիւնը մի խիստ քննութեան տակ ձգեց. և մօտ քանի չափ պատմական սխալներ գտնելով, իրաւունք համարեց կարծել, թէ դա 950 թուականի գրութիւն է։ Որպէս թէ ի պատասխան այդ քննութեան, Վենետիկցիք տպագրեցին յիշեալ աշխարհագրութիւնը նորից 1843 թուին. և որովհետև համեմատած էին դոքա մօտ տասուերկու ամենահին և ամենաընտիր գրչագիր օրինակներ, վասն որոյ այս նոր տպագրութեան միջից վերացած է պատմական սխալներից մեծ մասը։ Այսու ամենայնիւ այս*

1. Հնախօսութիւն Հայաստանեայց. Հատ. Գ. 313–14։

2. Տպագրին խորագիրն է. «Աշխարհացոյց Մովսիսի Խորենացւոյ յաւելուածովք նախնեաց»։ Վենետիկ 'ի տպարանի Մխիթարեանց, 1881. Géographie de Moïse de Khorène, d'après Ptolémée. Texte arménien traduit en français par le P. Arsène Soukry, Mékhitariste.

ուղղած և բուն բնագրին աւելի մօտ եղած տպագրութիւնն եւս տեղիք է տալիս կարծելու, որ դա հինգերորդ դարուց յետոյ է գրուած։ Ներկայ ժամանակներում բոլոր մասնագէտները, ի թիւս որոց Հ. Ղեւոնդ Ալիշանը և Կիպէրտը, համաձայն են որ մեր ունեցած աշխարհագրութիւնը շինած է կամ եօթներորդ դարու սկզբին, կամ արաբաց առաջին արշաւանքին ժամանակ ի Հայաստան, այսինքն նոյն եօթներորդ դարու կէսին։ Ուրեմն ինչպէս Սէն-Մարտէնը և իրաւացի կերպով կարծում է, այդ աշխարհագրութիւնը չի կարող Մովսէս Խորենացու աշխատութիւնը լինիլ»։ Պատկանեանի հետազօտութեանցը նայելով, դորա հեղինակը եօթներորդ դարու մէջ է ապրած, ժամանակակից է Մաւրիկիոս կայսեր և Խոսրով Պարթեւի, և կարծելու է որ Անանիա Շիրակացին լինի։

* * *

Պիտոյից գիրք. — Այս անունով գրուած մը կ'ընծայուի Խորենացւոյն։ Հեղինակը Թէոդորոս անունով աշակերտ մը ունեցած է, որուն ճարտասանականին ուսումը աւանդելէն ետքը, նոյն ուսման հրահանգացը մէջ զինքը վարժեցընելու համար, հարկ սեպեր է վարդապետն ինք իր կողմանէ օրինակներ ալ ընծայել, և անոնց նմանողութեանը փութաջան և յորդորամիտ ընել զինքը, և յունական ձայնով Պէտք կամ Պիտոյից (Χρῆα) կոչեր էր այն գիրքը։

Տասն ճառ կամ Գիրք կը բովանդակէ այս երկասիրութիւնը, և որոնց վերնագիրքն են Պէտք, Խրատ, Եղծումն, Հասարակ տեղի, Ներբողեան, Պարսաւ, Բաղդատութիւն, Բարաոնութիւն, Արտասանութիւն և Դրութիւն։ Ասոնք, ինչպէս ընթերցողը գիտէ, ճարտասանական ձեւեր են. և այն ձեւերուն վրայ վարժելու համար՝ այլ և այլ օրինակներ մէջ կը բերէ։ Բայց այն օրինակ-

ները ընդհանրապէս շատ հեռու կը մնան ճարտասանականին ուսումը աւանդող՝ կամ իրենց գրուածներովը անոր կանոնները սահմանող յոյն և լատին մատենագիրներէն. և աւելի մերձաւոր կրնան սեպուիլ թէ՛ ոճով և թէ գրուածքի կերպով այն ճարտասաններուն երկասիրութեանցը՝ զորոնք Ելլադա աւերիչ և խանգարիչ կը սեպէր բուն և հարազատ ճարտասանութեան, և ընդհանրապէս սոփեստէս կամ իմաստակ անունը կու տար անոնց: Ասոնց կարգէն կրնային սեպուիլ Հերմոգենէս Տարսոնացի, Թէոնն, Ափթոնիոս գրամարտիկոս, Լիբանիոս՝ Բարսղի բարեկամը և Ոսկեբերանի վարժապետը, և այլք:

Այս պատճառաւ ոմանք Խորենացւոյն այս երկասիրութիւնը անհարազատ կը սեպեն և կամ թարգմանութիւն. և իրենց տարակուսանացը գլխաւոր պատճառ կը համարին այն ոճոյ զանազանութիւնը՝ որ յայտնապէս կը տեսնուի Պիտոյից գրոց և Պատմագրութեանը մէջ. մանաւանդ որ ոճն ու դասաւորութիւնը յար և նման կըրնայ սեպուիլ՝ դեռ քիչ մը յառաջ յիշատակուած Լիբանիոսի Ներակրթութեանց:

Փրանկիսկոս Սկոբարիոս յամի 1597 ի Գինեւա Ջուիցերիոյ տպագրութեամբ հրատարակեց Αφθόνιου σοφίστου Προγυμνάσματα καὶ μῦθος, յորում հաւաքուած են չորեքտասան հրահանգք կամ Ներվարժմունք որ ընծայուած են Ափթոնի, Թէոնեայ և Հերմոգենեայ: Գլխակարգութիւնք հրահանգացն՝ հետևեալքն են. Օ՛ μῦθος, Fabula. — Δίμνημα Narratio. – Χρεῖα Chria, – Γνώμη Sententia, — Ανασκουὴ Refutatio, — Κατασκίνη Confirmatio, — Κοινὸς τόπος Communis locus, — Εγκώμιον Laudatio, — Χόγος Vituperatio, — Δύγκρισις Բաղդատութիւն, — Ηʼ θοποτα:

Բայց ազգային ընդհանուր աւանդութիւն մը դէմ կ'ելլէ այս կարծեաց, որ Պետքը՝ Մովսիսի հարազատ կը համարի. և որուն կրնայ երաշխաւորել ժամանակաւ կըր-

սեր պատմչի մը, Կիրակոս Գանձակեցւոյն վկայութիւնը, որ յայտնապէս կը գրուցէ․ « Աքանչելին Մովսէս (չարաչարեաց) զՀայոց պատմութիւնն 'ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ … և զՊէտքն 'ի խնդրոյ Թէոդորոսի ումեմն » ։ Իրեն․ ժամանակից է Ասողիկ․ « Ի ժամանակս (Գիւտայ կաթուղիկոսին) էր մեծ փիլիսոփոսն Հայոց Մովսէս, որ զճարտասանական արուեստ 'ի գործ առնու 'ի Հայս » ։ Նոյնպէս ալ, թէպէտ աւելի անորոշ խօսքերով, Արծրունին, Գրիգոր Սարկաւագապետ և այլք, որք միաբան անուանի փիլիսոփոս և քաջ հռետոր կոչեն զինքը, և քերթող և քերթողահայր [1] ։

Մեզի հաւանական կ'երևնայ ազգային աւանդութեան և անոր պատմչաց ձայնակցիլը, անոր դէմ հակառակող քանի մը պատճառները ցրելու աշխատելով ։ Այս պատճառներուն մէջ գլխաւոր կրնայ սեպուիլ գրքին հելլենաբանութիւնը ։ Այդ թերութիւնը, եթէ հաճոյ երևնայ մէկուն ուրանալ անուանել, Մովսիսի ուրիշ գրուածոցը, և նոյն իսկ Պատմութեանը մէջ ալ կը տեսնուի․ և սակայ արդիւնք է այն լեզուին ուսմանցը մէջ անխոնջ պարապմանը, և քիչ մըն ալ հելլենասիրութեանը, որուն մէջ ընկած կրնան սեպուիլ ոչ միայն Խորենացին, այլ իւր աշակերտակիցներէն ալ մէկ քանին, և այն պատճառաւ իբրև նորութեան մը հեղինակք՝ ազգին մէջ բաւական հակառակութիւն և ընդդիմութիւն ալ կրեցին ։

1․ Միայն յետին դարուց հեղինակ մը, Առաքել վարդապետ, Անյաղթին կ'ընծայէ Պիտոյից գիրքը․ և որուն վկայութիւնը մէջ բերինք յառաջ՝ Դաւթի վրայ խօսելու ատեննիս ։ Բայց ուրիշ անանուն մատենագիր մը՝ Պիտոյից տեղ Անյաղթին երրորդ երկասիրութիւնը կը սեպէ Ժ—ղ—ոյ գիրքը ։ Ժ—ղ—ոյ գրքի մը նկատմամբ՝ հետեւեալ յիշատակարանին հանդիպած ենք գրչագրի մը մէջ․ « Գէորգ քարտուղարս Հայոց մեծաց և սուրբ Թագաւորացն պալատոյս (?) զարմանալի ի նախկի յիշատակի գրոցս այսմիկ․ եթէ գրեցաւ գիրքս այս Ժ—ղ—ս հրամանաւ թարգմանչաց ի յունաց ի հայս տեառն հրամանաւ Մովսիսի Հայոց կաթողիկոսի Գաբեղենացոյ, ի քսան և հինգ թուականին Հայոց ։ Վկայ է այսմիկ Սարգիս Արտաքացի եպիսկոպոս ճշմարիտ վկայութեամբ » ։

Երկրորդ պատճառ, ոճոյ և մտածմանց տարբերութիւն, որ մեծ խտիր մը կը դնէ Պատմութիւնը և այս երկասիրութիւնը արտադրող հանճարոյն մէջ։ Սակայն նոյն ոճը և գրիչը կրնանք նկատել յայտնապէս նաև այն ճառին մէջ՝ զոր Խորենացին յօրինած է 'ի գովեստ սրբուհւոյն Հռիփսիմեայ, և որուն վերջերը՝ զօրաւոր պատճառ մը ինքը կու տայ՝ արդարացընելու իր ոճը. այսինքն հասակին մանկութիւնը։ Նման պատճառ մը թերևս առիթ եղած է Խորենացւոյն՝ Պիտոյից գրոցը մէջ այդպիսի ոճ մը բռնելու. իր ժամանակին ճարտասանական արուեստին տղայութիւնը, որ չէր ուզեր իրեն նմանողութեան գաղափար ընտրել նուիրական բեմերու վրայէն որոտացող սուրբ հայրապետաց աննման լեզուն, այլ լսարանաց մէջ գործածուած, ու փիլիսոփայութիւնը ճարտասանութեան հետ խառնել կարծող վարժապետաց լեզուն և ոճը։

Ուրիշ պատճառ մըն ալ՝ որով կը հաւանինք Պիտոյից գիրքը Խորենացւոյն ընծայել՝ այս կ'երևնայ՝ որ ինչպէս 'ի Պատմութեան, ասանկ ալ ասոր մէջ շատ անգամ վկայութիւն կը բերէ Փիլոնի խօսքերէն, նման շարադրութեամբ։

Բայց եթէ յունական մատենագրաց աւելի հմտութիւն մը երևնալով այն գրքին մէջ, այն պատճառաւ ուզենայ մէկը թարգմանութիւն սեպել Պիտոյիցը, կրնանք ալ կարծել թէ թարգմանաբար յօրինած ըլլայ Խորենացին այս երկասիրութիւնը. թէպէտ և յունական մատենագրութեան հմտութիւնն ալ կրնանք ընծայել համարձակ՝ իր կենաց մեծ մասը անոնց գրուածոցը ու մատենադարանաց և ճեմարանաց մէջ անցընող անձի մը։

Միայն թէ կրնայ ալ ենթադրուիլ թէ գաղափարողք ոչ լոկ շարագրութեան և լեզուին մէջ մտահաճոյ յաւելուածներ ըրած ըլլան, այլ նաև նիւթոյն մէջ փոփոխութիւն մտցընելով ու ճառերէն մէկ քանին աւելցընելով։ Ասանկ կրնան համարուիլ Պիտոյից գրքին վերջը եղող երեք Բարառնութեան օրինակներն, որ անհմուտ անձի,

և կամ թերևս աշակերտի արտադրութիւնք են: — Հին ձեռագրի մը մէջ ալ Դաւթի և Գողիադայ մենամարտութեան նկարագրութիւնը՝ կ՚ընծայուի Խորովայ թարգմանչի, ինչպէս յառաջ ալ յիշատակեցինք:

Այսչափը ըսելնէս ետքն ալ, աւելի ու մանրախոյզ քննութիւնը՝ ժամանակին կը յանձնենք, յիշեցընելով Պաումկարտնէր հայագիտին երկասիրութիւնը այս նիւթիս վրայ:

Պիտոյից գիրքը առաջին անգամ տպագրուած է օրինակաց բաղդատութեամբ և նմուշ ծանօթութեամբք 'ի Ս. Ղազար (Հ. Յովհաննէս Վ. Զօհրապ.) 'ի 1796. որուն համեմատ եղած է նոր տպագրութիւն 'ի 1843:

Խորենացւոյն մանր գրուածները: — Խորենացւոյն մանր գրուածոցը մէջ առաջին է Պատմութիւն սրբուհւոյ Աստուածածնի և պատկերի նորա կոչուածը: Ազգային եկեղեցական պատմութիւնը կ՚աւանդէ՝ թէ Հոգւոց վանացը մէջ՝ յերկրին Անձևացեաց, կիպարիս փայտէ յօրինուած սրբոյ Կուսին պատկեր մը կը մեծարուէր, Յովհաննու աւետարանչին ձեռագործ սեպուելով: Աստուածածնայ մահուանը ժամանակ՝ երբ մասնաւոր հրաշքով մը ամէն առաքեալք իրեն քովը գտնուեցան, Բարթուղիմէոս՝ որ 'ի Հայս առաքելութեամբ սուրբ աւետարանը կը քարոզէր, չիկրցաւ անոնց հետ միասին գտնուիլ. ու Սրբուհւոյն մեռնելէն ու մարմնոյն 'ի գերեզման ամփոփուելէն ետքը հասնելով, միւս առաքեալք անոր սրտին ցաւը մեղմացընելու համար՝ այն պատկերը իրեն պարգևեցին: Բարթուղիմէոս ալ դառնալով 'ի Հայս՝ եկեղեցւոյ մը մէջ դրաւ զայն 'ի յարգութիւն, քովն ալ վանք շինեց, որ կոչեցաւ Հոգեաց վանք: Արծրունեաց իշխանը Սահակ՝ որ իւր համանուն Բագրատունւոյն խընդրանօքը՝ Խորենացւոյն յօրինած Պատմութեան գիրքը կարդացեր էր, աղաչանաց նամակ մը գրեց առ Մովսէս՝

խնդրելով իրմէ որ Հոգւոց վանքին մէջ եղած պատկերին վաւերական պատմութիւնն ընէ ու իրեն ղրկէ ։ Այն թղթին մէջ՝ « Հրեշտակ և սպասաւոր մեծութեանցն Քրիստոսի, կը կոչէ զնա, և այր երկնակենցաղ և լուսաւորիչ խաւարելոց ... երկրորդ Սահակ և Մեսրովպ՝ յետ գնալոյ Նոցա առ Աստուած » ։ Խորենացին ալ կատարեց անոր փափաքը[1] ։

Մետասաներորդ դարու գրչագիր մը՝ հետևեալ հետաքրքրական տեղեկութիւնը կու տայ Խորենացւոյն այս երկասիրութեանը վրայ. « Զայս ցանկալի պատմութիւնս՝ բազում ըղձիւ և ցանկալի յուզմամբ գտեալ մեծ հռետորն Մովսէս՝ որ կոչի Խորենացի գրեաց (դգ)ընտուգիւ հաւաստեաւ. և քանզի էր աղօտացեալ յաւազաց մերոց, և ուր ուրեք գտանէին. մինչև 'ի ձեռն կրօնաւորի միոջ գտեալ՝ որ էր յերկրէն Խոր Հայոց, 'ի գաւառէն որ կոչի Զորոյ գետ, 'ի համբաւեալ ուխտէն Սանահին անուանեալ, պատահումն բարի իմն եղև. և հրամայեաց մեծն և բնաւն 'ի լաւս՝ Ատոմ, որդի Սենեքարիմայ, Հայոց նահանգի Վասպուրական կոչեցեալ. որոյ մասն փրկութեան հաւատացեալ էր Ատոմայ՝ պատկեր մօր տեառն 'ի բաժին Անձաւացեաց. հրամայեաց գրել մեծաւ յուսով և խնդութեամբ բազմաւ. որոյ անուամբ պարապեալ եղիցի մեծաշուք իշխանութիւն նոցա, չորից հարազատ եղբարց՝ Դաւթի և Ատոմայ, Կոստանդեայ և Համազասպայ, գեղեցիկ և չքեղազարդ Բագրատունեաց »[2] ։

1. Հնագիր հաւաքածոյի մը մէջ որ ի Ս. Սարգիս եկեղեցւոյ Բաղիշու՝ Յովհաննու Մանդակունւոյ կ'ընծայի հետևեալ վերնագրով. « Յովհաննու Մանդակունւոյ ասացեալ պատմութիւն և գիւտ փոխման Աստուածածնին և մօր տեառն. թէ որպէս եղև փոխումն, կամ որպէս չնորհեցաւ անարատ պատկերն ի փայտն, և տուաւ Հայոց » ։

2. Ըստ այլոց « ուրեք ուրեք գտանի յարկեղ դիւանի մերում ։ Վասն որոյ բազում փութով խնդրեալ Ատոմայ որդւոյ Սենեքերիմայ, գտանէ 'ի մեծ սուրբ ուխտն Սանահին կոչեցեալ ։ Եւ ի ձեռն մեծազգոյն պար-

*Ներբող 'ի սուրբն Հռիփսիմէ.* — Երիտասարդութեան առոյգ հասակին մէջ շարագրեց Խորենացին այս Ներբողը, դրուատելով այն հրաշագեղ կուսանը և իր ընկերակիցքը, որոնք 'ի Հայաստան՝ իրենց արեամբը աստուածանգիտութեանն խաւարը փարատելու նախկին առիթ եղան։ Անպիսի սրտաշարժ պատմութիւն մը, և անանկ արգասաւոր վկայութիւն, նոր եռանդ մը ազդած են 'ի Մովսէս, վառվռուն և աշխոյժ իմաստներով և բացատրութեամբք՝ իր սրտին զգացմունքը, և իրեն ոգւոյն առաջին քրտունքը նուիրելու անոր որ « գքեղ սիրէ՝ սիրեցեալդ յիսկապէս բարւոյն »։ Ասկէ զատ է Հռիփսիմեանց ճանապարհորդութեան պատմութիւնը։

*Ճառ Վարդավառի.* — Զոր Խորենացւոյն ուրիշ գրուածոցը հետ կը յիշատակէ Կիրակոս. բայց իմաստներուն և ոճոյ անհամեմատ տարբերութիւնը կարծել կու տայ թէ ուրիշ համանուն Մովսիսի մը գրուածքն ըլլայ։ Ըստ ձեռագրաց՝ խորագիրն է. « Երանելւոյն Մովսիսի Խորենացւոյ սուրբ և ընտրեալ վարդապետի արարեալ, որ 'ի Կարիաթարիմ, որ բերէ զտաւն վարդավառի »։ Իսկ ըստ այլոց. « Մովսիսի քերթողահայրն՝ վասն վարդավառի տաւնին »։

Ց'Օրհնոցբիւնաբեր ցուցակի կը տեսնենք հետեւեալ յիշատակագիրը. « Երանելին Մովսէս Թարգմանիչ, որ էր գրիչ սրբոյն Սահակայ որդւոյ սրբոյն Ներսիսի. յորմէ և

գեւացն և գրոց ձեռին՝ հայցէ ի նոցունց. և բերեալ գրով սատուգապէս հաւատոյ պատմութիւնս։ Եւ տայ գնել մերձ առ պատկեր սրբոյ Կուսին, բնաւորեալ սուրբ հոգւոյն։ Վասն զի որք կամիցին գիտել զպատճառ տպաւորեալ սուրբ պատկերի Աստուածածնին, ընթերցեալ գիւրեաւ ի վերայ հաստնիցեն ամենայնի հաւատոյ ի վերայ հաստեալ սառյգ գիտութեամբ։ Որում անկեալ իմ առաջի սուրբ պատկերին մեծաւ երկիւղիւ և գոզութեամբ և բազում արտասուաւք հայցել ի սուրբ Կուսէն զբժշկութիւն վիրաց հոգւոյն իմոյ, և զքաղցրաւութիւն առ որդին իւր և աստուած մեր »...

առաքի յերրորդ ամի գիւտի Հայերէն գրոց 'ի Նազիանզ՝ յաթոռ Աստուածաբանի. և բերէ անտի զՄերմնօրհնէքն զկալի և զՀնձանի՝ զշարադրեալսն յԱստուածաբանէն 'ի հինգերորդ ամի հայրապետութեան իւրոյ»։ Դարձեալ նոյն Մովսէս՝ յերեքտասաներորդ ամի թարգմանութեան սրբոյն Սահակայ՝ կարգի դրաւ, կ'ըսէ ցուցակը, զկանոնս օրհնութեան այլ և այլ իրաց, զորս 'ի զանազան կողմանց բերեր էր։

*Անհարազատ կամ երկբայական գրուածներ.* — Մովսէս անուամբ այլ և այլ վարդապետներ երևցած են մեր ազգային եկեղեցական նուիրապետութեան մէջ, յորոց և ոմանք քերթող ալ կոչուած, ինչպէս Սիւնեաց եպիսկոպոսը, զոր ետքը պիտի յիշատակենք. ասոնց գրուածքը երբեմն իրարու ընծայուած են. ինչպէս երբեմն Խորենացւոյն երկասիրութիւնքը՝ ասոնցմէ մէկուն, այսպէս ալ անոնց գրուածքը՝ Խորենացւոյն կարծուեր և այսպէս աւանդուեր են։ Այսպիսեաց կարգէն է նաև Մեկնութեան կարգաց եկեղեցւոյ, որուն մէկ քանի հատուածքը Խոսրովու համանուն երկասիրութեանը մէջ կը տեսնուին այսպիսի մակագրով. «Մովսեսի քերթողի». և Արշարունւոյն Ընթերցուածոց մեկնութեան հնագիր օրինակին մէջ. «Մովսիսի Քերթողահօր Հայոց վարդապետի և իմաստասիրի յաղագս կարգաց եկեղեցւոյ»։ Դարձեալ իր անունը կրող ճառական գրուած մը 'ի ձեռագիրս. «Երանելւոյն Մովսիսի Խորենացւոյ՝ սուրբ և ընտրեալ վարդապետի, ասացեալ պատճառս վասն սուրբ մարգարէից»։ — Ուրիշ մ'ալ. «Յիշատակ սուրբ վկային Թէոդորոսի որ յաղուհացքն տաւնի, 'ի Մովսիսի պատմութենէն. — Ի ժամանակին յորում Մակեդոնացին Աղեքսանդրոս Փիլիպպեան կոչեցեալ՝ բազում բիւրովք»։ Սրբոյն Սահակայ վարք մ'ալ կը գտնուի 'ի քերթողական գրոց, զոր կ'ախորժինք Խորենացւոյ վերագրել։

Հայոց ՋԽԸ թուականին 'ի Հռոմկլայ գրչագրեալ մատենի մը մէջ՝ երկար վարդապետական գրուածի մը կը

հանդիպինք այս խորագրով. «Երանելւոյն մեծի Քերթողահօրն Մովսէսի Խորենացի եպիսկոպոսի»: Սկըզբնաւորութիւնն է. «Յաղագս 'ի յոլովից կատարեալ կենդանի ընդէր մի բնութիւն. այլ միոյ կենդանւոյն՝ հարկ է և բնութեան մի լինել»:

Այս անհարազատ գրուածոց կարգէն կրնան սեպուիլ նաև քերականական երկասիրութիւնք: Որչափ ստոյգ է թէ մեծ հմտութիւն ունեցած էր Մովսէս յայսմ գիտութեան, և թէ այն պատճառաւ ալ եղած է իւր Քերթող կամ Քերթողահայր կոչումը, այնչափ ալ անստոյգ կամ անհարազատ՝ քերականական գրուածոց մէջ իրեն ընծայուած քանի մը հատուածները, թէպէտ և որոշ և բացայայտ խորագրով: Ասոնցմէ կրնան սեպուիլ,

1. «Մովսիսի Խորենացւոյ բան իմաստութեան» կոչուածը. որ ընդհանրապէս քերականական արուեստին վրայ համառօտ տեղեկութիւն մըն է:

2. «Սուրբ երջանիկ հօրն Մովսիսի թարգմանչի և քերթողի՝ մեկնութիւն քերականի». որ Դիոնեսիոսի Թրակացւոյ յոյն լեզուի քերականութեան մեկնութիւնը կըրնայ սեպուիլ. և որուն հետևողութեամբ վարուած են իրենց համանուն երկասիրութեանցը մէջ՝ Խորենացիէն ետքը եկող գրեթէ ուրիշ ամէն քերականները:

3. «Մովսիսի Քերթողի յաղագս քերականութեանց»: Այս գրուածքը՝ քերականութենէ բարձր նպատակ մը ունի, լեզուի ուսմանէն աւելի հաւատոց և աստուածաբանական ճշմարտութեանց տեղեկութիւնը աւանդելու: Մասնաւոր անձի մը գրուածք չէ ասիկայ, այլ 'ի զանազան հեղինակաց հաւաքեալ. որոնց և անուանքը նշանակուած են գրոց լուսանցիցը մէջ՝ և են բաց 'ի Մովսիսէ քերթողէ, Դաւիթ Անյաղթ, Ստեփաննոս Սիւնեցի, Մագիստրոս, Համամ, Արիստակէս, Գէորգ, և այլք:

Համառօտ մաղթանք մըն ալ կը գտնենք յԱղօթագիրս՝ Խորենացւոյն ընծայուած:

# ՄԱՄԲՐԷ

---

*Մամբրէ Վերծանող՝ եղբայր Խորենացւոյն։ — Իր անուանբ կրող գրուածք։ — Ճառ 'ի Յարութիւն Ղազարու և անոր հարազատութիւնը։ — Ճառ 'ի Գալուստ Տեառն յԵրուսաղէմ։ — Պատմական գրուածք մը։*

Խորենացւոյն կրտսեր եղբայրն էր Մամբրէ, ու Սահակայ և Մեսրովպայ աշակերտներէն մէկը, Վերծանող կոչուած. որուն վրայ մեծ յարգութեամբ կը խօսին թէ՛ ժամանակակից և թէ յետագայ ազգային մատենագիրք, փիլիսոփայից մէջ երրորդ կամ երկրորդ դասելով, անշուշտ Խորենացիէն ու Դաւիթ Անյաղթէն ետքը։ Իր ուրիշ աշակերտակցացը պէս ճանապարհորդեց Մամբրէ յԱղեքսանդրիա, յԱթէնս և 'ի Բիւզանդիոն, ու ամէն տեղ իր հանճարոյն մեծ պատիւ գտաւ։

***

Կ'երևնայ թէ այլ և այլ երկասիրութիւններ ալ թողուցած ըլլայ, բայց մեր ձեռքը հասածներն են երկու ճառ, մէկը Ղազարու յարութեան վրայ, և միւսը Քրիստոսի Երուսաղէմ մտնելուն։

Եկեղեցւոյ հին վարդապետներէն շատին անունովը Ղազարու յարութեան վրայ բազմաթիւ ընտիր ճառեր կը գտնուին. որոնցմէ մէկ քանին թարգմանութեամբ աւանդած է մեզի հայկական դպրութիւնը։ Այս պատ-

ճառաւ՝ անհմուտ գրչագիրք մէկուն գրուածքը մէկալին կ'ընծայեն։ Նոյնը հանդիպած է նաև Մամբրէի այս երկասիրութեանը. վասն զի գրչագիրներէն ոմանք Մամբրէի Վերծանողի կ'ընծայեն զայն, «Յովհաննու աւետարանին մեկնութենէն ասացեալ» կոչելով. որով կամ կարծել կու տան թէ Մամբրէ Յովհաննու աւետարանին մեկնութիւն մը շարագրած ըլլայ, որ դեռ ձեռուընիս հասած չէ, և կամ նոյն դիպուածը Յովհաննու աւետարանին մէջ պատմուած ըլլալը կը նշանակեն։ Ոմանք ալ Ոսկեբերանի կ'ընծայեն զայն, որուն պերճախօս գրչին արժանաւոր երկասիրութիւն է. բայց անոր գրուածոցը մէջ չի գտնուելով, հաւանական կը կարծուի թէ սխալմամբ իրեն կ'ընծայուի այս ճառը, այլ իրեն հանճարոյն նախանձորդ և հետևող Մամբրէի գրչին և սրտին արդիւնք է։ Եղիշէի անուամբ ալ գրուած կայ այս ճառս։

Ոչ նոյն գեղեցկութիւնը և ոչ լեզուի ընտրութիւնն ունի Մամբրէի միւս ճառը 'ի Գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ. անոր համար ոմանք ուզած են երկբայութեան տակ ձգել անոր հարազատութիւնը։ Բայց Կիրակոս յայտնապէս իրեն կ'ընծայէ. «Մամբրէ Վերծանող, կ'ըսէ, ասաց ներբողեան 'ի յօրն արմաւենեաց՝ 'ի գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ յաւանակաւ»։

Արծրունին՝ պատմական գրուածք մըն ալ կ'ընծայէ Մամբրէի որ մեր ձեռքը հասած չէ. իւր Արծրունեաց ցեղին սկզբնաւորութեանը վրայ խօսելով կ'աւանդէ, «Իսկ առ մեզ հասին գրոյցքս այս ըստ Յեացորդաց պատմագրացն առաջնոց, 'ի Մամբրէէ Վերծանողէ և 'ի Նորուն եղբօրէ Մովսէս կոչեցելոյ ... որ հրամանաւ Վահանայ արծրունւոյ փոյթ յանձին կալեալ խուզել, քըննել, կարգել 'ի համառօտ բանս զաճմունս ազգացն անցելոց, ոչ կարի ինչ ընդ երկայնագոյնս աշխատասիրաբար անցանել պատմութիւնս»։

Հետևեալ քանի մը հատուածներ Մամբրէի անուամբ պատմական երկասիրութենէ մը քաղուած են 'ի Հայ-

լատին Բառարանի Ստեփանոսի Ռոշքեան Կամենիցացւոյ։ Առանց ուզելու երաշխաւորել թէ Թարգմանչին և իր կորսուած գրուածին վերաբերին, իբրու բանասիրաց հետաքննելի՝ աւելորդ չենք համարիր մէջ բերել զանոնք.

«Ըղձիցն խուռնանց փափկաքանոց հասին առուքքն»։ —
«Ընդ այնքան ժամանակ ոչ փութացան մարմինք որքոցն»։ —
«Նախնիք մեր հակամիտաբար հետևէին սուրբ հարցն»։ —
«Աշխարհ օրինադրութեամբ Թագաւորաց յարգարի»։

Մեկնողական երկասիրութենէ մ'ալ այևայլ վկայութեանց կը հանդիպինք նոյն Բառգրոց կարգին մէջ, որք թերևս իր անուամբը յիշուած Յովհաննու կամ աւելի հաւանականաբար մովսիսական գրոց մեկնութեան վերաբերին։ Հին քերականաց մէջ քանի մը հատուածներ կան Մամբրէի անուամբը։ Էջմիածնի Մատենադարանին գրչագրաց ցուցակին մէջ ալ (Թիւ 1756) Մամբրէի կ'ընծայուի ճառ մը «Ի ծնունդ փրկչին»։

Մամբրէի ճառերը հրատարակուած են 'ի Վենետիկ 1833ին և 1890ին, Նախնեաց մատենագրութեան շարին մէջ։

# ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ

***

*Փարպեցւոյն ծնունդն ։ — Իր տոհմն ու Վահան Մամիկոնեան իշխանին հետ մտերմութիւնը ։ — Հրաժեշտն յաշխարհական փառաց ։ — Էջմիածնի կարուղիկէին վերակացու դրուիլը ։ — Այն պատճառաւ կրած հակառակութիւնները ու թշնամութիւնք ։ — Ինքզինքը ջատագովելու համար առ Վահան մարզպան գրած թուղթը ։ — Պատմութեան գրոց նիւթը ։ — Աղբերք այդ երկասիրութեան ։ — Տպագրութիւնք և թարգմանութիւնք ։*

Հինգերորդ դարուն վերջերը ու վեցերորդին սկիզբները ծաղկեցաւ Ղազար ։ Թշուառ ատեն մը, յորում Արշակունեաց թագաւորութիւնը վերցուած, մարզպանաց ձեռքն էր Հայաստանի քաղաքական իշխանութիւնը. Նախարարաց մէջ անմիաբանութիւնն սկսած էր իր աւերիչ գլուխը վերցընել և աշխարհը կործանման վտանգի մէջ ձգել. «Եւ էր տեսանել յաշխարհին Հայոց, կ՚ըսէ ինքն հեղինակն, զլաւութիւն հեռացեալ, զիմաստութիւն կորուսեալ, զքաջութիւն հեռացեալ և մեռեալ, զքրիստոնէութիւն թաքուցեալ» ։

Դեռ եւս պատանեակ՝ աշխարհի փառքն ու մեծութիւնն արհամարհելով Ղազար, իշխանական պատմուճանին տեղ՝ խոնարհ ու անպաճոյճ մենակեցութեան սքեմն ընտրեց, ու վանական առանձնութիւնը՝ երկնահրաշ ասպարէզ հոգեկեցոյց յառաջադիմութեան ։ Ոչ նոր և անսովոր էր այս իր մտածութիւնն նաև յայնմ ժամանակի ։

Արդէն հետեւողութեան նախանձելի օրինակն ունէր՝ իր իմաստուն և սրբակրօն դաստիարակին՝ Աղանայ արծըրունւոյ վրայ. ու երկոցունց իրաւամբք սիրելի ու սխրալի մեծին Մեսրոպայ, որ «ընկեցեալ յետս զմարմնական պատիւն... խնդրէր զանապատ»։ Իր այսպիսի որոշման ոչ լոկ օրինակ և խրախուսիչ՝ այլ և գործադիր եղաւ նոյն ինքն Աղան. «Զատոյց զիս, կ'ըսէ Ղազար, պարեգօտիւք 'ի ծառայութենէ աշխարհի. և ազատութեան եղև մեզ առիթ»։

Ծննդեան թուականին որոշ տեղեկութիւնը կը պակսի. բայց կարելի է դարմանել զայն իւր իսկ խօսքերով։ Ինքզինքը Վահանայ Մամիկոնենոյ խաղակից և սննդակից կը կոչէ, յաւելլով միանգամայն թէ ըստ տիոց աւագագոյն քան զքեզ էաք. որով հասակի քիչ տարբերութիւն պէտք է ենթադրել երկուքին մէջ[1]։

⁂

Ղազար կ'երևնայ թէ ընտիր և ազնուական ցեղէ էր. վասն զի առ Վահան Մամիկոնեան գրած թղթին մէջ՝ պարծանքով մը կը զրուցէ թէ. «Դու յայց ելեալ խնդրել զիս, և գտեալ յաշխարհին յայնմ՝ ածեր 'ի տուն, ոչ իբրև զաղքատ զոք 'ի կազմածէն և 'ի մանկտոյն, և ոչ իբրև օտար զոք 'ի քէն, և կամ ծառայ ուրուք»։ Տղայութեան հասակին՝ իր նախնական կրթութիւնն առաւ Ղազար Վրաց Աշուշայ բդեշխին տանը մէջ, որ Վահանայ Մամիկոնենոյ Անոյշ–վռամ հօրաքրոջը հետ ամուսնացած էր։ Ղազար Վահանայ սիրելին և մտերիմ, երկոցուն իսկ մանկութեան զբօսանաց ժամանակ՝ ինքն կը

1. Ազգային հմուտ բանասէրն Գր. Խալաթեան իր երկասիրութեանը մէջ՝ Ղազար Փարպեցի և գործք նորին, պատմական այլ և այլ հաւաստիք մէջ բերելով՝ զՎահան 443–449 թուականին ծնած կը համարի. և զՂազար 440–443. այս երկու թուականներուն մէջ և ոչ յառաջ կամ յետոյ դնելով անոր ծննդեան տարին։

կրէր անոր արկանելիքը։ Իր Թղթին մէջ առ նոյն մարզպան՝ կը յիշէ և կը յիշեցընէ թէ ինչպէս «՚ի Դրան Աշուշայի սնուցանէր մայրն ձեր օրհնեալ և Անոյշ–վռամ՝ ըստ իւրեանց հոգեսիրութեանն՝ և զմեզ ընդ ձեզ և որպէս զձեզ»։ Այս խօսքերով կրնայ հաւանական ենթադրուիլ որ Մամիկոնեանց ազնիւ ու Նախարարական տոհմին հետ մերձաւոր ազգականութիւն ունեցած ըլլայ Ղազար։ փարպեցի կոչուելուն ալ պատճառը՝ որով թէ ինք և թէ այլք սովոր են որոշել զնա ուրիշ համանուն անձերէ՝ Փարպի գիւղը ծննդավայր ունենալուն համար է․ թէպէտև յարդի բանասիրաց ոմանք ուրիշ պատճառներ ալ ուզած են տալ այդպիսի անուանակոչութեան։

Նոյն ժամանակները՝ ինչպէս հիմա ալ յիշեցինք, Հայաստանի մէջ հռչակաւոր էր Վասակայ Արծրունւոյ որդին Աղան։ Վասակ՝ Մեհրուժանայ՝ հայրենեաց կրօնքին և անկախութեանը թշնամի նենգաւորին հետ՝ սէր և բարեկամութիւն կը ցուցընէր․ անով ոմանց կասկածելի, ու շատերուն խիթալի կ՚ըլլար։ Աղան՝ իր հօրը այս բռնած կերպին վրայ իրաւամբ տժգոհ, գնաց առ սուրբն Սահակ հայրապետ, և իր զինուորութեան զգեստը թողլով, սուրբ կաթուղիկոսէն կրօնաւորութեան սքեմը խընդրեց, ու Գողթն գաւառը առանձնանալով՝ եղաւ, ինչպէս կ՚ըսէ Թովմա Արծրունի, «երանելի մարդկան, ահարկու դիւաց»։

Աղանայ քով աշակերտեցաւ Ղազար, և երկար ատեն ուսմանց պարապելէն ետքը, իւր վարդապետացը՝ Սահակայ և Մեսրովպայ հրամանաւը՝ Յունաստան գնաց, ու հոն հելլենական ուսմանց և իմաստութեան հետեւելով, ամէն բանէ աւելի հռետորական արուեստի տուաւ ինքզինքը, և անշուշտ այն պատճառաւ ճարտասան կոչուած է։ Անկէց իր հայրենիքը դառնալով՝ Մամիկոնեանց ազգական Կամսարականաց տիրոջ քով կեցաւ։

*
* *

Դառն և տխուր էր ժամանակն։ Աչքովը տեսնելով Հայաստանի վրայ եկած հասած տեսակ տեսակ թշուառութիւններն, ու չկարենալով հանդուրժել, ելաւ Սիւնեաց աշխարհքը գնաց, ու երկու տարի հոն կեցաւ, « անցուցանելով, ինչպէս ինքը կ'ըսէ, զձմեռն 'ի քարայրի առ առն միում հռչակելոյ 'ի բնակչաց գաւառին՝ յամենայն կրօնաւորութիւնս, որում անուն էր Մովսէս, և տեղին անձուկ. և զամառն՝ յաղագս տօթոյ տեղւոյն՝ քահանայապետ աշխարհին տէր Մուշէ՝ տանէր զնա առ ինքն, ուր և լինէր 'ի հովու »։

Երբոր Վահան՝ Պարսից Վաղարշ Թագաւորէն Հայաստանի մարզպանութիւնն առաւ, ու անով Հայաստան՝ քիչ մը ժամանակ 'ի շփոթմանց և 'ի պատերազմաց հանդարտեցաւ, Նոր մարզպանն՝ իր հայրենիքը բարեկարգելու ետեւէ եղաւ. ու զանազան վկայարաններ, եկեղեցիներ ու վանքեր շինելէն կամ նորոգելէն ետքը, շատ ծախքով՝ Էջմիածնայ կաթուղիկէն զարդարեց։ Անկէ ետքը իւր հին բարեկամը՝ զՂազար, փնտռելու ետեւէ եղաւ, որ մէկէն ձգեց Սիւնեաց աշխարհքը, ու եկաւ գըտաւ զՎահան. հոն տեսաւ Փարպեցին նաև Վահանայ Վարդ եղբայրը և ուրիշները, և Գիւտ կաթուղիկոսին եղբօրորդին՝ Յովհան Մանդակունին, որ այն ատեններն Հայոց կաթուղիկոսական աթոռը կը նստէր։ Հոն խօսք բացուելով նորաշէն կաթուղիկէին համար՝ կը մտածէին որո՛ւն յանձնել անոր կառավարութիւնը։ Յովհան կաթուղիկոս, — ասանկ կ'աւանդէ Ղազար, — ուրիշ քանի մը անձինք առաջարկեց այն պաշտօնին. բայց Վահան՝ Ղազարու յանձնել տուաւ սուրբ կաթուղիկէին հոգաբարձութիւնը. մանաւանդ երբ տեսաւ որ ուրիշ թեկնածուք անարժան միջոցներու ալ կը դիմէին՝ կարասւոյ և ընծայից մատուցմամբ և խոստմամբք կարծելով բռնադատել իր ընտրութիւնը։

Անզգայչ՝ և տկարամիտ գտնուեցայ, — կ'ըսէ Փարպեցին առ Վահան գրած թղթին մէջ, — ընդունելով այդ առաջարկութիւնը. «Ոչ զգուշացայ ժամոյն դաւոյն. այլ պարտ էր փութով և երագ երագ անկանիլ յոտս արտասուօք և աղաչելով 'ի բաց փախչիլ 'ի հոգաբարձութենէ տեղւոյդ: Եւ ահա լինէի պրծեալ 'ի չարաթոյն ժանեաց գազանացն. որք յայնմհետէ դարանամուտեալք 'ի ծածուկ և ըստ անհամար մեծութեանց իւրեանց սաստիկ կարասեաւ գնեալ բազում յեսան՝ սրեցին որպէս սուսեր զլեզուս իւրեանց, և թոյնք իժից էին 'ի ներքոյ շրթանց... որոց հետամուտեալ այնուհետև խափանեցին զգնացս իմ և հասեալ խոցոտեցին զիս 'ի մահ»:

Մարզպանին վստահութեանը արժանաւոր երևցաւ Փարպեցին. քիչ ատենի մէջ՝ մեծ բարեկարգութեան ու պայծառութեան հասուց ան վանքը: Հայաստանի ամէն կողմերէն հոն կը վազէին՝ ուսանելու, կամ արդէն սովորածնին գլխաւորելու համար. և ժամանակին ուսումնասէր ու բարեպաշտ իշխաններէն ալ՝ Վահանայ եղբարքն, Ներսեհ և Հրահատ Կամսարականներն, Համազասպ Մամիկոնեան, Վահանայ եղբօրորդիքը, և Արեղենից իշխանը Գազրիկ՝ պէտք եղած օգնութիւնն ընելէն ետ չէին կենար:

Վանքին բարեկարգութիւնը, արդէն 'Ղազարայ դէմ եղող աբեղաներու նախանձը ա՛լ աւելի շարժեց. զինքը վար զարնելու և իր համբաւը աղօտացընելու համար՝ ամէն ջանքերնին բանեցուցին. անոր ուսմանցն ու գիտութեանը հետ՝ հաւատոց վարդապետութիւնն ալ կը պախարակէին: Իրենց ամբաստանութիւնքն՝ ինչուան Վահանայ ականջն ալ հասուցին. և այնչափ պղտորեցին մարզպանին միտքը՝ որ երդմամբ սպառնացաւ ոչ միայն զՂազար՝ այլ և ոչ իրեններէն մէկը թողուլ այն վանքին մէջ:

Խռովեցաւ Փարպեցին, ու չէր գիտեր ինչ կերպով իրեն դէմ բացուած անդուռն բերանները լռեցընել. իր

հակառակորդացը հետ խօսիլ ու զանոնք համոզելն՝ իրեն համար ընդունային աշխատանք մը կ'երեւնար. այնչափ ատելութեամբ իրեն դէմ զինուած էին, որ Փարպեցին իր ամէն գիտութեամբն ու սրբութեամբն ալ՝ պիտի չըկարենար իր անմեղութիւնը ցուցընել:

Ուստի հարկ սեպեց դիմել առ քահանայապետն Յովհան Մանդակունի, և իրմէն խնդրել իր նեղութեանը մէջ այն օգնութիւնը՝ որուն կարօտ էր: Ընտիր տոհմէ սեպուհ մը ղրկեց առ քահանայապետն, ու ցաւօք և տագնապով կ'իմացընէր իր ինչ վիճակի մէջ ըլլալը. «Փութա, կ'ըսէր, հաս յօգնել. խոցոտեցայ թշնամիէն՝ անթիւ նետերով. կարեվէր եմ ու մահուան մօտեցած. ասկէ ետքը քեզի հարկ է դեղը տալ ու բժշկել: Իսկ թէ որ մեռնելու ըլլամ՝ գերեզման տանիլ ու թաղել»: Երբոր պատգամաւորին բերնովը իր ուզած պատասխանը չառաւ Ղազար, հարկ սեպեց անձամբ երթալ առ Մանդակունին: Քահանայապետն անհաւատալի տկարութեամբ մը, զոր պատմութիւնը ուրիշ առիթներու մէջ չիտար իրեն, չուզեց և ոչ իսկ տեսնել զինքը, թող թէ լսել և իրաւացի դատաստանը կտրել. «Ես և 'ի տեսանել իսկ, — կը գրէր առ նա, — չիշխեմ զքեզ առ երկիւղի. դու ասես, եթէ գամ բժշկեմ և կամ թաղեմ. մի՛ գուցէ զգացեալ ուրուք և զիս ընդ քեզ թաղիցէ»[1]:

1. Բանասէրն Գր. Խալաթեան, վերը յիշուած երկասիրութեանը մէջ կը ջանայ ցուցընել թէ Մանդակունին չըլլայ 'ի Ղազարայ յիշուած իր սրբազան աստիճանին և կոչման անարժան հայրապետը, որ Թղթոյն գրութեան ժամանակ արդէն վախճանած էր և որուն վրայ այնչափ գովութեամբ կը խօսի՝ ժամանակաւ և գրութեամբ կրտսերագոյն Պատմութեան գրոցը մէջ: Ո՞վ էր արդեօք այդ հայրապետն. — Մանդակունւոյն յաջորդքը Բաբգէ՞ն 487–491) թէ Սամուէլ (490–502) թէ Մուշէ (502–510), և հաւանականագոյն կը համարի այս վերջինը:



Ղազարու Թշնամիքը երբոր տեսան թէ ամենէն երեսի վրայ ձգուած է, ա՛լ չվախցան. անգթութեամբ զինքը վանքէն վռնտեցին, ունեցածը չունեցածը յափշտակեցին, և ինչուան իր քովն եղած յոյն լեզուով գրքերն ալ չտուին. «որ կան այդր, կ'ըսէ գանգատելով, ընկեցեալ 'ի կերակուր ցեցոյ. բայց արդեօք կարդացեալ լուսաւորիցին 'ի դոցանէ բնակեալքդ 'ի տեղւոջդ, և կամ զայլս լուսաւորեսցեն»։

Սիրտը կոտրած և յուսահատած՝ ելաւ վանքէն ու Ամիթ քաղաքը գնաց. հոնկէց ինքզինքը Վահան Մամիկոնեանին առջևը արդարացընելու համար թուղթ մը գըրեց, ու Համազասպ Մամիկոնեան նախարարին ձեռքովը ղրկեց անոր. յորում իրեն վրայ եղած ամէն ամբաստանութիւնները նշանակելով՝ անոնց ամենուն պատասխանը կու տայ ճարտարութեամբ. և անմեղութեան յաղթանակը կանգնելէն ետքը՝ զինքը բամբասողաց անկարգ վարքը և տգիտութիւնը կը յանդիմանէ։

Կ'երևնայ թէ այս թուղթը՝ պէտք եղած ազդեցութիւնն ըրած է Վահանայ վրայ, որ մէկէն կանչեց զինքը իր քովը. և հաւանական կ'երևնայ թէ անկէց ետքը առաջարկած է որ Պատմութեան գիրքը շարագրէ։ Եւ ահա թղթէն զատ իր երկասիրութիւններէն մեր ձեռքը հասածն է այս պատմութիւնը։



**Փարպեցւոյն Պատմութեան Աղբիւրը**։ — Գրոց սկիզբը կը յիշէ Փարպեցին իրմէն առաջ եղող պատմագիրքն, ու անոնց իրաւացի արժէքը կը ճանչընէ։ Ասոնք են Ագաթանգեղոս ու Փաւստոս Բիւզանդ, որոնց շարայարութիւն կը սեպէ իւր գրուածքը, առ որ զինքը յորդորեր էին

իշխանաց հրամաններն ու սրբոց վարդապետաց խօսքերը. « Տուաք, կ'ըսէ, զանձինս յայսպիսի գործ կարևոր, չիշխեցեալք ընդդիմանալ, կարգել մի ըստ միոջէ զիրս և զգործս, զբազմայեղանակ դիպմունս Հայաստան աշխարհիս բաժանմանց յերկու թագաւորութիւնս, և 'ի վիճակէ բաժնոյ օրինացն՝ արանց քաջաց 'ի տոհմէ Նախարարաց Հայոց՝ տալ զանձինս անհամարս 'ի նահատակութիւնս, 'ի վերայ ուխտին սուրբ եկեղեցւոյ, և կիսոցն համբերել կապանաց և բանտից... Հեղուլ քահանայից ընտրելոց Աստուծոյ և ճշմարիտ հովուաց՝ զարիւն 'ի պարանոցաց իւրեանց 'ի վերայ ընտրեալ բանաւոր հօտին Քրիստոսի. և ոմանց յընկերակցաց նախարարացս և յայլ ազատ մարդկանէ՝ դառնալ յետս յուխտէ սրբութեանն, և անշէջ յաւիտենից հրոյն լինել լուցկիք, պատրաստելոյն սատանայի և նորին արբանեկացն: Եւ գրել զայս ամենայն մինչև ցօր սկզբան մարզպանութեան Հայոց Վահանայ Մամիկոնէից տեառն և մեծի զօրավարին Հայոց և մարզպանի. և դադարեալ հանգուցից յայնմ տեղւոջ զբան վաստակոց պատմութեանցս այսոցիկ »:

Ասիկայ է Ղազարայ Փարպեցւոյն պատմութեան նիւթն ու նպատակը: Յորում կ'աւանդէ թէ ինչպէս Հայոց աշխարհին առ Աստուած դառնալէն ետքը՝ այն զարմանալի դէպքին, և անոր գործադրին սրբոյն Գրիգորի պատմութեան արժանի գրիչ երևցաւ Ագաթանգեղոս: Բայց իրմէ ետքը, կ'ըսէ, երբոր քաղաքական փոփոխութիւններ Հայաստանի մէջ տեսակ տեսակ շփոթութիւն յաճախեցին, տգէտ և յանդուգն մարդիկ՝ իրենք իրենցմէ ընդունայն ու անպիտան գրուածներ շարագրեցին, ու գիտուն և իմաստուն անձանց երկասիրութեանցը հետ՝ իրենց գրուածները խառնեցին: Այն անտեղութենէն զգուշանալու համար Վահան Մամիկոնէից իշխանը կը ստիպէ զՓարպեցին՝ որ իրեն ժամանակաց դէպքերը գրի վրայ առնու: Վերը յիշուած դժբաղդութեան հանդիպած կը համարի նաև Բիւզանդայ գիրքը, ինչպէս ուրիշ տեղ ալ խօսեցանք:

Կը սկսի Ղազար իր պատմագրութիւնը Արշակունեաց թագաւորութեան երկուքի բաժնուելէն. երբոր քաղաքական կերպարանափոխութեանց համար՝ Հայաստանի արևմտեան մասը Յունաց կայսեր իշխանութեան տակն ընկաւ, ու արևելեան մասն ալ Պարսից թագաւորին: Այն ատեններն՝ Պարսից վիճակին մէջ եղող Հայոց Նախարարներն՝ թագաւորին երթալով խնդրեցին իրմէ՝ որ իրենց բնիկ Արշակունեաց ցեղէն թագաւոր մը դնէ վրանին: Շապուհ թագաւորը կատարեց անոնց խնդրուածքը, ու Արշակունեաց ցեղէն Խոսրովը դրաւ. որովհետև անկէց առաջ Արշակ թագաւորը տեսնելով Հայոց ազգին մէջ տիրած անմիաբանութիւնը, և ճանչնալով որ այն երկպառակութեանց վախճանը՝ բոլոր աշխարհին աւերումը պիտի ըլլայ, թողուց Այրարատ գաւառը Պարսից ձեռքը, որ կարենայ խաղաղութիւն գտնել թէ իր անձին և թէ աշխարհին, ու գնաց Յունաց աշխարհին ժառանգութեանը մէջ նստաւ: Հոս արտուղութիւն մը կ'ընէ Փարպեցին, Այրարատ գաւառին գովեստն ընելով, որ իր պատմագրութեանն ընտրելագոյն մասերէն մէկը կրնայ սեպուիլ:

Ժամանակ անցնելէն ետքը՝ Հայոց Նախարարք թշնամացան իրենց թագաւորին հետ, ու Պարսից թագաւորին առջև ամբաստանեցին զինքը, որպէս զի չխաբուի Խոսրովու արտաքին բարեկամութենէն զոր կը ցուցընէր իրեն, և թէ անոր միտքը ուրիշ բան չէ բայց եթէ Յունաց հետ միաբանիլ: Շապուհ սիրով մտիկ ըրաւ անոնց ամբաստանութեանցը. իրեն կանչեց զԽոսրով ու պատժեց զինքը. և Հայոց Նախարարաց մատնութիւնն ալ վարձատրելու համար՝ անոնց խօսքին գէթ մէկ անգամ մը մտիկ ըրաւ, ու զՎռամշապուհ վրանին թագաւորեցուց:

Մեր գրականութեան պատմութեանը մէջ՝ մատենագրական դարագլուխ մը կրնայ սեպուիլ Վռամշապհոյ թագաւորութիւնն. ուստի և Ղազար ճոխաբար կ'աւանդէ ինչ որ իրեն ժամանակ բարիք եղան ազգերնուս՝ Սահակայ հայրապետի ու Մեսրոպայ վարդապետի ձեռնտու-

ութեամբը։ Կը պատմէ նաև Վռամշապհոյ մեռնելէն ետքը Խոսրովու կրկին անգամ թագաւորելը Վռամայ ձեռքով։ Բայց երբոր Վռամայ մահուընէն վերջը՝ անոր եղբայրը Յազկերտ թագաւորեց Պարսից վրայ, չուզեց որ Արշակունեաց ցեղէն թագաւոր նստի 'ի Հայաստան. ուստի իր Շապուհ որդին ղրկեց հոն իշխան։ Իսկ երբ Հայերը գոհ չեղան անոր իշխանութենէն, Յազկերտի որդւոյն Վըռամայ թագաւորութեան ժամանակ՝ խնդրեցին իրմէն ու Խոսրովու որդին Արտաշէսը թագաւորեցուցին։

Արտաշէս անարժան վարքովը ատելի եղաւ ամենուն, և նախարարք մտածեցին ձգել զինքը իշխանական պատուէն անոր ձեռքովը՝ որով զինքը այն մեծութեան հասուցեր էին։ Ջանացին որ իրենց կամակից առնուն նաև զսուրբն Սահակ։ Աստուածարեալ անձը որչափ իրաւացի կը գըտնէր անոնց բողոքը թագաւորին անարժան վարուցը համար, յանձն չէր առնուր որ խորհրդոցն ալ կամակից երևնայ։ Այս առթով գեղեցիկ խօսակցութիւն մըն ալ ըրաւ անոնց, զոր մէջ կը բերէ պատմիչը. բայց նախարարք մտիկ չըրին, ու չէ թէ միայն իրենց ձեռքովը թագաւորը մատնելով՝ իշխանութիւննին վերուցին, այլ նաև իրենց խորհրդոցը դէմ կեցող սուրբ հայրապետն ալ՝ Պարսից դուռը բանտարկել տուին։

Այս դէպքով Հայաստանի թշուառութիւնը սկսաւ։ Ու երբ նախարարք իրենց անմիտ գործոյն վրայ զղջալով փութացան առ սուրբն Սահակ՝ որ իր աստուածատուր իմաստութեամբը դարման մը ընէ այն աղետից, ու կ'ուզէին միւսանգամ հայրապետական աթոռը նստեցընել զինքը, յանձն չառաւ Սահակ. ու արտասուալից աչքով մը՝ Վաղարշապատու եկեղեցւոյն մէջ եղած տեսիլքը պատմեց անոնց ու մեկնութիւնը տուաւ. իմացընելով թէ ինչպէս իրենք իրենց ձեռքովը, բայց միշտ աստուածային թոյլտուութեամբ, կորսընցուցին իրենց իշխանութիւնը և կործանումը փութացուցին։ Անկէ քիչ ետքը հանդիպեցաւ Սահակայ ու Մեսրովպայ մահը, որով աւելի կերպով

մը համարձակութիւն առին անմիաբանութիւնք և թուլահաւատութիւն․ նախարարք իրարու հետ սկսան իյնալ, ու մէկմէկու ձեռքէ իշխանութիւնը յափշտակելու համար զիրար Պարսից դուռը ամբաստանել։ Ասոնց մէջ գլխաւոր եղաւ Վարազվաղան, որ իր փեսային՝ Վասակայ՝ մեծնալը ու իշխանութեան հասնիլը տեսնելով գնաց ուրացաւ հաւատքը, ու սկսաւ իր փեսային վրայ ամբաստանութիւններ ընել․ կը ջանար անոր տեղն անցնիլ, խոստանալով որ եթէ այս մեծութիւնը իրեն տրուի, ինքն ալ երախտապարտ ըլլայ Պարսից, ու բոլոր Հայաստանը անոնց կրօնից աշակերտէ։

Այս խոստումը՝ մեծ ուրախութիւն ազդեց Միհրներսեհի, որ Յազկերտի առաջին հրամանատարն էր․ սկսաւ յորդորել զԹագաւորն որ փոխանակ զէնքերով իրեն իշխանութեան սահմանը ընդարձակելու, կրօնից ասպարէզը լայնցընէ․ Թագաւորին կողմանէ ու անոր հրամանաւ թուղթ մը գրեց Հայոց՝ որ ետ կենան իրենց կրօնքէն, ու ընդունին այն հաւատքը զոր Պարսից Թագաւորը կը դաւանի։ Երբոր Հայք յանձն չառին, ու անոր թղթոյն անհանճար խօսքերը՝ իմաստութեամբ ըմբերանեցին, իրեն քով կանչեց Թագաւորը անոնց գլխաւոր նախարարներն ու բանտերու մթութեան դատապարտեց, որպէս զի ստիպուին մտիկ ընելու իր հրամանին։ Երբ անոնցմէ ոմանք առ երեսս, և այլք սրտի մտօք ընդունեցան Պարսից կրօնքը, մեծապատիւ փառօք ղրկեց զանոնք ՚ի Հայաստան։

Հոս կ՚աւանդէ Ղազար Վարդանանց հրաշալի պատմութիւնն ու յաղթանակը․ անոնց միաբան նահատակութիւնն ու մահը՝ զոր արդէն իրմէ առաջ ստորագրած էր Եղիշէ։ Անկէց Ղեւոնդեանց պատմութեանը կ՚անցնի, գրեթէ Եղիշէի կերպովը, բայց աւելի համառօտ ոճով։ Եղիշէ իր պատմութիւնը մինչեւ Յազկերտի մահը ու նախարարաց դարձը կը հասցընէ․ իսկ Ղազար անկէ ալ անդին կ՚անցնի, սկսելով Գիւտ կաթուղիկոսին օրերէն։ Կը

պատմուած է թէ ինչպէս անոր թշնամիքը Պարսից դուռը ամբաստանեցին զինքը, ու ինքն ալ հոն երթալով արդարացաւ. բայց Թագաւորը չուզեց միւսանգամ Հայրապետական աթոռոյ վրայ նստեցընել զինքը, այլ ամենայն պատիւ տալով սահմանեց որ ուզած տեղը նստի: Գիւտ ալ՝ երկար ատեն Պարսից դուռը կենալէն ետքը՝ ետ դարձաւ:

Նոյն ժամանակները Մամիկոնեանն Վահան կը պայծառանար: Գադիշոյ Մալխազը և իրեն հետ քանի մը ուրացող նախարարք նախանձեցան վրան, ու ուզելով զինքն իշխանութենէ ձգել, ամբաստանեցին թէ ապըստամբ է, և թէ անոր ձեռացը տակ ամենևին ապահով չի կրնար ըլլալ Պարսկաստան՝ իր Հայաստան աշխարհին սաարին վրայ:

Ինքզինքը արդարացընելու համար ելաւ Պարսկաստան գնաց Վահան, ու տեսնելով թէ անոնց նախանձը ամենևին պիտի չըլլայ, և իրեն ալ անկարելի պիտի ըլլայ խաղաղութիւն գտնել, հաւատքին մէջ տկարացաւ: Անանկով մեծապատիւ դարձաւ 'ի Հայաստան. հոն իւր ուրացութեան վրայ զղջալով, հետը միաբանեց հաւատացեալ նախարարքը, ու Պարսից դէմ պատերազմի սկըսաւ. ու զանազան անգամ անոնց զէնքերը փշրելէն և ոյժը խորտակելէն ետքը՝ հետերնին հաշտութեան դաշինք դրաւ: Հայաստանն ազատեց, անոր կրօնքն ու ինչքը ապահովցուց, և ինքը մեծ փառքով պատուեցաւ. ուստի և իրաւամբք Մամիկոնէից տէր և Հայոց սպարապետ ու մարզպան ընտրուեցաւ:

Այս հրաշալի ու անակնկալ փոփոխութեան վրայ զարմացան Հայք, ու իրենց արժանաւոր հայրապետն Յովհան Մանդակունի՝ առեանը ելլելով ու խաղաղութեան ողջոյնը տալով՝ աւետեց իր հաւատացելոցը այս զարմանալի նպաստութիւնն, ու յորդորեց զիրենք որ փառք տան Աստուծոյ:

Այն գեղեցիկ ու պերճախօս ատենաբանութեամբը կը կնքէ Փարպեցին իր պատմութեան գիրքը:

* * *

**Փարպեցւոյն պատմութեան գրոց աղբերք.** — Փարպեցի իր պատմութեան գրոց սկիզբը՝ իրմէ առաջ միայն երկու ազգային պատմիչք կը յիշատակէ, ըսինք, զԱգաթանգեղոս և զԲիւզանդ. տեղ տեղ ալ Կորեան անունը. և երրորդ ինքզինքը և իր գիրքը կը կոչէ. որով բանասէրք և քննադատք ենթադրեցին և գրեցին թէ իր ժամանակին երկու գլխաւոր անձնաւորութեանց, Եղիշէի և Խորենացւոյ գրքերը անծանօթ եղած ըլլան իրեն, կամ ո՛ և իցէ պատճառաւ՝ Ղազարայ ձեռքն անցած չեն իրենց երկասիրութիւնք։ Նոր հետազօտութիւնք և բանասիրաց բաղդատական քննադատութիւնք (և առանձինն Գր. Խալաթեան), այս կարծեաց չեն համաձայնիր. մանաւանդ թէ հակառակ կարծեաց պաշտպանք, օրինակներով ալ կը ցուցընեն թէ Փարպեցւոյն ոչ լոկ Ագաթանգեղոս, Բիւզանդ և Կորիւն ծանօթք էին, այլ նաև Խորենացի և Եղիշէ. և թէ ինչպէս առաջնոց՝ բայց մանաւանդ վերջնոցս պատմական գրուածներէն մեծապէս օգտուած է իր պատմական շարագրութեանը մէջ։ Ուստի և երկուքի կը բաժնեն իրեն աղբերքն. նախ յանուանէ յիշատակեալքն 'ի նմանէ, և երկրորդ՝ կարևորագոյնքն քան զնոսա, և մեզի անծանօթ պատճառաւ մը յանուանէ իրմէ չի յիշատակուածքն։

Ագաթանգեղոսէն առած է՝ Լուսաւորչի տեսլեան պատմութեան պարագաները, որոնք կը նոյնանան իմաստիւք և բառիւք ընդ տեսլեան սրբոյն Սահակայ, զոր կը պատմէ Փարպեցի։ Իրմէն առնուած է դարձեալ երկար հատուած մը բանի՝ 'ի տեսլենէ Լուսաւորչին, զոր Փարպեցի կը յատկացընէ Վարդանայ պատերազմին՝ ուխտապահ և ուխտազանց Նախարարքն իրարու հետ բաղդատելով։ Ի Բիւզանդայ եկամուտ է իր գրոց մէջ սրբոյն Ներսեսի անէծքն առ Արշակ Թագաւոր, և գուշակօրէն

տեսութիւնը՝ Հայոց արքայական իշխանութեան բարձմանը ՚ի ցեղէ Արշակունեաց։ Իսկ ՚ի կենսագրական աշխատութենէ Կորեան քաղուած կ՚երեւնան Մեսրովպայ վարուց, Նշանագրաց գիւտին և որրոյն Սահակայ մահուան վրայ գրածները, եթէ՝ ինչպէս մեզի հաւանական կ՚երեւնայ, ՚ի դիւանական գրութեանց առնուած չեն։

Բայց ասոնցմէ աւելի կարեւորագոյն աղբերք եղած են, — ըստ իրեն նոր քննադատից, — Խորենացի և Եղիշէ։ Ի դրոց առաջնոյն քաղած է Բիւզանդայ պատմութեան դադրելէն մինչև ցվախճանել Սահակայ և Մեսրովպայ՝ վաթսունուերկու տարիներու անցից և դիպուածոց պատմութիւնն։ Իսկ Եղիշէ միակ աղբիւր է Փարպեցւոյն՝ Վարդանայ պատերազմին պատմութեան համար։ Մերթ, — նաև գլխաւոր պարագայից մէջ, — կը տարբերի իրմէ, թերեւս ոչ առանց մասնաւոր դիտման. բայց Եղիշէ՝ մերձաւորագոյն ժամանակաւ, ականատես և կենակից՝ իրմէ պատմուած անցից և անձանց, միշտ մեծագոյն հաւատարմութեան արժանի կը սեպուի իրաւամբ։ Այս նմանութեանց գլխաւորներն կ՚ամփոփենք ՚ի ծանօթութեան [1]։

Գալով Փարպեցւոյն մատենագրական արժէից՝ ՚ի հնոց իրեն ընծայուած ձարտասան մակդրին ոչ անարժան կը տեսնենք զնա՝ թէ ՚ի պատմութեան, և թէ մանաւանդ առ Մամիկոնեանն Վահան ուղղած թղթոյն մէջ. կորովի

1. Ի Խորենացւոյ առնուած են հետեւեալ հատուածք. (էջքն նշանակուած են ըստ Վենետկեան նորագոյն տպագր.)։ Խոր. Գ. 55. — Փարպ. էջ 51։ — Խոր. Գ. 55։ — Փարպ. 51։ — Խոր. Գ. 63։ — Փարպ. 58, 60։ — Խոր. անդ։ Փարպ. 61։ — Խոր. Գ. 63։ — Փարպ. 62։ Նմանութիւնք ընդ Եղիշէի. (ըստ տպ. Վենետ. 1849). Եղիշէ, էջ 9։ — Փարպ. 121։ — Եղիշէ 22։ — Փարպ. 124։ — Եղիշէ 32։ Փարպ. 134։ — Եղիշէ 39։ — Փարպ. 154։ — Եղիշէ 49։ — Փարպ. 176։ — Եղիշէ 57։ — Փարպ. 183։ — Եղիշէ 58։ — Փարպ. 183։ — Եղիշէ 59։ — Փարպ. 192։ — Եղիշէ 61։ — — Փարպ. 193։ Ասոնցմէ աւելի զգալի ընդօրինակութիւններ. Եղիշէ 26։ — Փարպ. 291։ — Եղիշէ 139։ — Փարպ. 305։ — Եղիշէ 140։ — Փարպ. 407։ — Եղիշէ 141։ — Փարպ. 313։

ոճ մը, ուժով բացատրութիւնք, գեղեցիկ նկարագրութիւններ, սուր տեսութիւնք, և մանաւանդ գրիչ զոր կը գործածէ յանիրաւի զինք և իր վարքն ու գործերը բամբասողաց և անգոսնողաց դէմ։ Իսկ հայ լեզուն՝ գեղեցիկ վայելչութեամբքն՝ Թարգմանչաց դարուն և դպրոցին արժանաւոր, ունի նաև թերութիւններն՝ կրելով ժամանակին աշխարհիկ խօսից կերպարանքը. Թէպէտ և այն իսկ յետագայից համար մեծապէս օգտակար, իր հետաքննական պատմութեանն հետ աւանդելով մասամբ նաև այն դարուց մէջ խօսուած լեզուին հանգամանքը։

Փարպեցւոյն պատմութեան գրոցը մէկ հետաքննական մասն ալ՝ սրբոյն Սահակայ տեսիլքն, և անոր մեկնութիւնն է։ Ղազար իբրև հաւատարիմ դէպք մը կ'աւանդէ զայն. սակայն նոյն իսկ հինք՝ չժխտելով տեսլեան ստուգութիւնը՝ անոր մանրապատում նկարագիրն ու մեկնութիւնը վաւերական չեն համարիր, ուրիշ ժամանակակից պատմչաց մէկուն քով չտեսնելով անոր յիշատակը. որով և կը կարծուի թէ Փարպեցւոյն գրոց մէջ յետոյ աւելցուցած են այլք՝ իրմէ ետքը եկող դարուց մէջ։ Էջմիածնի Մատենադարանին գրչագրաց մէջ (Թիւ 920) այս տեսլեան խորագիրը նշանակելով՝ բանասիրաց քննութեանը կը յանձնենք. «Յառաջաբան տեսլեան սըրբոյն Սահակայ Պարթևի, զոր եցոյց նմա Բարձրեալն անբաւ մարդասիրութեամբ իւրով». և սկզբնաւորութիւնն է. «Եւ յետ մահուան Յազկերտի որդւոյ Շապհոյ թագաւորին Պարսից՝ թագաւորեաց Վռամ որդի նորա 'ի վերայ աշխարհին Արեաց»։ — «Ի յիշատակի սրբոյն Սահակայ Հայոց հայրապետի 'ի քերթողական գրոց, յաղագս վարուց և կենաց նորա. և վասն տեսլեան զոր ակամայ պատմեաց նախարարաց Հայոց։ — «Յայնժամ ժողովեալ 'ի միասին ամենայն նախարարացն Հայոց՝ չոգան առ մեծն Սահակ»։ — «Տեսիլ մարգարէութեան սրբոյն Սահակայ Պարթևի հայրապետի Հայոց, զոր ետես յԱյրարատ գաւառի 'ի Վաղարշապատ քաղաքի, յորժամ

նստէր նա 'ի ժամ պաշտաման 'ի կաթուղիկէ սուրբ եկեղեցւոյ՝ 'ի վերայ բեմին, մերձ առ սեղանն Աստուծոյ: — Մեկնութիւն սրբոյն Սահակայ տեսլեան »:

Ցովսիա. « Քրիստոսասէրի Վարազդայ Գաբեղենից տեառն, աղաչեալ զՑովսիա ճշմարտախորհ և երկիւղած ի տեառնէ, զատուցել զպատմութիւն երանելեացն Թաթուլոյ և Գիւտի և Թովմասու և վարուց ճգնաւորաց Քրիստոսի »: Սկզբնաւորութիւնն է. « Ընգալա զՔրիստոս հարկեցուցանող խնդիրդ մանաւորաբար խնդութեամբ ի Քրիստոս և երկիւղիւ ». (Մատենադարան Երուսաղեմի, թիւ 278):

Փարպեցւոյն Պատմութեան գրոց բնագրիր առաջին տպագրութիւնն եղած է 'ի Ս. Ղազար Վենետկոյ յամի 1793. երկրորդ և նորագոյն հրատարակութիւն մ'ալ դարձեալ նոյն տպարանէն հանդերձ Թղթովն առ Վահան Մամիկոնեան 'ի 1873: Այս թղթոյն առաջին տպագրութիւնն եղած է 'ի Մոսկուա 'ի 1853, 'ի ձեռն Լազարեան արևելեան լեզուաց Ճեմարանի Տեսչին. Մկրտչի Էմին. աշխարհիկ լեզուով թարգմանութիւն մը և քաղուածութիւնք 'ի Մ. Նալբանդեանց, և հրատարակուած 'ի Փեթերպուրկ (1868): Պատմութեան 'ի գաղղիական լեզու թարգմանութիւն մը 'ի Հաւաքման Լանկլուայի. Lazare de Pharbe ; Histoire de l' Arménie, traduite pour la première fois en français et accom;agnée des notes historiques et critiques, par le P. Samuël D.r Ghésarian (Cantar), membre de l'Académie nationale arménienne de St. Lazare de Venise. Մասնական թարգմանութիւն մ'ալ. Abrégé de la vie politique et guerrière du prince Vahan-le-Mamigonien, par Lazare de Pharbe. Traduit par le P. Garabed Kabaragy. Paris, 1843:

# ԴԱՐ Զ

---

*Դպրութեանց անկումն վեցերորդ դարուն մէջ։ — Քաղաքական յուզմունք և կրօնական խնդիրք և խտրութիւնք պատճառ անկման։*

Հայկական դպրութիւնք մէկէնիմէկ մեծ ու զարմանալի յեղափոխութիւն մը կը կրեն վեցերորդ դարուն մէջ. և զարմանք չէ. որովհետև աշխարհին քաղաքական դիրքն ալ բոլորովին փոխուած էր։ Վարդանանց և Վահանեանց ջանքը՝ ուրիշ արդիւնք մը չէր ունեցած՝ բայց եթէ արգելուլ զՍասանեանս որ չկարենան իրենց մտքի դրած կերպով տիրել Հայոց վրայ։

Նոյն ժամանակները պատահած կրօնական դէպք մըն ալ՝ թէ՛ ժամանակին և թէ անոնցմէ ետքը եղող մեր մատենագրաց սրտին ու մտքին վրայ մեծ ազդեցութիւն ըրաւ. — Քաղկեդոնի ժողովոյն գումարումը։ Ազգային եկեղեցական պատմութեան թողլով՝ այս նկատմամբ ազգին մէջ պատահած դէպքերը, միայն յիշեցընենք թէ այն ժողովքին պատճառաւ՝ արտաքին պատերազմներէ զատ՝ ներքին գժտութիւնք և հակառակութիւնք ալ սկըսան մտնել մեր ազգին մէջ։ Անով թշնամական ատելութիւն մը մտաւ Հայոց մէջ Յունաց ազգին հետ, ու անոնց կրօնքէն խորշելնուն պատճառաւ, երթեւեկք և մը-

տերմական յարաբերութիւնք պակսեցան, որով սկսան դըպրութիւնքն ու գրքերն ալ արհամարհուիլ։ Ա՛լ խափանուեցաւ յունական լեզուին ուսումը, ու անոնց օգտակար կամ դասական գրոց թարգմանութիւնք։ Քանի մը սկզբնագիր գրիչք ալ՝ որ վեցերորդ դարուս մէջ երեւցան, աննշան երկասիրութիւններ թողուցին. սակ Հայ մատենագրութեան ամփոփ հորիզոնին մէջ սնած ու մեծցած հանճարներն, ասոնցմէ աւելի նշանակութեան արժանի արտադրութիւններ դժուարաւ կրնային թողուլ։

## ԱԲՐԱՀԱՄ ԵՊ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

---

**Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոս։ — Խրատական գըրուածք իր՝ անուամբ։ — Պատմութիւն ժողովոյն Եփեսոսի։ — Փիլաքսիանոս Նաբովկայ եպիսկոպոս։**

Հինգերորդ դարուն վերջերը ու վեցերորդին սկիզբները կ՚իյնայ Մամիկոնէից եպիսկոպոսը Աբրահամ, որ Աղուանից Վաչագան թագաւորին խնդրանօքը՝ քանի մը խրատական գրուածներ յօրինեց. մանաւանդաբար՝ սրբոց նշխարքը պատուելու և ննջեցելոց հոգւոց հանգստեանն համար աղօթք ընելու վրայ։ Այնչափ համառօտ գրուած մըն է ասիկայ՝ որ մասնաւոր քննութեան իջնալուն չարժեր։

Աբրահամու անուամբը ուրիշ երկասիրութիւն մըն ալ կայ. Քրիստոսի 431 թուականին յԵփեսոս գումարուած տիեզերական սուրբ ժողովքին պատմութիւնը ընտիր ոճով և կարգաւորութեամբ գրուած. և որովհետև ձեռագրաց մէջ գտնուած օրինակներու վրայ Վաչագանայ ա-

նունը կը յիշուէր, ուստի և կը կարծուէր հաւանականաբար թէ այս գրուածքն ալ նոյն թագաւորին ընծայած ըլլայ. բայց ետքի տարիներս ուրիշ գրչագիր մըն ալ երևնալով՝ իմացուեցաւ թէ նոյն պատմութեան հեղինակն է Փիլաքսիանոս անունով մէկը՝ որ Նարօվկ քաղաքին եպիսկոպոսն էր, և Կոմիտասայ Հայոց կաթուղիկոսին խնդրանօքը շարագրեց այս գրուածքը, ինչպէս յայտնի կ'երևնայ այն ընդարձակ յառաջաբանէն՝ որ Աբրահամու անուամբը յիշուած ձեռագրաց մէջ կը պակսի: Հաւանականաբար Աբրահամ եպիսկոպոս մը եղած է նոյն պատմութեան թարգմանիչ:

## ՊԵՏՐՈՍ ԵՊ· ՍԻՒՆԵԱՑ

---

Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց և իր ժամանակը: — Ճառեր՝ որ իր անուամբ հասած են առ մեզ: — Պատմական գրուածք մը: — Քանի մը հատուածք այդ երկասիրութենէն առ Ստ. Օրպելեան: — Համբաւն ու 'ի պատմչաց գովութիւնք իրեն և գրուածոցը:

Նշանաւոր անուն մը, մեր պատմագրաց շատերէն յիշուած և Սիւնեաց անուանի վարդապետանոցին մէջ կըրթուած անձինքներուն գլխաւորներէն մէկն: Որչափ ալ քիչ ըլլան իր համբաւոյն արժանաւոր երկասիրութիւնք, այս պակասութիւնս՝ անշուշտ աւելի ժամանակին տալու է, որ ուրիշ այնչափ հռչակաւոր իմաստնոց երկասիրութիւնը մեզմէ ծածկած է. ապա թէ ոչ, անտարակոյս առանց պատճառի չէր այն համարում, և ոչ թէ միայն մեր ձեռքը հասած գրուածքներուն համար:

ութեամբը։ Կը պատմէ նաև Վռամշապհոյ մեռնելէն ետքը Խոսրովու կրկին անգամ թագաւորելը Վռամայ ձեռքով։ Բայց երբոր Վռամայ մահուընէն վերջը՝ անոր եղբայրը Յազկերտ թագաւորեց Պարսից վրայ, չուզեց որ Արշակունեաց ցեղէն թագաւոր նստի 'ի Հայաստան. ուստի իր Շապուհ որդին ղրկեց հոն իշխան։ Իսկ երբ Հայերը գոհ չեղան անոր իշխանութենէն, Յազկերտի որդւոյն Վռամայ թագաւորութեան ժամանակ՝ խնդրեցին իրմէն ու Խոսրովու որդին Արտաշէսը թագաւորեցուցին։

Արտաշէս անարժան վարքովը ատելի եղաւ ամենուն, և նախարարք մտածեցին ձգել զինքը իշխանական պատուէն անոր ձեռքովը՝ որով զինքը այն մեծութեան հասուցեր էին։ Ջանացին որ իրենց կամակից առնուն նաև զսուրբն Սահակ։ Աստուածարեալ անձը որչափ իրաւացի կը գտնէր անոնց բողոքը թագաւորին անարժան վարուցը համար, յանձն չէր առնուր որ խորհրդոցն ալ կամակից երևնայ։ Այս առթով գեղեցիկ խօսակցութիւն մըն ալ ըրաւ անոնց, զոր մէջ կը բերէ պատմիչը. բայց նախարարք մտիկ չըրին, ու չէ թէ միայն իրենց ձեռքովը թագաւորը մատնելով՝ իշխանութիւննին վերուցին, այլ նաև իրենց խորհրդոցը դէմ կեցող սուրբ հայրապետն ալ՝ Պարսից դուռը բանտարկել տուին։

Այս դէպքով Հայաստանի թշուառութիւնը սկսաւ։ Ու երբ նախարարք իրենց անմիտ գործոյն վրայ զղջալով՝ փութացան առ սուրբն Սահակ՝ որ իր աստուածատուր իմաստութեամբը դարման մը ընէ այն աղետից, ու կ՚ուզէին միւսանգամ հայրապետական աթոռը նստեցընել զինքը, յանձն չառաւ Սահակ. ու արտասուալից աչքով մը՝ Վաղարշապատու եկեղեցւոյն մէջ եղած տեսիլքը պատմեց անոնց ու մեկնութիւնը տուաւ. իմացընելով թէ ինչպէս իրենք իրենց ձեռքովը, բայց միշտ աստուածային թոյլտուութեամբ, կորսընցուցին իրենց իշխանութիւնը և կործանումը փութացուցին։ Անկէ քիչ ետքը հանդիպեցաւ Սահակայ ու Մեսրովպայ մահը, որով աւելի կերպով

մը համարձակութիւն առին անմիաբանութիւնք և թուլահաւատութիւն. Նախարարք իրարու հետ սկսան իյնալ, ու մէկմէկու ձեռքէ իշխանութիւնը յափշտակելու համար զիրար Պարսից դուռը ամբաստանել։ Ասոնց մէջ գլխաւոր եղաւ Վարազվաղան, որ իր փեսային՝ Վասակայ՝ մեծնալը ու իշխանութեան հասնիլը տեսնելով գնաց ուրացաւ հաւատքը, ու սկսաւ իր փեսային վրայ ամբաստանութիւններ ընել. կը ջանար անոր տեղն անցնիլ, խոստանալով որ եթէ այս մեծութիւնը իրեն տրուի, ինքն ալ երախտապարտ ըլլայ Պարսից, ու բոլոր Հայաստանը անոնց կրօնից աշակերտէ։

Այս խոստումը՝ մեծ ուրախութիւն ազդեց Միհրներսեհի, որ Յազկերտի առաջին հրամանատարն էր. սկսաւ յորդորել զթագաւորն որ փոխանակ զէնքերով իրեն իշխանութեան սահմանը ընդարձակելու, կրօնից ասպարէզը լայնցընէ. Թագաւորին կողմանէ ու անոր հրամանաւ թուղթ մը գրեց Հայոց՝ որ ետ կենան իրենց կրօնքէն, ու ընդունին այն հաւատքը զոր Պարսից թագաւորը կը դաւանի։ Երբոր Հայք յանձն չառին, ու անոր թղթոյն անհանճար խօսքերը՝ իմաստութեամբ ըմբերանեցին, իրեն քով կանչեց թագաւորը անոնց գլխաւոր նախարարներն ու բանտերու մթութեան դատապարտեց, որպէս զի ստիպուին մտիկ ընելու իր հրամանին։ Երբ անոնցմէ ոմանք առ երեսս, և այլք սրտի մտօք ընդունեցան Պարսից կրօնքը, մեծապատիւ փառօք ղրկեց զանոնք 'ի Հայաստան։

Հոս կ'աւանդէ Ղազար Վարդանանց հրաշալի պատմութիւնն ու յաղթանակը. անոնց միաբան նահատակութիւնն ու մահը՝ զոր արդէն իրմէ առաջ ստորագրած էր Եղիշէ։ Անկէց Ղևոնդեանց պատմութեանը կ'անցնի, գրեթէ Եղիշէի կերպովը, բայց աւելի համառօտ ոճով։ Եղիշէ իր պատմութիւնը ինչուան Յազկերտի մահը ու նախարարաց դարձը կը հասցընէ. իսկ Ղազար անկէ ալ անդին կ'անցնի, սկսելով Գիւտ կաթուղիկոսին օրերէն։ Կը

պատմէ թէ ինչպէս անոր թշնամիքը Պարսից դուռը ամբաստանեցին զինքը, ու ինքն ալ հոն երթալով արդարացաւ. բայց Թագաւորը չուզեց միւսանգամ հայրապետական աթոռոյ վրայ նստեցընել զինքը, այլ ամենայն պատիւ տալով սահմանեց որ ուզած տեղը նստի։ Գիւտ ալ՝ երկար ատեն Պարսից դուռը կենալէն ետքը՝ ետ դարձաւ։

Նոյն ժամանակները Մամիկոնեանն Վահան կը պայծառանար։ Գադիշոյ Մալխազը և իրեն հետ քանի մը ուրացող նախարարք նախանձեցան վրան, ու ուզելով զինքն իշխանութենէ ձգել, ամբաստանեցին թէ ապըստամբ է, և թէ անոր ձեռացը տակ ամենեւին ապահով չի կրնար ըլլալ Պարսկաստան՝ իր Հայաստան աշխարհին աւարին վրայ։

Ինքզինքը արդարացընելու համար ելաւ Պարսկաստան գնաց Վահան, ու տեսնելով թէ անոնց նախանձը ամենեւին պիտի չըլլայ, և իրեն ալ անկարելի պիտի ըլլայ խաղաղութիւն գտնել, հաւատքին մէջ տկարացաւ։ Անանկով մեծապատիւ դարձաւ 'ի Հայաստան. հոն իւր ուրացութեան վրայ զղջալով, հետը միաբանեց հաւատացեալ նախարարքը, ու Պարսից դէմ պատերազմի սկըսաւ. ու զանազան անգամ անոնց զէնքերը փշրելէն և ոյժը խորտակելէն ետքը՝ հետերնին հաշտութեան դաշինք դրաւ։ Հայաստանն ազատեց, անոր կրօնքն ու ինչքը ապահովցուց, և ինքը մեծ փառքով պատուեցաւ. ուստի և իրաւամբք Մամիկոնէից տէր և Հայոց սպարապետ ու մարզպան ընտրուեցաւ։

Այս հրաշալի ու անակնկալ փոփոխութեան վրայ զարմացան Հայք, ու իրենց արժանաւոր հայրապետն Յովհան Մանդակունի՝ ատեանը ելլելով ու խաղաղութեան ողջոյնը տալով՝ աւետեց իր հաւատացելոցը այս զարմանալի ազատութիւնն, ու յորդորեց զիրենք որ փառք տան Աստուծոյ։

Այն գեղեցիկ ու պերճախօս ատենաբանութեամբը կը կնքէ Փարպեցին իր պատմութեան գիրքը։

* * *

*Փարպեցւոյն պատմութեան գրոց աղբերք․* — Փարպեցի իր պատմութեան գրոց սկիզբը՝ իրմէ առաջ միայն երկու ազգային պատմիչք կը յիշատակէ, ըսինք, զԱգաթանգեղոս և զԲիւզանդ․ տեղ տեղ ալ Կորեան անունը․ և երրորդ ինքզինքը և իր գիրքը կը կոչէ․ որով բանասէրք և քննադատք ենթադրեցին և գրեցին թէ իր ժամանակին երկու գլխաւոր անձնաւորութեանց, Եղիշէի և Խորենացւոյ գրքերը անծանօթ եղած ըլլան իրեն, կամ ո՛ և իցէ պատճառաւ՝ Ղազարայ ձեռքն անցած չեն իրենց երկասիրութիւնք։ Նոր հետազօտութիւնք և բանասիրաց բաղդատական քննադատութիւնք (և առանձինն Գր․ Խալաթեան), այս կարծեաց չեն համաձայնիր․ մանաւանդ թէ հակառակ կարծեաց պաշտպանք, օրինակներով ալ կը ցուցընեն թէ Փարպեցւոյն ոչ լոկ Ագաթանգեղոս, Բիւզանդ և Կորիւն ծանօթք էին, այլ նաև Խորենացի և Եղիշէ․ և թէ ինչպէս առաջնոց՝ բայց մանաւանդ վերջնոցս պատմական գրուածներէն մեծապէս օգտուած է իր պատմական շարագրութեանը մէջ։ Ուստի և երկուքի կը բաժնեն իրեն աղբերքն․ նախ յանուանէ յիշատակեալքն 'ի նմանէ, և երկրորդ՝ կարևորագոյնքն քան զնոսա, և մեզի անծանօթ պատճառաւ մը յանուանէ իրմէ չի յիշատակուածքն։

Ագաթանգեղոսէն առած է՝ Լուսաւորչի տեսլեան պատմութեան պարագաներն, որոնք կը նոյնանան իմաստիւք և բառիւք ընդ տեսլեան սրբոյն Սահակայ, զոր կը պատմէ Փարպեցի։ Իրմէն առնուած է դարձեալ երկար հատուած մը բանի՝ 'ի տեսլենէ Լուսաւորչին, զոր Փարպեցի կը յարմարցընէ Վարդանայ պատերազմին՝ ուխտապահ և ուխտազանց նախարարքն իրարու հետ բաղդատելով։ Ի Բիւզանդայ եկամուտ է իր գրոց մէջ սրբոյն Ներսեսի անէծքն առ Արշակ թագաւոր, և գուշակօրէն

տեսութիւնը Հայոց արքայական իշխանութեան բարձմանը 'ի ցեղէ Արշակունեաց։ Իսկ 'ի կենսագրական աշխատութենէ Կորեան քաղուած կ'երեւնան Մեսրովպայ վարուց, Նշանագրաց գիւտին եւ սրբոյն Սահակայ մահուան վրայ գրածները, եթէ՝ ինչպէս մեզի հաւանական կ'երեւնայ, 'ի դիւանական գրութեանց առնուած չեն։

Բայց ասոնցմէ աւելի կարեւորագոյն աղբերք եղած են, — ըստ իրեն Նոր քննադատից, — Խորենացի եւ Եղիշէ։ Ի գրոց առաջնոյն քաղած է Բիւզանդայ պատմութեան դադրելէն մինչեւ ցվախճանել Սահակայ եւ Մեսրովպայ՝ վաթսունուերկու տարիներու անցից եւ դիպուածոց պատմութիւնն։ Իսկ Եղիշէ միակ աղբիւր է Փարպեցւոյն՝ Վարդանայ պատերազմին պատմութեան համար։ Մերթ, — նաեւ գլխաւոր պարագայից մէջ, — կը տարբերի իրմէ, թերեւս ոչ առանց մասնաւոր դիտման. բայց Եղիշէ՝ մերձաւորագոյն ժամանակաւ, ականատես եւ կենակից՝ իրմէ պատմուած անցից եւ անձանց, միշտ մեծագոյն հաւատարմութեան արժանի կը սեպուի իրաւամբ։ Այս նմանութեանց գլխաւորներն կ'ամփոփենք 'ի ծանօթութեան [1]։

Գալով Փարպեցւոյն մատենագրական արժէքին՝ 'ի հնոց իրեն ընծայուած ձարտասան մակդիրին ոչ անարժան կը տեսնենք զնա՝ թէ 'ի պատմութեան, եւ թէ մանաւանդ առ Մամիկոնեանն Վահան ուղղած թղթոյն մէջ. կորովի

1. Ի Խորենացւոյ առնուած են հետեւեալ հատուածք. (էջքն նշանակուած են ըստ Վենետկեան նորագոյն տպագր.)։ Խոր. Գ. 55. — Փարպ. էջ 51։ — Խոր. Գ. 55։ — Փարպ. 51։ — Խոր. Գ. 63։ — Փարպ. 58, 60։ — Խոր. անդ։ Փարպ. 61։ — Խոր. Գ. 63։ — Փարպ. 62։ Նմանութիւնք ընդ Եղիշէի. (ըստ տպ. Վենետ. 1849). Եղիշէ, էջ 9։ — Փարպ. 121։ — Եղիշէ 22։ — Փարպ. 124։ — Եղիշէ 32։ Փարպ. 134։ — Եղիշէ 39։ — Փարպ. 154։ — Եղիշէ 49։ — Փարպ. 176։ — Եղիշէ 57։ — Փարպ. 183։ — Եղիշէ 58։ — Փարպ. 183։ — Եղիշէ 59։ — Փարպ. 192։ — Եղիշէ 61։ — — Փարպ. 193։ Ասոնցմէ աւելի զգալի ընդօրինակութիւններ. Եղիշէ 26։ — Փարպ. 291։ — Եղիշէ 139։ — Փարպ. 305։ — Եղիշէ 140։ — Փարպ. 407։ — Եղիշէ 141։ — Փարպ. 313։

ոճ մը, ուժով բացատրութիւնք, գեղեցիկ նկարագրութիւններ, սուր տեսութիւնք, և մանաւանդ գրիչ զոր կը գործածէ յանիրաւի զինք և իր վարքն ու գործերը բամբասողաց և անգոսնողաց դէմ։ Իսկ հայ լեզուն՝ գեղեցիկ վայելչութեամբքն՝ Թարգմանչաց դարուն և դպրոցին արժանաւոր, ունի նաև թերութիւններն՝ կրելով ժամանակին աշխարհիկ խօսից կերպարանքը. թէպէտ և այն իսկ յետագայից համար մեծապէս օգտակար, իր հետաքննական պատմութեանն հետ աւանդելով մասամբ նաև այն դարուց մէջ խօսուած լեզուին հանգամանքը։

Փարպեցւոյն պատմութեան գրոցը մէկ հետաքննական մասն ալ՝ սրբոյն Սահակայ տեսիլքն, և անոր մեկնութիւնն է։ Ղազար իբրև հաւատարիմ դէպք մը կ՚աւանդէ զայն. սակայն նոյն իսկ հինք՝ չժխտելով տեսլեան ստուգութիւնը՝ անոր մանրապատում նկարագիրն ու մեկնութիւնը վաւերական չեն համարիր, ուրիշ ժամանակակից պատմչաց մէկուն քով չտեսնելով անոր յիշատակը. որով և կը կարծուի թէ Փարպեցւոյն գրոց մէջ յետոյ աւելցուցած են այլք՝ իրմէ ետքը եկող դարուց մէջ։ Էջմիածնի Մատենադարանին դրչագրաց մէջ (Թիւ 920) այս տեսլեան խորագիրը նշանակելով՝ բանասիրաց քննութեանը կը յանձնենք. «Յառաջաբան տեսլեան սրբոյն Սահակայ Պարթևի, զոր եցոյց նմա Բարձրեալն անբաւ մարդասիրութեամբ իւրով». և սկզբնաւորութիւնն է. «Եւ յետ մահուան Յազկերտի որդւոյ Շապհոյ թագաւորին Պարսից՝ թագաւորեաց Վռամ որդի նորա ՚ի վերայ աշխարհին Արեաց»։ — «Ի յիշատակի սրբոյն Սահակայ Հայոց հայրապետի ՚ի քերթողական գրոց, յաղագս վարուց և կենաց նորա. և վասն տեսլեան զոր ակամայ պատմեաց նախարարաց Հայոց։ — «Յայնժամ ժողովեալ ՚ի միասին ամենայն նախարարացն Հայոց՝ չոգան առ մեծն Սահակ»։ — «Տեսիլ մարգարէութեան սրբոյն Սահակայ Պարթևի հայրապետի Հայոց, զոր ետես յԱյրարատ գաւառի ՚ի Վաղարշապատ քաղաքի, յորժամ

*նստէր նա 'ի ժամ պաշտաման 'ի կաթուղիկէ սուրբ եկեղեցւոյ՝ 'ի վերայ բեմին, մերձ առ սեղանն Աստուծոյ։ — Մեկնութիւն սրբոյն Սահակայ տեսլեան »։*

*Յովսէփ. « Քրիստոսասիրի Վարազդայ Գաբեղենից տեառն, աղաչեալ զՅովսէփ ճշմարտախօսհ և երկիւղած ի տեառնէ, զստուգել զպատմութիւն երանելեացն Թաթլոյ և Գիւտի և Թովմասու և վարուց ճգնաւորաց Քրիստոսի »։ Սկզբնաւորութիւնն է. « Ընգալա զՔրիստոս հարկեցուցանող խնդիրդ մասնաւորաբար խնդութեամբ ի Քրիստոս և երկիւղիւ ». (Մատենադարան Երուսաղեմի, թիւ* 278)։

Փարպեցւոյն Պատմութեան գրոց բնագրեր առաջին տպագրութիւնն եղած է 'ի Ս. Ղազար Վենետիկոյ յամի 1793. երկրորդ և նորագոյն հրատարակութիւն մ'ալ գործեալ նոյն տպարանէն հանդերձ Թղթովն առ Վահան Մամիկոնեան 'ի 1873։ Այս Թղթոյն առաջին տպագրութիւնն եղած է 'ի Մոսկուա 'ի 1853, 'ի ձեռն Լազարեան արևելեան լեզուաց Ճեմարանի Տեսչին. Մկրտչի Էմին. աշխարհիկ լեզուով թարգմանութիւն մը և բացատրութիւնք 'ի Մ. Նալբանդեանց, և հրատարակուած 'ի Փեթերբուրգ (1868)։ Պատմութեան 'ի գաղղիական լեզու թարգմանութիւն մը 'ի Հաւաքման Լանկլուայի. Lazare de Pharbe ; Histoire de l'Arménie, traduite pour la première fois en français et accom;agnée des notes historiques et critiques, par le P. Samuël D.r Ghésarian (Cantar), membre de l'Académie nationale arménienne de St. Lazare de Venise. Մասնական թարգմանութիւն մ'ալ. Abrégé de la vie politique et guerrière du prince Vahan-le-Mamigonien, par Lazare de Pharbe. Traduit par le P. Garabed Kabaragy. Paris, 1843:

---

# ԴԱՐ Զ

---

*Դպրութեանց անկումն վեցերորդ դարուս մէջ ։ — Քաղաքական յուզմունք և կրօնական խնդիրք և խտրութիւնք պատճառ անկման ։*

Հայկական դպրութիւնք մէկէնիմէկ մեծ ու զարմանալի յեղափոխութիւն մը կը կրեն վեցերորդ դարուս մէջ. և զարմանք չէ. որովհետև աշխարհին քաղաքական դիրքն ալ բոլորովին փոխուած էր ։ Վարդանանց և Վահանեանց ջանքը՝ ուրիշ արդիւնք մը չէր ունեցած՝ բայց եթէ արգելուլ զՍասանեանս որ չկարենան իրենց մտքի դրած կերպով տիրել Հայոց վրայ ։

Նոյն ժամանակները պատահած կրօնական դէպք մըն ալ՝ թէ՛ ժամանակին և թէ անոնցմէ ետքը եղող մեր մատենագրաց սրտին ու մտքին վրայ մեծ ազդեցութիւն ըրաւ. — Քաղկեդոնի ժողովոյն գումարումը ։ Ազգային եկեղեցական պատմութեան թողլով՝ այս նկատմամբ ազգին մէջ պատահած դէպքերը, միայն յիշեցընենք թէ այն ժողովքին պատճառաւ՝ արտաքին պատերազմներէ զատ՝ ներքին գժտութիւնք և հակառակութիւնք ալ սկըսան մտնել մեր ազգին մէջ ։ Անով թշնամական ատելութիւն մը մտաւ Հայոց մէջ Յունաց ազգին հետ, ու անոնց կրօնքէն խորշելնուն պատճառաւ, երթեւեկք և մը-

տեղական յարաբերութիւնք պակսեցան, որով սկսան դըպրութիւնքն ու գրքերն ալ արհամարհուիլ։ Ա՛լ խափանուեցաւ յունական լեզուին ուսումը, ու անոնց օգտակար կամ դասական գրոց թարգմանութիւնք։ Քանի մը սկզբնագիր գրիչք ալ՝ որ վեցերորդ դարուս մէջ երեւցան, աննշան երկասիրութիւններ թողուցին. սոսկ հայ մատենագրութեան ամփոփ հորիզոնին մէջ սնած ու մեծցած հանճարներն, անոնցմէ աւելի նշանակութեան արժանի արտադրութիւններ դժուարաւ կրնային թողուլ։

# ԱԲՐԱՀԱՄ ԵՊ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

---

*Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոս։ — Խրատական գըրուածք իր անուամբը։ — Պատմութիւն ժողովոյն Եփեսոսի։ — Փիլաքսիանոս Նաբովկայ եպիսկոպոս։*

Հինգերորդ դարուն վերջերը ու վեցերորդին սկիզբները կ'իյնայ Մամիկոնէից եպիսկոպոսը Աբրահամ, որ Աղուանից Վաչագան թագաւորին խնդրանօքը՝ քանի մը խրատական գրուածներ յօրինեց. մանաւորաբար՝ սրբոց նշխարքը պատուելու և ննջեցելոց հոգւոց հանգստեանն համար աղօթք ընելու վրայ։ Այնչափ համառօտ գրուած մըն է ասիկայ՝ որ մանաւոր քննութեան իջնալուն չարժեր։

Աբրահամու անուամբը ուրիշ երկասիրութիւն մըն ալ կայ. Քրիստոսի 431 թուականին յԵփեսոս գումարուած տիեզերական սուրբ ժողովքին պատմութիւնը ընտիր ոճով և կարգաւորանութեամբ գրուած. և որովհետև ձեռագրաց մէջ գտնուած օրինակներու վրայ Վաչագանայ ա-

նունը կը յիշուէր, ուստի և կը կարծուէր հաւանականաբար թէ այս գրուածքն ալ նոյն թագաւորին ընծայած ըլլայ. բայց ետքի տարիներս ուրիշ գրչագիր մըն ալ երևնալով՝ իմացուեցաւ թէ նոյն պատմութեան հեղինակն է Փիլաքսիանոս անունով մէկը՝ որ Նաբովկ քաղաքին եպիսկոպոսն էր, և Կոմիտասայ Հայոց կաթուղիկոսին խնդրանօքը շարագրեց այս գրուածքը, ինչպէս յայտնի կ'երևնայ այն ընդարձակ յառաջաբանէն՝ որ Աբրահամու անուամբը յիշուած ձեռագրաց մէջ կը պակսի։ Հաւանականաբար Աբրահամ եպիսկոպոս մը եղած է նոյն պատմութեան թարգմանիչ։

## ՊԵՏՐՈՍ ԵՊ. ՍԻՒՆԵԱՑ

---

*Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց և իր ժամանակը։ — Ճառեր՝ որ իր անուամբ հասած են առ մեզ։ — Պատմական գրուածք մը։ — Քանի մը հատուածք այդ երկասիրութենէն առ Ստ. Օրբելեան։ — Համբաւն ու 'ի պատմչաց գովութիւնք իրեն և գրուածոցը։*

Նշանաւոր անուն մը, մեր պատմագրաց շատերէն յիշուած և Սիւնեաց անուանի վարդապետանոցին մէջ կրթուած անձինքներուն գլխաւորներէն մէկն։ Որչափ ալ քիչ ըլլան իր համբաւոյն արժանաւոր երկասիրութիւնք, այս պակասութիւնս՝ անշուշտ աւելի ժամանակին տալու է, որ ուրիշ այնչափ հռչակաւոր իմաստնոց երկասիրութիւնը մեզմէ ծածկած է. ապա թէ ոչ, անտարակոյս առանց պատճառի չէր այն համարում, և ոչ թէ միայն մեր ձեռքը հասած գրուածքներուն համար։

Մեր պատմիչներէն ոմանք, ինչպէս Առողիկ և Ստեփանոս Ուռպելեան՝ սրբոյն Մովսիսի Խորենացւոյ աշակերտ կը համարին զՊետրոս. բայց այս ենթադրութեանս մէջ՝ ժամանակագրական սխալ կայ, և հաւանական կ'երևնայ ըսելը թէ Խորենացւոյ աշակերտի մը աշակերտ եղած ըլլայ Պետրոս:

Պետրոսի անուամբ մեզի հասած երկասիրութիւններն են.

Սուրբ Աստուածածնայ վրայ գովեստից ներբողեան մը, «Բազմօրհնեալդ քրիստոսասէր ժողովրդոց». որ թէպէտ համառօտ գրուած մըն է, բայց նոյն իսկ համառօտութեան մէջ հոգեւէր եռանդ մը ու վարժ գրիչ կ'երեւցընէ [1]:

Քրիստոսի ծննդեան վրայ ճառ մը, որուն միայն մէկ հատուածը ձեռուընիս հասած է. «Ծնանի Էմմանուէլ՝ Աստուած մարդացեալ»:

Վաչագան արքային խնդրանօքը՝ անոր այլ և այլ հարցմանց պատասխանիք, այսպիսի մակագրութեամբ. «Պատասխանիք առ հարցմունս Վաչագանայ իշխանի». ընդհանրապէս Մարդեղութեան սուրբ խորհրդոյն վրայ: Բայց ինչպէս ասոր նման ուրիշ երկասիրութեանց, ասանկ ալ ասոր մէջ, — եթէ յիրաւի Պետրոսի երկասիրութիւնը սեպենք, — օտարի ձեռք խառնուած կ'երեւնայ, որոնք իրեն լուսաւորեալ մտաց հարազատ ծնունդքը չեն կրնար ըլլալ, որ թէ՛ գրութեան կերպէն և թէ ոճէն կը յայտնուի:

1. «Երանելւոյն Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի ասացեալ գովեստ յամենասուրբ Աստուածածին կոյսն Մարիամ և 'ի հոգեփոխման տօնական նորա»: (Մատենադարան Էջմիածնի, թիւ դրչագրաց 913): Նոյն Մատենադարանին ուրիշ դրչագրի մը մէջ (թիւ 917) վերջին տողին տեղ. «ըստ յորջորջման նորին և 'ի սուրբ գրոց լուծմունք նորին հոգևոր խմաստից». Դարձեալ նոյնաթիւ դրչագրին մէջ նշանակուած կը գտնենք՝ Պետրոսի Սիւնեաց ընծայեալ ճառ մը Ցողոփե-հասարդոյ:



Այս գրուածներէն զատ կը յիշատակուի Նախնեաց մէջ իր անուամբը՝ Պատմական գրուածք մ'ալ. վասն զի Ուռպելեանը՝ սորոյն Մեսրովպայ Աղուանից գրերը հնարելը, և Անանիա Սիւնեաց եպիսկոպոսէն պատուիլը նշանակելէն ետքը՝ կը յաւելու. «Ահա ցուցանէ մեզ զայս սուղ ինչ՝ Մովսէս քերթողահայրն. և գրովանդակն ճըշգրիտ՝ աշակերտ Նորա Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց»։ Ուռպելեանին խօսքին հաւատարմութեանը նշան կրնայ սեպուիլ՝ Մովսիսի Կաղանկատուացւոյն գրոցը մէջ գըտնուած Բաբկայ Սիւնւոյ՝ Հոնանգուր Հոնին դէմ տուած մենամարտութեան պատմութիւնը, որ թէպէտ համառօտ գրուածք մըն է, բայց ընտիր գրչի մը ամէն կատարելութիւնքը կը տեսնուին վրան։

Նոյն Ուռպելեան պատմիչը կը յիշատակէ թէ մասնաւոր գովեստ ալ շարագրած ըլլայ Պետրոս՝ սոյն Բաբկայ, որ Վասակայ ուրացողին հայրն էր. «Յերանելւոյն, կ'ըսէ, Պետրոսէ՝ Սիւնեաց եպիսկոպոսէ 'ի ներբողմանէն առաք, զոր արար 'ի վերայ Բաբիկ, զոր և Պարսիկք՝ յիւրեանց լեզուն լաւ կոչէին»։ Մեր վերը յիշատակած հատուածը՝ արդեօք այս ներբողեանէն առնուած է, թէ իր անուամբը յիշատակուած պատմութեան մասն սեպուած որոշ չենք կրնար գրուցել։

Ուռպելեանը՝ Պետրոսի Սիւնեցւոյն պատմական գրուածքէն՝ հետեւեալ ամբողջ հատուածները կը գաղափարէ։

ԳԼ. Թ. Վասն Անդոկայ Սիւնեաց իշխանի թէ զի՛նչ գործ գործեաց. և թէ որպիսի՛ անցք անցին ընդ աշխարհն Սիսական՝ 'ի Շապհոյ Պարսից արքայէ, և երթն նորա առ կայսրն Յունաց առ մեծն Թէոդոս և անդ վախճանիլն. յառաջուածոց սորոյն Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի։

Ժ. Վասն գալոյ Բաբկայ 'ի Հոռոմոց առ Շապուհ, և քաջութեանն զոր եցոյց. և վերառին տիրելոյն սեպհական հայրենեաց իւրոց աշ-

խարհիս Սիւնեաց և շինութեան նորա, և նախադասն պատուելոյն ընդ Բագրատունիս. 'ի նոյն աւուրսն տեառն Պետրոսի։

ԺԱ. Յայտնութիւն եկեղեցւոյն Շաղաթայ. և գիւտ այնչափ սրբոցն որ 'ի նմա։

ԺԲ. Դարձեալ 'ի նոյն աւուրս տեառն Պետրոսի. յետ բազում ժամանակաց գրոյցք վասն գիւտի նշխարաց սրբոց որ 'ի Շաղաթայ եկեղեցին. և որ յաւուրս Յովակիմայ եպիսկոպոսի վիճմունք, և սուրբ նախադասութեան տանուտերաց և գիւղից Սիւնեաց. և թէ ո՛ րք նախարարին և գահագլուխ սահմանեցաւ։

Ուսպէլեանին գովեստից խօսքերը իրաւամբ մեծ ցաւ զգալ կու տան այսպիսի անձի մը գրաւոր երկասիրութեանց կորուստին։ Մենք՝ հաւատարմութեան երաշխաւորութիւնը բոլորովին իր գովաբանին վրայ ձգելով, միայն անոր վրայ ըսուած խօսքերը մէջ բերենք. «Եւ ապա եղև, կ'ըսէ, (Սիւնեաց իններորդ եպիսկոպոս), բազմերջանիկն և անհամեմատն 'ի մարդկանէ Պետրոս՝ աշակերտ Մովսէսի քերթողահօրն, քաջ հռետորն և անյաղթ փիլիսոփոսն, լի իմաստութեամբ և կատարեալ առաքինութեամբ. նախաթոռ վարդապետաց Հայոց, քերթող և թարգմանիչ, որ արար բազում թարգմանութիւնս, և արար ճառս իմաստալիցս 'ի ծնունդն Քրիստոսի, և այլ յոլովս, և մեկնեաց զերթին և զդիւրիմաց բանս հին և Նոր կտակարանաց։ Սա գնաց ընդ այլոց վարդապետաց Հայոց՝ Մամբրէի, Եզնըկայ, Կորեան, Դաւթի՝ 'ի թագաւորական քաղաքն Կոստանդնուպոլսի... և կեցեալ յաթոռն առս տասն՝ մեռանի»։ Եզնըկայ և Կորեան ընկերակից ըլլալ՝ անկարելի է այս Պետրոսի։

Պետրոս Քերթողին ուրիշ մէկ գլխաւոր արդիւնքն ալ՝ Հայոց տումարը նորոգելն է. վասն զի երբոր Մովսէս կաթուղիկոս Եղիվարդեցի՝ Հայոց տումարը նորոգելու համար՝ ազգին ամէն գլխաւոր քաղաքաց իմաստունները հաւաքեց 'ի Դուին՝ ժողովք ընելու համար, նոյն ժողովքին գլխաւորներէն մէկն էր, ինչպէս Վարդան կը յիշատակէ, Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսը, Ներշապուհ Տա-

րոնացին և Աբդիշոյ Սաանեցի։ Բայց Ասողիկ նոյն պատմութիւնը ուրիշ կերպով աւանդելով՝ կը գրուցէ թէ Ներսէս Աշտարակեցի կաթուղիկոսին օրովը գումարած ժողովոյն մէջ՝ Հայոց տումարին վրայ խօսք ըլլալով, Հայոց թուականը հաստատեցին Պետրոս քերթողը և Ներշապուհ Տարօնացին։ Այսպէս կ'աւանդէն յերուսաղեմեան մատենադարանի պահուած գրչագրի մը (թիւ 1422) պատմական կամ ժամանակագրական յիշատակարանի մը հետեւեալ խօսքերը. «Մովսէս կաթողիկոս ի դիրն թուականի, իսկ այլք ասեն Ներսէս և Պետրոս եպիսկոպոս քերթող ի Սիւնեաց և Ներշապուհ ի Տարօնոյ. սոքա էին ի ժողովն որ զթուականն եդին»։ Քիչ մ'ալ յետոյ 'ի ծԻ թուին Անաստաս կաթողիկոս... խորհեալ Հայաստանեայցս կարգել տումար անշարժ ըստ այլոց ազգաց, և հրամայէ Անանիայ Շիրակացւոյ կարգել զքննիկոնն հրաշազան. յորում զտումարս մեր կարգեաց անշարժ. և Անաստաս խորհեալ ժողովօք և եպիսկոպոսօք հաստատել զքննիկոնն, և վախճանի, կացեալ յաթոռն ամս վեց»։ Սակայն ընդհանրապէս մեր ամէն պատմիչք այս նորոգութեան պարծանքը Մովսէս կաթուղիկոսին կու տան։

---

# ՄՈՎՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԵՂԻՎԱՐԴԵՑԻ

---

*Մովսէս Եղիվարդեցի։ — Հայոց մէջ գործածուած երկու թուականներ։ — Եղիվարդեցւոյն ձեռքով ու չափիւք եղած նորոգութիւն։ — Հայոց թուական և անոր սկզբնաւորութիւնը։*

Մովսէս՝ Արագածոտն գաւառին Եղիվարդ գեղէն էր, և կաթուղիկոսութեան աթոռը նստաւ Քրիստոսի 551 թուականին, և իրեն գլխաւոր գործն կը համարուի Հայոց տումարին նորոգութիւն կամ հաստատութիւնն։ Հաւանական կ'երևնայ թէ Հայք 'ի սկզբանէ իրենց տումարը ունեցած ըլլան. կամ իրենց գործածած գլխաւոր տումարը՝ Նաբոնասարայ թուականը եղած ըլլայ. վասն զի այն ատեն հաստատուեցաւ այս թուականը՝ երբ Վարբակէս Մար և Բեղեսիս–Նաբոնասար՝ Պարոյրի հետ միաբանելով՝ Ասորեստանեայց թագաւորութիւնը վերուցին, և իրենք թագաւորութեան պսակ ընդունելով՝ սահմանեցին անկէ ետքը նոյն թուականը գործածել. (Քրիստոսէ 743 տարի առաջ)։

Արեգակնային էր այն ժամանակը Հայոց տարին, իրենց մերձաւոր ազգաց՝ Բաբելացւոց, Պարսից, Մարաց և Եգիպտացւոց նմանութեամբ։ Բայց որովհետև Յուլեան տոմարին ճշդութիւնը չունէր, հարկ կ'ըլլար որ ամէն անգամ տարւոյն օրերը փոխոխութիւն կրեն։ Տասուերկու ամիս բաժնուած էր տարին, ամէն մէկ ամիս երեսուն օրով. և հինգ օր ալ Աւելեաց, որ է ըսել 365 օր, և հասարակ տարի։ Սակայն Յունաց և Հռովմայեցւոց տա–

րիները չորս տարին հեղ մը նահանջ ունենալով, համեմատութեամբ չորս տարին մէյմը Հայոց տարւոյն մէկ օրը կը պակսէր, և ուրիշ ազգաց տոմարէն առաջ երթալով՝ հարկաւ շփոթութիւն կը ծագէր։

Այս թուականէն զատ՝ մեր ազգին մէջ գործածական էր նաև Հայոց լուսաւորչեան թուականը, որ երբեմն գրչագրաց մէջ ալ կը գործածուի նոյն անուամբ։ — Սուրբ Լուսաւորչէն քիչ ետքը՝ սկսեր էին Հայք գործածել նաև Անդրէաս Բիւզանդացւոյն հինգհարիւրեկի շրջանը, որ 532 տարուան մէջ կը լրանար։ Այս շրջանին լմըննալէն ետքը՝ որովհետև շփոթութիւն ծագեցաւ, մանաւանդ Զատկի տօնը կատարելու համար, այն ատեն Մովսէս կաթուղիկոս՝ ազգին մէջ իմաստութեամբ և տումարական հմտութեամբ նշանաւոր եղած անձինքը քովը ժողվեց, և անոնց խորհրդովը և առաջնորդելով Հայոց թուականը հաստատեց, որ ինչուան հիմայ կը գործածուի։

Ոմանք կարծած են՝ թէ Մովսէս կաթուղիկոս ուզելով իր ազգը Յունաց հաղորդակցութենէն բոլորովին զատել, կրօնական խտրութեանց պատճառաւ հաստատած ըլլայ այս թուականը. բայց ասիկայ ձրի ենթադրութիւն մըն է, և մեր ազգային պատմչաց շատին խօսքերուն հակառակ կ՚ելլայ, որոնք կաթուղիկոսին ձեռքովը եղած այս նորոգութեան մէջ ուրիշ բան չեն նկատեր՝ բայց միայն ուսումնական հետազօտութեան պարտք մը և արգասիք։

Մասնաւոր գրաւորական երկասիրութեանց յիշատակութիւն չկայ Մովսիսի վրայ։ Միայն իրեն յաջորդը Աբրահամ կաթուղիկոս՝ առ Կիւրիոն Վրաց հայրապետ գրած թղթերուն մէջ կը յիշատակէ թէ մասնաւոր թուղթ մը գրած ըլլայ առ նոյն ինքն Կիւրիոն, զգուշացնելով զինքը որ չըլլայ թէ Նեստորականաց հետ հաղորդակցութիւն ընէ։ « Յառաջագոյն, կ՚ըսէ, երանելի հայրապետն մեր Մովսէս՝ գրեաց առ ձեզ մեղադրութիւն, յաղագս հաղորդելոյն ձեր ընդ այնոսիկ՝ ընդ որս չէր պարտ »։ Նոյնը կը հաւատարմացընէ նաև Վրթանէս քերթող՝ առ

համեմատ՝ ստոյգ տեղեկութիւն առած նոյն ժողովոց սահմանադրութեանցը վրայ. բայց այս չորրորդ ժողովոյն ժամանակ՝ որովհետեւ Հայաստան պատերազմաց եւ աւարառութեանց պատճառաւ ոտնակոխ եղած եւ նեղութեան մէջ էր, չկրցաւ իրեն կողմանէ մարդ ղրկել, եւ եղածին վրայ ճիշդ տեղեկութիւն մը ունենալ. այն պատճառաւ նոյն ժողովոյն թշնամիքն առիթ եւ համարձակութիւն ունեցան՝ իրենց հարցը հաւատոցը վրայ հաստատուն կեցող Հայաստանի բնակիչքը ջանալ օտարացընել նոյն ժողովքէն՝ մոլար վարդապետութեանց սահմանագիր քարոզելով։ Բայց որովհետեւ անոր ջատագովքն ալ պակաս չէին, Հայաստանն ալ ստիպուեցաւ՝ այս պատճառաւ գումարած ժողովքներուն մէջ՝ երբեմն ընդունել զայն իբրեւ ուղղափառական, եւ երբեմն ալ մերժել իբրեւ մոլորամիտ։

* * *

Այս ժամանակներս՝ Վրաստանի կաթուղիկոսական աթոռը կը նստէր Կիւրիոն արքեպիսկոպոս, որ Մովսէսի Եղիվարդեցւոյն աշակերտն էր, յոյն, հայ, պարսիկ եւ վրացի լեզուաց հմուտ։ Ճանչցաւ Կիւրիոն նոյն ժողովքին ուղղափառական սահմանադրութիւնները, եւ մտադիւրութեամբ ընդունեցաւ. ու փափաքելով որ ուրիշներն ալ իրեն հետեւող երեւնան, Կոստանդնուպոլսէն բերել տուաւ նոյն ժողովքին վաւերական պատմութիւնը, ու Ս. Լեւոնի Հռովմայ հայրապետին տումարը. անոնց ընթերցմամբը ճանչցաւ բոլոր վրացի ազգը նոյն ժողովքին ուղղութիւնը եւ ընդունեցաւ։

Իր այս գործոյն հակառակող երեւցաւ Ցուրտաւ քաղաքին Մովսէս եպիսկոպոսը. ու այլ եւ այլ ամբաստանութիւններ ըրաւ վրան առ զանազանս, եւ մանաւորաբար առ Աբրահամ կաթուղիկոս Հայոց։ Կաթուղիկոսն ալ մեղադրանաց թղթեր գրեց առ Կիւրիոն։

Ինքզինքը եւ իր գործը ջատագովելու համար նամակ-

նեբ գրեց Կիւրիոն, ու 'ի կաթուղիկոսէն և 'ի զանազանից անոնց պատասխաններն ընդունեցաւ։ Այս բոլոր թղթերը որ երեսնի չափ են՝ հաւաքած և պատմութեամբ աւանդած է Ուխտանէս պատմիչ տասներորդ դարու մէջ, որ վերջի տարիներս տպագրութեամբ հրատարակուեցաւ Էջմիածնի տպարանէն։

Երեքտասաներորդ դարու գրչագրի մը մէջ թուղթ կամ Նամակ մ'ալ կայ զոր Ներսեսի Բ կաթուղիկոսի Հայոց ուղղեր են Ասորիք՝ նոյն ժամանակներն յուզուած կրօնական խնդրոց վրայ։ Այս Նամակը կը գրեն «Սամուէլ քորեպիսկոպոս և Դանիէլ վանից երեց, և Սիւնական Սարերայի, Գաբրիէլ վանից երեց Ովփեսի, և Եղիա Սիւնական և վանից երեց Սուսինայի, և Շապուհ վանից երեց Գնիսթայի, և Յազդեն վանից երեց Դումայի, և Դանիէլ վանից երեց Բըղնայի և Բղեշխ վանից երեց Սաղիմայի, և Մեղի վանից երեց Յովսամնայ և Դաւիթ վանից երեց Սոքփոնէի, և այլ երիցունք և սարկաւագունք գաւառիս եկեղեցեաց և վանից սպասաւորք, և ամենայն ժողովրդականք ուղղահաւատք 'ի Քրիստոս». և զոր կ'ուղղեն այս մեծարանաց խօսքերով. «Լուսոյ, ճըշմարտից և աստուածասիրաց հովուաց արդարոց և հարանց հոգևորաց, որ էք լոյս աշխարհի և սիւնք հաւատոյ, քարոզիչք արդարութեան և աշակերտք առաքելոց, ընկերք սրբոց և բարեկամք արդարոց, սիրելիք Քրիստոսի և պահապանք խաչին նորա. Տէր Ներսէս կաթուղիկոս Հայոց մեծաց, և Մերշապուհ եպիսկոպոս Տարաւնոյ և Մամիկոնենից, և այլ աթոռակցաց և իշխանաց աշխարհիդ»։

Հաւատոյ խնդրոց համար իրենց 'ի հակառակորդաց կրած նեղութիւնները բացատրելէն՝ ու իրենց ճանչցած և ընդունած ճշմարտութեան վրայ անշարժ մնալու հաստատուն կամքն յայտնելէն ետքը, կը յաւելուն. «Վասն այսորիկ 'ի ձեզ ապաւինեցաք յետ Աստուծոյ, և ընտրեցաք արս 'ի մէնջ և առաքեցաք ձեզ և թուղթս աղա-

չանաց որ ծանուցանեն զսիրտս մեր և զխորհուրդս. և արս զորս առաքեցաք առ ձեզ, անուանք են այսոքիկ. Ահարոն վանից երեց Մարհալայ, Դաւիթ վանաց երեց Խուփայի... Զայդ եղբարս և միապաշտօնս որ տան ձեզ զթուղթս աղաչանաց և մատուցանեն առաջի ձեր կամօք մեր և կամօք սրբոյ Հոգւոյն, զհեզ այրդ Արդիսոյ երեց 'ի վանաց Սարեբայի, մեք խնդրեմք 'ի ձեզնէ ողորմութեամբն Աստուծոյ՝ զի իշխանութիւն զոր ընկալայք 'ի Քրիստոսէ տացէք ձեռնադրութիւն դմա որ ընդրեցաւ. և առաքեցէք զդա մեզ զարդարեալ լուսով Աստուծոյ՝ 'ի ձեռն ճշմարտութեան ձերոյ, և դարձցի առ մեզ վառեալ 'ի ձեռն գրոյ ձերոյ և պինդ հրամանաւ»։

Հայոց կաթուղիկոսն այս Նամակն և թղթաբերքն ընդունելով՝ կու տայ զպատասխանին, քաջալերելով զնոսա 'ի հաստատութիւն. և կատարելով յայտնած փափաքնին՝ իրենց կողմանէ խրկուած անձին եպիսկոպոսական ձեռնադրութիւն տալով։ «Պատասխանի թղթոյն Ասորեաց 'ի Ներսիսէ Հայոց կաթուղիկոսէ և 'ի Մերշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսէ»։ Նամակին սկզբնաւորութիւնն է. «Ի բազում ժամանակաց լուեալ զեղբայրութեանդ ձերոյ ուղղափառութիւն համբաւով, իսկ այժմ ընկալաք գրով առ 'ի ձէնջ աններկբանալի սրբոյ հաւատոյ հաստատութիւն»։

Նոյն ինքն Ներսէս ուրիշ թուղթ մ'ալ գրած է առ եպիսկոպոսունս ոմանս հայկական գաւառաց, որոնց վրայ անշուշտ 'ի Նեստորականաց զգոյշ մնալու և զգուշացընելու հարկաւոր արթնութիւնը չէր տեսած։ Այս Նամակին խորագիրն է «Տեառն Ներսեսի Հայոց կաթուղիկոսի թուղթ մեղադրութեան առ եպիսկոպոսունս». և ուղղած է «Սրբասիրաց և քրիստոսասիրաց աթոռակցաց մերոց Գրիգորի Արծրունեաց եպիսկոպոսի, Սահակայ Ռշտունեաց եպիսկոպոսի, Սողոմոնի Մոկաց եպիսկոպոսի, Ստեփանոսի Անձեւացեաց եպիսկոպոսի, Միքայէլի Զարեհաւանից եպիսկոպոսի, Աստուածատրոյ

Ռժնունեաց եպիսկոպոսի, Թադէոսի Մեհնունեաց եպիսկոպոսի. — Ի Ներսիսէ Հայոց կաթողիկոսէ, 'ի Մերշապհոյ Տարաւնոյ և Մամիկոնեաց եպիսկոպոսէ, 'ի Գրիգորէ Մարդպետական եպիսկոպոսէ, 'ի Պարգևայ Հարքայ եպիսկոպոսէ, 'ի Տիրկանէ Բագրեւանդայ եպիսկոպոսէ, 'ի Գրիգորոյ Բասենոյ եպիսկոպոսէ, 'ի Պետրոսէ Սիւնեաց եպիսկոպոսէ, 'ի Մաշտոցէ Խորխոռունեաց եպիսկոպոսէ, հոգեւոր սիրով ողջոյն »: Կը յիշեցընէ թէ ինչպէս նեստորականք վաճառաշահութեան պատրուակաւ մուտ գըտնելով 'ի Հայաստան, իրենց մոլորական վարդապետութիւնքը սկսան սերմանել ու ծաւալել, ու ազգին կողմանէ թուլութիւն կամ անտարբերութիւն գտնելով, համարձակեցան « իւրեանց պղծութեան հաւատոյ առաջնորդ չեպիսկոպոս ածել և մեզ լուսաւոր և ուղղափառ հաստատուն հաւատոյս խոչ ընդ ակն կացուցանել »: Եւ կը յաւելու. « Յառաջագոյն վասն նորին իրաց մեք և աշխարհիս մերոյ տանուտեարք և ազատք միաբանութեամբ 'ի ձեռն գրոյ հրաման արարաք վասն ձեր. փութապէս 'ի Դուին 'ի սուրբ եկեղեցիս ժողովելոյ և սառ միաբանութեամբ ըստ հաճոյից Աստուծոյ առնել խորհուրդ և հնար լինել բառնալ զայսպիսի աղէտս և զհանապազորդ հեծութիւն յոգւոց մերոց. և ձեր ոչ ունելով զնախանձ վասն Աստուծոյ հեղգացեալք սպուժեցէք... Արդ վասն նորին զայս գիր միաբանութեամբ առ ձեզ հրամայեցաք առնել ». և կը յորդորէ որ ամենք գումարին գան 'ի ժողով, սպառնալով եպիսկոպոսական պատուէն զրկել զորս հեղգութեամբ կամ պատճառանօք այս հայրապետական պատուիրանին կամ կոչոյն անհնազանդ երևնան:

Այս ստիպողական նամակէն զատ՝ Ներսիսի անուամբ ուրիշ կարևոր գրուած մ'ալ կայ հետևեալ խորագրով. « Ուխտ միաբանութեան Հայոց աշխարհիս 'ի ձեռն Ներսէսի Հայոց կաթողիկոսի, և Մերշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի, և Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի, և այ-

զոց աթոռակցաց, և տանուտերանց և ազատաց և համօրէն ժողովրդականաց »: Նամակին նիւթն է՝ հակառակիլ նեստորամիտ անձանց վարդապետութեան և անոնց յառաջադիմութեան, մերժելով զիրենք և իրենց կարծիքը, քանդելով իրենց ժողովոյ տեղիք կամ եկեղեցիքը, միաձայն հաւանութեամբ խոտան և արհամարհ հռչակելով անոնց ձեռքով և եկեղեցեաց մէջ մատակարարուած խորհուրդները: Այս թղթին ձեռնագիր կը դընեն՝ Ներսէս Հայոց կաթողիկոս, Մերշապուհ Տարաւնոյ և Մամիկոնէից եպիսկոպոս, Գրիգոր Սեպհական գնդին եպիսկոպոս, Գարդեւ Հարքայ եպիսկոպոս, Տիրուկ Բագրեւանդայ եպիսկոպոս, Գրիգոր Բասենոյ եպիսկոպոս, Ներսէս Մարդաղաղոյ եպիսկոպոս, Վաղոտ Արշամունեաց եպիսկոպոս, Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս, Գրիգոր Արծրունեաց եպիսկոպոս, Մարկոս Բագրեւանդեայ եպիսկոպոս, Մաշտոց Խորխոռունեաց եպիսկոպոս, Յոհան Ապահունեաց եպիսկոպոս, Աբդիսոյ Ասորոց ուղղափառաց եպիսկոպոս, Յովհան Վանանդայ եպիսկոպոս, Հաւուկ Արշարունեաց եպիսկոպոս, Քրիստափոր Պալունեաց եպիսկոպոս, Յոյս Գողթան եպիսկոպոս, Թադէոս Մեհենունեաց եպիսկոպոս, և ամենայն եպիսկոպոսունք Հայոց աշխարհին, և իշխանք:

Վասն զի այս նամակին տակ՝ բաց յեկեղեցական աւագաց, իշխանական դասէն ալ այլևայլ անձանց ստորագրութիւնը կայ, և են Համազասպ 'ի Գուգ Վառամեան 'ի տանէ Մամիկոնից, Գարջոյր Հայոց Մաղխազ, Սամեղ յԱրտաւազդան սպարապետ, Գրիգոր 'ի Հմայական, Սահակ 'ի Վանդանեան, Աստուածատուր Վանանդայ տէր, Դատոյ 'ի Գարջուղեան, Գրիգոր և Վարդան 'ի Վասակայ, Զօրակ 'ի Գղաւոնեան, Վարազ-Յոհան 'ի Յոհանեան, Վարդան 'ի Մուշեղեան, Համազասպ, Սահակ 'ի Հմայակեան, Գնեալ Գնունի, Վարազ Գաբեղեան, Գրիգոր Աբեղեան, Մերշապուհ 'ի Ճինական, Համազասպ Ջինականեան; Աստուածատուր Հաւենունի, Արշոտ 'ի

Վարազտիրոցեան, Մուշեղ 'ի Հմայեկեան, Վրիւ յԱրտաշրան, Աստուածատուր Արշարեան, Սամուէղ 'ի Մամակեան, Վարդ 'ի Հմայակեան, Ներսէս 'ի Սամոնեան, Վարդան Վահեւունի, Հմայեակ Վարաժնունի, Մանուէղ Սպանդունի, Վարդ և Արտաւազդ 'ի Մամակեան, Համազասպ 'ի Սահակեան, Սահակ 'ի Մանուեղեան, Վարդան Մուշեղեան:

Այս միաձայն հերքման որոշումը նեստորականաց և իրենց վարդապետութեան, Ներսէս կաթուղիկոս, Մերշապուհ Տարոնոյ և Մամիկոնէից, և Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսունք պաշտօնական գրով մը կը հաղորդեն՝ Գրիգորի Մարդպետական և Գրիգորի Արծրունեաց եպիսկոպոսաց «ուղղափառաց և ճշմարիտ հաւատացելոց աթոռակցաց»: Այս գիրը, որ մեր ձեռքն հասած է, խորագիր կը կրէ. «Որոշումն նեստորականաց 'ի սրբոյ Եկեղեցւոյ»:

# ԴԱՐ Է

## ԿՈՄԻՏԱՍ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ

*Ո՞վ էր Կոմիտաս։ — Ի պատիւ Հռիփսիմեանց երգած Անձինք շարականը։ — Անոր վայելուչ ու քերթողական ոճը։ — Կոմիտասայ անուամբ յիշատակուած հարազատ կամ ոչ հարազատ երկասիրութիւնք։*

Աբրահամ կաթուղիկոսին յաջորդն էր Կոմիտաս՝ Տարօնոյ եպիսկոպոսը և Գլակայ վանից առաջնորդը։ Իր հայրապետութեան ժամանակ՝ սրբոց Հռիփսիմեանց վըկայարանները նորոգել ուզեց. և անոնց սուրբ մարմնոյն տապանակներն՝ հողէն դուրս հանելուն ժամանակ՝ տեսնելով որ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին և Սահակայ Պարթև հայրապետին կնիքներովը վաւերացած են, չուզեց դպչիլ. այլ իր կնիքն ալ զարնելով՝ արժանաւոր պատւով ամփոփել հրամայեց անոնց սուրբ մարմինները։

Այս առթով սրբոց կուսանաց վրայ շարադրեց շարական մը այբուբենի կարգաւ, որ իր անուամբը մեզի հասած գլխաւոր երկասիրութիւնն է, և կ՚ըսուի

Հռիփսիմեանց անձինք. — Գեղեցիկ քնարերգական բանաստեղծութիւն մըն է այն սուրբ կուսանաց յիշատակին և փառացը նուիրուած, որոնց արեանը պարտա-

# ՄՈՎՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԵՂԻՎԱՐԴԵՑԻ

*Մովսէս Եղիվարդեցի ։ — Հայոց մէջ գործածուած երեք թուականներ ։ — Եղիվարդեցւոյն ձեռքով ու ջանիւք եղած նորոգութիւն ։ — Հայոց թուական և անոր սկզբնաւորութիւնը ։*

Մովսէս՝ Արագածոտն գաւառին Եղիվարդ գեղէն էր, և կաթուղիկոսութեան աթոռը նստաւ Քրիստոսի 551 թուականին, և իրեն գլխաւոր գործն կը համարուի Հայոց տումարին նորոգութիւն կամ հաստատութիւնն ։ Հաւանական կ'երևնայ թէ Հայք 'ի սկզբանէ իրենց տումարը ունեցած ըլլան. կամ իրենց գործածած գլխաւոր տումարը՝ Նաբոնասարայ թուականը եղած ըլլայ. վասն զի այն ատեն հաստատուեցաւ այս թուականը՝ երբ Վարբակէս Մար և Բեղեսիս–Նաբոնասար՝ Պարոյրի հետ միաբանելով՝ Ասորեստանեայց թագաւորութիւնը վերուցին, և իրենք թագաւորութեան պսակ ընդունելով՝ սահմանեցին անկէ ետքը նոյն թուականը գործածել. (Քրիստոսէ 743 տարի առաջ)։

Արեգակնային էր այն ժամանակը Հայոց տարին, իրենց մերձաւոր ազգաց՝ Բաբելացւոց, Պարսից, Մարաց և Եգիպտացւոց նմանութեամբ ։ Բայց որովհետև Յուլեան տոմարին ճշդութիւնը չունէր, հարկ կ'ըլլար որ ամէն անգամ տարւոյն օրերը փոփոխութիւն կրեն ։ Տասներկու ամիս բաժնուած էր տարին, ամէն մէկ ամիս երեսուն օրով. և հինգ օր ալ Աւելեաց, որ է ըսել 365 օր, և հասարակ տարի ։ Սակայն Յունաց և Հռովմայեցւոց տա–

րինները չորս տարին հեղ մը նահանջ ունենալով, համեմատութեամբ չորս տարին մէյմը Հայոց տարւոյն մէկ օրը կը պակսէր, և ուրիշ ազգաց տոմարէն առաջ երթալով՝ հարկաւ շփոթութիւն կը ծագէր։

Այս թուականէն զատ՝ մեր ազգին մէջ գործածական էր նաև Հայոց լուսաւորչական թուականը, որ երբեմն գրչագրաց մէջ ալ կը գործածուի նոյն անուամբ։ – Սուրբ Լուսաւորչէն քիչ ետքը՝ սկսեր էին Հայք գործածել նաև Անդրէաս Բիւզանդացւոյն հինգհարիւրեկի շրջանը, որ 532 տարուան մէջ կը լրանար։ Այս շրջանին լմըննալէն ետքը՝ որովհետև շփոթութիւն ծագեցաւ, մանաւանդ Զատկի տօնը կատարելու համար, այն ատեն Մովսէս կաթուղիկոս՝ ազգին մէջ իմաստութեամբ և տումարական հմտութեամբ նշանաւոր եղած անձինքը քովը ժողվեց, և անոնց խորհրդովը և առաջնորդելով Հայոց թուականը հաստատեց, որ ինչուան հիմայ կը գործածուի։

Ոմանք կարծած են՝ թէ Մովսէս կաթուղիկոս ուզելով իր ազգը Յունաց հաղորդակցութենէն բոլորովին զատել, կրօնական խտրութեանց պատճառաւ հաստատած ըլլայ այս թուականը․ բայց ասիկայ ձրի ենթադրութիւն մըն է, և մեր ազգային պատմչաց շատին խօսքերուն հակառակ կ՚ելլայ, որոնք կաթուղիկոսին ձեռքովը եղած այս նորոգութեան մէջ ուրիշ բան չեն նկատեր՝ բայց միայն ուսումնական հետազօտութեան պարտք մը և արդասիք։

Մասնաւոր գրաւորական երկասիրութեանց յիշատակութիւն չկայ Մովսիսի վրայ։ Միայն իրեն յաջորդը Աբրահամ կաթուղիկոս՝ առ Կիւրիոն Վրաց հայրապետ գրած թղթերուն մէջ կը յիշատակէ թէ մասնաւոր թուղթ մը գրած ըլլայ առ նոյն ինքն Կիւրիոն, զգուշացնելով զինքը որ չըլլայ թէ նեստորականաց հետ հաղորդակցութիւն ընէ։ « Յառաջագոյն, կ՚ըսէ, երանելի հայրապետն մեր Մովսէս՝ գրեաց առ ձեզ մեղադրութիւն, յաղագս հաղորդելոյն ձեր ընդ այնոսիկ՝ ընդ որս չէր պարտ »։ Նոյնը կը հաւատարմացընէ նաև Վրթանէս քերթող՝ առ

նոյն Կիւրիոն գրած թղթին մէջ. «Ցառաջագոյն առ պատուականութիւն ձեր գրեաց երանելի հայրապետն մեր Մովսէս՝ յաղագս Խուժիկ չեպիսկոպոսին խաբէութեանց»[1]։

1. Մովսէսի Եղիվարդեցւոյ տրուած է 'ի նախնեաց այս գիւտ և փոփոխութիւն։ Անոնց հետեւեր են Չամչեան, Ինճիճեան և Ալիշան Վարդապետներ իրենց երկասիրութեանց մէջ։ Բայց վերջինս հաւանականագոյն կը համարի և նոր քննութեանցը արդիւնք ընծայէ զՆերսէս Գ Կաթուղիկոս Աշտարակեցի։ Տես 'ի Շիրակ, յ' էջ 37, 'ի ծան. 3։

## ԿԻՒՐԻՈՆ ՎՐԱՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ

ԵՒ

## ԱԲՐԱՀԱՄ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ

---

Քաղկեդոնի ժողով ու այն պատճառաւ յուզմունք յեկեղեցւոյ։ — Աբրահամ կաթողիկոս։ — Կիւրիոն Վրաց կաթողիկոս։ Թղթակցութիւնք ընդ հայրապետին Հայոց։ — Ասորեաց բողոք առ Ներսէս կաթողիկոս, և վերջինոյս պատասխանն։ — Հայոց իշխանաց կողմանէ գրուած նամակ մը։

Հինգերորդ դարուն մէջ պատահած կրօնական դէպքը՝ առիթ տուաւ այս դարուս վերջերը այլ և այլ խօսակցութեանց և թղթակցութեանց և գումարման ժողովոց։ Քրիստոսի 451 թուականին՝ Քաղկեդոնի մէջ ընդհանուր ժողովք մը գումարուեցաւ Եւտիքէսի մոլորութեանցը դէմ։ Առջի գումարուած երեք ժողովոց մէջ Հայերն ալ իրենց կողմանէ պատգամաւորներ ունեցած էին, և անոր

*համեմատ՝ ստոյգ տեղեկութիւն առած նոյն ժողովոց սահմանադրութեանցը վրայ· բայց այս չորրորդ ժողովայն ժամանակ՝ որովհետև Հայաստան պատերազմաց և աւարառութեանց պատճառաւ տնանկոխ եղած և նեղութեան մէջ էր, չկրցաւ իրեն կողմանէ մարդ ղրկել, և եղածին վրայ ճիշդ տեղեկութիւն մը ունենալ· այն պատճառաւ նոյն ժողովոյն թշնամիքն առիթ և համարձակութիւն ունեցան՝ իրենց հարցը հաւատոցը վրայ հաստատուն կեցող Հայաստանի բնակիչքը ջանալ օտարացընել նոյն ժողովքէն՝ մոլար վարդապետութեանց սահմանադիր քարոզելով։ Բայց որովհետև անոր ջատագովքն ալ պակաս չէին, Հայաստանն ալ ստիպուեցաւ՝ այս պատճառաւ գումարած ժողովքներուն մէջ՝ երբեմն ընդունել զայն իբրև ուղղափառական, և երբեմն ալ մերժել իբրև մոլորամիտ։*

* * *

*Այս ժամանակներս՝ Վրաստանի կաթողիկոսական աթոռը կը նստէր Կիւրիոն արքեպիսկոպոս, որ Մովսէսի Եղիվարդեցւոյն աշակերտն էր, յոյն, հայ, պարսիկ և վրացի լեզուաց հմուտ։ Ճանչցաւ Կիւրիոն նոյն ժողովքին ուղղափառական սահմանադրութիւնները, և մտադիւրութեամբ ընդունեցաւ· ու փափաքելով որ ուրիշներն ալ իրեն հետևող երևնան, Կոստանդնուպոլսէն բերել տուաւ նոյն ժողովքին վաւերական պատմութիւնը, ու Ս. Լևոնի Հռովմայ հայրապետին տումարը· անոնց ընթերցմամբը ճանչցաւ բոլոր վրացի ազգը նոյն ժողովքին ուղղութիւնը և ընդունեցաւ։*

*Իր այս գործոյն հակառակող երևցաւ Ցուրտաւ քաղքին Մովսէս եպիսկոպոսը· ու այլ և այլ ամբաստանութիւններ ըրաւ վրան առ զանազանս, և մանաւորաբար առ Աբրահամ կաթողիկոս Հայոց։ Կաթողիկոսն ալ մեղադրանաց թղթեր գրեց առ Կիւրիոն։*

*Ինքզինքը և իր գործը ջատագովելու համար նամակ-*

ներ գրեց Կիւրիոն, ու 'ի կաթուղիկոսէն և 'ի զանազանից անոնց պատասխաններն ընդունեցաւ։ Այս բոլոր թղթերը որ երեսնի չափ են՝ հաւաքած և պատմութեամբ աւանդած է Ուխտանէս պատմիչ տասներորդ դարու մէջ, որ վերջի տարիներս տպագրութեամբ հրատարակուեցաւ Էջմիածնի տպարանէն։

Երեքտասաներորդ դարու գրչագրի մը մէջ Թուղթ կամ Նամակ մ'ալ կայ զոր Ներսեսի Բ կաթուղիկոսի Հայոց ուղղեր են Ասորիք՝ նոյն ժամանակներն յուզուած կրօնական խնդրոց վրայ։ Այս Նամակը կը գրեն «Սամուէլ քորեպիսկոպոս և Դանիէլ վանից երեց, և Սիւնական Սարեբայի, Գաբրիէլ վանից երեց Ովփեսի, և Եղիա Սիւնական և վանից երեց Սուսիննայի, և Շապուհ վանից երեց Գնիսթայի, և Ցազդեն վանից երեց Գումայի, և Դանիէլ վանից երեց Բըդնայի և Բդեշխ վանից երեց Սաղիմայի, և Մեղիի վանից երեց Ցովտամնայ և Դաւիթ վանից երեց Սոքփոնէի, և այլ երիցունք և սարկաւագունք գաւառիս եկեղեցեաց և վանից սպասաւորք, և ամենայն ժողովրդականք ուղղահաւատք 'ի Քրիստոս». և զոր կ'ուղղեն այս մեծարանաց խօսքերով. «Լուսոց, ճըշմարտից և աստուածասիրաց հովուաց արդարոց և հարանց հոգևորաց, որ էք լոյս աշխարհի և սիւնք հաւատոյ, քարոզիչք արդարութեան և աշակերտք առաքելոց, ընկերք սրբոց և բարեկամք արդարոց, սիրելիք Քրիստոսի և պահապանք խաչին նորա. Տէր Ներսէս կաթուղիկոս Հայոց մեծաց, և Մերշապուհ եպիսկոպոս Տարաւնոյ և Մամիկոնենից, և այլ աթոռակցաց և իշխանաց աշխարհիդ»։

Հաւատոյ խնդրոց համար իրենց 'ի հակառակորդաց կրած նեղութիւնները բացատրելէն՝ ու իրենց ճանչցած և ընդունած ճշմարտութեան վրայ անշարժ մնալու հաստատուն կամքն յայտնելէն ետքը, կը յաւելուն. «Վասն այսորիկ 'ի ձեզ ապաւինեցաք յետ Աստուծոյ, և ընտրեցաք արս 'ի մէնջ և առաքեցաք ձեզ և թուղթս աղա-

չանաց որ ծանուցանեն զսիրտս մեր և զխորհուրդս. և արս զորս առաքեցաք առ ձեզ, անուանք են այսոքիկ. Ահարոն վանից երեց Մարհալայ, Դաւիթ վանաց երեց Խուփայի... Զայդ եղբարս և միապաշտօնս որ տան ձեզ զթուղթս աղաչանաց և մատուցանեն առաջի ձեր կամօք մեր և կամաք սրբոյ Հոգւոյն, զհեզ այրդ Արդիսոյ երեց 'ի վանաց Սարեբայի, մեք խնդրեմք 'ի ձեզնէ ողորմութեամբն Աստուծոյ՝ զի իշխանութիւն զոր ընկալայք 'ի Քրիստոսէ տացէք ձեռնադրութիւն դմա որ ընգրեցաւ. և առաքեցէք զդա մեզ զարդարեալ լուսով Աստուծոյ՝ 'ի ձեռն ճշմարտութեան ձերոյ, և դարձցի առ մեզ փառեալ 'ի ձեռն գրոյ ձերոյ և պինդ հրամանաւ »:

Հայոց կաթուղիկոսն այս նամակն և թղթաբերքն ընդունելով՝ կու տայ զպատասխանին, քաջալերելով զնոսա 'ի հաստատութիւն. և կատարելով յայտնած փափաքնին՝ իրենց կողմանէ խրկուած անձին եպիսկոպոսական ձեռնադրութիւն տալով: « Պատասխանի թղթոյն Ասորեաց 'ի Ներսիսէ Հայոց կաթուղիկոսէ և 'ի Մերշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսէ »: Նամակին սկզբնաւորութիւնն է. « Ի բազում ժամանակաց լուեալ զեղբայրութեանդ ձերոյ ուղղափառութիւն համբաւով, իսկ այժմ ընկալաք գրով առ 'ի ձէնջ աներկբանալի սրբոյ հաւատոյ հաստատութիւն »:

Նոյն ինքն Ներսէս ուրիշ թուղթ մ'ալ գրած է առ եպիսկոպոսունս ոմանս հայկական գաւառաց, որոնց վրայ անշուշտ 'ի Նեստորականաց զգոյշ մնալու և զգուշացընելու հարկաւոր արթնութիւնը չէր տեսած: Այս նամակին խորագիրն է « Տեառն Ներսեսի Հայոց կաթուղիկոսի թուղթ մեղադրութեան առ եպիսկոպոսունս ». և ուղղած է « Սրբասիրաց և քրիստոսասիրաց աթոռակցաց մերոց Գրիգորի Արծրունեաց եպիսկոպոսի, Սահակայ Ռշտունեաց եպիսկոպոսի, Սողոմոնի Մոկաց եպիսկոպոսի, Ստեփանոսի Անձեւացեաց եպիսկոպոսի, Միքայէլի Զարեհաւանից եպիսկոպոսի, Աստուածատրոյ

Ռժնունեաց եպիսկոպոսի, Թադէոսի Մեհնունեաց եպիսկոպոսի. — Ի Ներսիսէ Հայոց կաթողիկոսէ, 'ի Մերշապհոյ Տարաւնոյ և Մամիկոնեաց եպիսկոպոսէ, 'ի Գրիգորէ Մարդպետական եպիսկոպոսէ, 'ի Պարգեւայ Հարքայ եպիսկոպոսէ, 'ի Տիրկանէ Բագրեւանդայ եպիսկոպոսէ, 'ի Գրիգորոյ Բասենոյ եպիսկոպոսէ, 'ի Պետրոսէ Սիւնեաց եպիսկոպոսէ, 'ի Մաշտոցէ Խորխոռունեաց եպիսկոպոսէ, հոգեւոր սիրով ողջոյն»: Կը յիշեցընէ թէ ինչպէս նեստորականք վաճառաշահութեան պատրուակաւ մուտ գըտնելով 'ի Հայաստան, իրենց մոլորական վարդապետութիւնքը սկսան սերմանել ու ծաւալել, ու ազգին կողմանէ թուլութիւն կամ անտարբերութիւն գտնելով, համարձակեցան «իւրեանց պղծութեան հաւատոյ առաջնորդ չեպիսկոպոս ածեալ և մեզ լուսաւոր և ուղղափառ հաստատուն հաւատոյս խոչ ընդ ակն կացուցանել»: Եւ կը յաւելու. «Յառաջագոյն վասն նորին իրաց մեք և աշխարհիս մերոյ տանուտեարք և ազատք միաբանութեամբ 'ի ձեռն գրոյ հրաման արարաք վասն ձեր. փութապէս 'ի Դուին 'ի սուրբ եկեղեցիս ժողովելոյ և առ միաբանութեամբ ըստ հաճոյիցն Աստուծոյ առնել խորհուրդ և հնար լինել բառնալ զայսպիսի աղէտս և զհանապազորդ հեծութիւն յոգւոց մերոց. և ձեր ոչ ունելով զնախանձ վասն Աստուծոյ հեղգացեալք սպուժեցէք... Արդ վասն նորին զայս գիր միաբանութեամբ առ ձեզ հրամայեցաք առնել». և կը յորդորէ որ ամենք գումարին գան 'ի ժողով, սպառնալով եպիսկոպոսական պատուէն զրկել զորս հեղգութեամբ կամ պատճառանօք այս հայրապետական պատուիրանին կամ կոչոյն անհնազանդ երեւնան:

Այս ստիպողական նամակէն զատ՝ Ներսիսի անուամբ ուրիշ կարեւոր գրուած մ'ալ կայ հետեւեալ խորագրով. «Ուխտ միաբանութեան Հայոց աշխարհիս 'ի ձեռն Ներսէսի Հայոց կաթողիկոսի, և Մերշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի, և Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի, և այ-

զոց աթոռակցաց, և տանուտերանց և ազատաց և համօրէն ժողովրդականաց »: Նամակին նիւթն է՝ հակառակիլ Նեստորամիտ անձանց վարդապետութեան և անոնց յառաջադիմութեան, մերժելով զիրենք և իրենց կարծիքը, քանդելով իրենց ժողովոյ տեղիք կամ եկեղեցիքը, միանգամայն հաւանութեամբ խոստան և արհամարհ հռչակելով անոնց ձեռքով և եկեղեցեաց մէջ մատակարարուած խորհուրդները: Այս թղթին ձեռնագիր կը դընեն՝ Ներսէս Հայոց կաթողիկոս, Մերշապուհ Տարօնոյ և Մամիկոնէից եպիսկոպոս, Գրիգոր Սեպհական գնդին եպիսկոպոս, Պարգեւ Հարքայ եպիսկոպոս, Տիրուկ Բագրեւանդայ եպիսկոպոս, Գրիգոր Բասենոյ եպիսկոպոս, Ներսէս Մարդաղաղոյ եպիսկոպոս, Վաղոս Արշամունեաց եպիսկոպոս, Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս, Գրիգոր Արծրունեաց եպիսկոպոս, Մարկոս Բագրեւանդեայ եպիսկոպոս, Մաշտոց Խորխոռունեաց եպիսկոպոս, Յոհան Ապահունեաց եպիսկոպոս, Աբդիսոյ Ասորոց ուղղափառաց եպիսկոպոս, Յովհան Վանանդայ եպիսկոպոս, Հաւուկ Արշարունեաց եպիսկոպոս, Քրիստափոր Պալունեաց եպիսկոպոս, Յոյս Գողթան եպիսկոպոս, Թադէոս Մեհնունեաց եպիսկոպոս, և ամենայն եպիսկոպոսունք Հայոց աշխարհին, և իշխանք:

Վասն զի այս նամակին տակ՝ բաց յեկեղեցական աւագաց, իշխանական դասէն ալ այլևայլ անձանց ստորագրութիւնը կայ, և են Համազասպ 'ի Գուզ Վառամեան 'ի տանէ Մամիկոնից, Գարջոյր Հայոց Մաղխազ, Սամեղ յԱրտաւազդան սպարապետ, Գրիգոր 'ի Հմայական, Սահակ 'ի Վանդանան, Աստուածատուր Վանանդայ տէր, Դատոյ 'ի Գարջուղեան, Գրիգոր և Վարդան 'ի Վասակայ, Զորակ 'ի Գղաւոնան, Վարազ-Յոհան 'ի Յոհանեան, Վարդան 'ի Մուշեղեան, Համազասպ, Սահակ 'ի Հմայակեան, Գնեալ Գնունի, Վարազ Գաբեղեան, Գրիգոր Աբեղեան, Մերշապուհ 'ի Ճինական, Համազասպ Ձիւնականեան, Աստուածատուր Հաւենունի, Արշոտ 'ի

Վարագտիրոցեան, Մուշեղ 'ի Համայեկեան, Վրիւ յԱրտաշրան, Աստուածատուր Արշաւրեան, Սամուէղ 'ի Մամակեան, Վարդ 'ի Համայակեան, Ներսէս 'ի Սամսոնեան, Վարդան Վահեւունի, Համայեակ Վարաժնունի, Մանուէղ Սպանդունի, Վարդ և Արտաւազդ 'ի Մամակեան, Համազասպ 'ի Սահակեան, Սահակ 'ի Մանուեղեան, Վարդան Մուշեղեան:

Այս միաձայն հերքման որոշումը Նեստորականաց և իրենց վարդապետութեան, Ներսէս կաթուղիկոս, Մերշապուհ Տարոնոյ և Մամիկոնէից, և Գեորգ Սիւնեաց եպիսկոպոսունք պաշտօնական գրով մը կը հաղորդեն՝ Գրիգորի Մարդպետական և Գրիգորի Արծրունեաց եպիսկոպոսաց «ուղղափառաց և ճշմարիտ հաւատացելոց աթոռակցաց»: Այս գիրը, որ մեր ձեռքն հասած է, խորագիր կը կրէ. «Որոշումն Նեստորականաց 'ի սրբոյ Եկեղեցւոյ»:

# ԴԱՐ Է

## ԿՈՄԻՏԱՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ

*Ո՞վ էր Կոմիտաս։ — Ի պատիւ Հռիփսիմեանց երգած Անձինք շարականը։ — Անոր վայելուչ ու քերթողական ոճը։ — Կոմիտասայ անուամբ յիշատակուած հարազատ կամ ոչ հարազատ երկասիրութիւնք։*

*Սրբահամ կաթուղիկոսին յաջորդն էր Կոմիտաս՝ Տարօնոյ եպիսկոպոսը և Գլակայ վանից առաջնորդը։ Իր Հայրապետութեանը ժամանակ՝ սրբոց Հռիփսիմեանց վըկայարանները նորոգել ուզեց. և անոնց սուրբ մարմնոյն տապանակներն՝ հողէն դուրս հանելուն ժամանակ՝ տեսնելով որ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին և Սահակայ Պարթև Հայրապետին կնիքներովը վաւերացած են, չուզեց դպչիլ. այլ իր կնիքն ալ զարնելով՝ արժանաւոր պատուով ամփոփել հրամայեց անոնց սուրբ մարմինները։*

*Այս առթով սրբոց կուսանաց վրայ շարադրեց շարական մը այբուբենի կարգաւ, որ իր անուամբը մեզի հասած գլխաւոր երկասիրութիւնն է, և կ՚ըսուի*

*Հռիփսիմեանց անձինք. — Գեղեցիկ քնարերգական բանաստեղծութիւն մըն է այն սուրբ կուսանաց յիշատակին և փառացը նուիրուած, որոնց արեանը պարտա-*

*կան է Հայաստան իր լուսաւորութեան գլխաւոր մաս մը։ Հռիփսիմեանց սրտաշարժ պատմութիւնն՝ ազդած է Քերթողին այս աննման և սիրելի երգը վրանին յօրինելու։ Որպիսի՜ կտրուկ և բանաստեղծական՝ միանգամայն պարզ լեզուով նկարագրուած են իրենց պատմութեան գլխաւոր մասերը, մանաւանդ սրբուհւոյն Հռիփսիմէի, այն հրաշագեղ կուսին՝ որուն գեղեցկութիւնը՝ կը յիմարեցընէ զԹագաւորն. հեթանոսք կը ջանչանան իրենց անմիտ իմաստութեանը մէջ՝ այնպիսի տեսքի մը արհամարհուելուն համար, և հրեշտակք՝ ուրախութեամբ կը տօնեն՝ փափուկ կուսի մը մահը և զաշխարհս արհամարհելը։ Իրար կ'անցնին բոլոր աշխարհք. մէկ պատուական մարգարտի մը (Հռիփսիմէի) վրայ խնդութեամբ կը վազեն ամենայն հեթանոսք. արեւմուտք և արեւելք, Դիոկղետիանոս և Տրդատ, իրարու կ'իմացընեն այն հրաշալի գեղեցկութիւնը. և մինչդեռ խօսքով իրարու կը խոստանան, ծածուկ հնարքներով կը ջանան յափշտակել իրարմէ։ Աշխարհիս առջև զօրաւոր սեպուած մարդիկներուն զէնքերը կը թուլնան. ուր ընդհակառակն տկար կարծուած կանայք աստուածազդեցիկ զօրութեամբ քաջալերուած՝ զօրութեամբ և փառքով պերճացեալ Թագաւորը՝ կուսական ձեռօք կը յաղթահարեն։ Ո՜րչափ գեղեցիկ, պարզ և բանաստեղծական են այն նմանութիւնքը, մերթ առ Աստուած, մերթ առ կուսանս և մերթ առ տօնողս դառնալները. որով իրաւամբք ազգային բանաստեղծութեան գլխաւոր յիշատակարաններէն մէկը կը սեպուի*[1]։

1. Մեր դարուն հռչակաւոր Իտալացի քերթող մը, Լուիճի Գարրէր, գեղեցիկ ոտանաւոր թարգմանութիւն մը ըրած է այս երգին, և որ հրատարակուած է 'ի Ս. Ղազար Վենետկոյ յամի 1843։



*Կոմիտասայ անուամբը յիշատակուած ուրիշ երկասիրութիւնք.* — Ուռպելեան և Գաղանկատուացին ուրիշ այլ և այլ ճառեր և գրուածներ կ'ընծայեն Կոմիտասայ։ Ատոնց մէջ գլխաւոր կրնան սեպուիլ առ պատրիարքն Կոստանդնուպոլսոյ գրուած քանի մը Թղթերը՝ հաւատոյ դաւանութեան և այլ և այլ ազգային ծիսից վրայ։ Այս Թղթերէն մէկ քանին Գաղանկատուացւոյն գրոցը մէջ կը տեսնուին, ու արժանաւորք են Կոմիտասայ հանճարոյն, սրտին ու գիտութեանը։ Իրեն կ'ընծայուին ուրիշ քանի մը քննաբանական կամ աստուածաբանական համառօտ գրուածներ, որ իրենց իմաստներովն ու լեզուով շատ կը հեռանան Կոմիտասայ գիտութենէն ու ընտիր և կիրթ ախորժակէն. ուստի և հաւանականաբար ուրիշ հակառակասէր ու տգէտ անձանց գրուածներ են՝ իրեն անուամբը հրատարակուած։ Ատոնց կարգէն են անշուշտ իրեն անունը կրող *Հարցմունք* որ ձեռագրաց մէջ կ'երևնան, և «*Հարցումն Գիւտոսի Կոստանդնուպոլսի հայրապետի և Կոմիտասայ Հայոց կաթողիկոսի*», և *Թուղթ վասն հաւատոյ*։

# ՔԱՆԻ ՄԸ ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

---

*Եզնիկ Երէց: — Եզր կաթողիկոս: — Մաթուսաղա: — Ոշականեանի գովութեանց խօսքերը: — Իր համբաւը: — Գրիգորատուր վարդապետ: — Յովհան Մայրագոմեցի:*

## ԵԶՆԻԿ ԵՐԷՑ

Այս տողերս կը յիշատակուի Եզնիկ երէց կամ վարդապետ մը, որ Կոմիտաս կաթուղիկոսին ժամանակ և անոր ձեռքովը եղած սրբոց Հռիփսիմեանց մարմնոյն փոխադրութեանը ականատես, և այն դէպքին պատմութիւնն ըրած է, քանի մը խօսքով յիշատակելով սուրբ Թարգմանիչը, և անոնց ձեռքովը եղած ազգային բարիքը: Ձեռագրաց ցուցակին մէջ հանդիպած ենք նաև հետևեալ երկասիրութեան. «Եզնիկ վարդապետի վասն արարչութեան աւուրց», և որ ցարդ խորագրովս միայն մեզի ծանօթ է:

---

## ԵԶՐ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ

Կոմիտաս և Քրիստափոր կաթուղիկոսաց յաջորդն էր Եզր, Նիգ գաւառին Փառաժնակերտ գեղէն. որ մեր եկեղեցական պատմութեանց մէջ նշանաւոր Կարնոյ ժողովքը գումարեց, Յունաց Հերակլ կայսեր յորդորելովը և առիթմամբ: Եկեղեցական ուրիշ այլ և այլ բարեկարգութիւններ ալ ըրած է. մասնաւորաբար ժամակարգութեան և հասարակաց աղօթից մէջ: Այս խօսքիս ստուգութեան երաշխաւորութիւն կու տայ Յովհան Իմաստասէր, որ Արևագալի կարգը իրեն կ'ընծայէ:

Եզրի ժամանակակից ուրիշ քանի մը անուանի վարդապետք ալ կային, թէ՛ բարեպաշտութեամբ և թէ գիտութեամբ նշանաւոր անձինք: Ասոնց մէջ անուանիներէն կը սեպուէր

# ՄԱԹՈՒՍԱՂԱ

Աստ գովեստը կ՚ընէ Ուռպելեան, Սիւնեաց փառացը և պատմութեան հանդիսացընողը։ Կ՚աւանդէ թէ Դաւիթ Սիւնեաց արքեպիսկոպոսին վախճանելէն ետքը՝ միաբան հաւանութեամբ տեղապահ ընտրուեցաւ Մաթուսաղա, զոր «մեծ քերթող և անյաղթ փիլիսոփայ կ՚անուանէ. զարդացեալ ամենայն առաքինութեամբ, ունեալ զքերթողութիւն և վարժեալ ճարտասանականաւն. հմտացեալ փիլիսոփայական արուեստից, լի ամենայն իմաստութեամբ և կատարեալ գիտութեամբ։ Եւ զի էր մեծարոյ և նախաթոռ 'ի հայրապետսն Սիւնեաց, զի էր 'ի վաղնջուց հետէ հրամայեալ զթարգմանութիւնն և ըզմեկնողութիւնն նոցա ունել 'ի սրբոցն Սահակայ և Մեսրոպայ, և գլուխ կալ և հրամանատար ամենայն վարդապետաց Հայոց։ Վասն որոյ տեսեալ յայնմ ժամանակի պայծառացեալ իմաստայեղց ճառագայթիւք զերանելին Մաթուսաղայ, վարժեալ և սնեալ 'ի նոյն տան՝ կացուցանեն յաստիճան վարդապետութեան եկեղեցւոյ. և նըստուցանեն գլուխ ամենայն վարդապետացն 'ի վերայ բարձըր և ահարկու ամբիոնի րաբունարանին, յորմէ բղխէր գետօրէն աստուածային իմաստութիւնն և փարթամացուցանէր զամենայն աշակերտեալսն»։

Մաթուսաղայի այս համբաւը լսեց Կոմիտաս կաթողիկոս. և թէպէտ կաթողիկոսարանին մէջ ուրիշ այլ և այլ վարդապետք կային, Արշարունեաց գաւառին մէջ ալ հռչականուն վարդապետարան մը յԵրասխաձոր, Վարդիկ հայր կոչուած, ուր գիտութեանց ետևէ եղող և ուսումնասէր մանկունք կը կրթէին «ճարտարք և գիտունք Հայոց», սակայն իր Թէոդորոս եղբօրորդւոյն դաստիարակութեան խնամքը Մաթուսաղայի յանձնեց։ Կաթողիկոսին վստահութեանը և համարման արժանաւոր երեւ-

ցաւ Մաթուսաղա, կ՚ըսէ պատմիչը․ վասն զի «մեծաւ զգուշութեամբ ուսոյց և հասոյց ՚ի գլուխ կատարման»։



Կոմիտաս և Քրիստափոր կաթուղիկոսաց մահուընէն ետքը՝ Եզրի հայրապետութեանը ժամանակ՝ Յունաց Հերակլ կայսրը հրաման հանեց որ թէ՛ Հայք և թէ Ասորիք ժողովին ՚ի քաղաքն Կարնոյ՝ հաւատոյ խնդրոց քննութեան զբաղելու, և նոյն ժամանակաց մէջ յուզուած հերձուածքը խափանելու համար։ Այս վախճանիս դիւրաւ հասնելու նպատակաւ՝ կայսրն հետը բերած էր Յունաց իմաստուններ։ Այս հրամանը առնելնուն պէս՝ Թէոդորոս Ռշտունի և ուրիշ Նախարարք ժողով գումարեցին Եզրի քով, և իրենք շուտով դէպ ՚ի Կարին ճամբայ ելլելով, պատուիրեցին Հայոց կաթուղիկոսին որ ինքն ալ իր ազգին իմաստուններն ու եպիսկոպոսներն առնու, և անանկ երթայ ժողովքի․ բայց աղաչեցին որ չըլլայ թէ առանց Մաթուսաղայի երևնայ ժողովքին մէջ։ Այսչափ մեծ էր ժամանակակցաց համարումը իր գիտութեանն և իմաստութեան վրայ։

Եզր մարդիկ ղրկեց առ Մաթուսաղա, թէ՛ իր և թէ ուրիշ եպիսկոպոսաց և Նախարարաց կամքն ու բաղձանքն անոր յայտնելու։ Բայց Մաթուսաղա որովհետև իր ամէն փոյթն ու խնամքը վարժարանին բարեկարգութեանը վրայ դարձուցեր, ու անոր յառաջադիմութեան համար գիշեր ցորեկ կ՚աշխատէր, յանձն չառաւ անոնց խնդրուածոցը զիջանիլ։ Կաթուղիկոսը երբոր կրկին անգամ մարդիկ ղրկեց, Մաթուսաղա առջի պատճառներուն վրայ տկարութիւնն ալ աւելցնելով, տեղը ղրկեց Կոմիտաս կաթուղիկոսին եղբօրորդին և իր աշակերտը՝ զԹէոդորոս, և անոր ձեռքը տուաւ հաւատոյ դաւանութեան թուղթ մը, պատուիրելով որ նոյն թուղթը կարդան ժողովքին մէջ։ Ժողովոյն լմըննալէն ետքը՝ Մաթուսաղա եկաւ առ

Եզր, և մեծ պատիւ գտնելով իրմէն, Սիւնեաց եպիսկոպոս ձեռնադրուեցաւ, ու նորէն իր վիճակը դառնալով, իր նախկին ջանքն ու փոյթը շարունակեց։

Ուպելեանը իր Պատմութեան մէջ ամբողջ կը դնէ Հաւատոյ դաւանութեան գիրը՝ զոր Մաթուսաղա տուաւ Հերակլ՝ յանուն Եզրի։

Մաթուսաղա տասնևութ տարի Սիւնեաց մետրապօլտութիւն ընելէն ետքը վախճանեցաւ։

Նոյն ժամանակներն ծաղկեցան նաև Գրիգորատուր և Յովհան Մայրագոմեցի վարդապետք։

**ԳՐԻԳՈՐԱՏՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏ** Արձախից ձոր կոչուած գաւառէն. որուն համար կ'աւանդէ Շապուհ Բագրատունի՝ թէ Մայրագոմեցւոյն և անոր մոլորամիտ վարդապետութեանցը դէմ կռուած ըլլայ երկար ժամանակ։ Բայց իր գրուածներէն բան մը ձեռուընիս հասած չէ։ Բագրատունւոյն գրուածոց մասն կը համարուի (անշուշտ ի ճառէն պահոց) հետևեալ հատուածը՝ որոյ կը հանդիպինք ի գրչագիրս (Մատ. Երուս. 999). «Այր ոմն, անուն Գրիգորատուր, 'ի գաւառէ Արձախից ձորոց, այլ ուղղափառ հաւատովք և զօրութեամբ արուեստիւք. յաւուրս նորա Հռոմք սիրէին զմեզ[1]... զՅովհաննու Մայրագոմեցւոյ զաղանդն խափանեաց»։

**ՅՈՎՀԱՆ ՄԱՅՐԱԳՈՄԵՑԻ**՝ սրբոյն Գրիգորի եկեղեցւոյն փակակալն էր, և նոյն ատեններն ազգին մէջ յուզուած կրօնական խնդրոց մէջ՝ Յունաց և անոնց ընդունած վարդապետութեանց դէմ կը հակառակէր։ Այս վախճանաւ երեք գրուածք ալ շարագրեց, կ'ըսեն Աստղիկ և Վարդան պատմիչները. բայց որովհետև զանա-

1. Ի Մատ. Էջմիածնի տէրեւն Դու։

*զան մոլորական վարդապետութիւններ կը բովանդակէին այն գրքերը, չհամարձակեցաւ Յովհան իր անուամբն հրատարակել, այլ անծանօթ անուններ դրաւ վրանին, այսինքն Խրատ վարուց կամ Խրատավարք, Հաւատարմատ և Նոյեմակ[1]: Բայց ազգը չընդունեցաւ այս գրուածները, և անհետ լրաւ. Եզր կաթուղիկոսն ալ զրկելով զինքը ամէն իշխանութենէ, մասնաւոր տեղ մը վռընտեց:*

*Ուսպենեանը կ'աւանդէ, թէ Թէոդորոս Ռշտունեաց տէրն և իրեն հետ եղող նախարարք ստիպած ըլլան զԵզր՝ որ Մաթուսաղայի հետ Կարնոյ ժողովքը տանի նաև ըզՄայրագոմեցին, և անոնց աստուածաբանական տեղեկութեամբքը Յունաց դէմ դնէ. և թէ Եզր արհամարհելով զՄայրագոմեցի՝ անոր խօսքը մտիկ ըրած չըլլայ, և թէ անով իր և Ռշտունեաց իշխանին մէջ գժտութիւն ինկած է:*

*Բայց այս դէպքը անհաւատարիմ կ'երևնայ, նախ որ ինչպէս տեսանք, զարմանալի համարման արժանաւոր անձ մը սեպուած չէր Յովհան, և երկրորդ որ՝ Փոտ Կոստանդնուպոլսի հայրապետն առ Զաքարիա կաթուղիկոս գրած թղթին մէջ՝ բոլորովին հակառակ վկայութիւն մը կու տայ, թէ Թէոդորոս Ռշտունի բռնած ըլլայ զՅովհան, և աղուխադրոշմ խարան մը դնելով անոր ճակտին վրայ, ինչուան 'ի Կովկաս աքսորած ըլլայ:*

1․ Էջմիածնի Մատենադարանին գրչագրաց ցուցակին մէջ (թիւ 1500) կը նշանակուի․ «Յովհաննու Մայրավանեցւոյ գիրք Արմատ հաւատոյ», որ անշուշտ յետին դարուց գրուած է, և հաւանականաբար համանուն Որոտնեցւոյն:

# ՅՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

---

*Յովհան Մամիկոնեան պատմիչ։ — Իր երկասիրութեան նիւթը։ — Մատենագրական ոճը։ — Տպագրութիւնք և թարգմանութիւնք իր գրուածքին։*

Ներսէս Շինող կաթուղիկոսին օրովը էր Յովհան Մամիկոնէից եպիսկոպոսն, և նոյն հայրապետին հրամանաւ պատմական գրուածք մը շարագրեց, որ կերպով մը Զենոբայ ասորւոյն պատմութեան շարայարութիւնն ըլլալով, նոյն անուամբ Տարօնոյ պատմութիւն կը կոչուի։

Պատմութեանը Յիշատակարանին մէջ կը պատմէ թէ Զենոբայ ժամանակէն 'ի վեր հաճոյական բան մը սեպուած էր Տարօնոյ մէջ, որ իւրաքանչիւր առաջնորդ՝ իր ժամանակին իշխող գլխաւորին քաջութիւնները և պատերազմունքը և բարեկարգութիւնները գրէ, և Գլակայ վանաց և եկեղեցւոյն յիշատակ թողու. ասանկով օր օրուան վրայ պատմութիւնը կը շատնար, և կը կոչուէր Ասորւոց պատմութիւն. որովհետև մինչեւ Թոդիկ վանահօր ժամանակ՝ վանքին առաջնորդքն ասորի էին ազգաւ, և ինքն եղաւ որ թէ՛ զիրենք և թէ իրենց կարգերն և լեզուն հալածական ըրաւ։ Բայց ես, կը յաւելու Մամիկոնեան, տեսայ որ Խոսրովու ժամանակէն ի վեր մինչեւ Տրդատայ թագաւորութեան ատենը Մամիկոնէից տան մէջ հանդիպածները՝ գրի վրայ առնուած չէին. ետքէն տեղեկացայ թէ Ուռհայի կողմերը Մարմառա կոչուած կրօնաւոր մը կայ՝ որ այդպիսի գիրք մը ունի քոքը, գնացի քննելու, և տեսայ որ նոյն Իննակնեան վան-

քին մէջ գրուած էր, և հաւանականաբար Թշնամեաց յարձակման կամ աւարառութեանը պատճառաւ անոր ձեռքն ինկած։ Եւ որովհետև քովս արդէն տասը գլուխ բան կար գրուած, քսանըութ գլուխ ալ անկէ Թարգմանեցի, և բոլորը մէկէն երեսուն գլուխ՝ մէկ գրքի մէջ հաւաքելով, ինծմէ ետքը եկողներուն յիշատակ ձգեցի։

Բայց մատենագրին յիշատակած երեսունևութ պատճէններէն միայն ութը ձեռուընիս հասած են. և ատոնցմէ հինգը Զենոբայ անուամբն են, միւս երեքն ալ Յովհաննու Մամիկոնենի։

*
* *

*Մամիկոնենի պատմութեան նիւթը.* — Գլակայ վանից առաջնորդներուն շարակարգութեամբը կը սկսի Մամիկոնեանն իր պատմագրութեան գիրքը, Զենոբ ասորւոյն օրուընէն ինչուան Թոդիկ վանահայր, որուն ժամանակ Գլակայ վանքը թէ շէնքերով և թէ բարեկարգութեամբ պայծառացաւ։

Անկէ ետքը կը պատմէ թէ ինչպէս Փոկաս զՄօրիկ հայկազն կայսրը սպաննեց, և անոր անպարտ մահուանը վրէժխնդիր եղաւ Խոսրով Պարսից թագաւորն. և ուզելով որ Տարօնոյ Մուշեղ իշխանն ալ հետ միաբանի. մարդ ղրկեց իրեն այս փափաքը իմացընելու. ապա թէ ոչ՝ կը սպառնար որ Յունաց երկրէն դառնալու ժամանակ՝ Հայաստանէն և Տարօնոյ երկրէն անցնի աւերելով և քանդելով։ Մուշեղ և ոչ պատասխան տուաւ. ու մէկալ կողմանէ սկսաւ երկիրը ամրացընել։

Խոսրով շատ զօրքով Յունաց երկիրը արշաւելէն ետքը իր Միհրան քեռորդւոյն ձեռքը երեսուն հազար զօրք տալով՝ ՚ի Տարօն ղրկեց, որոնք մէկէն Մեղտի և Աստեղունք կոչուած բերդերը սփռեցան. ոմանք ալ Արձան ըսուած տեղւոյն վրայ դիմեցին։ Հոն տեղուանքը բնակող եօթն խոտաճարակ ճգնաւորները՝ մէկէն Տարօնոյ սուրբ Կա-

*բապետ վանքը վազեցին, և տեղւոյն միաբանից իմացընելով, ստիպեցին զիրենք որ փախչին երթան, և իրենք մնացին նոյն տեղը. վրայ հասան Պարսիկք և սպաննեցին սուրբ ճգնաւորները: Ասոնց արեանը՝ և թշնամեաց ձեռքով Տարօնոյ երկրին մէջ եղած արիւնհեղութեանց վրէժն առնելու համար՝ Մուշեղ իր Վահան որդին կանչեց, և յիշեցընելով իրեն թէ ինչպէս շատ տարիներէ 'ի վեր պատերազմի մէջ մտած և միշտ յաղթական եղած, հիմայ ծերութեան հասակին պատճառաւ ա՛լ չի կրնար զէնք բռնել, իրեն յանձնեց որ Պարսիցմէ վրէժն առնու:*

*Մամիկոնեանն կը սկսի անկէ ետքը Գայլ Վահանայ հնարագիտութիւնքն և յաղթութիւնները պատմել, աշխոյժ և զուարճարան ոճով մը. բայց շատ անգամ այնպիսի պարագաներով՝ որ կարծես թէ ստուգութենէ հեռանալով առասպելաց կերպարանք կ'առնուն: Վասն զի երբեմն՝ հարիւր տարուան մէջ հանդիպած դէպքերը՝ իբրև մէկ կամ երկու տարուան դիպուած կը յիշատակէ. երբեմն ալ անոր հակառակ՝ քանի մը տարուան դիպուածոց՝ երկայն ժամանակ կու տայ: Անձինքը շատ անգամ իրարու հետ կը շփոթէ. անոր համար մէկուն ձեռքով եղած գործ մը՝ իբրև ուրիշի ձեռքով եղած կ'աւանդէ: Առանց յերկուանալու՝ առասպելախառն դէպքեր՝ իբրև ճշմարիտ պատմութիւն կը գրուցէ. և ընդհակառակն առասպելաց կերպարանք կու տայ այնպիսի դէպքերու՝ որոնց ճշմարտութիւնն ուրիշ պատմագրաց գրուածներէն յայտնի է: Երբեմն ալ իր գրոցը մէջ այնպիսի դիպուածոց յիշատակութիւնք կը գտնուին՝ որ իր մահուընէն ետքը պատահած են:*

*Գլխաւոր մէկ պակասութիւնն ալ՝ շատ տեղերու և քաղաքաց ստուգաբանութիւններ են, որոնք ընդհանրապէս իմաստակական են, և ինքն իբրև իրական կ'աւանդէ: Օրինակ իմն, երբոր Վահան քսանևութ հազար հոգւով՝ Ռեհանայ դէմ պատերազմի կ'երթար, Հաշտենից իշխանը*

կաշառելով՝ Ռեհանայ գլխոյն տեղ երեսուն հազար դահեկան. Թշնամիներէն առած՝ եւ կը դառնար, Վահան աստուածային նախանձով վառուած՝ Թշնամեաց վրայ վազեց, անոնք ալ Վահանայ դառնալով՝ ըսին. «Առ ի՞նչ դարձայք, ո՜վ աւելախօսք». և անոր համար, կ'ըսէ, տեղւոյն անունը Առինչք կոչուեցաւ: Նմանապէս երբոր Վարազայ և անոր համախոհ Պարսից դէմ գնաց պատերազմաւ, Թշնամիքն ահաբեկելով սկսան գրուցել Թէ կորսուեցանք՝ «Կորեաք». և Թէ այն պատճառաւ տեղւոյն անունը մնացած ըլլայ «Կորի»:

Այսպիսի անտեղութեանց պատճառ կրնայ սեպուիլ նաև օտար անձանց ձեռք խառնելը Մամիկոնենի պատմութեան մէջ. մանաւանդ որ ինքը Ցիշատակարանին մէջ ազատութիւն տուած, կամ աւելի լաւ ըսենք՝ ստիպած է՝ որ իրենց ժամանակին դէպքերը աւելցընեն, և զարմանք չէ որ երբեմն տգէտ և անգրագէտ անձինք ալ գեղծած ըլլան իր այս Թոյլտուութեամբը: Խօսքերնուս ստուգութեանը գլխաւոր ապացոյց է ձեռագրաց մէջ եղած զանազան տարբերութիւնները:

Պարզ ու գրեթէ ռամկական ոճ մը ունի Մամիկոնեանն. և իր գիրքը աւելի յարգի կրնայ սեպուիլ իբրև պատմութիւն՝ քան Թէ իբրև մատենագրութիւն:

Յովհաննու Մամիկոնենի պատմութեան գիրքը տպագրուած է նախ 'ի Կոստանդնուպոլիս 1719ին, ու ետքը ձեռագրաց բաղդատութեամբ 'ի Վենետիկ 1832ին և 1889, Զենոբայ աորւոյն Տարօնոյ պատմութեանը հետ: Գաղղիական Թարգմանութիւն մ'ալ 'ի Հաստփման Լանկլուայի 'ի 1869: Jean Mamigonien, continuation de l'histoire de Daron, traduite pour la prèmiere fois de l'arménien par Jean-Raphaël Emine.

# ՍԵԲԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

*Սեբիոս եպիսկոպոս Բագրատունեաց: — Իր անձին վրայ տեղեկութիւն: — Պատմութեան նիւթը: — Այդ երկասիրութեան շարադրութեան մէջ իր ունեցած մասը: — Սեբիոսի ոճն: — Պատմական արժէքը: — Իր գրուածքին տպագրութիւնք և թարգմանութիւնք և մատենագիտական քննադատութիւնք:*

Մեր պատմչաց կարգին մէջ յետ ոսկեղէն դարու մատենագրաց՝ յետագայ պատմիչք կը դասեն զՍեբիոս եպիսկոպոս, յիշելով իր Պատմութիւնն 'ի Հերակլ, կամ Պատմութիւն Հերակլի կայսեր պատերազմաց ընդ Պարսից. որ և շատոնց անծանօթ մնացած՝ հազիւ անկէ յիսուն տարի մ'առաջ յերևան ելաւ և հրատարակեցաւ: Իր անձին և ուրիշ գործոց վրայ տեղեկութիւն չունինք, բայց միայն որ Բագրատունեաց ցեղի եպիսկոպոս էր, ինչպէս որ ստորագրած է անունն 'ի գործս ժողովոյն Դունայ՝ Գ Ներսէս կաթուղիկոսին ատեն, 'ի կէս Է դարու:

*
* *

*Սեբիոսի Պատմութեան նիւթն.* — Յետ յաւերժայիշատակ դիպուածոց Վարդանայ և Վահանայ, զոր անմահացուցին ճարտար գրիչք Եղիշէի և Ղազարու, գրեթէ ամբողջ դար ու կէս՝ ոչ ոք ոճով Հայոց պատմութիւն մը գրած էր, և թէ գրած ալ էր՝ ոչ միայն մեզի հա-

սած չէ, այլ և ոչ Սեբէոսի, որ Է դարուն սկիզբներն ծնած ըլլալու է. ինչպէս կը վկայէ և ինքն. Թերևս Հայոց անիշխան ըլլալուն և թշուառութենէ զատ նշանաւոր գործ մը, մանաւանդ ազգային քաջագործութիւն մը չըլլալուն համար՝ յօգուտ հայրենի աշխարհին. բայց Զ դարուն վերջերը և Էին կիսուն՝ ոչ միայն Պարսից և Յունաց մէջ նշանաւոր գործեր եղան՝ դաշանց և պատերազմաց, այլ և Հայք անոնցմէ նեղեալք կամ ձանձրացեալք կամ անհամբերք՝ թէ ապստամբութեան և թէ քաջութեան գործեր ըրին, որ երկու ինքնակալ պետութեանց մէջ ալ հռչակուեցան և անոնց մտադրութիւնն արթնուցին։ Սեբէոս ետքի և գլխաւոր գործերուն ականատես՝ ուզեց զանոնք գրով աւանդել, մանաւանդ ամենէն հռչակաւոր դիպուածն, որ էր Հերակլ կայսեր արշաւանքն 'ի վերայ Պարսից, անցնելով կրկին անգամ ընդ Հայաստան։ Ասոր պատերազմներն ընդ Պարսից, և այս ետքիններուս տէրութեան չփոթութիւնն Ապրուէզ Խոսրով թագաւորին ատեն, և քիչ մ' առաջ ու ետև, ու անոնց տէրութեան նախ տկարանալն հարուածովք Հերակլի, ու յետոյ վերցուիլն 'ի ձեռն նորահաստատ տէրութեան Մահմէտի, գլխաւոր նպատակն են մեր պատմչին. անոր համար ալ իր գրուածն կ'անուանի յանունց Հերակլ՝ 'ի Սեբէոսէ եպիսկոպոսէ ասացեալ։

***

Իրմէ առաջ երկայն ատեն ազգային պատմիչ չըլլալն՝ բնական պատճառ մը պիտի սեպուէր Սեբէոսի՝ համառօտաբար յիշելու այն միջոցին կամ առաջին դիպուածներն. և յիրաւի իր նպատակած պատմութենէն առաջ՝ Վահանայ մեծին գործքն համառօտ կը յիշուին, և իրմէ վերջին եղածներն. բայց անկէ առաջ ալ Հայոց Արշակունի թագաւորաց և իրենց ատենի Պարթևաց և Յունաց կայսերաց՝ համառօտ ժամանակագրական ցանկ մը

կայ, 'ի Մովսիսէ Խորենացւոյ և 'ի Ստեփանոսէ Տարօնացւոյ առնուած, ըստ խորագրին, ինչպէս որ գրուած է տպագրելոյն մէջ ալ [1]. և ալ աւելի առաջ՝ Հայոց ազգին 'ի Հայկայ սկզբնաւորութեան, և անոր պատերազմին ու իր պայազատաց յիշատակութիւնք կ'ըլլան, հին ու վսեմ ոճով. որ ոչ միայն Սեբիոսի գրածն չէ, այլ թերևս և ոչ իրեն գրածն 'ի սկիզբն պատմութեան իւրոյ. այլ այն հին և պատուական հատուածքն՝ Ագաթանգեղոսի և Ղազարայ Փարպեցւոյ ծանօթ պատմական գրքերէն դուրս գրուած գործքերէն են. Նոյնպէս ժամանակագրականքն ալ՝ անյարմար թուականներով՝ յետին և ոչ շատ հմուտ գործ են։ Երկուքն ալ անհարազատ սեպելով Սեբիոսի՝ աւելորդ կը սեպենք հոս քննել զանոնք։ Իր հարազատ գործն կը սկսի տպագրին Գ դպրութիւն ըսած տեղէն, որոյ երկու առաջին գլուխքն համառօտ յիշատակք են իրաց, և Հայոց իշխանաց կամ մարզպանաց, 'ի մեծէն Վահանայ մինչև ց'Բ Խոսրով թագաւորն Պարսից. և այս միջոցիս գլխաւոր դիպուածն է Վարդան Մամիկոնին (որ կարծի թոռն եղբօր Վահանայ) Պարսիկ Սուրէն մարզպանը սպաննելն, և փախչիլն 'ի կողմն Յունաց, որոց օգնութեամբ դէմ կեցաւ և յաղթեց Ա Խոսրովու Անուշռուանայ։ Այս թագաւորիս համար կ'ըսէ պատմիչս՝ նման քանի մը ուրիշներու՝ թէ մահուան ատեն հաւատաց 'ի Քրիստոս ու մկրտեցաւ։

* * *

Ասկէ ետև ոճով 'կը պատմէ Սեբիոս անոր որդւոյն Որմզդի անխոհեմ նախանձն 'ի վերայ քաջ զօրավարին Վահրամայ՝ որ յաղթեր էր Մազքթաց. և ասոր ապըս-

1. « Արդ թէ զիարդ է քեզ, ով ընթերցասէր, երկրորդեցից 'ի պատմագրացն Մովսիսի Խորենացւոյ և Ստեփաննոսի Տարաւնացւոյ հաւաստի և ճշմարիտ մատենագրաց՝ զորդի 'ի հաւրէ ճանաչել »: (Ի սկիզբն Բ. դպրութեան):

տամբիլն, և առ Հայոց Մուշեղ Մամիկոնեան սպարապետն ալ գրել ու յորդորելն որ իր հետ միանայ. բայց Հայք, Ցոյնք և Պարսիկք միաբանին ընդ Խոսրովայ Ապրուէզի՝ որ կը թագաւորէ փոխանակ հօրը՝ Որմզդի սպանելոյ. և միաբանութեամբ կը յաղթեն ապստամբին Վահրամայ։ Խոսրով շնորհակալութեամբ ինքզինքն որդեգիր սեպէ կայսեր Ցունաց (Մորկայ). բայց կասկածանաց պատիւ չի տար Մուշեղի, որուն երախտապարտ էր՝ իր թշնամւոյն հետ չմիաբանելու համար. Մուշեղ ալ դժարած՝ կ'իմանայ Խոսրովայ թեթևամտութիւնը և կը գուշակէ որ ժամանակաւ Ցունաց ալ ապերախտ ու վնասակար պիտի ըլլայ. և խորհուրդ կու տայ որ վերցընեն զայն ալ. բայց Ցոյնք չեն հաւանիր ու զգուշութեան համար Մուշեղ կը կանչուի կայսեր քով։ Ցունաց և Պարսից մէջ խաղաղութիւն կ'ըլլայ. զոր և անխռով պահելու համար՝ Հայոց կտրիճ իշխանաց միջէն կասկածաւորները և երբեմն անկասկածելիներն ալ կը ջանան տեղերնէն հեռացընել։ Ցոյնք կը խաւրեն զանոնք ընդդէմ Բուլղարաց 'ի պատերազմ։ Սմբատ Բագրատունի Բազմայաղթն՝ Հայոց դիւցազանց և հսկայից մէկն, այս վտանգին մէջ չընկնալ ուզելով՝ աւելի մեծ վտանգներու կ'ինկնայ Ցունաց ձեռքը. և երկրորդ անգամ մ'ալ բաղդով ազատելով կ'ապաւինի առ Խոսրով, և մեծամեծ քաջութիւններով անուանի եղած՝ Վրկան աշխարհին մարզպան կ'ըլլայ, Հայոց շինութեան և խաղաղութեան պատճառ, և Պարսից մէջ թագաւորէն ետև երկրորդ մեծ իշխան, և լի փառօք կը մեռնի հոն. փառաց արժանի կը սեպուի իր Վարազտիրոց որդին, որ յետոյ կ'անցնի 'ի Ցունաց կողմն, և ուրիշ Հայ Նախարարաց հետ կասկածելի կ'ըլլայ. որոց ոմանք անխոհեմութեամբ ալ գործելով՝ յիրաւի կը պատժուին։

Խոսրով լսելով Մորկայ սպաննուիլն 'ի Փոկասայ, իր հայրագրին վրէժն առնուլ կ'ուզէ. պատերազմ կը բանայ ընդդէմ Ցունաց, 'ի ձեռն քաջ զօրավարին Ռազ-

մահ Խոսրովայ, որ երկայն տարիներ տագնապեցընէ զՅոյնս, շատ երկիրներու տիրելով և ինչուան զԵրուսաղէմ ալ առնլով, ու Քրիստոսի սուրբ Խաչը գերելով և տանելով 'ի Պարսկաստան։ Այս սրբազան գերութիւնը դարձընելու և Յունաց կորանքը կանգնելու համար՝ Հերակլ սպաննելով զՓոկաս և յաջորդելով, Պարսից դէմ կ'ելլայ՝ ինչուան իրենց մայրաքաղաքը դիմելու. ուր և կը հասնի յետ երկար ու երագ յարձակմանց։ Խոսրով կը սպաննուի 'ի Պարսից, տեղը կը դրուի Կաւատ և յետոյ այլք. որոց հետ հաշտութիւն կ'ընեն Յոյնք. Հերակլ ետ կը դառնայ, սուրբ Խաչն ալ կը դարձընէ իր տեղը։

Այս գլխաւոր գործքէն զատ Սեբէոս կը պատմէ Պարսից վերջի տկար ժամանակը ու Սասանեանց 400 տարուան ահարկու տէրութեան վերջանալն՝ աւելի զօրաւոր տէրութեան ձեռքով, որ է Մահմէտի հաստատածն. կը պատմէ ասոր ծագումն և առաջին զօրավարաց ու յաջորդաց պատերազմներն և աշխարհակալութիւնքն 'ի Յոյնս, 'ի Պարսս և 'ի Հայս, մինչև ցամ Տեառն 660. յիշելով այն ատեններուն Հայ իշխանաց գործերն ալ, որոց գլխաւորքն են Նախայիշեալ Վարազտիրոցն, իւր որդին Սմբատ, և Թէոդորոս Ռշտունի։

Քաղաքական դէպքերէ զատ կը պատմէ Սեբէոս եկեղեցական խնդիրն ալ՝ Հայոց և Յունաց հետ միաբանութեան համար, ստիպմամբ Կոստանդ կայսեր, Հայոց ժողովն 'ի Դուին և առ կայսրն պատասխանն։ Իսկ Եզրի ատեն հանդիպածը հազիւ թէ կը յիշէ։ Երուսաղեմի առմանէն ետև ալ հոն պատրիարքի տեղ դրուած Մոդեստոսի թուղթ մը մէջ բերէ առ Կոմիտաս կաթուղիկոս մեր և ասոր պատասխանը[1]. թէ ասոր և թէ ուրիշ կաթուղիկոսաց գործերն ալ համառօտիւ յիշէ պատմիչս։

1. Այս Թուղթն ալ աւելցընելու է Կոմիտասայ կաթուղիկոսի ուրիշ հարազատ գրուածոց հետ՝ զոր յիշեցինք գրուածքիս մէջ յ'էջ 425։



*Սեբէոսի ոճն և պատմական արժէքն.* — Սեբէոսի լեզուն մերձաւոր է մեր մատենագրութեան ոսկի դարուն հեղինակաց. դեռ կը պահէ այն նախնական հնութեան ոճն և պարզութիւնը, որ յաջորդ դարուն մէջ կը խառնուի արաբական բազմաբանութեան։ Պատմելու եղանակին մէջ ալ ընդհանրապէս համառօտ և ուժով երագութիւն մ'ունի, որ կարծես թէ իր դիւցազին՝ Հերակլ կայսեր՝ արագարագ արշաւանացը կ'ուզէ նմանցընել։ Առանց երկար խորհրդածելու՝ իրաց և անձանց որոշ և ճշգրիտ կերպարանքը կը յայտնէ, անկողմնասէր կամ անաչառ տեսութեամբ, որ ինչպէս ամէն պատմչի կը վայլէ՝ մեր հին պատմչաց այլ ձիրքն է, բայց դժբաղդաբար ո՛չ յետնոց ալ։ Ի ժամանակագրութեան թէ և տեղ տեղ կը յիշէ Յունաց կամ Պարսից թագաւորին թագաւորութեան տարին, բայց ոչ ամէն տեղ, և ոչ ալ Հայոց Թուականը կը բանեցընէ. որով ամէն պատմածին տարին որոշ չգուշակուիր, և մութ կը մնայ. մանաւանդ երբ այն դիպուածներն ուրիշ պատմիչներէ յիշուած չըլլան։ Կան ալ այսպիսի դիպուածներ. և ասոնք են ըստ պատմականին աւելի արժէք տուողն Սեբէոսի պատմութեան, ուսկից առած են շատ բան Ժ դարու պատմիչքն, Յովհաննէս կաթողիկոս, Թովմա Արծրունի և այլք. և կան քանի մը կարևոր ազգային դիպուածք՝ որ ուրիշներէ յիշուած չեն, և ոչ ալ դեռ մեր ընդհանուր պատմութեան մէջ անցած։ Հերակլ կայսեր արշաւանաց մէջ ալ՝ թէ և շատ բան յիշուած է 'ի Բիւզանդացւոց, բայց կան նոր և կարևոր գիտելիք տեղեաց և գործոց, որ արևելեան կայսերութեան և արևելից պատմութեան այն ժամանակին պիտանի լոյս կ'ընծայեն, և պէտք է պատմասէրք յարգեն զանոնք։

Սեբէոսի պատմութիւնը տպագրած է 'ի Կոստանդնուպոլիս յամին 1851 բանասէրն Թադէոս Միհրդատ Միհրդատեանց, բաղդատութեամբ երկուց օրինակաց, մէկն գրուած յամի 1568, միւսն 1572։ Ռուսերէն ալ թարգմանած և տպագրած է ծանօթութեամբք 'ի Փեթերպուրկ, յամի 1862, աշխատասիրութեամբ գիտնական ազգայնոյ Ք. Պատկանեան, որ 'ի 1879 հայ բնագրին երկրորդ տպագրութիւն մ'ալ հրատարակեց նոյն քաղաքին մէջ։ Այս երկրորդ տպագրին մէջ որ ըստ ընթերցուածոցն էական տարբերութիւն մը չունի յառաջնոյն, նշանակուած են այն ամէն հատուածները՝ որ 'ի Սեբէոսէ ետք եկող պատմագրաց փոխ առնուած են 'ի գրոց նորա, առ Թովմայի Արծրունւոյ, Յովհաննու կաթուղիկոսի, Ստեփաննոսի Տարօնեցւոյ և Վարդանայ։

Պատկանեանի ռուսերէն թարգմանութենէն զատ, Հիւպշման գերմանացի հայագէտը մասնական թարգմանութիւն և տեսութիւն մը հրատարակած է։ Zur Geschichte Armeniens und der ersten Kreige der Araber. Aus dem Armenischen der Sebeos, von D.r H. Hübschmann. Տիւլօրիէ գաղղիացին ալ այլ և այլ թարգմանութիւններ ըրած է Սեբէոսի գրքէն իր Recherches sur la Chronologie arménienne գրոցը մէջ։

---

# ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ

*Կաղանկատուացի և իր ժամանակը։ — Պատմութեան նիւթը։ — Աղուանք և իրենց ծագումը և յառաջադիմութիւնը։ — Իրենց նոր հարստութիւնը։ — Կաղանկատուացւոյն պատմական արժէքն և ոճը։ — Մատենագրական շեղումն։ — Շարունակութիւն պատմութեանն Աղուանից։ — Կաղանկատուացւոյն գրոց տպագրութիւնք 'ի հայ և յօտար լեզուս, և քննադատական տեսութիւնք։*

Դարուս մատենագրաց նշանաւորներէն մէկն և պատմչաց ամենէն նշանաւորն է Մովսէս Կաղանկատուացի, որ Սեբէոսի նման՝ ինչուան ասկէ քառասուն կամ յիսուն տարի առաջ՝ շատոնց անծանօթ մնացած և կորսուած կը սեպուէր. և միայն 'ի Նախնեաց կը յիշուէր 'ի շարս պատմչաց, թէպէտ և անոնց իսկ շատերուն ալ շատ ծանօթ եղած պիտի չըլլայ, որովհետև ոչ անկէ վկայութիւն մը կը բերեն, և ոչ ալ ստոյգ ժամանակը գիտեն. այլ ոմանք ճշմարտապէս այս Է դարուս կը ցուցընեն, և ոմանք տասներորդ դարուն. ինչու որ իր անուամբ ընծայուած գրոց պատմութիւնն՝ ինչուան Ժ դարուն վերջերը կը հասնի. յորմէ նաև հիմակուան բանասիրաց ոմանք ալ Ժ դարու հեղինակ կը սեպեն զաս, մանաւորապէս Մխիթարայ Այրիվանեցւոյ ժամանակագրութեան խօսքին նայելով, որ ՆԼ և ՆԾ (980–1000) թուականաց մէջ կը դնէ, ըսելով. « Աստ Աղուանից պատմագիր Մովսէս Կաղանկատուացի, և Գրիգոր Նարեկա-

ցի », և այլն ։ Թէ և նոյն ինքն Մխիթար ուրիշ տեղ՝ ՚ի չարս պատմագրաց Հայոց, աւելի վեր կը դնէ զսա, յառաջ քան զՂեւոնդ՝ և զՑովհաննէս կաթուղիկոս ։ Արդ մենք աներկբայ ենք որ բուն Աղուանից պատմիչն Մովսէս էր ՚ի Կաղանկատուք գեղէ ընիկ Ուտի գաւառին, և Պարտաւ մայրաքաղաքի ու Տրտու գետոյն մօտ (որ հիմայ Թարթառ կ՚ըսուի), իսկ գեղն ալ ըստ ծանօթից այն կողմերուն՝ հիմայ Պարունկաթաղ կամ Վարունկաթաղ կ՚ըսուի եղեր. և եօթներորդ դարու մէջ մեռած է, հաւանօրէն և ծնած ։ Աղուանից Վիրոյ կաթուղիկոսին քով փոքրաւորի պէս կ՚երևի՝ անոր հետ Խազրաց բանակը գացած ատեն յամի 629. վասն զի իբրև ականատես կը ստորագրէ և կ՚ըսէ ալ. « Անդ տեսաք զբազմոցս նոցա », և այլն ։ Իսկ իր պատմութիւնը դադրեցուցած է 683–5 թուականին միջոց. ինչպէս կը յայտնուի պատմածէն և ոճէն և գրոց բաժանմունքէն, որ երեք գիրք են.. երկուքն մեծաւ մասամբ իրենն է հարազատ. երրորդն որ ետևի երկու կամ երեք հարիւր տարուան դէպքեր կը պատմէ կամ կը յիշէ համառօտաբար, ուրիշի գրած է, որ և իրեն համանուն ըլլալով՝ նոյն մէկ անձն կարծուած է ։

*
* *

Կաղանկատուացւոյն Պատմութեան Ձեռքն. — Հին ատեն արևելեան իշխանութիւնքն ալ իրենց ցեղին և իշխանութեան գործոց առանձին յիշատակագիր և պատմիչ ունէին. մեր ազգին մէջ ալ ոչ միայն թագաւորն՝ այլ և գլխաւոր Նախարարք իրենց ազգաբանութիւնը և ժամանակագրութիւնը խնամով գրել կու տային. և այսպէս ընդհանուր ազգային պատմութենէ զատ՝ կային այլ և այլ մեծամեծ ցեղերու մասնաւոր պատմութիւնք ալ, ինչպէս Սիւնեաց, Արծրունեաց, Մամիկոնէից, Բագրատունեաց, և այլն. յորոց ոմանք ինչուան մեզի հասած են. ասոնց մէջ ամենէն հինն է (բաց յանկատար պատ-

մութենէն Մամիկոնէից կամ մանաւանդ Տարօնոյ) մեր հեղինակին Պատմութիւնն Աղուանից։ Այս ազգս որ հին կովկասեան ազգաց մէջ զօրաւորագոյնն էր, մինչև մեծին Պոմպէոսի զէնքերն իր վրայ դարձընել տալու, և ծանօթ Յունաց և Հռովմայեցւոց, կ՚արժէր իր առանձին պատմիչն ունենալ. բայց թէ ինչուան մեր հեղինակին ժամանակ ունեցե՞ր էր անով ժամանակագիր մը, շատ հաւանական չէ. վասն զի կէս լեռնցի և բարբարոս խըռտալեզու ազգ մ՚էր. ծագումն ալ ոչ շատ ծանօթ. սակայն մերձաւորութեամբ մեր ազգին և ազգախառնութեամբ՝ ընտելացած քաղաքական օրինաց, եւս առաւել քրիստոնէական կրօնից ընդունելութեամբ. զոր թէպէտ և անմիջապէս առաքելոց աշակերտաց քարոզութեամբ ընդունած էր, ըստ աւանդութեան Պատմչիս և այլոց, այլ շուտով խափանուած էր սուրբ կրօնքն, մինչև մեր Լուսաւորիչն Գրիգորիոս անոնց ալ կրկին լուսատու եղաւ, և իր համանուն թոռը անոնց առաջին կաթողիկոս դրաւ. յետոյ մեր ուսմանց լուսատու կամ դպրութեանց հայր Ս. Մեսրովպն՝ նոյնպէս եղաւ անոնց ալ, գրեր ստեղծելով, թարգմանութիւն ընելով Ս. Գրոց, և ալխազուր լեզունին կանոնաւորելով ըստ կարելւոյն։ Այն ատեններն մեր ազգային տէրութիւնն տկարացած և վերջին շունչն հասած էր. իսկ Աղուանք՝ իրենցմէ աւելի հիւսիսային և հեթանոս Կովկասաբնակներէն նեղուած՝ իրենց լեռներէն իջնելով անցեր էին զԿուր գետ, և Հայոց Ուտի, Փայտակարան և Արցախ նահանգաց՝ քիչ շատ տիրած, որոց վրայ իշխեցին նաև յետագայ դարուց մէջ՝ իրենց այլ և այլ իշխանական հարստութեամբք, մինչև գրեթէ յ՚ԺԲ և ԺԳ դար. և բոլոր այս իշխանութեան այն հին հայկական նահանգներն՝ կոչուեցան Աղուանք կամ Աշխարհ Աղուանից, փոխանակ լեռնային և կովկասեան աշխարհին, ուր Քրիստոսի գալստենէն դարերով առաջ ալ հին Աղուանք թագաւորութիւն ունէին։ Ե, Զ, Է դարերն են նոր Աղուանից ծաղկած և վայե-

լուչ ժամանակն, որոց վերջերը մեր հեղինակն՝ ականատես մեծամեծ քաղաքական դիպուածոց և իր դիւցազնացուցեալ Ջուանշէր իշխանապետին, չարժեցաւ գրելու իր ազգին պատմութիւնը. թէ և ճշդակի ըսելով այն ատեն Աղուանք կոչեցելոց մեծ մասն Հայք էին, և Հայերէն կատարուէին կրօնական և քաղաքական մեծ պաշտամունք. իսկ Աղուան լեզուն երթալով կը նուազէր, թէ և ինչուան հիմայ կը լսուի քանի մը տեղ՝ Կուր գետոյն երկու կողմն ալ, և Ուտիք կամ Ուտէացւոց լեզու կ'ըսուի: Ս. Մեսրովպայ քարոզութիւնը յիշող հեղինակաց անուանեալ Գարգարացւոց, Գարդմանաց, Ուտէացւոց և Աղուանից լեզուքն՝ ամենն ալ նոյն կը սեպուին, և հիմկու մնացորդէն անտարակոյս կ'ըլլայ՝ որ անոնց վկայածին համեմատ՝ խեցբեկ, կոկորդախօս, այլխազուր լեզու մ'էր, և անարժան կիրթ մտաց գործածութեան: Այս պատճառներով գրեթէ հարկ էր որ Կաղանկատուացին ալ իր պատմութիւնը հայերէն գրէր. ինքն իսկ ազգաւ Հայ էր՝ Ուտեցի ըլլալովն. իսկ Ուտիք և մերձակայ գաւառաց բնակիչք՝ ըստ մեր պատմչաց աւանդութեան, և նոյն իսկ հեղինակիս, սերեալ են յԱռանայ, զոր Վաղարշակ առաջին թագաւոր մեր՝ կարգեց վերակացու կամ իշխանապետ Աղուանից. և ասկէ կը սկսի մեր հեղինակն ալ իր աշխարհին իշխանաց կամ թագաւորաց ազգաբանութիւնը կամ շարակարգութիւնը. վկայելով ընդ Խորենացւոյն՝ որ յիշեալ Առանն այր էր 'ի ցեղէ Սիսակայ Հայկազնոյ՝ յորմէ և Սիւնիք. իսկ անկէ (Առանէն) առջի Աղուանից պատմութեան համար, կը խոստովանի որ « չունիմ ինչ ասել զստոյգն 'ի պէտս լսողաց, մինչև ցՎաղարշակ արքայն Հայոց »:

Թէպէտ անկեղծ և խոհեմական խոստովանութիւն, այլ և կը ցուցընէ թէ որչափ նուազ էր Աղուանից Մովսէս պատմչին հմտութիւնն քան զՀայոց պատմչին Մովսիսի Խորենացւոյ, որ Վաղարշակէ առաջ ալ իր ազգին պատմութիւնը գտեր էր մինչև 'ի Նահապետաց դարն և

մութենէն Մամիկոնէից կամ մանաւանդ Տարօնոյ) մեր հեղինակին Պատմութիւնն Աղուանից։ Այս ազգս որ հին կովկասեան ազգաց մէջ զօրաւորագոյնն էր, մինչև մեծին Պոմպէոսի զէնքերն իր վրայ դարձընել տալու, և ծանօթ Յունաց և Հռովմայեցւոց, կ'արժէր իր առանձին պատմիչն ունենալ. բայց թէ ինչուան մեր հեղինակին ժամանակ ունեցե՞ր էր ուրիշ ժամանակագիր մը, շատ հաւանական չէ. վասն զի կէս լեռնցի և բարբարոս խըստալեզու ազգ մ'էր. ծագումն ալ ոչ շատ ծանօթ. սակայն մերձաւորութեամբ մեր ազգին և ազգախառնութեամբ՝ ընտելացած քաղաքական օրինաց, ևս առաւել քրիստոնէական կրօնից ընդունելութեամբ. զոր թէպէտ և անմիջապէս առաքելոց աշակերտաց քարոզութեամբ ընդունած էր, ըստ աւանդութեան Պատմչիս և այլոց, այլ շուտով խափանուած էր սուրբ կրօնքն, մինչև մեր Լուսաւորիչն Գրիգորիոս անոնց ալ կրկին լուսատու եղաւ, և իր համանուն թոռը անոնց առաջին կաթողիկոս դրաւ. յետոյ մեր ուսմանց լուսատու կամ դպրութեանց հայր Ս. Մեսրովպն՝ նոյնպէս եղաւ անոնց ալ, գրեր ստեղծելով, թարգմանութիւն ընելով Ս. Գրոց, և ալխազուր լեզունին կանոնաւորելով ըստ կարելւոյն։ Այն ատեններն մեր ազգային տէրութիւնն տկարացած և վերջին շունչն հասած էր. իսկ Աղուանք՝ իրենցմէ աւելի հիւսիսային և հեթանոս Կովկասաբնակներէն նեղուած՝ իրենց լեռներէն իջնելով անցեր էին զԿուր գետ, և Հայոց Ուտի, Փայտակարան և Արցախ նահանգաց՝ քիչ շատ տիրած, որոց վրայ իշխեցին նաև յետագայ դարուց մէջ՝ իրենց այլ և այլ իշխանական հարստութեամբք, մինչև գրեթէ յ'ԺԲ և ԺԳ դար. և բոլոր այս իշխանութեան այն հին հայկական նահանգներն՝ կոչուեցան Աղուանք կամ Աշխարհ Աղուանից, փոխանակ լեռնային և կովկասեան աշխարհին, ուր Քրիստոսի գալստենէն դարերով առաջ ալ հին Աղուանք թագաւորութիւն ունէին։ Ե, Զ, Է դարերն են Նոր Աղուանից ծաղկած և վայե-

լուչ ժամանակն, որոց վերջերը մեր հեղինակն՝ ականատես մեծամեծ քաղաքական դիպուածոց և իր դիւցազնացուցեալ Ջուանշէր իշխանապետին, շարժեցաւ գրելու իր ազգին պատմութիւնը. թէ և ճշդակի ըսելով այն ատեն Աղուանք կոչեցելոց մեծ մասն Հայք էին, և Հայերէն կատարուէին կրօնական և քաղաքական մեծ պաշտամունք. իսկ Աղուան լեզուն երթալով կը նուազէր, թէ և ինչուան հիմայ կը լսուի քանի մը տեղ՝ Կուր գետոյն երկու կողմն ալ, և Ուտիք կամ Ուտէացւոց լեզու կ'ըսուի։ Ս. Մեսրովպայ քարոզութիւնը յիշող հեղինակաց անուանեալ Գարգարացւոց, Գարդմանաց, Ուտէացւոց և Աղուանից լեզուքն՝ ամենն ալ նոյն կը սեպուին, և հիմկու մնացորդէն անտարակոյս կ'ըլլայ՝ որ անոնց վկայածին համեմատ՝ խեցբեկ, կոկորդախօս, այլխազուր լեզու մ'էր, և անարժան կիրթ մտաց գործածութեան։ Այս պատճառներով գրեթէ հարկ էր որ Կաղանկատուացին ալ իր պատմութիւնը հայերէն գրէր. ինքն իսկ ազգաւ Հայ էր՝ Ուտեցի ըլլալովն. իսկ Ուտիք և մերձակայ գաւառաց բնակիչք՝ ըստ մեր պատմչաց աւանդութեան, և նոյն իսկ հեղինակիս, սերեալ են յԱռանայ, զոր Վաղարշակ առաջին Թագաւոր մեր՝ կարգեց վերակացու կամ իշխանապետ Աղուանից. և ասկէ կը սկսի մեր հեղինակն ալ իր աշխարհին իշխանաց կամ Թագաւորաց ազգաբանութիւնը կամ շարակարգութիւնը. վկայելով ընդ Խորենացւոյն՝ որ յիշեալ Առանն այլ էր 'ի ցեղէ Սիսականայ Հայկազնոյ՝ յորմէ և Սիւնիք. իսկ անկէ (Առանէն) առջի Աղուանից պատմութեան համար, կը խոստովանի որ « չունիմ ինչ ասել զատոյգն 'ի պէտս լսողաց, մինչև ցՎաղարշակ արքայն Հայոց »։

Թէպէտ անկեղծ և խոհեմական խոստովանութիւն, այլ և կը ցուցընէ թէ որչափ նուազ էր Աղուանից Մովսէս պատմչին հմտութիւնն քան զՀայոց պատմչին Մովսիսի Խորենացւոյ, որ Վաղարշակէ առաջ ալ իր ազգին պատմութիւնը գտեր էր մինչև 'ի նահապետաց դարն և

'ի Ջրհեղեղն հանելով, և Հայկազանց ատենն ալ կը յիշէ զԱղուանս։ Կաղանկատուացին յուսահատելով այս հին ժամանակներէն լոյս հանել՝ իր Պատմութեան (որ երկու գիրք բաժնած է) սկիզբը՝ երեք գլուխ համառօտիւ կը կարգէ նահապետաց անուանքն և թուականը, սկսեալ յԱդամայ. յետոյ Նոյի երից որդւոց ցեղերը, և թէ որ ազգեր գիր ու դպրութիւն ունին. այս կարճ և անկատար յիշատակներն ալ առած է իրմէ առաջ թարգմանուածներէ, և Յունաց զատկական ըստուած ժամանակագրութենէն։ Չորրորդ գլխոյն մէջ կ'իմացընէ վերը ըսածնիս վասն Առանայ, և թէ 'ի Սիսակայ էր, և սա ալ 'ի Յաբեթայ։ Հինգերորդ՝ քանի մը տող կարճ գլխով՝ կ'իմացընէ Աղուանից աշխարհին բնական դիրքը և բերքը. զոր արժան էր երկարօրէն նկարագրել, և դժար ալ չէր իրեն։ Յաջորդ գլխով կը խոստովանի դարձեալ թէ Նաև յԱռանայ մինչև 'ի Վաչագան թագաւոր ալ՝ « պատմութիւն ճշմարիտ... այլ ինչ ոչ գտաք ». և չգտնելուն պատճառն ալ կու տայ (ետևի գլխուն մէջ), թէպէտ « յոյժ ցանկալի էր ըստ կարգաց գիտել զպատմածս որ ինչ յԱռանայ նախագահութենէն ցայսօր գործք. բայց արեւելեայցս բազմազգութիւն ամբոխեալ ցուցանէ զօրպէսն, և կտակարանացն հրկիզութիւնք։ Սակայն յայսմ վայրի նպաստաւորէ մեզ քերթողահայրն Մովսէս՝ զպատերազմելն Արտաւազդայ (Ա) ընդ Հռովմայեցիսն », և այլն։ Եւ կարճ խօսքով կը յիշէ որ Աղուանք ալ օգնական էին Հայոց այն պատերազմին մէջ։ Յետոյ ջանալով կը գտնէ ուրիշ պատմական մանաւանդ կրօնական դիպուածներ ալ, Քրիստոսի առաջին հինգ դարուց մէջ, և նախ քան զՎաչագան եղած, և կարգաւ կամ ետև առաջ կը յիշէ զանոնք. շատ տեղ իրմէ առաջ գտած յիշատակագրութիւնքն օրինակելով։ Այսպէս են Թադէոս առաքելոյ աշակերտ Եղիշէի գալն և զԱղուանս լուսաւորելն քրիստոնէութեամբ, իր նահատակիլն, և յետ ժամանակաց նշխարացը յայտնուիլն. Ուռնայր թագաւորի հաւատալն

'ի Քրիստոս, և մկրտիլն 'ի Ս. Լուսաւորչէն մերմէ. Տրդատայ և իր յաջորդացը գործերն յԱղուանս. Գրիգորիսի հայրապետ կարգիլն Աղուանից, և նահատակիլն 'ի Մազքթաց. և իր և իրեն բերած սրբոց նշխարաց ծածկուիլն ու Վաչագանայ ատեն յայտնուիլն. ասոր հօր Վաչէ թագաւորին տկարանալն 'ի հաւատս և դարձեալ զօրանալն, և մեր Գիւտ կաթուղիկոսին առ նա գրած թուղթն, որոյ համար պարտական ենք հեղինակիս: Որ և հոս հառնելով Նորէն (գլ. ժե.) Ցաբեթէն սկսեալ Հայոց նահապետներ և Հայկազուն թագաւորները կ' անուանէ. կը յիշէ զԱռան 'ի նոյն Հայկազանց. և ապա Արշակունեաց ցեղէն թագաւոր մը Աղուանից՝ Վաչագան քաջ, որ իրբեւ Գ դարուն կիսուն թագաւորած կ'երևի, և անոր պայազատները կը համրէ՝ մինչև յ'Դ և մեծն Վաչագան, որ կ'ըլլայ տասներորդ 'ի թագաւորս, և Ե դարուն վերջերն իշխանութեան հասած: Ասոր գործերը մանրամասն կը պատմէ (ժԶ-իԶ գլխոց մէջ), թէ՛ քաղաքաշինութեան, թէ ուսմանց զարգացման և թէ մանաւանդ կրօնական բարեկարգութեանց, հեթանոսութեան հետքը ջնջելով, եկեղեցիներ շինելով, ժողովք մ'ընելով 'ի Պարտաւ, Գրիգորիսի և ուրիշ սրբոց անյայտ եղած նշխարքները փընտռել տալով: Շատ հետաքննական է Աղուանից քրմացմատնահապտութեան հեթանոսական և անգութ սովորութիւնն՝ զոր ջնջեց Վաչագան: Այս թագաւորիս գործերը յիշելէն ետև՝ կ'անցնի պատմիչն Ս. Մեսրովպայ քարոզութեանը յԱղուանս, և անոր աշակերտաց բնակութեանն 'ի Ջղախ (Խաչենու կողմերը), և նահատակուիլն 'ի Հոնաց՝ որ հոն արշաւեր էին, զորս և Եզեկիէլ մարգարէին տուած անուամբ Ռոսմոսոքեան և Թոբելական զօրք կ'անուանէ. և ասոնց զօրավարին հաւատալն 'ի Քրիստոս և նահատակիլն: Հոս կը լմննայ Ա գիրք պատմութեանն. թէպէտ և Երկրորդին առջի գլխոց մէջ ալ դարձեալ Մեսրովպայ յիշատակ կ'ըլլայ և անկէ առաջ Վարդանանց, զորս հարկ էր յիշել նախ քան զգործս Վաչագանայ.

յայտնապէս շփոթութիւն կայ գլխակարգութեանց մէջ, նաև պակասութիւն գրոցն. վասն զի ոչ Վաչագանայ մահն և ոչ յաջորդքն կը յիշուին, այլ պատմութիւնն կ'անցնի 'ի կէս Զ դարու, 'ի սկիզբն Հայոց թուականին, երբոր Աբաս կաթուղիկոս նստաւ Աղուանից և աթոռն 'ի Զոլայ փոխեց 'ի Պարտաւ, ուր և ժողովով մերժեց աղանդաւորները, որոց համար գրեր էր առ նա կաթուղիկոսն Հայոց։ Ասկից ալ դարձեալ 75 տարուան միջոց մ'անցնելով՝ կու գայ իր ժամանակ՝ զինքն ափշեցընող դիպուածները պատմելու, ինչպէս ինքնին կը վկայէ (գլ. Թ.) խոստովանելով թէ «Մոռացայ զկարգ բանին». և կը սկսի Քրիստոսի 625 թուականէն պատմել Պարսից Բ Խոսրովու և Հերակլ կայսեր պատերազմները, Յունաց տկարանալը և օգնութիւն խնդրելը 'ի Խազրաց, որք կ'արշաւեն 'ի Վիրս և յԱղուանս. երկու կողմէն նեղեալ Խոսրով՝ իր բնիկ ազգէն, ընտանիքէն և յորդւոցն ալ կը մերժուի ու կը սպաննուի. այս ողբերգական դէպքը ճարտար կը պատմէ հեղինակս (գլ. ԺԳ.)։ Խոսրովայ սպանութեամբ իր բռնութենէն գերեալ և կապեալքն կ'արձակին. ասոնցմէ է Աղուանից կաթուղիկոսն ալ Վիրոյ, որ երկար տարիներու տառապանքէ ետև կը դառնայ իր եկեղեցին բարեկարգելու. բայց Խազիրք իր հայրենիքը պաշարած են, կը ստիպուի իբրև գերի երթալու անոնց ահաւոր խաքանին որդւոյն բանակը, և պատիւ գտնելով կը դառնայ տեղը։ Այս ուղեգնացութեան ընկեր էր մեր պատմիչն այլ, որ շատ հետաքննական և պիտանի տեղեկութիւններ կու տայ այն ատենուան ամենէն զօրաւոր ազգին՝ Խազրաց վրայօք։



Ասոնք յիշելէն ետև կը սկսի Աղուանից նոր հարըստութեան պատմութիւնը, որ նոյն վերոյիշեալ Խոսրովու Միհրան անուն ազգականաց մէկէն-առաջ եկած է, ա-

նոր համար Միհրական ցեղ կ'ըսուի. որ և նախ փախչելով 'ի Խորովայ, վերջը անոր հաւանութեամբ կը բնակի մեր Գարդման գաւառը՝ 30000 տուն հետը բերած, որովք կը զօրանայ. մինչև իր Թոռնորդին Վարդան՝ խարդախութեամբ կը ջնջէ Աղուանից Թագաւորաց ցեղը՝ որ Առանշահիկ կ'ըսուէր, և ինքն կը տիրանայ. ասոր Թոռն Վարազ՝ կ'ընդունի զքրիստոնէութիւն մկրտուելով 'ի Վիրոյէ, և կը կոչուի Վարազ–Գրիգոր. ասոր որդին է Ջուանշէր քաջն և մեր պատմչին դիւցազնն, որոյ գործերը երկար կը պատմէ։ Արժանի իսկ մտադրութեան. դժուար դրից և ժամանակի մէջ ըլլալով՝ յորում չորս մեծամեծ տէրութեանց հետ վարուելու էր, որ են Պարսիկք, Յոյնք, Խազիրք և նոր տիրապետող Արաբացիք. որոց ամենուն հետ ալ ճարտարութեամբ կը յարմարի Ջուանշէր, ամենուն իշխողաց քով ալ կ'երթայ զանազան անգամ, ամենուն սիրտը կը շահի, ամենէն ալ մեծ պատիւ և ընծաներ առնլով կը դառնայ իր աշխարհը շինելու շէնցընելու. եկեղեցեաց շինութեան և բարեկարգութեան ալ պարապելով՝ օգնական կ'ունենայ պաշտօնասէր եպիսկոպոսներ և քահանաներ, որոց աղօթիւք և ջանիւք կը յայտնուին Ս. Մեսրովպայ աշակերտաց ծածկած նշխարները և խաչը. որոց համար եկեղեցիք կը շինուին։ Բայց յամենայնի բարեբաղդն Ջուանշէր՝ դժբաղդ վախճան մը կ'ունենայ՝ դաւաճանութեամբ սպաննուելով. զոր ոչ միայն կենդանի կերպով նկարագրէ պատմիչն, այլ և մէջ կը բերէ քերթողական ողբ մը՝ զոր երգեց «ճարտասան ոմն 'ի մէջ անցեալ՝ որ տեղեակ էր արհեստական իմաստից, Դաւթակ անուն կոչեցեալ, հնարագիւտական վարժիւք յաջողակ, և վերծանական քերթութեամբ յառաջադէմ .... սկսաւ նա երգել ըստ այփափետաց գլխակարգութեանց զողբս զայս», և այլն. զոր յետոյ առանձինն կը յիշենք։ Ջուանշէրի կը յաջորդէ եղբօրորդին՝ Վարազ–Տրդատ, զոր կը նեղեն Հոնք արշաւանօք, իբր թէ 'ի վրէժ մահուան հօրեղբօրն.

*իսկ նա խորհրդակցութեամբ իշխանաց և կաթուղիկոսին՝ պատգամաւոր կը խաւրէ մինչև 'ի Վառաչան մայրաքաղաք Հոնաց (Թարքուի մօտ) Մեծկուննեաց գաւառին եպիսկոպոսը՝ Իսրայէլ, որ սրբութեամբ վարուց և ճգնութեամբ անուանի եղած էր շատոնց. Իսրայէլ ոչ միայն հաշտութեան դաշինք հաստատել կու տայ, այլ և զբազումս 'ի Հոնաց դարձընէ 'ի քրիստոնէութիւն իրենց ծառապաշտութենէն և Թանգրի-խան հսկայ չաստուծոյ պաշտամանէն. մինչև թագաւորն Հոնաց ինքնին եկեղեցիներ կանգնել կու տայ, և կը խնդրէ յԱղուանից և 'ի Հայոց կաթուղիկոսէն՝ որ զԻսրայէլ իրենց հովիւ տան։ Աղուանք շատ դժարութեամբ և վախով կը հաւանին, բայց խնդրելով որ երբեմն երբեմն իրենց ալ այցելութիւն ընէ սիրելի եպիսկոպոսն։*

*Հոս (գլ. ԽԵ.) կը լմըննայ ըստ մեզ Կաղանկատուացւոյն պատմութիւնն. իսկ Բ գրոց ետքի գլուխներն (ԽԶ-Ծ.) որ կրօնական խնդրոց վրայ գրուածներ են, կամ կարգէ դուրս գրուած են, և կամ աւելի հաւանօրէն՝ ուրիշէ աւելցուցած են. մանաւանդ որ մէկուն մէջ (ԽԸ.) ինչուան Ը դարու վերջերուն յիշատակ կայ։ Վերջին երկու գլուխներն (ԾԱ, ԾԲ.) Երուսաղէմի եկեղեցեաց և Աղուանից անուամբ հոն եղած վանաց յիշատակն են, որք անդէպ չեն մեր պատմչէն կարգած ըլլալ 'ի լրումն պատմութեան Աղուանից։*



*Կաղանկատուացւոյն պատմական արժէքն, և ոճն.* — *Նախագրեալ համառօտութենէս կ'իմացուի որ պատմիչս մասնաւոր ազգի կամ ցեղի մը դիպուածներ պատմելով, և անոր հետ հիւսիսային Կովկասեան ազգաց և մանաւանդ Հոնաց վրայ տեղեկութիւններ տալով, աներկբայապէս շատ հետաքննելի և պիտանի գրուած մը թողած է. և հարկ է ընդհանուր պատմչի մը՝ առ նա դիմել այս*

տեղեաց և ժամանակաց վրայ գրելու համար. զոր և ոչ ուրիշ մէկն գրած է, կամ մեզի հասուցած։ Այս ծանօթութիւններս ալ աւելի յարգ մ՚առին հիմայ Ռուսաց տիրելովն Աղուանից և Հոնաց աշխարհաց վրայ, և Փեթըրպուրկի ճեմարանին քննասէր ուսումնականք շատ լոյս պիտի առնուն 'ի Կաղանկատուացւոյն, շնորհապարտ ըլլալով թէ՛ հեղինակին և թէ անոր ռուսերէն թարգմանչին, մերազգի բանասիրի Ք. Պատկանեան։ Սերբիոսի պէս ժամանակակից ըլլալով Է դարուն կիսուն հանդիպած մեծ յեղափոխութեանը, Սասանեանց տէրութեան կործանելուն և Արաբացւոց կանգնելուն, կարևոր են Մովսիսի պատմածներն ալ գոնէ իբրև վստահանալի հաստատութիւն մը ուրիշներուն պատմածին։ Մեր ազգային պատմութեան գալով, աւելի եկեղեցական դիպուածոց տեղեկութիւն կ՚առնումք հեղինակէս քան քաղաքական. և թերևս երկուքէն աւելի՝ մատենագրական. վասն զի ոչ միայն Ս. Մեսրովպայ և աշակերտացն վրայ նոր ծանօթութիւններ կու տայ, այլ և ոչ սակաւ Ե, Զ, Է դարուց Հայոց հեղինակաց թըղթեր և գրուածներ կ՚աւանդէ մեզի, զոր ուրիշ տեղէ չունէինք. այսպիսիք են Թուղթքն Գիւտայ, Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի, Մատթէի երիցու առ Վաչագան, Յովհաննու կաթուղիկոսի Հայոց առ Աբաս կաթուղիկոս Աղուանից, Աբրահամու կաթուղիկոսի թուղթն, Յոհ. Մայրագոմեցւոյ գրուածն վասն Պատկերաց պաշտաման, և այլն։ Ասոնց կարգը, և թերևս աւելի վեր դնելու է վասն նորութեանն և աշխուժին՝ վերոյիշեալ Դաւթակայ ողբն 'ի Ջուանշէր, այբուբենից գլխակարգութեամբ տնատեալ, ըստ ոճոյ Կոմիտաս կաթուղիկոսին երգած Հռիփսիմեանց Անձինք չարականին. քան զոր աւելի ազատ և արձակ կ՚երևի Դաւթակայ ողբերգս, բայց ոչ ինչ ընդհատ ներդաշնակաւոր և արուեստաւոր։ Արժան է յիշել՝ որ ձեռագրաց ոմանց մէջ մինչև 'ի Ճ տառն կը հասնի ողբս, իսկ ոմանց մէջ մինչև 'ի Ք հասուցած է. սակայն այս երկրորդ մասն առջինին չի

*նմանիր, և յայտնապէս օտար և նոր գրչի հիւսուած է։ Հեղինակին հմտութեանը գալով՝ շատ ընդարձակ ասպարիզի տէր չէ, և՛ ոչ յունական լեզուի և դպրութեանց հետամուտ. սխալ կարծեացն մէջ նշանելի է Ալանաց և Աղուանից շփոթութիւն (Ա գիրք, Ը գլ.) մեր Բ Արտաշիսի պատերազմը և Սաթինկան խնամութիւնը պատմելու ատեն։ Ուրիշ կողմանէ՝ բաւական անաչառ և ուղղական ոգի և լեզու կը բանեցընէ, առանց երկար և բարակ խելամտութեանց։*

*
* *

*Ըստ ոճոյ մատենագրութեան՝ Կաղանկատուացւոյն լեզուն յստակ և հարուստ է, և դեռ առաջին ընտիր դարուց հայկաբանութիւնն կը փայլէ 'ի նմա, բայց ոչ բոլորովին. վասն զի տեղ տեղ, թէ և քիչ, մթաբանութիւն ունի, և աւելի շատ տեղ ճոխաբանութիւն մը, որ թէպէտ իրմէ վերջիններուն պէս չափազանց չէ, բայց և ոչ առաջնոց չափ ճշգած և սքանչելի պարզութեամբ։ Ի վերայ այսր ամենայնի՝ կենդանի և վառվռուն գրուցուածք մ' ունի, և աշխոյժ ու գրեթէ բանաստեղծական նկարագրութիւններ՝ ուր որ նորանշան բան մը տեսնէ կամ երևակայութիւնն դրդի. ինչպէս Պարսից յետին և Հագարացւոց առաջին դիպուածները պատմել սկսելու ատեն (Բ. Թ.) կամ Ջուանշէրի՝ Խալիֆայէն առած ու բերած ընծաները տեսնելով, որ են պապկայն (թութակ,) փիղն ու տաճիկ երիվարներ, զորս զմայլմամբ և ճշգրիտ երևոյթներով կը նկարէ։ Խոսրովու և Ջուանշէրի սպանութիւններն ալ աղէկ և սրտառուչ պատմուած են, բայց ետքինին մէջ մթաբանութիւններ կան. Հոնաց և Խազրաց սովորութիւններն ալ թէ՛ ըստ նորութեանն և թէ ըստ գրութեանն հաճոյ են կարդալու։*



*Շարունակութիւն պատմութեանն Աղուանից.* — Ինչպէս 'ի սկզբան ըսինք՝ Կաղանկատուացւոյն պատմութեանն եւս Գ գիրք մ'ալ աւելցուցած է 23 գլխով. որ համառօտ և աւելի ստորին ոճով՝ Աղուանից յետագայ դիպուածները կը պատմեն, ինչուան 'ի կէս Ժ դարու կամ աւելի անդին։ Բայց առջի գլխոց մէջ հեղինակն Մահմէտի ծագման և անոր յաջորդաց պատմութիւնը կ'ընէ. յետոյ կրօնական դէպքերու կ'անցնի որ 'ի սկիզբն Ը դարու հանդիպեցան, պատճառաւ Աղուանից կաթուղիկոսին ընդունելուն ժողովն Քաղկեդոնի և Հայոց Եղիա կաթուղիկոսին գալուն յԱղուանս ու ուրիշ կաթուղիկոս դնելը, և ասոնց ըրած ժողովները։ Յետոյ կը պատմէ (ուսկից որ Կաղանկատուացին լսեր էր) Վարազ–Տրդատ իշխանապետին երթալն և արգելուիլն 'ի Կոստանդնուպոլիս ու դառնալն հնարագիտութեամբ. նոյնպէս իրեն որդւոց դիպուածն ալ. ապա կը յիշէ Արաբացւոց արշաւանքն 'ի Հայս և յԱղուանս յէ և Ը դարս. և դարձեալ 751 թուականէն ինչուան Ժ դարուն սկիզբները հանդիպածներն յԱղուանս։ Վերջընթեր գլխով մը կը համառօտէ Միհրական Աղուան ցեղին յաջորդութիւնն և անոր խնամենալն ընդ Սիւնեաց, և առ սոսա անցնիլն Աղուանից իշխանութեան, որ և 'ի թագաւորութիւն փոխեցաւ յիշխանութեան Յովհաննու Սենեքերիմայ, յետ կիսոյ Ժ դարու։ Վերջին գլուխն է Աղուանից կաթուղիկոսաց կարգը, որ և կը հասնի մինչև 'ի վերջ Ժ դարու, յորում դեռ կը թագաւորէր Յովհ. Սենեքերիմ։ Արդ. թէ ասկից ալ, թէ Մխ. Այրիվանեցւոյն ըսածէն յայտնի է՝ որ այս ժամանակս, այսինքն 'ի վերջ Ժ դարուն, գրած է զասոնք՝ Աղուանից պատմութեան շարունակողն, որ է անշուշտ Մովսէս Դասխուրանեցի, յիշեալ յ'ԺԲ դարու հեղինակէ մը։

**Աղուանից Պատմութիւնն այլ և այլ օրինակաց բաղդատութեամբ, ծանօթութեամբք և երկար յառաջաբանիւ, Աղուանից վրայ, հրատարակեց տպագրութեամբ 'ի Փարիզ՝ յամին 1860, Շահնազարեան Կարապետ վարդապետն. որ և իր գրչագրաց հետևելով Կաղանկայտուացի կ'անուանէ: Նոյն տարին հայկական բնագրին ուրիշ տպագրութիւն մ'ալ ըրաւ՝ հմուտ բանասէրն Մ. Էմին 'ի Մոսկուա: Ռուսերէն թարգմանութիւնն յիշեցինք, տպագրեալ 'ի Փեթրպուրկ: Գաղղիական թարգմանութեամբ համառօտութիւն մ'ալ 'ի Փարիզ՝** Katkantouni Moïse; Histoire des Aghovans, extrait et traduction du manuscrit arménien, par E. Boré, avec des annotations par M. Vivien de St.-Martin. — Extraits de l'Histoire des Aghovans en arménien, par Mosé Caghancatovatsi; par M. Brosset. St.-Pétersbourg, 1851.

## ԴԱՒԻԹ ԲԱԳՐԵՒԱՆԴԱՑԻ

---

*Դաւիթ Բագրեւանդացի: — Իր անունով գտնուած ճառ մը: — Իրեն ընծայուած երկասիրութիւն մը: — Ս. Բարսղի ճառից թարգմանութիւն:*

Ներսիսի Շինող հայրապետին կաթողիկոսութեան օրովը ծաղկած է նաև Դաւիթ անունով մէկը՝ Բագրեւանդ գաւառին Բագաւան գեղջէն, զոր մեծապէս կը գովաւէ Ասողիկ՝ իմաստասէր և մեծ փիլիսոփայ կոչելով: Ասիկայ 648ին ժամանակները՝ Կոստանդ կայսեր հրամանաւ դեսպանութեամբ գնաց 'ի Հայս, և անոր կողմանէ բերաւ հրովարտակ մը. առ Ներսէս կաթողիկոս, և առ եպիսկոպոսունս և առ կիւրապաղատն Սմբատ Վարազտիրոցեան, և ուրիշ իշխաններուն: Անոնցմէ մէկն՝ Աշոտ պատրիկ, յորդորեց զԴաւիթ՝ որ իւր գիտութեանը

*արժանաւոր գրուածով մը ցուցընէ թէ ինչ կերպով կամ իմաստով ուղղափառապէս կրնայ գրուցուիլ երկու բնութիւն 'ի Քրիստոս. Բագրեւանդացին ալ ճառ մը շարադրեց, որ մեր ձեռքն ալ հասած է։*

*Գրչագրաց մէջ ուրիշ գրուած մըն ալ կայ, Քրիստոսի ներգործութեանց վրայ, այսպիսի խորագրով. «Հարցումն Դաւթի իմաստասիրի», որ թերեւս այս Դաւթի երկասիրութիւնն է և ոչ Անյաղթին. որուն թէ՛ համբաւոյն և թէ գիտութեանը արժանաւոր գրուած մը չի կրնար սեպուիլ։*

*Սրբոյն Բարսղի ճառերուն թարգմանութեանցը երկաթագիր օրինակի մը մէջ, Քրիստոսի ծննդեանը վրայ գրուած ճառին թարգմանութենէն ետքը՝ հետեւեալ ծանօթութիւնն դրուած է. «Դաւիթ թարգման Տարօնացի՝ զճառս զայս յետոյ դարձոյց 'ի յունէն 'ի հայ բարբառ, 'ի Դամասկացւոց քաղաքին, հրամանաւ Համազասպայ կուրապաղատի Մամիկոնէից տեառն»։ Ըստ ոմանց այս Դաւիթս ալ Բագրեւանդացին է։ Իսկ Համազասպ կիւրապաղատին համար մեր ազգային պատմիչք կ'աւանդեն թէ ընթերցասէր և հմուտ անձ մը եղած ըլլայ։*

*Ոմանք կը համարին թէ սրբոյն Բարսղի ուրիշ ճառերուն թարգմանութիւնքն ալ՝ սոյն Բագրեւանդացւոյս ձեռքով եղած ըլլան, և ոչ առաջին թարգմանչաց երկասիրութիւն։ Բայց վերը յիշուած յիշատակարանին խօսքը՝ «յետոյ դարձոյց 'ի յունէն 'ի հայ բարբառ», ըսել կ'ուզէ թէ մէկալներն կամ շատերն առաջուց թարգմանուած էին։*

# ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

*Անանիա Շիրակացի։ — Իր վարքը։ — Անանիայի գրուածները։ -- Աստեղաբաշխութիւն։ — Շիրակունւոյն աստեղաբաշխական կարծիք և դրութիւն։ — Ազգին մէջ ունեցած յարգը իր գրուածոց։ — Ժամանակագրութիւն։ — Ցաղագս կշռոց և չափոց։ — Անհարազատ և անծանօթ գրուածք Անանիայի անուամբ։ — Ազգային պատմչաց թուոյն մէջ յիշուիլը։ — Իր ոճը։*

Ազգային հին մատենագրութեան պատմութեանը մէջ՝ համարողական և թուաբանական գիտութեանց ետևէ եղող գլխաւոր՝ և թերևս իրեն նմանն չունեցող անձը՝ Անանիա Շիրակացի կամ Անեցի՝ այս եօթներորդ դարուս մէջ ծաղկեցաւ։ Տղայութեան հասակէն ուսմանց և գիտութեանց չափէ դուրս սէր և եռանդ ունենալով՝ քիչ ատենուան մէջ զարմանալի երևցաւ բարոյական և աստուածաշունչ գրոց գիտութեամբը։ «Բայց ետքը, կ'ըսէ ինքն Շիրակացին՝ իր վարուցը պատմութեան մէջ, հասկընալով թէ թուաբանական գիտութիւնքն են մայր ամենայն իմաստից» անոնց ետևէն սկսաւ ըլլալ[1]։ Տեսնելով որ Հայաստանի մէջ ոչ վարդապետ և ոչ գրուածք կայ այս ուսման՝ ելաւ Յունաստան երթա-

1. Շիրակացւոյն այս հետաքննական երկասիրութեան խորագիրն է ըստ ձեռագրաց. «Անանիայի Շիրակվանցւոյ երիցս երանեալ վարդապետին վասն որպիսութեան կենացն»։

լու. Նախ Թէոդոսուպոլիս կամ Կարին քաղաքը գնաց. հոն Եղիազարոս անունով իմաստուն մարդ մը պատմեց իրեն, թէ Չորրորդ Հայոց մէջ Քրիստոսատուր անունով գիտնական մը կայ. մէկէն քովը երթալով՝ վեց ամիս աշակերտեցաւ անոր. և հասկընալով թէ համբաւոյն համեմատ չէր անոր գիտութիւնն, այլ աւդիէն անդիէն կցկտուր բան մը, ելաւ անկէ Կոստանդնուպոլիս գնաց։ Ուր իրեն ծանօթ մարդիկ խրատեցին զինքը թէ «Որովհետև այդչափ դժուարութիւն և ճամբորդութիւններ յանձն առեր ես, գնա՛ Տրապիզոն քաղաքը. հոն Տիւքիկոս անունով մէկը կայ, որուն հզօր գիտութեանն համբաւը ինչուան Թագաւորաց քով հասած է. և աչքովնիս ալ տեսանք որ Կոստանդնուպոլսոյ Հայրապետին Փիլագրոս սարկաւագը՝ բազմաթիւ տղաք կը տանէր առ նա յաշակերտութիւն»։ Աս որ լսեց Անանիա, մեծ ուրախութեամբ ելաւ անոր քովը գնաց։ Սիրով և ուրախութեամբ ընդունեցաւ զինքը Տիւքիկոս, և ունեցած ուրիշ ամէն աշակերտներէն աւելի ուրախ եղաւ Շիրակացւոյն վրայ. վասն զի կ'ըսէր թէ «Ամենօք ես ալ շատ կեցեր եմ Հայոց մէջ, և աղէկ գիտեմ թէ ո՛րչափ մեծ կարօտութիւն ունին այսպիսի գիտութեան մը»։

Անանիա՝ իր վարդապետին սիրոյն և համարմանն արժանաւոր երևցաւ, կարգէ դուրս յառաջադիմութեամբը. անանկ որ աշակերտակիցքն սկսան նախանձիլ վրան։ Ութ տարի կեցաւ 'ի Տրապիզոն, և Տիւքիկոսի քով գտնուած ամէն տեսակ գրքերը, որոնց թարգմանութիւնը չկար մեր ազգին մէջ, կարդաց և հմտացաւ անոնց։

Մեծապէս կը գովէ Անանիա զՏիւքիկոս իր վարպետը. ոչ միայն համարողականին մէջ ունեցած հմտութեանը նկատմամբ, այլ նաև հայկականին. անանկ որ, կ'ըսէ, ո՛ր և իցէ օտար լեզուով գրուած գիրք ձեռքը առնուր՝ իբրև թէ հայերէն լեզուով գրուած ըլլար՝ անանկ կը կարդար։

Իրմէ համարողական ուսմանց ամէն մասունքը սորվե-

*ցաւ Շիրակացին, առանց ուրիշի մը ձեռնտուութեան, այլ միայն իր անխոնջ ջանքովը և անդադար յարատեւութեամբ։ Ետքը նոյն ուսումը բերաւ 'ի Հայաստան. «Թէպէտ և ոչ ոք եղև շնորհակալ իմոյ աշխատութեանս, կ'ըսէ. զի ոչ սիրեն Հայքս իմաստ կամ գիտութիւն, այլ ծոյլք են և ձանձրացողք»։ Վասն զի շատերն եկան իր քովը սորվելու համար. և հազիւ թէ քիչ մը բան վերիվերանց սորվելով, բաւական սեպեցին այնչափ գիտութիւնը, և սկսան մէկուն մէկալին վարդապետել. և որ դժնդակն էր վար զարնելով թէ զԱնանիա և թէ իր գիտութիւնը։ Այս բանիս վրայ դառնապէս կը գանգատի Շիրակացին։ Սակայն ունեցաւ քանի մը աշակերտք ալ՝ որ մեծապէս օգտուեցան իր գիտութեամբը. և ատոնց մէջ յանուանէ նշանաւոր եղած են Հերմոն, Տրդատ, Ազարիա, Եզեկիէլ և Կիրակոս։*

* * *

*Անանիայի գրուածները. — Շիրակացւոյն երկասիրութեանցը մէջ նշանաւորներն են*

*Աստեղաբաշխութիւն կամ Աստեղագիտութիւն, որ մեծ պատիւ կ'ընէ հեղինակին։ Գրչագիրք ընդհանրապէս պարզ Յաղագս երկնի կը կոչեն այս գիրքը, ոչ միայն անոր համար որ աստեղաբաշխական ուսմանց գլխաւոր ասպարէզն երկինքն է, այլ նաև անով որ հեղինակը գրքին սկիզբը կը սկսի երկնքի վրայ խօսիլ, և թէ ինչ այլ և այլ կարծիք ունեցեր են հին իմաստասէրք՝ երկնից և անոր ձևակերպելուն վրայ։ Անկէ ետքը երկրիս վրայ կը խօսի, և ապա կարգաւ՝ ծովու, երկնային զարդուց, երկնի և երկրի մէջ եղած շարժմանց, ծիր կաթին, լուսնի, արեգական, կենդանատեսակաց, աստեղաբաշխութեան, կենդանատեսակ բոլորատեսութեան կամ կենդանակերպից, և խառնարան աստեղաց վրայ։ Բայց մեր ձեռքը*

հասած գրչագրաց մէջ՝ պակասաւոր կը թուայ այս ընտիր և օգտակար երկասիրութեան շարայարութիւնը[1]։

* * *

*Շիրակացւոյն աստեղաբաշխական կարծիքը*. — Անանիա եօթը պարունակ կը բաժնէ զերկինս, և սաղմոսեղաց գօտիք կը կոչէ այն պարունակները. Այս եօթն գօտիները կամ պարունակքն են այրեցանող գօտի կամ շարաճիւսակ, մեծասիր գօտի, խառնարան գօտի կամ եբեր, յորում կը դնէ զարեգակն, գեղեցկական գօտի, յորում ակայումն մոլորակաց, և խոնարհ գօտի՝ որ միւս գօտւոյն մօտ է, ուր եթերն է, և անկէց կ'ըլլան հրացանութիւնք և փայլատակմունք, ամպոց խլրտմունք, անձրևք և բուսոց սնունդը։ Այս եօթն գօտիները իրարու հակառակ կը համարի Շիրակացին։ Երկնից ու երկրի վրայ ընդհանրապէս ուղիղ և ուսումնական կարծիքներ ունի. թէպէտ և երբեմն հին յոյն իմաստասիրաց գրութիւնները պախարակելով, կը ստիպուի դէմ խօսիլ այն կարծիքներուն՝ որ ըստ ինքեան ուղիղ են, և սուրբ գրոց՝ միայն առ արտաքս դէմ երևնալնուն պատճառաւ՝ հին հարց առջև արհամարհելի սեպուած են։ Բայց ինքը Շիրակացին ընդհանրապէս սրբոյն Բարսղի հետևող է, որ ինչպէս յայտնի է իր գրուածներէն՝ սուրբ հարց մէջ ամենէն աւելի ուսումնական հանճարն է։

Ծովու վրայ խօսելով՝ վար կը զարնէ Անանիա հին

1. Նոյն օրինակն է տպագրութեամբ հրատարակեալն 'ի Փեթերպուրկ Ռուսաց 'ի Ք. Պատկանեան բազմահմուտ բանասիրէ։ Էջմիածնի Մատենադարանին մէջ եղած օրինակը (թիւ գրչ. 2152) ամբողջ կ'երեւնայ. «Աստղաբաշխութիւն Անանիայի Շիրակացւոյ. — Նորին՝ Մեկնութիւն տոմարի և յաղագս կշռոյ և կշռորդացն և համարողականն»։ Բարձրահայեաց Ս. Աստուածածնի վանաց Մատենադարանին գրչագիրն ալ (թիւ 229 կը յիշատակէ իր անունովը «Անանիայի Շիրակունւոյ համարողի թիւք կշիռք»։

իմաստասիրաց այն կարծիքը որ կ'ըսէին թէ երկրիս չորս կողմը պատած է ծովը, և ծովուն մէջ՝ իբրև կղզի մըն է երկիրս. անանկ որ չորս կողմերնիս՝ մթնոլորտէն դուրս բոլոր ջուր է, և այն ջրոց անհուն և անսահման ընդարձակութեան մէջ՝ հաստատուած է երկիրս: «Իսկ ես, կ'ըսէ, բարի և ուղղախոհ իմաստասիրաց կարծեացը հետևող եմ որ կ'ըսէին թէ երկրէս դուրս ծով չկայ, այլ երկրիս մէջ եղած ծովերն են միայն, և իրարու հետ վերաբերութիւն կամ կցորդութիւն ունին, և այլ և այլ տեղեաց ու դիրից նկատմամբ՝ զանազան անուանք ունին»: Կը զանազանէ ծովակը ծովէն, և առջիններուն կարգը կը սեպէ Հրէաստանի մօտ եղող Ասփալդէս ծովակը (Մեռեալ ծով), զՍերբիոնիդիս՝ որ Եգիպտոսի և Պաղեստինի մէջ է, Բզնունեաց ծովակը՝ որ Հայաստանի մէջ է:

Խնդիր կը հանէ թէ ինչպէս կ'ըլլայ որ ծովը միակերպ միակշիռ կը մնայ, որովհետև ամենայն գետք և ուղխք 'ի ծով կը թափուին և չլեցուիր: Եւ կը պատասխանէ՝ թէ ասոր պատճառ՝ արեգական ջերմութիւնը սեպուեցաւ յիմաստասիրաց, որ իր գոլորշեօք կը ծծէ անոյշ, նուրբ և թեթև նիւթերը ու վեր կը հանէ զանոնք. իսկ թանձր և ծանր նիւթերը մէջը կը մնան, և անոր համար է որ ծովը միշտ դառն է: Համոզիչ և դիւրըմբռնելի օրինակ մը մէջ կը բերէ՝ կրակի վրայ դրուած ջրով լեցուն կաթսայն, և թէ ինչպէս ջուրը կը պակսի՝ գոլորշւոյն վեր ելլելովը. անանկ որ եթէ երկար ատեն կրակի վրայ թողուս, և մէջը նորէն ջուր չդնես, բոլորովին կը սպառի և կը լմննայ: Ծովու վրայ ճամբորդութիւն ընողները կ'ըսէ՝ երբոր ջրի նեղութիւն քաշեն, աղի և դառն ջուրը կ'առնուն, և կաթսայի մէջ դնելով՝ կրակի վրայ կը դնեն. կաթսաներուն վրայ ալ խուփի տեղ՝ սպունգներ կը դնեն. երբոր սպունգները՝ ջրոյն գոլորշեաւը ծանրանան, կը քամեն և անոյշ ջրի տեղ կը խմեն:

Ծիր կաթին վրայ խօսելու ատեն՝ կը մերժէ հին իմաստասիրաց այլ և այլ առասպելախառն կարծիքները, թէ ինչպէս ոմանք Պերսեփոնէի առագաստ կոչեցին, ոմանք հին արեգական ճամբուն հետքը համարեցան, ոմանք ալ ըսին թէ Հերակլէս նոյն ճամբէն վըընտեց զԱնտէոգերիոն[1]: Կ'աւանդէ նաև հին Հայոց դիցաբանութեան ժամանակի առասպելը ծիր կաթին համար, թէ խիստ ձմրան ժամանակ՝ Վահագն՝ Բարշամայ Ասորւոց նախնոյն յարդը գողցաւ, և ճամբան տանելու ատեն՝ գետին թափթըփած յարդերէն ձևացաւ այն լուսեղէն ճանապարհը· և թէ այս պատճառաւ Յարդգողի հետք կոչուեցաւ Հայոց մէջ այս ճամբան: Շիրակացին իր կողմանէ հիմակուան աստեղաբաշխից ուղիղ կարծիքը մէջ բերելէն ետքը՝ թէ յարդգողը բազմութիւն է աստեղաց, որոնք մեզմէ հեռու ըլլալնուն համար՝ իբրև մէկ լոյս մը կ'երևնան մեզի, մենք, կ'ըսէ, Եկեղեցւոյ վարդապետաց կը հետևինք՝ որ կ'ըսեն թէ ամենայն «զգայութիւնքս վերինք և ներքինք՝ ունին խառնուած միաբանութեան առ իրեարս, և է դա անզայտութիւն գօտեացն վերնոց, զթաղկեալ հնոյն նշոյլս հեղլով՝ ՚ի վայր, երևումն գործէ տեսողացն»: Այլ և այլ տեղեկութիւններ կու տայ նաև լուսնի, արեգական և կենդանատեսակաց վրայ խօսելուն ատեն, որոնց մէջ թէպէտ և վրիպական կարծիքներ ալ ունի, բայց կան նաև ուղիղ և ուսումնական տեսութիւնք[2]:

1. Ի տպ. Փեթերպուրկի շնորհիւ Գիւրեանի: Բարշամայ անուան տեղ ալ՝ ինչպէս կը գտնեն մեր Մատենադարանին ընտրելագոյն գրչագիրք, տպագիրն կ'ըսէ (յ'էջ 48)· «Ոմանք յառաջնոցն Հայոց ասացին՝ թէ խիստ ձմերանի Վահագն նախնին Հայոց՝ գողացաւ զյարդն Բարշամայ Ասորւոց նախնւոյն, զոր և մեք սովորեցաք քնախօսութեամբ Յարդգողի հետ անուանել»:

2. Այս երկասիրութեան Թ կամ վերջին գլուխը, զոր Շիրակացին կը կոչէ Պաւղոսի Աղեքսանդրացւոյ Նախերգան ՚ի Ներածութիւնն յայտ, թարգմանութիւն է ՚ի յունէ. և որուն բնագիրն լատին թարգմանութեամբ հրատարակեալ է ՚ի 1586 ՚ի Վիթթեմպերկ. լատինականին խորագիրն է; Paulus Alexandrinus: Introductio ad Astrologiam.



Շիրակացւոյն Աստեղագիտութիւնը մեծ յարգ ունէր մեր նախնեաց առջև՝ թէ իրեն պարզ և դիւրըմբռնելի ոճովը՝ և թէ մեր մէջ ուրիշ նմանօրինակ երկասիրութիւն չգտնուելուն համար։ Մագիստրոս՝ առ Պետրոս Գետադարձ կաթուղիկոս գրած թղթին մէջ՝ այնպիսի թախանձանօք կը խնդրէ այս գիրքը՝ որ յայտնի նշանակ է ունեցած մեծարանքին առաւելութեանը. « Համարձակիմք, կ'ըսէ, միշտ սովորեալ յառաջաձիր պարգեւ՝ ընդ կարևորսն և զպիտանացուս յարատևական բաշխելով քեզ, որ ոչդ երբէք դանդաղիս, հայցել 'ի քէն զգիրս Անանիայի Շիրակայնւոյ, որ բազում աշխատութեամբ և յածաչու խոնջմամբ հաւաքեալ 'ի բազմազան և յազնաբեղուն մատենից... յորում և ենթայակայացեալ են ոչ միայն քառիցն արուեստք, այլ բոլոր էակացն խոկմունս... կայացեալ ամենայն արուեստք մակացութեան։ Եւ նախադասեալ է թուականութեանն և երաժշտականութեան, որք են 'ի տարորոշ քանակէ տարակացեալք. նաև երկրաչափութեանն և աստեղաբաշխութեանն, որք են 'ի պարունակ քանակէ։ Եւ զկնի փայտորիկ յարամանեալք արուեստք և մակացութիւնք և մատենագրութիւնք. և գրեթէ ամենայն բոլոր վարժումն հռետորական... Եւ արդ քանզի սակս մատենին Անանիայի եղև յիշատակ իմաստասիրելոյս մեզ, բեր՝ ոչ ինչ խրթին և անյայտաբար կամիմք զհարցուած մեր ծանուցանել մերոյ լուսաւորչիդ. 'ի բազմաց անփոյթ եղելոյ այսպիսի գործառնութիւնք և հանդէպք. որ ոչ երբեք 'ի ստատին վարժելոց գրամարտկոսաց և քերթողաց հնացեալ՝ 'ի մոռացումն այսպիսւոյ մատենի եղև անկանել »։

*
* *

*Ժամանակագրութիւն.* — Ոչ այնչափ ստուգութեամբ՝ որչափ կարծեօք կրնանք ընծայել Անանիայի՝ ժամանակագրական երկասիրութիւն մը, Խորենացւոյն և Անդրէասայ խօսքերով և շարայարութեամբ՝ մինչև 'ի ժամանակս Շիրակացւոյն։ Ընտիր և օգտակար երկասիրութիւն մըն է ասիկայ, և մեր մէջ գտնուած համանուն երկասիրութեանց մէջ գլխաւոր, կամ գլխաւորներէն մէկը, թէ կարգաբանութեամբը, թէ ոճով և թէ հմտու́թեամբ։ Անանիայի ընծայելնուս գլխաւոր պատճառն ալ մէյմը այն է՝ որ ինչուան իր ժամանակը կը հասնի ('ի ՃԼԴ թուականն Հայոց) և հոն կը դադրի, մէյմ'ալ որ գրչագիրք անմիջապէս Անանիայի ուրիշ երկասիրութեանց ետևէն ասիկայ ալ կը շարայարեն՝ առանց անուան մատենագրի։

*
* *

*Ցաղագս կշռոց և չափուց.* — Այս անուամբ համառօտ երկասիրութիւն մըն ալ հասած է ձեռուընիս Անանիայի Շիրակունւոյ անուամբը. և որուն գլխաւոր նիւթն է՝ սուրբ գրոց մէջ յիշատակուած և գործածուած չափուց և կշռոց համառօտ մեկնաբանութիւն, ընդհանրապէս սրբոյն Եպիփանու Կիպրացւոյն հետևողութեամբ։ Որչափ ալ իմաստուն երկասիրութիւն մը սեպենք այս գրուածքը, և հեղինակին քննութեանց և տեսութեանց արժանաւոր, աւելորդ կ'երևնայ մեզի խօսքերնիս երկընցընել այնպիսի գրուածոց վրայ՝ որ ընդհանրապէս մատենագրութեան չեն վերաբերիր։ Յիշեցընենք միայն թէ Եպիփանու և Շիրակացւոյն այս գրուածները՝ հանդերձ կարևոր տեղեկութեամբք և դիտողութեամբք՝ տպագրուած են 'ի Վենետիկ՝ 'ի 1821, աշխատասիրութեամբ Հ. Յարութիւն Վ. Աւգերեան։

**վեցհազարեակ կամ Եօթնհազարեանք**. — Գրուածք մը՝ որուն յօրինողը ուզեր է Շիրակացւոյն անունով իր երկասիրութեան յարգ մը տալ. գտնալով ազգին մէջ անոր վայելած համարումն և մեծարանքը։ Բայց այս գիրքը այնչափ հեռու է Շիրակացւոյն ընծայուելու հաւանականութենէն, որչափ որ լուսաւորեալ էր անոր միտքը, և անկարելի որ այսպիսի անոճ երկասիրութիւն արտադրէր։

**Ընծաւոր գրուածներ**. — Անանիայի անուամբը ուրիշ քանի մը գրուածք կամ ճառեր ալ գտնուած են, որոնցմէ ոմանք իրենց ոճովը և ոմանք ալ իրենց հոգւով՝ Շիրակունւոյն հոգիէն և ոճէն կը հեռանան, և անշուշտ ուրիշ համանուն վարդապետաց երկասիրութիւնք են։ Ասոնց կարգէն են Յաղագս զղջման և արտասուաց ճառ մը՝ 'ի խնդրոյ Գրիգորի միայնակեցի. ուրիշ ճառ մըն ալ Յաղագս խոնարհութեան։ Քրիստոսի ծննդեան և Զատկի տօնին վրայ հակաճառական գրուածներ՝ Յունաց և անոնց հաւատոց և վարդապետութեանցը դէմ։ Այս ճառից խորագիրքն են. «Անանիայի Շիրակայնւոյ Համարողի ասացեալ 'ի Յայտնութիւն Տեառն և Փրկչին մերոյ։ — Անանիայի Շիրակայնւոյ Համարողի ասացեալ 'ի Զատիկն Տեառն»։

Գրչագրաց ցուցակաց մէջ ուրիշ երկասիրութիւն մ'ալ կը տեսնենք՝ Անանիայի անուամբը. «Անանիայի գիր խոստովանութեան յաղագս սուտ կարծեաց 'ի վերայ նորա, և բացայայտութիւն թուոց»։ Այս վերջին խօսքը՝ հաւանական կ'երևցընէ մեզ Շիրակունւոյն ընծայել զայն, և ոչ ուրիշ նոյն անունը կրող վարդապետի մը։

Յովհան կաթուղիկոս կ'աւանդէ թէ Անաստաս Հայրապետը ուզելով որ Հայոց ազգին տումարն ալ՝ ուրիշ ազգաց տումարին պէս անշարժ ըլլայ, գլխաւորաբար սրբոց տօներուն դիւրութեանը համար, իրեն կանչեց զԱնանիա, և յորդորեց որ այս բանիս մէկ ճարը տեսնէ։ Եւ Իսկը երբ եպիսկոպոսաց մասնաւոր ժողովք ալ գումարելով՝ կը փափաքէր այս բանս յառաջ տանիլ, մահը

վրայ հասաւ. ու թէ՛ բաղձանքը և թէ անոր գործադրութիւնը անկատար մնաց։

Իմաստասիրական և ուսումնական գրութեանց յատուկ ոճ մը կը բանեցընէ Շիրակացին. և ինչպէս ուսմանը՝ նանկ ալ լեզուին գլխաւոր հեղինակը սեպուած է արժանապէս։ Փափաքելի էր տեսնել 'ի նմա՝ աւելի ճշդութիւն 'ի կարծիս և պարզութիւն 'ի բացատրութեան, որով յաճախ մութ և անիմանալի կը մնան յետագայից։

Ազգային պատմչաց թուոյն մէջ տեղ մը յիշատակուած կը գտնենք նաև զՇիրակացին, հետևեալ խօսքերով նշանակելով նաև գրուածքին նիւթը. «Սկիզբն արարեալ յԱդամայ համառօտ գաւազանաւ՝ իջանէ մինչև 'ի ժամանակս Անաստասայ կաթուղիկոսի»։ Թերևս կամ վերը յիշուած ժամանակագրական երկասիրութիւնն, և կամ Կայսերաց պատմութիւն կոչուած ընտիր գրուածք մը ուզենան ակնարկել, որուն հատուածք հասած են մինչև առ մեզ՝ հետագայ խորագրով. Կայսերք Հռոմայեցւոց թէ որչափ ամս կալան ժամանակս, և զինչ գործ գործեցին, զոր օմանք Շիրակացւոյ կ'ընծայեն և այլք Ուխտանիսի։

# ՎՐԹԱՆԷՍ ՔԵՐԹՈՂ

---

*Վրթանէս քերթող։ — Ընդդէմ Պատկերամարտաց ճառ։ — Զանազան նամակներ Վրթանայ անուամբ։ — Գրիգոր քերթող։*

Վեցերորդ դարուն վերջերը կամ 'ի սկիզբն եօթներորդին կը յիշատակուի Վրթանէս Քերթող, որուն անուամբն հասած է առ մեզ համառօտ՝ բայց ոճովն ըն-

տիր և Նիւթոյն հետաքննական գրուած մը Ցաղագս Պատկերամարտաց կոչուած ։ Այս աղանդոյն հետևողք՝ 'ի Բիւզանդիոնէ՝ ուր սկսաւ, և 'ի Հռոմոց աշխարհէ՝ ուր ճարակեցաւ, մինչև 'ի Հայաստան մուտ և յոմանց նաև ընդունելութիւն գտնելով, իրենց դէմ սրեցին Քոթենաւորն Թէոդորի ու իր պանծալի հռչականուն աշակերտին Իմաստասիրին լեզուն ու գրիչը անոնց դէմ, « որք չարեաց 'ի չարիս վերացեալ ելին, կ'ըսէ Օձնեցին, 'ի պատկերամարտութենէ 'ի խաչամարտութիւն և 'ի քրիստոսատեցութիւն ». և Վրթանէս Քերթող ալ այս գրուածքին մէջ կը վկայէ թէ « մթաւորական ուսմանց խոհալք, որք չրջին յաղջամուղջ խաւար ընդվայրայածք չաղեալք՝ ուսանին զանհեթեթս, պատրեն զսիրտս անմեղացն, և մուծանեն հերձուածս յեկեղեցի ». ու հին և նոր կտակարանաց խօսքերով ու պատմական վկայութեամբ անոնց մոլորութիւնները ըմբերանելէն ետքը, յոյն եկեղեցւոյ վարդապետութիւնն ալ մէջ կը բերէ յՈսկեբերանէ, 'ի Սեւերիանոսէ, յԵկեղեցական պատմութենէ Եւսեբեայ . ապա նաև Գրիգորի Լուսաւորչի խօսքերը և Հայոց եկեղեցւոյն սովորութիւնն՝ անդստին յընդունելութենէ հաւատոց սրբութեան, թէ ինչպէս « յեկեղեցիս քրիստոնէից և յարկս վկայից Աստուծոյ տեսանեմք՝ նկարեալ զսուրբ Գրիգոր, և աստուածահաճոյ չարչարանս իւր և սուրբ առաքինութիւնս ; և զՍտեփանոս նախավկայ 'ի մէջ քարկոծչացն, զերանելի և զփառաւոր կոյսն սուրբ զԳայիանէ և զՀռիփսիմէ հանդերձ ամենայն ընկերօքն և յաղթող նահատակօք » ։ Իսկ որովհետև հակառակողք կ'ըսէին թէ չկար առ հինսն մեր այդ սովորութիւն, և թէ Պապ թագաւոր 'ի Յունաց աշխարհէ եմոյծ զայն 'ի Հայաստան, կը պատասխանէ . « Այդ ամենեցուն յայտնի է թէ սուտ խօսին ։ Քանզի 'ի Հայս պատկեր ոք չգիտէր առնել մինչև ցայժմ, բայց 'ի Հոռոմոց բերէին . և մեր ուսմունքն անտի էին, և եթէ նոքա չէին կորուսեալ, և քան զՊապ յառաջ այլ թագաւորք

էին, և պատկերս և նկարս առնէին յեկեղեցիս յանուն Քրիստոսի. և դարձեալ զկնի Պապայ և այլ թագաւորք եղեն 'ի Հայս, և հայրապետք՝ որպէս երանելի սուրբն Սահակ և Մեսրոպ և Եզնիկ և Արձան և Կորիւն և ընկերք նոցա. որ և 'ի ձեռն իսկ նոցա Հայոց դպրութիւն շնորհեցաւ 'ի տեառնէ Աստուծոյ. և ոչ ոք 'ի նոցանէ վասն պատկերաց և նկարուց եկեղեցւոյ բանս ինչ ոք արար. բայց միայն պէղծն մոլին Թադէոս և Եսայի և ընկերք նոցուն » ։

* * *

Վրթանայ Քերթողի անուամբ, որ սրբոյն Գրիգորի տեղապահ ալ կոչուած է, այլ և այլ նամակներ կան թէ առ Ուխտանէս պատմըչի, և թէ թղթոց հաւաքմանց մէջ առ զանազանս, հաւատոց վերաբերեալ նիւթերու վրայ. և մանաւանդ իր դարուն երևցած իսկական կամ ենթադրեալ հերձուածոց կամ մոլորութեանց դէմ։ Ասոնց մէջ է Շրջագայական կոչուած թուղթ մը ուղղեալ « Սըրբասիրաց ուղղափառաց և ճշմարտից և վանաց երիցանց և գեղջ քահանայից, ազատաց և շինականաց, ծերոց և տղայոց համօրէն ամենայն ժողովրդականաց հայալեզու աշխարհացդ որ էք ընդ իշխանութեամբ եկեղեցւոյն Ցուրտաւայ, 'ի Վրթանիսայ և յայլ պաշտօնէից սրբոյ եկեղեցւոյս » ։ Այս թղթին պատասխանը կ'ընդունի Վըրթանէս, յորում գոհութեամբ կը վկայեն թէ « Տեառք զթուղթ ուղղափառ 'հաւատոյ ձերոյ և լուաք զողջոյն ձեր... և որպէս երկիր ծարաւի 'ի բազում երաշտութենէ պապքեալ, ընդունելով անձրև շայեկան... յիշեցուցանելով սուրբ և զուղիղ հաւատն զոր մեծին սրբոյն Գրիգորի սերմանեալ էր յայս 'ի կաւկասային կողմանս » ։ Ցուրտաւայ եպիսկոպոսն Մովսէս կը գրէ թուղթ մը առ Վրթանէս, և կ'ընդունի իրմէն պատասխան. « Զգիր ողջունի սրբութեան քո ընկալեալ, ՝կ'ըսէ, զԱստուծոյ գո-

հացաք. և ուրախ եղեաք որ տէրդ պահպանութեամբ ամենասուրբ Երրորդութեանն ողջ է »։

Թուղթ մ'ալ կը գրէ առ Պետրոս եպիսկոպոս, զոր 'ի սկիզբն Նամակին կը կոչէ « Փառաւորելոյ տեառն Պետրոսի, աստուածաշնորհ պարգեւօք պայծառացելոյ, 'ի Վրթանիսայ և 'ի միաբանական սրբոյ եկեղեցւոյ պաշտօնէից՝ տերամբ ողջոյն »։ Նամակ մ'ալ առ Կիւրիոն Վրաց կաթուղիկոս, միւս մ'ալ 'ի պատասխանի երրորդ թղթոյն զոր ուղղեր էր առ Մովսէս եպիսկոպոս։ Այսչափ փոփոխակի գրուած և ընդունուած գրութեանց և Մովսէս կաթուղիկոսի մահուանն առթիւ գումարի ժողովն Դըւնայ, ուր հաւատոց ուղղութեան համար կանոններ կ'առաջարկուին և կը սահմանուին, և զորս իրենց ձեռնագրով կը վաւերացընեն Թէոդորոս Մարդպետական, Յովհաննէս Արծրունեաց, Քրիստափոր Սիւնեաց, Մանասէ Բասենոյ, Աբրահամ Ռշտունեաց, Յովհաննէս Ամատունեաց, Գրիգոր Անձեւացեաց, Սիոն Գողթան, Ահարոն Մեհնունեաց, Ներսէս Բաժունեաց, Յոհանիկ, Թադէոս եպիսկոպոսունք. « եպիսկոպոսք յիսուն, ինչպէս կ'ըսէ, հարք և քահանայք երեքհարիւր և վեց, կամօք և այլոց. հաստատել սահմանս կանոնականս »։

Վրթանայ Քերթողի անունը կրող թուղթ մ'ալ կայ 'ի գրչագիրս առ Աղուանս, իրենցմէ առ Հայս գրեալ Նամակին պատասխան, 'ի դիմաց Աբրահամու կաթուղիկոսի, և եպիսկոպոսացն Թէոդորոսի Մարդպետական, Դաւթի Սիւնեաց, Ստեփանոսի Բագրեւանդայ, Մովսիսի Խորխոռունեաց, Քրիստափորի Ապահունեաց, Մատթէոսի Ամատունեաց, և « յայլ եպիսկոպոսաց և յուխտէ սրբոյ եկեղեցւոյ, և յազատ մարդկանէ և 'ի ժողովրդականաց »։

*
* *

Այս առեններս կը յիշատակուի նաև Գրիգոր Քերթող, որուն մէկ Նամակն հասած է առ մեզ ուղղեալ առ

Աբրահամ կաթուղիկոս՝ և նոյն նպատակ ունենալով հաւատոց համար յուզուած խնդիրներ։ Այն վախճանաւ գրուած են նաև այլ և այլ նամակներ «'ի Սմբատայ Գուրկան (կամ Վրկան) մարզպանէ և տերանց զինուորէ, և 'ի Գիգայ Գաշտկարանէ, և 'ի Վարդապետէ Հայոց Շաղաաղարէ և յայլ ազատորերոյ» առ Կիւրիոն Վրաց կաթուղիկոս և Ատրներսեհ իշխան և առ Մովսէս եպիսկոպոս, և անոնց պատասխանններն։ Եղած խնդրոց, վիճմանց և հակառակութեանց լուծումը տալու համար՝ Աբրահամ կաթուղիկոս գրած է Շրջագայական թուղթ մը, և որ նախընթացից հետ հասած է մինչև առ մեզ։

# ԹԷՈԴՈՐՈՍ ՔՌԹԵՆԱՒՈՐ

---

*Քռթենաւորի վարքը։ — Ճառ ընդդէմ Մայրագոմեցւոյն։ — Ուրիշ ճառեր։ — Գրութեան ոճը։*

Իսրայէլ կաթուղիկոսին ժամանակ ծաղկիլ սկսաւ Թէոդորոս անուամբ խարազնազգեաց և սրբակրօն ճգնաւոր մը՝ Քռթենաւոր կոչուած, թէ՛ հայկական և հելլենական գիտութեամբքը և թէ աստուածային ուսմամբը նշանաւոր, իմաստութեամբն և առաքինութեամբ անուանի։

Արագած լերան ստորոտը կառուցուած Սուրբ Աստուածածին վանքին վանահայր եղաւ, և հոն շատերը աշակերտեցան իրեն. որոնք ետքը թէ՛ իրենց վարդապետին և թէ ազգային գրականութեան պարծանք եղան։

Իր աշակերտաց մէջ յանուանէ նշանաւոր եղան՝ Սահակ և Յովհաննէս Իմաստասէր՝ որք յետոյ կաթուղիկոս եղան. այս ետքինս մեծապէս կը դրուատէ իւր վարդա-

պետը, և իբրև յԱստուծոյ իրեն եղած մասնաւոր շնորհք կը համարի՝ այնպիսի մարդու մը աշակերտիլը։ Ոմանք կ'աւանդեն թէ այս Թէոդորոսս ըլլայ՝ Կոմիտաս կաթուղիկոսին եղբօրորդին և Եզրի քեռորդին, որ Սիւնեաց հռչակաւոր վարդապետանոցը գնաց սորվելու, և Մաթուսաղայի աշակերտեցաւ՝ ինչպէս վերն յիշեցինք։

***

Թէոդորոսի ժամանակներն սկսան զօրանալ Մայրագոմեցւոյն աշակերտեալքը, և իրենց մոլորական ու վնասակար վարդապետութիւնքը սերմանել. և ստիպեցին զՔաթենաւոր՝ որ իր հանճարովը և աստուածապաշտ եռանդով անոնց դէմ դնէ։ Այս վախճանաւ յօրինած է ընդդէմ Մայրագոմեցւոյն ճառը, որով անոր հետևողացը՝ սուրբ հաւատոց որչափ վնասակար ըլլալնին կը ցուցընէ, և թէ վարքերնին՝ իրենց արտաքին խոշոր ձևոյն և ճըգնութեանը դէմ է բոլորովին։ Հակառակորդաց այլ և այլ առարկութիւնները մէջ բերելով՝ կը հերքէ զանոնք, և Բանին Աստուծոյ մարդեղութեան հրաշալի խորհուրդը զօրաւոր փաստերով կ'ապացուցանէ. և զնոյն կը հաստատէ նաև Յունաց բազմաթիւ աստուածաբան հայրապետաց վկայութեամբը, ինչպէս Բարսղի, Գրիգորի աստուածաբանի, Ոսկեբերանի, Եպիփանու Կիպրացւոյ, և այլն։ Վերջը առ մոլորեալսն կը դարձընէ խօսքը, յորդորելով զիրենք որ դառնան 'ի ճանապարհս ուղղութեան։

Այս ճառով Քաթենաւորը հանճարի տէր, և ճարտարախօսութեան ձիրքն ունեցող կ'երևնայ. հմուտ սուրբ գրոց և հարց, և արտաքին իմաստասիրութեանց ալ լիուլի տեղեակ. հայկական լեզուի հմտութեամբն ալ ոչ աննշան, իրեն յատուկ ոճովը և բացատրութեամբ, մանաւանդ եթէ յունաբանութիւնք յաճախ՝ չըլլային, և իմաստից և բառից խրթնութիւնք և բարդութիւնք, որոնցմով ոճոյ

պարզութիւն և գրուցուածքի յստակութիւն փնտռողաց համար կը պակսեցընէ իր գրուածոց յարգը։ Այս թերութիւնքն առաւելապէս կ'երևնան հետագայ երկասիրութեանց մէջ։

* * *

Ներբողեան 'ի սուրբ Խաչն Աստուածընկալ. — Ընտիր և գեղեցիկ իմաստներով, և հետևողութեամբ Դաւիթ Անյաղթի համանուն գրուածքին։

Գովեստ 'ի սուրբ Աստուածածինն և 'ի կոյսն Մարիամ. — Խաչի ճառին զուրցուածքէն շատ աւելի խրթին լեզու մը կը բանեցնէ Թէոդորոս այս գովասանութեան մէջ. անոր համար բանասէրներէն ոմանք կը տարակուսին հարազատութեանը վրայ. այլ կամ նոյն անունն ունեցող ուրիշ վարդապետի մը կու տան, և կամ Թադէոս անունով մէկու մը, որուն ուրիշ քանի մը ներբողական գրուածները ձեռուընիս հասած են, նոյն դժուարիմանալի լեզուով և խրթին կամ աւելորդ բառերով։

Հարկ է կրկին յիշեցընել թէ Քռթենաւոր՝ որչափ ալ պարծանք սեպուի մեր հայկական դպրութեանց իբրև սկզբնագիր հեղինակ մը, հետևողութիւնը զգուշալի է համբակաց, որովհետև այսպիսի երկասիրութիւնք կրնան ախորժակը կրթելու տեղ՝ վնասակար ըլլալ, և միանգամայն լեզուներնուս վայելչութիւնը խանգարել, որուն գեղեցկութիւնը և հոգին՝ իր պարզութեանը մէջ է։

* Քռթենաւորի ճառերը տպագրուած են 'ի Վենետիկ 1833ին, Նախնեաց մատենագրութեան զատակարգութեանը մէջ։

# ՄՈՎՍԷՍ ՍԻՒՆԵՑԻ

---

*Մովսէս Քերթող։ — Իր անձին և գրուածոց վրայ կարծիք։ — Քերականական երկասիրութիւնք։*

Այս դարուս մէջ ծաղկեցաւ Սիւնեաց եպիսկոպոս մը՝ Մովսէս անունով, որ յունական դպրութեանց, և մանաւանդ հայկական հռետորութեան տեղեակ ըլլալուն համար՝ քերթող և քերթողահայր կոչուեցաւ։ Ձեռագրաց մէջ շատ քերականական և ճարտասանական գրուածներ կան՝ որ ասոր կ՚ընծայուին։ Ոմանք Խորենացւոյն անուամբը ծանօթ՝ Պիտոյից գիրքը՝ ասոր ուզեցին սեպել. բայց այս կարծիքս ընդհանրապէս անհաւանական կ՚երևնայ. մանաւանդ թէ այլք՝ ինչուան Քերականի մեկնութեանց մէջ գտնուած երկասիրութիւնները Խորենացւոյն կ՚ուզեն ընծայել. որովհետև ազգերնուս մէջ տիրապէս Մովսէս Քերթող միայն Խորենացին կոչուած է. անշուշտ այս պատճառաւ է որ Կիրակոս՝ Խորենացւոյն կ՚ընծայէ զանոնք։ Ուռպէլեան՝ որ Սիւնեաց ամէն փառացը հանդիսացընող է և պատեհ չփախցըներ զանոնք գովելու, այս Մովսէսը՝ որ Սիւնեաց իննևտասներորդ եպիսկոպոսն է և Ստեփանոսի Սիւնեցւոյն ուսուցիչ՝ Քերթող անուամբ յիշած չէ։

Այս խնդրոյս վրայ՝ պէտք եղածը գրուցեր ենք Խորենացւոյն վրայ խօսած ատեննիս։

# ԳՐԻԳՈՐ ԱՐՇԱՐՈՒՆԻ

---

*Գրիգոր Արշարունի։ — Ընթերցուածոց մեկնութիւն։ — Որուն խնդրանօք այս երկասիրութեան ձեռք զարնելը։ — Հայերէն լեզուն և ոճը։*

Վահան Կամսարականին ժամանակ անուանի եղաւ Գրիգոր կամ Գրիգորիս անունով մէկը, որ 684ին Սահակ կաթողիկոսէն Արշարունեաց եպիսկոպոս ձեռնադրուեցաւ։ Ետքը նոյն Վահանայ Կամսարականի խնդրանօքը՝ Ընթերցուածոց գեղեցիկ մեկնութիւն մը շարագրեց, երեսունեւչորս կամ երեսունեւհինգ գլխոց մէջ ամփոփուած, ընտիր լեզուով և իմաստներով։ Հմտաբար և վայելուչ ծանրութեամբ կը խօսի թէ ազգային և թէ Յունաց տօներուն վրայ, և հարկ սեպելով ազգայիններն արդարացընել այնպիսի փոփոխութեանց համար՝ որ չեն մասն հաւատոյ, կը պաշտպանէ իրենները, առանց վար զարնելու կամ նախատելու զուրիշները։

Շարագրութիւնը հայկաբան և ընտիր, և հետևողութեան յարմար, մանաւանդ վարդապետական ոճոյ մէջ. յորում մերթ Մամբրէի և Եղիշէի կերպը փոխ կ՚առնու, և մերթ Շնորհալւոյն համբոյր և քաղցր լեզուին նախագաղափարը կու տայ։ Սամուէլ Կամրջաձորեցի կ՚աւանդէ թէ Յովհան Իմաստասիրին խնդրանօքը շարագրած ըլլայ այս գիրքը. Աստղիկ ալ՝ Ներսեհ Կամսարականին հրամանաւը։ Յառաջաբանին մէջ՝ որ գեղեցիկ օրինակ է ընծայականի՝ մեծապէս կը դրուատէ Արշարունին զՎահան պատրիկ Կամսարական, թէ հասակաւ և թէ իմաստու-

թեամբ ծերունի կոչելով զինքը, և իբրև թագաւոր մը՝ պարգևեալ յԱստուծոյ ազգերնուս. անոր համար չկրցայ, կ'ըսէ, քու հրամանիդ դէմ կենալ. և որչափ որ մտացս աղքատութիւնը ներեց՝ քու փութով յինէն պահանջած խնդիրքդ՝ յամր քեզի ընծայեցի։

Այսողիկ՝ Ներսէհ Կամսարականին վրայ խօսած ատեն, «Ի սորա աւուրս, կ'ըսէ, պայծառանայր Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոս՝ փիլիսոփայական արուեստիւ», և կ'աւանդէ թէ Յովհաննու Օձնեցւոյն 'ի Մանազկերտ գումարած ժողովքին վարդապետաց մէջ գտնուեցաւ նաև «Գրիգորիս փիլիսոփայ՝ քորեպիսկոպոս Արշարունեաց»։

## ՓԻԼՈՆ ՏԻՐԱԿԱՑԻ

---

Տիրակացւոյն ժամանակը։ — Յօրինած եկեղեցական պատմութիւնը։ — Սոկրատ Սկոլաստիկոս։ — Փիլոնի գրութեան ոճը և իր պատմութեան շարունակութիւնը։

Անաստաս կաթուղիկոսին ժամանակ ծաղկեցաւ Փիլոն Տիրակացի կամ Շիրակացի [1], որ Ներսէհ Կամսարականին խնդրանօքը՝ Սոկրատ Սկոլաստիկոս նոյն եկեղեցական պատմաբանին գրուածքը թարգմանեց 'ի հայ։ Եօթն գիրք բաժնուած է այս երկասիրութիւնը. և Եւսեբիոսի համանուն գրոց շարայարութիւնը կրնայ սեպուիլ. Կոստանդիանոսի մահուընէն ինչուան փոքուն Թէոդոսի կայսրութիւնը հասցընելով, որուն ժամանակակից էր Սոկրատ։

1. Յոմանց նաև Թրակացի կոչուած։

Փիլոն այս աշխատասիրութեան մէջ որչափ ալ ջանացած է ընտիր լեզու և մատենագրական ոճ գործածել, հաւատարմութեան կողմանէ չէ կրցած անպարսաւ մնալ, այլ հեղինակէն դուրս, և իրեն բերնովը՝ այլ և այլ պատմութիւններ մէջ բերած է թէ՛ ՚ի հայ գրոց, և թէ մանաւանդ յասորի պատմութեանց. Փլաբիանոսի, Եւտիքէսի ու Եփեսոսի երկրորդ ժողովոյն վրայ խօսք ընելով յորում ժամանակի արդէն մեռած էր Սոկրատ։ Կրնայ ըլլալ որ այս բանս գրչագրաց աղաւաղութենէն ալ առաջ եկած ըլլայ, և այն ատեն թարգմանիչը կ'արդարանայ։ — Իբրև ինքնագիր երկասիրութիւն, և ոչ ՚ի կարգս թարգմանութեանց սեպելնուս, և յիշատակն ընելնուս պատճառն այս է։

## ՍԱՀԱԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ

---

*Ձորափորեցի Սահակ կաթողիկոս։ — Առ Մոհմատ Հագարացի իշխանն գրած թուղթը։ — Իրեն ընծայուած երկասիրութիւնք։*

Քռթենաւորին աշակերտ էր Սահակ Ձորափորեցի, որ 677ին կաթուղիկոսութեան աթոռը նստաւ. և իր խոհականութեամբն և իմաստութեամբը ամենուն յարգի և պատկառելի եղաւ։

Ցովհան կաթուղիկոս կ'աւանդէ թէ երբ ՚ի Դամասկոս գերի էր այս սուրբ հայրապետը, Սմբատ իշխանն մասնաւոր աղաչանաց թուղթ գրեց անոր, խնդրելով որ երթայ Հագարացւոց Մոհմատ ոստիկանին սիրտն իջեցընէ, որ, բազմաթիւ զօրքով Հայոց վրայ պատերազմի կ'երթար,

Ցանձն առաւ Սահակ. բայց երբոր Խառան հասաւ, հիւանդանալով՝ իմացաւ թէ ալ իրեն համար բժշկութեան յոյս չկայ, ու Արաբացւոց լեզուով աղաչանաց գիր մը գրեց առ նոյն ինքն Մոհմատ, և իրեն մարդկանցն ալ պատուիրեց՝ որ երբ մեռնի՝ նոյն թուղթը իր ձեռքին մէջ դնեն, և երբոր ոստիկանը գայ՝ տան որ կարդայ։ Ցոյս ունէր թէ մեռելի մը ձեռքէն աղաչանաց գիր ընդունելովը՝ սիրտը շարժի, ու միտքը դրածէն ետ կենայ։ Մոհմատ երբոր լսեց թէ կաթուղիկոսն իրեն գալու ատենը մեռեր է, արգիլեց որ չթաղեն. ու ինքն 'ի Խառան երթալով՝ երբ մտաւ այն սենեակը՝ յորում երանելւոյն մարմինը դրուած էր, իբրև կենդանւոյ ողջոյն տուաւ իրեն. անիկայ ալ՝ ինչպէս կ'աւանդեն պատմիչք, բարևն ընդունելով՝ ձեռքն երկընցուց որ թուղթը մատուցանէ։ Զարմացաւ ոստիկանը, ու կարդալով անոր աղաչանքը, կատարեց խնդիրքը։ Այս թղթին հարազատ թարգմանութիւնը պահած է Ղեւոնդ երէց՝ իր Պատմութեան գրոցը մէջ։

Շարականաց հին գրչագիրք՝ ընդհանրապէս իրեն կ'ընծայեն Նաւակատեաց և սուրբ Խաչի շարականներն, որոնք գերազանց բանաստեղծութիւններ են։ Նոյնպէս իրեն կ'ընծայուի Արմաւենեաց կամ Ողոգոմեան (Ծաղկազարդի) տօնախմբութեան վրայ ճառ մը, ընտիր ոճով և շարագրութեամբ, տպագրած 'ի Վենետիկ 1834ին [1]։

1. Գրչագրաց մէջ՝ մերթ պարզապէս կը յիշատակուի. «Աստուածախնհակայ յաւուր արմաւենեաց, որ է ողոգոմեան»։

# ԴԱՐ Ը

## ՅՈՎՀԱՆ ԻՄԱՍՏԱՍԷՐ

*Իմաստասիրին մանկութիւնը։ — Քռթենաւորի աշակերտիլը։ — Կաթողիկոսական աթոռը բարձրանալը։ — Անտեսարանութիւն։ — Ճառ ընդդէմ Երեւութականաց։ — Ընդդէմ Պաւղիկեանց ճառը։ — Գործածած լեզուի ընտրութիւնը եւ ոճ։ — Ուրիշ երկասիրութիւնք։ — Եկեղեցական կանոնադրութիւնք։ — Երկրայական գրուածներ։ — Իր ճառից բնագրին տպագրութիւնք եւ թարգմանութիւնք։*

Տաշրաց գաւառին Օձին կամ Օձուն գեղջէն էր Յովհան, եւ մանկութեան հասակէն աշակերտած Թէոդորոսի Քռթենաւորի, որ անոր մատաղ եւ թարմ մտացը վրայ՝ ապագայ հանճարոյն կնիքը եւ մեծութեան նշանակը դըրոշմուած տեսնելով, ամէն ջանքն ըրաւ որ ընտիր դաստիարակութեամբ արգասաւոր ընէ այն միտքը՝ որ տարիքը առնելէն ետքը կրցաւ իբրեւ զնոր ոմն Սողոմոն պարծենալով զրուցել. « Մանուկ էի մտավարժ՝ եւ ոգւոյ բարւոյ դիպեցայ » [1]։ Այնչափ մեծ էր Քռթենաւորին խնամքը

1. « Սուրբ հայրապետն Յովհաննէս էր 'ի գաւառէն Տաշրայ՝ որ արդ կոչի Լօռի, 'ի գիւղաքաղաքէն Աւձնոյ, յազգաս տանէ, քաջաբոյս,

իր աշակերտին վրայ, որ ինքն Իմաստասէրն կը գրուցէ. « Ոչ զառ յինքենէն ևեթ բաւականանայր շտեմարանել յիմումս ոգւոյ զբարին, այլ և 'ի յոլովից զպայծառագոյնսն ծաղկաքաղ առնելով զշնորհաց, լիացուցանել զագահութեանն իւրոյ ինև ջանայր զուսումնասիրութիւն »: Ժամանակը՝ Յովհաննու մտացը վրայ իր զօրաւոր ազդեցութիւնն ընելով, անոր հանճարոյն և իմաստութեանը վրայ սքանչացող ազգայինքն՝ սրբոյն Գրիգորի աթոռոյն ժառանգ ըրին զինքը, կաթուղիկոսական պատուով մեծարելով:

Մեր Նախնեաց մէջ՝ իր վրայ զարմացողաց մէկը, այսպէս կը դրուատէ զինքն.... « Մեզ բաւական համարելի է զաակաւսն ի բազմաց, զոր ունին գիրք յիշատակարանաց, և գլուրն դիպողական յաւանդութեանց, և անտի կազմեցաք բարեբաղդ առագաստի մեծին Յովհաննու հիւսմկ պսակի. որպէս ասէ քաջն Պինդարոս իբրև զփունջ մի վարդի ընկենլով զայն ի գոգս կաթողիկէ եկեղեցւոյ. ի փառս անմահ փեսային Աստուծոյ մերոյ Յիսուսի: Արդ հայրն մեր աստուածապարգև և հայրապետն փառազգեաց Յովհաննէս էր, որպէս գիրք պատմագրաց ցուցանեն, աշխարհաւ երկոտասաներորդ ի Գուգարաց, գաւառաւ չորրորդ ի Տաշրոյ, բնակութեամբ ի Նշանաւոր գիւղաքաղաքէն Ուձնայ 'ի յարենէ ծննդեան յազատ տանէ: Քաջարոյս գոլով մանուկ և ուշիմ 'ի վարժս կրթութեան, հռետորական ուսման և փիլիսոփայական արհեստ-

վայելչագեղ, և գեղեցկատես. ուշիմ և հանճարեղ 'ի վերա հզնողական և յիմաստ կրթութեան, հռետորական ուսման և փիլիսոփայական արուեստից: Ձախս ողջային մանկութեանն առ հանճարեղս ընծայեցանէր: Վասն որոյ առեալ զիմաստասիրականն անուն... Երթայր այնուհետև հաւանդեաշարժ սիրով, ազգմամբ հոգւոյն սրբոյ առ մեծ հզնաւորն և անուանի վարդապետն Թէոդորոս՝ Քռթենաւոր կոչեցեալ, և յանձն առնոյր զխոշոր և զնուրբ վարս նորա յաւելուածովք. որով և զխորգն դարկհանձև զգենոյր ծածկաբար մինչև ցկատարումն կենաց իւրոց »: Ի Ցայսմաւուրս:

տից պարապեալ. զտիս տղայութեան անցուցանէր առ հանճարեղս, քանզի գոյր յայնժամ այսպիսի ուսման դըպրոցք յաշխարհիս Հայոց և Յունաց և Ասորոց ճարտարաց. յաղագս որոյ առեալ և զիմաստասիրական անունն կոչմամբ և արդեամբ զարդարեալ ամենայն առաքինութեամբ։ Երթայր այնուհետև եռանդնոտ բնութեամբն... առ մեծ ճգնաւորն և անուանի վարդապետն Թէոդորոս, Քռթենաւորն կոչեցեալ... զորոյ սիրեցեալ զվարս սուրբս, խոշորս և պարկեշտս, յանձն առնոյր յաւելուածով... ուսանէր ի նմանէ ըստ հաճոյ կարգին զամենայն գիրս աստուածաշունչս հին և նոր մատենից, որովք ընդարձակեալ սրտիւ աճէր խստամբեր վարուք և հանճարով գրոց, փառաւորեալ յԱստուծոյ և ի մարդկանէ։... Զոր տեսեալ հայրն նորա ըստ հոգւոյ՝ տայր նմա կոչել գնա յաստիճան շնորհաքաշխութեան. 'ի կատարման մարմնաւորական և հոգեւորական հասակին և մարուաց՝ ի կարգ սարկաւագութեան. և 'ի պատիւ քահանայութեան, որովք և աղբիւրանայր յորդառատ իմաստութեամբ, և թարգմանութեամբ և մեկնութեամբ գրոց զարդարէր զեկեղեցի, և ժիր և մաքուր քահանայագործութեամբ հաշտեցուցանէր զԱստուած ընդ կենդանիս և ընդ մեռեալս։ Քանզի թէպէտև թագաւոր ոչ գոյր աշխարհիս Հայոց յայնմ ժամանակի, այլ ընդ ծառայութեամբ Տաճկաց էին, որ կոչէին Ամիր Մեւնիք, սակայն 'ի գթութիւնս եդ Տէրն զազգս առաջի նոցա աղօթիւք սրբասիրին Յովհաննու, և որք ընդ նմա զկամս Աստուծոյ կատարէին ուղղափառ հաւատով և խաչաչարչար ճգնութեամբ առ լերամբն որ Սոթից կոչի, Գէորգ վարդապետն սքանչելագործ և Մաթէոս խոտաճարակն, և իւր իսկ վարդապետն և այլ բազում խստակրօնք և երկնաթռիչք»։

*
* *

Կաթուղիկոսական պաշտօնն 'ի գործ դնել սկսաւ Յովհաննէս՝ ժողովրդեան մէջ մտած անկարգութեանց դար-

մանը մատուցանելով։ Այս վախճանաւ ժողով մը գումարեց 'ի Դուին, իր հայրապետութեանը երկրորդ տարին. ու ժողովոյն առջի գումարումը՝ սուրբ հայրապետաց գովելի սովորութեան համեմատ՝ ատենախօսութեամբ մը սկսաւ, իմացնելով թէ ինչո՞ւ գումարեց զիրենք 'ի ժողով, և թէ անհրաժեշտ էր այն գումարումը։

Գեղեցիկ և ընտիր ոճոյ ամէն յատկութիւններն ունի այս Ատենախօսութիւնը. խօսքի վսեմ ծանրութիւն մը, իմաստից առատութիւն և ընտրութիւն, աստուածաշունչ գրոց, սրբոց հարց և հին առաքելաց հմտութիւն, և ամէն բանէ աւելի բարւոյ նախանձ մը։ Կը յիշեցընէ հին եկեղեցւոյ բարեզարդութիւնքը, և թէ ինչպէս ժամանակը՝ իր ապականիչ և խանգարող ձեռքը՝ նաև այն սրբազան և աստուածային շէնքին վրայ ձգած է՝ ապականել զայն մերթ հերձուածոց երևմամբ, մերթ տգիտութեամբ, մերթ անհոգութեամբ։ Մարդկային հասակին կը նմանցընէ՝ եկեղեցւոյ վիճակը. թէ ինչպէս անմեղ է մանկութիւնը, անգէտ չարի, անհմուտ մեղաց. և թէ ատեն անցնելով՝ նոյն անմեղութիւնը չարութեան կերպարանք կ'առնու։ Իր անձին օրինակովը՝ այս բանս հաւատարմացընել կ'ուզէ Օձնեցին. առանց պարծենալ ուզելու՝ կը յիշեցընէ իր այն մատաղ հասակին մէջ տուած յոյսերը՝ թէ՛ զինքը տեսնողաց և թէ իր վարդապետին Թէոդորի. և խորունկ սրտէ առաջ եկած հառաչանքով մը՝ Յովբայ խօսքերը կը կրկնէ։ «Ո՞վ առնէր զիս ըստ աւուրցն առաջնոց»։ Ասկէց առիթ կ'առնու հայաստանեայց եկեղեցւոյն մէջ սպրդած անկարգութիւններն յիշեցընել, և թէ ինչ կերպով և կանոններով դէմ. դնելու է անոնց. որպէս զի չըլլայ թէ հաւատացեալ ժողովրդոց մէջ ճարակելով՝ թէ՛ հաւատոց, և թէ նոյն հաւատքը դաւանողաց բարօրութեանը վնասակար ըլլայ։

Ոճոյ կողմանէ ընտիր հայկաբանութիւն՝ միանգամայն և քիչ մը հելլենաբանութիւն կ'երևնայ այս ճառին մէջ։ Անանկ լեզու մը գործածել ուզած է Իմաստասէրը՝ որ նիւ-

թոյն ծանրութեանը և մեծվայելչութեան արժանաւոր ըլլայ։

***

*Ճառ ՚ընդդէմ Երևութականաց.* — Հեղինակին գըլխաւոր դիտումն եղած է այս ճառովս ցուցընել՝ Քրիստոսի երկու բնութեանց վարդապետութիւնը, Նեստորական աղանդաւորաց դէմ, թէ ինչպէս ՚ի մի անձն Քրիստոսի անշփոթ միացեալ են մարդկային և աստուածային բնութիւնք, և թէ սխալ է գրուցելն մի բնութիւն ՚ի Քրիստոս՝ շփոթելով զերկուս բնութիւնս ՚ի մի անձն Նորա։ Այս աստուածաբանական խորունկ և դժուարին խընդիրը՝ իր մտքին և հանճարոյն արժանաւոր պարզութեամբ կ՚ապացուցանէ երանելի վարդապետս, հին յոյն հարց լեզու և հմտութիւն գործածելով[1]։

Երևութական կ՚ըսուէին այն հերետիկոսները՝ որ Քրիստոսի մարմնաւորութիւնը ոչ իրական ճշմարտութիւն՝ այլ առաչօք կը համարէին. և ասոնց մոլորամիտ վարդապետութիւնքն ինչուան ՚ի Հայաստան ալ տարածուելով, Յովհաննու Մայրագոմեցւոյն աշակերտներէն ոմանք հետևող երևցեր էին անոնց, և իրենց դէմ գրգռած՝ Քրիստոնէաւորին զօրաւոր և յաղթահարող գրիչը։ Բայց երբ իր մահուընէն ետքը՝ Մայրագոմեցւոյն աշակերտը Սար-

1. Որովհետև մեր հին պատմագիրներէն ոմանք կը շփոթեն իրարու հետ զՅովհան Մանդակունեցի և զՅովհան Օձնեցի կամ զիմաստասէր, առջինին մոլորութիւնքը երկրորդիս ընծայելով, և երկրորդիս հմտութիւնն ու գրուածները առջինին սեպելով, Չամչեան Հ. Միքայէլ վարդապետը՝ Հայոց պատմութեան մէջ երկար և անժխտելի փաստերով ցուցընելով թէ որչափ կը սխալին թէ՛ նկատմամբ պատմութեան և ժամանակագրութեան և թէ նկատմամբ ոճոյ և գրութեան, որոնք իրարու հետ այս երկու անձինքը կը շփոթեն, գուշակօրէն գրուցեց որ եթէ Յովհան Իմաստասիրին Երևութականաց դէմ ճառը գտնուի, ուղղափառական և ողջամիտ պիտի ըլլայ այն երկասիրութիւնը. իր խօսքին հաստատուն ապացուցութիւն սեպելով՝ Գրի-

գիս, զոր Իմաստասէրն՝ խանգարիչ տանս Հայոց կը կոչէ, սկսաւ նորէն գլուխ վերցընել, և կրկին կենդանութիւն տալ այն մահառիթ վարդապետութեանց, Քրիստոսի ուղղափառ հաւատոց զէնքը ձեռքն առած՝ երևցաւ Յովհաննէս յասպարիզի. «Վասն նորա (Քրիստոսի) — իր գերազանց խօսքերը մէջ բերելով, կ՚ըսէ, — գիր հանեմք, և յանուն նորա խրախոյս բառնամք. յաղագս նորին ահաւասիկ և առեամք զատելիս նորա. զկատարելագոյնն զնոսին առեսցուք զատելութիւն»:

Այսպիսի իրաւացի ատելութեան մը՝ ամէն էական յատկութիւններն ունի Իմաստասիրին այս ճառը: Նուրբ և խորունկ գիտութիւն աստուածաբանական ճշմարտութեանց, զօրաւոր և աննկուն ճարտարխօսութիւն՝ հակառակողաց բերանը սանձելու, և ընտիր լեզու մը՝ որուն նման մեր մէջ քիչ կը գտնենք, և որ ազգակից է յոյն եկեղեցական մատենագրաց գործածած լեզուին. հայախօս Աստուածաբան մը, Բարսեղ կամ Կիւրեղ: Ուստի և իրաւամբք զմայլած էին այս գրուածքիս վրայ մեր հին հայրապետքն. և Գրիգորիս Ակայասէր՝ իրեն համար մասնաւոր օրինակ մը գաղափարել տալով, ճառին վերջը իր ձեռքով ասանկ գրած էր. «Այս է գիրք կտակի ուղղափառութեան հօր մերոյ սրբոյն Յովհաննու կաթողիկոսի Հայոց և Իմաստասիրի Օձնեցւոյ: Եւ ես Գրիգո-

գորի Ակայասիրի, Ներսէսի Կլայեցւոյն, Գրիգորի Տղայոյ և Ներսէսի Լամբրոնացւոյ գովութեան խօսքերը, որոնց անկարելի էր որ այսպիսի հայրապետ մը՝ անանկ լեզուով մը գովէին, եթէ անոր կրօնական համոզումը՝ իրենց համոզմանէն տարբեր ըլլար՝ հաւատոց այսպիսի նիւթի մը մէջ:

Այս ճառը գտնուելուն պէս՝ 'ի գրատան Փարիզու, Աւգերեան Հ. Մկրտիչ վարդապետը մէկէն ծանօթութեամբք հրատարակեց (1807) բնագիրն ու լատինական թարգմանութիւնը, թէ Հեղինակին և թէ անոր պաշտպանին ողջմտութիւնն և արդիւնքը հանդիսացընելով. զոր և լատին աստուածաբանք՝ թէ իրենց գիտութեամբը և թէ հին Հայոց գործածած լեզուին հմտութեամբը նշանաւորք, լիուլի վկայութեամբ հաստատեցին:

րիս նուաստս՝ նորին հաւատոց որդի և աշակերտ՝ ձայնակից եմ այսմ խոստովանութեան և աւանդման. և որք այլապէս դաւանեն քան զայսոսիկ և նորաձևս առնեն՝ (Նզովեալ լիցին)»։

Գրիգոր Տղայ կաթողիկոսն ալ կը գրուցէ. «Խընդրելի է՝ թէ յետ այսորիկ ո՞վ ոք 'ի հարցն սրբոց յայսոսիկ դրդուեցաւ. եթէ զՅովհաննէս ասեմք զԻմաստասէրն՝ որ և աթոռակալ սրբոյ աթոռոյս, և նա այսոցիկ հետևեցաւ շաւղաց ուղղափառութեան. և մերն այլ սուրբ նախնիք զնորայն ընկալան խոստովանութիւն, և ձեռնագրեցին անխախտելի միալ գիրս, Գրիգոր Վկայասէր և Բարսեղ հետևող նորին, և միւս Գրիգորիս և Ներսէս՝ մերս հարք. և է յարկեղս գրոց մերոց՝ ընկալեալ 'ի նոցանէ»։ Ուրիշ տեղ ալ «Երջանիկ և սուրբ հայրապետ» կը կոչէ զինքը, և անոր խօսքերը՝ «հոգեշունչ բանք»։

Շնորհալի ալ Թէորիանէ յոյն աստուածաբանին հետ խօսած ատենը՝ այսպէս կը դրուատէ զԻմաստասէրն. Հայոց կաթողիկոս մը կար, կ'ըսէ, Յովհաննէս անունով, որ իր վարքովը և խօսքով սուրբ հարց զուգահաւասար էր. ու արտաքին գիտութեանց և փիլիսոփայութեան ալ ոչ անտեղեակ. իսկ աստուածային վարքովը՝ թէ ոչ քան զամենեսին, այլ քան զբազումս գերազանց»։ Կը միաբանի և Յովհաննէս կաթողիկոս. «Հմուտ և տեղեակ գոլով նա, կ'ըսէ, բոլոր քերթողական շարագծաց՝ մասանց բանի և մասնականաց, այլ և վարժից սեռից՝ և որք ընդ գոյացութեամբ են սեռական տեսակարարութիւնք՝ մինչ ցանհատ վայր. և տարբերութեանցն ևս հանգամանաց, և պատահմանց անջատից և անանջատից՝ ոչ անտեղեակ։ Դարձեալ և կրթական վարժից թէոնականաց՝ որ զարուեստին ծառոյ պտուղս՝ առոգանապէս ներադրէ յարուեստասէրն... Սա ամենայն առաքինի քաջողջութեամբ զինքն տուեալ՝ աշխատասիրաբար կրթական ջանիւ զինքն զինէր յերգս հոգևորս, պահօք և աղօթիւք և ամենագիշեր տքնութեամբ»։ Գրիգոր Մագիս-

*տրոս առ կաթուղիկոսն Ասորւոց գրած թղթին մէջ Թոնդրակեցի աղանդաւորաց վրայ խօսելու ատեն կը յաւելու, — անշուշտ զՕձնեցի ակնարկելով, — « Երանելի քահանայապետն մեր սուրբն Յովհաննէս, և վարդապետն Անանիա գրեալ զչարափառութեան նոցա զսարսափելի հերձուածս » ։*

*
* *

*Ճառ ընդդէմ Պաւղիկեանց. — Առջի երկու ճառերուն արժանի երկասիրութիւն մըն է նաև ասիկայ։ Պաւղիկեանք՝ հերետիկոսներ էին, հետևողք Պօղոսի Սամոստացւոյ, և որոց արբանեակ երևցաւ Մայրագոմեցւոյն վերոյիշեալ Սարգիս աշակերտը, ու Յուլիանիտաց, Ապողինարեանց, Մարկիոնեանց և Սաբելեանց աղանդները մէկի վերածելով՝ սկսաւ իր մոլորամիտ վարդապետութեանցը զՀայաստան աշակերտելու ետևէ ըլլալ։ Անոնց խաբէութեանցը դէմ սրեց իւր գրիչը Իմաստասէր հայրապետն Յովհան։ Կարծես թէ մեզի մերձաւոր ժամանակաւ՝ Նորաղանդ հերձեալց մոլորութիւնքն գուշակօրէն նկատեր էր, որոնք եկեղեցի բարեկարգելու պատրուակաւ՝ իրենց ախտերուն ու կրից համարձակութիւն և ազատութիւն փնտռեցին։*

*« Ահա գտաւ, — կ'ըսէ Յովհան, Պաւղիկեանց վրայ խօսելով, — որոգայթ իբրև զվարմ հաւորսաց ձգեալ 'ի մէջ ժողովրդեան ազգի իւրոյ, ըմբռնել զախմարս և զպարզամիտս 'ի մարդկանէ, որք չարեաց 'ի չարիս ելին. 'ի պատկերամարտութենէ 'ի խաչամարտութիւն և 'ի քրիստոսատեցութիւն. և անտուստ յանաստուածութիւն և 'ի դիւապաշտութիւն » ։ Ամբարշտութեան այս ծայրը հասած՝ սկսան արհամարհել և անգոսնել Քրիստոսի եկեղեցւոյն հաւատքը, և իրենց թիւր վարդապետութիւնքը՝ սուրբ գրոց նուիրական խօսքերովը կ'ուզէին ապացուցանել։ Խաչին ընծայուած պաշտօնը կռապաշտութիւն*

կը սեպէին, պատկերաց յարգանքը՝ աւելորդապաշտութիւն, և այլն։ Ասոնց դէմ կը խօսի Իմաստասէրն, ու սուրբ գրոց խօսքերովը զանոնք կ'ըմբերանէ. կը ցուցընէ՝ սքանչելի գիտութեամբ նաև հին կրօնական պատմութեանց, թէ որչափ կը զանազանին 'ի միմեանց՝ կռապաշտութիւնն՝ զոր կը մերժեն քրիստոնեայք, և անոնց ընդունած խաչի և պատկերաց պաշտօնն։

* * *

*Յաղագս կարգաց Եկեղեցւոյ.* — Երկու մասն կը բաժնուի այս ճառը. առջինին մէջ համառօտ մեկնաբանութիւն մը կ'ընէ ժամակարգութեան, գիշերային պաշտամանէն մինչև 'ի ճաշածամն. իսկ երկրորդին մէջ կը բացատրէ՝ ճաշածամէն մինչև ցիններորդ ժամ, կամ ցերեկոյեան ժամակարգութիւնը։ Համառօտութեանը մէջ գեղեցիկ, յստակ և կատարեալ երկասիրութիւն մըն է։ Անշուշտ այս ճառերուն համար կ'ըսէ Յովհաննէս կաթողիկոս. « Յաւէտ իմն հմտագոյնս գրով դրոշմեալ տայ եկեղեցւոյ Քրիստոսի զբովանդակ կարգաւորութիւնս պաշտաման ժամուց, գեղեցիկ իմն յօրինուածով ճոխացուցեալ, և բացայայտեալ ևս զմիոյ միոյ կարգացն զմեկնութիւնս, 'ի մխիթարութիւն գղերց եկեղեցւոյ։ Այլ և ճառս ևս ինքնախօսս՝ բանաստեղծս յարդարեալ զզղջացուցիչս չար գործոց, և յորդորականս 'ի պէտս ապաշխարութեան սակի »։ Սամուէլ ալ կը գրուցէ, « Սուրբ իմաստասէրն Յովհան կանոնական կարգօք պայծառացոյց զեկեղեցիս »։ Ասոնց կարգէն և ասոնց նման գըրուածներ են Յաղագս մեծի աւուր միաշաբաթու ճառը, և Հատուածք բանից։

* * *

Շարականք. — Շարականները յօրինողաց ցուցակին մէջ կը տեսնենք որ Իմաստասէր Հայրապետիս կ'ընծայուին Աւագ տօնից շարականներն. այսինքն Դաւթի մարգարէին և Յակոբայ առաքելոյն, Ստեփանոսի Նախավկային, գլխաւոր առաքելոցն Պետրոսի և Պօղոսի և Որդւոց Որոտման շարականները։ Ետքի իրեքն ալ՝ եթէ հաւանինք Իմաստասիրին ընծայել, իրեն թէ՛ ոճոյն, թէ հմտութեանը և թէ բանաստեղծութեան անպատիւ բան մը ըրած չենք սեպուիր. բայց Դաւթի մարգարէին և Յակոբայ առաքելոյն վրայ երգուածը՝ այն աստիճանի օտար է, որ իրաւամբ զրուցած է հմուտ բանասէրին մէկը՝ թէ և ոչ Իմաստասիրին աշակերտի մը կրնայ ընծայուիլ այնպիսի խակ և անոճ շարագրութիւն։ Այս սխալման գլխաւոր պատճառ՝ Կիրակոս պատմչին մէկ խօսքն եղած կ'երևնայ որ կ'ըսէ, «Երգեաց շարական և զհարց՝ Մեղաք յամենայնի, որ մինչև ցայսօր պաշտի յեկեղեցին Հայոց»։ Մտադրութեան արժանի է որ պատմիչն երգեաց կ'ըսէ և ոչ թէ յօրինեաց. որով անշուշտ կ'ուզէ հասկըցընել թէ խափանուած էր այն շարականին երգեցումը, և թէ Իմաստասէրը սահմանեց որ նորէն երգեցուի։ Նոյնը կը հաստատեն նաև Յայսմաւուրաց խօսքերը։ — Հռիփսիմեանց տօնին օրը երգուած Անկիզբն Աստուած համբարձի շարականին յօրինումն ալ՝ ոմանք ուզած են Իմաստասիրիս ընծայել. բայց այլ աւելի հաւանականաբար այն երգին հեղինակ կը համարին զՄանդակունի։

* * *

Իմաստասիրին մէկ նշանաւոր աշխատանքն ալ եղած է՝ հին Հարց և ժողովոց սահմանած կանոններն կարգի

և դատաւորութեան վրայ առնուլ, և իր հայրապետական իշխանութեամբը՝ անոնց կարևոր հաստատութիւնը տալ. որպէս զի իւրաքանչիւր ոք ըստ հաճոյս կանոններ չաւելցընէ, կամ արդէն սահմանուածները չվերցընէ։ Այս վախճանաւ՝ նոյն հաւաքմանէն ետքը մասնաւոր Յիշատակարան մըն ալ աւելցուց, իմացընելով թէ ի՛նչ վախճանաւ և դիտմամբ եղած է այս աշխատութիւնս։ Բայց Իմաստասէր հայրապետը իր դիտմանը չհասաւ. ժամանակ անցնելէն ետքը՝ տգէտ և ձեռնէրէց ընդօրինակողք՝ եկամուտ և անհարազատ կանոններ մտուցին սուրբ առաքելոց և հայրապետաց անուամբ աւանդուած սահմանադրութեանց մէջ. և Օձնեցւոյ այս Յիշատակարանն ալ իրենց օրինակացը մէջէն վերուցին։

Իմաստասիրին բուն խօսքերն են. «Կամեցայ զգրուանդակ զառ 'ի նոցանէն կանոնական սահմանեալ բանս՝ 'ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենիւ 'ի հայրապետանոցի աստ արձանացուցանել. ուրանօր և զիս աստուածային Հոգին վերակարգեաց յաթոռ սրբոյն Գրիգորի, 'ի կաթուղիկոսութիւն աշխարհիս Հայոց. Յովհաննէս՝ նուաստագոյն յիմաստասիրականաց խմբից, և 'ի բոլորից մեկին միացեալ ըստ մարմնոյ յազգականաց։ Եւ ընկալեալ զայս ջան՝ նախկին, վասն կանոնականաց իմոց զարմին, զի ըստ հրամայողական անուանն՝ առընթեր կայցեն և հրամանացն գումարութիւնք. և թէ պարտ է սպասաւորաց բանին՝ աստուածախօսունակ հարցն բանիւք կնքել բանիս։ Երկրորդ, զի զուսումնասիրաց անձանց՝ իմով աշխատութեամբ սիրով կամեցայ հանգուցանել զբազմախոյզ խնդիրս։ Քանզի գրեցաք 'ի սմա ոչ միայն զկանոնական սահմանեալն նոցա շարակարգութիւնս, այլ և զժամանակն և զպատճառն 'ի սոյն յայս 'ի ներքս ածեալ յաւելաք, ընդ նմին և զգլուխս անցնիւրոց համառօտեալ բանիւք 'ի սկզբան անդ նախակարգեցաք. զի անաշխատաբար անդուստ զբանն յիւրում տեղւոջն գտցէ խընդրողն»։



Ուրիշ այլ և այլ երկասիրութիւնք ալ կը յիշատակուին Իմաստասիրիս անուամբը, յորոց ոմանք կորուսած են, և այլք երկբայականք։ Առջիններուն կարգէն կը համարուին՝ Ապաշխարութեան և վարուց զգաստութեան վրայ ընտիր ճառեր, զորս Յովհան կաթուղիկոս կ'աւանդէ թէ չարագրած ըլլայ, և մեր ձեռքը հասած չեն։

Երկբայականաց կարգէն են՝ Եկեղեցւոյ Հիմնարկէից վրայ երկու ճառ, Հիմնարկէք Եկեղեցւոյ կոչուածները։ Այս ճառերէն առջինին մէջ կը խօսի հեղինակն՝ տաճարաց հիմնարկութեան վրայ. երկրորդին ալ՝ թէ Նորաչէն եկեղեցեաց մէջ ինչպէս տաճար կանգնելու է. և վայելուչ ոճով մը կը խօսի այն արարողութիւնքը կազմող խորհրդաւոր աղօթից և սաղմոսաց վրայ։ Երկբայականներէն կը սեպուի նաև սուրբ Եկեղեցւոյ վրայ ընդարձակ ճառ մը, յորում հին և նոր, ստորին և վերին եկեղեցեաց բաղդատութիւնը կ'ընէ։

Կամ Օձնեցւոյս և կամ Մանդակունւոյ, և կամ ուրիշ համանուն հայրապետի մ'է ՉԽԸ թուին 'ի Հռոմկլա գրուած մատենի մը մէջ աստուածաբանական տեսութիւն մը՝ այս խորագրով. «Երանելւոյն Յովհաննու Հայոց եպիսկոպոսապետի ապացոյց յերկուց բնութեանց առել զՓրկիչն, կամ մի բնութիւն»։ Սկզբնաւորութիւնն է. «Եւ քանզի առաքելականն և մարգարէիցն կտակքն ոչ ուրեք յիշատակեն զերկուց բնութեանց այլութիւն, ապա պարտ է անդրդուելի խոստովանութեամբ դաւանել 'ի սուրբ Երրորդութեանն զԲանն աստուած մարմնացեալ»։

Այս ամէն ճառերն՝ բաց 'ի վերջնոյս, Իմաստասիրին հարազատ երկասիրութեանցը հետ տպագրեցան 'ի Վենետիկ, 1833. ու լատինական թարգմանութեամբ ալ ծանօթացան արեւմտեայց։

# ՍՏԵՓԱՆՈՍ ՍԻՒՆԵՑԻ

---

*Սիւնեցւոյն վարքը և ուսումը։ — Ճանապարհորդութիւնները 'ի Բիւզանդիոն և Հռոմ։ — Երկասիրութիւնները։ — Իրեն ընծայուած շարականք և անոնց հարազատութիւնը։ — Ուրիշ գրուածք։ — Թարգմանութիւնք։*

Դուին քաղքին աւագերիցուն որդին էր Ստեփանոս Սիւնեցի, որ Հայոց կաթողիկոսարանին մէջ՝ ինչպէս կ'աւանդէ Ուռպելեան, իր նախնական ուսմունքն ընելէն ետքը, երբ հասակը քիչ մ'առաւ՝ Մաքենեաց կոչուած հռչակաւոր կրօնաստանը գնաց, նոյն վանքին առաջնորդ՝ ու գիտութեամբն և աստուածպաշտութեամբ նշանաւոր Սողոմոն վարդապետին քով։ Հոն երկար ժամանակ կըրթուելէն ետքը՝ Սիւնեաց վարդապետարանը գնաց, առ Մովսէս եպիսկոպոս Սիւնեաց. որուն ջանքովը նոյն վարդապետարանը շատ ծաղկած էր գիտութեամբ[1]։ Այնպիսի հմուտ անձի մը առաջնորդութեամբ՝ քիչ ատենուան մէջ կատարեալ տեղեկութիւն ստանալով աստուածային գիտութեանց, եպիսկոպոսին հրամանաւ րաբունական ամպիոնը նստաւ, և սուրբ գիրքը կը մեկնէր նոյն

1. «Փութայ հեղի, կ'ըսէ Ուռպելեան, յաղթելոյն իմաստից 'ի վարդապետարանն Սիւնեաց, որ էր գլուխ ամենայն գիտնոց Հայոց, և պայծառացեալ դպրոցքն որ 'ի նմա. քանզի որպէս Աթենացիքն 'ի մէջ Հոռոմոց և Յունաց հռչակեալ էին և մայր իմաստից կոչեցեալ... լատին և հելլէն դպրութեամբ, այսպէս և սոքա 'ի տանս Թորգոմայ յաշխարհիս Հայոց»։

Ստեփանոս ալ յանձն առաւ, ու բան առ բան ամէն խնդիրները լուծեց։

Նոյն միջոցին Սիւնեաց աշխարհին կը տիրապետէր Բաբկէն, որ Դաւիթ կաթողիկոսին մարդիկ ղրկեց, որպէս զի հայրապետը՝ եպիսկոպոսական աթոռը և Սիւնեաց մետրապոլտութիւնը յանձնէ Ստեփանոսի։ Դաւիթ ուրախութեամբ յանձն առաւ այն առաջարկութիւնը. ու մեկէն Սիւնեաց եպիսկոպոս ձեռնադրելով զինքը՝ միանգամայն անոր յանձնեց եպիսկոպոսաց գլուխ կամ գահերէց կոչուելու պատիւը։ Այն պաշտօնամբ իր վիճակը դարձաւ Ստեփանոս, ու մէկ տարի մը միայն, կամ ըստ ոմանց՝ ութ տարի նոյն իշխանութիւնը վարելով՝ անգութ մահուամբ մեռաւ. վասն զի անպգամ կին մը՝ անկարգ վարուցը համար յանդիմանուելով սուրբ հայրապետէն՝ անոր առանձնութեանը և քնոյ մէջ սրով սպաննեց զինքը։ Թանահատի կոչուած միաբանակեցաց վանքին մէջ թաղուեցաւ Սիւնեցին։



*Սիւնեցւոյն երկասիրութիւնքը.* — Այլ և այլ գրուածներ կը յիշատակուին Սիւնեցւոյն անուամբ, որոնց մեծ մասը թարգմանութիւնք են։ Ասոնց մէջ գլխաւոր կրնանք սեպել՝ մեր արդէն յիշատակած Ս. Գերմանոսի Կոստանդնուպոլսոյ հայրապետին թուղթը, որուն պատճառն այս է։ Ստեփանոս ատեն մը Յունաց եկեղեցիքը երթալէն կը խորշէր. Ս. Գերմանոս հայրապետն կանչեց զինքը և պատճառը հարցուց. ու կասկածելով որ չըլլայ թէ այն խտրութիւնը մտաց մոլորութենէ առաջ եկած ըլլայ, հաւատոյ դաւանութիւն մը ուզեց իրմէն։ Յանձն առաւ Ստեփանոս, և գրով ուզեց տալ նոյն դաւանութիւնը. յորում կը խոստովանէր իւր ուղիղ հաւատքը ըստ երից ժողովոցն՝ Նիկիոյ, Եփեսոսի և Կոստանդնուպոլսի. բայց Քաղկեդոնի ժողովոյն և անոր դաւանութեան խօսքը չէր

ընէր։ Այն ատեն Գերմանոս ուզեց համոզել զինքը՝ այն ժողովքին ողջմտութեանը վրայ. և թէպէտ հաւանեցաւ Սիւնեցին, բայց յանձն չէր առներ Յունաց հետ հաղորդիլ, պատճառ բերելով թէ քանի որ ազգը նոյն ուղղութեանը խելամուտ եղած չէ, իրեն հալածանք և այլոց գայթակղութիւն կ՚ըլլայ։ Այն ատեն Գերմանոս գրեց թուղթ մը առ Հայս՝ որուն սկզբնաւորութիւնն է. «Քրիստոս է խաղաղութիւն մեր». և յորում իմաստալից ու յայտնի խօսքերով կը ցուցընէ Քաղկեդոնի ժողովոյն ուղղափառութիւնը. և թէ Յոյնք՝ երկու բնութիւն 'ի Քրիստոս ըսելով ուրիշ բան չեն հասկընար, բայց եթէ զմի անձն Քրիստոսի՝ որ ունի զճշմարիտ աստուածութիւն և զճշմարիտ մարդկութիւն, և թէ Քրիստոսի աստուածութիւնը և մարդկութիւնը 'ի միաւորման իւրեանց, իրարու հետ չշփոթեցան. այլ երկու բնութիւնքն ալ կատարեալ մնացին 'ի մի անձն Քրիստոսի. որով մի և նոյն Քրիստոս՝ կ՚ըլլայ և է ճշմարիտ Աստուած ըստ աստուածութեան, և ճշմարիտ մարդ՝ ըստ մարդկութեան։ Նոյն թուղթը թարգմանեց 'ի հայ Սիւնեցին, և բերաւ առ կաթուղիկոսն. և իրեն հրամանաւը գրեց նոյն թղթին պատասխանը, ինչպէս վերն ալ յիշեցինք։ Այս թղթին հայերէն օրինակը՝ ժամանակ անցնելէն ետքը՝ հակառակասէր անձանց ձեռքն իյնալով խանգարեցաւ, և անոր համար իրաւամբ կ՚արհամարհէ զայն Լամբրոնացի։ Բայց նոյն իսկ Լամբրոնացւոյն օրերը խնդիր ելաւ ազգին մէջ՝ թէ արդեօք Սիւնեցւոյն պէս իմաստուն և կիրթ միտք մը՝ կրնա՞ր այնպիսի գրութիւն հրատարակել ընդդէմ Գերմանոսի և եկեղեցւոյն Յունաց, որոց թէ՛ բարեկամութիւնը և թէ ձեռնտուութիւնը վայելեր էր. ու գրչագրաց մէջ փնտռելով՝ այն թղթին վաւերական օրինակը գտան, որ բոլորովին կը տարբերէր ազգին մէջ գտնուածէն. ինչպէս կը վկայէ Վանական վարդապետն ալ, թէ «Ի գալ Ստեփանոսի Սիւնեցւոյ՝ ետուն թուղթ յազգս Հայոց. այլ ոչ ոք պատասխանւոյ փոյթ չարար.

*ինքն գրեաց, բայց մինչև յայն տեղին թէ «Սերմանողք այսոցիկ 'ի հանդերձեալն ունին զպտուղն»։ իսկ զայն որ նախատինք է՝ այլք են գրեալ»։*

*Մօտերս ուրիշ երկու թուղթեր ալ գտնուեցան յանուն Սիւնեցւոյն. մէկը գրուած առ պատրիարքն Անտիոքայ, և մէկալը առ վարդապետս Աղուանից, որ համառօտ գրուած մըն է. իսկ առջինը ընդարձակ, յորում Հայոց եկեղեցւոյն դաւանութեան խօսքը ընելէն ետքը, պաշտպան կ'ելլէ նաև անոր ծիսական աւանդութեանցը և տօնախմբութեանց, ընդդէմ Յունաց. և 'ի հաւատարմութիւն իւր բանիցը այլ և այլ պատմութիւն մէջ կը բերէ, որոնք առաւել առասպելաց կերպարանք ունին քան թէ ճշմարտութեան*[1]*։ Նման ոճով ուրիշ երկու ճառեր ալ գտնուեցան, որոնց ամենուն հաւատարմութիւնը կրնանք տարակուսի տակ ձգել իրաւամբք։*



*Շարականք. — Ոմանք մեր ազգային մատենագրութեան մէջ երկու Ստեփաննոս Սիւնեցի դնելով, առաջնոյն ընծայած են **Աւագ օրհնութիւնքը**՝ բաց 'ի վառ ձայնէն, որ Շնորհալւոյն երգածն է, և երկրորդիս կու տան Խաչի շարականաց կարգին մէջ գտնուած **Սրբութիւն սրբոց** վսեմ և իմաստալից երգը։ Բայց որովհետև ըստ պատմութեանց մի է Ստեփաննոս Սիւնեցին՝ քերթող և թարգմանիչ և*

1. Խորագիրն է. «Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի մեծի իմաստասիրի պատասխանի թղթոյն Անտիոքու եպիսկոպոսի զոր վասն հաւատոյ գրեալ էր»։ Իսկ միւս ճառից խորագիրք. «Յաղագս եկեղեցաօրհնեաց կարգաց թէ զինչ է խորհուրդն. — Վէմ անսասան և անկոփ եդեալ ի հիմունս»։ — «Խորհուրդ և կարգաւորութիւն եկեղեցւոյ. — Ուրախ լեր եկեղեցի սուրբ, իմանալի դրախտ աստուածագործ»։ — «Նորին և այլոց վարդապետաց, ի նոյն խորհուրդ եկեղեցւոյ. — Նաւ է եկեղեցի. նաւապետ հայր, նաւավար որդի, նաւահանգիստ սուրբ հոգին»։

*գրական կոչեցեալ, բնականաբար այս չարականներն ալ մեր Սիւնեցւոյն քերթողական հանճարոյն արգասիքն են։ Խօսքերնուս ստուգութիւնը կը հաւաստարմացընէ և Ուռպելեան. «Բաժանեաց, կ'ըսէ, և զութ ձայնսն. և կարգեաց չարեաց չարականս՝ զյարութեան օրհնութիւնսն. երգեաց և կցորդս քաղցրահամս. յարմարեաց և զստուղոգին յինանցն, եօթն եղանակօք յոյժ խորհրդաւոր»։ Կը միաբանի և Կիրակոս. «Արար և երգս հոգևորս քաղցր եղանակաւ, չարականս, կցորդս և երգս»։*

*Ազգային պատմագիրք ուրիշ այլ և այլ երկասիրութիւնք ալ կ'ընծայեն Սիւնեցւոյս, որոնք մեր ձեռքը հասած չեն. ինչպէս Արարածոց, Յովբայ, Դանիէլի և Եզեկիէլի մարգարէութեանց մեկնութիւնները։ Միայն այս վերջիններս հատուածներէն քանի մը կտոր բան մնացած է։ Դանիէլի մեկնութեան հատուած մ'ալ ընտիր ոճով, որ թերևս Սիւնեցւոյն ըլլայ* [1]։

*Խոսրով Անձևացեաց եպիսկոպոսն ալ կ'աւանդէ թէ եկեղեցական կարգաւորութեանց մեկնութիւն մըն ալ շարագրած ըլլայ, և անշուշտ անոր հատուածն է՝ որ ճառընտրի մը մէջ կ'երևնայ այսպիսի խորագրով. «Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի ասացեալ, վասն նախերգանի աղօթից որ 'ի մէջ գիշերի կատարի»։ Կիրակոս ալ կը գրուցէ թէ սուրբ աւետարանաց մեկնութիւն մը յօրինած ըլլայ, որ դարձեալ՝ մեզի անծանօթ երկասիրութիւն է։ Միայն զանազան քերականական գրութիւնք հասած են ձեռուընիս Սիւնեցւոյն անուամբ, և անոնց համար է Քերթող կոչուիլը։ Հետևեալ մակագրով գրուածքի մ'ալ կը հանդիպինք գրչագրաց մէջ և զոր ենթադրութեամբ կրնանք ընծայել Սիւնեցւոյս՝ եթէ ուրիշ*

1. «Մեկնեաց, կ'ըսէ Ուռպելեան, և գրեանս բազումս, զԱրարածքն, զՅոբն, զԵզեկիէլն և այլ բազումս. որոց բանքն նշանաւոր 'ի մէջ այլոց մեկնչաց՝ փայլին որպէս ջահ պայծառ։ Արար և ճառս բազումս»։

համանուն անձի մը երկասիրութիւն չէ. «Վասն անապականութեան մարմնոյն որք ասեն թէ որ աճէ՝ և նուազէ. Ստեփաննոսի իմաստասիրի ասացեալ»։ Ուրիշ գրչագրի մը մէջ ալ յիշուած կը գտնենք նոյնպէս մեզի անծանօթ երկասիրութիւն մը որ Ստեփաննոսի իմաստասիրի անունը կը կրէ. «Աշխարհացոյց Ստեփաննոսի Հայոց իմաստասիրի 'ի գրոց մեկնութենէ»։

Բանք ընդդիմութեան 'ի նիւթս հաւատոյ քառասներկու գլխովք 'ի Ստեփաննոսէ Սիւնեաց։ Կը գտնուի 'ի Մատենադարանին Էջմիածնի։ Արզրումոյ Բարձրահայեաց Ս. Աստուածածին վանաց Մատենադարանին մէջ գրչագիր մ՚ալ, որ նոյն է անշուշտ այս գրութեան հետ. «Ստեփաննոսի Սիւնեաց տեառն պատասխանիք ընդդէմ ազգին Ֆռանգաց»։

Ստեփաննոսի թարգմանած գրոց մէջ մեզի ծանօթք և մնացեալքն են Ս. Դիոնեսիոսի Արիսպագացւոյ գրուածքն, Ս. Կիւրղի Պարապմանց գիրքն, Գր. Նիւսացւոյ Յաղագս Բնութեան մարդոյ գիրքն, Ղեւտական գրոց մեկնութիւն մը, զորոնք ամենն ալ թարգմաներ է 'ի Կոստանդնուպոլիս՝ Դաւիթ հիւպատ անուամբ ազգակցի մը օգնութեամբ։

# ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ

---

*Ղեւոնդ Երէց և իր պատմական գրուածքը։ — Անոր նիւթը։ — Ոճը։ — Պատմական արժէքը իր գրուածին։ — Բնագրին տպագրութիւնն և թարգմանութիւնը։ — Մոհլ գաղղիացի արեւելագիտին կարծիքը։*

Ղեւոնդ պատմագրին թէպէտ ծննդեան և մահուան տարին որոշ չեն նշանակեր ժամանակագիրք, բայց յայտնի կ'երեւնայ թէ ինչուան ութերորդ դարուն վերջերը ապրած ըլլայ, որով հետեւաբար ականատես վկայ՝ պատմած վերջին դէպքերուն։

Ձեռուընիս հասած Ղեւոնդեայ գրոց գրչագիրներուն խորագիրն է. «Պատմաբանութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց որ յաղագս երեւելոյն Մահմէտի. և զկնի նորին թէ որպէս, և կամ որով օրինակաւ տիրեցին տիեզերաց, ևս առաւել թէ Հայոց ազգիս»։ Բայց գրոցը մէջ Մահմէտի ծննդեան-և ոչ խօսքը կ'ըլլայ. և առջի բանն որ աչքերդ կը հանդիպի՝ անոր մահն է. որով Ղեւոնդեայ պատմութիւնը Մահմէտի մահուընէն ետքը կը սկսի, և սրբազան սեպուած պատերազմէն՝ զոր Աբուբեքիր, Ոմար և Օսման խալիֆաները հրատարակեցին՝ իրենց դենին չհետեւողաց դէմ։

Բաց ասկէ, Ղեւոնդ համառօտ-յիշատակութեամբ մը կ'անցնի՝ Մահմէտի անմիջական յաջորդ երեք խալիֆայից ժամանակ Հայաստանի մէջ պատահած դէպքերուն վրայ։ Իր բուն պատմութիւնը կը սկսի Քրիստոսի 661 թուականէն, Ումմիատեանց առաջին խալիֆային՝ Մուավիէի

իշխանութեան տանէն, որ իր թագաւորութեան աթոռը՝ Արաբիայէն յԱսորիս փոխադրեց, եւ իր ժամանակը Հայք բոլորովին Արաբացւոց լուծին տակ ընկան, եւ երդումն հպատակութեան տուին. եւ 662ին Գրիգոր Մամիկոնեանը առաջին իշխան եղաւ Հայոց, զոր Արաբացւոց խալիֆայն անուանեց։ Ղեւոնդ ինչուան Քրիստոսի 788 թուականը կը հասցընէ իր պատմութիւնը, յորում Ստեփանոս Հայաստանի կաթուղիկոս ընտրուեցաւ. որով 156 (կամ 128) տարուան պատմութիւն կ'աւանդուի իր գրոցը մէջ։ Հոն կը լմնցնէ Ղեւոնդ իր Պատմութիւնը, եւ գրչագիրք կը յաւելուն. « Կատարեցաւ վարդապետութիւն Ղեւոնդի վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ, 'ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ »։

Ոճոյն նկատմամբ՝ շատ պարզ եւ հետեւակ է, եւ գրեթէ հասարակաց խօսից ոճէն չտարբերիր։ Տարակոյս չկայ թէ հինգերորդ դարուն պատմչաց ոճը՝ Ղեւոնդեայ երիցուն գրքին մէջ չտեսնուիր. բայց եթէ ուզենանք նկատել զինքն իբրեւ ութերորդ դարու մատենագիր մը, մեզի համար թէ՛ ոճովը եւ թէ պատմագրելով՝ մտադրութեան արժանի անձ մը կ'երեւնայ Ղեւոնդ. իր ժամանակին աղխտիցը մէջ կրթուած հանճար եւ սիրտ մը կը ցուցընէ։ Պատմութիւնը ճիշդ, ժամանակագրութիւնը ուղիղ՝ կարելի եղածին չափ, համառօտախօս եւ ստուգաբան։

Եւրոպական գիտութեանց օգտակար ծառայութիւն մը ընելու դիտմամբ՝ Էջմիածնի միաբան Շահնազարեան Կարապետ վարդապետն գաղղիական թարգմանութեամբ հրատարակեց Ղեւոնդեայ պատմագրութիւնն 'ի Փարիզ։ Այս հրատարակութիւնը Ասիական ընկերութեան կաճառոյն հաղորդելուն առթիւը՝ անուանի արեւելագէտն Մոհլ՝ հետեւեալ քննադատութիւնն կ'ընէ հեղինակին անձին եւ ոճոյն վրայ. « Ղեւոնդ, կ'ըսէ; իւր գրքի վերջի մասին անցքերուն ժամանակակից եւ ականատես եղած է. ատով մեծ յարգ ունի. բայց ուրիշ կողմանէ մեծ իմաստուն եւ հանճարեղ մարդ մը չէ. երկրին վիճակը խեղճ կերպով կը բացատրէ, լաւ ալ չի հասկըցուիր թէ ինչ էին այն քաղաքական երկպառակութեանց պատճառները որ առիթ կու տային Արա-

բացւոց 'ի Հայաստան արշաւելու. և գրքին երրորդ մասը բռնած է Լեւոն Իսաւրացիին առ Ոմար Բ գրած աստուածաբանական մէկ նամակը, որ թերեւս վաւերական չէ. վաւերական ալ ըլլայ, Հայաստանի պատմութեան հետ ամենեւին վերաբերութիւն չունի։ Այսու ամենայնիւ, Ղեւոնդ պատմիչը այնպիսի մատենագիր մըն է, որ իւր յայանի ճշմարտախօսութեանն համար շատ յարգի է, և իւր սաստիկ հայրենասիրութիւնը իրեն բաւական պերճախօսութիւն մը կու տայ հայրենեաց թշուառութիւնը գրելու ատեն՝ որոնց ականատես եղած է »։ — Նոյն Շահնազարեան վարդապետ Ղեւոնդեայ պատմութեան բնագրին առաջնորդութիւնն ալ հրատարակած է 'ի Փարիզ ի 1859։ Գաղղիերէն ալ ունի թարգմանութիւն մը 'ի Փեթերբուրկ յամի 1862։

# ԴԱՐ Թ

## ԶԱՔԱՐԻԱ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ

*Զաքարիա կաթողիկոս և փոտ պատրիարք Կոստանդնուպոլսի: — Շիրակաւանի ժողովը: — Թղթակցութիւնք ընդ փոտ պատրիարքի: — Զաքարիայ անուամբ գրուած ճառերը:*

Քրիստոսի 854 թուականին երբ Յովհաննէս կաթողիկոս վախճանեցաւ, Սմբատ իշխանաց իշխանն հրամայեց որ Շիրակայ Երազգաւորս աւանաքաղաքը եպիսկոպոսաց ժողովք մը ըլլուի՝ Նոր հայրապետի ընտրութեան համար. և վիճակը ելաւ Զաքարիա անունով սոսկական անձի մը, զոր՝ մի և նոյն օրուան մէջ՝ ժամանակին կարճութենէն ստիպուած՝ սարկաւագ, քահանայ, եպիսկոպոս և կաթողիկոս ձեռնադրեցին:

Այն ատենները Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռը կը նստէր Փոտ. և սկսեր էր Յունաց իշխանութեան մէջ բնակող Հայերը հալածել, և նախատանօք վարուիլ անոնց հետ, Քաղկեդոնի ժողովքը մերժելնուն համար: Զաքարիա կաթողիկոս որ չէր գիտեր թէ ինչ հնարագիտութեամբք այն մեծ իշխանութեան հասեր է Փոտ, սիրոյ թուղթ գրեց առ նա, միանգամայն իմացը-

նելով թէ Հայք ինչ պատճառաւ կը խորշին 'ի ժողովոյն Քաղկեդոնի, և աղաչեց որ ճշմարտութիւնը ծանուցանէ իրենց։ Տեղնիտեղը պատասխանեց իրեն Փոտ, իմացընելով թէ ինչպէս սուտ համբաւներ հասեր են Հայոց ականջը. և որովհետև Զաքարիա կաթուղիկոս գրած էր թէ Հայք հերձուածապետաց հետևողք չեն ամենևին, այլ սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, Փոտ՝ անկէց առիթ առնելով կը ցուցընէ իր ու բոլոր եկեղեցւոյն Յունաց նոյն սուրբ հօր վրայ ունեցած մեծարանքը, և միանգամայն խրատելով կ'ըսէ. «Եւ վասն զի այդպիսի հրաշափառ վարդապետի աշակերտք էք, ոչ է պարտ հետևող լինել մտաց ձերոց, այլ սուրբ և աստուածապաշտ գրոց հետևել»։

Զաքարիա կաթուղիկոս երբոր Փոտայ թուղթը կարդաց, հետն առնելով Նանա ասորի և Յովհան կամ Վահան եպիսկոպոսը՝ Երազգաւորս աւանը գնաց առ Աշոտ իշխան, և Փոտայ թուղթը տուաւ անոր։



Այն ատեն Աշոտոյ հաճութեամբ և կաթուղիկոսին հրամանատրութեամբ Շիրակաւանի ժողովքը գումարեցաւ. յորում Վահան երկար և լուսաւոր վարդապետութեամբ ճառ մը խօսեցաւ՝ սուրբ Երրորդութեան և Մարդեղութեան խորհրդոց վրայ։ Ետքը երբոր նոյն ժողովոյն մէջ հնգետասան գլուխք բանից կամ վարդապետութիւնք սահմանեցան. Վահան եպիսկոպոս միւսանգամ սկսաւ խօսիլ ժողովոյն կողմանէ, ցուցընելով երկուց բնութեանց անճառ և անշփոթ միութիւնը 'ի մի անձն Քրիստոսի։

Շիրակաւանի ժողովքէն քիչ ետքը՝ Սահակ Մռուտ կամ Ապիկուրէշ վարդապետը, զոր Վարդան Տայոց Աշունք տեղւոյն եպիսկոպոս կ'աւանդէ, Զաքարիա կաթուղիկոսին քով գալով, և իմանալով իրմէ թէ Յունաց և

Հայոց մէջ միաբանութիւն եղեր է, շատ վշտացաւ. ու յանդիմանութեան թուղթ մը գրեց առ Փոտ, Յունաց եկեղեցին մոլորեալ ցուցնելով: Բայց այն թուղթը Կոստանդնուպոլիս չհասաւ: Այս դէպքը՝ բոլորովին հակառակ կերպով կ'աւանդէ Կիրակոս, և որ աւելի համաձայն է 'ի հնոց առ մեզ հասած յիշատակարանաց: Փոտ մասնաւոր թուղթ մը գրեց, կ'ըսէ, առ Աշոտ իշխան, ու թղթոյն հետ Քրիստոսի տնօրինական խաչէն մաս մը ղրկեց անոր. Աշոտ իշխանին հրամանաւ Սահակ վարդապետ այն թղթին պատասխանը տուաւ, գեղեցիկ և իմաստասիրական: Ասողիկ ալ կը վկայէ թէ «գրեաց պատասխանի թղթոյն Փոտայ Յունաց պատրիարքի, լի իմաստութեամբ և գիտութեամբ»: Այս երկու թղթոց օրինակներն ալ հասած են առ մեզ: Փոտայ առ Աշոտ գրածին խորագիրն է. «Պատճէն թղթոյն հայրապետին Կոստանդինուպաւլսի Փոտայ առ Աշոտ իշխանաց իշխան: Քաջայայտ բարեպաշտութեամբ, հզաւրագոյնդ ճոխութեամբ, բարձրագոյնդ 'ի համասեռս՝ Աշոտդ իշխանդ Հայոց. Փոտս՝ շնորհիւն Աստուծոյ գլուխ եպիսկոպոսաց Նոր Հռովմայ, և պատրիարք հանուրց»: Աշոտոյ կամ իր կողմանէ գրուածին ալ. «Պատասխանի թղթոյն Փոտայ գրեալ Սահակայ Հայոց վարդապետի՝ հրամանաւ Աշոտեայ Հայոց իշխանաց իշխանի: Քահանայապետ ըզգաւնացեալ պարկեշտ և առաքինասէր որ 'ի Քրիստոս վարիւք Փոտ, վերադիտող թագաւորական մեծ քաղաքիդ Նոր Հռոմայ պատրիարք, Աշոտ իշխանաց իշխան Հայոց մեծաց: Զգիր հանճարեղ խոհականութեան ձերոյ, ով աստուածարեալդ, ընթերցայ, և յոյժ բարեբանեցի ուրախութեամբ զերկնաւորն զՔրիստոս զՓրկիչ մեր»:

Վերը յիշուած թղթէն զատ՝ այլ և այլ ճառեր (մեզի ծանօթք՝ հնգետասան թուով) շարագրած է Զաքարիա կաթողիկոս Քրիստոսի տնօրինականացը վրայ, ընդհանրապէս վայելուչ ոճով և շարագրութեամբ, և յոյն եկեղեցւոյ վարդապետաց քիչ շատ հետևողութեամբ: Ասանկ

են իր ճառերը Քրիստոսի Ծննդեան, Մկրտութեան, Գալըստեան յԵրուսաղէմ, մեծի Երկուշաբաթին, մեծի Երեքշաբաթին, մեծի Չորեքշաբաթին, վասն կատարածի աշխարհիս, վասն Մատնութեանն Յիսուսի, 'ի խորհուրդ մեծի Հինգշաբաթուն, Տէրունական ընթրեաց, 'ի Զարչարանս տեառն յօր մեծի Ուրբաթուն, Թաղման, 'ի Ծրագալուցի զատկին, 'ի Յարութիւնն, 'ի Համբարձումն տեառն, 'ի սուրբ Խաչն աստուածընկալ 'ի տօնի սուրբ Նշանին, 'ի սուրբ Եկեղեցին և 'ի Ննջումն ամենասուրբ կոյս Աստուածածնին։

Զաքարիայի կ'ենթադրուին Տօնապատճառի մը մէջ (Մատենադարան Երուսաղեմի, թիւ 413) գտնուած հետեւեալ ճառերը. Յաղագս տապանակին խորհրդոյ. — Յաղագս Այլակերպութեան տեառն մերոյ, և Աստուծոյ. — Ի նոյն խորհուրդ վարդավառի տօնին յառակացն Սողոմոնի. — Յաղագս Շողակաթին։ — Զաքարիայի կաթողիկոսի 'և Մովսեսի քերթողի ի փոխումն Աստուածամաւրն և պատկերի նորին։

# ՇԱՊՈՒՀ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

—

Շապհոյ պատմական երկասիրութիւնը։ — Իր անուանն և երկասիրութեանց յիշատակութիւնը առ նախնիս։ — Գրութեան ոճը։ — Իրեն ընծայուած անհարազատ գրութիւն մը։

Շապուհ Բագրատունի՝ Աշոտոյ անթիպատրկի որդին էր։ Հայոց, կամ աւելի ճիշդ խօսելով, իր ժամանակին պատմութիւնը շարադրեց Շապուհ, ինչպէս որ կը վկայէ

Ցովհան կաթուղիկոս, բայց իր պատմութեան գիրքը՝ ինչուան մեր օրերը դեռ տեսնուած չէ։ Ցովհաննու կաթուղիկոսի խօսքերէն կ'երևնայ՝ թէ աւելի Բագրատունեաց և անոնց ծաղկելուն պատմութիւնն է գրած, վասնզի հին ժամանակաց անցքերը աւանդելէն ետքը՝ համառօտ կերպով մը պիտի անցնիմ, կ'ըսէ, այն դէպքերուն նկատմամբ՝ զորս Շապուհ Բագրատունին աւանդեր է, տեղնիտեղը պատմելով Սմբատայ սպարապետին որդւոյն՝ Աշոտոյ՝ պայազատելը, և թագաւորական հանգամանաց կարգը, Բուղա ոստիկանին գերի տարածներուն դարձը, և իւրաքանչիւր նախարարաց իրենց սեպհական իշխանութեան մէջ հաստատուիլը, և անոնց՝ թշնամեաց դէմ ըրած զանազան յաղթութիւնքը։ Քիչ մը ետքը՝ Գրիգոր Արծրունեաց իշխանին սպանումը պատմելէն ետքը՝ կը յաւելու Ցովհան կաթուղիկոս. «Բայց զմնացորդս բանիցս այսոցիկ՝ զօրութեանց և քաջութեանց և մրցարանաց և պատերազմաց և բազում բարի օճանից՝ աճաւասիկ գրեալ է 'ի գիրս պատմութեանց Շապհոյ Բագրատունւոյ, բաւական քեզ կացուցանել տեղեկագոյն առնն բարեպաշտութեան». այսինքն է Աշոտ Արծրունեաց իշխանին վարուցը, որ մօր կողմանէ Աշոտոյ Բագրատունեաց առաջին թագաւորին՝ թոռն էր։ Ցովհաննու կաթուղիկոսին խօսքերէն յայտնի է որ Շապուհ երիցագոյն ըլլալով ժամանակաւ քան զինքն և ժամանակակից պատմած դէպքերուն՝ արժանահաւատ անձ մըն է[1]։ Գէորգ Ա կաթուղիկոսի օրով՝ առ նուազութեան մեծամեծաց 'ի մերում աշխարհի, պակասեաց՝ կ'ըսէ, 'ի

1. Ցետին դարուց նորագոյն յիշատակագիր մը պատմչաց գատակարգութեանը մէջ կը թուէ նաև «Շապուհ պատմութիւն. որ է գիրք սրբոյն Սմբատայ սպարապետին և այլ սուրբ նահատակացն. թուին Հայոց ՑԲ»։ Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանուց ձեռագրաց ցուցակի մը մէջ ալ կը գտնենք ի թիւս այլոց. «Շապուհ պատմագիր, որ է պատմութիւն Որմզդաքաղաքայ և այլոց սրբոց նահատակաց որ ի թուին ԳՃԲ»։

*պատմութենէ մեր իշխանաց վրայ գրոյցք. և վրայ կը բերէ. «Բայց եթէ գուցէ գտցի ինչ՝ բաւական քեզ բերցի նախ քան զմեզ պատմեալն 'ի Շապհոյ պատմագրէ»։ Ուրիշ տեղ մ'ալ. «Ի մանկութենէ մինչև ցերեւոյթս երիտասարդութեան զԱշոտոյ որդւոյ Սմբատայ սպարապետի զզօրութիւնս և զքաջութիւնս և զպատերազմունս և զհրոսմունս 'ի յայլս, և զայլոց եւս 'ի նա բաւական բերցի քեզ առ 'ի Շապհոյ պատմեալքն»։ Ասողիկ ալ կը գրէ. (Կոստանդիանոս մեծն) «խնդրեաց և առ զնախկի Թագն Դաւթի մարգարէին 'ի Շապհոյ Պարսից արքայէ, զոր բարձեալ էր 'ի գլխոյն Յեքոնիայ որդւոյ Յովսիայ, Նաբուգոդոնոսոր արքայ։ Որպէս ուսուցանէ քեզ պատմութիւնն Շապհոյ Բագրատունւոյ»։ Կիրակոս 'ի շարս ուրիշ ազգային պատմչաց կը յիշատակէ և զնա. «Եւ Շապուհ Բագրատունի»։ Նոյնպէս ալ Սամուէլ երէց։*

*Ոճոյն նկատմամբ կ'երևնայ թէ այնչափ ընտիր եղած պիտի չըլլայ. գէթ ըստ Յովհաննու կաթուղիկոսի, որ թէպէտ պատմութեան ստուգութիւնը անհակառակելի կը համարի, բայց «զբոլորովին բաժանումն ապացուցից՝ ոչ կարացեալ ըստ քերթողական հրահանգացն համառօտաբար ընձեռել, սակայն ըստ իւրումն ժամանակի ընտանի գոլով նորա գրուցացն ամենայնի, գեղջուկ բանիւ բաւական քեզ տայ պատճառս տեղեկութեան»։*

*Յանուն Շապհոյ Բագրատունւոյ՝ պահոց վրայ գրուած ճառ մը կայ, որ թերևս ուրիշ համանուն անձի մը երկասիրութիւն է։ Աւելցընենք միայն որ յԵրուսաղեմեան Մատենադարանի պահուած գրչագրի մը մէջ (թիւ 999) նշանակուած կը գտնենք այսպէս. «Ի Շապհոյ պատմութենէն. Այլ քանզի ստունգանեաց նախահայրն՝ յերկիր դարձաւ ուստի առաւն»։ Այս համառօտ խօսքէն ետքը, որ մասն է Պահոց ճառին, աւելցուած է հետագայ տեղեկութիւնը Շապհոյ պատմչի անձին վրայ. «Այս ի պատմութենէ Շապհոյ Բագրատունւոյ է որդի Աշոտի ապուհի պատ*

Յովհան կաթուղիկոս, բայց իր պատմութեան գիրքը՝ ինչուան մեր օրերը դեռ տեսնուած չէ։ Յովհաննու կաթուղիկոսի խօսքերէն կ'երևնայ՝ թէ աւելի Բագրատունեաց և անոնց ծաղկելուն պատմութիւնն է գրած, վասնզի հին ժամանակաց անցքերը աւանդելէն ետքը՝ համառօտ կերպով մը պիտի անցնիմ, կ'ըսէ, այն դէպքերուն նկատմամբ՝ զորս Շապուհ Բագրատունին աւանդեր է, տեղնիտեղը պատմելով Սմբատայ սպարապետին որդւոյն՝ Աշոտոյ՝ պայազատելը, և թագաւորական հանգամանաց կարգը, Բուղա ոստիկանին գերի տարածներուն դարձը, և իւրաքանչիւր Նախարարաց իրենց սեպհական իշխանութեան մէջ հաստատուիլը, և անոնց՝ թշնամեաց դէմ ըրած զանազան յաղթութիւնքը։ Քիչ մը ետքը՝ Գրիգոր Արծրունեաց իշխանին սպանումը պատմելէն ետքը՝ կը յաւելու Յովհան կաթուղիկոս. «Բայց զմնացորդս բանիցս այսոցիկ՝ զօրութեանց և քաջութեանց և մրցարանաց և պատերազմաց և բազում բարի օճանից; ահաւասիկ գրեալ է 'ի գիրս պատմութեանց Շապհոյ Բագրատունւոյ, բաւական քեզ կացուցանել տեղեկագոյն առնն բարեբաստութեան». այսինքն է Աշոտ Արծրունեաց իշխանին վարուցը, որ մօր կողմանէ Աշոտոյ Բագրատունեաց առաջին թագաւորին՝ թոռն էր։ Յովհաննու կաթուղիկոսին խօսքերէն յայտնի է որ Շապուհ երիցագոյն ըլլալով ժամանակաւ քան զինքն և ժամանակակից պատմած դէպքերուն՝ արժանահաւատ անձ մըն է[1]։ Գէորգ Ա կաթուղիկոսի օրով՝ առ Նուազութեան մեծամեծաց 'ի մերում աշխարհի, պակասեաց՝ կ'ըսէ, 'ի

1. Յետին դարուց նորագոյն յիշատակագիր մը պատմչաց դասակարգութեանը մէջ կը թուէ նաև «Շապուհ պատմութիւն. որ է գիրք որքոյն Սմբատայ սարապետին և այլ սուրբ նահատակացն. թուին Հայոց ՅԲ»։ Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանաց ձեռագրաց ցուցակի մը մէջ ալ կը գտնենք ի թիւս այլոց։ «Շապուհ պատմագիր, որ է պատմութիւն Որմըզդաքքադայ և այլոց սրբոց նահատակաց որ ի թուին ԳԾԲ»։

*պատմութենէ մեր իշխանաց վրայ գրոյցք. և վրայ կը բերէ. «Բայց եթէ գուցէ գտցի ինչ՝ բաւական քեզ բերցի նախ քան զմեզ պատմեալն 'ի Շապհոյ պատմագրէ»: Ուրիշ տեղ մ'ալ. «Ի մանկութենէ մինչև ցերեւոյթս երիտասարդութեան զԱշոտոյ որդւոյ Սմբատայ սպարապետի զզօրութիւնս և զքաջութիւնս և զպատերազմունս և զհրոսմունս 'ի յայլս, և զայլոց եւս 'ի նա բաւական բերցի քեզ առ 'ի Շապհոյ պատմեալքն»: Աստղիկ ալ կը գրէ. (Կոստանդիանոս մեծն) «խնդրեաց և առ զնախկի Թագն Դաւթի մարգարէին 'ի Շապհոյ Պարսից արքայէ, զոր բարձեալ էր 'ի գլխոյն Յեքոնիայ որդւոյ Յովսիայ, Նաբուգոդոնոսոր արքայ: Որպէս ուսուցանէ քեզ պատմութիւնն Շապհոյ Բագրատունւոյ»: Կիրակոս 'ի չարս ուրիշ ազգային պատմչաց կը յիշատակէ և զնա. «Եւ Շապուհ Բագրատունի»: Նոյնպէս ալ Սամուէլ երէց:*

*Ոճոյն նկատմամբ կ'երեւնայ թէ այնչափ ընտիր եղած պիտի չըլլայ. գէթ ըստ Յովհաննու կաթուղիկոսի, որ թէպէտ պատմութեան ստուգութիւնը անհակառակելի կը համարի, բայց «զբոլորովին բաժանումն ապացուցից՝ ոչ կարացեալ ըստ քերթողական հրահանգացն համառօտաբար ընձեռել, սակայն ըստ իւրում ժամանակի ընտանի գոլով նորա զրուցացն ամենայնի, գեղջուկ բանիւ բաւական քեզ տայ պատճառս տեղեկութեան»:*

*Յանուն Շապհոյ Բագրատունւոյ՝ պահոց վրայ գրուած ճառ մը կայ, որ թերեւս ուրիշ համանուն անձի մը երկասիրութիւն է: Աւելցընենք միայն որ յԵրուսաղեմեան Մատենադարանի պահուած գրչագրի մը մէջ (թիւ 999) նշանակուած կը գտնենք այսպէս. «Ի Շապհոյ պատմութենէն. Այլ քանզի ստունգանեաց նախահայրն՝ յերկիր դարձաւ ուստի առաւ»: Այս համառօտ խօսքէն ետքը, որ մասն է Պահոց ճառին, աւելցուած է հետագայ տեղեկութիւնը Շապհոյ պատմչի անձին վրայ. «Այս ի պատմութենէ Շապհոյ Բագրատունւոյ է որդի Աշոտի ապուհի պատ*

պատրկի, յանուն Դաւթի Բագրատունւոյ որդւոյ Աշոտ իշխանաց իշխան. զոր ձեռնառեալ և ընկալեալ յօժարութեամբ Հօր Դաւթի առաջնորդի վանաց սրբոյն Ստեփանոսի ի Բագրեւանդ գաւառի և յոյժ բերկրեալ յաղագս հեռի լինելոյ ի ստութենէ, և զի ճշմարտութեամբ յաւել յինքենէ զճառս բանից աստուածայնոց»։

# ՄԱՇՏՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ

*Մաշտոց և իր վարքը ըստ ժամանակակից յիշատակագրաց։ — Արաս թագաւոր։ — Դիւնայ շարժը։ — Մաշտոցի գրած թուղթը։ — Իրեն ընծայուած ուրիշ երկասիրութիւնք։*

Աշոտ և Սմբատ թագաւորաց օրերը ծաղկեցաւ Մաշտոց վարդապետն, որ Կոտէից կամ Արագածոտն գաւառին Եղիվարդ գեղէն էր, քահանայի որդի «Ի ժառանգաց մենաստանաց, — ինչպէս իրեն ժամանակակից յիշատակագիր մը կ'աւանդէ, — որ անուամբն սրբոյն Թէոդորոսի էր»։ Երբ այլազգիք զօրացան բռնութեամբ այն գաւառին վրայ, հայրը՝ մանկութեան հասակին բռնադատեցաւ երթալ պանդխտութեամբ 'ի Սոթից գաւառ. ուր մտնելով 'ի կարգ աշխարհի, ծնաւ Մաշտոց։ Հօրը դաստիարակութեան տակ՝ ուսմանց, մանաւանդ աստուածայնոց պարապեցաւ. անոր մահուընէն ետքն ալ աշակերտեցաւ Գեղարքունեաց գաւառին Մաքենոցք կրօնաստանին մէջ գտնուող Թէոդորոս անունով միանձի մը, կամ նոյն վանաց առաջնորդ՝ Ստեփանոս վարդապետին, ինչպէս կ'աւանդէ Ուռպելեանն։

Քահանայութեան աստիճանն ընդունելով իր բարեկրօն, ճգնասուն և աստուածահաճոյ վարուք ամենուն սիրելի եղաւ։ Բայց առաւելագոյն կատարելութեան փափաքանօք, «Եկն, — կ'ըսէ իր վարուց պատմագիրն, — բնակեցաւ 'ի կղզոջս (Սեւան) սովին վարուք. և թողլով զառ 'ի բնակութենէ մարդկան, սիրողն 'ի պատուի և յանարգանս՝ բազմաց նշողացուցանէր զինքեան և զտեսակ առաքինութեան. զոր թէ ունիցին հոսել՝ վարատան հողմով 'ի ձորս և 'ի փապարս կորստեան։ Այլ սա ոչ այսպէս. այլ գնացեալ բնակեցաւ յապալերին, յայս կղզւոջ. ուստի հարկաւորեալ բազում թախանձանօք՝ իմաստուն և հանճարեղն և լռութեան սիրողն, 'ի Մարիամայ Սիւնեաց տիկնոջէ կանգնեալ զսա ուխտ։ Եւ ժողովեալ եղբարս միանձնականաց դասս՝ վասն հոգեաց տեառն իւրոյ, յարեւապէս վախճանելոյ Վասակայ Սիւնեաց իշխանին. յորում ունկնդիր եղեալ՝ յետոյ հաւատացաւ ասէ՝ Եթէ յԱստուծոյ է հրամանս, ես ոչ ընդդիմացայց. և շինեաց վանս, և ժողովեալ եղբարս՝ կալով կրօնաւորական կարգաւ։ Եւ զարդարեալ բազմախուռն պատուիրանօք վայելչական սպասուք. և անձին իւրում յաւելոյր օր ըստ օրէ զգործ մշակութեան առաքինութեան շնորհօքն Քրիստոսի։ Եւ այնչափ առաւելեալ 'ի մարմնի իւրոյ տանջանս, մինչ զի մեկնէր եւս 'ի մրգոյ և 'ի ջրոյ անգամ։ Եւ զարմանալի այս էր թէ զի՞արդ ոչ ինչ ուրուք իրաց նուազ գտանէր. քանզի զաղօթսն հանապազորդ կարգալ՝ անխափան ունէր զցայգ և զցերեկ. և զընթերցասիրութիւն գրոց սրբոց ոչ կասեցուցանէր. այլ և առնէր իսկ, և խրատէր զամենեսեան 'ի նոյն կարգ...

«Եւ ելեալ ընդ աւուրսն ընդ այնոսիկ իշխանն Հայոց Աշոտ 'ի կողմանս Վրաց վասն ապստամբելոց ոմանց յեղուզակաց.. առ յեզերբ գետոյն հզաւրի որ կոչի Կուր. դարձեալ ընդ խաղաղութեամբ ճանապարհորդէր առ եզերբ ծովակին։ Եկեալ գումարեցաւ 'ի տեղւոջ միոջ, հանդէպ կղզւոյն որ կոչի Բանակետղ. հայցէր տեսանել

զերանելին Մաշթոց. որ իբրև տեսին զիրեարս, բազում ուրախութիւն եղև երկուցունցն. ապա յոյժ սիրեալ և մեծապէս ընկալեալ զնա բարեպաշտ իշխանն Աշոտ. որ և թագաւոր իսկ եղև յետոյ։ Ապա շնորհէր երանելի հօրն Մաշթոցի զլոյսն մշտնջենաւոր. զոր արձակեալ էր նմա արքային Յունաց Վասլի։ Յոտն կացեալ և արտասուօք հանդերձ առեալ յինքն զսուրբ խաչն, զոր պնդեալ էր ոսկւով և զարդարեալ գեղեցկազան գործով, ընդելուզեալ մարգարտով. և առեալ եդ ի վերայ աչաց իւրոց և համբուրեաց զնա։ Եւ երկիր պագեալ իշխանն՝ զաջ նորա համբուրէր... ապա հրաժարեցին 'ի միմեանց. իշխանն գնաց զճանապարհ իւր, և նա դարձաւ 'ի մենաստան իւր... Յայսմ ամի յորում կարգեցի զսակաւաւոր զրուցմունս՝ էր ամք կենաց նորա սակաւ ինչ քան զվաթսուն ամ. իսկ որ մեկնեալ էր 'ի կերակրոց և 'ի բոլոր իսկ հեշտութեանց մարմնոյ՝ երեսուն և երեք ամք. և 'ի շինութեան տեղւոջս քան և երկու ամք»...

Աբաս սպարապետն տեսնելով որ իր եղբօրորդին Սմբատ՝ Բագրատունեաց վրայ թագաւորեց, Գէորգ կաթողիկոսէն օծուելով, ասկէ վրէժն առնելու համար՝ ուզեց զԳէորգ ձգել յիշխանութենէ, ու անոր տեղ նստեցընել զՄաշտոց. ուստի և մասնաւոր թուղթ գրեց առ նա։ Մաշտոց՝ այնպիսի առաջարկութիւն մը թէ իր սըրտին և թէ մտածմանցը հակառակ տեսնելով, բացէ 'ի բաց հրաժարեցաւ. ու չէ թէ միայն չուզեց համախոհ ըլլալ Աբասայ հետ, այլ նաև մասնաւոր խրատական թուղթ մը գրեց առ Աբաս, յորդորելով որ այնպիսի մնասակար խորհուրդներէ ետ կենայ. կը ջատագովէր Գէորգ կաթողիկոսը, իրեն դէմ եղած ամբաստանութեանց սուտութիւնը և անիրաւութիւնը ցուցընելով։ Երբ այն թուղթն առաւ Աբաս, սաստիկ ամօթէն և ոչ իր մտերիմ համախոհիցը ցըցուց. և երբ իր կուսակիցներէն շատն աստուածառաք պատիժներով պատուհասեցան, Աբաս անձամբ գնաց թողութիւն խնդրեց Գէորգ

կաթուղիկոսէն, ու եաքը իր եղբօրորդւոյն՝ Սմբատ Թագաւորին հետ ալ հաշտուեցաւ։ Մաշտոցի՝ առ Աբաս գրած թղթին ամբողջ օրինակը մէջ կը բերէ Յովհան կաթուղիկոս իր Պատմագրութեանը մէջ։ Հոն կը կարդանք նաև առ Դըւնեցիս ուղղած թուղթ մը, զոր հետևեալ պատճառաւ շարագրած է Մաշտոց։

Քրիստոսի 894 թուականին՝ հոկտեմբեր ամսոյն 13ին գիշերը՝ յանկարծական սասանութեամբ մը Դուին քաղքին մեծ մասը կործանեցաւ, և բնակչաց շատը մեռան։ Այն խեղճ գոյժը՝ մեծ տպաւորութիւն ըրաւ ուրիշ քաղաքաց մէջ բնակող Հայոց վրայ. և Մաշտոց վարդապետն ալ՝ որ նոյն ժամանակները Սևան կղզւոյն մէջ կը բնակէր, սրտաշարժ ու գեղեցիկ ոճով մխիթարութեան թուղթ մը գրեց այն սաստիկ հարուածէն ազատող խեղճերուն։

Յետ վախճանի Գէորգ կաթուղիկոսի՝ ամենուն հաւանութեամբը անոր յաջորդ ընտրուեցաւ Մաշտոց, որ միայն եօթն ամիս կրցաւ հայրապետական աթոռը նստիլ։

* * *

Ուսպելեանը կ'աւանդէ թէ նոյն միջոցները այլ և այլ երկպառակութիւնք կային Հայոց, Վրաց, Աղուանից և Յունաց մէջ, հաւատոյ խնդրոց և եկեղեցւոյ իննդասակագրութեանց վրայ. որոնց ամենուն լուծումը տուաւ, կ'ըսէ՝ Մաշտոց վարդապետ, այն թղթովը՝ զոր 'ի հրամանէ և 'ի խնդրոյ Գէորգեայ կաթողիկոսի գրեց. բայց այս թուղթը մեր ձեռքը հասած չէ, ինչպէս նաև ոչ այն նամակը զոր Յովհ. կաթուղիկոս կ'աւանդէ թէ գրած ըլլայ՝ երբ դեռ Սևան կղզւոյն մէջ էր, Աշոտոյ առաջնոյ թագաւորութեանը ժամանակ, անոնց դէմ՝ որ 'ի Քաղկեդոն և 'ի Շիրակաւան գումարուած ժողովոց հակա-

ռակ կը խօսէին։ Ուռպելեանը պատմագրական երկասիրութիւն մըն ալ կ'աւանդէ Մաշտոցի անուամբ. վասն զի Թանահատի կոչուած վանքին մէջ գտնուող միաբանից ճգնութիւնները ստորագրելէն ետքը կը յաւելու, թէ « Զայս ծանոյց մեզ պատմութիւն երանելւոյն Մաշտոցի որ 'ի Սեւան »։ Ուրիշ տեղ մ'ալ. « Թէ զլիովն և զերկայնն կամիս լսել՝ ընթերցիր զՈւխտանէսն և զԱգվանից պատմութիւնն և 'ի Գիր թղթոցն տեղեկացիր. եւս և զՏեառն Մաշտոցին որ 'ի խնդրոյ Գէորգեայ Հայոց կաթողիկոսի գրեալ է »։ Այս պատուական ու փափաքելի երկասիրութիւնն ալ դեռ մեզի անծանօթ է։

Արծրունին՝ Մաշտոցի ճգնողական վարքին հետ մեծապէս կը գրուատէ զինքը նաև յուսումնասիրութեան. վասն զի կ'ըսէ. « Այլ և ուսումնական բանգիտութեամբն յոյժ հմտագոյն »։ Սամուէլ ալ իր ժամանակագրութեանը մէջ. « Մաշտոց ճգնաւորական հանդիսիւ և իմաստասիրական արհեստիւ պայծառանայր »։

Ոմանք ուզեցին կարծել թէ սոյն Մաշտոց հայրապետին երկասիրութիւնն ըլլայ՝ նաև ազգային եկեղեցական արարողութեանց հաւաքման գիրքը կամ ծիսարանը, որ սովորական անուամբ Մաշտոց կը կոչուի։ Այս յայտնի սխալման գլխաւոր պատճառ եղած է նախ անուան նմանութիւնը. որովհետև այն ծիսարանին հեղինակ՝ սրբոյն Մեսրովպայ անունն ալ շատ անգամ Մաշտոց կը կոչուի. և երկրորդ՝ Յայսմաւուրաց և Կիրակոս պատմչին խօսքերը, որոնք թերևս փոխանակ ըսելու թէ ծիսարանին մէջ քանի մը բան կարգաւորեց, կամ քանի մը սաղմոս և աղօթք աւելցուց, որ հաւանական կրնայ սեպուիլ, կ'աւանդեն թէ ինքը եղած ըլլայ այն աղօթքները ժողվող և կարգի դնող։ Ահաւասիկ Կիրակոսի խօսքերը. « Սա կարգեաց զգիրս՝ որ ըստ անուան իւր Մաշտոց կոչի. ժողովեալ զամենայն կարգեալ աղօթս, և ընթերցուածս 'ի միասին յարմարել յաւելուածով յիւրմէ. որ ունի յինքեան զամենայն կարգս քրիստոնէութեան »։

*Բայց իր խօսքին դէմ կ՚ելլէ ընդհանուր ազգին աւանդութիւնը, և սուրբն Ներսէս Շնորհալի, որ առ Միջագետացիս գրած թղթոյն մէջ յայտնապէս կը գրուցէ, թէ որչափ անտեղի է այս կարծիքը.*

# ՅՈՎՀԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ

---

***Յովհան կաթողիկոս յաշակերտաց Մաշտոցի։ — Հայրապետական աթոռը եղելը։ — Պատմութիւնն և անոր նիւթը։ — Արժէքը այս երկասիրութեան։ — Գրաւորական ոճը։ — Բնագրին հրատարակութիւն և թարգմանութիւն։***

*Այս անուամբ՝ Հայաստանի հայրապետական աթոռը նստողաց վեցերորդն է Յովհաննէս, և ընդհանրապէս կը կոչուի՝ Յովհան կաթողիկոս կամ Պատմաբան։ Դրասխանակերտ աւանին մէջ ծնած էր Յովհան, Դուին քաղաքին մօտերը. բայց ո՛չ ծնողքն և ոչ ալ ծննդեան ճիշդ տարին յայտնի է։ Ի խորին ծերութեան վախճանեցաւ Քրիստոսի 925 թուականին։ Իր ուսմունքը՝ Մաշտոց վարդապետին ձեռքին տակ ըրաւ, որոյ և ազգական էր, ետքը մասնաւոր բարեկամութեամբ մտերմացաւ Գէորգ կաթողիկոսին ալ, ու անկէ և Մաշտոցէ ետև նստաւ ՚ի հայրապետական աթոռն, Ա. Սմբատայ թագաւորութեան ժամանակ։*

*Իր Պատմագրութեանը երեսներորդ երկրորդ գլխոյն մէջ՝ այն պատուոյն հասնելուն պատմութիւնը կ՚ընէ՝ կար-*

դէ դուրս խոնարհութեամբ մը[1]. մեծարանօք և գովութեամբ կը խօսի իրեն նախորդ Մաշտոց հայրապետին վրայ, ողբալով անոր վաղահաս մահը, զոր թէ՛ Հայոց աշխարհին և թէ իր անձին համար աղետալի դէպք մը կը համարի. որովհետև կ'ըսէ թէ 'ի մանկութենէ անոր հայրական խնամոցը յանձնուած ու աշակերտած էր։

Զգիտցուիր թէ ե՛րբ կամ ո՛ր իշխանին խնդրովը և առաջարկութեամբ ձեռք զարկաւ իր Պատմագրութիւնը շարագրելու։ Ոմանք կարծած են թէ տասներորդ դարուն սկիզբները սկսած ըլլայ յօրինել իր երկասիրութիւնը, հայրապետական աթոռը նստելէն առջը. բայց աւելի հաւանական կ'երևնայ այլոց գրուցածը որ կը համարին թէ մի և նոյն միջոցի երկասիրութիւն չէ ասիկայ. այլ մէկ մասը՝ 897 թուականէն առաջ շարագրուած է, մնացածները անկէ ետքը։ Այս կարծեաց ստուգութեանը գլխաւոր պատճառ այն կը սեպեն, որ Քաղկեդոնի ժողովոյն վրայ խօսելու ատենները՝ գրքին առջի մասին մէջ, խիստ և ուժով լեզու մը կը բանեցընէ նոյն ժողովոյն դէմ, բայց անկէ ետքը լեզուն կը փոխէ. և թէ՛ կրօնական համոզմամբ՝ թէ քաղաքական պատճառաւ, գիտնալով որ ինչուան յունական կայսրութիւնը վրանին ձեռք չդնէ՝ անկարելի է որ Հայաստանի նեղճութեանց դարման մը ըլլայ, կը սկսի չափաւորել խօսքը, թէ՛ նոյն ժողովոյն, և թէ անոր սահմանադրութեանցը հպատակող Յունաց նկատմամբ։ Ինչ ատրճանի ստուգութիւն ուզենանք տալ այս ենթադրութեանս, այս յայտնի է որ Յովհան կաթուղիկոս գրեթէ ինչուան մահը աշխատեցաւ իր Պատմագրութեանը վրայ. որովհետև Քրիստոսի 925 թուականին մեռաւ, և իր պատմած դէպքերն ալ ինչուան 923 կամ 924 թուականը կը հասնին։

1. «Զկնի այսր՝ հեզս եւս և Թշուառականս և պղծեալս ըստ հոգևոր արբուցմանս խրատուն Յովհաննէս, որ զայն զայս գրեցի գիրքս. ոչ ըստ արժանեաց անձս յաթոռ սրբութեան... զի Թէպէտ և յաշակերտութենէ առն սրբոյն Մաշտոցի, և 'ի մանկութենէ իմմէ, այլ և ազգակից հայրապետութեան Նորա ըստ մարմնոյ»։

* * *

**Պատմութիւնն և անոր ոճերը.** — Հարիւր ութսուն և եօթը գլուխ կը բաժնուի Յովհաննու պատմութիւնը։ Առջի երկուքին մէջ հեղինակը իր երկասիրութեան յատակագիծը կը դնէ, ու միանգամայն կ'իմացընէ թէ իր վախճանն է աւելի համառօտութիւն մը՝ քան թէ բուն ընդարձակ պատմագրութիւն մը շարագրել։ Իր այս խոստմունքը կը պահէ՝ ինչուան այն ժամանակաց պատմութեանը մէջ՝ որոնց ականատես վկայ է։ Ժամանակին ու ազգային պատմչաց սովորութեանը համեմատ՝ ջրհեղեղէն կը սկսի իր Պատմութիւնը, և կ'իմացընէ թէ պատմածներուն գլխաւոր աղբերքը երկու են. աշխարհածնութեան համար՝ սուրբ գիրք, և պատմութեանց համար օտար և ազգային պատմիչք։ Բայց ընդհանրապէս ազգային պատմչաց կը հետևի, և գլխաւորաբար՝ Մովսիսի Խորենացւոյ, իրեն ժամանակաւ մերձաւոր դէպքերուն նկատմամբ՝ Շապհոյ Բագրատունւոյ և ուրիշ ազգային պատմչաց։ Բայց որովհետև միտքը դրած է այսպիսի վայելուչ ոճ և լեզու մը գործածել 'ի պատմագրութեան՝ զոր Խորենացիէն ետքը ուրիշները գործածած չեն, իր այս ջանքը չափազանցութեան մէջ կը ձգէ զինքը. վասն զի ուզելով զարդարուն ոճ մը գործածել, վայելչականէն անդին կ'անցնի, այնպիսի լեզու մը բանեցընելով որ ըստ ինքեան այնչափ գովելի և հետևելի չէ, ոչ ըստ ոճոյն և ոչ ըստ լեզուին։ Բայց ասիկայ արևելեան՝ և մանաւանդ Յովհաննու ժամանակացը ընդհանուր թերութիւնն է։ Մեր ազգին սովորական գրչաց՝ մէկ չափաւորելի սովորութեանն ալ հետևած է Յովհան, սուրբ գրոց խօսքերը յաճախ իր պատմութեան գրոցը մէջ բերելով, յարմար կամ անյարմար վկայութիւնները շատցընել։

Պատմութեանը Գ—Ե գլուխներուն մէջ՝ Յովհան կաթուղիկոս Հայոց ազգին սկզբնաւորելուն վրայ կը խօսի.

Մարիբաս Կատինայի ու Խորենացւոյն հետևելով Հայոց ազգը Յաբեթի ցեղէն առաջ եկած կը սեպէ։ Ութերորդ գլխոյն մէջ կը սկսի Հայկայ պատմութիւնն ընել, և անոր օրինաւոր յաջորդացը, մինչև 'ի մեծն Աղեքսանդր, որ՝ ինչպէս պատմութիւնն կ'աւանդէ, եկաւ Հայաստանն ալ տիրեց։ Անկէ ետքը Արշակունեաց պատմութիւնը կը սկսի աւանդել, համառօտագոյն ոճով, և անոնց ինկնալը և մարզպանաց յաջորդելը, և անոնցմէ ետքը Հայաստանի վրայ իշխելը մերթ կիւրապաղատից և ոստիկանաց, զորս երբեմն Յունաց կայսերք կը ղրկէին, և երբեմն Դամասկոսի և Պաղտատի խալիֆաները։ Այս առթով կը ցուցընէ Բագրատունեաց ցեղին իշխաններէն ոմանց զօրանալը, ինչուան այն ժամանակ՝ յորում Աշոտ Ա կամ Մեծն՝ անկախ իշխան և Հայոց թագաւոր ճանչցուեցաւ խալիֆայէն։

Գրքին ԺԸ–ԽԸ գլուխներուն մէջ կ'աւանդէ Աշոտոյ առաջնոյ թագաւորութեան, անոր որդւոյն Սմբատայ, և այլն, պատմութիւնը։ Յովհաննու կաթուղիկոսին երկասիրութեան այս մասը՝ աւելի մանրամասն և հետաքննական տեղեկութիւն կը պարունակէ Բագրատունեաց և Արծրունեաց թագաւորաց վրայ։ — ԽԹ գլխոյն մէջ կը սկսի խօսիլ՝ Սմբատայ և Յուսուփայ մէջ ծագած գժտութիւններուն և տարաձայնութեանց վրայ, որոնք այնչափ արիւնհեղութեանց պատճառ եղան։ Արտաքին թշնամութիւնք կը լռեն, և ահաւորագոյն աղէտք և պատերազմունք Հայաստանի մէջ կը սկսին երևնալ՝ ներքին անմիաբանութեանց պատճառաւ. իշխան իշխանի դէմ. նախարար նախարարի դէմ կ'ելլեն. ժողովուրդք ալ մերթ մէկին մերթ մէկալին կողմը բռնելով՝ իբրև ընդ թշնամեաց կը պատերազմին։ Առիթ կ'առնու Յուսուփ Հագարացի ոստիկանը՝ Հայոց ներքին անմիաբանութիւնը. ու Նսր անունով մէկը Ատրպատականի վրայ կը ղրկէ շատ զօրքով. ան ալ կու գայ ու Շահնշահ Աշոտին հետ երկար ու խիստ կերպով կը պատե-

րազմի, զինքը ստիպելու համար որ խալիֆային հնազանդութեան տակ մտնէ։ Աշոտ Սեւան կղզին կը քաշուի, Գեղայ կոչուած բերդին մէջ. ինչուան որ Աշոտայ կուսակիցներէն մէկը Գորգ՝ կը պատերազմի անոր դէմ, Նորայ՝ Դուին քաղքին մէջ դրած Բշր (Պէշիր) ոստիկանը կը սպաննէ, և Արաբացւոց թշնամի գունդերը կը ցրուէ։ Այն ժամանակն է՝ յորում Յովհան կաթուղիկոս Աշոտ Շահնշահին քով կ՚երթայ, երկար ատեն նոյն իշխանին արքունեաց մէջ կը բնակի, և օրրոյ ու մեծարանաց նըշաններ կ՚ընդունի իրմէն։ Անկէց Գագիկ Թագաւորին արքունիքը կ՚անցնի, ու թէ՛ իրմէն ու թէ անոր եղբօրմէն մեծ սիրով կ՚ընդունուի։ Նոյն ժամանակները՝ այս երեք իշխանաց վրայ ալ սպառնալիք կը հասնին, և Գեղայի մէջ եղած զօրքերը՝ թշնամեաց ուժէն վախնալով անձնատուր կ՚ըլլան։ Արաբացւոց սպարապետը կը տիրէ բերդին, ու անանկով իր իշխանութեան տակը կ՚իյնան մերձակայ քաղաքներն, աւաններն ու երկիրներն։

* * *

Հոս կը դադրեցընէ իր պատմութիւնը Յովհաննէս կաթուղիկոս։ Արդէն հասակն առած՝ ու իր մահը մերձակայ տեսնելով, Խորենացւոյն պէս իր գրքին վերջաբան գլուխ մը կը դնէ, ողբալով այն աղէտքը որ Հայաստանի վրայ ծանրացեր էին. բայց միանգամայն կը քաջալերէ՝ գուշակօրէն գրուցելով, թէ ատեն պիտի գայ՝ յորում մեր հայրենեաց աղետիցը վախճանը պիտի հասնի, քրիստոսական կրօնք յաղթանակեն, և հաւատացեալք իրենց թշնամեացը վրայ զօրանան։ Անկէ խօսքը առ թագաւորս, իշխանս, պետս և հրամանատարս Հայաստանեայց կը դարձնէ, իմացընելով իրենց թէ ինչ պատճառի համար և ինչ նպատակաւ այս Պատմագրութիւնը գրելու ձեռք զարկաւ. կը ցաւի այն ուրացութեանց վրայ՝ որոց ականատես կամ պատմիչ եղաւ, և Հայաստանի իշխա-

*նացը՝ և անոնց հպատակաց՝ իմաստուն խորհուրդներ և խրատներ կու տայ։ Այս սրտաշարժ և ազդու վերջաբանով կ՚աւարտէ իր Պատմութեան գիրքը։*

*Կենացը վերջին տարիները Ձորոյ վանքը քաշուեցաւ Յովհան, և հոն մեռաւ, 925 թուականին, քանեւութ տարի Հայոց կաթուղիկոսական աթոռը նստելէն ետքը։ Իր յաջորդն եղաւ Ստեփանոս Բ, որ հայրապետական աթոռը Աղթամարայ կղզին փոխադրեց։ — Ձենք գիտեր թէ արդեօք ուրիշ գրուածք ալ շարագրած է Յովհան. ազգային հեղինակք՝ իր Պատմագրութենէն զատ ուրիշ երկասիրութիւն չեն յիշատակեր իր անուամբը։*

* * *

*Մեծ յարգանօք կը խօսին նոյն ազգային պատմիչք Յովհաննու կաթուղիկոսի թէ՛ կենացը և ուսմանց, և թէ այս Պատմագրութեան վրայ. Թովմա Արծրունի՝ «Սնեալ և ուսեալ էր, կ՚ըսէ, առ ոտս սրբոյն Մաշտոցի, նորին հրահանգեալ կրթարանի ուսումնասիրութեան վարժիւք առոգացեալ. այր քաղցրաբարոյ և հեզահայեաց»։ Եւ Յուսուփ ոստիկանին զօրացը ձեռքով՝ Հայաստանի մէջ եղած անթիւ արիւնհեղութեանց վրայ խօսելով, կը յաւելու. «Զոր այլ զօրաւոր և մտահարուստ ոմն հռետոր մեծ՝ նախ քան զմեզ վերագրեաց և աւանդեաց 'ի գանձս արքունի»։ Սամուէլ՝ գեղեցկաբան շարագրութիւն կը կոչէ անոր պատմութիւնը. Ասողիկ՝ ճարտասան և պատմագիր կ՚անուանէ զինքը. Կիրակոս՝ գեղեցկայարմար պատմութիւն կը կոչէ։ Տարակոյս չկայ որ ճարտասան պատմիչ մըն է Յովհան, և աւանդած դէպքերուն շատին ալ ականատես ըլլալով՝ այն աղէտքն տպաւորագոյն ազդեցութիւն ըրած են սրտին վրայ, և արժանի լեզու մը բանեցընելով 'ի գուլթ կը շարժէ թէ՛ լսողը և թէ ընթերցողները։ Բայց ճարտասանական արուեստը Յովհաննու գրչին տակ՝ երբեմն սովորական սահմանէն դուրս ելած*

*է. լեզուն ալ, ինչպէս քիչ յառաջ յիշատակեցինք, արուեստականութեան կերպարանք առած. անով է որ՝ որչափ ալ գեղեցիկ երեւնայ ոմանց իր կերպն և շարագրութեան ոճը, անընտիր հետեւողութիւնն զգուշանալի է։*

*Իբրև պատմիչ՝ ընտիր բարեմասնութիւն մըն ալ ունի Յովհաննէս, որ մեր՝ մանաւանդ յետին պատմչաց մէջ՝ սակաւագիւտ յատկութիւն է, համառօտութիւնը. անով է որ ամէն լման դէպքերը չպատմեր. և եթէ պատմելու ալ ստիպուի՝ երաշխաւորութիւնը վրան չառնուր։ Օրինակ իմն՝ երբոր Սմբատայ առաջնոյն մարմնոյն վրայ լոյս իջնելուն պատմութիւնը կ՚ընէ, և թէ ինչպէս թէ՛ հաւատացեալք և թէ անհաւատք տեսած ըլլան այն ճառագայթաւէտ պայծառութիւնը, կը յաւելու. « Եւ որք ասէինն զայս՝ ստուգութեամբ իմն հաւաստի զբանն առնէին. բայց մեք զայսոսիկ 'ի տեսողս անդր թողացուցեալ, և զորս աչօք իսկ տեսեալ է մեր, ոչ դանդաղեսցուք պատմել »։ « Ետես աչօք, — կ՚ըսէ Վարդան պատմիչ — զխաւարաբեր ժամանակն, և գրեաց 'ի յիշատակ ապագայիցն »։*

Յովհաննու կաթուղիկոսի պատմութիւնը՝ տպագրեցաւ յԵրուսաղէմ (1843)։ Այդ թուականէն երկու տարի յառաջ Գաղղիոյ Հասարակաց կրթութեան Պաշտօնէին հաճութեամբ հրատարակուեցաւ անոր գաղղիական թարգմանութիւնն 'ի Փարիզ, զոր անուանի արեւելագէտն Սէն-Մարդէն երկասիրեր էր, ու իր մահուընէն շատ տարի ետքը Ֆելիքս Լաժառ տպագրեց։ — Խորագիրն է. Histoire d'Arménie, par le Patriarche Jean VI, dit Jean Catholicos, traduit de l'arménien en français par M. Saint-Martin. Ouvrage posthume, publié sous les auspices du ministère de l'Instruction publique, par Félix Lajard, 1841. Մատենախօսական հատուած մ՚ալ հրատարակած է Նէվ հայագէտն պելճիացի. Examen de l'histoire Jean VI le Patriarche, traduite de l'arménien par Saint-Martin, par Félix Nève; Louvaine, 1843: Հայկական բնագիրն երկրորդ տպագրութիւն մ՚ալ ունեցած է 'ի Մոսկուա (1853), Հանիբալ Մկրտչի Էմինի, Տեսչի Ճեմարանի Արեւելեան լեզուաց։

# ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ

*Թովմայի Արծրունւոյ ժամանակը։ — Գագկայ իշխանի յանձնարարութեամբ Արծրունեաց պատմութիւն գրելը։ — Այդ երկասիրութեան աղբերք։ — Արծրունւոյն պատմութեան նիւթը։ — Գրութեան ոճը։ — Բանասիրական արժէքը։ — Բնագրին տպագրութիւնն ու թարգմանութիւնք։*

Յովհաննու կաթուղիկոսի գրեթէ ժամանակակից՝ կամ անկէ քիչ կրտսերագոյն է Թովմա Արծրունի։ ժամանակաւ որչափ ալ մերձաւոր՝ բայց 'ի հմտութեան մեծ տարբերութիւն կը տեսնուի այս երկու անձանց մէջ. որով և արժանապէս առաջին կարգի պատմագիր կրնանք սեպել զԱրծրունին, թէ որ քանի մը թերութիւններէն զգուշանար, մանաւանդ լեզուի խրթնութենէն։ Եղիշէ վարդապետին աշակերտ կը համարուէր Արծրունին. որովհետև իր պատմութեան խորագրոցը մէջ՝ նոյն վարդապետին աշակերտ կ'անուանի[1]. անոր համար քանի որ իր պատմութեան գիրքը գտնուած չէր, վեցերորդ դարու պատմիչ կը կարծուէր Թովմաս. բայց եւքը երկասիրութիւնն երևան ելնելով՝ յայտնապէս տեսնուեցաւ այն ենթադրութեան սխալ ըլլալը, թէ որ ուրիշ համանուն վարդապետի մը աշակերտ չուզենանք սեպել զինքը։

Տասներորդ դարուն սկիզբը Գագիկ Արծրունեաց տէր

1. « Պատմագիր վասն Արծրունեաց տանն, զոր արարեալ է Թովմա վարդապետի՝ աշակերտի Եղիշայի »։

և Վասպուրականի իշխանն՝ իւր հայրենասէր քաջագործութեամբքն ամենուն աչքը իւր վրայ դարձուցեր էր, անոր յաղթական զինուց վրայ՝ 'ի Թշնամեաց հարստահարեալ ազգին վերանորոգութիւնը կը փափաքէին տեսնել. այն յոյսն և ակնկալութիւնն արդիւնաւորելու գեղեցիկ պարծանքն, իրեն վրայ առած էր Գագիկ: Եւ որովհետև իւր զէնքերուն փառքը մինչև հեռաւոր ժամանակաց վրայ կ'ուզէր տարածել, և պատմութեանց մէջ՝ իրեն փառաց արձագանգը թողուլ Բագրատունեաց Սահակ իշխանին պէս՝ ուզեց որ իրեն ու իր փառաւոր Արծրունեաց ցեղին պատմութիւնը թողու ազգին. ու իր այս կամացը և փափաքին գործադրութիւնը յանձնեց Թովմայի. որուն արդէն իր հայրն այլ նոյնը յանձնած կ'երևի. վասն զի Թովմա իր յառաջաբանին ետքը կ'ըսէ առ Գրիգոր Արծրունեաց Տէր և Վասպուրական իշխան, որ անշուշտ Դերենիկն է. «Ընկալեալ զհրաման պատուիրանի քո... ձեռն 'ի գործ արկի» և այլն: Իսկ Ա դըպրութեան վերջը՝ խօսքն առ Գագիկ կ'ուղղէ:

Զօրակցեցաւ Գագիկ իւր ընտրութեանը մէջ. վասն զի Թովմաս ոչ միայն ժամանակին հմտագոյն հանճարներէն մէկն կրնար սեպուիլ, այլ ինքն իսկ Արծրունեաց ազգէն ըլլալով, հին ու անցած փառքերը՝ հնութեան աւանդիցը և գրքերուն մէջ փնտռելու յարմարութիւն և անխոնջ յարատևութիւն ունէր. ու ամէն բանէ աւելի հայրենասէր, կամ լաւ ևս ըսելով, ցեղասէր ոգի մը:

Բայց այն առաջարկութեան գործադրութեանը ամէն դժուարութիւնները իւր աչքին առջևն էին: Հայոց պատմութիւններ, զանազան անձանց ու այլ և այլ ժամանակաց երկասիրութիւնք հասեր էին իր ձեռքը. բայց Արծրունեաց ցեղին վրայ լիակատար ու յագեցուցիչ գըրուածք մը պակաս էր. իրեն հնութեամբը պատկառելի ցեղ մը՝ սակայն այն հնութիւնը ընդարձակ ասպարէզ մը պիտի բանար իւր առջևը հետազօտութեանց, և հարկ էր պատմութեան մոռացութիւնը դարմանել, փառաց պարծանքը նորոգել, կամ ուրիշներէն յափշտակել:



Արծրունին առաջնորդ առած է իրեն այս երկասիրութեանը մէջ բաց յաստուածային գրոց, մարդկութեան նախնական ստեղծմանը և ընդ ամենայն աշխարհ ցըրուելուն՝ նաև արտաքին պատմիչներ. և մասնաւորաբար մէջ կը բերէ Եւսեբիոսի, Ափրիկանոսի, Բերոսոսի, Մանեթոնի, Արիստոնի Կեսարացւոյ, Յուլիանոսի Ադիկացւոյ, Փիլոնի Աղեքսանդրացւոյ, և այլոց կարծիքները [1]: Ծանօթ կը ցուցընէ ինքզինքը նաև Հերոդոտեայ պատմութեանը, և անոր հետևողութեամբ կ'աւանդէ Պարսից պատմութեան այն մասը՝ որ Հայոց ազգին պատմութեան հետ վերաբերութիւն ունի: Ազգային պատմչաց հետ ալ կը խորհրդակցի Արծրունին, և գլխաւորաբար Մովսիսի Խորենացւոյ. և Արծրունեաց ցեղին պատմութիւնն ընելու ժամանակ կ'աւանդէ, թէ նոյն ցեղին սկզբնաւորութեան վրայ խօսած ըլլան Մամբրէ Վերծանող և անոր եղբայրը Մովսէս և Թէոդորոս Քերթող: Այս երկու պատմիչները միայն անուամբ ծանօթ են մեզի, և իրենց երկասիրութիւնները կորսուած:

Սակայն անոնց գրուածոցը մէջ եղած տեղեկութիւնքը անբաւական կը սեպէ իւր առաջարկութեանը. ուստի «փոքր ինչ և դուզնաքեայ, կը կոչէ, զմնացորդս յիշատակարանացն 'ի յառաջագոյն և հին պատմագրացն, զմեր բնիկ տերանց տոհմին Արծրունեաց»: Այն պատճառաւ հարկ սեպած է՝ ուրիշ քննութեանց տալ ինքզինքը, և մանաւանդ ճարտար և ստուգախօս պատմա-

1. «Օժանդակեալ 'ի գրոց հնագէտ պատմութեանց մարգարէականաց. և նորոց վարդապետաց եկեղեցւոյ Քրիստոսի, և արտաքին վիպասանացն՝ աշխատասէր և մտահարուստ արանց. որք դայեկաբար յանձնեցին մեզ յետոյ հետևելոցս՝ զառողջ և զառանց խարդախութեան ճաշակս համեղագոյն և կարևորագոյն կերակրոց, յորբունս կատարեալ գիտութեանն առնել հասուցանել զուսումնասէրն»:

բանից համեմատ՝ այն դիպուածոց և քաջութեանց հանդիսարան գաւառներն ու քաղաքները քալել անձամբ. ու պատմութեանց մէջ մոռցուած անցքերը՝ հոն անոնց հնաւանդ յիշատակարանաց մէջ փնտռել։ Ինքը Արծրունին ալ կը վկայէ. «Որ ինչ 'ի սկզբանց անտի շինութեանց աշխարհիս Հայոց, 'ի Հայկայ աղեղնաւորէ և 'ի Նորուն զարմից, և ցկաթոտ և վաւաշոտ Շամիրամն տիկին Ասորեստանեայց, և 'ի Նմանէ յայլս. և յայլոց ևս յաւէտ ձեռակերտք և շինուածք յիւրաքանչիւրոցն յերկրիս մերում եղեն, մեր առ ամենայն անձամբ հասեալ և աչօք տեսեալ։ Զկտեալ և 'ի հեռաւոր աշխարհս, մինչև ցԿղարջս և Շաւշեթացիս, և առ լերամբն Կաւկասայ, և յԱհիզ, մինչև 'ի մուտն 'ի Գաղա, և ընդ Տայաստան, և ընդ ամենայն հիւսիսականս և ընդ արևելս. 'ի հետխոտս գնալով տեսաք զգործ քաջաց և Նախնեաց»։ Ուրիշ տեղ մըն ալ. «Իսկ Գուրգէն (Արծրունի) որ ըստ օրէ աճէր զօրութեամբ 'ի բազում քան թէ 'ի սակաւ տեղիս. զոր 'ի Տարօն և զոր յԱնձաւացիս և զոր յԱրզն, և զոր առնել ամենայն ուրեք, որպէս ցուցանեն յիշատակարանքն՝ որք յառաջ քան զմեզ հոգացան»։

Այսպէս կը վարուի ժամանակաւ իրմէ հեռու եղած դէպքերու նկատմամբ։ Իսկ ուր հարկ էր որ մերձաւոր պատմութեանց յիշատակութիւնն ընէ, հոն բաւական չի սեպեր վեր 'ի վերոյ քննութիւն մը, այլ անձամբ քըննած է անոնց ստուգութիւնը և այնպէս աւանդած։ Իր պատմութեանը շատ դէպքերը կը հաւատարմացընեն այն խօսքը զոր կ'ըսէ իւր անձին համար. «Ոչ իբրև յայլոց համբաւուց տեղեկացեալ՝ ընծայեալ արձանացուցանեմ քեզ ստայօդ բանից պաճուճեալ առասպելս, այլ ականատես և ականջալուր և իմով իսկ ձեռօք շօշափեալ, պատմեմ քեզ հաւաստապէս զեղելոցն զարմանս»։ Այս խօսքիս ստուգութիւնը յայտնի կը ցուցընէ, երբոր Խութայ լեռնականներէն Յովսեփայ Հագարացւոյն մահը պատմելէն ետքը, «Ես ինքնին, կ'ըսէ, աչօք իմովք տե-

սի զայրն զայն՝ որ հարեալն էր զնա, (զՅովսէփ Հազարացի), և 'ի նմանէ ստուգեցի վասն նորա »: Ասանկ՝ Ռշտունեաց աշխարհին մէջ բազմաթիւ անձինք դեռ կենդանի են, կ'ըսէ, տեսողք վկայական մահուան Ապուսահակ երանելւոյն, յորոց լսեր էր պատմիչը մանրամասն հանգամանքը և իր պատմութեան գրքովը աւանդեր յետնոց:

*
* *

*Արծրունեաց Պատմութեան Գիրքը.* — Բիւզանդեայ նըման չորս դպրութիւն բաժնած է Թովմաս իրեն այս պատմական գրուածը՝ և գլխաւոր դիտմունքն եղած է, ինչպէս ըսինք, Արծրունեաց պատմութիւնը շարագրել. ասիկայ էր նաև Գագկայ Վասպուրականի իշխանին խընդիրքը: Բայց Արծրունին՝ մեր ազգին շատ պատմագրաց սովորութեանը համեմատ՝ իւր պատմութիւնը կը սկսի Ադամէն և Նոյէն, ու մարդկութեան բաժանմանէն. և որովհետև Հայկայ քաջութիւնները, և անոր Բելայ վրայ ըրած յաղթութիւնն ալ կը պատմէ, այն առթով նաև Բաբելացւոց և անոնց առասպելացը վրայ կը սկսի խօսիլ, հմտաբար քննելով և աւանդելով քաղդէական գըրոյցքը, և թէ ինչէ՞ն կամ ե՞րբ սկսան անոնց պաշտամունքը: Անկէց Ասորեստանի թագաւորութեան վրայ խօսելու կ'անցնի, ու Զրադեշտի և Մանիթոպայ կամ Մանեթովայ ուսմանց վրայ, և Զրադաշտէն՝ Զրուանայ որդւոցը՝ Որմզդի և Արհմենի թագաւորելուն, համեմատ այն առասպելաց զորս Եզնիկ և Եղիշէ կ'աւանդեն: Պարսից կրօնիցը վրայ խօսելու ատեն՝ այն առասպելքն ալ կը յիշատակէ՝ զոր աւանդութեամբ կը պատմէին Շահրիք կոչուած գիւղականքն, որոնք Ապլատատան աշխարհը կը բնակէին, կ'ըսէ, և յորոց լսած է պատմութեան մէջ յիշատակուած դէպքերը: Այն աւանդութեանց յիշատակութեններն ետքը՝ Կիւրոսի պատմութեանը կ'անցնի. և

Աստրխտանեայց ու Մարաց թագաւորութեան բարձումը պատմելով, այն պատճառաւ Հայոց իշխանութեան մեծնալուն և ընդարձակուելով փառաւորելուն խօսքը կ'ընէ։ Յետոյ Պարսից տկարանալը և Աղեքսանդրի Մակեդոնացւոյ աշխարհակալութիւնը պատմած ատեն, կը յիշէ Արծրունեաց ցեղին Աստւդ Նահապետը՝ Դարեհի նիզակակից, որ գերի բռնուած 'ի Յունաց՝ քաջութեան համար Աղեքսանդրէն տրուեցաւ առ Պտղոմէոս. որ և տարաւ զնա յԵգիպտոս և իրեն զօրավար ըրաւ։ Աղեքսանդրէն ետև Արշակունեաց թագաւորութեան կանգնիլը կը պատմէ, Հայոց ալ Նոր թագաւորութեան, զոր և ինչուան վերջանալը 'ի Ե դարու՝ կը յիշէ. և իւրաքանչիւր թագաւորաց ատեն Արծրունեաց իշխանաց կամ անոնց երկրին մէջ հանդիպածները՝ որչափ որ գտած է՝ կը յիշէ. բաւական ու նոր տեղեկութիւններ տալով Արշամայ, Երուանդայ, Արտաշիսի՝ թագաւորաց ատենին. նոյնպէս ալ Տրդատէն ետև հանդիպած բաներուն, անաչառապէս յիշելով և դատելով Մեհրուժանայ և Շաւասպայ պէս ուրացող Արծրունեաց ըրածները։ Արշակունեաց թագաւորութեան հետ կ'աւարտէ Թովմաս իր Ա դպրութիւնը։

Բ դպրութիւնը չորս հարիւր տարուան դիպուածոց պատմութիւն է, Վարդանանց պատերազմէն մինչև 'ի գալ Բուղայի՝ Հայոց նախարարները ջնջելու կամ գերի տանելու. Նախ կ'իմացընէ թէ Վարդանայ նիզակակից Արծրունեաց Վահան Նահապետին պատմութիւնն՝ Եղիշէի գրոց մէջ չգտնուելուն պատճառն է՝ Բարսումա Ասորւոյն չարութիւնն, որ այն պատմութեան բնագիրը ձեռք բերելով՝ մէջէն հաներ ջնջեր էր իշխանին յիշատակը, որովհետև անոր յաջորդն Մերշապուհ իշխան՝ վռնտեր էր զաղանդաւոր ասորին իր երկրէն։ Յետոյ կարգաւ կը յիշէ Վահանայ Մամիկոնենոյ քաջագործութիւնքըն ընդդէմ Պարսից, ասոնց պատերազմները Զ և Է դարուց մէջ ընդ կայսերաց Յունաց, Հերակլ կայսեր քա-

ջութիւնները․ Պարսից տկարանալը և յետոյ Նուաճուիլն յԱրաբացւոց․ ասոնց զօրանալն, Մահմէտի նոր օրինադրութիւնը, և իր յաջորդաց աշխարհակալութիւնը․ զորոնք համառօտիւ կը յիշէ, մինչև Ջափր (Ճեաֆար) ամիրապետին տէրութիւնը, որ խիստ ոստիկաններ ղրկեց 'ի Հայս․ ասոնք ալ չդիմանալով դէմ կեցան․ և յետոյ Սասնեցիք սպաննեցին Յուսուֆ ոստիկանը․ այս գործոց մէջ Արծրունիք ալ մասնակից էին։ Հոս կ'աւարտէ Թովմաս Բ դպրութիւնը, հետաքրքրական տեղեկութեամբ մը Սասնոյ լեռնցաց վրայօք։ Դիտելու արժանի է որ այս 400 տարուան կարևոր միջոցիս գրեթէ բնաւ չեն յիշուիր Արծրունեաց նախապետքն, և ոչ Ս․ Սահակայ և Համազասպայ Արծրունի իշխանաց նահատակութիւնն, զոր կը վայլէր ոճով պատմել․ թերևս գրած ալ ըլլայ Թովմաս և հիմայ գրքէն պակսած, ինչպէս որ պատմութեան սկիզբն և ուրիշ տեղ տեղ ալ Ա դպրութեան մէջ յայտնապէս պակաս և կիսատ մնացած է, ինչուան հիմայ մեր ձեռքը հասած օրինակաց մէջ։

Գ դպրութիւնն գրեթէ 30 տարուան պատմութիւն է, սկսեալ 'ի կիսոյ Թ դարու, որ և պատմչին տղայութեան ատենն կ'ըլլայ․ գլխաւոր և երկարագոյն մասն պատմածին առջի չորս հինգ տարուան դիպուածքն են․ և են Բուղայի պատերազմներն և կերպ կերպ հնարքներով Հայոց իշխանները բռնել և 'ի Բաբելոն խաւրելն։ Այս բաներս պատմած պիտի ըլլայ Բագրատունեաց պատմիչն Շապուհ ալ, բայց անոր գրոց կորուստն աւելի ցանկալի կ'ընէ Արծրունւոյն այս պատմածը որ կրնայ իր լաւագոյն և կենդանագոյն ոճով գրուած մասը սեպուիլ․ յորում կը սկսի ստորագրել ամիրապետին բարկութիւնը՝ 'ի լսելն Սասնեցւոց և Վասպուրականի Աշոտ իշխանին ըրածը, զօրք ժողովելն և յանձնելն Բուղայի․ որ կու գայ նախ 'ի Խլաթ քաղաք, հոն Սմբատ Մոկաց իշխանն՝ իրեն անձնատուր կ'ըլլայ․ բայց ուրիշներն քաջութեամբ դէմ կը կենան իր զօրաց․ ոմանք ալ բռնուելով կը նահատակուին,

և Նախ Ապուսահակ՝ Նախջաւանայ եպիսկոպոսին եղբայրն։ Աշոտ Վասպուրականի իշխանն առջի բերան դէմ կը կենայ Բուղայի, յետոյ անոր խոստման վստահացեալ՝ անձնատուր կ'ըլլայ իր Գրիգոր որդւովն։ Նոյնպէս անձնատուր կ'ըլլայ Գուրգէն իշխանն ալ, բայց յետ կտրիճ դիմակալութեան Կորճայից լերանց մէջ Ջապ գետոյն եզերքը· շատ բնական և վառվռուն նկարագրած է այս դիպուածս· Նոյնպէս ալ յետոյ Աղուանից կամ Արցախոյ մէջ անոնց իշխանին Ապումուսէի երկար պատերազմները և դիմակալութիւնը· որուն դէմ Բուղայի ճարն հատնելով գրեց ամիրապետին և հրաման առաւ՝ որ բռնութիւն չընէ· այլ պատուով հրաւիրէ զքաջն երթալու առ ամիրապետըն, ինչպէս որ ըրաւ Ապումուսէ ալ։ Ուրիշ պատերազմներէ և կտրիճ վկայներ ալ նահատակելէն ետև, Բուղա երեք տարուան մէջ բռնած իշխանները կը տանի առ ամիրապետն, իր տեղ կուսակալներ թողլով· որոց դէմ կը կենայ ուրիշ Գուրգէն (որդի Ապուպէլճի) Արծրունի իշխան մը· ինչուան որ յետ վեց եօթն տարուան գերութեան իշխանաց Հայոց՝ ամիրապետն անոնցմէ տըկարները հաւատքէ կը հանէ և կը դարձընէ իրենց երկիրը, հաստատ կեցողներէն ոմանք կը նահատակէ, զոմանս ալ կը թողու բանտի մէջ մեռնելու· ասոնցմէ եղաւ Սմբատ Բագրատունի Հայոց իշխանապետն, որ և անոր համար Խոստովանող կը կոչուի· որուն տեղ Բուղա Հայոց գլխաւոր թողեր էր անոր որդին Աշոտը, այն որ յետոյ ամիրապետին հաւանութեամբը ոչ միայն Հայոց իշխանապետ՝ այլ և թագաւոր եղաւ։

Գերութենէն դարձող իշխանաց մէջ առջիններէն եղաւ Գրիգոր Դերենիկ որդին Աշոտոյ, և յետոյ հայրն ալ· աս երկուքն ալ հակառակելով կը կռուին Գուրգէնի հետ նախիշխանութեան վրայ, ինչուան որ Գուրգէն Անձևացեաց երկիրն առնլով՝ մէկալ կողմերը կը թողու անոնց։ Աշոտ՝ ուրիշ տեղուանք ալ այլազգեաց ձեռքէն ազատելով; և իր ակամայ ուրացութիւնը ապաշխարելով՝

կը մեռնի տարիքը չառած։ Հոս կ'աւարտի Գ դպրութիւնն ալ։

Դին մէջ կը պատմէ Թովմա իր ժամանակին ականատես պատմութիւնը, որոյ գլխաւորն է՝ յետ Գրիգորի Դերենիկայ և անոր անդրանկին Աշոտոյ գործոց, ասոր միջին եղբօր՝ Գագկայ՝ գործքերն։ Գագիկ որ և Խաչիկ՝ ծնած էր յամին 879, և քան զԱշոտ ու իրենց կրսեր եղբայր Գուրգէնը՝ ամենայն բարեմասնութեամբ առաւելեալ էր, թէ մարմնաւոր ձրիւք և քաջութեամբ, թէ իմաստութեամբ և հնարագիտութեամբ և թէ քաղաքական կարգաւորութեամբք և շինութեամբք. և ըստ նկարագրի պատմչին՝ միանգամայն դիւցազն է և աշխարհաշէն իշխան. և այսպիսի բարեմասնութեանց արժանաւոր վարձք կը սեպէ Արծրունեաց թագաւոր և թագաւորութեան հեղինակ ըլլալն. որ ուրիշ աչքով նայելով՝ փառասիրութեան և ապերախտութեան արգասիք կը սեպուի։ Վասն զի Գագիկ երկար ատեն անգութ և չարահնար Յուսուփ ոստիկանին վարպետութեամբ հակառակելէն ետև, անոր աչքը մտաւ, և իր Արծրունեաց երկրին վրայ թագաւոր եղաւ, որով զատեց այն երկիրը Հայոց թագաւորութենէն, զոր իմաստութեամբ և քաջութեամբ կը կառավարէր իր քեռին Սմբատ Բագրատունի, որդի Ա Աշոտոյ. աս երկուքն ալ շատ բարիք ըրած էին Գագկայ հօրը և իրեն ու եղբարցը՝ հօրերնուն մեռնելէն ետև։ Ասով Սմբատ իր մեծ օգնականը և յոյսը կորսնցուց, և յետոյ ստիպուեցաւ անգութ ոստիկանին ձեռքն իյնալ և նահատակուիլ։ Այս խորհըրդածութիւնները չի կրնար ընել մեր պատմիչն և ոչ մեղադրել իր դիւցազնը. թէպէտ և չի զլանար զՍմբատ ալ մեծապէս գովել ու աննման մարդ մ'անուանել։ Երկիրը խաղաղելէն ետև Գագկայ շինութիւնները կը ստորագրէ պատմիչն՝ տեղ տեղ բանաստեղծական աշխուժիւ. Աղթամար կղզւոյ մէջ Ս. Խաչ եկեղեցին, որ ինչուան հիմայ ալ կանգուն է՝ թէ և քանդակքն և նկարքն մա-

շած և Թափած, և նոյն կղզւոյն ու Ոստանայ մէջ. արքունի ապարանից շէնքերն, որ հիմայ բոլորովին անհետ եղած են Վանայ ծովուն մէջ, ուր և ամբարտակ մը շինէր էր մեծամեծ քարերով։ Պատմելով Գագկայ վերջին քաջագործութիւններն որ 'ի Դուին՝ օգնական երթալով Աբասայ Թագաւորի՝ որդւոյ Սմբատայ, և որ ընդդէմ Դեյլմկաց, մեր հեղինակն կ'ուզէ պատմութիւնը վերջացընել Գագկայ վրայ գովեստով մը, սկսելով իր արտաքին կերպարանքը նկարագրել, և անցնելով իր բարուց, քաջութեան և իմաստութեան վրայ։ Անշուշտ ընծայականով մը, կամ խօսքն առ Գագիկ դարձընելով՝ աւարտած էր Թոմաս իր երկասիրութիւնը, ուրախութեամբ և փառօք կնքելով խօսքերը. սակայն այս վերջաբանը մեզի հասած չէ. հոս կիսատ կը մնայ գիրքն. և Թէպէտ դեռ ուրիշ բաներ կը կարդանք Արծրունեւոյն անուամբ հրատարակեալ գրոց մէջ, և Ե դպրութիւն մ'ալ, բայց իրմէ ետքի գրողի և շարունակողի գործ է այն. մասամբ կրկնութիւն ըլլալով Գագկայ և իր եղբօր Աշոտոյ պատմութեանն, մասամբ Գագկայ ցեղին վերջին պայազատին՝ Սենեքերիմայ Արծրունեաց յետին Թագաւորին յիշատակն, և անոր ցեղէն իջած Աբդլմսեհ իշխանի ու ասոր որդւոց. որոնց դարձեալ ուրիշ յիշատակագիրք ալ՝ պակասաւոր շարունակութեամբ՝ ինչուան 'ի ԺԴ դար կը հասցընեն Արծրունեաց յիշատակները։

* * *

Արծրունւոյն ոճը. — Ըստ լեզուի մաքրութեան տարակոյս չկայ որ Թովմաս պատմիչ ալ լաւ հայկաբան է. բայց տեղ տեղ՝ ինչպէս ի սկզբան ալ ըսինք՝ խրթնաբանութեամբն կամ պակաս ընտրութեամբ բառից՝ կը հեռանայ 'ի յստակութենէ. և ընդհանրապէս խիստ քան փափուկ կրնայ ըսուիլ. գլխաւոր պակասութիւնն ալ յայսմ մասին է իր դարուն քաղաքական ազդեցութեամբ

տուած եկամուտ ոճը, այսինքն տրաբական պերճաբանութիւն մը կամ բանութիւն բառից, որ թէ և շատ տեղ սաստկութիւն կու տան բացատրութեան՝ այլ ընտիր Նախնեաց պարզութեան շնորհքը չունին: Ի վերայ այսր ամենայնի դիտելով պատմութեան կարգաբանութիւնը, միակերպ պահած ոյժը, վառվռուն և երբեմն բանաստեղծական նկարագրութիւնները, դիմացնիս դրած միտք գրաւող տեսարանները, կտրիճ ոգի մը՝ որ բոլոր պատմածին և գրուածին վրայ կը փայլի իբրև անդրադարձութիւն մը հոգւոյ հեղինակին, բուական անաչառ դատաստանները, և յաջողութիւնը կերպ կերպ իմաստներ և կրքեր կենդանագոյն ներկայացընելու. ասոնք զԹովմաս առաջին պատմիչ կ՚ընծայեն մեզի յետ ոսկեդիր պատմչաց Ե դարուն և Աղուանից պատմչին, իրմէ վերջ եկողներէն ալ ամենէն գերազանց, յիշեալ ամենայն թարեմասնութիւնքը մէկտեղ առնլով:

Գիտնական և պատմական արժէից դառնալով, բաց 'ի պէսպէս յիշեալ դիպուածներէն երախտապարտ ենք իրեն մեր հին և կորուսեալ քանի մը հեղինակաց գործքերէն յիշածներուն, և քանի մ՚ալ գործոց յիշատակութեանն համար. ինչպէս են Մովս. Խորենացւոյ պատմութեանն Դ գիրքը, անոր եղբօր Մամբրէի և Թէոդորոսի գրած Հայոց Մնացորդ պատմութիւնները, Աբրահամ խոստովանողին համառօտ պատմութիւնը Վարդանանց, և այլն: Ասոնցմէ ալ հին՝ Հայոց կամ գէթ Արծրունեաց պատմութիւն մը, թերևս Աղեքսանդրի Մակեդոնացւոյ ատեն կամ քիչ վերջ գրուած, որոյ օրինակն կը գըտնուէր 'ի հռչակաւոր գրատան Աղեքսանդրիոյ Եգիպտոսի, ուսկից բերել տուաւ Ա Տիգրան Արշակունի, խնդրելով 'ի Կղէոպատրայ Թագուհւոյ: Թովմա երկու տեղ կը յիշէ հին պատմագիր մ՚ալ և հատուածներ կը բերէ, որք մարգարէական ոճով կէս ողբական և սպառնական խօսքեր

են Պարսից կամ Ելիմացւոց վրայ. և բանասիրաց հետաքննութեան արժանի գլուխ մ'է այս.[1]:

Ցարգի են մեզի նաև Թովմայի յիշած քանի մը պատերազմական և քաղաքական օրինաց սովորութիւններ, զորս ուրիշ տեղէ չենք գիտեր:

Աստուածաբանական խնդրոց մէջ ալ կ'երևի որ Թովմաս ոչ միայն բաւական հմտութիւն ունէր, այլ և դատող և ոչ ծառայական միտք. և երբ պատմութեան կարևոր դիպուածն կը պահանջէ՝ կ'իջնայ քննութեան և ընտրութեան. խստիւ կը յանդիմանէ զԲագարատ իշխան Տարօնոյ և Հայոց իշխանապետ, որ ուրացութեանը վրայ պատրուակ աւելցընելով ըսեր էր, թէ ակամայ ուրացութիւնն մեղք չէ: Անսովոր և համարձակ կարծեօք մ'ալ կը հաւանի՝ թէ ջրհեղեղի ատեն Նոյի տապանին մէջ՝ Ս. Գրոց յիշած ութ անձանցմէ զատ ուրիշ անձինք ալ եղած ըլլան, ինչպէս տապանը շինողներէն ոմանք, և ճարտարապետն ու Նոյի մէկ դուստրն, ըստ ոմանց աւանդութեան. և այս բանս կ'արդարացընէ Պետրոս առաքելոյն վկայութեամբ վասն ապրելոցն 'ի ջրհեղեղէն «ոգիք իբրև ութ»: Ընթերցողք 'ի հարկէ կը խորհրդածեն թէ ի՞նչ պէտք էր Թովմայի՝ Արծրունեաց պատմութեան ատեն՝ այսպիսի խնդրոց մէջ մտնել. — իրաւացի է. Թովմաս 'ի սկզբան պատմութեանն ալ այսպիսի աւելորդաբանութիւն կ'ընէ նաև նախաջրհեղեղեան նահապետաց վրայ, մանաւանդ Կայէնի վրայ իմաստասիրելով:

Թովմա Արծրունի իր պատմութեան պատրաստութիւնը սկսելէն ինչուան գլխաւորելը՝ իբրև 40 տարի ան-

1. «Առ փոքր ինչ և զուղնաքեայ զՄնացորդս յիշատակարանացն 'ի յառաջագոյն և հին պատմագրացն՝ զմեր քնիկ տերանց տոհմին Արծրունեաց գիրն և զտեղին բացայայտեսցուք 'ի պատմութեան աստ, զի յայտ յանդիման երևեսցին արիութիւնք առաքինութեանց, ըստ անուանց և տեղեաց և ժամանակաց». (Ա. Դուլրիեան):

ցուցեր է. որովհետև Գրիգոր Դերենիկ՝ որոյ առաջարկութեամբ ձեռք զարկաւ պատմագրութեանը, մեռած է յամին 886, իսկ ինքն գրեթէ ինչուան 930ի հանդիպած բաները կը պատմէ:

Թովմայի Արծրունւոյ Պատմութիւնն առաջին անգամ տպագրեցաւ 'ի Միջագիւղ Պոլսոյ յամին 1852, Աղթամարայ մէջ գրուած օրինակէ մը, որ հիմայ 'ի Կ. Պոլիս է, և ուսկից գաղափարած կ'երեւան ուրիշ տեղ մեզի ծանօթ օրինակք ալ: Ասկէ զատ բնագրին տպագրութիւն մը եղած է ի Պատկանեան Քերովբէ ուսումնականէ ի Փեթրբուրգ: Նոյն մայրաքաղաքին մէջ նաև գաղղիական թարգմանութիւն մը Պրոսէի ձեռքով, և հրատարակեալ յերկհատոր Հատուածոց Հայ պատմըչաց, կրելով խորագիր Histoire des Ardzrouni, par le Vartabed Thoma Ardzrouni; traduite par M. Brosset. Saint-Pétersbourg, imprimerie de l'Académie Impériale des Sciences, 1874. Մատենախօսական հատուած մ'ալ հրատարակած է դարձեալ նոյն հայագէտ բանասէրը Արծրունւոյն պատմական երկասիրութեան վրայ. Notice sur l'histoire arménien de Thoma Ardzrouni, Xe siècle. Tiré des Mélanges Asiat. IV, 686-763. — Ուրիշ հատուած մ'ալ իր թարգմանութեան վրայ. Sur l'histoire composée en arménien par Thoma Ardzouni, traduite en français par M. Brosset. Mélanges Asiat., VI, 226-232.

## ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐՔ

---

1. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԲԺԻՇԿ. — Իններորդ դարուս մէջ կը յիշատակուի Յովհաննէս անունով բժիշկ մը, որ սրբոյն Դիոնեսիոսի պատմութիւնը գտնելով՝ 'ի յունականէն փոխադրեալ 'ի Վիրականն (?) հայերէն թարգմանեց մեր ՅԻԹ (Քրիստոսի 880) թուականին:

2. ԱՀԱՐՈՆ ՎԱՆԱՆԴԱՑԻ զոր գրչագիրք թոռն կը կոչեն Ղեւոնդեայ երիցու յ'Իշխանից գեղջէ:

3. Նոյնպէս Բագրեւանդ գաւառին Ս. Ստեփանոսի վանուց ԴԱՒԻԹ վանահայրն, որուն համար այսպէս կը գրուցէ յիշատակարան մը. « Այս 'ի պատմութենէ Շապուհոյ Բագրատունւոյ է, որդւոյ Աշոտոյ Ապուհիւպատ պատրկի, յանուն Դաւթի Բագրատունւոյ՝ որդւոյ Աշոտոյ իշխանաց իշխանի. զոր 'ի ձեռն առեալ և ընկալեալ յօժարութեամբ հօր Դաւթի՝ առաջնորդի վանացս սրբոյն Ստեփանոսի 'ի Բագրեւանդ գաւառի, և յոյժ բերկրեալ՝ յաղագս հեռի գոլոյ 'ի ստութենէ և լի ճշմարտութեամբ, յաւել յինքենէ զճառս բանից աստուածայնոց »:

4. ՍՏԵՓԱՆՈՍ աշակերտ Մաշտոց կաթուղիկոսի, որ Մաշտոց գիրք մը օրինակած է յամին 893, և վերջը իր վարդապետին՝ Մաշտոցի վարքը գրած. Թերևս աս ալ պատճառ եղած է այս Մաշտոց վարդապետը կարծելու հեղինակ նոյն գրոց, որ կ՚ընծայուի Ս. Մեսրովպայ—Մաշտոցի:

5. ԳՈՒՐԳԷՆ Արծրունի Անձեւացեաց տէրն, իններորդ դարուս մէջ Աբդլմսեհի վկայաբանութիւնը թարգմանել տուաւ 'ի հայ. « Թարգմանեցաւ վկայաբանութիւն ծառայիս Աստուծոյ յասորի գրոց ի հայ, հրամանաւ աստուածապահ տեառն Գուրգենայ Արծրունւոյ Անձեւացեաց տեառն, ՅԻԲ (873) թուականութեանս Հայոց. յօգնականութիւն անձին իւրոյ և ամուսնոյ իւրոյ Հեղինէի աստուածասիրի, և որդւոց իւրոց Տաճատայ և Ատոմայ »:

6. ԳԷՈՐԳ Բ կաթուղիկոս Գառնեցի, որ հաւատոյ խնդրոց վերաբերեալ թուղթ մը գրած է առ Յովհաննէս պատրիարք Ասորւոց:

ղած է՝ Թոնդրակեցւոց մոլորութեանը դէմ գրուած մը, Անանիա կաթուղիկոսին հրամանաւը շարագրած, որ գովութեամբ կը յիշատակուի թէ՛ 'ի Շնորհալւոյն և թէ 'ի Մագիստրոսէ։ Այս գրուածքն է անշուշտ որ յամի 1892 հրատարակուեցաւ առաջին անգամ 'ի Վաղարշապատ՝ հանեալ ի մատենադարանաց Մայր Աթոռոյ Էջմիածնի։ Խորագիրն է «Երանելւոյ հաւր Անանիայի գիր խոստովանութեան որ յաղագս սուտ կարծեացն որ ի վերայ նորա»։ Մեզի արդէն ծանօթ էր այդ մակագրութիւն, բայց և ոչ գրուածքն, և վրիպակաւ ենթադրեր էինք թէ համանուն Շիրակունւոյն ըլլայ, ուր եթէ պարունակութեանն տեղեակ ըլլայինք, ժամանակագրական այդ սխալման մէջ չէինք իյնար։

Գրուածքէն յայտնի կ'երևնայ թէ վրան ամբաստանութիւն կամ կարծիք եղած ըլլայ համամտութեան ընդ աղանդաւորս, ուստի և ի հոգևորական իշխանութենէ բռնադատուած յարդարացուցումն կամ ի հերքումն։ Հրատարակողին հետ (Միաբան) կը համաձայնինք ըսել թէ ինչ որ կրնայինք յուսալ տեղեկութիւն աղանդին վերաբերմամբ, Անանիայի նորագիւտ երկասիրութիւնը կերպով մը յուսախաբ կը ձգէ զմեզ, չգտնելով ի նմա՝ ինչ որ փափաքելի կրնար սեպուիլ։ Աւելի անձին պաշտպանութիւն մ'է, և ոչ այլ ինչ. կ'անիծանէ և լիուլի բերնով և ոճով հարկ կը համարի նզովել զԹոնդրակեցիս որպէս զի անոնց համամտութեան արատը սրբէ վրայէն և արդարանայ. «Տարօրինակ և սրտաշարժ տեսարան, կը յաւելու հրատարակողն. — Հայոց ամենամեծ վարդապետներէն մէկը, Նարեկեան դպրոցի հիմնադիրը, յոր ծերութեան, հիւանդանութեան անկողնում մեղադրում է աղանդաւորութեան մէջ նոյն իսկ իւր ընկերակից կրօնաւորից, որոյ կեղտ անունը ջնջուել է պատմութեան էջերից և մեզ չէ հասել... Դառն և արդարացի ցասմամբ լի խօսքերով է դառնում Անանիա Նարեկացին իւր անուանակից, հայրենակից Անանիա կաթողիկոսին, որ իր-

մէ ուղղափառ խոստովանութեան գիր էր պահանջում և անէծք Թոնդրակեցիներին։ Իւ իսկապէս այս առաջին անգամ լոյս տեսնող թղթի ամենէն շահաւոր մասը այդ սրտաշարժ, զգացուած յառաջաբանն է և մասամբ ալ նոյն ոգւով գրուած վերջաբանը։ Այդ մի քանի տողերը՝ ամբողջ դարի պատկերն բաց անում մեր առաջ[1]»։ Կիրակոս կ՚աւանդէ թէ առաքելական թղթոց մեկնութիւն մըն ալ՚ շարագրած է Անանիա դիւրիմաց բանիւք և հետևողութեամբ Եփրեմի, Ոսկեբերանի և Կիւրղի և ուրիշ վարդապետաց։ Կ՚ըսէ դարձեալ նոյն պատմիչը, թէ աւետարանաց համեմատութիւն և խորհրդական և մտաւոր տեսութիւնք շարագրած ըլլայ. և ճառ մը՝ ցուցընելու համար թէ ինչպէս ուղղափառ մտքով կ՚երգեցուի սուրբ Աստուած մաղթանքը խաչեցարիւ։ Ծողակաթի վրայ ճառ մը շարագրած է, կ՚ըսէ, որ անշուշտ եկեղեցւոյ վրայ խօսած ճառն է՝ մեր ձեռքը հասած, իմաստալից գրուած մը, բայց անսովոր բառերով և ոճերով։

Ճառընտրաց մէջ կը հանդիպինք հետևեալ խորագրով յիշատակուած երկասիրութեանց. «Ննորհալից վարդապետին Անանիայի Նարեկացւոյ ասացեալ վասն աղօթից, պահոց և արտասուաց»։ Ասկէ զատ ուրիշ ճառի մը՝ խորագրովը առջինին նման՝ բայց իմաստիւք տարբեր. «Անանիայի հոգելից վարդապետի և Նարեկայ վանից առաջնորդի ասացեալ վասն զղջման և արտասուաց և աղօթից»։

Դարձեալ. «Անանիայի հոգենորոգ վարդապետի խրատ հոգևոր՝ ցուցեալ թէ որպէս կարասցէ մարդ որոշել ըզմիտս յերկրաւորացն և զայս կեանս արհամարհել, և Աստուծոյ միայն ցանկալ և արքայութեան նորա։ — Արդ եթէ կամիս որ յաղթես աշխարհիս, և ոչ ըմբռնիս ՚ի կենցաղոյս պատրանս»։

1. Տես Բազմավէպ 1893, շատ տեղեկութիւններով նիւթիս վրայ։

# ԽՈՍՐՈՎ ԱՆՁԵՒԱՑԻ

---

*Խոսրով Անձեւացի՝ հայր Նարեկացւոյն։ — Ժամագրոց մեկնութիւն։ — Մեկնութիւն խորհրդոյ սրբոյ Պատարագին։ — Իր անուամբ յիշատակուած ուրիշ գրութիւն մը։ — Տպագրութիւնք իր երկասիրութեանց։*

Տասներորդ դարուն մատենագրական պատմութեանը պարծանք է իր հանճարովն և իմաստութեամբ՝ մեծն Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոսը. որ տղայ հասակէն ուսմանց և գիտութեանց եռանդ եղաւ, և վերը յիշուած Անանիա Նարեկացւոյն եղբօրը դստեր հետ ամուսնանալով՝ երեք որդի ունեցաւ, Յովհաննէս, Սահակ և Գրիգոր, որոնց վրայ ետքը պիտի խօսինք։ Ժամանակ անցնելէն վերջը հրաժարեցաւ յաշխարհէ, ու վանք մը քաշուեցաւ. և քանի մը տարիէն Անձեւացեաց գաւառին եպիսկոպոս ընտրուեցաւ։ Իր եպիսկոպոսութեանը ժամանակ շարագրեց հետագայ գրուածները։

Ժամագրոց մեկնութիւն. — Հայաստանեայց եկեղեցւոյ հասարակաց աղօթիցը ընտիր և սրտեռանդն մեկնութիւն մըն է, որուն յառաջաբանին մէջ այս պատճառը կու տայ. «Թէ որ իշխանաց և թագաւորաց առջև խօսելու ատեններս ամենայն զգուշութիւն, մտադրութիւն և արթնութիւն կ՚ընենք, որպէս զի չըլլայ թէ անվայել կերպ կամ խօսք մը տեսնուի վրանիս և մեր բերնին մէջ, ևս առաւել նոյն զգուշութիւնը պիտի բանեցընենք թագաւորին Թագաւորաց՝ Աստուծոյ հետ խօսակցելու ժամանակնիս. և այս վախճանաւ յօրինեցի նոյն սուրբ աղօ-

թից մեկնութիւնը »։ Աւելի տգիտաց համար շարագրեցի, կ'ըսէ, այս երկասիրութիւնը. ուստի և կ'աղաչէ որ չըլլայ թէ գիտունք արհամարհեն այն գրուածը' որ իրենց օգտակար ըլլալու դիտմամբ գրուած չէ. այլ պարզապէս անոնց համար' որ կ'աղօթեն առանց նոյն աղօթից ոյժը և խօսքերուն զօրութիւնը հասկընալու։

Որչափ պարզ' այնչափ ալ ընտիր է այս մեկնութիւնը. համառօտ' բայց առանց կարևորը դուրս թողլու։ Աստուածասէր հոգի և կիրթ միտք մը կը ցուցընէ Խոսրով այս երկասիրութեան մէջ. եկեղեցական գրոց և իմաստից ալ ընդարձակ հմտութիւն. անոր համար շատ անգամ յայն եկեղեցւոյ վարդապետաց խօսքերն ալ մէջ կը բերէ։



Նոյն ոճով ու սրտով գրուած է, և Մեկնութիւն խորհրդոյ սրբոյ Պատարագին, թէպէտ և առանց ունենալու այն հմտութիւնն ու լեզուն' զոր Լամբրոնացին բանեցուցած է համանուն երկասիրութեանը մէջ։ Ինչպէս առջի գրուածքին, աստանկ ալ ասոր շարագրութեանը մէջ ուրիշ վախճան ունեցած չէ սուրբ հայրապետս, բայց միայն իր պաշտաման պարտքը անթերի կատարել. « Ոչ եթէ անձինս փառք ստանալու համար էր, կ'ըսէ, որ այս գրուածքիս ձեռք զարկի, այլ որովհետև եպիսկոպոսութեան աստիճան ունիմ, և շատերուն քով ամենամեծ տգիտութիւն տեսայ, անոր համար հարկ սեպեցի այս գրուածքս յօրինել, իմանալով թէ անկարելի էր միայն խօսքով անոր կարևոր դարմանը մատուցանել »։

Մեր քովը գտնուած գրչագրաց մէջ յիշատակարան մը կայ' Խոսրովու որդւոյն Սահակայ ձեռքովը գրուած, որ իր հօրը երկասիրած Պատարագի մեկնութիւնը գաղափարելով կ'աւանդէ այսպէս.

« Շնորհիւն Աստուծոյ եղև մեկնութիւն այսմ գրոց 'ի ձեռն Խոսրովայ Անձևացեաց եպիսկոպոսի, յայժ հե-

տեառն պատուիրանացն Աստուծոյ. զո՛ր մեզ և գովել անհնար է, զի մի՛ գայթակղեսջիք 'ի նոյն, վասն գոլոյ նորին հայր իմ ըստ մարմնոյ. որոյ չեմ արժանի կոչիլ որդի և ոչ վարձկան, ըստ գրեցելումն. այլ 'ի գրելոցդ՝ լիցին հասու խնդրողքդ վասն նորա, որք սրտի մտօք ունկն դնիցեն. որք և աղօթիւք՝ փոխադարձել պարտին ընդ տուեցելոյս. և հասարակաց տուողն Աստուած՝ և ձեզ հայցողացդ ձիրեսցէ զիւրականն պարգև։ Այլ յոյժ ամաչեցեալ և տարակայ գտանիմ, ես Գրիգոր պարտաւոր պատուիրանաց սուրբ գրոցս։ Արդ առաջին սուրբ գրոցս այսորիկ գծագրութիւն եղև ձեռամբ Սահակայ՝ որդւոյ տեառն Խոսրովու, այս սուրբ գրոցս մեկնողի ՑՂԹ թուականութեանս Հայոց »։ Այս խօսքերէն կ'երևնայ թէ Խոսրովու թելադրութեամբ՝ որդին գրի վրայ կ'առնուր։ Զայս ակնարկէ անշուշտ Այրիվանեցին. « Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոս արար զմեկնութիւն Աղօթամատուցին՝ զոր գրէր Սահակ որդի իւր »։

Բանք երանելւոյն Խոսրովայ խորագրով երկասիրութեան մը յիշատակութեան հանդիպեր ենք (Մատենադարան Բարձրահայեաց Ս. Աստուածածին վանաց, թիւ 229), որ հաւանականաբար Անձևացւոյն է։

Խոսրովու ժամագրոց մեկնութեան տպագրութիւնն եղած է 'ի Պօլիս յամի 1730–36։ Իսկ Պատարագի խորհրդոյն 'ի Ս. Ղազար 'ի 1869։

# ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

---

*Նարեկացի և իր սրբակրօն վարքն։ — Երկասիրութիւնները։ — Ապարանից խաչին պատմութիւնը։ — Ներբող 'ի սուրբ Աստուածածինն։ — Ճառ 'ի գովեստ Առաքելոց։ — Գովեստ 'ի սուրբն Յակոբ Մծբնայ։ — Երգերգոցի մեկնութիւն։ — Աղօթք կամ Նարեկ։ — Նարեկացւոյն մանր երկասիրութիւնները։ — Անհարազատ գրուածներ։*

Խոսրով Անձևացեաց եպիսկոպոսին որդին էր սուրբն Գրիգոր, որ 951 թուականին ծնաւ, ու մանկութեան հասակէն Ռշտունեաց գաւառին մէջ եղած Նարեկայ վանքին առաջնորդ Անանիա վարդապետին իմաստուն խնամոցը յանձնուեցաւ։ Հոն իւր վարուցը սրբութեամբն ու անարատ քաղաքավարութեամբ՝ մարմնաւոր հրեշտակ մը երևցաւ. իսկ գիտութեամբն ու իմաստութեամբը՝ ժամանակին ամենէն անուանի հանճարներէն մէկն։ Անանկ որ քանևվից տարուան առոյգ հասակին՝ թագաւորներ իրենց տարակուսանացը լուծումը կը խնդրէին իրմէ։ Բայց հանճարն ու սրբութիւնը իրեն դէմ յարոյց ժամանակին ոգէտ ու ինքնահաւան գլուխները, որոնք ինչուան Անի քաղաքը գնացին՝ կաթուղիկոսին առջևը զինքն ամբաստանելու, իր միաբանասէր եռանդը՝ յանցանք սեպելով։ Կ'աւանդեն թէ կաթուղիկոսն ալ քանի մը վարդապետաց հետ խորհուրդ ընելով, նուիրակներ ղրկեց անոր, ու զինքը դատաստանի կանչեց։ Իմացաւ Գրիգոր անոնց գալստեան դիտումը, ու սիրով ընդունելութիւն

ընելով՝ ուրբաթ օր մը զանոնք կերակուրի հրամցուց, և խորոված աղաւնի դրաւ առջևնին։ Երբ անոնք մէկ կողմանէ իրենց ծուռ կարծեացը վրայ հաստատուելով՝ մէկալ կողմանէ կը գայթակղէին վրան, ու օրուանը պահք ըլլալը կ՚իմացընէին, Նարեկացին ներումն խնդրեց անոնցմէ գործած վրիպակին համար, ու խորոված աղաւնիներուն դառնալով՝ հրամայեց որ ելլեն երթան. որոնք մէկէնիմէկ ողջըննալով՝ թռան։ Ասով չարախօսաց բերանը կարկեցաւ, ու սրբոյն արժանաւոր համբաւը ա՛լ աւելի շատցաւ։

Անկէց ետքը ինքզինքը բոլորովին ներանձնական կենաց ու գրաւորական զբաղմանց տուաւ Գրիգոր. ու իր մեծ և անզուգական հանճարը երկնից ու երկնքի արժանաւոր նիւթերու նուիրելով՝ իբր 60 տարուան փոխեցաւ առ Աստուած, ու Նարեկայ վանքին մէջ թաղուեցաւ, ուր ինչուան հիմա աւանդութեամբ կը ցուցընեն իւր սուրբ և նուիրական շիրիմը։



**Նարեկացւոյն երկասիրութիւնները.** — Նարեկացւոյն բազմապատիկ երկասիրութեանցը մէջ նշանաւորներէն կրնան սեպուիլ իր ճառերը. որոնց մէջ առաջինն է

**Ափարանից խաչին պատմութիւնը.** — Վասիլ ու Կոստանդ հարազատ եղբարց կայսերաց ժամանակ՝ Մոկաց աշխարհէն ազնուական անձ մը՝ գնաց նոյն ինքնակալաց դուռը զինուորելու. այս մարդս եղբօրորդի ըլլալով Դաւթի՝ Մոկաց հռչակաւոր և սքանչելագործ եպիսկոպոսին, անոր տապանէն հողէն կտոր մը քովը պահած էր իբրև 'ի մխիթարութիւն, և անկէց այլ և այլ հրաշքներ կ՚ըլլային։ Բարեպաշտ ինքնակալքն այս բանս իմանալով, ա՛լ աւելի պատուեցին զինքը. ու ետքէն իմանալով թէ անոր Ստեփանոս քեռորդին՝ նոյն սքանչելագործ Դաւթին՝ աթոռոյն վրայ նստած է, ուզեցին անոր

գերեզմանին ընծանեք ղրկել։ Բայց Մոկացի ազնուականը հրաման ուզեց ինքնակալներէն, որ ղրկէ իմանայ թէ իր ազգայնոցը՝ աւելի ո՛ր ընծայն հաճոյական կ՚անցնի. և լսեց թէ շատ փափաքելի է անոնց՝ կենաց փայտին մէկ երևելի մասն ունենալը։ Թագաւորք զքանչացան անոր բարեպաշտութեանը վրայ. ու կենաց փայտին վրայ աւելցուցին՝ Քրիստոսի տեառն մերոյ ոտնլուայի ժամանակ սփածած ղենջակէն մաս մը, նոյնպէս 'ի փշեղէն պսակէն, 'ի սպնգէն, բևեռներէն և 'ի խանձարրոցն։ Այս ամէն պարգևները՝ նոյն ազնուականն անձամբ Մոկաց գաւառը տանելով՝ յանձնեց իւր Ստեփանոս քեռորդւոյն. ու մեծահանդէս փառօք՝ նախ Դաւթի հանգստարանին քով ամփոփելով, յետոյ սրբոյն Յովհաննու Կարապետի տաճարին մէջ դրին. ու վերջէն ալ՝ աւագ ուրբաթի օր մը՝ սուրբ Աստուածամօր եկեղեցին փոխադրեցին։ Այն վերջին ու հանդիսական փոխադրութեանը ներկայ գտնուեցան՝ երեք թագազարմ արծրունի հարազատք՝ Սենեքերիմ, Գուրգէն և Աշոտ։

Նոյն հանդիսին ստորագրութիւնն ըրաւ Նարեկացի այն գրուածքին մէջ՝ որ սովորաբար Ապարանից խաչին պատմութիւն կը կոչուի, և ըստ ձեռագրաց «Յիշատակագրութիւն պատմաբանութեան ամենազօր նշանի աստուածեան խաչին որ... 'ի ստորին կողմանց կայից աշխարհի ազգացն Յունաց՝ բերեալ հանգուցաւ 'ի սահմանս վայրից գաւառին Մոկաց, 'ի շինուած բնակութեան ուխտին սրբութեան՝ որ կոչի Ապարանք»։ Այս պատմութեան շարայարութիւն յօրինած է նաև սուրբ Խաչին վրայ ներբող մը, որ լի է ընտիր իմաստիւք և գեղեցիկ խօսքերով, ու Նարեկեան հանճարոյ յատուկ և անհաւասարելի արժանաւոր գեղեցկութեամբ մը։

* * *

Խաչին գովեստին կամ Ներբողին հետ մէկտեղ շարագրած է նաև սուրբ Աստուածածնի հռչակաւոր Ներբողը՝ որ սովորաբար ճառին սկզբնաւորութեամբը Գոհմարք խմբից կը կոչուի։ Ինչպէս առջի երկու ճառերը, այս երրորդս ալ նոյն Ստեփանոս եպիսկոպոսին խնդրանօքը յօրինեցաւ։ Եւ ասոնց ամենուն գրութեան ժամանակը՝ յառաջ է քան զգրութիւն Աղօթամատոյց գրքին, այսինքն ՆԼԲ և ՆԾԱ թուականութեանց միջոց։

Այս ճառերուն գրութենէն ետքը՝ ընծայական մ՚ալ շարագրած է Նարեկացին՝ առ խնդրող բանիցն Ստեփանոս եպիսկոպոս,՝ յորում· հետևեալ խօսքերը կը կարդանք, « Աձանացուցի սմին անջինջ յիշատակ՝ զանուն տենչալի ձերումդ կոչման, տէր Ստեփանոս, լերինդ Մոկաց հզօր դիտապետ. որպէս զի մնասցեն յարակայ 'ի սոյն համառօտագիծ մատենի՝ յաւուրս անթիւս և յամս հազարաւորս իմով սակաւամասնեայ իմաստիւ։ Ես Գրիգոր՝ յետին վարժապետաց և կրտսեր բանասիրաց, որդի դըստեր եղբօր՝ հօր Անանիայի հոգեզարդ և մտավարժ փիլիսոփայի, և ըստ վարուց մաքրութեան կրօնից գովելոյ և հռչակելոյ. և ընծայեցի քումդ եկեղեցեաց՝ զայս նուէր բարեաց բանից ցանկալեաց։... Յիշատակեսցես... զիս և զեղբայրն իմ զանդրանիկ զՅովհաննէս ցանկալի անուն 'ի միում կարգի, որ գիտականն է և հանճարեղ իմաստասէր քան զիս առաւել 'ի յամենայնի »։

Այս յիշատակարանին մէջ՝ Նարեկացին կերպով մը ազատութիւն կու տայ իւրաքանչիւր վանականաց՝ որ իր պատմութեանը և ճառերուն մէջ՝ պակաս երևցած մասերն ու խօսքերը լրացընեն. և այս բանս համարձակութիւն տուած է քանի մը ձեռներէց կամ անզգոյշ գաղափարողաց՝ անանկ բաներ ալ մէջը խառնել՝ որ կրնան

# ԴԱՐ Ժ

---

## ԱՆԱՆԻԱ ՆԱՐԵԿԱՑԻ

---

*Անանիա Նարեկացի, և իր յիշատակութիւնը առ Նախնիս։ — Ճառ ընդդէմ Թոնդրակեցւոց։ — Ուրիշ հարազատ կամ կեղակարծ գրութիւնք իր անուամբը։*

Տասներորդ դարուն սկիզբները ծաղկեցաւ Անանիա, որ Նարեկայ վանքին առաջնորդն ըլլալուն համար՝ անոր անուամբ կոչուեցաւ։ Թէպէտ և իր գրուածներէն քիչ բան ձեռուընիս հասած, բայց ազգային պատմիչք մեծապէս կը գովեն թէ՛ երկասիրութիւնքը և թէ՛ զանոնք երկասիրող անձը. մերթ՝ մեծ փիլիսոփոս կոչելով զինքը, մերթ՝ երևելի վարդապետ. իսկ Կիրակոս՝ այր անուանի և գիտնական, յուսաւորիչ եկեղեցւոյ, մտաւոր և հանճարեղ և աստուածային գրոց մեկնող կ'անուանէ։ Նոյն պատմիչը՝ նաև տոմարական արհեստից գիտակ կը համարի զԱնանիա, թերևս շփոթելով համանուն Շիրակացւոյն հետ։ Ուխտանէս պատմչին վրայ խօսելու ատեննիս ալ՝ պիտի լսենք իր դրուատանաց խօսքերն առ Անանիա՝ յընծայականի երկասիրութեանն։

Անանիայի Նարեկացւոյ գլխաւոր երկասիրութիւնն ե-

ղած է՝ Թոնդրակեցւոց մոլորութեանը դէմ գրուած մը, Անանիա կաթուղիկոսին հրամանաւը շարագրած, որ գովութեամբ կը յիշատակուի թէ՛ ՚ի Շնորհալւոյն և թէ ՚ի Մագիստրոսէ։ Այս գրուածքն է անշուշտ որ յամի 1892 հրատարակուեցաւ առաջին անգամ ՚ի Վաղարշապատ՝ հանեալ ի մատենադարանաց Մայր Աթոռոյ Էջմիածնի։ Խորագիրն է «Երանելւոյ հաւր Անանիայի գիր խոստովանութեան որ յաղագս սուտ կարծեացն որ ի վերայ նորա»։ Մեզի արդէն ծանօթ էր այդ մակագրութիւն, բայց և ոչ գրուածքն, և վրիպական ենթադրեր էինք թէ համանուն Շիրակունւոյն ըլլայ, ուր եթէ պարունակութեանն տեղեակ ըլլայինք, ժամանակագրական այդ սխալման մէջ չէինք իյնար։

Գրուածքէն յայտնի կ'երևնայ թէ վրան ամբաստանութիւն կամ կարծիք եղած ըլլայ համամտութեան ընդ աղանդաւորս, ուստի և ի հոգևորական իշխանութենէ բանադադուած յարդարացուցումն կամ ի հերքումն։ Հրատարակողին հետ (Միաբան) կը համաձայնինք ըսել թէ ինչ որ կրնայինք յուսալ տեղեկութիւն աղանդին վերաբերմամբ, Անանիայի նորագիւտ երկասիրութիւնը կերպով մը յուսախաբ կը ձգէ զմեզ, չգտնելով ի նմա՝ ինչ որ փափաքելի կրնար սեպուիլ։ Աւելի անձին պաշտպանութիւն մ'է, և ոչ այլ ինչ. կ'անիծանէ և լիուլի բերնով և ոճով հարկ կը համարի նզովել զԹոնդրակեցիս որպէս զի անոնց համամտութեան արատը սրբէ վրայէն և արդարանայ. «Տարօրինակ և սրտաշարժ տեսարան, կը յաւելու հրատարակողն. — Հայոց ամենամեծ վարդապետներէն մէկը, Նարեկեան դպրոցի հիմնադիրը, յոր ծերութեան, հիւանդանութեան անկողնում մեղադրում է աղանդաւորութեան մէջ նոյն իսկ իւր ընկերակից կրօնաւորից, որոյ կեղտ անունը ջնջուել է պատմութեան էջերից և մեզ չէ հասել… Դառն և արդարացի ցասմամբ լի խօսքերով է դառնում Անանիա Նարեկացին իւր անուանակից, հայրենակից Անանիա կաթողիկոսին, որ իր-

մէ ուղղափառ խոստովանութեան գիր էր պահանջում և անէծք Թոնդրակեցիներին։ Եւ իսկապէս այս առաջին անգամ լոյս տեսնող թղթի ամենէն շահաւոր մասը այդ սրտաշարժ, զգացուած յառաջաբանն է և մասամբ ալ նոյն ոգւով գրուած վերջաբանը։ Այդ մի քանի տողերը՝ ամբողջ դարի պատկերն բաց անում մեր առաջ[1]»։ Կիրակոս կ'աւանդէ թէ առաքելական թղթոց մեկնութիւն մըն ալ՝ շարագրած է Անանիա դիւրիմաց բանիւք և հետևողութեամբ Եփրեմի, Ոսկեբերանի և Կիւրղի և ուրիշ վարդապետաց։ Կ'ըսէ դարձեալ նոյն պատմիչը, թէ աւետարանաց համեմատութիւն և խորհրդական և մտաւոր տեսութիւնք շարագրած ըլլայ. և ճառ մը՝ ցուցընելու համար թէ ի՛նչպէս ուղղափառ մտքով կ'երգեցուի սուրբ Աստուած մաղթանքը խաչեցարիւ։ Տողակաթի վրայ ճառ մը շարագրած է, կ'ըսէ, որ անշուշտ եկեղեցւոյ վրայ խօսած ճառն է՝ մեր ձեռքը հասած, իմաստալից գրուած մը, բայց անսովոր բառերով և ոճերով։

Ճառընտրաց մէջ կը հանդիպինք հետևեալ խորագրով յիշատակուած երկասիրութեանց. « Շնորհալից վարդապետին Անանիայի Նարեկացւոյ ասացեալ վասն աղօթից, պահոց և արտասուաց »։ Ասկէ զատ ուրիշ ճառի մը՝ խորագրովը առջինին նման՝ բայց իմաստիւք տարբեր. « Անանիայի հոգելից վարդապետի և Նարեկայ վանից առաջնորդի ասացեալ վասն զղջման և արտասուաց և աղօթից »։

Դարձեալ. « Անանիայի հոգենորոգ վարդապետի խրատ հոգևոր՝ ցուցեալ թէ ո՛րպէս կարասցէ մարդ որոշել ըզմիտս յերկրաւորացն և զայս կեանս արհամարհել, և Աստուծոյ միայն ցանկալ և արքայութեան նորա։ — Արդ եթէ կամիս որ յաղթես աշխարհիս, և ոչ ըմբռնիս 'ի կենցաղոյս պատրանս »։

1. Տես Բազմավէպ 1893, շատ տեղեկութիւններով նիւթիս վրայ։

# ԽՈՍՐՈՎ ԱՆՁԵՒԱՑԻ

---

*Խոսրով Անձևացի՝ հայր Նարեկացւոյն։ — Ժամագրոց մեկնութիւն։ — Մեկնութիւն խորհրդոյ սրբոյ Պատարագին։ — Իր անուամբ յիշատակուած ուրիշ գրութիւն մը։ — Տպագրութիւնք իր երկասիրութեանց։*

Տասներորդ դարուն մատենագրական պատմութեանը պարծանք է իր հանճարովն և իմաստութեամբ՝ մեծն Խոսրով Անձևացեաց եպիսկոպոսը. որ տղայ հասակէն ուսմանց և գիտութեանց տուեալ եղաւ, և վերը յիշուած Անանիա Նարեկացւոյն եղբօրը դստեր հետ ամուսնանալով՝ երեք որդի ունեցաւ, Յովհաննէս, Սահակ և Գրիգոր, որոնց վրայ ետքը պիտի խօսինք։ Ժամանակ անցնելէն վերջը հրաժարեցաւ յաշխարհէ, ու վանք մը քաշուեցաւ. և քանի մը տարիէն Անձևացեաց գաւառին եպիսկոպոս ընտրուեցաւ։ Իր եպիսկոպոսութեանը ժամանակ շարագրեց հետագայ գրուածները։

Ժամագրոց մեկնութիւն. — Հայաստանեայց եկեղեցւոյ հասարակաց աղօթիցը ընտիր և սրտեռանդն մեկնութիւն մըն է, որուն յառաջաբանին մէջ այս պատճառը կու տայ. «Թէ որ իշխանաց և թագաւորաց առջև խօսելու ատեննիս ամենայն զգուշութիւն, մտադրութիւն և արթնութիւն կ՚ընենք, որպէս զի չըլլայ թէ անվայել կերպ կամ խօսք մը տեսնուի վրանիս և մեր բերնին մէջ, ևս առաւել նոյն զգուշութիւնը պիտի բանեցընենք թագաւորին թագաւորաց՝ Աստուծոյ հետ խօսակցելու ժամանակնիս. և այս վախճանաւ յօրինեցի նոյն սուրբ աղօ-

*թից մեկնութիւնը »։ Աւելի ագիտաց համար շարագրեցի, կ՚ըսէ, այս երկասիրութիւնը. ուստի և կ՚աղաչէ որ չըլլայ թէ գիտունք արհամարհեն այն գրուածը՝ որ իրենց օգտակար ըլլալու դիտմամբ գրուած չէ. այլ պարզապէս անոնց համար՝ որ կ՚աղօթեն առանց նոյն աղօթից ոյժը և խօսքերուն զօրութիւնը հասկընալու։*

*Որչափ պարզ՝ այնչափ ալ ընտիր է այս մեկնութիւնը. համառօտ՝ բայց առանց կարեւորը դուրս թողլու։ Աստուածասէր հոգի և կիրթ միտք մը կը ցուցընէ Խոսրով այս երկասիրութեան մէջ. եկեղեցական գրոց և իմաստից ալ ընդարձակ հմտութիւն. անոր համար շատ անգամ յոյն եկեղեցւոյ վարդապետաց խօսքերն ալ մէջ կը բերէ։*



*Նոյն ոճով ու սրտով գրուած է, և Մեկնութիւն խորհրդոյ սրբոյ Պատարագին, թէպէտ և առանց ունենալու այն հմտութիւնն ու լեզուն՝ զոր Լամբրոնացին բանեցուցած է համանուն երկասիրութեանը մէջ։ Ինչպէս առջի գրուածքին, ասանկ ալ ասոր շարագրութեանը մէջ ուրիշ վախճան ունեցած չէ սուրբ հայրապետս, բայց միայն իր պաշտաման պարտքը անթերի կատարել. « Ոչ եթէ անձինս փառք ստանալու համար էր, կ՚ըսէ, որ այս գրուածքիս ձեռք զարկի, այլ որովհետև եպիսկոպոսութեան աստիճան ունիմ, և շատերուն քով ամենամեծ ագիտութիւն տեսայ, անոր համար հարկ սեպեցի այս գրուածքս յօրինել, իմանալով թէ անկարելի էր միայն խօսքով անոր կարեւոր դարմանը մատուցանել »։*

*Մեր քովը գտնուած գրչագրաց մէջ յիշատակարան մը կայ՝ Խոսրովու որդւոյն Սահակայ ձեռքովը գրուած, որ իր հօրը երկասիրած Պատարագի մեկնութիւնը գաղափարելով կ՚աւանդէ այսպէս.*

*« Շնորհիւն Աստուծոյ եղև մեկնութիւն այսմ գրոց 'ի ձեռն Խոսրովայ Անձևացեաց եպիսկոպոսի, յոյժ հե-*

տևողի պատուիրանացն Աստուծոյ. զոր մեզ և գովել անճահ է, զի մի՛ գայթակղեսջիք 'ի նոյն, վասն զոլոյ նորին հայր իմ ըստ մարմնոյ. որոյ չեմ արժանի կոչիլ որդի և ոչ վարձկան, ըստ գրեցելումն. այլ 'ի գրելոցդ՝ լիցին հասու խնդրողքդ վասն նորա, որք սրտի մտօք ունկն դնիցեն. որք և աղօթիւք՝ փոխադարձել պարտին ընդ տուեցելոյս. և հասարակաց տուողն Աստուած՝ և ձեզ հայցողացդ ձիրեսցէ զհուրականն պարգև։ Այլ յոյժ ամաչեցեալ և տարակայ գտանիմ, ես Գրիգոր պարտաւոր պատուիրանաց սուրբ գրոցս։ Արդ առաջին սուրբ գրոցս այսօրիկ գծագրութիւն եղև ձեռամբ Սահակայ՝ որդւոյ տեառն Խոսրովու, այս սուրբ գրոցս մեկնողի ՅՂԹ թուականութեանս Հայոց»։ Այս խօսքերէն կ'երևնայ թէ Խոսրովու թելադրութեամբ՝ որդին գրի վրայ կ'առնուր։ Զայս ակնարկէ անշուշտ Այրիվանեցին. «Խոսրով Անձևացեաց եպիսկոպոս արար զմեկնութիւն Աղօթամատուցին՝ զոր գրէր Սահակ որդի իւր»։

Բանք երանելւոյն Խոսրովայ խորագրով երկասիրութեան մը յիշատակութեան հանդիպեր ենք (Մատենադարան Բարձրահայեաց Ս. Աստուածածին վանաց, թիւ 229), որ հաւանականաբար Անձևացւոյն է։

Խոսրովու ժամակարգոյ մեկնութեան տպագրութիւնն եղած է 'ի Պոլիս յամի 1730–36։ Իսկ Պատարագի խորհրդոյն 'ի Ս. Ղազար 'ի 1869։

# ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

---

*Նարեկացի և իր սրբակրօն վարքն ։ — Երկասիրութիւնները ։ — Ապարանից խաչին պատմութիւնը ։ — Ներբող 'ի սուրբ Աստուածածինն ։ — Ճառ 'ի գովեստ Առաքելոց ։ — Գովեստ 'ի սուրբն Յակոբ Մծբնայ ։ — Երգերգոցի մեկնութիւն ։ — Աղօթք կամ Նարեկ ։ — Նարեկացւոյն մանր երկասիրութիւններն ։ — Անհարազատ գրուածներ ։*

Խոսրովու Անձևացեաց եպիսկոպոսին որդին էր սուրբն Գրիգոր, որ 951 Թուականին ծնաւ, ու մանկութեան հասակէն Ռշտունեաց գաւառին մէջ եղած Նարեկայ վանքին առաջնորդ Անանիա վարդապետին իմաստուն խնամոցը յանձնուեցաւ ։ Հոն իւր վարուցը սրբութեամբն ու անարատ քաղաքավարութեամբ՝ մարմնաւոր հրեշտակ մը երևցաւ. իսկ գիտութեամբն ու իմաստութեամբը՝ ժամանակին ամենէն անուանի հանճարներէն մէկն ։ Անանկ որ քանևվեց տարուան առոյգ հասակին՝ Թագաւորներ իրենց տարակուսանացը լուծումը կը խնդրէին իրմէ ։ Բայց հանճարն ու սրբութիւնը իրեն դէմ յարոյց ժամանակին ագէտ ու ինքնահաւան գլուխները, որոնք ինչուան Անի քաղաքը գնացին՝ կաթուղիկոսին առջևը զինքն ամբաստանելու, իր միաբանասէր եռանդը՝ յանցանք սեպելով ։ Կ՚աւանդեն թէ կաթուղիկոսն ալ քանի մը վարդապետաց հետ խորհուրդ ընելով, նուիրակներ ղրկեց անոր, ու զինքը դատաստանի կանչեց ։ Իմացաւ Գրիգոր անոնց գալստեան դիտումը, ու սիրով ընդունելութիւն

ընելով ուրբաթ օր մը զանոնք կերակուրի հրամցուց, և խորոված աղաւնի դրաւ առջևնին։ Երբ անոնք մէկ կողմանէ իրենց ծուռ կարծեացը վրայ հաստատուելով մէկալ կողմանէ կը գայթակղէին վրան, ու օրուանը պահք ըլլալը կ'իմացընէին, Նարեկացին ներումն խնդրեց անոնցմէ գործած վրիպակին համար, ու խորոված աղաւնիներուն դառնալով հրամայեց որ ելլեն երթան. որոնք մէկէնիմէկ ողջըննալով թռան։ Ասով չարախօսաց բերանը կարկեցաւ, ու սրբոյն արժանաւոր համբաւը ալ աւելի շատցաւ։

Անկէց ետքը ինքզինքը բոլորովին ներանձնական կենաց ու գրաւորական զբաղմանց տուաւ Գրիգոր. ու իր մեծ և անզուգական հանճարը երկնից ու երկնքի արժանաւոր նիւթերու նուիրելով՝ իբր 60 տարուան փոխեցաւ առ Աստուած, ու Նարեկայ վանքին մէջ թաղուեցաւ, ուր ինչուան հիմա աւանդութեամբ կը ցուցընեն իւր սուրբ և նուիրական շիրիմը։



*Նարեկացւոյն երկասիրութիւնները.* — Նարեկացւոյն բազմապատիկ երկասիրութեանցը մէջ նշանաւորներէն կրնան սեպուիլ իր ճառերը. որոնց մէջ առաջին է

*Ապարանից խաչին պատմութիւնը.* — Վասիլ ու Կոստանդ հարազատ եղբարց կայսերաց ժամանակ՝ Մոկաց աշխարհէն ազնուական անձ մը՝ գնաց նոյն ինքնակալաց դուռը զինուորելու. այս մարդս եղբօրորդի ըլլալով Դաւթի՝ Մոկաց հռչակաւոր և սքանչելագործ եպիսկոպոսին, անոր տապանին հողէն կտոր մը քովը պահած էր իբրև 'ի մխիթարութիւն, և անկէց այլ և այլ հրաշքներ կ'ըլլային։ Բարեպաշտ ինքնակալքն այս բանս իմանալով, ալ աւելի պատուեցին զինքը. ու ետքէն իմանալով թէ անոր Ստեփանոս քեռորդին՝ նոյն սքանչելագործ Դաւթին՝ աթոռոյն վրայ նստած է, ուզեցին անոր

գերեզմանին ընծաներ ղրկել։ Բայց Մոկացի ազնուականը հրաման ուզեց ինքնակալներէն, որ ղրկէ իմանայ թէ իր ազգայնոցը՝ աւելի ո՛ր ընծայն հաճոյական կ'անցնի. և լսեց թէ շատ փափաքելի է անոնց՝ կենաց փայտին մէկ երևելի մասն ունենալը։ Թագաւորք աքանչացան անոր բարեպաշտութեանը վրայ. ու կենաց փայտին վրայ աւելցուցին՝ Քրիստոսի տեառն մերոյ տնըլւայի ժամանակ սփածած ղենջակէն մաս մը, նոյնպէս 'ի փշեղէն պսակէն, 'ի սպնգէն, բևեռներէն և 'ի խանձարրոցն։ Այս ամէն պարգևները՝ նոյն ազնուականն անձամբ Մոկաց գաւառը տանելով՝ յանձնեց իւր Ստեփաննոս քեռորդւոյն. ու մեծահանդէս փառօք՝ նախ Դաւթի հանգստարանին քով ամփոփելով, յետոյ սրբոյն Յովհաննու Կարապետի տաճարին մէջ դրին. ու վերջէն ալ՝ աւագ ուրբաթի օր մը՝ սուրբ Աստուածամօր եկեղեցին փոխադրեցին։ Այն վերջին ու հանդիսական փոխադրութեանը ներկայ գտնուեցան՝ երեք թագազարմ արծրունի հարազատք՝ Սենեքերիմ, Գուրգէն և Աշոտ։

Նոյն հանդիսին ստորագրութիւնն ըրաւ Նարեկացի այն գրուածքին մէջ որ սովորաբար Ապարանից խաչին պատմութիւն կը կոչուի, և ըստ ձեռագրաց «Յիշատակագրութիւն պատմաբանութեան ամենազօր նշանի աստուածեան խաչին որ... 'ի ստորին կողմանց կայից աշխարհի ազգացն Յունաց՝ բերեալ հանգուցաւ 'ի սահմանս վայրից գաւառին Մոկաց, 'ի շինուած բնակութեան ուխտին սրբութեան՝ որ կոչի Ապարանք»։ Այս պատմութեան շարայարութիւն յօրինած է նաև սուրբ Խաչին վրայ ներբող մը, որ լի է ընտիր իմաստիւք և գեղեցիկ խօսքերով, ու Նարեկեան հանճարոյ յատուկ և անհաւասարելի արժանաւոր գեղեցկութեամբ մը։



Խաչին գովեստին կամ Ներբողին հետ մէկտեղ շարագրած է նաև սուրբ Աստուածածնի հռչակաւոր Ներբողը՝ որ սովորաբար ճառին սկզբնաւորութեամբը Գումարք խմբից կը կոչուի։ Ինչպէս առջի երկու ճառերը, այս երրորդս ալ նոյն Ստեփանոս եպիսկոպոսին խնդրանօքը յօրինեցաւ։ Եւ սոոնց ամենուն գրութեան ժամանակը՝ յառաջ է քան զգրութիւն Աղօթամատոյց գրքին, այսինքն ՆԼԲ և ՆԾԱ թուականութեանց միջոց։

Այս ճառերուն գրութենէն ետքը՝ ընծայական մ՚ալ շարագրած է Նարեկացին՝ առ խնդրող բանիցն Ստեփանոս եպիսկոպոս,՛ յորում․ հետևեալ խօսքերը կը կարդանք, «Աձանացուցի սմին անջինջ յիշատակ՝ զանուն տենչալի ձերումդ կոչման, տէր Ստեփանոս, լերինդ Մոկաց հզօր դիտապետ․ որպէս զի Մնացեն յարակայ 'ի սոյն համառօտագիծ մատենի՝ յաւուրս անթիւս և յամս հազարաւորս իմով սակաւամասնեայ իմաստիւ։ Ես Գրիգոր՝ յետին վարժապետաց և կրտսեր բանասիրաց, որդի դըպտեր եղբօր՝ հօր Անանիայի հոգեզարդ և մտավարժ փիլիսոփայի, և ըստ վարուց մաքրութեան կրօնից գովելոյ և հռչակելոյ․ և ընծայեցի քումդ եկեղեցեաց՝ զայս նուէր բարեաց բանից ցանկալեաց։․․․ Յիշատակեսցես․․․ զիս և զեղբայրն իմ զանդրանիկ զՅովհաննէս ցանկալի անուն 'ի միում կարգի, որ գիտականն է և հանճարեղ իմաստասէր քան զիս առաւել 'ի յամենայնի»։

Այս յիշատակարանին մէջ՝ Նարեկացին կերպով մը ազատութիւն կու տայ իւրաքանչիւր վանականաց՝ որ իր պատմութանը և ճառերուն մէջ՝ պակաս երևցած մասերն ու խօսքերը լրացընեն․ և այս բանս համարձակութիւն տուած է քանի մը ձեռներէց կամ անզգոյշ գաղափարողաց՝ անանկ բաներ ալ մէջը խառնել՝ որ կրնան

*անհաւատարմութեան կասկած տալ, այնպիսի դէպքեր ու խօսք յիշատակելով զորս Գրիգոր չէր կրնար գրել, իր ժամանակէն ետքը հանդիպած ըլլալնուն համար։*

* * *

***Ճառ 'ի գովեստ Առաքելոց.*** *— Թէ՛ առաքելոց և թէ եօթանասունևերկու աշակերտաց վրայ յօրինած ներբողական ճառը՝ Աղօթամատոյց գրքին շարագրութենէն առաջ յօրինած է Նարեկացին։ Այս կարծեաց ստուգութիւնը յայտնապէս կ'երևնայ նոյն աղօթից գրոց այս խօսքէն. «Զորոց զգովեստն արժանաւորութեան՝ ըստ իմում կարի յայլում բանի պաշտեցի» (ՁԲ. 2)։*

***Գովեստ 'ի սուրբն Յակոբ Մծբնայ հայրապետ.*** *— Այս ճառին իմաստներն ու զուրցուածքի կերպը կը հաւատարմացընեն թէ Նարեկացւոյն երկասիրութիւնն ըլլայ. բայց թէ ինչ պատճառաւ շարագրած է այս ճառս, ոչ ինքը և ոչ ուրիշներն յայտնի բան մը աւանդած են։ Ոմանք կը համարին թէ սուրբն Գրիգոր Առաքելոց վրայ գովեստ մը յօրինելէն ետքը՝ ուզած ըլլայ նաև հայրապետաց վրայ ներբող մը շարադրել, անոնց խմբէն նիւթ առնելով զսուրբ հայրապետն Մծբնայ։ Ոմանք ալ կ'ըսեն թէ որովհետև Ոշտունեաց գաւառին մէջ կը բնակէր Նարեկացին, ուստի և ուզած է դրուատել այն մեծ հայրապետը՝ որ նախ անիծեց այն երկիրներն ու ետքը օրհնեց։*

*Բայց այս ճառին գրութեան բուն գլխաւոր պատճառը՝ սրբոյն Յակոբայ պատմութեանը մէջ փնտռելու է։ Որովհետև Մարուգէ ճգնաւորին աշակերտներէն մէկը՝ Մաղաքիաս՝ կ'աւանդէ, թէ 'ի Հայոց ոմանք սրբոյն Յակովբայ նշխարաց մէկ մասը խնդրելով՝ առին Աղձնեաց գաւառին մօտ տեղ մը դրին։ Ուրիշ հին պատմագիր մ'ալ կ'ըսէ, թէ Հայերը՝ Մծբնացւոյն մատին կոճը առնելով Աղձնեաց գաւառը հասան, Երկաթահանք կոչուած*

բլուրը. և երբ անկէց լեռնէն վար դէպ 'ի Ռշտունեաց երկիրը կ'իջեցնէին այն պատուական նշխարքը, անշարժ մնացին. և տեսիլքով հրաման ընդունեցան որ հո՛ն հանգուցանեն. ուր փառաւոր եկեղեցի շինեցին՝ և տեղը յետոյ Մոգս ըսուեցաւ։ Ժամանակ անցնելէն ետքը՝ այն տեղը գնեց Արծրունեաց ցեղէն Հայոց թագաւոր մը, և հոն փառաւոր եկեղեցի՝ և քահանայից և կրօնաւորաց բնակութեան տեղ և վանք շինեց։ Վարդան պատմիչն ալ կ'ըսէ թէ Նարեկայ վանքին մէջ կը պահուէր սրբոյն Յակոբայ ճկոյթ մատը, և Ընձաքիսարայ վրայ վանք մը կար նոյն սրբոյն անուամբը։

Այս պատմութիւններէն կրնանք գուշակել ճառիս գրութեան պատճառը, և թէ Նարեկացին ուզած ըլլայ պատուել անոր սրբազան յիշատակը այն տեղուանքին վրայ՝ ուր միշտ կենդանի էր սրբոյն անունը և մեծարելի։ Հաւանական կ'երևնայ կարծելը թէ Նարեկացւոյն ժամանակ եղած ըլլայ այն Արծրունի թագաւորը՝ որ յիշատակուած լեռը գնեց, և փառաւոր եկեղեցի և վանք շինեց. և անոր նաւակատեաց առթիւը՝ խօսեր է սուրբն Գրիգոր այս ճառս։ Թերևս այս կարծեաց ստուգութիւնը կ'ակնարկեն նոյն ճառին հետևեալ խօսքերը. «Հիմնեցուցես զայս քար գովեստի 'ի շինուած յարկի քումդ հանգստի՝ դաւանարանի այս բարի հովուի»։

*
* *

**Երգերգոցի մեկնութիւն**. — Նարեկացւոյն երկասիրութեանցը մէջ ժամանակաւ առաջին կը համարուի այս մեկնութեան գիրքը՝ ըստ հաւանագոյն կարծեաց։ Վասն զի քսանևվեց տարուան հասակին՝ երբ նոր ընդունած էր քահանայական աստիճանը, Գուրգէն Արծրունի՝ Անձևացեաց թագաւորին խնդրանօքը շարագրած է յետ շատ հրաժարելու. վասն զի, կ'ըսէր, մեծն Գրիգոր Նիւսացին իսկ չէր համարձակեր այսպիսի խորիմաստ գրոց

մեկնութեան ձեռք զարնել, որչափ աւելի ես՝ որ ոչ անոր գիտութիւնն ունիմ և ոչ ալ աստուածազդեցիկ միտքը։ Բայց ետքը նոյն սրբոյն Գրիգորի մեկնութեան շաւղացը հետևելով՝ շարագրեց պարզ, համառօտ և ընտիր մեկնաբանութիւն մը, ինչպէս որ առաջարկողը ուզեր էր։ Սակայն իր համառօտախօսութեանը մէջ ալ անանկ ընտիր ոճ մ'ունի՝ որ նոյն իսկ եւրոպացի բանասէրքը՝ որոնք կամ ազգային բնիկ լեզուով և կամ թարգմանութիւնը կարդացած են, սքանչացեր են վրան. և գաղղիացի աստուածաբան մը՝ Գուլիէլմոս Վիլֆռուա կ'ըսէ թէ Երգերգոց գրոց այսպիսի ընտիր մեկնութիւն մը ուրիշ ազգի մը մէջ տեսնուած չէ։ Ոճոյն պարզութեանը գլխաւոր պատճառն այն եղած է՝ որ Նարեկացին ուզած է դիւրիմաց ընել նոյն սուրբ գրքին իմաստները կարդացող հասարակ անձանց և կանանց անգամ, որոնք եկեղեցեաց մէջ այս գիրքը լսելով ուրիշ մտքեր ու իմաստներ կու տային Հոգւոյն սրբոյ ազդեցութեամբ ներշնչուած ու հոգևորական նիւթ ու նպատակ ունեցող այն խօսքերուն։

*
* *

Աղօթք կամ Նարեկ. — Հռչակաւոր ու մեր ազգին մէջ սիրելի ու փափաքելի ու գրեթէ ամենուն ծանօթ և Նարեկացւոյն սրտին և գրչին արժանաւոր երկասիրութիւն մը։ Ողբերգութիւնք ալ կը կոչուի այս հոգւոյ ու մտաց հետ խօսող գերազանց երկասիրութիւնը. և իրեն խրթին մթութեամբն հանդերձ՝ անանկ զարմանալի գեղեցկութիւն և ոճոյ քաղցրութիւն ունի՝ որ ոչ միայն ազգային, այլ նաև շատ օտար բանասէրք միաձայն վկայած են թէ այսպիսի գրուած մը ուրիշ ազգաց մէջ դեռ երևցած չէ. այնչափ գեղեցիկ ու զմայլեցուցիչ է բանաստեղծական հիւսուածին ոճը, իմաստները այնչափ վսեմ և անակնկալ, ու պերճախօսութիւնը առատ։

Իննսունեւհինգ գլուխ բաժնուած են այս աղօթքները, զորս ինքն 'ի խորոց սրտից խօսք ընդ Աստուծոյ՝ կը կոչէ. ասոնցմէ դուրս է այն յիշատակարանը՝ որ գրքին վերջը դրուած է, և յորում իր ըստ մարմնոյ և ըստ հոգւոյ հարազատ եղբայրը զՅովհաննէս՝ մէջ կը բերէ իբրև գործակից 'ի յօրինուած աղօթագրոցս: Բայց որովհետև թէ՛ ընդհանուր ազգին աւանդութիւնը և թէ նոյն իսկ սրբոյն խօսքերը՝ յայտնապէս կը ցուցընեն զինքը միայն հեղինակ, անոր համար հաւանական կ'երևնայ կարծելը թէ այս օգնականութիւնը՝ պարզ խորհրդակցութեանը՝ կամ սուրբ գրոց քանի մը տեղուանքը քննելուն համար զուրցուած ըլլայ: « Այս պզտի մատենին մէջ, կ'ըսէ Նոր բանասէրներէն մէկը, բանական արուեստն ընդ աստուածայնոյն կը միաւորէ սուրբ Նարեկացին. տեսական աստուածաբանութիւնն խորհրդականին հետ, սուրբ գրոց պատմողական առածը՝ մեկնողականին հետ, աղօթից հոգին՝ բանաստեղծականին հետ. սիրոյ հետ վախը, զղջման հետ յոյսը, Աստուծոյ բարութիւնը՝ մարդկան չարութեան հետ. համառօտ ըսենք՝ զԱստուած ընդ մարդոյ »: Գրուածքիս ընտիր, ճարտարարուեստ՝ անթուական բոլորգիր գրչագրի մը հետևեալ յիշատակարանը կը գտնենք. « Շնորհիւ քո բարերար փրկիչ աշխարհի, Քրիստոս օրհնեալդ յամենայնի, որ յանգ հանեալ կատարեցի զխոստովանականս մատեան ողբոց աղաղակի, որ է կշտամբող և կափիչ անձինս մեղապարտի, և լալագին պաղատանաւք որդւոյ անառակի. զի սովաւ զղջացեալ դարձայց ամաչեցեալս 'ի գաւիթս հայրենի առաջի Հաւր քո գթածի և մարդասիրի, և Հոգւոյդ Նորոգչի և կենսաբաշխի. քև և բանիւ քո՝ ի յոյս քո համարձակեալ յեցեալ և հաստատեալ. խրախուսեալ ի հրաման խնդրելի բանիդ տերունի. որ զփրկաւէտ քո աստուածային եկաւորութիւն ասացեր լինել, ոչ ի սակս արդարոց, այլ փրկչական քո պաշտելի ձայնիւ կոչել զմեղաւորս յապաշխարութիւն... Վասն որոյ ոչ վտտիմ բազմասաղալս յան-

*ցաւորս խոցեալս յոգի վիրաւոր, ոչխարս քո բանաւոր՝ մոլորականս և յոգնախոտորս։ Դարձեալ կարօտիմ ի ձայն քո հովիւ բարի երկնաւոր, թէ կոչեսցես վերստին և մուծցես ի փարախ հօտի քո երանաւոր. և իմս ապեղանեաց քաղցրութեան դեղոյ քոյ աղերսաւոր, թէ պատեսցես զվէրս իմ բժիշկդ հնարաւոր, և արկցես ի նոյն ձէթ և գինի խորհրդաւոր։ Այլ և յայսմ մատենէ շնորհեսցես ինձ զղջումն դարձի ապաշխարութեան. բարեխօսութեամբ բարերգակ ողբացողին Գրիգորի մեծի հռետորին, աղօթանուէր վարդապետին, այսմ մատենի մատենագրին »։...*

*Այսպիսի ընտիր երկասիրութիւն մը՝ զարմանք չէ որ իր արժանաւոր յարգն ալ գտած ըլլայ մեր ազգէն, գրեթէ ամենայն հոգեսիրաց ձեռքը ընտիր աղօթից գիրք մը ըլլալով, անոր համար ալ շատ անգամ տպագրուած է այլ և այլ տեղուանք, և որոնց մէջ նախընծայ է 'ի Մարսիլիա տպագրուածը 'ի 1673. իսկ 'ի Կոստանդնուպոլիս տպագրուածներուն մէջ ընարելագոյն կրնայ սեպուիլ 1790ին եղածը, զոր Մուրատեան Գասպար ամիրայն՝ Հայաստանի վանքերէն ընտիր գրչագիրներ ժողվելով՝ անոնց համեմատութեամբ տպագրել տուած է։*

*Նարեկացւոյն խրթին ոճը և մթին զուրցուածքի կերպը՝ յորդորեց զՅակոբ Նալեան պատրիարք անոր լուծումը և մեկնութիւնը շարագրել։ Իր այս աշխատասիրութեանը մէջ գաղափար ունեցաւ՝ հին ատենները շարագրուած լուծմանց գիրք մը, վրիպակաւ Սարգսի Շնորհալւոյ կամ Լամբրոնացւոյն ընծայուած. որ ընդհակառակն ԺԴ դարու մէջ երևցած աննշան մարդու մը երկասիրութիւն էր։ Լամբրոնացին՝ որովհետև սուրբ պատարագի խորհրդոյն մէջ գործածուած երկու Նարեկեան աղօթից մեկնութիւնն ըրած էր, կարծուեցաւ թէ բոլոր Նարեկ գրոց մեկնութիւնն ալ շարադրած ըլլայ։*

*Ասկէց զատ կայ ուրիշ լուծմանց գիրք մըն ալ՝ աւելի համառօտ ոճով, և վերոյիշեալ ընդարձակէն քաղուած. յարգն ալ՝ անոր ունեցածին նման։*

Այս լուծմանց անբաւականութիւնը տեսնելով Հ. Գաբրիէլ Վ. Աւետիքեան, ընդարձակ մեկնութիւն մը շարագրեց թէ՛ աղօթամատոյց գրոց և թէ ճառերուն, ընտիր տեսութիւններով և հմուտ աստուածաբանութեամբ, որ ազգին մէջ իր արժանաւոր ընդունելութիւնը գտաւ։

***

*Նարեկացւոյն մանր երկասիրութիւնները.* — Բաց 'ի վերոյիշեալ գրքերէն՝ այլ և այլ մանր երկասիրութիւններ ալ ունի Նարեկացին, գանձեր, մեղեդիք և տաղեր. որոնց մէջ յայտնի կ'երևնայ իր բանաստեղծական հոգին, հանճարն ու աշխոյժը։ Գանձերը իրեք են թուով, այսինքն 'ի Գալստեան Հոգւոյն սրբոյ, 'ի սուրբ Խաչն և յԵկեղեցի։ Իսկ տաղերն ու մեղեդիքը՝ քանիէն աւելի մեր ձեռքը հասած և տպագրուածքն իր Մատենագրութեանցը մէջ, որոց վրայ աւելցած են յետոյ և այլք։ — Թուղթ մը Կճաւայ վանից առաջնորդին, զգուշացընելով յաղանդոյն Թոնդրակեցւոց։

*Նարեկացւոյն անհարազատ գրուածները.* — Այս գրուածներէս դուրս կը յիշուի յանուն Նարեկացւոյն՝ Յովբայ գրոցը մէջ եղած Ով է դա ընթերցուածին մեկնութիւնը։ Ասոր հարազատութիւնը իրաւամբ տարակուսական է, ոչ միայն բոլորովին ոճոյ տարբերութեանը համար, այլ նաև անով որ պատմչաց մէջ մէկը չիկայ որ այս բանս յիշատակէ. ուստի և հաւանական կ'երևնայ կարծելը թէ իրմէ ետքի դարերուն մէջ երևցած Գրիգոր անունով մէկու մը գործ ըլլայ[1]։ Ասկէ զատ՝ գտնուե-

1. ՉԽԸ (1299) գրչագրած օրինակի մը յիշատակարանին մէջ կը կարդանք. «Ցամի ութնհարիւրերորդի քառասներորդի ութերորդի թուաբերութեանս Հայոց աւարտեցաւ մեկնութիւնս երջանիկ նահատակին Յովբայ յայլ և այլ ժամանակ և տեղի զանազան գրչաւք, 'ի գաւառիս Կիլիկեցւոց՝ հուպ յանառիկ դղեակս Բարձր կոչեցեալ՝ 'ի

ցաւ նաև ուրիշ գրուած մը այսպիսի մակագրութեամբ «Հօրն և երջանիկ քահանայապետին Գրիգորի Նարեկացւոյ խրատք վասն աղօթից և վասն արտասուաց, յուսոյ և սիրոյ»։ Անիկայ, թէպէտ և բոլորովին աննշան երկասիրութիւն մը չէ, բայց այլք աւելի հմտութեամբ Եփրեմի սուրբ Հօրն կ'ընծայեն. և այս անուամբ տպագրուած է նոյն ճառը 'ի Կոստանդնուպոլիս[1]։

Նախեան պատրիարքին տպագրութեանը մէջ կայ նաև հոգևորական խրատ մը որ Հրահանգ հաւատոյ կը կոչուի. և ուսկից իրմէն առաջ ալ Տրոտէր գերմանացին վկայութիւն կը բերէ իր Արամեան Գանձարանին մէջ, և Նարեկացւոյ երկասիրութիւն կը համարի։ Մեր տեսած գըրչագրաց մէջ այս հրահանգին վերնագիրն է. «Սրբոյ վարդապետի յոգներանեան մենաւորի Գրիգորի՝ համառօտիւք բանք խրատու վասն ուղիղ հաւատոյ և մաքուր վարուց առաքինութեան, 'ի խնդրոյ Նորին հարազատի Վարդանայ դիւանադպրի»։ Այս վերնագրին մէջ որովհետև Նարեկացւոյն անունը չի գտնուիր, հաւանական կ'երևնայ թէ ուրիշ համանուն Գրիգորի մը երկասիրութիւն ըլլայ, որ հայերէն լեզուի կարգաւորեալ հմտութիւն, և աստուածաբանական իմաստից ալ ներհուն և քաջավարժ տեղեկութիւն ունեցեր է։ Ոմանք ալ կարծեցին թէ Գրիգորի Սկևռացւոյ կամ Լամբրոնացւոյ աշխատասիրածն ըլլայ։ Նարեկացւոյն չըլլալուն գլխաւոր ապացոյցն ալ այն կ'երևնայ որ Վարդան անուամբ եղ-

դառնադոյն ժամանակի յորում յոյժ զզուեցաք յանաւրինաց... Այլ զՆարեկացւոյն Գրիգորի բանսն որ յՈվ է գոյն է խաւսեալ, և ասեղ ինչ Ցիսկզոսի բանիցս՝ գրեալ յայլոյ ումեքէ մատոյց մեզ. 'ի ձեռ շընորհի քահանայ ումն Կարապետ անուն. և մեր զթերին լցեալ՝ ընծայեցաք զկնի եկելոցդ»։

1. Էջմիածնի Մատենադարանին ցուցակը՝ Անանիայի Նարեկացւոյ կ'ընծայէ զայս ճառ։ Մեր քովն ալ գտնուած Նուագրի վարուց պատմութեան գրչագիր մը՝ նոյնպէս Անանիա անունով վարդապետի մը՝ տանց որոշելու թէ որո՛ւն 'ի համանունանց, յառաջաբանական յաւելուածով մը։

*քայլ չունէր Նարեկացին, այլ ըստ աւանդելոյ պատմութեան՝ երեք եղբարք էին սոքա, Սահակ, Յովհաննէս և Գրիգոր։*

*Նարեկացւոյ այլևայլ երկասիրութեանց բնագրին բազմաթիւ և բազմատեսակ տպագրութեանց վրայ՝ տես 'ի* ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ։

# ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐՔ

---

*Այս դարուս մէջ Հայոց հայրապետական աթոռոյն վրայ նստաւ* ԽԱՉԻԿ *կաթուղիկոս, որ նախ քան զամբառնալն ի հայրապետական աթոռ Էջմիածնի, եպիսկոպոս էր Արշարունեաց. և Շիրակ գաւառին մէջ բազմաթիւ հոյակապ և գեղեցկակերտ տաճարներ շինելէն ետքը՝ փառաւոր գրատուն մըն ալ կանգնեց, ու հոն հաւաքեց այլ և այլ արտաքին և վարդապետական գրքերու բազմութիւն մը։ Ձեռագրաց մէջ կը կարդանք թուղթ մը. «Տեառն Խաչկայ Հայոց կաթուղիկոսի բան խոստովանութեան, պատասխանի Յունաց գրոյն զոր արձակեալ էր սա առ մետրապոլիտն Մելետինոյ»։ Եւ 'ի լուսանցսն. «Թուղթ Սամուէլի Կամրջաձորեցւոյ Հայոց փիլիսոփայի, պատասխանի թղթոյն Թէոդորոսի մետրապաւլտի Մելետենւոյ՝ գրեալ հրամանաւ Խաչկայ Հայոց կաթողիկոսի»։*

*Ասկէ զատ նաև կոնդակ մը՝ հետևեալ աթոռով գրուած և տրուած։ Բարգէն՝ զոր Խաչիկ կաթուղիկոս եպիսկոպոս ձեռնադրած էր Նախավկայի բեմին վրայ, զՎահան ի կաթուղիկոսութենէ ձգելու ժամանակ կուսակից էր Խաչկայ. ուստի երբ* 971 *թուին Ստեփանոս կաթուղիկոս գնաց ի Վասպուրական՝ ուր փախստեայ ապաւինած էր Վահան, Ստեփանոսի հետ էր նաև Բարգէն վանա-*

կան՝ կոչեցեալն Սիւնեցի ։ Վասպուրական նահանգին այն մասն ալ՝ ուր է Նախավկայի վանքը, Սիւնեաց նահանգին սահմանակից լինելով, յիշեալ մասին վրայ կաթուղիկոսը եպիսկոպոս կը ձեռնադրէ զԲարգէն, և Աշոտ Թագաւորի հրամանաւ. Նորա վիճակ և Թեմ կը հաստատէ Նախիջեւանայ գաւառը, մասնաւոր կոնդակաւ մը՝ որոյ սկզբնաւորութիւնն է. « Անուամբ անեղին Աստուծոյ Հաւր, և ի փառս ծննցելոյն ի Նմանէ... Այս մեր գիր հոգեւորական բարձր հրամանի հաստատութիւն է և աւրհնութիւն, և 'ի հոգեւոր հովուութեան տեառն Խաչկայ Հայոց կաթուղիկոսի, և ըստ մեծի մերոյ տէրութեան արևելից հարաւոյ Հայոց Թագաւոր Աշոտ յորջորջեալ անուամբ բարեպաշտ և մեծ Շահանշահի. ես Աշոտ Թագաւոր Թագաւորաց ամենայն տիեզերաց, եկեալ ի սուրբ ուխտս աստուածարնակ Նախավկային հանդերձ գաւառաւքս, Թագաւորաւք և իշխանաւք »...

Կը յիշատակուի դարձեալ այս դարուս մէջ ԴԱՒԻԹ անուամբ վանահայր մը, որուն երկասիրութիւն կը սեպուի Պահոց վրայ գրուած մը այս վերնագրով. « Հարցմունք երկուց փիլիսոփայից ընդ միմեանս » ։

Այս առեններս կը յիշատակուին քանի մը վարդապետք, ինչպէս Պետրոս՝ մեկնիչ գրոց կոչուած. Մովսէս Տարոնացի, Սարգիս, Ստեփանոս, որ թերեւս Մոկաց եպիսկոպոսն է, և որուն կ'ընծայուի Սրբութիւն սրբոց շարականը. Դաւիթ Մաշկոտն, Դաւիթ եպիսկոպոս Մոկաց, և այլն ։ Բայց ասոնց ամենուն ալ մատենագրական երկասիրութեանցը վրայ մասնաւոր յիշատակութիւն չկայ ։

Տասներորդ դարուս մէջ է նաև՝ Տիմոթէոս անունով վարդապետ մի՝ որուն կ'ընծայուի Արարածոց մեկնութիւն մը ։

# ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿ

***Ասողիկ և իր վրայ կենսագրական տեղեկութիւնք ։ — Պատմութեան գիրքը և բովանդակութիւնը ։ — Մեկնութիւն Երեմիայ մարգարէութեան ։ — Տպագրութիւնք բնագրին և թարգմանութիւնք ։***

Տասներորդ դարուս ազգային պատմագրաց նշանաւորներէն սեպուած է ընդհանրապէս Ստեփանոս, որ 'ի Տարոն ծնած ըլլալուն՝ Տարոնեցի ալ կը կոչուի, և յոմանց ալ Ասողիկ կամ Ասողնիկ, թերևս երաժշտական արուեստի և երգոց ունեցած հմտութեան պատճառաւ, ինչպէս կարծեցին ոմանք 'ի բանասիրաց ։ Ոչ ծննդեանն և ոչ մահուան ճիշդ թուականն յայտնի է ։ Բայց հաւանական կ'երևնայ թէ տասներորդ դարուն վերջերը և մետասաներորդին առաջին կիսուն ապրած ըլլայ Ասողիկ․ որովհետև իր պատմութիւնը՝ զոր շարագրած է Սարգիս կաթողիկոսին հրամանաւ, կը հասցընէ մինչև 'ի 1004 թուականն Քրիստոսի՝ Գագկայ առաջնոյ թագաւորութեան հնգետասաներորդ տարին ։ Մագիստրոսի առ Գէորգ վարդապետ գրած թղթին մէկ խօսքէն, զոր յետոյ պիտի յիշատակենք, կը գուշակուի թէ մինչև 'ի խորին ծերութիւն հասած ըլլայ․ ուստի և ոմանք 117–122 տարուան կեանք տուած են իրեն, որ անհաւանական կ'երևնայ ։ Կենացը հանգամանքն ալ անծանօթ են մեզ․ հոգևորական կոչման նուիրուած և սուրբ գրոց գիտութեան հետամուտ և բաւական տեղեակ անձ մը կը թուի ։ Կը յիշէ մանկական հասակի մէջ ծանօթութիւնն և տեսու-

*թիւն ընդ այլևայլ ծերունի վարդապետս ժամանակին. ինչպէս Կամրջաձորոյ առաջնորդ Պօղիկարպոսի, Ստեփանոս՝ մականուն Հօգևոր, և Մովսէս վարդապետաց, որք միաբանեցան յԱնի 'ի քննել և 'ի դատել զՎահան կաթողիկոս, և իրեն պաշտպանն և 'ի կրօնականս համամիտ զԱպուսահլ՝ թագաւոր Վասպուրականի: Այս դիպաց յիշատակութենէն կրնայ ենթադրուիլ թէ Ասողիկ՝ մանուկ հասակէն իր ուսումն ըրած էր յԱնի, ուր զարգանալով ուսմամբ և գիտութեամբ, և բարձրանալով 'ի պաշտօն սրբութեան սեղանոյն, աջակից և օգնական եղած ըլլայ Սարգսի կաթուղիկոսի:*

*
* *

*Պատմութիւն. — Մեր ուրիշ շատ պատմչաց պէս՝ բայց անոնցմէ շատէն պակաս կարգաբանութեամբ և հմտութեամբ՝ յարարչագործութենէ կը սկսի իւր պատմութիւնը Ասողիկ, հետևելով մանաւանդ Եւսեբիոսի՝ հին աւանդները մէջ բերելուն ժամանակ, և Մովսիսի Խորենացւոյ՝ ազգային պատմութեանց մէջ, զոր և շատ տեղ գրեթէ գաղափարելով կ'երկրորդէ: Երեք գիրք՝ կամ ինչպէս ձեռագրաց խորագիրք կ'ըսեն՝ հատուած բաժնուած է իր այս գործը. և երրորդ մասը միայն կրնայ սեպուիլ բուն Ստեփանոսի երկասիրութիւն. որովհետև ընդհանրապէս իւր ժամանակին անցքերը կ'աւանդէ, զորս չէր կրնար ուրիշ պատմիչներէ քաղել. և այս պատճառաւ երրորդ գրոց խորագիրն է Ստեփանոսի Տարօնեցւոյ պատմութիւն ժամանակաց, ինքնախօսութիւն. մինչդեռ առջի երկու գրքերը Պատմութիւն բանից պատմագրական տա-ռից կը մակագրին: Արարչագործութենէն կը սկսի իր պատմութիւնը Ասողիկ, և առաջին գլխոյն մէջ Խորայելացւոց ծագմանը, անոնց ցեղերէն ելած թագաւորութեանց և յաջորդութեան և ժամանակագրութեան վրայ կը խօսի: Անկէ ետքը Եգիպտոսի մէջ Պտղոմեանց ցե-*

ղէն Նստող Թագաւորաց վրայ, ու վերջը Նորէն Հրէից դառնալով, կրկին հին ժամանակաց վրայ կը սկսի խօսիլ, Ասորւոց՝ Մարաց ու Պարսից Թագաւորութեանցը. ետքէն Պարթևաց ծագմանը վրայ ճառելով, կը հասցընէ խօսքը մեր Արշակունի Թագաւորաց ժամանակ: Այս մասին մէջ՝ ինչպէս ըսինք, գլխաւորաբար առաջնորդ բռնած է իրեն զՄովսէս Խորենացի, Թէպէտ ինքը 'ի պատմագրելն ինքզինքը հետևող կը ցուցընէ Ագաթանգեղոսի, Բիւզանդայ, Խորենացւոյ, Եղիշէի, Փարպեցւոյն, Սեբէոսի, Ղեւոնդեայ երիցու, Շապհոյ Բագրատունւոյ և Յովհաննու Հայոց կաթուղիկոսի: Վաղարշակայ Թագաւորութեանը օրերէն մինչև 'ի Տրդատայ մանկութիւնը հասցընելով պատմութիւնը, առաջին գիրքը կը լմնցընէ. իսկ երկրորդ գիրքը Տրդատէն կը սկսի, և կը հասցընէ մինչև 'ի Յովհան Իմաստասէր, և անկէց ալ մինչև 'ի Թագաւորութիւն Աշոտոյ Բագրատունւոյ: Մասնաւոր գլխով մը կը խօսի Նաև Սասանեան Պարսից Թագաւորաց վրայ, անոնց Արտաշիր Թագաւորէն սկսելով, ու կը հասցընէ մինչև 'ի Յազկերտ որդի Կաւատայ, Թոռն Խոսրովու: Եւ որովհետև Խոսրովու մահուընէն քիչ առաջ՝ երևցեր էր Մահմէտ, և իրմով Հագարացւոց իշխանութիւնն ու ցեղապետութիւնը, ուստի այս երկրորդ գրոց չորրորդ գլուխը անոնց վրայ կը ճառէ, մասնաւոր խորագրով. Ամիր-ալ-մումնիք Տաճկաց, և որ ինչ յաւուրս նոցա գործեցաւ, և Մահմետէն սկսելով՝ կը հասցընէ մինչև 'ի Մրուան և յԱբդլլա, և անով կը լմնցընէ երկրորդ գիրքը:

*
* *

Աշոտոյ Թագաւորութեամբը կը սկսի Ասողիկ Գ գիրքը, որ ինչպէս առաջ ալ ըսինք, իւր պատմութեանը գլխաւորագոյն և էական մասն է. վասն զի ընդհանրապէս իր ժամանակին և կամ իրեն մերձաւոր դէպքերու

*վրայ կը խօսի՝ բաւական հմտութեամբ և ոճով. որով ազգային պատմութեան վրայ՝ բաւական գոհացուցիչ լոյս մը կը ծագէ, նորանոր դէպքեր աւանդելով, և կամ այլոց պատմածը աւելի կերպով լուսաւորելով։ Այս պատճառաւ պիտի ըլլայ անշուշտ՝ որ իրմէ ետքը եկող պատմըչաց գովեստին արժանի եղած է. որոնց մէջ Լաստիվերտցին՝ յիշելով Գագիկ Ա Շահնշահի ատեն ծաղկած վարդապետները, գլխաւոր կը սեպէ անոնց մէջ այս «Ստեփաննոս Տարօնացին՝ որ զաշխարհապատում գիրսն շարագրեաց, աքանչելի յօրինուածովք սկսեալ 'ի մարդն առաջին. և գայ բովանդակէ զպատմութիւն իւր 'ի վախճան Գագկայ՝ վասն որոյ պատմութիւնս է»։*

*Ոմանք կ'աւանդեն թէ Ասողիկ՝ Երեմիա մարգարէին գրոցը մեկնութիւն մըն ալ շարագրած ըլլայ. և իրենց կարծեացը երաշխաւորութիւն կը սեպեն Մագիստրոսի հետևեալ խօսքերը, զոր իր Թղթերէն մէկուն մէջ գրած է առ Գէորգ վարդապետ. «Վասն որոյ բանս հայցէ 'ի քէն զմեկնութիւն Երեմիայի մարգարէի, զոր գրեալն է Ասողնկայ՝ երջանիկ ծայրագոյն ծերոյ՝ շնորհել մեզ»։ Այս երկաստրութիւնը ինչուան հիմայ երևցած չէ. և ուրիշ համանուն մեկնութիւն մը կայ՝ զոր գրչագիրք Մխիթարայ Գոշկացւոյ կամ Գոշի կ'ընծայեն, և որ ստուգիւ հեղինակ է Երեմիայ մարգարէին մեկնութեան։*

*Ասողկայ Պատմութեան առաջին տպագրութիւնն եղած է 'ի Փարիզ յամի 1859 այս խորագրով. «Տիեզերական պատմութիւն Ստեփաննոս վարդապետի Տարօնեցւոյ. 'ի լոյս ընծայեալ հանդերձ ծանօթութեամբք Կարապետ վարդապետ Շահնազարեանց՝ միաբան սրբոյ Էջմիածնի»։ Երկրորդ տպագրութիւն մ'ալ 'ի 1885 'ի Փեթերբուրգ. «Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան պատմութիւն Տիեզերական» հմտական յառաջաբանով և բազմապատիկ ծանօթութեամբք Ստեփաննոսի Մալխասեանց, և նուիրեալ «'ի յաւերժական յիշատակ ազգասէրն առնն Յովսեփայ Իզմիրեանց Ղզլարեցւոյ»։ Գաղղիական թարգմանութիւնն ըստ հանրածանօթ հայագէտն Եդ. Տիւլորիէ, և իր մահուընէն ետքը առաջին հատորն հրատարակուեցաւ, խոստանալով մերձաւոր տպագրութեան երկրորդին, 'ի Գարրիէր հայագէտէ զաղ-*

ղիացւոյ։ Խորագիրն է, Histoire Universelle, par Ètienne Açogh'ig de Daron; traduite de l'arménien et annotée par Ed. Dulaurier, Membre de l'Institut, Professeur à l'Ècole des langues orientales vivantes. Première partie, Paris; Ernest Leroux, éditeur, 1883. Ուրիշ թարգմանութիւն մ'ալ ըրած է բազմահմուտն Մ. Էմին, և տպագրեալ 'ի Մոսկուա 'ի 1864։

# ՈՒԽՏԱՆԷՍ

---

*Ուխտանէս պատմիչ։ — Պատմութեան նիւթը։ — Պատմական և քննադատական արժէքը իր երկասիրութեան։ — Բնագրին տպագրութիւնն և թարգմանութիւնք։*

Տասներորդ դարուս մէջ ապրած է նաև Ուխտանէս պատմիչ, որուն մէկ պատմական երկասիրութիւնն թէպէտև քիչ ատենէն 'ի վեր գտնուած և հրատարակուած է, բայց իր անուանը և գրուածոց նիւթին յիշատակութեանը կը հանդիպինք առ Կիրակոս պատմչի և Ստեփաննոսի Ուռպելեան։ Առաջինն՝ ուրիշ ազգային պատմըչաց թուոյն մէջ կը յիշատակէ և զնա. «Ուխտանէս եպիսկոպոս Ուռհայի, կ'ըսէ, որ գրեաց զբաժանումն Վրաց 'ի Հայոց՝ 'ի ձեռն Կիւրիոնի»։ Ուրիշ տեղ մ'ալ. «Ցայնմ հետէ բարձաւ ձեռնադրութիւն Վրաց որ 'ի Հայոց. զի սկսան զյունաց թեւակոխել. զայս ամենայն ստուգութեամբ ուսուցանէ քեզ Ուխտանէս եպիսկոպոսն. զի նա զամենայն լիով գրեաց, զթուղթսն և զպատասխանին և զքաջութիւն Պետրոսի եպիսկոպոսի, որ պատգամաւոր էր տեառն Աբրահամու առ Կիւրիոն, զոր Վիրք վասն համարձակութեան նորա Գայլ կոչեցին զնա»։ Դարձեալ. «Եւ զպատճառս բանիցն՝ որպէս վերագոյնս խոստացաք,

բացայայտեցից սակաւուք, որպէս հաւաստի ուսայ 'ի սրբոյն Ուխտանիսէ Սեբաստացւոց եպիսկոպոսէ»։ Կը յիշատակուի նաև առ Այրիվանեցւոյն։

Պատմութեանը խորագիրն է (ըստ միակ ծանօթ օրինակին որ պահի 'ի Մատենադարանին Էջմիածնի), «Զպատմութիւնս յերիս հատուածս, զոր ասացեալ է սրբոյն Ուխտանէսի Սե(բաստացւոց) եպիսկոպոսի, 'ի խնդրոյ հաւրն Անանիայի Նարեկավանից առաջնորդի և նախաշար վարդապետի. հատուածն առաջին՝ յաղագս Թագաւորաց և Հայրապետաց մերոց. և երկրորդն՝ վասն բաժանման Վրաց. և երրորդն յաղագս մկրտութեան ազգին այնմիկ Ծադն կոչեցեալ»։ Այս երեքմասնեայ գրութենէն, — ինչպէս կը ծանուցանեն հրատարակողք 'ի յառաջաբանին, — միայն առաջինն ամբողջ հասած է առ մեզ. երկրորդն՝ թերի, իսկ երրորդն բոլորովին անհետ եղած։ Բայց թէ հեղինակին յօրինուածն ամբողջ էր, կը վկայէ և ինքն Ուխտանէս յընծայականին առ խնդրող պատմութեանս. «Կարգել մի ըստ միոջէ՝ ըստ իւրաքանչիւր խորհրդոյ. նախ զԹիւ Թագաւորացն և Հայրապետացն մերոց. և զբաժանումն Վրաց 'ի Հայոց միաբանութենէ. և յետ այնորիկ զմկրտութիւն ազգին որ Ծադն կոչի. նաև զգաւառս և զգեղս գլխաւորս, և զքաղաքս և զբերդս իւրաքանչիւր գաւառաց՝ որ են յաշխարհին յայնմիկ, որպէս և կամք քո հրամայեցին, և զվանորայս հանդերձ վանականօք՝ անուամբ իւրաքանչիւրոց»։ Գրուածքիս այս հետաքննական մասն կորսուած է։

* * *

Պատմութեան նիւթը. — Համառօտիւ իր խոստմանն՝ հեղինակն գրուածքին առաջին մասն կամ հատուածը կը նուիրէ Հայոց Թագաւորաց և Հայրապետաց պատմութեանը, 'ի գլուխ գրոցն կարգելով ընծայական մը առ խնդրողն, զոր «աստուածազարդ և վսեմական տէր, կը

կոչէ, տիեզերական վարդապետ, իբրև ծառ իմն բազմապտուղ և բարձր 'ի մէջ վայելուչ և աստուածատունկ դրախտին Նարեկայ կոչեցեալ ուխտի, սաղարթ առեալ և վարսաւորեալ վարուք առաքինութեան »: Կ'անուանէ զնա և քանքարոյն պտղաբերիկոս և հոգեպարար հովուոր, դըրուատելով նաև անոր ուսումնական եռանդն ու փոյթը: Ցետոյ կը սկսի իր պատմական երկասիրութիւնն՝ յԱդամայ և յորդւոց նորա. Նոյի ու սերնդոցը վրայ խօսելու ատեն կը յիշատակէ և զՀայկ 'ի ցեղէ Ցաբեթի. « Ի սոցանէ, կ'ըսէ, եղև սկիզբն թագաւորութեան 'ի Հայս, 'ի գալն Հայկայ և յանուանել զիւր անուն. և յայնմ հետէ տիրել 'ի նմանէ և անդր ամենայն աշխարհի, արեւմտից և հիւսիսի »: Այսպէս կը շարունակէ Ուխտանէս աստուածաշունչ գրոց ծննդաբանութեամբք և համառօտ տեղեկութեամբ կամ յիշատակութեամբ անուանց լերանց, ծովուց, գետոց և բաժանման աշխարհաց մինչև 'ի գլուխն ԺԵ. որ նուիրուած է Հայկայ և իր պատերազմին ընդդէմ Բելայ Խորենացւոյն խօսքերովը, և նոյն ոճով և հետևողութեամբ կը շարունակէ՝ համառօտելով զպատմութիւն նորա՝ և յարգական մեծարանօք խօսելով հեղինակին վրայ, զոր մերթ անուանովը կը կոչէ, և մերթ լոկ պատմագիր ըսելով զնա կ'ըլլայ: Փոփոխակի համառօտելով զպատմութիւն Հրէից, Հայոց, Պարսից և Ցունաց, 'ի գլուխն ԻԵ Տիգրանայ առաջնոյ վրայ խօսած ատեն՝ կը տարբերի քիչ մը 'ի Խորենացւոյն՝ իրեն որդի ու յաջորդը Բապտիրան կոչելով, « զորոյ քաջութեան զովութիւն, կ'ըսէ, երգիչք երգէին 'ի պարս խաղուց, զոր և աստուածացուցեալ զնա ասեն Վրաց աշխարհին. և զչափ հասակի նորա անդրի կանգնեալ՝ պատուէին զոհիւք, ասէ մեզ ստուգիւ պատմագիրն: Եւ Տիգրան, ասէ, ընդվզեալ մեռանի յԱղեքսանդրացւոց Մակեդոնացւոց »:

Ի գլուխն ԻԶ կը խօսի յաղագս թագաւորելոյն Արշակունեաց 'ի վերայ Պարսից և Հայոց, ու կը շարայարէ

(ԻԷ) 'ի վերայ Թագաւորաց Հայոց որ 'ի Պարթեւաց, Արտաշեսի, Արտաւազդայ ու Աբգարու և իրենց յաջորդաց, նշանակելով համառօտիւ նաև Հռովմայեցւոց կայսերքն' և իրենց ժամանակաց դէպքերն, եկեղեցւոյ վրայ յարուցած հալածանք և արկածք 'ի ներքին անմիաբանութեանց և 'ի հերձուածոց' բաւական ստուգապատում և հետաքննական ոճով։ Այս կերպով յառաջ կը վարէ գրուածքն մինչև 'ի գլուխն ՀԶ որ վերջին է առաջին հատուածին կամ գրքին։ Միայն վերջընթեր գլխոյն մէջ Շապհոյ Բագրատունւոյ պատմական գրուածքէն հատուած մը մէջ կը բերէ Ուխտանէս, այս խորագրով. «Յաղագս Թագին երանելոյն Կոստանդիանոսի' թէ ուստի՞ կամ որպէս յաջողեալ եղև նմա 'ի Տեառնէ' Շափոյ որիոյ (Շապհոյ' որդւոյ) Աշոտոյ ապահի պատրակի ասացեալ 'ի Պատմութեան իւրոյ»։ Այս հատուածը կը յիշատակէ և Ասողիկ' Բագրատունւոյն անուամբ։ Վարդան պատմիչն ալ. «Յետ այսորիկ խաղաղութիւն խնդրեաց Շապուհ Պարսից արքայ 'ի Կոստանդեայ, նեղեալ 'ի Տրդատայ արքայէ. և նորա հաւանեալ խնդրեաց 'ի նմանէ զթագն Դաւթի մարգարէի, զոր առ Յովաբ յորդւոցն Ամոնայ' 'ի տանէ Մեղքոմայ. և եդ 'ի գլուխն թագաւորին Դաւթի, և անկաւ 'ի Քաղդէացիսն, և ապա 'ի Կիւրոս, և 'ի Դարեհէ յԱղեքսանդր, որով պսակեցան Մակեդոնացիքն մինչև ցԱնտիոքոս, զոր սպան Պարթեւն Արշակ և առ 'ի նմանէ, և եկն մինչև ցՇապուհ. յորմէ խնդրեաց կայսրն' զի օրինակաւն արասցէ իւր թագ, և զայն առ նա դարձուսցէ. և յորժամ ետ կազմել' եդ զերկոսին 'ի վերայ սեղանոյ, ասաց ծառայիցն Շապհոյ առնուլ զիւրեանցն. և նոցա աչք կալեալ առին զնորն և գնացին. քանզի խնդրեաց յԱստուծոյ Կոստանդիանոս զի առ ինքն մնասցէ Դաւթի մարգարէի յիշատակն»։



Ուխտանէսի գրոց երկրորդ մասն կամ հատուածը կը կոչուի՝ ինչպէս ըսինք, Պատմութիւն բաժանման Վրաց 'ի Հայոց։ Չենք կրնար ըմբռնել թէ ի՛նչ վերաբերութիւն ունի այս մասը առջինին հետ, ինչպէս նաև կորսուած երրորդը՝ երկու նախընթացներուն հետ. եթէ չուզենանք ենթադրել որ մի և նոյն հեղինակի այլևայլ նըպատակ ունեցող շարադրութիւնք ըլլան՝ ըստ հայցման և առաջարկութեան խնդրողին, և ապա իրարու հետ միացած 'ի գաղափարողաց և այնպէս առ մեզ հասած։ Ընդհանրապէս ժամանակին եկեղեցական պատմութեան կարևոր և հետաքննական յիշատակարանք են՝ հաւաքեալք յՈւխտանիսէ յայլևայլ դիւանաց և 'ի գրոց. և զորս մարթ է ամբողջացընել 'ի Թղթոց կոչուած մատենից, յորս հաւաքուած են այսպիսի թղթակցութիւններ։ ինչպէս խորագիրն ալ կ'ակնարկէ, Քաղկեդոնի ժողովոյն պատճառաւ Հայոց 'ի Վրաց բաժանման պատմութիւնն է. և մինչ հայրապետք Հայոց և ժողովք կը զգուշացընեն զՎիրս յընդունելոյ զժողովն, կամ արդէն տրուած համաձայնութենէն ետ կենալու, Վիրք ալ իրենց գործը և համոզումը կ'արդարացընեն. և այս փախճանաւ եղած են փոխադարձ թղթակցութիւնք Մովսիսի Հայոց կաթուղիկոսի առ Կիւրիոն, Վրաց հայրապետին առ Մովսէս, Մովսիսի եպիսկոպոսի Ցուրտաւայ թուղթք առ Վրթանէս Քերթող, և սորա պատասխաններն, և այլն, և այս թղթակցութեանց պատճառաւ այլ և այլ դիպուածք, ժողովք և բանակցութիւնք։ Գրեթէ բովանդակ այս նիւթերով կը գրաղի Ուխտանէս իր գրոց երկրորդ մասին եօթանասուն գլուխներով. յորոց վերջինը՝ Աբրահամ Հայոց կաթուղիկոսին շրջաբերականն թերի կը մնայ 'ի գրչագրին՝ որով նաև 'ի տպագրին Էջմիածնի։

Երրորդ հատուածը, հետաքննականն անշուշտ քան

զառաջինն, Ծադ ազգին մկրտութեան վրայ, բոլորովին կորսուած է ըսինք։

Ուխտանէսի լեզուն, պատմական արժէք, գրութեան ոճ՝ ունին իրենց յարգը, ուստի և իրաւամբ հաճոյ բանասիրաց։ Այլևայլ աղաւաղութիւնք գրչագրին կ՚երևնան, քիչ մ՚ալ տպագրողաց. որով շատ տեղ ընթերցուածոց հաւատարմութիւնք կասկածելի կը մնան, ու փափաքելի · կ՚ընեն նոր և ընտրելագոյն գաղափարաց գիւտը և հրատարակութիւն։

Հայկական բնագիրն հրատարակուեցաւ յէջմիածին, յամի 1871։ Գաղղիարէն թարգմանութիւնն Պրոսէի ձեռքով· Histoire en trois parties, composée par l'évéque Ter-Oukthanès, à la prière d'Ananie, superieur du Couvent de Narek, et Vartabed de premier rang, par M. Brosset; Saint-Pétersbourg, 1870. Մատենախօսական կրկին հատուածք ալ նոյն հայագիտին· Ètudes sur l'historien arménien Oukthanès, X<sup>e</sup> siècle, par M. Brosset; Mélanges Asiatiques, VI<sup>e</sup>. — Histoire de la scission religieuse entre les Georgiens et les Arméniens, depuis la fin de V<sup>e</sup> siècle; Saint-Pétersbourg, 1851.

# ՄԵՍՐՈՎՊ ԵՐԷՑ

———

*Մեսրովպ Երէց։ — Իր անուամբ գտնուած պատմական երկասիրութիւն մը։ — Ի հնոց գրուած Մեծին Ներսեսի հայրապետի վարք։ — Ծաղկաքաղ այդ գրուածին 'ի Մեսրովպայ։ — Նիւթը և արժէք։ — Տպագրութիւնք և թարգմանութիւն։*

*Այս դարուս մէջ ապրած և մատենագրած է Մեսրովպ անուն երէց, վայելչահիւս գրիչ վարուց և կենաց սրբոյն մեծին Ներսիսի Պարթեւ։ Ի վերջ այս երկասիրութեան դրուած ինքնագիր յիշատակարանին խօսքերն են՝ զոր մէջ կը բերենք. «Ի ՆԺԶ թուականիս Հայոց և 'ի վերադիտողութեանն Տեառն Վահանայ Հայոց կաթուղիկոսի, և յամս Աշոտոյ Բագրատունւոյ Հայոց թագաւորի 'ի տանէն Շիրակայ, ես Մեսրովպ նուաստ քահանայ 'ի Վայոց ձորոյ 'ի գեղջէ Հողոցմանց, ուստի Յովսէփ էր երանելի նահատակն յաւուրս սրբոյն Վարդանայ... մեծ ցանկութեամբ ծաղկաքաղ արարի զգիրքս զայս 'ի Հայոց Պացորդաց յԱրեւելից գրոց. զյաղթութիւն և զվատթարութիւն թագաւորացն Հայոց և Վրաց, և զառաքինութիւն և զքանչելիս հայրապետաց տոհմից սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, և զտեսիլ և զկտակ սրբոյն Ներսիսի. և զքաջութիւն և զյաղթութիւն արիական ազգին Մամիկոնէից... Ես Մեսրոպ ազգակից սրբոյն Յովսեփայ երիցու, իմացուցանեմ վասն նորա, զորս ոմանք ասեն եթէ եպիսկոպոս գոլով նորա, չէ ճշմարիտ. վասն զի Ղեւոնդ երէց Վանանդացի, որ է նահատակակից սրբոյն*

Յովսեփայ, յաւուրս սրբոյն Վարդանայ, ի ժամ մարտիրոսութեանն ասէր ցՅովսէփ, յառաջ մատիր զի դու աստիճանաւ ի վեր ես. աստիճան ասաց և ոչ աթոռ. զի երիցու կարգ և սարկաւագի և դպրի՝ աստիճան է և ոչ աթոռ: Յորժամ ձեռնադրի եպիսկոպոս կամ կաթողիկոս, յայնժամ լինի աթոռոյն տուն օրհնութեան: Եւ արդ յառաջ քան զվախճանելն Սահակայ կաթողիկոսի, տայր զտեղապահութիւն աթոռոյն սրբոյն Գրիգորի՝ Մեսրոպայ վարդապետին. և Մեսրոպ տայր Յովսէփ երիցու: Եւ ի չփոթմանէ ժամանակին ոչ ժամանեաց Յովսէփ ձեռնադրիլ եպիսկոպոս կամ կաթուղիկոս, այլ միայ երէց. և 'ի նմին վախճանեալ: Եւ արդ զայս հանեալ յԱրեւելից գրոց 'ի Հայոց Միացորդացն պատմութեանց. և ետու որդիացելոյն իմոյ սուրբ աւազանին ծննդեամբն՝ Վահանայ Մամիկոնենոյ, 'ի գեւղն որ կոչի Վարժի »:

Աւելորդ է անդրադարձընել թէ նոյն իսկ երկասիրողին վկայութեամբ՝ լոկ ծաղկաքաղ մ'է արդէն ազգին մէջ իր ատեն գտնուած և ծանօթ ընդարձակագոյն երկասիրութեան մը՝ 'ի Հայոց Միացորդաց յԱրեւելից գրոց: Թէ ի՛նչ կը նշանակէ այս խորագիրը՝ չենք կրնար ստուգութեամբ զրուցել. բայց այդ անունը կրող գրուածքին գոյութիւնը մեր դպրութեան մէջ արդէն յիշատակեցինք, նախնեաց իսկ վկայութեամբ ընծայելով զայն Աբրահամու Խոստովանողի, միոյ 'ի կրտսերագոյն Թարգմանչաց: Բայց որովհետև մեր ձեռքն հասածը Մեսրովպայ երիցու աշխատասիրածն է՝ և ոչ իրմէ յիշուած նախնական երկասիրութիւնն՝ որ կորսուած կ'երևի, ուստի և իր անուան և ժամանակին տակ ուզեցինք զետեղել:

* * *

Հնութեան ոչ լոկ հետք՝ այլ նաև յարգը կը կրէ իր վրայ այս համառօտ բայց ընտիր գրուածը. « Խուն առմեծութեամբ Ներսեսի, — ինչպէս կ'ազդեն Հրատարա-

կողք, — զի զի՞նչ իսկ այնպիսում գեր եղելոյ 'ի մարդիկ գուցէ հնար պատշաճեցուցանել. այլ առ մեզ մի ճանաչի 'ի գեղեցիկ չափով և համով սոփերաց դպրութեան հայ լեզուի, մանաւանդ ըստ վիպասանութեան առանձին կենցաղականաց »: Բիւզանդ՝ արդէն իր առատաբան և պաճուճեալ լեզուով և ոճով հաչակած էր զսուրբ հայրապետն Ներսէս. բայց Թերեւս որբագրի մը ոչ այնչափ պատկանաւոր կերպով ու բացատրութեամբ՝ որ իսկապէս արժանի ըլլայ այն անզուգական անձին՝ որ սրբակենցաղ քաղաքավարելովն՝ յերկրի երկնաքաղաքացի, ու երկրաւոր հայրենեաց ճշմարիտ բարւոյն համար տոչորող սրտիւը՝ իրաւամբ հայր հայրենեաց կոչուած է: Բիւզանդայ քով Թերի սեպուած մասը՝ երկրորդիս մէջ լրացած կը գըտնենք:

Ո՞վ եղած է սկզբնագիր հեղինակ այս վարուց սրբոյն Ներսիսի: — Բանասիրութիւնը՝ գէթ ինչուան հիմայ չունի որոշ պատասխան մը այս հարցման: Երկու տեղ 'ի պատմութեանն կը յիշուի Մեսրովպայ — Մաշթոցի անունը, մէյմը՝ իբրու ընկերակից սուրբ հայրապետին առաքելական վաստակոց, և միւս անգամ մ'ալ՝ յերկրէ յերկինս մահաքիրան՝ բայց յաղթական ու քրիստոնեանուէր անցից ժամանակ երբ « քիրտն, — ինչպէս կ'ըսէ պատմիչն, — ոռոգանէր զանձամբն,. և ցաւն ստիպէր զնա ուժգին. և նա ճեպէր 'ի հանգիստն: Եւ յարուցեալ յաթոռոյն ել 'ի գաւիթս եկեղեցւոյն, և տարածեալ զձեռս իւր, հայեցաւ յերկինս զուարթ սրտիւ. և յիշէր յաղօթս իւր զամենայն աշխարհ, զհեռաւորս և զմերձաւորս: Եւ ունկն դնէր նմա Մեսրովբ աշակերտն իւր, որ անուանեցաւն Մաշդոց »: Այսպիսի հրաշալի նուիրման և մահուան մը տեսարանին ներկայ՝ ու հոգեհրատ խօսքերուն ականջալուր վարդապետասէր աշակերտը՝ ոմանք հաւանականաբար նաև գրիչ ուզեցին սեպել առաքինակրօն վարուցը: Այլք Խորենացւոյն ընծայեցին, որովհետև 'ի ցուցակս Մատենադարանին որ 'ի Ս.

քառաց, հիւանդաց և ուրկաց, յորոց բազումք անխնամ և անայցելու և հալածեալք յանբնակ տեղիս՝ «գազանակուրք, գետավէժք, ձիւնախեղդք և անգիւտ կորընչէին»։



Այսպիսի փրկարար և բարեգործ արդիւնք հռչակելէն ետքը, պատմիչը նոր և հրաշափայլ անձնաւորութիւն մը կ'երևցընէ մեզ զՆերսէս, նկարագրելով իր գրաւած մեծ և կարևորագոյն դերը ազգային պատմութեան մէջ. և ուր աւելի է նենգագործ չարութիւն՝ հոն աւելի կը փայլեցընէ անոր բարութիւնը. ուր յաղթողի մը խրոխտանօք կ'երևնայ անիրաւութիւն, զՆերսէս աներկիւղ 'ի խորտակել և 'ի փշրել անոր զէնքերը. ուր անխուսափելի են վտանգք՝ ինքն է առաջին յանձնառուութեան 'ի փրկել զհայրենիս. ուր արտասուք՝ հոն կը հասնի 'ի մխիթարել և 'ի սփոփել։ Այսպէս՝ երկասիրութեան առաջին երեսներուն մէջ՝ երբ անմեղին Գնելայ անպարտ ու դաւաճան մահուան նկարագրութիւնը կ'ընէ. երբ կը ցուցընէ զՓառանձեմ՝ որ կը տեսնէ թագաւորին ղրկած սուսերաւոր և վահանակիր հետևակաց գունդը, որք փայլական պէս վրայ կը հասնին, կը ձգեն զպատանեակն Գնէլ յերիվարէն, կը կապեն կը կապկըպեն անոր ձեռքերը, ու կը տանին 'ի տեղի սպանման։ Այն անգութ և անողորմ տեսարանին ականատես անզէնն Փառանձեմ՝ ճիչ վերցընելով կը դիմէ առ սուրբն Ներսէս, կը գտնէ զնա դեռ եւս 'ի պաշտաման առաւօտու աղօթից. կը փարի անոր ոտիցը, կը թանայ ջերմիկ և յորդառատ արտասուօք. «Զպատանեակն Գնէլ՝ զոր դուն սիրէիր, կ'ըսէ, զամուսին իմ, առանց իրիք յանցանաց կորուսանել կամին։ Կենդանի է Տէր, ոչ թողից զգարշապարս քո, մինչև ցուցցես խաւարեալ աչաց իմոց զըմբռնութեամբ ամուսինն իմ զպատանեակն Գնէլ։ Վա՜ղ

*հասիր սուրբ հայրապետ, վա՜ղ հասիր, զի զմատաղիկ ուռն հատանեն ի յորթոյ. վա՜ղ հասիր սուրբ հայրապետ անօգնականին Գնելոյ, ոչ գոյ զի օգնեսցէ պատանեկին. և գազանքն ոչ ողորմին նմա»: Սուրբ հայրապետն այս գուժին՝ մէկէնիմէկ կը խափանէ առաւօտեան մաղթանքն. կը փութայ 'ի խորանն արքունի: Կ'իմանայ Արշակ այդ անակնկալ գալստեան պատճառը. արքունական քօղովը գլուխը կը ծածկէ, կեղծելով զքուն: Ներսէս կը բռնէ անոր ձեռքէն՝ 'ի գահոյիցն վեր վերցընելու, մինչ Արշակ կը շարունակէ իր կեղծիքը, սպասելով որ իրմէ տրուած անօրէն հրամանն ելնէ 'ի գլուխ: Այն ատեն Ներսէս կը հրամայէ երիվար մը պատրաստել. ու սուրհանդակի մը պէս կը վազէր, կ'ըսէ պատմիչը, որպէս զի ատենին հասնի անմեղին Գնելոյ մահը խափանելու: Հազիւ բա-նակէն դուրս ելած է, և ահա կը հասնին բանբերք՝ ա-ւետելու արքայի որ հրամանը կատարուեցաւ: Զի թողուր Ներսէս որ վայրկեան մ'ալ ուրախ ըլլայ թագաւորն իր խոր-հըրդոցն յաջողութեան համար. այլ անոր պարտաւոր գըլ-խոյն վրայ՝ երկնազդեցիկ արիութեամբ կը տեղայ կը թօ-թափէ կայծականց ու անիծից շանթեր. ու չխաբուելով անոր սուտ արտասուքէն՝ կը քաշուի իր վրանը ողբալ զթագաւորն և զհայրենիս:*

*Դիտմամբ յերկարեցինք խօսքերնիս այս գեղեցիկ դը-րուագին վրայ, և որուն ոչ անարժան է Մեսրովպայ ոճը բովանդակ երկասիրութեան մէջ: Վասն զի համանման և ընտիր դրուագք են՝ Արշակայ խոնարհիլն իյնալը յոտս Ներսիսի՝ իր անձին ու հայրենեաց փրկութիւնը խնդրե-լով յարդարադատ ցասմանէ Վաղեսի. սուրբ հայրապետին փութալն 'ի Պոլիս առ կայսրն, առաքելանման համար-ձակախօսութիւնն ընդ նմա, կամակար աքսորանքն, Վա-ղեսի երկնաւոր պատուհասն, սրբոյ Պարթեւին դարձն 'ի հայրենիս, Արշակայ գերութիւնն յԱնյուշ բերդի, Պա-պայ բազմարկածեան թագաւորութիւնը, Ներսիսի աղօ-թիւք 'ի Նպատական լերին Հայոց բանակին յաղթու-*

թիւնը, Մուշեղ և իր արութիւնները, և վերջապէս սուրբ հայրապետին մահը, և այլն. ասոնք ամէնքը արտաշարժ ոճով ու լեզուով պատմուած են 'ի Մեսրոպայ:

Մեսրոպայ Երիցու այս գրուածքը առաջին անգամ տպագրուած է 'ի Մադրաս Հնդկաց 'ի Յակոբայ Շամիրեան 'ի 1775: Նորագոյն և ընտիր տպագրութիւն մ'ալ 'ի 1853 'ի Ս. Ղազար Վենետկոյ 'ի չորս Հայկական Սոփերայ: Գաղղիական թարգմանութիւնն ալ 'ի Հաւաքման պատմչաց Հայոց Լանկլուայի (Հատ. Բ.). Généalogie de la famille de Saint-Grègoire Illuminateur de l'Arménie, et Vie de Saint-Nerses, patriarche des Arméniens, par un auteur anonyme du Ve siècle. Ouvrage traduit pour la premère fois en français, par Jean-Raphaël Emine, Paris, 1869.

## ՑԻՇԱՏԱԿԱԳԻՐՔ

---

Այս դարուս մէջ կը յիշուին, ՄՈՒՇԵՂ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ, որ Կարուց թագաւոր կ'երևնայ, ու Աշոտոյ Երկաթի եղբայրը, որով տասներորդ դարուն առջի կիսուն մէջ կ'իյնայ: Անանուն վարդապետ մը՝ իւր խնդիրքովը Արիոսեանց, Եւտիքեանց, Նեստորականաց ու Քաղկեդոնականաց դէմ գրուած մը շարադրած է, այսպիսի սկըզբնաւորութեամբ. «Ո՛վ քաջ բանասիրաց, տէր իմ Մուշեղ Բագրատունի, պերճաբանդ և հանճարեղ գունակացեալդ առ ծայրագոյն խորոց խոհեմագոյն, ըստ գործնականին և տեսականին գրող ստորոգութեանց»:

Նւ թուականին գրուած մատենի մը մէջ ալ կը յիշատակուի ԱՏՈՄ ԱՆՁԵՒԱՑԻ, տասներորդ դարուն առջի քառորդին մէջ ապրած, որուն հրամանաւը՝ Արտաւազդ Մաղազունեաց տէրն «բացայայտեաց զսուրբ պա-

տուփրանս»։ Ներբողեան մ՚ալ կայ ՚ի գրչագիրս ՚ի սուրբ Կարապետն Ցովհաննէս «երանելւոյն տեառն Ատովմայ Անձեւացեաց եպիսկոպոսի ասացեալ. Զկարապետին մեծի զյիշատակս տօնելով, զկուսութեանն հանդէս գովեսցուք»։ (Մատենադարան Էջմիածնի, թիւ գըրչագրաց 920)։

Հաւաքում մ՚ալ յօրինեց սրբոց վարուց և դասաւորեց հռովմէական ամսոց օրերով. այս պատճառաւ յամանց Ատոմադիր ըսուեցաւ իր անուանովը և յոմանց Հռոմադիր. ոմանք ալ Տօնացոյց կամ Տօնացուցակ կ՚անուանեն զայն։ Ատողիկ՝ Ատոմայ սուրբ ուխտին առաջնորդ Գագկայ կ՚ընծայէ այս կարգաւորութիւնը։ Ցիշատակագիր մը Վարագացի կը կոչէ զսա, և կը յաւելու թէ ի թուին ՆՄ «զՀռոմադիրն կարգաւորէր»։

Կը յիշատակուի նաև Արամ ոմն, որ ունի թուղթ առ Ատովմ Անձեւացեաց իշխան՝ վասն պէսպէս հարցմանց, և սկզբնաւորութիւնն է. «Աստուածապաշտ և աստուածասէր իշխանիդ իմոյ մեծազանի. — Աստուածատունկ մատանցդ գիր և հրաման եհաս առ իս»։

Իրեն ժամանակակից ՍԱՄՈՒԷԼ ԿԱՄՐՋԱՁՈՐԵՑԻ յօրինեց զՏօնապատճառ գիրս։

Դարձեալ ՏԱՃԱՏ անունով կրօնաւոր վարդապետ մը, որ իրեն աստիճանակից Թովմայի մը հարցմանցը պատասխան կու տայ։ Այս հարցմանցը վերջը՝ հետևեալ խօսքերը կը կարդանք. «Կիւրեղ Երուսաղեմի վկայէ և Ցովհան Բիւզանդացի և Եղիշա Կողբացի, որով և զտեղիսդ ոչ բացայայտեցաք». Թերևս զԵզնիկ և զԵղիշէ շփոթելով։

Ճառընտրաց մէջ կը յիշուի սրբոց Ատովմանց վկայաբանութիւնը՝ «զոր արարեալ է Տաճատ հայրն Վարագայ»։ — Կայ թուղթ մ՚ալ յանուն Թովմայի առ Ատոմ իշխան։

# ԴԱՐ ԺԱ

---

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿՈԶԵՌՆ

---

*Յովհաննէս Կոզեռն։ — Իր վարքը։ — Երկասիրութիւնք։ — Պատմական գրուածքի մը յիշատակութիւն։*

Մետասաներորդ դարուն սկիզբները, Խաչիկ Բ կաթուղիկոսին օրերը ծաղկեցաւ Յովհաննէս վարդապետ Կոզեռն Տարոնացի, զոր գովութեամբ կը յիշատակէ Մ. Ուռհայեցին, և կ'ըսէ. «տկար բանիւ և մեծ գիտութեամբ բացայայտէր զգիտութիւն գրոց սրբոց». ուրիշ տեղ մ'ալ «այր ճգնազգեաց և բանիբուն հռետոր» կոչուած կը գտնենք զինքը։ Կը պատմեն Լաստիվերտցի և Ուռհայեցի թէ Հայոց ՆՁԵ թուականին՝ արեգական մեծ և սաստիկ խաւարում մը պատահեցաւ. Պետրոս կաթուղիկոս և Յովհաննէս թագաւոր՝ զԳրիգոր Մագիստրոս և ուրիշ ազնուական և գիտուն անձինք և քահանաներ ղրկեցին առ Կոզեռն վարդապետ, որպէս զի այս նշանին մեկնութիւնը տայ, և իրենց վարանեալ միտքը հանդարտեցընէ։ Երբ զանոնք տեսաւ Յովհաննէս վարդապետ, հառաչեց ու սկսաւ բարձրաձայն լալ. պատգամաւորք ա՛լ աւելի շփոթեցան. և այն ատեն մեկնեց թէ ինչպէս Քրիստոսի խաչելութեան հազարերորդ թուականը լե-

ցուելով՝ սատանայ պիտի արձակուի 'ի շղթայից, և բոլոր աշխարհս տակնուվրայ պիտի ընէ. թագաւորք՝ թագաւորաց, և ազգք ազգաց վրայ պիտի ելլեն, և բազմապատիկ թշուառութիւնք պիտի հասնին Հայաստանի վրայ։ Ուռհայեցի պատմագիրը, որ այս դէպքը կ'աւանդէ, Հայաստանի վրայ հասած այլ և այլ աղէտքն աչքով տեսնելէն և զանոնք ողբալէն ետքը, կը յաւելու. «Զոր խօսեցաւ 'ի մերում ժամանակիս սուրբ վարդապետն Հայոց Յովհաննէս՝ որ ասի Կոզեռն. սա խօսեցաւ բազում բանս, որպէս զմարգարէութիւն 'ի վերայ այսմ ժամանակիս, և խափանելոյ աստուածապաշտութեան յամենայն մտաց, և թուլանալոյ հաւատոց. և զայս ասաց 'ի նոյն գիրքս յառաջ ժամանակաց»։

Լաստիվերտցին կը գրուցէ Կոզեռն վարդապետին համար, թէ «զհաւատոց գիրս գրեաց». բայց այսպիսի գրուած մը դեռ ձեռուընիս հասած չէ։ Ուրիշ գրքի մ'ալ, այսինքն տումարական արուեստի և թուականաց և շրջանաց վրայ գրածէն՝ 'ի խնդրոյ Անանիայ եպիսկոպոսի Վաղարշակերտցւոյ, միայն հատուած մը հասած է մեզի։ Հաւանականաբար այս գրուածն է որ կը նշանակի յԷջմիածնեան Մատենադարանին (թիւ 1975) այսպիսի խորագրով. «Մեկնութիւն տումարի 'ի Յովհաննէս Կոզեռն վարդապետէ»։

Պատմական գրուած մ'ալ կը յիշատակուի իր անուամբը՝ որ մեզ անծանօթ է. «Յովհաննէս Կոզեռն, կ'ըսեն յիշատակագիրք, որ արար զոր ինչ եղեն 'ի ժամանակս իւր»։

Կոզեռն Վարդապետի ուրիշ գրուածք մ'ալ կայ հետևեալ խորագրով. «Յովհաննիսի Հայոց վարդապետի, որ և մականուն Կոզեռն, ասացեալ վասն Վարդավառի տօնին. եթէ վասն է՞ր յընթերցուածն ոչ շարադրեցաւ, ոչ ի Յակոբայ մեծէ, որ է եղբայր տեառն, և ոչ ի Կիւրղէ, և ոչ զկնի նոցա յայլոց վարդապետաց և յառաջնորդաց եկեղեցւոյ»։

# ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ

*Մագիստրոսի տոհմը։ — Քաղաքական դիրքը։ — Կոստանդնուպոլիս երթալը և հոն 'ի Բիւզանդական արքունեաց մեծարուիլը։ — Մատենագրական կեանքը։ — Այս նկատմամբ իրեն տրուած գովութիւնք։ — Թղթերը։ — Վարդապետականք։ — Իմաստասիրականք։ — Ընտանեկանք։ — Քերթուածք։ — Հազարտողեանն առ Մանուչէ արաբացի։ — Քերականականք։*

Պահլաւունեաց տոհմէն Վասակ Նահապետին որդին էր Գրիգոր Մագիստրոս, որ իւր հօրը մահուընէն ետքը ուրիշ նախարարաց հետ միաբանեցաւ, ու Գագիկ Բ Բագրատունին թագաւորեցուց Հայոց վրայ։ Բայց ետքը Վեստ Սարգսի քսութեամբը Գրիգորի հետ թշնամացաւ թագաւորը. որովհետև Անւոյ կողմերը Հայոց 'ի Յունաց կրած վնասուց պատճառ և թելադիր կը սեպէր զնա. որով ստիպուեցաւ Մագիստրոս Արարատեան աշխարհը թողլով՝ Տարօնոյ գաւառը առանձնանալ. և հոն սկսաւ վանքեր շինել, և սրբոյ Կարապետին ժամատունը։ Բայց նորէն հալածուելով 'ի Գագկայ, այն շինութիւններն իւր Հրահատ գործակալին յանձնեց, ու ինքը գնաց 'ի Բիւզանդիոն։ Կայսերական քաղաքին մէջ իւր արժանաւոր պատիւն ու մեծարանքը գտաւ. ու բաց 'ի Յունաց գըլխաւոր պաշտօնակալներէն՝ ծանօթացաւ նաև այլազգի Մանուչէ և Աբրեհիմ իշխանաւորաց հետ։

Կոստանդին և Մոնոմախոս կայսերաց առջևն ալ իւր

հաւատարմութեամբ նշանաւոր երեւնալով, և անոնց սահմաններուն մէջ քաջութիւններ գործելով՝ Մագիստրոս և Դուքս կոչուեցաւ։ Այս պատիւներն ու ընդունելութիւնները՝ ալ աւելի հաստատեցին Գագիկ Թագաւորը իւր կարծեացը մէջ, և սկսաւ իբրև 'ի մատնիչ նայիլ անոր վրայ, ինչուան յանդիմանութեան թուղթ մըն ալ գրեց առ Գրիգոր։ Բայց Մագիստրոս իւր ճարտար և իմաստուն գրիչը շարժեց ինքզինքը պաշտպանելու համար. որով Թագաւորը առանց բոլորովին իւր կարծիքը անոր վրայ փոխելու՝ առջի ատելութենէն ինջաւ։

Երբոր Յոյնք մատնութեամբ Անի քաղաքը յափշտակեցին, Մագիստրոս Կոստանդնուպոլիս գնաց, ուր էր այն ատենը Գագիկ Թագաւորը, որպէս զի իրեն օգնական ըլլայ՝ կործանման վերահաս վտանգի մէջ եղող Հայոց աշխարհին Թագաւորութիւնը կանգնելու։ Բայց տեսնելով թէ իւր փափաքանաց և ջանքին գործադրութիւնը անկարելի է, ինքն ալ Յունաց ձեռքն յանձնեց իւր հայրենի ամրոցները՝ Բջնի, Կայեան և Կայծոն, ու փոխարէն՝ Միջագետաց աշխարհին մէջ քաղաքներ ու գիւղեր առնելով՝ հոն քաշուեցաւ. և Թոռնիկ Մամիկոնեանին յանձնեց Տարօնոյ մէջ ունեցած իշխանութիւնն։

Անկէց ետքը իւր կեանքը բոլորովին բարեպաշտական ու մատենագրական պարապմանց տալով, իւր արդիւնաւոր օրերը կնքեց յամի 1058։

* * *

Այսչափ ընդհանուր և համառօտ կերպով մը՝ Մագիստրոսի քաղաքական կենաց ընթացքը յիշատակելէն ետքը, անցնինք նկատել զինքը իբրև մատենագիր։

Այս մասին՝ նոյն իսկ իրեն քաղաքական ընթացքը վար զարնող մատենագիրք՝ մեծ գովութեամբ կը խօսին իր վրայ։ Շնորհալին՝ որ թէ՛ ժամանակաւ և թէ ազգակցութեամբ մերձաւոր էր իրեն, ասանկ կը գրուցէ իր վիպասանութեանը մէջ.

« Յորմէ Գրիգոր որդի ծընեալ
(Որ) Մագիստրոս վերադասեալ,
Աստուածային շընորհաց լըցեալ
Իմաստութեամբ պայծառացեալ...
Ի յոլըգայէն Յունաց պատուեալ
Եւ Նահանգաց յոգունց տիրեալ.
Տեառականութըն հոխացեալ,
Եւ երկիւղիւըն զարդարեալ.
Ըստ Հոմերի տաղաչափեալ՝
Ըստ Պղատոնի պերճաբանեալ:
Յունականին ներհուն եղեալ,
Յազնիմաստիցըն մակացեալ.
Զաստուածաշունչ տառ վերծանեալ,
Որ ըստ օրէ 'ի նոյն կըրթեալ »:

Լաստիվերտցին ալ կը վկայէ թէ « Այր իմաստուն էր, և խելամուտ յոյժ աստուածային գրոց՝ որպէս թէ ոչ այլ ոք »: Ինքն իսկ Մագիստրոս իւր թղթոցը մէջ երբոր հարկ կ՚ըլլայ իւր անձին վրայ խօսիլ, կը յիշատակէ իւր ուսումնասիրութիւնը և անպարապութիւնը յուսումնական վաստակոց: « Եւ զի բազում աշխատութեամբ խանձեալ և տագնապեալ, մինչ տակաւին յիմում անտիական ելով տիս, հազիւ հազ մակացու այսմ եղեալ, սուղ ինչ էակացն հասեալ, ըստ որում են յԱրաբացւոց և Քաղդէացւոց և Յունաց, ոչ զանդաղեցայց քննութեամբ զփորձ առնուլ »: Ուրիշ անգամ մըն ալ՝ Հագարացւոց Աբրահիմ ամիրային գրելով, կը զրուցէ պանծանօք. « Մեք զամենայն մատեանս որ միանգամ յաշխարհի՝ ընթերցեալ, ոչ անտեղեակք եմք եթէ Քաղդէացւոցն անվաւերական պատմութեանն, և եթէ Հելլենացւոցն, եթէ Կապադովկացւոցն, եթէ Եթովպացւոց, թէ Պարսից և այլոց բազմաց, զորս ոչ եմք բաւական զբոլորն յայտնի կացուցանել »: Առ աշակերտսն իւր Բարսեղ և Եղիշէ կը գրէ խրթնաբանելով. « Քանզի տրամադրութիւնս այս վաղ ուրեմն պատահեաց մեզ, մինչ

տակաւին պատանեակ եղելոյ (այսինքն՝ պարապել յուսումն ստորոգութեանց Արիստոտելի)։ Իսկ թէ որչափ ջան եղեալ ոչ խոնջանս վարկանել վասն տափելոյն, յաւէտ այսպիսի ժողովմանց որոց տեղեակ էք դուք, 'ի պարսկականէ անտի և յիմայելացւոցն, և այժմ Յունաց, անդանդաղ քառիցն արհեստից հետևաբար մասին ինչ տեղեակ լինել. քանզի յայսոսիկ կրթեալ զմեզ վեհագոյն վարկանէի, անկողոպտելի և անծանրագոյն ստանալ քան զամենայն ինչ որ 'ի կենցաղումս ազնուագոյն»։ Ուրիշ տեղ մ'ալ իրաւացի պարծանօք կը վկայէ վասն անձին. «Եթէ ձկնորսացն եմ աշակերտ, կ'ըսէ, սակայն ոչ եմ անտեղեակ Աթենացւոցն ստորոգութեանց և հելլենական հանճարոյ. սակայն հաւատք մեր ծածկեցին զիմաստութիւն»։

Ներսիսի Շնորհալւոյն վարուց կենսագիր մը, որ ժամանակաւ ալ մերձաւոր էր Մագիստրոսի, սապէս կը խօսի իրեն վրայ. «Յոյժ իմաստուն և հանճարեղ, և ներքին և արտաքին ուսմամբ ներակրթեալ վարժմամբ 'ի մանկական տիոց՝ հայկական և յունական դպրութեամբ, մինչև հասեալ 'ի հռետորական աստիճան փիլիսոփայութեան. որ և ուղևորեալ 'ի թագաւորական քաղաքն Կոստանդնուպոլիս յանդիման լինէր թագաւորին, և պատուեալ յինքնակալէն և 'ի մեծամեծաց պալատանն՝ ըստ արժանեաց քաջատոհմութեանն և ըստ մեծիմաստ գիտութեանն և հանճարոյն. քանզի ընդ իմաստունսն Յունաց աւուրս բազումս 'ի հարց և 'ի փորձ դժուարալոյծ բանից մաքառեալ ըստ փիլիսոփայական սարասի, և ըստ եկեղեցական օրինաց և կարգի յաղթէր բնաւիցն. տկարագոյն զամենեսեան երևեցուցանէր անճշմարիտ գիտութիւնն. հզօր գոլով նորա 'ի պատասխանիս, և հանճարեղ և խոհական 'ի դարձուածս բանից»։ Ուրիշ յիշատակագիր մ'ալ կ'ըսէ. «Մագիստրոս հմտագին քերթող էր»։ Նոյնն դարձեալ. «Գրիգոր Եվիկտոնացին (?) վասն յաճախ իմաստասիրութեան իւրոյ Մագիստրոս անուանեցաւ»։

Այլ և այլ աշակերտներ ունեցաւ Մագիստրոս, որոնց մէջ անուամբ մեզի ծանօթ եղողներն են Բարսեղ և Եղիշէ, որ ժամանակ անցնելէն ետքը եպիսկոպոսութեան աստիճանի ալ հասան, ինչպէս նաև իր որդին ալ Գրիգոր Պահլաւունի կամ Վկայասէր, իր հօրը անմիջական խնամոցը տակ թէ՛ բարեպաշտութեան և թէ ուսումնական հրահանգաց մէջ կրթուելով՝ կաթուղիկոսական աթոռը նստաւ։

Մագիստրոսի համար այսպիսի յիշատակութիւն մը կը գտնենք ի գրչագիրս. «Մոնոմախն, որ կալաւ զԴագիկ թագաւորն՝ ետ զիշխանութիւն երկրիս Գրիգորի Մագիստրոսի, որ շինեաց զեկեղեցին Կեչառուաց։ Սա է որդին Հոլում Վասակայ Շինողին Բջնոյ և Կայենոյ և Կարծանայ, զոր յանգէտս սպանին ի Սերկեւլէ»։

***

Մագիստրոսի թէ՛ արձակ և թէ ոտանաւոր գրուածոցը մէջ իրաւամբ գլխաւոր տեղ մը կը գրաւեն

Թուղթերը, որոնք ութսունի չափ են, և որոնց մէջ երևցած իմաստից գեղեցկութիւններն և դիցաբանական գիտութիւնը՝ յայտնի կը ցուցընեն մատենագրին հանճարն և հմտութիւնը. — Հայ միտք մը՝ ելլադական գիտութեամբ սնած և մեծցած։ Բայց որովհետև Բիւզանդիոն՝ ուր երկար ատեն կեցաւ Մագիստրոս՝ հին Աթէնքը չէր, անոր համար ալ իր գրուածոցը մէջ յայտնապէս կը տեսնուի՝ դպրութեանց կողմանէ ալ ապականեալ աշխարհի մը գաղափար։ Անկէց է իր թղթերուն մէջ երևցած թէ՛ իմաստից և թէ շարագրութեան խրթնութիւնը, կիրթ ախորժակաց կանոններուն հակառակ. որով զանազան անգամ ու մտադրութեամբ զանոնք կարդալնէս ետքը՝ դեռ մութ աշխարհքի մը մէջ կը գտնենք ինքզինքնիս. և Մագիստրոսի հանճարը գոված ժամանակնիս ալ՝ պակասութիւն մը ոճոյ կը տեսնենք վրան՝ և սրտերնիս ա-

ռաջ չերթար գրուատել։ Այս խրթնութեան մէկ պատճառն ալ՝ իր գրոց լաւ և ընտիր օրինակներ չունենալնէս է, երկրորդ և գլխաւոր պատճառ մ'ալ՝ այլ և այլ ու բազմապատիկ նիւթոց վրայ գրած ըլլալն։ — Ուստի Մագիստրոսի թղթոցը վրայ չխօսած՝ կրնանք այլ և այլ դասակարգութեան բաժնել զանոնք. այսինքն վարդապետական, իմաստասիրական և ընտանեկան թղթեր։ Ասոնց մէջ ամենէն աւելի դիւրիմաց են վարդապետականներն, որոնց մէջ ժամանակաւ երիցագոյն կը սեպուի այն թուղթը՝ զոր գրած է առ կաթուղիկոսն Ասորւոց. երբոր ինքն Միջագետաց կողմերը դքսութեան իշխանութիւն կը վարէր, հոն համարձակութիւն առնող Թոնդրակեցի և Մանիքեցի աղանդաւորները իր տէրութենէն հալածեր էր. անոնք ալ Ամիթ կամ Տիգրանակերտ քաղաքը գնացին, ու տեղւոյն Ասորւոց կաթուղիկոսին ապաւինելով, գանգատ ըրին իրեն այն կարծեցեալ բռնաւորական կերպերուն վրայ՝ զոր իրենց դէմ բանեցուցեր էր Մագիստրոս։ Կաթուղիկոսն ալ չկարենալով որոշել թէ յորում էր անոնց վարդապետութեան ծռութիւնը, և իրենց խօսքերէն զիրենք անմեղ ենթադրելով՝ մեղադրանաց և գանգատի թուղթ մը գրեց առ Մագիստրոս։ Այս թղթիս պատասխանն է Մագիստրոսի չարագրածը, յորում տեղնիտեղը պատասխան տալով անոր մեղադրանացը, կը ծանուցանէ թէ ի՛նչ իրաւացի պատճառներ ունէր զանոնք հալածելու, և կը ցուցընէ թէ ի՛նչ բանի մէջ օտարաձայն են յուղիղ վարդապետութենէ եկեղեցւոյ, և թէ այն պատճառաւ հարկ ու պարտք է որ ինքն ալ ետեւէ ըլլայ զանոնք մերժելու, և անոնց խաբէական խօսքերուն հրապուրանացը մէջ չիյնալու։

Այս թղթոյն խորագիրն է. «Պատասխանի թղթոյն կաթուղիկոսին Ասորւոց, 'ի ժամանակին յորժամ էր դուքս 'ի Վասպուրական և 'ի Տարօն, զկնի բառնալոյն զՄանիքեցիսն յաշխարհէն Յունաց. և 'ի Թոնդրկաց մնացելոյն նոցա կարծանեալ ազգն, չոգան առ կաթուղի-

կոմն Ասորոց 'ի քաղաքն՝ Ամիթ. զի թերեւս խաբէու-
թեամբ հաւանեցուսցեն զնա։ Զոր նորա գրեալ թուղթ
'ի Գրիգոր Մագիստրոսն յԱրշակունին։ Եւ այս է պա-
տասխանին »։

Հատուած մը միայն այս նամակէն, զոր մէջ կը բե-
րենք, բաւական է 'ի ցուցանել Մագիստրոսի ճարտա-
րախօս լեզուն, սուր և կտրուկ զուրցուածքն ոճը. « Զինչ
երկարագոյն քեզ ասացից կամ գրեցից քրիստոսատեր ան-
ձինդ. այլ սակաւուք հատանել յօժարանամ. զի բոլոր
աղէտ տարակուսանաց՝ նոցա անբարի բարեձեւութեանն,
և խորամանկ խաբէութեանն, և տղայաբար անուսում-
նութեանն, և անաստուած վարդապետութեանն, և ան-
ճոռոմ ճոռոմաբանութեանն, և անտեղի հաւանութեանն,..
անքահանայապետ քահանայագործութեանն, և խաւար-
չտին ձեռնադրութեանն, և անշնորհ մկրտութեանն, և
անլամպարափայլ նսեմութեանն, և անյոյս դաւանու-
թեանն և աներկիւղ երկիւղածութեանն, և խաւարասէր
լուսաւորութեանն, հրեշտակակերպ դիւազգեցութեանն,
... աշակերտելոցդ սատանաւէրն Սմբատայ՝ սասանողին հի-
ման առաքելոց և մարգարէից »։ Երկար ու հետաքննա-
կան թուղթ մ'է. ու Թոնդրակեցւոց աղանդին և իրենց
ծիսից, արարողութեանց, հաւատալեաց և ծաւալման վրայ
կարևոր տեղեկութիւններ կը բովանդակէ։

Ասոնց հետեւողք էին և Թուլայլեցիք կոչուածներն, ո-
րոնց դէմ իր ամէն իշխանական ոյժն ու խստութիւնը
գործածեց Մագիստրոս, աղանդն անհետ ընելու և զիրենք
շահելու դիտմամբ. ու երբ անոնք ալ դիմեցին առ կա-
թուղիկոսն Ասորւոց, և կ'ուզէին խաբել զնա, Մագիս-
տրոս երկրորդ թուղթ մ'ալ գրեց. « Պատասխանի թըղ-
թոյն Թուլայլեցւոցն մնացելոցն 'ի Նորոց Մանիքեցւոց
Թոնդրակեցեացն, որք եկեալ էին առ կաթուղիկոսն Ա-
սորոց և կամէին խաբել զնա »։ Կը յիշեցընէ իրենց թէ
« Փրկիչն հրամայէ երկիցս և երիցս բողոքել եղբօրն. ա-
պա եթէ ոչ լուիցէ՝ եղիցի իբրև զայլազգի և զհեթա-

նաս. և փոխանակ երկուց և երից բողոքելոյ՝ զհարիւր և զեւթանասուն ամ երեքտասան քահանայապետք Հայոց մեծաց, նոյնչափ Աղուանից, և բիւր եպիսկոպոսունք և անթիւ քահանայք և սարկաւագունք բողոքեցին ձեզ և ոչ լուայք. խօսեցան և յանդիմանեցին, և ոչ պատկառեցէք. անիծեցին և արտաքսեցին, և ոչ զղջացայք. մինչև Հոգին սուրբ առաջնորդեաց ինձ. և աղօթք նախահօրն և հաւուն իմոյ սրբոյն Գրիգորի. և եկեալ 'ի Միջագետս՝ հանդիպեցայ մահաբեր և մրրկեալ պղտորեալ վտակաց՝ որ հոսէր մահացու արտաթորեալ՝ յանիծելոյն Սմբատայ, որ 'ի Թոնդրակաց. և մաքրեալ զայնոսիկ՝ խաղացի չու արարեալ մինչև յակն յորում բուսեալ էր իժն և քարբն և վիշապն չարութեան. և խլեալ զնոսա տապալեցի, զոր օրինակ հաւն իմ զԱշտիշատն... և յուսամ 'ի տէր Աստուած՝ այն որ նստին 'ի քրովբէական յաթոռ՝ զի 'ի ձեռն իմ ծագեսցէ առ ձեզ զողորմութիւն մարդասիրութեան իւրոյ»։

Համառօտ՝ բայց ընտիր նամակ մ'ալ է զոր կ'ուղղէ «Առ հոգևոր տէրն Պետրոս կաթուղիկոս, 'ի ժամանակին յորում 'ի կապանաց իւրոց վերստին յաջորդեաց յաթոռ իւր, խնդրեալ 'ի Գրիգորէ զգիր սրբոյն Եփրեմի Հաւատոցն՝ զոր ընթեռնոյր մինչ 'ի բանտին էր»։ Ուրիշ հմտական և գեղեցիկ նամակներ ալ ունի ուղղած առ նոյն հոգևոր տէրն «Ի ժամանակի խուժան յառնելոյն 'ի քաղաքին 'ի վերայ նորա, բան մխիթարական. և հայցումն Անանիայի գրոց Շիրակայնւոյն, զոր մեծ Քննիկոնն անուանեն»։ — «Պատասխանի տեառն Պետրոսի Հայոց կաթուղիկոսի, 'ի ժամանակի քանզի խընդրեաց յաշակերտաց իւրոց զոմանս՝ զԲասիլ և զԵղիսէ»։ — «Պատասխանի տեառն Պետրոսի կաթողիկոսին Հայոց մխիթարական թղթին» և այլն։

Վարդապետական թղթոց մէջ գերազանցներէն կրնանք սեպել այն թուղթը զոր գրած է առ Պետրոս կաթուղիկոս Գետադարձ, որ իմացուցած էր իրեն թէ Գագիկ

քել » ։ — « Առ կարծեցեալ ոմն գիտնական, զոր և յոյժ տգէտ գտեալ. և զգիրս արտաքին և զաստուածաշունչ արտուղի մեկնէր » ։ — « Առ ոմն իմաստասէր՝ ոչ ուղղապէս » և այլն ։

⁂

Մագիստրոսի քերականական գրուածոցը մէջ՝ գլխաւոր և միակ երկասիրութիւն կրնանք սեպել Հին քերականին մեկնութիւնը, զոր համանուն գրուածքին մէջ շատ անգամ կը յիշատակէ Երզնկացին, և նախագրութեանը մէջ սանկ կը գրուցէ՝ « Բայց ցուցից քեզ և զայս. զի մի յաւելորդս և յանպէտս թուեսցի աշխատութիւնս մեր ։ Վասն զի մեծապատիւ իշխանն Մագիստրոս՝ որդի Վասակայ մարտիրոսի, և հայր կաթուղիկոսին տեառն Գրիգորիսի՝ տէր Վահրամ կոչեցելոյ, աշխատեալ էր 'ի հաւաքումն մեկնութեան սորա, և մինչ պռ մերս ժամանակ. այնու վարժէին վարդապետք մեր զաշակերտեալսն » ։ Եւ քէն անոր պակասութիւնը, և թէ ինչ պատճառաւ այս գործը շարագրելուն ձեռք զարկաւ՝ կը յիշատակէ. զոր իւր վրայ խօսելու ատեննիս պիտի նշանակենք ։

Մագիստրոսի այս երկասիրութեան խորագիրն է ըստ ձեռագրաց որ առ մեզ. « Գրիգորի Մագիստրոսի և Կինտոնտի (?) որդւոյ Վասակայ մարտիրոսի, մեկնութիւն Քերականի՝ զոր եղեալ է զայլոցն, և այլ եւս յաւելեալ յիւրոց իմաստիցն » ։ Ցորում նախ քերականութեան արուեստին կամ ուսման վրայ խօսելով, մասնաւոր գլխով մը կը ճառէ վասն գրագիտի, և կ'ըսէ. « Գտեալ զգիր նախ՝ Փիւնիկեցիք. երկրորդ՝ Եգիպտացիք. երրորդ՝ Եբրայեցիք. չորրորդ՝ Արքիացիք. հինգերորդ՝ Քաղդէացիք. վեցերորդ՝ Հելլենացիք. եօթներորդ՝ Հայք, և ապա այլք » ։ Կ'աւանդէ թէ ով եղաւ առ հինան գտիչ արուեստիս, և կը համարի նաև ըստ հնոց՝ զՀոմերոս, զոր

որդի կոչէ Մելապոդոսի՝ այսինքն Սևաւ ոտան, և մօր Եւմիտիդեայ՝ յազգէ Կոմնենեայ, և կատարելագործող արուեստին գծանօթն Դիոնեսիոս Թրակացի։ Գրագիտութեան այլևայլ բաժանմանց վրայ ճառելէն ետքը՝ առանձին գլուխ մը կը կարգէ **Յաղագս վերծանութեան**. յետոյ կարգաւ **Յաղագս Ոլորակի**, **Յաղագս կէտի**, **վասն Զանազանութեան**, **Յաղագս Տառի**, **վասն Վանգի**, **Յաղագս երկար վանգի**, **Յաղագս սուղ վանգի**, **Յաղագս հասարակ Տաղաչափաց**, **Յաղագս Բառի**, **Յաղագս Բանի**, **Յաղագս Անուան**, **Յաղագս Բայի**, **Յաղագս Լծորդութեան**, **Յաղագս Ընդունելութեան**, **Յաղագս Յօդի**, **Յաղագս Դերանունութեան**, **Յաղագս Նախադրութեան**, **Յաղագս Մակբայի**, **Յաղագս Շաղկապի**, **Յաղագս Առոգանութեան**, **Յաղագս Ոտից**. և որ՝ վերջին գլուխ է Մագիստրոսի այս գրուածքին, ուր շատ հմտութիւն և տեղեկութիւնք ամփոփուած են, բայց նաև շատ այլայլութիւնք 'ի գաղափարողաց։



**Քերթողական գրուածներ**. — Զանազան նիւթոց վրայ այլ և այլ բանաստեղծական գրուածներ շարադրած է Մագիստրոս. և անոնց մէջ գլխաւոր կը սեպուին **Թուղթերն**, բաց անոնցմէ՝ զոր վերը յիշատակեցինք, և որոնց մէջ առաջին կը սեպուի առ անանուն ոմն գըրածը՝ որուն սկզբնաւորութիւնն է.

> « Լուաք թէ եկըն պաղըն Պաղակ
> Վարդանասարըն պխտակ ».

ասոր ինչ արուեստով յօրինուած ըլլալուն վրայ այսպիսի բացատրութիւն մը կ'աւելցընէ հեղինակը. « Աղէ՛ ա՛ռ ընթերցիր զարհեստ ոտանաւորացդ. դիւցազնական է տաղդ, քաջոլորեալ և տաղ պսպղուն, օղուն և գեղուն,

եռակի վանկօք շարակայեալ, լի, հոյծ, կատարուն, շարժուն. ոչ վիժեալ գծի, ոչ նուազեալ յօդի, ոչ փոփոխեալ տառիւ. կարեկցաբար առ իս ձգելով զձայնակիցն ստուգաբանութեամբ. և շարակայացուցեալ շորթելով կամ ճողոպրելով»: Բացատրութիւն մը՝ որ նիւթէն աւելի դժուարին է յիմացումն:

Երկրորդ ոտանաւոր գրուածն է Ներբող 'ի սուրբ Խաչն տասնութածրենկեալ, որ կը սկսի. «Օրհնեալ ես փայտ կենաց, բարեբանեալ, երկրպագեալ» որուն մէջ բանաստեղծական հանճար, ու այլ և այլ ընտիր գրուցուածք կան:

Երրորդ, այն ատեններ Հայաստանի կաթուղիկոսական աթոռը նստող Պետրոս Գետադարձ Հայրապետին՝ խաչանչան գաւազանի մը հետ ընծայած ոտանաւոր մը, այս սկզբնաւորութեամբ.

«Ընծայեմ քեզ տարեկան
Նորոյ հասեալ՝ ձեզ բարութեան»:

Այս քերթուածէն ետքը՝ արձակ շարագրութեամբ տեղեկութիւն մը կը յաւելու վիպասանական քերթութեան կամ հագներգութեան վրայ:

Ասոնցմէ շատ աւելի ընդարձակ ու մտադրութեան արժանաւոր գրուած մըն է՝ հազարտողեան ոտանաւորը, աստուածաշունչ հին և նոր գրոց պատմութիւնը բանաստեղծական չափու վրայ առած, զոր շարագրած է ըստ խնդրոյ Մանուչէի Հազարացւոյ. որուն հետ ծանօթացեր էր 'ի Բիւզանդիոն, որ և հռետորական արուեստի հմուտ անձն էր, ու այլ և այլ լեզուաց՝ ինչպէս նաև հայկականին ալ տեղեակ. և իրեն քաջարուեստ տաղաչափութեանը համար՝ մեծ պատիւ գտած թէ Եգիպտոսի ամիրայէն, թէ Պաղտատու ամիրապետէն և թէ Յունաց կայսերէն: Քրիստոնէական կրօնից ալ տեղեակ, և անոր վարդապետութեանը վրայ աքանչացած էր. միայն

արհամարհելի կ'երեւնար իրեն թէ՛ հին եւ թէ նոր կտակարանին պարզ եւ անզարդ ոճը, եւ կը գովէր իրենց ղուրանին կամ օրինաց գրքին ընտիր լեզուն եւ գեղեցիկ տաղաչափութիւնը։ Մագիստրոս ուզելով հասկըցընել անոր թէ տաղաչափութիւնը մարդկային գիւտ է, աստուածային սքանչելիքն անոր կարօտութիւն չունին, խոստացաւ որ թէ՛ հին եւ թէ նոր կտակարանը երեք օրուան մէջ ոտանաւորի վրայ առնու, միայն թէ Հագարացին ալ խոստանայ որ եթէ յաջողի իր այս գործառնութեանը մէջ, թողու իւր հաւատքը եւ քրիստոնէական կրօնից աշակերտի։ Խօսք առաւ իրմէ, եւ աստուածային շնորհաց վրայ վստահացած՝ երեք օրուան մէջ հազար տուն ոտանաւորի մէջ բովանդակեց հին եւ նոր կտակարանի պատմութիւնը եւ ընծայեց Մանուչէի։ Ան ալ զարմացաւ Մագիստրոսի հանճարոյն վրայ, եւ տուած խօսքին վրայ կենալով՝ քրիստոնէութիւնը ընդունեցաւ։ Ասիկայ է այն քերթութիւնը՝ որուն սկզբնաւորութիւնն է, «Մեծ են գործք Աստուծոյ»։



Այս ինքնագիր երկասիրութիւններէն զատ՝ շատ թարգմանութիւններ ալ ըրած է Մագիստրոս, եւ որոնք իրեն գլխաւոր պարապմունքն եղած են. թէպէտ այս աշխատասիրութեանց մեծ մասը կորսուած են. ինքը կը վկայէ թէ «Ոչ եւս դադարեալ 'ի թարգմանութենէ, եւ զբազում մատեանս՝ զորս ոչ եւս գտեալ 'ի մեր լեզուս, զերկուս մատեանսն Պղատոնի՝ զՏիմէոսի Տրամաբանութիւնն եւ զՓեդոնի, յորս բոլոր մասն Նախագիտականին այն պարփակեալ կայ, եւ զայլս բազումս յիմաստասիրացն։ Իւրաքանչիւր մատեանքս այս մեծագոյն է քան զտաբեւոր տօնականս... Բայց եւ զերկրաչափականն զԷւկլիդեսին սկսայ թարգմանել։ Եւ եթէ տակաւին կամեսցի Տէր յերկարանալ մեզ 'ի կենցաղումս, բազում հոգս յան-

*ձին կալեալ զՄնացեալսն բոլոր Յունաց և յԱսորւոց՝ թարգմանել ոչ դանդաղեցայց։ Եւ կարօտիմք քեզ մերձ ելոյ մեզ օգնականութեան այսպիսում իրողութեանց. ապա թէ ոչ՝ աղօթիւք օգնեսցես մեզ... Բայց և գտեալ մեր իսկ է 'ի հայ լեզու գրեալ թարգմանչացն զգիր Ոլոմպիոդորոսի՝ զոր Դաւիթ յիշատակէ, կարի յոյժ սքանչելի և հրաշալի բանաստեղծութիւն, մակաւասար բոլոր իմաստասիրական բանից. գտեալ եմ և զԿալիմաքոսի և զԱնդրոնիկեայն 'ի հայ լեզու»։*

*Այս յիշատակուած գրքերէն՝ միայն Պղատոնի գիրքը՝ զոր Մագիստրոս Տիմէի և Փեդոնի տրամախօսութիւն կը կոչէ, հասած է մեր ձեռքը. յորում նախ բնութեան և բնական իրաց վրայ կը խօսի, հին հեթանոս իմաստասիրաց կարծիքները մէջ բերելով. երկրորդ՝ օրինաց վրայ ընդհանրապէս, և երրորդ՝ յաղագս օրէնսդրութեանց. տասուերկու գիրք, այլ և այլ անձանց մէջ տրամախօսութեան ձևով։*

*Ոմանք կարծեցին թէ այս գրքին թարգմանութեան ժամանակը՝ երիցագոյն է քան զՄագիստրոս, և թերևս ինչուան հինգերորդ դարու երկասիրութիւն, կրտսեր՝ կամ երկրորդ թարգմանչաց ձեռքովը եղած. և թէ հաւանականաբար մի և նոյն անձն է անշուշտ՝ որ Փիլոնի և Պղատոնի իմաստասիրական գրքերը թարգմանած ըլլայ։ Եւկլիդեսի երկրաչափութենէն քիչ բան ձեռուընիս հասած է. իսկ մէկալ գրքերէ՝ զորս կը յիշատակէ Մագիստրոս, այսինքն Ոլոմպիոդորոս, Կալլիմաքոս և Անդրոնիկոս իմաստասիրաց գրքերը՝ կորսուած, կամ դեռ մեր ձեռքը հասած չեն։*

Մագիստրոսի գրուածքներէն քանի մը՝ թղթեր և ոտանաւորներ միայն հրատարակուած են ծաղկաքաղ դրոց կամ օրագրաց մէջ։ Հազարտողեան քերթուածն ալ առ Մանուչէ՝ տպագրուած է 'ի Վենետիկ, 'ի 1868։ Եւկլիդեսի հատուածն 'ի Բազմավէպ Հանդիսարանի (1884, յէջ 30)։ Լանկլուա գաղղիացին ալ մատենախօսական յօդուած մը Մագիստրոսի և իր երկասիրութեանց վրայ։

Մագիստրոսի ժամանակակից գրաւոր անձանց մէջ գըլխաւորներէն են,

**ՊԵՏՐՈՍ ԳԵՏԱԴԱՐՁ** կաթուղիկոս, որ ատէպ կը թղթակցէր Մագիստրոսի հետ, և մեծ մասն ունեցաւ ատոր քաղաքական կենաց ընթացքին մէջ. շատ ալ հռչակաւոր եղաւ թէ՛ ազգին թէ օտարաց: Իր նախնական ուսմանց հրահանգը Տրապիզոնի վանքին մէջ առաւ Պետրոս. մատենագիրք և աւանդութիւնն կը հաւատարմացընեն թէ ոչ միայն արքազան գիտութեանց, այլ նաև արտաքին իմաստասիրութեանց և չափաբերականին մէջ անուանի եղած ըլլայ: Բայց մեր ձեռքը հասած երկասիրութիւնքը թէպէտ և ընտիր՝ բայց չեն կրնար առիթ ըլլալ այն փառաւոր գովեստներուն՝ որոնց արժանի եղած է: Այս գրուածներս են ութ ձայնի վրայ առած մարտիրոսաց և հանգստեան շարականները, և քանի մը շարականներ՝ որ ընդհանուր անուամբ Մանկունք կը կոչուին, և որոնց մէջ վայելուչ շարադրութեան և ոճոյ հետ հաւասար կը փայլին բանաստեղծական հանճար և աչխոյժ[1]. կ'աւանդուի դարձեալ թէ այլ և այլ գեղեցիկ ճառեր ալ շարադրած ըլլայ Գետադարձ, որոնք մեր ձեռքը հասած չեն:

Հետաքննական է Մոնոմախոս կայսեր իրեն ըրած փառաւոր ընդունելութիւնն ի Բիւզանդիոն, զոր քաղելով կը դնենք, 'ի պատմագրաց. «Ընդ այն ժամանակս ('ի ՂԲ թուի) լուեալ Մոնոմախ թագաւորն Յունաց զբարի համբաւս անուան տէր Պետրոսի, և յղեալ սիրով կոչէ զնա գալ առ ինքն: Եւ սուրբ հայրապետն պատրաստեցաւ ի գնալ. և օրհնեաց ի տեղի իւր կաթուղիկոս Հայոց զամենագովն Խաչիկ զքուերորդին իւր. և ինքն ել և

1. «Նա ասաց զերկու կարգս շարականաց Մարտիրոսացն և ըզ-Հանգստեան». (Ցայսմ):

*գնաց ի կոչն կայսեր երեք հարիւր ձիաւորօք և հարիւր քսան կարգաւորօք. որք էին եպիսկոպոսք, վարդապետք և անուանի փիլիսոփայք և երկու հարիւր հետևակ սպասաւորօք։ Եւ ի մտանելն ի Կոստանդնուպոլիս շքեղ և զարմանալի փառօք, և քաղաքն ամենայն ելին ընդ առաջ, և տարեալ զայն օր իջուցին ի սուրբն Սոփի։ Եւ ապա ի վաղիւն գնացին ի պաղատն արքունի։ Որոց ընդ առաջ եկեալ թագաւորն երկիր եպագ հայրապետին ի վերայ երեսաց երկրի, և ապա ետուն միմեանց զհամբոյր ողջունին և նստան։ Եւ իբրև ելին խրախութեանցն, տէր Եղիսէ զոսկի սելին յորոյ վերայ նստեալ էր կաթողիկոսն 'ի վեր եկալ և յինքն էառ։ Եւ հարցեալ թագաւորն ըզպատճառսն, և ասէ տէր Եղիսէ, թէ հայրապետական աթոռ է, և չէ պարտ այլ ումեք նստել։ Ասէ թագաւորն. Իրաւ հրամայես, քսան հազար դահեկանի է. պահեա զայդ տեառն քո։*

ԱՆԱՆԻԱ ՍԱՆԱՀՆԵՑԻ. — *Մագիստրոսի ժամանակակից էր սա և Սանահնի վանաց միաբան. Գետադարձ հայրապետին խնդիրքովը՝ Պօղոս առաքելոյն չորեքտասան թղթոց մեկնութիւնը շարագրեց, հաւաքելով 'ի բանից Ոսկեբերանի, Եփրեմի և Կիւրղի։ Այս բանս իրենց պատմութեան գրոցը մէջ կ'աւանդեն Կիրակոս և Վարդան. Կիրակոս կ'ըսէ թէ «Անանիա վարդապետ, սորա ասեն 'ի մի հաւաքեալ 'ի մեկնութիւն գրանսն Եփրեմի, և Յովհաննու Ոսկեբերանի և Կիւրղի և այլոցն, արարեալ համառօտ վասն դիւրահասութեան ընթերցողաց։ Արար և խորհրդական և մտաւոր տեսութիւն և համեմատութիւն աւետարանացն օրինակս։ Գրեաց և լուսաւոր իմացուածս վասն խորհրդական սրբասացութեանն՝ որ յեկեղեցիս ուղղափառաց խաչեցարիւ ասի, և զներբողեանն շողակաթին»։ Իսկ Վարդան. «Եւ նախ քան զսոսա Անանիա՝ որ զԱռաքեալն համառօտեաց հրամանաւ կաթուղիկոսին Պետրոսի, Սանահնեցին»։ Բայց ո-*

թովհեաւ այս գրուածքին գրչագրաց մէջ՝ որ մեր ձեռքը հասած են, Անանիայի անունը չյիշատակուիր, ոմանք անոր երկասիրութիւնն ըլլալուն վրայ կը տարակուսին։

Երկրորդ գիրքը՝ զոր 'ի խնդրոյ Գետադարձ հայրապետին շարագրեց Սանահնեցին, ու անոր յաջորդ Խաչիկ կաթուղիկոսէն նուիրեց, ընդդիմադրութեան գիրք մըն է՝ ընդդէմ Յունաց, այսպիսի մակագրով. «Անանիայի վարդապետի Հայոց՝ բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց. զոր գրեաց հրամանաւ տեառն Պետրոսի Հայոց վերադիտողի»։ Եւ կը խօսի այն զանազան խնդրոց վրայ՝ որոնք Յունաց և Հայոց մէջ հակաճառութեան նիւթ եղած են. այսինքն անխտիր ընդ միմեանս հաղորդուելուն վրայ, մեծի հինգշաբաթուն վրայ, անոնց դէմ՝ որ ապականացու կը համարին զմարմին Քրիստոսի. ներքինացեալներու դէմ, պատկերաց պաշտաման, Քաղկեդոնի ժողովոյն, Վրաց բաժանմանը վրայ, չորս աթոռներուն, մեռոնին, բաղարջին, Քրիստոսի ծննդեան տօնին, և երից սրբասացութեանց համար՝ զոր Հայոց եկեղեցին կ'երգէ 'ի դէմս Որդւոյ։ Կիրակոս պատմիչ միայն այս վերջին նիւթը կը յիշատակէ՝ երբոր կը գրուցէ թէ, «Գրեաց և լուսաւոր իմացուածս վասն խորհրդական սրբասացութեանն՝ որ յեկեղեցիս ուղղափառաց խաչեցարիւ ասի»։ Շարադրութեան ոճը գեղեցիկ է և զարդարուն, և ճարտասանական աղուոր զուրցուածները յաճախ. ափսո՜ս որ հակառակութեան նիւթ եղող, և արդէն ազգին մէջ այլ և այլ տարաձայնութեանց և երկպառակութեանց առիթ խնդրոց վրայ խօսելու ատեն՝ պէտք եղած զգուշութիւնը և անկողմնասիրութիւնը չի ցուցըներ։

Կիրակոս՝ երրորդ երկասիրութիւն մըն ալ կ'ընծայէ Սանահնեցւոյն, խորհրդական և մտաւոր տեսութիւն մը և համեմատութիւն աւետարանչաց՝ որուն գրչագիրը դեռ ձեռուընիս հասած չէ։ Նոյնպէս ալ Տօղակաթի ներբողեան մը, որ թերևս մեր քովը գտնուածն է, և որուն

վերնագիրն է. «Երանելւոյ հօր Անանիայի հոգեվարժ փիլիսոփայի՝ Ներքողեան, ասացեալ 'ի սուրբ կաթուղիկէն՝ որ է 'ի Նոր քաղաք՝ որ այժմ կոչի Վաղարշապատ»: Թէպէտ և այս գրուածքը՝ ուրիշ համանուն վարդապետի մը կ'ընծայուի յոմանց, ինչպէս նաև ուրիշ քանի մը գրուածներ, որոնց միայն խորագիրները կը գտնենք հոս.

Ա. Անանիայի վարդապետի խրատ հոգեշահ, թէ որպէս կարասցէ զմիտս որոշել յերկրաւորացս:

Բ. Խրատք քահանայից:

Գ. Ի խորհուրդ Յովհաննու մարգարէի:

Դ. Ի խորհուրդ կատարման սուրբ առաքելոյն Պետրոսի:

Ե. Անանիայի Հայոց վարդապետի գրուատ 'ի սուրբ Մկրտիչն Յովհաննէս. «Ի ձեռն առեալ զիմաստ հոգւոյն ձեռնտուութեամբ շնորհաց իմաստութեան ըստ չափոյ տկարութեանս իմոյ»:

Իրեն կամ համանուն վարդապետի ուրիշ գրուած մ'ալ կը տեսնենք հետևեալ խորագրով. «Երանելւոյն Անանիայի խօսք և խրատք աւետարանական, որ տանի ըղձմեզ 'ի կեանս յաւիտենական, և ոչ տայ խոտորել յաջ կամ յահեակ». և սկզբնաւորութիւնն. «Քանզի գրեալ և պատուիրեալ է մի խոտորել»:

ՍԱՐԳԻՍ ՍԵԽԱՆԵՑԻ. — Մագիստրոսի գլխաւոր թղթակիցներէն ու մտերիմներէն մէկն էր նաև Սարգիս վարդապետ՝ Սևան կղզւոյն առաջնորդը, գիտնական ու լեզուագէտ անձ մը, որուն իմաստութեանն ու գիտութեան վկայութիւնը կու տայ Մագիստրոս հետևեալ խօսքերով. «Զի՞նչ արդեօք հզօրդ հռետոր և աստուածային տեսլետիս. մի և ատեցեա՞լ 'ի գիր 'ի մէնջ կամ թէ արհամարհեալ. զի միանգամ և երկիցս ոչ տաս պատաս-

*խանի, որ միշտ կարօտեալ եմ բանի քում և գրի։ Քանզի հզօր ես 'ի պուէտիկոսական մատենագրութեան. և սիրելի ինձ ոչ այլ ինչ՝ եթէ ոչ այնպիսի ինչ լսել կամ տալ»։ Ուրիշ թղթի մը մէջ ալ 'իր թարգմանութեանց և գրաւորական վաստակոց վրայ խօսելու ատենը կ'ըսէ. «Կարօտիմք քեզ՝ մերձ ելոյ մեզ օգնականութեան այսպիսում իրողութեանց»։*

*Սևանեցւոյս համար կ'աւանդի թէ այլ և այլ ճառեր և թարգմանութիւն և մեկնութիւններ երկասիրած ըլլայ. սակայն անոնցմէ բան մը ձեռուընիս հասած չէ. միայն Սարգիս վարդապետի մակագրութեամբ ճառ մը կայ ննջեցելոց վրայ՝ 'ի յունականէն թարգմանուած 'ի Հայ՝ հանդերձ մասնաւոր յիշատակարանով մը, զոր ոմանք Սևանեցւոյս կ'ընծայեն։*

*Ասոնց նման անուանի եղած են նաև ուրիշ քանի մը վարդապետներ, ինչպէս Խնասի վանաց առաջնորդ Սամուէլ Հոգեգոպետ, Գէորգ անունով վարդապետ մը, Տիգրան Գոհլեանանի պատմիչ. որոց գրաւոր երկասիրութիւնք ձեռուընիս անցած չէ։*

# ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ

---

*Լաստիվերտցի և իր վարքը։ — Պատմական երկասիրութիւնը։ — Նիւթն ու բովանդակութիւնը։ — Բանասիրական և մատենագրական արժէք։ — Իրեն ընծայուած Ընթերցուածոց մեկնութիւն մը։ — Պատմութեանը բնագրին տպագրութիւն և գաղղիական թարգմանութիւն։*

Այս դարուս մատենագրաց մէջ նշանաւոր կրնայ սեպուիլ Արիստակէս Լաստիվերտցի՝ իւր պատմական երկասիրութեամբը։ Իր վրայ կենսագրական տեղեկութիւն մը չունինք ամենևին. միայն գրուածքէն և պատմագրելու ոճէն կ'երևնայ թէ եկեղեցական էր, և թէ բաւական ընդարձակ հմտութիւն ունէր աստուածաշունչ գրոց։ Աս գիտութիւնը ուզած է ցուցընել նաև պատմագրութեանը մէջ, և անով գրուածոցն յարգը մասամբ կորսնցուցած. վասն զի թէպէտ յաշխարհի ամենայն ինչ յԱստուծոյ կը սահմանուի, բայց զայդ իսկ 'ի պատմութեան յայտնապէս ցուցընելու համար՝ մասնաւոր իմաստասիրական տեսութիւններ պէտք են, ու մտածութեանց ընդարձակութիւն և խորութիւն, և բաւական չէ յաճախ մարգարէից խօսքերը կրկնելը։

***

*Լաստիվերտցւոյն պատմութեան նիւթը. — Հայաստանի* թշուառ ժամանակացը ականատես, ականջալուր և ըն-

տուգապատում վիպագիր մ'է Արիստակէս։ Անգութ և անողորմ թշնամիք՝ մեր աշխարհին նիւթական և բարոյական խեղճութիւնը իրենց նպաստաւոր գտնելով, զանիկայ յափշտակելու և կամ աւերմամբ ոտնակոխ ընելու համար՝ ամէն չարութեան ձեռք զարնելու պատրաստուեր էին։ Ուստի իրաւամբ Լաստիվերտցին իւր պատմութեանը նախերգանացը մէջէն կը սկսի ողբալ ազգը, և անոր գլխուն գալիք ապագայ թշուառութեանց աղէտքը կը նկատէ. «Փառք մեր, կ'ըսէ, դարձան յապականութիւն. շունչ 'ի մեզ ոչ մնաց, զօրացաւ մահ և եկուլ. ամենեցուն յարձակեցան 'ի մեզ ձեռք. 'ի սիրելեաց քակտեալք՝ զորս ոչ սուր սատակեաց, ցրուեցաք զօրէն աստեղաց մոլորական կոչեցելոց»։

Այս տխուր նախերգանքէն ետքը կը սկսի Լաստիվերտցին իւր Պատմութիւնը։ Կը յիշատակէ Դաւթի Կիւրապաղատին թագաւորութիւնը, այն աշխարհաշէն, մեծապարգև և աղքատասէր իշխանին, որուն ատենը հանգստութիւն և խաղաղութիւն կը գտնէր Հայոց աշխարհքը։ Կը յիշատակէ դարձեալ Սմբատայ ու Գուրգենայ եղբօր՝ Աշոտոյ Բագրատունւոյ՝ թագաւորութեանը ժամանակը, որ 'ի պատերազմունս հզօր և յաղթող ըլլալով՝ 'ի խաղաղութեան պահեց Հայոց աշխարհքը։ Բայց մահուընէն ետքը անոր որդիքը Սմբատ Յովհաննէս և Աշոտ հակառակելով իրարու սահմանաց և իշխանութեան վրայ, Ափխազաց Գորգի թագաւորին դիմեցին. Գորգի անոնց մէջ ուզելով խաղաղութիւն ընել՝ ձեռքն ու զէնքը երկընցուց Հայաստանի վրայ. Յունաց կայսրն ալ իրեն դէմ ելաւ, և այն պատճառաւ իրարու հետ պատերազմներ ունեցան, որոնց վնասն ու աւերմունքը Հայաստան կրեց։

Անկէ ետքը Արիստակէս՝ Բիւզանդիոնի այլ և այլ թագաւորաց յաջորդութեան շարքը կը դնէ իւր պատմութեանը մէջ, և այն վերաբերութիւններն՝ զորս անոնց հետ ունեցաւ Հայաստան։ Այն ատենուան ազգային պատմութեան անցիցը մէջ նշանաւոր է Անի քաղաքին

վաճառումը առ Յոյնս, որով Գագիկ Բ Թագաւորը զրկուեցաւ արքունական գահէն, ու արտասուելով ազգին աղէտիցը վրայ՝ թէ՛ կեանքը և թէ բովանդակ թագաւորութիւնը կորսնցուց։ Այս վաճառման գլխաւոր պատճառը՝ մեր քանի մը իշխանաց անմիաբանութիւնն էր, ու երիցու մը արծաթասէր շահախնդրութիւնը։ Այն ցաւալի դէպքը սրտաշարժ գրչով մը և հայրենասէր արցունքով կ՚աւանդէ Լաստիվերտցին. կը յիշատակէ Անի թագաւորանիստ քաղաքը իւր ամէն շինուածոցն ու կազմութեանց վայելչութեամբ. իսկ ետքը « Թագաւորն անկեալ 'ի պատուոյ, իբրև զգերի կալանաւոր նստի 'ի հեռաւորնակ տեղիս... Հայրապետական աթոռն ամայացեալ՝ ցուցանի տխուր դիմօք, իբրև զկին նորահարսն մնացեալ յայրիութեան... յողբս փոխեցաւ մեզ ամենայն »։

Այսպէս Հայաստան անտէրունչ վիճակի մը մէջ համարձակութիւն կու տար իւր չորս կողմը բնակող և իրեն կորստեանը սպասող թշնամիներուն։ Անոնց ձեռքովը Բասենոյ գաւառին ու Սմբատայ լերան ու Արծնի մէջ սոսկալի ու դժնդակ կոտորածներ կ՚ըլլան, կը զարնուի Կարս քաղաքը. վրայ կը հասնի Ալփասլան՝ արիւնարբու և մահաշունչ սուլդանը, կը խորտակէ՝ կը տապալէ Մանազկերտ քաղաքը. ու անլուր կոտորածք և աւարառութիւնք կ՚ըլլան Խորձեանի ու Հանձէթի, Դերջանայ ու Եկեղեաց մէջ, որոնց տխուր պատմութիւնները՝ մատենագրին սիրտը առաջ չերթար նշանակելու. վասն զի՝ կ՚ըսէ « Հատկլիմ արտասուօք, փղձկի սիրտ իմ, և յիմարին միտք և զդողանի հարկանին ձեռքս »։

Սակայն և այնպէս հայրենեացը խեղճութեանը ուրիշ ցաւալի դէպքերն ալ յիշատակելու չդանդաղիր։ Անի քաղաքը՝ որ նոյն ժամանակաց գլխաւոր շահաստանն էր, իւր փառքովն ու մեծութեամբքը՝ յաղթողաց ձեռքը անգթութեան և չարութեան խաղալիկ մը կ՚ըլլայ. և անոր գլուխը եղած ցաւալի դէպքերը կ՚աւանդէ Լաստիվերտցին։ Ասիկայ է իւր պատմագրութեան գլխաւոր մասը,

զոր գեղեցիկ և սրտաշարժ ոճով և բանաստեղծական հանճարով կը ստորագրէ․ և անով կը լմընցընէ իւր երկասիրութիւնը։

Ոմանք Լաստիվերտցւոյն գրուածքը՝ խիստ ողբական ոճով շարագրուած կը գտնեն։ Տարակոյս չկայ որ այս մասին մէջ չափաւորութիւն պահած չէ հեղինակը, որով թերևս ընթերցողաց սիրտը շարժելու տեղ՝ մերթ տաղտկութեան պատճառ ալ ըլլայ։ Կ'երևնայ թէ մատենագիրը այն հանճարներէն է՝ որոնք տխրութեան հակամէտ բնաւորութիւն կ'ունենան․ բայց և այլոց վրայ ոչ նուազ ազդեցութիւն պիտի ընէին անշուշտ իւր ժամանակացը տխուր և եղերական դէպքերը։

Արիստակէս վարդապետի անուամբ, որ մեր հեղինակն կը կարծուի, կան Ըսբերցուածոց մեկնութեան ճառք կամ հատուածք բանից, վայելուչ շարագրութեամբ։

Լաստիվերտցւոյն Պատմութիւնն տպագրուած է 'ի Ս․ Ղազար Վենետիկ, յամին 1844։ Գաղղիարէն թարգմանութիւն մ'ալ 'ի Բարիզ 1864, Բրիւտոմ հայագիտին ձեռամբ, այսպիսի խորագրով․ Histoire d'Arménie, comprenant la fin du royaume d'Ani, et le commencement des invasions des Seldjoukides, par Arisdaguès de Lasdiverd; traduite pour la première fois de l'arménien et accompagnée de notes par M. Ev. Prud'homme. Paris, 1864.

# ԳՐԻԳՈՐ ՎԿԱՅԱՍԷՐ

---

*Վկայասէր և իր վարուց համառօտութիւն։ — Ըրած բարեկարգութիւնք։ — Ճանապարհորդութիւններն յԵրուսաղէմ և յԵգիպտոս։ — Երկասիրութիւնք։ — Մեկնութիւն Գործոց։ — Գէորգ Լամբրոնեցւոյ ընծայուած համանունն գրուած մը։ — Գրիգորի թարգմանութիւնք։ — Կիրակոս աշակերտ և վաստակակից վկայասիրին։ — Մարկոս։ — Գէորգ Մեղրիկ։ — Թէոդորոս Աշխօսիկ։ — Սիսիանոս Սեբաստացի։ — Պօղոս Տարօնեցի։*

*Մետասաներորդ դարուն մատենագրաց մէջ թէ՛ բարեպաշտութեամբ և թէ ուսումնասիրութեամբ անուանի հանդիսացաւ Մագիստրոսին որդին Գրիգոր Վկայասէր, որուն առջի անունը Վահրամ էր։ Հօրը աչքին և խնամոց տակ կրթուելով՝ թէ՛ հօրը և թէ՛ հայրենեաց և եկեղեցւոյ արժանաւոր երևցաւ։ Ուսմանցը հրահանգը կատարելէն ետքը՝ աշխարհք մտաւ, և ըստ աշխարհի առաքինութեամբքն ալ մեծ համբաւ ստանալով, Բիւզանդիոնի կայսրէն զանազան պատիւներ առաւ, ու դուքս պատուանունով՝ իւր հօրը իշխանական աթոռը նստաւ։ Բայց քանի մը տարի անցնելէն ետքը՝ ամէն երկրաւոր մեծութիւններէ հրաժարելով, ինքզինքը միայնակեցական կենաց առանձնութեան տուաւ, սրտին ու հոգւոյն խաղաղութիւնը փնտռելով։ Սակայն իր ամէն ջանքովն ալ ինքզինքը չկրցաւ ծածկել անոնցմէ՝ որոնց արդէն հասեր էր իր առաքինութեան և սրբակրօն վարուց համբաւը.*

ուստի Խաչիկ կաթուղիկոսին մահուընէն ետքը՝ անոր արժանաւոր յաջորդ մը փնտռելու ատեն՝ ամենուն աչքը ասոր վրայ դարձաւ, ու մեծ աղաչանքով նստուցին զինքը հայրապետական աթոռոյն վրայ, ու կոչեցին Գրիգոր երկրորդ։

Այլ և այլ եկեղեցական բարեկարգութիւններ ընելէն ետքը՝ ինքզինքը գրաւոր զբաղմանց տուաւ Գրիգոր, թէ անձամբ և թէ այլոց ձեռքով թարգմանութիւններ ընելով, և կամ սկզբնագիր երկասիրութիւնք շնորհելով ազգին. անոր համար է որ Շնորհալին՝ անոր հոգևոր և եկեղեցական արդիւնքը նշանակելէն ետքը՝ կը գրուցէ,

« Երկրորդ Մեսրովպ մեզ երեւեալ
Զգիրըս բազումըս թարգմանեալ.
Առ 'ի Յունաց և յԱսորւոց
Ճառըս սրբոց վերաբերեալ »։

Իր գրաւոր երկասիրութեանցը մէջ գլխաւոր եղան սրբոց վկայաբանութիւններն, զորս թարգմանեց և կարգի դրաւ, և անոնց շատերուն տօները հաստատեց, և այն պատճառաւ Վկայասէր կոչուեցաւ։

Վարդան պատմիչ կ'աւանդէ թէ Վկայասէր հայրապետը տարի մը չափ կաթուղիկոսական աթոռոյն վրայ նստելէն ետքը 'ի Ծամնդաւ, նոյն աթոռոյն տեսչութեան հոգը Թողուց Լոռեցի Գէորգ վարդապետին, և ինքը թարգմանութեանց համար անցաւ 'ի Կոստանդնուպոլիս։ « Գայր հասանէր, — կ'ըսէ ժամանակաւ իրեն մերձաւոր պատմիչ մը, — 'ի թագաւորեալ քաղաքն Կոստանդինուպոլիս և յանդիման լինէր թագաւորին և պատրիարգին. որոց տեսեալ զայնպիսի աստուածազգեաց հայրապետ... մեծաւ պատուով ընկալան զնա... քանզի քաջ տեղեակ էր յունական լեզուին և դպրութեանն, և յիրս և 'ի բանս ըստ ամենայնի վարժ և կիրթ, 'ի հարցուածսն խոհեմ, և 'ի պատասխանիսն զգօն և հանդարտ. գեղ

[illegible] բարեխօսիլ և հեզահայեաց, և բանք աստուածայնոց լեզուին համեստ և քաղցրագոյն. յորս կապեցան սիրով Թագաւորն և բովանդակ իմաստնոցն ժողով»։ Անկէց այլ և այլ գրքեր հետը առնելով՝ երբոր կ'ուզէր Երուսաղէմ երթալ, հովը հակառակ ըլլալով՝ ստիպուեցաւ ելլել յԵգիպտոս․ և հին անապատաւորաց բնակութեան տեղուանքը պտըտելով, իր սրտին փափաքը և ուխտը կատարեց։ Այդ հոգեւոր այցելութիւնը այնչափ մեծ ազդեցութիւն ըրաւ իր եռանդուն և աստուածասէր սրտին վրայ, որ փափաքելով նորոգել զվանական և ըզմիանձնական կեանս 'ի Հայաստան՝ ետեւէ եղաւ հոն տեսած կրօնաւորական կարգերն ու լսած ու գտած վարքերն գրել, թարգմանել և ընտանեցընել իր հայրենակցաց․ ու այս վախճանաւ կաթուղիկոսական պաշտամանէն ետքն ալ գնաց նաև 'ի Պաղեստին․ տեսաւ հին ճըգնաւորաց մենաւորութեան տեղուանքը․ հաւաքեց անոնց վարքը, որ թէ և իրմէ առաջ մասամբ ծանօթ էին Հայոց հին նախնեաց թարգմանութեամբ, այլ ինքն եղած է երկրորդ հաւաքող և թարգմանիչ, օժանդակ և ձեռնտու ունենալով զԳրիգոր քեռորդի իւր։ Զայս կ'ակնարկեն անշուշտ Ուռհայեցւոյն ըսելը վասն Վկայասիրին թէ «Պայծառացոյց զկարգս կրօնաւորութեան»․

Մեծ պատիւ գտաւ Եգիպտոսի սուլդանէն․ և հոն բնակող Հայերը՝ երեսուն հազար հոգիէն աւելի՝ իր քովը ժողվուեցան․ և ինքն Գրիգոր անոնց համար վանք շինեց, և վրանին գլխաւոր իր մերձաւոր ազգականը՝ ըզԳրիգորիս, զոր Վարդան՝ Վկայասիրին եղբօրորդին կը կոչէ, և Ուռհայեցին՝ քեռորդի։ Կիրակոս կ'աւանդէ թէ Եգիպտոսի մէջ վախճանած ըլլայ Վկայասէր․ իսկ ուրիշ պատմիչք կը գրուցեն թէ դարձաւ 'ի Հայաստան, և Տորոս լերան սահմաններն կամ Եփրատ գետին քով եղած Կարմիր վանքը բնակելով՝ հոն կնքեց իր բազմարդիւն կեանքը։



**Վկայասիրին երկասիրութիւնները.** — Վկայասիրին երկասիրութեանցը՝ կամ իր ջանիւք և հրամանաւ եղած գրաւոր արդեանց մէջ, գլխաւոր կը սեպուի Գործոց Առաքելոց մեկնութիւն մը, որուն ինքնագիր յիշատակարանին մէջ սանկ կը պատմէ Գրիգոր. « Տուկիծ կայսեր որդւոյն Միքայելի թագաւորութեան ու Կոզմայի պատրիարքութեանը ժամանակ՝ Կոստանդնուպոլիս քաղաքը գնացի. և հոն շատ ետեւէ իյնալով՝ Յովհաննու Ոսկեբերան հայրապետին շարագրած Գործոց Առաքելոց գերահրաշ մեկնութիւնը ձեռքս անցաւ: Հոն Կիրակոս անուամբ հմուտ հռետորի մը հանդիպելով, որ թէ՛ հայկական և թէ յունական ուսմամբ անուանի էր, և առատ վարձք տալով իրեն՝ այս ցանկալի գիրքը թարգմանել տուի: Եւ ինչպէս Նախամարգարէն Մովսէս օրինաց տախտակները՝ անանկ ուրախութեամբ այս նուիրական գիրքը հետս առած՝ շատ աշխատութեամբ Լիբիոյ և նաւական ծոցոյն համատարածը անցայ, և Հոգւոյն սրբոյ խնամքովը՝ Սեմայ բաժնին մէջ Տորոսի ստորոտը եղող սրբոց հրեշտակարնակ կայարանը հասայ, և գտայ հոն՝ Կիրակոս հոգեշնորհ գիտնականը՝ որ իմ ըստ հոգւոյ որդիս է, և մեր փոխանորդին Գէորգեայ աշակերտը: Անիկայ իրեն հմտութեամբը՝ առջի թարգմանչին ունեցած անհարազատ ոճերն ու խորթութիւնները՝ մեր ազգին դիւրալուր և յարմարական ոճի մը վերածեց շատ աշխատութեամբ »:

Այս յիշատակարանը կը գտնուի այն գործոց մեկնութեան մէջ՝ որ ընդհանուր անուամբ Խմբագիր կը կոչուի, յՈսկեբերանէ և յԵփրեմէ քաղուած ըլլալուն համար. և այս անուամբ ալ տպագրուած է 'ի Վենետիկ յամի 1839:



Սակայն ոմանք կը կարծեն թէ այս խմբագիր մեկնութիւնը կրտսեր է ժամանակաւ քան զՎկայասէրն, որովհետև Շնորհալւոյն ու Լամբրոնացւոյն խօսքերէն ալ զանազան հատուածներ մէջ բերուած կը տեսնուին, և յընծայականին կը յիշատակուի Տէր Յովհաննէս արքայեղբայրն՝ Հեթմոյ Ա, և թէ անոր հրամանաւը ձեռք զարնուած ըլլայ այս երկասիրութեան։ Ուստի հաւանական կ'երևնայ թէ ասոր ընդարձակ մեկնութիւնն էր զոր թարգմանել տուաւ Վկայասէր, և վրան ժամանակ անցնելէն ետքը՝ ուրիշ մը նոյնը համառօտեց՝ սրբոյն Եփրեմի և ուրիշ վարդապետաց խօսքերէն ալ այլ և այլ հատուածներ աւելցընելով։

Այս կարծիքը կ'արդարացընեն Նորագիւտ յիշատակարանի մը խօսքերն՝ որ մեր յիշած երկասիրութիւնը Գէորգայ Լամբրունեցւոյ կու տայ, որուն վրայ ետքն ալ առիթ պիտի ունենանք խօսելու. «Արդ 'ի թուականին աբեթական տումարին՝ կ'ըսէ, յեւթն հարիւր և 'ի յիսունն՝ եղև վախճան երջանիկ և հռչակաւոր մեծ րաբունապետին և հռետոր գիտնականին Գէորգայ Լամբրունեցւոյ, յունվարի ԺԱ. յաւուր չորեքշաբաթի...

» Եւ արդ սա ծնեալ 'ի նահանգին Կիլիկեցւոց, 'ի գաւառի մայրաքաղաքին Տարսոնի, յանառիկ դղեկին Լամբրուն կոչեցելոյ, որ 'ի յունական բարբառոյն 'ի Հայ լեզու՝ կրակարան հրոյ. և այս յաւէտ յիրաւի, քանզի զհուր աստուածային սիրոյն յինքեան ջերմապէս բորբոքեալ. որով և սնեալ և վարժեալ 'ի հռչակաւոր սուրբ ուխտն Սկեւռայ կոչեցեալ, առ քեռոյն իւրում տեառն Գրիգորի դիտապետի նմին ուխտի. որոյ և վարժապետ կարգեալ զի կրթեսցէ զնա գրովք սրբովք 'ի մանկական հասակին. յորում և քան զյոգունս առաւելեալ գտանէր. և յորժամ յարբունս հասանէր հասակի, ընթանայր

*նա և յելս արևու. որ և դարձեալ լինէր անտի բազում բարգաւաճեալ փառօք. և եկեալ դադարէր 'ի տեղի իւր. և բնաւ ոչ այլ իմիք փափաքէր՝ բայց վերծանութեան աստուածային տառից...*

*» Առնէր և գանձս յոլովս տօնից տէրունականաց և սրբոց Աստուծոյ. գրէր և կանոնս կարգաւորս և բանս խրատականս վասն խոստովանութեան առ 'ի յօգուտ տգիտաց քահանայից։ Առնէր համարս գլխոց և ցանկս, և նախադրութիւնս աստուածաշնչից տառից։ Գրէր և ճառս ներբողականս 'ի պատիւ սրբոց։ Առնէր և համանօտ մեկնութիւն Գործոց առաքելոցն 'ի խնդրոյ արքայեղբօրն տեառն Յովհաննու։ Գրէր և մարգարէին Եսայեայ լայն և ընդարձակ մեկնութիւն հրամանաւ արքային Հայոց Հեթմոյ. բազում բանս պիտանիս հաւաքէր 'ի գանձուց աստուածայնոց առ 'ի վարժումն մանկանց նորագունից »։*



*Վկայասիրին կ'ընծայուին յիշատակարանաց տողք վկայութեամբը՝ Պրոկղի՝ սրբոյն Յովհաննու Ոսկեբերանին վրայ շարադրած ներբողին թարգմանութիւնը, Ոտնլուայի կարգը, սրբոյն Եփրեմի՝ Յովհաննու Մկրտչին վկայութեանը և Հերովդիադայ կաքաւմանը վրայ գրած ճառը, ինչպէս իրենց խորագիրներէն և յիշատակարաններէն կը հասկըցուի։ Իրեն աշխատասիրութեամբ եղած են դարձեալ սրբոց այլ և այլ վկայաբանութիւններ, շատը թարգմանութեամբ 'ի յունէ և կամ յասորւոյն. մեր ձեռքն հասած կամ մեզի ծանօթ վկայաբանութեանց մէջ կը գտնենք 15 կամ անկէ աւելի յիշատակարանք Գրիգորի Վկայասիրի, և կ'իմանանք անոնցմէ թէ զանազան վանքերու և քաղաքաց մէջ երկասիրուած են 'ի նմանէ։ Բայց իր աշակերտ ու աշխատակցին Կիրակոսի վկայութեամբ շատ աւելի եղած պիտի ըլլայ անոնց թիւը,*

և որ ցարդ մեզի անծանօթ մնացած են։ Այս վկայաբանութիւններէն զատ թարգմաներ և հաւաքեր է Վրկայասէր նաև տերունական կամ սրբոց տօնից պատշաճ ներբողներ ու ճառեր․ թէպէտ և ոմանք այս վերջիններն փոքր Վկայասիրին կ'ընծայեն։

Վկայասիրին երկասիրութիւնն է նաև սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի վարուց պատմութիւնը, ինչպէս յիշատակարանին մէջ կը պատմէ ինքն Վկայասէր թէ Քրիստոսի 1104 թուականին (ՇՄԱ) Ալեքս Կոմնենոս կայսեր իշխանութեանը ժամանակ՝ այլ և այլ հալածանքներէ շատ նեղուելով՝ Սեաւ լեռը քաշուեր է, և հոն սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի վարքը թարգմաներ․ «Ի ձեռն առն մի՝ որում անուն էր Թէոփիստէ՝ ազգաւ յոյն․ և ապա եւոու վերստին արծարծել զսա 'ի տարաբան և 'ի յօտարաձայն բայից և բառից առաջին թարգմանութեանն՝ ըստ քերթողական իմաստից, միաշար տողելով 'ի ձեռն Մատթէոսի քահանայի, որ սնեալ և վարժեալ էր ընդ մերով ձեռամբ»։

*
* *

Վկայասիրին վրայ խօսելու ատեննիս՝ տեսանք թէ 'ի թարգմանութեան և թէ 'ի գիր՝ մեծապէս ձեռնտու եղած է իրեն ԿԻՐԱԿՈՍ անունով վարդապետ մը, որ՝ ինչպէս վերը յիշատակեցինք, Վկայասիրին փոխանորդ Գէորգ վարդապետին աշակերտն էր, և հայերէն լեզուի հմուտ ու տեղեակ․ անոր համար Վկայասէրն ալ ուրիշներուն թարգմանած երկասիրութիւնքը՝ առոր դարձեալ աչքէ անցընել կու տար։ Նոյն աշխատասիրութիւնն ըրաւ Կիրակոս նաև Ոսկեբերանի՝ Յովհաննու աւետարանչին մեկնութեանը վրայ։ Վասն զի սա ինքն Կիրակոս վարդապետ՝ Ոսկեբերան հայրապետին այս աքանչելի գըրուածը տեսնելով՝ Վկայասիրէն խնդրեց որ թարգմանել տայ 'ի հայ։ Վկայասէրն ալ հարազատ յունական սկըզ-

բնագիրը քովը չունենալով՝ ասորի լեզուով եղած թարգմանութիւնը գտաւ, և նոյն լեզուին տեղեակ Անդրէաս անունով քահանայի մը որ հայկական լեզուի ալ բաւական հմտութիւն ունէր՝ յանձնեց որ նոյն գիրքը թարգմանէ։ Բայց Կիրակոս տեսնելով թէ յասորի բարբառոյ մեր լեզուին դարձընելը դժուարին, ու «չաղփաղփ և այլատարազ» կ'ըլլայ, ինչպէս ինքը կ'ըսէ յառաջաբանին մէջ, Վկայասիրին աղաչեց որ նորէն թարգմանել տայ զայն 'ի յունէ։ Անիկայ ալ Կիրակոսի թախանձանաց իրաւացի ըլլալը տեսնելով՝ ընդհատել տուաւ Անդրէի ձեռքով սկսուած թարգմանութիւնը, և նոյն Կիրակոսը ղրկեց 'ի Միջագետս Թէոփիստէ յոյն հռետորին, որ նոյնպէս տեղեակ էր հայ լեզուի, և առատ վարձք շնորհելով իրեն՝ թարգմանել կու տար նոյն գիրքը։ Բայց որովհետև նոյն միջոցներուն պատահեցաւ Վկայասիրին երջանիկ փոխումը, Կիրակոս այս օգտակար աշխատասիրութիւնը խափանել չտուաւ. այլ նոյնպէս շատ ծախքով շարունակել տուաւ ու աւարտել նոյն ճառերը, որոնց ամբողջ թիւը յիսուն և հինգ է. որովհետև անոնց մէջ երեսուն և երեք ճառը շատ աշխատութեամբ գտած էր՝ թարգմանեալ 'ի նախնեաց, ուստի մնացածները նորէն թարգմանել տուաւ, և անոնց մէջ առջի տասնուիրեք ճառերը թարգմանուած են յասորի լեզուէ, իսկ մնացած քսանը 'ի յունէ։ Յիշատակարանին մէջ կը գրուցէ Կիրակոս թէ «բովանդակ գիրքն էր լեալ թարգմանած 'ի հայս. և 'ի ծուլութենէ և յանփոյթ առնելոյ այլքն կորուսեալ եղծեալ էին յօրինակս հինս ուր և կայր. և այս զոր գտաք՝ յախմար և 'ի տգէտ խաւարած գրագրերոյ այլայլած և թիւրած էր բանքն և տառքն, և աւելի և պակաս՝ անօգուտ 'ի կարդալոյ և յիմանալոյ»։

Կիրակոսի նման վաստակակից և օգնական եղաւ Վըկայասիրին նաև ՄԱՏԹԷՈՍ, որուն գլխաւոր երկասիրութիւնն եղաւ Յովհաննու Ոսկեբերանին վարուցը թարգմանութիւնը, ինչպէս յիշեցինք։

և որ ցարդ մեզի անծանօթ մնացած են։ Այս վկայաբանութիւններէն զատ թարգմաներ և հաւաքեր է Վրկայասէր նաև տէրունական կամ սրբոց տօնից պատշաճ ներբողներ ու ճառեր․ թէպէտ և ոմանք այս վերջիններն փոքր Վկայասիրին կ'ընծայեն։

Վկայասիրին երկասիրութիւնն է նաև սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի վարուց պատմութիւնը, ինչպէս յիշատակարանին մէջ կը պատմէ ինքն Վկայասէր թէ Քրիստոսի 1104 թուականին (ՇՆԱ) Ալեքս Կոմնենոս կայսեր իշխանութեանը ժամանակ՝ այլ և այլ հալածանքներէ շատ նեղուելով՝ Սեաւ լեռը քաշուեր է, և հոն սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի վարքը թարգմաներ․ «Ի ձեռն առն մի՝ որում անուն էր Թէոփիստէ՝ ազգաւ յոյն․ և ապա եւտու վերստին արծարծել զսա 'ի տարաբան և 'ի յօտարաձայն բայից և բառից առաջին թարգմանութեանն՝ ըստ քերթողական իմաստից, միաշար տողելով 'ի ձեռն Մատթէոսի քահանայի, որ սնեալ և վարժեալ էր ընդ մերով ձեռամբ»։

⁂

Վկայասիրին վրայ խօսելու առեննիս՝ տեսանք թէ 'ի թարգմանութեան և թէ 'ի գիր՝ մեծապէս ձեռնտու եղած է իրեն ԿԻՐԱԿՈՍ անունով վարդապետ մը, որ՝ ինչպէս վերը յիշատակեցինք, Վկայասիրին փոխանորդ Գէորգ վարդապետին աշակերտն էր, և հայերէն լեզուի հմուտ ու տեղեակ․ անոր համար Վկայասէրն ալ ուրիշներուն թարգմանած երկասիրութիւնքը՝ ասոր դարձեալ աչքէ անցընել կու տար։ Նոյն աշխատասիրութիւնն ըրաւ Կիրակոս նաև Ոսկեբերանի՝ Յովհաննու աւետարանչին մեկնութեանը վրայ։ Վասն զի սա ինքն Կիրակոս վարդապետ՝ Ոսկեբերան հայրապետին այս սքանչելի գրուածը տեսնելով՝ Վկայասիրէն խնդրեց որ թարգմանել տայ 'ի հայ։ Վկայասէրն ալ հարազատ յունական սկըզ-

բնագիրը քովը չունենալով՝ ասորի լեզուով եղած թարգմանութիւնը գտաւ, և նոյն լեզուին տեղեակ Անդրէաս անունով քահանայի մը որ հայկական լեզուի ալ բաւական հմտութիւն ունէր՝ յանձնեց որ նոյն գիրքը թարգմանէ։ Բայց Կիրակոս տեսնելով թէ յասորի բարբառոյ մեր լեզուին դարձընելը դժուարին, ու «չաղփաղփ և այլատարազ» կ՚ըլլայ, ինչպէս ինքը կ՚ըսէ յառաջաբանին մէջ, Վկայասիրին աղաչեց որ նորէն թարգմանել տայ զայն 'ի յունէ։ Անիկայ ալ Կիրակոսի թախանձանաց իրաւացի ըլլալը տեսնելով՝ ընդհատել տուաւ Անդրէի ձեռքով սկսուած թարգմանութիւնը, և նոյն Կիրակոսը ղըրկեց 'ի Միջագետս Թէոփիստէ յոյն հաւատորին, որ նոյնպէս տեղեակ էր հայ լեզուի, և առատ վարձք շնորհելով իրեն՝ թարգմանել կու տար նոյն գիրքը։ Բայց որովհետև նայն միջոցներուն պատահեցաւ Վկայասիրին երջանիկ փոխումը, Կիրակոս այս օգտակար աշխատասիրութիւնը խափանել չտուաւ. այլ նոյնպէս շատ ծախքով շարունակել տուաւ ու աւարտել նոյն ճառերը, որոնց ամբողջ թիւը յիսուն և հինգ է. որովհետև անոնց մէջ երեսուն և երեք ճառը շատ աշխատութեամբ գտած էր՝ թարգմանեալ 'ի նախնեաց, ուստի մնացածները նորէն թարգմանել տուաւ, և անոնց մէջ առջի տասուերեք ճառերը թարգմանուած են յասորի լեզուէ, իսկ մնացած քսանը 'ի յունէ։ Յիշատակարանին մէջ կը գրուցէ Կիրակոս թէ «բովանդակ գիրքն էր լեալ թարգմանած 'ի հայս. և 'ի ծուլութենէ և յանփոյթ առնելոյ այլքն կորուսեալ եղծեալ էին յօրինակս հինս ուր և կայր. և այս զոր գտաք՝ յախմար և 'ի տգէտ խաւարած գրագրերոյ այլայլած և թիւրած էր բանքն և տառքն, և աւելի և պակաս՝ անօգուտ 'ի կարդալոյ և յիմանալոյ»։

Կիրակոսի նման վաստակակից և օգնական եղաւ Վըկայասիրին նաև ՄԱՏԹԷՈՍ, որուն գլխաւոր երկասիրութիւնն եղաւ Յովհաննու Ոսկեբերանին վարուցը թարգմանութիւնը, ինչպէս յիշեցինք։

Նոյն ժամանակներն ծաղկած է նաև ԳԷՈՐԳ վարդապետ, որ քաղցրուսոյց վարդապետութիւն ունենալուն համար, ինչպէս կ'ըսէ Վարդան, Մեղրիկ կոչուեցաւ[1]։ Վասպուրական գաւառին Անալիւր կոչուած գեղը ծնած էր Գէորգ, և ետքը կրօնաւորելով Դրազարկի սուրբ ուխտը նորոգեց։ Յիսուն տարի կրօնաւորական կեանք վարելէն ետքը՝ եօթանասնամեայ վախճանեցաւ բարի համբաւով և սրբութեամբ, «և թաղեցաւ 'ի գաւառն Անաւարզոյ, 'ի մեծ յանապատն որ Դրազարկ կոչի», կ'ըսէ Մ. Ուռհայեցի։ Ուրիշ մ'ալ կ'աւանդէ թէ ոչ միայն 'ի Դրազարկ, այլ և «'ի Խորին անապատն որ յաշխարհին Կիլիկեցւոց 'ի Սիս զոր նորոգեաց Թորոս իշխանն որդին Կոստանդեայ», եկեղեցական բարեկարգութիւնք և նորոգութիւններ մուծած ըլլայ։ Միւս կարևոր գործ մ'ալ Ճաշոց գրոց կարգաւորութիւնն է, Վկայասիրին հաճութեամբ և հրամանաւ։

Անուանի եղաւ դարձեալ և ԹԷՈԴՈՐՈՍ վարդապետ՝ Ջահան գաւառին Հոնի քաղաքին եկեղեցւոյն փակակալը, որ ալէլուքը՝ քաղցրաձայն եղանակաւ նուագելուն համար Ալախօսիկ կոչուեցաւ. և ետքը ինչուան կաթողիկոսութեան աթոռն ալ գրաւեց։ Վասն զի անշուշտ իրեն կը վերաբերին Ուռհայեցւոյն այս խօսքերը. «Նըստուցանեն յաթոռ կաթողիկոսութեան Հայոց զտէր Թէոդորոս, զդրան եպիսկոպոսն տեառն Սարգսի Հայոց կաթողիկոսի՝ զմեծ երաժիշտն ձայնաւորաց՝ որ մականուն ասի Ալախօսիկ»։ Դարձեալ. «Յայսմ ամի (ՇԽԴ) մեռաւ մեծ երաժիշտն և սիւնն սրբոյ եկեղեցւոյ տէր Թորոս կաթողիկոսն Հայոց, և թաղեցաւ 'ի Հոնին՝ մօտ 'ի տէր Սարգիս»։ Կ'աւանդեն ոմանք թէ չորս աւետարանչաց մեկնութիւն մը շարագրած ըլլայ Ալախօսիկ։

1. «Մեղրիկն ասացեալ էր՝ քաղցրախօս և ճարտարաբան» կ'աւանդէ յիշատակագիր մը։

Ժամանակակից է ասոնց նաև՝ ՍԻՍԻԱՆՈՍ կամ ՍԻՍԻՆՈՍ վարդապետ Սեբաստացի (ի գրչագիրս ուրեք Ստեփանոս կոչուած), որ իր հայրենեացը՝ իրենց վկայական մահուամբը և սքանչելեօք պարծանք եղող Քառասուն մանկանց վրայ ընտիր և գեղեցիկ ներբողեան մը շարագրած է։ Յոմանց ՍԻՍԻՈՍ կոչուած է և ազգաւը «Ասորւոց վարդապետ և կրօնաւոր»։ Ձեռագրայ խորագիրն է. «Երանելւոյն Սիսիանոսի վարդապետի խօսք ասացեալ յամենաժողով տօնի սրբոց Քառասնիցն և 'ի խորհուրդ սրբոց քառասնորդացն աղուհացից»։

Աւելորդ չենք սեպեր յիշել նաև զՊՕՂՈՍ ՏԱՐՕՆԵՑԻ, որ Տարօնոյ Ղազարու վանքը կը նստէր, և վերը յիշատակուած Թէոփիստէ յոյն կրօնաւորին դէմ գրուածք մը հրատարակեց լի հոգւով հակառակութեան։ Եւ այն հոգին իրեն պարծանք սեպելով, Հոգւոյն սրբոյ տուրք կը սեպէր ըսելով համարձակութեամբ, թէ «Որպէս տուեալ է 'ի Հոգւոյն ումեմն այնպիսի շնորհք, և ինձ տուեալ է այսպիսի բանակռուութիւն»։ Եւ թէպէտ Մխիթար կաթուղիկոսի ատեն գումարուած ժողովքի մը մէջ ազգը միաբանութեամբ մերժեց Տարօնեցւոյն այս գրուածքը, բայց շատ ժամանակէ ետքն ալ իրեն համախոհ տպագրիչ մը գտաւ 'ի Կոստանդնուպոլիս յամի 1752։ — Ասկէ զատ և լաւագոյն գործ մ'ալ ունի Պօղոս, Վերլուծութիւն կարգաց եկեղեցւոյ, այսինքն պատճառք Տօնից, ժամակարգութեանց, Ընթերցուածոց, Ծիսից, և այլն. ուսկից կ'առնուն նոյն նիւթոց վրայ գրող յետագայ մեկնիչք։ Իրեն են նաև հետևեալ խորագրով ճառերը. «Յաղագս քառասնորդաց պահոց, Պաւղոսի վարդապետի Ղազարու վանից վանականի բացայայտեալ։ — «Նորին Պաւղոսի յաղագս Առաջաւորաց պահոց»։

# ԴԱՐ ԺԲ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԱՐԿԱՒԱԳ

*Սարկաւագայ տոհմն և դաստիարակութիւնը: — Ուսումն 'ի Սանահին և 'ի Հաղբատ: — Տոմարի նորագոյութիւնը կամ Սարկաւագադիր շրջան: — Գրաւոր երկասիրութիւնները: — Պատմութիւնն: — Քանի մը հատուածք ինչուան առ մեզ հասած: — Ցաղագս քահանայութեան ճառ: — Ներբողեան: — Աղօթագիրք: — Ի Սարեւակն: — Սուրբ գրոց վրայ աշխատութիւնք: — Ճառեր: — Մանր գրուածներ: իր աշակերտները: — Երեմիա Անձրեւիկ: — Կունդ Սարգիս, և այլք:*

Երկոտասաներորդ դարը՝ որ մեր հայկական դպրութեանց համար իրաւամբք գեղեցիկ Արծաթի դար կոչուած է, կ'ընծայէ մեզի նախ զՅովհաննէս Սարկաւագ վարդապետ, հայրենեօք Արցախու Փառիսոս գաւառէն, իր ուսումնական և բարոյական կրթութեանը խնամատար ծնողաց զաւակ. ծնած իբրև 'ի կէս ԺԱ դարու և վախճանած յամի 1129:

Սարկաւագայ հայրը՝ որ քահանայական դասուն կը վերաբերէր, և որդւոյն ապագայ յառաջադիմութեանը

վրայ մեծ փոյթ և յոյս ունէր, իրենց գիտութեամբը և սրբասէր կարգերով համբաւուած Սանահնի և Հաղբատայ վանորէից մէջ աշակերտութեան կը դնէր. հոն կ՚անցընէր Սարկաւագ իւր մանկութեան առջի տարիները. ու կը տքնէր՝ ինչպէս ինքն ալ կը վկայէ, «զօր ամենայն և զգիշերն բովանդակ՝ առ իմաստս ցանգութեամբ, նաև սիրովն որ առ հանճար»: Ուրիշ տեղ մ՚ալ. «Ի նախնեաց բարեպաշտից և յիմաստուն ծնողաց բուսեալ, որք սնուցին զիս օրինօք հոգւոյն կենաց՝ առնել քան ըստ բնութեան տածիւք խնամս յառ մանկունս. որովք յառաջնումն հասակին դաստիարակեալ՝ յոյս տայի քաջութեան»:

Այդ փափաքին արժանաւոր հանճար ալ ունենալով, իւր ժամանակին ու հայերէն գրութեանց գլխաւոր պարծանքներէն մէկն եղաւ Սարկաւագ. որով իրաւամբք իւր վրայ սքանչացողներէն մէկն կը կոչէ զինքը «Մեծիմաստ գիտութեամբ քան զյոլովս և հանճարեղ յամենայնի և մտահարուստ... յոյժ իմաստուն և աստուածային շնորհօք զարդարեալ»:

Իւր գլխաւոր արդիւնքներէն մէկն եղաւ՝ հայկական տոմարը նորոգելու համար ունեցած աշխատանքը. իրմէն առաջ Մովսէս Եղիվարդեցի և ուրիշներն ջանացեր էին այս բանիս. բայց իրենց ջանքն անկատար կամ անգործ մնացած էր: Սարկաւագ կրկին աշխատեցաւ. որովհետև ուրիշներուն շտկած տոմարը շարժական ըլլալով՝ այլ և այլ շփոթութեանց պատճառ կ՚ըլլար. և ուզեց հաստատուն տոմարի մը կարգաւորութիւն ընել, և այս է Սարկաւագադիր կոչուածը, որ չկրցաւ ազգին մէջ հաստատութիւն գտնել:

Գրչագրի մը մէջ հանդիպած ենք. «ՇԼԴ. Սկիզբն նոր թուականին որ կարգեցաւ ի Յովհաննէս վարդապետէ Հաղբատեցւոյ որ Սարկաւագ կոչեցաւ: Սա արար անշարժ տումար ընդ այլոց ազգաց: Հանապազ ի Քաղոց ԻԹ Յայտնութիւն է. Մեհեկի Ը Տեառնընդառաջ է. Արեգի ԺԲ

գարուն. — Լ Աւետեաց, Ահեկի է Անկաատեղ. Մարերի ԺԷ Եղաատեղ. Մարգաց ԺԳ Ամառն. Նաւասարդի Ե Աստուածածնին. Հոռի Ե սուրբ խաչին. — Ի Աշունն. Տրէ Թ Ցխնակաց բարեկենդան. — Ժ Պահքն Քաղոց Ժ Ձմեռն. — ԻԱ Ցայտնութեան բարեկենդան »:

Ուսմանց սիրովը վառուած՝ ուզեց իւր օրինակաւն ու ջանքով կիրթ ախորժակ, ուղիղ և ճշմարիտ գիտութիւն խօթել Հայաստանի մէջ. և այս բանիս համար մասնաւոր խնամք ունէր մանկանց դաստիարակութեանը վրայ, խրատներով անոնց եռանդը վառելով, և իր զօրաւոր խօսքերովը հասկըցընելով թէ իմաստութեան գանձուն հաւասարապատիւ բան չկայ:

Հաղբատայ առաջնորդ ալ եղաւ Սարկաւագ, և այն մեծ վանքին ուսմանց յառաջադիմութեանը գլխաւոր արդիւնքն իրեն կրնայ սեպուիլ: Ներքին բարեկարգութեանն համար ալ շատ աշխատեցաւ անոյշ սրտովն ու լեզուովը և հայրագութ խանդաղատանօքը:

Այս իւր բարեմասնութեանցն համար՝ պատուական էր ամենուն առջևը. ինչուան իշխանք և թագաւորք մեծարեցին անոր հանճարը, և սքանչացան սրբութեանը վրայ. և Դաւիթ Վրաց թագաւորին համար կ'աւանդեն թէ ամէն անգամ որ կը տեսնէր զՍարկաւագ՝ նախատինք չէր համարեր արքունի թագով զարդարուած գլուխը խոնարհեցընել անոր առջին և օրհնութիւնը խնդրել: « Ի ՇՀԸ թուին, — կ'ըսէ Սամուէլ ժամանակագիր, — փոխեցաւ 'ի Քրիստոս մահուամբ սուրբ վարդապետն Սարկաւագ 'ի Հաղբատ »: Նոյն վանքին Ս. Աստուածածին եկեղեցւոյ զանգակատան տակ թաղուած է Սարկաւագ. և մարմինը ամփոփող քարին վրայ գրուած հետևեալ արձանագիրը. Արձանս այս նշանակն է Յոհաննէսի Սարկաւագին:



*Սարկաւագայ երկասիրութիւնքը.* — Սարկաւագ վարդապետին անունը կրող երկասիրութիւնքն որչափ ալ ըստ ինքեան գեղեցիկ են, բայց իւր իմաստութեանը և անխոնջ փութոյն քանի մը երախայրիք պիտի ըլլան անշուշտ, վասն զի հաւանական կ'երևնայ թէ իւր գրուածներէն շատը կորսուած են, և որոնց մէջ գլխաւոր է

*Պատմութիւնը*՝ զոր կը յիշատակեն Կիրակոս, Վարդան, Մխիթար Այրիվանեցի, և քանի մը ընտիր հատուածներն իւր ժամանակագրութեանը մէջ կը բերէ Սամուէլ Անեցի իր աշակերտը։ Կ'երևնայ թէ այս պատմութեան գիրքը երկու մասն բաժնուած էր. մէյմը ընդհանուր Սկիւթական ազգաց ծագման և արշաւանաց վըրայ, որ ԺԱ դարէն սկսան գալ 'ի Հայաստան. Սէլճուգեանց ու Տուղրիլեանց. և Ալփասլանայ ու իր նախորդացը վրայ. մէյմըն ալ Ալփասլանայ որդւոյն Մէլիքշահի գործքերը, որուն մահուամբը դադրեցուցած կ'երևնայ Սարկաւագ իւր պատմութիւնը։

Այս կարծեաց ստուգութեանը կ'երաշխաւորեն՝ իրմէ ժամանակաւ քիչ կրտսեր՝ ու իրեն պատմութեան գիրքը կարդացող հետևեալ պատմագիրներն։ Կիրակոս կ'ըսէ. «Մինչև ցՄէլիք շահ սուլթանն՝ գրեալ էր զպատճառ տիրելոյ Նոցա մեծիմաստ վարդապետն որ Սարկաւագ կոչիւր»։ Սամուէլ. «Իսկ յետ Նոցա (Ամիրմումնեացն) Սկիւթացւոցն առնուլ զբռնակալութիւնն, այսպիսի պատճառաւ ընթերցաք, գրեալ վարդապետին մեծի՝ որ Սարկաւագ վերակոչի անուանեալ. զի ասէ թէ Պարսից և Մարաց զմիմեամբք ելանելով տուրևառիկ փոփոխութեամբ մինչև ցաւուրս մեր։ Զայսոսիկ նշանակաւ գրոյ եցոյց մեզ իմաստասէրն մինչև ցՄէլիք շահն, զոր յիւրում տեղւոջն գրեցից սորին ձեռնտուութեամբ։ Իսկ զհօրն Նորա ժամանակ՝ զարիւնախանձին Ալփասլանայ, և զնորին հօրն



Սակայն ոմանք կը կարծեն թէ այս խմբագիր մեկնութիւնը կրտսեր է ժամանակաւ քան զՎկայասէրն, որովհետեւ Շնորհալւոյն ու Լամբրոնացւոյն խօսքերէն ալ զանազան հատուածներ մէջ բերուած կը տեսնուին, և յընծայականին կը յիշատակուի Տէր Յովհաննէս արքայեղբայրն՝ Հեթմոյ Ա, և թէ անոր հրամանաւը ձեռք զարնուած ըլլայ այս երկասիրութեան։ Ուստի հաւանական կ'երեւնայ թէ ասոր ընդարձակ մեկնութիւնն էր զոր թարգմանել տուաւ Վկայասէր, և վրան ժամանակ անցնելէն ետքը՝ ուրիշ մը նոյնը համառօտեց՝ սրբոյն Եփրեմի և ուրիշ վարդապետաց խօսքերէն ալ այլ և այլ հատուածներ աւելցընելով։

Այս կարծիքը կ'արդարացընեն Նորագիւտ յիշատակարանի մը խօսքերն՝ որ մեր յիշած երկասիրութիւնը Գէորգայ Լամբրունեցւոյ կու տայ, որուն վրայ ետքն ալ առիթ պիտի ունենանք խօսելու. «Արդ 'ի թուականին արեթական տումարին՝ կ'ըսէ, յեւթն հարիւր և 'ի յիսունն՝ եղեւ վախճան երջանիկ և հռչակաւոր մեծ րաբունապետին և հռետոր գիտնականին Գէորգայ Լամբրունեցւոյ, յունվարի ԺԱ. յաւուր չորեքշաբաթի...

» Եւ արդ սա ծնեալ 'ի Նահանգին Կիլիկեցւոց, 'ի գաւառի մայրաքաղաքին Տարսոնի, յանառիկ դղեկին Լամբրուն կոչեցելոյ, որ 'ի յունական բարբառոյն 'ի հայ լեզու՝ կրակարան հրոյ. և այս յաւէտ յիրաւի, քանզի զհուր աստուածային սիրոյն յինքեան ջերմապէս բորբոքեալ. որով և սնեալ և վարժեալ 'ի հռչակաւոր սուրբ ուխտն Սկեւռայ կոչեցեալ, առ քեռոյն իւրում տեառն Գրիգորի դիտապետի նմին ուխտի. որոյ և վարժապետ կարգեալ զի կրթեսցէ զնա գրովք սրբովք 'ի մանկական հասակին. յորում և քան զյոգունս առաւելեալ գտանէր. և յորժամ յարբունս հասանէր հասակի, ընթանայր

նա և յելս արևու. որ և դարձեալ լինէր անտի բազում բարգաւաճեալ փառօք. և եկեալ դադարէր 'ի տեղի իւր. և բնաւ ոչ այլ իմիք փափաքէր՝ բայց վերծանութեան աստուածային տառից...

» Առնէր և գանձս յոլովս տօնից տէրունականաց և սրբոց Աստուծոյ. գրէր և կանոնս կարգաւորս և բանս խրատականս վասն խոստովանութեան առ 'ի յօգուտ ոգւոց քահանայից։ Առնէր համարս գլխոց և ցանկս, և նախադրութիւնս աստուածաշնչից տառից։ Գրէր և ճառս ներբողականս 'ի պատիւ սրբոց։ Առնէր և համառօտ մեկնութիւն Գործոց առաքելոցն 'ի խնդրոյ արքայեղբօրն տեառն Յովհաննու։ Գրէր և մարգարէին Եսայեայ լայն և ընդարձակ մեկնութիւն հրամանաւ արքային Հայոց Հեթմոյ. բազում բանս պիտանիս հաւաքէր 'ի գանձուց աստուածայնոց առ 'ի վարժումն մանկանց նորագունից »։



Վկայասէրին կ'ընծայուին յիշատակարանաց ստոյգ վկայութեամբը՝ Պռոկղի՝ սրբոյն Յովհաննու Ոսկեբերանին վրայ շարագրած ներբողին թարգմանութիւնը, Ոտնլուայի կարգը, սրբոյն Եփրեմի՝ Յովհաննու Մկրտչին վըկայութեանը և Հերովդիադայ կաքաւմանը վրայ գրած ճառը, ինչպէս իրենց խորագիրներէն և յիշատակարաններէն կը հասկըցուի։ Իրեն աշխատասիրութեամբ եղած են դարձեալ սրբոց այլ և այլ վկայաբանութիւններ, շատը թարգմանութեամբ 'ի յունէ և կամ յասորւոյն. մեր ձեռքն հասած կամ մեզի ծանօթ վկայաբանութեանց մէջ կը գտնենք 15 կամ անկէ աւելի յիշատակարանք Գրիգորի Վկայասէրի, և կ'իմանանք անոնցմէ թէ զանազան վանքերու և քաղաքաց մէջ երկասիրուած են 'ի նմանէ։ Բայց իր աշակերտ ու աշխատակցին Կիրակոսի վկայութեամբ շատ աւելի եղած պիտի ըլլայ անոնց թիւը,

և որ ցարդ մեզի անծանօթ մնացած են։ Այս վկայաբանութիւններէն զատ թարգմաներ և հաւաքեր է Վըկայասէր նաև տերունական կամ սրբոց տօնից պատշաճ ներբողներ ու ճառեր. թէպէտ և ոմանք այս վերջիններն փոքր Վկայասիրին կ'ընծայեն։

Վկայասիրին երկասիրութիւնն է նաև սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի վարուց պատմութիւնը, ինչպէս յիշատակարանին մէջ կը պատմէ ինքն Վկայասէր թէ Քրիստոսի 1104 թուականին (ՇԾԱ) Ալեքս Կոմնենոս կայսեր իշխանութեանը ժամանակ՝ այլ և այլ հալածանքներէ շատ նեղուելով՝ Սեաւ լեռը քաշուեր է, և հոն սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի վարքը թարգմաներ. « Ի ձեռն առն մի՝ որում անուն էր Թէոփիստէ՝ ազգաւ յոյն. և ապա ետու վերստին արծարծել զսա 'ի տարաբան և 'ի յօտարաձայն բայից և բառից առաջին թարգմանութեանն՝ ըստ քերթողական իմաստից, միաչար տողելով 'ի ձեռն Մատթէոսի քահանայի, որ սնեալ և վարժեալ էր ընդ մերով ձեռամբ »։

*
* *

Վկայասիրին վրայ խօսելու առեննիս՝ տեսանք թէ 'ի թարգմանութեան և թէ 'ի գիր՝ մեծապէս ձեռնտու եղած է իրեն ԿԻՐԱԿՈՍ անունով վարդապետ մը, որ՝ ինչպէս վերը յիշատակեցինք, Վկայասիրին փոխանորդ Գէորգ վարդապետին աշակերտն էր, և հայերէն լեզուի հմուտ ու տեղեակ. անոր համար Վկայասէրն ալ ուրիշներուն թարգմանած երկասիրութիւնքը՝ անոր դարձեալ աչքէ անցընել կու տար։ Նոյն աշխատասիրութիւնն ըրաւ Կիրակոս նաև Ոսկեբերանի՝ Յովհաննու աւետարանչին մեկնութեանը վրայ։ Վասն զի սա ինքն Կիրակոս վարդապետ՝ Ոսկեբերան հայրապետին այս աքանչելի գրուածը տեսնելով՝ Վկայասիրէն խնդրեց որ թարգմանել տայ 'ի հայ։ Վկայասէրն ալ հարազատ յունական օրինակ-

բնագիրը քովը չունենալով՝ ասորի լեզուով եղած թարգմանութիւնը գտաւ, և նոյն լեզուին տեղեակ Անդրէաս անունով քահանայի մը որ հայկական լեզուի ալ բաւական հմտութիւն ունէր՝ յանձնեց որ նոյն գիրքը թարգմանէ։ Բայց Կիրակոս տեսնելով թէ յասորի բարբառոյ մեր լեզուին դարձընելը դժուարին, ու « չաղփաղփ և այլատարազ » կ'ըլլայ, ինչպէս ինքը կ'ըսէ յառաջաբանին մէջ, Վկայասիրին աղաչեց որ նորէն թարգմանել տայ զայն 'ի յունէ։ Անիկայ ալ Կիրակոսի թախանձանաց իրաւացի ըլլալը տեսնելով՝ ընդհատել տուաւ Անդրէի ձեռքով սկսուած թարգմանութիւնը, և նոյն Կիրակոսը ղրկեց 'ի Միջագետս Թէոփիստէ յոյն հռետորին, որ նոյնպէս տեղեակ էր հայ լեզուի, և առատ վարձք չնորհելով իրեն՝ թարգմանել կու տար նոյն գիրքը։ Բայց որովհետև նոյն միջոցներուն պատահեցաւ Վկայասիրին երջանիկ փոխումը, Կիրակոս այս օգտակար աշխատասիրութիւնը խափանել չտուաւ. այլ նոյնպէս շատ ծախքով շարունակել տուաւ ու աւարտել նոյն ճառերը, որոնց ամբողջ թիւը յիսուն և հինգ է. որովհետև անոնց մէջ երեսուն և երեք ճառը շատ աշխատութեամբ գտած էր՝ թարգմանեալ 'ի նախնեաց, ուստի մնացածները նորէն թարգմանել տուաւ, և անոնց մէջ առջի տասուերեք ճառերը թարգմանուած են յասորի լեզուէ, իսկ մնացած քսանը 'ի յունէ։ Յիշատակարանին մէջ կը գրուցէ Կիրակոս թէ « բովանդակ գիրքն էր լեալ թարգմանած 'ի հայս. և 'ի ծուլութենէ և յանփոյթ առնելոյ այլքն կորուսեալ եղծեալ էին յօրինակս հինս ուր և կայր. և այս զոր գտաք՝ յախմար և 'ի տգէտ խաւարած գրագրերոյ այլայլած և թիւրած էր բանքն և տառքն, և աւելի և պակաս՝ անօգուտ 'ի կարդալոյ և յիմանալոյ »։

Կիրակոսի նման վաստակակից և օգնական եղաւ Վըկայասիրին նաև ՄԱՏԹԷՈՍ, որուն գլխաւոր երկասիրութիւնն եղաւ Յովհաննու Ոսկեբերանին վարուցը թարգմանութիւնը, ինչպէս յիշեցինք։

Նոյն ժամանակներն ծաղկած է նաև ԳԷՈՐԳ վարդապետ, որ քաղցրուսոյց վարդապետութիւն ունենալուն համար, ինչպէս կ'ըսէ Վարդան, Մեղրիկ կոչուեցաւ [1]։ Վասպուրական գաւառին Անալիւր կոչուած գեղը ծնած էր Գէորգ, և ետքը կրօնաւորելով Դրազարկի սուրբ ուխտը նորոգեց։ Ցիսուն տարի կրօնաւորական կեանք վարելէն ետքը՝ եօթանասնամեայ վախճանեցաւ բարի համբաւով և սրբութեամբ, «և թաղեցաւ 'ի գաւառն Անաւարզոյ, 'ի մեծ յանապատն որ Դրազարկ կոչի», կ'ըսէ Մ. Ուռհայեցի։ Ուրիշ մ'ալ կ'աւանդէ թէ ոչ միայն 'ի Դրազարկ, այլ և «'ի Խորին անապատն որ յաշխարհին Կիլիկեցւոց 'ի Սիս զոր նորոգեաց Թորոս իշխանն որդին Կոստանդեայ», եկեղեցական բարեկարգութիւնք և նորոգութիւններ մուծած ըլլայ։ Միւս կարևոր գործ մ'ալ ճաշոց գրոց կարգաւորութիւնն է, Վկայասիրին հաճութեամբ և հրամանաւ։

Անուանի եղաւ դարձեալ և ԹԷՈԴՈՐՈՍ. վարդապետ՝ Ջահան գաւառին Հոնի քաղաքին եկեղեցւոյն փակակալը, որ ալէլուքը՝ քաղցրաձայն եղանակաւ նուագելուն համար Ալախօսիկ կոչուեցաւ. և ետքը ինչուան կաթողիկոսութեան աթոռն ալ գրաւեց։ Վասն զի անշուշտ իրեն կը վերաբերին Ուռհայեցւոյն այս խօսքերը. «Նըստուցանեն յաթոռ կաթողիկոսութեան Հայոց զտէր Թէոդորոս, զդրան եպիսկոպոսն տեառն Սարգսի Հայոց կաթողիկոսի՝ զմեծ երաժիշտն ձայնաւորաց՝ որ մականուն ասի Ալախօսիկ»։ Դարձեալ. «Յայսմ ամի (ՇԽԴ) մեռաւ մեծ երաժիշտն և սիւնն սրբոյ եկեղեցւոյ տէր Թորոս կաթողիկոսն Հայոց, և թաղեցաւ 'ի Հոնին՝ մօտ 'ի տէր Սարգիս»։ Կ'աւանդեն ոմանք թէ չորս աւետարանչաց մեկնութիւն մը շարագրած ըլլայ Ալախօսիկ։

1. «Մեղրիկն ասացեալ էր՝ քաղցրախօս և ճարտարաբան» կ'աւանդէ յիշատակագիր մը։

Ժամանակակից է սոցա նաև՝ ՍԻՄԻԱՆՈՍ կամ ՍԻՄԻՆՈՍ վարդապետ Սեբաստացի (ի գրչագիրս ուրեք Ստեփանոս կոչուած), որ իր հայրենեացը՝ իրենց վկայական մահուամբը և սքանչելեօք պարծանք եղող Քառասուն մանկանց վրայ ընտիր և գեղեցիկ ներբողեան մը շարադրած է։ Յոմանց ՍԻՄԻՈՍ կոչուած է և աղգաւը «Ասորւոց վարդապետ և կրօնաւոր»։ Ձեռագրաց խորագիրն է. «Երանելւոյն Սիմիանոսի վարդապետի խօսք ասացեալ յամենաժողով տօնի սրբոց Քառասնիցն և 'ի խորհուրդ սրբոց քառասնորդացն աղուհացից»։

Աւելորդ չենք սեպեր յիշել նաև զՊՕՂՈՍ ՏԱՐՕՆԵՑԻ, որ Տարօնոյ Ղազարու վանքը կը նստէր, և վերը յիշատակուած Թէոփիստէ յայն կրօնաւորին դէմ գրուածք մը հրատարակեց լի հոգւով հակառակութեան։ Եւ այն հոգին իրեն պարծանք սեպելով, Հոգւոյն սրբոյ տուրք կը սեպէր ըսելով համարձակութեամբ, թէ «Որպէս տուեալ է 'ի Հոգւոյն ումեմն այնպիսի շնորհք, և ինձ տուեալ է այսպիսի բանակռուութիւն»։ Եւ թէպէտ Մխիթար կաթուղիկոսի ատեն գումարուած ժողովքի մը մէջ ազգը միաբանութեամբ մերժեց Տարօնեցւոյն այս գրուածքը, բայց շատ ժամանակէ ետքն ալ իրեն համախոհ տպագրիչ մը գտաւ 'ի Կոստանդնուպոլիս յամի 1752։ — Ասկէ զատ և լաւագոյն գործ մ'ալ ունի Պօղոս, վերլուծութիւն կարգաց եկեղեցւոյ, այսինքն պատճառք Տօնից, ժամակարգութեանց, Ընթերցուածոց, Ծիսից, և այլն. ուսկից կ'առնուն նոյն նիւթոց վրայ գրող յետագայ մեկնիչք։ Իրեն են նաև հետևեալ խորագրով ճառերը. «Յաղագս քառասնորդաց պահոց, Պաւղոսի վարդապետի Ղազարու վանից վանականի բացայայտեալ։ — «Նորին Պաւղոսի յաղագս Առաջաւորաց պահոց»։

# ԴԱՐ ԺԲ

---

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԱՐԿԱՒԱԳ

---

*Սարկաւագայ տոհմն և դաստիարակութիւնը։ — Ուսումն 'ի Սանահին և 'ի Հաղբատ։ — Տոմարի նորագոյութիւնը կամ Սարկաւագադիր շրջան։ — Գրաւոր երկասիրութիւնները։ — Պատմութիւնն։ — Քանի մը հատուածք ինչուան առ մեզ հասած։ — Յաղագս քահանայութեան ճառ։ — Ներբողեան։ — Աղօթագիրք։ — Ի Սարեակն։ — Սուրբ գրոց վրայ աշխատութիւնք։ — Ճառեր։ — Մանր գրուածներ։ Իր աշակերտները։ — Երեմիա Անձրեւիկ։ — Կունդ Սարգիս, և այլք։*

Երկոտասաներորդ դարը՝ որ մեր հայկական դպրութեանց համար իրաւամբք գեղեցիկ Արծաթի դար կոչուած է, կ'ընծայէ մեզի նախ զՅովհաննէս Սարկաւագ վարդապետ, հայրենեօք Արցախու Փառիսոս գաւառէն, իր ուսումնական և բարոյական կրթութեանը խնամատար ծնողաց զաւակ. ծնած իբրև 'ի կէս ԺԱ դարու և վախճանած յամի 1129։

Սարկաւագայ հայրը՝ որ քահանայական դասուն կը վերաբերէր, և որդւոյն ապագայ յառաջադիմութեանը

վրայ մեծ փոյթ և յոյս ունէր, իրենց գիտութեամբը և որբասէր կարգերով համբաւուած Սանահնի և Հաղբատայ վանորէից մէջ աշակերտութեան կը դնէր. հոն կ'անցընէր Սարկաւագ իւր մանկութեան առջի տարիները. ու կը տքնէր՝ ինչպէս ինքն ալ կը վկայէ, «զօր ամենայն և զգիշերն բովանդակ՝ առ իմաստս ցանկութեամբ, նաև սիրոյն որ առ հանճար»: Ուրիշ տեղ մ'ալ. «Ի նախնեաց բարեպաշտից և յիմաստուն ծնողաց բուսեալ, որք սնուցին զիս օրինօք հոգւոյն կենաց՝ առնել քան ըստ բնութեան տածիւք խնամս յառ մանկունս. որովք յառաջնումն հասակին դաստիարակեալ՝ յոյս տայի քաջութեան»:

Այդ փափաքին արժանաւոր հանճար ալ ունենալով, իւր ժամանակին ու հայերէն դպրութեանց գլխաւոր պարծանքներէն մէկն եղաւ Սարկաւագ. որով իրաւամբք իւր վրայ սքանչացողներէն մէկն կը կոչէ զինքը «Մեծիմաստ գիտութեամբ քան զյոլովս և հանճարեղ յամենայնի և մտահարուստ... յոյժ իմաստուն և աստուածային շնորհօք զարդարեալ»:

Իւր գլխաւոր արդիւնքներէն մէկն եղաւ՝ հայկական տոմարը նորոգելու համար ունեցած աշխատանքը. իրմէն առաջ Մովսէս Եղիվարդեցի և ուրիշներն ջանացեր էին այս բանիս. բայց իրենց ջանքն անկատար կամ անգործ մնացած էր: Սարկաւագ կրկին աշխատեցաւ. որովհետև ուրիշներուն շտկած տոմարը շարժական ըլլալով՝ այլ և այլ շփոթութեանց պատճառ կ'ըլլար. և ուզեց հաստատուն տոմարի մը կարգաւորութիւն ընել, և այս է Սարկաւագադիր կոչուածը, որ չկրցաւ ազգին մէջ հաստատութիւն գտնել:

Գրչագրի մը մէջ հանդիպած ենք. «ՇԼԴ. Սկիզբն նոր թուականին որ կարգեցաւ ի Յովհաննէս վարդապետէ Հաղբատեցւոյ որ Սարկաւագ կոչեցաւ: Սա արար անշարժ տումար ընդ այլոց ազգաց: Հանապազ ի Քաղոց ԻԹ Յայտնութիւն է. Մեհեկի Ը Տեառնընդառաջ է. Արեգի ԺԲ

գարուն. — Լ Աւետեաց, Ահեկի է Անկատեղ. Մարերի ԺԷ Ելատեղ. Մարգաց ԺԳ Ամառն. Նաւասարդի Ե Աստուածածնին. Հոռի Ե սուրբ խաչին. — Ի Աշունն. Տրէ. Թ Ցիսնակաց բարեկենդան. — Ժ Պահքն Քաղոց Ժ Ձմեռն. — ԻԱ Յայտնութեան բարեկենդան »։

Ուսմանց սիրովը վառուած՝ ուզեց իւր օրինակաւն ու ջանքով կիրթ ախորժակ, ուղիղ և ճշմարիտ գիտութիւն խոթել Հայաստանի մէջ. և այս բանիս համար մասնաւոր խնամք ունէր մանկանց դաստիարակութեանը վրայ, խրատներով անոնց եռանդը վառելով, և իր զօրաւոր խօսքերովը հասկըցընելով թէ իմաստութեան գանձուն հաւասարապատիւ բան չկայ։

Հաղբատայ առաջնորդ ալ եղաւ Սարկաւագ, և այն մեծ վանքին ուսմանց յառաջադիմութեանը գլխաւոր արդիւնքն իրեն կրնայ սեպուիլ։ Ներքին բարեկարգութեանն համար ալ շատ աշխատեցաւ անոյշ սրտովն ու լեզուովը և հայրագութ խանդաղատանօքը։

Այս իւր բարեմասնութեանցն համար՝ պատուական էր ամենուն աչքը. ինչուան իշխանք և թագաւորք մեծարեցին անոր հանճարը, և աքանչացան սրբութեանը վրայ. և Դաւիթ Վրաց թագաւորին համար կ'աւանդեն թէ ամէն անգամ որ կը տեսնէր զՍարկաւագ՝ նախատինք չէր համարեր արքունի թագով զարդարուած գլուխը խոնարհեցընել անոր առջին և օրհնութիւնը խնդրել։ « Ի ՇՀԸ թուին, — կ'ըսէ Սամուէլ ժամանակագիր, — փոխեցաւ 'ի Քրիստոս մահուամբ սուրբ վարդապետն Սարկաւագ 'ի Հաղբատ »։ Նոյն վանքին Ս. Աստուածածին եկեղեցւոյ զանգակատան տակ թաղուած է Սարկաւագ, և մարմինը ամփոփող քարին վրայ գրուած հետևեալ արձանագիրը. Արձանս այս սեմական է Մոփեստոսի Սարկաւագին։



**Սարկաւագայ երկասիրութիւնքը.** — Սարկաւագ վարդապետին անունը կրող երկասիրութիւնքն որչափ ալ ըստ ինքեան գեղեցիկ են, բայց իւր իմաստութեանը և անխոնջ փութոյն քանի մը երախայրիք պիտի ըլլան անշուշտ, վասն զի հաւանական կ'երևնայ թէ իւր գրուածներէն շատը կորսուած են, և որոնց մէջ գլխաւոր է

**Պատմութիւնը՝** զոր կը յիշատակեն Կիրակոս, Վարդան, Մխիթար Այրիվանեցի, և քանի մը ընտիր հատուածներն իւր ժամանակագրութեանը մէջ կը բերէ Սամուէլ Անեցի իր աշակերտը։ Կ'երևնայ թէ այս պատմութեան գիրքը երկու մասն բաժնուած էր. մէյմը ընդհանուր Սկիւթական ազգաց ծագման և արշաւանաց վըրայ, որ ԺԱ դարէն սկսան գալ 'ի Հայաստան. Սելճուկեանց ու Տուղրիլեանց, և Ալփասլանայ ու իր նախորդացը վրայ. մէյմըն ալ Ալփասլանայ որդւոյն Մէլիքշահի գործքերը, որուն մահուամբը դադրեցուցած կ'երևնայ Սարկաւագ իւր պատմութիւնը։

Այս կարծեաց ստուգութեանը կ'երաշխաւորեն՝ իրմէ ժամանակաւ քիչ կըտսեր՝ ու իրեն պատմութեան գիրքը կարդացող հետևեալ պատմագիրներն։ Կիրակոս կ'ըսէ. « Մինչև ցՄէլիք շահ սուլթանն՝ գրեալ էր զպատճառ տիրելոյ նոցա մեծիմաստ վարդապետն որ Սարկաւագ կոչիւր »։ Սամուէլ. « Իսկ յետ նոցա (Ամիրմումնեացն) Սկիւթացւոցն առնուլ զբռնակալութիւնն, այսպիսի պատճառաւ ընթերցաք, գրեալ վարդապետին մեծի՝ որ Սարկաւագ վերակոչի անուանեալ. զի ասէ թէ Պարսից և Մարաց զմիմեամբք ելանելով տուրևառիկ փոփոխութեամբ մինչև ցաւուրս մեր։ Զայսոսիկ նշանակաւ գրոյ եցոյց մեզ իմաստասէրն մինչև ցՄէլիք շահն, զոր յիւրում տեղւոջն գրեցից սորին ձեռնտուութեամբ։ Իսկ զհօրն նորա ժամանակ՝ զարիւնախանձին Ալփասլանայ, և զնորին հօրն

և զհաւուց, զոր Տուղլու (Տուղրիլ) Բէկ և Մահմուտ, և Սարչուկ (Սէլճուգ) անուանք են նոցա։ Ցեսաք երբեմն գրեալ սորին ձեռօք ստոյգ գտակաւ. եթէ հանդիպիմք մատենին՝ և մեք չարագրեսցուք, և թէ ոչ՝ լքցուք» և այլն։ Սամուէլ՝ Մէլիք շահի թագաւորութեանը վրայ խօսելու ժամանակ՝ անկէ վկայութիւն կը բերէ՝ ըսելով. «Զի առէ Իմաստասէրն աստուածային, թէ իբրև առնոյր զփառս իշխանութեանն», և այլն։ Դարձեալ յիշատակելով խաչակիր արևմտեայց գալուստը, և Ալեքս կայսեր անոնց ըրած նենգութիւնը, կ'ըսէ. «Եւ այս բանք գրեալ էր վարդապետին Սարկաւագի»։

Այս ընտիր ու փափաքելի երկասիրութենէն մինչև առ մեզ հասած երկու հատուած մէջ բերենք, պահեալ առ Անեցւոյն. որով ինչպէս իրաւամբ կ'անդրադարձնէ զանոնք առաջին անգամ հրատարակող բանասէրն, ամբողջ գրքին վսեմութիւնն ու ազնուութիւնը կրնանք ճանչնալ. և թէ ինչպէս այն պատմութիւնն մեր գրականութեան ընտիր գրուածքներէն մին էր, և իրեն ցեղին մէջ թերևս ամենէն ընտիրը.

«Իբրև առնոյր զփառս իշխանութեանն՝ բարեբաշխն Մէլէքշահ, զկնի հօրն մահուանն՝ Ալփասլանն կոչեցելոյն, մեծապէս կարգօք յօրինէր զթագաւորութիւնն. ըստ անուանն եղեալ արդարև արքայ արքայից։ Ոչ հետևեալ հօրն բարուց և կամաց, այլ և յաւէտ մանաւանդ զընդդէմն ախորժեալ, մինչ զի և մտահան եղեալ՝ զնորայն բասրէր զիմացմունս, իբրև եղեալ հակառակ խաղաղութեան և կենաց մարդկան, արեամբ և զրկմամբ խանդացեալ։ Իսկ ինքն իմաստաբար քաղաքավարութեան կարգօք պատրաստէր զամենայն։ Արդ խոհեմն այն և արի քան զյոլովս 'ի թագաւորաց և քան զամենեսեան որ առ մեօք, ոչ այնքան տանէր հոգ՝ որքան արդարութեամբ առ ամենեսին վարիլ. զի մի՛ ոք լիցի տրտում 'ի զրկելոց, և հպարտ 'ի գոռոզաց։ Էր և ազատաբարոյ և մեծախորհուրդ. այլ և տեսիլ մարմնոյն արժանի թագաւորու-

*թեանն. ընդ որում հեզութիւն 'ի քաղցրութիւն բարուցն լծակցեալ՝ առնէր սիրելի ամենեցուն. զոր միայն կոչեցից թագաւոր և փարթամ: Սա 'ի դոյզն ժամանակի փոքր ինչ նուազ զբոլորս հնազանդէր տիեզերս. զոր այլք 'ի թագաւորաց 'ի բազում ժամանակս և կամ ոչ բնաւ. բայց ոչ այնքան պատերազմաւ և բռնութեամբ՝ որքան սիրով և քաղցրութեամբ: Զի եթէ սակաւ ինչ ժամանակաւ այնքան զօրեաց՝ կարծեմ թէ և ոչ Եւրոպէ կարէր ոչ տալ մուտս արքայութեան նորա, եթէ յոլովեալ էին՝ կենաց նորա ժամանակք:...*

» Ի ՇԽԱ *թուականին սպանաւ մեծ հազարապետն արքային Պարսից Մէլիք շահին, որում անուն էր Հասան. իսկ ըստ պատուոյ աստիճանին՝ Վզրուկ խօճայ: Եւ զկնի աւուրց քանեւութից մեռանի և ինքն Մէլիք շահն. զորմէ համբաւէր յոմանց դեղակուր 'ի կնոջէն լեալ. որ էր մեզ առ ամենեսեան և քաղցր բարուք յաւէտ առ ազգս քրիստոնէից: Եւ յետ մահուան նորա անպատմելի եղև խռովութիւն ամենայն ազգաց զամս չորս. զի եղբայր նորա Դդուշն և որդի նորա Բէքիարուխն՝ զայսօսիկ զամս մարտիւ պատերազմաց զբարեյարմարութիւն զամենայն 'ի բաց կտրեցին, վասն ոչ ընդ փոյթ միոյ 'ի նոցանէ տիրելոյ. հոսմանց արեանց իբրև զուղխից լինէր, ոչ միայն զինակիր նահատակացն՝ այլ և առհասարակ ազանց և գաւառաց. և նեղութիւնք վշտաց սովու և գերութեան: Եւ այսպէս բարիքն 'ի բաց վճարեցան ընդ խզման կենաց թագաւորին. որոյ երկք և աշխատութիւնք թագաւորականք՝ ուրոյն, և շահն և օգուտն՝ հասարակաց ամենեցուն, մեծամեծք և ընտրելիքն. մանաւանդ զխաղաղականսն ասեմ զկեանս և զանհակառակսն. զի սիրէր զազգս մեր այնքան՝ զի աղօթս հայցէր և օրհնութիւնս. յորմէ և անդ երբեմն չոգաւ հայրապետն: Ո՞չ, թէ միայն էր աշակերտեալ քրիստոսական կրօնից և կարգաց »:*



**Յաղագս քահանայութեան ճառ.** — Ինքզինքնին Աստուծոյ սեղանոյն նուիրող քահանայից համար զգուշութեան և խրատական ճառ մը։ Աստուածամերձ և ահաւոր սրբավայրին արժանաւոր և նիւթոյն վսեմութեան պատկանաւոր լեզու մը կը բանեցընէ Սարկաւագ այս ճառիս մէջ. կը նկատէ զքահանայն իբրև պաշտօնեայ Աստուծոյ և մարդկան, ու կը յիշեցընէ անոր այլ և այլ պարտքերը։

**Ներբողեան.** — Կիրակոս՝ Սարկաւագայ վրայ խօսելով կ՚աւանդէ թէ «գրեաց ճառս ներբողականս 'ի մեծազօր արքայն Հայոց Տրդատ, և 'ի սուրբ հայրապետն Ներսէս և 'ի սքանչելին Սահակ և Մեսրովպ»։ Այս ճառերը մեր ձեռքը հասած չեն։ Միայն 'ի պատիւ սրբոյ Լուսաւորչին ընտիր ներբողեան մը իր անունովը, զոր թերևս ուզած ըլլայ ակնարկել Կիրակոս։ Մեր մատենագրութեան մէջ քիչ հանդիպած ենք այսպիսի հաճոյական ոճով ու կիրթ հանճարով յօրինուած ներբողենի մը։ Ոմանք սրբոց Թարգմանչաց վրայ ընդհանրապէս գրուած ներբողական ճառի մը հեղինակ ուզած են համարել ըզ-Սարկաւագ, և որ ձեռագրաց մէջ սովորաբար կը կրէ «Պատմութիւն վասն սրբոյն Սահակայ հայրապետին և Մեսրովբայ վարդապետին» խորագիրը։ Բայց այդ ճառը իւր հմուտ և ընտիր ոճովն ալ՝ Սարկաւագայ հարազատ երկն ըլլալուն իրաւացի տարակոյս կը վերցընէ առ բանասէրս։

**Աղօթամատոյց.** — Առ Աստուած դիմելու անձկանօք վառուած, ու աշխարհի ու մարմնոյ բազմադիմի յուզմանց, վարանմանց, լքման, վտանգաց, տագնապալի վայրկեաններուն երկնաւոր սփոփանաց և քաջալերութեան փափաքող մտքեր՝ ասկէ աւելի սրտաշարժ աղօթից գիրք մը դժուարաւ կրնան գտնել։ Սարկաւագ որ Հաղբատայ մենաւոր

առանձնութեան մէջ աշխարհքէս հեռացած, ու արդէն առ սեամս երկնից կը դեգերէր հոգւովն ու անձկանօք, այնպիսի փափաքելի մերձաւորութեան զմայլման թելադրութեամբ գրած է այս աղօթքները։ Ամէն հասակի, վիճակի և կենաց դիրքի մէջ գտնուողք՝ իրենց սրտին, վիճակին և զգացմանցը համեմատ աղօթքներ կը գտնեն այս սքանչելի մատենկան մէջ[1]։

Ասոնցմէ զատ ուրիշ քանի մը ընտիր համառօտ գրուածներ ալ ունի Սարկաւագ, որոց ամբողջը մեր ձեռքը հասած չէ. և են Վասն մասանց պատուոյ և պատկերաց ընդունելութեան. — Վասն շարժման երկրի. — Մեկնութիւն տոմարի և յաղագս անկիւնաւոր թուոյ. — Յաղագս ամսոց Հայոց և այլոց, և չորեքտասաներորդ լուսնոյ զատկաց։ — Յովհաննու իմաստասիրի որ մականուանի Սարկաւագ, ասացեալ յաղագս քան զդրութիւն իւրոյ տումարին։ — Բան խրատու առ ուսումնասէրս. — Տոմար ժամանակաց և թուականաց. — Բան վասն հնգից հարիւրից. — Ի պատիւ սրբոց Ղևոնդեանց երգուած Պայծառացիր գեղեցիկ և ընտիր շարականը։ Դարձեալ՝ Սարեակ Թռչնոյն վրայ բանաստեղծական, ընտիր և գեղեցիկ քերթութիւն մը[2]։ Մեր ազգային դպրութեան մէջ՝ այս իր տեսակին անհամեմատ աշխոյժ, եռանդուն և սիրելի արտադրութիւնը՝ այս խորագիրը կը կրէ. Յովհաննու Սարկաւագի իմաստասիրի և վարդապետի ասացեալ բան իմաստութեան առ ճագն՝ որ զաղօթանոցաւ նորա ճռուողէր քաղցրաձայնն՝ որ կոչի Սարիկ»։ Ասոնցմէ զատ կը յիշուին Սարկաւագայ անուամբ Հոգւոյն սրբոյ վրայ գրուած ճառ մը. — Ղուկասու Աւետարանին մեկնութիւն՝ զոր կը յիշէ իր աշակերտն Կունդ Սարգիս, և Տաղ մը 'ի Յարութիւն Քրիստոսի։

1. Քահանայութեան ճառը, ինչպէս նաև ներբողական գովեստք 'ի Ս. Լուսաւորիչն և 'ի Թարգմանիչս, և Աղօթամատոյցն հրատարակեալ են 'ի Վենետիկ, 'ի շարս Հայկական Սոփերաց 'ի 1853։

2. Հրատարակուած 'ի Բազմավէպի, Հատ. Ե. 221։

Կիրակոս՝ Սարկաւագայ համար կ'աւանդէ թէ « գրեաց և օրինակս ստոյգ գրոց »։ Եւ կ'ուզէ անշուշտ ակնարկել նոյն վարդապետին Հաղբատայ վանուցը մէջ գտած հին սաղմոսագրոց օրինակ մը՝ Թարգմանչաց ժամանակ և անոնց մէկուն ձեռքովը գրուած։ Որովհետև ատեն անցնելէն ետքը՝ անոնց թարգմանածէն զատ ուրիշ նոր կամ աւելի հնագոյն քան զընկալեալն յազգին՝ թարգմանութիւն մըն ալ երևցեր էր ազգին մէջ, անկատար և աղաւաղ, որով շփոթութիւն կար, և բուն ստոյգ և հարազատ օրինակը գտնելու համար աշխատանք կը քաշէին։ Սարկաւագ գտաւ բուն և իսկական թարգմանութիւնն և ազգին մէջ հրատարակեց[1]։

Աստուածաբանական գրուածներ ալ ունի Սարկաւագ, մանաւանդ այն խնդրոց վրայ որ Յունաց և Հայոց մէջ վիճելի նիւթ էին, իր կտրուկ և զօրաւոր ոճովը, բայց կ'երևայ թէ ատոնց մէջ օտար ձեռք մտած է։

1. « Ապա համադարձ արարեալ (Յովհաննէս Գառնեցին է որ կը պատմէ), գնացի 'ի մայրաքաղաքն մենաստանն 'ի Հաղբատ և գտի Թարգմանչացն գրած սաղմոս. զոր առեալ սուրբ վարդապետին՝ Սարկաւագ կոչեցեալ, այն որ զտոմարն երևեցոյց զհին Հայոց, և նա սերմանեաց զայս ուղիղ և զուղղորդ սաղմոս, որ ոմանց այլ և այլ երևի 'ի սա »։

Սաղմոս գրոց յիշատակարանի մը մէջ ալ կը կարդանք. « ...Սա է գաղափարն գերունակ սուրբ վարդապետին և մեծ սոփեստոսին սուրբ ուխտին Հաղբատայ՝ Սարկաւագին... Եւ սա վճարեցեալ էր 'ի բազում ժամանակս վասն այլայլման Սաղմոսիս. և ոչ գիտէր զելս իրացն թէ ուստի ուստեք ճշգրտեսցէ. և ապա մտեալ 'ի յարկերս գրեանցն որ 'ի Հաղբատ՝ զամենայն որոնեաց. և ապա հնուկ քան զամենայն գրեանս 'ի ներքոյ՝ եգիտ Թարգմանչացն Սաղմոսարան չինչ և նուաղ գրով. և առեալ զայն խնդութեամբ՝ համբուրեալ և եդ 'ի վերայ աչաց իւրոց. և ապա արկեալ ձեռն 'ի գործ՝ բացայայտեաց անտի զծածկեալ զանձն և զլցեալ աղբիւրն. և ցրուեաց ընդ ամենայն սահմանս Հայաստանեայց զայս օրինակ։ Եւ այդ նշմար սևակի որ ծրի յառաջիկայդ, յայնմ օրինակէ է »։ Ուրիշ յիշատակագիր մ'ալ կը մաղթէ. « Իմաստութիւն Հօր Յիսուս և բան, սիրողին իմաստութեան վարդապետին Սարկաւագ կոչեցեալ՝ աշխատանաց յուղղութիւն տացէ, զարժանն հատո յանդաշաղ ձրիցդ »։

Էջմիածնի Մատենադարանին ձեռագրաց տպագիր ցուցակին մէջ նշանակուած կը տեսնենք Սարկաւագայ անուամբ հետեւեալ մեզի դեռ անծանօթ երկասիրութիւնք. Ա. «Հարցումն վարդապետաց առ Սարկաւագ»: Բ. «Յաղագս չորից առաքինութեանց 'ի Սարկաւագ վարդապետէ»: Նոյն գրչագրին մէջ կ'երեւնայ նաեւ Ընդդէմ երկաբնակաց մակագրով՝ գրուածք մը Սարկաւագայ ընծայուած: Քառածալ երկաթագիր գրչագիր մ'է, կ'ըսէ Հրատարակողն, եւ թերի 'ի վերջէ: Նոյն ցուցակին մէջ (Թիւ 519) «Սարկաւագ վարդապետի բանք ընդդէմ այնոցիկ, որք վասն բաժակին մոլին»[1]:

Սարկաւագայ աշակերտաց մէջ կը յիշատակուին ԵՐԵՄԻԱ՝ որ Անձրեւիկ ալ կը կոչուէր, ՍԱՄՈՒԷԼ Երէց եւ ԱՆԱՆԻԱ, ԽԱՉԱՏՈՒՐ, ԳՐԻԳՈՐ եւ ՅՈՎՀԱՆՆԷՍ Անեցիք:

Ասոնցմէ զատ նաեւ ՍԱՐԳԻՍ վարդապետ ԿՈՒՆԴ կոչուած, Արարատեան գաւառէն, զոր ժամանակակիցք «աշխատասէր եւ արի մշակ տեառն կը կոչեն. Հմուտ

1. Երուսաղէմի Մատենադարանին ցուցակը այս վերջին գրուածքը կ'ընծայէ Եսայեայ Նչեցւոյ, Սարկաւագայ տալով ուրիշ համառօտ (միայն վեց տողի մէջ ամփոփուած) գրութիւն մը այսպիսի սկզբնաւորութեամբ. «Զլինելն որդի մարդոյ եւ մտանել ընդ օրինօք»...: Նոյն ցուցակը (Թիւ 384) հետեւեալ խորագրով գրուածք մ'ալ կուտայ Սարկաւագ վարդապետի. «Յեկեղեցական պատմութենէ զոր երկրորդեալ է Սարկաւագ վարդապետի»:

Նոյն Մատենադարանին մէջ կը յիշուի նաեւ ուրիշ հատի մը գոյութիւն՝ Սարկաւագայ անունով. «Հարցմունք Վրաց եպիսկոպոսէ ի Հայոց վարդապետէ Սարկաւագին, դեր գոլով յաղագս ամենայն, թէ գիտնալ ունի երգք սաղմոսին ասացեալ. Դու խորտակեցեր զգլուխ վիշապաց ի վերայ ջուրց. դու փշրեցեր զգլուխ» եւ այլն: Ցանկողն կը յաւելու. «Այս հատ առ Մխիթարեանս մակագրի Վ-ան շ-ր-ժ-ման և ս-տ-ո-ւ-ն-ո-ւ-թ-ե-ան Եղիշէի եթէ չիցէ այս որիշ, զորմէ խօսի հեղինակս ի վերջաբանին իւրում, այսպէս. Իսկ եթէ ընդէ՞ր բարիք ընդ չարս մեռանին եւ անմեղք ընդ մեղաւորս, ի բանէ անտի ուսցիս զոր արարեալ է մեր ըստ կարողութեան յաղագս մեծի եւ սատանայական արեւմըտեայ շարժմանն. եւ զայդ բաւական համարեալ՝ թողցուք զերկայնմըտութիւն բնախօսութեանն»:

և հանճարեղ իմաստիւք հոգւոյն»։ Ղուկաս և Յովհաննէս աւետարանագրաց մեկնութիւնը շարագրած է Սարգիս՝ իր ծերութեանը հասակին, կամ Սարկաւագայ թուականին 63 տարւոյն մէջ։ Ինքն հեղինակը մասնաւոր յիշատակարանով մը կ'աւանդէ թէ Եփրեմի, Կիւրղի Աղեքսանդրացւոյ, Ստեփանոսի Սիւնեցւոյ և Իգնատիոսի և Յովհաննու Ոսկեբերանի և Գրիգորի Աստուածաբանի և Եպիփանու և Նարեկացւոյն և Սարկաւագայ և Անանիայի և Նանայի. համանուն երկասիրութեանց հետևողութեամբը շարագրած է այս գիրքը, ընդհանրապէս ընտիր ոճով և լեզուով։

## ՍՏԵՓԱՆՈՍ ՄԱՆՈՒԿ

—

**Ստեփանոսի գիտութիւնն և համբաւը։ — Արժանապէս կը մեծարուի ի Բարսեղ կաթուղիկոսէ։ — Իրեն ընծայուած գրուածները։ — Աշակերտքը։**

Ստեփանոս Մանուկ, որ տղայութեան հասակէն իմաստութեամբն և սրբութեամբ համբաւաւոր, աշխարհէ հրաժարելով, Տուղր անապատին Կարմիր վանքն առանձնացեր էր, իր գիտութեամբն ալ աւելի մեծանուն հանդիսանալով, տեղւոյն ծերունի վարդապետացն հրամանաւ՝ բեմին վրայ կ'ելլէր ու սուրբ հաւատոց ճշմարտութիւնը աքանչելի վարդապետութեամբ կը քարոզէր ամենեցուն։ Նոյն ատենի վարդապետներէն ոմանք լսելով թէ Ստեփանոս անանկ տարաժամ հասակի մը մէջ քարոզութեան սկսեր է, դժկամակեցան որ ութևտասնամեայ պատանի մը այնպիսի մեծ պաշտաման ձեռք զար-

կեր է, Թէպէտ և յաջող հանճարով և գիտութեամբ։ Իրաւացի սեպեց անոնց գանգատը Բարսեղ կաթուղիկոս, և ուզեց անձամբ լսել անոր քարոզութիւնը, որուն վրայ այնչափ հաստկաւոր հանճարներ զարմանալէն չէին դադրեր. և երբ լսեց՝ ոչ միայն իրաւունք տուաւ այլոց խօսքերուն, այլ անձամբ հանեց իր մատանին ու ձեռքի գաւազանը անոր տալով հրամայեց որ շարունակէ այն պաշտօնը՝ զոր յօգուտ փրկութեան հոգւոց այնչափ յաջողութեամբ սկսեր էր։ Երկրորդ օրն ալ կիրակի հանդիպելով՝ Գող Վասլին իշխանութեան և հրամանացը տակ եղող գաւառներուն եպիսկոպոս ձեռնադրեց զինքը, ու Կարմիր վանքին առաջնորդութիւնը անոր յանձնեց։

Երբոր Գրիգոր Վկայասէր մեռաւ, սա ինքն Ստեփանոս Մանուկ անոր արձանականը շարագրեց. և անոր սքանչելի սրբութեանը և անարատ վարուց արժանաւոր գովաբան երևցաւ։ Ափսոս որ ոչ այս և ոչ իր ուրիշ երկասիրութեանց մէկը ձեռուընիս հասած է. միայն պատմութիւնն և իր աշակերտներն իր վրայի համբաւը կ՚արդարացընեն։

Այս աշակերտացը մէջ գլխաւոր են Գրիգոր Պահլաւունի և իր հարազատը Ներսէս Շնորհալի, և Սարգիս և Իգնատիոս վարդապետք։

# ԳՐԻԳՈՐ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

---

*Պահլաւ Գրիգոր՝ եղբայր Շնորհալւոյն։ — Կաթողիկոսական աթոռը նստելը։ — Իր համբաւն և 'ի ժամանակակցաց ընծայուած մեծարանք։ — Հայկական գրականութեան ծաղկելուն համար ունեցած ջանք։ — Երկասիրութիւնք։*

Բարսեղ կաթուղիկոսին մահուընէն ետքը՝ իրեն մանաւոր հրամանաւը և կարգադրութեամբ՝ նոյն հայրապետական աթոռոյն վրայ նստուցին զԳրիգոր կամ զԳրիգորիս Պահլաւունի՝ որ Վկայասիրին քեռորդի Ապիրատ իշխանին որդին էր, և Ներսիսի Շնորհալւոյ երէց եղբայրը։ Ասիկայ իր տղայութեանը հասակէն նախ Վկայասիրին ու ետքը Ստեփանոսի աշակերտելով, թէ առաքինութեամբը և թէ իմաստութեամբ անանկ մեծ համբաւ ունեցաւ, որ քսանամեայ հասակին հայրապետական աթոռը նստելու արժանի երևցաւ. և ինչպէս կը վկայէ Շնորհալին «Յոյժ հրաշափառագոյն բանիւ և գործով քան զբազումս յաթոռակալացն գտաւ նախնեաց, 'ի մաքրութիւն հոգւոյ ըստ հրոյ գոլով զուգամանութեան, յիմաստս բանի և 'ի շարագրութիւնս գրոց ծայրագոյնս, և 'ի խորհուրդ հանճարոյ՝ ըստ տերունեան խրատու բարիոք խորագիտութեամբ»։ Սամուէլ ժամանակագիրն ալ կը յաւելու. «Յաղագս աստուածային շնորհի ընկալելոյ, և սրբական և մաքուր վարուցն պատուեալ փառաւորութեամբ ոչ միայն 'ի մերոյ ազգէս, այլ և յօտարասեր թագաւորաց և իշխանաց և պատրիարգացն։ Սա հոգաւ

'ի քաղաքն սուրբ յԵրուսաղէմ... և անդ ծանուցեալ և իմացեալ զառատաձոռ ծաւալումն աստուածային շնորհին 'ի վերայ հայրապետին ազգին Հռովմայեցւոց, իշխողք աշխարհացն որ Փռանգք կոչին, և ընդ վայելչազգեաց և պատշաճագեղ տեսիլ մարմնոյն՝ ծանեան և զհոգւոյն գեղեցկութիւն, և 'ի բանս հաւատոյ ղճշմարտութիւն ամենևիմբ, զոր պայծառ և կանոնական կարգաւ և քանոնով վարդապետական ճոխութեամբ բարբառէր. ուրախացան հաճելութեամբ, և առաւել սէր հաստատեցին ընդ հայրապետին և ընդ ազգս մեր »:

*
* *

Մեծ ջանքով եռանդ եղաւ Գրիգոր հայկական գրականութեան ծաղկելուն, և Վկայասիրին օրինակին հետևելով՝ իր ժամանակին անուանի վարդապետացը այլ և այլ երկասիրութիւն յանձնեց։ Սամուէլ Երէցն՝ իր հրամանաւը Քրոնիկոնը կամ ժամանակագրութիւնը շարագրեց. Իգնատիոս վարդապետ՝ Ղուկասու աւետարանչին մեկնութիւնը, Շնորհալին՝ իր այլ և այլ գրուածները, և հաւանական կարծեօք նաև Սարգիս վարդապետ՝ կաթուղիկեայց թղթերուն մեկնութիւնը։

Ինքը Գրիգորիս ալ՝ հայրապետական զբաղմունքներէ զատ գրաւորական երկասիրութեանց ալ պարապելու ատեն կը գտնէր։ Իրենն է Աւետեաց շարականը խորհուրդն անճառ, և Ծաղկազարդի երկրորդման օրը երգուածը Մեծահրաշ այս խորհուրդ. Զօրհնեաց գեղեցիկ տաղն Ո՛վ զարմանալի խորհուրդս. 'ի պատիւ Լուսաւորչի ալ ընտիր մեղեդի մը Ի յերկս արևուց արև։ Վկայասիրին նման՝ սրբոց վկայաբանութիւններն ալ կարգի վրայ առնելու աշխատեցաւ. և սահմանեց որ ամէն մէկուն տօնին նախընթաց օրը՝ անոնց վարքը կարդացուին. անոր համար ալ է որ ոմանք զինքը փոքր Վկայասէր կոչեցին, ոմանք ալ այս երկուքին գրուածները իրարու հետ շփոթելով՝ մէ-

կին երկատիրածը մէկալին ընծայեցին։ Կիրակոս ասոր համար կ՚աւանդէ՝ ինչ որ այլք Վկայասիրին համար զրուցած են. «Սկսաւ թարգմանութիւն առնել աստուածային գրոց. և բազում գիրս ետ թարգմանել 'ի հայ լեզու՝ զորս ինքեամբ և զորս այլոց ձեռամբ»։

Իրենն է նաև բանաստեղծական բաւական ընտիր գըրութիւն մը Վասն Երուսաղեմի և հարուածոց քրիստոնէից կոչուած [1]։

1. Տիւլորիէ հրատարակեց այս քերթուածը 'ի Recueil des Historiens des Croisades, (Documents Arméniens), բնագիրն ու գաղղիական թարգմանութիւնը։

# ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ

***

*Շնորհալի և իր նախնական դաստիարակութիւնը։ — Քահանայանալը։ — Ուսումն և կրթութիւնը։ — Եպիսկոպոսական աստիճանի կը բարձրանայ։ — Իր եղբօրը կը յաջորդէ յաթոռ հայրապետութեան Հայոց։ — Ընդհանրականն առ ամենայն հայասէր ազգս։ — Խնդիր միութեան ընդ եկեղեցւոյն Յունաց. և այս առթիւ գրուած թուղթք։ — Շնորհալւոյն երկասիրութիւնք։ — Թուղթք առ զանազանս։ — Հրեշտակաց ներբող։ — Բարձրացուցեաց մեկնութիւն։ — Մեկնութիւն Մատթէի։ — Մեկնութիւն կաթողիկեայց։ — Մանր երկասիրութիւնները։ — Խրատ ժամերգութեան։ — Շնորհալի ներբող։ — Եդեսիոյ ողբ։ — Յիսուս որդի։ — Բան հաւատոյ։ — Յաղագս երկնից և զարդուց նոցա։ — Մանր քերթուածք։ — Մատենագիտական տեղեկութիւնը իր գրուածոց։*

Այն ընտիր և սիրելի տոհմին՝ որ արդէն ընծայած էր Հայաստան եկեղեցւոյ և դպրութեանց զՄագիստրոս և զՎկայասէր և զԳրիգորիոս, սերունդ էր սուրբն Ներսէս Կլայեցի, իրաւամբ Շնորհալի կոչուած իւր վարքով, խօսքով և գրչովը։ Մագիստրոսի դստեր Ապիրատ որդւոյն զաւակ էր Ներսէս, և կրտսեր եղբայր Գրիգորիս Պահլաւունի կաթողիկոսի. բայց թէ իր հարազատաց և թէ իր տոհմին մէջ անզուգական անձ մը կրնայ սեպուիլ Շնորհալին։

Երկոտասաներորդ դարուն սկիզբը ծնաւ Ներսէս (1102),

և տղայութեան հասակէն Գրիգորի Վկայասէրի արթուն և բարեպաշտ խնամոցը տակ մեծցած. ետքն ալ Սեաւ լերան վրայ եղած Կարմիր վանից առաջնորդ՝ Ստեփանոս Գիտնականին աշակերտեցաւ, իրեն ուսումնակից ունենալով իր երէց եղբայրը ու զԻգնատիոս և զՍարգիս։

Սրբութեամբն և իմաստութեամբ՝ իրեն հանճարոյն և կոչմանը արժանաւոր յառաջադիմութիւն ցուցընելով, իւր երէց եղբայրը Գրիգորիս երբ քսանուերկու կամ քըսանուիրեք տարուան հասակին կաթուղիկոսական աթոռը բարձրանալու արժանացաւ, քահանայ ձեռնադրեց զՆերսէս, ութևտասնամեայ պատանեակ՝ բայց հոգւովն ու սրտիւ արդէն հասունացած և արժանաւոր այն գերագոյն և սուրբ պաշտաման՝ յոր 'ի հոգւոյն Աստուծոյ առաջնորդեալ՝ կը հրաւիրէր զինք Գրիգորիս։ «Անմարմնաբար և աստուածայնապէս սպասաւորեալ մեղսաքաւիչ և կենարար սուրբ խորհրդոյն, օրինակ բարեաց տայ զանձն բազմաց, և նախանձելի լինէր ողջախոհ մոլորացն 'ի բարիս» հիանալով կը վկայէ իրեն վարուց գրիչ մը և ժամանակաւ մերձաւոր։ Լամբրոնացին ալ կ'ըսէ. «Զանձն 'ի Փրկչին խաչ հեղուէ»։

Ուսմանց և կրթութեան տեղուանք սակաւաւորք կը թուին յայնժամ 'ի Հայաստան, և որոց կարօտութիւնը և պէտքը զգացած է և Շնորհալի՝ որ ատեն անցնելէն ետքն ալ հառաչանօք կը գրէր առ կայսրն Մանուէլ. «Ո՛ւր մեր վարժարանք՝ 'ի թագաւորական պատրաստեալ հրամանացն. և կամ յոյս փառաց և պարգևաց՝ յառաջացելոցն՝ յիմաստս, որ մանաւանդ մանկաբարոյից՝ են առաւելագունի պատճառ փութոյ կրթութեան»։ Վիպասանականին մէջ ալ կը խոստովանի թէ

«Զի հրահանգիցս վարժարանի
Զեմ տակաւին ներկուռ բանի»։ —
«Յաթենականըն քաղաքի
Զանձն իմաստից ոչ կըրթեցի.
Ուր լըսարանըն Պղատոնի

Եւ չափ ոտիւք Հոմերոսին...
Ուր հոյլք ամէն հռետորի,
Ժողովարան ճարտասանի
Ներհըմտութիւն քերականի »:

Որչափ ալ արտաքին յարաբերութիւնք սկսած էին յաճախել իրմէ առաջ և իր ատենը, ընդ բիւզանդական արքունեաց, և թերեւս աւելի սերտիւ քան 'ի հինգերորդ դարու, սակայն ոչ նոյնպէս և յունական դպրութիւնն և ուսում, որով կը բանադատուէին 'ի յոյն գրոց թարգմանութեանց հարկին մէջ՝ այն ազգէն հայկական լեզուի հմտի մը օժանդակութեամբն օգտուիլ՝ մեծ ջանքով ու ծախքով, ու անոնց անարուեստ թարգմանութիւնն յղկել․ որով հայ լեզուն գիրք մ'ալ աւելի կ'ունենար, բայց մատենագրական իսկական ճոխութենէ զուրկ մնալով:

Ազգին այսպիսի բանասիրական դիրքին մէջ՝ Շնորհալւոյն ուսումն և գիտութիւնք՝ իր փափաքանաց համեմատ չբարձրացան․ կամ աւելի ճիշդն ըսելով՝ անհաւասարելի բարձրութիւն մը ունեցան հոգեխառն գիտութեանց մէջ քան արտաքնոյն, եկեղեցական քան քաղաքական․ աստուածաշունչ գրոց և սուրբ Հարց վարդապետութիւն և մեկնութիւն․ եկեղեցւոյ և սրբոց պատմութիւնք, երաժշտութիւն եկեղեցական, և վայելուչ շարագրութիւն արձակ կամ ոտանաւոր բանիւ: «Գրէր և շարժագրութիւն գրոյ, — կը վկայէ իր կենսագիրն, — հրաշանտեսակ և վայելուչ 'ի զանազան կերպս, որպէս աստուածային մատամբք շարժահիւսեալ․ և գիծք շնորհակիր և աստուածաներկ մատանցն, և բանք հոգեշարժք լեզուին՝ արտաբերեալք 'ի յոգնահանճար մտացն, օտար և գեր 'ի վերոյ երևէին մարմնականաց գիտութեանց և իրաց: Քանզի ոչ ունէր 'ի մարդկանէ և ոչ 'ի ձեռն մարդոյ, այլ 'ի ձեռն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ․ որոյ մաքրեալ և յարդարեալ էր զհոգի և զմարմին և զմիտս »:



Այսպիսի վարք, եռանդն և գիտութիւն փութացուցին զԳրիգորիս, ու հայրապետական աթոռը Հռոմկլայ փոխադրելէն ետքը՝ եպիսկոպոս օծեց զՆերսէս:

Զախալեցաւ Գրիգորիս իւր ընտրութեանը մէջ. վասն զի Ներսէս իւր վիճակին բարձրութեանը համեմատ՝ ամէն առաքինութիւն և կարևոր բարեմասնութիւն ցըցուց իւր վրայ. և ոչ միայն իւր համազգեացը, այլ նաև Յունաց և Հռովմայեցւոց, և ինչուան այլազգեաց առջև ակնածելի և համբաւաւոր եղաւ: Ուստի երբ Գրիգորիս տարիքն առնելով՝ հայրապետական հոգոց ծանրութենէն ուզեց հրաժարիլ, արժանաւոր յաջորդ ճանչցաւ և ներկայացուց զՆորհալի: Ընդունայն տեղը ջանաց սա հրաժարիլ և թաքստեամբ փախչիլ այն պատուէն՝ առ որ կը կոչէին զինքը իւր սրբութիւնն և ժողովրդեան միաբան ձայնակցութիւնն: Հարկ եղաւ որ հնազանդի անոնց, և երկնքէն եկած անձայն հրամանի մը: Այն ատեն Գրիգորիս հայրապետական զգեստներն անոր հագցընելով, կաթուղիկոսական կրկին քօղը գլուխը դրաւ. ու գաւազանն ալ ձեռքը տալով՝ նստոյց այն աթոռին վրայ, ուսկից ինքը կ'իջնէր, ու ամենէն առաջ ինքը ողջունեց զնա երկրպագութեամբ կաթուղիկոս ամենայն Հայոց: Իրեն հետևեցան հոն գտնուող բազմաթիւ եպիսկոպոսունք, վանահարք, երիցունք և ժողովուրդք: Այն բազմութեան առջև՝ առաջին անգամ իբրև հայրապետ՝ բացաւ իր աստուածուսոյց բերանը սուրբն Ներսէս, ու գեղեցիկ ատենախօսութեամբ ցըցուց հովուական պաշտաման ծանրութիւնը, ուսկից ինքն իրաւամբ կը հրաժարէր, այնչափ հեռու տեսնելով ինքզինքը այն սրբութե-

նէն որ իրմէ կը պահանջուէր։ 1165ին հանդիպեցաւ այս դէպքը ու իրեք ամիս ետքը վախճանեցաւ Գրիգորիս։

Եղբօրը մահուան գոյժը հրատարակեց Ներսէս ամենայն Հայկազանց՝ Ընդհանրական Թղթով մը [1], յիշատակելով երջանիկ փոխումն առ Աստուած, և իւր անոր աթոռը և իշխանութիւնը ժառանգելը. «Ինքն նաւու հաւատով, կ'ըսէ, ընդ ծով աշխարհիս՝ հողմով հոգւոյն ուղղակի նաւապետեալ ճշմարտութեամբ և առաքինութեամբ՝ եհաս անմխաս յանքոյթ և առանց ալեաց նաւահանգիստն». և որովհետև, կ'ըսէ, գտնուած դիրքիս մէջ հարկ՝ բայց անկարելի է ինծի ըստ փափաքանացս ամէն մէկերնուդ հետ խօսիլ, և իմացընել իմ բաղձանքս՝ ինչպէս որ կ'ախորժիմ տեսնել զձեզ անխոտոր աստուածային ճանապարհաց ուղղութեանը մէջ, ուստի եպիսկոպոսաց գովելի սովորութեանը համեմատ՝ ուզեցի խրատել զամենքը։ Այսպիսի աստուածահաճոյ և օգտակար ձեռնարկի մը մէջ՝ գեղեցիկ օրինակ մ'ունէր Շնորհալի՝ զսուրբն Սահակ Պարթև, զԻմաստասէր հայրապետն Յովհան և զայլս որք իրմէ առաջ պայծառացուցած էին իրենց սրբութեամբն և իմաստութեամբ զհայրապետական աթոռն Հայաստանի։ Մանաւանդ զի, — կ'ըսէ ցաւե-

1· Այս ընտիր երկասիրութիւնն յիշելով՝ հետևեալ խորհրդածութիւններն կ'ընէ Գաղղիացի բանասէրն և հայագէտ Վիլֆրուա մեզմէ դար մը և աւելի յառաջ· «Cette lettre est pleine d'une piété solide, et l'on y découvre partout les sentiments de respect, dont Nersès était pénétré pour la religion, l'église et la discipline écclésiastique. Ce grand patriarche est un des plus éloquens pères de l'église d'Arménie. Il était la plume de Grégoire III, son prédécesseur. Très propre pour le gouvernement, il monte sur le trône patriarcal avec un applaudissement général. Son pontificat fut employé à chercher des voies de conciliation entre l'église Grecque et celle d'Arménie. Il y aurait sans doute réussi, car il avait gagné les cœurs des Grecs, qui étaient pleins de vénérations pour lui ; mais il ne fut que sept ans sur le siège patriarcal...

լով Հայրենեաց գտնուած վիճակին վրայ, — « Քաղաք Թագաւորական և բազմաժողով ոչ գոյ ազգի մերում, որպէս զի անդանօր նստելով յաթոռ հայրապետութեան և վարդապետութեան՝ ուսուցանէաք ժողովրդեան մերոյ զաստուածային պատուիրանս, ըստ առաջին հայրապետացն. այլ եմք իբր զայծեամն յորսորդաց և 'ի շանց փախուցեալք՝ 'ի քարանձաւս յայս բնակելով »: Առաջ հաւատոյ դաւանութիւն մը կը դնէ, ու ետքը այլ և այլ վիճակներու պատշաճական՝ աքանչելի և հայրագութ խրատներ: Նախ խօսքը կրօնաւորաց կ'ուղղէ, զանոնք երկնից աստեղաց նմանցընելով. ետքը վանաց առաջնորդներու՝ աչք կոչելով իրենց խնամոցը յանձնուած միաբան եղբայրութեանց մարմնոյն. ապա առ եպիսկոպոսունս, զորս մերթ գլուխ, մերթ տէր և տնտես կոչելով՝ կը յորդորէ յանպակաս կատարումն իրենց պարտուցը. ետքը առ քահանայս, զորս Քրիստոսի ժողովրդեան ծնողքը կը համարի: Ապա կարգաւ զգուշութեան գեղեցիկ խրատներ ու պատուէրներ կ'աւանդէ առ իշխանս, առ զինուորս, առ ժողովրդականս, և յետոյ առ կանայս: Վայելուչ և ընտիր հայկաբան լեզու մը գործածած է Շնորհալին այս գրուածքիս մէջ, և կարելի եղածին չափ պարզ ու դիւրիմանալի:

*
* *

Այն ժամանակները կարևոր խնդիր մը կը յուզուէր Բիւզանդիոնի արքունեացը և Հայոց մէջ, կրօնական միութիւն մը հաստատելու համար զանազան տարաձայնութեանց՝ ու երբեմն կամ անտեղի պատճառներով իրարմէ հեռացած և օտարացած երկու եկեղեցեաց հետ: Այս խնդրոյն մէջ մտած է նաև Շնորհալի, ու բարենպատակ վախճանին հասնելու համար այլ և այլ թղթեր ալ գրած, որոնք ամենքը Պատճառ խնդրոյ միաբանութեան կը կո-

չուին։ Ցունաց Ալեքս իշխանը՝ որ Կիռ Մանուէլ կայսեր փեսայն էր, Շնորհալւոյն հետ տեսութիւն մը ընելով 'ի Կիլիկիա, երկար խօսակցութիւն եղաւ մէջերնին այս կարեւոր խնդրոյն վրայ. ու ետքը իշխանը աղաչեց որ բերնով խօսածները 'ի գիր անցընէ; և ասանկով սկսան թղթակցութիւնքն։ Ի Շնորհալւոյն գրուած թղթերը՝ թէ 'ի դիմաց եղբօրը և թէ իր կողմէն ասոնք են.

1. Թուղթ առ մեծ իշխանն Ալեքս՝ փեսայ կայսեր, Հայոց ՈԺԴ (1165) թուականին գրուած, այսպիսի սկզբնաւորութեամբ։ «Բանիւք դուզնաքեայ իմն խօսելով». յորում նախ համառօտիւ Հայաստանեայց եկեղեցւոյ հաւատոյ դաւանութիւնը կ'ընէ, ու ետքը Յունաց կողմանէ առարկուած այլ և այլ տարակոյսներուն պատասխանը կու տայ յաղագս կարգաց եկեղեցւոյ և տօնից։ Այս թուղթը ընդունելով Ալեքս, երբ իրեն իշխանութեան համար սահմանուած ատենը լմընցաւ՝ 'ի Կոստանդնուպոլիս դառնալով՝ Մանուէլ կայսեր ներկայացոյց այն թուղթը. որ զարմացաւ, կ'ըսէ պատմիչը, տեսնելով այն խօսքերուն մէջ պարունակուած իմաստից զօրութիւնը. անոր համար փութաց արձըկել պալատին ներքինեաց մէկը, և թուղթ մը տուաւ անոր ձեռքը, ուղղեալ առ Գրիգորիս կաթուղիկոս, որպէս զի հրաման և հաւանութիւն տայ իւր եղբօրը՝ երթալու 'ի Բիւզանդիոն առ ինքնակալն։

2. Թուղթ առ կայսրն Մանուէլ, պատասխանն առ Գրիգորիս կաթուղիկոս գրուած թղթին, որ այն ատեն վախճանած էր։ Շնորհալին ծանուցանելով իւր եղբօրը մահը, կ'իմացընէ թէ հայրապետական զբաղմանց յաճախութիւնը չեն ներեր իրեն թագաւորին փափաքը կատարել։ Բայց կ'իմացընէ իւր կատարեալ հաճութիւնը առաջարկուած միաբանութեան համար, ու այս թղթին մէջ ալ Հայաստանեայց եկեղեցւոյ վարդապետութեանցը և աւանդութեանց վրայ խօսելով՝ կը լմընցընէ գիրը, յիշեցընելով թէ ինչպէս ջանացողաց հարիւրապատիկ կը

պտղաբերեն աւետարանական սերմանց արգասիք՝ սէրն ու խաղաղութիւնն։ Կայսրն ընդունելով այս թուղթը, և միշտ զարմանալով նամակագրին իմաստուն խօսքերուն վրայ, ինքն ալ ուրիշ գիր մը գրեց, ու Թէորիանէ ճարտար իմաստասիրին ձեռքը տուաւ, որ անձամբ երթայ առ Հայրապետն և թուղթին պակասը բերնով լրացընէ։

3․ Այն ատեն Շնորհալին ուրիշ երկրորդ թուղթ մը գրեց առ Մանուէլ կայսր, և որովհետև Յոյնք թէ՛ կայսեր թղթովը և թէ Թէորիանեայ բերնով այլ և այլ տարակոյսներ հաներ էին Հայաստանեայց եկեղեցւոյ դաւանութեանն ու կարգաց համար, հարկ կ՚ըլլար Շնորհալւոյն այս նիւթերուն վրայ դարձեալ գրել, 'ի խընդրոյ նոյն Թէորիանեայ։

4․ Դարձեալ առ կայսրն երրորդ համառօտ նամակ մը, յորում կը ցուցընէ Շնորհալին թէ Հայերը ի՛նչ մըտքով մի բնութիւն կը դաւանին 'ի Քրիստոս, ըստ վարդապետութեան սրբոյն Կիւրղի։

5․ Նոյն խնդրոյն վրայ դարձեալ թուղթ մը առ Միքայէլ պատրիարքն Յունաց, ընտիր ու գեղեցիկ շարագրութեամբ։

6․ Եւ որովհետև այս միութեան խնդիրն ըստ արժանւոյն 'ի գործ դնելու համար՝ հարկ էր նաև ընդհանուր Հայաստանեայց հաճութիւնն ընդունիլ, այս պատճառաւ Շնորհալին թուղթ մը գրեց առ եպիսկոպոսունս և վարդապետս Հայոց, Աղուանից աշխարհէն մինչև 'ի Կեսարիա և յարևմտեան կողմանս, որպէս զի եպիսկոպոսունք և վարդապետք և վանահայրք միաբանելով՝ քըննեն 'ի Յունաց առաջարկուած միութեան խնդիրը, և անանկ պատասխանեն։ Բայց երանելին այն թղթոյն պատասխանը չընդունած, նոյն տարին փոխեցաւ առ Քրիստոս (1172) յամսեանն օգոստոսի։ Զոր լսելով կայսրն՝ հառաչեց ու ըսաւ. «Մեծ ու արթուն զգայարան մը

*վերցուեցաւ այսօր Աստուծոյ եկեղեցիէն. Հայաստանեայք զրկուեցան իրենց կրկին Լուսաւորչէն » 1։*

* * *

*Շնորհալւոյն երկասիրութիւնքը. — Ոչ միայն իբրև հայրապետ եկեղեցւոյ՝ մեծարգոյ և սիրելի է Շնորհալւոյն անունը, այլ իբրև ընտիր մատենագիր մըն ալ՝ դպրութեանց պատմութեանը մէջ նշանաւոր տեղ գրաւած է։ Իրեն աթոռոյն և նախնեացը արժանաւոր է՝ երբոր պաշտամանը և հոգւոց փրկութեան նախանձովը վառուած՝ թուղթեր կը շարագրէ, և իւր վիճակին ամէն կողմերը կը տարածէ փրկարար վարդապետութիւնն քաղցր և հաճոյական լեզուով. երբոր եկեղեցւոյ բեմերուն վրայէն սուրբ աւետարանաց մեկնութիւնը կ՚ընէ. և երբ հայրապետական հոգերէն ու 'ի մտածմանց ծանրացեալ մըտքին ախորժական պարապմունք մը հնարելու համար՝ հոգևոր երգեր, քերթուածներ և ինչուան հանելուկներ կը շարագրէ։*

*Այս երկասիրութեանց վրայ խօսելու համար՝ երկու դաս բաժնենք զանոնք. ոմանք արձակ, և ոմանք ալ քերթողական չափաւ։*

*Արձակ գրուածոց մէջ գլխաւորներէն կրնան սեպուիլ իւր զանազան թուղթերը. և որոնց մէջ առ ընդհանուր հայասեր ազինս և առ Յոյնս գրուածին վրայ խօսեցանք։ Հիմայ մնացածներն համառօտիւ յիշատակենք։*

*Գիր շրջաբերական 'ի կողմանս արևելից 'ի Կարս. — Շնորհալւոյն հայրապետութեանը ժամանակ՝ Կարս քաղաքին Աբրահամ եպիսկոպոսը վախճանելով, քաղաքա-*

1. Թէ Ընդհանրականն և թէ Միաբանութեան թղթերն շատ անգամ տպագրուած են, առաջինն նաև թարգմանեալ 'ի լատին լեզու և տպագրեալ 'ի Վենետիկ 'ի Ս. Ղազար յամին 1829, և ուրիշ գործքերով մէկտեղ՝ 1833։

ցւոց առաջարկութեամբ և բարի վկայութեամբ անոր յաջորդ խնդրուեցաւ Խաչատուր անունով քահանայ մը։ Շնորհալին քննելով անոր վարքը, և իմանալով արժանաւորութիւնը, եպիսկոպոս ձեռնադրեց զինքը. ու իր վիճակը ղրկելու ատենը՝ մասնաւոր շրջաբերական գիր մը տուաւ ձեռքը, օրհնութեան նամակ մը. որուն մէջ կ'իմացընէ նորընտիր այցելուին գալուստը, և իր հայրագութ սրտին և խոհական իմաստութեանը արժանաւոր խրատներ կու տայ քաղաքացւոց, թէ՛ անոր և թէ իրարու հետ վարուելու համար։

*Բանն մխիթարութեան առ վտանգեալսն մարմնով.* — Շնորհալւոյն հայրապետութեան օրերուն՝ դժնդակ ուրկութեան ախտ մը երևցաւ բոլոր Եդեսիա քաղաքին մէջ. ու բնակչաց մէջ ճարակելով՝ առողջ մնացողները չէ թէ միայն լոկ նախապահեստ զգուշութեան համար սկսան հեռու կենալ անոնցմէ, հապա նաև այն հիւանդութիւնը աստուածային պատուհաս մը սեպելով՝ սկսան նախատել ու արհամարհել բռնուածները։ Անոնք ալ ցաւագին ու վշտահար սրտով գանգատանաց նամակ մը գրեցին առ Ներսէս, իմացընելով իրենց խեղճ վիճակը։ Ընդունեցաւ Շնորհալին անոնց թուղթը, ու իրեն որդեգորով սրտին բնական սիրով ու գթով՝ այն խեղճութեան և թշուառութեան վրայ մինչև յարտասուս խանդաղատելով, սրտաշարժ գրչով ու լեզուով մխիթարութեան նամակ մը գրեց անոնց։

*Յաղագս Արևորդեացն դարձի.* — Սամոստիա քաղաքին Թորոս քորեպիսկոպոսը՝ իր քահանայակիցներովն և իշխանաց համախոհութեամբ թուղթ մը գրեց առ Ներսէս, ծանուցանելով թէ ինչպէս իրենց քաղաքին մէջ բնակող Արևորդիք՝ հեթանոսական կրօնքէն հրաժարելով, կը փափաքին քրիստոնէական ճշմարտութեան հետևիլ. Ներսէս պատասխանը գրեց, իմացընելով թէ այդ Արևորդիքը եկան մինչև առ ինքն ալ, և նոյն խնդիրքն ըրին։ Այս առաջարկութեան վրայ՝ մեծ ուրախութիւն ունեցաւ Ներ-

սէս. որովհետեւ Արեւորդիք՝ ազգաւ հայ էին, ու իրենց մէջ ասորութիւն եղած էր իբրեւ Աստուծոյ պաշտօն մատուցանել արեւու եւ բարտի ծառոց. եւ թէպէտ սուրբ Լուսաւորիչ իւր քարոզութեանն ատեն շատ աշխատեցաւ զանոնք 'ի հաւատս ածելու համար, բայց վախճանին չկրցաւ հասնիլ. որովհետեւ անոնք հաստատուն մնացին իրենց մոլորութեանը մէջ։ Բայց կ'երեւնայ թէ ատեն անցնելէն ետքը՝ մերձակայ քրիստոնեայ ժողովուրդներէն ալ այլ եւ այլ աւանդութիւններ առնելով, կռապաշտ թիւրութեանց հետ՝ քանի մը քրիստոնէական պաշտամունք ալ խառն կը յարգէին։ Շնորհալին այս թղթին մէջ ուրախութիւնը եւ սրտին գոհութիւնը յայտնելէն ետքը, զանոնք աշակերտելու եւ ընդունելու կերպը կը սորվեցնէ։

**Առ Փօղոս քահանայ հայկազն.** — Շատ անգամ առիթ ունեցանք յիշելու թէ ինչպէս Շնորհալւոյն եւ իւր նախորդին ժամանակ՝ թէ 'ի Յունաց եւ թէ 'ի Հայոց բանակցութիւնք կ'ըլլային. եւ հաւատոց միաբանութեան փափաք մը ու ջանք կ'երեւնար։ Նոյն ատենները՝ Փօղոս անունով հայկազն քահանայ մը որ 'ի Կոստանդնուպոլիս կը բնակէր, ու ազգութիւնը ուրանալով՝ հոռոմացած էր կը բամբասէր մեր ազգը, եւ ձեռքէն եկած ամէն հնարքը կը բանեցընէր այն միաբանութեան խորհուրդը ընդունայնացընելու համար. եւ իր ջանից արդիւնքը կ'իմացընէր 'ի Հայաստան եղող իւր մէկ համամիտ գործակցին՝ որ Սամուէլ կը կոչուէր։ Իմացաւ Ներսէս անոր այս ընթացքը, եւ յանդիմանողական գրով մը ուզեց զինքը յուղղութիւն բերել։

**Առ ժպիրհ ոմն.** — Այս վերնագրով երեք թուղթ ունի Շնորհալին առ ոմն ժպիրհ եւ յանդուգն, որ ինչպէս կ'երեւնայ, սրբոյն միաբանասէր եւ աստուածահաճոյ ջանից հակառակելով, բաւական չէր սեպեր անոր դէմ 'ի ծածուկ մենքենայել, այլ իւր մտածմունքն եւ թշնամանքը կը համարձակէր մինչեւ առ սուրբն հասցընել՝ յանդի-

մանրողական և նախատալից գրերով։ Հեզութեամբ՝ բայց այսպիսի լրբութիւն մը ջախջախելու ուժով և զօրութեամբ գրուած են Ներսիսի այս թուղթերը։

**Առ Ստեփանոս ոմն.** — Ստեփանոս անունով մէկը խնդրած էր 'ի Շնորհալւոյն որ Դաւիթ Անյաղթի Սահմանաց գրքին վերջին գլխոյն մեկնութիւնը իրեն շնորհէ. Ներսէս կատարեց անոր խնդիրքը, և համառօտ նամակաւ ձեռքը հասուց։

**Առ երջանիկ վարդապետն Գէորգ**, երեք համառօտ թուղթեր։

*Հրեշտակաց Երրորդ.* — Եկեղեցւոյ գլխաւոր վարդապետ մը, Արիսպագացին, իր երկնասլաց և աստուածապարգև հանճարը գործածեր էր 'ի դրուատել այն երկնաւոր զօրութիւնքը՝ որ պաշտօնեայք են աստուածութեան, և պահապանք մարդկային ազգի։ Նոյն նիւթին վրայ գրեց նաև Շնորհալին գեղեցիկ ներբողեան մը, Արիսպագացւոյն հետևելով, և շատ անգամ անոր իմաստները մէջ բերելով։ Ասկէց է՝ Շնորհալւոյն միայն աս գրուածին մէջ երևցած յունաբանութիւնը և խրթնութիւնը։ Ներբողէն զատ՝ ոտանաւոր գովեստ մըն ալ շարագրած է Շնորհալին, ու երկուքն ալ 'ի Հռոմկլայ երկասիրած, Հայոց ՈԺԱ թուականին, իւր եղբօրը, Գրիգորիս կաթուղիկոսին խնդրանօքը։

**Մեկնութիւն Բարձրացուցէք.** — Դաւիթ Անյաղթին վրայ խօսելու ատեննիս յիշատակեցինք թէ սուրբ Խաչին վրայ ներբող մը շարագրած է, « Բարձրացուցէք զտէր Աստուած մեր » սկզբնաւորութեամբ։ Բայց որովհետև Դաւթի ոճը իւր խրթնութեամբը շատերուն անիմանալի եղած էր, ուստի Հաղբատայ վանից առաջնորդ Վարդան վարդապետ խնդրեց 'ի Շնորհալւոյն որ այն ճառին մեկնութիւնն ընէ. և թէ ինչ առթով եղած է անոր գրութիւնը։ Շնորհալին ալ կատարեց խնդիրը։

**Մեկնութիւն Մատթէի.** — Մատթէոս աւետարանագրին մեկնութեանն ալ ձեռք զարկած էր Շնորհալին՝

իւր կենաց վերջի տարիները, և չկրցաւ գլխաւորել, կէս մը օրհասին վրայ հասնելովը, կէս մըն ալ իւր հայրապետական հոգոցը պատճառաւ։ Ընդհանրապէս Ոսկեբերանի հետևող եղած է սուրբն՝ իւր այս աշխատասիրութեանը մէջ. այն ոսկի բերանին բղխածն՝ իր արծաթափայլ բանիւ և գրչով յերիւրած յարմարած է հասարակաց մտաց դիւրահաս, և միջակ չափով. իբրև անարուեստ արուեստով մը, որ ըղձանչելի պարզութեան հետ՝ մտաց յագուրդ կու տայ և սրտի հանգիստ։ Այս գործս Շնորհալւոյ գլխաւոր գործոց մէկն է, և ալ աւելի պիտի ըլլար, եթէ այնու ոճով շարունակուած մինչև 'ի վերջ աւետարանին՝ մեզի հասած ըլլար. սակայն իր գըրածն և մեկնածն մինչև յ'17 համար Ը գլխոյ Մատթէոսի հասած և հոն դադրած է. և այսպէս գտաւ հարիւր տարի վերջը՝ Կիրակոս պատմիչ. որ « ոչ գիտեմ, կ'ըսէ, թէ վասն ինչ պատճառի խափան եղև », շարունակութիւն մեկնութեանն. յիսուն տարի ետքն ալ (յամին 1316) մեծ բանաւէրն Յովհաննէս Երզնկայեցի շատ քննեց՝ բայց չկրցաւ ստուգել թէ ինչո՞ւ անկատար մնացեր էր Շնորհալւոյն երկասիրութիւնն. և թէպէտ « ոմանք զմահն առացին խափանումն, և այլք զհոգ հայրապետական աթոռոյն, և կէսք՝ թէ գրեաց և չէ 'ի միջի, բայց սոքա ինձ ոչ եղեն հաւանելի » կ'ըսէ. և իր առանձին կարծիքը չյայտներ. բայց միայն կ'իմացընէ որ իրմէ առաջ ոմանք ձեռք զարկեր էին շարունակելու Շնորհալւոյ սկսածը. « սակայն ոչ էր կարգաւոր որպէս սրբոյն » [1]։ Յիշատակարանի մը մէջ ալ կը կարդանք. « ... Արդ թէպէտ ամենայն մեկնիչքն հարքն սուրբ և երանելիք, որպէս Ոսկիբերանն և Եփրեմ, և այլք բազումք եղեն մեկնիչք սրբոյ աւետարանիս, ոմն յերկար և ոմն կարճ. բայց ոչ լինէր պիտանի յաղագս ձանձրութեան ընթերցողաց։ Զայս տեսեալ երանեալ հեզահոգի պա-

1. Շնորհալի և Պարագայ իւր, 118։

տրիարգն Հայոց տէր Ներսէս Կլայեցին, հարկեալ 'ի սրբոց վարդապետաց՝ սկիզբն արար հաւաքումն մեկնութեանն սորա. և ոչ կարաց աւարտել. վասն զի հանդերձադիրն կոչեաց զնա 'ի հանգիստն անվախճան... և էր այս մեծ աղէտ տարակուսանաց բանաւորաց անձանց»։

*Մեկնութիւն կաթողիկեայց.* — Նոյնպիսի ոճով և լեզուով, բայց աւելի համառօտութեամբ մեկնած է Շնորհալին նաև եօթն կաթուղիկեայ թղթերը, հետևելով Ոսկեբերանի, Կիւրղի, Բարսղի, Գրիգորեանց և այլոց վարդապետաց։ Գաղափարողաց մէկը սապէս կը դրուատէ Շնորհալւոյն այս գրուածքը. «Ոմն 'ի սրբազանից առաջնորդաց՝ հայրապետական արժանացեալ շնորհի, և վարդապետական վիճակեալ աշտիճանի՝ տէր Ներսէս, մականուամբ Կլայեցի, հմտասիրացն հետևելով պարուց, երկասիրաբար ընթերցմամբ աշխատեալ 'ի մատեան հոգեկիր արանցն, աստուածազան գլխաւորաց առաքելոցն դասուց, մանրամասն խուզմամբ եդեալ առընթեր գլուծումն տեսութեան ասացելոցն, գեղեցկանկար բառիւք, համառօտ յարմարութեամբ. ըստ կարգի երջանկացն դասուց պաւետիկոսաց սրբոց, 'ի հրահանգ կրթութեան եկեղեցւոյ պաշտաման»[1]։

Գրչագիր մը հետևեալ խորագիրը կը դնէ այս գրուածքին. «Տեառն Ներսեսի Հայոց կաթուղիկոսի ա-

1. Ուրիշ յիշատակագիր մըն ալ կ'աւանդէ թէ Գրիգորիս կաթողիկոսն, զոր «մեծ գիտնական և վսեմափայլ առաջնորդ» կը կոչէ, միաբանութ նամակով ու թախանձանօք հրաւիրեց 'ի Հռոմկլայ՝ Տիրացու Ստեփանոս անունով ծերունի քահանայ մը, որուն իմաստութեան և փութոյն վրայ մեծ համարում կը ցուցընէր կաթողիկոսը։ Ծերունին իւր հոգևոր տիրոջը հրամանին չկարենալով դէմ կենալ, յանձն առաւ այն հանապարհորդութիւնը, հետը առնելով նաև Յակոբ անունով հարտար ընկերակիցը. հոն տեսնելով Շնորհալւոյն աշխատասիրութեամբ մեկնուած կաթողիկեայ թղթերը, հրամայեց Յակոբայ որ անոնց գաղափարը առնէ։ Եւ այդ օրինակը կը գտնուի Մխիթարեանց մատենադարանը 'ի Վիեննա։

բարեաւ Մեկնութիւն առաքելական բանին ». և 'ի վերջ գրոցն կը յաւելու. « Առաջին գլուխ ընդդէմ Նոցա՝ որք ասեն ոչ գոլ Աստուած: Երկրորդ ճառ՝ թէ մի է Աստուած. (Երրորդը չի կայ): Չորրորդ գլուխ ընդդէմ կռապաշտիցն: Գլուխ հինգերորդ ընդդէմ Մանեայ »:

*
* *

**Շնորհալւոյն մանր երկասիրութիւնները.** — Ասոնց մէջ առաջին կրնայ սեպուիլ իրաւամբ՝ իւր տեսակին մէջ անհամեմատ « Հաւատով խոստովանիմ » հանրածանօթ գերազանց աղօթքը. քսանևչորս տուն՝ օրուան նոյնչափ ժամուց համար՝ ամէն հասակի ու պիտոյից յարմար աղօթք մը, և որ շատ անգամ հրատարակուած է նաև բազմալեզու տպագրութեամբ:

Շնորհալւոյն երկասիրածն է նաև սրբոյն Սարգսի վըկայաբանութիւնը: Հաղբատայ ուխտին առաջնորդ Գէորգ վարդապետը թուղթ մը գրեց առ Ներսէս, փափաքելով սրբոյն Սարգսի հարազատ վկայաբանութիւնն ունենալ, Ան ալ Միխայէլ անունով ասորի քահանայի մը յանձնեց, որպէս զի ասորական բնագրէն թարգմանէ 'ի հայ. բայց որովհետև թարգմանիչը՝ հայկական լեզուի հարկաւոր հմտութիւնը չունէր, անոր համար Շնորհալին՝ անոր անհարթ ոճը մաքուր և ընտիր հայերէնի վերածեց, իւր եպիսկոպոսութեանը ժամանակ: Կը վկայէ և յիշատակարանն. « Թարգմանեցաւ ճառս յասորւոցն 'ի մերս 'ի ձեռն Միխայելի ուրումն կրօնաւորի քահանայի ասորւոյ, և յարմարեցաւ ըստ կարի մերում լեզուի չորագրութեամբ 'ի Ներսիսէ եպիսկոպոսէ յեղբօրէ կաթուղիկոսի Հայոց Գրիգորիսի, 'ի թուաբերութեանս Հայոց ՈԷ »:

Նոյն աշխատանքն ունեցաւ նաև Ոսկեբերանի Ներբողին վրայ, զոր խօսած էր 'ի պատիւ սրբոյ Լուսաւորչին. և զոր կ'ակնարկեն՝ Շնորհալւոյն ինքնագիր յիշատակարանին հետևեալ խօսքերը. « Ի թուականիս ՇՂ

թարգմանեցաւ ճառս 'ի յունականէն 'ի մերս, 'ի ձեռն Աբրահամու դրամատիկոսի, 'ի հին և յեղծ օրինակաց. իսկ յարմարեցաւ ըստ բանից դպրութեան և բառից՝ յիմոյ նուաստութեան Ներսիսի, հրամանաւ տեառն իմոյ և հարազատի՝ Գրիգորիսի Հայոց կաթուղիկոսի »։

**Խորան ժամերգութեան.** — Շնորհալւոյն ժամանակ եկեղեցական արարողութեանց մէջ այլ և այլ նորաձևութիւններ ու թիւրութիւնք մտած էին, զորս հարկ՝ էր ուղղել։ Եւ որովհետև Մաքենոցաց ու Թեղենեաց վանքերուն մէջ աւելի հաւատարմութեամբ կը պահուէին այն արարողութիւնք, Շնորհալին հմտացաւ անոնց, ու ըստ այնմ իրենց առջի ձևին վերածելով՝ մասնաւոր խրատ մըն ալ աւանդեց անոնց զգուշաւոր պահպանութեանն համար։ Գրուածքիս խորագիրն է. «Կարգաւորութիւնք եկեղեցւոյ և արարողութիւնք ժամատեսյալ, մինչև ցիններորդ ժամն, տեառն Ներսիսի Հայոց կաթուղիկոսի, որ ետ բերել 'ի մեծ ուխտէն Մաքենեաց. և զպակասն ելից և զսխալն ուղղեաց »։

Հետևեալ քանի մը տողքն յայտարարք են իր ամբիծ և եռանդուն սրտին և երկիւղած բարեպաշտութեան.

« Նորոգեցոյս ի քէն, Յիսուս,
Եւ ի մեղաց խաւարեցոյս
Երբեմըն քեզ հարսնացեալս
Եւ այժմ ի քէն այրիացեալս.
Բարունաքար ծագեա յիս լոյս
Եւ անհետ զբարեացըն բոյս,
Սիրել զփեսայդ իմոյ հոգւոյս
Ըստ պարագրեալ տառիս երգոյս։
Երանուհւոյ հարսին լուսոյս
Լինել նըման սուրբ աղաւնոյս
Սրբել մաքուր ըստ նըմանոյս,
Ի կրից մեղաց ախտացեալս։
Ի քեզ հըղել ինձ մեռեալս
Եւ կեանս առնուլ տարագրեալս
Երեւել ի յոյս կենդանոյս
Յիմանալիդ ծագել ի լոյս »։



*Շնորհալի քերթող.* — Ոչ միայն արձակ, այլ նաև զանազան քերթողական երկասիրութիւններ թողուցած է մեզի Շնորհալին։ Բանաստեղծութիւնը՝ որ քիչ յարգ ու յաջողութիւն գտած է մեր հին դպրութեանց պատմութեան մէջ, Ներսէսի գրչովը աւելի ծանօթացած ու հաստատուն կանոնի մը մէջ մտնելու բաղդն ունեցեր է. և թէպէտ աշխոյժն ու խանդը, որոնցմով քերթողական լեզուն սրտաշարժ ու ազդու կ'ըլլայ, նուազ է 'ի Շնորհալին քան թէ 'ի Նարեկացին և 'ի Մագիստրոս, բայց լեզուի գեղեցկութիւնը, իմաստից փափկութիւնն և հաստատուն կանոն մը՝ աւելի կը տեսնուի իր գրուածոցը մէջ։ Մեծ ու գլխաւոր թերութիւն մը՝ յանգի միակերպութիւնն է, զոր յԱրաբացւոց սովրելով՝ սկսած էր գործածել նաև Մագիստրոս. բայց աւելի նմանաձայնութիւն և միակերպութիւն մը տուաւ անոր Շնորհալին, և անով թերևս քիչ մը տաղտկալի ըրաւ իւր ոճը։ Սակայն և այնպէս պէտք է որ յարգի սեպուին Ներսէսի այս գրուածները. վասն զի իրեն ժամանակը՝ բանաստեղծութեան դար չէր. ու երբ բոլոր աշխարհք զինուց և աշխարհակալութեանց զբաղած՝ արհամարհոտ մոռացութեան մը դատապարտած էր զքնար, անոր ձայնը նուաղ՝ բայց ախորժական եղանակով Հայաստանի մէջ կը հնչեցընէր Շնորհալին. ու կը լսեցընէր աստուածային պաշտամանց մէջ՝ իրեն սիրելի շարականներովը, ու 'ի ժողովրդեան՝ շարագրած ընտիր վիպասանութիւններովն, տաղերովը, ու զանազան՝ սրտի ու մտաց հետ խօսող՝ երգերով և տաղաչափութեամբք. ինչուան Հռոմկլայի բերդին պահպանութիւնն ընող զինուորք, պատերազմի փողոց ահաւոր ձայներէն լռելով, ու հայրենեաց ապահովութեանը հա-

մար հսկելու ստիպուած գիշերային ժամերը՝ անոր շարագրած աստուածազգեցիկ երգերովը կ'անցընէին [1]։

Ազգային յետ դարուց քերթող մը, ի վերջ իր հանելուկներուն, ակնարկելով զՇնորհալի՝ կ'ըսէ.

« Իշխան մի կայր յեկեղեցի,
Ի 'ի ծայրագոյն աստիճանի.
Քան զոր 'չեղեւ ոք աւելի
Երգիչ տաղի և շարականի »։

Այս քերթողական երկասիրութեանց մէջ ամենէն նշանաւորն է

Եդեսիոյ ողբը. — Եդեսիա՝ Միջագետաց շահաստան քաղաքը, Աբգարու թագաւորութեանն աթոռը, և Քրիստոսի անձեռագործ դաստառակին պատճառաւ նուիրական սրբավայրը, 1144 Թուականին՝ Հագարացւոց Զանգի ամիրային զինուցը չկարենալով դիմանալ, ստիպուեր էր իր անկախութեանն ու հաւատոց թշնամին՝ իր պարսպաց մէջ ընդունիլ։ Ահաւոր և դժնդակ կոտորած ու աւերմունք մը՝ կարապետ ու հետևանք եղան այս յաղթութեանը. բնակչաց շատը՝ անգութ և անյագ սուսերաց մատնուեցան, եկեղեցիք կործանեցան. ու քաղաքը աւարեցաւ, ու արհաւրօք և արեամբ ծածկուեցաւ այն՝ որ քերթողին գեղեցիկ ստորագրութեամբ ու բարատանութեամբ՝

« Գեւորգ Նըման վըտակ հոսէր,
Ըղբուրատանս արբուցանէր.
Ծովն 'ի մէջն իմ ծածանէր,
Քաղցրիկ օդովըն ծիծաղէր...

1. « Արար նա երգս և ուսոյց իսկ այնոցիկ որք պահէին զբերդն (Հռոմկլայու), զի փոխանակ վայրապար ձայնից զայն ասասցեն, որոյ սկիզբն է 'ի սաղմոսէն Դաւթի. Յիշեցի 'ի գիշերի զանուն քո տէր, և այսպէս խորհրդաբար ըստ կարգի, Զարթիր փառք իմ, որ այժմ ասի յեկեղեցի՝ 'ի ժամ գիշերային պաշտաման ». Կիրակոս պատմիչ։

Սաղարթաբեր ծառովք ծաղկէր
Առատագոյն պըտղաւէտէր.
Տերեւախիտ հեղիկ շարժէր,
Հոտ անմահից յիւրմէ բուրէր
Նարգոս քըրքում ինձ ընծիւղէր,
Վարդ մանիշակ վերաբերէր,
Առաւօտուն ցօղն իջանէր,
Ոսկէնըման հաճանչ փայլէր.»:

Այս սրտաճմլիկ լուրը հասաւ մինչև 'ի Հայաստան, և անոնց թշուառութեան աղէտք՝ 'ի գութ և 'ի կարեկցութիւն շարժեցին զամենքը. յորոց Ապիրատ իշխանն՝ Շնորհալւոյ եղբօրորդին՝ փափաքելով այն ցաւալից կործանման ու թշնամեաց անգթութեան տխուր յիշատակը կենդանի պահել ապագայից մտքին ու սրտին մէջ, խնդրեց 'ի Ներսիսէ որ իրեն բանաստեղծական աշխոյժը բանեցընէ այս նիւթին վրայ: Անոր խնդրանացն արգասիք է Եդեսիոյ ողբը, 1053 տուն քերթուած:

Չորս տպագրութիւն ունեցած է այս քերթուածս. մէկն 'ի Մատրաս (1810), 'ի Փարիզ հանդերձ ծանօթութեամբք 'ի Սէն-Մարթէնէ 'ի 1828. հետեւեալ տարին ալ 'ի Թիֆլիզ. 'ի Կալկաթա (1832): Առաջին կէսն 1358 տող՝ Տիւլորիէ ընծայեց գաղղիական թարգմանութեամբ 'ի Recueil des Croisades երկասիրութեան մէջ:

* * *

Յիսուս որդի. — Հին և Նոր կտակարանի համառօտ պատմութիւն մը կրնայ սեպուիլ այս ընտիր և սրտաշարժ ոտանաւոր քերթողական երկասիրութիւնը, երեք մասն բաժնուած, և ընդհանրապէս գըլխական աղօթքի և մաղթանաց ձեւով և լեզուով շարագրուած: Կամաւ քերթողաբար գրած է այս երկասիրութիւնս Շնորհալին, որպէս զի ընթերցողաց ձանձրութեան առիթ չտայ. այլ մանաւանդ զուարճութեամբ կարդալու, և այն՝ իրենց հոգե-

ւոր պտղովը։ Հայոց Ո (1151) Թուականին շարադրուած է այս գիրքս, և յիշատակարանին մէջ կը յիշատակէ հեղինակը իւր ծնողքը և Վասիլ եղբայրը, և քոյրն իւր Մարիամ ու անոր Վահրամ որդին։ Եւրոպացի հայերէնագիտաց մէկը, Յակոբ Վիլլոտ, մատեան արդարև աստուածային կը կոչէ այս գիրքը։

Նման երկասիրութիւն մըն է նաև **Բան հաւատոյ** կոչուածը։ Հայոց վեցհարիւր Թուականին՝ երբ Յունաց իշխանութիւնը կը տկարանար, ու անոր հակառակամարտ Հագարացւոց զօրութիւն մը բոլոր աշխարհին կը տիրապետէր, այն նեղութեան ժամանակ Գրիգորիս կաթողիկոս՝ Ծովք դղեկէն ելլելով՝ Հռոմկլայի ամրոցը կ'ապաւինէր, իրեն ընկերակից ունենալով զեղբայրը՝ Շնորհալին։ Այն առանձնութեանը մէջ շարագրեր է Ներսէս այս խրատական ու ջերմեռանդ գրուածը, նուիրելով դարձեալ իւր եղբարցը և ծնողաց և համատոհմից յիշատակին։

**Յաղագս երկնից և զարդուց նոցա.** — Մխիթար անունով բժշկապետ ու աստեղագէտ մը, որ է նոյն Հերացին, խնդրեց 'ի Ներսիսէ որ երկնաւոր զարդուց վրայ ոտանաւոր քերթութիւն մը յօրինէ։ Այս վախճանաւ գրուած են երկու չափաբերական գրուածներն, յորոց երկրորդին տանց սկզբնագիրքն կը յօդեն, « Մխիթար բըժիշկ, ընկալ 'ի Ներսիսէ զայս բան »։

**Վիպասանութիւն.** — Հայոց համառօտ պատմութիւնը, ութոտեան ոտանաւորի վրայ առնուած, հեղինակին պատանեկութեանը գրուածքն է. անոր համար ոչ ուրիշ քերթողական երկասիրութեանցն աշխոյժը և ոչ ալ արուեստն կ'երևայ ասոր մէջ. Թէպէտ և իբրև պատմութիւն՝ ունի իրեն մասնաւոր արժէքն ու պատուականութիւնը։

Շնորհալին ունի նաև ուրիշ այլ և այլ մանր ոտանաւոր գրուածներ, որոնց միայն անուանց յիշատակութեամբը գոհ կ'ըլլանք. և են « Իմ եղական » և « Միշտ էիդ », զոր դարձեալ 'ի խնդրոյ Հերացւոյն երգած է.

«Ներբող սրբոյ խաչին», որ Անյաղթին՝ նոյն նիւթին վրայ գրած ճառին ոտանաւոր յարմարութիւն է. «Մաղթանք առ սուրբ հրեշտակս», 'ի խնդրոյ Գրիգորիսի կաթուղիկոսի. «Ի Սողոմոն, Ցիշատակարան գրոցն Սողոմոնի», այլ և այլ տաղեր, թուղթեր, խրատներ ու հանելուկներ։ Ասոնցմէ դուրս են շարականներն։

Այս սուրբ և սիրելի հայրապետին բաւական ընդարձակ կենսագրութիւն մ'ալ հասած է մինչև առ մեզ՝ իր անմահախառն մահուանէն քիչ ետքը գրուած, հետևեալ խորագրով. «Պատմութիւն վարուց սրբոյն Ներսեսի կաթուղիկոսի Հայոց և տիեզերալոյս իմաստասիրի՝ սկսեալ 'ի նախնեաց անտի նորին»։ Մեզի անուամբն անծանօթ հեղինակը գրած է այս ընտիր երկասիրութիւնը «'ի հրամանէ և 'ի յորդորմանէ սուրբ վարդապետին Յովհաննու... 'ի ժամանակս քրիստոսապսակեալ բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթումոյ յաշխարհիս Կիլիկեցւոց, որ երրորդ է 'ի Լեւոնէ բարեպաշտէ առաջնոյ արքայէ այսմ նահանգի»։ Հրատարակուած է 'ի Վենետիկ (1854) 'ի շարս Հայկական Սոփերաց (Հատոր ԺԴ)։

Ուրիշ յիշատակարան մը՝ գրչագրողի վարուց սրբոյս. «Գրեալ ի թուականութեանս Հայոց ՋԻԲ. զկնի հարիւր և մի ամի վերափոխման սրբոյն Ներսիսի ի հրամանէ հօր. Ստեփաննոսի աստուածազարդ ծերոյ և սպասաւորի սուրբ ուխտիս Ականց անապատիս շարագրեցաւ պատմութիւն սուրբ հայրապետին Ներսիսի և իւրոց նախնեացն՝ ճշմարտաճառ և անսուտ պատմութեամբ. ի ժամանակս Քրիստոսապսակեալ բարեպաշտ թագաւորին Հայոց Լեւոնի որդւոյ թագաւորին Հեթմոյ, յաշխարհիս կիլիկեցւոց»։

Շնորհալի հայրապետին գրուածոց բազմաթիւ ձեռագրութեանց և թարգմանութեանց վրայ տես 'ի ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ յ'էջ 342–344. 456–462. 518–528։ Իրեն եկեղեցական և մատենագրական վարուց և գործունեայ վաստակոց վրայ լսելի ու հետաքրքր-

նական տեղեկութիւն առնուլ փափագողք՝ կը գտնեն զայն մեծ հմտութեամբ ամփոփուած Շնորհալի և Պարագայ իւր կոչուած Ալիշան Հ. Ղեւոնդ վարդապետի երկասիրութեան մէջ՝ հրատարակեալ 'ի Ս. Ղազար Վենետիկ (1873)։

# ԻԳՆԱՏԻՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ

---

*Իգնատիոս և իր աշակերտակիցքը։ — Պահլաւունի կաթողիկոսին առաջարկութիւնը։ — Ղուկաս աւետարանչի մեկնութիւն։ — Իգնատիոսի ոճը, լեզուն և հմտութիւնն այս երկասիրութեան մէջ։ — Ձեռագրին տպագրութիւնը։*

Գրիգորի կաթուղիկոսի Պահլաւունւոյ և Ներսիսի Շնորհալւոյ և Սարգիս վարդապետին աշակերտակիցն էր Իգնատիոս, որ փառօք իւր ուսումնական ընթացքը կատարելով Կարմիր վանքին մէջ, Սեաւ լերան Շափիրին առաջնորդ կամ վանքը առանձնացաւ։ Ու երբ խոնարհութեամբ կը ջանար ինքզինքը այն լռութեան մէջ ծածկել, Պահլաւունի կաթուղիկոսին հետազօտ աչուըները գտան զինքը, և անոր հմուտ, վարժ և աստուածաբան գրչին յանձնեց Ղուկասու աւետարանչին մեկնութիւն մը շարագրել։ Իւր մտաց չափաւորութիւնը և խօսքին անբաւականութիւնը մէջ բերելով՝ հրաժարեցաւ Իգնատիոս. և երբ Հայրապետը իր ամէն ջանքովն և յորդորանքներովը չկըրցաւ զինքը համոզել, օր մը տեսլեանը մէջ տեսաւ Իգնատիոս լուսաւոր և գեղեցիկ տուն մը՝ յորում ժողվուած էին ամենայն վարդապետք, և ուզեց որ ինքն ալ մտնէ մէջերնին. բայց անոնք կ'արգելուին ու չէին թողուր, որովհետև չուզեցիր, կ'ըսէին, աւետարանի մեկնութեան

թարգմանութիւնը յանձն առնուլ, հոս մեզի հետ մասն և բաժին չունիս։ Այս տեսիլքէն ինքն իրեն եկաւ Իգնատիոս. ու իր տկարութիւնը Աստուծոյ առջևը դնելով՝ իրմէ զօրութիւն խնդրեց, և սկսաւ այս գրուածքս շարագրել։ Հաւանական կ'երևնայ թէ 1146ին արդէն աւարտած ըլլայ այս երկասիրութիւնը. վասն զի Կունդ Սարգիս որ նոյն թուականին շարագրած է համանուն համառօտ երկասիրութիւնը՝ բաց յայլոց կը յիշէ նաև զԻգնատիոս։

Վարպետ գրուածքի մը ամէն կարևոր հանգամանքը պահած է Իգնատիոս իր երկասիրութեանը մէջ. ընտիր ոճ, գեղեցիկ լեզու և մեծ հմտութիւն սրբազան գրոց։ Այս վերջիններս նկատմամբ՝ որ աստուածաբանական և մեկնողական գրքի մը համար ամենահարկաւոր է, ջանացած է Իգնատիոս յոյն եկեղեցւոյ հարց գրուածոցը կատարեալ հմտութեամբ ձեռք զարնել այս գրուածքին, մանաւանդ Ոսկեբերանի։ Միջին ոճ մը բռնած է հեղինակս. ոչ խիստ երկայն՝ որ բառից շատութեան մէջ իմաստները կորսուին, և ոչ այնչափ համառօտ՝ որ սուրբ գրոց մեկնութեան հարկաւոր տեղուանքն անբացատրելի մնան։ Ասիկայ է իրեն յատուկ ճարտարութիւնը. որով շատ անգամ այլոց երկայն բարակ բացատրածները՝ ինքը համառօտիւ քիչ խօսքի մէջ ամփոփելով կը գրուցէ. և երբեմն ալ անանկ վայելուչ կերպով կ'ընդլայնէ իր խօսքերն՝ որ ամենևին տաղտկութիւն չիբերեր ընթերցողին վրայ։ Լեզուի նկատմամբ ալ՝ ընտիր և գեղեցիկ շարագրութիւն մը ունի, պարզ և հաճոյական։

Ընտիր գրչագիր մը երկասիրութեանս կը գտնուի յԵրուսաղէմ գրեալ ի ՊԼ (= 1383) «ի մայրաքաղաքիս ընդ ափն Նաւագնաց ծովիս լատին ազգաց իշխանութեան, ընդ հովանեաւ առ ոտս Սուրբ Յակոբայ 'ի յանտիպեկի տեղն».

Այս գրուածքս կրկին անգամ տպագրուած է 'ի Կոստանդնուպօլիս 'ի 1735 և 'ի 1824։

# ՍԱՐԳԻՍ ՇՆՈՐՀԱԼԻ

---

Սարգիս Շնորհալի։ — Մեկնութիւն կաթողիկեայ թղթոց։ — Անոր համառօտութիւնը։ — Ոճը և լեզուն։ — Կարապետ վարդապետ։ — Սարգսի անծանօթ երկասիրութիւնք։

Իգնատիոսի և անոր ընկերացը աշակերտակից էր Սարգիս, անոնց հետ մէկտեղ կրթուած Ստեփանոսի ձեռացը և խնամքին տակ 'ի Կարմիր վանս։ Հասակն առնելէն ետքը՝ առանձնութեան սիրող ըլլալով՝ Սեաւ լերանց վրայ եղող Քարաշիթու վանքը քաշուեցաւ։ Հոն բոլորովին հոգևոր և ուսումնական կենաց նուիրելով ինքզինքը, սրբոց Հարց գրոց ընթերցմանը պարապեցաւ, և մանաւանդ Ոսկեբերանի հրաշալի ճառերուն։ Այն ընթերցմունքը՝ փափաք մը վառեց իր սրտին մէջ՝ նոյնպիսի ոճով ու սրտով՝ Կաթուղիկեայց կոչուած եօթն առաքելական թղթոց մեկնութիւնն ընելու. և իր այս յօժարութեանն գլխաւոր պատճառն այն եղաւ որ նման երկասիրութիւն մը չէր գտած ազգային մատենագրութեանը մէջ։

Գրութեան թուականն 1156ին կ'երևնայ, ինչպէս ինքն ալ կ'ակնարկէ. իսկ համառօտութիւնն, զոր պիտի յիշենք, տասն տարի աւելի կրտսերագոյն է ժամանակաւ. «Հայ թուականն, կ'ըսէ, յայնմ ամի յորժամ կատարեցի զհամառօտս, յիշատակ ինձ և իմոցն, և 'ի վարժումն մանկանց նորոյ առագաստի մօրս մերոյ՝ վերինն Երուսաղեմի, հնգետասան էր ընդ վեց հարիւրի»։ Տեղ մ'ալ կը յիշեցընէ թէ ծերութեան ատենն յօրինած է. «Աղաչելով, կ'ըսէ, վասն իմ ծերոյս Սարգսի զՏէր»։

Ինքնագիր յիշատակարանք Սարգսի յիւրագիր համառօտ մեկնութեան. (1166) « Յիշատակ անարժան գրչիս Սարգսի, արտադրութիւն ճառիցս այսոցիկ » ։

« ... Նական զկրկին աշխատող գրոցս ի յերկս բանք մեկնութեան նախագունիցն, և ապա ի համառաւտել ըզպիտանացուն ընթերցաւղ լուսամիտ համբակացդ, ուսումնասիրացն քրիստոսասիրաց. զորս աղաչեմ սիրով հոգւոյն և մաղթեմ նախանձելով, մի՛ անտես առնել զերկայն ժամանակաց աշխատութիւնս իմ. այլ սրբամատոյց աղաւթիւք յիշել միշտ առաջի յուսոյն մերոյ Քրիստոսի ... » ։

« Ով ընթերցասէր մանկունք եկեղեցւոյ՝ ցանկացողք վարդապետական իմաստից, որք հանդիպիք այսմ մատենի աստուածային գանձուս, և ընթեռնոյք և զաւգուտն ձեր գտանէք ի նմա և կամ գաղափար առեալ գրէք. զանձն իմ եղկելի զՍարգսի կրտսերո՛յ և մեղապարտի, որ կրկին աշխատեցայ ի սմա վասն շահի ձեր. յիշեցէք առաջի Քրիստոսի աղաչեմ » ...

« Եթէ արժանի համարիք զաշխատութիւնս իմ յիշատակի՛ որ ընթեռնոյքդ, ահա կարաւտ եմ յոյժ և արտասուաւք աղաչեմ և հեծեծանաւք մաղթեմ, և հոգւովս խնդրեմ և սրտիւ հայցեմ և բաղձանաւք ի ձեզ նայիմ. և որք յիշէքդ՝ տղաչելով վասն իմ ծերոյս Սարգսի զՏէր » ... ։

« ԶՍարգիս մեղապարտ ծառայ Աստուծոյ և զանպէտ կրաւնաւոր յիշեցէք 'ի Քրիստոս աղաչեմ » ... ։

« Յիսուս Քրիստոս, լոյս ճշմարիտ, սուրբ Հաւր Որդի. անոխակալութեամբ քո և մարդասիրութեամբ ողորմեա՛ մեղապարտ ծառայի քոյ Սարգսի կրսերո՛յ և ողորմելւոյ. և որք ընթեռնոյքդ՝ և լուսաւորիք մտաւք, և որ լսէ՛քդ և մխիթարիք սրտիւ՝ աղաչելով ասացէք, այո՛յ, ամէն, եղիցի՛, եղիցի՛ » ։

« Վասն որոյ և իմ աղաչանք են առ ձեզ եղբարք, սիրելիք Աստուծոյ, և սիրեցեալք 'ի Քրիստոսէ, և ար-

*տասուաք պաղատանք. չ'առնել անտես զերկայն ժամանակաց աշխատութիւնս իմ յերկս վաստակոյ բանիս. այլ՝ ընկալարուք ձեզ՝ 'ի փշոց վարդ և 'ի տատասկէ թուզ, և 'ի մորենոյ խաղող, և 'ի խորաձորոցն՝ զակնս պատուական, և 'ի գաղտակրայէ՝ զմարգարիտս գեղեցիկս: Եւ ինձ հիքոյս՝ տուք վարձս բարեաց, զարտասուս և զողբս հառաչանաց, զաղաւթս պաղատանաց, զթողութիւն մեղաց հայցելով ինձ եղկելոյս Սարգսի յապէնիազ Տեառնէն և յամենեցունց արարչէն... Հայ թուականն յայնմ ամի յորժամ կատարեցի զհամառաւտս յիշատակ ինձ և իմոցն, և 'ի վարժումն մանկանց նորոյ առագաստի մաւրս մերոյ վերին Երուսաղեմի, ԺԵ էր ընդ վեցհարիւրի »:*

* * *

*Մեկնողական գրքի մը ամէն կարեւոր յատկութիւնները ունի Սարգսի այս գրուածքը. ողջամիտ վարդապետութիւն, եռանդուն լեզու և բաւական սուր քննադատութիւն մը, որոնցմով արժանապէս յարգ գտած է: Ընդհանրապէս հետեւող է Գրիգորի աստուածաբանի, Կիւրղի, Բարսղի և Եփրեմի, և ասոնցմէ ամենէն աւելի սրբոյն Ոսկեբերանի: Այս նմանողութիւնը՝ որ ըստ ինքեան գովելի է, եթէ չափուն մէջ չիմնայ՝ կրնայ ունենալ իրեն թերութիւնները: Բայց Սարգիս այսպիսի հետեւակ գրըչաց կարգէն չէ: Անշուշտ մեծապէս սքանչանալով Ոսկեբերանի աննման հանճարոյն և սքանչելի գրչին վրայ և չկարենալով անոր հաւասար լեզու մը գործածել, շատ տեղ իրեն զուրցուածքներն, ճարտասանական ձեւերն և աշխոյժը, երբեմն նաև շարագրութեանն ալ եղանակը գործածեր է: Ասկէց է այն նմանութիւնը որ այս երկու գրքերուն մէջ կը տեսնուի, մանաւանդ յորդորակաց մէջ:*

*Ուստի իբրև մատենագիր՝ ընդհանրապէս այն գեղե-*

ցիկ յատկութիւններն ունի, թէպէտ և ոչ հաւասար աստիճանաւ, որ բոլոր աշխարհի սիրելի և զարմանալի ըրած են Ոսկեբերան հայրապետին երկասիրութիւնքը։ Պերճախօս լեզու մը կը բանեցընէ, ու իր օրինակագրին պէս՝ ամէն հնարք և ջանք կը գործածէ՝ մարդկային սրտից մէջ արմատացած կրքերն անհետ ընելու. անոր հակառակ՝ անոյշ ու փափուկ լեզու մը կը բանեցընէ առաքինութիւնը դրուատելու և սիրելի ընելու համար։ Իր գլխաւոր թերութիւնը թերևս քիչ մը երկարաբան ըլլալն է. և անտարակոյս շատ աւելի մեծ պատիւ ըրած կ'ըլլար թէ՛ իրեն և թէ հայկական մատենագրութեան, թէ որ ասոր մէջ ալ ուզենար՝ կամ կարենար Ոսկեբերանի հետևիլ։ Անշուշտ այս պակասութիւնս ինքն ալ իմանալով՝ ծերութեան ատենը, յամին 1166, համառօտութիւն մ'ալ գրեց նոյն մեկնութեան գրոց։

Ասկէ զատ է ուրիշ նման երկասիրութիւն մ'ալ՝ Կարապետ անունով վարդապետի մը ձեռքով եղած, ամենահամառօտ ոճով. որուն սկզբնատառքը իւր անունը կը յօդեն, և որ տպագրած է 'ի Կոստանդնուպոլիս (1744) բուն Սարգսի ընդարձակ երկասիրութեանը հետ մէկտեղ։

***

Սարգսի կ'ընծայուի և Եսայեայ մարգարէութեան մեկնութիւն մը՝ որ մեզի անծանօթ է։ Դարձեալ գրուածք մը կայ Առաջաւորաց պահոց վրայ՝ 'ի խնդրոյ Գրիգորի Պահլաւունւոյ գրուած 'ի Սարգսէ։

Լեզուն՝ դասական սեպուելու արժանացած է 'ի հըմտից, և իր դարուն ամէն որոշիչ և ընտիր յատկութիւններն ունի։ Ոչ հինգերորդ դարու ոսկեղէն լեզուն, և ոչ ալ անկման դարուց ոճոյն հետքը կամ նշմարանքը կ'երևնայ այս մատենագրութեան մէջ. մանաւանդ թէ ինչպէս երկոտասաներորդ դարուս ուրիշ մատենագրաց շա-

տը՝ աւելի առջինին մօտ է իր ոճովը, քան թէ երկրորդին։ Բայց որովհետեւ մի և նոյն ժամանակը՝ այլ և այլ տարբեր ազդեցութիւն կ'ընէ զանազան հանճարներու վրայ, ուստի և զարմանք չէ որ այս նկատմամբ աւելի ստորին մատենագիր կրնայ սեպուիլ Սարգիս՝ քան զԻգնատիոս և քան ուրիշ իր աշակերտակիցները։

## ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

---

Ներսէս Լամբրոնացի։ — Իր տոհմն ու ազնուականութիւնը։ — Վարուց համառօտութիւնք։ — Եպիսկոպոսութեան աստիճանի բարձրանալն։ — Երկասիրութիւններն։ — Ատենաբանութիւն։ — Մեկնութիւն սրբոյ Պատարագի։ — Մեկնողական ուրիշ գործուածները։ — Ճառք։ — Թուղթք։ — Քերթուածք։ — Թարգմանութիւնք։ — Տպագրութիւնք իր գործոց։ — Ժամանակակից անձինք։ — Գրիգոր Գանձակեցի։ — Դաւիթ Ալաւկայ։ — Գրիգոր Ցեսուանց։ — Խաչատուր աշակերտ Լամբրոնացւոյ։ — Դաւիթ քահանայ։

Ընտիր ու սիրելի անուն և հանճար մը, սրտովը լեզուով ու գրչով անհամեմատ՝ ու մեր դպրութեանց պատմութեան մէջ գրեթէ իրեն նմանը չունեցող անուանի անձ մը. թէպէտ և իւր այնքան բարեմասնութեամբքն ալ՝ մանաւանդ թէ աւելի այն ձրիցն համար, քիչ անգամ մխիթարութեան, այլ շատ հեղ վշտաց և նեղութեանց հանդիպած։

Ներսէս Լամբրոնացին, 1154ին ծնած է, բարեպաշտ

և ազնուական տոհմէ՝ հայրը Օշին Լամբրոնի իշխանն էր որ դեռ զՆերսէս չստացած՝ իւր բարեպաշտ ամուսնոյն Շահանդուխտոյ հետ, որ էր եղբօրդուստր Ն. Շնորհալւոյ, Աստուծոյ ուխտ ըրած էր՝ անոր սեղանոյն նուիրել իւր որդին: Բայց զաւակն ունենալէն ետքը՝ անոր գեղեցիկ և վայելուչ կերպարանքը տեսնելով, կը սորջանային ծնողքը իրենց ուխտին վրայ, ու այնպիսի կայտառ ու զուարթ մանկութեան մը տուած յոյսերէն չէին ուզեր զրկել զաշխարհ: Սակայն տղուն մահառիթ հիւանդութեամբը զգաստացած՝ դարձեալ Աստուծոյ նուիրեցին, և մնացին հաւատարիմ իրենց խոստմանը:

Մանուկ հասակէն Սմբատ, — ասիկայ էր Լամբրոնացւոյն մկրտութեան անունը, — իւր ապագայ սրբութեան և գիտութեան հաւաստի ապացոյցները կու տար: «Սըխրալի ամենեցուն, — կ'ըսէ իր գովաբանն Սկեւռացի, — մանկական տիոցն երեւէր յառաջադիմութիւն. մինչ զի 'ի մտի եդեալ բազմաց, Զի՞նչ կամի լինել մանուկս՝ առէին, զի ոչ զբօսմամբ ընդ հասակակիցսն, այլ ընդ կատարեալսն խրատու փարէր... ընդ աստուածայինս խօսելով օրէնս՝ զընդունայնաբանութիւնս 'ի բաց վարէր. խոկալով միշտ 'ի վերինս՝ զանց ստորնայնովքս առնէր. և 'ի խուն ժամանակի՝ 'ի յոլովս աստուածային վարժիցն 'ի չափ հասանէր»: Բիւզանդիոնի կայսրն, Անտիոքայ իշխողն՝ և այլք, իրենց ամէն հրապուրանքներովն և երկրաւոր փառաց և հաճոյից խոստմամբք չէին կրնար Աստուծոյ ճամբէն զինքը դարձընել. այլ իւր ծնողաց մեծութիւնն ու իշխանութիւնն արհամարհելով՝ Սկեւռայ վանքը կը քաշուէր, ու հոն առաքինութեամբը՝ հոգին, միտքն ալ ուսմամբ կը զարդարէր. ու քիչ ատենի մէջ զարմանալի յաջողամտութեամբ՝ յոյն, լատին եբրայական, և ուրիշ լեզուներ կը սորվէր:

Օշնի՝ իւր հօրը մեռնելէն ետքը՝ անոր մասնաւոր կըտակաւն ու առանձին կամքով Ներսէս Սկեւռայ վանքին առաջնորդ պիտի ըլլար. բայց անիկայ հրաժարեցաւ այն

պատուէն, ու նոյն իսկ քահանայական աստիճանը գրեթէ բռնի իրեն ընդունել տուաւ Շնորհալին. որ աստուածաշնորհ ոգւով նկատելով անոր Աստուծոյ սեղանոյն սպասաւորութեամբը ազգին ընելիք բարիքը, բռնադատեց զինքն առ այն, առանց մտիկ ընելու անոր ընդդիմադարձութեանցը. ու փախստեանն ու առանձնութեան տեղուանքէն զինքը գտնելով, ութևտասնամեայ հասակին Աստուծոյ ընտիր պաշտօնեայ մը ու ազգին մխիթարութեան առիթ մը ընծայեց: Իր անունն ալ օծութեան հետ տուաւ անոր:

Տեսնենք զԼամբրոնացի 'ի կայսերական արքունիս Բիւզանդիոնի՝ երբ դեսպանութեամբ ի Թագաւորէն Հայոց Լևոնէ գնաց 'ի քաղաքն՝ վասն կրօնական խնդրոց և վէճից: «Իբրև յառաջեաց սուրբն Ներսէս, — կ'ըսէ պատմիչն, — առաջի Թագաւորին Յունաց և ետ ողջոյն, մատուցին զպատուէրս և զհրամանս և զթուղթս տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսին և զԹագաւորին Հայոց Լևոնի. և նա մեծաւ ուրախութեամբ և պատուով ընկալաւ զսուրբն Ներսէս և մեծարեաց մեծաւ պատուով: Իբրև յառաջեցին ի սուրբ եկեղեցին և արարին ատեան՝ Թագաւորն և պատրիարքն և այլ ամենայն գիտնականք Յունաց ազգին, և ասէ Թագաւորն ցսուրբն Ներսէս, եթէ մարդս յերկուց է՝ ի հոգի և 'ի մարմին. և նախամեծար՝ հոգին է քան զմարմին. արդ վասն քոյ գրեալ է կաթողիկոսն և Թագաւորն թէ իմաստութեամբ կատարեալ ես. և զոր ինչ ի մեր մէջն թերութիւն կայ՝ դու լնուս: Եւ յետ պատարագին հանդարտեցաւ Թագաւորն և պատրիարքն: Խօսեցաւ Թագաւորն ընդ սուրբն Ներսէս և ասէ, թէ վկայեալ է կաթողիկոսն որ սուրբ և ճշմարիտ մարդ ես: Ետ պատասխանի և ասէ. Զճշմարտութիւնդ տուեալ տէրն իմ՝ որպէս զԱստուծոյ սուրբ և ընտրեալ հայրապետ. իսկ ես նուաստ եմ յամենայն ի Հայոց, և կամ առաջի ձեր. և զոր ինչ հարցանէք տամ պատասխանի. և թէ ի մէնջ թերութիւն կայ՝ մեր

սուրբ եկեղեցին կատարեալ է 'ի փառս Աստուծոյ, ի հաւատս և 'ի գործս... Եւ էանց ի վերայ այսոցիկ աւուրք ինչ մինչև ի Հոգւոյն գալուստն. գնաց և պատրիարքն և Թագաւորն բազմախուռն ժողովով և եպիսկոպոսօք հանդերձ. կոչեցին և զսուրբն Ներսէս... և զօրացաւ սուրբն ի պատասխանիսն և հաճութեամբ ընկալաւ ամենայն ժողովն... Եւ յորժամ ել պատրիարքն, եկն ոմն իմաստասէր կրօնաւոր առ սուրբն Ներսէս. և ասէ թէ Առանձինն առեր զովութիւն ի մետրապոլտացն և ի կղերիկոսացն և յիշխանաց և առ հասարակ յամենայն ժողովրդոցն. զի որ ի մարտ ելանէ և ինքն գիտէ զիւր ըմբին թափ տալն, բայց հայեցողքն առաւել եւս տեսանեն, այսպէս և մեք զքո յաղթութիւնդ հակառակամարտին: Նոյնպէս և իշխանքն գային և ասէին զարմացմամբ թէ մին մարդ՝ զայսքան մեծ ժողովս յոտին կացոյց. և 'ի հարցանելն և 'ի պատասխանելն սրբոյն Ներսիսի ափիբերան եղեն »:

⁂

Քսանուիրեք տարուան հասակին Տարսոն քաղաքին եպիսկոպոսութեան աստիճանն ալ ընդունեցաւ Ներսէս, և Սկևռայ վանից առաջնորդութիւնը. և անով արդէն ստացած համբաւն՝ ալ աւելի մեծցաւ: Ինքն իսկ Լամբրոնացի կը բռնադատուի հակառակորդաց բերանը կարկելու համար՝ իրեն յատկանիշ ու սիրելի խոնարհութիւնը առ վայր մի մոռնալով, առաքելաբար պարծիլ: «Բարեհռչակիմ, կ'ըսէ, 'ի Լատինացւոց եկեղեցիսն և 'ի Հելլենացւոց և Ասորւոց, և կամ 'ի Հայաստանս »:

Վասն զի իւր գիտութիւնն ու սրբութիւնը, և մանաւանդ միաբանասէր հոգին, իրեն դէմ հանեց ժամանակին տգէտ և ինքնահաւան մարդկան դաս մը, որ սըրբոյն նախանձուն ու եռանդեանը մէջ ազգային եկեղեցւոյն անկումը կամ իրաւանցը բռնաբարութիւն կը կար-

ծէին. և ժողովրդեան առջև զինքն ամբաստանելով ալ գոհ չըլլալով՝ ինչուան Թագաւորական արքունիքն իրենց ձայնը հասուցին, և կ'ուզէին զՆերսէս Թէ իւր պաշտօնէն զրկել և Թէ անոր աստուածային օծութեամբ լեցուած լեզուն լռեցնել։ Զխռովեցաւ Ներսէս. իւր խղճին մէջ անմեղը՝ հակառակորդաց նախանձուն և ատելութեանը հարուածներէն չվախցաւ։ Լսեց իրեն դէմ եղած ամբաստանութիւններ, և արդարակշիռ պատասխանները տուաւ առ Իշխողն Լևոն, Թուղթ մը՝ յորում սըրբոյն աստուածային նախանձը, անմեղութիւնն ու հանճարը միանգամայն կը տեսնուի. գրուած մը՝ յորում ամբաստանեալը կը սիրուի, և իրեն հակառակորդացը չարութիւնն աւելի ատելի կ'ըլլայ։

Այդ աստուածազդեցիկ նախանձը՝ մէկալ կողմանէ ալ արգելք չէր ըլլար իրեն՝ ազգային իրաւանց անարատ պահպանութեանը խնամատար ըլլալու. և այդ պատճառաւ ինչուան յԱնտիոք և 'ի Բիւզանդիոն ճանապարհորդութիւններ ըրած է, և այլ և այլ օգտակար ծառայութիւններ մատուցած ազգային եկեղեցւոյ ու հայրենեաց, զորոնք հրապարակել գովութեամբ՝ եկեղեցւոյ պատմութեանը կը վերաբերի։

Քառասունևվեց տարուան հասակին հանդիպեցաւ Լամբրոնացւոյ երջանիկ փոխումը։

**Լամբրոնացւոյն երկասիրութիւնները.** — Վեշտասանամեայ՝ երբ այլոց դեռ սորվելու և հմտանալու ասպարիզին սկզբնաւորութիւնն է, տիրաբար վարդապետական գրիչը ձեռք առաւ Լամբրոնացի, և ինչուան 'ի մահ չըթողուց զայն. և այնպիսի՞ արժանաւոր հռչակաւ և գովութեամբ, որ դեռ քսան և երեքամենի, 1175 Թուականը կրող յիշատակարանի մը մէջ Տիեզերական վարդապետ կոչուած է 'ի գրչէն. ուրիշ մ'ալ Անյաղթ վարդապետ և Թարգմանիչ կը կոչէ զնա։ Լամբրոնացւոյն գրաւոր երկասիրութեանցը մէջ նշանաւորներէն մէկն է **Ատենաբանութիւնը**։ Շնորհալւոյ և Գրիգորի Տղայոյ վա-

րուցը մէջ կը տեսնենք որ այն ատեններէն մեծ խնդիր մը սկսեր էր յուզուիլ Հայաստանի մէջ. մէկ կողմանէ յունական եկեղեցին կը ջանար կրօնական միութիւն մը հաստատել՝ արդէն իրեն հին դարերէ 'ի վեր ծանօթ և այլ և այլ ընտանի յարաբերութիւններ ունեցող Հայաստանեայց եկեղեցւոյն հետ. մէկալ կողմանէ ալ Խաչակիրք իրենց արևելքի մէջ ըրած արշաւանքներով սկսեր էին Հայաստանի ծանօթանալ: Այս ծանօթութիւններն ու վերաբերութիւնքն ունէին իրենց հակառակորդքը, որոնք, ինչպէս ըսինք, կը վախնային որ չըլլայ թէ ազգային հաւատքը՝ զոր միայն ուղիղ կը կարծէին, ուրիշ կարծեցեալ մոլորական վարդապետութեանց զոհ ըլլայ: Այս խնդրոյս լուծումն՝ ու ակամայ կամ կամաւ տգիտացելոց միտքը լուսաւորելու համար՝ սահմանեցաւ Տարսոնի ժողովքը գումարել:

Հայաստանեայց եկեղեցւոյն՝ զոր այնչափ սուրբ և աստուածամերձ անձինք փառաւորած էին, առջի փառքը յիշելէն ետքը, իւր օրերուն վիճակը արտասուաց ու ցաւոց արժանի կը գտնէ Լամբրոնացին: Աստուծոյ տունը՝ սուրբ եկեղեցին՝ սողոմոնեան տաճարին կը նմանցընէ, որուն պայծառութիւնն, մեծութիւնն ու գեղեցկութիւնը՝ բանսարկուն՝ Նաբուգոդոնոսորի ու Քաղդէացւոց պէս, վեր 'ի վայր ընելու կ'աշխատի. և որչափ ալ աստուածահիմն շէնքը չիկրնար կործանել, սակայն սրով և հրով կ'աւերէ: Այս աւերման ու խանգարման պատճառ՝ սիրոյ պակսութիւնը կը գտնէ Լամբրոնացին. ազգին՝ յայլոց քրիստոնէից խորշելովը և անոնցմէ ուծանալով Աստուծմէ հեռանալը կը ցուցընէ. և ասոր դարմանը՝ դարձեալ սիրոյ ու միաբանութեան մէջ կը գտնէ: Ո՞րչափ զարմանալի է Լամբրոնացին իւր այս խօսակցութեանը մէջ. Աստուծոյ ու ազգին սէրը՝ հաւասար իր սիրտը կը տոչորեն. Աստուծոյ փառացը առաւելութեամբը՝ իւր ազգին բարոյական ապագայն հաստատուն գործել կը ջանայ: Այս փափաքն առաջ տանելու համար՝ ինչուան իւր

ազգէն նզովիլն ալ աչք կ'առնէ։ Մեր ամբողջ հայերէն մատենագրութեան մէջ՝ այս ճառին նման սրտով, ուժով և գիտութեամբ գրուածք մը քիչ կը գտնուի. անոր համար Եւրոպացի իմաստուններէն մէկը «Թէ որ Դեմոսթենէս, կ'ըսէ, նոյն առիթներուն մէջ գտնուած ըլլար, ինչ որ այս սուրբս, և անոր հաւատոցը ճշմարտութիւնը ճանչցած ըլլար, իրմէ տարբեր լեզու պիտի չգործածէր»։ Ուրիշ մըն ալ Կիկերոնի կը նմանցընէ զինքը, ոչ զՀըռովմ՝ ալ զեկեղեցի Աստուծոյ իւր թշնամեացը ձեռքէն թափելու համար։

* * *

**Մեկնութիւն պատարագի.** — Քսանևչորս տարուան հասակին՝ այս ընտիր, իմաստուն և բազմահմուտ մատեանը երկասիրեց Լամբրոնացին, երբոր Տաւրոս լերանց առանձնութեանը մէջ՝ աշխարհքի զբաղմունքներէն ու փառքէն հրաժարած, հոգւոյ անդորրութեամբը կը զմայլէր։ Հայաստան՝ որ քաղաքական ոյժն ու զօրութիւնը կորսնցընելով, օր օրուան վրայ կը վատթարանար, կարգէ դուրս զեղծմունքներ մտուցած էր ինչուան սուրբ սեղանոյն նուիրական պաշտամանց և պատարագին խորհրդոց և զոհին մէջ։ Հարկ էր այս զեղծմունքը վերցընել. բայց արդէն արմատացած և հիննալու սկսած սովորութեանց հետ կռուելու համար՝ Լամբրոնացւոյն պէս կտրիճ ախոյեանի մը կարօտ էր ազգն։ Այդ ընտիր ախոյեանն, որ միայն Աստուծոյ փառքն ու երկիւղը իրեն շարժառիթ և նպատակ ունէր, այս գրուածքովս երիտասարդ հասակին մէջ դատաւոր կը նստի ծերոց, ու իր վրայ կ'առնէ անոնց նախապաշարմանցը հետ կռուիլ, մտաց խաւարը լուսաւորել, ու աստուածային ուղիղ ճամբուն մէջ առաջնորդել։

Սակայն այս աստուածահաճոյ ջանքովն ալ՝ յայտնի կը տեսնէր իրեն դէմն ելլելիք հակառակութիւնները։ Անանկ

տեննի մը հանդիպած էր՝ յորում ոչ միայն ազգին բարւոյն վրայ մտածելը՝ այլ նաև անոր վրայ արցունք թափելն ալ կ՚արգելուին։ « Եւ ոչ ողբալոյ տան թոյլ, կ՚ըսէր հառաչելով. զափս 'ի բերան եդեալ խփեն զջատագովաց ճշմարտութեան զլեզուս, կամ այպանելով երգիծանեն, կամ սաստիւ կափահարեն, միայն զի մի 'ի ստութեան սուտք երևեսցին »։ Բայց Աստուծոյ քաջահաւատ պաշտօնեայն արհամարհեց այդ ամէն բռնութիւնները. և ընտրելի սեպեց այն երանութիւնը՝ զոր տէրն « հատոյց փոխարէն նախատանացն. և ախորժելի վասն նորին՝ մարդկան չարախօսութիւնն »։ Եւ այս վախճանաւ շարագրեց Պատարագի մեկնութեան գիրքը. յորում հզօր հանճարով, զօրաւոր լեզուով, աննախանձ սրտով և ծայրալիր հմտութեամբ կռուեցաւ ամէն նախապաշարմանց դէմ, ցըցուց ամէն զեղծմանց ապօրինաւորութիւնը, և ճշմարտին Աստուծոյ սեղանոյն վրայ՝ յաղթանակել տուաւ ճշմարտութեան։ Եւ այն գրքին՝ և անոր մէջ ամփոփուած իմաստից կարօտ ազգին՝ նուիրեց իր աշխատութիւնը. ու մէկ երկու անգամ ինչուան եպիսկոպոսաց առեանը հանեց որ կարդան, քննեն, ու իրեն սիրտը մրկող կրակովը՝ գէթ իրենք ալ ջերմանան. սակայն և ոչ ընթերցման կամ ունկնդրութեան արժանի եղաւ, ինչպէս գանգատելով կ՚ըսէ վերջաբանին մէջ։

Իր մէկ երկասիրութիւնն՝ սիրելի քրոջը ընծայած է՝ հետագայ սրտագրդեցիկ խօսքերով. « Աստուածային իղձս փափագանաց պատուականագունիդ ինձ գիտելով միշտ 'ի տէրունականսն, վասն որոյ ուրախացուցիչ առիթ մատուցանեմ քեզ նուէր, սիրելի հարազատ Մարիամ, զոր առ մեզ անցուցեալ աստուածային ոգւոյն փչմանէ միշտ ընդ տուողին բարգաւաճելոյ առնն, 'ի ստիպմանէ խընդրոյ յորմէ որ վերագոյնդ յայտնէ բան, համանմանոյն երգ, զոր երկօք աշխատութեան արձանագրեալ քոյոյս Ներսէսի՝ ըստ այնմ յաղագս որոյ բանս է, քեզ ի սփոփանս ընձեռեցի. գիտելով պատուականագոյն քեզ քան

զորովք քամահեցեր, զոսկի և զականս պատուականս և զորս նոյնպիսի։ Նաև յաղագս և յայս ևս զքեզ յորդորելոյ, զի որպէս 'ի սկզբանց անտի սկսման քո 'ի կոչումն որ եսդ, և զանծուկ ընթացից ուղւոյն բուռն հարկանելով բարեբանելոյդ էր նախանձարկութեամբ. նոյնպէս և յայսմ օրէ հետէ փութալ ի քեզ եղիցի ընդ սկզբանն; և կատարածին փոյթ ըստ հանդիպել. Թէպէտ և բնաւիցն եմք օտար. զի մի յանձինս մեր աւարտիցի բանն ասացեալ ի տեառնէ. Այս այր սկսաւ շինել՝ և ոչ կարաց կատարել։ Այլ եղիցի արժանի լինել հաստատել զանձինս՝ որպէս զսա ի վերայ ամրագոյն վիմի անվրրդով յամենայն յարուցմանց »։

Այն ժամանակները, 1187ին, այլազգիք Երուսաղեմի տիրեցին, և տնօրինական տեղեաց սպասաւորք, եկեղեցականք և իշխանք գերեցան։ Այս համբաւը ինչուան արևմուտք հասնելով, ամենայն ազգք թագաւորներով և իշխաններով, Հռովմայ հայրապետին հրամանաւ խաչակրութեան մը յորդորուեցան, և անթիւ բազմութիւն՝ նաւերով հասան ելան 'ի Պտղոմայիս։ Այն միջոցին Լևոն Ռուբինեանց պայազատն ղրկեց զԼամբրոնացին 'ի Հռոմկլայ առ Գրիգոր կաթուղիկոս. ճամբուն վրայ՝ Մարաշ քաղաքէն անդին վրանին վազեցին Թիւրքմէնք, և Ներսեսի ուղեկից կրօնաւորներէն ու աշխարհականներէն գրեթէ քսան հոգի սպաննեցին, ու իրենց ստացուածոցը հետ յափշտակեցին նաև Պատարագի մեկնութեան գիրքը. որուն վրայ անչափ տրտմութիւն ունեցաւ հեղինակը, որովհետև հաւասարը չունէր։ Բայց քանի մը տարիէն ետքը Ջահան գաւառին մէջ գտնուեցաւ, և գնոց առնուելով՝ նորէն Լամբրոնացւոյն ձեռքը անցաւ։ Զայս ինքը Ներսէս կ'աւանդէ իւր յիշատակարանին մէջ։



*Մեկնողականք*. — Լամբրոնացւոյ կենսագիր մը կ՚ըսէ, վկայելով իր եռանդուն և անդադար ուսումնասիրութեանն. «Ցամենայն երեկոյի՝ մինչև այրէին մոմեղէնք՝ գրէր. և ապա անդէն յաթոռն իւր նստեալ՝ սակաւ մի ննջէր, և խկոյն յարուցեալ երթայր յեկեղեցին». իր նոր ու արժանաւոր դրուատիչ մ՚ալ կը յաւելու. «Այսպիսի բանազգօս հնարիւք խարբեաց զմահ. և գէթ տասն ամ գողացեալ 'ի ստուերագիր մահուանէ՝ 'ի թմբրութենէ քնոյ ասեմ, ծախեաց զնոյն 'ի խոկմունս և 'ի լուծմունս աստուածաշունչ տառից, որոց իբր երկոտասանիցն ծանօթ են մեզ նորայն Մեկնութիւնք». և են Առակաց գրքինը, Սողոմոնի գրոց՝ այս ինքն Առակաց, Ժողովողի, Իմաստութեան և Երգոց երգոյն, երկոտասան փոքր մարգարէից[1], Դանիէլի և Սաղմոսաց. նոր կտակարանէն ալ՝ Մատթէի մեկնութիւն, կաթուղիկեայ թըղ-

1 · Գրչագիր մը այսպիսի խորագրով կը նշանակէ Լամբրոնացւոյն այս երկասիրութիւնը. «Սրբոյ հօրն մերոյ Տեառն Ներսիսի արքեպիսկոպոսի Տարսոնի մեկնութիւն երկոտասան մարգարէից՝ զոր 'ի թելադրութենէ արքայ Եփրեմի և Կիւրղի և յիւրոց յաւելուածոց միտաց գեղեցկայարմար յեռեալ իբր ոսկի ընդ սարդիոն»։

Առակաց գրքին ինքնագիր յիշատակարանը. «Սկսեալ ի քննութիւն աստուածախօս իմաստից՝ երեք ամօք յառաջ քան զայս՝ որ է ՈԽԳ (= 1194) թուականին, ի հիւանդոտ մարմնոյ, 'ի ծանրութենէ հոգւոյ զանդաղէր միտք նուաստութեան քննել, և ձեռն՝ ի գրել։ Ցայս ամ գնացեալ իմ ի Կոստանդնուպօլիս, և խնդրեալ ի նորին պատրիարգէն՝ զոր առ նոսին տեսութեան Առակացս և Ցոմլրայ, և ընթերցեալ, և տեղեկացայ՝ զի զոր առ ի մէնջ պարզաբերէ շնորհք սուրբ Հոգւոյն՝ ոչ ինչ նուազ էր յայնմանէ, և նախքննեալն համաձայն էր և ոչ օտարանայր. եկեալ ի յարկս իմ՝ երկրպագութեամբ գոհացայ զԱստուծոյ և քաջալերեցայ ի քննութեանս, հողս Ներսէս՝ որ ի Տարսոն անուամբ այցելու և ի Սկեւռայն օթեւանքս բնակեալ ի հանգիստ»։

րոց, Տէրունական Առակաց, Ննջման Յովհաննու՝ կամ էր ընդ եղբարսն ընթերցուածոյն որ 'ի վերջ աստուածաշունչ գրոց։ Ասոնց ամենուն մէջ ալ որ ընդհանրապէս հեղինակին երիտասարդական հասակին արդիւնքն են, յայտնապէս կ'երևնայ իր հմտութիւնն և հանճարը։ Բայց որովհետև ընդհանուր հաւատացելոց համար յօրինուած չեն այս մեկնութիւններն, այլ մասնաւոր կերպով մը Ներանձնական կենաց փափաքող միանձանց հոգևոր օգուտը դիտելով, որոնց խնդրանօքն ալ շարագրուած են, ուստի աւելի խորհրդական քան թէ նկարագրական իմաստներով մեկնաբանուած են։ Յայսմաւուրք կ'աւանդեն թէ «Մեկնեաց և զքարոզս եկեղեցւոյ և զաղօթնսին». որով հաւանական կ'երևնայ թէ կ'ուզեն ակնարկել Ժամագրոց մեկնութիւնը, և ուրիշ եկեղեցական աղօթից, որոց հարց դժուարիմաց խօսքերուն Լուծմունքը, ինչպէս Դիոնեսիոսի Արիսպագացւոյն, Նարեկացւոյն, և այլոց։

Վերջին գրուածիս խորագիրն է. «Տեսութիւն քննութեան աղօթից աւետարանչին Յովհաննու՝ ի խնդրոյ Ստեփանոսի վարդապետի Ցակովբացւոյ, ի Ներսիսէ աշակերտէ իւր և հոգևոր որդեկէ։ — Գիր քո պատուականութեանդ միանգամ և երկիցս, հայր սուրբ, եհաս առ իս՝ փութայուցանել առ 'ի խնդիր քննութեան աստուածաբան առաքելոյն Յովհաննու աղօթիցն»....։ Եւ ի վերջն, «...Որ ամենայնիւ ես ճշմարտասէր և իմաստասէր , մինչ գի ոչ քոյովդ բաւականացեալ այլ և զմեզ ձգեցեր հաւանութեամբս 'ի յանդգնութիւն, ո՜ հայր պատուական Ստեփանոս. զորոյ 'ի գլուխ ած շնորհն Աստուծոյ զխնդրելիս 'ի ձեռն տառապեալս գործարանի 'ի փառս իւր և 'ի վայելս քումդ հաւատոց՝ և ճշմարիտ որ առ աստուածաբանս սիրոյ. ոչ թէ ըստ որում պարտ էր կամ զբովանդակն ածել 'ի լոյս զսորա զօրութիւնն որ անհասն էր յինէն. այլ փութացեալ միայն որդիական հնազանդութեամբ հպատակութեամբ պատճառ նիւթել իմաստնոյդ»....։

Հետագայ տողերուն մէջ՝ որ իր աշակերտին սրտի ձայնն ու հառաչանք են, ամփոփուած կը գտնենք Լամբրոնացւոյ մեկնողական գլխաւոր երկասիրութիւնները։

« Առ ձեզ խօսիմ, հին կատակարանք,
Եկէք որ լանք, զի անպիտանեցայ։
Ե՛կ Սողոմոն, զի անպիտանեցար.
Ե՛կ Դանիէլ, որ խողանեցար.
Ե՛կ Արարածք, լա՛ց, որ փակեցար.
Ա՛ր՝եկ Դաւիթ, որ անզարդարեցար։
Անհուն լալով վայիս ձայնակից.
Ընդ Յովհաննէս Որդին Որոտման.
Եկ ժողովէ զՏեսիլն ու պահէ,
Զի այլ չըկայ տէրն որ մեկնէ...
Լացողք Թըղթոց կաթողիկէից,
Եկէք ու լէք վայիս ձայնակից...
Ե՛կ Առաքեալըդ Տարսոնեցի
Ու սա՛ ամփոփէ զգանձս որ լսեցի։
Ե՛կ Աթանաս, լալոյս ձայնակից,
Բաներըս քո են 'ի Պատարագի.
Բայց իմ հըսկող տէրն չերեւի,
Ոչ մեկնըւի ու ոչ բացայայտի.
Ոչ այլ պայծառ Քարոզն տայի,
Ոչ այլ նըման քեզ տէր զըտանի »։

Ճառք. — Հինգ այլ և այլ ճառեր կ'ընծայուին Լամբրոնացւոյն. 'ի Համբարձումն Քրիստոսի, 'ի Գալուստ Հոգւոյն սրբոյ, 'ի Փոխումն Կուսին, յԱնառակ որդին, և 'ի Տնտեսն։ Ասոնց մէջ առջի երկուքը ընտրելագոյն կը սեպուին իրաւամբք թէ՛ լեզուի գեղեցկութեամբը և թէ՛ ճարտասանական ոճով։

Թղթերուն մէջ ալ անուանի է առ Լեւոն իշխանն գըրածը, զոր առաջ յիշատակեցինք։ Թուղթ մ'ալ առ Ոսկան ճգնաւոր, և առ Ցակոբ ոմն Ասորի։

Բազմաթիւ և հետաքննականք են Լամբրոնացւոյ երկասիրութեամբ եղած թարգմանութիւնքը 'ի յունէ, յասորւոյ, 'ի լատին և 'ի փռանկ լեզուաց, որոց վրայ խօ-

սիլը գրուածքիս երկրորդ մասին կը պատկանի։ Ոչ սակաւ են իրեն համբուրելի ձեռօք գրուած և մինչև առ մեզ հասած գրչագիրք։

Ունի Լամբրոնացին քանի մը կտոր մանր քերթողական գրուածներ ալ. բայց անոնց ոճը այնչափ հեռու է իր արձակ գրուածոց ոճէն, որ յայտնապէս կը տեսնուի թէ հռովմայեցի ճարտասանին պէս միայն խօսելու ուժով և գեղեցիկ ու համոզիչ լեզուով ծնած էր Լամբրոնացին, քան թէ քերթողաբանելու։ Այս գրուածքն են՝ քանի մը շարականներ, ու Ներսէսի Շնորհալւոյ վրայ գրուած վիպասանութիւն մը, և ուրիշ մանր քերգուածներ, ինչպէս 'ի Ս. Յովհաննէս աւետարանիչ, 'ի Հրեշտակապետս, 'ի Ս. Գէորգ, 'ի Թաղումն Տեառն, մեղեդի մը 'ի Ս. Կոյսն, որոնց ամենուն մէջ կը փայլի իր հոգեսիրութեան եռանդը։

Ժամանակաւ կրտսերագոյնք կ'ընծայեն իրեն նաև ուրիշ քանի մը երկասիրութիւնք՝ որ հիմա կորսուած կամ դեռ յայտնուած չեն. ինչպէս Վարք Գրիգորի Նարեկացւոյ, Մեկնութիւնք ութ խորհրդոց 'ի խնդրոյ Ատոմայ ճգնաւորի, Անուանք Քաղաքաց շինողաց 'ի խնդրոյ Աբուսայիտ բժշկի։ Լամբրոնացւոյն տրուած կը գտնենք նաև Տօնացոյց գրոց վերջին կարգաւորութիւնը, և զկանոն Կաթողիկոսօրհնէից և Եպիսկոպոսօրհնէից, և քերթուած մ'ալ 'ի Սուրբ խաչն։

Յիշատակագիր մը հետևեալ հետաքննական տեղեկութիւնները կուտայ Լամբրոնացւոյն մէկ քանի երկոց յօրինման ժամանակին վրայ. «Ներսէս Լամբրոնացի արար զթարգմանութիւն տեսլեան Յովհաննու և զմեկնութիւն նորին, և զՊարապմանց՝ գրեաց յայլևայլ ժամանակի. զՊարապմանցն ՈԽԴ թուականին, և զՅովհաննու տեսիլն ՈԽԷ. յորում ամի վերապատուեցաւ Ըռուբէն թագաւոր Հայոց՝ յերկուց թագաւորաց, Հռոմայ և Յունաց։ ՈԼԶ ամի անկաւ Երուսաղէմ 'ի ձեռս Իսմայէլացւոց, և բազում արեան հեղմունք եղեալ 'ի Լատինացւոց, մինչ 'ի

*թագաւորելն Ռուբենայ. յորում ամի թարգմանեաց զՏեսիլն. և զԹորհրդի և զԱղօթից մեկնիչն. և Էր ընդ եղբարսի մեկնութիւնն և զՆարեկացւոյ լուծմունքն »:*

**Յիշեալ ամենայն ծանօթ գրուածքն զանազան անգամ և տեղուանք տպուած են. որոց վրայ տես 'ի ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ, յէջ 60, 249: Լամբրոնացւոյն հոգեւոր և ուսումնական կենաց արժանաւոր գրուատ ու գրուագ մ'ալ 'ի ՍԻՍՈՒԱՆ, յէջ 86–95:**

---

*Այս հռչականուն մատենագրաց հետ՝ երկրորդաբար կը յիշուին դարուս մէջ,*

ԳՐԻԳՈՐ ԳԱՆՁԱԿԵՑԻ *կամ Թոքակերի որդի, որուն կարգէ դուրս ուսումնասիրութեանը վրայ հետևեալ դէպքը կը պատմէ Կիրակոս: Օր մը, կ'ըսէ, այրի մը մէջ առանձնացաւ, ուր բազմութիւնք գրոց կային, և հետն ալ ուրիշ չատ ընկերակիցներ ունէր: Անոնք այրէն դուրս ելան ու մոռացմամբ զինքը հոն ձգեցին, կարծելով թէ անիկայ իրենցմէ առաջ ելած ըլլայ. ու դուռը փակելով գնացին: Գրիգոր՝ առանց ամենևին իմանալու՝ շարունակեց հոն գրոց ընթերցման պարապելու: Վրան օրեր անցնելէն ետքը՝ հարկաւոր բանի մը համար նորէն ելան այրը գնացին, ու զինքը հոն տեսնելով աքանչացան, կը հարցընէին թէ ինչպէս առանց ուտելու խմելու կըրցաւ ապրիլ այնչափ օր. անիկայ գրքերը ցուցընելով կ'ըսէր. « Ասոնք եղան իմ կերակուրս և ըմպելիս »: Կ'աւանդեն թէ Ընթերցուածոց մեկնութիւն մը շարադրած ըլլայ:*

*Վարդան պատմիչ կը գրուցէ թէ Սարկաւագ վարդապետին մահուընէն տարի մը ետքը հանդիպեցաւ թէ Գրիգորի և թէ իրեն ընկեր ճգնասէն Սարգիս վարդապետի մահը՝ Գանձակայ երկրաշարժին փլատակաց տակ:*

**ԴԱՒԻԹ ԳԱՆՁԱԿԵՑԻ** *վարդապետ Ալաւկայ որդի։ Սա Արքայութիւն կոչուած Նորընծայ քահանայի մը խրըն-դրանօք՝ կանոնական սահմանադրութիւններ գրեց, որոնց համար Կիրակոս կ'ըսէ թէ գեղեցկայարմար ու պիտա-նացու երկասիրութիւնք ըլլան, ու Վարդան, թէ դիւ-րահաս կանոններ էին։ Մեր ձեռքն հասած* 97 *կամ* 98 *կանոններն՝ ասոնց դատաստանը չեն արդարացըներ։*

**ԳՐԻԳՈՐ ԻՄԱՍՏԱՍԷՐ**, *որ Մարաշու Ցեսուանից ա-նապատին միաբաններէն էր, և իր ընկերակիցներէն այս պատուոյ անուամբը մեծարուած։ Իր անունովն ձե-ռուընիս գիրք մը հասած է՝ զոր հեղինակը Գիրք վայից և մեղայից կը կոչէ, պարզ և միջակ ոճով մը, ՇՂԸ* (1149) *Թուականին յօրինուած։*

*Կը յիշատակուի Լամբրոնացւոյ ժամանակակիցն և ա-շակերտ՝* ԽԱՉԱՏՈՒՐ *անունով մէկը. որ իր աստուածաշըն-նորհ վարդապետին վրայ գեղեցիկ ու քերթողական ողբ մը շարագրած է ոտանաւոր։ Խորագիրն է. « Ողբք 'ի տէր Ներսէս արհին Տարսոնի, ասացեալ խաչատուր պաշտօ-նէի նորուն աշակերտի »։*

*Ուրիշ* ԴԱՒԻԹ *քահանայ մ'ալ կը յիշատակուի երկո-տասաներորդ դարուս մէջ, և իր անունով գրուած մը. « Ի սքանչելի վկային Քրիստոսի Ցովսէփ պատանի, որ յԱյրարատոյ նահանգէն, Ներքողական գովեստի բան »։*

# ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ

*Ուռհայեցւոյն ժամանակը։ — Իր պատմական երկասիրութիւնը։ — Բանասիրական արժէքը։ — Ոճ և լեզու։ — Գրիգոր Երէց՝ շարայարող իր պատմութեան։ — Ձեռագրին տպագրութիւնն և թարգմանութիւնք։*

Մատթէոսի Ուռհայեցւոյն վրայ գիտցածնիս՝ իւր երկասիրութեանը երկրորդ և երրորդ մասերուն յառաջաբաններուն մէջ տուած տեղեկութիւններն են։ Ինքզինքը Ուռհայեցի կը կոչէ, այսինքն բնակիչ կամ մանաւանդ ծնունդ Ուռհայ (Եդեսիոյ), և իւր այս քաղաքին մէջ ծնած ըլլալը յայտնապէս կ'աւանդէ։ Ուրիշ տեղ ալ ինքզինքը Վաներէց կը կոչէ։ Ծննդեանն ու մահուան տարին անստոյգ է. այս միայն յայտնի է որ իւր կեանքը 1136էն աւելի անդին անցած է. որովհետև այն թուականին կը լմնցընէ իւր գիրքը։ Չամչեան վարդապետը իւր Հայոց պատմագրութեանը մէջ կը համարի թէ 1144ին, Ասորւոց աթաբէկներուն իշխան հռչակաւոր Նուրէտտինի հօրը Զանգիին ձեռքով եղած Եդեսիոյ կոտորածին մէջ՝ մեռած ըլլայ նաև Մատթէոս 'ի խորին ծերութեան։ Բայց այս կարծեաց ստուգութեան երաշխաւորութիւնը կը պակսի։ Կ'երևնայ թէ կենաց մեծ մասը անցուցած ըլլայ յԵդեսիա. որովհետև այն քաղաքին մէջ հաւաքեց և կարգի վրայ առաւ ժամանակագրութեանն նիւթը, որուն միայն երկու առաջին մասանցը վրայ տասնըհինգ տարի աշխատեցաւ։ Իւր մէկ խօսքէն կ'երևնայ թէ կե-

նացը վերջի տարիները Կոմագենի հիւսիսակողման Քեսուն քաղաքը քաշուած ըլլայ, որ Մարաշու պէս՝ Գօտուէն (Բալդովինոս անունով լատին իշխանի մը ձեռաց տակ էր)։ Որովհետեւ կ'աւանդէ թէ երբ Ամր—Գազի եկաւ պաշարեց զՔեսուն, 1136ին, հոն էր և ինքն Ուռհայեցին. և զԳօտուէն՝ կոմսն մեր կը կոչէ, անշուշտ անոր իշխանութեան հպատակ ըլլալը ուզելով հասկըցընել։

***

Իւր հայրենի քաղաքը՝ յորում էր այն վանքը որուն առաջնորդութեան պաշտօնը կը վարէր, պատմական հետազօտութեանց համար ընդարձակ դաշտ մը կրնար սեպուիլ։ Եդեսիա՝ Միջագետաց հին և հռչակաւոր քաղաքը՝ արևմտեան Ասիոյ ծաղկած մեծամեծ տէրութեանցը մէջ, և յունական ու արևելեան աշխարհաց սահմանները կ'իյնար. արևելքէն սահմանակից ունէր Պարսից աշխարհքը, հիւսիսէն զՀայաստան, հարաւէն խալիֆայից իշխանութիւնը, արևմուտքէն զԱսորիս, զՊաղեստին, Բիւզանդիոյ կայսերաց ընդարձակ երկիրներն։ Իւր չորս դին կատարուեցան այն մեծ յեղափոխութիւններն՝ որոց արևելից այս մասը վկայ եղաւ։ Հին ատեններէն վարժարան մը սեպուած էր այն քաղաքը ասորի, յոյն և հայ դպրութեանց։ Հաւանական կ'երևնայ թէ երկոտասաներորդ դարուն սկիզբները՝ յորում Մատթէոս գրեց, դեռ բոլորովին անհետացած չէր այն նախկին ուսումնական ախորժակը։

Շատ անգամ կը յիշատակէ Մատթէոս թէ իւր պատմութիւնը գրելու համար՝ ականջալուր աւանդութեանց և իրմէ առաջ եղող պատմագրաց դիմած ըլլայ։ Բայց թէ ո՛վ են այս պատմագիրները, ամենևին չըսեր մեզի. ոչ անուն մը կը յիշէ, և ոչ գրուած մը յանուանէ մէջ կը բերէ։ Ժամանակակից հայ մատենագրաց մէջ ալ չկայ մէկը որ՝ նոյն դիպուածոց վրայ գրած ըլլալով կարենանք

իրենց գրուածքը Մատթէոսի երկասիրութեանը հետ համեմատել։ Նոյն իսկ յետագայ պատմիչք՝ կարծես թէ մեծ պիտանութիւն մը չեն ուզեր տալ իր գրուածքին՝ բաց 'ի Սմբատ Գունդստապլէն, որ երեքտասաներորդ դարուն պատմիչ է, և իւր ժամանակագրութեանը առաջին մասին մէջ զՄատթէոս կը համառօտէ, առանց ամենևին իւր առաջնորդին անունը տալու։

Այս լռութեան հաւանական պատճառը այն կ'երևի որ Մատթէոս գլխաւորաբար արևմտեան Հայոց ու սահմանակից օտար գաւառաց պատմութիւնը գրեց. իսկ իրմէն ետքը երեցող պատմիչք՝ ինչպէս Կիրակոս և Վարդան, Սանահնի՝ Հաղբատայ և Գետկայ, արևելեան Հայոց հըռչակաւոր դպրոցներու աշակերտք, գլխաւորապէս մեծ Հայոց վրայ կը գրեն՝ որով և Մատթէոսի հետ նոյն տեղւոյն վրայ չէին կրնար հանդիպիլ։ Մատթէոս՝ պարզ ժամանակագիր, բաւական կը համարի ամ ըստ ամէ արձանագրել այն անցքերը՝ զորս կամ ծերունեաց խօսքերէն և աւանդական հմտութենէն, և կամ իւր ձեռքն եղած գրքերուն մէջէն ժողվեց։ Իւր հմտութիւնը, ինչպէս ինքն ալ անկեղծաբար կը խոստովանի, չափաւոր է. ոչ իւր ազգին հնախօսութիւնը կը ճանչնայ. և ոչ անոնց վրայ գրող ազգային հեղինակները։ Երբ իւր գրոցը առաջին գլխոյն մէջ Եդեսիոյ հիմնարկութեանը վրայ կը խօսի, չեմ գիտեր ո՛ր աւանդութենէ առած՝ Տիգրանայ կ'ընծայէ զայն, առանց ըսելու թէ Հայոց վրայ իշխող երեք Տիգրաններէն քանիերորդն է ասիկայ։ Յետագայ գլխոց մէջ՝ մինչև յերկրորդ մասն, բոլորովին կը շփոթէ Բագրատունեաց ժամանակագրութիւնը, թէ՛ և ժամանակաւ անոնց շատ մօտ է։ Որով յայտնի կ'երևնայ թէ և ոչ Շապհոյ Բագրատունւոյ, Յովհաննու կաթուղիկոսի և Ստեփանոսի Ասողկան գրուածները ծանօթ են իրեն։ Կրօնական գիտութիւնն ալ՝ սուրբ գրոց բաւական հակացողութենէն անդին չանցնիր, ուսկից առէպ վկայութիւններ մէջ կը բերէ։ Անծանօթ են իրեն Յունաց ե-

կեղեցւոյն սուրբ հարքը՝ որ իր հայրենակից հին վարդապետացն այնչափ ընտանի էին։

* * *

Իր կեանքը այն տեղուանքը անցուցած ըլլալով՝ ուր ասորի դպրութիւնք երբեմն ծաղկած էին, կրնար կարծուիլ թէ բաւական օգտուած ըլլայ այն լեզուին յիշատակարաններէն։ Սակայն Մատթէոսէն ետքը եկող երկու ասորի, Միքայէլ ու Գրիգոր Աբուլֆարաճ պատմիչներէն դատելով՝ կը տեսնուի, թէ ասորական դպրոցը որչափ կը տարբերէր հայկականէն, թէ կրօնական գաղափարներովը, թէ ազգային նախապաշարմամբք և թէ պատմական դէպքերը կշռադատելու կողմանէ։ Մատթէոս և Աբուլֆարաճ՝ երկու ամենևին իրարու հակառակ հոգւով լցուած են. առիթ չպակսիր որ առջինը՝ Ասորւոց ծանր նախատինքներ չտայ. երկրորդն ալ՝ ամէն անգամ որ կրնայ՝ զՀայերը կը բամբասէ ու կը չարախօսէ։ Այս ներհակութենէն կրնամք հետևցընել թէ իրարու հետ հաղորդակցութիւն չունէին։

Նոյնը կրնանք ըսել եթէ Բիւզանդացի տարեգրաց հետ զՄատթէոս բաղդատենք։ Իւր տուած տեղեկութիւնները՝ մեզի հասած տարեգիրներէն այնչափ կը տարբերին՝ որ կարծես թէ ուրիշ աղբիւրներէ քաղած ըլլայ։ Օրինակի համար, եթէ Նիկեփորայ, Փոկասու և Զմշկիկի թագաւորութեան վրայ՝ Լևոն սարկաւագին պատմութեանը հետ զՄատթէոս բաղդատենք, թէպէտ և հիմնական դիպուածոց մէջ յոյն պատմչին հետ զուգընթաց է, բայց տարբեր յիշատակարաններու վրայ աշխատած կ'երևնայ։ Այդ բաղդատութիւնը Կեդրենոսի, Զոնարասայ, Աննա Կոմնենի հետ ընելով, նոյն աննմանութիւնները կը գտնենք, որ ոչ միայն այս ժամանակագրաց ու Մատթէոսի հետ ունեցած ծանօթութեանց տարբերութենէ առաջ կուգան, հապա նաև իրենց տեսութեան տարբեր կէտէն։

Թէ որ անոնք Կոստանդնուպոլսոյ արքունեացն ու կայսերութեան արեւմտեան գաւառներն յուզող խռովութեանց վրայ աւելի լաւ տեղեկութեամբ կը գրեն, չկայ մէջերնին մէկն որ ասիական գաւառաց վերաբերեալ բաները՝ Մատթէոսէն լաւ գիտնայ. ինքը կրնայ զանոնք սրբագրել և լրացընելու օգնել։

Այսպէս ահա հոգ տանելով աւանդել մեզի Զմշկիկի առ Աշոտ գրած Թուղթը որ բիւզանդական պատմութեան ամենէն աւելի ազնիւ յիշատակարաններէն մէկն է, այսօրուան օրս այն կայսեր Ասորւոց մէջ բռնած ընթացքը կը հասկընամք այն մանր տեղեկութիւններով՝ զորս փուճ տեղ պիտի փնտռէինք Լեւոն սարկաւագին պատմութեանը մէջ։ Այս Թղթիս՝ որ բագրատունեաց դիւանէն հանած կ'երեւնայ, վաւերականութեանը վրայ տարակոյս չկայ։ Վասն զի նոյն իսկ մէջը գտնուած սխալները կը ցուցընեն թէ յոյն բնագրի մը վրայէ թարգմանուած է 'ի հայ։ Մատթէոս՝ ուրիշ պատուական բան մըն ալ պահած է. և այս է Գագիկ Բ թագաւորին Կոստանդնուպոլսոյ Սուրբ Սոփիայ մեծ եկեղեցւոյն մէջ խօսած ճառը, Կոստանդին Դուկաս կայսեր և Յունաց կղերին առջև, հայ և բիւզանդական եկեղեցւոյ մէջ եղած հաւատոյ վէճերուն վրայ։ Անտարակոյս այս ճառը նախ հայերէն գրուած է, բայց յունարէն թարգմանուած ու խօսուած, որով սկզբնագիրը կ'ըլլայ զոր Մատթէոս մեզի կը հասցընէ։ — Այսպէս չկարենալով ստուգել Մատթէոսի աղբիւրները, եթէ կարծիք մը հարկ ըլլար կազմել, պէտք էր ըսել թէ ինքը ոչ ասորի և ոչ բիւզանդացի պատմիչներ նայած ըլլալով, հարկաւ ուրեմն իրեն ժամանակակից հայկական յիշատակարաններ ու գրքեր պէտք է որ գործածած ըլլայ, որ այս օրուան օրս կորսուած են կամ ինչուան մեր ձեռքը չհասած։

Ժամանակագրութեան ոճն ալ յայտնի կը ցուցընէ թէ հեղինակն իւր ազգային դպրութեան անհմուտ է. ոչ միայն անոր ոսկի դարուն օրինակագրացը անծանօթ,

հապա նոյն իսկ ութերորդ, իններորդ և տասներորդ դարուն մատենագիրներէն ալ անբաւ հեռաւորութիւն ունի։ Ո՛չ Արծրունեաց պատմիչ Թովմա Արծրունւոյն ճոխաբան, պաճուճեալ ու մթախօս կերպն ունի, ո՛չ Յովհաննու կաթուղիկոսի արուեստակեալ ու բառազարդ վայելչաբանութիւնը և հռետորական ձևերը, և ո՛չ Ասողկան հանճարեղ չափաւորութիւնը։ Ասոնց ամենեքն արուեստի՝ իր ժամանակին գրեթէ խօսուած լեզուովը կը գրէ։ Հայոց մատենագրութեան ու ազգութեան վատթարանալուն ատենը գրուած ըլլալով՝ իր ժամանակակցաց գաղափարներն ու նախապաշարմունքներն ունի։ Միամիտ է ու դիւրահաւան, իր տեսութեանցը մէջ անհաղորդական ու սահմանաւոր, թէպէտ և կեանքը անանկ քաղաքի մը մէջ անցուցած է որ ամէն քաղաքական ու մատենագրական ազդեցութեանց բաց էր։



Իր ժամանակակցացը պէս ոսոխ Քաղկեդոնի ժողովոյն, թէ և անոր հետ երկու բնութիւն կը դաւանի 'ի Քրիստոս, Յունաց դէմ ունեցած կրօնական հակակրութիւնը՝ ցասմամբ վրանին կը թափէ։ Ո՛չ ինչ պակաս բուռն է նաև այլազգեաց ատելութիւնն ալ։ Չիխնայեր նաև Փռանկաց, որ Հայաստանի գաւառացը մէկ մասին կ՚իշխէին։ Թէ որ այս կիրքը բան մը կրնայ արդարացընել՝ միայն հայրենասիրութիւնն է որով վառուած է. այն զգացմունքը՝ որուն չափազանցութիւնը չնչող պատճառին վեհանձնութենէն ու անշահասիրութենէն ներումն կը գտնէ։ Բայց այս պակասութիւններն կերպով մը իրենց փոխարինութիւնն ունին։ Իր պատմագրութիւնն որ վարժ արուեստի մը փափկութիւն չընդունիր, յղկած ոճէ մը աւելի ճշմարիտ և ազդու գործելով՝ իւր ազգին մտաւոր և բարոյական վիճակը մեզի կը ներկայացընէ։ Պատմագրելու այս անհարթ կերպին մէջ, և այն բարբարոս

և աղմկայոյզ ժամանակին՝ ուր որ այս կերպս կը գործածուէր, ներդաշնակութիւն մը կայ․ կարծես թէ անհըմուտ ձեռքէ ելած պատմութիւններն՝ բուն իսկ նիւթին գեղեցկութիւնն աւելի դուրս կը ցայտեցընեն։ Ի՜նչ ցաւալի տեսարան՝ անմեղ ժողովուրդ մը տեսնել՝ որ քրիստոնէական համակամութեամբ այլազգեաց անողորմ սրոյն տակ կ՚իյնայ կը մեռնի հազարաւորը մէկտեղ։ Ի՜նչ յօժարակամ անձնանուիրութիւն է՝ զոր Տաւրոսի Հայոց վրայ կը տեսնենք, որ Խաչակրաց հասնելու ատենը՝ խանարհեալ խաչին վրէժը խնդրողներուն գալուստը կ՚ողջունեն, կ՚երթան անոնց օգնելու սովուն խստութեանը մէջ, և անոնց հետ պատերազմին ամէն վտանգներուն մասնակից կ՚ըլլան։ Ի՜նչպէս մեծ է Մատթէոս իւր հայրենասիրութեանը մէջ, երբ իր բնական զգացմունքն՝ ատելութեան ու կրից ամբոխմամբը չինուաստացընէր։ Ո՛րչափ կը սիրէ իր հայրենիքը, և կը փառաւորէ Հայոց քաջութիւնը՝ որ իրենց աշխարհքը պաշտպանեցին։ Ի՜նչ ճարտասան պարզութեամբ կը պատմէ այն հնգետասանամեայ դիւցազին մահը, որ հայրենի տունը կը թողու, կը վազէ սուրը ձեռքը այլազգեաց անհամար խումբերուն մէջ կ՚իյնայ՝ հալածելու․ անդին այս ցաւալի տեսարանիս վրայ՝ պատանւոյն ծերունի պապուն բազուկները կը ջլատին, և սուրը գետին կ՚իյնայ։ Վսեմ է նաև գեղի խոնարհ հովուի մը՝ տէր Քրիստափոր երիցուն մահը, որ պաշարեալ յանկարծ յայլազգեաց՝ կ՚աճապարէ իւր հօտը եկեղեցւոյն մէջ կը ժողվէ․ որուն թէպէտ չորս կողմը առեր են թշնամիք, սուրբ խորհուրդը կը կատարէ, հացն ու գինին կը բաշխէ հաւատացելոց, որոնք մէկիկ մէկիկ բարբարոսաց սրոյն սպանդ կ՚երթան․ մինչև որ տէր Քրիստափոր և իր երկու որդիքը Թորոս ու Ստեփան՝ մինակ մնացած՝ իրարու վերջին համբոյրը կուտան, ու այն վսեմ ու հանդիսաւոր գրկախառնութենէն ետքը՝ երեքն ալ մէկտեղ կը վազեն տաճարին սեմոցը վրայ, մարտիրոսական պսակն ընդունելու։ Ի՜նչպէս սիրտ

շարժող ոճով մը կը խօսի՝ Բագրատունեաց ազնուական ու մեծ ցեղին վերջի Գագիկ Բ թագաւորին վրայ. այն հոյակապ թագաւորին՝ որ իր գիտութեամբն ու քաջասրտութեամբ անուանի, իրեններէն կը մատնուի, իր հարցը ժառանգութենէն կը զրկուի, ու աքսորանաց և թշուառութեան մէջ կեանքը կ'անցընէ, և արտասուելի դաւաճանութեամբ մը կը լմընցընէ։

Վերը յիշուած մատենագրական կրթութեանն պէտք է ընծայել հեղինակին միւս թերութիւններն, յորոց մըտաւոր մշակութեամբ մը կրնար զգուշանալ. ինչպէս չափազանցութեան սէրը, բացագանչութեան հակամիտութիւնը, նոյն դարձուածոց յոգնեցուցիչ կրկնութիւնը, կարևոր պարագայից մէջ ցուցած վերջի աստիճանի խօսքի ագահութիւնը, և անդին նուազ հարկաւորաց վրայ երկարաբանելը։

***

Ժամանակագրութեան շարայարողը ԳՐԻԳՈՐ իւր աշակերտը եղած պիտի ըլլայ, թէ որ Յունաց դէմ ցուցած ատելութեանը նայինք, զոր 'ի Մատթէոսէ ժառանգած կ'երևի։ Ինքզինքն Երէց կը կոչէ, բայց կ'երևնայ թէ իւր հայրենակցացը մէջ երևելի աստիճան մը ունէր. վասն զի կը տեսնեմք զինքը՝ որ Քեսնոյ մեծամեծացն ու կառավարչին կը դիմէ, երբ 1137ին քաղաքացիք այլազգիներէն պաշարուելով՝ թողուցին զՔեսուն. Գրիգոր կը յորդորէ որ իրենց պարիսպները պաշտպանեն, և անոնց հետ հոն կը փոխուի։ Յունաց Կոմնենոս կայսեր կրկին ասպատակութիւնքն յԱսորիս և 'ի Կիլիկիա, Զանգիին Փռանկաց ձեռքէն Եդեսիան առնուլը, Իկոնիոյ սուլտաններուն՝ Ռուբինեանց հետ մերթ թշնամութեան և մերթ բարեկամական վերաբերութիւնքն, Կապադովկիոյ Էմիրներուն և Տանիշմէնտի տանը հետ եղած պատերազմները, Քուրդընէ՝ գաղղիացի իշխանական ցեղին մարիլը,

Խաչակրաց Նուրէտտինի դէմ ձեռնարկութիւնքն, Վրաց թագաւորաց Հայաստանի մէջ Անի և Դուին քաղաքաց դէմ բռածները, Գրիգորի ժամանակագրութեան գլխաւոր նիւթերն են։ Գրութեան ոճն ալ Մատթէոսինէն ոչ ինչ ընդհատ տարբեր է և ռամկական։

Մատթէի Ուռհայեցւոյն Պատմութեան բնագիրը հրատարակուած է յԵրուսաղէմ (1869) շատ ծանօթութեամբք։ Անկէ տասնըմէկ տարի յառաջ արդէն Տիւլորիէ գաղղիական թարգմանութեամբ ծանօթացուցեր էր արևմտեայց՝ միջին դարուց պատմութեան համար հետաքննական այս գրուածն հետևեալ խորագրով․ Chronique de Mathieu d'Édesse (952-1136) avec la continuation de Grégoire-le Prêtre jusqu'en 1162; par Ed. Dulaurier. Մատենախօսական այլևայլ գրուածք ալ հրատարակուած են թէ ՚ի Տիւլորիէէ և թէ յայլոց հեղինակաց, և են․ 1º Notice de deux manuscrits arméniens contenant l'histoire de Mathieu Jierets, et Extrait de cette histoire, relatif à la première Croisade, en arménien et en français, par M. Chaban de Cirbied. Paris, 1812. — 2º. L'Histoire des Croisades, d'après les Chroniques arméniens, par Ed. Dulaurier. Paris, 1848. — 3º Les Chefs Belges de la première Croisade, d'après les historiens arméniens, par Félix Nève. — 4º Beitrage zu der Geschichte der Kreuzzüge aus armenischen Quellen, von H. Petermann. — 5º Այլ և այլ հատուածք բնագրաւ և գաղղիարէն թարգմանութեամբ ՚ի Recueil des Historiens des Croisades, (Documents Arméniens.). Հատոր Ա։

---

# ՍԱՄՈՒԷԼ ԵՐԷՑ

*Սամուէլ Երէց: — Ժամանակագրութիւնը կամ Գաւազանը: — Այս երկասիրութեան աղբերք: — Ոճը: — Եւրոպական լեզուով թարգմանութիւնք: — Բնագրին տպագրութիւնն:*

Ուռհայեցւոյն ժամանակակից կ'երևնայ նաև Սամուէլ, որ Անւոյ կաթուղիկէին աշխարհիկ երիցանց դասակարգութենէն ըլլալով Երէց և մերթ ալ Անեցի կը կոչուի: Ինքզինքը աշակերտած կ'աւանդէ Գէորգ անունով վարդապետի մը, որ հաւանականաբար Մեղրիկն է. ուրիշներն ալ՝ և մասնաւորապէս Վարդան պատմիչ, Յովհաննու Սարկաւագայ աշակերտ կը համարին զինքը:

Սամուէլի գլխաւոր՝ և մեր ձեռքը հասած երկասիրութիւնն է Ժամանակագրութիւնը կամ Գաւազանքը, զոր Պահլաւունի Գրիգոր կաթողիկոսին խնդրանքը յօրինած է և իրեն ընծայած[1]: Ասանկ մեծ և կարևոր երկասիրութեան մը համար՝ իմաստութեամբ իրեն օգնական և ձեռնտու առած է Սամուէլ՝ ուրիշ ազգաց մէջ արդէն գտնուած և մեծարգոյ համանուն երկասիրութիւնները, և մասնաւորաբար Եւսեբիոսի և Խորենացւոյն աշխատասիրածները: Ինքը հեղինակն ալ այս բանս կը խոստովանի յընծայական նամակին առ կաթողիկոսն.

1. Ժամանակագրութեան գրոցը խորագիրն է. «Սամուէլի քահանայի Անեցւոյ հաւաքմունք 'ի գրոց պատմագրաց, յաղագս գիւտի ժամանակաց անցելոց մինչև 'ի ներկայս ծայրաքաղ արարեալ»:

« Ջանացի, կ'ըսէ, զամենագեղեցիկ զաստուածարեալ զպատմութիւնս Եւսեբեայ՝ կրկին գրելով, որպէս զցայտումն արևու՝ որ 'ի մթին տեղիս ծագէ և լուսաւորէ » [1] ։ Ուրիշ տեղ մըն ալ. « Մոռացեալ զտգիտութիւն և զանուսումնութիւն իմ, 'ի թախանձելոյ քոյ, սրբազգեացդ Գրիգոր, յաղթեցայ 'ի սիրոյ կամաց ձերոց առ 'ի գրել զոր կամեցար. և այժմ օժանդակեալ 'ի Հոգւոյն սրբոյ՝ ժողովեցից 'ի սոցանէ կարճ 'ի կարճոյ՝ զախորժակս ձեր՝ զբանից հանդէս, միայն զճշմարտութեանն գնալով ղհետ. և 'ի յոլովից՝ առաւել զերկոքումբք թեակոխեսցուք, ձեռնտու ունելով զնոսա, զԵւսեբի ասեմ, և զՄովսէս Խորենացի »։

Իսկ երբ հին օրինակագրաց գրուածները կը սպառին, և հարկ կ'ըլլայ որ Անեցին ինքիրմէ սկսի շարունակել, այն ատեն տարակոյսը զինքը կը պատէ. « Մինչև ցայսօսիկ ժամանեալ վայր՝ անկասկած հետևմամբ, առաջնորդ ունելով զհաւատապատում գիրս զյառաջասացեալ վարդապետացն. իսկ յայսմ հետէ 'ի տեղւոջ՝ ուր պիտոյացաւ այլ ինչ յաւելուլ 'ի շարագրութիւնս մեր, աշխատութիւն և տարակուսանք անկաւ յաղագս անմիաբան գրելոյ պատմագրացն. ոմն առաւել և ոմն նուազ շարագրելով, և կամ թէ ոչ բնաւ ։ Սակայն մեք զբնախօսիցն զոճ պահելով, սկսցուք ըստ կարի զհետ ճշգրտութեան հետևելով, և զառաջին ամն Տրդատայ զուգել երրորդ ամին Դիոկղետիանոսի՝ ըստ Մովսիսի Հայոց պատմագրի »։

Սամուէլի ժամանակագրութիւնը կը սկսի յԱդամայ, ու կը հասնի ինչուան իր օրերը, կամ Քրիստոսի 1179 թուականը։ Սակայն իրմէ ետքը ոմանք շարայարած են իր երկասիրութիւնը, նոյն ոճն ու համառօտութիւնը պա-

1. Ի վերջ ընծայականին՝ յայլմէ գրչէ յաւելեալ. « Սամուէլ քահանայ Անեցի ժողովող գրոյս, յամի մարդեղութեան Փրկչին ՌՃԾԱ, և մերոյս Թիւ Ո, 'ի քառասներորդ ամի կաթուղիկոսութեան Գրիգորի Գ Պահլաւունւոյ, և 'ի թագաւորութեան Հայոց Թորոսի Բ »։

հելով։ Զոր կը վկայէ գաղափարողաց մէկը հետեւեալ խօսքերով. «Աստանօր զտեղի առեալ կացին չարագրութիւնք գեղեցկաբանին Սամուէլի. զոր բազում երկասիրութեամբ հոգ տարեալ ստուգագրութեան, և ճշգրտիւ հաստուցեալ մինչև յիւրն ժամանակ։ Եւ վասն զի պատմագրութեանց սահման է՝ զանցելոյն և զներկայէն ճառել, իսկ յառաջիկայն ոչ գոյ հնար անցանել. այլ թէպէտ յայսմ հետէ մտանէ կանոն իշխանութեան Հայոց 'ի չարագրութիւնս աղիւսակիս, սակայն սխալ յոլով տեսանի կանոնացս. վասն զի յայսմ հետէ այլոյ ուրուք է չարագրութիւնս, և գրեթէ Քրիստոսի ծննդեանն ամք և թուականն Հայոց միայն գոյ անսխալ»։ Այս խօսքերէն ետքը՝ Հայոց ՇԻԷ թուականէն սկսելով՝ կը շարունակէ ժամանակագրական աղիւսակը ինչուան ՉԺԱ թուականը։ Ուրիշ յետին ընդօրինակողք ալ զանազան յաւելուածներ ընելով անոր ժամանակագրական աղիւսակաց՝ ինչուան ՌՃԼԱ և ՌՃԽԵ թուականներն հասուցած են։ Ասիկայ յիշուելու ատենը ընդարձակող Սամուէլի կը կոչուի գրոց մէջ. և տուած տեղեկութիւններն ընդհանրապէս կարևոր են, մանաւանդ Կիլիկեցի թագաւորաց ատեն պատահած անցքերուն։

Ասկէ գրեթէ եօթանասուն տարի առաջ՝ անուանի ծիրանաւորն Մայ՝ որ այն ատեն Միլանու մատենադարանին տեսուչն էր, Եւսեբեայ Քրոնիկոնն հրատարակելու ատեն՝ լատիներէն թարգմանեց նաև Սամուէլի Երիցու ժամանակագրութիւնը, և տպագրեց կրկին, մէյմը 'ի Միլան (1818), երկրորդ անգամ 'ի Հռովմ (1839)։ Samuelis presbyteris Aniensis, Temporum usque ad suam ætatem ratio e libris historicorum summatim collecta. Opus ex Haicanis quinque codicibus ab Joh. Zohrabo diligenter excerptum atque emendatum. Zohrabus et Ang. Majus nunc primum conjunctis curis latinitate donatum notisque illustratum ediderunt. — Գաղղիական թարգմանութիւն մ'ալ 'ի Համառօտ Հայ պատմչաց Պրոսէի․ Samuel d'Ani, Tables Chroniques, traduits par M. Brosset. Մատենախօսական և քաղուած․ Samuel d'Ani, Revue générale de sa Chronologie, par M. Brosset. (Mélanges Asiati-

ques). — Extrait de la Chronique de Samuel d'Ani, Recueil des Historiens des Croisades, (Documents Arméniens), Հատ. Ա. 447–468. *յորում նաև Սամուելի շարունակողին հայ բնագիրն՝ գաղղիարէն թարգմանութեամբ 'ի 1178 թուականէն Քրիստոսի ց'1340։ Հայ բնագիրն տպուեցաւ անցեալ տարի յԷջմիածին։*

# ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ

---

*Ո՞վ էր Մխիթար Հերացի։ — Բժշկական գիտութիւն և արուեստ 'ի Հայաստան։ — Ջերմանց մխիթարութիւն։ — Նիւթը։ — Աղբերք Հերացւոյն։ — Իր գրոց տպագրութիւն։*

Երկոտասաներորդ դարուն մէջ կը ծաղկէր 'ի Հայս Մխիթար անուամբ հռչակաւոր բժշկապետ մը, որ Հեր քաղաքը ծնած ըլլալուն համար՝ ընդհանրապէս Հերացի կը կոչուի։ Տղայութենէն Արաբացւոց, Պարսից, և Հելլենացւոց իմաստութեամբքը վարժած, բաւական հմտութիւն ունէր նաև փիլիսոփայական և աստղաբաշխական գիտութեանց։ Սրբոյն Ներսիսի Շնորհալւոյն մտերիմն էր, որ և Ցաղագս երկնից և զարդուց նորա կոչուած ընտիր քերթուածը՝ իրեն ընծայած է, ինչպէս նաև Ցաղագս Աստուծոյ և արարածոցքերթութիւնը, որուն սկզբնատառքը կը յօդեն, « Մխիթար բժիշկ, ընկալ 'ի Ներսիսէ զայս բան »։

Բժշկական արուեստն ու գիտութիւն՝ որ այնչափ սերտ կցորդութիւն և կարևորութիւն ունի մարդկային կենաց վրայ, անկարելի է բոլորովին անծանօթ ենթադրել առ հինսն՞ մեր. բայց հաւանականաբար ոչ այնչափ ծաղկեալ և բարգաւաճ վիճակի մը մէջ, որպէս առ Յոյնս և

միջին կոչուած դարուց մէջ առ Արաբացիս. որով և աղօտ, և ոչ միշտ զերծ 'ի նախապաշարմանց իրենց գաղափարն նոյն արուեստին և գիտութեանը նկատմամբ։ Երկար դարեր զոհ եղած կ'երևնայ հայկական գրրութիւնն այդ հարևանցի տեղեկութեամբք. մինչև Ռուբինեանց հարստութեան ժամանակ՝ յորում Հայք աւելի ծանօթութիւն ունեցան իրենց մերձաւոր ազգաց և անոնց գիտնոց հետ։ Ցառաջ քան զՀերացի՝ ու երեքտասաներորդ դարու վերջերը գաղափարուած ու բաւական հնութիւն ունեցող բժշկարան մը հասած է ձեռուընիս, որ մակագիր կը կրէ. Բժշկարան զոր փոխած է 'ի տաճիկ լեզուէ 'ի հայս՝ 'ի ժամանակս յաղթող թագաւորին Հայոց Գագկայ, որ քաղուածոյ և թարգմանաբար երկասիրութիւն մը կը թուի, ինչպէս կը կարծենք որ ըլլայ նաև Հերացւոյն գրուածը, և իրմէ ետքը յօրինուած ուրիշ բժշկարաններ, որոց հեղինակք կը ճանչցուին Ամիրտովլաթ, Ասար և Պունեաթ Սեբաստացիք և այլք. որոց ամենուն գրուածոց աղբերքն արաբական կ'երևնան, ինչպէս կը վկայեն բժշկաց անուանքն և դեղոց և անոնց զուգութեան և բժշկական բառերուն անուններն։ Վասն զի նոյն իսկ յոյն բժշկաց՝ արաբական թարգմանութենէ առնլով՝ արաբացի հնչումն տուած են մերքն. ինչպէս Իպպոկրատ հռչականուն բժիշկն՝ փոխուած է մեր բժշկարանաց մէջ 'ի Պուգրատ, Բուկրատ, Բագրատ. — Դաղենոս՝ Գեյլիանոս, Ճալինոս. — Ռուփոս՝ Ըռուպուս, Ըռուպօս, Ըռօֆուս. — Որիբազ՝ Ռուբաս, Արպիասուս. — Ասկղեպիոս՝ Ակիւղեպէս. — Պաւղոս Եգինացի՝ Փօլօս, Ֆլօս, Ֆուլուս, Ֆօլօս. — Դիոգենէս՝ Դեւճանիս, և այլն։

Հերացւոյն ալ գիտութիւնն, ուսումը և գործածած բժշկական լեզուն ասոնցմէ տարբեր չէր կրնար ըլլալ, ինչպէս նաև հետևողութեան աղբիւրներն, ինչպէս քիչ մը ետքը պիտի տեսնենք։



Գրիգոր Տղայ կաթողիկոսին, որուն մեծ մտերիմն էր Մխիթար, ու անոր յորդորելովն ու խնդիրքովը՝ համառօտ բժշկական գիրք մը շարադրեց, թարգմանաբար հաւաքուած յոյն, պարսիկ և արաբացի բժշկաց գրուածներէն: Գրքին անունը Ջերմանց մխիթարութիւն դրած է հեղինակը, ու այնպիսի անուանակոչութեան պատճառն ալ ինքը կու տայ. « Զի սա, կ՚ըսէ, մխիթարէ զբժիշկն ուսմամբ, իսկ զհիւանդն՝ առողջութեամբ »: Երկայն ու արուեստին գիտութեանը արժանի ոճով մը կը խօսի երեք ազգ ջերմանց վրայ, կորոնք ասանկ իրարմէ կը զանազանէ. Բոքրատային և անեոքրոս, Սուր և երկարօրեայ, Նոպայով և աննոպայ: Երբ այս հիւանդութեանց նկատմամբ այլ և այլ բժշկաց կարծիքները մէջ կը բերէ, անոնց անուանքն ալ շատ անգամ կը յիշատակէ. որոնց մէջ գլխաւորներն են Գաղենոս, Իպպոկրատ՝ զոր ինքն ալ Բագարատ կը կոչէ, Սահակ՝ հայկազն բժիշկ, Փոլոս, Մատայի, Մասր ճուէն, Մահամմատ Զաքարիա, Որիբազ, Դեւճանիս, Սապիթ–Կուրան, և այլն:

Գրոցը սկզբնաւորութեանը յառաջաբանին մէջ կը պատմէ նոյն երկասիրութիւնը շարագրելուն պատճառը. կ՚աւանդէ թէ ինչպէս 'ի մանկութենէ իմաստութեան և բժշկական արուեստից տիրող եղած ըլլայ, ու Պարսից, Յունաց և Արաբացւոց դպրութեամբը վարժուած: « Թէ հիմնովին սորված էր բժշկականութիւն և արդեամբ իսկ 'ի գործ կը դնէր, զայդ կը ցուցընեն բաց յիւր այս հմտալից գրութենէն՝ իմաստուն բժիշկ, իմաստուն և ճարտար բժիշկ, իմաստուն բժշկապետ և այլ սոյնպիսի տիտղոսք՝ զոր կուտան իրեն ժամանակակիցք և յաջորդք: Եւ ոչ այսչափ միայն, այլ տեղեակ էր նաև աստեղագիտութեան, որովհետև զինքն իւր բարեկամութեամբ պատուող Շնորհալի՝ Բժշկապետ և աստեղագէտ տիտղոսն ի-

րեն կուտայ »[1] ։ Անոնց բժշկական գրքերը կարդալով « տեսի, կ'ըսէ, զի ունէին զարուեստ բժշկութեան լի և կատարեալ ըստ առաջին իմաստնոցն. այսինքն զնախագիտութիւն՝ որ է իմաստ և վարդապետութիւն բժշկական արուեստից. և 'ի Հայք բնաւ ոչ գտի զվարդապետութիւն և զիմաստ Նախագիտութեանն, այլ զստածումն միայն, և այս ոչ ըստ կարգի և լի, այլ համառօտ և ծաղկաքաղ աստի և անտի հաւաքեալ, յայլ և այլ գրչաց և մտաց այլայլած ։

Կամեցայ ըստ իմոյ կարողութեան առնել զգիրքս զայս՝ միայն վասն երեք ազգ ջերմանցն համառօտ՝ Նախագիտութեամբն և ստածմամբն ։ Զբովանդակն որ վասն արուեստի բժշկութեանս թողի, և զերեք ազգ ջերմանցս միայն հաւաքեցի, և թարգմանեցի ի հայ բառ ։ Պատճառ ունելով այսմ աշխատութեան և զսէր զյօժարութիւն սրբոյ և աստուածապատիւ կաթուղիկոսին Հայոց տեառն Գրիգորի որ մակակոչի Տղայ, սմա որ էր առաջնորդ յաթոռ սրբոյն Գրիգորի լուսաւորչին Հայոց, զոր տեսի ամենայնիւ սիրող իմաստութեան և հմուտ ։ Եւ յաղագս այսորիկ յօժարեցի ի պէտս և ի յօգուտ սորա առնել զգիրքս զայս ի հոռոմ և ի յարապիկ և ի պարսիկ գրենաց, ըստ իմոյ կարողութեանս և շնորհի զոր ետ ինձ Տէր գիտութիւն լեզուաց և գրոց նոցա » ։ Ռամկօրէն՝ կամ ժամանակին սովորական լեզուով գրելուն ալ պատճառ կու տայ. « Զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց » ։ Եւ կը յաւելու յայտնելով զորոշ թուական շարագրութեան. « Թարգմանեցաւ և գրեցաւ գիրքս այս յամի 1184 Տեառն մերոյ Քրիստոսի գալստեանն, յորում էր և թուականս Հայոց ՈԼԳ. ի հայրապետութեան սրբազան կաթուղիկոսին Հայոց տեառն Գրիգորի՝ որդւոյ Վասլի բարեպաշտ իշխանի Պահլաւունւոյ, որ և պատճառն է գրոցս » ։

1. Հանդէս ամսօրեայ, Բ տարի (1888) նոյեմբեր ։

Վերջին պարբերութեան մէջ, ինչպէս նաև ուրիշ տեղ մը, հեղինակին գործածած թարգմանել բառը իրաւացի խնդիր մը կը վերցնէ թէ արդեօք ինքնագի՞ր թէ յայլ լեզուաց ի մեզ փոխադրուած է Մխիթարայ այս երկասիրութիւնը։

Պատասխանը կու տանք հմուտ-ազգային բանասիրի մը խօսքերով, զորս յօժարամիտ մեզի կ'իւրացընենք. «Եթէ թարգմանել բացատրութիւնն՝ ամենայն ճշդութեամբը առնունք, ի հարկէ կարծելու ենք թէ թարգմանութիւն է։ Բայց արդեօք պէ՞տք է այսպէս ճշդիւ և անձուկ մտօք առնուլ նոյն բացատրութիւնն. միթէ կարելի մոռնալ անդ թէ պատշաճ չէ՞ աւելի ընդարձակ միտք տալ ի կիր արկած բառին։ Գիտէ ամենայն ոք որ թարգմանել բառն՝ այժմ յարդի լեզուիս միակ նշանակութեամբ կը գործածուի, երբ՝ միով լեզուաւ ըսուածն կամ գրուածն յայլ լեզու փոխել, յորում ինքնին կ'իմացուի՝ սկզբնագրին բովանդակութիւնն առաջի ընթերցողաց դնել ճշդութեամբ, ամբողջապէս, առանց փոփոխութեան և յաւելուածոյ։ Եւ եթէ թարգմանիչ մի պատշաճ համարի ի տեղիս տեղիս իւր սկզբնագրէն շեղիլ, համառօտել կամ ընդարձակել, յաւելուլ կամ յապաւել, հաւատարմութիւնը կը պահանջէ որ յայտնապէս ծանուցանէ։ Սակայն այսպէս չէր առ նախնեօք։ Իրենք թարգմանել բառն ոչ միայն մեր այժմու գործածութեան համեմատ կը վարէին, այլ նաև 'ի գործ կ'ածէին՝ յայտնել, մեկնել, ընդարձակագոյնս բացատրել... նշանակութեամբ. ինչպէս ցայսօր արևելեան հին ազգաց մէջ ալ նոյն իմաստներն ունի այդ բառը։... Կը համարինք թէ Հերացի բժշկապետին ի կիր արկած թարգմանել բառն հարկ չէ ոչ այնչափ անձուկ մտօք առնուլ... Մեզի այնպէս կ'երևնայ որ Մխիթար «կամեցայ... առնել զգիրքս... հաւաքեցի և թարգմանեցի» ըսելով կը յայտնէ թէ ի ձեռին ունենալով այլ և այլ օտար լեզուաւ գրքեր, անոնցմէ քաղած, կարգի դրած, իւր անձնական դիտողութիւնքն ու

փորձառութիւնքն յաւելցուցած,... Նոր գիրք մը յօրինած է հայերէն լեզուաւ: Եւ որովհետեւ ի ձեռին ունեցած գրքերն օտար լեզուաւ էին, անոնցմէ քաղած կամ հաւաքած մասունքն 'ի հարկէ թարգմանելու էր...

«Լեզուի նկատմամբ ալ Մխիթար, տարբեր ընթացք կը բռնէ այլ ռամկախօս մատենագիրներէն: — Ոչ միայն հնագոյն ռամկագիրք, այլ նաև ոչ սակաւք ի յաջորդաց, և ոմանք ի յետնագունաց իսկ, սովորաբար իրենց գրութիւնն գրաբար կը սկսին, և ոմն աւելի՝ ոմն պակաս, բաւական տեղ նոյնպէս յառաջ կը վարեն՝ մէջ ընդ մէջ ռամկօրէն ընդելուզելով. և իրենց բնական լեզուին դառնալէն ետև ալ՝ երբեմն երբեմն երկայն կամ կարճ գրաբար հատածներ կը մուծանեն. այնպէս զի բովանդակ գրութիւնն կ'ըլլայ ռամկախառն գրաբարի և գրաբարախառն ռամկօրէնի հիւսուած: Ասոր հակառակ՝ Մխիթար իւր Յառաջաբանէն ի զատ չունի ամենևին անխառն գրաբար հատուածներ, և ոչ իսկ այնպիսի գրաբարախառն կտորներ՝ ինչպիսի էին ի վեր անդր գրուածներն: Գրեթէ բոլոր գիրքն մի և նոյն ռամկօրէն լեզուաւ կը գրէ. ուստի և հազիւ աստ անդ կը գտնենք՝ գրաբարի յատուկ ձևերէ և կազմակերպութիւններէ և ասացուածներէ զատ՝ միակ և առ առաւելն երկու տող միահետ բուն գրաբար նախադասութիւններ:

«Թէ (Մխիթարայ) առաջիկայ գրուածոյս և թէ այլ ևս ռամկօրէն գրուածոց յատկութեանց մին ևս այն է՝ որ հասարակօրէն լեզուն հետ զհետէ և աստիճանաբար կը ռամկանայ, մինչև ի վերջ կոյս զուտ ռամկօրէնի կերպարանք կ'առնու: Յայտնի է որ ինչպէս յամենայնի՝ նոյնպէս նաև յայսմ բացառութիւնք կը հանդիպին» *:

Այսպիսի ողջպահիկ գիտութեան մը պակասութիւնը դարմանելու համար՝ ուզեց Մխիթար այս գիրքս շարադրել. և իրեն կարողութենէն վեր սեպելով բովանդակ

1. Հանդէս ամսօրեայ. վերը յիշուած թերթին մէջ:

բժշկութեան արուեստին վրայ գրելը, միայն երեք ազգ ջերմանց վրայ ուզեց համառօտիւ՝ նախագիտութեան և ստածման կամ դարմանելու եղանակին վրայ՝ պէտք եղած տեղեկութիւնները տալ. «զոր չարեցաք և հաստատեցաք, կ'ըսէ, ըստ կարգի հին և նոր վարդապետացն»։ Բայց մեր բժշկարանաց մէջ ուրիշ հիւանդութեանց վրայ ալ կարճ գրուածներ կամ հատուածներ կան Մխիթարայ անուամբ, ինչպէս նաև գրուած մը Վասն քարանց և յատկութեանց նոցա և բժշկութիւն նոցա։

Հերացւոյն երկասիրութիւնը հրատարակուած է 'ի Ս. Ղազար Վենետիկոյ յամի 1832։

## ԳՐԻԳՈՐ ՏՂԱՅ

Գրիգոր Տղայ։ — Հայրապետական աթոռը գրաւելը։ — Բանակցութիւնք ընդ կայսեր Բիւզանդիոյ։ — Տարսոնի ժողովը։ — Թուղթք։ — Առ կիռ Մանուէլ։ — Առ Միքայէլ պատրիարք Հոռոմոց։ — Առ վարդապետս հիւսիսոյ։ — Առ Հաղբատացիս։ — Ողբք Երուսաղեմի։

Ներսէսի Շնորհալւոյն Վասիլ եղբօրը որդին էր Գրիգոր Տղայ, որ մանկութեան հասակէն իւր հօր եղբօրը իմաստուն առաջնորդութեանը տակ՝ հմտացաւ աստուածային և արտաքին գիտութեանց, ու կաթուղիկոսարանին մէջ եղող Կոստանդին յոյն քահանայէ մ'ալ տեղեկացաւ հելլենական դպրութեանց. կ'երևնայ թէ հմուտ էր նաև եբրայական լեզուի, եթէ առ Տուտէորդին

գրած Թուղթերուն խօսքերը իրեն վրայ ուզենանք հաւկընալ։

Շնորհալւոյն յուղարկաւորութեան հանդիսին ներկայ գտնուելու համար՝ Հռոմկլայ եկած ըլլալով, հոն գումարուած ամէն եպիսկոպոսաց ընդհանուր հաւանութեամբը անոր յաջորդ ընտրեցաւ. վասն զի անոր ըստ մարմնոյ մերձաւորը՝ ժառանգ և հետևող տեսան նաև որբոյն լուսափայլ առաքինութեանցը. և իր ընտրութեամբը՝ աղգին այսպիսի հօտասէր հայրապետէ մը զրկմանը ցաւը մեղմել ուզեցին։

Այն արժանաւոր ընտրութիւնը՝ ուրախացուց նաև զկայսրն Բիւզանդիոյ Կիռ Մանուէլ, որ մասնաւոր մխիթարութեան Թուղթ մը գրելով առ կաթուղիկոսն, կը յորդորէր զինքը որ հօրեղբօրը ջանիւքն սկսած յայն և հայ ազգաց եկեղեցական միաբանութեան խորհուրդն առաջ տանի։ Անիկայ էր նաև Գրիգորի բաղձանքը. բայց կը վարանէր թէ ինչպէս պիտի կարենայ ամբողջ ազգի մը հաւանութիւնն առնուլ այնպիսի օգտակար խորհըրդոյ մը գործադրութեանը։ Այս վախճանաւ Շնորհալին՝ Ստեփանոս անունով վարդապետ մը արևելք ղրկած էր միութեան հակառակող եպիսկոպոսաց հետ խօսելու, և անոր մեծ օգտակարութիւնը հասկըցնելով՝ հաւանութիւննին առնելու։ Ստեփանոս՝ Կլայեցւոյն մահուընէն ետքը՝ առաջնորդաց հաւանութեան գիրը բերաւ ու անոր յաջորդին յանձնեց. որով սիրտ առաւ հայրապետը, ու սկսաւ կայսեր ու Յունաց Միքայէլ հայրապետին հետ թղթակցիլ. և երկու ազգաց հաւատոյ մասանցը մէջ ունեցած զանազանութեանց մեկնութիւն տալով կամ ուղղելով, կաթուղիկոսը Հռոմկլայ ժողվեց Հայոց, Աղուանից ու Վրաց եպիսկոպոսունքն ու առաջնորդները և վանահայրքը։ Այն գումարմանը մէջ Ներսէս Լամբրոնացին իր աղդու և գեղեցիկ ատենախօսութիւնն ըրաւ, որով շատերուն մտաց տարակոյսը լուծեց, զայլս իրենց ուղղութեանը մէջ հաստատելով։ Փոքրվոյն լմընալէն ետքը՝

ամէն գումարեալ եպիսկոպոսունքը իրենց հաւատոյ խոստովանութիւնը գրեցին, և անոր տակը դրին իրենց ստորագրութիւնը և ղրկեցին առ կայսրն։ Բայց նոյն միջոցին Միքայէլ կայսեր մահը և ուրիշ քաղաքական յեղափոխութիւնք վրայ հասնելով, միաբանութեան խորհրդոյն գործադրութեանը արգելք եղան։

Լատինացւոց հետ ալ սիրով և ընտանութեամբ էր Գրիգոր, և այն պատճառաւ Լուկիոս Գ Հռովմայ քահանայապետին ալ թուղթ գրեց, անոնց եկեղեցական պաշտամանց կարգաւորութեան գիրքը խնդրելով։ Լուկիոս կատարեց անոր խնդիրքը, ու 'ի պատիւ՝ հայրապետական խոյր, եմիփորոն և պալիում ղրկեց՝ կոնդակաւ մը, զոր Լամբրոնացին թարգմանեց։

Այն տարիները Հագարացիք նորէն Երուսաղեմի տիրեցին. Գերմանիոյ կայսրը Փրեդերիկոս Ա՝ խաչակրաց խմբով մը արևելք անցաւ, սուրբ քաղաքը նորէն քրիստոնէից դարձընելու։ Ռուբինեանց պայազատն Լևոն Բ երբ լսեց անոր գալուստը, կաթուղիկոսին հետ մէկտեղ կայսրը դիմաւորելու փութաց. և թէպէտ մեռած գտան զինքը, բայց իրեն իշխաններէն մեծարուելով՝ դարձան իրենց աթոռը 'ի Հռոմկլայ. և հոն հանդիպեցաւ կաթուղիկոսին մահը՝ իւր վաթսուն տարուան հասակին (1193)։

* * *

Գրիգորի Տղայոյ երկասիրութիւններէ՝ միայն մէկ քանի թուղթերը ձեռուընիս հասած են։ Ասոնց մէջ գլխաւորներն են

Առ Կիռ Մանուէլ կայսր 'ի Կոստանդնուպոլիս, Յունաց եկեղեցւոյն Հայոց հետ ընելիք միաբանութեան խնդրոյն համար, որուն սկզբնաւորութիւնը Շնորհալւոյն ատենէն եղած էր։ Շնորհակալ կ'ըլլայ կայսեր այն մխիթարական թղթոյն համար՝ զոր սրբոյն Ներսիսի մահուանը

առթիւ գրած էր իրեն. կը խոստանայ առաջ տանիլ միաբանութեան խնդրոյն նկատմամբ եղած ձեռնարկութիւնը, թէպէտ և 'ի նմին ժամանակի առջևը կը դնէ նաև մեծամեծ դժուարութիւններն, և թէ անկարելի է որ Հայք ծիսականաց մէջ փոփոխութիւն ընդունին, ինչպէս կը պահանջէին Յոյնք։

Առ Նոյն ինքն Կիռ Մանուէլ, յորում կը յայտնէ կայսեր թէ կը փափաքին Հայք որ 'ի գործ դրուի այն միաբանութիւնը՝ զոր թէ՛ թագաւորը և թէ երկու ազգաց օգուտը կը պահանջէր. և թէ մտադիւր յանձն կ'առնու զայն նաև ազգային ընդհանուր եկեղեցական ժողովը՝ զոր ինքը գումարած էր, և որուն բերնէն հաւատոյ խոստովանութեան ընդարձակ թուղթ մը կը հրատարակէ։

Առ Միքայէլ պատրիարք Հռոմոց 'ի Կոստանդնուպոլիս. դարձեալ նոյն խնդրոյն վրայ, և Հայոց ազգային ընդհանուր ժողովոյն հաւանութեամբը։ Այս թղթին վերջերը խօսք կ'ըլլայ հաւատոյ դաւանութեան վրայ՝ զոր առաջ տուած էին առ կայսրն. և կը բովանդակէ համառօտ քաղուած մը նոյն յայտարարութեան։

Առ Հաղբատացիս, և առանձին առ Գրիգոր Տուտէորդի, որ կարծելով ազգին ու եկեղեցւոյն իրաւանցը պաշտպանութիւն ընել իր տեսութեամբն ու գաղափարներով, դէմ ելած էր կաթուղիկոսին և Յունաց, ու անոնց հաւատոցը դաւանութեան վրայ այլ և այլ տգիտական ամբաստանութիւններ ըրած, ու անարգական խօսքերով նախատած Հռոմկլայի ժողովքը։ Սպառնալիք ալ ըրած էր կաթուղիկոսը իւր իշխանութենէն ձգելու։ Հանդարտ ոգւով՝ բայց լի քրիստոսահրաման սիրով և աստուածաբանական հմտութեամբ պատասխան տուած է իրեն Գրիգոր Տղայ, յորդորելով զինքն 'ի զգաստութիւն։ Ոչ լոկ իրեն պաշտամանը և եկեղեցական աստիճանին արժանաւոր օծութեան, այլ նաև մատենագրական ոճոյ և պերճախօսութեան ընտիր օրինակ մը կրնայ ըլլալ այս թուղթս։

Առ վարդապետս հիւսիսոյ, որոնք կամ տգիտութեամբ և կամ նախապաշարմամբ դէմ կը կենային միաբանութեան, ու նոյն ձեռնարկին պատճառ և համամիտ եղող կաթուղիկոսը՝ խրատունք և պարտք կը սեպէին թշնամանել։ Ասոնց ուղղուած է Գրիգորի Տղայոյ այս թուղթը, որ ժամանակաւ երիցագոյն է քան զգրութիւն թղթոյն առ Տուտէորդին։ Ընդարձակ ու աստուածային ոգւով վառուած կը խօսի այս թղթիս մէջ սուրբ հայրապետս, յորդորելով զվարդապետսն՝ որ ամէն բանէ աւելի նախամեծար համարին զսէր և զմիաբանութիւն։

Այս թղթերուն մէջ ընտիր, հարթ և ընդհանրապէս հայկաբան ոճ մը կը բանեցընէ Տղայն, և կը ջանայ Շնորհալւոյն հետևող երևնալ թէ՛ գրչովն և թէ սրտովը։ Միայն թէ Շնորհալւոյն վսեմութիւնը և քերթողաբան ոճը կը պակսի ասոր քով։ Տղայոյն թղթոցը մէջ ընտրելագոյն է առ Հաղբատացիս գրածը։

Գրիգորի կաթուղիկոսի կ'ընծայուին ուրիշ երկու թըղթեր ալ. մէկը առ Լուսիոս հայրապետ Հռովմայ, զոր կը յիշատակէ Լամբրոնացին. իսկ զմիւսը կը յիշէ նոյն ինքն կաթուղիկոսն՝ կայսեր գրած թղթոյն մէջ, որ առ նա ուղղած էր անմիջապէս Շնորհալւոյն մահուընէն ետքը։ Այս երկու թուղթերն ալ դեռ մեր ձեռքը հասած չեն, բայց 'ի Լուսիոս քահանայապետին առ կաթողիկոսն Հայոց գրածէն՝ զոր 'ի լատինէ թարգմանեց 'ի հայ Լամբրոնացին։

**Ողբք Երուսաղեմի**. — Գրիգոր Տղայ իր օրերը հանդիպած Երուսաղեմի առումը յայլազգեաց՝ ողբերգական քերթուածով մը աւանդեց, հետևելով և յայսմ իր հօրեղբօր Շնորհալւոյ ողբոյն՝ յառումն Եդեսիոյ. նոյն չափով ոտանաւոր ալ գրած է։ Բայց ինչպէս յարձակ գրութեանն՝ ասոր մէջ ալ ստորև կը մնայ քան Շնորհալին, թէ և հիներէն ոմանք աւելի բանաստեղծ սեպեր են զսա, գուցէ ուրիշ գրուածոց համար՝ որ մեզի ծանօթ չեն։

Գրիգորի Տղայոց Թուղթերը հրատարակուած են 'ի Ս. Ղազար (1838). իսկ Երուսաղէմի ողբը բնագրաւ և գաղղիական թարգմանութեամբ 'ի Փարիզ. (տես յէջ 620, ուղղելով անճշդութեամբ եղած մեր վրիպակը)։

# ՄԽԻԹԱՐ ԳՈՇ

---

*Մխիթար Գոշ։ — Իր ուսումն։ — Համբաւը։ — Շինած վանքերը։ — Զաքարէ Սպասալար։ — Իր հրամանաւ գումարուած ժողովն յԱնի։ — Գոշի երկասիրութիւնք։ — Դատաստանագիրք։ — Առակք և ոճ։ — Հմտութիւն։ — Պատմական գրուած մը Մխիթարայ անուամբ։ — Առակք։ — Մեկնութիւն Երեմիայ։ — Աղօթագիրք։ — Մանր երկասիրութիւնք։ — Տպագրութիւնք իր գրուածոց։*

Լամբրոնացւոյն օրերը կը ծաղկէր Մեծ Հայաստանի մէջ Մխիթար անունով վարդապետ մը, որ Գոշ կոչուեցաւ՝ մօրուացը ուշ աճելուն պատճառաւ [1]։ Գանձակ քաղաքէն էր. ընտիր ու բարեպաշտ ծնողաց զաւակ, որոնք սրբազան ուսմանց նուիրեցին զինքը. և երբոր տարիքն առաւ՝ կուսակրօն քահանայ ձեռնադրել տուին։ — Շատ տարի քահանայական պաշտամունքը կատարելէն վերջը՝ փափաքելով կատարեալ հմտութեան սուրբ գրոց, և անոնց մէջ իրեն թաքուն մնացած ճշմարտութեանց, հանդիպեցաւ Տաւուշեցի կամ Ուշեցի Յովհան վարդապետ-

1. «Այսպէս կոչեցին զնա՝ զի հեզգագոյն էին ալիք նորա». Կիրակոս։

տին՝ որ նոյն ժամանակին մէջ գիտութեամբք համբաւաւոր անձ մը սեպուած էր. յառաջագոյն աշխարհիկ, ու ամուսնոյն մահուընէն ետքը կրօնաւորելով՝ քահանայական օծութեան և վարդապետական աստիճանի բարձրացած։ Մխիթար աշակերտեցաւ յետոյ ուրիշ հոգևորականաց ալ, և վարդապետական անուն և պատիւ ստացաւ անոնց քով։ Բայց ինքը անով գոհ չըլլալով, դէպ 'ի արևմուտք գնաց, Սեաւ լերան վրայ բնակող վարդապետներուն քով. և առանց իմացընելու թէ ինքն ալ վարդապետական իշխանութիւն ունի, շատ օգուտ քաղեց անոնցմէ. ու դարձաւ 'ի Կարին, ուր ծանօթացաւ Քուրդ անուն բարեպաշտ իշխանին, որ Վրաց թագաւորէն սարտուցեալ եկեր էր հոն. և Մխիթար հետը մտերմանալով՝ սիրելի եղաւ իշխանին։ Անկէ վերադարձաւ իւր հայրենիքը. ուր իմաստութեամբը մեծ համբաւ ստանալով, շատերը կու գային իրեն աշակերտելու. և ինչպէս Կիրակոս պատմիչը կը վկայէ, ամենայն ոք կը փափաքէր տեսնել զինքը, և իր խօսքը մտիկ ընել։ Այնչափ մեծ էր անունը՝ որ ոչ միայն ուսմանց փափաքով վառուած երիտասարդութիւնն, այլ նաև շատ վարդապետներ իրենց մեծութեան աստիճանը ծածկելով, աշակերտի պէս կու գային անոր քովը որ մտիկ ընեն. ետքը իրմէն հրաման առնլով՝ նորէն վարդապետութեան աստիճանը կ'ընդունէին։ Եւ թէպէտ բազմաթիւ էին իր անուանի աշակերտքը, բայց անոնց մէջ ամենէն աւելի նշանաւորներն էին Թորոս անունով մէկը, որուն հայրը հայկազն էր և մայրը ասորի, որ առաքինի և ուսումնական կեանք մը անցընելով, խոր ծերութեամբ վախճանեցաւ ու 'ի Հաղբատ թաղուեցաւ. և Վանական Յովհաննէս վարդապետ՝ որուն վրայ առանձին պիտի խօսինք։ Բայց Մխիթար իր հայրենի քաղաքին մէջ նեղուելով 'ի Տաճկաց՝ յորդորանօք Ստեփանոսի Աղուանից կաթուղիկոսի գնաց 'ի Խաչէն՝ Հաթերքոյ Վախթանկ իշխանին և անոր եղբարց քով, և յորոց մեծապէս պատուեցաւ։

*Հոն քանի մը տարի կենալէն ետքը՝ իշխանն Քուրդ եկաւ յիւր հայրենիսն յաշխարհն Կայենոյ և 'ի բերդն Մահկանոյ. և Վրաց Թամար թագուհին ոչ միայն սիրով և պատուով ընդունեցաւ զնա՝ դարձընելով հայրենական ստացուածոց ժառանգութիւնն, այլ նաև ուրիշ տեղեր ալ տալով իրեն։ Գոշ՝ յիշելով անոր բարեկամութիւն ու սէրը՝ փութաց առ նա։*

*Վարդապետն՝ որուն քով աշակերտած էր Գոշ՝ երբոր լսեց անոր իմաստութեան համբաւը, և եթէ կրկին դարձեր է իւր հայրենիքը, եկաւ անոր քով, ու իրենց հին սիրովը միաբանելով, կեցան Գետիկ վանքին մէջ, զոր նոյն ինքն Գոշ մեծածախ և փառաւոր շինել տուեր էր Հաղբատայ մօտ, Կայենոյ կամ Կայենական գաւառին մէջ։ Վանքին առաջնորդն որ Սարկաւագ վարդապետ կը կոչուէր, և յառաջագոյն աշակերտած էր Մխիթարայ, ուրախութեամբ ընդունեցաւ զինքը, և կը սպասաւորէր յօժարութեամբ այդպիսի հռչականուն անձի մը։ Երբոր նոյն վանքը կործանեցաւ սաստիկ երկրաշարժով մը, և նորոգութիւնն անհնարին կ'երևնար, բնակիչքն ուզեցին հեռանալ 'ի տեղեացն և ցրուիլ. մանաւանդ որ նեղուէին ալ 'ի մերձակայից. որովհետև Սարգիս անունով իշխան մը՝ իր գեղէն հոն փոխադրուելով, վանք մ'ալ ինք շիներ, և երկու ուխտերու մէջ անհամաձայնութեանց և գժտութեանց առիթք չէին պակսեր։ Գոշ յորդորեց զիրենք չցրուիլ, և ինք անոնց բնակութեան համար ուրիշ վանք մը շինեց նոյն Գետիկ անուամբ՝ Տանձուտայ ձոր ըսուած տեղը, Իւանէ մեծ իշխանին հրամանաւն ու օգնութեամբ։ Ուրիշ շատերն ալ օգնական եղան իրեն, և մասնաւորաբար Խաչենոյ իշխանը Վաղթանկ և անոր կինը, և Զաքարէ Սպասալար՝ եղբայրն Իւանէի։*



Այս Զաքարէ Սպասալար՝ մասնաւոր սէր և մեծարանք կը ցուցընէր Գոշ վարդապետին, և իրեն խոստովանութեան հայր ընտրած էր զինքը։ Այն օրերը Հայաստանի արևելեան կողմի վանքերուն մէջ շատ տեսակ շփոթութիւններ ծագած էին, եպիսկոպոսական ու կաթուղիկոսական աթոռոց օրինաւոր յաջորդութեանն նկատմամբ։ Այս պատճառաւ Զաքարէ իշխանը հրամայեց որ ժողովք մը գումարուի յԱնի Շիրակայ, ու հոն ժողովեցան նոյն վարդապետներն ու եպիսկոպոսունքը՝ որ առաջ գումարուած էին 'ի Լօռի։ Բայց Մխիթար վարդապետը իւր ծերութիւնն ու հիւանդութիւնը պատճառ բերելով՝ հրաժարեցաւ ժողովոյն ներկայ գտնուելէն. այլ թուղթ մը գրեց առ իշխանն Զաքարէ, թէ ինչ որ վարդապետք նոյն ժողովոյն մէջ վճռեն, ես ալ կ'ընդունիմ ու կը հաւանիմ անոնց սահմանածին։ Երբոր ժողովը գումարեցաւ, Զաքարէ ստիպեց զվարդապետս որ իր խնդրուածոցը հաւանին, և Սսոյ ժողովոյն մէջ սահմանուածներուն ընդունելի ըլլալը՝ թղթով ալ իրեն ձեռքը յանձնեն։ Երբ անոնք նեղը մտան, ամէնքը մէկ բերան գրուցեցին. «Այդ բանը անկարելի է որ մենք կարենանք ընել առանց մեծի վարդապետին Մխիթարայ»։ Այն ատենը Զաքարէ հանեց այն թուղթը զոր ընդունած էր 'ի Գոշէ. եպիսկոպոսներէն ոմանք հաւանեցան. ուրիշներն ալ չհամոզուելով՝ Սպասալարէն ժամանակ ուզեցին որ իրենք ալ կարենան գրել առ Մխիթար, և խնդրել որ անձամբ յանձն առնու ներկայ գտնուիլ այն գումարման։ Այս թղթին մէջ կ'աղաչէին որ ամենայն նեղութիւն և դժուարութիւն յանձն առնելով՝ գայ 'ի ժողովն. ու եթէ, կ'ըսէին, ճամբու մէջ մահ հանդիպի քեզի՝ անունդ հին սուրբ հայրապետաց կարգը կը դնենք. միայն թէ դու յանձն առնուս գալ առ մեզ։

Մխիթար վարդապետ անոնց թուղթը կարդալով՝ իմացաւ յայտնապէս թէ առանց իրեն անկարելի պիտի ըլլայ անոնց համոզուիլը. ուստի Դետկայ վանքէն ելլելով՝ Անի քաղաքը եկաւ։ Բայց քաղքին դռնէն ներս չմտած՝ Զաքարէ մարդիկ ղրկեց որպէս զի ժողովքի չըգացած՝ իրեն երթայ. և թէպէտ Մխիթար չուզեց մտիկ ընել, բայց իշխանը բռնութեամբ ձիուն երասանակէն բռնելով՝ Զաքարէի տարաւ զինքը։ Գումարուած վարդապետներ երբ այս բանս լսեցին, շատ խռովեցան. և մէկէն Ներսէս անունով վարդապետ մը ղրկեցին առ Մխիթար, որպէս զի Զաքարէի տունը չմտած՝ իրենց գայ։ Հասաւ Ներսէս, ու տեսաւ որ անիկայ Սպասալարին դըռնէն ներս մտնելու վրայ էր. ու չկարենալով ինքն ալ մտնել, անոր ետեւէն ձայնեց, ու ժողովոյն աղաչանքը ծանոյց անոր։ Բայց երբ չկրցաւ զինքը ետ դարձնել, անոր ու Զաքարէի վրայ շատ բան խօսեցաւ, ու մեծ շփոթութիւն ձգեց ժողովքին մէջ։ Իսկ Զաքարէ հարցուց Մխիթարայ կարծիքը. ու տեսաւ թէ անիկայ դէմ չկեցաւ, ա՛լ չուզեց ժողովոյն հաւանութեանը մնալ. « Որովհետև եկիր դու, ըսաւ, — ինչպէս կ'աւանդէ Կիրակոս, — ինձ ոչինչ փոյթ է զնոցանէ ». ու հրաման ղրկեց ժողովքը գումարողներուն որ ամէնքը իրենց տեղը դառնան. Մխիթար ալ մասնաւոր թղթով յորդորեց զիրենք որ Սպասալարին խօսքը մտիկ ընեն, և իւրաքանչիւր ոք իւր վանքը դառնայ։

Այս երկայն դէպքը պատմեցինք, ցուցընելու համար թէ ո՛րչափ մեծ էր և պատկառելի Մխիթարայ անունը թէ՛ եկեղեցականաց և թէ աշխարհական իշխանաց առջև։ Ժամանակակից պատմիչք շատ կը գովեն զինքը. և Կիրակոս՝ հռչակաւոր և մեծիմաստ գիտութեամբ կը կոչէ. ուրիշ տեղ մըն ալ՝ այր իմաստուն և վարդապետական ուսմամբ հռչակեալ։ Վարդան պատմիչն ալ՝ սքանչելի գիտութեամբ կը կոչէ զՄխիթար։

Ի Գետիկ կամ 'ի Հաղբատ հանդիպեցաւ Մխիթարայ

Գոշի մահը, Հայոց ՈԿԲ (1213) թուականին « ալեորեալ և լի աւուրբք... 'ի խորին ծերութեան »։

* * *

Գոշի երկասիրութեանցը մէջ նշանաւոր է

Դատաստանագիրքը, զոր Խաչենոյ Վաղթանկ իշխանին ու Աղուանից Ստեփանոս եպիսկոպոսին խնդրանօքը յօրինեց Հայոց ՈԼԳ (1184) թուականին։ Այս գործոյն շարադրութեանը պատմութիւնը ինքը Մխիթար կ՚ընէ համառօտիւ յիշատակարանին մէջ, հետևեալ խօսքերով. « Ձեռնարկութիւն մեզ յայսմ իրողութեան եղև 'ի թուականութեանս Հայոց ՈԼԳ, և շրջանին երթալոյ 'ի բաց ՃԱ, որ կոչի փոքր. իսկ հռոմին ՆԵ. յամս անիշխանութեան թագաւորութեան մերոյ. 'ի վաղնջուց 'ի ժամանակի մնացելոց սակաւ իշխանացս 'ի կողմանս Խաչենոյ, ընդ ժամանակս անուանելոյ Հասանայ որդւոյ Վախտանգայ կրօնաւորեցելոյ, և որդւոյ նորա Վախտանկայ, 'ի դղեկին որ կոչի Հաթերք, գլխաւորի այլոց իշխանաց։ Եւ կողմանցս Կիլիկիայ՝ մեծի իշխանին Ռոբենի, յամի յորում մեռաւ յաղթող թագաւորն Վրաց Գէորգէ. 'ի հայրապետութեան տեառն Գրիգորի Հայոց մեծաց, և դիտապետութեան տեառն Ստեփանոսի տանն Աղուանից յաշխարհէս Առանայ, 'ի նահանգիս որ կոչի մայրաքաղաքին Գանձակայ, յանապատ և յեղբայրանոցս անուանեալ Դասնոյ, սկզբնաւորեալ 'ի լեռնակողմն մենաստանին կոչեցելոյ Հոռոմաշէն, ընդ հովանեաւ սրբոց եկեղեցեաց կուսաստանացն յիշեցելոց, ձեռնատուութեամբ հօր Յովսեփայ և եղբօր Պաւղոսի յորդորմամբ յառաջարկութիւնս։ Բայց գծագրութիւն յիշատակիս 'ի նախագրութիւն գրոցս դատաստանի եղև, զի կատարած սորա 'ի ձեռն մեր միանգամ ոչ է, որպէս ասացեալ է կանխաւ զպատճառն։ Եւ արդ ոչքան է կար, անկանիմք հիւսել զկնի գիրս դատաստանի. ընդ որս և զայս եւ

*մաղթեմք,... եթէ հաճոյ ոմանց թուի յօրինակէ առնուլ փոխել գիրս դատաստանի», և այլն։*

*Այս երկասիրութեան մէջ Մխիթարայ աղբիւրներն եղած են Բնական օրէնք, Քրիստոնեայ ազգաց իրաւաբանական աւանդութիւնք, մերթ նաև Մահմետական օրէնք, Հին և Նոր կտակարանք, և մանաւանդ Մովսիսեան Հնգամատեանը, Հայկական կամ ազգային ժողովոց կանոնք։ Իրեք գլխաւոր մասերու բաժնած է Դատաստանաց գիրքը. և ընդարձակ Նախադրութիւն մը. — Եկեղեցական կանոններ, ու — Աշխարհական օրէնք։ Նիւթոյն արժանի հմտութիւն կը գործածէ Գոշ, և փութաջան հետազօտութիւն. անանկ որ կ'երևնայ թէ բաւական խորունկ ուսումն և հետևաբար տեղեկութիւն ստացած է օրինաց, և անով յաջողեր է այսպիսի գեղեցիկ և իրաւամբք ազգին հաճոյ և ընդունելի երկասիրութիւն մը արտադրել։ Նախ իբրև յառաջաբանական տեղեկութիւնք՝ տասնումէկ գլուխք բանի կան, որոնց մէջ տեղնիտեղը կը բացատրէ գրուածքին վախճանը, և իրեն ի՛նչ ոճ բռնելը նոյն աշխատասիրութեան մէջ, նաև դէմն եղած դժուարութիւններն՝ ազգին համար նոր այսպիսի երկասիրութեան մը մէջ, զոր և կը յիշեցընէ՝ զայդ իրեն յանձնող Ստեփանոս կաթուղիկոսի Աղուանից. «Աղաչեմ զքեզ. կ'ըսէ, պատուական գլուխդ եկեղեցեաց տանս Աղուանից, մի՛ վայրապար և թեթև գործ համարիր զհոգևոր հարկ զոր եդիր 'ի վերայ իմ»։*

*Այս տասնըմէկ գլխէն զատ՝ երկու հարիւր յիսունըմէկ գլուխք կը կազմեն Դատաստանաց գիրքը ու կանոններն, մասնաւոր ցանկով մը՝ որ նոյնպէս Գոշի աշխատասիրութիւնն է։ Իր օրէնքները սահմանելու համար՝ ջանացած է Մխիթար՝ աստուածային ու քաղաքական օրէնքներն իրարու հետ միաբանել. այն վախճանաւ քաղուած մը կը սեպուի այս գիրքս սուրբ գրոց, առաքելական կանոնաց և ժողովոց սահմանադրութեանցը, և այլ և այլ ազգաց կանոններուն, համառօտ ու վայելուչ ոճով։*

Աղուանից Ստեփանոս կաթուղիկոսին հրամանաւ շարագրուած է, ըսինք, այս գիրք. բայց ոչ յիշատակ և ոչ ալ պատմական երաշխաւորութիւն մը կայ՝ թէ Մխիթարայ երկասիրութիւնը պարտաւորիչ օրէնք կամ սահմանադրութիւն մը սեպուած ըլլայ երբէք յազգին՝ յատուկ ինքնօրինութիւն ունեցած ատենին ալ։ Առ այդ կը պահանջուէր քաղաքական ու եկեղեցական բարձրագոյն իշխանութեանց հաւանութեան կնիքը՝ որ կը պակսի, ուստի ինչպէս հեղինակին ժամանակ, սանկ ալ իրմէ ետքը՝ պարզապէս գիտնական հետազօտութիւն և արտադրութիւն մը սեպուած է։

*
* *

Ձեռագրաց մէջ երբեմն համառօտած ալ կը գտնանք այս գիրքս, ըստ պիտոյից տեղւոյն։ Այսպիսի աշխատասիրութիւն մը ըրած է նաև Սմբատ Գունդըստապլ, ինչպէս ետքը պիտի տեսնենք։ Անւոյ գաղթականքն ալ 'ի Լեհս՝ թարգմաներ են Թաթարերէն և Լատիներէն. ետքինս տպագրեցաւ 'ի Վիեննա այսպիսի խորագրով. Das alte Recht der Armenier in Lemberg, von Dr. Ferdinand Bischoff. Wien, 1862. Թարգմանիչը յառաջաբան տեղեկութեանց մէջ կը ծանուցանէ թէ 'ի Լեհաստան գաղթող և տեղական իշխանութիւններէ զանազան ազատութեանց շնորհք վայելող Հայք՝ իրենց զարգացման ընթացքին շատ անգամ կը բռնադատուէին հակառակիլ գերմանական քաղաքային հասարակութեան հետ, մանաւանդ դատաստանական իրաւասութեանց մէջ. որովհետև Հայք իրենց հին աւանդութեանց վրայ հիմնուելով չէին ուզեր ճանչնալ ուրիշ դատաստանական իրաւասութիւն՝ բաց 'ի իրենց ազգային դատաւորաց և իշխանաց յատուկ և ընդունուած օրէնքէն։ 1518 թուականին Սիգիսմունդ Ա թագաւորն հրամայեց Հայոց որ թարգմանեն իրենց օրէնքն 'ի հայէ 'ի ռութեն և կամ

'ի լատին լեզու. և ներկայացընեն իրեն 1519ին գումարուելի պետական ժողովոյն մէջ. զոր և ըրին Հայք՝ լատինական թարգմանութեամբ 'ի Կրակաւ քաղաքի ընծայելով թագաւորին: Սիգիսմունդ քննել տուաւ զանոնք, ու իր աւագանւոյն հետ խորհրդակցելով՝ քանի մը կարևոր սեպուած փոփոխութիւններ ընելէն ետքը, հաճեցաւ տալ իր հաւանութիւնն և հաստատութիւնը Հայոց օրինագրքին:

« Տարակոյս չիկայ, կ'ըսէ Պիշոֆ, որ այս օրէնսգիրքը ոչ միայն Լէմպէրկի՝ այլ Լեհաստանի ուրիշ քաղաքաց մէջ բնակող Հայք ալ ընդունած էին. և ասոր յայտնի նշանը՝ ձեռագիր օրինակաց զանազան տեղուանք գըտնուիլն է: Շքեղ կերպով զարդարուած և Սիգիսմունդ թագաւորին համար պատրաստուած բնագիրը հայերէն և լատին լեզուով՝ կը գտնուի, կ'ըսէ, Չիալինսկի կոմսին քով: Լատին թարգմանութեան ալ երկու ձեռագիր օրինակք կան 'ի Լէմպէրկ, յորոց մին կայսերական համալսարանի մատենադարանին մէջ հետևեալ խորագրով. Statuta juris Armenici per Sigismundum primum Regem Poloniæ potentissimum approbata et confirmata, jussuque ac mandato ejusdem Regiæ Majestatis ex lingua illorum nativa in latinum sermonem translata et hic fideliter ex exemplari descripta ».

Գաղթական հայ աւագանւոյն ձեռքով թարգմանուեցաւ այս օրինաց գիրքը նաև 'ի լեհ բարբառ յամի 1601[1]: Պիշոֆի երկասիրութիւնն ալ Մխիթարեանք Վեննայի հրատարակեցին աշխարհաբառ, 'ի Վիեննա 'ի 1890:

1. Մխիթարայ Դատաստանագրոց բնագրին առաջին և միակ տպագրութիւնն ըրաւ Բաստամեանց Վահան վարդապետ, և տպագրեց յԷջմիածին 'ի 1880, ընդարձակ և հմուտ յառաջաբանով, բազմաթիւ ծանօթութիւններով և ընթերցուածոց բաղդատութեամբ և համեմատութեամբ: Աշխատասիրողին իրաւաբանական գիտութեանն և յարատև ուսմանց արժանաւորապէս պատիւ ընող երկասիրութիւն մը, յորմէ և մեք օգտուեցանք համառօտ տեսութեանս մէջ:



Մխիթարայ ընծայուած է Դատաստանագրոց ամենահին և իրեն ժամանակակից գրչագրի մը մէջ, որ յոմանց հաւանականաբար հեղինակին ձեռաց գիրը սեպուած է, նաև պատմական հետաքննին գրուած մը՝ այս մակագրով. «Նարք հայրապետացն Աղուանից և որ ինչ առ նոքօք դէպք»: Յօրինակին իննևտասն էջերու մէջ կ'ամփոփուի այս գրուածքը. բայց յետին թուղթը առ հնութեան եղծեալ և շատ տեղ անընթեռնլի կը մնայ. այսպէս նաև ուրիշ այլ և այլ տեղուանք՝ փափաքելի կ'ընեն աւելի անաղարտ պահուած օրինակի մը գիւտը: Կ'երևնայ թէ իրմէ առաջ պատահած անցիցը վրայ համառօտագրելով, երկար գրած է Մխիթար իր ժամանակին մէջ հանդիպած անցից վրայ. յորում անշուշտ նաև իրեն կրած հալածանաց վրայ, որ հօս հարևանցի կերպով մը՝ յիշատակուած է: Ջալալեան Սարգիս արքեպիսկոպոս՝ Ուղեւորութեան գրոցը մէջ Խաչապատ ձորոյ մենաստանին վրայ խօսելու ատեն որ յաշխարհին Աղուանից, կ'ըսէ. «Դտաւ աստ և պատմութիւն անցից Գոշ Մխիթարայ»: Այրիվանեցին ալ ազգային ուրիշ պատմագրաց թուոյն մէջ կը յիշատակէ նաև իրեն անունը:

Այս եկեղեցական–պատմական գրուածքին սկզբնաւորութիւնն է, «Փառք Փրկչին մերոյ Յիսուսի, ընդ նմին Հօր և Հոգւոյն, որ ետ զդադարումն աստանօր տալ գըրոցս Դատաստանի. զի թէ և յառաջագոյն ասացաք գրելով զսակաւ յիշատակարանն եթէ աւարտումն սորա ոչ է. սակայն մեք այժմ հանգուցանել կամեցաք գրելով ըստ կարի, ոչ խափանել զայլոց որք կամին գրել և յաւելուլ: Եւ թէպէտ յամի յորում սկսաք՝ գրեցաք զեղեալ չափս դատաստանի, սակայն յաղագս հալածանաց որ եհաս մեզ ընտանի և ոչ օտար, յապաղեաց գրել զյիշատակս զայսոսիկ:

«Բայց համարեցաք և զայս ևս հարկաւոր լինել, զի զչար կարգի հայրապետացն դիցուք զԱղուանից. զի և յայնոսիկ յամենեսեանն զոսսա որ այժմ ունին յարմարեսցուք. մի՝ ըստ այդմ գրեսցուք պատճառի. երկրորդ՝ զի թէ ոք յօժարեսցի գրել պատմութիւն զկնի գրեցելոյն պատմութեանն Մովսեսի Դասխուրանեցւոյն, որ ըզբովանդակ պատմէ զտանս Աղուանից, դիւրին լիցի յայսմանէ զչար հայրապետացն առնուլ. զի ոչ զամենեցուն անուն՝ 'ի նորայն գտցէ պատմութեան, բայց զայնոցիկ զորոց գրեաց։ Զի յայնմ ժամանակէ մինչև ցայժմ՝ ոչ ոք գրեաց. և եթէ պատահի ոք՝ յոյժ հարկաւոր է։ Եւ արդ դիցուք զկարգն»։

Եւ կը յարէ անմիջապէս. «Շարք հայրապետացն Աղուանից, որք կացին զկնի տեառն Եղիշայի որ եկն յԵրուսաղեմէ»։



Առակք. — Հարիւր իննսունի չափ առակներ ալ շարագրած է Մխիթար, և իրաւամբ այս դժուարին արուեստին մէջ անուն ստացած ու Հայոց Եզովբոսը կոչուած։ Իրաւ է որ իւր առակացը մէջ՝ ոչ յոյն քերթողին հանճարն ու փիլիսոփայութիւնը կայ, և ոչ ալ Փեդրոս՝ լատին առակախօսին վայելուչ զուրցուածքը. բայց անանկով ալ աննշան երկասիրութիւն մը չէ, մանաւանդ լեզուին նկատմամբ։ Գիւտերն ալ շատ անգամ հասարակ են, ու առանց նորութիւն մը ունենալու, որոնցմով անհամեմատ առաւելութեամբ հաճոյ կրնային ըլլալ իւր առակները։ — Թէպէտ և Կիրակոս՝ Մխիթարայ գրուածոց խօսքն ըրած ատեն՝ Առակաց յիշատակութիւնը չըներ, բայց ձեռագիրք ընդհանրապէս իր անուամբը կը յիշատակեն։

Առակաց կրկին տպագրութիւն եղած է 'ի Վենետիկ. նախ 1790ին, և ապա 'ի 1842, որ թէ՛ տպագրութեամբն և թէ ընթերցուածոց ուղղութեամբը ընտրելագոյն է քան զառաջինն։

*Մեկնութիւն Երեմիայ.* — Կիրակոս պատմիչը Մխիթարայ աշխատասիրութեանցը վրայ խօսելով, այսպէս կը գրուցէ. «Եթող նա յարձան և յիշատակ գերեզմանի՝ գիրս իմաստախոհս յօգուտ իմաստասիրաց, համառօտ մարգարէութեան Երեմիայի գեղեցկադիր կարգօք»։ Այս մեկնութիւնը ոմանք ուզեցին Ասողկայ ընծայել, ինչպէս առաջ յիշատակեցինք, բայց գրուածքին ոճն ու լեզուն աւելի կը հաւատարմացընեն անոնց կարծիքը որոնք Մխիթարայ կ'ընծայեն[1]։ Համառօտ՝ բայց ընդհանրապէս ընտիր երկասիրութիւն մըն է ասիկայ. և ինքը գրիչը կը վկայէ՝ թէ այլ և այլ պատճառներու համար ստիպուած ըլլայ՝ սակաւաբան ոճ մը գործածել։

*Աղօթք.* — Մխիթարայ անուամբը այլ և այլ ընտիր ու ջերմեռանդն աղօթքներ կան, պատարագի մատուցման ժամանակ զուրցուելու համար։ Դարձեալ խրատական գրուածք մը նոյն սուրբ խորհրդոյն սպասաւորելու համար, զոր կը յիշէ և Կիրակոս. «(գրեաց) սուղ ինչ կանոնս վասն սպասաւորելոյ մարմնոյ և արեան տեառն, թէ որչափ պատշաճ իցէ կամ որպիսի կարգօք»։ Ձեռագիրք կը խորագրեն. «Եռամեծի և քաջ վարդապետի Մխիթարայ Գօշի ասացեալ զաղօթս 'ի ժամ սուրբ պատարագին»։

Կ'աւանդէ դարձեալ Կիրակոս թէ Մխիթար շարագրած ըլլայ նաև զանազան խրատական թուղթեր, և գիրք մը *Ցայտարարութիւն ուղղափառ հաւատոյ* կոչուած, 'ի խնդրոյ Զաքարէ մեծ զօրավարին և անոր Իւանէ եղբօրը։ Ուրիշ գիրք մըն ալ որուն մակագիրն էր. «Ողբ 'ի վե-

1. Իր անունը կը կրէ նաև 'ի Մատենադարանին Էջմիածնի գըտնուած օրինակը (Թիւ 1228)։ Արդեօք Բարձրահայեաց Ս. Աստուածածնի վանուց Մատենադարանին գրչագիրն ալ (Թիւ 224) Գօշի անունովը կը յիշատակէ. «Արարեալ կրկին աշխատութեամբ Գօշ վարդապետին Մխիթարայ. և զթերի և զանյայտ բանս 'ի գիւտ և 'ի յայտ ածեալ սուղ և սատար մեկնութեամբ առ 'ի պէտս ուսումնասիրաց»։

բայ բնութեանս՝ 'ի դիմաց Ադամայ առ որդիս իւր, և 'ի դիմաց Եւայի առ դստերս իւր»։ Ղազարու յարութեան վրայ ալ ճառ մը կը յիշուի Մխիթարայ Գօշի անուամբ Էջմիածնի Մատենադարանին գրչագրաց ցուցակին մէջ (Թիւ 1227)։

# ԽԱՉԱՏՈՒՐ ՏԱՐՕՆԱՑԻ

Խաչատուր Տարօնացի։ — Ազգային երաժշտական արուեստին մէջ ունեցած արդիւնքը։ — Խորհուրդ խորին երգը։ — Տաղեր — Վարդան Հայկազն։ — Դաւիթ Քոբայրեցի։ — Սամուէլ Անեցի։ — Դաւիթ վարդապետ։ — Արիստակէս վարդապետ և իւր աշակերտ Եփրեմ։ — Ստեփաննոս Տիրացու վարդապետ։ — Յովհաննէս կրօնաւոր։

Մխիթարայ Գօշի ժամանակակից էր նաև Տարօնացի Խաչատուր վարդապետն, որ Գուգարաց աշխարհքին մէջ եղած Հաղարծնի վանքին առաջնորդն էր. «Այր սուրբ և առաքինի, ասանկ կը վկայէ անոր վրայ Կիրակոս, և գիտութեամբ հռչակեալ, մանաւանդ երաժշտական արուեստիւ»։ Հաղարծնի վանաց ուխտը՝ որ իրմէն առաջ շատ խանգարուած ու աւրուած էր, թէ՛ շինութեամբք և թէ բարեկարգութեամբ պայծառացոյց։ Մեծ պատիւ գտաւ Վրաց Գորգի թագաւորէն։ Պատմիչը կ'աւանդէ թէ ինքը բերած ըլլայ խազը արևելքի կողմերը, այսինքն վերին կամ մեծ Հայաստանի մէջ. ու իրմէն առաջ եղող իմաստուն երաժշտաց երգերը՝ որ մոռցուեր կամ բոլորովին այլակերպուած էին, գրեց ու շատերուն սովրե-

ցուց: Հաղարծնի վանքին մէջ մեռնելով, եկեղեցւոյն արեւմտեան կողմը թաղուեցաւ:

Գանձարանաց ու տաղարաններու մէջ բազմաթիւ երգեր ու գանձեր կը գտնուին Խաչատրոյ անուամբը, և որոց շատին սկզբնատառքը իր անունը կը յօդեն: Բայց անոնց մէջ ամենէն աւելի գեղեցիկն ու մտադրութեան արժանաւորը՝ Խորհուրդ խորին երգն է, որ կ'երգուի քահանային զգեստաւորուելուն ժամանակ՝ սուրբ պատարագը մատուցանելու համար: Այս երգիս յօրինման պատճառը հետեւեալ դէպքն եղած է. Զաքարէ սպասալար իշխանը տեսնելով որ պատարագի մատուցման արարողութեանց մէջ շատ քմահաճոյ նորութիւններ մտած են, մասնաւոր ժողովքով մը ուզեց այն անկարգութիւնները վերցընել: Երբ իր վախճանին հասաւ, հրամայեց որ դուրսը բացօթեայ տեղ մը՝ սուրբ խորհրդոյն պաշտամանը վայելուչ խորան մը կանգնելով, հանդիսաւոր պատարագ մատուցուի՝ եկեղեցւոյ հին և հարազատ արարողութեամբքը: Այս առթով շարադրեց Խաչատուր վերը յիշուած ծանօթ երգը:

Տաղարանաց մէջ յիշատակուած երգերը հետեւեալներն են, յորոց ոմանք Խաչատրոյ Կեչառեցւոյն են անշուշտ. բայց զանազանելը դժուարին ըլլալով՝ ամէնը մէկէն հարկ սեպեցինք նշանակել:

Խայտացելոյն յորովայնէ. — Յովհաննու կարապետին.
Խանդաղալից սրտիւ. — Քառասուն մանկանց.
Խանդաղակաթ սրտիւ. — Բեթղեհեմի մանկանց.
Խաչ կենաց նշան յաղթութեան. — Վարագայ խաչի.
Խաչաբարձ արհի պանծալի. — Թադէի.
Խաչազարդ խաչելոյն. — Ոսկեբերանի.
Խաչի քո Քրիստոս երկիր պագանեմք. — Գիւտ խաչի.
Խնամք խորհրդոյն, գութ արարչական. — Յարութեան.
Խնամք սիրոյ խնդիր փրկութեան. — Ծննդեան.
Խնդա խորան Աստուծոյ բանին. — Ծննդեան.
Խնդա Սիոն խորան խորհրդոյ. — Ծաղկազարդի.

Խնդա տաճար. մայր սեռան Յիսուսի. — Ծննդեան.
Խնդահրաւէր դասք. — Ծննդեան.
Խնդահրաւէր մանկունք Սիոնի. — Թէոդորոսի և Գէորգեայ.
Խնդութեան ձայն, քաղցր աւետեաց. — Աւետեաց.
Խնդութեան ձայն բերկրական. — Տեառնընդառաջին.
Խնդութեան առն այսօր կատարեմք. — Կիրակամտի:
Խնդութեան քարոզ՝ քաղցր կենդանի. — Ստեփաննոսի.
Խնկաբեր ծառ, ծաղիկ անթառամ. — Ծննդեան.
Խոնարհեալ բանին Աստուծոյ. — Մարտիրոսաց.
Խոնարհիմք հոգւոյն հեզութեամբ. — Լուսաւորչի.
Խոստովանիմք զքեզ միածին. — Ոսկեանց.
Խորան փառացն Աստուծոյ. — Ծննդեան.
Խորան քեզ ողբայ. — Վահանայ Գողթնացւոյ.
Խորհուրդ անշարժ հայրաշարժ. — Թադէի և Բարդողիմէոսի.
Խորհուրդ անքնին անհաս. — Դաւթի և Յակոբայ.
Խորհուրդ ընտրեալ յառաջ գուշակեալ. — Խաչի.
Խորհուրդ հրաւիրմամբ քոյոյ. — Յովհաննու Երուսաղեմացւոյ.
Խորհուրդ հանգստեան. — Թաղման.
Խորհուրդ յառաջ քան զիսկզբանէ. — Ղազարու.
Խորհուրդ հրաւիրեալ կամաց — Յարութեան.
Խորհուրդ սոսկալի անիմանալի. — Աւագ ուրբաթու.
Խորհուրդ որ ծածկեալ էր. — Աւագ ուրբաթու.
Խորհրդաբար պատուեալ պատկերին. — Սարգսի.
Խորհրդազգած քոյ մարդեղութեանդ. — Առաքելոց.
Խորք անքնին, անհաս անչափին. — Յովհ. և Յակոբայ.
Խրամատեալ կանոն օրինի. — Ղեւոնդեանց.
Խրատ մարդասիրին. — Անուանի:

* * *

ՎԱՐԴԱՆ ՀԱՅԿԱԶՆ հեղինակ վերջի տարիներուս գտնուած քերթողական քանի մը էջ երկասիրութեան՝ հետևեալ խորագրով. Տաղ գերեզմանականք վասն փոխման երանելոյ և սուրբ կաթողիկոսին Հայոց Գրիգորի Վկայասիրի: Առաջին անգամ զայն հրատարակողը՝ հետևեալ տեղեկութիւնը կու տան իր վրայ:

« Հեղինակն՝ որպէս և իւր գրուածն « Տաղ գերեզմանական » նորոգ յայտնուած, տակաւին անծանօթ կը

մնայ իր վարքովն, կարգաւ կամ պատճառաւ. և զար-մանալի իսկ Հայկազն կոչմամբը յերկոտասաներորդ դա-րու յորում գրեց, և ինչպէս խօսքերէն կրնայ ենթա-դրուիլ՝ 'ի սկզբան դարուն, ժամանակակից ըլլալով իրմէ ողբացուած Վկայասիրին։ Փափաքելի էր լսել իրմէ ա-ւելի երկարապատում և հաւաստի տեղեկութիւններ ա-նոր կենացն և գործոց վրայ, քան ողբական տողերուն կրկնութիւնը. Թէպէտև կը գտնուին անոնց մէջ ալ՝ այլ և այլ նոր և վայելուչ բառեր և ասացուածք ռամկական ոճոյ կամ բարբառոյ՝ կամ իր ժամանակին աշխարհիկ լեզուին՝ զոր ընտրեր է, յորում երիցագոյն ընծայուած քան զՆերսէս Շնորհալի 'ի Հանելուկսն, և զԼամբրոնացի 'ի Թուղթսն և քան զՄխիթար Հերացի 'ի Բժշկարանին։ Ուրիշ կարևոր և մեր դպրութեանց համար հետաքննա-կան տեղեկութիւն մ'ալ կ'ամփոփէ այս քերթուած, իրեն մերձաժամանակ ու մեզի անծանօթ երկու ազգային քեր-թողք յիշատակելով զԳագիկ և զԱտրներսեհ, որոց վը-րայ աւելի յանգեցուցիչ տեղեկութիւնք փափաքելի են։ Նորագիւտ քերթուածիս օրինակը գրչագրուած է 'ի ՉԾԵ (1306) թուականի »[1]։

Դնենք այս տողերն՝ յորս երկու քերթողաց յիշատա-կութիւնն կ'ընէ.

« Այլ նոքա չեն աստ 'ի միջի
Այլ յանմարմնոցն դասն 'ի պարի.
Յաջորդ չըկայ և չերեւի
Ոչ ժառանգորդ մեծն արուեստի։
Սրահքն աւեր հեմարանի,
Ճեմողքն անհետ չեն 'ի միջի.
Հիմքն խըլած վարժանոցի
Աթոռ չըկայ վարդապետի.
Վարժեալքն եղեն այգն ու գերի
Դատարկացած յամենայնի։
Բայց Էր չյիշեմ զոր 'ի մօտի

1. Բազմավէպ, (1873), 264։

Դու յերկնական ժամանակի․
Գագիկ գիտէր Բագրատունի
Ու Աշոտներեան Բագրեւանդի
Իւր պերճ բանիւքն էր պանծալի
Զափովք տաղի Հոմերոսի․
Դրուատ երգել բան տէրունի
Աշխարհալոյս որդւոյն չքնաղի »։

ԴԱՒԻԹ ՔՈԲԱՅՐԵՑԻ․ Երկոտասաներորդ դարուն մէջ ծաղկեցաւ 'ի Հայաստան Դաւիթ Քոբայրեցի կամ Քոբարեցի, Հաղբատայ վանքին միաբաններէն, որ Զաքարէ սպարապետին գումարած ժողովականացը մէկն էր, և կ'երեւնայ թէ անոր բարի դիտմանցն ու ջանից հակառակողներէն։ Անշուշտ զայս կ'ուզէ ակնարկել Լամբրոնացին հետեւեալ խօսքերով՝ զոր գրած է առ Լեւոն Թագաւոր. « ԶԱնեցւոյն պատուզն դուք էք լսել, և զՁորոյ գետոյն, և անդ Տուտէորդին և Քոբայրեցին, և այլք իւրեանց տեսողքն և կենակիցք »։

Քոբայրեցւոյն անուամբը կը գտնուին Գրիգորի աստուածաբանին ճառից լուծմունքը, և համառօտ երկասիրութիւն մը այս վերնագրով. « Թելադրութիւն յաւետարանն Մատթէի՝ 'ի պէտս աշակերտութեան Դաւթի վարդապետի »։ Ցովրայ մեկնութիւն մըն ալ կը յիշատակուի իր անուամբ, ուսկից վկայութեան խօսքեր մէջ կը բերէ Վանական վարդապետ. բայց ամբողջ գրուածը ձեռուընիս հասած չէ։

Այս դարուս վերջերը երեւցած է նաև ՍԱՄՈՒԷԼ անունով ծերունի մը, Սեւանայ վանքին միաբաններէն, և այն պատճառաւ Սեւանացի կոչուած։ Աոր միակ երկասիրութիւնը՝ Լամբրոնացւոյն փարուցը համառօտ պատմութիւնն է, զոր անոր չարագրած Սաղմոսի մեկնութեան առջը ուեւլցուց։ Ընտանի և մտերիմ էր սորոյն, ինչպէս նաև իւր երկու վանակիցքն Գրիգոր և Ներսէս։

**ԴԱՒԻԹ ՎԱՐԴԱՊԵՏ**, *հեղինակ Մեկնութեան Եսայեայ մարգարէի, որ թերեւս ըլլայ առանց անուան յիշատակեալն 'ի Գէորգայ Սկեւռացւոյ՝ իւր Եսայեայ մեկնութեան մէջ։*

**ԱՐԻՍՏԱԿԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ** *և իւր աշակերտն* **ԵՓՐԵՄ**, *որ « աշխատեալ ժողովեաց զբանս մեկնչացն 'ի մի, յետ սրբոյն Ներսեսի » Շնորհալւոյ, և շարունակեալ յԵփրեմէ և յՈսկեբերանէ՝ Մատթէի աւետարանին մեկնութիւն մը գրեց։*

*Համանուն Արիստակէս վարդապետի մը ընծայուած կը գտնենք Նաւակատեաց ճառ մը հետեւեալ խորագրով. « Առիստակիսի Հայոց վարդապետի վասն ութօրեայ նաւակատեաց, որ զկնի աստուածայայտնութեանն կատարի »։*

*Դարձեալ նոյն անուամբ ճառ մ'ալ, բաւական հնութիւն Տօնապատճառի մը մէջ յԵրուսաղէմ, (Թիւ 414) ի խորհուրդ Ողնչոյային՝ այս սկզբնաւորութեամբ. « Աստուածապարտն շնորհիւ լցեալ որդիք հաւատոյ »։*

**ՍՏԵՓԱՆՈՍ ՏԻՐԱՑՈՒ** *վարդապետ, Վարագայ կամ անոր մօտ Խաչի վանաց առաջնորդն, և յետոյ նաև արքեպիսկոպոս Վանտոսպայ, մեծահամբաւ սրբութեամբ և իմաստութեամբ, զոր՝ թէպէտ և շատ ծեր էր՝ Թախանձանօք հրաւիրեց և 'ի Հռոմկլայ բերել տուաւ Գրիգոր Ապիրատ կաթուղիկոսն, Լեւոնի մեծին արքայական օծման ուրիշ բազմաթիւ հրաւիրելոց հետ ներկայ գտնուելու. գովութեամբ կը յիշէ զսա նաև Ս. Ներսէս Լամբրոնացին, բայց յանուանէ գրաւոր գործ մը չյիշուիր Ստեփանոսի։*

*Երկոտասաներորդ դարուս մէջ կը յիշատակուի նաև Յովհաննէս կրօնաւոր մը որդի Մուղի?, որուն երկասի-*

րած Եսայեայ մեկնութեան սկզբնագիրն կը պահուի 'ի Մատենադարանին Էջմիածնի (թիւ գրչ. 1209) և կը վերկայէ ցանկողն. «երկաթագիր գրեալ 'ի թուղթ բամբակեայ, 'ի Տօսպ գաւառի 'ի գիւղն Մարմէտ՝ 'ի հեղինակէն, 'ի թուին Հայոց ՇԿԵ»։

## ՎԱՆՈՐԱՅՔ Ի ԿԻԼԻԿԻԱ

---

Կիլիկիոյ վանորայք յերկոտասաներորդ դարու։ — Դրազարկի վանք։ — Սկեւռայ վանք։ — Կոստանդին Բ կաթողիկոս։ — Գէորգ վարդապետ հաւաքող Հարանց վարուց։ — Յովհաննէս Սկեւռացի։ — Գըռներոյ ուխտ։ — Յովհաննէս արքայեղբայր։ — Իր երկք և գրաւորական արդիւնք։ — Անդրիասանց ուխտ։ — Խորին անապատ։ — Ակներոյ վանք և այլն։

Երկոտասաներորդ դարուս վանական—ուսումնական նըշանաւոր հաստատութեանց մէկն է Դրազարկու կամ Դրազարկի վանքը, հեռի 'ի Սիս մայրաքաղաքէ Ռուբինեան հարստութեան միօրեայ ճանապարհաւ, և յԱնաւարզայ երկու օր հեռու. և այս վերջնոյս գաւառին մէջ կը դնէ Մատթէոս Ուռհայեցի, որ առաջին է 'ի պատմիչս մեր այդ տեղւոյն և հոն գումարուող վանականաց միաբանութեան յիշատակութիւնն ընողաց մէջ։ Վանքին հիմնարկութեան ժամանակն անծանօթ է. բայց թուի յառաջ քան զգալուստ և զհաստատութիւն Ռուբինեան իշխանաց. իսկ յերկոտասաներորդ դարուս նորոգեց զայն Թորոս Ա, երկու հռչականուն վարդապետաց ձեռքով,—

զորս արդէն յիշատակեցինք, Գրիգորի Վկայասէրի ընտրելագոյն և համավաստակ աշակերտաց. — և էին Գէորգ Մեղրիկ և Կիրակոս վարդապետք։ Մեղրիկ յիսուն տարի ճգնեցաւ այն Նուիրական սրբավայրին առանձնութեանը մէջ, անքուն և չորաճաշակ, և « օրինակ բազմաց եղեալ և հայր խոստովանութեան լինէր ամենայն Հայաստանեայցս, — ըստ Ուռհայեցւոյն. — և ժողովեաց զամենայն դասս ճգնաւորացն Քրիստոսի. և հաստատեաց անդ կարգ և կրօնք՝ զառաջին սուրբ հարցն ». զոր և « հաստատեաց գրաւորական աւանդութեամբ, որ կայ մինչև ցայսօր » կ'աւանդէ ուրիշ պատմիչ մը։ Հոն թաղուեցաւ ինքն Մեղրիկ վարդապետ[1], ու տասուիրեք տարի ետքն ալ՝ իր գործակիցն և ճգնակից Կիրակոս « կանոնադիրն Դրազարկու, — ինչպէս կը կոչէ զինքն Սամուէլ Անեցի, — նմանեալ առաջին սրբոցն, ունեալ զամենայն կտակագիրս Աստուծոյ, և ամենայն խորին քննութեամբ հասու եղեալ, լիապէս հասեալ 'ի վերայ հին և նոր կտակարանացն Աստուծոյ. և կոչեցաւ վանքն այն Գերեզմանատուն սուրբ վարդապետացն »։

Այն աստուածահրաւէր կոչման յուսով սպասող հանգըստարանին մահաքուն լռութեան մէջ ամփոփուեցաւ յամի 1162 նաև « ամենագովելին Բարսեղ վարդապետ՝ աստուածաշնորհ », Մարաշոյ և Քեսնոյ Բալդովինոս (Գոտուէն կոմսին հայր խոստովանութեան. որ երբ աւելի սրտին քաջութեան՝ քան Բարսղի հայրագութ խրատուց անսալով, պատերազմի խռան մէջ գտաւ արիական բայց աղէտալի մահը, իր սրտին ու հոգւոյն սիրելւոյն վրայ արտասուեց Բարսեղ՝ ողբերգական սրտաշարժ ճառով մը, սգալով « զանգիւտ կորուստն », վասն զի

1. Ձեռագրաց մէջ հետևեալ երկասիրութիւնը կը գտնենք իր անուամբը. « Երգք օրհնութեանց ոգւոց արթնոց և մաղթանք մաքուր մտաց առ Աստուած, տացեալ սուրբ վարդապետին Գէորգայ Մեղր կոչեցելոյ »։

չգտնուեցաւ անոր դիակն ալ. «Զտանին զնա, կ՚ըսէ, տիեզերք ամենայն. զի ծով աղաղակէ թէ ոչ առ. և երկիր գոչէ, թէ ոչ ծածկեցաւ ընդ հողով ի ծոց իմ. և օդ և ջուր՝ հրային մասամբն, եթէ ոչ մեք համարձակեցաք բանալ յայտնել ումեք... Մահ և գերեզման բողոքեն, թէ մեք ոչ ըմբռնեցաք և ոչ տեսաք իջեալ ի կարգս մեռելոց, և ՚ի մէջ կենդանեաց ոչ ուրեք երևի... Ո՜ր ձեռք ամփոփեցին զհաստայեղց պնդութիւն կարծրացելոց ձեռաց հզօրին. կամ ո՞ր բազուկ տկար խոնարհեցոյց զանվանելի բազուկս անուանի քաջին... ո՞ր կատաղեցելոյ գազանի սիրտ ոչ խանդաղատեցաւ ի գեղեցկութենէ նորա, և ոչ ամաչեաց պատկառելով ի դիմաց նորա. ոչ գթացաւ ի գեղեցկութիւն նորա, և ոչ ողորմեցաւ մանկական տիոց վայելչութեան նորա, խնայելով ի հասակ տղայութեան... տեղի ոչ ուրեք երևեցաւ, կ՚ըսէ, գերեզմանի նորա. այնքան զօրաց տէր և երևելի իշխան,... և այժմ ՚ի մեռեալս ոչ յիշատակի... ՚ի կենդանութեան իւրում ոչ հանգեաւ, և այժմ ՚ի կատարածի կենաց իւրոց կորեաւ անյիշատակ»:

Ասոնցմէ զատ ուրիշ շատ մեծանուն և փառաշուք թագաւորաց, իշխանաց, հայրապետաց և վարդապետաց հանգստարան եղած է Դրազարկ: Յանուանէ կը յիշատակուին երեք Թորոսեանք՝ առաջինն, երկրորդ և երրորդ. Ռուբէն Բ մեծին Լևոնի եղբայրը, և Հեթում Ա որ քառասուն և հինգ տարի լի փառօք և յաղթական թագաւորութենէ մը ետքը «՚ի ժամ վախճանին բարիոք խոստովանութեամբ կրօնաւորեցաւ և անուանեցաւ Մակար». ուր արդէն իննևտասն տարի յառաջագոյն արդարոց խաղաղ քունն կը ննջէր Զապէլ Ա իր լծակիցն և սիրելին, «զարդարեալ ամենայն առաքինութեամբ և բարեգործութեամբք»: Հոն թաղուեցան նաև Լևոն Բ թագաւորին երեք որդիքն, մանկիկն Ստեփանէ, Ալինախ և Օշին: Իսկ յեկեղեցական դասուէ և յաւագութեանց՝ Գրիգոր կաթուղիկոս Տղայ, Գրիգոր Քարավէժ, Յովհաննէս

Մեծաբարոյ, Կոստանդին Ա Բարձրբերդցի և Կոստանդին Գ Լամբրունեցի.

Դրազարկի վանաց մէջ և 'ի միաբանիցն գրուած կամ գաղափարուած բազմաթիւ գրչագիրք կը ցուցընեն թէ ներանձնական կենաց սիրալիր ու քաղցր պարապմանց հետ՝ սիրելի էր իրենց նաև ուսումն և դպրութիւն, մանաւանդ սուրբ գրոց և հարց գիտութիւնն, որոց յառաջադիմութեան մեծապէս նպաստած են առաջնորդք տեղւոյն, որք հետզհետէ յաջորդած են երկու առաջին հիմնադրաց՝ Գէորգ և Կիրակոս վարդապետաց. և են ժամանակագրական կարգաւ Սամուէլ (1173–1182), Յովհաննէս Մեծաբարոյ (1198), որ յետոյ բարձրացաւ յաթոռ հայրապետութեան Հայոց. Հեղի–Հեթում՝ եղբայր Լամբրոնացւոյն (1200), Յովհաննէս Մեծաբարոյ՝ կրկին, զոր մերժեց Լեւոն 'ի հայրապետական աթոռոյ, և միւսանգամ հետը հաշտուելով Դրազարկի առաջնորդութիւնն իրեն յանձնեց (1218). Բարսեղ (1220), Բարսեղ արքայեղբայր (1241–1275) և այլք։ Ուսումնական բարգաւաճանք և վաստակք՝ ԺԲ դարէ մինչև ցկէս չորեքտասներորդին տևողութիւն ունեցած են. ազգային իշխանական ինքնօրինութեան անկմամբ, և անոր հետևանք աղետալի անցից տխուր և սրտաճմլիկ յիշատակաց մէջ կ'անհետանայ նաև վանքին անունն։ — Դրազարկի եպիսկոպոսաց մէջ կը յիշուի և Ներսէս ոմն, որուն ատեն առաջնորդն Բարսեղ 'ի Պոլսոյ կաթուղիկեայց մեկնութեան գիրք մը բերել տալով 'ի յոյն լեզու, Գրիգոր դպրին յանձնեց, որ թերեւս Սկեւռացին էր, թարգմանել 'ի հայ, որ թէպէտ տեղեակ յոյն և ազգային լեզուի և դպրութեան, բայց թարգմանութիւնն պակասաւոր դատուելով 'ի տեղեկագունից, յիշեալն Ներսէս եպիսկոպոս «յարմարեաց յետ մահուան տէր Բարսղի՝ ըստ քերթողական արհեստի»։ Այս գրուածքն ձեռուընիս հասած չէ։

*
* *

Հաշակաւոր եղաւ յայսմ դարու և Սկեւռայ վանքն Լամբրոնի. որուն հիմնադիրն և սկզբնաւորութիւնք անծանօթ, բայց ժամանակակից կ'երևնայ բերդին շինութեանն և պայծառանալուն՝ երբ առաջինն Օշին հաստատեց հոն իր բնակութիւնը. Թերևս և հնագոյն իսկ, և 'ի Յունաց կառուցուած. որովհետև անունն ալ աւելի յունական կը թուի քան հայկական: Երկու մասն բաժնուած էր. մին՝ բուն վանքն, իսկ միւսն Անապատ կոչուած. ինչպէս էին ընդհանրապէս 'ի Հայաստան ուրիշ շատ վանքեր, խստակրօնք մին առաւել քան զմիւսն: Վանքին մէջ էր Սուրբ Աստուածամօր նուիրուած եկեղեցի մը, որուն շինութիւնը Օշնի երկրորդի կ'ընծայեն՝ հօր Լամբրոնացւոյն, ուր և առաջնորդ դրաւ զորդին. բայց կ'երևնայ թէ 'արքունական իշխանութեան բարձրանալէն յառաջ շինել տուած ըլլայ և կամ 'ի հօրէն և 'ի հաւոյն արդէն կառուցուածը աւելի ընդարձակած և փառաւորած. որովհետև հոն ստնդիայ մանուկ բերուեցաւ Լամբրոնացին՝ երբ «պատահեաց ախտ ցաւոց և ընծայեցաւ ամենօրհնեալ և միշտ փառաւորեալ Աստուածամօր, 'ի տաճար անուան իւրոյ որ 'ի վանքն Սկեւռայ... սկսեալ 'ի դեռաբոյս հասակէն՝ վարժեցաւ յուսումն դպրութեան ծնողացն, ընդ այլ եղբարսն»: Հոն էր սուրբն՝ քանամենի պատանեակ, երբ 'ի Հռոմկլայէ Գրիգոր անունով մէկը գալով՝ վանքին մէջ պահուած աւետարանի մը ընդօրինակութեանն համար, 'ի յանձնարարութենէ Կոստանդնի ուրումն սպասաւորի Շնորհալւոյն, յիշատակարանին մէջ կ'աւանդէ թէ զայն «Շնորհեաց մեզ սուրբ և ընտրեալ քահանայն, որդի մեծազոր Սեւաստոսի Պատրոն Աւշնի, որ ամենեւին հանգիստ եղև գրչիս տկարութեան՝ յիւր սեպհական անապատն Սկեւռայ անուն կոչեցեալ, որ է մերձ յանառ դղեակն Լամբրունն»: Յետ

Օշնի՝ Լամբրոնացւոյն անդրանիկ եղբայրն Հեթում Սեբաստոս, անոր եպիսկոպոսական ձեռնադրութեանն առթիւ «ամենապատիւ վայելչութեամբ շինեալ էր տաճար աղօթից 'ի սուրբ ուխտս (Սկեւռայ), և նկարագրութեամբ պատկերաց զարդարեալ. ընկալեալ՝ զեւեալ յանապատէն զփեսայս (զՆերսէս), գեղեցկացեալ աստուածային հանճարովն՝ որպէս լուսին, և պայծառացեալ գիտութեամբ իբրու զարեգակն»։

Սկեւռայ վանաց մէջ սրբակրօն բնակութեամբ և մատենագրական վաստակօք փայլեցան՝ Խաչատուր Լամբրոնացւոյն աշակերտն, միրողն և ողբասաց. զոր արդէն յիշատակած եմք։ — Գէորգ ամն վարդապետ, նոյն սրբոյն վերակացութեամբ և առաջնորդութեամբ Հարանց վարք կոչուած գիրքը հաւաքող և կարգի վրայ դնող. «Շնորհիւն Աստուծոյ կատարեցի, — կ'ըսէ 'ի յիշատակարանին — ընդ ձեռամբ հոգեւոր վերակացութեան տեառն իմոյ Ներսեսի արքեպիսկոպոսի սրբոյ. որ այժմ կայ 'ի գլուխ սուրբ և հռչակաւոր այս ուխտի միաբանութեան ժողովոյ, և հովուէ զմայրաքաղաքն Տարսոն հանդերձ գաւառօք Կիլիկիոյ»։ Այդ միաբանակցաց մէջ նշանաւոր կը համարուի Գէորգ, ոչ միայն մասնաւոր վարժապետ կոչմամբ 'ի Սամուելէ՝ յընդօրինակողէ Սաղմոսամեկնըչի Լամբրոնացւոյն, այլ նաև անով որ սրբոյն ընկեր և ուղեկից դրաւ զինք Լեւոն երբ Ալամանաց կայսեր ընդ առաջ կը խրըկէր պատուիրակութեամբ իր կողմանէ յողջոյն։ Ներսէսի քեռորդւոյն և համանուան 'ի պատիւ սրբոյն յօրինած երկասիրութեան մը մէջ գովութեամբ կը յիշուին 'ի միաբանս Սկեւռայ՝ Գրիգոր և Բասիլ «բարեկամք նորա և երջանիկ վարդապետքս մեր, առ որովք այժմ դեգերիմք 'ի վարժս. որով լցեալ առ մեզ լինին թերութիւնք սրբոյն յորմէ զրկեցաք, որք յաղօս և 'ի նսեմացեալ ժամանակի մեր՝ որպէս զաստեղս լուսապայծառս փայլեն 'ի մէջ գիշերի»։ Առանցմէ զատ կը յիշատակէ զԲասիլ քահանայ, զՑովհաննէս և զԲարդողիմէոս զու-

սումեակիցս իւր, զԳէորգ, զՄխիթար և զմիւս այլ Գէորգ Սկեւռացի վարդապետս. որոց վրայ առանձին պիտի խօսինք հետևեալ երեքտասաներորդ դարու մատենագրաց կարգին մէջ:

Սկեւռայ վանից առաջնորդաց մէջ կը յիշուի և Կոստանդին Բ կաթողիկոս Հռոմկլայեցի, որ Հայրապետական աթոռէն հրաժարած կամ բռնադատուած 'ի հրաժարել, — որովհետև ոմանք 'ի պատմչաց՝ կապանօք արգելեալ կը վկայեն 'ի Լամբրոն բերդի 'ի Թագաւորէն Հեթմոյ, — վանական առանձնութեան մէջ ապրեցաւ քանի մը տարի, մինչև կրկին կոչեցաւ բազմիլ յաթոռն յորմէ մերժուած էր: Հոն եղած ատեն՝ շինել տուած է Կոստանդին ճարտարագործ և բազմազարդ Սրբարան կամ Գանձարան մը Նշխարաց սրբոց, որ և ձեռքէ ձեռք՝ 'ի հինից և յասպատակաց զերծանելով՝ հասած է մինչև առ մեզ, գեղեցիկ և նախանձելի յիշատակ մեր նախնեաց բարեպաշտութեան: Սրբարանին երկու դռնակաց վրայ համրիւր չորս ոտանաւոր տողերու մէջ ամփոփուած յիշատակարան մը կայ՝ երկասիրութեամբ Կոստանդին կաթողիկոսի յորում կ'աւանդուի իր հայրապետութիւնն և առաջնորդութիւն 'ի վանս Սկեւռայ.

« Հաւատացաւ ինձ տատրճան,
Նըստիլ յաթոռ այցելութեան՝
Գաւազանաւս հովական.
Արդ ըստ աստուածեան յաջողման,
Ի դէպ ժամու և պատշաճման.
Բարոյն Հեթմոյ արքայութեան,
Որ դիւանական էր սրբազան.
Եղև յաթոռ վանական
Սկեւռա վանացս 'ի հովութեանն:
Եդայ տեսուչ այն մեծի տան,
Եւ վիճակին իւր սեպհական »:

Կոստանդնի ժամանակ անուանի եղան 'ի Սկեւռա Ստեփանոս Սկեւռացի՝ որ ըստ Ուռպելեանի իր նախկին առ-

սումն և յառաջադիմութիւնը ըրած էր յաշխարհին Սիւնեաց. Մարկոս վարդապետ և Ստեփանոս դպիր, և այլք չորեքտասաներորդ դարու առաջին քառորդին. որով կ'ենթադրուի թէ մինչև այն ատեն չէն էր վանքն և ուխտն. Թէպէտև Անեցւոյն ժամանակագրութեան շարունակողը կ'աւանդէ թէ յամի 1279–80ին հրոյ ճարակ եղած ըլլայ 'ի Թուրքաց։

* * *

Անուանի էր և Գռներ կամ Գռներոյ վանքն, « հռչակելի սուրբ ուխտ » կոչեցեալ 'ի Նախնեաց, և « մերձ յաստուածապահ դղեակն Բարձր Բերդ կոչեցեալ » ։ Միակ յիշատակ այս վանքին և փառք՝ Յովհաննէս Արքայեղբայրն է և իր անունը հասած է առ մեզ, հռչակեալ իր տոհմին ազնուափայլ շքովն և մատենագրական սիրովն ու ջանիւք։ Վասն զի էր, ինչպէս ինքն ալ և այլք զնըմանէ կ'աւանդեն, « որդի քրիստոսասէր և բարեպաշտ իշխանաց իշխանին Կոստանդեայ Թագապահի և արքայահօր Հայոց, և եղբայր քրիստոսապսակ քաջ արքային Հայոց Հեթմոյ », յառաջագոյն Պաղտին կոչուած, ու եպիսկոպոսական ձեռնադրութեան ժամանակ փոխելով զանունն 'ի Յովհաննէս. մանկութեան հասակէն խնամով ու փութով ու արքայական տոհմին արժանաւոր դաստիարակութիւն մը ընդունելով յեղբարցն, և մանաւանդ յարքեպիսկոպոսէն Բարսղէ, զոր « տէր որդւոյ իւրոյ կը կոչէ և երախտաւոր մարմնոյ » և կը յաւելու թէ « որոյ երախտիք գերազանց է քան զբանս և զմիտս՝ 'ի կրսերս իւր ». որուն խնամոցը և ձեռքին տակ կ'երևնայ թէ շարունակած է իր կրթութիւնն 'ի վանս Դրազարկի։

Յովհաննու Արքայեղբօր առաջին երկասիրութիւնն է, արգասիք երիտասարդական մտաց և հասակին, քերթուած մը « Յարքայն Հեթում մինչ 'ի Տարարն էր, որոյ նախագիծ տանցն բառ անուանցն է ոգեալ ». վասն

գի տանգլուխ տառքն հետևեալը կը կազմեն. «Երգս Հեթմոյ է արքային Հայոց. ա (ի) Յոհաննէսէ կրսերէ իւր»։ Այս բաւական ընտիր ոճով ու ընտրելագոյն ոլը-տով ու հոգւով շարագրածէն զատ՝ Արքայեղբօր անուամբն մասնաւոր երկասիրութիւն մը ձեռուընիս հասած չէ, բաց 'ի քանի մի տաղից. մին ի սուրբ Աստուածածինն «ո-րոյ նախագիծ տանցն ըստ անուանն է ողոյն. մեծին Յովհաննիսի վարդապետի ասացեալ, եղբօր Թագաւորին Հայոց», ինչպէս կը վկայէ հին և ընտիր տաղարանի մը մակագրութիւնը, և միւսն՝ ապաշխարութեան մեղեդի մը՝ որոյ սկզբնատառք կը յօդեն. Յովհաննէս վայ քեզ։ Բազմաթիւ են իր ինքնագիր կամ իւր յանձնարարու-թեամբ ընդօրինակուած գրչագիրք՝ մանաւանդ սուրբ ա-ւետարանաց. որոց ընթերցուածոց ընտրութեանն համար շատ աշխատած է, ու տարբերութիւններն կը դնէ 'ի լուսանցս, և մերթ ալ կ'ազդէ թէ «յոյժ տագնապեմ յուղղոյն գիւտ», կամ «յոյժ տաժանեցայ յուղղոյն գիւտ», որ այն ալ մեծ արդիւնք մ'է իրեն և յետա-գայից երախտապարտ մեծարանաց արժանի։ Վայելուչ և ընտիր են ինքնագիր այլևայլ յիշատակարաններն՝ ցը-րուած իրմէ կամ իրեն համար ընդօրինակուած գրոց մէջ։ Այս «սուրբ և ընտրեալ աստուածահաճոյ արքե-պիսկոպոսն» — ինչպէս կը կոչեն զինք ժամանակակից գրչագրաց յիշատակարանք — մեռաւ 'ի ՉԼԸ թուականին Հայոց։ Իրեն յաջորդքն յաթոռ առաջնորդութեան Դռնե-րոյ վանից եղան Ներսէս (1316) և Մխիթար (1341), որ Յակոբ կաթուղիկոսէն ետքը բարձրացաւ 'ի գահ հայրա-պետութեան Հայոց, և կրօնական խնդրովք և հակառա-կութեամբք յուզուած ազգը խաղաղելու համար գումա-րեց ժողով 'ի Սիս նաև 'ի յորդորելոյ քահանայապետին Հռովմայ, և ժողովականաց հաճութեամբ և հաւանու-թեամբ խոհական մտքով ու սրտով երկար նամակ մը գրեց առ նա՝ յանդիմանելով ու սուտ հանելով հակա-ռակողաց ոմանց յազգայնոց ընդդէմ Հայաստանեայց ե-կեղեցւոյ լրած ամբաստանութիւններն։

Յիշենք մերձ 'ի Սկեւռա զանապատն Ս․ Աստուածածին Սաղրոյի, ամայացեալ 'ի մէջ լերանց, ուր աննմանն Լամբրոնացի « 'ի գիշերի և 'ի տուընջեան անհանգիստ էր յընթերցումն․ և միայն կատարէր զգործ սրբոյ պատարագին պաշտաման… ընդ հոգևոր դաստիարակին իւրում Յովհաննու՝ ելեալ մնայր 'ի միայնութիւն, և քաղցր էր նմա այն քան զամենայն հեշտութիւն » ։ — Ս․ Գէորգ, ուր շարագրեց իր հրաշալի երկասիրութիւնը Մեկնութեան սրբոյ պատարագին ։



Պատմական և մատենագրական դիպաց և արդեամբք ոչ նուազ փայլ ստացած են Անդրիասանց կոչեցեալ ուխտըն՝ մերձ 'ի Բարձրբերդ, անապատն խորին՝ զոր արդէն յիշեցինք, փերձեր կամ Պերձեր վանք․ այլ ասոնցմէ շատ աւելի հռչակաւորն Ակնեց կամ Ակներոյ վանքը, առ ստորոտով Բարձրբերդոյ, մեծին Լեւոնի համակրութեանն ու սիրոյն արժանաւոր սրբավայր․ որ թէպէտ առատամիտ սրտովն ու հոգւով և քաղաքագէտ մտօք՝ իր խնամքը շատ վանորէից վրայ տարածեց որ 'ի Թագաւորական սահմանի իշխանութեանն, ու չխնայեց 'ի ծախս անոնց շինութեանն ու բարեզարդութեան համար․ բայց անոնցմէ ամենէն աւելի սէր ու սիրտ կապեց ասոր վրայ․ « Զի յոյժ սիրէր նա զայն վանս, — կը վկայէ Կիրակոս, — վասն բարիոք կարգաւորութեան նոցա և հաճոյական աղօթից »․ ու փափաքեցաւ մահուանէն ետքն ալ հոն հանգչիլ, թէպէտև իր այս կամքը մասամբ եւեթ կատարուեցաւ, զսիրտն և զփորոտին միայն փոխադրելով յԱկներ և զմարմինն 'ի Սիս ։ Հո՛ն վշտահար ու անմխիթար սրտին սփոփանք և դիւր խնդրեց նաև Հեթում Ա, երբ Թշնամւոյն առջև տկարանալով՝ տեսաւ որդւոցը մէկուն մահը ու մէկալին գերուիլը․ ու իրաւամբ « բեկաւ սիրտն 'ի կարի և յանհնարին տրտմու-

թենէ, — կը վկայէ ուրիշ պատմիչ մը, — և ոչ կարէր կանգնել զսիրտ իւր, մինչև եկն 'ի սուրբ և 'ի գերահռչակ ուխտն միաբանից, 'ի յԱկանց անապատն, և աստ մխիթարեալ սակաւ մի 'ի միեղէն եղբարց սուրբ ուխտին»: Հոն կնքեց նաև իր կեանքը, հրաժարելով յարքունական ծիրանեաց, ու անշուք կրօնաւորական սքեմաւն ու Մակար անուան տակ ծածկելով աշխարհական փառաց անցեալ մը, անմահական ու անանց երանութիւն մը փափաքանօք փնտռելով:

Ականց վանաց առաջնորդաց ու միաբաններու մէջ կը յիշուին Թորոս և Ստեփանոս վարդապետք, Ճլոզ կոչուած Յովհաննէս վարդապետ մը, որուն տաղարանք՝ ընտիր երգ մը կ'ընծայեն 'ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ: Իբրև գիտնական ու ազգին մեծարանաց արժանի հաստատութիւն մը ծաղկած կ'երևի Լևոն Բ թագաւորի ժամանակ և իրմէ եաքը. ինչպէս գուշակել կու տան Գրիգորի Անաւարզեցւոյ խօսքերն 'ի թղթին առ Հեթում Բ թագաւոր: Սսոյ ու Մխիթար կաթուղիկոսի գումարած ժողովոց մէջ ալ իրենց արժանաւոր ներկայացուցիչքն ունեցան:

Յ'Ակներոյ վանաց ոչ յոյժ հեռի՝ Ջորոյն սուրբ Թորոս վանք, որոյ առաջնորդաց մէջ կը յիշատակուի՝ Թորոս փիլիսոփայ կամ Երաժիշտ կոչուած, մի 'ի հարց ժողովոյն Սսոյ: Մօտ է և Թիւրքքի վանք զոր ՉՉԳ թուականին գրուած ձեռագրի մը յիշատակարան՝ մեծ և հռչակաւոր անապատ կը կոչէ, և կը յաւելու մաղթել. «երգ օրհնութեան և ձայն սաղմոսաց և լուցումն լապտերաց և բուրումն անուշահոտ խնկոց մի՛ պակասեսցէ 'ի սմանէ մինչև 'ի կատարած աշխարհի»: Վանահայրն Գրիգոր մի էր 'ի ժողովականաց Սսոյ: Ասոնց մօտ էին Ս. Յակոբ վանք, — Գայլոյ վանք՝ 'ի գետահովիտս Ջահանայ, Ս. Ռոմանոս անապատ, և այլն:

# ԴԱՐ ԺԳ

## ԳՐԻԳՈՐ ՍԿԵՒՌԱՑԻ

*Գրիգոր Սկեւռացի, մտերիմ Լամբրոնացւոյն: — Երթ նոցա առ կայսրն Փրեդերիկ: — Երկասիրութիւնք: — Ներբողեան 'ի Ս. Ներսէս Լամբրոնացի: — Ճառք: — Տաղական 'ի Ս. Յովհաննէս Մկրտիչ: — Աղօթք:*

Հայ մատենագրութեան անկման այս դարուն մէջ ժամանակաւ երիցագոյն կը սեպուի Գրիգոր Լամբրոնացի, Սկեւռայ միաբաններէն: Ներսիսի Լամբրոնացւոյ մտերիմն ու սիրելին եղած է Գրիգոր, և անոր հետևող 'ի սրբութեան վարուց և 'ի մատենագրութեան: Իրեն յանձնած էր Սաղմոսի մեկնութեան իսկական բնագրէն գաղափարելու հոգն ու խնամքը. զոր սիրով յանձն առաւ Գրիգոր, ու բաւական ալ յառաջ տարաւ. բայց ապա կարևորագոյն գործով մը զբաղած, ընկերելու Լամբրոնացւոյն 'ի նուիրակութեան առ Փրեդերիկ կայսրն Ալամանաց, բռնադատեցաւ յանձնել զայն ծերունւոյն Սամուէլի: Լեւոն մեծն թագաւորն ալ՝ որ զինք իրեն հայր խոստովանութեան ընտրած էր, 'ի յունականէ 'ի հայ թարգմանել տուաւ Նիկիտոյ արքեպիսկոպոս Պահա-

նայ կամ Յովհաննու Թուղթը՝ զոր գրեր էր առ Զաքարիա կաթուղիկոս Հայոց. ինչպէս կ'աւանդէ Անաւարզեցի «սուրբ և մեծ վարդապետ Հայոց» զնա կոչելով։

Այլ և այլ երկասիրութիւններ չարագրած է, յորոց ոմանք իւր իսկ անուամբը կը յիշատակուին, և այլք անծանօթ մնացած, նոյն անուամբ ուրիշ հեղինակներ ալ ըլլալուն համար։ Կան նաև այնպիսի երկասիրութիւններ՝ որոց յիշատակը կ'աւանդուի գրոց մէջ, և կամ միայն քանի մը հատուածներ հասած են մեր ձեռքը։

* * *

Յայտնի երկասիրութեանց կարգէն են

Ներբողեան մը ի սուրբ Կոյսն, այս խորագրով. «Բան գովեստի պատմագրաբար յաղագս ծննդեան, սննդեան և քաղաքավարութեան և վերափոխման ամենասուրբ կուսին, ասացեալ ի Գրիգորէ մենաւորէ». (Մատենադ. Երուսաղեմի. թիւ 41) ի ճառընտրի գրեալ ի ՉՀ թուին Հայոց, առ կենդանութեամբ հեղինակին, 'ի Վահանայ գրչէ։

Միւս այլ Ներբողեան 'ի սուրբն Ներսէս Լամբրոնացի, զոր անոր Ներսէս քեռորդւոյն խնդրանօքը չարագրած է, ողբալով այնպիսի անդարման կորուստ մը, և անմահացընելով այն մեծ ու նշանաւոր անձին վարքը, առաքինութիւններն ու իմաստութիւնը։ Իբրև հռետորական գրուածք մը՝ իւր ժամանակին համար բաւական նշանաւոր երկասիրութիւն կրնայ սեպուիլ, բայց առանց նախագիծ գաղափար սեպուելու պատիւն ունենալու։ Անշուշտ ոչ անծանօթ էր Գրիգորի գովելւոյն մեծութեան հետ նաև իր մտաց չափաւորութիւնը. ուստի առջի բերան չուզեց յանձն առնուլ իրեն եղած առաջարկութիւնը «սակաւ ինչ գովելի հակառակութեամբ բերեալ, — կ'աւանդէ Ներսէս՝ խնդրող բանին, — ըստ սրբոցն օրինի, գերազանցութիւն քան զչափ զօրութեանն զայս վարկա-

նելով»։ Այլ իր համարումը այնչափ մեծ էր Սկեւռացւոյն վրայ՝ որ ոչ միայն յետ մահուանն Յովհաննու՝ հայրապետական աթոռոյն վրայ բազմելու արժանաւոր կը սեպէր զնա և հետամուտ կ'ըլլար, այլ զրկուելով 'ի քեռւոյն կը փութար աշակերտիլ իրեն «որպէս կրկին ժառանգել զոր կորուսին»։ Միրտն ու ճարտասանական հոգւոյն յատկութիւններն յայտնի կ'երևնան, բայց ճարտասանին խօսքերուն ոյժը կրկին աւելցընող կտրուկ լեզու կը պակսի, և որով այնչափ փայլեր էր Լամբրոնացի. թէպէտ ջանացած իրեն նմանող երևնալ, ուզելով իր ոճովն ու լեզուով զինք դրուատել[1]։

Ճառք. — Յիշատակուած Ներբողէն զատ՝ քանի մը ուրիշ ճառեր ալ կը գտնուին Սկեւռացւոյն անուամբը. այսինքն Քրիստոսի յարութեան վրայ ճառ մը, և ուրիշ մըն ալ Եսայի մարգարէին «Տէր ո՞ հաւատաց» խօսքին վրայ։ Իրեն կ'ընծայեն ոմանք կարծեօք Եւագրի Լուսաւոր պատերազմ կոչուած գրոց մեկնութիւնը, որուն միայն քանի մը պատառիկք հասած են մեր ձեռքը։ Տարբեր է այս գրուածքս Եւագրի գրոցը համառօտ լուծմանէն, որ անանուն երկասիրութիւն մըն է և վերջին դարուց արժանի։

Շարականաց ցուցակներուն մէջ Սկեւռացւոյն կ'ընծայուի Յովհաննու Կարապետին վրայ երգուածը, այբուբենից կարգով, և որուն սկզբնաւորութիւնն է «Արեգական արդարութեան»։ Հեղինակին պատիւ ընելու բաւականութիւն ունեցող երգ մըն է սակայ, թէպէտ չերևնայ մէջը այն բանաստեղծական ոգին՝ զոր Կոմիտաս ցուցած է Հռիփսիմեանց շարականին մէջ, և ոչ այն ընտիր լե-

1. Հրատարակեալ 'ի Ս. Ղազար 'ի կարգի Հայկական Սոփերաց 'ի 1854 (Հատ. ԺԵ)։ Բնագրին խորագիրն է. «Ներբողեան ասացեալ 'ի վերայ Մեծի քահանայապետին սրբոյն Ներսէսի արհիեպիսկոպոսին Տարօնի կիւլիկեցւոց 'ի խնդրոյ նորին համանուն և համազգւոյ Ներսէսի քահանայի»։

զուն՝ որ ընդհանրապէս յատուկ է շատ շարականներու։

Ոմանք Սկեւռացւոյն կ'ընծայեն այն Հաւատոյ երաժանգը, զոր այլք ուզած են Նարեկացւոյն ընծայել, և որուն վարքը շարագրեց Սկեւռացի։

Ծանօթ են իր անուամբ քանի մը ջերմեռանդական աղօթք, և մանաւանդ առ սուրբ Կոյսն յօրինածը 'ի խնդրոյ Պետրոս անուն քահանայի մը։ Ասոնցմէ են աղօթք մը ի սուրբ Երրորդութիւնն, միւս այլ ի վերայ ութ խորհրդոց, և « աղօթք որ ի խորհրդական ժամու սրբոյ և մեղսաքաւիչ խորհրդոյն մատուցանի »։

## ԳԷՈՐԳ ՍԿԵՒՌԱՑԻ

---

*Սկեւռացի Գէորգ։ — Իր ուսումն և դաստիարակութիւն։ — Երկասիրութիւնք։ — Առաձեռն գրչութեան։ — Մեկնութիւն Եսայեայ։ — Խմբագիր մեկնութեան Գործոց։ — Գէորգեայ աշակերտն Մովսէս։*

Երեքտասաներորդ դարուս մէջ հռչակեցաւ 'ի վանս Սկեւռայ Գէորգ վարդապետ, վերը յիշատակուած Գրիգոր Սկեւռացւոյ քեռորդի, որ Լամբրոն դղեկին մէջ ծնած ըլլալուն՝ Լամբրոնացի ալ կոչուած է։ Մանկութեան հասակէն սիրող և հետամուտ ուսմանց՝ Բզնայ Գրիգոր արքեպիսկոպոսի և իր հոգեւոր որդւոցը Վարդան և Գրիգոր քահանայից խնամքովը դաստիարակուած, շրջեցաւ վասն ուսման յայլեւայլ վանորայս. Նախ յուխտն Վիրապին « սակս կրթութեան 'ի մեծ վարդապետէն և յաստուածազգեաց առնէն Վարդանայ », որ էր մեծահռչակն Արևելցի՝ պատմիչ և մեկնիչ, յետոյ 'ի Սաղ-

մտսավանք և 'ի Թեղենիս, յորս իր մէկ պարապմունքն էր ընդօրինակութիւն գրչագրաց, յորոց Տօնապատճառ գիրք մ'ալ հասած է առ մեզ «'ի ձեռն տարաշխարհիկ պատանւոյ ուրեմն, — ինչպէս կը կարդանք յինքնագիր յիշատակարանին, — թարմատար գրչի Գէորգեայ, 'ի Կիլիկեան յանմատչելի ամրոցէն Ղամբրաւն կոչեցելոյ, որ է 'ի ստորոտ մեծի լերինն Տաւրոսի»: Այն հասակին կը զբաղէր նաև չափական քերթուածոց յօրինմամբ, յորոց միոյն' որ հասեալ է առ մեզ, սկզբնատառքն յօդեն Գեորգ պատանեին և գրեաց. և վերջնատառք' Գրիգորի վարդապետին:

Սկեւռայ դառնալէն ետքը Կոստանդին անունով մէկու մը, և յետոյ նաև Ստեփանոսի Գոյներ Երիցանց առաջարկութեամբն և խնդրանօք Գրչութեան արուեստին վըրայ գրելու ձեռք զարկաւ, ընդարձակելով Արիստակեայ վարդապետի համանուն գրուածքը. «Ծաղկաքաղ արարեալ, — ինչպէս կ'ըսէ ինքն աշխատասիրողն, — զմասն ինչ գրելոցն յԱռիստակիսէ հռետոր գրչէ' եդի աստ. և է ինչ զոր լուծեալ 'ի Նմանէ, և է յեդելոցս աստ տակաւին տարակուսիւ փակեալ. իսկ 'ի ծանօթ և յերկարեալ Նորայն բանից' էր ինչ յորոց երկայնութենէն զանց արարի, և էր զոր վասն հաւաստի գոլոյն' թողի»: Ստեփանոս Գոյներ Երիցանց ալ կը վկայէ թէ «Արարեալ էր զսա յառաջագոյն Գէորգեայ վարդապետին 'ի խընդրոյ ուրումն, զորոյ զպակասն 'ի Նմանէ' յետոյ իմ 'ի վարդապետէն խնդրեալ, և նա կատարեաց զխնդրուածս իմ, եդեալ յառաջ զԱռիստակիսի արարեալն, և զթերին 'ի Նմանէ' կատարեաց ինքն, ինձ Նուաստիս' Ստեփանոսի Գոյներ Երիցանց»:

*
* *

Գէորգայ Սկեւռացւոյ երկասիրութեանց մէջ ընտրելագոյն է Եսայեայ մարգարէութեան մեկնութիւն մը, զոր

*Հայոց Հեթում թագաւորին առաջարկութեամբն ու խնդրանօք յօրինեց. առաջնորդ ունենալով՝ մանաւանդ առաջին գլխոց մեկնաբանութեան մէջ զԵփրեմ Խուրի ասորի, զՈսկեբերան և զԿիւրեղ Աղեքսանդրացի, և զՍարգիս ոմն վարդապետ՝ որուն համար կը վկայէ թէ իրմէ յառաջ ձեռք զարկած էր այդպիսի աշխատասիրութեան, և որ մեզի համար ցարդ անծանօթ է անուամբն և գրքով: Հետևող է՝ և նմանող նաև Գրիգորի Սկեւռացւոյ ու երբեմն նաև Աստուածաբանին և Բարսղի և Աթանասի:*

*Մէջ բերենք իրեն ժամանակակցի և աշակերտին յիշատակարանին խօսքերը, յորմէ կ'իմանանք նաև այս գրուածքիս պատճառ եղողին իմաստասէր փոյթը և ժամանակը:*

*« Ի թուականութեան Հայկազեան տումարիս ՉԽԴ, 'ի հայրապետութեան տեառն Գրիգորի և 'ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ բարեպաշտի. որ ճշմարտիւ թագաւորեաց 'ի վերայ մարմանջեցուցանաւղ և զանազան զունակ հեշտակարծ ախտիցն առաթուր կոխելով. և զրեթէ զամենայն աշխարհական փառսն ունայն և նանիր վարկանելով, որպէս և է: Նաև զանուն թագաւորութեան ծանր գրէր. և նուիրէր զանձն Աստուծոյ. և յոլով անգամ հրաժարէր 'ի հայրենական աթոռոյն՝ և գնայր աղքատանալ. զոր հազիւ հազ մեծաջան տենչիւ ոչ կարէին յեղաշրջել զկամս նորա. և զայս դիպուածս Աստուծոյ 'ի յանձն առնեմք: Իսկ մինչ յայս էր՝ սիրէր զՔրիստոս և զեկեղեցի նորա, և զընթերցումն սուրբ գրոց: Սա տեսեալ զմեկնութիւն համարձակախաւս աստուածատես մարգարէին Եսայեայ, և զի մեծն Եփրեմ կարճ և համառօտ քաջոլորակի բանիւք էր անցեալ ընդ նա: Իսկ աստուածաշնորհն Յովհան Ոսկեբերան յորջորջեալ վասն հոգեշահ վարդապետութեան և առատահոս իմաստից, որ 'ի բերանոյ նորա բղխեալ արբուցանէր զականջս եկեղեցւոյ, և սա ճոխաբար խաւսեցեալ: Եւ քաջ*

ախոյեանն ուղղափառ հաւատոյս աքանչելին Կիւրեղ, 'ի սակաւն և նա խաւսեցեալ։

«Արդ բարգաւաճս այս վսեմս Հեթում 'ի մտի եդեալ զոսսա 'ի մի ժողովեալ զաւակ 'ի Սիոն զնա իւր և բարի նախննեաց գանձել տուն՝ խնդրեաց զայս առնել հարկեցուցիչ հրամանաւ 'ի յերր երջանիկ և 'ի լուսաբան բաբունապետէս Գէորգեայ, որ ընդ այսու ժամանակ առաքինութեամբ՝ յանձին ներգործութեամբ բնաւին փարթամացեալ, որ այժմս քրտնաջան երկամբք հրահանգէ զհամբակս, որ բանի են հետևեալ զյոլովս։

«Իսկ սա որպէս քարոզ ճշմարիտ հնազանդեալ հարկեցուցանաւղ հրամանին. և զի էր Սարգսի վարդապետի հօգացեալ, առեալ և զայն. և զայլ բան որբոց մեկնըչացն՝ համառաւտ զուգեաց առ իրեարս կարճաբանութեամբ եդեալ՝ զմտացն ամբողջ ունելով զզաւրութիւն և գրեալ ձեռամբ իւրով ետ նմա ի վայելումն վսեմ անձին և ի աւգուտ ամենայն վարդապետաց եկեղեցւոյ։

«Արդ ես զայս տեսեալ վերջինս 'ի բնաւիցս փցնամիտ աշակերտս սորին Գէորգեայ... պիտակագործ անուանեալ Երեմիայ յորջորջեալ, յետին աշխատեալ, երկու անգամ առ Թագաւորն իմ երթեալ, խնդրեցի զաբարեալ աւրինակն. և վասն սիրոյ նորին ետու գրել զաա Լեւոնի դպրի, լաւ արհեստի գրչի 'ի յիշատակ բարի», ... և այլն։

Ուրիշ գրչագրող մ'ալ կը ծանուցանէ որ թէպէտ արդէն կային յազգին Եփրեմի, Կիւրղի և Ոսկեբերանի համանուն երկասիրութիւնք, և «իւրաքանչիւր աստցուածովքն կատարեալք էին յիւրաքանչիւր գիրս, և օգտակարք, բայց գրչաց մեծագունի կարօտէին և լայն մեծատար մտաց. յաղագս որոյ օգտէին, այլ ոչ գրեթէ ամենեքին։ Ջայսոսիկ տեսեալ մեծիմաստ արքայն Հայոց Հեթում՝ Միակեցն կոչեցեալ, և խնդրեալ 'ի հռետոր վարդապետէն Սկեւռացւոյ Գէորգ կոչեցելոյ, որպէս զի ըստ յօժարութեանն իւրում աշխատեցի 'ի սմա, և ըստ

իմաստութեանն համառօտեալ է և 'ի մի վայր հաւաքեսցէ, որպէս զի հանդիպեալքն ամին՝ առանց աշխատանաց և ամենեքեան վայելեսցեն 'ի սոցանէ: Իսկ նորա 'ի յանձն առեալ և կատարեալ զխնդիրս նոցա գեղեցիկ յօրինուածով »:

Կը վկայէ նաև Եփրեմ կաթուղիկոս 'ի պատմութեան կաթողիկոսացն Սսոյ թէ « Ըստ խնդրոյ արքային Հայոց Հեթմոյ՝ արար զմեկնութիւն մարգարէութեանն Եսայեայ՝ սուրբ վարդապետս այս Սկեւռացի »: Ուրիշ երկասիրութիւն մ'ալ կու տայ իրեն Եփրեմ. « Առ սովաւ (Յովհաննու եպիսկոպոսի Արքայեղբօր), էր մեծիմաստ վարդապետն Գէորգ Սկեւռացի, որ ըստ խնդրոյ սորա արար դրուատ ներբողական առ սուրբ աւետարանիչն Յովհաննէս, որոյ և մակագիրն է այսպէս, — Դրուատ ներբողական բանի յաստուածաբան աւետարանիչն Յովհաննէս. 'ի պատկառեցուցիչ խնդրոյ Յովհաննու եպիսկոպոսի՝ եղբօր բարեպաշտ արքային Հեթմոյ 'ի թուականիս ՉԼԲ. Գէորգայ վարդապետի երջանկի Սկեւռացւոյ ասացեալ »: Նոյն Արքայեղբօր առաջարկութեամբն յօրինած է Ըսկեւռացի և խմբագիր մեկնութիւն մը Գործոց առաքելոց. և որուն վրայ արդէն խօսած ենք [1]:

Գէորգայ մահը հանդիպեցաւ 'ի ՉԾ թուին: Իր աշակերտն Մովսէս գրեց « Դրուատ բանի սուղ ինչ պատմագրաբար յերջանիկ րաբունապետն և 'ի քաղցրաբարբառ վարդապետն Գէորգ Լամբրունեցի ». յորում ողբալով իր մահը՝ հետևեալ սրտառուչ տողերով կը պատուէ անոր յիշատակը. « Աւա՜ղ ինձ յետնելոյս, թէ որպիսի հայր կորուսի. զորպիսի՛ դաստիարակ, զորպիսի՛ յորդորիչ և մխիթարիչ... Ո՜ հայր պատուական, ա՛յլ ո՞չ գրես առ իս զբան և զգիր քո պատուական. ա՛յլ ո՞չ լսեմ զբերկրական լուր քո 'ի հեռաստանէ »: Նոյն վարդապետասէր և երախտապարտ աշակերտն կը վկայէ թէ « Գծէր և

1. Տես յէջ 399:

*կանոնս կարգաւորս, և բանս խրատականս վասն Խոստովանութեան առ 'ի յօգուտ ոգւոց քահանայից, առնէր Համարս գլխոց և Ցանկս և Նախադրութիւնս Աստուածաշնչից տառից. գրէր և Ճառս ներբողականս 'ի պատիւ սրբոց... բազում բանս պիտանիս հաւաքէր 'ի գանձուց աստուածայնոց, առ 'ի վարժումն մանկանց Նորագունից »*: Ուրիշ մ'ալ կը վկայէ թէ այլևայլ Գանձք ալ յօրինած ըլլայ, և որ հաւանականաբար կը խառնուին կամ կը շփոթին ուրիշ համանուն անձանց յօրինածներուն հետ:

# ՄԽԻԹԱՐ ԱՆԵՑԻ

—

*Մխիթար Անեցի կամ Երէց: — Ժամանակակցաց իրեն ընծայած գովեստք: — Պատմական երկասիրութիւն մը: — Անոր մէկ մասին գիւտն և հրատարակութիւն: — Անեցւոյն պատմութեան նիւթը և աղբերք: — Արժէքն և մատենագրական ոճ:*

Երկոտասաներորդ դարուն վերջերը և 'ի սկիզբն երեքտասաներորդին ծաղկեցաւ 'ի Հայաստան Մխիթար անուամբ քահանայ մը՝ որ Անւոյ կաթուղիկէին երիցանց դասակարգին պատշաճելուն՝ ընդհանրապէս Անեցի կոչուած է: Իր անուամբը քանի մը պատմական երկասիրութիւններ կը յիշատակուին մեր պատմչաց քով, յորոց գլխաւոր կրնայ սեպուիլ հնախօսական Պատմութիւն մը Հայոց, Պարսից, Վրաց և Արաբացւոց: Վարդան պատմիչ՝ Վրաց սկզբնաւորութեան վրայ խօսելով՝ Թորգոմէն ինչուան Աբաս՝ որ Ափխազաց վրայ թագաւորեց, կը յա-

ւելու. «Այս ըստ Մխիթարայ երիցուն ասիցն»։ Ուրիշ տեղ ալ 'ի պատմութեանն՝ 'ի խօսելն զԹուրքաց և անոնց ծագման վրայ, կը գրուցէ. «Այս ըստ Վահրամայ որդւոյ Տիգրանայ վիպագրի։ Իսկ պատուական երէցն Մխիթար Անեցի այսպէս ասէ. Յոլով աշխատ եղէ գտանել զորպէսն տուլտանացն որ 'ի Թուրքաց. և գտի այսպէս». ու կը շարունակէ անոր երկասիրութենէն հատուած մը մէջ բերելով։ Ուռպելեանն ալ կը յիշէ Անեցւոյն երկասիրութիւնը ու գեղեցիկ պատմութիւն կը կոչէ զայն. «Այլ զի ժտեալ էր, կ'ըսէ, յիշատակ նախնական գրուցատրութեանց նոցա, նաև ամենայն արութիւնք և գործք երևելիք 'ի տանն Վրաց ազգին Օրբէլեանց 'ի նոցին ժամանակագրոցն, զոր Քարթլիս Ցխորեբայ կոչեն, վասն այն մեք ոչ գիտացաք զորպէսն և զկարգ բանիցն. զի և ըստ կարգի շարայարեալ էաք 'ի մատենիս։ Բայց զոր ինչ գտաք 'ի հայալեզու գիրս սակաւ ինչ յիշատակ դիցուք. նա և զվախճան կատարածի նոցա, զոր հաւաստեաւ. ծանոյց մեզ գեղեցիկ պատմութիւն Մխիթարայ Անեցւոյ»։

Այս պատմական կարևոր գրուածը ինչուան հիմա յայտնուած չէ։ Միայն քանի մը տարի յառաջ՝ հանրածանօթ ազգային բանասէրն Ք. Պատկանեան Հասան Ջալալեանց Սարգիս արքեպիսկոպոսին գրչագրաց ընտիր հաւաքման մը մէջ, — որ հիմա փոխադրուած է Էջմիածին, — Անեցւոյն անուամբը ինչուան հիմա անծանօթ մնացած երկասիրութեան մը մէկ մասին հանդիպելով հրատարակեց 'ի Փեթրպուրկ (1879), և որուն խորագիրն է՝ ըստ ձեռագրին «Հանդէսք բանից աշխարհագումար գրուցաց տիեզերապատում անցից, վիպասանեալ 'ի քաջ գիտնականէն Մխիթարայ, աւագերիցու մեծ կաթուղիկէին Անւոյ հոյակապ քաղաքի. 'ի խնդրոյ հօր Հաւիճայի Գրիգորոյ վարդապետի»։

Հաւանական կ'երևնայ թէ Վարդանայ և Ուռպելեան Ստեփաննոսի ակնարկած երկասիրութիւնն ըլլայ Անեցւոյն

այս Նորագիւտ գրուածը, որ ինչպէս ըսինք՝ դեռ մասամբ միայն յայտնուած է. վասն զի հեղինակն ալ կ՚ըսէ 'ի յառաջաբանին, թէ երեք մասն կամ պրակ բաժնած էր իր այս գրուածը. «Առաջին պրակն սկսանի 'ի Գարոյրայ հայկազնոյ, առաջին թագաւորէ Հայոց, մինչև ցՅովհանէս վերջին։ Իսկ երկրորդն 'ի Յովանիսէ մինչև 'ի քահանայանալն տեառն Բարսղի։ Եւ երրորդն մինչև 'ի գերելն զԵրուսաղէմ և յելս ազգաց Ֆռանգաց։ Յայս երիս հատուածս բազմատարազ ճառիւք ոչ դանդաղեցից գրել, քաղելով 'ի սրբոց և 'ի պիտանեաց պատմութեանց»։ Պատկանեանի հրատարակածը՝ միայն առաջին գրոց մէկ մասը կ՚ենթադրուի. ուստի և 'ի տպագրին իրաւամբ կը խորագրէ. «Սկիզբն Նորագիւտ պատմութեան Մխիթարայ Անեցւոյ» քսանևեօթն գլուխք բանից։

* * *

**Անեցւոյն պատմութեան նիւթը.** — Գրուածքին սկիզբըն գրուած ընդարձակ, — ըսենք նաև, — նիւթոյն ոչ այնչափ պատկանաւոր յառաջաբանէն կ՚իմացուի թէ Հառիճոյ վանահայրն Գրիգոր, խնդրող բանին, միայն իրենց ժամանակէն վեր ելլելով՝ հարիւր քառասուն տարուան պատմութեան գրութիւնը յանձներ է Մխիթարայ, Յովհաննու Բագրատունեաց վերջին թագաւորէն մինչև իրենց ատենը. բայց Անեցին՝ անշուշտ 'ի պատիւ Բագրատունեաց տոհմին, ինչպէս տեղ մ՚ալ կը թուի ակնարկել 'ի յառաջաբանին, իրենց հրէական ծագմանէն և անկէց ալ 'ի վեր ձգելով, մեր շատ պատմչաց ոչ այնչափ գովելի սովորութեամբ, կը սկսի յԱդամայ, թէպէտև համառօտ ոճով. «սղամանակ տեղեկութեամբ, կ՚ըսէ, թևացեալ յԱդամայ հետէ, մինչ 'ի բնաւին վերջին ամանակս. յաւուրս Յովանիսի թագաւորի, և անտի լայն և տարած բանիւք յընդարձակեալ մինչև 'ի ՈԽԲ թուականս»։ Կը խօսի յերկար, բայց միշտ օժանդակեալ

յաստուածաշունչ գրոց և 'ի վկայութեանց, պատմութեան օգտից վրայ յուսումն և 'ի խրատ ապագայ սերընդոց, և այն բաւական ոճով և հմտութեամբ, որչափ թերեւս սակաւք 'ի ժամանակակից պատմչաց: Երկրորդ գլուխը համառօտ և գրեթէ պարզ անուանական ցեղակարգութիւն մըն է սուրբ գրոց համեմատ տոհմաբանութեան, բաժանեալ յերկոտասան չարս, հետեւողութեամբ Եւսեբիայ և Սամուէլի Անեցւոյ ժամանակագրաց: Գըլուխն երրորդ խորագիր ունի. « Դասակարգութիւն Յաբեթի նախնոյն և արմատոյն Հայոց » իջեցընելով մեր ազգին սկզբնաւորութիւնն մինչև 'ի Հայկ և 'ի Պարոյր, և մինչև ցՎահէ վերջին թագաւոր Հայկազանց. և կը յաւելու. « Զսա սպանեալ Աղեքսանդր Մակեդոնացի »:

Հայկազանց հարստութեան անկմանէն ետքը՝ Նուաճեալ երկրին վրայ 'ի Պարթեւաց իշխողներէն կը յիշատակէ զՍելեւկիոս, զԱնտիոքոս, զհամանունն Թէոս, որուն ատեն Պարթեւք ապստամբեցան 'ի Մակեդոնացւոց, և թագաւորեցուցին զքաջն Արշակ, որուն յաջորդեց Արտաշէս, յետոյ Արշակ « որ զեղբայր իւր զՎաղարշակ առաքէ 'ի Հայս, առաջին թագաւոր պարթեւ զկնի սպառելոյ Հայկազանցն 'ի ՃԿԵ ողոմպիատին »: Արշակունեաց ցեղէն թագաւորաց անուանքն յիշատակելէն ետքը՝ կ'անցնի Անեցին 'ի մարզպանս, և ապա առ Բագրատունիս, մինչև 'ի Յովհաննէս որդի Գագկայ: « Սա, կ'ըսէ, վերջին թագաւոր 'ի Բագրատունեաց: Աստանօր սպառեցան թագաւորք 'ի տանէն Բագրատունեաց »: Մխիթարայ երկասիրութեան չորրորդ գլուխը նուիրուած է կաթուղիկոսաց յաջորդութեան 'ի սրբոյն Գրիգորէ Լուսաւորչէ մինչև յեօթանասներորդ երկրորդ յաջորդ նորա՝ և պատմչին ժամանակակից « Այժմ է տէր Գրիգոր Անավարզայ եպիսկոպոսն »: Անկէ կէս իմաստասիրական և կէս աստուածաբանական ոճովն ու լեզուով հինգերորդ գլխոյն մէջ կը դառնայ խօսիլ « թէ զի՛նչ է պատմութիւն, և կամ քանի՛ք են որ յայտնի են

առ մեզ »․ ուր բաց յայլոց՝ 'ի սրբազան և յեկեղեցական պատմչաց, կը յիշէ նաև զմերոն. « Նախ և առաջին պատմող Ղերուբնա, որդի Ափշադարայ դպրի, գրէ զգործս Աբգարու և Սանատրկոյ. և հզօրն բանիւ Ագաթանգեղոս, և Բիւզանդացին Փաւստոս։ Եւ զկնի նոցա պատմութիւն Ներսեսի՝ զոր Ղազարիկ Հայոց անուանէ. Կորեան պատմութիւն, և պատմութիւն Հայոց 'ի Մովսիսէ շարագրեալ. և Ղազարիկ Փարպեցի. և Եղիշէ, Շապուհ, և Սեբէոս որ Հերակլին է. և պատմութիւն Աղուանից, և Ղեւոնդ երիցոյն, տէր Յովհաննէս և Ասողնիկ. և Լաստիվերտցին և Կոզռանն, և Սամուէլ երիցու։ Հուսկ ամենայնի վերջինն՝ այս որ 'ի մէնջս գրեալ. բայց բանիւք կարևորօք և զարմանազան իրօք. համառօտ և ընտանեգոյն, նոր և ծանօթ զրուցօք »։ Ասոնց, բայց մանաւանդ Խորենացւոյ հետևողութեամբ են՝ Անեցւոյն թերի առ մեզ հասած պատմական երկասիրութեան գլուխներն (Զ–ԻԴ) քաղելով Բագրատունեաց ցեղին պատկանող դէպքերն. անոնց գերութիւնն 'ի Հրէից, և 'ի խնդրոյ Պարոյրի մեր առաջին թագաւորի որդւոյն Հրաչէի՝ հաստատուիլն ու պատուիլ յերկրին Հայոց. Բագարատայ թոռան՝ թագադիր և ասպետ անուանիլն 'ի Վաղարշակայ, Ենանոսի Բագրատունւոյ վրայ, որ յաւուրս Աբգարու. յորմէ առիթ կ'առնու պատմիչն խօսիլ այս նախահաւատ թագաւորին ծանօթ պատմութիւնն մէջ բերել. ու անոր ազգակցութիւնն յիշեցընելով ընդ Տրդատայ, և սխրացած այս երկու թագաւորաց ժամանակ 'ի Հայաստան կատարուած աստուածահրաշ անցից վրայ, « Սոսկալի և նորալուր սիրոյ զեղմունք, կ'ըսէ, ե՛ւս առաւել քան զամենայն ազգաց 'ի մեզ 'ի մետասանեան ժամեայ գործոնեայս աստուածակերտ այգւոյն »։ Կը պատմէ զերթ Աբգարու յարևելս՝ Արշաւրի որդւոց մէջ խաղաղութիւն հաստատելու. թղթակցութիւնն ընդ Քրիստոսի. Թադէի քարոզութիւնն յԵդեսիա և մկրտելն զԱբգար, ու այս վերջնայս կրկին անգամ գրելն առ Տիբեր կայսրն և իր-

մէ ընդունած պատասխանը։ Կ'աւանդէ Սանատրկոյ թագաւորելն, անոր որդւոց կոտորուիլն յԵրուանդայ, և բռնաբար թագաւորելը 'ի վերայ Հայոց. Բագրատունեաց և Արշակունեաց իրարու հետ խնամութեամբ խառնուիլը, Սմբատայ քաջութիւններն, և որ «բազում և անհնարին մարտս յարդարէր ընդդէմ թշնամեաց Խոսրովու Պարսից թագաւորի, ընդ որ յաւէտ իմն հաճոյանայր արքայ (Մաւրիկ). և ընդ այլ բազում ընծայից՝ և զմարզպանութիւն Վրկանայ տայ նմա։ Որոյ երթեալ անդ՝ գտանէ ազգ մի գերեալ 'ի Հայոց և բնակեցուցեալ 'ի Թուրքաստան կողմանէ, որ Սագաստանն անուանի. մոռացեալ զլեզու և զգիր հայերէն։ Որոց տեսեալ զՍմբատ ուրախ լինէին։ Եւ նա նորոգէ դարձեալ զլեզու և զգիր հայերէն 'ի ձեռն Հաբելի երիցոյ և տայ զնոյն առաջնորդ նոցա»։ — Անեցւոյն վերջին երեք գլուխներն՝ Հագարացւոց աղանդապետին պատմութեան ու գործոց կը վերաբերին։

Իբրև պատմական երկասիրութիւն մը՝ չենք կրնար ըսել թէ բոլորովին զիրկ ըլլայ 'ի կարևորութենէ, թէպէտև ըստ մեծի մասին քաղուածոյ արդէն մեզի ծանօթ պատմագրաց գրուածներէն։ Դիպուածոց իրարու հետ ունեցած վերաբերութեան թելը յաճախ կը պակսին, ու նիւթէ նիւթ անցնիլներն՝ ընդոստ և անոճ. հմտութիւնն ալ խիստ չափաւոր կ'երևնայ. ու դիպուածք և անձինք իրարու հետ կը շփոթէ, մէկուն վերաբերածը միւսին ընծայելով, և այլն։ Սակայն այս թերութեամբքն ալ փափաքելի է երկասիրութեանն ամբողջին գիւտը, մանաւանդ իրեն մերձաւոր դիպուածոց և անցից տեղեկութեանն համար։

Վարդան պատմիչ կ'աւանդէ թէ արևու և լուսնի խաւարման վրայ գիրք մը շարագրած ըլլայ Անեցին՝ Ոճիէ անունով պարսկի մը գրքէն, որ կ'ըսէր թէ յունարենէն թարգմանուած է 'ի պարսիկ, և թէ Յոյնք Ենովքայ մարգարէութենէն ունէին. յորում կ'աւանդուէր թէ

արեգակը բնութեամբ չխաւարիր, այլ անոր խաւարման պատճառը լուսինն է։ Բոլորածիր աղիւսակներ ալ ծրագրեց, ատեղաբաշխութեան այս երեւոյթը ուսումնական լեզուով մեկնելու համար։ Այս գրուածքս ալ կորսուած է հիմայ։

# ԿՈՍՏԱՆԴԻՆ Ա ԿԱԹՈՂԻԿՈՍ

---

*Կոստանդին Ա. կաթողիկոս։ — Իր գրած այլ և այլ թղթերն առ Քահանայապետս Հռովմայ և առ այլս։*

Այս ատենները Հայաստանի կաթողիկոսական աթոռը նստաւ Կոստանդին Ա կաթողիկոս Բարձրբերդցի, որուն համար կ՚աւանդեն ազգային պատմագիրք թէ եօթն այլ և այլ թղթեր գրած ըլլայ առ զանազանս։

Ա. Առ քահանայապետն Հռովմայ Գրիգոր Թ։

Բ. Առ Իննովկենտիոս Դ, շնորհակալ ըլլալով քահանայապետին ղրկած ընծայից համար։

Գ. Հայաստանի բոլոր առաջնորդաց, իշխաններուն և ժողովրդոց ուղղած մխիթարական և քաջալերիչ գիր մը, զոր ղրկեց Վարդան վարդապետին ձեռքով։

Դ. Դարձեալ ուրիշ թուղթ մը անոնց, պաշտօնական կերպով ծանուցանելով ամենուն թէ երեք տարի յառաջ մեծ ժողով մը գումարուեցաւ ՚ի Սիս, և հոն՝ սրբոց հարց աւանդութեանց համեմատ՝ քսանևեօթն գլուխք կանոնաց սահմանուեցան։

Ե. Դարձեալ օրհնութեան գիր մը անոնց՝ որ իբրև կանոնական ընդունած էին իւր տաճի թուղթը։

Զ. Մեծ կամ վերին Հայոց բնակիչներուն, Հօգւոյն սրբոյ բղխմանը խնդրոյն վրայ։

Է. Առ քահանայապետն Հռովմայ, ծանուցանելով թէ ինչպէս ընդունելի է Հայաստանի մէջ նոյն խնդիրը։

Ի Հռովմ ղրկած թղթերուն՝ լատին թարգմանութիւնքը ինչուան մեր օրերը պահուած են քահանայապետական կոնդակագրաց մէջ. դաւանութեան թղթոյ մը հայերէն բնագիրն ալ կը պահուի 'ի Վատիկան, գրեալ առ Ինովկենտիոս Դ, 'ի պատասխանի թղթոյն զոր բերեր էր Պապին նուիրակն Տիմանջ՝ առ Հեթում թագաւոր և առ կաթուղիկոսն։

## ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

—

Վանական վարդապետ։ — Մ. Գօշի աշակերտները։ — Խորանաշատ վանքին շինութիւնը և հոն աշակերտներ սորվեցընելը։ — Երթն առ խանն Թաթարաց։ — Մահը։ — Երկասիրութիւնը։ — Յովբայ մեկնութիւն։ — Վարդապետական գրուածներ։ — Պատմութիւնը։

Կոստանդին կաթուղիկոսին օրերը ծաղկեցաւ Յովհաննէս Վանական Տաւուշեցի վարդապետը, որ ինչպէս առաջ ալ յիշատակեցինք, Մխիթարայ Գօշի գլխաւոր աշակերտներէն մէկն էր. և կը վկայէ Կիրակոս՝ թէ իր ժամանակին ամենէն անուանի վարդապետն ըլլալով, շատերը ուսման պատճառաւ իրմէն չէին հեռանար. և ոչ միայն վարքովն, այլ նաև խօսքերուն լողութեամբը ամէնքը կ'օգտէին. անոր կեանքն ու ամէն շարժումը՝ ու-

տողաց համար անգիր օրէնք էին։ Եւ զայս ոչ միայն իբրև ականջալուր կը գրուցէ Կիրակոս, այլ նաև ականատես. որովհետև երկար ժամանակ աշակերտեցաւ իրեն, Տաւուշ բերդին սահմաններն եղող անապատին մէջ։ «Համբաւ իմաստութեան սորա, — կ՚ըսեն յիշատակագիրք, — տարածեցաւ ընդ աշխարհս, և գային առ նա յամենայն կողմանց, և ուսանէին ի նմանէ զվարս պարկեշտութեան և սրբութեան, և զգիտութիւն աստուածեղէն գրոց. և լուսաւորեալք գնային յիւրաքանչիւր տեղիս՝ լոյս լինել աշխարհաց»։

Ժամանակ անցնելէն ետքը իւր հայրենիքը դարձաւ Վանական. ու մեծաշէն փառաւոր վանք մը շինեց և բազմախորան հոյակապ եկեղեցի մը՝ որ Խորանաշատ անուանեցաւ։ Վերջը իւր աշակերտներն հետն առնլով, որոնց մէջ էր նաև Կիրակոս Գանձակեցի, Վահրամայ երկրին սահմանները գնաց, ու կը բնակէր մեծ այրի մը` մէջ՝ որ իր ամրութեամբը դղեկի մը կը նմանէր։ Հոն եկեղեցի մը շինած էր Վանական ու միանձանց բնակարան։ Երբոր Թաթարաց իշխան զարկաւ այն կողմերը, մօտ գեղերուն և աւաններուն բնակիչքը հոնտեղը ժողվուեցան իրենց կանամբքը և որդւովք։ Թաթարք եկան այրին չորս կողմն առին, ու ներսն ամրացողները կը ստիպէին որ դուրս ելլեն։ Երբ տագնապն ու վախը մէկ կողմանէ, և սովոյն սաստկութիւնը մէկալ կողմանէ սկսաւ զիրենք չարչարել, Վանական վարդապետն հետ առաւ Մարկոս ու Սոսթենէս[1] աշակերտները, ու Թաթարաց գլխա-

1. Թերեւս զսա ակնարկեն ՉԻԹ (1279) Թուականին գրչագրեալ աւետարանի մը յիշատակարանին խօսքերը. «... Հրամանաւ Սոսթենէս րաբունւոյ, որ էր վարժ և կիրթ յամենայն գիրս աստուածային՝ հնոցն և նորոցս և արտաքին փիլիսոփայիցն գեր 'ի վերոյ. որ և 'ի ժամանակիս մեր և 'ի թագ. Լեւոնի և 'ի հայրապետութեան Յակոբայ ոչ ոք է կատարեալ իբրև զսա յամենայն իմաստս. բայց 'ի մեծ րաբունեաց րաբունւոյն որոյ անուն ցուղ է քաղցր, որ և Վահրամ կոչի»։

ւորին գնաց։ Մեծ սիրով ընդունեցաւ զինքն իշխանը. հարցուց ու իմացաւ իրմէ Վահրամ իշխանին ուր գտնուիլը, և հրամայեց Վանականին որ յորդորէ այրին մէջ եղողներն՝ անվախ դուրս ելլելու։ Երբ անոնք վարդապետին խօսքերէն համոզուելով, այրէն ելան, թշնամիք անոնց ունեցածը չունեցածը վրանին յուզելով, ամէն ստացուածք յափշտակեցին, ու զիրենք ալ հեռու տեղ մը ղրկեցին՝ զոր գերեաց համար սահմաներ էին, շատերն ալ վաճառեցին։ Ասոնցմէ էր և Վանական, զոր յիսուն դահեկանով գնեցին քրիստոնեայք. ինքն ալ ելաւ Խորանաշատի վանքը գնաց՝ աշակերտացը հետ մէկտեղ, ուր ազգին և հայրենեացը վրայ եկած աղէտքն ու թըշուառութիւնները գրի վրայ կ'առնուր։

Կոստանդին կաթուղիկոս Սսոյ մէջ գումարած ժողովքէն ետքը, նոյն ժողովոյն սահմանադրութիւններն ու կանոնները մասնաւոր թղթով ծանոյց ամէն գլխաւոր եպիսկոպոսաց և վարդապետաց, որ իրենց զբաղմանցը կամ հեռաւորութեան պատճառաւ. չէին կրցած նոյն ժողովոյն ներկայ գտնուիլ։ Ասոնցմէ ոմանք չուզեցին հաւանիլ ժողովոյն կանոնացը, ուրիշներն ալ համոզուելով յանձն առին. ասոնց մէջ էր նաև Վանական վարդապետ։



Այն օրերը ուրիշ եկեղեցական խնդիր մըն ալ ծագեցաւ. և արդէն շատ անգամ յուզուած՝ ու առանց կարևոր քննութեան մերժուած խնդիրը՝ Վանական իրեն իմաստութեամբն և ազգին մէջ ստացած արժանաւոր համարմամբը լմընցուց։ Աս մտադրութեան արժանի դէպքը՝ ասանկ կը նշանակէ Վարդան. «ԻԶ թուին շարժեցաւ խնդիր 'ի մեծ պապէն Հռովմայ. և գրեաց յազգս ամենայն քրիստոնէից, եթէ պարտ է զամենասուրբ Հոգին Աստուած խոստովանիլ՝ 'ի Հօրէ և յՈրդւոյ բղխեալ։ Եւ չեղև հաճոյ Ասորւոց և Յունաց և Վրաց, բայց 'ի

Հայոց, որք քննեցին զդաւանութիւն առաջնոց սրբոցն՝ 'ի ձեռն աստուածամերձ վարդապետին Վանականին, և գտին համախոհ երևելի սրանց փառաւորաց, Աթանասի, Գրիգորի Աստուածաբանի, Գրիգորի Նիւսացւոյ, Գրիգորի Լուսաւորչին և այլոց սրբոց»: Եւ որովհետև գիտէր Վանական թէ ազգին մէջ կրնային դեռ ևս գտնուիլ այնպիսի անձինք որ ատանկ նորաձայն երևցած վարդապետութենէ մը խորշին, երկայն ճառ մը գրեց, յայտնելով թէ ինչո՞ւ համար պէտք է զսուրբ Հոգին խոստովանիլ և դաւանիլ բղխեալ 'ի Հօրէ և յՈրդւոյ: Այս գրած ճառը կը կարդանք Կիրակոսի պատմագրութեանը մէջ հետևեալ խորագրով. «Խրատ դաւանութեան Վանական վարդապետին»:

Խորանաշատի մէջ եղաւ Վանականի մահը նոյն Չ թուականին, ուր քովը կանչելով իր ամէն աշակերտներն՝ յորդորեց զիրենք հաւատոց գանձը անարատ պահել, ու վախճանեցաւ, մեծ սգոյ և տրտմութեան պատճառ ըլլալով իր բազմաթիւ աշակերտացը. «Զհարիւրապատիկն աստէն թողեալ, կ'ըսէ Վարդան, զանուն քաջութեան յաշակերտս իւր, և 'ի գիրս գանձուց եկեղեցւոյ, զոր ամբարեաց 'ի շնորհացն Աստուծոյ և 'ի յատակ մտաց ծննդականաց»:

Յայսմաւուրք ալ կը յաւելուն. «Հանգեաւ ի վանքն որ կոչի Խորանաշատ, զոր իւր իսկ շինեալ էր, և կայ հանդէպ Երգեւանից բերդին, ի Թիկանց Գարտմանայ, և թաղեցաւ ի գլուխ վանացն. և խառնի յիշատակ նորա ընդ յիշատակին Կիւրղի Երուսաղեմայ հայրապետին, և երեքհարիւր ութուտասն հայրապետացն որ ի Նիկիայ, և Որենդի և վեց եղբարց իւրոց, ի տասն Արեգի, և ութուտասն 'Մարտի».

Յիշատակագիր մը կ'աւանդէ. «Ժողովողն մեկնութեանս է Վանական վարդապետն. աշակերտ Մխիթարայ վարդապետի որ Գոշ անուանի: Եւ է նա վարդապետ Վարդանայ, և Վարդան՝ Ներսիսի, և Ներսէս՝ Եսայեայ վարդապետի Նչեցւոյ...

իրմէն ետքը վանքին առաջնորդութեան պաշտօնը յանձնուեցաւ անոր եղբօրորդւոյն Պօղոս անունով քահանայի մը. իսկ վարդապետական ուսումը՝ Գրիգորիս վարդապետին որ Վանականին աշակերտն ու ազգականն էր։

* * *

Վանականի գրուածները. — Վանականի գրուածոցը մէջ կը յիշատակուի

Յովբայ մեկնութիւն մը, որ ծաղկաքաղ հաւաքմունք մըն է Իսիւքիոսի և Դաւթի Քորայրեցւոյն համանուն երկասիրութիւններէն։ Լուսանցիցը մէջ կը յիշատակուին Ստեփանոսի, Եփրեմի, Եւսեբի և այլոց ոմանց հեղինակաց անուանք, որոց գրութիւններէն մեծապէս օգտուած կ'երևնայ Վանական։

Այսչափ զանազան ոճ ու գրուածքի կերպ ունեցող մատենագրաց սատարութեամբ ալ ամփոփ, հմուտ և իր համառօտաբանութեամբն՝ բաւականապէս սրտի ու մտաց պարարիչ երկասիրութիւն մ'է, սակաւաբան՝ բայց ընտիր յորդորակներով։ Ստեփանոսի (որ անշուշտ Սիւնեցին է) վկայութեամբ կ'ուզէ հաստատել թէ Սողոմոնի է Յովբայ գրոց շարագրութիւնը. «Ոմանք Մովսիսի ասեն գրեալ, և ոմանք Սողոմոնի և այլք Եզրի, և կէսք Երեմիայի։ Բայց աւելի կարծիս գոյ Սողոմոնի. զի նկարագիրդ առակական է, որպէս ամենայն շարագիրք Սողոմոնի. զի Մովսէս և Եզրաս ոչ գտանեմք այսու շարագրաւ շարագրեալ։ Մովսէս գրեաց որպէս պատմութիւն, և Սողոմոն ստեղծեաց որպէս իւրականսն[1]»։

Ասոր նման գրուածք մըն է նաև Ուրախացիր պսակ կուսից ըսուած շարականին տեսութիւնը, զոր Պետրոս անունով մէկու մը խնդրանօքը շարագրեց։

1. Կը յիշատակուին իր անուամբ մեկնութիւնք մարգարէութեանց Զաքարիայ և Եզեկիելի. և որոց օրինակ մը պահուած է 'ի Մատենադարանին Էջմիածնի (Թիւ 1227)։

Վարդապետական գրուածոցը մէջ նշանաւոր է այն ճառը՝ զոր սուրբ Հոգւոյն բղխմանը վրայ շարագրեց, ինչպէս վերը յիշատակեցինք։ Տօնապատճառ կոչուած գրոց մէջ ալ քանի մը մանր երկասիրութիւնք կ'ընծայուին Վանականի, որոնց հարազատութիւնը կրնայ տարակոյս վերցընել։ Ասոնց կարգէն են ճառ մը հետևեալ բնաբանով. « Հայեաց 'ի քեզ, գուցէ լինիցի բան ծածուկ 'ի սրտի քում »։ — Խորհրդաւոր Համեմատութիւն մը Հին և Նոր կտակարանաց. — զանազան նիւթերու վրայ այլ և այլ Հարցմունք ու պատասխանիք։ — Տարեգլխի վրայ տումարական գրուած մը՝ յորում Հայոց և ուրիշ ազգաց ամիսներուն խօսքը կ'ըլլայ։ — Պատճառք վասն առաջաւորաց պահոց՝ արարեալ Վանական վարդապետի վասն հակառակացն և այպանողաց զսուրբ պահս։ — Ճառ մը « Յաղագս անկոչն որդւոցն »։ — Հանդիպեր ենք նաև գրութեան խորագրի մը Վանականի անուամբ « Գովեստ զՀայոց » կոչուած։

Պատմութիւն. — Վանականի երկասիրութեանցը մէջ գլխաւոր, և յետագայից հետազննութեանը արժանաւոր նիւթ և ճարակ պիտի ըլլար Պատմութիւնը, որ դժբաղդաբար մեր ձեռքը հասած չէ, և որուն կորուստը՝ մեծ կորուստ մը պէտք է սեպուի թէ՛ ազգային մատենագրութեան և թէ պատմութեան։ Թէ՛ Վարդան և թէ Կիրակոս կ'աւանդեն որ երբ Վանական՝ զինքը գերող Թաթարներուն ձեռքէն ազատելով՝ իւր Խորանաշատ վանքը քաշուեցաւ, իր և ազգին գլխէն անցած ամէն աղէտալի դէպքերը գրի վրայ առաւ։ « Հայոց ՈՁԵ թուականէն (1236), կ'ըսէ Վարդան, մինչև 'ի ՉԺԴ (1265) յորում այժմ կը գտնուիմք, ինչ որ ըրին Նետողաց ազգը՝ այն ամէն իշխաններուն և իշխանութեանց վրայ, որ մեծ ծովուն ասդիի կողմը կ'իյնան, Պարսից, Աղուանից, Հայոց, Վրաց և Հոռոմոց աշխարհին վրայ, յորս կը բնակին Հայք, Ասորիք, Յոյնք, Տաճիկք և Թուրքմանք, տեղնիտեղը պատմած է մեր փառաւորեալ հայրը Վանական վարդա-

պետ » ։ Կիրակոսի խօսքերէն հաւանական կ'երևնայ թէ այս գրքիս մէջ 'ի Սիս գումարուած ժողովոյն պատմութիւնն ալ լրած է ։

Նոյն պատմիչները մեծապէս կը գովեն նաև Վանականի գրասէր ուսումնասիրութիւնը, և թէ ամէն ջանք կ'ընէր որ չըլլայ թէ նախնեաց երկասիրութիւններէն բան մը կորսուի. ու յանուանէ կը յիշատակեն Երզնկավանից մէջ ժողոված գրոց բազմութիւնը. տեղ մըն ալ չափազանցութեամբ խօսելով Եղբայրասէր Պողոսեայ կը նմանցընեն զինքը, « բազում գրեանս հաւաքեալ յազգաց և 'ի լեզուաց » ։

## ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

---

Վարդան վարդապետ ։ — Երթն 'ի Կիլիկիա ։ — Կոստանդին կաթողիկոսին կողմանէ նուիրակութիւնն ։ — Թարգմանութիւն գրոցն Միխայէլի Ասորւոյ ։ — Հուլաղու խանին հետ տեսութիւն ։ — Պատմութեան գիրքը ։ — Մեկնողական գրուածքներ ։ — Հնգամատեանին, Սաղմոսի, Երգոց Երգոյն, Դանիէլի մեկնութիւնք ։ — Ներբող 'ի սուրբ Լուսաւորիչն ։ — Մանր կամ անհարազատ գրուածներ. — Առակք ։ — Վարդանայ երկասիրութեանց բնագրին տպագրութիւնք և թարգմանութիւնք ։

Արևելեան Հայոց և Աղուանից աշխարհին սահմանակից քաղաքներէն մէկուն մէջ ծնած է Վարդան, մանկութեան հասակէն Վանական վարդապետին աշակերտած, և անոր ուրիշ աշակերտացը մէջ հռչակաւոր և ա-

*րելի իւր վարդապետին։ Ուխտի համար Երուսաղէմ ըրած ճանապարհորդութեանը ժամանակ Կիլիկիա հանդիպեցաւ և իրեն հանճարոյն և զգօնութեանը արժանաւոր պատիւը գտաւ թէ՛ Հեթում թագաւորէն և թէ Կոստանդին կաթողիկոսէն. ու հայրապետին ստիպողական թախանձանօքը հինգ տարի կեցաւ անոր քով, կաթողիկոսարանին կարևոր գործառնութեանց օժանդակելու համար. և երբ Կոստանդին նոյն Վարդանայ ձեռքովը իւր մէկ շրջաբերական թուղթը ղրկեց առ արևելեայս, մասնաւոր գովեստներով կը դրուատէր զվարդապետն այն թուղթին մէջ, «արդիւնական վարդապետ, անուանելով զնա, և նախախնամութեան մասնաւոր պարգև մը», զոր և իւր սիրտն ու խօսքը կ'անուանէ յամենայնի։ Թղթոյն հետ մէկտեղ արևելք տարաւ Վարդան նաև Սսոյ ժողովոյն կանոններն, որուն ինքն ալ ներկայ գտնուած էր Կիլիկիոյ եպիսկոպոսաց և վանահարց հետ։*

*Կաթողիկոսին գլխաւոր փափաքն էր Սսոյ ժողովոյն սահմանադրութեանցն ու կամաց հակառակողքը համոզել, և անոնցմէ հաւանութեան գիր կամ խօսք առնուլ։ Զոր կատարեց Վարդան՝ կաթողիկոսին կամացն ու բաղձանացը համեմատ. և հոն ժամանակ մը կենալով հայրապետին քով՝ թարգմանեց Ասորւոց Միխայէլ պատրիարքին ընդհանուր պատմութիւնն, իրեն օգնական ունենալով Իշոխ անունով ասորի քահանայ մը։ Ոմանք 'ի գրչագրաց Դաւիթ անունով վարդապետի մը կ'ընծայեն Միխայէլ պատրիարքի ժամանակագրականաց թարգմանութիւնը. «Զբարեացապարտն ամենայն և զթարգմանիչն հին և նոր պատմութեան գրոց՝ մանաւանդ այսմ լուսազարդ գրոց. զմեծապատիւ րաբունին և զքարոզն տիեզերահռչակ և զամենագով սուրբ վարդապետն զԴթ (զԴաւիթ) յիշեցէք 'ի Քրիստոս»։ Իսկ այլք ընդհանրապէս կը խորագրեն. «Պատմութիւն արարեալ պատրիարքին Ասորւոց Միխայելի, զոր Վարդան վարդապետ Արևելցին փոխեալ էր յասորի գրոց»։ Ոմանք կը նշա-*

Վեց հազար տարուան պատմութիւն է, զոր կ'աւանդէ Վարդան։ Այնչափ ընդարձակ ժամանակի պատմութիւն՝ այնպիսի համառօտ գրուածի մը մէջ՝ կամ խիստ ճարտարութիւն և կամ հմտութեան պակասութիւն կ'ենթադրէ. և հարկ է ըսել Վարդանայ համար թէ այս երկրորդ թերութեան մէջ ինկած է։ Անոր համար է որ շատ անգամ պարզապէս անուանց ցուցակ մըն է իւր գիրքը, և ոչ յագեցուցիչ պատմութիւն։ Ժամանակագիտութեան մէջ ալ ունեցած տեղեկութիւնը, որ պատմութեան կարևոր աչքն է, խիստ. սահմանաւոր է. անոր համար թագաւորաց և իշխանութեանց ժամանակներն իրարու հետ կը խառնէ, կամ անխտիր կ'աւանդէ, մինչդեռ երկայն դարերու տարբերութիւն կայ մէջերնին։ Իւր համառօտախօսութեանը դէմ ալ՝ երբեմն երկայնաբանութեան մէջ կ'իյնայ, ու այնպիսի դէպքեր ու աւանդութիւններ մէջ կը բերէ, որոնց հաւատք ընծայելը՝ իւր իմաստութեանն և համբաւոյն կրնան մնասակար ըլլալ, դիւրահաւանութեան ու պարզմտութեան արատ մը դնելով վրան։

Սակայն այս թերութեամբքն ալ՝ թէ ազգային պատմութեան և թէ եւրոպական գիտութեանց համար՝ ունի իւր արժէքը Վարդան, մանաւանդ իր ժամանակին հետաքննական դիպուածոցը համար, զորոնք 'ի լրոյ կամ 'ի տեսոյ աւանդած է։

Թէպէտև յայտնի չէ թէ ե՛րբ սկսած է հաւաքել իւր այս համառօտութիւնը, բայց 1265ին լմընցուցած է, Հուլաղու խանին երթալէն ետքը։ Իսկ անկէ առաջ եղած երեսուն տարիներուն պատմութիւնը համառօտիւ նշանակած է. որովհետև արդէն Վանական և Կիրակոս մանաւոր գրքով աւանդած էին այն ժամանակաց դէպքերը[1]։ Անկէ ետքը կը յիշատակէ խանին մահը, ու Ե-

1. Ինքը Վարդան համառօտ ոճ մը ընդարձակագոյն սկզբնէն այս պատճառը կու տայ. «Զոր մեք ոչ համարձակեցաք, կ'ըսէ, երեքկնել կամ

գիպտացւոց Կիլիկիա զարնելը, և Կոստանդին կաթուղիկոսին մահը ողբալով՝ կը լմընցընէ իւր գիրքը։

* * *

*Մեկնողական գրուածներ*. — Իւր հոգեսէր եռանդեանը և սուրբ գրոց քաջավարժ հմտութեանն արժանաւոր այլ և այլ մեկնաբանական գրուածներ ալ շարադրած է Վարդան, որոց մէջ ժամանակաւ երիցագոյն կը սեպուի

*Դանիէլի մեկնութիւնը*. — Ի խնդրոյ եղբարց, յորում հետևած է, ըստ իրեն վկայութեանը՝ Եփրեմի, Հիւպպողիտեայ և Ստեփանոսի սիւնեցւոյ, համառօտ և ամփոփ ոճով։

*Սաղմոսի մեկնութիւն*. — Հաղբատու Յովհաննէս եպիսկոպոսին խնդրանօքը՝ սաղմոսը մեկնաբանելու ձեռք զարկաւ Վարդան, Լամբրոնացիէն աւելի համառօտ ոճ մը բանելով, և ընդհանրապէս հետևելով թէ իրեն և թէ ուրիշ հին մեկնչաց, այս ինքն Աթանասի, Բարսղի, Ե-

---

բազմաբանել· այլ համառօտ բերել միայն զԹիւ ժամանակին, և նշանաւոր իրաց և գործոց յիշատակօք 'ի լրումն մերոյ գործառնութեանս, յոլով ժամանակօք սկսեալ և թերի թողեալ՝ պատկառելով 'ի գրողացն պատուոյ»։ Ուրիշ պատճառ մ'ալ կը բերէ. իր ատեն հանդիպած անցից և դիպուածոց չարութիւնը, զոր «չկարէ բան և նիւթ պեղել և 'ի յիշումն ածել»։ Հոս վերջաբան խօսքով մը կարծես թէ կ'աւարտէ պատմութիւնը. ուր և կը դադրի նաև հնագոյն օրինակն որ 'ի մերում Մատենադարանի։ Իսկ միւս օրինակն՝ գրչագրեալ 'ի ՉՁ թուականի 'ի խնդրոյ արքեպիսկոպոսին Ստեփանոսի Ուռպելեան՝ որդւոյ Տարսայիճ իշխանի, կ'աւելցընէ Թաթարաց պատմութիւն, որուն կը հետեւին նաև միւս նորագոյն օրինակք ընդհանրապէս։ Բայց որովհետև այս յաւելուածին մէջ գրութեան ոճը և լեզուն կը փոխուի, աշխարհիկ բառք կը յաճախեն, տարօրինակ և 'ի տգիտաց հրաշալի համարուած դէպք, թուականաց անդադար կրկնութիւնք, և այլն, յոմանց անհարապատ սեպուած է Վարդանայ պատմութեան այս մասը, և յաւելուած յայլոց։

պիփանու, Եփրեմի, և այլոց։ Գործածած լեզուն ալ լուտորին՝ գրեթէ ռամկականին մօտենալով[1]։

*Մեկնութիւն Հնգամատենին.* — Հաղբատայ Համազասպ եպիսկոպոսին ու Սանահնի վանից Գրիգոր փակակալին խնդրանօքը շարագրեց Վարդան այս գրուածքը Հայոց ՉԺ (1261) թուականին։ Իրմէն առաջ եղող վարդապետաց՝ որ նոյն նիւթին վրայ խօսեցան, գրուածոցը բովանդակութիւն կամ քաղուած կրնայ սեպուիլ այս երկասիրութիւնս։ Յունական հարց դասակարգութեան հետ կը յիշատակուի նաև մերն Եղիշէ, ու անոր Արարածոց մեկնութենէն քանի մը հատուած ալ մէջ կը բերէ, և ասոնք միայն մեր ձեռքը հասած են այն ընտիր և գեղեցիկ գրուածքէն։ Այլ և այլ քաղուածներ ալ կ՚ընէ հեղինակը Բարսղի, Եփրեմի, Գրիգորի Աստուածաբանի, Գիխիդեայ, Նիւսացւոյն մարդակազմութեան գրքէն, Ոսկեբերանի գրուածներէն. տեղ տեղ ալ 'ի Լուսաւորչէ, Դաւիթ փիլիսոփայէն, Փիլոնի գրուածներէն, Թովմայի Արծրունւոյ գրքէն, և այլն։

*Մեկնութիւն Երգոց երգոյն.* — Իրեն աշակերտակից Կիրակոս վարդապետին խնդրանօքը յօրինած է այս գիրքս Վարդան 1265 թուականին, Կոստանդին կաթուղիկոսին ու Հեթմոյ թագաւորութեան և Յովհաննու արքեպիսկոպոսութեան ատենը, Հաղբատայ վանքին մէջ։

Առ Կիրակոս ուղղեալ ընծայականին մէջ, որո՛ւն առաջնորդութեամբը և ինչ կերպով այս գրուածքին ձեռք զարնելը կ՚աւանդէ Վարդան. «Յորոց և դու ճանաչիս՝ տէրունական իր և անուն, հարազատ եղբայր մեր Կիրակոս, բարունեաց պետ և քաղցուայնի կիրք մեր, և

1. Խորագիրն ըստ ձեռագրաց. «Աշխարհալուր և տիեզերալոյս վարդապետին Վարդանայ պարզ և լուսաւոր խորին խորհրդով և դժուարագիւտ լուծմամբ և բանիւ մեկնութիւն արարեալ Սաղմոսիս, շարժեալ 'ի Հոգւոյն սրբոյ և յարհիականէն Հաղբատայ և աշակերտաց իւրոց, յոյժ աշխատեալ մտաւոր բանիւք զոր ցուցանէ առաջիկայս ամփոփեալս... նաև զորքոցն 'ի մի հաւաքեալ ձեռնհաս սիրողացն»։

մեծ մասն յուսոյն 'ի սուրբ եկեղեցի. որ և քում ըղձիցն կցորդել հրամայեցեր 'ի բան և 'ի գիր, զհաւատն Տեառն տալով, շնորհօք նորա կարել մեզ զմնացեալն յերգոց երգոյն 'ի Գրիգորէ Նիւսացւոյ, որ մեծն է և աղբիւր եկեղեցւոյ՝ լնուլ, առաջնորդութեամբ Որոգինեայ, համառօտել և զԳրիգորին 'ի սկզբանէ, որ 'ի վեր գտանի քան զկարն մեր յոյժ »:

Ներբող 'ի սուրբ Լուսաւորիչն. — Ի խնդրոյ Համազասպայ՝ որ Հաղբատայ առաջնորդ եղաւ յետ Յովհաննու եպիսկոպոսին [1]: Ճառ մ'ալ ի սուրբ խաչն, որոյ սկզբնաւորութիւնն. «Ի գերազանց լուսոյն պայծառացան անստուեր միջօրէիւ »: Իրենը կ'ենթադրուի ուրիշ ճառ մ'ալ նոյն նիւթին վրայ. «Բազում ամբաստանութիւն աւետարանիչս բանայ »:



Մանր կամ անհարազատ գրուածներ. — Այլ և այլ մանր և անհարազատ գրուածներ ալ կ'երևնան Վարդանայ անուամբը, որոնք քիչ կամ բոլորովին անարժանք են մտադրութեան և մասնաւոր քննութեան: Ասոնց կարգէն է

Դաւանութիւն հաւատոյ երկու տեսակ, մէկն ընդարձակ՝ իսկ միւսն համառօտ:

Համառօտ գրուած մը այսպիսի խորագրով. Բանք յա-

1. Հրատարակեալ 'ի կարգի Հայկական Սոփերաց (Հատ. Ե.) 'ի 1854, 'ի Ս. Ղազար:

Էջմիածնի Մատենադարանին ձեռագրաց ցուցակին մէջ (Թիւ 920) հետևեալ խորագրով երկասիրութիւն մ'ալ կ'ընծայուի Վարդանայ. «Ցերեկս երանեալ հայրն մեր և 'ի սուրբ հայրապետն Յովհան Աւձնեցի, յայտարարութիւն բանից 'ի նուաստէ Վարդանայ 'ի խնդրոյ տեառն Համազասպայ արքեպիսկոպոսի մեծի աթոռոյն Հաղբատայ. առ որ սկիզբն նախադրութեան հառիս պատասխանի է»: Սկզբնաւորութիւնն է. «Պայծառ ջահն արևելից եկեղեցեացս այրն քրիստոսազգեաց Գրիգորիոս »:

ղագս երկոտասան ականց, նմանութեամբ երկոտասան առաքելոց։ Եպիփանու Կիպրացւոյ ընծայուած է յարևմըտեայց, իր անունով գտնուելով նաև յունական սկզբնագիրը։

*Քերականի մեկնութիւն*. — Աննշան գրուածք մը, իբրև 'ի խնդրոյ Հեթմոյ թագաւորի։

Մանր գրուածոց կարգը կրնան սեպուիլ քանի մը շարականներ ալ որ Վարդանայ կ'ընծայուին. ինչպէս 'ի պատիւ Յովակիմայ և Աննայի երգուած «Որ Նախիմաց» շարականը, զոր 'ի Հռոմկլայ՝ Հեթում թագաւորին և Կոստանդին կաթուղիկոսին քով եղած ատենը երգած կ'երևնայ. որուն մէջը մասնաւոր մաղթանք կան Հայոց թագաւորին և հայրապետին կենդանութեանը համար։ «Ի յանուաճման ծովէն» 'ի պատիւ Երկոտասան առաքելոց, և «Որք զարդարեցին» Թարգմանչաց վրայ, և «Ամենասուրբ Երրորդութեան» 'ի յիշատակի սրբոյն Սարգսի զօրավարի։ Սարգիս անունով մէկու մը խնդրանօքն ալ Աբրահամ ծաղիկ շարականին մեկնութիւնը շարադրած է վայելուչ ոճով։

*Առակք*. — Վարդանայ անուամբը Առակաց գիրք մըն ալ կը գտնուի, որոց թիւը Աղուեսագրոց մէջ ինչուան հարիւր քառասունի կը հասնի։ Հաւանական կ'երևնայ թէ Մխիթարայ Գոշի և այլոց առակներէն հաւաքուած երկասիրութիւն մըն է ասիկայ, որուն վրայ իւր քովէն ալ քանի մը առակներ յարմարցընելով հեղինակը՝ ամբողջ գիրք մը ձևացած է։ Բաւական հանճարեղ գիւտեր և զուրցուածքի կերպեր կը բովանդակեն այս առակները։ Երկու անգամ տպագրուած են այլ և այլ տեղուանք, և երրորդ մասնական տպագրութիւնն ալ եղած է 'ի Փարիզ, հանդերձ գաղղիական թարգմանութեամբ (1825)։

*Աշխարհագրութիւն*. — Սոյն անուամբ երկասիրութիւն մըն ալ կը գտնուի Վարդանայ ընծայուած, որուն վրայ այսպիսի խորագիր մը կը դնեն գրչագիրք. «Աշխարհագրութիւն Նորոգ Թարգմանչին և երկրորդ լուսաւորչին,

Վարդանայ վարդապետի »։ Աւելի Հայաստանի աշխարհագրութիւն՝ կամ քաղաքաց անուանակոչութիւն կրնայ սեպուիլ այս գրուածս, զոր գաղղիական թարգմանութեամբ ծանօթացոյց արևմտեայց՝ Սէն-Մարդէն։ Անկէ զատ. ուրիշ տպագրութիւն մըն ալ եղած է մատենկանս 'ի Կոստանդնուպօլիս 1728ին։

Վարդանայ ընծայուած երկասիրութիւն մ'ալ կայ յԵրուսաղէմ, (Թիւ 936) յօրինեալ ի խնդրոյ Պաղտին իշխանի Հայոց։ Հետաքննական է գրողին յիշատակարանն. « Ես ողորմելիս Վարդան, տգէտս ի գիտնականաց և աննմանս ի կարգաւորս, գրեցի զայս աստուածաբնակ տառս, ի խնդրոյ աստուածասէր իշխանին՝ պարոն Պաղտինին, որ է ազն Թագաւորին, և աղաչեմ անմեղադիր լինել... զի այս էր կարն մեր և որչափ հասու եղև միտք մեր, ողորմութեամբն Աստուծոյ ժողովեցաք յօրինացն Աստուծոյ, և եդաք ի սմա։ Եւ այս յոյժ ծանր եղև մեզ, զի երկու ամ է որ 'ի զբաղումն աշխարհի էաք, և ոչ յընթերցումն գրոց. քանզի բուռն է կարիք մարմնոյ յորժամ պակասէ, զի հալածական եղաք ի բնիկ ժառանգութենէ մերմէ, յերկրէն Կիւրիսոյ և ի գաւառէն Տըլքլոյ. և եկաք յԱյգեկս, և Աստուած ի բարի յաջողեաց զամենայն գործս մեր և զպէտս մարմնոյ։ Իսկ ի հին ուսմանէ յիշեալ հաւաքեցի զսա։ Եւ յորժամ հաւաքեցի ի սա, և կատարեցի զսա յաստուածաբնակ ցանկալի անապատս յԱյգեկս, ընդ հովանեաւ աստուածընկալ և հրաշալի սրբոցս՝ Աստուածածնի և սուրբ Կարապետի. և յառաջնորդութեան սուրբ ուխտիս տեառն Կոստանդեայ սրբասնեալ եպիսկոպոսի, մատաղ հասակաւ Նորընծայ գոլով յաստիճան ժամանեալ յառաքելական։ Էր թուականն Հայոց ՈՀԱ, և էր թագաւոր Հայոց Լեւոն Ռուբինեաց ի Կիլիկիայ քրիստոսապսակ և աջարկու ի վերայ անաւրինաց։ Եւ էր ի վերին Հայք անուանի և զաւրավար հալածիչ անաւրինաց. և է քսան և չորս ամ որ գերեալ է յանաւրինաց Երուսաղէմ։ Եւ բարձաւ Թա-

զաւրութիւն Յունաց, և ազգն արիական առին զԿոս-տանդնուպոլիս։ Եւ յայսմ ամի փոխեցաւ տէր Դաւիթ, որ կալաւ զկաթողիկոսութիւն սակաւ ամաւք. յԱրքայ-կաղնին։ Եւ արդ աղաչեմ զամենեսեան որ ընթեռնույք զսա, աղօթս արարէք աստուածասէր իշխանին պարոն Պաղտինին, որպէս զի Աստուած ի խաղաղութեան պա-հեսցէ զնա հարազատ եղբարքն» ...

Վարդանայ Պատմութեան գրոց երկու տպագրութիւն եղած է. մէկ մը 'ի Մոսկուա (1861), երկրորդն 'ի Վենետիկ (1862) հմուտ և ըն-տիր ծանօթութեամբք։ Վերջին տպագրութեանս յառաջաբանին հե-ղինակը՝ բաց 'ի Վարդանայ պատմագրողէ, ուրիշ մէկ կամ երկու համ-անուն վարդապետներ ալ կը յիշատակէ, և թէ այս երեքին գրուած-ներն վրիպակաւ խառնու ընծայուած են։ Այս երկուքն են՝ Վարդան Բարձրբերդցի, որ մերինէն տասնըվեց տարի կրտսեր է ժամանակաւ, և որ Երէցորդ Վարդան կը կոչուի 'ի Ղազարայ Ջահկեցւոյ և որուն կ'ընծայէ Չորից տարերաց համառօտ մեկնութիւն մը, [illegible]. Աշ-խարհագրութիւնը և Քերականին մեկնութիւնը. և թէ այս վերջինները՝ երրորդին աշխատասիրութիւններն են։ — Վարդանայ Պատմութիւնը ռուսերէն ալ թարգմանելով և ծանօթութեամբք հրատարակեց 'ի Մոս-կուա՝ գիտնական բանասէրն Մկրտիչ Էմինեան, յամի 1861։ Մատե-նախօսական երկասիրութիւնք. Les Mongols, d'après les historiens arméniens. Fragments traduits sur les textes originaux: Extrait de Vartan, par Ed. Dulaurier. Paris, 1860. — Extrait de l'Histoire universelle de Vartan-le-Grand. Dans le Recueil des Croisades. – Dulaurier, Documents arméniens. Paris. — Analyse critique de l'Histoire universelle de Vartan; édition princeps du texte arménien et traduction russe par M. Emine. par M. Brosset. Saint-Pétersbourg, 1862. Քննադատութիւն մ'ալ 'ի ռուս, 'ի ձեռն հմուտ ուսուցչի Ք. Պատկանեան։ — Vardan (Vardapet). Extrait du livre intitulé Solutions des passages de l'Écriture-Sainte, écrites à la demande de Héthum Ier, roi d'Arménie; trad. de l'arménien vulgaire sur le texte original, par E. Prud'homme. Paris, 1867. Տես նաև ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ։

# ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ

Կիրակոս Գանձակեցի աշակերտակից Վարդանայ: — Պատմական երկասիրութիւնը: — Անոր նիւթը: — Մատենագրական ոճ և հմտութիւն: — Բնագրին տը-պագրութիւնք և թարգմանութիւնք: — Ժամանակակից փոքր մատենագիրք: — Մխիթար Անեցացի: — Վարդան կամ Վարխամ: — Կիրակոս Արևելցի:

Վանական վարդապետին աշակերտ ու Վարդանայ ուսմնակից էր Կիրակոս Գանձակեցի: Գետկայ վանքին մէջ ըրած էր իր ուսումը, որչափ որ կը ներէր խռովեալ ժամանակը՝ յորում ապրեցաւ, և վարդապետաց ուսման և գիտութեան չափը: Այս կարծիքս կը հաւատարմացընէ իրեն Պատմութեան գիրքը, որ Կիրակոսի միակ երկասիրութիւնն է՝ մեր ձեռքը հասած: Իբրև մատենագիր՝ չունի այն կարգաբան ոճը՝ զոր իր վարդապետն և ուսումնակիցն աւելի կերպով մը գործածած են իրենց գրուածոցը մէջ. և ոչ ալ այն հմտութիւնը՝ զոր կը ցուցընէ Վարդան իր տիեզերական պատմութեանը մէջ. դարձեալ և ոչ բանադատ քննութիւնն՝ որ անհրաժեշտ պարտաւորութիւն մըն է՝ անցեալ և ժամանակակից դիպուածներն ապագային աւանդելու աշխատութիւնը վրան առնող մատենագրի համար:

Կիրակոսի ատեն՝ Հայերէն դպրութիւնք ազգային քաղաքականութեան հետ իրենց մահառիթ ճգնաժամին հասած էին. կործանման մօտ եղող և չորս կողմանէ 'ի թշնամեաց հարստահարեալ իշխանութիւն մը՝ չէր կրնար

ոչ բարեկարգ վարժարաններ և ոչ ալ ուսուցիչներ երեցընել. և անոնց պակասութիւնը հարկ էր որ զգալի ըլլար ժամանակին բանասիրացը մտքին, զգուշութեանը, հմտութեան և գրչին վրայ։

Առողջ քննադատութիւն մը կը պակսի Կիրակոսի պատմութեանը մէջ, երբոր անանկ դէպքեր կ՚աւանդէ ու հաւատարմացընել կը ջանայ, որոնց ստուգութեանց գոյութիւնը դժուարին, ու երբեմն ինչուան անկարելի է. երբոր իրմէ առաջ եղող պատմըչաց հետևելու տեղ՝ շատ անգամ անոնց գրուածոցը անտեղեակ՝ տարբեր պարագաներ և յիշատակներ կ՚աւանդէ։ Լեզուին ալ՝ իւր ժամանակին, ըսենք նաև թէ պատմած խեղճ դիպուածոցը՝ արժանաւոր է։

**Պատմութեան Նիւթը**[1]. — Գրիչը ձեռք կ՚առնու Կիրակոս պատմագրելու անանկ թշուառ ատենի մը մէջ, յորում «սէր ցամաքեալ, անգթութիւն տիրեալ, աստուածպաշտութիւն նուազեալ և անհաւատութիւն բարձրացեալ. սեղանք և պատարագք լռեալ, և քահանայք անողորմ 'ի սուր արկեալք. կանայք և մանկունք գերեալք, և արք դառնամահ լեալ»։ Այսպիսի սրտով գըրուած յառաջաբանութենէ մը ետքը, կը սկսի իւր Պատմագրութիւնը այսպիսի վերնագրով. «Համառօտ պատմութիւն և ցոյցք անուանց սրբոյն Գրիգորի, և որք յետ նորա յաջորդեցին յաթոռն»։ Եւ այս վերնագիրը կը հաւատարմացընէ իրեն գրուածքին առաջին մասը. վասն զի սրբոյն Գրիգորի, անոր որդւոցն և թոռանցը պատմութիւնը կ՚ընէ համառօտ ոճով, քաղելով իրմէ առաջ եղող պատմագրաց գրուածքը, և մանաւանդ Բիւզանդայ, և այլոց։ Եւ թէպէտ քաղաքական այլ և այլ անցքեր ալ

1. Վերնագիրը այսպէս կը նշանակուի գրչագրաց մէջ. «Համառօտ պատմութիւն ժամանակաց 'ի սրբոյն Գրիգորէ՝ մինչև մի յետին աւուրս թուացեալ։ Արարեալ Կիւրակոսի՝ մեծ և ընտրեալ վարդապետի 'ի մեծանուշակ սուրբ ուխտն Գետկայ»։

կը յիշատակէ, և ոչ միայն ազգային՝ այլ նաև Բիւզանդեան կայսերաց, Պարսից, Արաբացւոց և Մահմետի և իրեն կրօնիցը և աշխարհակալութեանց դէպքերը, սակայն գրեթէ միշտ երկրորդաբար, աւելի ուզելով ճանչցընել և մեծարել տալ Հայաստան եկեղեցւոյ իրեն փառաւոր պարծանքը: Վասն զի ուր համառօտիւ և վեր 'ի վերոյ յիշատակութեամբ գոհ կ'ըլլայ քաղաքական նշանաւոր անցից, աւելի մանրամասն՝ գրոցը տանելուն չափ՝ կը խօսի եկեղեցական դիպուածոց, անձանց և գրաւոր երկասիրութեանց վրայ: Այսպէս Շնորհալւոյն առ Յոյնս գրած երկար հաւատոյ դաւանութիւնը՝ ամբողջ կ'ընդօրինակէ:

Ասանկ են ընդհանրապէս Կիրակոսի պատմութեանց առաջին տասը գլուխներն: Բայց երբոր իրեն մերձաւոր ու ժամանակակից դէպքերու վրայ կը սկսի խօսիլ, առջի համառօտախօսութիւնը կը թողու, ու ոճով կ'աւանդէ այն դիպուածներն՝ որոնք Հայաստանի պատմութեան մէջ տխուր տեղ մը գրաւած են. վասն զի հայրենեաց կործանման և աւերելուն մանրամասն պարագաներն են: Սակայն պռաջ Աղուանից ազգին վրայ համառօտ տեղեկութիւն մը կը դնէ [1], և պատճառն ալ ինքը մէջ կը բերէ. վասն զի զանոնք « ազգային և հաւատակից Հայոց » կը կոչէ. « մանաւանդ զի և առաջնորդք նոցա հայալեզուք, հայերենախօսք յոլովք էին. թագաւորքն՝ հնազանդք թագաւորին Հայոց, ընդ ձեռամբ նոցա լեալք. և եպիսկոպոսքն՝ ձեռնադրեալք 'ի սրբոյն Գրիգորէ և յաթոռակալաց նորա »: Ու անոնց եկեղեցական և ազգային համառօտ պատմութիւնը՝ կը հասցընէ մինչև իւր օրերը:

Անկէց Թաթարաց ազգին վրայ կը սկսի խօսիլ, անոնց ըրած պատերազմունքը, յաղթութիւններն, Հայոց և Հայաստանի հետ ունեցած յարաբերութիւններն, Գան-

1. « Համառօտ հիւսուած պատմութեան կողմանցն Աղուանից, ընդ ներքոյս գրուցատրաբար »:

ձակ, Շամքոր, Լօռի քաղաքաց աւերումը, Անւոյ, Կարսայ հիմնայատակ քանդիլը, Թաթարաց Հայաստանի մէջ բռնանալը, ծանր հարկահանութեամբ բոլորովին աղքատութեան և խեղճութեան մէջ ձգելնէրը, և այլն։ Ասոնք են Գանձակեցւոյն Պատմութեան գլխաւոր դիպուածոց նիւթերը։

Այս նկատմամբ հետաքրքրական է իրեն երկասիրութիւնը։ Թաթարաց վրայ՝ նոյն իսկ Եւրոպացի ազգաց մէջ գտնուած տեղեկութիւններն այնչափ ցրիւ և առասպելախառն են, որ այսպիսի մատենագրի մը գրուածքը իրաւամբք իրեն արժանաւոր յարգը կը գտնէ անոնց առջևը։

Թէպէտ շատ տեղ կարգէ դուրս դիւրահաւան պարզմտութիւն մը կ՚երևցընէ Կիրակոս, բայց ընդհանրապէս իւր ստուգախօսութիւնն ալ չենք կրնար մերժել. մանաւանդ իրեն ժամանակակից դիպուածոց նկատմամբ, զորոնք չէ դանդաղած մանր քննել։ Ինքն ալ կը վկայէ իւր անձին համար, երբոր Լևոնի թագաւորութեան վրայ խօսելու ատենը կը գրուցէ. «Մինչև ցայս վայր էր պատմութիւնս երկօք աշխատութեան հաւաքեալ ՚ի նախագրելոց. իսկ որ առաջի կայս մեզ ասպարէզ պատմութեանս, է որ ականջալուր, և է որ ականատես»։ Դարձեալ Հեթում առաջնոյն ճանապարհորդութեան դարձը նշանակելով, կ՚ըսէ. «Բազում և այլ ինչ պատմէր թագաւորն իմաստասէր՝ զխժական ազգացն, զոր թողաք մեք. զի մի՛ աւելորդ համարեսցի»։ Ուրիշ տեղ մըն ալ Հուլաւու Թաթար զանին Պաղտատ քաղաքը առնելը յիշատակելով, կ՚ըսէ. «Զայս ամենայն պատմեաց մեզ իշխանն Հասան, զոր Պռօշ անուանէին, որդին Վասակայ բարեպաշտի, ... որ ականատես և ականջալուր էր իրացս»։

Բնագրին երկու տպագրութիւնք եղած են. առաջինն ՚ի Մոսկուա. «Պատմութիւն Հայոց արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեց-

ռոյ։ Ի լոյս ընծայեաց Ոսկան Տէր Գէորգեան Ցովհաննիսեանց Երեւանեցի. 'ի Մոսկուա, 'ի տպարանի արեւելեան լեզուաց Ճեմարանի Տեարց Լազարեանց, 1858»։ Իսկ երկրորդն 'ի Վենետիկ, «Կիրակոս վարդապետի Գանձակեցւոյ, Համառօտ Պատմութիւն 'ի սրբոյն Գրիգորէ ցաւուրս իւր, լուսաբանեալ», 1865. Թարգմանութիւնք 'ի լեզու գաղղիական. Histoire d'Arménie, par le vartabed Kiracos de Gantzac, traduite par M. Brosset, Saint-Pétersbourg, 1871. – Les Mongols, d'après les historiens arméniens. Extraits de Guiragos, par M. Ed. Dulaurier. Paris, 1858. — Traduction latine de quelque passages de Kiracos, par M. Petermann, de l'Académie de Berlin.



Երեքտասաներորդ դարուս մէջ գիտութեամբն և խոհական զգօնութեամբ համբաւեալ էր յազգին ՄԽԻԹԱՐ ոմն վարդապետ Սկեւռացի, զոր Կոստանդին կաթուղիկոս և Հեթում, յարգելով անոր հանճարը, նուիրակ խըրկեցին առ պատգամաւորն Ուրբանոս Դ քահանայապետի, առ արքեպիսկոպոսն Տիւրոսի Գուլիէլմոս. որ Աքքեա գալով կրօնական խնդրոց համար խօսելու և վիճելու նպատակաւ, դժկամակութիւն կը ցուցընէր ոչ Հայոց կաթուղիկոսին և ոչ անոր նուիրակին երևնալուն վըրայ։ Երբ վերջապէս հասաւ Մխիթար, առջի բերան ոչ այնչափ սիրալիր ընդունելութիւն մը ըրաւ անոր Գուլիէլմոս. բայց ետքը կաթուղիկոսին կողմանէ խրկուած ընծաներն ընդունելով, յարգեց ու մեծարեց նաև անոր նուիրակը, տեսնելով անոր հմտութիւնն և տուած իմաստուն պատասխաններն։ Օր մը կոչեց զնա 'ի ժողով. հոն ներկայ էին Աքքեայի քաղաքապետն Ծօֆրէ (Ջօփրի) տաճարական ասպետաց կարգապետը, Հիւանդանոցին վերատեսուչը, և շատ յիշխանաց, բաց 'ի գլխաւորէ նոցա և փաստաբանք. և սկսան վիճել սրբոյն Պետրոսի առաքելոյն գլխաւորութեան վրայ։ Եւ թէպէտ Մխիթար բաւական հմտութեամբ կու տար պատասխաններն, բայց մերթ նաև կանխակալ կարծեօք և հոգւով, չափազանց

յարմամբ ազգային եկեղեցական գլխոյն իշխանութեան և իրաւասութեան, և մեծ համարելով զնա քան զայլ ամենայն պատրիարքունս։ Այս վիճաբանութեան պատմութիւնն ու խօսքերը գրի վրայ առաւ Սկեւռացին, ու 'ի դարձին ընծայեց զայն Հեթում թագաւորի՝ քառատող ոտանաւորով։ — Իրեն երկասիրութիւնն է նաև Յունաց պատրիարքական աթոռոց, և մանաւանդ Կոստանդնուպոլսի աթոռոյն վրայ վիճաբանական գրուած մը, զոր յօրինեց 'ի խնդրոյ Յակոբայ արքեպիսկոպոսի Կաստաղօնի։ Գրիչք կը շփոթեն զինք երբեմն ընդ Վարդանայ, զոր պիտի յիշենք, որ հոգւովն ու գրչով իրմէ շատ հեռի կը մնայ։

Հաւանականաբար իրենն է աստուածաբանական գրուածք մը՝ խորագրով. «Մխիթարայ վարդապետի թէ զինչ է պատճառ մարդեղութեան բանին Աստուծոյ», որոյ յիշատակարանն է. «Առաջին այս գրեցաւ աովփեր հոգևորական տառից իմով ձեռամբ Մխիթ. պիտականուն վարդապետի, որ հաւաքեցի զսա յաստուածաշունչ մատենից... Ի թուի ՉՀերորդի հայկազեանս տոհմի տումարի՝ ես անպիտանս... Մխիթար անուն, կրտսեր վարժապետաց և յետին բանահիւսաց կարգեցի... գործակցութեամբ ընտրեալ և սրբազան րաբունւոյ, և մերում հարազատ եղբօր. այլ և օգնականութեամբ աղօթից Բարսեղ աբեղայի»։

**ՊԱՂՏԻՆ** իշխան, որոյ կայ Թուղթ առ Վարդան վարդապետ (?) այսպիսի սկզբնաւորութեամբ. «Զքրիստոսակիր անձին, զսուրբ և զարդիւնական վարդապետ Վարդանայ, և յետ Քրիստոսի յուսոյդ մերոյ։ Զպատուական և զողջունաբեր նամակս ընթերցայ եղբայրս Պաղտինս. և յոյժ ուրախացաք ընդ ձեր բարի և ոգեշահ խրատս, զոր գրեալ էր առ մեզ վասն գործոց բարեաց։ Եւ յօժարութեամբ ընկալաք իբրև զհրամանս Աստուծոյ, և այնպէս ուրախացաք, որպէս թէ զննջեցեալսն մեր տե-

սպք կենդանի Հարազատոն մեր զուրբ քաՀանայն Բար֊սեղ և զմեծ իշխանն Սմբատ, և զպանծալի նախնին մեր՝ զաստուածաՀաճոյ եպիսկոպոսն Բարսեղ » ։ . . .

Այն ժամանակներն Հռովմայ քաՀանայապետին ու Կոս֊տանդին կաթուղիկոսին մէջ թղթակցութիւններ կ'ըլ֊լային. և թէպէտ ազգին մէջ շատերը կը գտնուէին որ կաթուղիկոսին առ արևմտեայս ցուցած մտերմութեանը վրայ գոՀ էին, բայց գտնուեցան ոմանք ալ որ այլ և այլ պատճառներով դէմ կը կենային, ու չէին ուզեր որ գործադրուի այն միաբանութեան խորՀուրդը, ուսկից թէ՛ եկեղեցւոյ և թէ ազգին մեծամեծ բարիքներու յոյս ու֊նէր Կոստանդին ։ Այսոնցմէ էր և ՎԱՐԴԱՆ կամ Վար֊խամ, որ տեսնելով Հռովմայ Հայրապետին նուիրակին թղթերը առ Կոստանդին կաթուղիկոս, ինքիրմէ՝ իբրև 'ի դիմաց կաթուղիկոսին թուղթ մը գրեց առ Հեթում թագաւոր, արևմտեան եկեղեցւոյն վրայ Հնգետասան մո֊լորութիւններ բարդելով անզգոյշ բացատրութեամբ ։ Ո֊րով ազգին մէջ Հետևող չունեցաւ, մանաւանդ թէ կու֊սակից և Համամիտ կարծուածներն ալ Հեռացան իրմէ ։ Կ'աւանդեն թէ ժամանակ անցնելէն ետքը նոյնպիսի ոճով գրուածք մ'ալ Հրատարակած է Վարխամ, զոր Մը֊խիթար կաթուղիկոսն ալ կը յիշէ առ Իննովկենտիոս Հռովմայ Հայրապետ գրած թղթին մէջ, ու կը մերժէ թէ՛ Հեղինակը և թէ անոր գրուածը. « Այն ատեններն, կ'ըսէ, Սեաւ լերան վրայ բնակէր Վարխամ անունով Հա֊կառակասէր ու անծանօթ մարդ մը, որ նուիրակին դէմ անկարգ, մոլորամիտ ու տխմար գրութիւններ Հրատա֊րակեց ։ Բայց այն խօսքերը Հաճոյ չեղան ոչ թագաւո֊րին և ոչ կաթուղիկոսին, և մեծապէս արՀամարՀուած են մեր քովը. և ուր որ գտնուին՝ կրակի կու տանք » ։

Կիրակոսի պատմչին ժամանակակից և գրեթէ Հայրե֊նակից ալ է ԿԻՐԱԿՈՍ ԱՐԵՒԵԼՑԻ վարդապետն, Հեղի֊

նակ կամ Հաւաքող Ցայսմաւուրք գրոց, որոյ համար կ՚ըսէ ինքն. «Ի միասին հաւաքեցի զտօն սրբոցն Աստուծոյ ըստ իւրաքանչիւր յիշատակի աւուրց. գրեցի և պատմութիւնս նոցա, որոց ոչ էր եդեալ ՚ի գիրս Ցայսմաւուրացն, և խառնեցի ընդ նախակարգսն... Եւ եղև իրակութիւնս այս ՚ի թուիս ՉԺԸ, յաշխարհիս Կիլիկեցւոց, ՚ի Սիս մայրաքաղաքի, ՚ի թագաւորութեան Հեթմոյ, և յառաջին ամի իշխանութեան որդւոյ նորին Լեւոնի, ՚ի վաթսուն և վեց ամի կենաց պանդխտութեան մերոյ։ Եւ ճառքն որ յաւելաք մեք ընդ հինն խառնեալ՝ հարիւր եօթանասուն»։

## ՅՈՎՀԱՆ ԵՐԶՆԿԱՑԻ

---

**Երզնկացւոյն ուսումն ու դաստիարակութիւնն։ — Գիւտ նշխարաց մեծին Ներսիսի հայրապետի։ — Այն ատրով երգուած շարականք յԵրզնկացւոյն։ — Երթն ՚ի Կիլիկիա և յարքունիս Լեւոնի։ — Ժողովք ՚ի Սիս և յԱդանա։ — Միաբանողաց ակզբնաւորութիւնն։ — Երզնկացւոյն երկասիրութիւնք։ — Քերականի մեկնութիւն։ — Ներբող ՚ի սուրբն Գրիգոր Լուսաւորիչ։ — Մեկնութիւն Մատթէի։ — Խրատական երկասիրութիւնք։ — Քնարերգականք։**

Յովհաննու Երզնկացւոյն ծնած տարին, ինչպէս մահուանը թուականն ալ՝ խիստ յայտնի չէ. միայն հաւանական կ՚երեւնայ թէ ծնած ըլլայ 1250 թուականին, և մեռած ՚ի 1326։ Այլ և այլ անուամբք կոչուած է ՚ի գիրս այս վարդապետս. մերթ Երզնկացի կամ Երզնկայեցի,

այն քաղաքը ծնած ըլլալուն համար. մերթ Պլուզ՝ որ կապոյտ աչուի ըսել է. երբեմն Ծործորեցի, որովհետև երկայն ատեն բնակեցաւ Ծործորու կոչուած սուրբ Աստուածածնի վանքին մէջ, որ Արտազ գաւառին մէջ կ'իյնայ. տեղ մըն ալ՝ Յովհաննէս Երզնկացի՝ «մականուն Մուշածին» կոչուած, անգիտելի պատճառաւ: Ի խորագիրս իրմէ յօրինուած շարականաց կը կարդանք. «որ մականուն Քաղցրիկ կոչի»:

Նոյն ատենները Երզնկայի քաղաքական իշխանութիւնը՝ Յովհաննէս պարոնին ձեռքն էր, իսկ հոգևորականը՝ իր հօրը Սարգիս արքեպիսկոպոսին, երկուքն ալ աշխարհաշէն, ուսումնասէր և ուսմանց ետևէ իյնողներուն ձեռընտուութիւն ընող անձինք: Երզնկացին իր ուսմանցն առջի ընթացքը՝ Սեպուհ լերանը քով սրբոյն Մինասայ կոչուած անապատին մէջ ըրաւ. ետքէն շրջակայքն եղող վանքերուն մէջ իր փնտռած ուսմունքն և գիտութիւնը խնդրելով ու վախճանին չհասնելով, ստիպուեցաւ հեռաւոր տեղուանք ճանապարհորդութեան ելլել:

Այն ժամանակներն Հայաստանի մէջ մեծ անուն հանած էր իւր իմաստութեամբն և գիտութեամբը Վարդան վարդապետն, որ իւր օգտակար կենաց վերջի տարիները առանձնացեր էր Հայոց ու Վրաց սահմաններուն մօտ Հաղբատ ու Սանահին վանաց մէջտեղ՝ Կայենոյ ձոր ըսուած տեղը. և հոն եղող պզտի վանքին մէջ քաշուելով քովը յաճախող աշակերտաց դաս կու տար: Յովհաննէս ալ հոն գնաց, ու հաւանական կը կարծուի թէ ինչուան Վարդան վարդապետին մահը անոր քով կեցաւ:

*
* *

Յովհաննու Երզնկայ դառնալէն տարի մը ետքը՝ նշանաւոր դիպուած մը հանդիպեցաւ. գրեթէ 700 տարի առաջ փլած Թիլն աւանին մէջ գտնուեցաւ Հայաստանի մեծ հայրապետին սրբոյն Ներսիսի մարմինը, ու Սարգիս

արքեպիսկոպոսին ձեռքով փոխադրեցաւ մաս մը Երզըն-կայ, մաս մըն ալ Տիրաշէն ըսուած վանքը, Գայլ գետին երկու ափունքը։ Այս գիւտիս և փոխադրութեան ոչ միայն ականատես կը կարծուի Երզնկացին, այլ կ'երևնայ թէ ինքը շարագրած է նոյն Հրաշալի դէպքին պատմութիւնը։ Որովհետև կ'աւանդուի թէ այն փոխադրութեան ժամանակ՝ Սարգիս եպիսկոպոս ականատես ու իրենց իմաստութեամբը նշանաւոր եղող անձինքներէն մէկուն Հրամայեց որ ոչ միայն պատմութիւնն ընեն, այլ նաև ճառ մըն ալ գրուցուի. և կը կարծուի 'ի բանասիրաց թէ այս պարտքս կատարողն Երզնկացին եղաւ։ Անկէ զատ գեղեցիկ շարական մըն ալ երգեց 'ի պատիւ սրբոյն Ներսիսի, յորում կը յիշատակուի նաև անոր մարմնոյն փոխադրութիւնը։ Լևոն Գ Հայոց թագաւորը լսելով սրբոյն Ներսիսի նշխարաց գիւտն, Հրամայեր էր եկեղեցի մը շինել անոր պատուոյն. և այն եկեղեցւոյն նաւակատեաց և օծման Հանդիսին առթիւ շարագրեց այս շարականս։

Կ'երևնայ թէ այն դէպքէն քանի մը տարի ետքը Երզընկացի իր Հայրենի քաղաքէն Հեռացած չէ, ինչպէս Սարգիս արքեպիսկոպոսին ու անոր որդւոյն անպարտ մաՀը՝, որ 1276 թուականին Հանդիպեցաւ։ Անկէ չորս տարի ետքը՝ սրբոյն Գրիգորի վանքին միաբաններն՝ իրենց միաբանութեանը նոր կարգ մը տալու Համար խընդրեցին 'ի Յովհաննէ որ կանոններ գրէ. ինքն ալ կատարեց անոնց խնդիրքը, և գրեց «Կանոնք և սաՀմանք միաբանութեան եղբարց; որ աստուածային սիրով միաբանեցան յեղբայրութիւն միմեանց յԵզնկա»։

Յաջորդ տարին Երզնկացին ուզեց ճանապարՀորդութիւն մ'ընել յԵրուսաղէմ, թէպէտ և յայտնի չէ իր այս փափաքը կատարած ըլլալը։ Ասիկայ միայն գիտենք որ Կիլիկիայէն անցաւ, որպէս զի Հոնտեղը թագաւորին ու Հայրապետին ջանքով պայծառացած գիտութեանց ճաշակն առնու։ Յակոբ կաթուղիկոս սիրով ընդունեցաւ զինքը, և իր ուսումնարանին վերակացու կարգեց։

* * *

Երզնկացւոյն համբաւը լսուեցաւ նաև արքունեաց մէջ, և Լևոն Թագաւորէն այլ և այլ մեծարանաց ու սիրոյ նշաններ տեսաւ: Ռուբինեան Թագաւորք՝ եւրոպական ազգաց հետևողութեամբը՝ սրբոյն Վլասայ անուամբ ասպետական կարգ մը հաստատեր էին. Երզնկացւոյն Կիլիկիա գտնուած ժամանակը՝ Լևոն Թագաւորին երկու որդիքն՝ Հեթում ու Թորոս պատանեկութեան ու կտրճութեան հասակը հասնելով Ձիաւոր ընտրուեցան, ուրիշ քանի մը իշխանազանց ու արքունի պաշտօնէից որդւոցը հետ մէկտեղ: Այս հանդիսին մէջ հրաւիրուեցաւ Երզընկացին՝ ատենական ճառ մը խօսելու, որ մեր ձեռքն ալ հասած է: Լևոնի անդրանիկ որդին ու թագաւորութեան ժառանգը՝ Հեթում՝ սէր կապեց վրան. իշխաններն ու եպիսկոպոսունք ճանչցան ու յարգեցին անոր հանճարը, ու անոնց յորդորելովն ու խնդրանօքը բազմաթիւ երկասիրութիւններ շարագրած է, ինչպէս ետքը պիտի տեսնենք:

Երզնկացին իր ծերութեանը տարիները՝ Հայաստանի Արտազ գաւառին սուրբ Աստուածածնի՝ կամ Թադէի վանքը քաշուեցաւ, որուն համար աւանդութիւնը կ'ըսէ՝ թէ սուրբն Թադէոս առաքեալ շինած ըլլայ: Վանահայրը Զաքարիա եպիսկոպոս՝ մեծ սիրով ընդունեցաւ զինքը, և երկուքը միաբան ազգային յառաջադիմութեան համար կ'աշխատէին:

* * *

Այն ժամանակներն երկու նշանաւոր դիպուածներ հանդիպեցան մեր ազգին մէջ: Պատմութենէ գիտենք թէ Կիւլիկիոյ Հայոց Թագաւորներն ուզեցին միաբանութիւն ընել լատին եկեղեցւոյ հետ. և այս վախճանաւ Գրիգոր

Անաւարզեցի ժողովք մը գումարեց 'ի Սիս, և հոն հրաւիրեց ուրիշ զանազան վարդապետաց հետ նաև զԶաքարիա և զԵրզնկացին. բայց երբոր ժողովքը չգումարուած՝ կաթուղիկոսին վախճանը հասաւ, ասոնք ժողովքի չգնացին։ Անաւարզեցւոյն յաջորդեց Կոստանդին, ու իր նախորդին հրաւէրքը կրկնեց. բայց Երզնկացին չուզեց տեղէն շարժիլ. վասն զի տեսաւ որ Ստեփանոս Ուռպելեան կը հակառակէր այն խնդրոց՝ որոնց համար պիտի ըլլար ժողովոյն գումարումը. ու թէ՛ կաթուղիկոսին և թէ Զաքարիայի իմացուցած էր իւր միտքը։ Զաքարիա շատ ջանաց զինքը համոզել. բայց երբոր անկարելի եղաւ, լաւ համարեցան որ հեռուանց թղթով յայտնեն իրենց կաթուղիկոսին հետ համաձայնութիւնը, և փոքր տեղը ազգային երկպառակութեանց յաճախելու պատճառ չըլլան։

Ցասը տարի անցնելէն ետքը՝ երբոր Օշին թագաւորին հրամանաւը Ատանայի ժողովքը գումարուեցաւ, Երզընկացին առանց իր ծերութեանը նայելու՝ յանձն առաւ վերջին անգամ մըն ալ Կիլիկիա երթալու, և հոն սահմանուած կանոններուն հաւանելով՝ որոնցմով Սսայ ժողովքը կը հաստատուէր, դարձաւ յԱրտազ։

Ուրիշ կրօնական նշանաւոր դիպուած մըն ալ եղաւ՝ լատին քարոզչաց առաջին անգամ Հայաստան գալը, որպէս զի Հայոց՝ իրենց լեզուն ընտանի ընեն, ու իրենք ալ հայերէնը սորվին. և այն յարաբերութեամբք՝ կրօնական միութեան և համաձայնութեան աշխատին։ Այն ժամանակը եղաւ Ունիթորաց (Միաբանողաց) կամ Հայլատիններուն երևնալը։ Երզնկացին և Զաքարիա սիրավիր ընդունելութիւն ըրին անոնց, և Յովհաննէս՝ թէպէտ արդէն տարիքն առած ու մազոքն յոգնած, ետևէ եղաւ լատինական լեզուն սորվելու, ու թարգմանեց Թովմայի Ագուինացւոյն Աստուածաբանութեան մէկ մասը։

Երզնկացւոյն կենաց վերջի տարիները մեծ երկրաշարժ մ'եղաւ Արտազ գաւառին մէջ ու Թադէի վանքը կործա-

նեցաւ. Զաքարիա նորէն շինեց այն վանքը, ու չթողուց որ Երզնկացին հեռանայ իր քովէն. որ և հաւանական կ'երևնայ թէ հոն կնքած ըլլայ իւր բազմարդիւն կեանքը [1]։

*Երզնկացւոյն երկասիրութիւնքը.* — Երզնկացւոյն երկասիրութեանցը մէջ գլխաւոր՝ և ամենէն աւելի մտադրութեան արժանաւորը կը սեպուի

*Մեկնութիւն Քերականին*, զոր շարադրեց 'ի խնդրոյ Յակոբայ կաթողիկոսի։ Այս գրուածին յօրինման պատմութիւնը՝ իւր ինքնագիր յիշատակարանէն քաղենք. «Երբոր, կ'ըսէ, Հայոց ՉԼԸ (1289) թուականին ուղեցինք Երուսաղէմ երթալ՝ Քրիստոսի տեառն փրկագործ տնօրինականքը տեսնելու, Հայոց Կիլիկիա երկիրը գնացինք... և ժամանակ մը կեցանք Յակոբ կաթողիկոսին քով, որ կը պատուէր զուսումնասէրս. և հրամայեց որ իւր աշակերտացը քերականութեան դաս տանք. և մեզի ախորժելի և հաճոյ երևցաւ այս խնդիրը։ Ետքը խնդրեց մեզմէ անոր մեկնութեանը պարզութիւն գրել, և լեցընել այն պակասը՝ զոր մեկնողներուն վերլուծական խօսքերը թողուցեր էին։ Քանի մը ժամանակ անկատար մնաց այս գործը, մեր անպարապ ըլլալուն պատճառաւ, և տեղւոյ հանգստութիւն չունենալնուս։ Յետոյ եկեղեցւոյ վարդապետներէն հեզահոգի և առաքինասէր անձ մը՝ Յովհաննէս անունով, որ Տարօնոյ սուրբ Կարապետ եկեղեցւոյն մէջ երկար ժամանակ սպասաւորած էր, ու ժառանգաւորաց՝ աստուածաշունչ գրոց վրայէն դասա-

1. «Քաղաքին (Երզնկայ) Ս. Նշան եկեղեցին, առաջնորդական աթոռոյն տակ յեցեալ 'ի սիւն, գտայ իւր ժամանակէն, և Հայոց եկեղեցւոյն նշանաւոր Սոփեստոս, աստուածախօսն և երգախօսն Յովհան Պլուզ վարդապետ Ծործորեցին։ Ասեն, որ զՍեպուհն գերագանց նուագեր էր, և Հայաստանեայց եկեղեցին քան զարեւն 'ի վեր բարձրացուցեր և փայլեցուցեր է, ինքն ինկեր էր այն աթոռոյն ոտից տակ նսեմ, անտես և անյիշելի»։ (Գ. Վ. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ, Թորոս Աղբար. Բ. 50)։

խօսութիւն կ'ընէր ու մեկնութիւն կու տար, նոյն բանը խնդրեց մեզմէ աղաչանքով ու թախանձանաց քղթով։ Մեր քովը եղող ուսումնասէրքն ալ փափաքելով այս բանիս. կը փութացուցանէին զմեզ։ Եւ մենք թէպէտ իրաւացի պատճառ ունէինք առջեւնին դնելու մեր անձին տկարութիւնը ու խօսքի անբաւականութիւն, դժուարին կեանքն ու մեր վրայ հասած նեղութիւններն, որով խնդրուղաց յօժարութիւնը անգործ կը մնար, սակայն Աստուծոյ ողորմութեան շնորհքը գթալով մեր վերայ, հասուց զմեզ մեր սուրբ Լուսաւորչին հանգստեան լեռը։… Բայց զայս ալ յաւելումք ըսել ձեզի, որպէս զի աւելորդ և անպէտ չերևնայ մեր աշխատութիւնը, վասն զի Մագիստրոս մեծապատիւ իշխանը՝ աշխատած էր այս գրքին մեկնութիւն մը շարադրելու. և մինչև մեր ժամանակը՝ անոր վրայ կը սորվեցընէին վարդապետք իրենց աշակերտացը։ Ուրեմն ինչ հարկ կար որ ուրիշները մեզմէ այս բանս խնդրեն, և մենք ալ յօժարամիտ ձեռք զարնենք այս գործիս։ Ուստի հարկ է որ նախ առաջիններուն պակասութիւնը ըսեմ։ Վասն զի հմուտն Մագիստրոս իրեք մեկնիչներու խօսքը մէկմէկու քով դրած էր. Դաւիթ փիլիսոփային, Մովսէս քերթողին, և ուրիշ իմաստնոյ մը՝ որուն անունը գրուած չէր. և ինքն ալ իւր կողմանէ այլ և այլ յաւելուածներ ըրած էր… բայց մեկնիչներու խօսք իրարու հետ չէր խառնած, և ոչ ալ ամէն մէկուն մեկնութիւնը դիմացը և ուղիղ նշանակած։ Կային ուրիշ մեկնիչներ ալ՝ որոնք Մագիստրոսի ձեռքը հասած չէին, և շատ տեղ առանց մեկնութեան թողուած. երբեմն ալ երկու իրեք անգամ գրուած՝ իրեք մեկնիչներունն ալ, և շարագրութեան կարգին մէջ յայտնի չէր թէ որը առաջնոյն էր, որը երկրորդին. որով շատ տեղ լուծմունքը պակաս ըլլալով՝ տարակոյս կը վերցընէր։ Անոր համար մենք ըստ ժամանակին հոգ ունենալով՝ քերականին մեկնութիւնները ժողվելու, գտանք ամէն մէկունը առանձին յօրինուած և մէկ գիրք ձևացած… յորում կար Դաւ-

թի փիլիսոփային և Մովսիսի քերթողին և ուրիշ իրեք մեկնիչներու գրուածը, որոնք անուն չունէին. անոր մէջ նաև Բարսղի մեկնութիւնը. Դերջանայ անապատին մէջ ալ Համամ վարդապետին մեկնութիւնը գտայ. և օգնականութիւն առի Արիստակեսի բառգրքէն: Ասոնց ամենուն, և ուրիշ իմաստուններուն խօսքը մէջ բերելով, այս մեկնութիւնս շարագրեցի »:

Երզնկացւոյն այս խօսքերէն յայտնի կ'երևնայ, ինչպէս իրօք ալ անանկ է, որ երկու տեսակ յօրինած է քերականի մեկնութեան. մէկը՝ լոկ պարզաբանութիւն է Դիոնեսիոսի Թրակացւոյն քերականութեանը, Մագիստրոսի ու Եսայի վարդապետին մեկնութեանցը համաձայն, զոր յօրինեց 'ի խնդրոյ անոնց՝ որ 'ի Սեպուհ լեառն կ'աշակերտէին իրեն. իսկ երկրորդը աւելի ընդարձակ՝ ըստ խնդրոյ Յակոբայ կաթուղիկոսի:

* * *

Բանք յաղագս երկնային շարժմանց. — Երզնկացին 'ի դարձին 'ի Կիլիկիոյ գնաց 'ի Տփխիս, Վրաց մայրաքաղաքը, ուր բաց 'ի տեղացի իշխաններէն՝ կը գտնուէին այն ժամանակը նաև Հայոց հին իշխանազանց Մնացորդք. որ մը Քարիմատենց Ումեկ իշխանին շինած եկեղեցւոյն մէջ ներբող մը խօսեցաւ Յովհաննէս, յորում երկնային զարդուց աղուոր ստորագրութիւնն ըրաւ: Ումեկայ որդին Վախտանկ՝ շատ զարմանալով այն սքանչելի գրուցուածքին վրայ, Երզնկացւոյն աղաչեց որ առանձին գրուած մը շարագրէ երկնից վրայ. Տփխեաց Յովհաննէս եպիսկոպոսն ալ իր կողմանէ շատ վրայ տուաւ. այն ատեն շարագրեց Երզնկացին « Յաղագս երկնային շարժմանց » գրուածքը, ժամանակին աստեղաբաշխական գիտութեանը յարմար: Ալլոց անունով իշխան մը նոյն գրուածքը կարդալով, աղաչեց որ նոյն գեղեցիկ նիւթոյն վրայ կրկին գրէ Երզնկացին՝ քերթողական լեզուաւ. Յով-

*հաննէս՝ հազար տող ոտանաւորով երկնից նկարագիրն ըրաւ և ընծայեց իշխանին։*

*Իրեն ընծայուած կը գտնենք նաև հետևեալ խորագրով և ընտիր շարադրութեամբ երկասիրութիւն մը. «Երանաշնորհ և բազմիմաստ րաբունապետի Յովհաննու Մարծորեցւոյ կորովաբիբ մտացն տեսութիւն». և են քսան թուով ճառք կամ քարոզք.*

*Ա. Բանն որ առ Յովբ. «Զի՞նչ երկիր իցէ յորում լոյսն ազանիցի. — Եթէ ոք իմաստուն խորհրդով ներակրթել զինք կամիցի, և ուղղակի տեսութեամբ յառեալ հայիցի ընդ պարս առաջին սրբոցն»։*

*Բ. «Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ. — Թէպէտև ըմբռն ուրեմն էր մեզ».*

*Գ. «Կապեսցէ զորթոյ զյաւանակ իւր. — Ցաղագս խորհրդոյ լուսափայլ տօնիս»։*

*Դ. «Տէր զլուր քո լուայ. — Զոր օրինակ մշակ ոք հմուտ»։*

*Ե. «Այր ոմն ազնուական գնաց յաշխարհ հեռի. — Աստուածն Բան հրամայէ ուրեք յիւրում վարդապետութեան»։*

*Զ. «Այլ մեզէն եղեալ ականատես նորա մեծութեան. — Թէպէտև հրաման ի տեառնէ ընկալաք ոչ հոգալ յառժամ յատեան կոչիցիմք»։*

*Է. «Ահա ես առաքեմ զհրեշտակ իմ. — Ցիրաւի ի սկիզբն նախադրութեան բանիս եպերեցայց ի գերահրաշ և ի հոգիահրաւէր ժողովոյդ»։*

*Ը. «Լուր Իսրայէլ, տէր Աստուած մեր տէր մի է. — Վստահացեալ յուսոյ քաջութեամբ»։*

*Թ. «Որպէս ջուր ցուրտ՝ ծարաւելոյ անձին ախորժելի է։ Ի Հոգին սուրբ։ — Բռնադատիմ ահա և յոյժ փարանիմ յերկաքանչիւր կողմանց»։*

*Ժ. Ժամանակ ծնանելոյ և ժամանակ մեռանելոյ. — Բանական բնութիւնք արարածոց յերկոսս մասունս բաժանեալ են»։*

ԺԱ. «Առ քեզ, տէր, համբարձի զաչս իմ. — Եւ որպէս համբառնայ անձն առ Աստուած յորժամ մտաւորական հոգին»։

ԺԲ. «Ահաւասիկ ես առաքեմ զհրեշտակ իմ. — Ցերիս բաժանի բանական բնութեանս սեռք, յաստուածայինն, ի հրեշտակային և ի մարդկային»։

ԺԳ. «Ես իմաստութիւն բնակեցայ ի խորագիտութեան. — Ցարարչական բանէ անեղական լուսոյն հաստատեալ գոյացան»։

ԺԴ. «Զի՞ բարի կամ զի՞նչ վայելուչ զի բնակեն. — Հրամայէ տէր ի սրբում աւետարանին, թէ որ խնդրէ ի քէն տուր»

ԺԵ. «Ահաւասիկ ես ածից զծառայ իմ զծագումն. — Ցերեւելեաց աստի ոչինչ ըղձալի գոլ քան զսիրելեացն կատարել բաղձանս»։

ԺԶ. «Փոքր էի ես յեղբարս իմ. — Ցերիս բաժանի բանական բնութեանս սեռք». սկզբնաւորութիւննն նոյն ընդ չորեքտասաներորդ ճառին։

ԺԷ. «Զխորհուրդ արքայի ծածկել բարւոք է. — Եթէ ոք ի մարդկային բնութենէ մաքրեցաւ»։ Յոմանց ի գըրչագրաց՝ Տիրատուր վարդապետի կը տրուի այս ճառ։

ԺԸ. «Եւ ահա չորս կառք ելանէին. — Բազում ինչ առնեմք զոր ոչ կարեմք»։

ԺԹ. «Երդուաւ Տէր Դաւթի ճշմարտութեամբ. — Որպէս յաստեղս արեգակն և ի կենդանիս դիմակն և միւս միակն զառաջնաւորութիւն և զսկզբնաւորութիւն ունի»։

Ի «Ի քէն է, տէր, աղբիւր կենաց. — Ի կարգ բանիս հայելով՝ երիս խորհուրդս ծանուցանի մեզ»։

Ներբող 'ի սուրբ Լուսաւորիչն. — Վրաց աշխարհէն նորէն հայրենիքը դարձաւ Երզնկացին, և իր ծննդեանը քաղքին 1287ին կրած կործանմանը ժամանակ կ'երևնայ թէ անկէ շատ հեռու չէր. այլ մօտակայ վանքերուն մէկուն մէջ առանձնացած։ Անկէ տարի մը ետքը՝ Սեպհոյ լերանը

վրայ եղող սրբոյն Գրիգորի վանքին մէջ իր պերճախօս լեզուն հանդիսացաւ։ Վասն զի գովելի սովորութիւն մը ունէին վանքին միաբանքը՝ որ տարուէ տարի այդ սրբավայրը յաճախող ուխտաւորաց և անթիւ բազմութեան առջև՝ մասնաւոր ներբողիւ մը կը պատուէին զսուրբ Լուսաւորիչն։ Նոյն տարին ներբողելոյն աւելի պատիւ մը ընելու համար՝ զԵրզնկացին աղաչեցին որ իր ճարտասան և սրտաշարժ լեզուն բանեցընէ՝ սրբոյն Գրիգորի անմահական յիշատակին աւելի մեծարանք մը ընծայելու։ Յանձն առաւ Յովհաննէս, և շարագրեց այն ընտիր և աքանչելի ներբողը որ կը սկսի, «Յարազուարճ խնդութեամբ բերկեալ». ուր Լուսաւորչայ հետ իւր հայրենի գեղեցիկ գաւառին սիրովն ալ վառուած, և բնութեան պզուար տեսարաններով միտքն զմայլած, բանաստեղծութեան և ճարտասանութեան շնորհքով զանոնք կը նկարագրէ, մանաւանդ Սեպուհ լեռն և Մանեայ այրքն և բոլոր Դարանաղեաց լեռները։ Ի ճառընտիրս ինչ իրեն ընծայուած նաև 'ի պատիւ որդւոց և թոռանց Լուսաւորչի ներբողեան մը, որ հրատարակուած ալ է 'ի Պոլիս իր անուամբ, թէպէտ որոշ հաւաստիք մը չկայ այս ենթադրութեան։ Յորագիրն է. «Ներբողեան գովեստից պատմագրաբար ի սուրբն Արիստակէս, ի Վրթանէս, ի Յուսիկ ի Գրիգորիս և ի Դանիէլ. Յովհաննու Երզնկացւոյ։ — Բաղձանք սրտի իմոյ բորբոքի»։ Երզնկացւոյ անուամբ կը յիշատակուի 'ի ձեռագիրս համառօտ պատմութիւն մը վարուց սրբոյն Գրիգորի [1]։

Դանիելի մարգարէութեան մեկնութիւն մը կ'ընծա-

1. Ներբողին յետին և ընտրելագոյն տպագրութիւն 'ի Ս. Ղազար, 'ի չորս Հայկական Սոփերս, (Հատ. Ե.). «Յովհաննու Երզնկացւոյ ասացեալ ներբողական գովեստ 'ի սուրբ Լուսաւորիչն Հայոց Գրիգորիոս. ասացեալ յօր յիշատակի նորա զոր առնեն մեծաժողով հանդիսիւ 'ի լեառն Սեպուհ, որ է տեղի հգնութեան նորին և հանգստարանի յոգնահաւաք հանդէս քահանայական դասուց և վարդապետաց ոմանց և ժողովք հաւատացելոց բազմաց անդր գումարելոց»։

*յուի Երզնկացւոյն, հետեւողութեամբ Եփրեմի, Հիպպողիտայ և Վարդանայ, յօրինեալ ի ՉԿԵ (=1316) Թուին Հայոց յԱրտազ գաւառի ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի Մործորու կոչեցեալ. 'ի խնդրոյ ուրումն Վարդան վարդապետի» ։ (Մատենադարան Երուսաղեմի, Թիւ 207)։*

**Մեկնութիւն Մատթէի.** — *Կիլիկիա եղած ատեն գըտաւ սրբոյն Ներսիսի Շնորհալւոյ սկսած Մատթէի աւետարանին մեկնութիւնը, որ ինչուան եօթներորդ գլուխը մեկներ ու անկատար թողուցեր էր։ Իրմէ գրեթէ 150 տարի ետքը Երզնկացին յորդորեցաւ շարունակել զայն, ինչպէս ինքն իսկ կը պատմէ յիշատակարանին մէջ։ « Եւ աստ գրութիւնն եղաւ, կ'ըսէ, Քրիստոսի 1316 Թուականին »։ Շնորհալւոյն նման ոճ մը բռնել ջանացած է Երզնկացին թէ՛ ըստ աստուածաբանութեան և թէ ըստ քերականութեան, սակայն այնչափ ջանքովն ալ և նմանողութեան փափաքով՝ յայտնապէս կը տեսնուի թէ որչափ կը զանազանին 'ի միմեանց այս երկու հանճարներն*[1]։

**Խրատական երկասիրութիւնք.** — *Ամբողջ խրատական գիրք մը շարագրած է Երզնկացին, յորում սրբոց առաքելոց և հայրապետաց ու վարդապետաց խօսքերովը ըդգուշացուցիչ խրատներ կու տայ պարզ ու դիւրիմաց ոճով բոլոր հաւատացելոց հասկացողութեանը յարմար։ Աղօթք մըն ալ կայ իւր անունովը, և համառօտ խօսքեր ժամանակագրութեան վրայ*[2]։

*Բանաստեղծական քանի մը գրուածք ալ ունի Երզընկացին, որոց մէջ գլխաւոր է վերը յիշուած հազարոտնեան քերթուածը երկնային զարդուց վրայ։ Ուրիշ քեր-*

1. Տես յէջ 632։

2. Յովհաննու Պլուզ վարդապետի ընծայուած Պատարագի մեկնութեան մ'ալ կը հանդիպինք Էջմիածնի Մատենադարանին ձեռագրաց մէջ (Թիւ 1424)։

թուած մըն ալ՝ որոյ սկզբնատառքն այս խօսքերը կը յօդեն. «Յովհաննէս վարդապետի Ծործորեցւոյ եդեալ 'ի չափ մերոյին տաղից՝ ստանաւոր»։

Երկրորդն է խրատական և մաղթողական գրուած մը՝ զոր 'ի խնդրոյ Յակոբայ Մանկտաւագի Երզնկացւոյ յօրիներ է։

Երրորդն է այբուբենի վրայ չորս զանազան տեսակ գրուածներ, խրատական ոճով ու անանկ լեզուով մը որ աշխարհիկ խօսից կը մօտենայ [1]։

Երզնկացւոյն են նաև հետևեալ չորս նախերգանք ճառից. և որոց սկզբնաւորութիւնքն են

Ա. «Անմիջոց բարեկամն Աստուծոյ, և անհաս խորհրդոց հազարապետ աստուածայինն Մովսէս, ասէ ուրեմն ի բանս իւր»։

Բ. «Տուրք բարի պարգևաց և ձիր իմն անճառելի շնորհաց, անդուստ ի սկզբան ստեղծմանն ընկալաւ յարարչէն մարդկային բնութեանս սեռ»։

Գ. «Զոր ինչ ախտանան առ բազմածաղիկս բուրաստանացն՝ որք այնոցիկ են ցանկացողք բնութեանն»։

Դ. «Ի խաղաղութեան եկայք ժամանակի, վասն որոյ և զնոյն բարիս բաժանեմք ձեզ»։

* * *

Քնարերգականք. — Երզնկացւոյն քնարերգական քերթուածները երկու դասակարգութիւն կրնանք բաժնել, 'ի Տաղս և 'ի Շարականս։ Ասոնց մէջ աւելի կերպով մը

1. Ասոնց մէկուն սկզբնաւորութիւնն՝ իբրու նմուշ մը գործածած լեզուին.

«Ադամայ որդիքդ ամենայն ծնունդ 'ի հողէն,
Կայք աստ ձեզ խրատս յԱստուծոյ բանէն.
Գիտեմ ամէն մարդ չկարենայ ունել 'ի դրէն.
Վասն այնոր զայս գրեցի որ լսեք յինէն»։

Կը փայլի Երզնկացւոյն բանաստեղծական հանճարն ու եռանդը, մանաւանդ Ջրօրհնեաց հանդիսին համար շինած տաղերուն մէջ, որ են « Ցամենայն ժամ օրհնեմք », և « Այսօր ձայնն հայրական »։ Հաւանականաբար իրենն է նաև Ով զարմանալի գեղեցիկ տաղը ի Նոյն խորհուրդ։ Դարձեալ սրբոյ Կուսին փոխմանը վրայ տաղ մը՝ որոյ սկզբնաւորութիւնն է « Առաջնաճաշակ պտղոյն »։

Ճարականաց մէջ իր անուամբը կը յիշատակուին 'ի պատիւ Լուսաւորչին երգուածը, « Լերինք ամենայն », բանաստեղծական հանճարով ու ընտիր լեզուով յօրինուած, զոր ոմանք Խորենացւոյն կ'ընծայեն։ Նոյն սրբոյն վրայ այբուբենական շարական մը, « Այսօր զուարճացեալ »։ Դարձեալ սրբոյն Ներսիսի հայրապետին նշխարացը յայտնութեան վրայ, « Որ զլոյսն անճառ » սկզբնաւորութեամբ, որոյ վրան արդէն խօսեցանք. ու 'ի պատիւ Խոստաճարակաց երգուածը « Ցաւուրս վերջին ժամանակի ». որուն սկզբնատառքը կը յօդեն՝ « Յովհաննիսի է երգս »։

Թարգմանութեանցը վրայ առանձին խօսելու առիթ պիտի ունենանք։

Երզնկացւոյն գրուածոց տպագրութիւնքն տես 'ի ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ։

* * *

Երզնկացւոյն աշակերտակից էր նաև ՆԵՐՍԷՍ ՏԱՐՕՆԵՑԻ անունով վարդապետ մը, որ նոյն գաւառին մէջ եղող Ղազարու վանքը կրօնաւորած էր։ Ասիկայ թէպէտ և յունական դպրութեանց և աստուածային գրոց տեղեկութեամբ վարժ էր, բայց լսելով մեծին Վարդանայ իմաստութիւնը, գնաց անոր քով, և սորվեցաւ իրմէ. գրաւոր երկասիրութիւն մը թողած չէ։

Իրեք գլխաւոր աշակերտ ունեցաւ այս Ներսէսս, որ

էին ՅՈՎՀԱՆ ԱՐՃԻՇԵՑԻ, ԵՍԱՑԻ ՆՁԵՑԻ և ՄԽԻԹԱՐ ՍԱՍՈՒՆՑԻ։ Արճիշեցի անուանի եղաւ իր գիտութեանց ծիրովը և սրբութեան համբաւով. գրոց մէջ երբեմն Ոսպնակեր ալ կոչուած է, որովհետև կ'աւանդուի թէ տասնըհինգ տարի ուրիշ բան կերած չըլլայ՝ բայց միայն թըրջած ոսպ։ Իրեն աշխատասիրածն է Պատարագի մեկնութիւն մը, զոր քաղելով համառօտած է Խոսրովու Անձևացւոյն և Լամբրոնացւոյն խօսքերէն։ Այս գրուածքին վրայ՝ ընդհանուր տեղեկութիւն մը տուած ենք՝ Խոսրովու վրայ խօսած ատեննիս։ Երկու անգամ տպագրուած է այս գիրքս 'ի Կոստանդնուպոլիս 1717 ին և 1799ին. 1810ին ալ երրորդ տպագրութիւն մը եղած է 'ի Մատրաս։

Ճառընտրի մը մէջ հանդիպած ենք նաև հետագայ խորագրով երկասիրութեան մը իր անուամբ. « Յովհաննէս վարդապետի Արճիշեցւոյ Ոսպնակերի ասացեալ բան՝ վասն երից կարգացն փրկելոց ապրելոց. և երից հակառակաց նոցին և դիմակաց »։

---

# ՍՄԲԱՏ ՊԱՏՄԻՉ

---

*Սմբատ Սպարապետ։ — Քաղաքական դիրքը և արդիւնքը։ — Ցուած պատերազմունք և արիութիւնք։ — Տարեգիրք։ — Թուղթք։ — Օրինագիրք։ — Լեզուն և գրութեան ոճը։ — Տարեգրոց հայ բնագրին տպագրութիւնք և թարգմանութիւնք։*

Սմբատ Գունդստապլ՝ այսինքն Սպարապետ պատմչի անունը և արիական գործերը թէպէտ և ծանօթք էին բանասիրաց, բայց ոչ նոյնպէս իւր երկասիրութիւնները. միայն երեսուն կամ աւելի տարիներէ առաջ սկսաւ իր պատմական գրուածքին գրչագիր մէկ օրինակը երևնալ ու ձեռքէ ձեռք անցնիլ, որուն վրայ կրկին տպագրութիւնք եղան գրեթէ մի և նոյն միջոցին. մէկն 'ի Մոսկուա և միւսն 'ի Փարիզ։ Քանի մը տարի յառաջ ալ իր ուրիշ երկք յայտնուեցան և հրատարակուեցան։

Սմբատ որդի էր Կոստանդնի արքայահօր։ Թէպէտ և դեռ չորեքտասանամեայ պատանեակ 'ի մահուն Լևոնի առաջնոյ թագաւորի Ռուբինեանց, բայց արդէն իր արիական սրտովն յինքն ձգեր էր իմաստուն իշխանին աչքը, որ ըստ վկայութեան նորուն իսկ Սմբատայ «Ուր իմանայր թէ գոյ այր իմաստուն և գիտուն, և աջող 'ի գործ կամ 'ի զինուորութիւն, կամ 'ի խօսս և պատասխանիս, առաքէր և կոչէր խոստմամբ, և բերեալ հանգուցանէր առատաձեռն պարգևօք». և պարծանօք վրայ կը բերէ. «Յորոց մի ես եմ Սմբատ Սպարապետ»։ — Լևոնի մահուընէն ետքը՝ երբ թագաւո-

րահայրն Կոստանդին յաջողեցաւ արքունական գահոյից վրայ բազմեցընել զորդի իւր Հեթում, սպարապետութեան ծանր ու դժուարին պաշտօնն ու գործը Սմբատայ յանձնեց. զոր երկար տարիներ 'ի գլուխ տարաւ՝ ոչ միայն եղբօրը Հեթմոյ թագաւորութեան երկար տարիներն (1226–1270), այլ նաև անոր որդւոյն Լևոնի Գ առջի տարիներն. շատ անգամ արիւնռուշտ պատերազմաց ասպարիզի մէջ մտնելով և բազմաթիւ ու նշանաւոր յաղթանակներով Եգիպտոսի և Իկոնիոնի սուլտանաց զօրաց վրայ, ու բաղդին ու զինուց ձախողելու ատեններն ալ միշտ աներկիւղ և հնարիմաց 'ի դարմանն:

* * *

Քանի տարի պատերազմաց դաշտերուն մէջ կռուելով ու յաղթելով իր թագաւոր եղբօրը հետ կամ անոր կողմանէ, զօրացան ապա յարևելս Թաթարք, ու իրենց արշաւանքներովն և անոնց մէջ ունեցած գրեթէ յարատև յաջողութեամբ՝ վախի մէջ ձգեցին շրջակայ ազգերն ու անոնց իշխողքն. որք անվստահք և շատ անգամ նաև անզօրք 'ի խափանել անոնց յառաջխաղացութիւնն, կ'ուզէին դաշնակցութեամբ ապահովել իրենց երկրին վիճակը և իշխանութիւնը: Նոյն խորհուրդն ունեցան նաև Հեթում թագաւոր և Կոստանդին արքայահայր, և դեսպանութեամբ յղեցին իրենց որդին և եղբայրն զՍմբատ Գունդստապլ յամի 1248 առ Գիուգ խան Թաթարաց: Հեթում պատմիչը մանրամասն կ'աւանդէ այս դեսպանութեան պատճառը. 1253 թուականին, կ'ըսէ, Հայոց Հեթում թագաւորը անձամբ ուզեց երթալ առ ինքնակալն Թաթարաց, որպէս զի անոր շնորհքն ու սէրը յաջողութեամբ կարենայ ձեռք ձգել, ու խաղաղութեան պայմաններ դնէ անոր հետ: Բայց առաջ ղրկեց Հայոց թա-

գաւորութեան Գունդստապլը, զՄինիբաղտ [1], որպէս զի հրաման առնլով՝ կարենայ ապահով կերպով երթալ, անոր համար՝ սա գնաց առ ինքնակալն Թաթարաց, ու իրեք չորս տարիէն ետքը դարձաւ 'ի Հայաստան, պատմելու ինչ որ տեսաւ ու լսեց։ Այս հրեշտակութեան դէպքը ինքը Սմբատ ալ կ'աւանդէ իւր Պատմութեան գրոցը մէջ հետեւեալ խօսքերով. «Ի թուին ՈՂԷ գնացի ես Սմբատ Գունդստապլս 'ի Թաթարն, և 'ի թուին ՈՂԹ դարձայ առ իմ եղբայրն Հեթում թագաւորն»։

Իւր պաշտաման և սրտին արժանաւոր այլ և այլ քաջագործութիւններուն յիշատակութիւնը կ'ընէ Սմբատ, իրեն համառօտ պատմագրութեանը մէջ։ Երբ Քէյ Խոսրով սուլտանն բազմաթիւ հեծելազօրք ժողվելով՝ Լամբրոնի տիրոջը Կոստանդնի առաջնորդութեամբ մտաւ 'ի Կիլիկիա, Կոստանդին թագաւորահայրն ու Սմբատ մտան 'ի Տարսոն, զոր սուլտանն պաշարած էր, Սմբատ իրեններովը պատերազմեցաւ անոր հետ, ու երկարատև կռիւներով, ու եւրոպական ճարտար զինուց օժանդակութեամբ՝ յաղթեց անոր [2]։

Այսպիսի քաջութեամբ ու պատերազմաց վտանգներու մէջ կնքեց Սմբատ իւր կեանքը փառօք, որուն հանգամանքը լիուլի կ'աւանդէ ժամանակակից վարդապետ մը։ 1275 թուին գուժկանք հասան առ Լեւոն Գ, թէ Եգիպտացւոց ամիրայն անթիւ զօրքով նորէն Կիլիկիոյ վրայ կ'արշաւէ. Լեւոն ժողվեց մէկէն իւր զօրքերը, ու վեց գունդ բաժնելով, մէկը ինքն առաւ, ու երկրորդը՝ իր ծերունի հօրեղբօրը՝ Սմբատայ սպարապետի ձեռքը տուաւ, ու պատուիրեց որ քիչ զօրքով Եգիպտացւոց դէմ ելլէ, մինչդեռ ինքը զօրաց բազմութիւնը դաշտանի մէջ

1. Առանկ կը կոչուի Հեթում պատմչի գաղղիական ու լատին թարգմանութեան մէջ Սմբատայ անունը։

2. «Շատ մեռան յերկուց կողմանց, կ'ըսէ Սմբատ, բայց 'ի դրացէ հարիւրապատիկք. զի ունէաք ընդ մեզ աղէկ Ֆռանկի չարխուորք»։

դրած էր, ու անծանօթ ճանապարհաւ Եգիպտացւոց զօրքին ետևն անցաւ 'ի ծածուկ ։ Երբոր սկսան Եգիպտացիք Կիլիկիոյ սահմաններուն վրայ վազել, անոնց առաջը ելաւ Սմբատ իւր գնդովը։ Եգիպտացիք՝ կարծեցին թէ միայն այնչափ է Լևոնի զօրքը, ու սիրտ առած՝ յարձակմունքն սկսան. բայց մէկէն 'ի մէկ դարանամուտքը անոնց չորս կողմը պաշարեցին. ինքը Լևոնն ալ հասաւ ետևնէն, ու Եգիպտացիները մէջերնին առնելով՝ շատերը կոտորեցին. ու այնչափ շատ ինկան անոնցմէ, որ դիականց լեռնակոյտը արգելք կ'ըլլար ապրելոց փախստին։ Իսկ երբ ամիրայն հնարք գտնելով սակաւաթիւ զօրքով իր կեանքը ապրեցընել կը մտածէր, ետևէն պնդեցաւ Սմբատ. բայց ձիուն սաստիկ արշաւանացն առեն՝ ծառի մը զարնուեցաւ ոտքը, ու վտանգեցաւ. այն վիրացը սաստկութենէն ու հասակին ծանրութենէն՝ ալ չիկրցաւ չարունակել ընթացքը, ու դառնալով 'ի բանակն՝ քանի մը օրէն մեռաւ (1276)։

Իւր կենացը 68 կամ 69 տարուան հասակին հանդիպեցաւ Սմբատայ մահը. որովհետև 1208 Թուականին կը նշանակէ իրեն ծննդեանը տարին։



**Սմբատայ Տարեգրութիւնք.** — Աւելի համառօտ ժամանակագրութիւն մը կրնանք սեպել Սմբատայ այս երկասիրութիւնը քան թէ բուն պատմութիւն։ Կ'երևնայ թէ հեղինակին դիտաւորութիւնն ալ այս եղած է, որովհետև խորագրին մէջ յայտնապէս կը նշանակուի. « Պատմութիւն Յունաց 'ի Կոստանդնուպոլիս և Հայոց Մեծաց, ըստ կարգի ժամանակաց »։ Կը սկսի Հայոց Ն (Քրիստոսի 951) թուականէն, Գագկայ Բագրատունւոյ իշխանութեան ժամանակէն, և կը հասցընէ մինչև 'ի ՉՁ (1331). գրեթէ չորս հարիւր տարուան միջոցի մէջ 'ի Հայաստան և 'ի Բիւզանդիոն հանդիպած դէպքերու

*համառօտ յիշատակութեամբ։ Բայց որովհետև իւր մահը 1276ին եղաւ, յայտնի է որ վերջին վաթսուն տարուան պատմութեանց համառօտութիւնը ուրիշներու ձեռքով եղած է. յորոց մի էր մարաջախտն Պաղտին, տէրն Նըղրի, խնամեցեալն Սմբատայ տոհմին։*

*Հարկ չէ ըսելը թէ այսպիսի երկասիրութեան մէջ ընդունայն է փնտռել կարգաւորան լեզու և ոճ մը. ասիկայ հեղինակին նպատակէն, կրնանք ըսել թէ նաև դիտաւորութենէն դուրս ձեռնարկութիւն մըն էր. մանաւանդ թէ կամաւ ընտրած է իր ժամանակին աշխարհիկ լեզուն և ոճը՝ ընթերցողաց դիւրահասկանալի ըլլալու համար. որ որչափ ալ պարզ և ռամկական, այլ ախորժալուր և ազգայնութեան հետքը վրան կրող։ Համառօտ գրուածք մ'է, և կ'երևնայ թարգմանաբար յարմարցուած գրոց լեզուով յօրինուած ուրիշ նման երկասիրութենէ մը. որովհետև գրուածքին սկիզբը ինքզինքը թարգմանող պատմութեանն կը կոչէ։ Այնչափ աւելի հաւանական կ'ըլլայ այս ենթադրութիւնը՝ որ ձեռուընիս ալ հասած է բաց 'ի Մատթէի Ուռհայեցւոյն գրուածքէն՝ ուրիշ ժամանակագրական և գրաբար լեզուով շարագրուած Ռուբինեանց ժամանակագրութիւն մը, ընդարձակագոյն քան զՍմբատայն, և յորմէ շատ տեղ փոխ առած կ'երևի վերջինս, համառօտելով և իր ոճին վերածելով։ Բայց իբրև ժամանակագիր՝ ունի իրեն յատկութիւններն, որոնցմով թէ՛ ազգային և թէ օտար բանասիրութեան առջևը իր յարգն ալ։ Ռուբինեանց իշխանութեան վրայ խօսող՝ քիչ մատենագիր ունինք. և աւելի քիչ՝ որ Սմբատայ պէս ժամանակագրութիւնը պատմութեան հետ խառնեն. և աս է իրեն մեծ և գլխաւոր արդիւնքը, որով արդի եւրոպական ստուգասէր գիտութեան համար՝ աւելի պատուական կը սեպուի իր երկասիրութիւնը, քան ուրիշ շատ պատմագրաց գրուածները, որոնք ժամանակագրութեան մտադրութիւն չընելով ընդհանուր պատմութեան մէջ՝ լուսաւորելու և բացատրելու տեղ՝ աւելի մթութիւն*

և երկրայութիւն կը ձգեն, և կարծեաց երկպառակ անհամաձայնութիւն։

Բաց 'ի Տարեգրոց և առ քոյրն և քեռայրն գրած թղթերէն, Սմբատ ուրիշ երկու կարևոր և հետաքննական երկասիրութիւնք ալ թողած է. առոնցմէ մէկն է թարգմանութիւն Ասիզացն Անտիոքայ, և միւսն համառօտութիւն մը օրինաց և կարգաց՝ ծաղկաքաղ 'ի Դատաստանագրոցն Մխիթարայ Գոշի և բիւզանդական օրինագրոց որ արդէն ծանօթք էին յազգին թարգմանութեամբ Լամբրոնացւոյն։ Սմբատայ այս երկասիրութեան նպատակն էր—իբրու վարիչ և ուղղիչ թագաւորութեանն Հայոց յետ մահու հօր իւրոյ Կոստանդնի—, քաղաքական ու եկեղեցական հաստատուն օրէնքով օժտել իր ազգը, և դէմ առնուլ այն անտեղութեանց որ անոնց հրատարակման պակասութենէն առաջ կու գային, մանաւանդ յետ ծանօթութեան և վերաբերութեանց մերոցն ընդ օտարաց. «Գրեցի զսա, կ'ըսէ, վասն հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ, և վասն աշխարհի դատաւորաց և թագաւորաց. և զսիրտ բանիցն առեալ եդի համառօտաբար... և պարտ և արժան համարեցայ վասն թագաւորացն գրել իրաւունս, զի նոքա յԱստուծոյ են կարգած և յԱստուծոյ տեղն 'ի յերկրի են»։ 1265ին յօրինած է Գունդստապլ այս օրինագիրքը։

Ինչպէս 'ի Տարեգիրս՝ ասանկ երկրորդ գրուածքիս մէջ ալ՝ Սմբատայ լեզուն՝ երեքտասաներորդ դարու աշխարհիկ բարբառն է։ Թարգմանչաց վայելուչ և հայկաբան ոճը՝ դարէ դար իւր գեղեցկութիւնը կորսընցընելով, հոս գրեթէ չիջելափառ կը նուազի։ Քաղաքական վիճակին պէս գրաւորական լեզուն ալ բոլորովին կերպարանափոխեալ՝ ուրիշ դար մը կը կազմէ, որ ազգային գերութեան շղթայից տխուր արձագանգը կը լսեցընէ, և աւելի նոր մատենագրութեան կը վերաբերի, ուր որ պիտի տեսնենք զայն, հոս կնքելով խօսքերնիս մեր հին հայկական դպրութեանց վրայ։

Սմբատայ Տարեգրոյ տպագրութիւնք 'ի հայ։ Ա. տպ. «Սմբատայ Սպարապետի եղբօր Հեթմոյ առաջնոյ թագաւորի Հայոց Պատմութիւն Յունաց 'ի Կոստանդնուպօլիս և Հայոց մեծաց՝ ըստ կարգի ժամանակաց»... յՈսկանայ Գէորգեան Յովհաննէսեանց Երևանեցւոյ։ Մոսկուա, 1856։ Բ. տպ. «Տարեգիրք արարեալ Սմբատայ Սպարապետի Հայոց որդւոյ Կոստանդեայ կոմսին Կոռիկոսոյ։ Ի լոյս ընծայեաց Կ. Վ. Շահնազարեանց»։ Փարիզ, 1859։ Գաղղիական թարգմանութիւնք. Extrait de la Chronique de Sempad, Seigneur de Babaron, connétable d'Arménie, suivie de celle de son continuateur...; traduite pour la première fois de l'arménien par V. Langlois. Saint-Pétersbourg, 1862. — Observations sur une traduction d'un Extrait de la Chronique de connétable Sempad, par Ed. Dulaurier, (Paris), Revue de l'Orient, 1867, 1868. — Chronique du Royaume de la Petite-Arménie, par le connétable Sempad; Dulaurier, Recueil des historiens des Croisades; Documents arméniens, 610–680.



# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՄԱՆՐ ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

**ԱԲՐԱՀԱՄ** *վարդապետ, որուն կ'ընծայուի 'ի ցուցակի Մատենադարանաց Էջմիածնի (Թիւ գրչ. 712) տէրունական աղօթից կամ Հայր մերի մեկնութիւն մը։*

**ԳԱԳԻԿ Բ** *Թագաւոր. Աշոտոյ որդին, ու Բագրատունեաց վերջին տարաբաղդ թագաւորը։ Մետասաներորդ դարուն կէսերը՝ երբ Կոստանդին Տուկիծ կայսրը Սենեքերիմ Վասպուրականի թագաւորին որդիքը՝ զԱտոմ և զԱբուսահլ իր քովը կանչեց, զանոնք Յունաց դաւանութեանը դարձընելու համար, իշխանքն կայսեր պատասխան տուին, կ'ըսէ Ուռհայեցին. « Մենք առանց Գագկայ՝ Աշոտոյ որդւոյն՝ չենք կրնար բան մը ընել. վասն զի անիկայ քաջ մարդ մըն է, ու թագաւոր, և մեր փեսայն. ղրկէ ու զանիկայ հոս կանչէ »։ Կայսրը չուզեց կանչել. վասն զի « այր հզօր էր, կ'ըսէ պատմիչը, յիմաստասիրական ջոկոն, և անյաղթ 'ի պատերազմի. զի սա 'ի սուրբն Սոփի 'ի յամբիոնն նստէր ընդ ամենայն վարդապետսն Հոռոմոց »։ Բայց երբ ստիպուելով կանչեց զինքը, ու կայսեր առջևը երևցաւ Գագիկ, իրեն*

իմաստութեան և գիտութեանը վրայ վստահ՝ խօսեցաւ անոր հետ ու կ՚ըսէր. «Ես այր թագաւոր եմ և որդի թագաւորաց Հայոց, և ամենայն Հայք հնազանդին հրամանաց իմոց, և ամենայն կտակարանացն Աստուծոյ՝ հնոյն և Նորոյն հմուտ եմ. և ամենայն Հայք վկայեն բանից իմոց. զի հաւասար վարդապետացն ընդունեին զիս. և ահա ես խօսեցայ այսօր ընդ Հոռոմոց վասն հաւատոյ ազգին Հայոց»: Ու գրեց դաւանութեան գիր մը, զոր տուաւ թագաւորին ու պատրիարքին: Կը վկայէ պատմիչը թէ «Խօսեցաւ յանդիման... Տուկծին և 'ի մէջ ամենայն հռետոր վարդապետաց տանն Յունաց 'ի քաղաքին Կոստանդնուպոլիս. և յոյժ հաճեալ թագաւորն Տուկիծ և ամենայն իմաստասէրքն որ նստէին 'ի ճեմարանին, և հիանային ընդ կորովութիւն բանիցն և ընդ հաստատութիւն շնորհացն... վասն զի ամենայն դասք վարդապետացն Հոռոմոց ոչ կարացին արատ և կամ բիծ երկբայութեան գտանել հերձուածոյ 'ի հաւատոյ խոստովանութիւնս՝ զորս գրով Հոռոմոց խօսեցաւ Գագիկ արքայ Հայոց»:

Հասած է առ մեզ թուղթ մը «Գագկայ Վասպուրականի Հայոց թագաւորի առ կայսր Յունաց Ռոմանոս վասն հաւատոյ»:

ԳՐԻԳՈՐ Անաւարզեցի կաթուղիկոս, որ Մեծքարեցի ալ կոչուած է՝ յառաջագոյն նոյն անուամբ կոչուած և հռչակուած թեմին և ուխտին առաջնորդ ըլլալով: Օչին տէրն Կանչոյ չափաբերական թուղթ մը ուղղած է առ սա հանդերձ մատանւոյ ընծայիւ: Անաւարզեցւոյս ընծայուած կարևոր և նշանաւոր երկասիրութիւնն է Ցայսմաւուրք գրոց նոր կարգադրութիւնն և յօրինումն՝ Հայոց, Յունաց ու Լատինացւոց սրբոց համախմբութեամբ. հաւանականաբար յառաջ քան զկաթողիկոսութիւնն, երբ իրեն առաջարկութեամբն և խնդրով՝ Յովհան Երզնկացի Անաւարզայ եկեղեցւոյն մէջ քարոզ մը խօսելով դրուա-

տեց եւ զնա, սքանչանալով՝ ինչպէս կ'ըսէ, « Ի զուարթ եւ 'ի հրեշտակատիպ դիմացդ տեսութենէ, 'ի քաղցր եւ ախորժական բանիցդ արդիւնականէ, յամենալի եւ 'ի յոգնափայլ ծաղկանցդ առաքինութեանն՝ որ 'ի հոգւոյդ քո բուրաստանէ. յիմաստախօս յարակցաց եղբարց եւ որդւոց հոգեւորաց, 'ի քոյդ զմայլելոց վարժական հանճարասիրութենէ »: Էջմիածնի Մատենադարանին մէջ կամ 1608 թիւ գրչագրին մէջ. « Պատճառ լոյս եւ նուրբ գըրեանց, առեալ ի հարցն սրբոց եւ ի վարդապետաց, եւ ի մի հաւաքեալ եւ հօգացեալ մեծ րաբունապետին Գրիգորի որդւոյ Աբասայ: Քրիստոս Աստուած Մեսիա եւ Մանուէլն շնորհաւոր արասցէ զսայ վարդապետի Խաչատրոյ »: Բաց յայլոց ներբողինից զորս շարագրեց Գրիգոր եւ անցոյց 'ի կարգս Յայսմաւուրաց, յօրինած է գըրուած մը 'ի խնդրոյ Հեթում Բ թագաւորի՝ այս խորագրով. « Տօն է ամենասուրբ Աստուածածնին եւ ամենայն Սրբոց. յայտնեացն եւ անյայտից, ի սկզբանէ եւ այսր ընտրելոցն Աստուծոյ 'ի մարդկանէ, 'ի Գրիգորէ կաթողիկոսէ ասացեալ Դրուատս »: Եկեղեցական խնդրոց եւ միաբանութեան համար ալ շատ աշխատած է Անաւարզեցի, եւ այս վախճանաւ թուղթ մ'ալ գրած աշխարհիկ ոճով առ նոյն Հեթում թագաւոր, իբրեւ հոգեւոր կտակ մը. զոր սիրով եւ մեծարանօք ընդունեցան հարք ժողովոյն Սսոյ (1307): Իրենն են՝ երեսունէն աւելի կանոնք Շարականաց, որոց շատերուն գլխատառք իր անունը կը յօդեն, կամ անոնց շարագրութիւնը իրմէ խնդրողաց. ինչպէս Կոստանդին թագաւորի, Հեթմոյ՝ մերթ նաեւ անոր կրօնաւորական Յովհաննէս անուամբը, եւ այլն: Քրիստոսի Ծննդեանն եւ Յայտնութեան տօնից համար՝ երեք առանձին շարական յօրինած է, ըստ սովորութեան յոյն եւ լատին եկեղեցեաց այդ երկու տօնախմբութիւնը բաժնելով յիրերաց:

ԳՐԻԳՈՐ Արծրունեաց եպիսկոպոս՝ որուն անուամբը կը գտնենք. «Տեառն Գրիգորիսի Արծրունեաց եպիսկոպոսի յԵրուսաղեմէ 'ի Հայս վասն Տեառնընդառաջին ըզգուշութիւն» ։ Անվաւեր համարուած գրութիւն մը, յորում կը պատմուի թէ կայսրն Յուստինիանոս իր թագաւորութեանը երեսներորդ երրորդ տարւոյն բանադրած ըլլայ զԵրուսաղեմացիս որ Տեառնընդառաջին տօնը՝ ի դեկտեմբերի քսանըհինգ կատարեն ընդ տօնի ծննդեան նոյն սուրբ քաղաքին Յուստոս և Մակարիոս հայրապետաց ժամանակ. բայց ժողովրդեան ընդդիմադարձութեամբ և իրենց ի նպաստ կատարուած այլևայլ երկնաւոր հրաշից պատճառաւ՝ կայսրը ստիպուած ըլլայ ետ կենալ իր մտածութենէն և կամքը առաջ տանելէն ։ «Ջայս վասն զգուշութեան գրեցի, կ'ըսէ, ի Հայս, որ անդէն իսկ ականատես եղաք մեծամեծ սքանչելեացն որք անդ գործեցան... և զի մանաւանդ զգուշանայցէք ի չար խորհողաց» ։... Անստոյգ է ըսինք գրուածքին նիւթը. նախ զի Յուստոս անուամբ Հայրապետի յիշատակութիւն չկայ յԵրուսաղէմ առ Յուստինիանոսիւ, և երկրորդ որ պատմութիւնն յօգեալ կ'երևի պարզապէս անվաւեր ցուցանելու նպատակաւ զսովորութիւնս յոյն եկեղեցւոյ, մանաւանդ զի չատ յառաջ Երուսաղեմացիք կատարէին զտօն ծննդեան ի քսանըհինգ դեկտեմբերի ։

ԳՐԻԳՈՐ որդի Աբասայ, հեղինակ «Հաւաքումն պատճառաց սուրբ գրոց 'ի մեծամեծ հարց» կոչուած գրուածքի մը ։

ԳՐԻԳՈՐ ՍԱՐԿԱՒԱԳԱՊԵՏ, ժամանակն յորում ապրած է՝ անծանօթ ։ Մեր ձեռքն հասած միակ գրուածքըն՝ ընտիր ներբողեան մը 'ի սուրբն Գրիգոր Լուսաւորիչ՝ այս խորագրով. «Գրիգորի Սարկաւագապետի և ճգնաւորի խօսք 'ի սուրբն Գրիգոր Լուսաւորիչ՝ ասացեալ

'ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ »: Ի մեր Մատենադարանի՝ գրչագիր մը միայն ունիմք այս ճառին ՈԿԴ Հայ Թուականաւ [1]:

ԳՐԻԳՈՐ վարդապետ, որուն ընծայուած կը գտնենք հետեւեալ երկասիրութիւնը. « Մեկնութիւն Եսայեայ 'ի խորհուրդ մեծի ուրբաթին կամաւոր եւ փրկագործ չարչարանաց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զոր արարեալ է սրբոյ եւ գերահրաշ վարդապետին Գրիգորի՝ 'ի խնդրոյ աստուածասէր եւ բարեպաշտ իշխանին Կոստանդեայ տեառն Լամբրոնի »: — Դարձեալ. « Նորին սրբոյ վարդապետին 'ի սուրբ զատիկն եւ 'ի կենսաբեր յարութիւնն տեառն միաբանութեամբ աւետարանչացն բանից եւ 'ի բացայայտումն կանանցն իւղաբերից »:

ԴԱՆԻԷԼ վարդապետ՝ Մեկնիչ սաղմոսաց Դաւթի կոչուած 'ի գրչագիրս. համառօտ հատուած մը միայն իր գրուածո՛ց հասած է առ մեզ, զուցէ հատուած մ'է Թարգմանութեան համանուն գրոց Դանիելի ասորի քահանայի, զոր վերջերս ստացանք:

ԴԱՒԻԹ վարդապետ. « Պատճառք աւագ բարեկենդանին, ի Դաւթայ վարդապետէ ի խնդրոյ աշակերտաց իւրոց. — Յաւուրս Նշանաւորի փող հարկանել օրինադրէ ». — վեց ճառք աղուհացից վեց շաբաթուց կիւրակէից համար, ամփոփեալ ի 62 էջս. — « Պատճառ նաւակատեաց եկեղեցւոյ որ զկնի Պենտեկոստէին, ի քսանն տրեայ ամսոյ զոր Հայաստանեայցս տաւնեն եկեղեցիք ի Դաւթայ շարագրեալ զաւանդս իմաստնոց ». եւ սկզբնաւորութիւնն է. « Ի բազմաց զանազանից եւ զանխուլ մնացելոյ իրաց խնդրոց.» :

1. Հրատարակեալ 'ի Ս. Ղազար.'ի շարս Հայկական Սոփերաց (Հատ. Դ). 1853:

**ԴԱՒԻԹ** *փիլիսոփայ. « Պատմութիւն Լակոնացւոց՝ արարեալ 'ի Դաւիթ փիլիսոփայէ »: (Մատենադ. Էջմիածնի, թիւ 1765): Իրենն են. « Էակաց գիրք, բովանդակն և բունն »: — « Յաղագս Սաղմոսաց Դաւթի »: — Ճառք 'ի վարդավառն և 'ի սուրբն Ստեփանոս:*

**ԴԱՒԻԹ** *քահանայ. հեղինակ Եսայեայ մեկնութեան, և ներբողի մը ի Յովսէփ պատանի:*

**ԵԶՆԱԿ** *կաթուղիկոս* (?) *որոյ անուամբ թուղթ մը կը յիշուի առ Մաշտոց. (Մատենադարան Երուսաղեմի, թիւ* 533):

**ԵՂԻՇԷ** *վարդապետ կամ կաթուղիկոս կոչուած, որուն ընծայեն գրչագիրք ճառ մը « Ի բանն Եսայեայ մարգարէի որ ասէ. Երանի՛ տեղւոյն ուր եգն և էջ կոխեցին »:*

**ԵՂԻՇԷ** *քահանայ. որուն անուամբ կայ ընտիր ճառ մը յԱյլակերպութիւն տեառն. « Սրբասիրի տեառն Եղիշէի քահանայի և ճգնաւոր կրօնաւորի և միայնակեցի՝ ի Թաբոր լերին յայտնութիւն տեառն առ Պետրոսեանց և 'ի մեծ աւուր վարդավառին »: Ճառին վերջն ալ. « Եւ ես տառապեալս քան զամենայն մարդ, որ հետևեցայ հետիոտս ընդ տերունեան շաւիղն 'ի լեառն անդ, և տեսի աչօք զժողով սքանչելի եղբարց » որոց ճգնութեանն նկարագիրն ու գովութիւնը կ'ընէ* [1]: — *Իրեն կ'ընծայուի գրուած մ'ալ ի ճառընտիրս Բան շահաւէտ և օգտակար հոգւոց համայնից խորագրով. « Ով հաւատացեալ հարք իմ »:*

1. Հրատարակեալ 'ի չորս Հայկական Սոփերաց Հատ. ԺԸ). 1854:

**ԵՍԱՅԻ** վարդապետ հայկազուն, յիշատակուած ի Կարենեան ցուցակի էջմիածնի, և որուն կը տրուի Եզեկիէլի մարգարէութեան մեկնութիւն մը։ Վեց գրչագիրք կ՚ակնարկուին, հնագոյնն ի ՉՀԱ (= 1322) թուականի։

**ԹԷՈԴՈՐՈՍ** կրտսերագոյն Թարգմանչաց թուոյն մէջ կը յիշատակուի յԱրծրունւոյն. « Իսկ առ մեզ հասին գրոյցքս այս, կ՚ըսէ, ըստ Մնացորդաց պատմագրաց առաջնոց 'ի Մամբրէէ վերծանողէ և 'ի Նորուն եղբօրէ Մովսէս կոչեցելոյ. և միւսումն Թէոդորոս քերթող, որք լեալ էին յաշակերտութենէ Ղեւոնդ քահանայի, որ 'ի Պարսս մարտիրոսացաւ ընդ այլ սուրբ եպիսկոպոսն և քահանայս »։

**ԹՈՐՈՍ**, պարոն Կիլիկիոյ, Ռուբինեանց Լեւոն մեծ պարոնին որդին էր Թորոս, ու հօրը գերեկից 'ի Կոստանդնուպոլիս. ուսկից ազատելով, տիրապետեց քաջութեամբ Կիլիկիոյ, Իսաւրիոյ և Ասորւոց մէկ մասին։ Ժամանակակից պատմիչներն շատ կը գովեն անոր քաջութիւնն և հնարագէտ կենցաղակրթութիւնը. իսկ Վահրամ անոր գրաւորական արդիւնքն ալ կը դրուատէ՝ հետեւեալ խօսքերով.

« Աստուածային գըրով վարժեալ
Եւ յիմաստից արուեստ մըտեալ.
Ասեն հոգի սա ընկալեալ,
Մարգարէի հաւասարեալ.
Որոյ դըժուար բանըս լուծեալ
Որ գըտանի այժըմ գըրեալ »։

**Ի ԽԱՉՆ ՍՈՒՐԲ**, Ներբող մը առանց անուան հեղինակի, ընտիր իմաստիւք, հմուտ գրչով և լեզուով.

« Ի յաղագոյն որ էր միայն ըստուգութեան,
Երկրպագել տեառն Աստուծոյ տալով հրաման.

Եւ որ յայտնի եղէ տեսաւղ աստուածութեան,
Պարտիմ տանել զայս հրատարակ որոց տաս կան:
Զի զոր տաւնէք զուք ժողովուրդ հանդիսական,
Ոչ յարացոյց՝ որպէս Սիոն տեղ գիտութեան.
Այլ այն նշանըս քառաձև տէրունական,
Տաճար սեղան է և աթոռ աստուածական.
Նաև լեառն իմանալի անհասական,
Ուր յորդորեմք երկրպագել ձեզ միաբան.
Դուք որդիք նոր Սիոնի նորոյ ծննդեան,
Աւրհնութեամբ պատուել ըզսա էք պարտական:
Եռափափագ քրիստոսազարդ է այդ նշան,
Աստուածասէրք յերկիր մածիմք իւր յանդիման:
Զի սա է կեանս է փոխադրաւղ որդւոց մարդկան,
Որ հրեշտակաց և երկնայնոց է սեփական.
Ի հեշտութեան զոլով սայն զէն արիութեան,
Եւ յաղթարհէս ըզձեց հողոց վերածական.
Արդ այգաննեաց մեծաց բարեաց եղեալ պաշտպան,
Իւր զոհութիւն մատուցանել է մեզ արժան:
Եւ զովասան երգայս եղեալ կցորդական,
Մինչ ի խոնարհ երկիր պագէք ամենեքեան;
Այլ և զծանր և ըզնըսեմ կիրըս մարդկան,
Եդեալ ի բաց Թախծուք այսօր յերկնից կայեան.
Քանզի ոչ նայիմք ի սուտ փայտս եղանական,
Այլ ի սա է Բանն անեղ մեզ յանդիման »:

**ԽՈՍՐՈՎ** հռետոր, որոյ Թղթոց հատուածք կը յիշատակուին ի գրչագիրս Մատենադարանին Երուսաղեմի (Թիւ 533):

**ԿԱՊՈՒՏԻԿ** վարդապետ. գրչագիրք իր անունով կը խորագրեն համառօտ գրուածք մը «Դրուատումն իմաստութեան» կոչուած:

**ԿԱՐԱՊԵՏ** Սասունցի եպիսկոպոս: Մետասաներորդ դարու գրչագրի մը մէջ (ՇԻԵ) այս անձին անունն ու հետաքննական երկասիրութեան մը յիշատակութիւնն կը գտնենք. «Ներբողեան պատմագրաբար ասացեալ տէր Կարապետ եպիսկոպոսի Սասնացւոյ՝ 'ի խնդրոյ հռմազ-

նորայ եղբօրն ճգնաւորի, յաղագս ավարտուց և մահուան սրբոյ վարդապետին Մեսրովբայ՝ Թարգմանչի և լուսաւորչի»: (Մատենադ. Էջմիածնի, Թիւ 1330):

**ՀԱՄԱՄ** վարդապետ Արեւելցի կոչուած՝ յիններորդ դարու: Ունի մեկնութիւն մը Յոբայ գրոց Ով է դա խօսքին. Նոյնպէս Սողոմոնի Առակաց, և քերականական գրուածք մը: Ի հնոց ոմանք կ'ընծայեն իրեն նաև պատմական երկասիրութիւն մը, որ հիմա կորսուած կը համարուի:

**ՄԻՍԱՅԵԼ** եպիսկոպոս Աղուանից՝ իմաստասէր կոչուած, որոյ անուամբ հասած է առ մեզ ներբողական ճառ մը 'ի սուրբ Խաչն՝ այսպիսի խորագրով. «Միսայէլի Հայոց եպիսկոպոսի մեծի կողմանցն և Քոստիփառնեայ նահանգի 'ի սուրբ խաչն Քրիստոսի»:

**ՄՈՎՍԷՍ** վարդապետ, որ սուրբ պատարագի գրոց մեկնութիւն մը շարադրած, համառօտելով ի համանուն երկասիրութեանց Խոսրովու Անձեւացեաց և Լամբրոնացւոյն, ինչպէս կ'ակնարկէ յինքնագիր յիշատակարանին. «... ՉԽԲ Թուի հայկականս տումարի, ի գիտապետութեան տեառն Ստեփաննոսի գերելոյն յԵգիպտացւոց, և ի թագակալութեանն Հեթմոյ որդւոյ Լեւոնի առն բարեպաշտի և աստուածասիրի, Մովսէս մեղաւք մեռեալ ոգի կամեցայ հաւաքումն առնել համառաւտաբար մեկնութեանց սրբոյ պատարագիս, զոր սուրբ հարքն Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոս և Ներսէս Տարսոնի յառաջագոյն ընդ երկար քննեալ էին. Նա և զոր յայլոց սրբոց հարց եւս կարացաք բանագտակ լինել՝ յանցնիւր տեղւոջ եդաք առ ի զբաւսանս մանկանց Սիովնի: Եւ զայս ոչ եթէ միայն յանձնէ կամ սիրով խիզախեցաք, այլ յորդորեալ առաւել յիմաստուն րաբունապետէն Յովհաննու, որ և ի սոյն ամի փոխեցաւ ի Քրիստոս»...:

**ՅԱԿՈԲ** գիտնական. Սամուէլի ընդարձակողը ասոր համար կ՚աւանդէ. «Այր սուրբ և առաքինի և յոյժ գիտնական, որ արար զլուծմունս նուրբ գրեանցն դժուարալոյծ բանիցն»։

**ՅԱԿՈԲ** Քարափնեցի կամ Սանահնեցի. մետասաներորդ դարուն մէջ, Կոստանդին Տուկիծ կայսեր ժամանակակից, Վասպուրականի Սենեքերիմ թագաւորին որդւոցը հետ գնաց ՚ի Կոստանդնուպոլիս, հաւատոց խնդիրներու համար. ու աւելի Յունաց համախոհ երևնալուն պատճառաւ՝ անհաճոյ եղաւ ազգին, ու անոր իրաւանցը պաշտպան Գագիկ թագաւորին։ Ուռհայեցին հետևեալ խօսքերով զինքը կը դրուատէ. «Յամի ՇԼԴ մեռաւ վարդապետն Հայոց Յակոբ Քարափնեցի, որ յորջորջեալ կոչէր Սանահնէից, այր հզօր, կորովի։ Սորա հասեալ ՚ի վերայ հին և նոր կտակարանացն Աստուծոյ, ուսեալ և հասեալ սորա ՚ի վերայ հռետորական իմաստութեանցն, և տեղեկացեալ ամենայն փիլիսոփայական խորին գիտութեանց. սա էր յաշակերտաց մեծին Դէոսկորոսի հօրն Սանահնի։ Եւ այս Յակոբոս էր որ խօսեցաւ ՚ի Կոստանդնուպոլիս...։ Եւ յայսմ ժամանակիս էր ՚ի քաղաքն Ուռհայ, և ծերութեամբ քաղաքավարեալ ընդ կեանս իւր. և դաւով նենգութեամբ լուծեալ եղև ՚ի կենաց. վասն զի գտանէին զնա մեռեալ ՚ի մահիճս իւր, առանց հեծութեան և ցաւոց... և մեծաւ հանդիսիւ թաղեցին զնա ՚ի դուռն սուրբ եկեղեցւոյ իւրոյ»։

**ՅԱԿՈԲԻԿ** Շնորհալից մականուանեալ. ճառընտրաց մէջ իրեն կը տրուի բաւական ընդարձակ գրուածք մը, Վիճաբանութիւն ընդ ամիրապետին և ընդ հրէին։ Կրնայ ստորին կամ յետին դարուց երկասիրութիւն մ՚ալ ըլլալ։

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԱՑՐԱՎԱՆԵՑԻ**, որուն անուամբ կը գտնուին հետեւեալ ճառք յէջմիածին Յաղագս Պահոց «Պարկեշտութիւն առաքինութեան պարաւանդեալ դադարեցուցէ»: Յաղագս ընդունելի և անընդունելի աղօթից. «Ամփոփեալ զմիտս մեր իմացուք զճառս բանին»: Յաղագս ողորմածաց տնանկաց. «Մի՛ ոք տղայաբար բարուք և անընտրողական ինչ մտօք»: — «Ոչ ինչ է պիտոյ որ յաղագս սիրոյ Նորագոյնս ինչ խնդիրք»: — «Հայեաց դու ի յոյսն վերին, որ իջանես ի խորս խաւարին սգոյ»: — «Բազում կերպարանք են պատուհասից և սպառնալեաց Աստուծոյ»: — «Ո՞ւր երթեալ դադարեցից և լացից զահեղ անօրէնութիւնս»: — «Ողբալով յիս հոգիս հիացեալ զարմանայ»: — «Բեր այսուհետև մանաւանդ քան յառաջագունիցն»:

Որք ի վերայ անապաշխար մեղաւորաց. «Խոստովանողք փութացարուք ջանալ ապաշխարել յաւուրս մեր»: Աղօթք. «Որ անեղդ ես և անստեղծ, և արարիչ»: — «Յառաջ քան զամենայն առաքինութիւնն է խոնարհութիւն»: Յաղագս հիմայից. «Առնոյր առնէր ոք ըղձլուխ իմ շտեմարանս ջուրց բազմաց»: Վասն կնարողաց. «Տէր մեր Յիսուս Քրիստոս վասն փրկական բանիցն յանդիմանութեան»:

**ՅՈՎՀԱՆՆԷՍ** վարդապետ՝ որ Թռչնոց վրայ ընտիր ու քերթողական գրուածք մը թողած է: Նորագիւտ հրատարակութիւն 'ի Մասիս լրագրի Պոլսոյ, 1879: Սկըզբնաւորութիւնն է.

« Ես Յովհաննէս հոգւով աղքատ
Եւ վարդապետ յերկիր աւատր.
Կամիմ գովել հաւքերն հաւատ
Ուրախութեան մարդկան համար:
Արտօտիկն հընչայր,
Առաւօտուն երբ լուսանայր
Անդադար փառաբանէր

Զաստուածութիւնն յերկինս որ կայր։
Բլբուլն զամէն զարուն կու գայր,
Ի մէջ վարդի և թրփի կենայր,
Անդադար փառաբանէր
Ընդ հրեշտակացըն հաւասար։
Ծիծեռնիկըն գայր չինէր
Զիւր հայրենի տուն և տաճար,
Եւ ի վերայ այն տաճարին
Սաղմոս ասէր զօրն անդադար։
Լըծէ լըծէնըն շուրջ կու գայր,
Ճնճակներուն խրատ կու տայր
Լըծէ լըծէ, կ՚ասէր, ճարտար
Զինչ զհօտաղ կամ զհօտէվար։
Սարերիկըն սարսափէր
Զինչ զջերմոտ և զդիւահար.
Որպէս զօսան չալփարզան,
Ինքըն զարկէր ինքըն խաղայր։
Հօպոպ զամէն զարուն կու գայր,
Ի իւր գըլուխն փետուր մի կայր,
Զինչ զՀերովդէս կամ զՊիղատոս,
Քան հուսաղօն հաւասար։
Անծեղիկն ի վեր վազեց,
Մտօքն ի վայր հպարտացաւ.
Թէ իմ փետուրս սեաւ ու ալխատկ
Հաքի քան զայլ հաւուց երկայն։
Եղնարօտիկն հաւնէր տուար,
Հետ արօտին երթայր ու գայր.
Ամէն հիճաւ ինքըն քաղէր
Մէկ չտանէր ձագուց համար։
Բուէր բուիկն ծըտուտայր
Ամէն ձորում իւր ձայնըն գայր.
Ինքն ազրի տարին հազար,
Աւաղ, ընդ ստարսն խիտա չընայր »։

ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետ Տարօնացի, որուն անուամբը կը նշանակուի Էջմիածնի Մատենադարանին գրչագրաց ցուցակին մէջ (Թիւ 1675) Բագրատունեաց արքունի տոհմին պատմութեան գիրք մը։ Ազգային տարեգրոց մէջ ալ կը յիշուի ի Շ (500) թուականի. «Յովհաննէս վարդապետ Տարօնացի, արար պատմութիւն Բագրատունեաց հրամանաւ տեառն Պետրոսի»։

**ՅՈՎՀԱՆՆԷՍ** *քորեպիսկոպոս։ Գրչագրաց մէջ Պարագայ սուրբ խաչին պատմութիւն մը կը գտնենք՝ ընտիր ոճով և հայկաբանութեամբ, իրեն ընծայուած։*

**ՊԱՂՏԻՆ ԻՇԽԱՆ** *որ ունի Թուղթ առ Վարդան վարդապետ։*

**ՊԱՏՄՈՒԹԻՒՆ** *ազգին Մամիկոնէից ցուրբն Վարդան։ Կը գտնուի 'ի Մատենադարանի Բարձրահայեաց Սուրբ Աստուածածնի վանաց յԱրղն (թիւ գրչ. 112)։*

**ՊԱՏՄՈՒԹԻՒՆ** *արշաւանաց Հագարացւոց և Թաթարաց և Ռուբինեանց։ Նոյն վանաց Մատենադարանին և նոյն գրչագրին մէջ։*

**ՍԱՀԱԿԱԴՈՒԽՏ**. *քոյր Ստեփանոսի Սիւնեցւոյ, որուն համար կը գրուցէ Ուռպելեան. «Էր սորա քոյր մի, 'ի մանկութենէ ստացեալ զվարս կուսութեան, և առանձնացեալ 'ի ձորակին Գառնոյ, յայրի միոջ, և անտանելի վարս ճգնութեան կրէր յանձին. որոյ անուն Սահակադուխտ։ Սա յոյժ հմուտ էր երաժշտական արհեստին. որ և 'ի ներքոյ վարագուրի նստեալ ուսուցանէր զբազումս. և արար կցորդս և մեղեդիս քաղցր եղանակաւ. յորոց մի Սրբուհի Մարիամ, որ իւրով անուամբն է յօրինեալ»։*

**ՍԱՄՈՒԷԼ** *Կամրջաձորեցի, զոր յիշեցինք յ'էջ 569։ Տասներորդ դարուն վերջերը, Սարգիս կաթուղիկոսին ու Բագրատունեաց Գագիկ Ա Շահնշահի ժամանակ ծաղկեցաւ Սամուէլ, ինչպէս կ'աւանդէ Լաստիվերտցի. «Էին յայնմ ժամանակի վարդապետք Սարգիս և Տիրան անուն և Յենովք, որ կաթուղիկոսարանին էին վարդապետք, և Սամուէլ՝ որ Կամըրջացն Ձորոյ վանաց առաջ-*

*նորդութեամբ հովուէր»: Աստղիկ ալ կը գրէ. «Զկնի նորա (Պողիկարպոսի) իմաստակն Սամուէլ, բազմաշնորհ 'ի գիտութիւնս գրոց սրբոց և յերգս երաժշտութեանց»: Սամուէլի կ'ընծայուի Տօնապատճառ կոչուած գիրքը, զոր շարագրած է 'ի խնդրոյ Անանիայի Արշարունեաց եպիսկոպոսի:*

**ՍԻՄԷՈՆ՝** *որուն համար կ'աւանդի 'ի գիրս յիշատակաց ի Թուին ՆՃ.* (450). *«Հայր Սիմէոն արար զԱդամգիրքն, հարիւր յիսուն և մի ճառ. 'ի խնդրոյ Սենեքերիմայ Թագաւորին Վասպուրականի»:*

**ՍԻՄԷՈՆ** (*վարդապետ*) *որոյ անուամբն է հետեւեալ երկասիրութիւնն. «Երանելւոյն Սիմէոնի սուրբ և ընտրեալ վարդապետի ասացեալ պատճառս Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի: Եւ թէ ո՛րպէս կարգեաց զյիշատակ սուրբ Մկրտչին և Կարապետին Յովհաննու ընդ նմին և զԱթանագինէ»:*

**ՍՏԵՓԱՆՈՍ Երէց.** *որոյ անուամբ կայ տումարական գրութիւն մը. «Ստեփանոս իրիցոյ տումարագիտի որդւոյ Յոհաննիսի քահանայի ասացեալ յաղագս ընթացութեան արեգական քառն և ութ ամաց, և շրջագայութեան լուսնին իննևտասներեակ ամաց, որ լինի միահամուռ ընդ ամենայնն՝ ամք ՇԼԲ «:*

**ՎԱՀԱՆ Մամիկոնեան,** *որոյ անուամբ գտնուին երկու ճառք. Ա. ի սուրբ յարմաւենիսն և 'ի գալստեան տեառն: Բ. ի մեծի աւուր չորեքշաբաթին:*

**ՎԱՀՐԱՄ.** *այս անուամբ պատմագիր մը կը յիշատակէ Վարդան, և կը կոչէ զնա որդի Տիգրանայ. իսկ ուրիշ մ'ալ Տիգրանակերտցի կը կոչէ:*

ՎԱՀՐԱՄ վարդապետ. Շնորհալւոյ վիպասանականին շարայարութիւն ընելու դիտմամբ յօրինած է 770 տող ոտանաւոր քերթուած մը սկսելով 'ի Ռուբենէ կը հասցնէ մինչև 'ի Լևոն որդի Ա Հեթմոյ, որուն խնդրանօք ձեռք զարկաւ այս գրուածքին, և որ դեռ ևս կենդանի էր գրուածքին շարագրութեան աւարտելուն ժամանակ։ Հեղինակին հետևեալ յառաջաբանական խօսքերը բաւականէն աւելի կը յայտնեն իր դիտումը և ձեռնարկութեան պատճառը.

« Տէր Ներսէսի լուսազարդեալ
Հայրապետին զայս բան գրեալ,
Ըզպատմութիւնս Հայոց ասեալ
Ոտանաւոր տաղիւ չափեալ...
Զոր ընթերցեալ եւ ծանուցեալ
Լեւոն արքային Հայոց օծեալ,
Նուաստութեանս իմ հրամայեալ
Ի սուրբ հօրէն առնուլ դարձեալ.
Որ մինչ 'ի մեզ եղեւ հասեալ.
Նահապետաց մերոց կացեալ՝
Գործք եւ կամ բանք վիպասանեալ,
Ի ստուգագոյն արանց պատմեալ.
Եւ զոր աչօք մերովք տեսեալ
Եւ ականջօք յայլոց լուեալ,
Զայն ինձ գրել բանիւ չափեալ,
Առ 'ի լինել դիւրաւ յայտնեալ։
Արդ ես Վահրամ բարբուն ձայնեալ,
Եւ իմաստիւք ունայնացեալ,
Աստուածային բանիւք վարժեալ
Եւ 'ի յարգիւնան ոչ ժամանեալ.
Ի յարքայէ յայս հարկեցեալ,
Եղէ մըտօք տարաբերեալ...
Փոքր ինչ յառաջ անդր ընթացեալ,
Ի նախնական գրուցաց առեալ,
Համառօտիւք ըզնոյն գրեալ
Մինչեւ 'ի մերըս ժամանեալ »։

Այս պատմական քերթուածէն զատ՝ ունի Վահրամ քանի մը ընտիր ճառեր. ինչպէս 'ի Ծաղկազարդն և 'ի Համբարձումն հետևեալ խորագրով. «Վահրամ վարդապետի յարմարած ի Ծաղկազարդն և ի Համբարձումն տեառն։ Անտաչմանելի բնութեամբ բարին Աստուած»։ Դարձեալ ի խորհուրդ գալստեան տեառն յերուսաղեմ յաւանակաւ, ի բանն. Ուրախ լեր յոյժ դուստր Սիոնի»։ Վերծանութիւն բանին Եսայեայ, թէ Ելխեսցէ գաւազան յարմատոյն Յեսսեայ. և այլ հաւաքմունք յաստուածաշունչ գրոց ի Վահրամ վարդապետէ. շարագրեալ յաւուր օծման թագաւորին Հայոց, կամ ըստ այլ խորագրի՝ «Ի մեծի աւուր Յայտնութեան Քրիստոսի՝ վերլուծութիւն բանին Եսայեայ և հաւաքմունք աստուածաշունչ բանից թարգման՝ յօրինեալ 'ի խորհուրդ թագաւորաց որ յերկրի, արագ ցուցմամբ և իմաստասիրական սահմանաւ շարագրեալ Վահրամ վարդապետի, յորում աւուր օծեալ ձեռնադրեցաւ թագաւոր Հայոց մեծն Լևոն»։ — Դաւանութիւն Վահրամ վարդապետի կոչուած գրուածքի մ'ալ հանդիպեր ենք[1], և ունի խորագիր. «Խոստովանութիւն հաւատոյ արարեալ Վահրամայ վարդապետի Հայոց՝ ըստ խնդրոյ Լևոնի Հայոց թագաւորի յաշխարհին Կիլիկիոյ, յաղագս սրբոյ Երրորդութեանն և մի աստուածութեանն և փրկական տնօրէնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ»։ Ուրիշ գրուածք մ'ալ «Վահրամայ վարդապետի յաղագս մարդեղութեանն Քրիստոսի»։ Այս ճառին յիշատակարանն «Այսորքիկ է աստուածաբանական բանք շարագրեալ ի մերս նուաստութենէ Վահրամայ վարդապետի, ի հրամանէ թագաւորի մեծին Լևոնի։ Վասն որոյ եթէ ինչ արժանաւոր յասացեալս գտցի, Աստուծոյ շնորհ որ զկամել ետ մեզ և զառնելն. իսկ եթէ նուաստագոյն և դուզնաքեայ ի չափս օգտութեան, քանզի սխալագոյն և թիւր ինչ ոչ

1. Վահրամայ գրուածոց բնագրին և թարգմանութեանց վրայ տես 'ի Հայկական Մատենագրութեան։

*ունիմ առել ի գրեցեալքս՝ քան զանձն իմ, և զայլս հաւանեցուցանեմ աստուածային գրոց վկայութեամբ, որ են ի սոյն շարագրութիւն առադրեալ։ Սակս որոյ զայնքան թիւրութիւն իմոյ տկարութեանս վարկանիջիք վասն երկրաքարշ և մեղսասէր գոլոյ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ, ոչ կարացի ի բարձրագոյնսն և յաստուածային խորս մտանել, և յայնմանէ փարթամութիւն բարձրագունից մտաց ընծայել, վասն որոյ բարեսէր կամօք չափաւոր այս աշխատութեան թողութիւն անչափից մեղաց իմոց հայցեսջիք յանբաւարաշխ բարեացն Աստուծոյ»։*

**ՎԱՐԴ ՊԱՏՐԻԿ** (*ի դարանս մատենից Էջմիածնի, թիւ գրչ.* 888). *«Պատմութիւն գալստեան Մահմետի ի Հայս, և գնալ ընդդէմ Նորա Սահակ սուրբ եպիսկոպոսն։ Վարդ Պատրիկին ասացեալ։ — Իշխանն Արծրունեաց Թէոդորոս Ռշտունի»։*

**ՏԻՄՈԹԷՈՍ** *վարդապետ, յառաջ քան զմեծն Վարդան Բարձրբերդցի. որ կ'աւանդէ իր Հնգամատենին մեկնութեան յիշատակարանին մէջ՝ թէ նոյնպիսի երկասիրութիւն մը շարադրած ըլլայ և Տիմոթէոս այս վարդապետ. «Սկսաք, — կ'ըսէ, — առաջնորդ ունելով զամոլսն հաւատոյ՝ զԵղիշէ և զԵփրեմ և զմեծն Ոսկիարան, և զայլսն որք վաստակէին 'ի գիրքս յայս 'ի տեղիս տեղիս, և յորոց հաւաքեալ էր լուսաւոր վարդապետն Տիմոթէոս»։ Ազգային յիշատակագիր մ'ալ կ'ըսէ ի ՆԾ* (450) *թուականի, «Տիմոթ վարդապետ արար ըզմեկնութիւն Արարածոցն»։ «Քննութիւն հաւատոց Ահարոն Թագաւորի և Տիմոթէոս հայրապետի» խորագիրը կրող գրուած մ'ալ գտնուի 'ի գրչագիրս։*

**ՏԻՐԱՆ.** *Այս մեզի միայն անուամբ ծանօթ վարդապետին՝ գրչագրաց ցուցակի մը մէջ հետևեալ երկասիրութեան կը հանդիպինք հետևեալ խորագրով. «Տիրա-*

նայ վարդապետի Հայոց՝ պատասխանի հարցմանց Թագաւորացն Աղուանից՝ Առներսեհի և Փիրէի»։ Հատուածք կը գտնուին ՚ի Ստեփաննեան Բառարանի. իսկ ամբողջ երկասիրութիւնն յիսունեամէկ միջակադիր էջ, ի Մատենադարանին Էջմիածնի, այսպիսի սկզբնաւորութեամբ. «Ընկալեալ զհրամանս և զխնդիր Տէր յոյժ փութով և յաւէտ ըղձալի փափաքանօք, ուրախ եղաք ի սմա»։ Ուրիշ Թուղթ մ՚ալ իր անունովը ի Մատենադարանին Երուսաղեմի (Թիւ 533) գրեալ առ Սենեքերիմ Թագաւոր վասն հաւատոյ։

**ՏԻՐԱՏՈՒՐ** վարդապետ. — Այս քարոզներն են ՚ի Ծնունդ Քրիստոսի. «Բայց աստանօր պարտ վարկանիմ սակաւ ինչ»։

Ի բանն, Ի սկզբանէ էր բանն. «Արդ ասասցուք թէ թէ զի՞նչ է սկիզբն»։

Վասն մահու, ի բանն Յոբայ որ ասէ. Մահ մարդոյ հանգիստ է. «Արդ կամիմ այժմ՝ որպէս և է իսկ կարողութիւն»։

Ի բանն. Մահ մեղաւորի չար է. «Արդ ի բանէս յայսմանէ»։

**ՏԻՐԱՏՈՒՐ** վարդապետ. որուն կ՚ընծայուին քանի մը ճառք՝ բաւական ընտիր ոճով և շարագրութեամբ, և մեծ հռետոր կը կոչուի ՚ի գրչագիրս. տեղ մ՚ալ ինքն իրեն համար կը վկայէ «զինուորեալ կայսեր». անշուշտ յառաջ քան զընդունել զքահանայական օծումն։

# ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

## ՈՐՈՑ ԳՐՈՒԱԾՔԸ ՉՅԻՇԱՏԱԿՈՒԻՐ

---

**ԱԹԱՆԱՍ**. — *«Հայրապետն Հայոց ժողովեաց զիմաստունս որ էին 'ի ժամանակին. յորս էր և Աթանաս 'ի վանուց սուրբ Կարապետին. և կարգեցին թուական Հայոց, յորոց ուղղեցին զզատիկն Հայոց»*: ԿԻՐԱԿՈՍ:

**ԱՆԱՍՏԱՍ**. *տես Եփրեմ:*

**ԳԱԳԻԿ**, *Թագաւոր Կարուց*. — *«Էր յայնմ աւուրքս (Կոստանդին Տուկիծ կայսեր), Գագիկ արքայ որդի Աբասայ կարսացւոյ, այր իմաստասէր և լցեալ ամենայն շնորհօք 'ի փիլիսոփայականացն և 'ի հռետորականաց արուեստիցն, որ և ընդ վարդապետս Հոռոմոց ճեմէր. և յորժամ մտանէր 'ի Կոստանդնուպոլիս՝ 'ի յամբիոնն նստէր 'ի մէջ սրբոյն Սոփի. և բովանդակ գիտէր զհին և զնոր կտակարանսն Աստուծոյ. և էր յոյժ ճարտարաբան»*: ՈՒՌՀԱՅԵՑԻ:

**ԳԷՈՐԳ** *վարդապետ*. — *«Մեռաւ Պօղոս կաթուղիկոսն (ՇԽ) որ 'ի Մարաշ, զոր եդեալ էր Փիլարտոսն. և սուրբ և մեծ գիտնական Հայոց Գէորգ վարդապետն, և թաղեցաւ 'ի Կամրջաձորն առ Սամուէլ վարդապետի», կ'ըսէ*

Վարդան։ Իսկ Ուռհայեցին Ուռհեցի կը կոչէ զԳէորգ, և հետևեալ խօսքերով զինքը կը դրուատէ. «Յայսմ ամի (ՇԽԲ) մեռանէր վարդապետն Հայոց Գէորգ, որ կոչեցաւ Ուռհեցի, որ էր լուսաւորիչ տանս Հայոց, և աղբիւր մշտնջենաբուխ վտակաց, և լեզու Հրեղէն Հոգւոյն ներկեալ։ Սա ուսմամբ աստուածային վարդապետութեամբն զարդարեաց զարևելից աշխարհն, զի լցեալ էր աստուածային շնորհօք. և էր հաւասարեալ գիտութեամբն իւրով առաջին աստուածախօս սուրբ Հայրապետացն. ասեմ Գրիգորի աստուածաբանի և Յովհան Ոսկեբերանի, Բարսեղի և այլ նմանեաց սոցա։ Սա բաքանչելի վարուք կատարեաց զընթացս իւր, և էր ամաց հարիւրից. և թաղեցաւ 'ի մեծ անապատն 'ի Կարմընջաձոր, մօտ 'ի գերեզման Սամուելի վարդապետի և Խաչկայ, որ էր երաժիշտ 'ի վերայ ձայնաւոր եղանակաց. և եղև սուգ... զի զրկեալ եղեն յայնպիսի լուսաւոր վարդապետէ»։

ԳՐԻԳՈՐ ՄՈՆՈՆԻԿ. — «Էին 'ի ժամանակին յայնմիկ վարդապետք երևելիք. Մխիթար՝ որ Գոշն կոչիւր... Գրիգոր՝ զոր Մոնոնիկ կոչէին՝ 'ի Կեչառուաց»։ ԿԻՐԱԿՈՍ։

Զաքարէ Սպասալարին գումարած ժողովականաց մէկն էր Մոնոնիկ։

ԳՐԻԳՈՐ ՇԻՐԱԿԱՑԻ «Հմուտ օրինաց» ըստ աւանդելոյ յիշատակագրաց։

ԳՐԻԳՈՐ որդի Վասակայ. — Գէորգ կաթուղիկոսին օրերը երբ Հայոց նախարարքը Բուղայի գերութենէն դարձան, անոնց մէջ կը յիշատակէ Արծրունին նաև ըզԳրիգոր որդի Վասակայ. «Յելանել, կ'ըսէ, նախարարաց Հայոց յերեսաց ամիրային (Աշմատայ որդւոյ Հալթայ), Մնայ առ նմա միայն Մուշեղ Մոկաց իշխեցողն,

այր քաջայայտ և բարձրագահ. և ընդ նմա Գրիգոր՝ որդի Վասակայ, (իշխան Վասպուրականի). և սա նմանապէս իմաստութեամբ առլցեալ, հոյակապ և անուանի 'ի մէջ հայկականաց, և ցանկալի լսողաց և ուրախաբար տեսողաց։ Սա առաւելեալ յամենայն հոգածութիւնս, 'ի գիտս իմաստութեան, ուսումնասիրութեան, և յայլն ամենայնի քան զհարս և զհաւս իւր »։

ԳՐԻԳՈՐ ՏՈՒՏԷՈՐԴԻ. — « Ցաւուրս իշխանութեան Զաքարիայ և յառաջնորդութեան Սանահնին Գրիգոր վարդապետին՝ որդւոյն Տուտայ, որ էր այր երևելի »։ ԿԻՐԱԿՈՍ։

ԴԱՒԻԹ. տես Եփրեմ։

ԵՂԻԱ. — « Էին 'ի ժամանակին յայնմիկ (ԺԲ դար) վարդապետք երևելիք... Եղիա, 'ի Հաւուց Թառէ, որ գեղեցիկ կարգաւորեաց զկարգ վանաց իւրոց »։ ԿԻՐԱԿՈՍ։

ԵՓՐԵՄ. — « Ցայսմ ժամանակիս (Ը դար) էին վարդապետք աշխարհիս Հայոց ընտրեալք Եփրեմ, Անաստաս, Խաչիկ և Դաւիթ Հոռոմայեցին »։ ԿԻՐԱԿՈՍ։

ԹԷՈԴՈՐՈՍ. — Ուռպելեան կը գրէ Կոմիտաս կաթուղիկոսին համար՝ թէ Սիւնեաց քերթողին Մաթուսաղայի համբաւոյն վրայ զարմացած « Ցղէ... զիւր ձեռասուն համբակն, զոր մեծափափաք սիրով սնուցանէր սրբութեամբ զԹէոդորոս եղբօրորդի իւր. զոր առեալ նորա մեծաւ զգուշութեամբ ուսոյց և հասոյց 'ի գլուխ կատարման գիտութեան, զարդարեալ տեսականաւն և գործնականաւն »։ Ու երբ իշխաններն ու Եզր կաթուղիկոս կը ստիպէին զՄաթուսաղա՝ որ Հերակլ կայսեր գումարած Կարնոյ ժողովոյն ներկայ գտնուի, Մաթուսաղա չուզեց երթալ, ու իր տեղը ղրկեց զԹէոդորոս, վստահա-

*նալով իւր աշակերտին գիտութեան և իմաստութեան վրայ, ու այսպէս գրեց. «Ցուղարկեցաւ մեր աշակերտդ Թէոդորոս. այդ բաւականացի»։ Ու երբոր Ուշտունեաց իշխանը Թէոդորոս՝ մեղադրելով յանդիմանեց զԵզր Կաթուղիկոս, զՄաթուսաղա և զՑովհան Մայրագոմեցի հետը չբերելուն համար, Եզր պատասխանեց. «Ամենեքին ասացին թէ մինչ Մաթուսաղայի աշակերտս Թէոդորոս ՚ի հետ է, ոչ է կարիս մեզ այլ ոք. դա բաւական է»։ Եւ յիրաւի, Թէոդորոս իրեն համբաւոյն և գիտութեանը արժանաւոր լեզուով մը՝ ջանաց համոզել և անոնց երկիւղը փարատել, որ կը կասկածէին հաւատոց ճշմարտութեան մէջ մոլորիլ՝ Ցունաց հետևելնուն համար։*

**ԹՈՐՈՍ**. — *«Երկուք ոմանք յաշակերտաց (Մխիթարայ Գօշի) որք իմաստնագոյնք էին քան զայլս, որք կարող էին և զայլս օգտեցուցանել. առաջնոյն Թորոս անուն, ՚ի սահմանացն Մելտինոյ Հայոց. հայր նորա հայկական և մայրն ասորի. այր հեզ և խոնարհ... որ կայ թաղեալ ՚ի հռչականուն վանքն ՚ի Հաղբատ, ՚ի գլուխ վանացն, ՚ի գերեզմանս եպիսկոպոսաց և վարդապետաց»*։ **ԿԻՐԱԿՈՍ**։

**ԹՈՐՈՍ** *վարդապետ*. — *Կիրակոս՝ Հեթում առաջին թագաւորին առ Մանգոյ խան Թաթարաց ճանապարհորդութիւնը աւանդելու ատեն՝ կը յիշատակէ. «Ընդ նմա իսկ եկեալ էր և Թորոս քահանայ կուսակրօն, և Կարապետ որ դրան երէց էր արքային, հեզ բարուք և գիտնական»*։

**ԽԱՉԻԿ**. *տես Եփրեմ*։

**ՀՄԱՅԵԿԻ** (*սրբոյ*) *վկայաբանութիւն. «Գտի և զսրբոյն Հմայեկի զվկայաբանութիւն քառասուն արամբք ի*

*տանն Տայոց որ այժմ Քառասնի վանք կոչի։ Գտի և այլ բազում յիշատակ սրբոց, որոց մոռացմունք եղեալ՝ ի տագնապ լինելոյ աշխարհիս»։*

**ՄԱՐՏԻՐՈՍ**. — «*Կոչեաց (Մխիթար Գոշ) զբնակիչս ուխտի վանաց Նոր Գետկայ, որք ընդ նմա ժուժկալեալ էին յամենայն աշխատութիւնս վանից և եկեղեցւոյ. օրհնեաց զնոսա և զաշակերտս իւրեանց յանուն տեառն, և զմի ոմն 'ի նոցանէ ընտրեալ՝ Մարտիրոս անուն, որ աշակերտեալ էր նմա և ընտանի էր, կացոյց զնա առաջնորդ նոցա, մանուկ տիօք, բայց կատարեալ իմաստութեամբ. այր քաղցրաձայն յերգս պաշտաման, և առատամիտ ընթերցման, և արագ 'ի գրչութիւն։ Նմա հրամայեաց իշխել նոցա. և գրեաց կտակս առ մեծ հազարապետն Իւանէ... և յանձնեաց 'ի նա զվանս և զառաջնորդն*»։ ԿԻՐԱԿՈՍ։

**ՅԱԿՈԲ** *վարդապետ. զոր Կոստանդին կաթուղիկոս ղրկեց առ Հեթում թագաւոր, որ գնացեր էր 'ի մեծ Հայս.* «*Առաքեաց զմեծ վարդապետն Յակոբ, զայր բանաւոր և իմաստուն, զոր առաքեալ էին յառաջագոյն վասն սիրոյ և միաբանութեան առ թագաւորն Յունաց Յովհաննէս... իմաստախոհ բանիւք աստուածային գրոց ընդդիմացան հարցաքննութեան ժողովոյն Յունաց... խոհեմ բանիւք եցոյց գրովք յերկուց միացեալ զՔրիստոս, աստուած և մարդ կատարեալ երկոքումբք... զամենայն աստուածիմաստ բանիւք և գրոց վկայութեամբ հաստատեալ՝ շինեաց զմիտս նոցա 'ի սէր և 'ի միաբանութիւն ընդ ազգս մեր, և դարձաւ 'ի նոցանէ պատուով*»։ ԿԻՐԱԿՈՍ։

**ՅԵՍՈՒ**՝ *Խորխոռունեաց եպիսկոպոս, որմէ գրուած նամակի մը հատուածոց հանդիպեր ենք ի ցուցակս ձեռագրաց Երուսաղեմի (թիւ 533).*

ՅՈՎՀԱՆՆԷՍ Գառնեցի. — «Այր սուրբ առաքինի և զարմանալի վարուք, գործող պատուիրանաց Աստուծոյ և լծարարձ 'ի մանկութենէ, արժանացեալ քահանայական պատուոյ. կուսակրօն, Յովհաննէս անուն 'ի գեղջաքաղաքէն Գառնոյ, ուր զարմանալի աւազանն է Տրդատայ, 'ի սուրբ ուխտէն Այրիվանից։ Սա 'ի մանկագոյն տիոց արհամարհեալ զամենայն ինչ զկենցաղոյս, լքեալ զազգս և զտուն, յանապատ անդր բնակէր. սիրէր առանձին լինել և անդադար խօսել ընդ Աստուծոյ. տուեալ զինքն ազգի ազգի ճգնութեան պահոց և աղօթից»։ Ասոնք են Կիրակոսի խօսքերը, որ նոյն վարդապետին աստուածահաճոյ քաղաքավարութեան նկարագիրն ընելէն ետքը՝ կը յաւելու. Ժողովրդեան ձեռքը կու տար, կ'ըսէ, «զխորհրդական բանս աղօթից», որոնցմով անշուշտ իր անուամբը յիշատակուած այլ և այլ ընտիր և սիրատարփ աղօթքները կ'ուզէ ակնարկել։ — Գառնեցին երախտաւոր է նաև Սաղմոսաց ընտիր օրինակ մը հրատարակելուն համար։ Իրենն է նաև հետևեալ խորագիրը կրող երկասիրութիւնը. «Յովհաննու Գառնեցւոյ խրատ ոգեշահ ամենայն մարդոյ, մանաւանդ ժամարարի, 'ի խնդրոյ Սարգիս քահանայի»։

ՅՈՎՀԱՆՆԷՍ Տաւուշեցի. — «Եւ հանդիպեցաւ (Մխիթար Գոշ) Յովհաննիսի վարդապետի Տաւուշեցի անուանեալ, որ 'ի ժամանակին յայնմիկ երևելի էր գիտութեամբ. զառաջինն յաշխարհականաց կնաւն կացեալ սակաւ ինչ, և մեռեալ ամուսնոյն, կրօնաւորութեան հետևեալ, և հասու եղեալ՝ աստուածայնոց գրոց պարապեալ... Սա բազում իրս կարգաւորեաց կարգաց և կրօնից քրիստոնէից»։ ԿԻՐԱԿՈՍ։

ՅՈՎՍԷՓ. — Կիրակոս՝ Բարսղի հայրապետին յաջորդ Գրիգորիս կաթուղիկոսին օրովը ծաղկած վարդա-

*պետաց մէջ կը յիշատակէ նաև Յովսէփ անունով եպիսկոպոս մը, զոր կը կոչէ « այր երևելի 'ի կողմն Անտիոքու », ուր բազմաթիւ ազգայինք ցրուած էին այն ժամանակները ։*

**ՆԵՐՍԷՍ ԻՇԽԱՆ**. — *Մետասաներորդ դարու կիսուն ծաղկած էր « Տէր Ներսէս՝ 'ի Բագրևանդ գաւառէ, իշխան Հայոց, և սա էր այր կորովի և յոյժ հանճարեղ, բանիբուն իմաստասէր, ուսեալ 'ի մեծն Արգինա. հասեալ ամենայն շնորհաց աստուածեղէն կտակարանացն, և կարող էր կալ 'ի դիմի ամենայն իմաստնոցն Հոռոմոց, հզօր գիտութեամբ և զարմանալի ատենախօսութեամբ, նմանեալ Գագկայ և այլոց իմաստասիրաց Հայոց »* ։ ՈՒՌՀԱՅԵՑԻ ։

**ՍԱՄՈՒԷԼ**. — *« Յայնժամ գրեաց (Վասիլ կայսր) առ Յովհաննէս արքայն Հայոց, զի առաքեսցէ զնոսա (զվարդապետս Հայոց) առ ինքն 'ի Կոստանդնուպոլիս, զի 'ի նոցանէ գիտասցէ զճշմարիտ պատճառն և զուղղորդ զատիկն. իսկ նոքա ոչ առին յանձն գնալ, թղթովք գեղեցկաշար բանիւք հասկացուցին զթագաւորն ամենայն խորին քննութեամբ... մեծաւ խնդրուածովք ետ բերել (կայսրն Վասիլ) առ ինքն զՀայոց վարդապետն զՍամուէլ, զայր կորովի և յաղթող, և կացուցանէր զնա յատենի խօսել ընդ վարդապետացն Յունաց... և հաճոյ լինէր թագաւորին ամենայն բանքն նորա... և ածէր զՄուսի զվարդապետ Եբրայեցւոց... այր ճարտարաբան և հզօր, և սկսանէր խօսել զարուեստ տոմարին... և գովէր ըզբանքն Սամուէլի Հայոց վարդապետի. իսկ թագաւորն... զվարդապետն Հայոց յուղարկեաց մեծաւ պարգևօք յաշխարհն Հայոց »* ։ ՈՒՌՀԱՅԵՑԻ ։

**ՍՈՂՈՄՈՆ**. — *« Յետ վախճանելոյն Յովարայ հայրապետին, զՍողոմոն ածեալ կացուցանեն յաթոռ սրբու-*

Այս պատմական քերթուածէն զատ՝ ունի Վահրամ քանի մը ընտիր ճառեր. ինչպէս 'ի Ծաղկազարդն և 'ի Համբարձման հետևեալ խորագրով. «Վահրամ վարդապետի յարմարած ի Ծաղկազարդն և ի Համբարձման տեառն։ Անսահմանելի բնութեամբ բարին Աստուած»։ Դարձեալ ի խորհուրդ գալստեան տեառն յԵրուսաղէմ յաւանակաւ, ի բանն. Ուրախ լեր յոյժ դուստր Սիոնի»։ Վերծանութիւն բանին Եսայեայ, թէ Բղխեսցէ գաւազան յարմատոյն Յեսսեայ. և այլ հաւաքմունք յաստուածաշունչ գրոց ի Վահրամ վարդապետէ. շարագրեալ յաւուր օծման Թագաւորին Հայոց, կամ ըստ այլ խորագրի՝ «Ի մեծի աւուր Յայտնութեան Քրիստոսի՝ վերլուծութիւն բանին Եսայեայ և հաւաքմունք աստուածաշունչ բանից թարգման՝ յօրինեալ 'ի խորհուրդ Թագաւորաց որ յերկրի, արագ ցուցմամբ և իմաստասիրական սահմանաւ շարադրեալ Վահրամ վարդապետի, յորում աւուր օծեալ ձեռնադրեցաւ Թագաւոր Հայոց մեծն Լևոն»։ — Դաւանութիւն Վահրամ վարդապետի կոչուած գրուածքի մ'ալ հանդիպեր ենք[1], և ունի խորագիր. «Խոստովանութիւն հաւատոյ արարեալ Վահրամայ վարդապետի Հայոց՝ ըստ խնդրոյ Լևոնի Հայոց Թագաւորի յաշխարհին Կիլիկիոյ, յաղագս սրբոյ Երրորդութեանն և մի աստուածութեանն և փրկական տնօրէնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ»։ Ուրիշ գրուածք մ'ալ «Վահրամայ վարդապետի յաղագս մարդեղութեանն Քրիստոսի»։ Այս ճառին յիշատակարանն «Այսպէսիկ է աստուածաբանական բանք շարագրեալ ի մերս նուաստութենէ Վահրամայ վարդապետի, ի հրամանէ Թագաւորի մեծին Լևոնի։ Վասն որոյ եթէ ինչ արժանաւոր յասացեալս գտցի, Աստուծոյ շնորհ որ զկամել ետ մեզ և զառնելն. իսկ եթէ նուաստագոյն և դուզնաքեայ ի շահս օգտութեան, քանզի սխալագոյն և թիւր ինչ ոչ

1. Վահրամայ գրուածոց բնագրին և թարգմանութեանց վրայ տես 'ի Հայկական Մատենագրութեան։

ունիմ ասել ի գրեցեալքս՝ քան զանձն իմ, և զայլս հաւանեցուցանեմ աստուածային գրոց վկայութեամբ, որ են ի սոյն չարադրութիւն առաջրեալ։ Սակս որոյ զայնքան թիւրութիւն իմոյ տկարութեանս վարկանիջիք վասն երկրաքարշ և մեղսասէր գոլոյ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ, ոչ կարացի ի բարձրագոյնսն և յաստուածային խորս մտանել, և յայնմանէ փարթամութիւն բարձրագունից մտաց ընծայել, վասն որոյ բարեսէր կամօք չափաւոր այս աշխատութեան թողութիւն անչափից մեղաց իմոց հայցեսջիք յանբաւաբաշխ բարեացն Աստուծոյ»։

ՎԱՐԴ ՊԱՏՐԻԿ (ի դարանս մատենից Էջմիածնի, թիւ գրչ. 888). «Պատմութիւն գալստեան Մահմետի ի Հայս, և գնալ ընդդէմ նորա Սահակ սուրբ եպիսկոպոսն։ Վարդ Պատրիկին ասացեալ։ — Իշխանն Արծրունեաց Թէոդորոս Ռշտունի»։

ՏԻՄՈԹԷՈՍ վարդապետ, յառաջ քան զմեծն Վարդան Բարձրբերդցի. որ կ'աւանդէ իր Հնգամատենին մեկնութեան յիշատակարանին մէջ՝ թէ նոյնպիսի երկասիրութիւն մը չարադրած ըլլայ և Տիմոթէոս այս վարդապետ. «Սկսաք, — կ'ըսէ, — առաջնորդ ունելով զամոլսն հաւատոյ՝ զՍեփրեմ և զմեծն Ոսկիարան, և զայլսն որք վաստակէին 'ի գիրքս յայս 'ի տեղիս տեղիս, և յորոց հաւաքեալ էր լուսաւոր վարդապետն Տիմոթէոս»։ Ազգային յիշատակագիր մ'ալ կ'ըսէ ի ՆԾ (450) թուականի, «Տիմոթ վարդապետս արար ըզմեկնութիւն Արարածոցն»։ «Քննութիւն հաւատոց Ահարոն Թագաւորի և Տիմոթէոս հայրապետի» խորագիրը կրող գրուած մ'ալ գտնուի 'ի գրչագիրս։

ՏԻՐԱՆ. Այս մեզի միայն անուամբ ծանօթ վարդապետին՝ գրչագրաց ցուցակի մը մէջ հետևեալ երկասիրութեան կը հանդիպինք հետևեալ խորագրով. «Տիրա-

նայ վարդապետի Հայոց՝ պատասխանի հարցմանց Թագաւորացն Աղուանից՝ Ատրներսեհի և Փիբէի»։ Հատուածք կը գտնուին 'ի Ստեփաննեան Բառարանի. իսկ ամբողջ երկասիրութիւնն յիսունեամէկ միջակադիր էջ, ի Մատենադարանին Էջմիածնի, այսպիսի սկզբնաւորութեամբ. «Ընկալեալ զհրամանս և զխնդիր Տէր յոյժ փութով և յաւէտ ըղձալի փափաքանօք, ուրախ եղաք ի սմա»։ Ուրիշ թուղթ մ'ալ իր անունովը ի Մատենադարանին Երուսաղեմի (Թիւ 533) գրեալ առ Սեննեքերիմ Թագաւոր վասն հաւատոյ։

**ՏԻՐԱՏՈՒՐ** վարդապետ.— Այս քարոզներն են 'ի Ծնունդ Քրիստոսի. «Բայց աստանօր պարտ վարկանիմ սակաւ ինչ»։

Ի բանն, Ի սկզբանէ էր բանն. «Արդ ատաւսցուք թէ թէ զինչ է սկիզբն»։

Վասն մահու, ի բանն Ցօրայ որ ասէ. Մահ մարդոյ հանգիստ է. «Արդ կամիմ այժմ՝ որպէս և է իսկ կարողութիւն»։

Ի բանն. Մահ մեղաւորի չար է. «Արդ ի բանէս յայսմանէ»։

**ՏԻՐԱՏՈՒՐ** վարդապետ. որուն կ'ընծայուին քանի մը ճառք՝ բաւական ընտիր ոճով և շարագրութեամբ, և մեծ ճռետոր կը կոչուի 'ի գրչագիրս. տեղ մ'ալ ինքն իրեն համար կը վկայէ «զինուորեալ կայսեր». անշուշտ յառաջ քան կընդունել զքահանայական օծումն։

# ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

## ՈՐՈՑ ԳՐՈՒԱԾՔԸ ՋԵՒՇԱՏԱԿՈՒԻՐ

---

**ԱԹԱՆԱՍ**. — « *Հայրապետն Հայոց ժողովեաց զի֊մաստունս որ էին 'ի ժամանակին. յորս էր և Աթանաս 'ի վանուց սուրբ Կարապետին. և կարգեցին Թուական Հայոց, յորոց ուղղեցին զզատիկն Հայոց* »: ԿԻՐԱԿՈՍ:

**ԱՆԱՍՏԱՍ**. *տես Եփրեմ*:

**ԳԱԳԻԿ**, *Թագաւոր Կարուց*. — « *Էր յայսմ աւուրքս (Կոստանդին Տուկիծ կայսեր), Գագիկ արքայ որդի Ա֊բասայ կարսացւոյ, այր իմաստասէր և լցեալ ամենայն շնորհօք 'ի փիլիսոփայականացն և 'ի հռետորականաց արուեստիցն, որ և ընդ վարդապետս Հոռոմոց ճեմէր. և յորժամ մտանէր 'ի Կոստանդնուպոլիս՝ 'ի յամբիոնն նստէր 'ի մէջ սրբոյն Սոփի. և բովանդակ գիտէր զհին և զնոր կտակարանսն Աստուծոյ. և էր յոյժ ճարտարա֊բան* »: ՈՒՌՀԱՅԵՑԻ:

**ԳԷՈՐԳ** *վարդապետ*. — « *Մեռաւ Պօղոս կաթուղիկոսն (ՇԽ) որ 'ի Մարաշ, զոր եդեալ էր Փիլարտոսն. և սուրբ և մեծ գիտնական Հայոց Գէորգ վարդապետն, և թաղե֊ցաւ 'ի Կամրջաձորն առ Սամուէլ վարդապետի* », կ'ըսէ

Վարդան։ Իսկ Ուռհայեցին Ուռճեցի կը կոչէ զԳէորգ, և հետևեալ խօսքերով զինքը կը դրուատէ. «Ցայսմ ամի (ՇԽԲ) մեռանէր վարդապետն Հայոց Գէորգ, որ կոչեցաւ Ուռճեցի, որ էր լուսաւորիչ տանս Հայոց, և աղբիւր մշտնջենաւորուխ վտակաց, և լեզու հրեղէն հրաշներկեալ։ Սա ուսմամբ աստուածային վարդապետութեամբն զարդարեաց զարևելից աշխարհն, զի լցեալ էր աստուածային շնորհօք. և էր հաստատեալ գիտութեամբն իւրով առաջին աստուածախօս սուրբ հայրապետացն. ասեմ Գրիգորի աստուածաբանի և Յովհան Ոսկեբերանի, Բարսեղի և այլ նմանեաց սոցա։ Սա ըսքանչելի վարուք կատարեաց զընթացս իւր, և էր ամաց հարիւրից. և թաղեցաւ 'ի մեծ անապատն 'ի Կարմընջաձոր, մօտ 'ի գերեզման Սամուելի վարդապետի և Խաչկայ, որ էր երաժիշտ 'ի վերայ ձայնաւոր եղանակաց. և եղև սուգ... զի զրկեալ եղեն յայնպիսի լուսաւոր վարդապետէ»։

ԳՐԻԳՈՐ ՄՈՆՈՆԻԿ. — «Էին 'ի ժամանակին յայնմիկ վարդապետք երևելիք. Մխիթար՝ որ Գօշն կոչիւր... Գրիգոր՝ զոր Մոնոնիկ կոչէին՝ 'ի Կեչառուաց»։ ԿԻՐԱԿՈՍ։

Զաքարէ Սպասալարին գումարած ժողովականաց մէկն էր Մոնոնիկ։

ԳՐԻԳՈՐ ՇԻՐԱԿԱՑԻ «հմուտ օրինաց» ըստ աւանդելոյ յիշատակագրաց։

ԳՐԻԳՈՐ որդի Վասակայ. — Գէորգ կաթուղիկոսին օրերը երբ Հայոց նախարարքը Բուղայի գերութենէն դարձան, անոնց մէջ կը յիշատակէ Արծրունին նաև ըզԳրիգոր որդի Վասակայ. «Ցելանել, կ'ըսէ, նախարարաց Հայոց յերեսաց ամիրային (Աշմատայ որդւոյ Հալթայ), Մնայ առ նմա միայն Մուշեղ Մոկաց իշխեցողն,

*այր քաջայայտ և բարձրագահ. և ընդ նմա Գրիգոր՝ որդի Վասակայ, (իշխան Վասպուրականի). և սա նմանապէս իմաստութեամբ առլցեալ, հոյակապ և անուանի 'ի մէջ հայկականացս, և ցանկալի լսողացս և ուրախարար տեսողաց։ Սա առաւելեալ յամենայն հոգածութիւնս, 'ի գիտս իմաստութեան, ուսումնասիրութեան, և յայլն ամենայնի քան զհարս և զհաւս իւր »։*

**ԳՐԻԳՈՐ ՏՈՒՏԷՈՐԴԻ.** — « *Ցաւուրս իշխանութեան Զաքարիայ և յառաջնորդութեան Սանահնին Գրիգոր վարդապետին՝ որդւոյն Տուտայ, որ էր այր երևելի* »։ ԿԻՐԱԿՈՍ։

**ԴԱՒԻԹ.** *տես Եփրեմ*։

**ԵՂԻԱ.** — « *Էին 'ի ժամանակին յայնմիկ (ԺԲ դար) վարդապետք երևելիք... Եղիա, 'ի Հաւուց Թառէ, որ գեղեցիկ կարգաւորեաց զկարգ վանաց իւրոց* »։ ԿԻՐԱԿՈՍ։

**ԵՓՐԵՄ.** — « *Ցայսմ ժամանակիս (Ը դար) էին վարդապետք աշխարհիս Հայոց ընտրեալք Եփրեմ, Անաստաս, Խաչիկ և Դաւիթ Հռոմայեցին* »։ ԿԻՐԱԿՈՍ։

**ԹԷՈԴՈՐՈՍ.** — *Ուռպելեան կը գրէ Կոմիտաս կաթուղիկոսին համար՝ թէ Սիւնեաց քերթողին Մաթուսաղայի համբաւոյն վրայ զարմացած « Ցղէ... զիւր ձեռասուն համբակն, զոր մեծափափաք սիրով սնուցանէր սըրբութեամբ զԹէոդորոս եղբօրորդի իւր. զոր առեալ նորա մեծաւ զգուշութեամբ ուսոյց և հասոյց 'ի գլուխ կատարման գիտութեան, զարդարեալ տեսականաւն և գործնականաւն »։ Ու երբ իշխաններն ու Եզր կաթուղիկոս կը ստիպէին զՄաթուսաղա՝ որ Հերակլ կայսեր գումարած Կարնոյ ժողովոյն ներկայ գտնուի, Մաթուսաղա չուզեց երթալ, ու իր տեղը ղրկեց զԹէոդորոս, վստահա-*

նալով իւր աշակերտին գիտութեան և իմաստութեան վրայ, ու այսպէս գրեց. «Յուղարկեցաւ մեր աշակերտդ Թէոդորոս. այդ բաւականացի»։ Ու երբոր Ռշտունեաց իշխանը Թէոդորոս՝ մեղադրելով յանդիմանեց զԵզր կաթուղիկոս, զՄաթուսաղա և զՅովհան Մայրագոմեցի հետը չբերելուն համար, Եզր պատասխանեց. «Ամենեքին ասացին թէ մինչ Մաթուսաղայի աշակերտս Թէոդորոս 'ի հետ է, ոչ է կարիս մեզ այլ ոք. դա բաւական է»։ Եւ յիրաւի, Թէոդորոս իրեն համբաւոյն և գիտութեանը արժանաւոր լեզուով մը՝ ջանաց համոզել և անոնց երկիւղը փարատել, որ կը կասկածէին հաւատոց ճշմարտութեան մէջ մոլորիլ՝ Յունաց հետևելնուն համար։

**ԹՈՐՈՍ**. — «Երկուք ոմանք յաշակերտաց (Մխիթարայ Գոշի) որք իմաստնագոյնք էին քան զայլս, որք կարող էին և զայլս օգտեցուցանել. առաջնոյն Թորոս անուն, 'ի սահմանացն Մելտինոյ Հայոց. հայր նորա հայկական և մայրն ասորի. այր հեզ և խոնարհ... որ կայ թաղեալ 'ի հռչականուն վանքն 'ի Հաղբատ, 'ի գլուխ վանացն, 'ի գերեզմանս եպիսկոպոսաց և վարդապետաց»։ ԿԻՐԱԿՈՍ։

**ԹՈՐՈՍ** վարդապետ. — Կիրակոս՝ Հեթում առաջին թագաւորին առ Մանգոյ խան Թաթարաց ճանապարհորդութիւնը աւանդելու ատեն՝ կը յիշատակէ. «Ընդ նմա իսկ եկեալ էր և Թորոս քահանայ կուսակրօն, և Գարապետ որ դրան երէց էր արքային, հեզ բարուք և գիտնական»։

**ԽԱՉԻԿ**. տես Եփրեմ։

**ՀՄԱՅԵԿԻ** (սրբոյ) վկայաբանութիւն. «Գտի և զսրբոյն Հմայեկի զվկայաբանութիւն քառասուն արամբք ի

տանն Տայոց որ այժմ Քառասնի վանք կոչի։ Գտի և այլ բազում յիշատակ սրբոց, որոց մոռացմունք եղեալ՝ ի տագնապ լինելոյ աշխարհիս »։

ՄԱՐՏԻՐՈՍ. — « Կոչեաց (Մխիթար Գոշ) զրնակիչս ուխտի վանաց Նոր Գետկայ, որք ընդ նմա ժուժկալեալ էին յամենայն աշխատութիւնս վանիցն և եկեղեցւոյ. օրհնեաց զնոսա և զաշակերտս իւրեանց յանուն տեառն, և զմի ոմն 'ի նոցանէ ընտրեալ՝ Մարտիրոս անուն, որ աշակերտեալ էր նմա և ընտանի էր, կացոյց զնա առաջնորդ նոցա, մանուկ տիօք, բայց կատարեալ իմաստութեամբ. այր քաղցրաձայն յերգս պաշտաման, և առատամիտ ընթերցման, և արագ 'ի գրչութիւն։ Նմա հրամայեաց իշխել նոցա. և գրեաց կտակաւ առ մեծ հազարապետն Իւանէ... և յանձնեաց 'ի նա զվանս և զառաջնորդն »։ ԿԻՐԱԿՈՍ։

ՑԱԿՈԲ վարդապետ. զոր Կոստանդին կաթուղիկոս ղրկեց առ Հեթում թագաւոր, որ գնացեր էր 'ի մեծ Հայս. « Առաքեաց զմեծ վարդապետն Ցակոբ, զայր բանաւոր և իմաստուն, զոր առաքեալ էին յառաջագոյն վասն սիրոյ և միաբանութեան առ թագաւորն Ցունաց Ցովհաննէս... իմաստախոհ բանիւք աստուածային գրոց ընդդիմացան հարցաքննութեան ժողովոյն Ցունաց... խոհեմ բանիւք եցոյց գրովք յերկուց միացեալ զՔրիստոս, աստուած և մարդ կատարեալ երկոքումբք... զամենայն աստուածիմաստ բանիւք և գրոց վկայութեամբ հաստատեալ՝ շինեաց զմիտս նոցա 'ի սէր և 'ի միաբանութիւն ընդ ազգս մեր, և դարձաւ 'ի նոցանէ պատուով »։ ԿԻՐԱԿՈՍ։

ՑԵՍՈՒ՝ Խորխոռունեաց եպիսկոպոս, որմէ գրուած նամակի մը հատուածոց հանդիպեր ենք ի ցուցակս ձեռագրաց Երուսաղեմի (Թիւ 533).

ՅՈՎՀԱՆՆԷՍ Գառնեցի. — «Այր ոմն առաքինի և զարմանալի վարուք, գործող պատուիրանաց Աստուծոյ և լծաբարձ 'ի մանկութենէ, արժանացեալ քահանայական պատուոյ. կուսակրօն, Յովհաննէս անուն 'ի գեղաքաղաքէն Գառնոյ, ուր զարմանալի սարաւոյթն է Տրդատայ, 'ի սուրբ ուխտէն Այրիվանաց: Սա 'ի մանկագոյն տիոց արհամարհեաց զամենայն ինչ զկենցաղոյս, լքեալ զազգս և զտուն, յանապատ տեղիս բնակէր. սիրէր առանձին լինել և անզբաղապէս խօսել ընդ Աստուծոյ. տուեալ զինքն ազգի ազգի ճգնութեան պահոց և աղօթից»: Ասոնք են Կիրակոսի խօսքերը, որ նոյն վարդապետին աստուածահաճոյ քաղաքավարութեան նկարագիրն ընելէն ետքը՝ կը յաւելու. ժողովրդեան ձեռքը կու տար, կ'ըսէ, «զխորհրդական բանս աղօթից», որոնցմով անշուշտ իր անուամբը յիշատակուած այլ և այլ ընտիր և սիրատարփ աղօթքները կ'ուզէ ակնարկել: — Գառնեցին երախտաւոր է նաև Սաղմոսաց ընտիր օրինակ մը հրատարակելուն համար: Իրենն է նաև հետևեալ խորագիրը կրող երկասիրութիւնը. «Յովհաննու Գառնեցւոյ խրատ ոգեշահ ամենայն մարդոյ, մանաւանդ ժամարարի, 'ի խնդրոյ Սարգիս քահանայի»:

ՅՈՎՀԱՆՆԷՍ Տաւուշեցի. — «Եւ հանդիպեցաւ (Մխիթար Գոշ) Յովհաննիսի վարդապետի Տաւուշեցի անուանեալ, որ 'ի ժամանակին յայնմիկ երևելի էր գիտութեամբ. զառաջինն յաշխարհականաց կեանս կացեալ սակաւ ինչ, և մեռեալ ամուսնոյն, կրօնաւորութեան հետևեալ, և հասու եղեալ՝ աստուածայնոց գրոց պարապեալ... Սա բազում իրս կարգաւորեաց կարգաց և կրօնից քրիստոնէից»: ԿԻՐԱԿՈՍ:

ՅՈՎՍԷՓ. — Կիրակոս՝ Բարսղի հայրապետին յաջորդ Գրիգորիս կաթուղիկոսին օրովը ծաղկած վարդա-

պետաց մէջ կը յիշատակէ նաև Յովսէփ անունով եպիսկոպոս մը, զոր կը կոչէ « այր երևելի 'ի կողմն Անտիոքու », ուր բազմաթիւ ազգայինք ցրուած էին այն ժամանակները :

**ՆԵՐՍԷՍ ԻՇԽԱՆ**. — Մետասաներորդ դարու կիսուն ծաղկած էր « Տէր Ներսէս՝ 'ի Բագրեւանդ գաւառէ, իշխան Հայոց, և սա էր այր կրօնի և յոյժ հանճարեղ, բանիբուն իմաստասէր, ուսեալ 'ի մեծն Արգինա. հասեալ ամենայն շնորհաց աստուածեղէն կտակարանացն, և կարող էր կալ 'ի դիմի ամենայն իմաստնոցն Հոռոմոց, հզօր գիտութեամբ և զարմանալի ատենախօսութեամբ, նմանեալ Գագկայ և այլոց իմաստասիրաց Հայոց » : ՈՒՌՀԱՅԵՑԻ :

**ՍԱՄՈՒԷԼ**. — « Յայնժամ գրեաց (Վասիլ կայսր) առ Յովհաննէս արքայն Հայոց, զի առաքեսցէ զնոսա (զվարդապետս Հայոց) առ ինքն 'ի Կոստանդնուպոլիս, զի 'ի նոցանէ գիտասցէ զճշմարիտ պատճառն և զուղղորդ գատիկն. իսկ նոքա ոչ առին յանձն գնալ, թղթովք գեղեցկաշար բանիւք հասկացուցին զթագաւորն ամենայն խորին քննութեամբ... մեծաւ խնդրուածովք եւտ բերել (կայսրն Վասիլ) առ ինքն զՀայոց վարդապետն զՍամուէլ, զայր կրօնի և յաղթող, և կացուցանէր զնա յատենի խօսել ընդ վարդապետացն Յունաց... և հաճոյ լինէր թագաւորին ամենայն բանքն նորա... և ածէր զՄուսի զվարդապետ Երրայեցւոց... այր ճարտարաբան և հզօր, և սկսանէր խօսել զարուեստ տոմարին... և գովէր ըզբանքն Սամուէլի Հայոց վարդապետի. իսկ թագաւորն... զվարդապետն Հայոց յուղարկեալ մեծաւ պարգևօք յաշխարհն Հայոց » : ՈՒՌՀԱՅԵՑԻ :

**ՍՈՂՈՄՈՆ**. — « Յետ վախճանելոյն Յովաբայ հայրապետին, զՍողոմոն ածեալ կացուցանեն յաթոռ արքու-

*թեանն. սա… բազում առաքինաջան երկոց զանձն տուեալ ՚ի մեծ ուխտին Մաքենոցաց, այլ և վարժեալ եւս էր ՚ի փիլիսոփայական արուեստս, և առաւել եւս հմուտ լեալ փսալտութեան կրթանաց»:* ՅՈՎՀԱՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ.

**ՍՈՍԹԵՆԷՍ**. Ի *յիշատակարանի մագաղաթեայ աւետարանի գրելոյ ի* ՉԻԹ = 1279 *«Գրեցաւ ի Թու՛. Հայոց* ՉԻԹ. *Իւսթն հարիւր և քսան ինն. ի մայրաքաղաքն Սիս, ընդ հովանեաւ սուրբ Հոգւոյն. որ յայսմ ամի վերստին նորոգեցաւ պատուական քարամբք քերեալ ի ճարտարաց: Ձեռամբ Ստեփաննոսի Վահկայցւոյ և ծախիւք և հրամանաւ Սոսթենէս բաբունւոյ, որ էր վարժ և կիրթ յամենայն գիրս աստուածային՝ հնոցն և նորոց և արտաքին փիլիսոփայիցն գեր ի վերոյ. որ և ի ժամանակիս մեր և թագ՛. Լեւոնի և ի հայրապետ՛՛ Յակոբայ ոչ ոք է կատարեալ իբրև զսա յամենայն իմաստս, բայց ի մեծ րաբունեաց րաբունւոյն. որոյ անուն ցաւղէ քաղցր, որ և Վահրամ կոչի»:*

**ՍՏԵՓԱՆՈՍ**. — *«Յայսմ ժամանակի (Թուին* ՄԻԲ) *էր Ստեփանոս դրան երէց, որ բանիբուն ճանաչիւր. հա ամենայն իմաստասիրական և գրամարտիկոս արուեստից՝ հանդերձ հոգևորական առաքինութեամբ»:* ԿԻՐԱԿՈՍ.

*Նոյն խօսքերով կը դրուատէ զնա և Սամուէլ, որոշելով ՚ի համանուն Սիւնեաց եպիսկոպոսէն:*

**ՏՈՒՐՔԻԿ**. — *«Էին ՚ի ժամանակին յայնմիկ (ԺԲ դար) վարդապետք երևելիք… Տուրքիկ ՚ի Թեղենեաց, որ բարիոք կարգաւորեաց զվանքն՝ զամենայն ինչ հասարակաց լինել և առանձինն ոչինչ ստանալ»:* ԿԻՐԱԿՈՍ.

---

# ՑԱՆԿ

## ԳՐԱԻՈՐ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ



## ԴԱՐ Դ

## Դ Ա Ր Ե

## Դ Ա Ր Զ

## Դ Ա Ր Է

## ԴԱՐ Ը



## ԴԱՐ Թ

## ԴԱՐ Ժ

## ԴԱՐ ԺԱ



## ԴԱՐ ԺԲ

## ԴԱՐ ԺԳ

## ՅԱՒԵԼՈՒԱԾ





# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ ՄԱՏԵՆԱԳՐԱՑ

